ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ
Հ. ԱՃԱՌՅԱՆԻ ԱՆՎԱՆ ԼԵԶՎԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ

Գ. Բ. ՋԱՀՈՒԿՅԱՆ

# ՀԱՅՈՑ ԼԵԶՎԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ



## ՆԱԽԱԳՐԱՅԻՆ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆ

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԱ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1987

Տպագրվում է Հայկական ՍՍՀ ԳԱ Հ. Աճառյանի անվան լեզվի ինստիտուտի գիտական խորհրդի որոշմամբ

Պատասխանատու խմբագիր՝ բանասիրական գիտությունների թեկնածու Լ. Ս. ՀՈՎՍԵՓՅԱՆ

Գիրքը հրատարակության են երաշխավորել բանասիրական գիտությունների դոկտորներ Հ. Գ. ՄՈՒՐԱԴՅԱՆԸ և Հ. Զ. ՊԵՏՐՈՍՅԱՆԸ

**Ջահուկյան Գ. Բ.**

Ջ229 *Հայոց լեզվի պատմություն։ Նախագրային ժամանակաշրջան/Պատ. խմբ. Լ. Ս. Հովսեփյան. —Եր.։ ՀՍՍՀ ԳԱ հրատ., 1987.—748 էջ.*

*Վերնախորագր.՝ ՀՍՍՀ ԳԱ Հ. Աճառյանի անվ. լեզվի ին-տ.*

*Աշխատությունն ընդգրկում է հայոց լեզվի պատմության նախագրային ժամանակաշրջանի պատմությունը և բաղկացած է ներածությունից ու երեք մասից։ Առաջին մասում համեմատականորեն բնութագրվում են հնդեվրոպական լեզուն և հնդեվրոպացիների կյանքն ու մշակույթը, վերականգնվում են հայերենի հնդեվրոպական բաղադրիչները, և որոշվում է հայերենի տեղը հնդեվրոպական բարբառների մեջ։ Երկրորդ մասում քննվում է հայերենի առանձնակի գոյության վաղնջական շրջանի պատկերը, և եղած տվյալների համադրությամբ բացահայտվում են նրա կառուցվածքի ու բառապաշարի հիմնական կողմերը։ Երրորդ մասում տրվում է հայերենի հնագույն շրջանի պատմությունը, և գծվում է V դ. լեզվավիճակի կազմավորման ընթացքը։ Աշխատության մեջ հատուկ ուշադրություն է նվիրված հայերենի և այլ լեզուների փոխազդեցության հարցերին։*

*Աշխատությունը նախատեսված է բանասերների, պատմաբանների և հայոց լեզվի ու հայ ժողովրդի պատմությամբ հետաքրքրվողների համար։*

Ջ $\frac{4602010000}{703(02)-87}$ 82—85

ԳՄԴ 81. 2Հ





## ԻՆՍՏԻՏՈՒՏԻ ԿՈՂՄԻՑ

Հայկական ՍՍՀ Հ. Աճառյանի անվան լեզվի ինստիտուտը ձեռնարկել է հայոց լեզվի ամբողջական պատմության ստեղծումը: Հայոց լեզվի պատմության գոյություն ունեցող շարադրանքներից, մասնավորապես Հ. Աճառյանի «Հայոց լեզվի պատմություն» երկհատորյակից [**Աճառյան,** 1940—1951] այն տարբերվում է ոչ միայն իր ծավալով, այլև ընդհանուր մտահղացմամբ, նյութի ընդգրկման, դասակարգման և ժամանակագրական բաշխման սկզբունքներով: Հ. Աճառյանի աշխատությունը փաստորեն ընդգրկում է միայն հայոց լեզվի, այսպես կոչված, արտաքին փաստերի շարադրանքը և «Հայերեն արմատական բառարանի» բառային նյութի ծագումնային դասակարգումը, այսինքն՝ բառապաշարի պատմությունը: Մինչդեռ ներկա աշխատության հեղինակային կոլեկտիվի ըմբռնմամբ հայոց լեզվի պատմությունը որպես գիտակարգ պետք է տա հայոց լեզվի բոլոր տարատեսակների և բոլոր բաղադրիչների կարգացման պատկերը՝ հստակորեն բաշխված ըստ ժամանակագրական շրջանների: Հայոց լեզվի պատմության շրջանաբաժանման և ժամանակագրական բաշխման սկզբունքները մշակվել են հատկապես Գ. Բ. Ջահուկյանի աշխատություններում [**Ջահուկյան,** 1956.1969, 6—68. **Джаукян,** 1967, 313—332. 1973, 115—121]: Դրանց հիման վրա Լ. Ս. Հովսեփյանի կողմից կազմվել է «Հայոց լեզվի պատմության» նախագիծը [**Հովսեփյան,** 1977], որ դրվել է հրապարակային քննության և հավանության արժանացել: Հարկ ենք համարում նշել, որ այս աշխատության մեջ օգտագործված են բազմաթիվ նոր նյութեր ու աղբյուրներ, որոնք հայտնի չեն եղել և չեն արտացոլվել Հ. Աճառյանի ու այլ հեղինակների՝ հայոց լեզվի պատմության ամբողջական և մասնակի շարադրանքներում: Ընդհանուր առմամբ հեղինակները ջանացել են, որ աշխատությունն արտացոլի լեզվաբանական գիտության ժամանակակից մակարդակը և հայագիտության կարգացման վերջին շրջանի նվաճումները: Լեզվի ինստիտուտը որոշ չափով նախապատրաստել է այս աշխատությունը հայոց լեզվի պատմության տարբեր շրջաններին (գրաբար, միջին հայերեն, արևմտահայ և արևելահայ գրական լեզուներ), հայոց լեզվի համեմատական և պատմական քերականությանը, գրական լեզվի կարգացման տարբեր փուլերին և պատմական բարբառագիտությանը նվիրված ուսումնասիրություններով:

«Հայոց լեզվի պատմության» նյութը բաշխված է հետևյալ կերպ.

1-ին գիրք՝ նախագրային ժամանակաշրջան (հեղինակ՝ Գ. Բ. Ջահուկյան).

2-րդ գիրք՝ հին շրջան (հեղինակ՝ Լ. Ս. Հովսեփյան).

3-րդ գիրք՝ միջին շրջան (հեղինակ՝ Պ. Կ. Վարդապետյան).

4-րդ գիրք՝ նոր շրջան. 1-ին մաս՝ արևելահայ տարածք (հեղինակներ՝ Ս. Գ. Աբրահամյան և Ն. Ա. Պառնասյան). 2-րդ մաս՝ արևմտահայ տարածք (հեղինակ՝ Ա. Ե. Սարգսյան):

Լեզվի ինստիտուտը և հեղինակները շնորհակալություն են հայտնում բոլոր նրանց, ովքեր որևէ չափով նպաստել են աշխատության ստեղծմանը: Ներկա գրքի հեղինակը իր պարտքն է համարում հատուկ շնորհակալություն հայտնելու իրանագետ Լ. Գ. Գերցենբերգին, որի տրամադրած նյութերը մեծապես օգնել են հայերենի իրանական փոխառությունների ցանկի լրացմանը:

# ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ

## I. ՀԱՅՈՑ ԼԵԶՎԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ ՈՐՊԵՍ ԳԻՏԱԿԱՐԳ, ՆՐԱ ԱՌԱՐԿԱՆ, ՆՊԱՏԱԿԸ ԵՎ ԽՆԴԻՐՆԵՐԸ

«Լեզվի պատմություն» բառակապակցությունը երկարժեք է. այն նշանակում է և՛ լեզվաբանական մի որոշակի գիտակարգ, և՛ նրա ուսումնասիրության առարկան։ Ըստ լեզվաբանական գիտակարգերի ընդհանուր դասակարգման [Джаукян, 1976, 46—55] լեզվի պատմությունը պատկանում է տարածական առումով առանձնական և ժամանակային առումով՝ պատմական կամ, ինչպես ընդունված է ասել, տարաժամանակյա գիտակարգերի թվին։ Բացատրենք այս դրույթն ըստ էության։

Խոսելով լեզվի պատմության մասին որպես առանձնական գիտակարգի՝ մենք նկատի ենք առնում «լեզու» բառի գործածությունը մեկ հանրության պատկանող լեզվի առումով («հայոց լեզու», «ռուսաց լեզու» և այլն)՝ ի հակադրություն ավելի լայն (հմմտ. «մարդկային լեզու») կամ ավելի նեղ գործածությունների (հմմտ. «ուսանողության լեզու», «Թումանյանի լեզու» և այլն), այսինքն՝ սահմանագատում ենք լեզվի պատմություն գիտակարգի առարկան։ Այս առումով՝ հայոց լեզվի պատմություն գիտակարգի ուսումնասիրության առարկան հայ ժողովրդի տարբեր հատվածների հաղորդակցման միջոցն է՝ հայոց լեզուն։ Լայն առումով հայոց լեզվի պատմություն գիտակարգը պիտի նկատի առնի ինչպես ստանդարտ (գրավոր շրջանում՝ գրական) լեզուն, այնպես էլ բարբառային տարբերակները, ինչպես հայ ժողովրդի պատմության հետ կապված լեզվական փաստերը և, հատկապես, բառապաշարը, այնպես էլ հայոց լեզվի կառուցվածքի տարբեր կողմերը. այն պիտի հաշվի առնի լեզվի հասարակական, գործառական և անհատական տարբերակները՝ ըստ նրանց խաղացած դերի։ Այլ կերպ ասած՝ հայոց լեզվի պատմությունը բառիս բուն իմաստով պիտի ներառի և համադրված ներկայացնի ստանդարտ կամ գրական լեզվի պատմության, պատմական բարբառագիտության, համեմատական ու պատմական բառագիտության և համեմատական ու պատմական քերականության (լայն առումով՝ ներառյալ նաև հնչյունաբանությունը) տվյալները, պատմական հանրալեզվաբանության և պատմական ոճաբանության ընձեռած փաստերը։

Եթե մենք շեշտում ենք, որ հայոց լեզվի պատմությունը առանձնական գիտակարգ է, ապա այդ չի նշանակում, թե այն կանգնած է մեկուսի այլ գիտակարգերից։

Նախ և առաջ՝ հայոց լեզվի պատմությունը սերտորեն կապված է այնպիսի մասնակի մի գիտակարգի հետ, ինչպիսին հնդեվրոպական լեզվաբա-

նությունն է (հնդեվրոպաբանությունը). սրա ուսումնասիրության առարկան հնդեվրոպական կոչված լեզուներն են, որոնք միավորվում են «հնդեվրոպական լեզվաընտանիք» անվան տակ, և որոնց մեջ մտնում է նաև հայոց լեզուն (հայերենը)։ Հայոց լեզվի սկզբնական պատմությունը չի կարող տրվել առանց ցեղակից լեզուների տվյալների հաշվառման, առանց նկատի առնելու այն ենթադրական նախալեզուն, որ դրանց համեմատությամբ վերականգնվում է հնդեվրոպաբանների կողմից։ Երկրորդ՝ հայոց լեզվի պատմությունը սերտորեն կապված է այն լեզուների պատմության հետ, որոնք շփվել են հայերենի հետ, ազդել նրա վրա և ազդվել նրանից. հետևաբար, հայոց լեզվի պատմությունը որպես առանձնակի գիտակարգ կապի մեջ է գտնվում առանձնական այլ գիտակարգերի հետ, նյութ քաղում նրանցից և նյութ տալիս նրանց։ Երրորդ՝ հայոց լեզվի պատմությունը, ինչպես մասամբ նշվեց, սերտ կապի մեջ է գտնվում իրենց բնույթով ավելի նեղ այնպիսի գիտակարգերի հետ, ինչպիսիք են պատմական բարբառագիտությունը, պատմական ոճաբանությունը, առանձին հեղինակների և առանձին երկերի լեզվաբանասիրական ուսումնասիրությունը։

Խոսելով լեզվի պատմության մասին որպես պատմական կամ տարաժամանակյա գիտակարգի՝ մենք նկատի ենք առնում, որ նա քննում է իր ուսումնասիրության առարկան՝ լեզուն, նրա կրած փոփոխությունների և զարգացման պրոցեսի մեջ։ Այս առումով լեզվի պատմությունը հակադրվում է այնպիսի գիտակարգերի, ինչպիսիք են լեզվի գիտական քերականությունը և համաժամանակյա ոճաբանությունը։ Եթե սրանք նկատի են առնում լեզվի զարգացման մեկ կտրվածքը, նկարագրում նրա զարգացման մեկ շրջանի վիճակը, ապա լեզվի պատմությունը գնում է դեպի պատմության խորքերը, ցույց տալիս, թե ի՛նչ վիճակներով է անցել տվյալ լեզուն մինչև այս կամ այն վիճակին հասնելը, բացատրում է այդ վիճակի ներքին հակասությունների պատճառները, հասկանալի դարձնում շեղումների ու բացառությունների բնույթը, ցույց տալիս նրանց պատմական օրինաչափականությունը։ Սակայն լեզվի փոփոխությունները ցույց տալու, դրանց բնույթը պարզաբանելու համար անհրաժեշտ է համեմատել ուսումնասիրվող լեզվի առանձին կտրվածքները, մասնավորապես ելակետային և հանգակետային վիճակները։ Այս առումով լեզվի պատմությունը սերտորեն կապվում է առանձին վիճակները քննող գիտակարգերի հետ, օգտվում նրանց տվյալներից, հենվում նրանց վրա։ Եթե հայոց լեզվի պատմաբանը տալիս է գրավոր շրջանի պատմությունը, ապա չի կարող նախապես չնկարագրել գրաբարի սկզբնական վիճակը՝ հետագա փոփոխությունները ցույց տալու համար։ Եթե հայոց լեզվի պատմաբանը փորձում է տալ նախագրային շրջանի պատմությունը, ապա անհրաժեշտորեն պետք է ելնի սկզբնական ինչ-որ վիճակից։ Որպես այդպիսի ելակետ բնականաբար ծառայում է հնդեվրոպական այն լեզուն (նախալեզուն), որ վերականգնվում է հայերենի և ցեղակից լեզուների համեմատության միջոցով։

Լեզվի պատմությունը որպես տարաժամանակյա գիտակարգ իր նպատակներով ու խնդիրներով որոշ առումով հակադրվում է լեզվի համաժամանակյա նկարագրություններին և, հատկապես, նորմատիվ քերականություններին, որոնք լեզուն ներկայացնում են որպես որոշակի կանոններով գործող, որոշակի նորմաների ենթարկվող կայուն կառուցվածք։ Լեզվի

նորմատիվ քերականությունը իր սահմանած կանոններով հենց նպատակ ունի քիչ թե շատ կայունացնել լեզվի վիճակը՝ նրանով խոսող ժողովրդի տարբեր հատվածների և տարբեր սերունդների հաղորդակցումը ապահովելու նպատակով։ Չնայած այդ ջանքերին, որոնք ստանդարտ և, մանավանդ, գրական լեզվի առկայության պայմաններում լիովին գիտակցված և նպատակային բնույթ են կրում, լեզուն փոփոխվում է ավելի կամ պակաս արագությամբ, ընդ որում այդ փոփոխությունները շոշափում են նրա բոլոր կողմերը։ Հենց սրանք էլ կազմում են լեզվի պատմության առարկան։

Վերևում ասվածները պարզ են դարձնում լեզվի պատմության գիտակարգի նպատակն ու խնդիրները։

Բացի այն ընդհանուր հետաքրքրությունից, որ լեզվի պատմությունն ունի տվյալ լեզվով խոսող ամեն մի անձնավորության համար, լեզվի պատմությունը խիստ կարևոր է մասնագիտական մի շարք առումներով։

Ամենից առաջ՝ չի կարող կառուցվել որևէ ժողովրդի պատմությունը առանց այդ ժողովրդի լեզվի պատմության։ Հնագիտության, ազգագրության և այլ գիտությունների ու գիտակարգերի հետ միասին և նույնիսկ նրանցից ավելի մեծ չափով լեզվի պատմությունը օգնում է կառուցելու ժողովրդի պատմությունը։ Անգնահատելի է նրա դերը հատկապես ժողովրդի ծագման, նրա քաղաքակրթության, նրա նյութական ու հոգևոր մշակույթի պատմության, նրա հին գրավոր հուշարձանների վերծանման և ընթերցման հարցերը լուծելիս։ Բառերի պատմությունը նրանց նշանակած իրույթների (ռեալիաների) պատմություն է, և, ինչպես կտեսնենք հայոց լեզվի պատմության օրինակով, լեզվի քննությունը բացահայտում է ժողովրդի պատմության այնպիսի կողմեր, որոնք անհայտ են մնում այլ գիտակարգերի դեպքում։ Լայն առումով լեզվի պատմությունը մեծապես օգնում է այնպիսի գիտակարգերի կառուցմանը, ինչպիսիք են գրականության պատմությունը, իրավունքի պատմությունը և այլն։

Շատ կարևոր է լեզվի պատմության դերը բանասիրական աշխատանքի մեջ։ Այդ դերն այնքան մեծ է, որ հին աշխարհում քերականությունը հենց բանասիրական ուղղվածություն ուներ և դիտվում էր որպես երկերի բնույթի պարզաբանման բանալի։ Հետագայում, երբ ձևավորվում է գիտական բանասիրությունը, այն դառնում է պատմահամեմատական լեզվաբանության ձևավորման գլխավոր ազդակներից մեկը։ Մեր ժամանակներում լեզվի պատմության և բանասիրության կապի դրույթը անհերքելի ճշմարտության արժեք ունի։

Լեզվի պատմությունը կարևոր է ժամանակակից լեզվի քերականության դասընթացի կազմման և դասավանդման համար։ Ինչպես նշել ենք, լեզվի պատմությունը ցույց է տալիս ժամանակակից լեզվի կազմավորման պրոցեսը, բացատրում անկանոնություններն ու բացառությունները։ Լեզվի մեջ այնպիսի երևույթներ, ինչպիսիք են հնաբանություններն ու նորաբանությունները, չեն կարող չկապվել լեզվի պատմության հետ, և լեզվի համաժամանակյա ուսումնասիրության, նրա ոճաբանության հարցերի լուծման մեջ անհրաժեշտորեն մուտք են գործում տարաժամանակյա ուսումնասիրության, այսինքն՝ հենց լեզվի պատմության տարրերը։

Վերջապես, այս կամ այն լեզվի պատմությունը կարևոր է լեզվաբանական առումով, այն նյութ է տալիս այլ լեզուների պատմության կառուցման

համար, օգնում է համեմատական լեզվաբանության օգտագործած փաստերի ճշտմանը, նպաստում ընդհանուր լեզվաբանության տեսության կառուցմանը և այլն, և այլն։

## 2. ԼԵԶՎԻ ՓՈՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

Այն հարցը, թե ինչո՞ւ է լեզուն ժամանակի ընթացքում փոխվում, զուրկ է իմաստից. լեզուն չի կարող բացառություն կազմել բնության և հասարակության օրենքներից, այն չի կարող չփոխվել։ Այլ հարց է, թե ինչպե՞ս և ի՞նչ գործոնների ազդեցության տակ է տեղի ունենում այդ փոփոխությունը։

Ինչպես ամեն մի այլ երևույթի, այնպես էլ լեզվի փոփոխությունը պայմանավորված է ներքին և արտաքին պատճառներով։

Լեզվի փոփոխության ներքին պատճառները լեզվի համակարգի ներքին հակասություններն են, նրա անմիօրինակությունը, իշխող օրինաչափությունների կողքին հին օրինաչափությունների և սաղմնավորվող օրինաչափությունների, կանոնավոր ձևերի կողքին՝ անկանոնների (բացառությունների և շեղումների) առկայությունը, լեզվական իմաստների և լեզվական ձևերի (լեզվական նշանների ներքին և արտաքին կողմերի) անհամապատասխանությունները։ Լեզուն, կիբեռնետիկական տերմինաբանությամբ, որպես ինքնակատարելագործվող դինամիկ համակարգ, ձգտում է անմիօրինակությունները հաղթահարելու, բացառություններն ու շեղումները վերացնելու, լեզվական իմաստները լեզվական արտահայտության ձևերին համապատասխանեցնելու ուղիով։ Սակայն այն հանգամանքը, որ լեզվական իմաստները ենթարկվում են համակարգման ու կանոնավորման այլ օրինաչափությունների, քան լեզվական արտահայտության միջոցները, լեզվի հնչյունական կառուցվածքի բաղադրիչները, և որ հնչյունական օրենքների գործողությամբ հանդես եկած անհամապատասխանությունները որոշ չափով համահարթվում, բայց մինչև վերջ չեն հաղթահարվում համաբանության գործողությամբ,— այս հանգամանքը հիմք է տալիս նոր հակասությունների և նոր անկանոնությունների առաջացման համար։ Եթե լեզուն լիներ իդեալական համակարգ, ապա կդադարեր լեզվի այդպիսի շարժումը. բայց ոչ մի բնական լեզու իդեալական չէ, և հենց շարժումը դեպի իդեալականություն կազմում է լեզվի փոփոխությունների էությունը. այլ կերպ ասած՝ լեզվի փոփոխությունները ոչ թե սոսկական փոփոխություններ են, այլ հիմնականում կատարելագործում ենթադրող փոփոխություններ, այսինքն՝ զարգացման որոշակի պրոցես։ Լեզուների շարժումը դեպի իդեալական վիճակ, «տարբերությունը այդ համընդհանուրից և ընդհանուրից հենց այն է, ինչ կազմում է նրանց զարգացումը» [Маркс-Энгельс, с. 21]։

Թեև վերևում մենք խոսեցինք այն մասին, որ լեզուն ինքնակատարելագործվող դինամիկ համակարգ է, բայց այդ չի նշանակում, որ լեզվի փոփոխությունն ու զարգացումը տեղի են ունենում միայն ներքին հակասությունների հաղթահարման ուղիով։ Լեզուն ինքնանպատակ համակարգ չէ. այն ծագել է և գոյություն ունի մարդկային այս կամ այն հանրության հաղորդակցումն ապահովելու համար, այսինքն՝ գործառում է որպես հաղորդակցության միջոց։ Այս առումով լեզվի փոփոխության և զարգացման վրա մեծ չափով ազդում են նաև, այսպես կոչված, արտաքին գործոնները։ Լեզվա-

կան այն փոփոխությունները, որոնք տեղի են ունենում այս ճանապարհով, հայտնի են «գործառական փոփոխություններ» անունով։ Լեզվի արտաքին փոփոխությունները բառիս բուն իմաստով «արտաքին» չեն, եթե նկատի առնենք, որ լեզուն գոյություն ունի հասարակության մեջ, որ նրա բոլոր փոփոխությունները կատարվում են հենց հասարակական հաղորդակցման գործառության պայմաններում, և որ արտաքին գործոնների ազդեցությունն առաջ է բերում լեզվի ներքին փոփոխություններ։

Ինչպե՞ս է տեղի ունենում արտաքին գործոնների ազդեցությունը լեզվի վրա։

Առաջին՝ հարկավոր է նկատի ունենալ, որ լեզուն տարբերակված է հասարակության մեջ վայրից վայր, խմբավորումից խմբավորում, գործունեության բնագավառից բնագավառ, անհատից անհատ։ Հասարակության ամեն մի անդամ ունի իր «լեզուն», իր բառապաշարը, բառապաշարի իր ակտիվ և պասիվ շերտերը, արտահայտության իր սիրած եղանակներն ու միջոցները, լեզվական իր ունակությունները. խոսելով այնպես, որ հասկանալի լինի ուրիշներին, նա միաժամանակ խոսում է ոչ այնպես, ինչպես մյուսները։ Այս է հենց լեզվի ստեղծագործական կարողությունը։ Լեզվի տարածական, հասարակական և անհատական տարբերակները պատմական տարբեր պայմաններում ձեռք են բերում տարբեր արժեք և ազդում լեզվի փոփոխության ընթացքի վրա։ Այս կամ այն տարածքի, այս կամ այն հասարակական խմբավորման, այս կամ այն անհատի՝ հասարակության մեջ ունեցած դերի և ազդեցության փոփոխության համեմատ տեղի է ունենում լեզվական համապատասխան փոփոխություն։ Անհատական լեզվական ունեցվածքները (անհատական «լեզուները») և իրենց ընդհանրությունների ու տարբերությունների ծավալին համապատասխան ստեղծում են լեզվական փոփոխությունների համապատասխան միտումներ, որոնք հանգեցնում են ընդհանուր լեզվական փոփոխությունների, լեզվական արտահայտության ընդհանուր եղանակների, լեզվական սովորույթների և նորմաների փոփոխությունների։ Հասարակության բոլոր անդամների իդեալական նույնությունը կհանգեցներ լեզվական անշարժության, կբացառեր լեզվի փոփոխությունը, այսինքն՝ լեզուն կդադարեր ստեղծագործական կարողություն ունենալուց, խոսելը կզրկվեր լեզվական առաջադիմության այնպիսի կարևոր գործոնից, ինչպիսին խոսելու հաճույքն է։

Երկրորդ՝ ամեն մի լեզվական հանրություն գտնվում է պատմական փոփոխության մեջ, ապրում է տնտեսական, քաղաքական, մշակութային և գաղափարական անընդհատ նորացման պրոցես։ Այդ նորացումը համապատասխան դրսևորում է գտնում լեզվի մեջ, որ կոչված է բավարարելու հասարակության հաղորդակցման կարիքները, փոխանցելու կուտակվող փորձը սերնդից սերունդ։ Այսպիսով, հասարակական փոփոխություններն առաջ են բերում լեզվական փոփոխություններ, ստեղծում արտահայտության նոր միջոցների ու եղանակների անհրաժեշտություն, փոփոխում սրանց նշանակման ոլորտները, դրանք ընդլայնում կամ նեղացնում։ Այդ պատճառով էլ լեզուն դառնում է հասարակության պատմության ցուցիչ, հնարավորություն տալիս վերականգնելու այդ պատմության կորած օղակները։

Երրորդ՝ ամեն մի լեզվական հանրություն մեկուսացած չէ լեզվական այլ հանրություններից։ Այս կամ այն ժողովրդի տնտեսական, քաղաքական, մշակութային, գաղափարական բազմաձև մեկուսացումը միշտ էլ հա-

*վաղեմի երևույթ է եղել, իսկ մեր օրերում այն դարձել է անհնար։ Ժողովուրդների շփումն ու փոխազդեցությունը առաջ է բերում լեզվական փոխազդեցություն, լեզվական համապատասխան փոփոխություններ։*

*Կանգ առնենք ժողովուրդների և լեզուների փոխհարաբերության և փոխազդեցության հարցի վրա փոքր-ինչ ավելի հանգամանորեն։ Կարելի է տարբերել լեզուների փոխազդեցության երկու տեսակ՝ փոխներթափանցում (ինտերֆերենցիա) և փոխառություն։ Փոխներթափանցումը լեզուների համեմատաբար խոր փոխազդեցություն է, որ լինելով երկլեզվության արդյունք՝ կարող է ընդգրկել լեզուների նաև կառուցվածքային առանձնահատկությունները. լեզվական փոխազդեցությունն այս դեպքում սովորաբար կապվում է էթնիկական փոխազդեցության՝ տվյալ լեզուները կրող ժողովուրդների ամբողջական կամ մասնակի շփումների (կոնտակտների) հետ։ Փոխներթափանցման համար հիմք կարող են լինել հատկապես քաղաքական նվաճումը և ժողովուրդների մերձավոր հարևանությունը, որոնք պահանջում են խոսողներից անցում կատարելու մի լեզվից մյուսին և համապատասխանաբար հիմք են ստեղծում մի լեզվի՝ մյուսի վրա (սովորաբար մայրենի լեզվի՝ յուրացվող լեզվի վրա) ազդելու համար։ Փոխներթափանցման յուրատեսակ դրսևորումներ են խաչավորման այն երևույթները, որոնք վաղուց ի վեր հայտնի են ենթաշերտ (սուբստրատ), մակաշերտ (սուպերստրատ) և առշերտ (ադստրատ) անուններով։ Ենթաշերտը տեղացիների լեզվի ազդեցությունն է եկվորների և, հատկապես, նվաճողների լեզվի վրա, առաջինի նստվածքը երկրորդի մեջ։ Մակաշերտը եկվորների և, հատկապես, նվաճողների լեզվի ազդեցությունն է տեղացիների լեզվի վրա։ Առշերտը հարևան լեզուներից մեկի ազդեցությունն է մյուսի վրա, հատկապես խառը բնակչության վայրերում։ Հայտնի է, որ լեզվաբանները հաճախ են խոսում հայերենի մեջ ուրարտական և կովկասյան ենթաշերտի մասին, այս կամ այն հնչյունական կամ քերականական երևույթը բացատրում որպես ուրարտական կամ կովկասյան ազդեցության արդյունք։ Ենթաշերտի գաղափարի որոշ չարաշահում նկատվել է շատ հայագետների աշխատություններում, այդ թվում՝ նաև այնպիսի զգույշ հետազոտողի մոտ, ինչպիսին Ա. Մեյեն էր։ Էլ չենք խոսում Ն. Յա. Մառի, Գ. Ա. Ղափանցյանի և նրանց հետևորդների մասին, որոնք խաչավորումը դիտում են որպես լեզվի հիմնական ստեղծագործական սկզբունք, նոր լեզուների և նոր երևույթների ստեղծման հիմնական ուղի։ Փոխներթափանցման դրսևորումներից մեկն էլ պետք է համարել, այսպես կոչված, լեզվամիությունը, լեզուների երկարատև շփման հետևանքով առաջացած այնպիսի խմբակցությունը, որի անդամները բնորոշվում են կառուցվածքային ընդհանուր առանձնահատկություններով. այս ընդհանրությունները նյութական չեն, ինչպիսին լինում են ցեղակից լեզուների դեպքում, այլ կառուցվածքա-տիպաբանական, այսինքն՝ բնորոշվում են արտահայտության եղանակների ընդհանրությամբ։*

*Փոխառությունը սովորաբար սահմանափակվում է բառապաշարով և բառակերտման ընդհանուր կաղապարներով. փոխառության հիմքը տնտեսական, քաղաքական, կրոնական և մշակութային գործոններն են։ Նոր, մինչ այդ անծանոթ առարկաներն ու երևույթները կարող են արտահայտվել ոչ թե սեփական բառակազմական միջոցներով, այլ դրանք նշանակող այլազգի բառերով, երբեմն էլ սեփական նյութական միջոցներով, բայց մի այլ լեզվի համար բնորոշ եղանակներով. վերջինս բառակազմական կաղա-*

ղարի փոխառությունն է, որ հայտնի է բառապատճենում անունով։ Բառապատճենումը, օրինակ, հայերենի հին շրջանում կատարվել է հատկապես հունարենի, նոր շրջանում՝ ռուսերենի (արևելահայերենում) կամ ֆրանսերենի (արևմտահայերենում) օրինակով։ Փոխառությունները կարող են լինել անմիջական կամ միջնորդված (մի այլ լեզվի միջնորդությամբ), գրական կամ խոսակցական։

## 3. ԼԵԶՎԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅԱՆ ՄԵԹՈԴՆԵՐԸ

*Մեր «Ընդհանուր և հայ լեզվաբանություն» աշխատության մեջ առանձնացված է տարաժամանակյա (պատմական) հետազոտության ութ մեթոդ* [Джаукян, 1978, 50–53]*։ Կատարելով որոշ վերախմբավորում և մասնակիորեն փոփոխելով տրված անվանումները ըստ լեզվի պատմության դիտակարգի առանձնահատկությունների՝ կարելի է թվարկել հետևյալ հիմնական մեթոդները։*

1. **Համեմատություն.** *լեզվի պատմական ուսումնասիրության, կարելի է ասել, հիմնական մեթոդն է, որ իր անունը տվել է պատմահամեմատական լեզվաբանությանը։ Սակայն, եթե բուն համեմատական լեզվաբանության մեջ այդ բառն օգտագործվում է ցեղակից լեզուների համեմատության իմաստով, ապա մենք այստեղ նկատի ունենք այդ բառի հատկապես իմացաբանական իմաստը՝ որպես առարկաների և երևույթների ճանաչման հիմնական միջոցի։ Եվ իսկապես. առանց համեմատության չի կարող լինել իսկական ճանաչում և գնահատում։*

*Մասնավորելով մեր խոսքը լեզվի պատմության փաստերի նկատմամբ՝ մենք կարող ենք արձանագրել, որ լեզվի պատմությունը ենթադրում է ժամանակագրորեն տարբեր երկու կամ ավելի վիճակների համեմատություն։ Տալ տվյալ լեզվի պատմությունը՝ նշանակում է համեմատության մեջ դնել լեզվի զարգացման տարբեր փուլերի փաստերը՝ մի կողմից և տվյալ լեզվի ու այլ լեզուների համապատասխան փաստերը՝ մյուս կողմից։*

*Ամեն մի համեմատություն առաջին հերթին ենթադրում է երեք կարգի հնարավոր ելք՝ ա) համեմատվող ժամանակագրական մակարդակներում տվյալ փաստի (երևույթի, միավորի) առկայություն՝* a—a, *բ) ժամանակագրական մակարդակներից մեկում դրա բացակայություն՝* a—$\bar{a}$ *և գ) ժամանակագրական տվյալ մակարդակում գոյություն ունեցող տվյալ փաստի (երևույթի, միավորի) փոխարեն մի այլ փաստի (երևույթի, միավորի) առկայություն՝* a—b*։ Համեմատությունը երկրորդ հերթին ենթադրում է առանձնացված ելքերից առաջինի համար նույնության* (a=a) *և տարբերության* (a≠a) *որոշում։ Որքան մեծ է համեմատվող փուլերի ժամանակային հեռավորությունը, այնքան քիչ կլինի նույնությունը, և այնքան կմեծանան համեմատվող միածագում (նույն ծագումն ունեցող) փաստերի (երևույթների, միավորների) տարբերությունների քանակն ու տարբերակվածության աստիճանը։ Քանի որ լեզվական հիմնական միավորները՝ բառերը, իրենց բաղադրիչներով ու կապակցություններով հանդերձ երկպլանային միավորներ են, այսինքն՝ ունեն բովանդակության պլան (իմաստ) և արտահայտության պլան (հնչյունական ձևավորում), հասկանալի է, որ*

տարբերությունները կարող են վերաբերել կամ միայն առաջինին (իմաստային կողմին), կամ միայն երկրորդին (հնչյունական կողմին), կամ միաժամանակ թե՛ մեկին, թե՛ մյուսին։ Այլ կերպ ասած՝ երկու ժամանակագրական մակարդակներում առկա տվյալ միավորը կարող է փոփոխված լինել միայն իմաստով, միայն հնչյունապես և թե՛ իմաստով ու թե՛ հնչյունապես։ Այդ փոփոխությունները, ինչպես նշվել է, կարող են լինել տարբեր աստիճանի՝ փոքրիկ տարբերություններից մինչև հնչյունական լիակատար փոփոխություն (նոր բառի առաջացում) և իմաստային մասնակի տեղաշարժից մինչև իմաստային կապի բացարձակ խզում (հնչյունական նույնության դեպքում՝ համանունություն)։ Եթե իմաստային տարրերը պայմանականորեն նշանակենք լատինական և հնչյունական տարրերը՝ հունական տառերով, ապա համեմատությամբ որոշվող փոփոխությունների տիպերը կարելի է արտահայտել մոտավորապես հետևյալ ձևով՝ 1) միայն իմաստային փոփոխություն՝ $a(a\alpha)\rightarrow a(b\alpha)$, 2) միայն հնչյունական փոփոխություն՝ $a(a\alpha)\rightarrow a(a\beta)$, 3) թե՛ իմաստային, թե՛ հնչյունական փոփոխություն $a(a\alpha)\rightarrow a(b\beta)$։

Այսպիսով, համեմատությունը հնարավորություն է տալիս պարզելու լեզվական տարբեր վիճակների փոխհարաբերությունը, փոփոխությունների բնույթն ու տիպերը։

2. Վերականգնում. վերականգնումը լայն չափերով կիրառվում է համեմատական լեզվաբանության մեջ, որտեղ փորձ է արվում վերականգնելու ոչ միայն լեզվի առանձին պակասող օղակներ, այլև լեզուն իր ամբողջությամբ։ Լեզվի պատմության մեջ վերականգնումն օգտագործվում է ավելի փոքր չափերով։ Ճիշտ է, լեզվի պատմությունն օգտվում է համեմատական լեզվաբանության վերականգնման արդյունքներից՝ տվյալ լեզվի նախագրային շրջանի փոփոխությունները գծելու համար, բայց հիմնականում պատրաստի ձևով։ Լեզվի պատմության մեջ վերականգնման մեթոդը կիրառվում է գերազանցապես առանձին պակասող օղակներ վերականգնելու համար։

Ըստ համեմատվող միավորների պատկանելության տարբերում են վերականգնման երկու տեսակ՝ արտաքին վերականգնում, որի դեպքում վերականգնումը կատարվում է այլ լեզուների փաստերի օգտագործմամբ, և ներքին վերականգնում, որի դեպքում համեմատության մեջ են դրվում տվյալ լեզվի միածագում ձևահնչույթաբանական տարբերակները, և որոշվում են ավելի հին ձևերը։ Այսպես, ջինջ և ջնջել ձևերի համեմատությամբ դժվար չէ վերականգնել վերջինիս ավելի հին *ջինջել ձևը։

Հնարավոր է լեզվի պատմության մեջ վերականգնման մեթոդի օգտագործման երկու հիմնական դեպք։ 1) Առաջին դեպքում լեզվի գրավոր շրջանում ավանդված փաստերի մեջ պակասում են առանձին տվյալներ, չկա համակարգի ենթադրելի որևէ տարր, այն փոխարինված է մի այլ տարրով՝ նորակազմությամբ կամ փոխառությամբ։ Այս դեպքում հնարավոր են և՛ արտաքին, և՛ ներքին վերականգնման տարբեր ուղիներ. առաջին հերթին հաշվի են առնվում համեմատական լեզվաբանության տվյալները (ցեղակից լեզուների փաստերը՝ այդ լեզուների մերձավորության աստիճանի և տարածքային փոխհարաբերությունների ամբողջության մեջ), հարևան լեզուների կատարած փոխառություններն ու համատիպ երևույթները, քննվող լեզվի մեջ առկա հոմանիշ ու համարժեք ձևերի պատմական փոխհարաբերությունը։ Այսպես, հնդեվրոպական այլ լեզուների համար ընդհանուր

*k'ṃtóm (հ. հնդկ. śatám, ավ. satəm, հուն. ἑ-κατόν, լատ. centum, բրետ. kant, գոթ. hund, լիտվ. šim̃tas, հ. սլավ. съто, թոխ. Ա kant) բառի համար հայերենը չունի համապատասխան ձև, այլ գործածում է թերևս հնդեվրոպական մի այլ աղբյուրից եկող հարիւր (արդի հարյուր) բառը. Նկատի ունենալով հայերենի հնչյունական օրինաչափությունները՝ կարելի է պարզել, որ այն V դարում պահպանվելու դեպքում պետք է ունենար *սանդն ձևը: 2) Երկրորդ դեպքում մենք ունենք եզակետային և հանգակետային փաստերը, բայց չունենք դրանք միացնող օղակները: Այս դեպքում կարող են միջակա օղակները վերականգնելու համար օգտագործվել ուրիշ լեզուների պատմությունից հայտնի փաստերը, հատկապես ընդհանուր բնույթի այն օրինաչափությունները, որոնք հայտնի են հանրույթներ (ունիվերսալիաներ) անունով, զուգակից միավորների առանձին փոփոխությունների արդյունքների տրամաբանական հաջորդականությունը և այլն: Վերջինս սերտորեն առնչվում է մի այլ մեթոդի՝ տարաժամանակավորման կամ ժամանակագրավորման (хронологизация) մեթոդի հետ, որի մասին կխոսվի առանձին:

Ավելորդ չենք համարում կանգ առնել վերականգնման մեթոդի կիրառման մի նոր բնագավառի վրա, որ կօգնի նախ՝ վերականգնման ճշգրտության աստիճանի ու սահմանների որոշմանը և երկրորդ՝ գլխավոր փաստերի հիման վրա գրվող պատմության փաստերի ճշտմանը: Այդ կիրառումը տվյալ լեզվի բարբառների նախնական վիճակի վերականգնումն է: Հայոց լեզվի արդի բարբառների ընձեռած նյութի հետևողական վերականգնումը հնարավորություն կտար պարզելու, թե ո՛ր վիճակին է ամենից ավելի համապատասխանում ու ի՛նչ չափով է համապատասխանում վերականգնվող նախաբարբառային վիճակը, և կլրացներ հայոց լեզվի գրավոր փաստերի ընձեռած հնարավորությունները:

3. **Տարաժամանակավորում (ժամանակագրավորում, ժամանակաբաշխում).** Տարաժամանակավորման տարբեր եղանակները հաջորդությամբ կիրառվում են և՛ համեմատական լեզվաբանության, և՛ լեզվի պատմության մեջ: Այս մեթոդի էությունը եղած փաստերի տարաբաշխումն է (таксономия) ըստ ժամանակագրական փուլերի, այսինքն՝ փաստերի ժամանակագրավորումն է (хронологизация): Հնարավոր է ժամանակագրավորման երկու եղանակ՝ բացարձակ և հարաբերական ժամանակագրության սահմանում:

Բացարձակ ժամանակագրությունը լեզվական փաստերի համապատասխանեցումն է արտալեզվական փաստերին, հասարակության մեջ ընդունված ժամանակագրության կիրառումը լեզվի փաստերի նկատմամբ:

Այսպես, ցեղակից լեզուների բաժանման ժամանակը որոշելու, այս կամ այն երկը թվագրելու համար կիրառվում է Մ. Սվոդեշի առաջարկած լեզվաժամանակագրական կամ բառավիճակագրական մեթոդը [հմմտ. НЛ, 1, 9—107. **Bergsland-Vogt**, 1962. **Szemerényi**, 2, 1982, 87—98], որ մեր կողմից կիրառվել է հայերենի նկատմամբ՝ նրա անկախ գոյության ժամանակը («տարիքը») որոշելու համար [**Джаукян**, 1969. 1978, 187—211]: Այդ մեթոդի էությունն այն է, որ առանձնացվում է լեզվի համեմատաբար դանդաղ փոխվող, այսպես կոչված, հիմնական բառաֆոնդը, սահմանվում է այդ բառաֆոնդի փոփոխության որոշակի ցուցիչ, և դրա հիման

վրա որոշվում է ցեղակից լեզուների բաժանման ժամանակը։ Մ. Սվոդեշն սկզբում առանձնացրել էր 215 բառ, հետո այդ թիվը հասցնում է 200-ի և ապա կանգ առնում 100-ի վրա. մի շարք լեզուների տվյալների զուգադրումով նա սահմանում է, որ 1000 տարվա ընթացքում միջին հաշվով դուրս է ընկնում այդ հիմնական բառաֆոնդի 15%-ը (այսինքն՝ 100 բառանոց ցուցակի դեպքում՝ 15 բառ) և պահպանվում 85%-ը (այսինքն՝ 100 բառանոց ցուցակի դեպքում՝ 85 բառ)։ Ըստ հիմնական բառաֆոնդի պահպանվածության էլ որոշվում է այս կամ այն լեզվի տարիքը՝ ցեղակից մի այլ լեզվից (լեզուներից) նրա բաժանվելու ժամանակը։

Լեզվական փաստերը ըստ շրջանների բաշխելու, այսինքն՝ լեզվի շրջանաբաժանման (պերիոդիզացիայի) համար գոյություն ունեն մի շարք եղանակներ։ Եղանակներից մեկը մեր առաջարկած հետադարձ հաշվարկման մեթոդն է [Джаукян, 1967, 319—320]։ Ըստ այդ մեթոդի՝ նկատի ունենալով լեզվի գրավոր զարգացման շրջանի համար առանձնացված փուլերի ժամանակագրական սահմանները՝ համապատասխան փուլեր են առանձնացվում նաև նախագրային շրջանի համար. այդ փուլերը, բնականաբար, կարող են ճշգրտվել ըստ արտաքին փաստերի (տվյալ լեզվից այլ լեզուների կատարած փոխառություններ, օտար մատենագիրների կողմից տվյալ լեզվի փաստերի վաղ գրանցումներ և այլն)։ Ե՛վ ժամանակագրության, և՛ հետադարձ հաշվարկման մեթոդների հիմքում ընկած է լեզվի փոփոխության տեմպերի մոտավոր հավասարաչափության վարկածը, որ տալիս է հարաբերական արդյունք։ Ըստ հետադարձ հաշվարկման սկզբունքի՝ ժամանակակից հայերենը տարբերվում է V դ. հայերենից (ըստ, այսպես կոչված, դասական գրաբարի տվյալների) մոտավորապես այն չափով, որչափով վերջինս՝ մ.թ.ա. II հազարամյակի վերջերի լեզվից։ Այդ նույն ձևով էլ V դ. գրաբարը պետք է տարբերվեր մ.թ.ա. III դ. հայերենից մոտավորապես այնքան, որքան այն տարբերվում է մ.թ. XII դ. լեզվից՝ միջին հայերենի վաղ վիճակից։

Գրավոր ժամանակաշրջանի հարցերը, բնականաբար, ավելի հեշտ է լուծել։ Սակայն այստեղ էլ կան որոշակի դժվարություններ և, սրանց հետ կապված, տարբեր մոտեցումներ։ Եթե մի կողմ թողնենք լեզվի պատմության նկատմամբ ժողովրդի պատմության կամ գրականության պատմության շրջանաբաժանման արդյունքների մեխանիկական կիրառման փորձերը, ապա կարելի է տարբերել բուն իսկ լեզվական փաստերից ելնող շրջանաբաժանման երկու եղանակ՝ մենահատկանիշ և բազմահատկանիշ։ Առաջին դեպքում հաշվի է առնվում լեզվական որևէ էական հատկանիշ, երկրորդ դեպքում՝ հատկանիշների մի ամբողջություն։ Մենահատկանիշ շրջանաբաժանման օրինակ է Հ. Աճառյանի սկզբունքը. նա գրաբարը տարբերում է միջին հայերենից բայական կու մասնիկի և աշխարհաբարը՝ միջին հայերենից գ- նախդրի բացակայությամբ [Աճառյան, ՀԼՊ, 2, 1951, 443]։ Ի տարբերություն այս մոտեցման՝ մենք առաջ ենք քաշել լեզվի պատմության բազմահատկանիշ շրջանաբաժանման սկզբունքը՝ յուրաքանչյուր շրջանի համար սահմանելով նրան բնորոշ լեզվական հատկանիշների ամբողջությունը [Джаукян, 1973, 118—119]։

Հարաբերական ժամանակագրությունը սերտորեն կապված է ներքին վերականգնման հետ։ Հարաբերական ժամանակագրությունը լեզվական

*փաստերի հաջորդականության սահմանումն է՝ առանց իսկական ժամանակի (հասարակության մեջ ընդունված ժամանակահաշվարկման) հետ հարաբերելու։ Հայերենի հնչյունական համակարգի համար հարաբերական ժամանակագրության նման փորձեր կատարվել են հատկապես մեր և Կորտլանդտի կողմից* [Джаукян, 1967, 318—319. **Kortlandt**, „First...". Կորտլանդտ, *1963*]։ *Բերենք հարաբերական ժամանակագրության մի օրինակ։ Հայտնի է, որ հայերենում տեղի են ունեցել՝ 1) հ.-ե. քմայնացած բաղաձայնների վերածում համապատասխան կիսաշփականների ու շփականների* (*g'h>ձ,-զ, *g'>ծ, *k'>ս՝ *g'hiiom>ձիւն, *dheig'h->դէզ, *g'en->ծին, *k'ērdi->սիրտ *և այլն) և 2) բաղաձայնների ընդհանուր տեղաշարժի հետ կապված՝ ձայնորդներից հետո խուլերի ձայնեղացում* (*mr̥-to-> մարդ, *penkue>հինգ *և այլն). արդ՝ ի՞նչ հաջորդականությամբ են կատարվել այս փոփոխությունները. այն հանգամանքը, որ հ.-ե.* *k'-*ն ձայնորդներից հետո ևս փոխվում է* ս-*ի* (*prk'->հարսն), *ցույց է տալիս, որ առաջին պրոցեսը նախորդել է երկրորդին, այլապես կունենայինք* *prk'->*pr̥g'->*հարծ(ն)։

*4.* Համաժամանակավորում (համաժամանակային տարաբաշխում). *մեր կողմից ներմուծվող այս պայմանական տերմինի տակ նկատի է առնվում զուգահեռ փաստերի տարածական (աշխարհագրական) և հասարակական-ոճական տարաբաշխումը կամ դասակարգումը։ Այս մեթոդը կարելի է կիրառել և՛ դրսևոր ավանդված, և՛ վերականգնված լեզվական երևույթների նկատմամբ։ Եթե մենք ունենք համանիշային և համանունային ձևեր (լայն առումով), ապա նկատի ունենալով, որ բացարձակ զուգահեռությունը, այսինքն՝ աշխարհագրական կամ հասարակական տարբերակման բացակայությունը հազվադեպ երևույթ է, այդ զուգաձևությունները կարելի է և պետք է բաշխել ըստ աշխարհագրական տարածքների (լեզվաաշխարհագրական տարաբաշխում), իսկ աշխարհագրական որոշակի տարածքների առանձնացման անհնարինության դեպքում՝ ըստ լեզվի հասարակական-ոճական տարբերակների։ Այդպիսի փորձեր կատարվում են հնդեվրոպական լեզվաբանության մեջ, որտեղ վերջին ժամանակներս մեծ ուշադրություն է դարձվում վերականգնվող զուգահեռ միավորների (համանիշ բառերի և մասնիկների) տարածական և մասամբ հասարակական տարաբաշխմանը. փորձ է արվում որոշել, թե եղած զուգահեռ բառերը, մասնիկները, հնչյունական ձևերը տարածականորեն ինչպե՞ս են բաշխվել, հասարակական ի՞նչ խմբերի կամ գործառական ի՞նչ ոճերի են պատկանել, և այս բոլորն այն դեպքում, երբ ապահովված է վերականգնման ճշգրտությունը։ Այս մեթոդի կիրառման վրա են հիմնված հնդեվրոպական տարածքային (արեալային) լեզվաբանությունը (հնդեվրոպական բարբառագիտությունը) և հնդեվրոպական հանրալեզվաբանությունն ու համեմատական ոճաբանությունը։ Հնդեվրոպական լեզվի վերականգնման փորձը ցույց է տալիս, որ չնայած եղած ջանքերին՝ հնարավոր չէ վերականգնել մեկ միասնական լեզու, և որ թե՛ հնչյունական, թե՛ քերականական, թե՛ բառային վերականգնումների դեպքում առկա են զուգահեռություններ. համաժամանակային տարաբաշխման մեթոդը հենց փորձում է ցույց տալ այդ զուգահեռ ձևերի հիմքերը։*

*Մինչև այժմ չի կատարվել հայոց լեզվի հին շրջանի լեզվական զուգահեռ ձևերի հետևողական տարաբաշխում, թեև կան հին շրջանի բարբառների առանձնացման և ոճական տարբերակների որոշման առանձին փորձեր։*

**5. Արտահարաբերում.** *մեր կողմից ներմուծվող այս տերմինի մեջ նըկատի է առնվում լեզվական և արտալեզվական փաստերի հարաբերակցումը։ Այս մեթոդին են վերաբերում բառերի լեզվահնէաբանական և ստուգաբանական վերլուծության հիման վրա նրանց հիմքում ընկած սկզբնական իմաստների ու իրողությունների պարզաբանումը, ժողովրդի պատմության տարբեր կողմերի, այսինքն՝ արտալեզվական փաստերի օգտագործմամբ բառերի սկզբնական իմաստների և այդ իմաստների փոփոխության օղակների որոշումը, լեզվի պատմության համար օգտագործվող տեքստերի խմբավորումը, դրանց բանասիրական քննությունը, դրանց լեզվական առանձնահատկությունների հավաստիության աստիճանի և բնույթի որոշումը։*

## 4. ՀԱՅՈՑ ԼԵԶՎԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ

*Լեզվի պատմության ուսումնասիրության առարկայի և մեթոդների քննությունը մասամբ ցույց տվեց, թե ի՛նչ կարգի աղբյուրներից է նա օգտվում։ Այստեղ կանգ առնենք դրանց վրա ավելի հանգամանորեն՝ մասնավորելով խոսքը հատկապես հայոց լեզվի պատմության նկատմամբ։*

*Հայոց լեզվի պատմության աղբյուրները մեծ չափով տարբերվում են նախագրային և գրային ժամանակաշրջանների դեպքում, ուստի և աղբյուրների ընդհանուր տեսության փոխարեն մենք կտանք այս ժամանակաշրջանների աղբյուրների տեսությունը առանձին-առանձին։*

*Հայոց լեզվի նախագրային ժամանակաշրջանի աղբյուրների մեջ առաջին հերթին պետք է նշել լեզվաբանական այլ գիտակարգերի տվյալները։ Այստեղ, բնականաբար, առաջին տեղը պատկանում է հնդեվրոպական համեմատական լեզվաբանությանը և, սրա հետ կապված, հայոց լեզվի համեմատական ուսումնասիրությանը, որոնք պարզում են հայոց լեզվի տեղը հնդեվրոպական լեզուների մեջ, նրա սկզբնական բառապաշարն ու կառուցվածքային առանձնահատկությունները։ Համեմատական լեզվաբանության տվյալները հայոց լեզվի սկզբնական տարբերակների վերաբերյալ կարող են լրացվել հայ բարբառագիտության և գրաբարի ուսումնասիրության տվյալներով. հայ բարբառների արխաիկ գծերի վերհանումը և գրաբարի կառուցվածքի ներքին վերականգնումները հնարավորություն են տալիս զգալի նյութ ստանալու ավելի վաղ շրջանների վերաբերյալ։*

*Հայոց լեզվի նախագրային ժամանակաշրջանի պատմության համար երկրորդ հերթին աղբյուր են ծառայում հարակից գիտությունների և գիտակարգերի, հատկապես հայ ժողովրդի պատմության, հնագիտության, արձանագրագիտության ու դրամագիտության, ազգագրության ու ժողովրդական բանահյուսության տվյալները։ Հայ ժողովրդի պատմությունն ընձեռում է հայոց լեզվի պատմության արտաքին փաստերը։ Հնագիտությունը տալիս է նյութական մշակույթի այն իրողությունները, որոնք պարզում և ճշտում են բառերի ու բառիմաստների վերականգնման, բառիմաստների ստուգաբանական ու լեզվահնէաբանական վերլուծության տվյալները։ Երկուսը միասին իրենց ժամանակագրական տվյալներով օգնում են լեզվական ժամանակագրության հարցերի լուծմանը։ Ազգագրությունն օգնում է շատ բառերի ու դարձվածքների սկզբնական բնույթի և արտալեզվական հարաբերություն-*

ների մեկնաբանությանը։ Պատմական աշխարհագրությունը և մասամբ ազգագրությունը օգնում են հատկապես հատուկ անունների երկու հիմնական խմբերի՝ տեղանունների և անձնանունների լեզվաբանական իմաստավորմանն ու արժեքավորմանը։ Ժողովրդական բանահյուսությունը նշանակալից նյութ է տալիս հայոց լեզվի պատմությանը. ժողովրդական ավանդավեպերը, առասպելները, վիպերգությունները, զրույցները, երգերը, գալով դարերի խորքից, անցնելով սերնդից սերունդ, պահպանում են լեզվական արխաիկ ձևեր, արտահայտության եղանակներ և բառային գործածություններ, որոնց ուսումնասիրությունը կարող է մեծապես օգնել լեզվական հին վիճակների վերականգնմանը։ Պատահական չէ, որ իր «Հայոց լեզվի պատմության» 2-րդ մասում Հ. Աճառյանը դիմում է մեր մատենագիրների ավանդած վիպական հատվածներին՝ բառապաշարի բնիկ և փոխառյալ տարրերի հին փոխհարաբերությունը պարզելու նպատակով։

Հայոց լեզվի նախագրային շրջանի պատմության երրորդ աղբյուրը հայոց լեզվի հետ շփված, նրան փոխառություններ տված և նրանից փոխառություններ կատարած լեզուների տվյալներն են։ Եթե հայոց լեզվի կատարած փոխառությունները, շերտ-առ-շերտ գումարվելով բնիկ բառապաշարի վրա և երբեմն դուրս մղելով նրա առանձին տարրերը, կազմում են հայոց լեզվի նախագրային շրջանի պատմության անհրաժեշտ բաղկացուցիչ մասը, ապա հայերենից շրջակա լեզուների կատարած հին փոխառությունները հնարավորություն են տալիս պարզելու նրա կառուցվածքային առանձնահատկությունները։ Այս տեսակետից հատուկ արժեք ունեն կովկասյան լեզուների՝ հայերենից կատարած վաղ փոխառությունները. այդ լեզուները, ունենալով բաղաձայնական հարուստ համակարգեր, ընդհանուր առմամբ ճիշտ են տալիս հայերենի հնչյունական առանձնահատկությունները, մի բան, որ չի կարելի ասել իրանական լեզուների, ասորերենի, հունարենի մասին։

Վերջապես, հայոց լեզվի նախագրային շրջանի պատմության չորրորդ աղբյուրը հայ ժողովրդի և հայերենի վերաբերյալ հնագույն մատենագրական տվյալներն են, այն ժողովուրդների տվյալները, որոնք գիր ու գրականություն են ունեցել մինչև V դարը և շփվել են հայերի հետ։ Դրանց մեջ պետք է հիշել ինչպես հին սեպագիր արձանագրությունները (ակկադական, ուրարտական, հին պարսկական և այլն), այնպես էլ հունական, հռոմեական, ասորական, իրանական մատենագրական աղբյուրները։ Ցավոք սրտի, այս աղբյուրներում շատ քիչ են հայերեն առանձին բառերի նշումները (գլոսաները), բայց առատ են հատուկ անունների բազմաթիվ տառադարձումներ։

Հայոց լեզվի գրավոր շրջանի պատմության հիմնական աղբյուրները, բնականաբար, հայ մատենագրության նմուշներն են՝ սկսած V դարից և վերջացրած մեր ժամանակներով։ Սակայն հարկավոր է նկատի առնել, որ դրանց ընձեռած նյութը հավասարարժեք չէ։ Այսպես, օրինակ, հին շրջանի մատենագրության մեջ համեմատաբար քիչ են խոսակցական լեզվի նմուշները, ժողովրդական բանահյուսության նմուշները մեզ հասել են միայն փշրանքների ձևով։ Հայ մատենագրության տվյալների օգտագործումը մի շարք դեպքերում պահանջում է նախնական բանասիրական-տեքստաբանական մանրակրկիտ աշխատանք, ձեռագրերի խմբավորում, բնօրինակային և եկամուտ տարրերի տարբերակում, հեղինակների և նրանց լեզվա-

*կան առանձնահատկությունների հստակ տեղայնացում։ Այս դեպքում լեզվաբանական աշխատանքը հենվում է բանասիրական աշխատանքի վրա և հաճախ միահյուսվում նրա հետ։*

*Հայոց լեզվի պատմության գրավոր շրջանի ուսումնասիրության համար մեծ նյութ են տալիս և, ինչպես նշել ենք, որոշ առումով մտնում լեզվի պատմության գիտակարգի մեջ պատմական քերականությունը, պատմական բարբառագիտությունը և պատմական ոճաբանությունը։ Իրենց նշանակությունը շարունակում են զգալի չափով պահպանել նախագրային ժամանակաշրջանի աղբյուրների քննության մեջ թվարկված հարակից գիտությունների տվյալները, որոնց միանում են հայ գրականության պատմության նյութերը։ Եթե բառապաշարի պատմության ուսումնասիրության համար շարունակում է առաջնակարգ նշանակություն ունենալ շրջակա լեզուների ուսումնասիրությունը, ապա այլ լեզուների՝ հայերենից կատարած փոխառությունները և Հայաստանի ու հայերենի վերաբերյալ ուրիշների տված մատենագրական տվյալները դադարում են առաջնային արժեք ունենալուց՝ կատարելով լոկ օժանդակ դեր։*

*Ընդհանուր առմամբ հարկավոր է շեշտել, որ ամենից ավելի արդյունավետ է լեզվի պատմության ուսումնասիրության բոլոր մեթոդների և աղբյուրագիտական բոլոր տվյալների համադրությունը։*

## 5. ԼԵԶՎԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՇՐՋԱՆԱԲԱԺԱՆՄԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԸ ԵՎ ՀԱՅՈՑ ԼԵԶՎԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՇՐՋԱՆԱԲԱԺԱՆՈՒՄԸ

*Անժխտելի է, որ լեզվի փոփոխության պրոցեսը տեղի է ունենում այնպես, որ ապահովվի սերունդների հաղորդակցումը։ Սակայն այս դրույթից չի կարելի անել այն եզրակացությունը, թե լեզվի փոփոխությունը լիովին հավասարաչափ հարաշրջություն է (էվոլյուցիոնավորում)՝ առանց արագացումների և դանդաղացումների, առանց էական տեղաշարժերի, առանց որոշակի անցումների։ Այդպիսի վիճակ թերևս կարելի է ենթադրել մի այնպիսի լեզվի համար, որ գոյություն ունի բացարձակորեն մեկուսացած փոքրաթիվ հանրության մեջ՝ վերջինիս համեմատական միօրինակության պայմաններում։ Իրականում լեզուները գործում են հասարակայնորեն և տարածականորեն տարբերակված հանրություններում, որոնք անընդհատ շփման մեջ են գտնվում այլ հանրությունների հետ։ Ենթակա լինելով ժողովրդի պատմական ճակատագրի ազդեցությանը՝ սրան հատուկ տնտեսական, քաղաքական, մշակութային ու գաղափարական տեղաշարժերով ու շփումներով, ամեն մի լեզու ենթարկվում է տարածական ու հասարակական տարբերակների համապատասխան տեղաշարժերի։ Այդ պայմաններում լեզվի պատմական պրոցեսը հեռու է հավասարաչափ ու աննկատ փոփոխությունների շարք լինելուց։ Այդ բանը հստակորեն երևում է հատկապես այն դեպքում, երբ մենք, առաջնորդվելով լեզվի պատմության գիտակարգի՝ լեզվի բոլոր տարբերակների պատմություն լինելու՝ մեր դավանած սկզբունքով, ուշադրությունը չենք կենտրոնացնում միայն մեկ, հատկապես ստանդարտ կամ գրական տարբերակի, մի առանձին բարբառի վրա, այլ հաշվի ենք*

առնում ու քննում լեզվի հասարակական ու տարածական բոլոր տարբերակների ամբողջությունը։ Այդ դեպքում շատ լավ երևում է, որ ժողովրդի պատմության մեջ տեղի ունեցող հեղաշրջումները չեն կարող չազդել լեզվի վրա, նրա մեջ առաջ չբերել նշանակալից փոփոխություններ, հիմք չտալ նորմաների փոփոխության և նույնիսկ նորմաների մի համակարգը մի ուրիշ, նախորդից զգալի չափով տարբերվող համակարգով փոխարինելու համար։ Այդ բանը հատկապես ցայտուն է դառնում գրի և գրականության գոյության շրջանում, երբ լեզվի փոփոխությունները վերջիվերջո հանգեցնում են գրական լեզվի նորմաների խախտման և նոր նորմաների հաստատման, հիմք տալիս նույնիսկ նոր՝ խոսակցական լեզվի առանձնահատկություններին ավելի համապատասխանող, գրական լեզվի հանդես գալու համար։

Որ տնտեսական, քաղաքական, գաղափարական տեղաշարժերը մեծապես ազդում են լեզվի վրա, առաջ բերում նրա մեջ նշանակալից փոփոխություններ, հիմք տալիս նորագոյացումների համար, առավելություն տալիս լեզվի մեջ գոյություն ունեցող տարբերակներից մեկին կամ մյուսին, դժվար չէ պարզել լեզուների պատմությունից։ Ժողովրդի անցումը նստակյաց կյանքի և կայուն երկրագործության՝ ընտանեկան կյանքի և գաղափարախոսության համապատասխան փոփոխություններով հանդերձ, հիմք է տալիս լեզվական համապատասխան փոփոխությունների, հատկապես տերմինային մեծաքանակ նորագոյացումների համար։ Քաղաքական տեղաշարժը, քաղաքական իշխանության փոփոխությունը կարող է հանգեցնել լեզվական իշխող նորմաների փոփոխության, մի ստանդարտ լեզվի՝ մի այլ ստանդարտ լեզվով փոխարինելուն, ստանդարտ լեզվի բարբառային հիմքի փոփոխության։ Նոր կրոնի հանդես գալը կարող է հանգեցնել լեզվական մեծաքանակ փոփոխությունների, բարբառներից մեկի գերակշռության ու ստանդարտացման, լեզվական ավելի կայուն նորմաների հաստատման, նոր գաղափարների արտահայտման լեզվական նոր միջոցների, նոր տերմինների և այլն։

Վերևում շարադրվածից դժվար չէ համոզվել, որ լեզվական անցումները երբեմն տեղի են ունենում բավականաչափ նկատելի կերպով։ Այս հանգամանքն էլ անհրաժեշտ է դարձնում լեզվի պատմության շարադրանքի մեջ հենվել շրջանաբաժանման որոշակի սխեմայի վրա, լեզվի պատմությունը շարադրել ըստ որոշակի շրջանների ու ենթաշրջանների, փուլերի ու ենթափուլերի։

Լեզվի պատմության պրոցեսի քննության մեջ մենք ելնում ենք չորս հիմնական սկզբունքից, որոնք մասամբ արտացոլվեցին վերևում։

1) Լրիվության կամ լիակատար ընդգրկման սկզբունք. ըստ այս սկզբունքի՝ լեզվի պատմությունը պետք է ընդգրկի լեզվի բոլոր տարատեսակների պատմությունը՝ առանց վերածվելու միայն գրական լեզվի կամ գրական լեզուների պատմության. վերջին դեպքում ավելի քիչ է երևում պատմական պրոցեսի բարդությունը. չէ՞ որ գրական լեզվի պատմությունը նորմավորման և նորմաների ժառանգորդականությունը պահպանելու պատմություն է։

2) Լեզվի պատմության դիալեկտիկայի հետևողական բացահայտման սկզբունք. ըստ այս սկզբունքի, որ սերտորեն կապվում է նախորդի հետ, լեզվական երևույթների պատմական քննության մեջ պետք է խուսափել ինչպես գռեհիկ էվոլյուցիոնիզմից, որ լեզվի պատմությունը պատկերացնում է որպես աննկատ քանակական փոփոխությունների պրոցես, հաշվի չի առնում

հարկ եղած չափով որակական անցումները, այնպես էլ մուտացիոնիզմից, որ անհրաժեշտ չափով չի հետևում որակական անցումների քանակական հիմքերի բացահայտմանը, լեզվի փոփոխությունները պատկերացնելով որպես հանկարծակի անցումների կամ «պայթյունների» մի շարք։

3) Լեզվի պատմության՝ ժողովրդի պատմության հետ սերտորեն կապված լինելու սկզբունք. ըստ այս սկզբունքի՝ լեզուն որպես հասարակության հաղորդակցման միջոց գոյություն ունի հասարակության մեջ և հասարակության միջոցով, հետևաբար այն ենթակա է ժողովրդի զարգացման օրինաչափությունների ազդեցությանը։ Սակայն այդ ազդեցությունը տեղի է ունենում լեզվի ոչ բոլոր օղակներում հավասարաչափորեն և ոչ բոլոր դեպքերում անմիջականորեն ու ուղղագիծ կերպով։ Այլ կերպ ասած՝ պետք է խուսափել լեզվի և ժողովրդի պատմության կապի ինչպես գռեհիկ սոցիոլոգիական մեկնաբանությունից, այնպես էլ լեզվական պրոցեսի ինքնակայության (իմանենտության) սկզբունքից։

4) Լեզվական փաստերի առաջնայնության սկզբունք. ըստ այս սկզբունքի՝ որքան էլ որ կարևոր լինեն արտալեզվական փաստերը լեզվական փաստերը հասկանալու համար, որքան էլ որ լեզվի գոյությունը պայմանավորված լինի հասարակության գոյությամբ, որքան էլ որ լեզվի պատմությունը սերտորեն կապված լինի ժողովրդի պատմության հետ, այնուամենայնիվ լեզվի պատմությունը պետք է լինի առաջին հերթին լեզվական փաստերի պատմություն, իր եղրակացությունների մեջ հենվի դրանց վրա և միայն դրանց միջոցով գնա դեպի ոչ լեզվական փաստերը։ Սա նշանակում է, որ լեզվի շրջանաբաժանումը չի կարող լինել ժողովրդի պատմության շրջանաբաժանման ընդօրինակումը, որ լեզուն ունի զարգացման իր սպեցիֆիկան, պատմական իր առանձնահատկությունները, իր ուրույն խնդիրները, որոնք հենց պետք է լինեն ուշադրության կենտրոնում։ Մնացած բոլոր փաստերը պետք է հաշվի առնվեն ըստ այն բանի, թե դրանք ինչպե՛ս և ի՛նչ չափով են արտահայտվում լեզվական փաստերի մեջ, ինչպե՛ս են համապատասխանություն գտնում այդ փաստերին, ինչքանո՛վ են նպաստում այդ փաստերի պարզաբանմանը։

Լեզվի պատմության նկատմամբ ցուցաբերած ընդհանուր մոտեցումն էլ որոշում է շրջանաբաժանման կոնկրետ սկզբունքները, որոնք հանգում են հետևյալին։

1) Բնականաբար, ենթադրվում է, որ առանձնացվող շրջանների ու ենթաշրջանների քանակը պայմանավորվում է ընդգրկվող ժամանակի երկարատևությամբ։ Սակայն այս սկզբունքը խախտվում է լեզվից լեզու ըստ նրանց զարգացման առանձնահատկությունների, պահպանված տվյալների և հետազոտողների մոտեցման, այսինքն՝ ըստ որոշակի օբյեկտիվ և սուբյեկտիվ հիմքերի։ Այսպես, պարսկերեն լեզվի գրավոր զարգացման մոտ 26 դարի, հայերենի գրավոր զարգացման մոտ 16 դարի և գերմաներենի զարգացման մոտ 12 դարի համար տարբերում են միևնույն հին, միջին և նոր շրջանները, ընդ որում տարբեր են դրանցից յուրաքանչյուրի ժամանակագրական ընդգրկման սահմանները։ Հասկանալի է, որ այս դեպքերում տարբեր են մոտեցումները, բայց չի կարելի հաշվի չառնել նաև օբյեկտիվ կողմերը՝ լեզուների փոփոխության տեմպերի տարբերությունը և գրավոր հուշարձանների բնույթը։ Կարելի է ասել, որ տարբեր են ոչ միայն տարբեր

լեզուների, այլև միևնույն լեզվի տարբեր շրջանների փոփոխության տեմպերը։ Այսուհանդերձ մենք ստիպված ենք որոշ չափով խախտել այս սկզբունքը նախագրային շրջանի փուլերի առանձնացման համար՝ ըստ լեզվաժամանակագրության մոտավորապես որոշելով ցեղակից լեզուներից հայոց լեզվի առանձնացման ժամանակը և ըստ ետադարձ հաշվարկման՝ նախագրային շրջանի փուլերի ժամանակագրական սահմանները։ Սակայն այս դեպքերում էլ ժամանակագրական սահմանները կարող են և պետք է ճշգրտվեն ըստ ժողովրդի պատմության, հարևան լեզուների և այլ ժողովուրդների մատենագրական վկայությունների տվյալների։

2) Լեզվի շրջաններն առանձնացնելիս պետք է հաշվի առնել առաջին հերթին հենց լեզվական տվյալները, այսինքն՝ լեզվական նորմաների այնպիսի էական փոփոխությունները, որոնք ընդգրկում են լեզվի բոլոր կողմերն ու մակարդակները։ Գրավոր շրջանում սա հաճախ նշանավորվում է ստանդարտ լեզվի այնպիսի փոփոխությամբ, որ հիմք է տալիս խոսելու նոր գրական լեզվի մասին։ Փոփոխության ժամանակակիցները սովորաբար ավելի ու ավելի են նկատում հին գրական լեզվի՝ խոսակցականից ունեցած տարբերությունները, անհասկանալի կամ դժվար հասկանալի դառնալը և հանդես են գալիս խոսակցական լեզվին ավելի մոտ գրական լեզվի հաստատման պահանջով։ Այսպիսի անցումները սովորաբար ունենում են արտալեզվական հիմքեր՝ նորմաների փոփոխության տնտեսական, քաղաքական ու գաղափարական անհրաժեշտություն, գրական լեզվի բարբառային հիմքի փոփոխության պահանջ՝ ըստ այս կամ այն բարբառով խոսողների ձեռք բերած ավելի մեծ ազդեցության։ Այսպիսով, ստանդարտ (գրական) լեզվի աչքի ընկնող փոփոխությունները սովորաբար ենթադրում են արտալեզվական փոփոխություններ և, ընդհակառակն, արտալեզվական աչքի ընկնող փոփոխություններն ազդում են և չեն կարող չազդել ստանդարտ (գրական) լեզվի նորմաների փոփոխության վրա։ Այս առումով, նկատի ունենալով լեզվի գրավոր և ոչ գրավոր լեզվավիճակների առանձնահատկությունները, գրի ու գրականության՝ լեզվի նորմավորման մեջ խաղացած դերը. կարելի է լեզվի պատմությունն ամենից առաջ բաժանել նախագրային («նախապատմական») և գրային («պատմական») ժամանակաշրջանների։

3) Քանի որ լեզվի զարգացման շրջանների անցումները շոշափում են լեզվի բոլոր կողմերը, ուստի և սրան համապատասխան լեզվի շրջանաբաժանումը պետք է լինի բազմահատկանիշ, այսինքն՝ հենվի լեզվի կառուցվածքի և բառապաշարի փոփոխության բոլոր հիմնական կողմերի հաշվառման վրա։ Միահատկանիշ դասակարգումները կարող են ծառայել գերազանցապես որպես գործնական ուղեցույցներ. տեսականորեն դրանք էական արժեք են ստանում, եթե արդյունք են լեզվի փոփոխության բոլոր կողմերի բարձր ընդհանրացման՝ էական փոփոխությունների բնույթի հաշվառումով։ Բազմահատկանիշ դասակարգման սկզբունքը հետևողականորեն անցկացնելով գրային ժամանակաշրջանի համար՝ նախագրայինի դեպքում մենք սահմանափակված ենք փաստերի ընձեռած հնարավորություններով։ Այս դեպքում, օրինակ, հայոց լեզվի պատմության մեջ առաջին պլանն է մղվում բառապաշարի փոփոխությունների քննությունը, իսկ կառուցվածքի փաստերը տրվում են ըստ հայտնիության աստիճանի. երբեմն ստիպված ենք բավարարվել լոկ մի քանի հատկանիշի մատնանշմամբ։

*4) Լեզվի պատմության շրջաններն առանձնացվելով առաջին հերթին ըստ ստանդարտ (գրական) լեզվի նորմաների էական փոփոխության՝ նորմաների մի համակարգի փոխարինմամբ մի այլ համակարգով՝ այդ փոփոխության բնույթը հասկանալի դարձնելու համար հարկավոր է ուշադրություն դարձնել լեզվի նաև այլ տարբերակների, խոսակցական լեզվի առանձնահատկությունների ու բարբառների վրա, այլև հաշվի առնել լեզվի, այդ թվում՝ հենց ստանդարտ լեզվի, հասարակական տարբերակների բնույթը, այսինքն՝ ընդգրկել տվյալ լեզվի գործառության բոլոր բնագավառները։ Այս դեպքում շրջանաբաժանումը կարտահայտի ոչ միայն որակական անցումները, այլև այդ անցումների հիմքերը։*

*5) Սրա հետ կապված և լեզվի զարգացման ժառանգորդականությունը ցույց տալու նպատակով առանձնացված շրջանների մեջ տարբերվում են ենթաշրջաններ՝ ըստ լեզվական նորմաների մասնակի փոփոխությունների, ըստ լեզվի գործառական շրջանակների փոփոխությունների ու անցումների, ըստ լեզվի տարբերակների բնույթի ու հարաբերակցության փոփոխությունների։*

*6) Լեզվի շրջանաբաժանումը արտացոլում է գտնում տերմինների որոշակի համակարգի մեջ։ Ներմուծվող տերմինները ըստ հնարավորին պետք է ճիշտ արտահայտեն զարգացման շրջանների ժամանակագրական հաջորդականությունն ու փոխհարաբերությունը և միասնական լինեն։ Այս առումով բավական նպատակահարմար են «հին շրջան», «միջին շրջան» և «նոր շրջան», սրանց ներքին բաժանումների համար էլ՝ «սկզբնային կամ վաղ փուլ» և «ուշ կամ ետին փուլ» տերմինները։ Սակայն այս տերմինների կողքին հաճախ գործում են ավանդույթներով հարուստ ամեն մի լեզվի մեջ ավանդական անվանումներ, որոնք պետք է ճշգրտվեն ըստ ընդհանուր տերմինների և գործածվեն դրանց համապատասխան. հմմտ. հնդկերենի համար «սանսկրիտ», «պալի», «պրակրիտներ», հայերենի համար՝ «գրաբար», «աշխարհաբար» և այլն։ Ընդհակառակն, լեզվի զարգացման պրոցեսը լավ չարտացոլող, պատահական անվանումները (հմմտ. հայերենի համար, օրինակ, «նախնյաց ռամկորեն» անվանումը) պետք է զանց առնվեն։*

*Տարբերելով հայոց լեզվի պատմության նախագրային ու գրային ժամանակաշրջաններ, նախագրայինի նկատմամբ կիրառելով լեզվաժամանակագրության ու ետադարձ հաշվարկման մեթոդները և ստացված արդյունքները համապատասխանության մեջ դնելով արտաքին փաստերի հետ (հայ ժողովրդի պատմության, հարևան լեզուների և օտար մատենագիրների տվյալներ)՝ մեր «Հայոց լեզվի նախագրային շրջանի պատմության ակնարկներում» [*Джаукян, 1967, 330—332*] փորձել ենք տալ նախագրային ժամանակաշրջանի շրջանաբաժանման ընդհանուր պատկերը։ Այստեղ առանձնացված շրջանները ժամանակագրորեն ավելի մեծ ընդգրկում ունեն, քան գրավոր ժամանակաշրջանի համար առանձնացված շրջանները։ Սա բացատրվում է մասամբ օբյեկտիվ պատճառներով՝ փոփոխությունների քանակի և արագության (տեմպերի) տարբերություններով, մասամբ էլ մեր ունեցած տվյալների սակավաթվությամբ ու հատվածայնությամբ։ Այս դեպքում մենք ճշտորեն կարող ենք նշել ժամանակաշրջանի վերջը և հարաբերական ճշգրտությամբ՝ սկիզբը (հայոց լեզվի անկախ գոյության սկիզբը), բայց ոչ միջինո-*

ղակները։ Ինչքանով կարելի է որոշել հնդեվրոպական հին գրավոր լեզուների՝ խեթերենի, հին հունարենի, հին հնդկերենի տվյալների ու լեզվաժամանակագրական հաշվումների հիման վրա, հայոց լեզվի առանձնակի (անկախ) զարգացումն սկսվում է մ. թ. ա. III հազարամյակի սկզբներից։ Գրավոր ժամանակաշրջանի սկզբից՝ V դարից ետ գնալով մոտավորապես այնքան, ինչքան հայոց լեզուն անցել է մինչև մեր օրերը, կստանանք ժամանակագրական մի այլ սահման՝ մ. թ. ա. XII դարը, որ նշանակալից է նաև արտաքին փաստերի առումով։ Ըստ այս տվյալների և հաշվի առնելով մեր հիշյալ գրքում ստացված արդյունքները, մենք կարող ենք տալ շրջանաբաժանման որոշ ընդունելի սխեմա։ Մասնակի դժվարություն է հարուցում հայերենի ինքնուրույն գոյության առաջին շրջանի ռուսերեն протоармянский անվանման հայերեն համարժեքի հարցը։ Առաջին հայացքից կարող է թվալ, թե այն հարմար է արտահայտել «նախահայերեն» բառով, և վերջինս հենց այդ իմաստով էլ գործածված է Հ. Աճառյանի կողմից. «Լեզվական այն վիճակը,—գրում է նա,—որ ներկայացնում էր հայերենը հնդեվրոպական նախահայրենիքից հեռանալու միջոցին, կոչվում է նախահայերեն» [Աճառյան, ՀԼՊ, I, 1940, 105]։ Սակայն Հ. Աճառյանը փաստորեն նկատի ունի ոչ թե մի ամբողջ շրջան, այլ հնդեվրոպական միասնությունից առանձնանալու պահին հայերենի ունեցած վիճակը, որ փաստորեն համընկնում է հնդեվրոպական միասնության վերջում նրա ունեցած բարբառային առանձնահատկությունների ամբողջության հետ։ Նկատի ունենալով, որ գոյություն ունեցող «նախալեզու» և «նախահայրենիք» տերմինների մեջ հայերեն նախա-ն համապատասխանում է ռուսերեն ոչ թե прото-ին, այլ пра-ին («праязык», «прародина»), մենք գերադասում ենք նախահայերեն բառը օգտագործել հնդեվրոպական միասնության շրջանում հայերենի բարբառային վիճակը բնութագրելու համար[1], իսկ протоармянский տերմինի դիմաց օգտագործել վաղնջահայերեն տերմինը։ Այս դեպքում հայոց լեզվի ինքնուրույն գոյության նախագրային շրջանի համար կարելի է տարբերել երկու հիմնական շրջան՝ համապատասխան ենթաշրջանների առանձնացմամբ.

1. Վաղնջական շրջան (վաղնջահայերեն)՝ մ. թ. ա. III հազարամյակի սկզբներից մինչև մ. թ. ա. XIII դարը. այս շրջանի մեջ պայմանականորեն, առանց հետագա հանգամանալից բնութագրման, կարելի է առանձնացնել երկու ենթաշրջան՝

ա) սկզբնային վաղնջական՝ մ. թ. ա. III հազարամյակ.

բ) ուշ վաղնջական՝ մ. թ. ա. II հազարամյակի սկզբներից մինչև մ. թ. ա. XIII դարը։

2. Հնագույն շրջան (հնագույն հայերեն)՝ մ. թ. ա. XII դարից մինչև մ. թ. ա. IV դարը. այս շրջանում ավելի որոշակիորեն կարելի է տարբերել երկու ենթաշրջան՝

ա) վաղ հնագույն՝ մ. թ. ա. XII դարից մինչև մ. թ. ա. IV դարը.

բ) ուշ հնագույն՝ մ. թ. ա. III դարից մինչև մ. թ. IV դարը։

Անցնելով գրավոր ժամանակաշրջանի շրջանաբաժանմանը՝ մենք ուզում ենք նշել բուն լեզվակառուցվածքային առումով հայոց լեզվի զարգացման

---

[1] Մոտավորապես «նախորդող» իմաստով. հմմտ. «նախահայր», «նախամայր» և այլն, այլև գրավոր շրջանի համար՝ «նախամիջին» ենթաշրջանը։

հին շրջանը V դարից սկսելու որոշ պայմանականությունը։ Եթե ճիշտ է Հ. Հյուբշմանը, որ նախաշեշտ վանկերում ի, ու ձայնավորների թուլացումն ու սղումը ե և է (=եյ), եա, եայ, ոյ երկբարբառների ու եռաբարբառների փոփոխությունը վերագրում է մինչև III դ. սկիզբն ընկած շրջանին [Hübschmann, 1898, 132], ապա գրաբարի կառուցվածքային համակարգը իր հիմնական գծերով ձևավորվել է V դարից ավելի վաղ՝ III դարից։ Քանի որ մեր նախորդ աշխատություններում հանգամանորեն քննված են հայոց լեզվի գրավոր ժամանակաշրջանի շրջանաբաժանման հետ կապված հարցերը՝ մենք այստեղ կբավարարվենք այդ շրջանաբաժանման սխեման բերելով։ Առանձնացվող շրջանների և ենթաշրջանների բնութագիրը կտրվի համապատասխան հատվածներում.

1. Հին շրջան (հին հայերեն)՝ V—XI դդ. այս շրջանի գրական լեզուն հայտնի է գրաբար անունով. ձևավորվելով Տուրուբերանի (Տարոնի աշխարհի) և Բարձր Հայքի ու Այրարատի՝ Տուրուբերանին հարող շրջանների խոսվածքների հիման վրա՝ գրաբարը մասամբ իր զարգացման առանձնահատկությունների, մասամբ էլ խոսակցական լեզվի բնականոն փոփոխության հետևանքով շրջանի վերջում պգալիորեն տարբերվել է խոսակցական լեզվից։ Հին շրջանի համար նպատակահարմար է առանձնացնել երեք ենթաշրջան.

ա) վաղ հին կամ դասական գրաբարի՝ V դարը.

բ) ուշ հին կամ հետ-դասական գրաբարի՝ VI—VII դդ.

գ) նախամիջին՝ VIII—XI դդ.։

2. Միջին շրջան՝ XII—XVI դդ. այս շրջանում հանդես է գալիս միջին գրական հայերենը՝ խոսակցական լեզվի հիման վրա, բայց նրա կողքին գործառական որոշ տարբերակմամբ որպես գրական լեզու գործում է նաև գրաբարը. միջին շրջանի համար կարելի է առանձնացնել երկու ենթաշրջան.

ա) վաղ միջին կամ կիլիկյան նորմավորման՝ XII—XIV դդ.

բ) ուշ միջին կամ աշխարհաբարացման՝ XV—XVI դդ.

3. Նոր կամ աշխարհաբարի շրջան՝ XVII—XX դդ. այս շրջանում հանդես է գալիս Նոր գրական հայերենը կամ գրական աշխարհաբարը՝ խոսակցական լեզվի հիման վրա, բայց նրա կողքին առաջին ենթաշրջանում դեռևս գործում է գրաբարը։ Նոր շրջանի համար կարելի է տարբերել երեք ենթաշրջան.

ա) վաղ աշխարհաբարի՝ XVII դ. սկզբներից մինչև XIX դ. կեսը.

բ) ուշ կամ երկճյուղ աշխարհաբարի՝ XIX դ. կեսից մինչև 1920 թ.

գ) ժամանակակից՝ 1920 թ. մինչև մեր օրերը։

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*Ինչպես նշվել է ներածության մեջ, մոտավորապես մ.թ.ա. III հազարամյակի սկզբներին հայերենն առանձնանում է հնդեվրոպական ընդհանրությունից և սկսում իր գոյությունը որպես անկախ լեզու։ Հայոց լեզվի պատմությունը բառիս բուն իմաստով սկսվում է հենց այս շրջանից՝ ընդգրկելով շուրջ հինգ հազարամյակ։ Մինչ այդ կարելի է խոսել հայերենի մասին որպես հնդեվրոպական ընդհանրության, այսինքն՝ հնդեվրոպական լեզվի (նախալեզվի) բարբառներից մեկի մասին։ Սա հայերենի նախապատմության շրջանն է՝ նախահայերենի շրջանը, որ ամբողջովին կապված է հնդեվրոպական լեզվի պատմության հետ։ Շարադրել հայոց լեզվի նախապատմությունը՝ նշանակում է շարադրել որպես հնդեվրոպական բարբառ նրա ձևավորման պատմությունը և նկարագրել այն որպես բարբառ՝ հնդեվրոպական այլ բարբառների հետ ունեցած նրա հարաբերության մեջ։ Քանի որ հայերենի՝ ձևավորված բարբառ լինելու մասին կարելի է խոսել՝ նկատի ունենալով հնդեվրոպական լեզվի զարգացման վիճակը հայերենի անջատման անմիջական նախօրյակին, ուստի մեր ուշադրության կենտրոնում կլինեն հենց այդ ժամանակ հայերենի ունեցած հնչյունական, քերականական և բառային առանձնահատկությունները։ Բառային առանձնահատկությունների քննությունն էլ հնարավորություն կտա պարզելու նրա ունեցած գաղափարների շրջանակը և սրանց հիման վրա գծելու հայ ժողովրդի ինքնուրույն զարգացման շրջանի սկզբին նրա ունեցած տնտեսական, քաղաքական և ընտանեկան վիճակը, նրա մշակույթի առանձնահատկությունները, կրոնական, արվեստային և այլ ըմբռնումները, այսինքն՝ նրա կյանքը, այն բոլորը, ինչով ապրում է ժողովուրդը։*

*Ինչպես ամեն մի բարբառ, այնպես էլ հայերենը հնդեվրոպական լեզվի այլ բարբառների հետ առաջին հերթին պետք է ունենար կառուցվածքային և բառային այնքան ու այնպիսի ընդհանրություններ, որոնք իրավունք են տալիս խոսելու նրա՝ հնդեվրոպական մեկ լեզվի բարբառ լինելու մասին։ Հնդեվրոպական լեզվի տարբեր բարբառներով խոսողները կարող էին անհրաժեշտության դեպքում հաղորդակցվել, իրար հետ խոսել և իրար հասկանալ։ Ինչպես ամեն մի լեզվի բարբառների դեպքում, այստեղ ևս պետք է գոյություն ունենային բոլոր բարբառներին, բարբառների մի մասին կամ միայն երկու բարբառի հատուկ երևույթներ, որոնք, ինչպես կտեսնենք, բացահայտվում են համեմատական լեզվաբանության և, հատկապես, նրա մի ճյուղը կազմող հնդեվրոպական տարածքային (արեալային) լեզվաբանության կամ հնդեվրոպական բարբառագիտության կողմից։ Ընդունված է երկու կամ ավելի բարբառների ընդհանուր հատկանիշները, որոնք քարտեզի վրա նշանակվելու դեպքում կազմում են տարբեր սահմաններ ու ձևեր ունեցող գծեր, կոչել զուգաբանություններ (իզոգլոսներ)։ Երբեմն նեղ իմաստով*

զուգաբանություններ են կոչում միայն երկու բարբառի պատկանող հատկանիշները, բայց ավելի ճիշտ է սրանց համար գործածել «բացառյալ (էքսկլուզիվ) զուգաբանություններ» տերմինը՝ «զուգաբանություններ» բառը գործածելով ընդհանուր իմաստով։

Ըստ հնչյունական, քերականական և բառային զուգաբանությունների աշխարհագրական տարածման բնույթի առանձնացվում են համապատասխան տարածքներ (արեալներ)[1], այստեղից էլ բխում է դրանք ուսումնասիրող գիտակարգի «տարածքային (արեալային) լեզվաբանություն» անվանումը։ Տարածքները տարբերվում են ըստ ընդգրկման, տեղադրության, ձևի և լինում են մեծ ու փոքր (երբեմն էլ, ըստ տարբերակվածության աստիճանի, նաև միջին), կենտրոնական ու եզրային, մեկուսացած ու չմեկուսացած և այլն, ընդ որում դրանց հիման վրա փորձ է արվում տարբերակելու լեզվական արխաիզմներն ու նորագոյացումները, որոշելու լեզվական երևույթների ժամանակագրական փուլերն ու հաջորդականությունը։

Հայոց լեզվի նախապատմությանը՝ նրա բարբառային ղարգացման շրջանին նվիրված այս մասը մեր կողմից բաժանված է երկու հատվածի։ Առաջին հատվածում քննված են հնդեվրոպական լեզվի և հնդեվրոպացիների հետ կապված ընդհանուր հարցերը՝ հնդեվրոպական լեզուների դասակարգումն ու աշխարհագրական տարածումը, վերականգնված հնդեվրոպական լեզվի կառուցվածքը, բառապաշարը, բարբառային բաշխումը, ղարգացման փուլերը և հնդեվրոպացիների բնակավայրը («նախահայրենիքը»), միասնության ժամանակը, կյանքն ու մշակույթը ըստ լեզվական տվյալների։ Երկրորդ հատվածում փորձ է արվում որոշելու հայերենի դիրքը հնդեվրոպական լեզուների և նախահայերենի դիրքը՝ հնդեվրոպական բարբառների մեջ, պարզվում մյուս լեզուներին ու բարբառներին նրա մերձավորության աստիճանը՝ ըստ հնչյունական, քերականական և բառային առանձնահատկությունների ու սրանց տարածքային բաշխման, տրվում են հայերենի պահպանած հնդեվրոպական արմատների ու բառային միավորների իմաստային (թեմատիկ) խմբերը և այս կապակցությամբ կատարվում է հայերենի կորցրած հնդեվրոպական բառային առանձին միավորների վերականգնման փորձ։

[1] Վերջին ժամանակներում հայերին սկսել են տարածք բառը գործածել տերիտորիայի իմաստով, բայց լեզվաբանության մեջ մենք այդ բառը գործածում ենք արեալի իմաստով։

# I. ՀՆԴԵՎՐՈՊԱԿԱՆ ԼԵԶՈՒՆ ԵՎ ՀՆԴԵՎՐՈՊԱՑԻՆԵՐԸ

## I. ՀՆԴԵՎՐՈՊԱԿԱՆ ԼԵԶՈՒՆԵՐԸ

*Հայերենը պատկանում է լեզուների այն մեծ ընտանիքին, որ ընդունված է կոչել հնդեվրոպական։ Այդ լեզուներով այժմ խոսում է մարդկության կեսը։*

*Ըստ ցեղակցական հարաբերության հնդեվրոպական լեզուները բաժանվում են խմբերի կամ, ինչպես հաճախ ասում են (ցեղակից լեզուների փոխհարաբերությունը ներկայացնելով ծառանմանական ծառի ձևով), ճյուղերի։ Սրանք տարբերժեք են թե՛ ըստ ընդգրկած լեզուների թվի, թե՛ ըստ գրավոր հուշարձանների հնության աստիճանի, թե՛ ըստ այժմ խոսվող կամ չխոսվող («մեռած») լինելու։ Բազմանդամ խմբերի կողքին կան միայն մեկ լեզվից բաղկացածներ, մ.թ.ա. II հազարամյակից գրավոր հուշարձաններ ունեցողների կողքին՝ նորագիր և նույնիսկ դեռևս գիր ու գրականություն չունեցողներ, մեծաթիվ խոսողներ ունեցողների կողքին՝ խիստ փոքրաթիվ կամ միայն մեռած լեզուներով ներկայացվածներ։ Եթե, հետևելով ավանդույթին, «մեռած» համարենք ոչ միայն ասպարեզից լիովին դուրս եկած լեզուները, այլև այժմ խոսվող լեզուներից տարբերվող հին գրավոր վիճակները, ապա հայերենը կարելի է բնութագրել որպես զգալի հնություն (մ. թ. V դարից սկսած գրավոր հուշարձաններ) ունեցող, երկու մեռած (հին և միջին) և երկու կենդանի (արևելահայ և արևմտահայ) գրական լեզուներով ներկայացած, ինքնին (առանց մերձավոր ցեղակիցների) մեկ խումբ (ճյուղ) կազմող լեզու։*

*Հնդեվրոպական լեզուների վերաբերյալ մեր գիտելիքների զարգացման արդի փուլում դժվար է որոշել խմբերի (ճյուղերի) ճիշտ թիվը. կան դեպքեր, երբ լեզուների առանձին համարվող որոշ խմբեր գիտնականները միավորում են մեկ խմբի մեջ (հմմտ. բալթիական և սլավոնական լեզուները), կամ երբ տվյալ լեզուների՝ հնդեվրոպական ընտանիքին պատկանելու հարցը վիճարկվում է։ Թվարկենք հնդեվրոպական լեզուների առանձին խմբերը (ճյուղերը) հիմնականում արևելքից արևմուտք հաջորդականությամբ և տանք դրանց համառոտ բնութագիրը։*

1. **Հնդիրանական.**—*Հնդիրանական կամ արիական*[1] *լեզուները ներկայացված են սկզբնապես իրար շատ մերձավոր հնդկական և իրանական լեզուներով։*

*Հնդկական թվագրված գրավոր հուշարձանները մ. թ. III դարից են՝ Աշոկա թագավորի ժամանակներից։ Սակայն կան ճշգրտորեն չթվագրված բազմաթիվ հուշարձաններ, որոնք գրված են հին հնդկերենով՝ սանսկրիտով։*

---

[1] «Արի» անվանումն ընդհանուր է հին հնդիկների ու հին իրանցիների համար (հ. հնդկ. ari(y)a- «արի, արիացի», ավեստ. airyō, հ. պրսկ. ariya- «արիական») և պահպանվել է Իրան անվան մեջ։

*Սրանցից հնագույնները Վեդաներն են՝ հոգևոր երգերի և ծիսական տեքստերի չորս ժողովածուները, որոնց կազմավորման ժամանակը տարվում է մինչև մ. թ. ա. II հազարամյակի կեսերը։ Վեդաների և վեդայական կրոնի սրբազան այլ գրքերի լեզուն հայտնի է «վեդայական հնդկերեն» կամ «վեդայական սանսկրիտ» անունով։ Սրան մոտ է դասական սանսկրիտը՝ սկսած «Մահաբհարատա» (մ. թ. ա. V—IV դդ.) և «Ռամայանա» (մ. թ. ա. IV դ.— մ. թ. IV դ.) էպիկական ստեղծագործությունների լեզվից և վերջացրած բազմաթիվ այն գրականության լեզվով, որ ստեղծվել է սանսկրիտի՝ արդեն մեռած (ոչ խոսակցական) լինելու պայմաններում։ Սանսկրիտը շարունակում էր գրական լեզու լինել նաև միջին գրական լեզուների՝ պրակրիտների (սկսած Աշոկայի արձանագրությունների շրջանից) և պալիի տարածման շրջանում։ Միջին շրջանի լեզուների զարգացման ուշ փուլը հայտնի է «ապաբհրանշա» («անկում») անունով. սրանից էլ սկիզբ են առնում նոր հնդկական լեզուները՝ հինդուստանի՝ հինդի (Հնդկաստանի ամենատարածված գրական լեզուն) և ուրդու (Պակիստանի հիմնական գրական լեզուն) տարբերակներով, բենգալի (Բանգլադեշում և Հնդկաստանում), բիհարի, մարաթի, փենջաբի, ռաջաստանի, գուջարաթի, օրյա և այլն։*

*Հին իրանական լեզուներից առաջին հերթին հիշատակելի են ավեստերենը՝ զրադաշտական կրոնի սրբազան գրքի՝ Ավեստայի լեզուն, և հին պարսկերենը՝ Աքեմենյան թագավորական հարստության (հատկապես Դարեհի) սեպագիր արձանագրությունների լեզուն։ Ավեստայի կազմավորման ժամանակը դրվում է մ. թ. ա. IX—IV դդ., և նրա հնագույն մասը համարվում են գաթաները։ Հին պարսկական արձանագրություններն ընդգրկում են մ. թ. ա. VI—IV դդ.։ Հին իրանական լեզուներից են նաև սակավ հայտնի մեդերենը (մարերենը), սկյութերենը, թերևս նաև կիմերերենը։ Միջին շրջանն սկսվում է մ. թ. ա. III դարից և ներկայացված է արևմտյան՝ միջին պարսկերեն ու պահլավերեն և արևելյան՝ սողդերեն, խորեզմերեն, սակերեն լեզուներով։ Նոր շրջանի արևմտաիրանական լեզուներն են նոր պարսկերենը (հնագույն գրավոր հուշարձանը՝ մ. թ. VIII դարից), թաջիկերենը, քրդերենը, բելուջերենը, թաթերենը և թալիշերենը, արևելաիրանական լեզուները՝ օսերենը (սկյութերենի և սրանից ծագած ալաներենի հաջորդը), աֆղաներենը (փուշտուն), յաղնոբերենը, պամիրյան լեզուները։*

2. **Թոխարական.**— *Թոխարական երկու լեզուները հայտնի են մ. թ. V—VII դդ. պատկանող և 1892 թ. սկսած Չինական Թուրքեստանում (Թուրֆանի, Կարաշարի, Քուչայի շրջաններում) հայտնաբերված տեքստերով։ Արևելաթոխարերենը պայմանականորեն կոչում են թոխարերեն Ա (A), արևմտաթոխարերենը՝ թոխարերեն Բ (B)։*

3. **Հայերեն.**— *Հին ժամանակներից սկսած տարածված է եղել Հայկական բարձրավանդակում, հայտնի է մ. թ. V դարից սկսած գրավոր հուշարձաններով և հին, միջին ու երկու նոր գրական լեզուներով։ Ունի մի քանի տասնյակ բարբառ։ Մերձավոր ցեղակիցներ ունենալու հարցը առայժմ բաց է մնում՝ չնայած փռյուգերենի հետ սերտորեն կապելու փորձերին։*

4. **Խեթա-լուվիական կամ (հին) անատոլիական.**— *Խեթա-լուվիական խումբը ներկայացված է վաղ (մ. թ. ա. XVIII—XIII դդ.) և ուշ (մ. թ. ա. VIII—II դդ.) շրջանների մեռած (միայն գրավոր հուշարձաններով ավանդված) լեզուներով։ Վաղ խեթա-լուվիական լեզուներից խեթերենը (հեթիթե-*

րենը), լուվերենը և պալայերենը հայտնի են մ. թ. ա. XVII—XIII դդ. բևեռագիր, հիերոգլիֆյան լուվերենը (հիերոգլիֆյան խեթերենը)՝ XVI—VIII դդ. հիերոգլիֆյան արձանագրություններով։ Ուշ խեթա-լուվական լեզուները գրի են առնված հունական գրի ձևափոխված տարատեսակներով՝ լիկիերեն և միլիերեն (լիկիերեն Բ) (մ. թ. ա. V—IV դդ.), լիդիերեն (մ. թ. ա. VII—II դդ.), կարիերեն (մ. թ. ա. VIII—IV դդ.)։ Այս բոլոր լեզուներն էլ խոսվել են Անատոլիական թերակղզում կամ Փոքր Ասիայում (արևմտյան Թուրքիայի տերիտորիայում), ընդ որում ուշ շրջանի լեզուները՝ սրա արևմտյան մասում։

Խեթա-լուվական լեզուները ըստ ցեղակցական փոխհարաբերության (մերձավորության աստիճանի) այժմ բաժանում են երկու ենթախմբի՝ խեթական կամ խեթա-լիդիական՝ խեթերեն, պալայերեն, լիդիերեն, կարիերեն, և լուվական կամ լուվա-լիկիական՝ լուվերեն, հիերոգլիֆյան լուվերեն, լիկիերեն։

Վ. Գեորգիևը խեթա-լուվական լեզու է համարում էտրուսկերենը՝ հայտնի մ. թ. VII դարից մինչև մ. թ. սկիզբը ներկայացված արձանագրություններով [Georgiev, 1962, 1970—1971, 1973, 1975], Գ. Ջահուկյանը հայասերենը՝ հայտնի միայն մ. թ. ա. XIV—XIII դդ. խեթական արձանագրություններում հիշատակված հատուկ անուններով [Djahukian, 1961. Джаукян, 1964, Ջահուկյան, 1976]։

5. **Սլավոնական.**—Սլավոնական լեզուներն սկզբնապես միասնական են եղել՝ համեմատաբար ուշ (մ. թ. VI—VII դդ.) բաժանվելով երեք ենթախմբի՝ արևելյան, արևմտյան և հարավային։ Հետագայում արևելյան ենթախմբի կազմում տարբերակվել են ռուսերենը, ուկրաիներենը և բելոռուսերենը, արևմտյանի կազմում՝ լեհերենը, սլովակերենը, կաշուբերենը, պոլաբերենը, լուժիկերենի երկու բարբառները՝ վերին և ստորին, հարավայինի կազմում՝ բուլղարերենը, սերբախորվաթերենը, մակեդոներենը, սլովեներենը։ Այսպես կոչված հին կամ եկեղեցասլավոներեն լեզուն որպես գրական լեզու սկիզբ է առել IX դարում՝ մակեդոնական հիմքի վրա, և մեծ դեր է խաղացել հարավային ու արևելյան սլավոնական ժողովուրդների կյանքում։ Աստիճանաբար գրավոր են դարձել նաև սլավոնական մյուս լեզուները։

6. **Բալթիական.**—Բալթիական լեզուներն են լիտվերենն ու լատվերենը (լատիշերենը), որոնց գրավոր հուշարձաններն սկիզբ են առնում XVI դարից, և պրուսերենը, որ գրի է առնվել XV—XVI դարերում ու XVII դարում դադարել գործածվելուց։

7. **Փռյուգական.**—Փռյուգացիները սկզբնապես բնակվել են Բալկանյան թերակղզում՝ թրակացիների հարևանությամբ։ Մ. թ. ա. XII դ. մոտերքը նրանք տեղափոխվում են Փոքր Ասիայի արևմտյան մասը, որտեղ հետագայում հիմնում են բավականին հզոր պետություն։ Եթե մի կողմ թողնենք փռյուգական ավելի վաղ («նախափռյուգական») շերտ որոնելու փորձերը (Օ. Հաաս), ապա բուն փռյուգերենի հուշարձանները՝ գրված հունական այբուբենով՝ ժամանակագրական երկու շերտ են կազմում՝ հին կամ վաղ փռյուգերենինը մ. թ. ա. VI—IV դարերից են (շուրջ հարյուր արձանագրություն), նոր կամ ուշ փռյուգերենինը՝ մ. թ. I—IV դարերից (76 արձանագրություն)։ Մ. թ. VI դարում փռյուգերենը դադարում է խոսակցական լեզու լինելուց։

8. **Թրակյան**.—Թրակերենը հնում տարածված է եղել Բալկանյան թերակղզու արևելյան մասում՝ աստիճանաբար տարածվելով նաև Փոքր Ասիայում։ Մ. թ. ա. V—IV դդ. այն դադարում է կենդանի խոսակցական լեզու լինելուց։ Թրակերենը հայտնի է հատուկ անուններով, հույն և հռոմայեցի հեղինակների հիշատակած բառերով (գլոսաներով), հունական տառերով գրված երկու տասնյակից ավելի համառոտ արձանագրություններով։ Թրակերենից տարբեր է եղել դակա-միզիերենը։ Թրակերենին զգալի չափով մոտ է պելասգերենը, որքանով որ այն վերականգնվում է հունական բառապաշարի՝ հունարենի բուն օրինաչափություններից շեղվող բառերի միջոցով։

9. **Հունական**.—Հունարենը գրավոր հուշարձաններով ներկայացված է մ. թ. ա. II հազարամյակի կեսերից սկսած։ Կրետե կղզում և հարավային Պելոպոննեսում հայտնաբերվել և 1952—1953 թթ. վերծանվել են այսպես կոչված գծային B վանկային գրով գրված կավե աղյուսներ (ընդհանուր թվով շուրջ 3000)։ Այս գիրը հույները փոխ են առել ինչ-որ լեզվից, որ չի տարբերել ձայնեղ ու խուլ բաղաձայնները, երկար ու կարճ ձայնավորները և այլն։ Պահպանվել են նաև գծային Ա կոչված գրով ավանդված հուշարձաններ, որոնք, սակայն, չեն ընթերցված։ Սրանք պատկանում են մ. թ. ա. II հազարամյակի առաջին կեսին և ըստ ոմանց նույնպես հունարենով են։ Հունական բուն այբուբենով գրված հուշարձանները (տարբեր բարբառներով)՝ սկիզբ են առնում մ. թ. ա. VIII դարից։ Սրանցից հատկապես կարևոր են Հոմերոսին վերագրվող պոեմները՝ «Իլիականը» և «Ոդիսականը», որոնք արտացոլում են մ. թ. ա. XII դ. սկզբի դեպքերը, բայց վերջնական խմբագրությամբ գրանցվել են մ. թ. ա. VI դարում։ Տարբերում են իոնիական (ատտիկյան ենթաբարբառով), աքայական (արկադա-կիպրական), էոլիական և դորիական բարբառներ։ Մ. թ. ա. IV դարից սկսած տարածվում է ատտիկյան խոսակցական լեզվի հիման վրա կազմավորված ընդհանուր լեզուն՝ կոյնեն, որ դառնում է միջին հունարենի հիմքը։ Վերջինիս հիման վրա էլ XV—XVI դդ. կազմավորվում է Նոր հունարենը։

10. **Ալբանական**.—Ալբաներենի գրավոր հուշարձաններն սկսվում են XV դարից։ Ոմանք ալբաներենը համարում են իլիրերենի հետնորդ, ուրիշները կապում են թրակերենի և նույնիսկ դակա-միզիերենի հետ։ Գրական լեզուն զարգացել է երկու բարբառների տարբերակների հիման վրա՝ հյուսիսային կամ գեգյան և հարավային կամ տոսկյան։

11. **Իլիրական**.—Իլիրերենը տարածված է եղել Բալկանյան թերակղզու հյուսիս-արևմտյան մասում՝ Ադրիատիկ ծովից մինչև թրակացիների բնակավայրերն ընկած տարածությունում, թեև ոմանք նրան ավելի մեծ տարածում են վերագրում։ Իլիրերենը հայտնի է հատուկ անուններով և հին հեղինակների պահպանած բառերով (գլոսաներով)։ Ոմանք նրա ճյուղավորումն են համարում մեսապերենը, որ ներկայացված է հունական ծագման այբուբենով մ. թ. ա. V—I դդ. գրված 300-ից ավելի արձանագրություններով (Կալաբրիայում և Ապուլիայում, որտեղ մեսապները եկել են, ըստ անտիկ հեղինակների, Բալկանյան թերակղզուց)[2]։

12. **Վենետական**.—Վենետերենը տարածված է եղել Իտալիայի հյուսիս-արևելյան մասում՝ Ադրիատիկ ծովի հյուսիսային ափերին և մեր թվագրու-

---

[2] Մեսապերենը իլիրերենից տարբեր լեզու են համարում Օ. Հաասը [Haas, 1962], Վ. Գեորգիևը [Georgiev, 1968]։

*թյան սկզբներին դեռևս խոսակցական լեզու է եղել։ Այն հայտնի է մասնավորապես շուրջ 200 արձանագրություններով՝ գրված հունական այբուբենի մի տարբերակով։*

13. **Իտալյան**.—*Հին իտալյան լեզուները բաժանվում են երկու ենթախմբի՝ լատինա-ֆալիսկյան և օսկ-ումբրական։ Երկրորդ ենթախմբի լեզուներից օսկերենը ներկայացված է մ. թ. ա. V—մ. թ. I դդ. 250-ից ավելի արձանագրություններով՝ գրված էտրուսկյան հիմք ունեցող հատուկ այբուբենով։ Ումբրերենի արձանագրությունների քանակը մեծ չէ, բայց դրանցից մեկը պարունակում է 4000-ից ավելի բառ։ Գրված են սկզբնապես էտրուսկյան հիմք ունեցող, ավելի ուշ՝ լատինական այբուբենով։ Առաջին ենթախմբի լեզուներից ֆալիսկերենը հայտնի է միայն սակավաթիվ համառոտ արձանագրություններով։*

*Իտալյան լեզուներից ամենից ավելի կարևորը և լավ հայտնին լատիներենն է, որի հնագույն արձանագրությունը մ. թ. ա. 600 թվականից է։ Սկզբնապես լինելով Հռոմի լեզուն՝ նա աստիճանաբար դուրս է մղում Իտալիայի մյուս լեզուները, իսկ ավելի ուշ տարածվում է Հռոմեական կայսրության տերիտորիայում, հանդես գալիս իբրև, այսպես կոչված, ժողովրդական (վուլգար) լատիներեն։ Վերջինիս հիման վրա զարգանում են նոր լատինական կամ ռոմանական լեզուները՝ ա) արևմտառոմանական՝ իտալերենը, սարդիներենը, ռետոռոմաներենը, գալլա-ռոմանական կոչված ֆրանսերենը և պրովանսալերենը, իբերա-ռոմանական կոչված իսպաներենը, պորտուգալերենը, կատալոներենը և գալիսերենը, բ) արևելառոմանական՝ ռումիներենը, մոլդավերենը։ Ռոմանական լեզու է եղել XIX դ. մեռած դալմատերենը։*

14. **Կելտական**.—*Կելտական լեզուները բաժանվում են երեք ենթախմբի՝ գալիական, գաելական և բրիտական։ Գալիականը ներկայացված է մ. թ. առաջին դարերում գոյություն ունեցած գալերենով, որ հայտնի է շուրջ 60 համառոտ արձանագրություններով, հատուկ անուններով, հին հեղինակների ավանդած, այլև ֆրանսերենի փոխառած բառերով։ Գաելականը ներկայացված է մ. թ. IV դարից գրավոր հուշարձաններ ունեցող և այժմ Էյրեի պետական լեզուն հանդիսացող իռլանդերենով, Շոտլանդիայի լեռնային մասերում պահպանված շոտլանդերենով և Մեն կղզու լեզվով՝ մեներենով։ Բրիտականը ներկայացված է վալիսերենով (Անգլիայում՝ Ուելսում), կոռներենով (խոսվել է Անգլիայում՝ Կոռնուոլում մինչև XVIII դ.), բրետոներենով (Ֆրանսիայում՝ Բրետանում)։*

15. **Գերմանական**.—*Բաժանվում է երեք ենթախմբի՝ արևելյան, արևմտյան և հյուսիսային կամ սկանդինավյան։ Արևելյանը ներկայացված է միայն մեռած լեզուներով՝ գոթերենով (հայտնի հատկապես աստվածաշնչի՝ մ. թ. IV դ. կատարված թարգմանությամբ), վանդալերենով, բուրգունդերենով և այլն։ Արևմտյան ենթախմբի մեջ մտնում են գերմաներենը (վերին գերմաներեն), հոլանդերենը (ճյուղավորված ստորին գերմանականից և հայտնի Հոլանդիայում որպես նիդեռլանդերեն, Բելգիայում՝ որպես ֆլամանդերեն, Հարավ-աֆրիկյան Միությունում՝ որպես աֆրիկաանս), անգլերենը, ֆրիզերենը։ Հյուսիսային կամ սկանդինավյան ենթախումբը կազմում են դանիերենը, շվեդերենը, նորվեգերենը և իսլանդերենը. Հնագույն գրավոր հուշարձանները մ. թ. III դարից սկիզբ առնող ռունական արձանագրություններն են։*

## 2. ՎԵՐԱԿԱՆԳՆՎԱԾ ՀՆԴԵՎՐՈՊԱԿԱՆ ԼԵԶՈՒՆ

### ա) ԿԱՌՈՒՑՎԱԾՔԸ

*Թվարկված լեզուների համեմատության հիման վրա վերականգնվում է մի լեզու, որ կոչվում է հնդեվրոպական լեզու կամ հնդեվրոպական նախալեզու, երբեմն էլ հնդեվրոպական հիմք-լեզու։ Այս լեզուն համեմատաբար ինտենսիվ տրոհման ժամանակաշրջանի նախօրյակին, անշուշտ, բարբառային նշանակալից տարբերակում է ունեցել։ Սակայն այն հարցը, թե հնդեվրոպացիներն ունեցե՞լ են արդյոք մեկ միասնական ստանդարտացված լեզու (որ բարձրացել է բարբառային որոշակի հիմքի վրա), թե՞ խոսել են իրարից անկախ բարբառներով, չի կարելի վերջնականապես լուծված համարել։ Հայտնի է միայն, որ արդեն գոյություն են ունեցել բանաստեղծական որոշակի ավանդույթներ և սրանց հետ կապված բանաստեղծական հատուկ բառեր ու դարձվածներ, ժողովրդական բանահյուսության ընդհանուր նմուշներ, հատկապես յուրահատուկ առածներ ու ասացվածքներ, դիցական ընդհանուր զրույցներ, կրոնական-ծիսական ընդհանուր բանաձևեր (անեծքներ, օրհնանքներ, աղոթքներ) և այլն։ Այս պայմաններում հնդեվրոպական մեկ ընդհանուր միասնական լեզվի վերականգնման փորձը որոշ պայմանականություն ունի, և կարելի է խոսել միայն հնդեվրոպական բարբառների համար ընդհանուր գծերի առկայության մասին՝ առանց շեշտելու դրանց՝ մեկ ստանդարտ լեզվի պատկանելու վարկածը։ Հնդեվրոպական լեզուն գիր ու գրականություն չի ունեցել[3], և հետևաբար նրա բնութագիրը տրվում է միայն համեմատական լեզվաբանության տվյալների հիման վրա։*

*Հնդեվրոպական լեզվի հնչյունական կառուցվածքի մեջ ձայնավորների համակարգը բնութագրվել է այսպես կոչված իռացիոնալ (քմայնացած) ձայնավորների բացակայությամբ, երկար և կարճ ձայնավորների հակադրությամբ, սրանց համապատասխան երկու դերկարճ (թուլացած) ձայնավորի և երկու շարք կազմող երկբարբառների առկայությամբ.*

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| *e | *o | *a | *ь | *ei | *oi | *ai |
| | | | | *eu | *ou | *au |
| *ē | *ō | *ā | *ə | *ēi | *ōi | *āi |
| | | | | *ēu | *ōu | *āu |

*Իհարկե, երկար երկբարբառների ոչ բոլոր հնարավոր տիպերի համար են պահպանվել հավաստի օրինակներ։*

*Հնդեվրոպական լեզվի հնչյունական կազմի համար բնորոշ է եղել ձայնորդների յուրահատուկ համակարգի առկայությունը, որ միջին տեղ է գրավել ձայնավորական և բաղաձայնական համակարգերի միջև։ Ըստ դիրքի ձայնորդները կարող էին կատարել նաև ձայնավորի (վանկարար տարրի) և բուն բաղաձայնի (ոչ վանկարար տարրի) դեր. այս պայմաններում* *i *և* *u *ձայնավորները հանդես են եկել ոչ թե որպես ինքնուրույն ձայնավորներ,*

---

[3] *Եվրոպայում պահպանված հին գծային նշանները Մ. Գիմբուտասը* [Gimbutas, *1973*] *վերագրում է նախահնդեվրոպական քաղաքակրթությանը։*

այլ որպես ձայնորդի դիրքային տարբերակներ՝ ձայնավոր կամ վանկարար ձայնորդներ։ Հ.-ե.[4] ձայնորդներն ունեցել են նաև երկար տեսակներ, որոնց ինքնուրույն հնչույթներ լինելու հարցը չի կարելի վերջնականապես լուծված համարել, սակայն հարկավոր է նշել, որ սրանք տալիս են կարճերից տարբեր արտացոլումներ։ Այսպիսով, հ.-ե. ձայնորդների համակարգը ներկայացված է հետևյալ անդամներով՝

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| **Ոչ վանկարար** | *i̯ | (*y) | *u̯ | (*w, *v) | *r | *l | *m | *n |
| **Վանկարար** | *i | | *u | | *r̥ | *l̥ | *m̥ | *n̥ |
| **Վանկարար-երկար** | *ī | | *ū | | *r̥̄ | *l̥̄ | *m̥̄ | *n̥̄ |

Հնդեվրոպական բաղաձայնների համակարգը հարուստ է եղել պայթականներով (հատկապես ետնալեզվային պայթականներով), աղքատ՝ շփականներով. կիսաշփականներ չի ունեցել. հավաստիորեն վերականգնվող միակ շփականը s-ն է, որ ձայնեղ բաղաձայններից առաջ գտնված դիրքում հանդես է եկել z տարբերակով։ Գերազանցապես խեթերենի տվյալների հիման վրա նախահնդեվրոպական շրջանի համար վերականգնում են նաև մեկ կամ մի քանի կոկորդային բաղաձայն (լարինգալ)՝ H (H1, H2, H3...) ուրույն ձայնորդի հատկությամբ, *ə ձայնավորին հարաբերակից։

Ի տարբերություն ձայնավորների՝ հնդեվրոպական բաղաձայնների, մասնավորապես պայթականների ընդհանուր հնդեվրոպական համակարգի վերականգնումը դժվարությունների տեղիք է տալիս. այստեղ խիստ որոշակի են մի կողմից՝ բարբառային, մյուս կողմից՝ վաղ և ուշ հնդեվրոպական վիճակների տարբերությունները։ Դասական հնդեվրոպաբանությունն առանձնացնում էր երկու տասնյակ պայթական բաղաձայնից բաղկացած մի համակարգ, որ բնութագրվում էր ձայնեղների և խուլերի, շնչեղների և ոչ շնչեղների, շրթնայինների, առաջնալեզվայինների և ետնալեզվայինների, ետնալեզվայինների մեջ՝ քմայնացած, սովորական և շրթնայնացած շարքերի առկայությամբ՝

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| *bh | *dh | *g′h | *gh | *gu̯h | (*$g^{w}h$) |
| *b | *d | *g′ | *g | *gu̯ | (*$g^{w}$) |
| *p | *t | *k′ | *k | *ku̯ | (*$k^{w}$) |
| *ph | *th | *k′h | *kh | *ku̯h | (*$k^{w}h$) |

Արդի հնդեվրոպաբանությունը այսպիսի վերականգնման դեմ բերում է տիպաբանական հնարավորության, հնչույթաբանական ճշմարտացիության, փաստական ճշգրտության, ժամանակագրական տարբերակման անհրաժեշտության հետ կապված զանազան առարկություններ։ Մասնավորապես վեճերի տեղիք են տալիս շնչեղ ձայնեղների իրական հնչման, շնչեղ խուլերի հնչույթաբանական առանձին կարգի առկայության, ետնալեզվայինների երեք շարքերի հնարավորության և, սրա հետ կապված, քմայնացածների ու շրթնայնացածների հնության, *b, *k′h ու *ku̯h հնչույթների գոյության ու գրաված տեղի հարցերը։ Նշենք միայն, որ նկատի ունենալով հայերենի բար-

---

[4] Այսուհետև հնդեվրոպական բառի փոխարեն հաճախ օգտագործվելու է հ.-ե. համառոտումը։

բառային դիրքը և շնչեղ ձայնեղների անվան տակ բերվող հնչույթների՝ այլ հատկանիշով բնութագրված լինելու հնարավորությունը, կարելի է նրա համար վերականգնել պայթականների հետևյալ սկզբնավիճակը, որտեղ փակագծերում տրվում են արխաիկ հնչույթների հետքերը.

| | | | | |
|---|---|---|---|---|
| *bh | *dh | *g′h | *gh | (*gu̯h) |
| *b | *d | *g′ | *g | (*gu̯) |
| *p | *t | *k′ | *k | (*ku̯) |
| *ph | *th | *k′h(?) | *kh | (*ku̯h?) |

Հնդեվրոպական շեշտը բարձրության (երաժշտական) է և որպես այդպիսին առաջ չի բերում անշեշտ վանկերի աչքի ընկնող թուլացում։ Այն միաժամանակ ազատ (բազմատեղ) է, այսինքն՝ կարող է ընկնել բառի տարբեր վանկերի վրա, և շարժական, այսինքն՝ կարող է ձևաբանական փոփոխության ժամանակ փոխել իր տեղը։

Ձևահնչույթաբանական այլ կարգի առանձնահատկությունների առումով կարելի է նշել հետևյալը. 1) հնդեվրոպական լեզվում մեծ դեր են խաղացել ձայնորդների *r/*n (հազվադեպ ուրիշ) և ձայնավորների *e/o/զրո, *ē/ō/ə, *ā/ə հերթագայությունները. ընդունված է ձայնավորների հերթագայության *e ձայնավորումը կոչել վերին, *o ձայնավորումը՝ միջին և զրոն՝ ստորին աստիճան. առաջին երկուսը միասին երբեմն կոչում են լիաձայն աստիճան. երկբարբառները ստորին աստիճանում ներկայացված են ձայնավոր ձայնորդով՝ *el/ol/i, *eu/ou/u, այսպես և երկբարբառակերպները՝ *er/or/r̥ և այլն. 2) եղել են բաղաձայնների և ձայնորդների հերթագայության որոշ տիպեր՝ ա) s+ բաղաձայն (ձայնորդ) / բաղաձայն (ձայնորդ), այսինքն՝ s-ի առկայություն կամ բացակայություն բաղաձայնից (ձայնորդից) առաջ (շարժական *s՝ s mobile), բ) բաղաձայն +*u̯ /բաղաձայն, այսինքն՝ *u̯-ի առկայություն կամ բացակայություն *s-ից, *t-ից և այլ բաղաձայններից հետո՝ *su̯/s, *tu̯/t և այլն, գ) *r/n և այլն. 3) միավանկ արմատը և, հետևաբար, վանկը ունեցել են մոտավորապես (S)(T)(R)e(R)(T/S) կառուցվածքը, ընդ որում հնարավոր չեն եղել ձայնեղով սկսվող ու վերջացող (*bed տիպի) և խուլով սկսվող ու շնչեղ ձայնեղով վերջացող կամ շնչեղ ձայնեղով սկսվող և խուլով վերջացող (*tebh, *bhet տիպի) վանկեր [Szemerényi, 1970, 90—92]. 4) հնդեվրոպական բաղաձայնների կապակցություններում տեղի են ունեցել առնմանական, տարնմանական և այլ կարգի որոշ փոփոխություններ, որոնցից հարկավոր է հիշատակել ձայնեղ բաղաձայնի խլանալը խուլից առաջ (հմմտ. *d-ի խլացումը *-to- ածանցից առաջ՝ *-d-to->*-t-to-՝ բարբառային հետագա փոփոխություններով), շնչեղ ձայնեղ+խուլ կապակցության վերածվելը ձայնեղ+շնչեղ ձայնեղ կապակցության (Բարթոլոմեի օրենք՝ *-dh-t->*d-dh- տիպի, թեև այն սահմանափակված է հնդիրանական օրինակներով), սկզբնային ձայնեղի՝ իրենից առաջ *s ստանալով՝ խուլի վերածվելը (Զիբսի օրենք՝ *s-g> *s-k, այլև, ըստ Իլիչ-Սվիտիչի, *s-gh> *skh հնդիրանականում և, թերևս, հայերենում) և այլն. 5) վանկատումը բառասկզբում և բառավերջում հանդես գալով ըստ արմատի կառուցվածքի վերաբերյալ՝ 3-րդ կետում բերված կաղապարի՝ բառամիջում ենթարկվել է լրացուցիչ կանոնների. ա) երկու բաղաձայնի դեպքում մեկն է անցել հաջորդ վանկին (*ak′-tos, *ag′-ros և այլն), երեքի դեպքում՝ երկուսը. բ) կիսա-

ձայն ձայնորդները կարճ ձայնավոր պարունակող վանկից հետո հանդես են եկել որպես *i(i̯), *u(u̯), երկար ձայնավոր պարունակողներից հետո՝ որպես *i̯, *u̯ (Զիվերսի օրենք)[5]:

Հնդեվրոպական լեզուն ունեցել է որոշակի թեքական-համադրական կառուցվածք. մեկ վերջավորությունն ի վիճակի է եղել արտահայտելու մեկից ավելի քերականական (կատեգորիական) իմաստներ, եզակին, երկակին և հոգնակին միևնույն իմաստների արտահայտության համար ունեցել են տարբեր վերջավորություններ, հաճախակի տեղի է ունեցել հիմքի և վերջավորության սահմանային տարրերի ձուլում (ֆուզիա)։ Սակայն քերականական վանկային մասնիկների գործածությունը առաջացրել է կցականության և վերլուծականության տարրեր, որոնք հետագայում զգալի զարգացում են ապրել առանձին հնդեվրոպական լեզուներում։

Հնդեվրոպական լեզվի ձևաբանական հիշյալ առանձնահատկության հետ միասին և հաճախ նրա հետ կապված կարելի է նշել մի շարք այլ առանձնահատկություններ ևս՝ վերջամասնիկների առատությունը և նախամասնիկավորման գրեթե բացակայությունը, բայցի կազմում միջմասնիկավորման առկայությունը, վերջավորությունների հետ միասին հերթագայությունների և տոնային (բարձրության) տարբերությունների խաղացած կարևոր դերը, այսպես կոչված բնավոր (թեմատիկ՝ *-e/o-ով վերջացող) և անբուն (աթեմատիկ՝ բաղաձայնով, ձայնորդով և *-e/o-ից տարբեր ձայնավորով վերջացող) հիմքերի հակադրությունը, անվանական և բայական հիմքերի ձևաբանական ուժեղ և, ընդհակառակն, անվանական խոսքի մասերի՝ գոյականների, ածականների ու թվականների, թույլ տարբերակվածությունը, դերանունների՝ անուններից տարբեր թեքումը, քերականական (քերականական կատեգորիաների) հարստությունն ու բազմապանությունը, երկակի թվի առկայությունը, անվան սեռային տարբերակումը և բազմահոլովայնությունը, բայասեռային տարբերակման անհստակությունը, կերպի արտահայտման կարևորությունը և ժամանակային տարբերակման աղքատությունն ու անհստակությունը, անորոշ ձևի բացակայությունը և այլն [Джаукян, 1967, 48]։

Հնդեվրոպական անվանական հիմքը կարող է լինել ինչպես արմատական, այնպես էլ բարդ և ածանցավոր։ Ածանցները կարող են հանդես գալ ինչպես բնավոր (*e/o-ով), այնպես էլ անբուն (առանց *e/o-ի) ձևով՝ *-e/o-, *-ei/oi-, *-eu/ou-, *-tel-, *-teu-, *-men-, *-es/os-, *-ter/tor- և *-tel- (*-tro-, *-tlo-), *-ek- (*-ko-), *-er- (*-ro-), *-lo-, *-mo-, *-en- (*-no-), *-to-. անվանական արժեք ունեն նաև բայերից դերբայներ կազմող *-ent/ont/n̥t-, *-u̯es/u̯os/us- և *-meno/mno- ածանցները։

Հնդեվրոպականն ունեցել է՝ 1) երեք սեռ՝ արական, իգական և չեզոք, ընդ որում արականն ու իգականը տարբերակվել են նախկին ընդհանուր-շնչավոր դասի ներսում, որ հակադրվել է հետագայում չեզոքի փոխված անշնչին, 2) երեք թիվ՝ եզակի, երկակի և հոգնակի, 3) ութ հոլով՝ ուղղական, կոչական, հայցական, սեռական, բացառական, տրական, գործիական և ներգոյական։

---

[5] Հետագայում այս օրենքը լայնացրել և ճշտել է Էջերտոնը. ավելի ուշ այն քննարկել են Ֆ. Օ. Լինդեմանը և ուրիշները։

*Որանք, ինչպես նշվել է, տարբեր վերջավորություններ են ունեցել անբուն (աթեմատիկ) և բնավոր (թեմատիկ) հիմքերի համար [հմմտ.* Szemerényi, *1970, 146, 171]։*

Անբուն (աթեմատիկ) հիմքեր

| | *Եզակի* | *Հոգնակի* | *Երկակի* |
|---|---|---|---|
| *Ուղղ.* | *-s, — | *-es | *-e,*-ī/i |
| *Կոչ.* | — | *-es | *-e, *-ī/i |
| *Հայց.* | *-m/m̥ | *-ns/n̥s | *-e, *-ī/i |
| *Սեռ.* | *-es/os/s | *-om/ōm | *-ous ?, *-ōs? |
| *Բաց.* | *-es/os/s, *-ed/od | *-bh(i̯)os,*-mos | *-bhi̯ō,*-mō |
| *Տր.* | *-ei | *-bh(i̯)os,*-mos | *-bhi̯ō,*-mō |
| *Գործ.* | *-e/o, *-bhi/mi | *-bhis/mis,*-ōis | *-bhi̯ō,*-mō |
| *Ներգ.* | *-i | *-su | *-ou |

Բնավոր (թեմատիկ) հիմքեր

| | | | |
|---|---|---|---|
| *Ուղղ.* | *-os (*ար.*), *-om (*չ.*) | *-ōs(*ար.*),*-ā (*չ.*) | *-ō,*-oi |
| *Կոչ.* | *-e (*ար.*), *-om (*չ.*) | *-ōs(*ար.*),*-ā (*չ.*) | *-ō,*-oi |
| *Հայց.* | *-om | *-ōns(*ար.*),*-ā (*չ.*) | *-ō,*-oi |
| *Սեռ.* | *-es(i̯)o/os(i̯)o | *-ōm | *-ōs |
| *Բաց.* | *-ōd | *-bh(i̯)os,*-mos | *-bhi̯ō(m), *-mo |
| *Տր.* | *-ōi | *-bh(i̯)os,*-mos | *-bhi̯ō(m), *-mō |
| *Գործ.* | *-ē/ō | *-ōis | *-bi̯ō(m),- *mo |
| *Ներգ.* | *-ei/oi | *-oisu | *-ou |

*Անբուն հիմքերի դեպքում շեշտը սովորաբար շարժական է, և կարող է տեղի ունենալ վերջավորության նախորդող տարրի ձայնավորի հերթագայություն։*

*Անհավասիկ, որպես օրինակ,* *ped-/pod- *«ոտք» անբուն (աթեմատիկ* **և** *u̯l̥'kᵘ̯os *«գայլ» բնավոր (թեմատիկ) հիմքերի հոլովումը միայն եզակի և հոգնակի թվերով.*

| | *Եզակի* | *Հոգնակի* |
|---|---|---|
| *Ուղղ.-կոչ.* | *pēs | *péd-es |
| *Հայց.* | *ped-m̥ | *péd-n̥s |
| *Սեռ.* | *ped-és/ós | *ped-óm |
| *Բաց.* | *ped-és/ós | *ped-bh(i̯)os |
| *Տր.* | *ped-éi | *ped-bh(i̯)os |
| *Գործ.* | *ped-é | *ped-bhis |
| *Ներգ.* | *ped-i | *ped-su |
| *Ուղղ.* | *u̯l̥'kᵘ̯os | |
| *Կոչ.* | *u̯l̥'kᵘ̯e | *u̯l̥'kᵘ̯ōs |
| *Հայց.* | *u̯l̥'kᵘ̯om | *u̯l̥'kᵘ̯ōs |
| *Սեռ.* | *u̯l̥'kᵘ̯osi̯o | *u̯l̥'kᵘ̯ōns |
| *Բաց.* | *u̯l̥'kᵘ̯od | *u̯l̥'kᵘ̯ōm |
| *Տր.* | *u̯l̥'kᵘ̯ōi | *u̯l̥'kᵘ̯obh(i̯)os |
| *Գործ.* | *u̯l̥'kᵘ̯ō | *u̯l̥'kᵘ̯obh(i̯)os |
| *Ներգ.* | *u̯l̥'kᵘ̯oi | *u̯l̥'kᵘ̯ōis |
| | | *u̯l̥'kᵘ̯oisu |

Ածականի համեմատության աստիճանների կազմությունը նախ՝ միասնական չէ հնդեվրոպական լեզվի համար, այլ հանդես է բերում բարբառային տարբեր զուգաբանություններ, երկրորդ՝ միևնույն լեզվում երբեմն հանդես է գալիս տարբեր հիմքերի համար տարբեր ձևերով։ Ամենից ավելի տարածված են եղել բաղդատականի *-i̯es/i̯os-ով ու *-tero-ով և գերադրականի *-es-to-ով ու *-tm̥mo-ով ձևերը։ Համեմատության աստիճաններ ունեցել են նաև մակբայները։

Հնդեվրոպական դերանունները ևս անուններից տարբերվում են իրենց իրադրական իմաստով. Նրանց առարկայական վերաբերությունը կախված է իրադրությունից, և միևնույն դերանունը ըստ իրադրության կարող է նշանակել տարբեր անձեր ու իրեր, այլև իրադրական տարբերությունները կարող են արտահայտվել ու արտահայտվում են դերանվանական տարբեր խմբերով։ Սրա հետ կապված՝ դերանվան համար բնորոշ է առարկաների տարբերակումն ըստ խոսքի մեջ խաղացած դերի (ա. խոսող, բ. խոսակից, գ. ոչ խոսող, ոչ խոսակից, այսինքն՝ ըստ դեմքի), ըստ խոսողին և խոսակցին հայտնի լինելու կամ չլինելու և ըստ խոսողի նկատմամբ գրաված դիրքի ու հեռավորության։ Այսպիսով, դերանուններին հատուկ են դեմքի և դիրքի[6], այլև անվանականներից թվի, սեռի ու հոլովի քերականարգերը՝ սրանց յուրահատուկ դրսևորումներով. ա) հոգնակին նշանակում է ոչ թե մեկից ավելի խոսողների, այլ խոսողին ուրիշների (այդ թվում նաև, ըստ անհրաժեշտության, խոսակցի) հետ միասին. բ) սեռը տարբերակում է միայն խոսող և խոսակից չնշանակող դերանունները. գ) նկատվում է ուղիղ և թեք հոլովների խիստ հակադրություն և որոշ թեք հոլովների երկրորդային-անվանական կազմություն։

Հնդեվրոպական դերանուններն աչքի են ընկնում թեքման յուրահատկությամբ («դերանվանական հոլովում»). տարածված է ուղիղ և թեք հոլովների եզակի, երկակի և հոգնակի թվերի տարահիմքությունը (սուպլետիվիզմը)։

Անձնական դերանուններ ասելով փաստորեն հասկանում են 1-ին և 2-րդ դեմքերի դերանունները. 3-րդ դեմքի նշանակմանը ծառայում են ցուցական և, որոշ առումով, նաև անդրադարձ դերանունները։ Անձնական դերանունները տարբերակված են ըստ դեմքի, թվի և հոլովի. հոլովների մեջ առաջնային են ուղիղ և թեք հիմքերի տարբերությունները, երկրորդաբար հանդես են գալիս թեք հոլովների առանձին տեսակները՝ անվանական հոլովների համապատասխան վերջավորություններով և ձայնավորների հերթագայությամբ, ընդ որում դեր են խաղում նաև *bh և *gh տիպի տարրեր։ Ահավասիկ ուղիղ և թեք հիմքերի եզակիի և հոգնակիի վերականգնվող ձևերը.

| | I դեմք | | II դեմք | |
|---|---|---|---|---|
| | Եզակի | Հոգնակի | Եզակի | Հոգնակի |
| Ուղիղ հիմք | *egō, *eg(h)ōm | *u̯es, *mes | *tu, *tū | *i̯ūs |
| Թեք հիմք | *me(n)-, *moi- | *nes- | *t(e)(u̯e)- | *ūes- |

[6] Այսպես ենք կոչում այն քերականարգը, որ բնորոշում է խոսողի նկատմամբ առարկայի (անձի, իրի) մերձավորությունը կամ հեռավորությունը, խոսքում նախապես հիշված լինելը կամ չլինելը։

*Անդրադարձ դերանվան հոլովաձևերը կազմությամբ նման են 2-րդ դեմքի դերանվան թեք հոլովաձևերին՝* *t-ի *փոխարեն* *s-ի *առկայությամբ՝* *s(e)(u̯e)։ *Այն սկզբնապես վերաբերել է բոլոր դեմքերին (հմմտ. հ. հնդկերեն, հոմերական հունարեն, բալթիական և սլավոնական լեզուներ), հետագայում մասնավորվել է միայն 3-րդ դեմքի համար։*

*Անձնական դերանունների թեք հիմքերից և անդրադարձի դերանվան հիմքից կազմվում են համապատասխան ստացական դերանուններ։*

*Հնդեվրոպական ցուցական դերանունները տարբերակված են ըստ դիրքի, թվի, սեռի, հոլովի։ Ի տարբերություն անձնականների՝ նրանք նշանակում են մոտ կամ հեռու, նախապես հիշված (հայտնի, ծանոթ) կամ չհիշված առարկաներ և տարբերակված են ըստ սեռերի. հայերենի ցուցականների դիմային տարբերակումը համաբանական ուշ ձևոքբերում է։*

***Արդեն հիշված (հայտնի, ծանոթ) առարկա (անձ կամ իր) նշանակելու համար գործածվել են*** *so *(ար.)*, *sā *(իգ.)*, *tod *(չեզոք)*, ***մերձավոր առարկա նշանակելու համար՝*** *k′i-, *k′o- ***(որոշ տարածքներում նաև*** *i-, *e-), ***հեռավոր առարկա նշանակելու համար՝*** *eno-/ono-, *eu̯o-/ou̯o-, *olo- ***դերանունները։***

***Հնդեվրոպական հարաբերական*** *i̯o- ***դերանունը լիավերենում ստացել է ցուցականի արժեք։***

***Հարցական դերանուններն ունեցել են*** *ku̯i-, *ku̯o- ***հիմքերը, որոնք հավանաբար գործածվել են նաև որպես անորոշներ (հմմտ. հունարենը, ապև. որոշ բաղադրությամբ, հայերենը)։***

*Հնդեվրոպական բայական հիմքերը կարող են լինել, ինչպես անուններինը, բնավոր (թեմատիկ) և անբուն (աթեմատիկ), արմատական և ածանցավոր։ Սակայն, ի տարբերություն անվանականների, բայական հիմքերը կարող են կազմվել նաև կրկնությամբ, նրանց մեջ սովորաբար հանդես են գալիս այնպիսի ածանցներ, որոնք անվանական հիմքերի մեջ չեն հանդիպում, բարդված հիմքեր չկան, համեմատաբար թույլ է դծված բառակազմության և բառաթեքման սահմանը։ Նույնիսկ այն դեպքերում, երբ բայական ածանցները համընկնում են անվանականների հետ, նրանցից տարբերվում են գործառությամբ. այսպես, բնավոր (թեմատիկ) հիմքերի* *-e/o- *ածանցը լրացուցիչ կերպով հանդես է գալիս որպես բայական որոշ ձևերի տարբերիչ (ներկան և աորիստը կարող էին լինել բնավոր, կատարյալը՝ ոչ).* *-i̯e/i̯o-*ն, հանդես գալով որպես անուններից և ուրիշ բայերից նոր բայեր կազմող տարր, հատուկ է միայն ներկայի հիմքերին և դրանով իսկ լրացուցիչ կերպով ներկան տարբերում է աորիստից և կատարյալից։*

*Անվանական քերականարգերից բային հատուկ է միայն թիվը իր երեք դրսևորումներով՝ եզակի, երկակի և հոգնակի։ Հ.-ե. բայը, ի տարբերություն, օրինակ, սեմականի, չի բնութագրվում սեռային տարբերիչներով։ Դերանվանական կարգերից բային հատուկ է դեմքը, բայց եթե դերանվան դեպքում այն բառա-քերականական արժեք ունի, և ամեն դերանուն կարող է ունենալ միայն մեկ դեմք, ապա բայը կարող է հանդես գալ դիմային երեք ձևերով էլ, որոնք գործածվում են ըստ իրադրության և ըստ համաձայնության։*

*Բուն բայական քերականարգերից են եղանակը, բայասեռը, կերպը և ժամանակը։ Սրանից եղանակն արտահայտվում է՝ ա) հատուկ կազմիչ տարրերով, որոնք անմիջապես նախորդում են դիմային վերջավորություններին*

և բնավոր հիմքերի դեպքում հաջորդում սրանց *-e/o- նիշին, բ) վրա նիշով, գ) երբեմն էլ հատուկ վերջավորություններով։ Կերպը և ժամանակը հատակորեն չեն տարբերվում, կերպային հիմնաձևերը փաստորեն արտահայտում են նաև ժամանակային իմաստներ, ընդ որում հնդեվրոպական լեզուն ժամանակներով հարուստ չէ։ Կերպա-ժամանակային տարբերությունները արտահայտվում են դիմային տարբեր վերջավորություններով, այսինքն՝ կերպա-ժամանակային ամեն մի իմաստ արտահայտվում է իրեն հատուկ վերջավորություններով։ Այդպիսին են նաև բայասեռային տարբերությունները, եթե դրանք ընդհանրապես արտահայտվում են։ Ընդհանուր առմամբ կարելի է ասել, որ բայական կաղապարների տարբերությունները առաջին հերթին կերպա-ժամանակային են, այսինքն՝ կերպա-ժամանակային իմաստների ամեն մի հիմնական դրսևորում ունի իր յուրահատուկ կաղապարը, և բայը պետք է քննել ըստ սրանց։

Հնդեվրոպական լեզվի համար տարբերում են կերպա-ժամանակային երեք հիմնական ձևախումբ-կաղապար՝ ներկա, աորիստ և կատարյալ (պերֆեկտ)[7]։ Հնդեվրոպական լեզուների ապառնին զարգացել է գերազանցապես եղանակային հիմքի վրա և հավանաբար հնդեվրոպական լեզվի շրջանում ժամանակային քիչ թե շատ ընդհանուր դրսևորում չի ունեցել։ Ներկայի, աորիստի և կատարյալի տարբերությունը իրոք կերպա-ժամանակային է եղել. ներկան արտահայտել է չավարտված-տևական, աորիստը՝ ավարտված-անտևական (միանգամյա) գործողություն, կատարյալը՝ անցյալում կատարված գործողության ներկայում ստեղծած վիճակ (հետևանք)։ Իր այս բնույթի պատճառով կատարյալը շատ դեպքերում ստացել է ներկայի արժեք. հմմտ. խեթ. -ḫi խոնարհումը, հոմերական հունարենի կատարյալի բազմաթիվ ձևերը, գերմանական պրետերիտա-պրեզենտային կոչված, այլև հայերեն գիտեմ, գամ բայերը։ Ժամանակային առումով ներկան ցույց է տալիս ներկա (այլև, ըստ իրադրության, ապառնի), աորիստը՝ անցյալ, կատարյալը՝ անցյալում կատարված գործողության առաջ բերած ներկա վիճակ։ Ընդունված է ներկայի վերջավորությունները կոչել առաջնային, աորիստինը՝ երկրորդային, թեև ըստ ծագման հավանաբար առկա է հակառակ հարաբերությունը։ Բացի այս ձևերից, հնդիրանական լեզուներում՝ սանսկրիտում և ավեստերենում, պահպանվել են ներկայի և աորիստի ձևեր՝ երկրորդային վերջավորություններով և առանց այսպես կոչված *e- նախահավելվածի (վերջինս, ինչպես կտեսնենք, հանդիպում է անցյալ ժամանակներում և բարբառային բնույթ ունի). այս ձևերն ընդունված է կոչել ինյունկտիվ. եթե կատարյալը կարելի է բնութագրել որպես և՛ ներկա, և՛ աորիստ, ապա սա կարելի է համարել ո՛չ ներկա, ո՛չ աորիստ՝ արտաժամանակային նշանակություն ունեցող ձև։

**Ներկայի հիմքի համար կարելի է սահմանել $(R+)R(+if)(+sf_1)(+sf_2)(+t)$ բանաձևը, որտեղ R-ը արմատն է, if-ը՝ միջածանցը, sf-՝ը վերջածանցը ($sf_1$-ը՝ առաջնային, $sf_2$-ը՝ երկրորդային), t-ն՝ թեմատիկ *e/o- ձայնավորը։ Ըստ այս բանաձևի հնդեվրոպական ներկան կարող է ունենալ**

[7] Արդի հայ քերականները կատարյալ կոչում են հ.-ե. աորիստի մնացորդային ձևերը, մինչդեռ հ.-ե. կատարյալը համապատասխանում է մոտավորապես վաղակատար-հարակատարին։

2⁵=32 հիմքային ձև, ընդ որում առաջնային ածանցն էլ կարող է հանդես գալ մի քանի կոնկրետ ձևով (իրացումով)։ Սակայն իրականում հիմքային ոչ բոլոր տիպերն են վկայված և ոչ բոլոր լեզուներում։ Նշենք, որ՝ ա) կրկնությունը կարող է լինել սաստկական և քերականական. վերջինս սովորաբար տեղի է ունենում արմատի առաջին բաղաձայնի կրկնությամբ. հաջորդող *-i- ձայնավորով (հմմտ. *di-dō-՝ հուն. δί-δω-μι «տալիս եմ»). բ) *-ne- միջածանցը (հմմտ. *-i̯u-ne-g-՝ հ. հնդկ. junákti «միացնում է») որոշ դեպքերում հաջորդ տարրի հետ միանալով ստանում է վերջածանցի տեսք (հմմտ. *pu-ne-H-՝ հ. հնդկ. pu-nā́-ti «մաքրում է», *r̥-n-u-՝ խեթ. ar-nu-ti «բերում է»). գ) առաջնային վերջածանցներից *-(ei)/i/ī-ն, *-ā-ն, այլև *-ē/ō-ն գործածվում են վիճակ արտահայտելու համար (հմմտ. *bhu-dhi-՝ լիտվ. budi «արթուն է», *gu̯ii̯-ā-՝ հայ. կեա-լ). դ) մյուս կարգի ածանցներից թեմատիկ *-ei̯o-ն ունի սևական-պատճառական արժեք. ե) երկրորդային-թեմատիկ *-i̯e/i̯o- և *-ske/sko- ածանցներն ունեն բայակազմական արժեք (բայեր են կազմում անուններից և այլ բայերից)։

Ներկայի համար վերականգնում են հետևյալ վերջավորությունները։

| | Եզակի | Հոգնակի |
|---|---|---|
| I դեմք | *-mi (անբուն), *-ō (բնավոր) | *-mes/mos (խեթ. *-u̯es/u̯os) |
| II դեմք | *-si | *-te |
| III դեմք | *-ti | *-nti |

Աորիստի հիմքի կազմությունը ներկայի համեմատությամբ ավելի քիչ բազմազան է և ներկայացված ավելի քիչ իրացումներով։ Եթե մի կողմ թողնենք հ.-ե. բարբառային արժեք ունեցող *e- նախահավելվածը (որ, բայցի աորիստից, նաև ներկայի հիմքից անկատար է կազմում), այն կարելի է արտահայտել (R+)R(+sf₁)(+sf₂)(+t) բանաձևով։ Ի տարբերություն ներկայի՝ ա) աորիստը չունի միջածանցավոր հիմքեր, բ) եթե առաջնային *-ē- ածանցը, որ հանդիպում է միայն հունարենում և սլավոնական լեզուներում, ձևականորեն համընկնում է ներկայի *-ē- ածանցի հետ, ապա երկրորդային *-(i)s- ածանցը հատուկ է միայն աորիստին, և նրանով կազմվող հիմքերը հայտնի են «սիգմատիկ աորիստ» անունով. սլավոնականում (*-s- ձևով) կարող է հանդիպել նաև *-ē- ածանցից հետո, որ մեզ հիմք է տվել այն դիտելու որպես երկրորդային։ Աորիստի վերջավորությունները, ի տարբերություն ներկայի, վերջում չունեն *-i նիշը, որ խոսում է ներկայի վերջավորությունների երկրորդայնության մասին.

| | Եզակի | Հոգնակի |
|---|---|---|
| I դեմք | *-m | *-me(s)/mo(s) |
| II դեմք | *-s | *-te |
| III դեմք | *-t | *-nt |

Կատարյալի հիմքի կազմությունն ավելի պարզ է և կարող է արտահայտվել (R+)R բանաձևով, այսինքն՝ կատարյալը կարող է ունենալ միայն արմատական կամ կրկնավոր հիմք և զուրկ է ածանցական հատուկ մաս-

նիկներից, հատկապես հիմքակազմ *-e/o- ձայնավորից[8]։ Կատարյալը ներկայից և աորիստից տարբերվում է հատկապես ա) *-e/o- թեմատիկ ձայնավորի բացակայությամբ, բ) արմատի հատուկ *o ձայնավորմամբ[9], գ) հատուկ վերջավորություններով.

| | Եզակի | Հոգնակի |
|---|---|---|
| I դեմք | *-a | *-mes/mos |
| II դեմք | *-tha | *-te, *-a |
| III դեմք | *-e | *-r |

Հնդեվրոպական որոշ լեզուներում վկայված են նաև ապառնի հատուկ ձևեր *-sįe/sįo- կամ *-se/so- ածանցներով և ներկայի վերջավորություններով։

Մինչև այժմ քննված հիմքային ձևերն ու վերջավորությունները պատկանում են ներգործական սեռին և սահմանական եղանակին։ Հնդեվրոպական լեզուն ունեցել է նաև ներգործականին հակադրվող ոչ ներգործականի՝ «միջին սեռի» ձևեր, որոնք տարբեր լեզվախմբերում տարբեր դեր են կատարել՝ արտահայտելով ենթակայի օգտին կատարվող գործողություն, անդրադարձություն, կրավորականություն։ «Միջին սեռն» ունեցել է հատուկ՝ ներգործականից տարբեր, վերջավորություններ՝ որոշ լեզուներում երկու շարքի (և՛ առաջնային, և՛ երկրորդային), մյուսներում՝ միայն մեկ շարքի։ Սանսկրիտի և հունարենի հիման վրա վերականգնվող՝ «միջին սեռի» առաջնային վերջավորությունները տարբերվում են ներգործականներից գերազանցապես *-i ձայնավորի փոխարեն *-ai-ի, երկրորդային վերջավորությունները՝ զրո ձայնավորի փոխարեն *-o-ի առկայությամբ.

| | Եզակի | | Հոգնակի |
|---|---|---|---|
| **Ներկա** | | | |
| I դեմք | *-ai | | *-mes-dha |
| II դեմք | *-sai | | ? |
| III դեմք | *-tai | | *-ntai |
| **Աորիստ** | | | |
| I դեմք | ? | | *-me(s)-dhā? |
| II դեմք | *-so (*-se), | *-tha(s) | ? |
| III դեմք | *-to | | *-nto, *-r ? |

Բացի սահմանականից, հնդեվրոպական լեզուն ունեցել է նաև հրամայական, ստորադասական (կոնյունկտիվ) և ըղձական եղանակներ, որոնցից վերջին երկուսը ոչ բոլոր լեզուներում ունեն հատուկ դրսևորում։

Հրամայական եղանակի եզակի 2-րդ դեմքը հավասար է ներկայի 2-րդ

---

[8] Սանսկրիտում ածանցավոր հիմքերի կատարյալը կազմվում է նկարագրական ձևով։

[9] Ձայնավորումը մեր բերած հիմքային բանաձևերում չի արտացոլված, թեև կարելի է արտահայտել (որպես յուրատեսակ միջածանցի արժեք ունեցող տարր) հատուկ նշանով՝ արմատի նշանից անմիջապես հետո։

դեմքին՝ առանց այս վերջավորության, հոգնակին՝ հոգնակի 2-րդ դեմքին՝ վերջավորությամբ համընկնող. հնդիրանականում, հունարենում և հայերենում առկա է նաև եզակի հրամայականի հատուկ ձև *-dhi մասնիկով։ Սանսկրիտը և խեթերենը ունեն հրամայականի 3-րդ դեմքի հատուկ ձև՝ եզ. *-tu և հոգն. *-ntu վերջավորություններով։

Ստորադասականը հավանաբար արտահայտել է ենթադրվող, սպասվող գործողություն՝ տարբեր լեզուներում ստանալով ըղձականի, երբեմն էլ պարզապես ապառնիի իմաստ։ Այն կազմվել է *-e/o- ածանցով, որ դրվել է առաջնային և երկրորդային վերջավորություններից առաջ և թեմատիկ ձայնավորի առկայության դեպքում ձուլվել նրա հետ ու այն երկարացրել՝ *-ē/ō-։

Ըղձականը արտահայտել է ըղձական կամ հնարավոր գործողություն և անբուն (աթեմատիկ) հիմքերի դեպքում ունեցել է *-i̯ē/ī-, բնավոր (թեմատիկ) հիմքերի դեպքում՝ *-i- կազմիչը. վերջինս միանալով թեմատիկ ձայնավորի հետ կազմել է *-oi- նիշը։

Շարահյուսական առումով հնդեվրոպական լեզուն բնութագրվել է առաջին հերթին բառերի (բառաձևերի) ու ընդհանրապես նախադասության անդամների հարաբերական ինքնուրույնությամբ [Мейе, 1938, 363] և, սրա հետ կապված, ձևական խնդրառության բացակայությամբ. բառերն ստացել են այս կամ այն ձևը ըստ նախադասության ընդհանուր իմաստի, ըստ նրա մեջ իրենց կատարած դերի (գործառության)։ Բառերի քերականական հատուկ ձևավորման և զարգացած համաձայնության պայմաններում շարադասությունը քերականական դեր գրեթե չի կատարել, այսինքն՝ ազատ է եղել։ Այս կապակցությամբ նախադասության սկզբում դրվել է սովորաբար գլխավոր (ընդգծվող, տրամաբանական շեշտ կրող) բառը։ Որոշիչը համաձայնել է որոշյալի հետ սեռով, թվով և հոլովով, անուն ենթական՝ միայն թվով, այն էլ ոչ թե ձևականորեն, այլ ըստ իմաստի։ Առկա է եղել անվանական և բայական նախադասությունների հակադրություն, ընդ որում անվանական նախադասություններում հանգույցը գործածվել է ըստ անհրաժեշտության (հաճախ «զեղչվել» է)։ Դիմավոր բայ-ստորոգյալի մոտ անձնական դերանունները որպես ենթակա գործածվել են միայն ընդգծվելու դեպքում։ Մի այլ բառի հարող բառը կարող էր վուրկ լինել շեշտից։ Նախդիրը դեռևս ազատ բնույթ է ունեցել, այսինքն՝ չի հարել ոչ անվանը և ոչ բային. սրա հետ կապված հետագայում զարգացումը գնացել է երկու ուղղությամբ՝ ա) նախդիրը դարձել է իսկական «նախդիր», այսինքն՝ հարել է անվանը, բ) այն դարձել է նախաբայ (պրեվերբ)՝ բայական նախածանց, այսինքն՝ տեղի է ունեցել գործառական տարբերակում։

Հնդեվրոպական լեզուն չունի դեռևս երկրորդական նախադասություններ և, հետևաբար, ստորադասական շաղկապների զարգացած համակարգ. բառիս բուն իմաստով կարելի է խոսել միայն հարաբերական երկրորդական նախադասությունների և հարաբերական բառերի մասին։ Այս պայմաններում խիստ կարևոր է դերբայների և դերբայական դարձվածների դերը։

### բ) ԲԱՌԱՊԱՇԱՐԸ

Հնդեվրոպական լեզվաբանության զարգացման արդի վիճակը դեռևս հնարավորություն չի տալիս ամբողջական գաղափար կազմելու հնդեվրոպա-

*կան լեզվի բառապաշարի բնույթի մասին։ Նշված բառարաններում հավաքված նյութը չունի ժամանակագրական միասնություն (ի մի են բերված հնդեվրոպական լեզվի զարգացման տարբեր շրջանների պատկանող բառեր), վերականգնողական հավասարժեքություն (ընդհանուր տարածում ունեցող բառերի կողքին կան միայն զույգ լեզուների հիման վրա վերականգնված արմատներ ու բառեր), բառամիավորային միամակարդակություն (բառային արժեք ունեցող միավորների կողքին առկա են միայն արմատական վերականգնումներ)։ Այդ պատճառով էլ Հ. Աճառյանի բերած թվերը Ա. Վալդեի և Յ. Պոկոռնու «Հնդեվրոպական համեմատական բառարանում» ընդգրկված և, համապատասխանաբար, հայերենի պահպանած միավորների քանակի մասին [*Աճառյան, *ՀԼՊ, 1, 33] խիստ պայմանական են. Աճառյանը խոսում է այն մասին, որ այդ բառարանը պարունակում է 2223 «արմատ բառ» (իմա՛ բառահոդված, ավելի ճիշտ «արմատավորված»՝ տվյալ արմատի տակ միավորված բառաձևերով), և որ հայերենը պահպանել է 713 «արմատական բառ»՝ իրենց ածանցական 196 տարբերակներով։ Այսպիսով, մենք գաղափար չենք կազմում հնդեվրոպական լեզվի բուն բառապաշարի իմաստային խմբերի, խոսքի-մասային արժեքի և տարածքային իսկական բաշխման մասին, այլ իմանում ենք միայն արմատների ընդհանուր քանակը։ Վերականգնման ընդհանուր թերությունները և հատկապես բառարանների հեղինակների գործադրած մեթոդների արատավորությունը հանգեցնում են այն բանին, որ, ինչպես բազմիցս նշվել է, այդ բառարաններում մեծ թիվ են կազմում համանուն և համանիշ «բառերը», որոնց այդպիսի առատությունը ոչ միշտ է պայմանավորված բարբառային ու հասարակական-գործառական տարբերություններով, և վերականգնված իմաստները հաճախ ավելի վերացական ու ընդհանուր են, քան պետք է լինեն բնական լեզվում և այլն։*

*Հ. Աճառյանի օգտագործած հնդեվրոպական բառարանի՝ Յ. Պոկոռնու կողմից վերամշակված և բարելավված հրատարակության մեջ* [Pok., IES] *արմատների քանակը որոշ չափով փոխված է՝ ըստ էության առանց մեծ տարբերության։ Ժ. Ժյուկուան, օրինակ, արմատի կազմության ճիշտ առանձնահատկությունները պարզելու նպատակով իր ուսումնասիրության մեջ, բացառելով բնաձայնական, դերանվանական և այլ վերականգնումները, իր հաշվումը հիմնում է Յ. Պոկոռնու բառարանի 2027 արմատի վրա* (Jucquois, 1966)*։ Հետաքրքրական է նշել, որ մոտավորապես նույն քանակի արմատներ են պարունակում նաև այլ լեզվաընտանիքների բառարանները (թյուրքականը՝ 2220, բանտու՝ 2262 և այլն)* [Герценберг, 1972, 132—133]։

*Եթե նկատի առնենք, որ բառերի քանակը մի քանի տասնյակ անգամ գերազանցում է արմատների քանակը, ապա հնդեվրոպական լեզուն ունեցած պետք է լինի սովորական չափի բառապաշար։*

*Քանի որ բառապաշարի առարկայական արժեքի քննությունը հնդեվրոպացիների կյանքի, քաղաքակրթության ու մշակույթի, նրանց հասկացությունների ծավալի քննությունն է, մենք դրա վրա կանգ կառնենք հնդեվրոպացիների բնութագրմանը նվիրված հատվածում։ Հնդեվրոպական բառապաշարի բարբառային-տարածական և այլ լեզուների հետ ունեցած ընդհանուր շերտի մասին կխոսվի հնդեվրոպական բարբառներին և ցեղակցական կապերին նվիրված հատվածներում։ Այստեղ խոսենք հնդեվրոպական*

*բառապաշարի բառագիտական-իմաստաբանական քննության որոշ հայեցակետերի մասին։*

*Ամենից առաջ մի քանի խոսք հնդեվրոպական բառապաշարի ծագումնային շերտերի մասին։*

*Հնդեվրոպական լեզուն, ինչպես ամեն մի այլ լեզու, չէր կարող լիովին մեկուսացած լինել։ Այն պետք է գտնված լիներ այլ լեզուների հետ որոշակի հարաբերության մեջ, որ արտահայտված կլիներ նրանց հետ ունեցած ընդհանուր տարրերով։ Եթե մի կողմ թողնենք պատահական նմանությունները, որոնք անխուսափելի են ձևույթների թվի, նրանց ոչ բազմատարրության և հիմնական իմաստների սահմանափակության պայմաններում, ապա կարելի է տարբերել լեզուների ընդհանրությունների երկու տեսակ՝ ժառանգված և ձեռքբերովի։ Ժառանգված ընդհանրությունները կարող են լինել կամ պայմանավորված մարդկանց ընկալման և արտասանական ձևավորման որոշ ընդհանրություններով, կամ սկզբնական ընդհանրությամբ։ Օգտագործելով եղած տերմինները որոշակի իմաստով՝ առաջին տիպի ընդհանրությունները կոչենք «տարրական ցեղակցություն», երկրորդները՝ բուն ցեղակցության դրսևորումներ։ «Տարրական ցեղակցության» երևույթներ են ձայնարկությունների, բնաձայնությունների, մանկական բառերի այնպիսի ընդհանրությունները, որոնք կամ հանդիպում են նաև ոչ ցեղակից լեզուների մեջ, կամ պատկանելով ցեղակից լեզուների, այնուամենայնիվ չեն կարող որոշակի օրինաչափություններով հաստատված համարվել։ Ձեռքբերովի ընդհանրությունները կարող են արդյունք լինել կամ տևական շփումների (կոնտակտների) ու փոխներթափանցման (ինտերֆերենցիայի), էթնիկական որոշակի փոխազդեցության (տևական տիրապետություն, մերձավոր հարևանություն և համատեղ գոյակցություն և այլն), կամ մշակութային, կրոնական և այլ գործոններով պայմանավորված փոխառությունների ու պատճենումների։ Առաջին տեսակի ձեռքբերովի ընդհանրությունների թվին է պատկանում ենթաշերտային (սուբստրատային), մակաշերտային (սուպերստրատային) և առշերտային (ադստրատային) ազդեցությունը, որ հաճախ հանգեցնում է նաև կառուցվածքային նոր տարրերի ու փոփոխությունների առաջացման։*

*Ցավոք սրտի, նշված հայեցակետերով հնդեվրոպական լեզվի ուսումնասիրությունը բավարար չի կարելի համարել։ Մասնավորապես անբավարար է հնդեվրոպական լեզվի՝ այլ լեզուների հետ ունեցած արտաքին կապերի՝ ձեռքբերովի ընդհանրությունների ուսումնասիրության վիճակը։ Մենք չենք կարող քիչ թե շատ վստահորեն խոսել հնդեվրոպական լեզվի վրա հնարավոր ենթաշերտային (սուբստրատային) ազդեցության մասին։ Փոքր-ինչ ավելի բարվոք է փոխառությունների ուսումնասիրության վիճակը, բայց այս դեպքում էլ հաճախ չկան որոշակի չափանիշներ տարբերելու հնդեվրոպական ընդհանրության շրջանում կատարված փոխառությունները հետագայում հնդեվրոպական առանձին լեզուներում ուրիշ լեզուներից թափանցած բառերից։ Այսպես, հայտնի չէ հ.-ե.* *ag´-ro-s *«արտ» (համարվում է* *ag´- *«քշել, տանել» արմատից կազմված) և շումեր.* ager *«արտ» բառերի փոխհարաբերությունը (հմմտ. նաև հայ.* ագարակ, *որ հին փոխառություն է)։ Անհնար չէ հայերենի* այծ-*ի և հունարենի* αἴξ *հիման վրա վերականգնված* *aig´- *«այծ» արմատի (հմմտ. նաև ավեստ.* izaēna *«կաշվյա», իմա՛ «այծի կաշվից») արևելյան ծագումը [հմմտ.* Pok., *1, էջ 13],*

*մանավանդ որ կան այդ իմաստն ունեցող այլ արմատներ ևս. այն պետք է առնված լինի նախքան հայերենի քմայնացման հետևանքով կրած փոփոխությունները։ Բալկանյան տարածված է հ.-ե.* *gu̯ou-*ի (սղղ.* *gu̯ōus) *«խոշոր եղջյուրավոր անասուն» (որից հայ.* կով) *շումերական ծագման* (gu, *հին* gud *«եզ, խոշոր եղջյուրավոր անասուն») վարկածը [հմմտ.* Pok., I, *էջ 483]։ Անհնար չէ հ.-ե. «քար» գաղափարն արտահայտող և հ.-ե.* *kar- *«կարծր, կոշտ» կամ* *(s)ker *«կտրել» արմատներին վերագրվող շատ բառերի (այդ թվում հայ.* քար-*ի) միջերկրածովյան-իբերյան* (*carra *«քար, քարակույտ») ծագումը* [Pok., I, *էջ 53]։ Անհնայտորեն ոչ հնդեվրոպական բնույթ ունի* *k'ik'er-*ը, որի* *k'eik'er- *տարբերակից է ծագում հայ.* սիսեռ *բառը։ Հ.-ե.* *u̯el- *«պատել, ծածկել» արմատից բխեցվող* *u̯ol-no-*ի համար, որի* *u̯olnii̯o- *ձևից բխեցվում է հայ.* գեղմ *բառը, հավանական է համարվում նաև միջերկրական կամ փոքրասիական ծագում (հմմտ. նախասեմ.* *u̯ainu *«գինի») [հմմտ.* Pok., I, *էջ 112]։ Այսպիսի օրինակների թիվը կարելի է մեծացնել, բայց հարցի հետագա լուծումը շատ բանով կախված է մի կողմից՝ ժառանգած ընդհանրությունների և, այսպես կոչված, հեռավոր ցեղակցության, մյուս կողմից՝ հնդեվրոպացիների բնակության վայրերի, քաղաքակրթության աստիճանի, տնտեսական հարաբերությունների իսկական բնույթի վերաբերյալ հարցերի լուծումից։*

*Համեմատաբար լայն ուշադրություն է գրավել հնդեվրոպա-սեմական բառային փոխառությունների հարցը։ Հնդեվրոպական լեզուների՝ սեմականներից կատարած փոխառությունների մասին տարբեր առիթներով խոսել են Հ. Լևին, Գ. Իպսենը, Ա. Շոտը, Վ. Վյուստը* [Lewy, 1895. **Ipsen,** 1924. **Schott,** 1935. **Wüst,** 1956] *և ուրիշները։ Վ. Մ. Իլիչ-Սվիտիչը* [**Иллич-Свитыч**, 1964a] *Մյոլլերի «Հնդեվրոպա-սեմական համեմատական բառարանից»* [**Möller**, *1911,*] *առանձնացնում է 24 բառ, որոնք չեն կարող վերագրվել հեռավոր ցեղակցությանը և պետք է դիտվեն որպես սեմական աղբյուրից կատարված հնագույն հնդեվրոպական փոխառություններ՝ հ.-ե.* *gu̯ou- *«եզ, կով» (հայ.* կով) — *աքքադ.* *g-w *«եզ». հ.-ե.* *ag'ro- *«արտ» (հայ.* արտ) — *սեմ.* *ḥ-ḏ-r *«ցանկապատված հողամաս, բակ, բնակատեղ». հ.-ե.* *dhu̯er- *«բակ, դուռ» (հայ.* դուռն, դուր-ս) — *սեմ.* *ṭ-w-r *«ցանկապատ, ցանկապատված բակ». հ.-ե.* *nāu- *«նավ, աման» (հայ.* նաւ) — *սեմ.* (<*աքքադ.* *'-n-w *«աման, նավ». հ.-ե.* *(a)ster- *«աստղ» (հայ.* աստղ)— *'-ṭ-t-r *«աստվածացված աստղ». հ.-ե.* *septm̥ *«յոթ» հայ.* (եւթն) — *սեմ.* (<*աքքադ.*) (*š)-b-'-tu, (*š)-b-'u *«յոթ» և այլն։*

*Հնդեվրոպական լեզվի բառապաշարը, անշուշտ, տարբերակված է եղել ըստ գործառական-ոճական ոլորտների։ Թեև հիմնական գործառական ոլորտը եղել է առօրյա-խոսակցականը, սակայն սրա հետ միասին, ինչպես ցույց են տալիս վերջերս կատարված հետազոտությունները, այդ լեզուն հանդես է եկել բանաստեղծական խոսքի մեջ՝ սրան հատուկ պատկերավորությամբ, սիրված մակդիրներով, բանաստեղծական բնույթի (առանձնապես բարդ) բառերով, յուրահատուկ արտահայտություններով, երբեմն ռիթմական որոշակի կառուցվածքով։ Ռիթմական խոսքը թերևս մեծ նշանակություն է ունեցել ծիսական-կրոնական կյանքում։ Այսպես, ակնհայտորեն բանաստեղծական արժեք են ունեցել հ.-ե.* *erku̯- *«ճառագայթել, շողալ. պայծառ հնչել. գովերգել» բառարմատին պատկանող ածականները, գոյա-*

կանները, բայերը. այստեղից է ծագում հայ. ērg-ը, բայց այն դարձել է սովորական գործածության բառ։

Հնդեվրոպացիների հասարակական-տնտեսական կյանքի, քաղաքական և մշակութային հարաբերությունների հետ կապված, անշուշտ, սկսել էին հանդես գալ հրապարակախոսական ու վարչա-գործարարական ոճի որոշ առանձնահատկություններ, սաղմնավորվել այնպիսի բնագավառների տերմինաբանական համակարգեր, ինչպիսիք են երկրագործությունը, անասնապահությունը և ձկնորսությունը, հաղորդակցման միջոցներն ու նավագնացությունը, արվեստը և արհեստագործությունը, քաղաքական հարաբերությունները, ռազմական գործը և հավատալիքները և այլն։ Այս տեսակետից Կ. Դ. Բաքի «Հնդեվրոպական լեզուների ընտիր հոմանիշների բառարանը» [Buck, 1949],—նախատեսված չլինելով հատկապես հնդեվրոպական միասնության շրջանի բառապաշարի վերականգնման նպատակին, պարունակելով բազմաթիվ նոր հասկացություններ (հմմտ. «լուցկի», «շաբաթ», «երեքշաբթի» և այլն) և չընդգրկելով բոլոր լեզուները,—այնուամենայնիվ հնարավորություն է տալիս գծելու հնդեվրոպական բառապաշարի սահմանները։ Այն պարունակում է 22 իմաստային խումբ՝ համապատասխան ներքին բաժանումներով, և մեկուկես հազարից ավելի հասկացություն։ Ընդգրկված իմաստային խմբերն են հետևյալները.

1. Ֆիզիկական աշխարհ.

2. Մարդկություն՝ սեռ, հասակ, ընտանեկան հարաբերություն.

3. Կենդանիներ.

4. Մարմնի մասեր, մարմնական գործառություններ և պայմաններ.

5. Ուտելիք և խմելիք. խոհարարություն և ամանեղեն.

6. Հագուստ. անձնական զարդարանք և խնամք.

7. Բնակարան, տուն, կահույք.

8. Երկրագործություն, բուսականություն.

9. Զանազան ֆիզիկական գործողություններ և սրանց հետ կապված հատուկ արվեստներ ու արհեստներ՝ գործիքներով, նյութերով ու արտադրանքներով հանդերձ. զանազան այլ հասկացություններ.

10. Շարժում. տեղափոխություն, փոխադրություն, նավագնացություն.

11. Ունեցվածք, սեփականություն և առևտուր.

12. Տարածական հարաբերություններ՝ տեղ, ձև, չափ.

13. Քանակ և թիվ.

14. Ժամանակ.

15. Զգայական ընկալում.

16. Զգացմունք (զգացմունքների ֆիզիկական որոշ դրսևորումներով). խառնվածքային, բարոյական և գեղագիտական հասկացություններ.

17. Բանականություն, միտք.

18. Ձայնարձակում, խոսք, գրում և ընթերցում.

19. Տարածքային, հասարակական և քաղաքական բաժանումներ. Հասարակական հարաբերություններ.

20. Ռազմական գործ.

21. Օրենք.

22. Կրոն և նախապաշարմունք։

Հնդեվրոպական համեմատական լեզվաբանության հայեցակետից ավելի որոշակի նպատակադրում ունի է. Բենվենիստի «Հնդեվրոպական հաս-

տատությունների բառարանը» [Benveniste, 1969], որի ընդգրկումը նեղ է (տնտեսություն, ազգակցություն, հասարակություն, իշխանություն, իրավունք և կրոն), բայց ուղղված հնդեվրոպական համապատասխան նախնական գաղափարների առարկայական արժեքների վերլուծությանը։ Բենվենիստի որոշ եզրակացություններին մենք կանդրադառնանք հետո, բայց այստեղ նշենք, որ բառարանն առաջին փորձերից մեկն է ակնարկների ձևով քննարկելու իմաստային առանձին դաշտեր, հաստատելու որոշակի հակադրություններ ու կատարելու սահմանազատումներ, ցույց տալու իմաստային դաշտերին պատկանող տվյալ միավորների առարկայական արժեքները։

Վերականգնված հնդեվրոպական արմատների տարածվածության աստիճանը, ինչպես նշվել է, նույնը չէ. գրեթե բոլոր լեզուներում առկա արմատների կողքին մեծ թիվ են կազմում սահմանափակ տարածում ունեցողները, որոնք վկայում են տվյալ լեզուների՝ հնդեվրոպական բարբառային ընդհանուր տարածքների պատկանելու և հնագույն շփումների մասին (եթե, իհարկե, բացառենք ուշ հավաստի վերականգնումները, այլև ուշ ձեռքբերումները ժամանակագրական ավելի վաղ մակարդակի վերագրելու փաստերը)։ Համեմատաբար լայն տարածում ունեցող արմատներն ու բառերը հաճախ միաժամանակ հիմնական բառաֆոնդին պատկանող, հաճախադեպ և հին շերտ ներկայացնող միավորներ են։ Սրանց մասին գաղափար տալու համար դիմենք Գ. Ռ. Զոլտայի «Հայերենի տեղը հնդեվրոպական լեզուների շրջանում» աշխատությանը [Solta, 1960], որտեղ բերված են հայերենի ընդհանուր հնդեվրոպական և լեզուների մեծ մասում տարածված արմատների և արմատական բառերի օրինակներ.

Ա. Ընդհանուր հնդեվրոպական արմատներ.

1. **Գոյականներ**՝ ըստ Բաքի տարբերած խմբերի. (1) ֆիզիկական աշխարհ՝ *au̯ed- (*u̯ed-> հայ. գետ), *leuk- «լուսավորել, լուսավոր» (հայ. լոյս, լուսին, լուսն, այլև լուսանեմ) և այլն. (2) ընտանեկան հարաբերություն՝ *pətēr «հայր» (հայ. հայր), *māter «մայր» (հայ. մայր), *dhug(h)əter «դուստր» (*dhukter>հայ. դուստր), *bhrāter «եղբայր» (հայ. եղբայր), *su̯esōr «քույր» (հայ. քոյր), *au̯o-s «պապ» (հայ. հաւ «պապ»), *(H)an- «նախնի» (հայ. հան «տատ»), *su̯ek'rū- «սկեսուր» (*k'u̯ek'rū-> հայ. սկեսուր) և այլն. (3) կենդանիներ՝ *gu̯ou- «խոշոր եղջյուրավոր անասուն՝ եզ, կով» (հայ. կով), *k'u̯on- «շուն» (հայ. շուն) և այլն. (4) մարմնի մասեր, մարմնական գործառություններ ու պայմաններ՝ *mēmso- «միս» (հայ. միս), *g'enu-; *g'enədh- «ծնոտ» (հայ. ծնաւտ), *oku̯- «տեսնել, աչք» (հայ. ակն), *ōus-/us- «ականջ» (հայ. ունկն), *ped-/pod- «ոտք» (հայ. ոտն, հետ), *su̯eid- «քրտնել» (*su̯id-ro-> հայ. քիրտն), *su̯ep- «քնել» (*su̯op-no-> հայ. քուն) և այլն. (5) ուտելիք և խմելիք՝ *sal- «աղ» (հայ. աղ). (7) բնակարան, տուն, կահույք՝ *dhu̯er-, *dhur- «դուռ» (հայ. դուռն). (14) ժամանակ՝ *dei- «շողալ», *diu- «օր» (հայ. տիւ), *mēns- «ամիս» (հայ. ամիս), *g'hei- «ձմեռ. ձյուն» (հայ. ձմեռն, ձիւն) և այլն։

2. **Ածականներ**՝ *bherg'h-, *bhr̥g'hu- «բարձր» (հայ. բարձր, բերձ), *sen(o)- «հին» (հայ. հին), *meg'(h)- «մեծ» (հայ. մեծ), *gu̯her- «ջերմ, տաք» (հայ. ջերմ) և այլն։

3. **Բայեր**՝ *ag'- «քշել» (հայ. ածեմ), *bher- «տանել, բերել» (հայ. բերեմ), *u̯el- «պտտել, ոլորել» (հայ. գելում), *u̯eid- «տեսնել, տեսած լինել, իմանալ» (հայ. գիտեմ, գտանեմ), *dhēi- «ծծել» (հայ. դիեմ), *dhē- «դնել»

(*հայ.* դնեմ), *es- *«լինել»* (*es-mi>*հայ.* եմ), *pō(i)-/pī- *«խմել»* (*հայ.* ըմպեմ), *men- *«մտածել»* (*հայ.* իմանամ?), *leig'h- *«լիզել»* (*հայ.* լիզեմ, լիզում), *pel-, *plē- *«հոսեցնել, լցնել»* (*հայ.* լի, լնում), *pleu- *«հոսել, լողալ»* (*հայ.* լուանամ), *k'leu- (*հայ.* լսեմ, լուայ), *leikṷ- *«լքել, թողնել»* (*հայ.* լքանեմ), *g'en- *«ճանաչել»* (*հայ.* ճանաչեմ< *ծանաչեմ, ծանեայ), *g'en- *«ծնել»* (*հայ.* ծնանիմ), *gṷel- *«սպրել»* (*հայ.* կլլեմ), *sed- *«նստել»* (*հայ.* նեծանիմ, ն-ստիմ), *meig'h- *«միզել»* (*հայ.* միզեմ), *er- *«շարժել, բարձրացնել»* (*հայ.* յառնեմ, յարեայ), *ed- *«ուտել»* (*հայ.* ուտեմ), *stā- *«կանգնել»* (*հայ.* ստանամ), *dō- *«տալ»* (*հայ.* տամ, ետու), *skel- *«կտրել»* (*հայ.* ցելում), *(s)ker- *«կտրել»* (*հայ.* քերել, քերթել, քերծել, քորել) *և այլն։*

4. Այլ բառեր՝ *per- *«միջով, դեպի, հեռու»* (*հայ.* հեռի, հեր-ու), *kṷetṷer,-or *«չորս»* (*հայ.* չորք), *(k)(s)ṷek's *«վեց»* (*հայ.* վեց), *ok'tō *«ութ»*, (*հայ.* ութ), *(e)nṷn̥ *«ինն»* (*հայ.* ինն *և այլն*)։

*Բ. Հնդեվրոպական լեզուների մեծ մասում տարածված արմատներ.*

1. Գոյականներ՝ (*1*) *nebh-, *emb(h)-/omb(h)-/m̥bh- *«խոնավ. ջուր, մառախուղ, ամպ»* (*հայ.* ամպ, ամպրոպ), *ster-/stel- *«աստղ»* (*հայ.* աստղ). *peṷōr, *pŭr *«կրակ»* (*հայ.* հուր), *meigh- *«մթին, մառախուղ, ամպ»* (*հայ.* մեգ) *և այլն.* (*2*) *gṷenā *«կին»* (*հայ.* կին), *snusos *«հարս»* (*հայ.* նու) *և այլն.* (*3*) *ṷl̥p-, *lup- *«աղվես»* (*ǝlōpek'-> *հայ.* աղուես), *r̥k'to-s *«արջ»* (*հայ.* արջ), *angṷhi- *«օձ»* (augṷhi->*հայ.* աւձ), *el-en- *«եղնիկ»* (*հայ.* եղն), *aṷei- *«թռչուն»* (*հայ.* հաւ), *mus- *«մուկ»* (*հայ.* մու-կն), *eg'hi- *«ոզնի»* (*og'hinii̯o-> ոզնի) *և այլն.* (*4*) *es-r̥- *«արյուն»* (*հայ.* արիւն), *i̯ekṷr̥-t- (*հայ.* լեարդ), *smek'- *«մորուք»* (*հայ.* մաւ-րուք), *ost(h)- *«ոսկր»* (*հայ.* ոսկր), *om(e)so-s *«ուս»* (*հայ.* ուս), *k'erd-, *k'ērd- *«սիրտ»* (*հայ.* սիրտ) *և այլն.* (*5*) *gṷr̥nu-, *gṷrāṷō(n)- *«աղաց, երկան»* (*հայ.* երկան), *gṷer- *«կլանել»* (*հայ.* կեր, կերակուր), *melit- *«մեղր»* (*հայ.* մեղր) *և այլն.* (*7*) *dem-/dom- *«տուն»* (*հայ.* տուն). (*8*) *ag'-ro-s *«դաշտ»* (*հայ.* արտ), *arǝtrom *«արոր»* (*հայ.* արաւր), *gṷel- *«կաղնի»* (*հայ.* կաղին, կաղնի) *և այլն.* (*14*) *ṷes-r̥ *«գարուն»* (*հայ.* գարուն) *և այլն.* (*18*) *bhā- *«խոսել»* (*հայ.* բան, բայ) *և այլն։*

2. Ածականներ՝ *ang'hu-s *«նեղ»* (*հայ.* անձուկ), *plāt- *«լայն»* (*հայ.* լայն), *neṷo-s *«նոր»* (*հայ.* նոր), *solo- *«ողջ, ամբողջ»* (*հայ.* ողջ, ամբողջ), *ster- *«ստերջ, անպտուղ»* (*հայ.* ստերջ) *և այլն։*

3. Բայեր՝ *eu- *«հագնել»* (*հայ.* ագանիմ), *lab(h)-, *lap(h)- *«լափել»* (*հայ.* լափեմ), *leu- *«հատել, բաժանել, արձակել»* (*հայ.* լուծանեմ), *gṷel- *«կլանել»* (*հայ.* կլանեմ), *enek'- *«հասնել»* (*հայ.* հասանեմ), *per-(g-) *«խրփել»* (*հայ.* հարկանեմ, հարի), *mer- *«մեռնել»* (*հայ.* մեռանիմ), *men- *«մնալ»* (*հայ.* մնամ), *ēp- *«բռնել»* (*հայ.* ունիմ), *euk- *«վարժվել, ընտելանալ»* (*հայ.* ուսանիմ), *k'er- *«աճել, աճեցնել, սնել»* (*հայ.* սերեմ), *derk'- *«նայել»* (*հայ.* տեսանեմ) *և այլն։*

4. Այլ բառեր՝ *semo- *«մի, ինչ-որ»* (*հայ.* ամեն, ամենայն), *ali̯os *«այլ»* (*հայ.* այլ), *anti *«առջև, դիմաց»* (*հայ.* ընդ *«փոխարեն»*), *kṷu- *«որտեղ, ուր»* (*հայ.* ուր) *և այլն.*

*Ինչպես ամեն մի լեզու, այնպես էլ հնդեվրոպերենը պետք է ունենար*

*բառերի բազմիմաստություն, համանունություն և համանիշություն։ Բազմիմաստության քիչ թե շատ ամբողջական քննարկումը առայժմ հնարավոր չէ երկու հիմնական պատճառով. միշտ չէ, որ կարելի է տարբերակել 1) բառիմաստների՝ տարբեր լեզուներում կրած փոփոխությունները հնդեվրոպական լեզվի մակարդակում կրած փոփոխություններից և 2) հնդեվրոպական լեզվի տարածական տարբերակներում բառերի ստացած առումները՝ միևնույն տարածքներում գործող բառերի բազմիմաստությունից։*

*Ավելի նպաստավոր են համանունության և համանիշության քննարկման պայմանները։ Սակայն այս դեպքում էլ մենք գործ ունենք մեծ մասամբ վերականգնված արմատական իմաստների և ոչ թե բուն բառիմաստների հետ, որ մեծացնում է և՛ համանունության, և՛ համանիշության քանակը, մանավանդ որ բոլոր տվյալների համադրության արդյունքների մեջ վերականգնողների կողմից հաճախ է նկատվում հակում դիմելու ընդհանուր և վերացական իմաստների։*

*Ինչպես հայտնի է, համանունությունը բազմիմաստության սահմանն է. բազմիմաստության զարգացումը՝ բառիմաստի տարբեր առումների հեռացումը հանգեցնում է համանունների առաջացմանը։ Համանունության մյուս աղբյուրը փոխառություններն են, որոնք, մուտք գործելով լեզվի մեջ, կարող են արդեն եղած բառերի հետ համանուններ կազմել։ Արդի վիճակում մենք առայժմ կարող ենք հավաստիորեն խոսել միայն առաջին տիպի համանունների մասին, այն էլ նկատի առնելով գերազանցապես արմատական իմաստները։ Յ. Պոկոռնու բառարանում համանուն արմատները մեծ թիվ են կազմում. երբեմն առկա են մեկ տասնյակից ավելի արմատային համանուններ. այսպես, օրինակ,* *u̯er- *համանուն արմատները խմբավորված են* **13** *տարբեր իմաստային խմբերի մեջ։ Բառային մակարդակում արմատական համանունությունը իրականում երբեք այդպիսին չի պահպանվում շնորհիվ տարբեր աճականների և ածանցների, տարբեր (թեմատիկ և աթեմատիկ) հիմքերի, հերթագայության տարբեր աստիճանների հանդես գալու։ Բերենք հնդեվրոպական արմատական համանունների մի շարք օրինակներ՝ ընտրելով այն խմբերը, որոնք գոնե մասամբ արտացոլված են հայերենում.*

1. *al- (*դերանվանական արմատ, որից* *al-i̯o- > *հայ.* այլ. *հմմտ. նաև* աղաւաղել < *աղեւաղել?).

2. *al- *«աճել, աճեցնել, սնել».*

3. *al- *«թափառել, մոլորվել»* (*հայ.* աղամողիմ *«մոլորվել, շեղվել», թերևս նաև բրբռ.* ալարել).

4. *al- *«այրել»* (*հայ.* աղաճ?)[10].

5. *al- *«աղալ»* (*հայ.* աղամ, ալիւր).

6. *al- (*al-ōu-/aləu-, *al-bho-) *«սպիտակ, փայլուն»* (*հայ.* աղաւնի).

1. *bhā- *«փայլել, լուսավորել, երևալ»* (*հայ.* բանամ).

2. *bhā- *«խոսել»* (*հայ.* բան, բայ, բամ, բաս, բայ).

---

[10] *Հ. Աճառյանը [ՀԱԲ,* $1^2$, *էջ 120], հենվելով Ա. Վալդեի և Յ. Պոկոռնու բառարանի վրա, բխեցնում է հ.-ե.* *ln̥dh- *արմատից, սակայն այս արմատին պատկանող բառերի և նրանց վերագրվող իմաստների իրար հետ կապ ունենալը կասկածելի է. հմմտ.* Mayrhofer, KEWA, 2 *էջ, 41,* Frisk, GEW, 2, *էջ 87 և այլն։ Յ. Պոկոռնին չունի։*

1. *del- «նպատակ դնել. հաշվել, դարանակալել» (հայ. տող, տողել).

2. *del- «երերալ» (հայ. տաղտ. տաղտուկ, տաղտկ(ան)ալ «ճկռել. ընկճվել. ձանձրանալ»).

3. *del- «ճեղքել, տաշել, քանդակել» (հայ. ատաղձ).

4. *del- «կաթել» (հայ. տեղ, տեղամ).

5. *del- «երկար».

1. *gel- «սեղմ(վ)ել, կլորանալ. կլոր բան» (հայ. բբռ. կլոր, կլիկ «կոտոր. փոքրիկ կլոր հաց. փոքր նարինջ. կաթիլ», կլնդրիկ «կոկիկ», կլոն «խմոր հաց», կլնձել «տաք ջրի մեջ գնդվել (ալյուրի մասին)» և այլն).

2. *gel-, *g$^{u}$el -«կլանել» (հայ. կուլ, կլանել, բբռ. կուլ, կլափան «կոկորդ»).

3. *gel(ə) - «ցուրտ, սառչել» (հայ. կաղաւել «սառչել (օձի մասին)», բբռ. կաղվլիլ «սառչել»).

1. *g'en- «ծնել» (հայ. ծին, ծնանիմ).

2. *g'en- «ճանաչել» (հայ. ճանաչեմ<*ծանաչեմ, ծանեայ, ծանաւք).

1. *g'enu-, *g'onu- «ծունկ. անկյուն» (հայ. ծունկ, ծունր).

2. *g'enu-, *g'enədh- «ծնոտ» (հայ. ծնաւտ).

1. *g'her- «ցանկանալ, ախորժել» (հայ. ձիր-ք, ձրի, ձրել).

2. *g'her- «քերել, քերծել»

3. *g'her- «ճառագայթել, փայլել, շողալ»

4. *gh'er- «բռնել. շրջապատել, շրջափակել» (հայ. ձրձել «կորզել, շորթել»).

5. *gh'er- «աղիք (?)».

6. *g'her- «փոքրիկ».

7. *g'her-, *g'her-s- «սևեռել, հառել. փշաքաղվել, փայտանալ» (հայ. ձար «մազ», ձառ «ծուռ. տգեղ, կոշտ»).

1. *k'er- «վերնամաս, գագաթ, գլուխ. եղջյուր» (հայ. սար).

2. *k'er- «աճել. աճեցնել, սնել» (հայ. սեր, սերեմ, սերունդ, սեռ, սերմն).

3. *k'er- «թել հյուսել, կցել» (հայ. սարիք, սարդ).

4. *k'er- «վիրավորել, վնասել, քայքայել. քայքայվել».

1. *mel- «մանրել, փշրել, աղալ» (հայ. մալեմ, մլմլեմ, մեղմ, մեղկ, մլաղաց, մամուլ, մլուկն, բբռ. մղմող «ցեց»).

2. *mel- «սխալվել. խաբել» (հայ. մեղ-ք, թերևս նաև՝ մոլոր, մոլի).

3. *mel- «դանդաղել».

4. *mel- «ուժեղ, մեծ».

5. *mel- «անդամ. կոդել, միացնել» (հայ. մարմին<իրան.?).

6. *mel- «մթնագույն, կեղտագույն. կոշտ» (հայ. մեղծ «ձանձախարիթ, մուր»).

7. *mel- «բուրդ, բրդյա զգեստ».

8. *mel- «երևալ. բարձրանալ. բարձունք».

1. *men- «ցցվել».

2. *men- «կոխել, ճզմել».

3. *men- «մտածել» (հայ. իմանամ?).

4. *men- «փոքր, մանր. փոքրացնել, մեկուսի» (հայ. մանուկ, մանր, մանչ).

5. *men- «մնալ» (հայ. մնամ).

1. *mer- «հյուսել, կապել. թել, թոկ».

2. *mer- «առկայծել» (հայ. մայր «խավար», բրբռ. մարել, մարմրել).

3. *mer- «սևացնել, մութ, գույն, բիծ» (հայ. մռայլ, մառ–ա–խուղ).

4. *mer- «մեռնել» (հայ. մեռանիմ, մարդ «մահկանացու»).

5. *mer- «տրորել» (հայ. մարտ «պայքար», մուրճ, մաշեմ, բրբռ. մեռ, մառ «փայտի ձեղ», մառել «ցորենը մանրել, կալսել»).

6.*mer-, *mer-s- «խանգարել, չարացնել, արհամարհել, մոռանալ» (հայ. մոռանամ).

1. *od- «հոտ արձակել» (հայ. հոտ).

2. *od- «զզվանք, ատելություն» (հայ. ատեամ).

1. *pel- «թափել, հոսել» (հայ. հեղում, ողողեմ).

2. *pel- «շարժել, քշել» (հայ. բրբռ. ճլոտել «հրել, մղել, գլորել»).

3. *pel- «ծալել».

4. *pel- «աման»

5. *pel- «վաճառել, շահել».

6. *pel- «գորշ, գունատ» (հայ. ալի–ք «սպիտակ. ալիք»).

7. *pel- «այրել. տաք լինել».

1. *sem- «հանել, թափել, լցնել» (հայ. ամամ, աման).

2. *sem- «մի, մեկ. միասին» (հայ. մի, ամեն).

3. *sem- «ամառ» (հայ. ամառն).

1. *(s)meukh- «սողոսկել, մխվել» (հայ. մուխ, մխեմ).

2. *meukh- «ծխել, ծուխ» (հայ. մուխ).

1. *u̯el- «տեսնել» (հայ. գեղ, գեղեցիկ).

2. *u̯el- «ցանկանալ, ընտրել» (հայ. գեղձ «ուժեղ ցանկություն, փափագ»).

3. *u̯el- «ճնշել, մղել».

4. *u̯el- «մազ, բուրդ» (հայ. գեղմն).

5. *u̯el- «խաբել».

6. *u̯el- «գոլ, տաք» (հայ. գոլ, գաղջ).

7. *u̯el- «պտտել, ոլորել» (հայ. գել «ոլորած, պիրկ», գիլ, գիղ, գաղձ գեղձ «պատատուկ, բաղեղ»).

8. *u̯el- «պոկել, շորթել, թալանել»։

Է՛լ ավելի մեծ սուբյեկտիվությամբ է պայմանավորված հնդեվրոպական լեզվի ստուգաբանական բառարանների մեջ համանիշների առատությունը։ Ինչպես համանունության դեպքում, հնդեվրոպական լեզվից առանձին լեզուներին անցնելիս համանիշությունը հազվադեպ է նույնությամբ պահպանվում։ Այսուհանդերձ կարելի է մատնանշել հնդեվրոպական իսկական համանիշներ՝ պայմանավորված բառերի հասարակական-ոճական (հասարակական տարբերակվածություն, սովորական կամ բանաստեղծական

լեզու, սովորական կամ հանդիսավոր խոսք և այլն), առարկայական-նշանակական և վերաբերմունքային (ուժեղացման աստիճաններ, նշանակման նրբերանգներ, դրական, բացասական կամ չեզոք վերաբերմունք), տարածական-բարբառային տարբերություններով և այլն։ Թողնելով վերջին դեպքը հատուկ քննարկման՝ բերենք որոշ օրինակներ մյուսների համար։

Ակնհայտորեն տարբերվում են միևնույն գաղափարներն արտահայտող բուն (մեծահասակների լեզվին պատկանող) և մանկական լեզվի (Lallwort) բառերը. այսպես, մեծահասակների լեզվի համար սովորական *pətḗr «հայր» (հայ. հայր), *mātér «մայր» (հայ. մայր) բառերի կողքին առկա են մանկական լեզվի բառեր՝ *appa (հմմտ. հայ. բրբռ. ապի, ապու «հայր, հայրիկ»), *atos, *atta- (հմմտ. հայ. բրբռ. ատտ «ծեր կին, պառավ», ատատա «մայր, մայրիկ»), *am(m)a, *ami, *mā, *mam(m)ā «մայր» (հմմտ. հայ. բրբռ. մա, մամ «մայրիկ», մամի «պառավ կին»), *nana, *nena «մայր» (հմմտ. հայ. բրբռ. նան, նանա, նանե, նանի «մայր, մայրիկ») և այլն։ Հետաքրքրական է նշել, որ բուն *pətḗr- և *mātér- բառերը ծագումով նույնպես գալիս են մանկական լեզվից (*pə-, *mā-՝ -tēr-, *-ter- մասնիկով)։ Ինչպես որ հայ. մանկական լեզվում մամ(ա) կարող է միաժամանակ նշանակել և՛ «մայր», և՛ «ուտելիք», այնպես էլ հ.-ե. *pa(p)pa- նշանակում է միաժամանակ և՛ «հայր», և՛ «ուտելիք» (հմմտ. հայ. բրբռ. փափա «հաց, ուտելիք»)։

Սովորական և հանդիսավոր խոսքի տարբերությունները որոշակի արտահայտություն ունեն մարդկային խոսքը բնութագրող բառարմատների մեջ։ Խոսելու գաղափարը կարող է արտահայտվել *au- (*au̯ed-), *bhā-, *bhel-, *u̯eku̯-, *u̯er- և այլ արմատների պատկանող բառերի միջոցով, որոնք, սակայն, գոյակցելու դեպքում ունենում են ակնհայտ ոճա-իմաստային տարբերություններ. այս տեսակետից բնորոշ օրինակներ է տալիս հին հնդկերենը, որտեղ vádati-ն նշանակում է «ձայն է բարձրացնում, խոսում է», vandate-ն (ռնգային միջածանցով ձև)՝ «գովում է, փառաբանում է, ակնածանքով ողջունում է» [(a)u̯ed-], *sa-bhā-ն (*sm̥-bhā-)՝ «ժողով» (*bhā- > հայ. բան, բայ, բամ), *bhaṇḍatē-ն «խոսում է, ծաղրում է, փառաբանում է» (*bhel-), vákti-ն՝ «ասում է, խոսում է» (u̯eku̯-, հայ. գոչել), vrata-ն՝ «պահանջ, պատվիրան, կանոնադրություն, հանդիսավոր խոստում, ուխտ» (*u̯er-, հայ. երդումն?) և այլն, այսինքն՝ տարբերակվում են խոսքի սովորական (*u̯eku̯- > vákti), հանդիսավոր (շատերի առջև արտասանվող), կրոնական-ծիսական, փառաբանական տեսակները. նշանակալից տարբերություններ է ըստեղծում կամքի արտահայտությունը՝ ըստ ուժգնության տարբեր աստիճանների և տարբեր երանգների (սովորական ցանկություն, պահանջ, կարիք և այլն)՝ *ais- (հայ. այց, հայց), *au- (հայ. աւիւն), *u̯el- (հայ. գեղձ «ուժեղ ցանկություն, փափագ»), *gheldh-, *gheldh- և այլն։

Հնդեվրոպական լեզուների համեմատական բառարանն ըստ արմատների կազմելու սովորույթի առաջ բերած անպատեհությունները և արմատների նախնական իմաստների վերականգնման թերությունները հատկապես ակնհայտ են դառնում այնպիսի իմաստների դեպքում, որոնցից շատ այլ իմաստներ կարող են ածանցվել՝ «փայլել», «մթին», «ուռչել», «խփել» և այլն։ Հմմտ. օրինակ, «փայլել, լողալ, լուսավորել, սպիտակ» իմաստի արտահայտման դեպքերը՝ *al- «փայլուն, սպիտակ» (հայ. աղաւնի), *ar(e)g′-

«փայլուն, սպիտակավուն» (հայ. արծաթ, արծնեմ, արծարծեմ), *aues- «լուսավորել», *aug- «փայլել, տեսնել», *bhā- «փայլել, լուսավորել, երևալ» (հայ. բանամ), *bhelgu- «փայլել», *bhel- (*bhlei-, *bhleig′-, *bhleik-, *bhleu-) «փայլուն, սպիտակ» (հայ. բալ), *bher- «փայլուն, բաց դարչնագույն» (հայ. բորենի), *bherəg′- «փայլուն, սպիտակ» (հայ. բարդի?), *bherək′- «շողալ», *del- «փայլել, շողալ» (հայ. տիւ), *g′hel- «փայլել շողալ» (հայ. ձաղ), *k′eu- «լուսավորել, պայծառ» (սուրբ, թերևս նաև շող, շուք), *leuk- «լուսավորել, լուսավոր» (հայ. լոյս, լուցանեմ), *(s)p(h)el- «փայլել, շողալ» (հայ. փայլ, փայլփայլիմ, փողփողիմ) և այլն:

*Հնդեվրոպական լեզվում լայնորեն գործում են բառակազմության երկու հիմնական եղանակները՝ բառաբարդումը և բառածանցումը, սակայն նախ՝ բարդության ոչ բոլոր տեսակներն են հավասարապես տարածված և երկրորդ՝ նախածանցումը բառիս բուն իմաստով բացակայում է:*

*Հնդեվրոպական բարդությունները, ինչպես կարելի է դատել հատկապես հին հնդկերենի և հին հունարենի տվյալների հիման վրա, կարող էին կերտվել բաղադրիչների ինչպես համադասական, այնպես էլ ստորադասական հարաբերությամբ: Համադասական տիպը հայտնի է* dvan-dva (<dvam-dvam *«երկու երկու») անունով և համապատասխանում է արդի հայ քերականության մեջ տարբերվող հարադասական բարդությանը. այդպիսիք են, օրինակ, միավորների և տասնավորի միացությամբ կազմված թվականները (համեմ. հայ.* երկո-տասան *«տասներկու», հ. հնդկ.* dvā-daśa, *հուն.* δώδεκα, *լատ.* duo-decim *և այլն): Ստորադասական բարդությունները լինում են մի քանի տեսակ. մասնավորապես լայն տարածում են ունեցել, այսպես կոչված,* bahuvrīhi *տիպի բարդությունները, որոնք նշանակել են մի բան ունեցող և կատարել են ածականի դեր (համեմ. հնդ.* bahu-vrīhi *«բազմաբրինձ»). մեծ թիվ են կազմել այն գոյականները, որոնց առաջին բաղադրիչը լրացրել է երկրորդի իմաստը՝* karmadhāraya *տիպի (ինչպես հայ.* մեծատուն, *հ. հնդկ.* madhya-dinam *«միջ-օրե» և այլն),* tatpuruṣa *տիպի (ինչպես հայ.* հաւր-եղբայր, *հուն.* πατρ-άδελφος *կամ* հովիւ<*ovi-pā *«խաշնարած, ոչխարապահ») և այլն:*

*Վերականգնումը ոչ միշտ է հնարավորություն տալիս որոշելու հիմքակազմության քննության կապակցությամբ թվարկված ածանցների գործուն և ոչ գործուն, արտադրողական (տարածված) և ոչ արտադրողական տեսակները: Կարելի է ասել, որ ինչպես ընդհանրապես, այնպես էլ հնդեվրոպական լեզվում վերջածանցները կարող են լինել երկու տիպի՝ ա) իմաստափոխական (իմաստահավելական), որոնք բառին հաղորդում են իմաստային նոր առում՝ առանց նրա խոսքի մասային արժեքը փոխելու, և բ) գործառական-փոխանցական, որոնք փոխում են բառի խոսքի-մասային արժեքը, բայից կերտում են գոյական, գոյականից՝ ածական և այլն [համեմ.* Ջահուկյան, *1974, 158]: Որոշ ածանցներ կարող են զուգակցել երկու տիպի արժեքները:*

*Բայական իմաստափոխական ածանցների դեպքում դժվար է տարբերություն անցկացնել բառակազմական և բառափոխական իմաստների միջև. այդպիսի «ածանցները» կարող են արտահայտել կերպա-վիճակային զանազան տարբերություններ՝ տևականություն, սաստկություն և այլն: Մոտավորապես նույն վիճակն է նաև ածականի դեպքում, որտեղ ածանցները կա-*

րող են ցույց տալ ինչպես համեմատելի հատկություն՝ բաղդատական կամ գերադրական արժեքով, այնպես էլ հատկության ուժեղություն և թուլություն՝ առանց համեմատության։ Գոյականների դեպքում ամենից ավելի տիպական իմաստափոխական արժեքը փոքրացուցիչ-փաղաքշականն է, որ հնդեվրոպական լեզվում արտահայտվել է *-(e)k(o)- ածանցով. հմմտ. *mer-i̯o-k(o)- «մարդուկ», հ. հնդկ. maryakaḥ «մարդուկ», հուն. μεῖραξ «պատանի» և այլն։ Փաստորեն բառակազմական արժեք ունեն նաև սեռակազմ (օրինակ՝ իգականակազմ) ածանցները։

Մեծ թիվ են կազմել գործառական-փոխանցական ածանցները՝ երբեմն իմաստափոխական արժեքով։

Գործառական ածանցների բնորոշ օրինակներ են դերբայական մասնիկները, որոնք բայահիմքերից կերտել են ածականներ՝ *-ent/ont/n̥t (հմմտ. *bheront- «տանող»), *-u̯es/u̯os/u̯s (հմմտ. *u̯oidus «իմացող»), *-meno/mno- (հմմտ. *bheromenos «բերող (իր համար), բերվող»)։ Բայահիմքերից այլ խոսքի մասեր կերտող ածանցներից պետք է հիշել առաջին հերթին գոյականակերտ ածանցները՝ ա) գերազանցապես բայանվանական (գործողության անուն կազմող)՝ *-tei/ti- (*-es-tei-) (հմմտ. *mr̥-ti- «մահ»՝ *mer-ից), *-teu/tu- (հմմտ. *-pr̥-tu- «անցում»՝ per-ից), *-men- (հմմտ. *bher-men- «կրում»՝ *bher-ից), *-es/os- (հմմտ. *k'leu-os- «լուր»՝ *k'leu-ից) և այլն, բ) գործողի անուն նշանակող՝ *-ter-, *-tel- (հմմտ. *g'enə-ter, *-tel- «ծնող»՝ *g'en-ից, հայ. ծնաւղ), գ) գործիք նշանակող՝ *-tro-, *tlo- (հմմտ. *arā-trom «վարելու գործիք, արոր», հայ. արաւր) և այլն։

Զգալի թիվ են կազմել ածականակերտ ածանցները, որոնք ածականներ (երկրորդաբար՝ գոյականներ) են կազմել բայերից և գոյականներից՝ *-(i)i̯o- (հմմտ. *gu̯ou̯īi̯o- «կովային»՝ *gu̯ou-ից, հայ. կովի, բառացի՝ «կովային»), *-mo- (հմմտ. *luk-mo- «լուսավոր»՝ *leuk-ից,) *-(e)no- (հմմտ. *louks-no- «լուսավոր»՝ *leuk-s-ից), *-ro- (հմմտ. *k'eubh-ro- «լուսավոր»՝ *k'eu-bh-ից, հայ. սուրբ), *-to- (հմմտ. *k'lu-to- «լսված»՝ *k'leu-ից, հայ. լու) և այլն։

Անուններից բայեր կերտող ածանցներն են *-i̯e/i̯o-, *-ske/sko- (հմմտ. *senei̯o- «ծերանում եմ»՝ *sene-ից, *medhu-skō «հարբում եմ»՝ *medhu-ից)։

## գ) ԲԱՐԲԱՌՆԵՐԸ

Հայոց լեզվի պատմության տեսանկյունից հնարավոր է հնդեվրոպական բարբառների քննարկման երկու եղանակ. ա) քննարկել հնդեվրոպական բարբառներն ընդհանրապես և որոշել հայերենի բարբառային դիրքը. բ) քննարկել հնդեվրոպական բարբառների փոխհարաբերությունը հայերենի առումով, այսինքն՝ ընտրել միայն այն զուգաբանությունները, որոնք հատուկ են հայերենին, և բոլոր մյուս լեզուները դիտարկել ըստ դրանց։ Առաջին մոտեցումը կարելի է կիրառել հնդեվրոպական բարբառների ընդհանուր քննարկման ժամանակ՝ ներկա հատվածում, երկրորդ մոտեցումը՝ հայերենի բարբառային դիրքը որոշելիս՝ հետագա շարադրանքում։

Հնդեվրոպական բարբառների գիտական քննության հիմքերը դրվել են

մի կողմից՝ Յ. Շմիդտի «ալիքների տեսությամբ» և մյուս կողմից՝ այսպես կոչված, լեզվաբանական աշխարհագրությամբ, ստեղծվել է ուսումնասիրության մի հատուկ բնագավառ, որ կոչվում է **տարածքային (արեալային) լեզվաբանություն** [Макаев, 1964]։ Մինչ այդ իշխել է հնդեվրոպական լեզվի համեմատական միասնության գաղափարը։ Ա. Շլայխերի ծագումնաբանական ծառի տեսությունը հնդեվրոպական լեզուների փոխհարաբերությունը պատկերացնում էր որպես հնդեվրոպական ընդհանուր նախալեզվից հիմք-լեզուների, ապա առանձին լեզուների, սրանց մեջ էլ բարբառների առանձնացման, վերջին հաշվով՝ անընդհատ ճյուղավորման պրոցես։ Յ. Շմիդտը [J. Schmidt, 1872] առաջ է քաշում այն դրույթը, որ հնդեվրոպական լեզուները բնութագրվում են անցումնային տարբեր հատկանիշների փնջերով, որոնք սկզբնապես կապվել են անցողիկ գծերով միավորված անընդհատ շարքեր. այդ անընդհատությունը խախտվել է, որովհետև չեն պահպանվել միջանցիկ բազմաթիվ լեզուներ։ Նորագոյացումների տարածումը Շմիդտը պատկերացնում էր կենտրոնից տարածվող և աստիճանաբար հանգչող ալիքների ձևով։ Ընդունելով հնդեվրոպական նախալեզվի բարբառային տարբերակվածությունը՝ Շմիդտը հայտնում էր այն կարծիքը, որ հնդեվրոպական լեզուների հետագա տարածումը արտացոլում է նրանց՝ սկզբնական տարածական փոխհարաբերությունը։ Այլ կերպ ասած՝ Շմիդտի տեսության մեջ հատուկ սահման չէր անցկացվում հնդեվրոպական բարբառների և հետագայում հանդես եկած լեզուների միջև, նկատի չէր առնվում բարբառների խառնման և միավորման հնարավորությունը առանձին լեզուների կազմավորման ժամանակ։

Յ. Շմիդտի գրքի լույս տեսնելուց մի քանի տարի անց Գ. Վենկերի ձեռնարկած գերմանական, ապա, ավելի ուշ, Ժ. Ժիլյերոնի ձեռնարկած ֆրանսիական բարբառագիտական ատլասների կազմման աշխատանքների հետ կապված բարբառագիտության մեջ տարածվում է այն միտքը, որ բարբառների միջև որոշակի սահմաններ չկան, և որ կարելի է խոսել միայն լեզվական (հնչյունական, քերականական, բառային) առանձին հատկանիշների (զուգաբանությունների) տարածման սահմանների մասին. ամեն մի բարբառ կամ խոսվածք բնորոշվում է զուգաբանությունների որոշ ամբողջությամբ, ընդ որում բարբառային կենտրոնները բնութագրվում են ցանցի խտությամբ, սահմանները՝ նոսրությամբ։

Շմիդտի «ալիքների տեսության» և լեզվաբանական աշխարհագրության նվաճումների լույսի տակ առաջին անգամ Ա. Մեյեն է փորձում հետևողականորեն քննել հնդեվրոպական բարբառների փոխհարաբերության հարցը [Meillet, 1908]։ Նա խնդիր է դնում տարբերելու հնդեվրոպական բարբառներին հատուկ գծերը հնդեվրոպական լեզուներին հատուկ գծերից, այսինքն՝ սահմանազատել բարբառային հին գծերը առանձին լեզուների նորագոյացումներից։ Այսուհանդերձ Մեյեն տուրք է տալիս Ա. Շլայխերի ծագումնաբանական ծառին և որոշ կարգի (օրինակ՝ իտալա-կելտական) ընդհանրությունների մասին խոսում է որպես հավաստված իրողություն։ Եթե հնդեվրոպական լեզուները նախկինում բաժանում էին centum և satəm խմբերի[11]՝ հ.-ե. շշրթնայնացած ետնալեզվայինները պահպանելու կամ դրանք առաջնալեզվային պայթականների, կիսաշփականների և շփականների վերածելու

[11] Ըստ հարյուր բառի լատինական և ավեստայան նշանակումների։ Centum և satəm անվանումները առաջին անգամ օգտագործել է Բրուգմանը 1890 թ.։

հատկանիշի հիման վրա, ապա Մեյեն այդ տարբերակումը դիտում է որպես բարբառային հատկանիշներից միայն մեկը, որին նա միացնում է հնչյունական և քերականական այլ հատկանիշներ ևս, այլև սահմանում է բառային զգալի տարբերություններ։ Հնդեվրոպական բարբառների ընդհանուր փոխհարաբերությունը Մեյեն պատկերացնում է հետևյալ կերպ.

Գերմ.
Բալթ.-սլավ.
Կելտ
Իրան.
Ալբ.
Իտալ
Հայ.
Հուն.
Հնդկ.

Հետագայում, խեթերենի և թոխարական լեզուների հնդեվրոպական բնույթի որոշման հետ կապված Ա. Մեյեն վերանայում է իր սկզբնական բաժանումը և որոշում հնդեվրոպական բարբառների երեք խումբ՝ 1) արևմտյան՝ իտալյան ու կելտական, 2) արևելյան՝ խեթական, թոխարական ու հայկական, և 3) կենտրոնական՝ հնդիրանական, բալթիական, սլավոնական, հունական ու գերմանական [Meillet, BSL, 32,1 և հջ.]։ Իր գրքի երկրորդ հրատարակության մեջ (1922) Մեյեն առաջ է քաշում այն դրույթները, որ ա) գերմանական, իտալական ու կելտական լեզուները բնորոշվում են մի շարք նորագոյացումներով՝ հակադրվելով մյուս լեզուներին, և որ բ) հարկավոր է հնչյունա-քերականական զուգաբանությունների տարածման գոտիները տարբերել բառային զուգաբանությունների տարածման գոտիներից. երկու կամ ավելի տարածքների համար ընդհանուր ծիսական (սակրալ), իրավական և այլն բառապաշարը խոսում է ընդհանուր հասարակական կառուցվածքի, բայց ոչ ցեղակցական ընդհանուր կապերի մասին. այսպիսով, Մեյեն դնում է բառային զուգաբանությունների տարբերակված քննության հարցը։

Ա. Մեյեի՝ հնդեվրոպական բարբառների փոխհարաբերության վերաբերյալ սկզբնական հայացքները նույնությամբ արտագրվում են Հ. Աճառյանի կողմից նրա «Հայոց լեզվի պատմության» մեջ [1, 1940, 24—33]։

Հնդեվրոպական տարածքային լեզվաբանության հետագա ձևավորման վրա զգալի ազդեցություն են գործում մի կողմից՝ իտալական նեոլինգվիստների՝ լեզվական տարածքների տարբերակման սկզբունքները և լեզուների խառնվածության ու ենթաշերտի (սուբստրատի) կարևորության վերաբերյալ նրանց դրույթները, մյուս կողմից՝ Ն. Ս. Տրուբեցկոյի առաջ քաշած «լեզվամիության», որպես լեզուների՝ կառուցվածքային որոշակի հատկանիշներով բնութագրվող ընդհանրության, գաղափարը, որ հետագայում ազդում է նաև հենց նեոլինգվիստիկայի ներկայացուցիչների վրա։

Նեոլինգվիստիկական ուղղության ներկայացուցիչ Ջ. Բոնֆանտեն, փորձելով ճշգրտել Ա. Մեյեին, հնդեվրոպական բարբառները տարբերում է

*հետևյալ ձևով՝ 1) արևմտյան՝ իտալական, կելտական ու գերմանական, 2) արևելյան՝ հնդիրանական ու սլավոնական, 3) կենտրոնական՝ բալթիական (հյուսիսում) ու հունական (հարավում)* [Bonfante, *1931, 69 և հջ.*]։

*Վ. Պիզանին տարբերում է բարբառային չորս խումբ՝ 1) կենտրոնական (գերմանական, բալթիական, սլավոնական, իլիրական, թրակյան), 2) արևմտյան (լատինական, կելտական), 3) հարավային (հունական, օսկ-ումբրական) ու 4) արևելյան (հնդիրանական), և տալիս հնդեվրոպական բարբառների դասավորման հետևյալ սխեման* [Pisani, *1933, 545 և հջ. 1940*]։

| իռլ. բրիտ. գալլ. | գերմ. | | բալթիկ-սլավ. | արիական |
|---|---|---|---|---|
| | լատ. սիկ. | իլիր. | թրակափռյուգ. | թոխ. |
| | | օսկ-ումբր. | հուն. | |
| | | | խեթ. | |

*Ֆ. Շպեխտը իր աշխատություններում* [Specht, *1935, 1–2. 1939, 1—2. 1944*] *դնում է հ.-ե. ընդհանրությունից տարբեր խմբերի դուրս գալու հաջորդականության հարցը՝ առաջ քաշելով այն դրույթը, որ հնդեվրոպական ընդհանրությունից ամենից առաջ դուրս են եկել արիացիները, հույները և հայերը, որի հետևանքով առաջացել են երկու տարածքներ՝ հունա-հայկական և իտալա-կելտա-գերմանա-բալթա-սլավական. այստեղից բխում է, որ ընդհանուր հնդեվրոպական են միայն այն զուգաբանությունները, որոնք հատուկ են հունարենին կամ հայերենին և մի այլ լեզվի։ Վ. Բրանդենշտայնը հնդեվրոպական ընդհանրությունից առաջինը դուրս եկած է համարում հնդիրանցիներին* [Brandenstein, *1936, 26. 1936, 234. 1962, 47*]։

*Նշված տվյալներն ընդհանրացնելու նոր փորձերից են Վ. Պորցիգի «Հնդեվրոպական լեզվաշրջանի անդամատումը»* [Porzig, *1954*] *և Ջ. Դեվոտոյի «Հնդեվրոպական լեզվական և էթնիկական ընդհանրության ծագումը»* [Devoto, *1962*] *աշխատությունները։*

*Վ. Պորցիգը հնչյունական և քերականական տվյալների հետ միասին լայնորեն օգտագործում է նաև բառային տվյալները, մեծ նշանակություն է տալիս երկու և ավելի լեզուների ընդհանուր նորագոյացումներին և աշխատությունը կառուցում է արևմտյան ու արևելյան տարածքների հակադրության դրույթի վրա. արևմտյան տարածքին նա հատկացնում է կելտական, լատինական, օսկ-ումբրյան, գերմանական, այլև (ըստ հայտնի տվյալների) իլիրական, արևելյանին՝ արիական, բալթիական, սլավոնական, հունական, հայկական, այլև (ըստ հայտնի փաստերի) թրակյան, փռյուգական, որոշ վերապահությամբ էլ խեթական, թոխարական և ալբանական խմբերը* [Porzig, *1954, 213*]։

*Ջ. Դևոտոն իր գիրքը կառուցում է լեզվական և արտալեզվական փաստերի համադրության հիման վրա։ Նա լայն չափերով օգտագործում է հընդ-*

եվրոպական լեզուների բառապաշարի տվյալները՝ կատարելով լեզվա-տարածքային և հասարակական-շերտագրային բաշխում։ Դևոտոյի համար հատուկ կարևորություն են ստանում այս առումով միևնույն իմաստների արտահայտման տարբերությունները և, սրա հետ կապված, համանիշության պրոբլեմը։

Սովետական գիտնականներից հնդեվրոպական տարածքային լեզվաբանության անցած ուղուն, ձեռք բերած արդյունքներին, մեթոդներին և պրոբլեմներին հատուկ աշխատություն է նվիրել Է. Ա. Մակաևը [Макаев, 1964]։

Հնդեվրոպական բարբառների դասակարգման նորագույն այլ փորձերից պետք է նշել Թ. Բառոուի և Վ. Գեորգիևի դասակարգումները։ Առաջինը [Burrow, 1956, 13] satəm խմբի լեզուները համարում է կենտրոնական և տարբերում է չորս եզրային խումբ՝ 1) արևմտյան՝ իտալական, կելտական, գերմանական, 2) հունական, որ հատուկ կապեր ունի կենտրոնականի հետ, 3) արևելյան՝ թոխարական, 4) խեթական։

Վ. Գեորգիևը [Георгиев, 1959, 277—283, Georgiev, 1980, 358—363] տարբերում է չորս խումբ՝ 1) հյուսիսային՝ ա) բալթիկ-սլավոնա-գերմանական ու բ) թոխարական, 2) արևմտյան՝ ա) կելտա-իտալա-վենետյան ու բ) իլիրական (մեսապերենի հետ միասին), 3) կենտրոնական՝ Ա. ա) հունական (մակեդոնական), բ) դակա-միզիական (ալբանական), գ) հնդիրանական և դ) հայ-փռյուգական, Բ. ա) թրակյան, պելասգյան, տերմիլյան (լիկիերեն), բ) կարիական, 4) հարավային՝ խեթա-լուվական կամ անատոլիական (խեթերեն՝ լիդիերենի հետ միասին, լուվերեն՝ լիկիերենի հետ միասին, հիերոգլիֆյան «խեթերեն», պալայերեն, էտրուսկերեն)։

Հնդեվրոպական բառապաշարի տարածքային բաշխման ուսումնասիրության համար հատուկ արժեք ունի արդեն հիշատակված Կ. Դ. Բաքի «Հընդեվրոպական հիմնական լեզուների ընտրովի հոմանիշների բառարանը» [Buck, 1949], որտեղ բառերը բաժանված են իմաստային խմբերի, և բերված են միևնույն իմաստներն արտահայտելու համար հնդեվրոպական լեզուների օգտագործած հոմանիշները՝ խմբավորված ըստ ծագման։ Ցավոք սրտի, հայերենի նյութը գրեթե չի օգտագործված։ Սակայն հայերենի բառային զուգաբանություններին նվիրված է հատուկ աշխատություն՝ Գ. Ռ. Զոլտայի «Հայերենի տեղը հնդեվրոպական լեզուների շրջանում» [Solta, 1960]։ Այստեղ Զոլտան փորձում է հայերենի տեղը որոշել ըստ բառային զուգաբանությունների։ Գերազանցապես Հ. Աճառյանի «Հայերեն արմատական բառարանի» տվյալների հիման վրա նա առանձնացնում է հայերենի ա) ընդհանուր հնդեվրոպական, բ) լեզուների մեծ մասի հետ ընդհանուր, գ) մի քանի լեզվի հետ ընդհանուր և դ) միայն մեկ լեզվի հետ ընդհանուր բառեր և ապա անում եզրակացություններ։ Հատուկ արժեք է տրվում բառային վերջին տիպի (էքսկլուզիվ) զուգաբանություններին և ըստ դրանց քանակի հայերենի հետ առնչվող հ.-ե. լեզվախմբերը բաշխվում են մերձավորության տարբեր աստիճաններով։ Զոլտայի աշխատությունը մեթոդիկայի տեսակետից նորություն էր հնդեվրոպական լեզվաբանության մեջ ընդհանրապես։

Փորձեր են արվել հնդեվրոպացիների բարբառային փոխհարաբերությունը որոշելու վիճակագրական տվյալներով։ Ա. Լ. Կրյոբերը և Կ. Դ. Կրետիենը 1937 թվականին և հետո [Kroeber-Cretien, 1937, 1939. Kroeber,

1960], հենվելով 30 հնչյունական և 44 ձևաբանական զուգաբանությունների վրա, առանց տարբերելու հին գծերն ու նորագոյացումները, որոշում են կելտական, իտալական, հունական, հայկական, իրանական, հնդկական (սանսկրիտ), սլավոնական, բալթիական և գերմանական լեզուների փոխհարաբերությունը։ Ըստ նրանց հաշվումների՝ հայերենը ամենից ավելի մոտ է հնդիրանականին և հունականին. հակառակ տարածված կարծիքների՝ իտալականը և գերմանականը մոտ են բալթիականին, բայց ոչ այնքան մոտ կելտականին։

Ըստ Կրյուբերի հաշվումների՝ հայերենի ու հունարենի գործակիցներն ընդհանուր առմամբ զուգահեռ են, բարձր՝ իրանականի (ինչպես նաև սանսկրիտի) ու իրար և ցածր՝ կելտականի ու գերմանականի նկատմամբ. հայերենը և հունարենը տարբերվում են իրարից հատկապես նրանով, որ հունարենը բարձր աստիճանի նմանություն ունի իտալականին, իսկ հայերենը՝ սլավոնականին ու բալթիականին [Kroeber, 1960, 7]։

Կարելի է նշել նաև այլ հաշվումներ. Կրյուբերից և Կրետիենից ավելի վաղ նման հաշվումներ կատարել են լեհ գիտնականներ Չեկանովսկին (20 հատկանիշ) և Մոշինսկին (19 հատկանիշ, նախորդի տվյալների լրացումից հաշվառմամբ՝ 22 հատկանիշ)։ Ավելի ուշ շրջանի համար նշելի են Ռոսի հաշվումները։

Կարելի է ասել, որ չնայած եղած այլևայլ տարբերություններին՝ բոլոր հետազոտողները միաբանական են այն հարցում, որ հայերենը ամենից ավելի մոտ է հնդիրանական ու հունական խմբերին, և որ centum ու satəm հին բաժանումը միակողմանի է ու իրեն չի արդարացնում։

Հնդեվրոպական լեզուների փոխհարաբերության ճշգրիտ պատկերը որոշելուն խանգարում են ինչպես օբյեկտիվ, այնպես էլ սուբյեկտիվ հանգամանքներ։

Օբյեկտիվ հանգամանքներից է առաջին հերթին հնդեվրոպական լեզուների հայտնության և հուշարձանների հնության ու երկարատևության ժամանակների տարբերությունը. շատ լավ հայտնի, հնագույն գրավոր հուշարձաններ և երկարատև պատմություն ունեցող լեզուների կողքին առկա են շատ քիչ կամ նույնիսկ միայն անունով հայտնի, համեմատաբար ուշ շրջանի պատկանող հուշարձաններ ունեցող և նույնիսկ գիր ու գրականություն չունեցող լեզուներ։ Խեթա-լուվական, հնդիրանական և հունական խմբերը ներկայացված են մ. թ. ա. II հազարամյակից, իտալյանը՝ մ. թ. ա. I հազարամյակից, գերմանականը, կելտականը, հայկականը, թոխարականը և սլավոնականը՝ մ. թ. I հազարամյակից, բալթիականը, ալբանականը՝ մ. թ. II հազարամյակի կեսերից սկսվող հուշարձաններով։ Հնդիրանականը, հունականը, գերմանականը, կելտականը, հայկականը, սլավոնականը, բալթիականը, ալբանականը ներկայացված են մինչև այժմ հարատևող կենդանի լեզուներով, խեթա-լուվականը, թոխարականը, թրակյանը, փռյուգականը, իլիրականը (մեսապերենով հանդերձ), վենետյանը՝ միայն մեռած լեզուներով, որոնք հայտնի են տարբեր չափով։ Ընդհանրապես տարբեր է լեզուների պատմության երկարատևության աստիճանը։ Այս պայմաններում մենք հաճախ կարող ենք միայն պայմանականորեն արձանագրել տվյալ խմբում այս կամ այն երևույթի բացակայությունը, և ավելի հավաստի են հակադրական (կոնտրարային), քան հակասական (կոնտրադիկտորային) զուգաբա-

նությունները. երկրորդ դեպքում նշվում է միայն առկայությունը կամ բացակայությունը. առաջին դեպքում՝ տվյալ միավորի (ձևի) դիմաց տրվում է նրան հակադրվող մի այլ միավոր (ձև)։

Օբյեկտիվ դժվարություն հարուցող կարևոր էական հանգամանք է լեզվակառուցվածքի փոփոխության անհավասարաչափությունը։ Այսպես, նոր պարսկերեն գրական լեզուն մ. թ. IX—X դարերից սկսած մինչև մեր օրերը էական փոփոխություններ չի կրել, մինչդեռ հայերենը այդ նույն ժամանակամիջոցում անցել է հին շրջանից միջինին և ապա նորին, ընդ որում համապատասխանաբար հանդես են եկել գրաբարը, միջին գրական հայերենը և նոր գրական լեզուն իր երկու տարբերակներով։ Չնայած իր հուշարձանների ոչ մեծ հնությանը՝ լիտվերենը պահպանել է խիստ արխաիկ գծեր, մինչդեռ համեմատաբար վաղ ավանդված թոխարական լեզուները և լիտվերենի հետ գրեթե միաժամանակ ավանդված ալբաներենը ենթարկվել են կառուցվածքային մեծ փոփոխությունների։ Բառապաշարում համեմատաբար քիչ օտար տարրեր ունեցող խալյանի կողքին առկա են մեծ չափով օտար ազդեցության ենթարկված հայերենն ու ալբաներենը։ Քանի որ լեզուն մեկ միասնական համակարգ չէ, այլ գոյակցող համակարգերի ամբողջություն, ուստի տարբեր է նաև դրանց փոփոխականությունը։

Սուբյեկտիվ հանգամանքների մեջ պետք է նշել հնդեվրոպական լեզուների արխաիկ տարրերի և նորագոյացումների անբավարար տարբերակումը[12], առանձնացվող հատկանիշների՝ տարբեր լեզուներում ունեցած հաճախականության և կառուցվածքի մեջ խաղացած դերի անբավարար հաշվառումը։

## դ) ԶԱՐԳԱՑՄԱՆ ՓՈՒԼԵՐԸ

Հնդեվրոպական լեզվաբանության զարգացման արդի փուլի համար բնորոշ է հնդեվրոպական լեզվի ժամանակագրորեն շերտավորելու միտումը՝ ըստ սրա ընձեռած օբյեկտիվ տվյալների։ Այս նպատակն իրագործվում է առաջին հերթին հնդեվրոպական լեզուների ընդհանրությունների ոչ միայն տարածական-բարբառային, այլև ժամանակագրական բաշխման և վերականգնված ընդհանուր լեզվի կառուցվածքային միավորների տարբերակների համեմատության ու ներքին վերականգնման միջոցով։ Վաղուց ի վեր գիտնականների սեփականությունն է դարձել այն միտքը, որ ոչ բոլոր ընդհանուր երևույթները պետք է հասցնել հնդեվրոպական միասնության շրջանը, և որ այդ շրջանին հասցնելու դեպքում էլ պետք է տարբերել ժամանակագրականորեն հին և նոր երևույթներ։ Սրա հետ միասին հնդեվրոպական լեզվի նկատմամբ ներքին վերականգնման մեթոդի և հարաբերական ժամանակագրության սկզբունքի լայն կիրառումը հնարավորություն է տալիս որոշելու կառուցվածքի և բառապաշարի հին և նոր շերտեր, արխաիկ գծեր և նորագոյացումներ։ Այս վերականգնումներին երբեմն օգնում են հնդեվրոպական և նրանց հետ հեռավոր ցեղակցություն ունեցող ոչ հնդեվրոպական լեզուների համեմատության տվյալները. այսպես, կոկորդայինների հիպոթեզը աջակցություն է գտնում հնդեվրոպա-սեմական, էրգատիվ կառուց-

[12] Թեև դրանց տարբերակման որոշ մեթոդներ կան. այսպես, օրինակ, հայտնի է, որ եզրային՝ իրարից հեռու բարբառների ընդհանուր գծերը սովորաբար հին են լինում։

վածքի վերականգնման դրույթը՝ հնդեվրոպա-խուռա-ուրարտական ցեղակցության վարկածի մեջ և այլն։ Իհարկե, առայժմ վաղ է խոսել բոլոր վերականգնումների ժամանակագրական որոշակի բաշխման և հնդեվրոպական լեզվի զարգացման որոշակի փուլերի առանձնացման մասին, բայց արդեն հնարավոր է նշել, որ հետազոտողները սովորաբար տարբերում են լեզուների տրոհմանը անմիջապես նախորդող և ավելի վաղ շրջաններ։ Եթե առայժմ մի կողմ թողնենք դրանք կապող (միջին) շրջանի վերականգնման հնարավորությունը, որ առայժմ չի իրականացած, ապա կարելի է վաղ հնդեվրոպական շրջանի լեզվավիճակը կոչել նախահնդեվրոպերեն, ուշ հնդեվրոպական շրջանինը՝ համահնդեվրոպերեն։ Խոսել հնդեվրոպական լեզվի արխաիկ տարրերի բացահայտման մասին՝ նշանակում է նկարագրել նախահնդեվրոպերենի վերականգնման փորձերի վիճակը։ Կանգ առնենք այդ փորձերի վրա [հմմտ. հատկապես **Szemerényi**, 1970. **Савченко**, 1974]:

Մի կողմից՝ հնդեվրոպական ձայնդարձի համակարգը, որտեղ երկար *ē, *ō, *ā ձայնավորներին ստորին աստիճանում համապատասխանում է *ə-ն, և հնարավորություն է ստեղծվում դրանց հարաբերությունը երկբարբառների օրինակով մեկնաբանելու *eə/ə ձևով (հմմտ. *ei/i), մյուս կողմից՝ խեթերենի հայտնագործումը, որտեղ հ.-ե. այլ լեզուների երկար ձայնավորներին երբեմն համապատասխանում են կարճ ձայնավոր + ḫ(ḫ) կապակցությունները, հնդեվրոպաբանների զգալի մասին հանգեցրին հ.-ե. լեզվի այնպիսի նախնական վիճակ ենթադրելուն, որտեղ եղել են կոկորդային բաղաձայններ։ Սակայն վիճելի են կոկորդայինների քանակի և բնույթի հարցերը։ Ենթադրվում է սովորաբար երեք (ըստ *ē, *ō, *ā ձայնավորների հետ հերթագայվելու՝ *ə$_1$, *ə$_2$, *ə$_3$ կամ, այլ նշանակմամբ, *H$_1$ *H$_2$, *H$_3$), երբեմն էլ մեկ, երկու, չորս և ավելի (մինչև տասը) կոկորդային։ «Կոկորդային» (լարինգալ) անվան տակ երբեմն հասկանում են նաև ետնալեզվային և ըմպանային (ֆարինգալ) հնչյուններ։ Մեկ «կոկորդային» ընդունողները այն դիտում են սովորաբար որպես ḫ կամ ɦ: Ըստ կոկորդայինների տեսության՝ երկար ձայնավորներ ստացվել են ձայնավոր+կոկորդային կապակցություններից. կոկորդայինները դադարելով անկախ հնչյուններ լինելուց՝ նախորդ ձայնավորները երկարացրել են (ըստ ոմանց՝ նաև նոր երանգ հաղորդել), իսկ հաջորդ ձայնավորների քանակի (երկարության) վրա սովորաբար ազդեցություն չեն գործել։

Հնդեվրոպական պայթականներից շնչեղների շարքերը հաճախ մեկնաբանվում են որպես ձայնեղ + «կոկորդային» (*bh, *dh, *gh) և խուլ + «կոկորդային» (*ph, *th, *kh) շարքերի հետագա ձևափոխություններ, թեև վեճեր կան ընդհանրապես շնչեղների ինքնուրույն շարքեր լինելու, ինչպես նաև ձայնեղների և խուլերի հակադրության իսկական բնույթի մասին։

Ետնալեզվայինների երկու հակադրությունները,—շրթնայնացած-չշրթնայնացած (*gu̯h, *gu̯, *ku̯: *gh, *g, *k) և քմայնացած-չքմայնացած (*g′h, *g′, *k′: *gh, *g, *k),—ոչ միայն վերագրվում են տարբեր տարածքների և մեկնաբանվում որպես բարբառային հատկանիշ, այլև հատկացվում ժամանակագրական տարբեր շերտերի. սովորաբար առաջնային է համարվում շրթնայնացած-չշրթնայնացած հակադրությունը, և այն վերագրվում է հնդեվրոպական լեզվի զարգացման վաղ շրջանին. քմայնացումը համար-

*վում է սովորաբար ավելի ուշ ծագած, թեև կան քմայնացման երևույթի հնության տեսակետի կողմնակիցներ նույնպես։ Ինչպես որ «կոկորդայինների» հիպոթեզը աջակցություն է գտնում հնդեվրոպա-սեմական ցեղակցության հիպոթեզի և ապա նոստրատիկ լեզվաբանության կողմից, այնպես էլ հ.-ե. շրթնայնացած և քմայնացած ետնալեզվայինների համար փորձ է արվում ցույց տալու նոստրատիկ հիմքեր. Թյուրքական լեզուներում հ.-ե. շրթնայնացածներին համապատասխանում են շրթնային, քմայնացածներին՝ առաջին շարքի ձայնավորներից առաջ գտնվող ետնալեզվայիններ* [Иллич-Свитыч, 1964б, 22—26]։

*Ինչպես հայտնի է, հ.-ե. լեզուն ունեցել է արմատական ածականների կարգը. սրանք որոշակի իմաստից զուրկ այն հնչյուններն են, որոնք հանդես են գալիս բուն արմատի վերջում (հմմտ. հայ.* լպիր-ծ *և* լպիր-շ՝ լիրբ-*ի կողքին,* ոլոր-տ՝ ոլոր-*ի կողքին և այլն)։ Նկատվել է, որ հ.-ե. վերջածանցների ձայնավորները ենթարկվում են կանոնավոր հերթագայության, մինչդեռ ածականները հերթագայումից ընդհանրապես զուրկ են։ Այստեղից ենթադրվում է, որ ածականները ծագել են նախքան հ.-ե. հերթագայությունների, հատկապես ձայնդարձի համակարգի առաջացումը։ Իսկ ինչպե՞ս է առաջացել ձայնդարձի համակարգը։ Ակնհայտ է, որ ձայնդարձի ստորին պատճառը ոչ այլ ինչ է, եթե ոչ ձայնավորի կամ երկբարբառի թուլացում. այդպիսի թուլացումը սովորական է ուժային (ոչ տոնային-երաժշտական) շեշտի դեպքում, ուստի ենթադրվում է վաղ հնդեվրոպական շրջանի համար ուժային շեշտ, որ հետո փոխարինվել է բարձրության (տոնային-երաժշտական) շեշտով։ Երկար և կարճ ձայնավորների հերթագայությունը (այսպես կոչված, քանակական ձայնդարձը) բացատրվում է ձայնավորների դիրքով (երկարացում հաջորդ վանկի կամ բաղաձայնի անկման հետևանքով), ձևաբանական պատճառներով և այլն։*

*Ենթադրելով ածանցների մեջ հերթագայություն և ըստ «կոկորդայինների» հիպոթեզի վերականգնելով մեկ նախնական ձայնավոր՝* e, *է. Բենվենիստը գտնում է, որ այն փոխել է երանգը՝ զուգորդվելով նախորդող «կոկորդայինի» հետ և փոխել երանգն ու երկարել՝ զուգորդվելով հաջորդող «կոկորդայինի» հետ՝* $ə_1e>e$, $ə_2e>a$, $ə_3e>o$, $eə_1>ē$, $eə_2>ā$, $eə_3>ō$: *Համապատասխանաբար նա վերականգնում է բուն արմատի և ածանցի փոխհարաբերության երկու տիպ՝ 1) շեշտված ձայնավորով արմատ ու առանց ձայնավորի ածանց* (*pét-r-) *և 2) անշեշտ ու անձայնավոր արմատ և շեշտված* *e *ձայնավորով ածանց* (*pt-ér-). *սրանից առաջինը նա կոչում է հիմքի առաջին վիճակ, երկրորդը՝ երկրորդ վիճակ։ Ըստ Բենվենիստի՝* I *վիճակը կարող է ունենալ միջադիր ածական* (*i̯eu-g-s-), II *վիճակը՝ ետադիր ածական* (*i̯u-ne-g-) [Benvenist, 1935. Бенвенист, 1955]*։ Բենվենիստի այս տեսությունը սկզբում լայն տարածում է գտնում, բայց հետագայում ենթարկվում է քննադատության՝ հայեցողականության և տիպաբանական քիչ հավանականության համար։ Էլ չենք խոսում այն մասին, որ «կոկորդայինների» հիպոթեզը նույնպես ընդհանուր ընդունելություն չի գտել։*

*Անվանական քերականարգերի և սրանց դրսևորման առանձնահատկությունների ուսումնասիրությունը ևս հնարավորություն է տալիս վերականգնելու ավելի նախնական վիճակի որոշ գծեր։*

*Այն հանգամանքը, որ ա) չեզոք սեռի ուղղականն ու հայցականը միշտ*

համընկնում են, բ) արական ու իգական սեռերի տարբերակումը հստակ չի անցկացվում (առկա են արականի ձև ունեցող իգական ու իգականի ձև ունեցող արական անուններ), և գ) խեթերենը չի տարբերում արականի ու իգականի ձևերը, գիտնականներին հիմք է տալիս վերականգնելու մի վիճակ, որ բնութագրվում է շնչավորի ու անշունչի կամ, ինչպես այժմ ավելի ճիշտ է համարվում, ակտիվի և պասիվի հակադրությամբ։ Սրա և որոշ այլ փաստերի հիման վրա նախահնդեվրոպական լեզվի համար ենթադրվում է էրգատիվ կառուցվածք, որի դեպքում անցողական բայերի ուղիղ խնդիրը և անանցողական բայերի ենթական ձևավորվում են միակերպ, իսկ անցողական բայերի ենթական ստանում է հատուկ հոլովական ձևավորում՝ էրգատիվ հոլով։ Հնդեվրոպական լեզվի հնավոր ցեղակցության (նոստրատիկ տեսության) կողմնակիցները այս վիճակը տիպաբանորեն և նյութականորեն համեմատում են ուրարտական անունների ձևավորման հետ [Джаукян, 1963, 1967]։

Հնդեվրոպական լեզուների անվանական հոլովման և թվակազմության առանձնահատկությունների, ինչպես նաև հատկապես խեթերենի համապատասխան փաստերի ուսումնասիրությունը հնարավորություն է տալիս վերականգնելու մի վիճակ, երբ չի եղել թվային տարբերակում (նույն հոլովական վերջավորությունները հանդես են եկել և՛ եզակի, և՛ հոգնակի թվերում. հմմտ. խեթ. սեռականի վերջավորությունները), և հոլովների համակարգը բազմանդամ չի եղել։ Չեզոք սեռին պատկանող այսպես կոչված տարաձև (հետերոկլիտիկ) անունների հոլովման սկզբնական վիճակը բնութագրվել է արմատական *-r-ով և *-i-ով վերջացող եզակի ուղղական-հայցականի ու *-n-ով վերջացող հոլովական այլ հիմքերի հակադրությամբ։ Ուղիղ և թեք հոլովների սկզբնական հակադրությունը երևում է թեկուզ այն փաստից, որ սեռական հոլովի սկզբնական գործառությունների շրջանակը խիստ լայն է եղել՝ ցույց տալով ընդհանրապես սահմանափակ առումով մասնակցություն (հարաբերություն)։

Դերանվանական հոլովման առանձնահատկությունների ուսումնասիրությունը ևս բերում է այն եզրակացության, որ անձնական դերանունների բազմահոլով համակարգը համեմատաբար ուշ (ըստ ոմանց՝ առանձին լեզուների) ձեռքբերում է՝ անվանական հոլովման ազդեցության հետևանք, և որ սկզբնապես անձնական դերանունները ունեցել են միայն ուղղականի և թեք հոլովի հակադրություն։ Դժվար չէ կռահել, որ տարահիմք (սուպլետիվ) հոլովումը ձևավորվել է անկախ դերանունների և սրանց տարրերի զուգորդումով։ Պատահական չպետք է համարել, որ անձնական դերանունների առաջին դեմքի թեք հիմքը՝ *me-ն զուգահեռներ ունի նոստրատիկ այլ լեզուների համապատասխան դերանունների ուղղականի մեջ։ Ուշ ծագած է համարվում արևելյան տարածքում տարածված հոգնակի 1-ին դեմքի *mes ձևը, որ ներկայացնում է պարզապես *me-ի հոգնակին։

Սկզբնական ակտիվ-պասիվի դասա-սեռային հակադրությունը հատուկ է նաև ցուցական դերանունների որոշ տիպերի. այսպես, մերձավոր կամ արդեն հիշված առարկան ցույց տվող *so(s), *sā, *tod դերանվան արականն ու իգականը կազմված են միևնույն արմատական բաղաձայնից և հակադրվում են չեզոքին։

Հնդեվրոպական բայական համակարգի վերլուծությունը բացահայտում

է մի այնպիսի վիճակ, որ ամենից առաջ բնութագրվում է կերպային, բայց ոչ ժամանակային տարբերություններով՝ տևական-անավարտ և անտևական-ավարտուն եզրերի հակադրությամբ. այս հակադրությունն էլ կամ ընդհանուր տարածում չի գտել, կամ խեթերենում շատ վաղ վերացել է։ Հավանաբար սրանց կողքին գոյություն է ունեցել նաև կատարյալը (պերֆեկտը) սկզբնապես ոչ թե որպես գործողության թողած վիճակային հետևանքի, այլ ընդհանրապես որպես վիճակի արտահայտություն։ Ժամանակային տարբերությունները հնդեվրոպերենում զարգացել են ավելի ուշ՝ մասամբ կերպի, մասամբ եղանակի (հմմտ. ապառնին) քերականարգերի հիման վրա։ Վաղուց ի վեր հնդեվրոպական լեզվաբանության մեջ արտահայտված է այն կարծիքը, որ սիգմատիկ (*-s-ով) աորիստը ձևավորվել է ավելի ուշ, քան պարզը. ոմանք նույնիսկ գտնում են, որ սիգմատիկ աորիստը առանձին հնդեվրոպական լեզուներում ծագել է անկախաբար՝ միևնույն սիգմատիկ ածանցների բազայի վրա։ Բուն պարզ աորիստի հնությունը հաստատվում է նրա վերջավորությունների բնույթով. ներկայի վերջավորությունները վերջում ունեն *i տարրը, աորիստը՝ ոչ, որ խոսում է աորիստի՝ հիշյալ հակադրության մեջ ոչ նշանակիր անդամ լինելու մասին։ Հավանական է կարծել, որ աորիստի վերջավորությունները սկզբնապես հատուկ եղանակա-ժամանակային տարբերակում չեն ունեցել՝ արտահայտելով պարզապես գործողություն, որ, ինչպես ցույց է տալիս հնդիրանական ինյունկտիվ կոչված ձևակարգը, արտահայտում է ըստ իրադրության և կոնտեքստի մի կողմից՝ և՛ անցյալ, և՛ ապառնի, մյուս կողմից՝ և՛ ցանկություն, և՛ հորդոր։ Կարելի է նշել, որ այս շրջանում եղել է միայն գործողություն և վիճակ (հատկապես հոգեվիճակ) արտահայտող աորիստի և կատարյալի (պերֆեկտի) տարբերակում։ Այսպես կոչված միջին սեռի վերջավորությունների մի մասի համընկնումը կատարյալի (պերֆեկտի) վերջավորությունների հետ ցույց է տալիս, որ երկուսն էլ զարգացել են վիճակի նախնական քերականարգի բազայի վրա [Савченко, 327]։ Բայի համակարգում գործողության և վիճակի սկզբնական հակադրությունը համապատասխանում է անվան համակարգում ակտիվի և պասիվի սկզբնական հակադրությանը։

Եղանակներից հրամայականը և սահմանականը նախնական են, ըղձականը և ստորադասականը զարգացել են համեմատաբար ավելի ուշ։

## ե) ՑԵՂԱԿՑԱԿԱՆ ԿԱՊԵՐԸ

Հնդեվրոպական լեզուների ցեղակցության գաղափարի ձևավորման, հնդեվրոպական լեզվաընտանիքի մեջ մտնող լեզուների տեղի որոշման, հնդեվրոպականից տարբեր լեզվաընտանիքների (ուրալյան, թյուրքական, սեմական և այլն) հավաստման և սահմանազատման հետ միասին աստիճանաբար զարգանում ու ձևավորվում է լեզվաընտանիքների հեռավոր ցեղակցության գաղափարը՝ անցնելով զարգացման երկու շրջան։

Հեռավոր ցեղակցության գաղափարի ձևավորման առաջին շրջանը, կարելի է ասել, սկսվում է Ֆ. Բոպպի ժամանակներից և տևում է մինչև XX դ. 20-ական թվականները։ Այս շրջանի առաջին փուլում, որ տևում է մինչև XIX դ. 70-ական թվականները, դեռևս չկան մերձավոր և հեռավոր ցեղակցության սահմանազատման որոշակի չափանիշներ։ Ֆ. Բոպպը, չունենալով

մեթոդի ճշգրտություն և հնչյունական որոշակի օրինաչափությունների գոյության գաղափար, 1840-ական թվականներին հնդեվրոպական լեզվաընտանիքի անդամներ է որոնում նաև Կովկասի քարթվելական լեզուների, հատկապես վրացերենի մեջ։ Երկրորդ փուլում, սկսած 1870-ական թվականներից մինչև XX դ. սկզբները, հնդեվրոպաբանության մեջ արմատավորվում են հետազոտության ավելի ճշգրիտ մեթոդներ, և կատարվում է հնդեվրոպական լեզվի գիտական սիստեմատիկ վերականգնում, բայց չկան համեմատվող մյուս լեզվախմբերի նախնական վիճակների (նախալեզուների) վերականգնման նույնչափ ճշգրիտ տվյալներ։ Այդ պատճառով էլ միջընտանիքային համեմատությունները գնում չունեն անհրաժեշտ հավաստիություն։ Շատ լեզվաբաններ համեմատություններ են կատարում ուրալյան և ալթայական, հնդեվրոպական և քարթվելական, հնդեվրոպական և սեմական, քարթվելական և սեմական, դրավիդյան և ուրալ-ալթայական լեզվախմբերի միջև և այլն։ Առաջին շրջանի երրորդ փուլում, սկսած մեր դարի սկզբներից մինչև 20-ական թվականները, զույգ լեզվաընտանիքների ավելի ինտենսիվ ուսումնասիրությունների հետ միասին, հանդես են գալիս մի կողմից՝ Ա. Տրոմբետտիի և մյուս կողմից՝ Հ. Պեդերսենի ընդհանրացնող աշխատությունները։ Սրանցից առաջինը, ձգտելով ապացուցել աշխարհի լեզուների ծագման միասնությունը, հարուստ տվյալներ է բերում նաև իրար հեռավոր ցեղակցության մեջ գտնվող լեզվաընտանիքների բառային (հատկապես դերանունների, թվականների), բառակազմական, ձևաբանական և շարահյուսական ընդհանրությունների վերաբերյալ։ Մոտավորապես նույն ժամանակներին պատկանող իր աշխատություններում հայտնի հնդեվրոպաբան Հ. Պեդերսենը որոշակիորեն ձևակերպում է այն միտքը, որ գոյություն է ունեցել հեռավոր ցեղակցության մեջ գտնվող հնդեվրոպական, ուրալ-ալթայական և սեմաքամական լեզուների սկզբնական ցեղակցական ընդհանրություն, որ նա կոչում է «նոստրատիկ»։

Երկրորդ շրջանը կապված է առաջին հերթին հնդեվրոպականի հետ հեռավոր ցեղակցությամբ առնչվող ընտանիքների սկզբնական վիճակների (նախալեզուների) վերականգնման բնագավառում ձեռք բերված գիտական մեծ առաջընթացի հետ։ Մեր դարի 20—30-ական թվականներին մեծ առաջադիմություն է նկատվում ուրալյան, սեմա-քամական, դրավիդյան, 20—50-ական թվականներին՝ ալթայական, վերջին տասնամյակներում՝ քարթվելական լեզուների համեմատական ուսումնասիրության մեջ, որ հիմք է տալիս հնդեվրոպական, ուրալյան, սեմա-քամական, դրավիդյան, ալթայական, քարթվելական նախալեզուների (և ոչ առանձին լեզուների) համեմատության համար, մանավանդ որ նոր քայլեր է անում նաև հնդեվրոպական տարածքային (արեալային) լեզվաբանությունը, և սրա մեթոդներն սկսում են կիրառվել ալթայական ու այլ լեզուների ուսումնասիրության բնագավառում։ Բացի այդ լեզուներից, խոսվում է նաև խուռա-ուրարտական (Գ. Ջահուկյան), չուկոտակամչատկյան (Ա. Բ. Դոլգոպոլսկի) և որոշ այլ ընտանիքների՝ նոստրատիկ ընդհանրությանը պատկանելու մասին։ Մոտավորապես XX դ. 60-ական թվականների կեսերից սկսվում է նոր շրջանի երկրորդ փուլը, երբ փորձ է արվում ի մի բերելու կատարված ուսումնասիրությունների արդյունքները, հաստատելու նոստրատիկ լեզուների՝ համեմատվող քերականական և բառային միավորների միջև որոշակի հնչյունական համապատաս-

խանություններ, վերականգնելու նոստրատիկ լեզուների հնչյունական և քերականական կառուցվածքները, կատարելու այդ լեզուների համեմատական բառարան կազմելու փորձ։ Այս բնագավառում պետք է նշել առաջին հերթին Բ. Մ. Իլլիչ-Սվիտիչի աշխատությունները, մանավանդ նրա «Նոստրատիկ լեզուների համեմատության փորձը» [Иллич-Свитыч, 1971—1976]։ Այս աշխատության մեջ, ցավոք սրտի, տեղ են գտել միայն վեց ընտանիքների (սեմա-քամական, քարթվելական, հնդեվրոպական, ուրալյան, դրավիդյան, ալթայական) լեզուների վերաբերյալ տվյալներ. հեղինակի վաղաժամ մահը զրկեց նրան խուռա-ուրարտական և այլ լեզվաընտանիքների նյութը օգտագործելուց, թեև նա այդ մտադրությունն ուներ։ Իլիչ-Սվիտիչի աշխատանքը շարունակվում, լրացվում, ճշգրտվում է ուրիշ գիտնականների կողմից։

Իլիչ-Սվիտիչի աշխատության հրատարակված երկու հատորները պարունակում են նոստրատիկ լեզվի համար վերականգնված բառային և քերականական 353 միավոր։ Սրանց մեծ մասը (276 միավոր) արտացոլված է հնդեվրոպական լեզուներում, ընդ որում կասկածելի կամ առանձին լեզուների փաստերի վրա հիմնված միավորների թիվը միայն երկու տասնյակ է։ Նոստրատիկ լեզվի վերականգնված ձևերն ընդգրկում են դերանուններ և դերանվանական ածանցներ, քերականական և բառակազմական միավորներ, մարմնի մասերի, մարդու տարիքի և ազգակցության, անկենդան բնության, կենդանական և բուսական աշխարհների, տարածական հարաբերությունների անվանումներ, բայեր, ածականներ։ Այսպիսով, առկա է այն բոլորը, որ հարկավոր է լեզվին իբրև այդպիսին հանդես գալու համար։

Եթե նույնիսկ նոստրատիկ վերականգնումները ոչ թե սկզբնական նոստրատիկ լեզվի փաստեր են, այլ քննվող լեզուների հնագույն շփումների վկայություններ, ապա, այնուհանդերձ, նրանք կազմում են համեմատվող լեզվախմբերի բառային և քերականական միավորների հնագույն շերտերը։ Այս առումով խոսել հնդեվրոպական լեզվի և, սրա հետ կապված, հայերենի նոստրատիկ շերտի մասին, նշանակում է առանձնացնել նրա բառապաշարի ժամանակագրականորեն ամենից ավելի հին շերտը։ Ստորև կբերենք նոստրատիկ ծագման համեմատաբար հավաստի հնդեվրոպական որոշ քերականական մասնիկներ և բառարմատներ, որոնք արտացոլված են նաև հայերենում։

1. **Քերականական կազմիչներ.** Հ.-ե. եզակի հայցականի *-m վերջավորություն, որ պահպանված է հայերեն որոշ բառերի -ն վերջածայնում՝ **ձեռ-ն, ոտ-ն** և այլն (Նոստր. *-mA—նշանակիր ուղիղ խնդրի կազմիչ). Հ.-ե. անունների թեք ձևի *-(e)n կազմիչ, որ պահպանված է հայերեն որոշ բառերի եզ. գործիականում և հոգնակի հոլովներում՝ **բարձր—բարձամբ** (<***բարձան-բ**)—**բարձանց**, **մանր—մանումբ—մանունց** և այլն (Նոստր. *-n—անունների և դերանունների թեք հոլովների կազմիչ). Հ.-ե. ածականակերտ *-i(i̯)o- ածանց (ածականների հաճախակի գոյականացմամբ), որ պահպանվել է հայերեն մի շարք բառերի -ի վերջածայնում՝ **բար-ի, կոգ-ի** (բռց. «կովային») և այլն (Նոստր. *-jΛ ածականակերտ ածանց). Հ.-ե. ածականակերտ *-l- ածանց, որ հայերենում ստացել է դերբայական ածանցի արժեք՝ **բերե-լ բերեա-լ** և այլն (Նոստր. *-lΛ —ածականակերտ ածանց). Հ.-ե. անվանակերտ *-mo- ածանց>հայ -մ վերջածայն **որ-մ, ջեր-մ** և այլ բառերում (Նոստր. *mA—անվանակերտ ածանց). գերմ. անցյալ ժամանակի

-l—կազմիչ, որ Թերևս (ըստ Աճառյանի) զուգահեռ ունի հայ. անցյալ անկատարի -յ-ի մեջ (գնա-յ-ի) (Նոստր. *-di- անցյալ ժամանակի կազմիչ). Հ.-ե. կրկնական-սաստկական բայերի *-sk—կազմիչ>հայ. անցյալ կատարյալի և ապառնու -ց- (Նոստր. *-C'i—հաճախական և կրկնական բայերի կազմիչ) և այլն։

2. Դերանուններ և դերանվանական ու սպասարկու մասնիկներ. Հ.-ե. *me- (1-ին դեմքի անձն. դերան. թեք. հոլ. հիմք)> հայ ի-մ, ի-ն-ձ, ի(-)ս (Նոստր. *-mi «ես»), Հ.-ե. *me-s «մենք»>հայ. մեք (Նոստր. *mä «մենք ձեզ հետ միասին» (inclus.). Հ.-ե. *(e)no-/(o)no- (ցուց. դերան.՝ հեռավոր առարկայի համար)> հայ. նա, այ-ն, -ն, նո-յն, ա-ն-դ (Նոստր. *NA). Հ.-ե. *al- (դերանվանական արմատ, որտեղից *al-i̯o->հայ. այլ (Նոստր. *ʔal'ʌ). Հ.-ե. *kᵘe (շաղկապական («և») և անորոշ-սաստկական մասնիկ) > հայ. -ք (ո-ք), -չ (ին-չ) (Նոստր. *k̦(o)). Հ.-ե. *kᵘo- «ով» (*kᵘi- «ինչ», *kᵘu- — մեկ. հիմք և այլն)> հայ. ո(վ) (այլև ո-մն, ո-ք, ո-ր, ի-նչ, ի-մն, ի-ր, քան, ուր) (Նոստր. K̦o). Հ.-ե. *mé «մի՛» հայ. մի՛ (Նոստր. *mä) և այլն։

3. Գոյականներ. (1) Ֆիզիկական աշխարհ. Հ.-ե. *amer-/āmōr «օր» > հայ. այր, սեռ. աւուր (Նոստր. *ʔamu «առավոտ, օրվա լույս»), Հ.-ե. *āt-(e)r- «կրակ»> հայ. այրեմ, (Նոստր. *qoṭl «վառել կրակ»). Հ.-ե. *ker- «ժայռ, քար»> հայ. քար (Նոստր. *K̦arʌ). Հ.-ե. *k'er- «եղյամ, սառույց» >հայ. սառն (Նոստր. *K̦irʌ «եղյամ»). Հ.-ե. *mer- «կեղտոտ, մթին»> հայ. մառախուղ, մառն (մայր «խավար»), մռայլ (Նոստր. *mΛrʌ «բիծ, կեղտոտ»). (2) Մարդկություն, հասակ, ազգակցություն. Հ.-ե. gᵘen- «կին»> հայ. կին (Նոստր. *küni-). Հ.-ե. *g'(ь)lōu «ամուսնու քույր, տալ»> հայ. տալ (Նոստր. *kälU «խնամակցուհի»). Հ.-ե. *(ə)ner- «տղամարդ, կենսական ուժ»> հայ. այր, սեռ. առն և այլն (Նոստր. NajRʌ). (3) Կենդանիներ. Հ.-ե. *b(h)lou, *plou- «լու»> հայ. լու (Նոստր. *purcʌ(gʌ)/pulcʌ(gʌ)). Հ.-ե. *el-en- «եղնիկ, եղջերու» >հայ. եղն (Նոստր. *ʔill). Հ.-ե. *ers-, *ṛsen- «արու, որձ»> հայ. առն «արու ոչխար» (Նոստր. *Herä «արու կենդանի»). Հ.-ե. *ger- «կռունկ»> հայ. կռունկ (Նոստր. *karʌ/kurʌ). Հ.-ե. *g'hdu- (*dhg'hū?) «ձուկ»> հայ. ձուկն (Նոստր. *diga). Հ.-ե. *k'u̯on- «շուն»> հայ. շուն, Թերևս նաև սկունդ (Նոստր. K̦üjnA «գայլ, շուն»). Հ.-ե. *mel- «մեղր»> հայ. մեղր, մեղու (Նոստր. *majʎʌ) և այլն. (4) Մարմնի մասեր, Հ.-ե. *dud- «վերջավորություն»> հայ. տուտն, տտուն (Նոստր. *duʎʌ). Հ.-ե. *g'enu- «ծունկ»> հայ. ծունկ, ծունր (Նոստր. *?küjñA). Հ.-ե. *g'hes- «ձեռք» (*g'hes-to-, *ghes(o)r-)>հայ. ձեռն. (Նոստր. *gäti), Հ.-ե. *k'er- «մարմնի վերնամաս. գագաթ. եղջյուր»> հայ. սար (Նոստր. *KErʌ). Հ.-ե. *k'erd- «սիրտ» (*kērdi-)> հայ. սիրտ (Նոստր. *K̦Erdʌ). Հ.-ե. *krep- «մարմին, կերպարանք» (*krop-)> հայ. որովայն[13] [Նոստր. K̦arb(i)]. Հ.-ե. *lek- «մարմնի անդամ, վերջավորություն»> հայ. բրբռ. լոք «մեծ քայլ» [Նոստր. *ł/a/Ka «ոտք (crus)»]. Հ.-ե. *lēp-/lōp-/ləp- հարթ. ափ» (*lōph-, *ləph-)> հայ. բրբռ. լուփ, լափ «ափ, թաթ» (Նոստր. lapʌ). Հ.-ե. *mēms- «միս»> հայ. միս (Նոստր. *Homsa). Հ.-ե. *okᵘ «տեսնել, աչք»> հայ. ակն (Նոստր. *HuKʌ) և այլն. (8) բուսականություն. Հ.-ե.

[13] Ըստ ոմանց՝ *oreu-«աղիք», ըստ ուրիշների՝ *prep- «աչքի ընկնել. երևույթ, կերպարանք» արմատներից (վերջին ստուգաբանությունն ընդհանրապես անհավանական է)։

*k′el- «ցողուն, ծղոտ» > հայ. սաղարթ (նոստր. *Ḳila-). հ.-ե. *mor- «մոշ, թութ» > հայ. մոր, մորի, մորենի, թերևս նաև մոշ (*մորշ < *mors-?) (նոստր. *marja «հատապտուղ»). հ.-ե. *os-k- «հացի» > հայ. հացի (նոստր? *HosΛ) և այլն.(18) ձայնարձակում, խոսք. հ.-ե. *nom- «անուն» (*onō-mno-) > հայ. անուն, սեռ. անուան (նոստր. *nimi) և այլն։

4. Ածականներ՝ հ.-ե. *ak′- «սուր» > հայ. ասեղն (նոստր. *HoḲi «սուր ծայր, սայր»). հ.-ե. *bher- «լավ, մեծ» (ըստ Իլլիչ-Սվիտիչի, որ տարբերում է *bher- «տանել, բերել» արմատից) > հայ. բարի, բարւոք նոստր. *bara- «մեծ, լավ»). հ.-ե. *bherg′h- «բարձր» > հայ. բարձր, բերձ [նոստր. *berg(i)]. հ.-ե. *del- «մեծ (?)»(< «շողալ») > հայ. տի (տի-եզերք, տի-կին, *տի-այր > տէր) (նոստր. *did «մեծ»)[14]. հ.-ե. *k′en- «դատարկ, սին» > հայ. սին (նոստր. *KEñU «դատարկ, թեթև») և այլն։

5. Բայեր՝ հ.-ե. *as- «վառ(վ)ել» (*azg′h-, *a(z)gi̯o-?) > ազազիմ, աճիւն (նոստր. *ʔaSa «կրակ»). հ.-ե. *bher- «տանել, բերել» > բերեմ (նոստր. *bari). հ.-ե. *bher- «ծակել, կտրել, փորել» > հայ. բիր, բրեմ, այլև բերան (նոստր. *bura «ծակել»). հ.-ե. *bheu- «աճել» > հայ. բոյս, բուսանիմ (նոստր. *buHi «աճել, ծագել»). հ.-ե. *dheu- «գիտակցությունը կորցնել, մեռնել» > հայ. դի (նոստր. *dΛwΛ «հիվանդանալ, մեռնել»). հ.-ե. *dheu- «փչել, ստանալ, ստանալ» > հայ. դեղեւիմ (նոստր. *dEwHI). հ.-ե. *dhē- «դնել» > հայ. դնեմ, տր. ե-դի, հրամ. դի′-ր (նոստր. *dΛʔΛ). հ.-ե. *ed- «ուտել» > հայ. ուտեմ (նոստր. *ʔitä). հ.-ե. *ei- «գնալ» > հայ. էջ, իջանեմ (նոստր. *ʔejΛ). հ.-ե. *er- «շարժ(վ)ել, բարձրացնել, բարձրանալ» > հայ. յառնեմ, յորդորեմ, այլև արմ(ատ) (նոստր. *Horä «բարձրանալ»). հ. ե. *ēs- «նստել», *es- «լինել» (*es-mi) > հայ. եմ (նոստր. *ʔesA «նստակյաց դառնալ, տեղում լինել»). հ.-ե. *gem- «բռնել, սեղմել» > հայ. ճմլեմ, բրբռ. ճմռել (նոստր. *kamu-). հ.-ե. *g′en- «ճանաչել» > ճանաչեմ (*ծանաչեմ), տր. ծանեայ, այլև ծանաւթ (նոստր. *KENΛ). հ.-ե. *gu̯ei- «ապրել» > հայ. կեամ, կեանք (նոստր. *kolHa «պարարտ, առողջ»). հ.-ե. *gu̯er-, *ger- «կլանել, կոկորդ» > հայ. տր. կեր-ի (եկեր), կեր, կերակուր, կոկորդ (նոստր. *gurΛ). հ.-ե. *ker- «վառ(վ)ել» (*khr̥-s-) > խարշեմ (նոստր. ḲarΛ). հ.-ե. *ku̯el- «պտտ(վ)ել > հայ. ճոլ, ճոլովեմ (նոստր. *ḳol′Λ «կլոր»). հ.-ե. *ku̯em- «կլանել, խպշտել» > հայ. քիմ-ք (նոստր. *ḲUmv). հ.-ե. *lak- «լիզել, լակել» > հայ. լակեմ (նոստր. *laḳΛ). հ.-ե. *lem- «ջարդել, մանրել, կակուղ, փափուկ» > հայ. լմեմ, լմլմեմ «ճմռել, կակղացնել» (նոստր. *l′ama «տրորել, կակղացնել»). հ.-ե. *med- «չափել, կշռադատել» > հայ. միտ-ք (նոստր. *metA «զգալ, գիտակցել»). հ.-ե. *mel- «մանրել, փշրել, աղալ» > հայ. մալեմ, այլև մուլ- (մլ-աղաց), մեղմ, մեղկ, բրբռ. մղմեղ, մղմող «ցեց» (նոստր. *moLΛ). հ.-ե. *men- «մտածել» > հայ. ի-մանամ? (նոստր. manu). հ.-ե. *men- «մնալ» > հայ. մնամ (նոստր. *mΛ-nΛ «տեղում մնալ, ամուր կանգնել»). հ.-ե. *mer- «մեռնել» > հայ. մեռանիմ (նոստր. *(ä)rΛ «հիվանդանալ, մեռնել»). հ.-ե. *(s)kel- «ճեղքել» > հայ. ցելում, ցեղ (նոստր. *calu). հ.-ե. *(s)keu- «նայել» > հայ. ցոյց, ցուցանեմ (նոստր. *ćUHΛ) և այլն։

---

[14] Իլլիչ-Սվիտիչը տալիս է միայն բալթիական ձևերը՝ չիմանալով հայերենի մասին։

## 3. ՀՆԴԵՎՐՈՊԱՑԻՆԵՐԸ

### ա) ԲՆԱԿԱՎԱՅՐԸ

Այն հարցը, թե որտեղ էին ապրում հնդեվրոպացիները՝ վերականգնվող հնդեվրոպական լեզվով խոսող ցեղերը, նախքան ինտենսիվ տրոհման ժամանակները, գիտության զարգացման տարբեր շրջաններում տարբեր լուծում է ստացել։ XIX դարի առաջին կեսին տարածված էր այն կարծիքը, որ հնդեվրոպացիների «նախահայրենիքը» գտնվել է Ասիայում։ Տարակարծություն էր հարուցում միայն այն հարցը, թե Ասիայի հատկապես ո՞ր մասում է այն եղել։ Եթե մի կողմ թողնենք Հնդկաստանում կամ Մարաստանի, Հայաստանի և Վրաստանի տերիտորիայում տեղադրելու սկզբնական փորձերը, կարելի է նշել, որ շուտով գրեթե ընդհանուր ընդունելություն է գտնում հնդեվրոպացիների «նախահայրենիքի»՝ կենտրոնական Ասիայում գտնվելու կարծիքը (ըստ Պոտտի՝ Հիմալայների հյուսիսային լանջերից մինչև Կասպից ծովն ընկած վայրերում), որ կողմնակիցներ է ունենում նաև ավելի ուշ՝ XIX դ. II կեսին, հատկապես Ա. Պիկտեի և Մ. Մյուլլերի աշխատություններում [Pictet, 1859—1863. Müller, 1861]։

XIX դ. երկրորդ կեսին, հատկապես Ռ. Լաթամի «Համեմատական բանասիրության տարրերը» գրքից [Latham, 1862] հետո աստիճանաբար կողմնակիցներ է նվաճում և վերջիվերջո լայն ընդունելություն գտնում այն կարծիքը, որ հնդեվրոպացիների նախահայրենիքը պետք է փնտրել Եվրոպայում։ Սրա համար ոչ միայն լեզվաբանական ապացույցներ են բերվում (ֆիզիկական աշխարհի և բնական պայմանների, բույսերի և կենդանիների անվանումների վերլուծությունը, արիացիների և սլավոնների մերձավոր կապերի բացահայտումը[15], այլև նշվում են հնդեվրոպական ժողովուրդների սկզբնական ավանդությունները, նրանց վերաբերյալ մարդաբանական և հնագիտական տվյալները։ Այս դեպքում ևս որոշ տարակարծությունների տեղիք է տալիս այն հարցը, թե Եվրոպայի հատկապես ո՞ր մասը պետք է համարել հնդեվրոպացիների «նախահայրենիքը»։ Եթե այս դեպքում ևս մի կողմ թողնենք ծայրահեղությունները ու սկզբնական որոնումները, ապա կարելի է ասել, որ վերջիվերջո ընդհանուր տարածում է գտնում այն տեսակետը, որ հնդեվրոպացիների սկզբնական բնակավայրը («նախահայրենիքը») պետք է որոնել հարավ-արևելյան Եվրոպայում, հատկապես Բալթիկ և Սև ծովերի միջև ընկած տարածությունում։ Ոմանք այս տարածությունն ընդլայնում են՝ ներառելով Միջին (կենտրոնական) Եվրոպան, ուրիշներն ընդգրկում են նույնիսկ մինչև Ուրալյան լեռներն ընկած տարածությունը։ Հնագիտական առումով գրեթե ընդհանուր միտում է նկատվում հնդեվրոպացիներին համարել մարտական տապարի և թելային կերամիկայի մշակույթի կրողներ[16], նրանց մշակույթը համարելով հյուսիսային նոր քարի դարի

---

[15] Տեղանունների և մասնավորապես գետանունների ուսումնասիրությունը բացահայտում է հնդեվրոպական հին շերտ։ Վերականգնված բառապաշարը ցույց է տալիս բնական այդ գոտու համար բնորոշ կլիմա (ձյան և ձմռան հասկացություններով), բուսականություն («կաղնի», «հացի», «փեկոն», «ցարասի» կամ «կեչի», «ուռենի»), կենդանական աշխարհ («արջ», «գայլ», «աղվես», «եղջերու») և այլն։

[16] Հետաքրքրական է, սակայն, որ տապարի (կացնի) համար չկա ընդհանուր հ.-ե. անվանում (կան տարածքային տարբերություններ)։

*շրջանին։ Որոշ հետազոտողներ, հատկապես Չայլդը, անիվավոր կառքը (սայլը) համարում են հնդեվրոպական հայտնագործություն, թեև այս դեպքում էլ հարկ է լինում որոշել, թե մետաղագործության անծանոթ հնդեվրոպացիներն ինչպե՞ս էին կարողանում այն սարքել, և ի՞նչ կենդանիներ էին լծում (եզնե՞ր, որ ոմանք ավելի հավանական են համարում, թե՞ ձիեր)։ Հատկանշական է, որ կառքի անվանումը ընդհանուր հնդեվրոպական չէ, այլ տարբեր խմբերում ներկայացված է տարբեր ձևով [հմմտ.* **Porzig**, *1954, 183.* **Виноградов**, *1969, 21*][17]*։ Մ. Գիմբուտասը իր աշխատություններում [*Gimbutas, *1968, 1973 և այլն] հնդեվրոպացիների համար բնորոշ է համարում, այսպես կոչված, դամբանաթմբային (կուրգանային) թաղումը։*

*1970-ական թվականների սկզբներից Թ. Վ. Գամկրելիձեն և Վ. Վ. Իվանովը [*Гамкрелидзе-Иванов, *1972, 1981] նորից առաջ են քաշում Զ. Ֆայստից եկող այն տեսակետը, որ հնդեվրոպացիների «նախահայրենիքը» պետք է տեղադրել Առաջավոր Ասիայում, հատկապես Հայկական բարձրավանդակում (արևելյան Անատոլիայում, Հարավային Կովկասում) և Հյուսիսային Իրանում, որտեղից նրանք տարածվել են իրենց հետագա բնակության վայրերը։ Այս տեսակետն ապացուցելու համար նրանք նկատի են առնում՝ 1) հնդեվրոպական և հինարևելյան մշակույթների կապը, 2) այնպիսի կենդանիների և բույսերի անունների առկայությունը, որոնք տարածված չեն հյուսիսում («առյուծ-ինձ», «վարդ», «որթ», «խաղող», «կինի», «բրինձ»), 3) շփումը հին արևելքի երկրների հետ և սեմական ու այլ լեզուներից կատարված փոխառությունները, 4) հնդեվրոպացիների՝ անիվավոր կառքեր ունենալը, որ կապված է առաջավոր Ասիայում մետաղի մշակության հետ և խոսում է հնդեվրոպական նախահայրենիքի՝ կուր-արաքսյան մշակույթի շրջանի հետ համընկնելու մասին (հմմտ. Լճաշենի մարտակառքի տիպը), 5) հին գրավոր հ.-ե. ժողովուրդների՝ խեթերի, հույների, արիացիների՝ նշված տարածքին համեմատաբար մոտ լինելը, 6) անատոլիական հիդրոնիմիայի (ջրանունների) հ.-ե. բնույթը և այլն։ Ենթադրվում է, որ հայերը գրեթե տեղաշարժ չեն կատարել, խեթերը, հույները, արիացիները համեմատաբար փոքր տեղաշարժ են կատարել, արևմտյան լեզուների սկզբնական տարածքը եղել է հյուսիսսևծովյան շրջանը։*

*Դժբախտաբար, այս վարկածը ունի նույնքան (եթե ոչ ավելի ուժեղ) հակառակ փաստեր՝ հին կենդանիների և բույսերի նշված անունների ընդհանուր հնդեվրոպական չլինելը, հայկական բարձրավանդակի տեղանունների ակնհայտ ոչ բուն հնդեվրոպական բնույթը, նշված փոխառությունների կասկածելիությունը և այլն։*

*Նախքան Գամկրելիձեի և Իվանովի վարկածի հանդես գալը, 1964 թ. ավարտված և 1967 թ. լույս տեսած մեր* «Очерки по истории дописьменного периода армянского языка» *գրքում հնդեվրոպացիների «նախահայրենիքը» որոշելու հարցի լուծման համար կարևոր էր համարվում հետևյալ երեք հանգամանքի հաշվառումը (էջ 38—39)։*

---

[17] *Հնդեվրոպացիների «նախահայրենիքի» մասին 1892—1963 թթ. հայտնված կարծիքները ամփոփված են Ա. Շերերի հրատարակած* „Die Urheimat der Indogermanen" *հոդվածների ժողովածուում* (Darmstadt, *1968)։ Հարցի պատմության մասին տե՛ս նաև* **Виноградов,** 1969 *և* **Mallory**, 1973.

1. Հնդեվրոպացիների զբաղեցրած տարածության մասին խոսելիս չի կարելի նկատի չունենալ, որ այն պետք է փոփոխված լինի։ Հնդեվրոպական ցեղերի՝ մ. թ. ա. V հազարամյակի զբաղեցրած տարածությունը, եթե նույնիսկ նրանք տեղափոխված չլինեն, չէր կարող համընկնել III հազարամյակում զբաղեցրած տարածության հետ։ Մասնավորապես պետք է նկատի առնել, որ հնդեվրոպական առանձին լեզուների կրողների՝ հնդեվրոպական ընդհանրությունից առանձնանալու պրոցեսը պետք է երկարատև եղած լինի։

2. Հայտնի է, որ ինտենսիվ տրոհման նախօրյակին՝ միասնության շրջանի վերջերին, հնդեվրոպացիների կյանքում սկսել էր կարևոր դեր խաղալ երկրագործությունը, սակայն տնտեսության գերակշռող ճյուղը շարունակում էր մնալ անասնապահությունը, դեռևս մեծ դեր էին խաղում որսորդությունը և ձկնորսությունը։ Ավելի վաղ, երբ հնդեվրոպացիների տնտեսության ճյուղերը հիմնականում անասնապահությունը և որսորդությունն էին, նրանք պետք է առանձնապես շարժական լինեին։ Հասկանալի է, որ խոսելով «նախահայրենիքի» մասին, նկատի է առնվում նրանց բնակավայրը ընդհանրության շրջանի վերջերին։ Ավելի վաղ նրանք կարող էին գտնված լինել այլ վայրերում։

3. Հնդեվրոպացիների ցեղակցական կապերը սեմիտների, այլև քարթվելական, թյուրքական ժողովուրդների հետ, այդ կապերը ժխտելու դեպքում էլ նրանց միջև նախնական շփումների ու փոխառությունների ժխտման անհնարինությունը, ենթադրել են տալիս, որ «հնդեվրոպացիները մի ժամանակ բնակվել են այն տերիտորիայում, որ սահմանակից է եղել սեմական ցեղերի կողմից բնակեցված տարածությանը»։

Իբրև ընդհանուր եզրակացություն կարելի է ասել, որ մենք գործ ունենք հնդեվրոպացիների բնակության երկու հնարավոր վայրերի՝ 1) նախնական, երբ նրանք նոր էին բաժանվել նոստրատիկ ընդհանրությունից կամ, եթե նոստրատիկ վարկածը ժխտվում է, շփման մեջ էին սեմական, քարթվելական և այլ ժողովուրդների հետ, և 2) ավելի ուշ, երբ նրանք գտնվում էին ինտենսիվ տրոհման՝ հնդեվրոպական ժողովուրդների առանձնացման նախօրյակին։ Առաջին շրջանի համար հավանական է հնդեվրոպացիների՝ Ասիայում գտնվելու, երկրորդ դեպքում՝ Եվրոպայում գտնվելու վարկածը։ Դժվարություն է հարուցում միայն այն հարցը, թե հայերը, խեթերը, արիացիները բաժանվել են արդյոք հենց Ասիայում եղած ժամանակ և Եվրոպայում ընդհանրապես չեն եղել, թե նրանք (հատկապես հայերն ու արիացիները) եղել են Եվրոպայում, ապա վերադարձել Ասիա, ընդ որում հայերը՝ հենց իրենց բնակության սկզբնական վայրերը։

Վերջին ժամանակներս տարբեր հետազոտողների կողմից զարգացվում է այն միտքը, որ հնդեվրոպացիները Եվրոպայի հին բնակիչներ չեն։ Այսպես, Մ. Գիմբուտասը [Gimbutas, 1973] տարբերում է «Հին Եվրոպան» իր քաղաքակրթությամբ «Հնդեվրոպական Եվրոպայից». հին եվրոպական քաղաքակրթության շրջանը նա հատկացնում է մ. թ. ա. 7000—3500 թթ., հնդեվրոպականը՝ մ. թ. ա. 3500 թ. հետո ընկած ժամանակաշրջանին։ Գիմբուտասը փորձում է գծել հին Եվրոպայի քաղաքակրթության զարգացման փուլերը և նույնիսկ գրություն ունենալու հնարավոր փաստը՝ բերելով մի շարք նշաններ։ Հնդեվրոպացիների մուտքը նա կապում է, ինչպես նշվել է,

*այսպես կոչված, դամբանաթմբերի (կուրգանների) և դամբանաթմբային թաղման հետ։*

*Ընդհանուր առմամբ պետք է նշել, որ տարածված կարծիքով հնդեվրոպական միասնության շրջանը համընկնում է ատլանտյան կլիմայի շրջանի հետ, երբ կլիման ավելի տաք և խոնավ է եղել Եվրոպայում, քան հիմա։*

### բ) ՄԻԱՍՆՈՒԹՅԱՆ ԺԱՄԱՆԱԿԸ

*Հնդեվրոպական միասնության ժամանակի մասին խոսելիս հարկավոր է նկատի ունենալ երկու հանգամանք. նախ՝ հնդեվրոպացիների միասնական գոյության շրջանը պիտի բավական երկարատև եղած լինի, և, հետևաբար, առաջին հերթին այստեղ նկատի է առնվում այն ժամանակը, որ անմիջապես նախորդել է հնդեվրոպական ժողովուրդների ինտենսիվ առանձնացման կամ, որ նույնն է, հնդեվրոպական միասնության ինտենսիվ տրոհման շրջանին. երկրորդ՝ ինտենսիվ տրոհման շրջանն էլ չպետք է շատ կարճատև եղած լինի. ակնհայտ է, որ հնդեվրոպական ժողովուրդների առանձնացումը եղել է տևական պրոցես, և որ այդ ժողովուրդներն առանձնացել են ոչ միանգամից։ Եթե նույնիսկ հարցը կոնկրետացնենք և խոսենք այն ժամանակի մասին, որ անմիջապես նախորդել է առաջին ժողովրդի (խեթա-լուվացիների նախնիների՞) առանձնացմանը, ապա չի կարելի վստահ լինել, որ դրանից առաջ՝ հետագայում անհետացած ուրիշ լեզու չի առանձնացրել։ Էլ չենք խոսում այն մասին, որ առանձնացման հաջորդականության հարցը չի կարելի լիովին լուծված համարել, մանավանդ, որ բարբառային տարածքների տարբերակվածությունը արդեն ինքնին վկայում էր նրանց սկզբնական առանձնացվածության մասին։ Իհարկե, փաստերի զուգադրության հիման վրա կարելի է խոսել ժամանակագրական որոշակի շերտերի մասին, որոշել ինչպես հին, այնպես էլ առանձնացումից հետո առաջացած երևույթները, բացահայտել բարբառային որոշակի առանձնահատկությունները։*

*Երկար ժամանակ ընդունված էր այն կարծիքը, որ հնդեվրոպացիների ինտենսիվ տրոհման շրջանն ընկնում է մ. թ. ա. III հազարամյակի կեսերին։ Սակայն այս կարծիքը կարելի է ընդունել խիստ վերապահորեն՝ միայն որոշ լեզուների համար և ակնհայտ համարել հնդեվրոպական ուրիշ՝ ավելի վաղ առանձնացած լեզուների գոյությունը։ Հնդեվրոպաբանության զարգացման արդի փուլում կասկած չի հարուցում, որ մ. թ. ա. III հազարամյակում հնդեվրոպական մի շարք լեզուներ, այդ թվում՝ հատկապես խեթա-լուվականը, արիականը, հայկականը, հունականը առանձնացած են եղել։ Ի՞նչ կարգի փաստեր կան այս տեսակետը ապացուցելու համար։ Այդ փաստերը հիմնականում լեզվական են, որոնք ապացուցողական ավելի մեծ ուժ են ստանում զուգադրվելով հնագիտական-պատմական փաստերի հետ։*

*Ամենից առաջ՝ մ. թ. ա. II հազարամյակից հայտնի խեթա-լուվական լեզուները, հունարենը (կրետե-միքենյան «գծային B» գրության արձանագրությունների լեզուն), հնդկերենը արդեն ունեն իրարից այնքան տարբեր կերպարանք, որ չի կարելի չենթադրել առանձնակի զարգացման բավականաչափ երկար ժամանակաշրջան։ Խեթա-լուվական սեպագիր լեզուներից խեթերենը հայտնի է մ. թ. ա. XVII—XIII, լուվերենը և պալայերենը՝ XIV—XIII դդ. գրավոր հուշարձաններով։ Առաջին իսկ գրավոր հուշարձաններում*

խեթերենը մեծապես տարբերվում է հնդեվրոպական լեզվի այն վիճակից, որ վերականգնվում է համեմատաբանների ջանքերով։ Դեռ ավելին, խեթերենը արդեն զգալիորեն տարբերվում է պալայերենից և մանավանդ լուվիերենից, մի փաստ, որ խոսում է այդ լեզուների՝ հնդեվրոպական միանական լեզվից անջատվելուց հետո անկախ զարգացման բավական երկար ժամանակ անցած լինելու մասին։ Ու և մինչև խեթերենի հայտնագործումն ու վերծանումը հնդեվրոպական լեզվի վերականգնումը կատարվում էր գերազանցապես հին հնդկերենի և հին հունարենի փաստերի համադրության հիման վրա, բայց նշած տարբերությունները խոսում են մինչև մ. թ. ա. II հազարամյակի կեսերը (երբ, որոշ տվյալներով, հանդես են գալիս «գը-ծային B» կոչված գրով գրված հունական հուշարձանները, հին արևելքի գրավոր հուշարձաններում հիշատակվում են հնդկական բառեր ու անուններ, սկսում են կազմավորվել հնդկական հնագույն հուշարձանները՝ վեդաները) նրանց անցած երկարատև ուղու մասին։

Արդեն նշվել է, որ հնդեվրոպացիների մոտ գերակշռում էր անասնապահական տնտեսությունը, և որ նրանք արդեն անցում էին կատարում դեպի երկրագործական տնտեսությունը։ Զարգացած երկրագործությունը հատուկ է հնդեվրոպական ժողովուրդների առանձնակի գոյության շրջանին։ Եթե սրան միացնենք այն փաստը, որ հնդեվրոպացիներին միասնության շրջանին հավանաբար անհայտ էին մետաղագործությունը (մետաղների անվանումները ընդհանուր չեն) և զարգացած բրուտությունը (կավագործությունը), ապա կարելի է ասել, որ հնդեվրոպական միասնության շրջանը համընկնում է նոր քարի դարի հետ և ավարտվում է նոր քարի դարի վերջերին։ Արդի գիտության մեջ կարելի է ընդունված համարել, որ հնդեվրոպական միասնության շրջանն ընկնում է մ. թ. ա. V—IV հազարամյակներում։

Լեզվաժամանակագրական հաշվումները ցույց են տալիս հնդեվրոպական լեզուների տրոհման համեմատաբար ավելի ուշ ժամանակաշրջան, որ բացատրվում է մասամբ ընդգրկված լեզուների բնույթով, մասամբ այդ մեթոդի ընդհանուր թերություններով։ Մ. Սվոդեշը, հիմք ընդունելով իր կազմած 200 բառանոց ցուցակը և 1000 տարվա ընթացքում բառապահպանման 81%-ի ցուցիչը, գերմանացիների և սլավոնների բաժանման (անկախ գոյության) ժամանակը դնում է 33,5 (±4) դար առաջ (24% ռուս.-անգլիական համընկում), այսինքն՝ 1950 թ. համեմատությամբ մ. թ. ա. մոտավորապես 1400 թ. մոտերքը (4 դարի հնարավոր տարբերությամբ)։ Ռոմանա-գերմանական տարամիտման ժամանակը համապատասխանաբար նա դնում է 34 (±4) դար առաջ (23,5% ֆրանս-անգլիական համընկում), ռոմանա-սլավոնականինը՝ 37 (±4) դար առաջ (21% ֆրանս-ռուսական համընկում)։ Հենվելով Մ. Գիմբուտասի վրա՝ Մ. Սվոդեշը փորձում է այս տվյալները համապատասխանեցնել հնագիտական տվյալներին. ինչպես հայտնի է, Մ. Գիմբուտասը [Gimbutas, 1952] հյուսիսեվրոպական բնակչության տեղաշարժը, որ սկիզբն է դրել գերմանացիների և սլավոնների առանձնակի գոյությանը, հատկացնում է մ. թ. ա. 2000—1800 թթ.[18]։

Մ. Սվոդեշի նշած ժամանակը զգալիորեն կմեծանա, եթե նկատի ունե-

[18] Վերևում մենք տեսանք, որ ավելի ուշ Գիմբուտասը հնդեվրոպացիների՝ Եվրոպայում հայտնվելու ժամանակը դնում է մ. թ. ա 3500 թ.։

*նանք մի կողմից՝ ոչ եվրոպական լեզուները, մյուս կողմից՝ լեզվաժամանակագրական մեթոդի՝ Կ. Բերգսլանդի և Հ. Ֆոգտի կողմից նորվեգերենի, վրացերենի, հայերենի տվյալների հիման վրա կատարված ճշտումը [*Bergsland–Vogt *1962] և մանավանդ հայերենի տվյալների ստուգման մեր արդյունքները [*Джаукян, *1969. 1978, 187—211. հմմտ. նաև* Szemerenyi, *1982, 87—98]։ Ըստ Բերգսլանդի և Ֆոգտի՝ հիշյալ լեզուների տվյալներով հիմնական բառաֆոնդի պահպանման ցուցիչը 1000 տարվա ընթացքում 215 և 200 բառի դեպքում կազմում է 90,1%, 100 բառի դեպքում՝ 93,9% և ոչ թե 81% կամ 85%, ինչպես ընդունում է Սվոդեշը։ Նկատի ունենալով հայերեն նոր գրական լեզվի զարգացման առանձնահատկությունները և Բերգսլանդի ու Ֆոգտի բառացանկի թերությունները, մենք կատարել ենք նոր հաշվում և ստացել արևելահայ գրական լեզվի համար 215 բառանոց ցուցակի դեպքում 88,46%, 200 բառանոցի դեպքում՝ 88,17%, 100 բառանոցի դեպքում՝ 92% պահպանման ցուցիչ։ Լոռու բարբառի համար, որ, ի տարբերություն գրական լեզվի, արհեստական միջամտության չի ենթարկվել, համապատասխանաբար ստացվել են 80,32%, 80,17% և 88,46%։*

*Հետաքրքրական է նշել, որ հայ-ռուսական համապատասխանությունների հաշվումը Սվոդեշի օրինակով (300 բառանոց ցուցակի հիման վրա և պահպանման 81%-ի ցուցիչով) տալիս է հայ-սլավոնական բաժանման համար 41 (±4) դար, այսինքն՝ սլավոնա-գերմանական բաժանումից 750 տարի ավելի վաղ ժամանակ։ Էլ ավելի մեծ կլինի բաժանման ժամանակը 81% ցուցիչը ճշգրտելու և պահպանման ավելի մեծ ցուցիչ ընդունելու դեպքում. մենք կգնանք մ. թ. ա. III հազարամյակի սկզբները և նույնիսկ IV հազարամյակի վերջերը։*

*Բոլոր դեպքերում էլ ակնհայտ է, որ հնդեվրոպական միասնության տրոհումը երկարատև է եղել՝ ընդգրկելով թերևս մեկ հազարամյակից ավելի ժամանակաշրջան։*

## դ) ՄՇԱԿՈՒՅԹԸ

*Համեմատական լեզվաբանության տվյալների հիման վրա հնդեվրոպացիների մշակույթի ամբողջական պատկերը գծելու սկզբնական համարձակ փորձերից [*Pictet, *1859—1863,* Schrader, *1883 (*Шрадер, *1886). 1901.* Hirt, *1904—1907 և ուրիշներ] հետո նախ հանդես է գալիս որոշ հոռետեսություն և առանձին հարցերի զգուշավոր քննության ձգտում, ապա սկսվում է իմաստաբանական նորագույն մեթոդների կիրառումը, իմաստային հակադրությունների համակարգի հաստատման և ձեռք բերված արդյունքները հնագիտության, ազգագրության, պատմական գանազան գիտաճյուղերի տվյալների հետ զուգադրելու միջոցով ավելի խորացված քննության շրջանը։ Այս նոր՝ ժամանակակից շրջանի համար բնորոշ են հատկապես առանձին հարցերին նվիրված ստուգաբանական-իմաստաբանական ուսումնասիրությունները, որոնց հետ միասին սկսում են երևան գալ ընդհանրացնող աշխատություններ, ինչպես, օրինակ, արդեն հիշատակված՝ Ջ. Դևոտոյի և Է. Բենվենիստի աշխատությունները [*Devoto, *1962.* Benveniste, *1969]։*

*Հնդեվրոպական մշակույթի՝ սարև արվող ակնարկը հենվում է ինչպես*

նախնական համադրության, այնպես էլ արդի ընդհանրացնող աշխատությունների տվյալների վրա [հմմտ. նաև Иванов, 1957, Герценберг, 1972, 55—76 և այլն]։ Կխոսենք նաև հնդեվրոպացիների նյութական մշակույթի և տնտեսության, ապա հասարակական կարգակերպության, ընտանեկան կառուցվածքի և հոգևոր մշակույթի առանձնահատկությունների մասին։

Հնդեվրոպացիների կյանքի պատկերի վերականգնումը նախկինում կատարվում էր համեմատաբար պարզ ճանապարհով. վերականգնելով ընդհանուր բառը և նրա իմաստը՝ սովորաբար եզրակացություն էր արվում նշանակված առարկայի կամ հասկացության՝ հնդեվրոպացիներին ծանոթ լինելու մասին։ Սակայն բառի գոյությունը և նույնիսկ իմաստային համընկնումը դեռ բավական չեն խոսելու այն մասին, որ վերականգնվող նախաձևն ունեցել է հնդեվրոպական հետագա ժառանգորդների նախնիների մոտ միևնույն նշանակությունը։ Այս պատճառով էլ արդի էտապում կարևոր դեր են խաղում բառիմաստների հակադրությունների համակարգի սահմանումը, տվյալ իմաստների հետ միասին բացակայող իմաստների հաշվառումը, բառիմաստների հնարավոր վկայությունների բազմակողմանի քննությունն ու վերլուծությունը, միևնույն ծագումը չունեցող, բայց միևնույն գաղափարն արտահայտող տերմինների համեմատությունը, պատմական գիտաճյուղերի ողջ համալիրի նորագույն տվյալների համադրությունը։ Այս բոլորը հնարավորություն են տալիս ավելի խոր թափանցելու հնդեվրոպացիների կյանքի ու մտածողության եղանակների մեջ, թեև պետք է ասել, որ առայժմ չի կարելի խոսել այդ ուղղությամբ տարվող աշխատանքի քիչ թե շատ ավարտուն լինելու մասին։

Ինչպես նշել ենք, հնդեվրոպական միասնության շրջանն ընկնում է նոր քարի դարում, հատկապես սրա վերջերին։ Հնդեվրոպացիների տնտեսության հիմնական ճյուղը անասնապահությունն էր, որի հետ միասին դեր էին խաղում նաև որսորդությունն ու, համեմատաբար սակավ, ձկնորսությունը։ Հնդեվրոպացիներն արդեն անցում էին կատարում դեպի երկրագործությունն ու սրա հետ կապված նստակյաց կյանքը։

Հնդեվրոպացիների բավականին զարգացած անասնապահական տնտեսության մասին խոսում են ոչ միայն ընտանի կենդանիների ընդհանուր անունները, այլև նրանց խնամքի ու բուծման, նրանց տված մթերքների վերաբերյալ տերմինները, որոնց համադրությունը բացահայտում է հետաքրքրական փաստեր։ Ընտանի կենդանիները կազմում էին այսպես կոչված շարժական ունեցվածքը և ծառայում էին որպես հարստության աղբյուր. է. Բենվենիստը, հակառակ ընդունված կարծիքի, նույնիսկ հ.-ե. *pek'u- «ոչխար. մանր եղջյուրավոր անասուն. անասուն» բառի համար առաջնային է համարում «անձնական շարժական հարստություն» իմաստը[19]։ Անասնապահության խաղացած կարևոր դերի մասին է խոսում այն հանգամանքը, որ եղել են տարբերակված անվանումներ որձ և էգ կենդանիների ու նրանց

[19] Բենվենիստի այս կարծիքը անհավանական է, եթե նկատի առնենք բառի սեմական և արաբական զուգահեռները.հմմտ. աքքադ. pahi/ani/e «եզ, արջառ, խոշոր եղջյուրավոր անասուն», եբր. bāqār «խոշոր եղջյուրավոր անասուն, կով, ցուլ», ասոր. bagrā «նախիր», արաբ. baqara (>հայ. պաքարայ) «եզ, կով»։ Սեմական աղբյուրից է, անշուշտ, հայ. պախրէ «տավար, նախիր» բառը։ Հմմտ. նաև պաճար «նախիր, տավար, եզ, կով»։ Էլ չենք խոսում այն [illegible], որ բառի նախնական իմաստը ավելի կոնկրետ պետք է եղած լինի։

ձագերի, որոշ դեպքերում՝ հասակային տարբեր աստիճանների, ընդհանրապես արուի (որձի) և արու-արտադրողի (հմմտ. հ.-ե. *ers- «արու կենդանի», որից հայ. առն, և *u̯ers- «արու արտադրող»), առանձին կենդանիների ընտանի և ոչ ընտանի տեսակների համար։ Անասնապահության հետ կապված գաղափարներից նշենք «արածել», «արոտ» և «հովիվ» (հմմտ. հ.-ե. *pā- «կերակրել, արածեցնել», որից հայ. հաւրան, հատ, (հով[ի)ւ), «կթել» (հմմտ. հ.-ե *melg- «շփել, շփելով հանել. կթել») և «կաթ» (հմմտ. հ.-ե. *g(a)lakt- «կաթ», որից թերևս հայ. կաթ, բրբռ. *կաղց), «կարագ» (հմմտ. *gu̯ou̯ii̯o- «կովային» > հայ. կոգի «կարագ»), «բուրդ» (հմմտ. հ.-ե. *u̯el- «մազ, բուրդ», որից հայ. գեղմն), «կրտել» (սովորաբար «կտրել» իմաստից), «կաշի» և այլն։ Սակայն կա այն կարծիքը, որ հնդեվրոպացիները կաթ չէին խմում. պատահական չէ, որ համեմատաբար ուշ շրջանում հույները սկյութներին և կիմերներին կոչել են «կաթնակերներ»՝ կաթ գործածելը համարելով յուրահատուկ տարբերիչ հատկանիշ։ Բուն կաթնատնտեսությունը զարգանում է առանձին ժողովուրդների մեջ։

Եթե չխոսենք ամենավաղ ընտելացված ընտանի կենդանու՝ շան մասին (հ. ե. *k'u̯on- > հայ. շուն, թերևս նաև սկուն), ապա հնդեվրոպացիներին ծանոթ են եղել հատկապես կովը, եզն ու ցուլը (հմմտ. հ.-ե. *gu̯ou- «տավար», որից հայ. կով և այլն), ձին (հ.-ե. *ek'u̯o-s, *eku̯o-s, որից թերևս հայ. էշ՝ անվան ուշ փոխանցմամբ, որովհետև հնդեվրոպացիները էշ չեն ունեցել), ոչխարը [հ.-ե. *ou̯i-s, որից հայ. հով[ի-(ւ)], այծը (հմմտ. *aig'- > որից հայ. այծ, *ag'- «այծ», *bhug'o-s «արու այծ, քաղ», որից հայ. բուծ «կաթնակեր գառ, կամ ուլ»)։

Հնդեվրոպացիների կյանքում համեմատաբար քիչ դեր է խաղացել ձկնորսությունը. չկան ձկների ընդհանուր տարբերակված անվանումներ։

Մեղրը (հ.-ե. *medhu- և *meli-, որից հայ. մեղր) ձեռք է բերվել բնական վիճակում, և նրանից պատրաստվել հատուկ խմիչք՝ մեղրագինի։

Հնդեվրոպացիներն արդեն անցում էին կատարում դեպի երկրագործական տնտեսություն։ Այդ մասին է վկայում ընդհանուր (և՛ արևելյան, և՛ արևմտյան լեզուներին հատուկ) *ar- «հերկել, վարել» արմատը, որից կազմված է *arətrom (> հայ. արաւր) բառը. թերևս այս նույն արմատից է գալիս նաև հայ. հարաւունք «արտ, վարուցանք» բառը։ Ընդհանրապես, *ag'ros (> հայ. արտ) բառը սկզբնապես չի ունեցել ընդհանրապես «արտ» իմաստ, այլ նշանակել է «դաշտ», նույնիսկ «արոտ» (վայր, որտեղ քշվել են անասունները, եթե այն ծագում է *ag'- «քշել» արմատից, որտեղից հայ ածեմ)։ Ընդհանուր տարածում ունի նաև *i̯ugom «լուծ» բառը, մինչդեռ *sei- «ցանել», *g'r̥nom «հատիկ» իմաստները հատուկ են միայն արևմտյան, *i̯eu̯os «հացահատիկ» (հատկապես «գարի») բառը՝ արևելյան տարածքին. *g'herzdh- «գարի» բառը համեմատաբար սահմանափակ ընդգրկում ունի (հայ. գարի բառը հնչյունական ձևով շեղվում է)։

Նոր քարի դարի մարդկանց, այդ թվում՝ հնդեվրոպացիների, կյանքում նշանակալից դեր է խաղացել տնայնագործությունը՝ ներքին կարիքները բավարարող, այսպես կոչված՝ տնային արհեստագործությունը։ Շինարարական ղանազան աշխատանքները, գործիքների, զենքերի և փոխադրամիջոցների, ամանեղենի և հագուստեղենի պատրաստումը պահանջում էին հում նյութի որոշակի մշակում և համապատասխան ունակությունների փոխանցում

սերնդից սերունդ։ Հայտնի է նույնիսկ, որ Նոր քարի դարն սկսվում է կավագործական զանազան արտադրանքներով, և որ հնդեվրոպացիներին հատուկ է եղել թելային նկարազարդումը։ Հնդեվրոպացիների կյանքում տնայնագործության (տնային արհեստագործության) խաղացած կարևոր դերի մասին են վկայում զանազան մասնագիտացված գործողությունների և դրանից տված արտադրանքների ընդհանուր և մասնակի տարածում ունեցող անվանումները։ Հաճախ հնարավոր է, որոշել ոչ միայն արտադրանքների տարբեր տեսակները, այլև արտադրման եղանակները (տեխնոլոգիան)։

Հնդեվրոպացիների լեզվում եղել են հատուկ բառեր և տերմիններ հիշյալ արտադրատեսակների պատրաստման հետ կապված գործողությունների համար՝ *del- «ճեղքել, (փայտի վրա) քանդակել, փորագրել, ճարտարորեն տաշել» (>հայ. ատաղձ), *kṷer- «անել, կերտել, ձև տալ» (այստեղից, իրանական միջնորդությամբ, հայ. կերտել) և *kṷer- «աման», *ter- «շփել, պտտելով շփել, ծակ բանալ, պտտել», (>հայ. թուր), *bher- «սուր գործիքով մշակել՝ քերծել, կտրել, ճեղքել» (>հայ. բերան՝ սկզբնական «բացվածք» իմաստից), *tek'þ- «հյուսել, տան փայտյա «հյուսվածքը» կաղմել (ըստ ոմանց՝ այստեղից հայ. հիւսն հիւսել) և *tek- «գործել, հյուսել» (>հայ. թեքել) և այլն։ Մասնավորապես շինարարական աշխատանքների հետ կապված տերմիններից պետք է հիշել *dem(ə)- «կառուցել» (սկզբնապես «իրար միացնել») և *dom- (>հայ. տուն), *dheig'h- «կավը լմել և նրանով պատել կամ քսել, հունցել. ամբարտակ բարձրացնել» (>հայ. դէզ, դիզել), և *dheig'ho-s «ամբարտակ, պատ», *dhṷer-, *dhur- «դուռ» (> հայ. դուռն, հգն. դուրք), *anətā «դռան սյուն» [>հայ. դր-անդ(ի) «գավիթ, մուտք, շեմք», անդաստակ «նախագավիթ»] և այլն։ Լայնորեն ներկայացված են հագուստի պատրաստման հետ կապված բառերն ու տերմինները՝ *eu-/ou- «հագնել» (> հայ. ագանիմ, աւթոց «ծածկոց, զգեստ», աւդ «կոշիկ, ոտնաման»), *ṷes- «հագցնել» (> հայ. զ-գեստ, զ-գե-նում), *nogṷ- «մերկ» (> հայ. մերկ), *bhoso-s «մերկ, բոկոտն» (> հայ. բոկ-ոտն), *sįū- «կարել», *snē- «մանել», *ṷebh- «հյուսել», *ṷeg- «հյուսել, կըցել» (*uēg-/ṷəg'-> զ-գածիմ «հագնել», առի-գած «գոգնոց», գաւտի), *pan- «հյուսվածք, գործվածք» և *(s)pen- «մանել, հյուսել, գործել» (> հայ. ճանում, այլև ճենում, ճինում «հյուսել», ճեն-ք «հինվածք, հյուսվածք») և այլն։ Հավանաբար առկա էր ոսկեգործությունը, և ոսկին կարևոր դեր էր խաղում հնդեվրոպացիների կյանքում. բացի *ṷeg'h- «շարժվել, ճանապարհորդել կառքով (սայլով) գնալ» բայից և նրա «ճանապարհորդելու միջոց, սայլ, կառք» իմաստով ածանցյալներից, կան սայլի (կառքի) մասերի ընդհանուր և մասնակի տարածում ունեցող հետևյալ անվանումներ՝ *ak's- (*ag'-es-) «առանցք», *kṷekṷlo-, *kṷokṷlo- «անիվ» (> հայ. բրբռ. ճոլոլ «անիվ, սայլ»), *kṷel- «գլոր(վ)ել» ( > հայ. ճոլով, բրբռ. ճոլ) և *roto- «անիվ» [(*ret(h)- «վազել, գլորել»]։ Ջրային հաղորդակցության համար հնդեվրոպացիները պատրաստել են հատուկ նավակներ («նավեր»)՝ *nāu-, որից հայ. նաւ (իրանական միջնորդությամբ)։

«Վաճառել» և «վաճառական» տերմինների բացակայությունը ցույց է տալիս, որ հնդեվրոպացիներն իրենք ընդհանրապես առևտրով չեն զբաղվել. ենթադրվում է, որ առևտրական գործը գտնվել է հիմնականում եկվոր օտարների (սուբարների) ձեռքում [Pisani, 1969], ըստ որում այն հավանա-



6—455

բար պարբերական բնույթ չի կրել։ Սրա հետ կապված՝ նախ՝ գնելու և վաճառելու համար տարբերակված տերմիններ չեն եղել, երկրորդ՝ տարածված են եղել հատկապես վճարելու հետ կապված բառերը, ընդ որում վճարը կատարվել է որպես հատուցում՝ առաջին հերթին անասուններով, երբեմն էլ հատուկ ծառայությամբ. հմմտ. *u̯es- «գնել» և *u̯es-no- «գին» ( > հայ. գին), *kᵘ̯rel- «գնել» և *kᵘ̯roi̯o- «գին», *mis-dho- (mizdho-) «վարձ(ատրություն), հատուցում» (այլև «մրցանակ»), *algᵘ̯h- «վաստակել, փոխհատուցում, արժեք» ( > լիտվ. > հայ. արժէք) և այլն։ Եկամտի (հարստության) աղբյուր է ծառայել ապրանքը. հմմտ. *lāu- «ավար առնել» (հ. հնդկ. *lōtam- «ավար», լատ. *lucrum- «օգուտ, շահ», կիմր. *golud- «հարստություն», հ. իռլ. *lōg- «վճար, վարձատրություն» և այլն). գնումը յուրատեսակ փոխգին է եղել, որ կատարել են ոչ գերիները։ Այն առումով առևտուրը եղել է փոխանակություն, որի հետ միասին դեր է խաղացել նվիրատվությունը՝ անհատույց տրումը. հմմտ. *dō-ro- ( > հայ. տուր-ք, հուն. δῶρον «նվեր»)։ Փոխանակությունը լայն առումով հաճախ բնութագրվում զուգակցվել է երախտապարտության, հավատարմության, շահույթի ու ընհաբերության և այլ հասկացությունների հետ. Եթե բուն գնելու և գնի հասկացությունները կապված են, այսպես կոչված, արտաքին փոխանակության՝ առևտրի հետ, ապա այս հասկացությունները բխում են ներքին փոխանակության անհրաժեշտությունից, որի հետ առնչվում են պարտք (փոխ) տալու և պարտք (փոխ) առնելու հասկացությունները։

Բուն հնդեվրոպական հասարակությունը գտնվել է նախնադարյան համայնքի քայքայման և դասակարգային հասարակության կազմավորման շեմին։ Թագավորը (*reg′-s) բառիս բուն իմաստով եղել է միայն ռազմական առաջնորդ, գլխավոր քուրմ-շաման։ Կարծիք կա, որ հետագա էվոլյուցիայի համար դեր է խաղացել արևելյան բռնապետական թագավորությունների հետ շփումը, որ հանգեցրել է նրա գործառական դերի փոփոխության, հասարակության շերտավորման ուժեղացման, դասակարգային հասարակության առաջացման, կենտրոնացվածության։ Դեռևս չկա ձևավորված ստրկատիրություն, և, սրա հետ կապված, բացակայում է «ստրուկ» ընդհանուր տերմինը։ Չկա նաև միասնական ժողովրդի ըմբռնումը, թեև արդեն նկատվում են միասնականացնող միտումներ. *teutā բառը «ժողովուրդ» իմաստով ընդհանուր տարածում չունի և համեմատաբար ուշ է զարգացել։

Բավականին ուժեղ է «սեփականի» [*s(u̯)e-] և «ոչ սեփականի» («օտարի») հակադրությունը, որ կարող էր սկզբնապես կապված լինել սեփական տոհմի ու այլ տոհմերի տարբերակման հետ և հետագայում ավելի լայնորեն գնահատվել։ Հ.-ե. *leudh-ը սկզբնապես նշանակել է «աճել, բարձրանալ, սերվել», ապա ստացել «ընդհանուր ծագմամբ կապված՝ սերված մարդիկ», ավելի ուշ՝ «ժողովուրդ» իմաստը. այն ամենայն հավանականությամբ շատ ավելի ուշ է ձեռք բերել «ազատ» իմաստը (հմմտ. հուն. ἐλεύθερος, լատ. līber «ազատ»)՝ ի հակադրություն «ոչ ազատի». սրա վերագրումը հնդեվրոպական շրջանին պետք է համարել մոդեռնացում։ Նույնպիսի մոդեռնացում պետք է համարել Ժ. Դյումեզիլի կարծիքը «ազատների»՝ ըստ գործառության բաժանվելու միտման մասին՝ քրմերի, ռազմիկների և երկրագործների դասերի հետագա առանձնացմամբ [Dumezil, 1941. 1969]։

Հնդեվրոպական հասարակության հիմնական միավորները (համայնք-

ները, տոհմերը) հայտնի են հետևյալ արմատներով՝ *uoik'- «տուն, բնակարան. գյուղ, տոհմ»[20], *bheu- «աճել. լինել» և անվանական գործածությամբ՝ «բնակություն, բնակատեղի» (հմմտ. հայ. բույն և, իրան. միջնորդությամբ, բուն), *gen- «ծնել» և անվանական գործածությամբ՝ «ծին, տոհմ, ցեղ» (> հայ. ծին, ծնունդ):

Ցեղակցական տերմինաբանության վերլուծությունը և պատմական ազգագրական տվյալների հետ նրա զուգադրությունը հնարավորություն են տալիս ոչ միայն բացահայտելու միասնության շրջանի հնդեվրոպական ընտանիքի ու ազգակցական հարաբերությունների պատկերը, այլև գաղափար կազմելու որոշ ավելի վաղ առանձնահատկությունների և հետագա տեղաշարժերի մասին։ Ընդունելով նախնադարյան համայնական հասարակության ուշ շրջանի ընդհանուր առանձնահատկություններով՝ այդ ընտանիքը հանդես է բերում մի տիպ, որ հետազոտողները մոտ են համարում ամերիկյան օմահա ժողովրդի ընտանեկան տիպին, և որի մեջ թերևս բացահայտվում են զուգային խաչաձև-կուզինային ամուսնության գծեր [Friedrich P., 1966. Benveniste, 1969, 223 և հջ.]։ Սակայն, մեր կարծիքով, այս գծերը գալիս են շատ հնից և մնացուկային բնույթ ունեն։ Հնդեվրոպական ընտանիքը բնութագրվում է նրանով, որ ամուսնացած զույգը դեռևս ինքնուրույնություն չունի, և չի կարելի խոսել իսկական իմաստով ամուսնության, բուն իմաստով այր ու կնոջ սերտ հարաբերության մասին. ավելի ամուր են ամուսինների՝ համայնքի, քան իրար հետ ունեցած կապերը։ Այս է պատճառը, որ չկան ամուսնության և կին-ամուսնու հատուկ անվանումներ։ Ընտանիքը տարամուսնական է (էկզոգամ, այսինքն՝ կինը բերվում է դրսից՝ այլ համայնքից (տոհմից, տարամուսնական խմբից), ուստի շատ են կնոջ՝ այր-ամուսնու ազգականներին նշանակող ընդհանուր տերմինները (*su̯ek'rū- «սկեսուր», որից *k'u̯ekura ձևի միջնորդությամբ հայ. սկեսուր, *g'(ь)lou- «տալ, ամուսնու քույր» > հայ. տալ, *dāiu̯ēr- «տեգր» > հայ. տայգր, *i̯enəter-, *ineter- «տագերակին» > հայ. ներ)[21], և գրեթե չկան կին-ամուսնու ազգականներին նշանակող ընդհանուր տերմիններ։ Բացի սրանից, ամուսնություն կնքելու տերմինները խոսում են կնոջը դրսից բերելու մասին (հմմտ. *u̯edh- «բերել. կին բերել, ամուսնանալ» և *dō- «տալ. կնության տալ»)։ Ամուսնությունը կարող էր տեղի ունենալ միայն նույն սերնդին պատկանողների միջև։ Սակայն, ինչպես նշվեց, բացահայտվում են խաչաձև-կուզենային ամուսնության հետքեր. հմմտ. *su̯o-s «պապ մոր կողմից» և *au̯entro- «քեռի», *nepōt- «թոռ աղջկա կողմից» և *nepōt- «քեռորդի»։

Որ բուն մենամուսնությունը զարգացել է սկզբնական տարամուսնական տոհմային կազմակերպության ներսում գործող զուգամուսնությունից, երևում է հետևյալ փաստերից. նախ՝ *bhrāter «եղբայր» բառը (> հայ. եղբայր) սկզբնապես նշանակել է տոհմի՝ ֆրատրիայի անդամ, *su̯esŏr- «քույր» բառը (> հայ. քույր)՝ *su̯e- «իր, սեփական» (իմա՛ սեփական էկզոգամային խմբին պատկանող) + *s(u̯)ōr- «կին». երկրորդ՝ *pətēr- «հայր» (> հայ. հայր) և *māter- (> հայ. մայր) բառերով նշանակել են ավագ սերնդի արական և իգական ներկայացուցիչներին (հմմտ. հայրենի,

[20] Հմմտ. հայ. տուն բառի «տոհմ, ցեղ» իմաստային առումը։

[21] Կարծիք կա, որ վերջին երեքի նախնական իմաստը փոխվել է (նրանց ստուգաբանական իմաստն արդեն մթագնված է)։

հայրենիք) և հակադրվել արենակցական հարաբերություն արտահայտող *atta- «արենակից հայր, դաստիարակ» և *anna- «սնող մայր» տերմիններին, որոնք նաև մանկական բնույթի բառեր են եղել. երրորդ՝ նեղ ընտանեկան ազգակցություն ցույց տվող բառերի ստուգաբանական իմաստների մթագնածությունը խոսում է դրանց իմաստային տեղաշարժի մասին։

Հնդեվրոպացիներն, անշուշտ, ունեին կրոնական որոշ գաղափարներ՝ հատուկ վերաբերմունքով պաշտամունքային աշխարհի նկատմամբ, համապատասխան ծիսական արարողություններով և պատկերացումներով։ Աստվածայինը կապվում էր մի կողմից՝ շողացող երկնքի և լուսավոր օրվա, մյուս կողմից՝ նախնիների («հոր»՝ *pətér «ավագ սերնդի ներկայացուցիչ, նախնի, հայր») պաշտամունքի հետ. հմմտ. *dei- «շողալ», որից «պաշտվող երկինք», «օր», «աստված» գաղափարները, այլև *di̯ēus-pəter «երկնահայր, երկնային հայր» կազմությունը այստեղից են հայ. տիւ, թերևս նաև երկին (*du̯i-?) և սե-րկ «այսօր» (*k'e-du̯i-?) բառերը[22]։ Այս աղբյուրից են ծագում հուն. Զևսի և հռոմեական Յուպիտերի անունները։ «Դիցական» կրոնական գաղափար է արտահայտել նաև *dhēs- արմատը, որից հայ. դիք (*dhēses) բառը։ Աստվածները որպես երկնային էակներ հակադրվում էին հողածիններին (հմմտ. լատ. homo «մարդ» և humus «հող»՝ *g'hom- < *ghdom/*g'hdem) և որպես անմահներ՝ մահկանացուներին (հմմտ. հայ. մարդ > *mr̥-to-s՝ *mer- «մեռնել» > հայ. մեռանիմ)։ Աստծու գաղափարի կապը բաշխելու, բաժին հանելու գաղափարի հետ ցույց է տալիս *bhag- «բաշխել, բաժին հանել» արմատը, որից ծագում է աստծու անունը հնդիրանցիների (հմմտ. իրանական աղբյուրից փոխառած հայ. բագին, Բագաւան, Բագարան, Բագարատ բառերը՝ բագ- «աստված» բաղադրիչով), փռյուգացիների, սլավոնների մոտ (հմմտ. ռուս. бог «աստված», այլև богатый «հարուստ, ունևոր», убогий «աղքատ, չունևոր») [տե՛ս նաև Աճառյան, ՀԼՊ, 1940, 20]։

«Սրբազանը», ինչպես ցույց է տվել Բենվենիստը, մի կողմից՝ այն է, ինչ լի է աստվածային ուժով (*k'u̯en-, որից, իրանական միջնորդությամբ, հայ. սպանդ(ա)- «սուրբ» բաղադրիչը՝ ս(պ)անդարամետ «երկրի խորք» բառի և համապատասխան դիցանվան մեջ, *is-, *sak-), մյուս կողմից՝ այն, ինչ մարդկանց արգելված է դիպչել (*kail-, *i̯eg'-, *u̯eik-)։ Համապատասխանաբար մարդիկ աստվածներից խնդրում էին հօգուտ իրենց որևէ բան կատարել կամ ի վնաս իրենց կատարվող որևէ բան թույլ չտալ, ընդ որում խնդիրքը լինում էր կամ խոսքերով (որպես աղոթք), կամ զոհաբերությամբ։ Կրոնական բնույթ ուներ նաև ուխտը՝ մի բան կատարելու կամ չկատարելու խոստումը։ Աստվածներին դիմելու ձևերն էին զոհաբերվող կենդանու մսի ծուխը բարձրացնելը մինչև աստվածներին հասնելը (*dhū-), կրակի մեջ հալած յուղ լցնելը՝ աստվածներին կերակրելու համար (*g'heu-, որից հայ. ձեւ, ձոյլ), մի բան հայցելը, որի համար իրավունք կա (*prek'- որից հայ. հարցանեմ), աղոթելը (*mel-d(h)-, *mel(th)-, որից հայ. մաղթեմ) և այլն։ Կրոնական-ծիսական բնույթ ունեն նաև *eu̯egu̯h- «փառաբանելով խնդրել», ( >հայ. գոգ «ասա՛»), *i̯ag- «պաշտել, (կրոնական տոնով) հարգել, մեծարել» (այստեղից, իրանական միջնորդությամբ, հայ. յազեմ «զոհել»), այլև *k'red-dhē- «հավատալ» բառերը։

---

[22] Երկին-ն ըստ Գ. Ջահուկյանի և Է. Աղայանի, սերկ-ը՝ ըստ մեր ստուգաբանության

կարգի, օրենքի ընդհանուր գաղափարը (*art-, *r̥t- >հայ. արդ «ձև, կարգ», զ-արդ, արդ «այժմ», արդար) բուն իրավական հարաբերությունների ընագավառում արտահայտվել է, առաջին հերթին որպես «աստվածային» օրենք՝ կրոնական սկզբունք, որ մարդիկ պարտավոր են պահպանել. աստվածային խոսքը (*bhā-, որից հայ. բան) ուներ անառարկելիություն, ում կողմից էլ որ արտասանվեր։ Սրա կողքին գոյություն ուներ օրենք, որ մարդկանց համաձայնության արդյունք էր և արգելք էր դնում տարբեր իրավախախտումների և կանխատեսությունների վրա. *deik'-ը նշանակում էր ոչ միայն «խոսել» կամ «ցույց տալ» ընդհանրապես, այլև ցույց տալ ճիշտը, պարտավել և հրահանգավորել (հմմտ. հուն. δίκη «օրենք»)։ Ընտանեկան օրենքը ևս համարվում էր աստվածային սահմանում. հմմտ. *dhē- «դնել» արմատից ծագող *dhē-m-, որից հ. հնդկ. *dhāman- «սահմանում, օրենք», հուն. θέμις «օրենք, սահմանում, պարտականություն» (θέμις —օրենքի և արդարադատության աստվածուհի)։

Իրավական և միաժամանակ կրոնական արժեք ունեին երդումը (ուխտը) և նզովքը (անեծքը)։ Երդմնազանցությունը իր հետ բերում էր նզովք։ Կան երդման և նզովքի գաղափար արտահայտող բառեր, որոնք ցույց են տալիս երդման ձևը («երդվել՝ ձեռքը հողին դիպցնելով»՝ *om-) և մոգական բընույթը։ Որպես դատավոր հանդես էր գալիս թագավոր-մոգը, որ ցույց էր տալիս ուղիղը, գծում սահման *(reg'- «ուղիղ, ուղղել, գծել», *reg'-s «թագավոր»՝ արդեն նշված իմաստով)։ Դատավորը կշռադատում էր կողմերի ասածները և որոշում խրախուսանքի և պատժի չափը (*med- «չափել, կշռադատել», որից հայ. միտ-ք, հ. իռլ. *midiur «դատել», օսկ. *meddiss «դատավոր»)։ Վկա էր ծառայում ականատեսը, որ ցույց է տալիս «վկա» բառի կազմությունը *u̯id- «տեսնել» արմատից։

Հնդեվրոպացիները, անշուշտ, կարողացել են նկարել, գաղափար են ունեցել գեղեցիկի մասին, զարդարանքներ կրել, գործիքներ և կարասի պատրաստելիս երբեմն հասել արվեստի աստիճանին, ունեցել բանահյուսություն, գնահատել ճարտասանությունն ու գեղեցիկ խոսքը։ Սակայն այս բոլորի մասին մեր ունեցած պատկերացումները խիստ թերի են։

Պահպանված ընդհանուր թվականները խոսում են հնդեվրոպացիների բավականին բարձր հաշվական կարողությունների մասին՝ տասնորդական համակարգով և տասներկուորդականի մնացուկով։ Նրանք, անշուշտ, առաջնորդվել են որոշակի օրացույցով, որի մեջ տարբերվել են տարվա եղանակները. ամիսները եղել են լուսնային (հմմտ. *mens- «լուսին» և «ամիս»), ժամանակի հաշվարկման մեջ մեծ դեր են խաղացել արտադրական գործունեության ժամանակային փուլերը, այլև զանազան տոները և ծիսական-կրոնական ժամկետները։

# II. ՀԱՅԵՐԵՆԻ ՏԵՂԸ ՀՆԴԵՎՐՈՊԱԿԱՆ ԲԱՐԲԱՌՆԵՐԻ ՄԵՋ

## 1. ՀԱՐՑԱԴՐՈՒՄԸ

*Խոսելով հայերենի բարբառային կերպի մասին՝ հնդեվրոպաբան-հայագետները հաճախ շփոթում են երկու բան՝ մի կողմից՝ դեռևս միասնության շրջանում հայերենի բարբառային նախավիճակի տեղը հնդեվրոպական բարբառային նախավիճակի մեջ և մյուս կողմից՝ հայերենի, որպես արդեն առանձնացած և ձևավորված լեզվի, մի որոշակի փուլի (սովորաբար հին հայերենի գրավոր վիճակի՝ գրաբարի) հարաբերությունը հնդեվրոպական մյուս լեզուներին։ Առաջին դեպքում պետք է առանձնացվեն այն արխաիկ գծերը, որոնք բնորոշ են եղել նրան դեռևս միասնության շրջանում, մինչդեռ երկրորդ դեպքում փաստորեն հաշվի են առնվում արխաիկ գծերի հետ միասին նաև նորագոյացումները և հին շփումների հետևանքով առաջացած բառային ընդհանրությունները։ Իհարկե, կարելի է ենթադրել, որ հայերենը միանգամից չի առանձնացել որպես ինքնուրույն միավոր, այլ նախ գտնվել է առանձնացած ինչ-որ (ասենք՝ հնդիրանա-հունա-հայկական) լեզվակոմպլեքսի մեջ, ձեռք բերել որոշ հատուկ ընդհանուր գծեր (նորագոյացումներ), ապա անցել ինքնուրույն զարգացման ուղի։ Բոլոր դեպքերում էլ դժվար է գծել հին և նոր առանձնահատկությունների ճշգրիտ ժամանակային և տարածքային սահմանները։*

*Մինչև այժմ կատարված հետազոտությունների երկրորդ թերությունն այն է, որ հաճախ ոչ թե նկատի է առնվում լեզուների և զուգաբանությունների ողջ կոմպլեքսը, այլ քննվում են միայն որոշ լեզուներ ու լեզվատարածքներ, միայն հնչյունա-քերականական կամ միայն բառային որոշ թվով (ոչ լրիվ) զուգաբանություններ։*

*Հայոց լեզվի՝ հնդեվրոպական լեզուների մեջ գրաված տեղի հարցը սկիզբ է առնում Հ. Հյուբշմանի նշանավոր աշխատությամբ* [**Hübschmann**, *1875*], *որտեղ նա, հիմնավորելով հայերենի՝ իրանականից անկախ հնդեվրոպական լեզու լինելու դրույթը, միաժամանակ հայտնում է այն կարծիքը, որ հայերենը միջին դիրք է գրավում իրանական և բալթիկ-սլավոնական լեզուների միջև։*

*Փոքր-ինչ այլ եզրակացության է հանգում Հ. Պեդերսենը իր «Հայերենը և դրացի լեզուները» աշխատության մեջ և այլուր* [**Pedersen**, *1900. 1906. 1925*]։ *Պաշտպանելով այն տեսակետը, որ լեզուների* centum *և* satəm *տարբերությունը չի կարելի համարել հնդեվրոպական բարբառային բաժանման հիմքը, նա նշում է* satəm *լեզու հայերենի մերձավորությունը մի կողմից՝* centum *լեզու հունարենին, զգալի չափով նաև կելտերենին, մյուս կողմից՝* satəm *լեզու ալբաներենին, այսինքն՝ մերձավորության աստիճանը որոշում է անկախ հիշյալ բաժանումից՝ այլ հատկանիշների հիման վրա։*

Հայերենի՝ հունարենի հետ ունեցած մերձավորության դրույթը հիմնավորվում և ճշտվում է Ա. Մեյեի աշխատություններում, հատկապես նրա «Հայերենի բարբառային դիրքը» աշխատության մեջ [Meillet, 1895]։ Այստեղ Ա. Մեյեն հաստատում է հայերենի՝ հունական, արիական և բալթիկ-սլավոնական լեզուների հետ ունեցած մերձավոր կապերի դրույթը։

Մեյեի կարծիքը հետագայում տիրապետող է դառնում։ Կարելի է մատնանշել միայն հետևյալը.

1. Եթե Մեյեն հայերենի և բալթիկ-սլավոնական լեզուների մերձավոր կապերի գաղափարը միայն ուրվագծում է, ապա Հ. Կարստիենը հատուկ աշխատություն է նվիրում այդ հարցին [Karstien, 1955]՝ բերելով հայ-սլավոնական 52 զուգաբանություն՝ ինչպես հնչյունա-ձևաբանական, այնպես էլ բառա-իմաստային։ Ըստ Կարստիենի՝ հայերենը միջին դիրք է գրավում հունական և սլավոնական լեզուների միջև։ Ավելի քիչ են հայ-բալթիական զուգաբանությունները. Ջ. Գրեպինը հայտնում է նույնիսկ այն կարծիքը, որ հայերենը և բալթիականը չունեն հատուկ մերձավորություն [Greppin, 1976. Греппин, 1976]։ Այս հարցը դժվարանում է մանավանդ այն պատճառով, որ հնդեվրոպաբաններից ոմանք բալթիականը միավորում են սլավոնականի հետ, մյուսները դիտում որպես անկախ խումբ։ Այժմ իշխող է երկրորդ կարծիքը։

2. Լայն քննարկման առարկա է դառնում հայ-փռյուգական մերձավոր ցեղակցության խնդիրը։ Այստեղ նկատելի է երկու ծայրահեղություն։ Ոմանք հենվելով ինչպես անտիկ հեղինակների (Հերոդոտ, Եվդոքսոս, Դիոնիսիոս Հալիկառնասացի), այնպես էլ փռյուգերենի համեմատաբար սակավաթիվ տվյալների վրա, խոսում են հայերենի ու փռյուգերենի մերձավոր ցեղակցության մասին և նույնիսկ հնարավոր համարում հայերենն ու փռյուգերենը միավորել մեկ խմբի մեջ [Bonfante, 1946. Դյակոնով, 1956. Дьяконов, 1961. Георгиев, 1958, 138–145. Бэнэцьяну, 1961, 97–102]։ Մյուսները, սկսած Հյուբշմանից, բացառում են այդպիսի մերձավոր ցեղակցության հնարավորությունը [Hübschmann, AG, I, 1895, 405. Meillet, 1936, II. Աճառյան, ՀԼՊ, 1, 1940, 123–133. Ջահուկյան, 1970, 100–122]։ Փորձելով լուծել հակասությունը՝ Օ. Հասը արձանագրություններով ներկայացված բուն փռյուգերենի կողքին տարբերում է այսպես կոչված նախափռյուգերենը, որ, ըստ նրա, ներկայացված է առանձին բառերով (գլոսաներով) ու հատուկ անուններով, և որ առանձնապես մոտ է հայերենին [Haas, 1966]։ Օ. Հասի կարծիքը նախափռյուգական շերտի մասին ենթարկվում է քննադատության [Gusmani, IF, 72, 3, 1967, 323–328. Heubeck, G, 39, 6, 1969, 579–583. Dressler, S, 14, I, 1968, 40–50]։ Մենք եղած տվյալների քննությամբ հանգել ենք այն եզրակացության, որ փռյուգերենի լեզվական շերտերը «շնորհիվ հնդեվրոպական լեզվամիասնության շրջանում գրաված դիրքի, հունական և հայկական ցեղերի հետ ունեցած հետագա համակեցության, այլև որոշ շրջանում միևնույն տիպի լեզվական միջավայրերի ազդեցության բնութագրվում են այնպիսի առանձնահատկություններով, որոնք մերձավորության և ընդհանրության տարբեր աստիճաններով նրանց կապում են հունարենի, հայերենի և բալթիկ-սլավոնական լեզուների, ապա նաև պելասգերենի և թրակերենի հետ» [Ջահուկյան, 1970, 122]։ Այս եզրակացության մեջ այժմ հարկավոր է որոշ վերապահումներ կատարել. նախ կասկածելի պետք է համարել փռյուգական երեք շերտերի

*տարբերակման հաասյան կարծիքը, և հավաստիորեն խոսել միայն բուն փռյուգերենի մասին. երկրորդ՝ մի կողմ թողնել պելասգերենի հարցը՝ նրա վիճելիության պայմաններում և խոսել միայն թրակերենի մասին, մանավանդ որ հունարենի մեջ վերականգնվող այն շերտը, որ համարվում է պելասգերեն, շատ մոտ է թրակերենին. երրորդ՝ խոսել սլավոնական և բալթիկ-սլավոնական լեզուների մասին տարբերակված ձևով։*

*3. Խեթերենի հայտնագործումից և նրա հնդեվրոպական բնույթի հաստատումից հետո խեթա-լուվական լեզուների առանձնահատկությունների ուսումնասիրության ընթացքում հաճախ է ծագել հայ-խեթա-լուվական փոխհարաբերության հարցը։ Այստեղ էլ նկատելի է երկու ծայրահեղություն։ Եթե Ջ. Բոնֆանտեն խեթերենի՝ հնդեվրոպական լեզուների մեջ գրաված տեղի հարցին նվիրված իր աշխատության մեջ փորձում է ապացուցել, որ հայերենը հատկապես մոտ է հունարենին և խեթերենին* [Bonfante, *1939, 381], ապա Հ. Պեդերսենը հայտնում է այն կարծիքը, որ հայերենն ու խեթերենը կանգնած են իրարից շատ հեռու՝ հակառակ ծայրերում. հայերենը ընդհանուր զուգաբանություններ ունի խեթերենից հեռու կանգնած լեզուների հետ և, ընդհակառակն, չունի այդպիսիներ խեթերենին մոտ լեզուների հետ* [Pedersen, *1945, 5]։ Ի հաստատումն այս կարծիքի՝ Ա. Կամենհուբերը մերձավոր կապեր է տեսնում նաև խեթական, իտալյան ու գերմանական լեզուների միջև և գտնում, որ հարկավոր է վերանայել արևմտյան և արևելյան բարբառային տարածքների հակադրության տեսակետը* [Kammenhuber, *1961]։*

*4. Սկսած Հ. Պեդերսենից խոսվում է նաև հայերենի և ալբաներենի մերձավոր կապերի մասին* [Pedersen, *1900.* Pisani, *1951. 1954.* Bonfante, *1978], սակայն հիմք կա կարծելու, որ ալբաներենը հատուկ մերձավոր կապեր հայերենի հետ չի հայտնաբերում։*

*Հայերենի հնդեվրոպական լեզուների մեջ գրաված դիրքի մասին հետաքրքրական եզրակացությունների է հանգում Գ. Ռ. Զոլտան իր արդեն հիշված աշխատության մեջ, որ նվիրված է հատկապես բառային զուգաբանություններին* [Solta, *1960, 482]։ Այսպես կոչված, բացառյալ (էքսկլուզիվ) զուգաբանությունների հիման վրա Զոլտան տալիս է հայերենի հետ հնդեվրոպական լեզուների մերձավորության հետևյալ աստիճանները՝ 1) հունական, 2) հին հնդկական, 3) գերմանական, 4) բալթիական, 5) սլավոնական, 6) լատինական, 7) իրանական, 8) կելտական, 9) ալբանական, 10) թոխարական, 11—14) փռյուգական, թրակյան, իլիրական, խեթական։ Ինչպես տեսնում ենք, Զոլտան փաստորեն հաստատում է Հ. Պեդերսենի կարծիքը հայերենի և խեթերենի՝ իրարից հատկապես հեռու կանգնած լինելու մասին։*

*Գ. Ջահուկյանը իր «Հայերենը և հնդեվրոպական հին լեզուները» գրքում ճշտում է հայերենի՝ Բալկանյան թերակղզու և Փոքր Ասիայի հին լեզուների՝ իլիրերենի, հին մակեդոներենի, թրակերենի, դակա-միզիերենի, պելասգերենի, փռյուգերենի, խեթա-լուվական լեզուների հետ ունեցած փոխհարաբերության հարցը։ Հիմք ընդունելով հնչյունա-քերականական որոշ հատկանիշներ՝ նա գալիս է այն եզրակացության, որ այդ լեզուներից հայերենին ամենից ավելի մոտ էր «նախափռյուգերենը», եթե նրան հատուկ էին բուն փռյուգերենի մյուս կարևոր առանձնահատկությունները։ Ըստ մերձավորության աստիճանի նրան հաջորդում են փռյուգերենը և հին մակեդոներենը։*

Ավելի քիչ մերձավոր են խեթերենը, թրակերենը և պելասգերենը։ Ամենից ավելի հեռու է կանգնած իլիրերենը». «Բառապաշարի ծագումնային զուգադիպությունների համակողմանի քննությունը (որքանով այդ հնարավորություն է տալիս պահպանված նյութը) հիմնականում հաստատում է ... բերված եզրակացությունը» [Ջահուկյան, 1970, 164]։

Հայերենի բարբառային դիրքը որոշելու համար բառային զուգաբանությունների դերի քննությանն է նվիրված Է. Ա. Մակաևի «Հայ-հնդեվրոպական բառային զուգաբանությունները և տարածքային լեզվաբանությունը» ուսումնասիրությունը [Макаев, 1967]։ Քննության առնելով հայերենի տարածքային բնութագրմանը նվիրված աշխատությունները՝ Մակաևը հատկապես կանգ է առնում հայ-արիական, հայ-սլավոնական, հայ-հունական և հայ-գերմանական բառային զուգաբանությունների վրա։ Հայ-գերմանական զուգաբանությունների հետ կապված նա կասկածի տակ է առնում ընդհանրապես արևմտյան ու արևելյան տարածքների տարբերման նպատակահարմարությունը և նշում մի կողմից՝ Վ. Ի. Աբաևի բերած սկյութա-գերմանական (ավելի լայնորեն, իրանա-գերմանական) [Абаев, 1965] և մյուս կողմից՝ Կամենհուբերի բերած խեթա-լուվական, կելտական, գերմանական, իտալական զուգաբանությունների կարևորությունը [Kammenhuber, 1961]։ Ընդհանուր առմամբ համաձայնելով Ջոլայի եզրակացությունների հետ՝ Մակաևը միաժամանակ անում է տարածքային լեզվաբանության մեթոդիկայի և Ջոլայի կիրառած սկզբունքների վերաբերյալ դիտողություններ։ Մասնավորապես նա անհրաժեշտ է համարում տարբերակել շփման հետևանքով ծագած և զուգահեռ զարգացման արդյունք հանդիսացող նորագոյացումները, բացառյալ զուգաբանություններ հաստատելիս նկատի ունենալ այլ լեզուներում էլ տվյալ բառերի սկզբնապես առկա լինելու հնարավորությունը, նյութի ստուգաբանական հատուկ մշակման անհրաժեշտությունը։ Մակաևը նշում է, որ Գ. Ռ. Ջոլան, այլև Վ. Պորցիգը, Ա. Կամենհուբերը տարածքային բնութագիր տալիս բառային չափանիշների ներքին տարբերակում չեն անցկացնում՝ հենվելով հավասարապես և՛ իմաստային, և՛ բառակազմական, և՛ ձևաբանական, և՛ աճականային ընդհանրությունների վրա[1]։ Միաժամանակ, ըստ Մակաևի, հայ-խեթական զուգաբանությունների քանակն ու բնույթը, այլև խեթական բառերի անբավարար իմացությունը հիմք չեն տալիս հավաստի եզրակացությունների համար։ Մակաևը հատուկ ուսումնասիրություն է նվիրել հայ-կելտական զուգաբանությունների հարցին, որտեղ փորձում է բացահայտել հայ-կելտական մերձավոր շփումների առկայությունը [Макаев, 1974]։

Հարցի օբյեկտիվ քննության նպատակով մեր կողմից կտրվեն ամբողջական աղյուսակներ, որոնցում կբերվեն հայերենի հնչյունական, քերականական և բառային զուգաբանությունները, ընդ որում՝ ա) ընդհանուր հիմքակազմական արժեք ունեցող ածանցների ընդհանրությունները կքննվեն ձևաբանական, իսկ առանձին բառերի բառակազմական ընդհանրությունները՝ բառային զուգաբանությունների մեջ. բ) արմատների աճականական և հերթագայական ձևավորման, ինչպես նաև իմաստային համընկում-

[1] Իրականում այս բոլոր հատկանիշների մերձավորության հաշվառումը կարևոր է, միայն թե տարբեր դեպքերում կարող է տարբեր լինել նրանց տեսակարար կշիռը։

ները կքննվեն բառային զուգաբանությունների հետ կապված։ Նկատի է առնվում, որ միայն բառային զուգաբանություններն անբավարար են վճռական եզրակացությունների համար։

Աղյուսակների մեջ՝ 1) հաշվի են առնվում Հ. Աճառյանի և Յ. Պոկոռնու բերած հավաստի ստուգաբանությունները. 2) դրանք լրացվում են նոր հավաստի ստուգաբանություններով. 3) տեղ է տրվում բարբառային բառերին. 4) ըստ հնարավորության տարբերվում են միասնության շրջանի համար ենթադրվող զուգաբանությունները ուշ նորագոյացումներից (շփման հետևանքով ծագածներից և զուգահեռ զարգացումներից), թեև հեղինակն այն կարծիքին է, որ զուգահեռ զարգացումը սովորաբար ենթադրում է՝ սկզբնական ընդհանուր միտման իրացում, երբեմն էլ ընդհանուր կամ համատեղ միջավայրերի ազդեցություն. 5) գերադասություն է տրվում հակադրական զուգաբանություններին հակառակների նկատմամբ (այսինքն՝ միևնույն միավորի տարբեր դրսևորումներին և ոչ թե միավորի առկայությանը կամ բացակայությանը). 6) միայն մեռած լեզուներով ներկայացված խմբերի չվկայված փաստերի դեպքում վանդակները չեն լրացվում։ Մեր «Հայ բարբառագիտության ներածություն» գրքի (Երևան, 1972) սկզբունքներին համապատասխան հատկանիշի առկայությունը (այո) նշանակվում է պլյուսով (+), բացակայությունը (ոչ) մինուսով (—), մասնակի առկայությունը՝ պլյուս-մինուսով (±), որոնք հաշվարկման ժամանակ համապատասխանաբար ընդունվում են որպես մեկ, զրո և կես միավոր։

## 2. ՀՆՉՅՈՒՆԱԿԱՆ ԶՈՒԳԱԲԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Հնչյունական զուգաբանությունների ցանկը կազմելիս հաշվի են առնվել ընդհանրապես հնդեվրոպական տարածքային լեզվաբանությանը նվիրված և մասնավորապես հայերենին վերաբերող գրեթե բոլոր փաստերը։ Սակայն գրականության մեջ դրանք սովորաբար թերի են լինում և չեն ընդգրկում հնչյունական կառուցվածքի բոլոր կողմերը։ Հեղինակն այն կարծիքին է, որ առանց ամբողջական ընդգրկման հնարավոր չէ քիչ թե շատ ճշգրիտ գաղափար տալ հնչյունական կառուցվածքների փոխհարաբերության մասին, և որ ճիշտ չէ աչքի ընկնող մի քանի փաստի հիման վրա հեռու գնացող եզրակացություններ անել։

Հնդեվրոպական զուգաբանություններն ըստ հնարավորին լրիվ ներկայացնելու ձգտումն առկա է Ա. Լ. Կրյոբերի և Կ. Դ. Կրետիենի՝ հնդեվրոպական լեզուների քանակական դասակարգմանը նվիրված այն հոդվածներում, որոնց մասին խոսել ենք հնդեվրոպական բարբառների ընդհանուր քննության ժամանակ։ Այդ հեղինակները իրենց սկզբնական հոդվածներում բերում են 74 հատկանիշ՝ 30 հնչյունական և 44 ձևաբանական՝ դրանց ընտրության և դասավորության մեջ հենվելով Ա. Մեյեի «Հնդեվրոպական բարբառները» աշխատության տվյալների վրա, օգտագործելով նաև Բրուգմանի ու Կիկերսի հնդեվրոպական լեզուների համեմատական քերականությունները և Ֆ. Զոմերի՝ լատիներենի համեմատական քերականությունը [Sommer, 1914]։

Այսուհանդերձ մեր և այս երկու հեղինակների կազմած ցուցակները նշանակալից չափով տարբերվում են.

1. Կրյոբերը և Կրեուբինը թեև առանձնակի նշում են հնչյունական և քերականական հատկանիշների համարները, բայց բուն ցուցակում դրանք բերում են առանց տարբերակման՝ փոխիփոխ։ Մեզ մոտ հնչյունական և քերականական զուգաբանությունները ոչ միայն տարբերակված են, այլև հիմք են տալիս առանձնակի եզրակացությունների համար։

2. Մեր ցուցակներում բնականաբար նկատի չեն առնված այն բոլոր հատկանիշները, որոնք հայերենի համար տարբերակիչ արժեք չունեն, ինչպես, օրինակ, ō-ի ā կամ ā-ի ō դառնալու, հոգնակի սեռականի, ածականների համեմատության աստիճանների, ըղձականի կազմության վերաբերյալ կետերը և այլն։ Ընդհակառակն, առկա են մեծ քանակությամբ այնպիսի կետեր, որոնք հայերենի դիրքի որոշման առումով էական նշանակություն ունեն. մասնավորապես պետք է նշել, որ մեր ցուցակներում դերանունների վերաբերյալ բոլոր կետերը նոր են, հատուկ ուշադրություն է դարձված Վ. Պորցիգի տված հատկանիշների վրա և այլն։ Ընդհանրապես բացառված են խիստ մասնակի բնույթի և անհավաստի հատկանիշները։

3. Բացի Կրյոբերի և Կրեուբինի նշած լեզուներից, մեր ցուցակներում ընդգրկված են նաև թոխարական լեզուները, ալբաներենը, փռյուգերենը, թրակերենը, խեթերենը և լուվիերենը (վերջին երեքը՝ միայն հնչյունական ցուցակներում՝ ըստ առկա նյութի)։

4. Քանի որ գնահատման մեր համակարգը հնարավորություն է տալիս որոշելու հատկանիշի առկայության (+), բացակայության (—) և մասնակի դրսևորման (±) տարբերությունները, մենք ընդհանրապես հրաժարվում ենք միևնույն հատկանիշը մի քանի կետով արտահայտելու (մանրատելու) և ընդհանրապես նյութի անհավասար բաշխման սկզբունքից, որ առաջ է բերում գնահատման անճշտություն. այսպես, այնպիսի մի կարևոր հատկանիշ, ինչպիսին *o-ի և *a-ի տարբերակվածությունն է, Կրյոբերը և Կրեուբինը արտահայտում են միայն մեկ կետով, մինչդեռ *ō-ի և *ā-ի տարբերակվածության հատկանիշը բաշխում են երեք կետի մեջ. «22. *ā և *ō չձուլված. 23. *ā ձուլված *ō-ին. 24. *ō ձուլված *ā-ին». միջին դիրքի ə-ի անկումը բաշխված է 3 կետում. հաճախակի են միևնույն հատկանիշի լրիվ և մասնակի դրսևորման վերաբերյալ առանձին կետերը, որոնք ±-ի ներմուծման դեպքում դառնում են ավելորդ։

Վերջում նշենք, որ մեր ցուցակն ընդհանրապես կազմված է նորագույն ուսումնասիրությունների հիման վրա՝ հնդեվրոպական տարածքային լեզվաբանության վերջին նվաճումների հաշվառումով և լիովին անկախ է Կրյոբերի և Կրեուբինի ցուցակներից։

Զուգաբանությունները դասավորված են հետևյալ հաջորդականությամբ. նախ բերվում են բաղաձայնական (ըստ հարացուցային և շարակարգային խմբերի), ապա ձայնորդային և վերջապես ձայնավորային հատկանիշները։ Հատկանիշները ձևակերպելիս ըստ հնարավորին նկատի են առնվում նախալեզվային վիճակները, որոնց առանձին դրսևորումները և հետագա զարգացումները երբեմն նշվում են փակագծերում։ Ինչպես նշվել է, հաշվի են առնվում սկզբնական ընդհանրությամբ պայմանավորված հատկանիշների հետ միասին նաև զուգահեռ զարգացման փաստերը, որոնք պետք է որոշ հիմք ունեցած լինեն արտասանական միատիպ ունակությունների մեջ։ Ըստ հայերենի բնույթի թույլատրվում է բացառողական ձևակերպում, այսինքն՝

դրական է գնահատվում երևույթի միաժամանակյա բացակայությունը հայերենում և այլ լեզուներում (հմմտ. 5-րդ և 16-րդ կետերը)։

Լեզվախմբերը դասավորված են արևելքից արևմուտք հաջորդականությամբ, ընդ որում ընդգրկվում են հավասարորեն առանձնացվող բոլոր խմբերը։ Փաստերը գնահատելիս սովորաբար նկատի է առնվում յուրաքանչյուր լեզվախմբի համար մեկ (հատկապես հնագույն և լավ հայտնի) ներկայացուցիչ, սակայն անհրաժեշտության դեպքում բերվում են նաև մյուս լեզուների փաստերը։ Հայերենի համար բնականաբար նկատի է առնվում առաջին հերթին գրաբարը (V դարի ստանդարտ վիճակով), հնդկականի համար՝ սանսկրիտը, իրանականի համար՝ ավեստերենը, թոխարականի համար՝ միաժամանակ և՛ արևելաթոխարերենը (թոխարերեն Ա), և՛ արևմտաթոխարերենը (թոխարերեն B), խեթա-լուվականի համար՝ բուն խեթերենը (նեսերենը), սլավոնականի համար՝ հին սլավոներենը, բալթիականի համար՝ լիտվերենը, հունականի համար՝ հին հունարենը, իտալյանի համար՝ լատիներենը, կելտականի համար՝ հին իռլանդերենը և գերմանականի համար՝ գոթերենը։

Հայերենի հետ ունեցած ընդհանրությունը գնահատվում է պլյուսով, տարբերությունը (հակադրությունը)՝ մինուսով։ Հարցականների քանակը գումարվելով պլյուսների քանակի վրա դիտվում է որպես համընկումների հնարավոր սահման և նշանակվում փակագծի մեջ → նշանից հետո՝ 6(→7), 5,5(→7,5) և այլն։ Պետք է նկատի առնել, որ մինուսները չեն նշանակում նրանցով բնութագրվող լեզուների իրական ընդհանրությունը. մինուսը նշում է միայն հատկանիշի բացակայությունը, բայց ոչ անպայմանորեն որոշակի հատկանիշի առկայությունը, եթե փակագծում հատուկ չի նշվում հակառակ փաստը։ Պլյուս-մինուսով (±) գնահատվում են՝ ա) հատկանիշի արտահայտման օրինակների սակավաթվությունը՝ ի տարբերություն մեծաթվության և կանոնականության, բ) դիրքային պայմանավորվածություն ունեցող տարբերությունները՝ ի հակադրություն ոչ դիրքային (էական, օրինակ՝ հընչույթային) տարբերությունների, գ) միևնույն խմբին պատկանող ենթախմբերի (օրինակ՝ իտալյանի համար՝ լատիներենի և օսկերենի ու ումբրերենի, կելտականի համար՝ գալլիականի, գաելականի և բրիտականի, գերմանականի համար՝ գոթերենի և հին վերին գերմաներենի ու հին սկանդինավյանի և այլն) փաստերի տարբերությունները։ Զայնավորների ընդհանրությունները գնահատելիս ըստ հնարավորին նկատի է առնվում շեշտակիր դիրքը, և բացառվում են անշեշտակիր դիրքի հետ կապված ներքին թուլացումները (ռեդուկցիա)։ Համեմատաբար էական և հին ընդհանրությունները (բուն զուգաբանությունները) օժտվում են աստղանիշերով։

Ըստ անհրաժեշտության աղյուսակի վերջում տրվում են ծանոթություններ և մեկնաբանություններ՝ հատկանիշների թվահամարներով։

Հնչույթների դիրքերի համար կիրառվում են հետևյալ նշանակումները՝ p-՝ բառասկզբնային p. -p-՝ բառամիջային p. -p՝ բառավերջային p. V՝ ձայնավոր. C՝ բաղաձայն։

Ավելորդ չենք համարում նշել, որ զուգաբանությունների ցանկերի կազմումը և գնահատումը կապված են եղել մեծ դժվարությունների հետ՝ մասնավորապես որոշ տվյալների հակասականության պայմաններում։

Աղյուսակների մեջ լեզվախմբերի համար կիրառված են հետևյալ համառոտագրությունները՝ Հ—հնդկական, Ի—իրանական, Թ—թոխարական,

| Հատկանիշներ | Հ | Ի | Թ | Խ | Ս | Բ | Փ | Թր | Հն | Ա | Իլ | Վ | Իտ | Կ | Գ |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| *1. *bh, *dh, *gh : *b, *d, *g *հակադրության պահպանում* | + | — | — | — | — | — | .. | + | — | — | — | ± | ± | — | + |
| *2. *b, *d, *g : *p, *t, *k *հակադրության պահպանում* | + | + | — | + | + | + | .. | + | + | + | + | + | + | + | + |
| *3. *p, *t, *k : *ph, *th, *kh *հակադրության առկայություն* | — | + | — | — | — | — | — | — | + | — | — | — | — | — | — |
| *4. *gh, *g, *k : *g'h, *g', *k' *(«կենտումային»—«սատեմային») հակադրության առկայություն* | — | + | +? | — | + | + | ± | + | — | + | ± | — | — | — | — |
| *5. *gh, *g, *k : *gᵘh, *gᵘ, *kᵘ *հակադրության բացակայություն* | + | + | ± | — | + | + | ± | + | — | — | + | — | — | — | — |
| *6. *Բաղաձայնական տեղաշարժ* (*bh, *dh, *gh > b, d, g. *b, *d, *g > p, t, k. *p, *t, *k > ph. th, kh) | — | — | — | ±? | ± | — | + | + | — | — | — | — | — | — | + |
| 7 *r+*p/*t/*k > r+b/d/g | — | — | — | — | — | — | — | ± | — | — | — | — | — | — | ± |
| 8. *p- > h. (-f), — (f *շփականը նշանակվում է ±-ով*) | — | — | — | — | — | — | — | — | — | — | — | — | · | + | + |
| *9. *s- > h, — | — | + | — | — | — | — | ± | — | + | ± | — | — | — | — | — |
| 10. *r(*u/*i/*k)+s > r(/u/i/k)+š *(կամ այլ հնչույթ՝ ±)* | + | + | — | — | ± | + | — | — | — | — | — | — | — | .. | — |
| *11. HV- > hv *(կամ այլ հնչույթ+V)* | — | — | — | + | — | — | — | — | — | — | — | ? | — | — | — |
| 12. *tt > st *(ի հակադրություն* *tt > tt, ts, (s)s *փոփոխությունների)* | — | + | — | — | + | + | + | + | + | — | + |  | — | — | — |
| 13. *pt, *kt *և պայթականներից կազմված այլ բաղաձայնախմբերի պարզեցում կամ առաջին տարրի շփականացում* | — | — | — | — | + | — | — | + | — | + | — | — | — | + | + |
| *14. *sr > hr, r(r) *(ի տարբերություն* *sr > str, fr, br *փոփոխությունների)* | — | + | +? | — | — | — | — | — | + | — | — | — | — | — | — |
| *15. *Մի շարք բառերում* *r-/*l-/*m- *n- . . . > e/o/a+r-/l-/m- n- . . . | — | — | — | — | — | — | — | — | — | — | — | — | — | — | — |
| 16. *r- > er-/or-/ar- *(այլև* *r- > hr, rh'±) *(ի տարբերություն* *r- > r- *համապատասխանության)* | — | — | — | + | — | — | — | — | ± | — | — | — | — | — | — |
| *17. *r : *l *հակադրության պահպանում* | ± | — | + | + | + | + | ± | + | + | + | + | + | + | + | + |
| *18. *-m > -n | — | — | +? | — | + | + | + | + | + | ? | — | ∓ | — | + | + |
| 19. *i̯- > *աղմկավոր բաղաձայն* (ǰ, j, h *և այլն)* | — | — | — | — | — | — | — | — | — | + | ? | ? | — | ± | — |
| 20. *u̯- > g(w) | — | — | — | — | — | — | — | — | — | — | — | — | — | + | — |
| *21. *r̥-, *l̥ > ar, al | — | — | + | + | — | — | — | — | + | — | — | — | — | — | — |
| *22. *m̥, *n̥ > am, an (*m̥, n̥ > a *փոփոխությունը նշանակվում է ±-ով)* | ± | ± | + | ± | — | — | ± | — | — | — | — | — | — | — | — |
| *23. *o : *a *հակադրության պահպանում* | — | — | — | — | — | — | + | — | + | — | + | + | + | + | — |
| *24. *e-*ի երանգի պահպանում* | — | — | ±? | ± | + | + | + | + | + | ± | + | + | ± | ∓ | ± |
| *25. *ə > a | — | — | + | + | + | + | + | + | ± | + | + | + | + | + | + |
| 26. CəC > CC | — | + | — | ? | + | + | ? | ? | — | ? | ? | ? | ? | ? | + |
| 27. *ə > a | + | + | + | + | — | — | + | ? | ± | + | ? | ? | ? | — | — |

*Խ—խեթա-լուվական, Ս—սլավոնական, Բ—բալթիական, Փ—փռյուգական, Թր—թրակյան, Հն—հունական, Ա—ալբանական, Իլ—իլիրական, Վ—վենետական, Իտ—իտալյան, Կ—կելտական, Գ—գերմանական։*

*Հնչյունական զուգաբանությունների աղյուսակի տվյալներն օգտագործելիս առանձին կետերի համար հարկավոր է նկատի ունենալ հետևյալը.*

*1.* *bh, *dh, *gh:*b, *d, *g *հակադրությունը փաստորեն միայն հնդկականում է արտահայտվում շնչեղության առկայությամբ և բացակայությամբ. անդաշարժի ենթարկված լեզուներում այն արտահայտվում է* b, d, \`g: ʻp, \`t, \`k *ձևով (հայերենում թերևս* b, d, g-*ի շնչեղությամբ որոշ տարածքներում), հունարենում* ph, th, kh:b, d, g *ձևով (ձայնեղների շնչեղությամբ և միաժամանակյա խլացմամբ), իտալյանում և վենետականում՝* *bh, *dh, *gh-*ի՝ սկզբնային դիրքում շփականանալով (վերածումով* f-*ի),*

*2.* *b, *d, *g:*p, *t, *k *հակադրությունը անդաշարժի ենթարկված լեզուներում արտահայտվում է* p, t, k:ph, th, kh *հակադրությամբ, ընդ որում շնչեղ խուլերն էլ կարող են ամբողջովին (գերմանականում) կամ մասամբ շփականանալ։ Փռյուգերենի և թրակերենի շնչեղությունն ուժեղ չէ, և շնչեղները հաճախ արտահայտված են հունական պարզ խուլերով։ Խեթերենն այս տարբերությունը թերևս պահպանել է կրկնավոր—ոչ կրկնավոր նշանակմամբ։ Թոխարերենը բոլոր ձայնեղները վերածել է խուլերի՝ տարբերակում անցկացնելով միայն ըստ քմայնացման արդյունքների,*

*3. Հ.-և.* *kh-*ն սլավոնականում տարբերվում է* *k-*ից՝* *kh>x, *k>k։

*4. Այս հակադրությունն ունեցողները, ինչպես նշել ենք, հայտնի են որպես* satəm *լեզուներ՝ ի տարբերություն* centum *լեզուների։ Սակայն պետք է նկատի առնել, որ քմայնացումը շատ դեպքերում չի տարածվել բոլոր բառերի վրա, և մեզ մոտ որպես սատեմային գնահատված սլավոնական և բալթիական լեզուներն ունեն կենտումային տարրեր։ Թոխարերենը բոլոր ձայնեղները վերածել է խուլերի՝ տարբերակում անցկացնելով միայն քմայնացածների դեպքում։*

*5.* *gh, *g, *k : *gṷh, *gṷ, *kṷ (*ոչ շրթնային—շրթնային*) *հակադրությունը պահպանած լեզուները սովորաբար չունեն 4-րդ կետում նշված հակադրությունը և ընդհակառակը։ Սակայն ալբաներենը, լինելով* satəm *տիպի լեզու, պահպանել է նաև 4-րդ կետում նշված հակադրության հետքերը ըստ բաղաձայնների քմայնացման։ Թոխարերենը լինելով հիմնականում* centum *լեզու, հազվադեպ բացառություններով [հմմտ.* **Иванов,** «Тохарские языки», *13],* *չի պահպանել* *gh, *g, *k: *gṷh, *gṷ, *kṷ *հակադրությունը։ Հայերենը ունի շրթնայինների որոշ հետքեր, բայց մեր կողմից գնահատված է որպես հիմնականում այդ հակադրությունը չճանաչող լեզու*[2]։

*6. Խեթերենի վիճակը լիովին պարզ չէ. այն նշանակված է մինուսով՝ ըստ որոշ հետազոտողների սահմանած վիճակի, այսինքն՝ ընդունվում է* *bh, *dh, *gh>*b, *d, *g> p, t, k *անցում, որի հետևանքով նախկին շնչեղ և ոչ շնչեղ ձայնեղները խառնվել են* [Гамкрелидзе, ПС, 1961, 252—253]։

*7.* *r-*ից հետո խուլերի ձայնեղացումը գերմանականում կապված է ոչ թե տվյալ դիրքի, այլ Վեռների օրենքի գործողության հետ, այսինքն՝ պայմանավորված է շեշտի դիրքով։*

---

[2] *Այլ կարծիքի է Վ. Պիզանին, բայց նրա բերած ապացույցները կասկածելի են։*

10. Հայերենում այս փոփոխությունն արտահայտված է միայն մասամբ (փաստորեն ±) և թերևս ենթաշերտային (սուբստրատային) ազդեցությամբ։

11. Ալբաներենում՝ միայն որոշ դեպքերում (դիրքերում). հմմտ. *sūlo->(h)ül «աստղ» (այլև *sm>m)։ Փռյուգերենում ընդհանրապես *s->s-, բայց *su̯ կապակցության մեջ *s-ն ընկնում է, մի դեպք, որ վերաբերում է բաղաձայնական կապակցությունների փոփոխությանը։

12. Հայերենի համար *tt>st փոփոխությունը լոկ ենթադրվում է բաղաձայնախմբերի փոփոխության ընդհանուր օրինաչափության հիման վրա. ենթադրվող (*tt>)*tst միջակա տարբերակը հայերենում պետք է տար *st [հմմտ. Ջահուկյան, ՀՍ., 1976, 271--272]։

Ալբաներենը ունի s, որ ըստ Է. Հեմպի [AID, 116] գալիս է թերևս *ts-ից. Ա. Մեյեն ընդունում է *tt>st փոփոխությունը, որ նույնությամբ նշում է Հ. Աճառյանը։

13. Վ. Պորցիգը [Porzig, 1954, 78—79] տարբերում է hr և r(r) փոփոխությունները՝ երկրորդը համարելով առնմանության արդյունք և հայերենը հատկացնելով առանձին. նրա համար հիմք է ծառայում *sr-ի և *pr-ի փոփոխությունների տարբերությունը՝ *sr>r և *pr>r։ Սակայն Վ. Պորցիգի վարկածը կասկածելի է, եթե նկատի առնենք *sr>*hr>r փոփոխության հնարավորությունը (Վ. Պիզանի)։

15. Հայերենը և հունարենը ունեն զգալի թվով ընդհանուր բառեր, որոնց «ձայնավոր+ձայնորդ» սկզբի դիմաց այլ լեզուներ ունեն ձայնորդով սկիզբ. առանձին դեպքերում հավելյալ ձայնավորներ ունեն նաև խեթերենը, թոխարերենը, լիտվերենը, թրակերենը, ալբաներենը, հին իռլանդերենը, որոնց համար, սակայն, դրանք բացառություններ են կամ պայմանավորված են այլ պատճառներով (հմմտ. *me «ինձ», *neu̯n̥ «ինն», *nomn̥ «անուն», *reku̯- «խավար» բառերի արտացոլումները)։

16. r-ով բառ սկսելու կարողությունը հատուկ է հնդեվրոպական լեզուների մեծ մասին, բայց որոշ լեզուներում, այդ թվում հայերենում սահմանափակված է մասամբ ներքին պատճառներով, մասամբ ենթաշերտային ազդեցությամբ [Kammenhuber, 1961, 57—58]։ Հունարենում բառասկզբի r-ն կամ ուղեկցվում է նախորդող ձայնավորով, կամ ունենում շնչեղություն։

18. Վերջավանկերի անկումը ալբաներենում հնարավորություն չի տալիս ճշտորեն որոշելու վերջնային *m-ի (օր.՝ հայցականի վերջավորության) բախտը։

19. Հայերենում *i̯-ն տալիս է ջ։ Թրակերենի միակ օրինակն է Iuras գետանունը, որի ստուգաբանությունը զուգահեռներ ունի լիտվ. jūra «ծով», հայ. ջուր, -ոյ բառերի մեջ. դրանք ենթադրում են i̯-ի հավելում դեռևս հ.-ե. միասնության շրջանում, թեև ոմանք i̯-ն համարում են լեզուների անկախ զարգացման արդյունք՝ ուշ հավելում [հմմտ. Дуриданов, 1976, 97]։ Կելտական լեզուներում *i̯-ն մասամբ պահպանվում է, մասամբ վերածվում է h-ի կամ ընկնում [հմմտ. Льюис—Педерсен, 1956, 38—39]։ Հունարենում այն վերածվում է մասամբ ζ-ի, մասամբ շնչի։

20. Հ.-ե. *u̯-ն գ-ի է վերածվել (թերևս անցնելով միջին *gw աստիճանով) բավականաչափ ուշ և, հետևաբար ուղղակի կապ չունի կելտական խմբից ուելսականի gw-ի հետ. դրանք զուգահեռ զարգացման արդյունք են և

ինչպես նշվել է, թերևս հիմք են ունեցել ելակետային արտասանական ընդհանուր առանձնահատկության մեջ։

21. Հայերենում՝ **ար, ալ/աղ**, հունարենում՝ αρ/ρα, αλ/λα։ Հնդկերենում պահպանվում է ձայնավոր ձայնորդը, ուրիշ լեզուներում a-ի փոխարեն հանդես են գալիս այլ ձայնավորներ՝ u, o, i, e։

22. Մինուսով նշանակվածներն ունեն u, o, i, e ձայնավորներ։ Պլյուս-մինուսով (±) նշանակվածներից խեթիերենը *r̥-ի դիմաց ունի a, n̥-ի դիմաց՝ a(n).

23—24. Թեև հայերենին վերագրվում է *e-ի երանգի պահպանում, բայց ռնգայիններից առաջ այն վերածվել է i-ի։

26. Փաստերը բերված են ըստ Ա. Մեյեի, որ հենվում է վերականգնվող *dhug(h)əter «դուստր» օրինակի վրա։ Սակայն ուրիշ դեպքերում նման համապատասխանություններ դժվար է հաստատել։

Ի՞նչ եզրակացությունների կարելի է հանգել բերած տվյալների հիման վրա.

1. Ըստ հնչյունական ընդհանուր հատկանիշների քանակի հայերենի հետ մյուս լեզվախմբերն ունեն մերձավորության հետևյալ աստիճանները.

1. Հունական՝ 14.
2. Փռյուգական 12,5(→13,5).
3. Թրակյան 11(→13).
4. Սլավոնական՝ 11.
5. Իրանական՝ 10,5.
6. Բալթիական՝ 10.
7. Կելտական՝ 9,5(→10,5).
8. Գերմանական՝ 9,5.
9. Խեթա-լուվական՝ 8,5(→10,5).
10. Թոխարական՝ 8,5.
11. Իլիրական՝ 8,5(→11,5).
12. Ալբանական՝ 8(→10).
13. Հնդկական՝ 8.
14. Վենետական՝ 6(→10).
15. Իտալյան՝ 6.

2. Եթե համեմատենք մեր տվյալները Ջոլտայի՝ բառային բացառյալ զուգաբանությունների հիման վրա կազմած ցուցակի տվյալների հետ, ապա կարելի է նշել, որ ա) իրենց տեղերը համեմատաբար կայուն կերպով (մինչև 3 աստիճանի տարբերությամբ) պահպանում են հունական (1-ին՝ մեր և 1-ին՝ Ջոլտայի ցուցակում), սլավոնական (4-րդ և 5-րդ), իրանական (5-րդ և 7-րդ), բալթիական (6-րդ և 4-րդ), կելտական (7-րդ և 8-րդ), թոխարական (10-րդ և 10-րդ), ալբանական (12-րդ և 9-րդ), իլիրական (11-րդ և 13-րդ) խմբերը, բ) մեծ չափով փոխում են իրենց տեղերը փռյուգական (2-րդ և 11-րդ), թրակյան (3-րդ և 12-րդ), խեթա-լուվական (9-րդ և 14-րդ), գերմանական (8-րդ և 3-րդ), հնդկական (13-րդ և 2-րդ) խմբերը, ընդ որում առաջին երեքը շատ ավելի մոտ են հնչյունապես, քան բառապես, վերջին երկուսը՝ ընդհակառակը։ Սակայն փռյուգական և թրակյան խմբերի դեպքում պետք է հաշվի առնել նրանց բառային նյութի պակասավորությունը, որ համապատասխանաբար կարող էր բացասաբար անդրադառնալ Ջոլտայի եզրակացությունների վրա։

3. Երկու ցուցակներում էլ սանդղակի առաջին կեսում (1—7/8 աստիճաններում՝ մեր և 1—7-րդ՝ Ջոլտայի ցուցակում) տեղ են գրավում հունական, սլավոնական, իրանական, բալթիական խմբերը։ Գերմանականը տեղ է գրավում գրեթե միջանկում՝ կելտականի հետ միասին։

4. Երկու ցուցակներում էլ սանդղակի երկրորդ կեսում տեղ են գրավում խեթա-լուվական, թոխարական, ալբանական, իլիրական խմբերը։

Եթե բացառենք կասկածելի, միասնության շրջանի համար բացառվող և զուգահեռ զարգացմամբ ու համատիպ միջավայրերի ազդեցությամբ բացատրվող դեպքերը (7, 8, 10, 12, 13, 16, 19, 20, 26, 27), ապա ցանկում աստղանիշ կրող մնացած 16 դեպքերի համար կստանանք համապատասխանաբար հետևյալ հաջորդականությունը.

1. Փռյուգական՝ 10,5(→11,5).

2. Հունական՝ 10,5.

3. Թրակյան՝ 8,5.

4—6. Թոխարական՝ 7,5.

4—6. Սլավոնական՝ 7,5.

4—6. Իլիրական՝ 7,5.

7. Խեթա-լուվական 6,5(→8,5).

8. Բալթիական՝ 7.

9—10. Իրանական՝ 6,5.

9—10. Գերմանական՝ 6,5.

11—12. Հնդկական՝ 6.

11—12. Վենետական՝ 6.

13. Կելտական՝ 5,5.

14. Ալբանական՝ 5(→6).

15. Իտալյան՝ 5։

Ինչպես տեսնում ենք, պատկերը համեմատաբար քիչ է փոխվում. Նրշելի են միայն թոխարականի, իլիրականի և կելտականի տեղաշարժերը. առաջին երկուսը հայերենին ավելի են մերձենում, երրորդը՝ ընդհակառակն։

## 3. ՔԵՐԱԿԱՆԱԿԱՆ ԶՈՒԳԱԲԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Քերականական զուգաբանությունների ցանկն ընդգրկում է հիմնականում ձևաբանական, հազվադեպ նաև բառակազմական (հիմքերի կազմության հետ կապված) և շարահյուսական (հիմքերի և ձևերի գործածության հետ կապված) հատկանիշներ։ Դրանք դասավորված են հետևյալ հաջորդականությամբ. նախ բերվում են անվանական, ապա դերանվանական և, վերջապես, բայական հիմքակազմության և ձևակազմության հետ կապված հատկանիշները, ընդ որում դերանունների դեպքում ընդգրկվում է նախ անձնական, ապա ցուցական և հետո մյուս դերանունների, բայերի դեպքում՝ նախ ներկայի և ապա անցյալի ձևերի կազմությունը։

Նկատի ունենալով թրակյան, իլիրական և վենետական (ու սրա հետ կապված մեսապյան) քերականական ձևերի վերաբերյալ տվյալների անբավարարությունը՝ մենք քերականական զուգաբանությունների ցանկից հանում ենք այդ լեզուները, մանավանդ որ, բացի թրակերենից, մյուսները հայերենի հետ առանձին մերձավորություն չեն ցուցաբերում։

| Հատկանիշներ | Հ | Ի | Թ | Խ | Ս | Բ | Փ | Թր | Հն | Ա | Իլ | Վ | Իտ | Կ | Գ |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| *1. Գործող անձի *-tel/tl- ածանց՝ ի հակադրություն *ter-ի | — | — | — | + | + | — | —? | | — | — | | | — | — | |
| *2. *-l(o)-ով հիմքերի դերբայական գործածություն | — | — | + | — | + | — | — | | — | — | | | — | — | — |
| 3. *-o-ով հիմք ունեցող իգական սեռի գոյականներ | — | — | — | + | — | — | — | | + | — | | | + | — | |
| 4. Ածականի համեմատության աստիճանի կազմության նկարագրական եղանակ | — | — | + | + | — | — | —? | | — | — | | | — | — | — |
| *5. Գործիականի *-bhi (հգն. *-bhis) վերջավորություն | + | + | ± | — | — | — | —? | | + | — | | | — | + | — |
| 6. Գործիականի, տրականի և բացառականի *-bh- կազմիչ՝ ի տարբերություն *-m-ի | + | + | ± | ? | — | — | ? | | + | ? | | | + | + | — |
| 7. Արական հոգնակի ուղղականի երկրորդական *-oi վերջավորության բացակայություն | + | + | —? | + | — | — | — | | — | — | | | — | — | — |
| 8. Հոգնակի ներգոյականի *-s- (*-su, *-si) կազմիչ | + | — | — | — | + | + | ? | | + | +? | | | — | — | — |
| *9. 1-ին դեմքի անձնական դերանվան սեռական հոլովի և ստացական դերանվան *-m/n-ով հիմքի բացակայություն | — | — | — | + | — | — | + | | + | + | | | + | — | — |
| *10. 1-ին և 2-րդ դեմքերի անձնական դերանունների՝ ետնալեզվային պայթականով (*g'h, *g') աճած ձևեր | + | — | — | — | — | — | — | | + | — | | | + | — | — |
| 11. 1-ին դեմքի անձնական դերանվան հայցականի և այլ թեք հոլովների ձայնավոր նախահավելված (*e-me և այլն) | — | — | — | + | — | — | — | | + | — | | | — | — | — |
| 12. 2-րդ դեմքի անձնական դերանվան թեք հոլովների և ստացական ու անդրադարձ դերանունների *-u̯-ով աճած ձև | + | + | — | — | + | + | + | | + | +? | | | + | + | — |
| *13. 1-ին դեմքի անձնական դերանվան հոգնակի *mes ձև՝ ի տարբերություն հատկապես *u̯es ձևի | — | — | — | — | + | + | ? | | + | — | | | — | — | — |
| 14. Մերձավոր առարկա ցույց տվող *k'o- դերանվանական հիմք՝ ի տարբերություն *k'i- և այլ հիմքերի | — | — | — | ± | — | — | | | — | — | | | — | — | — |
| *15. Հեռավոր առարկա ցույց տվող *-n- տարրով ինքնուրույն դերանուն | ± | ± | + | + | + | + | + | | ± | — | | | — | — | + |
| 16. Հարցական *k$^{u̯}$o- և *k$^{u̯}$i- հիմքերի միաժամանակյա պահպանում (անձի և իրի տարբերակմամբ՝ +, այլ արժեքով՝ ±) | + | — | — | ± | + | — | — | | — | — | | | ± | — | — |
| *17. *i̯o- հարաբերական դերանվան փոխարինում հարցական (և ցուցական) դերանուններով (*i̯o-ի միաժամանակյա պահպանում այլ գործառությամբ՝ ±) | — | — | + | + | ± | ± | — | | — | — | | | + | + | ± |
| 18. Ներկայի *-n(e)- միջածանցով բայահիմքերի կորուստ կամ փոխարինում վերջածանցավոր հիմքով | — | — | — | — | + | — | —? | | — | + | | | — | — | + |
| *19. *-neu/nu- ածանցով կազմություններ | + | + | — | + | — | — | —? | | + | — | | | — | + | — |
| 20. Ներկայի *-i̯e/i-, *-ī- վիճակացույց ածանց (վիճակացույց *-i-, *-ī-՝ +, վիճակացույց *-i̯e- կամ միաժամանակ նաև *-i̯o- և *-i-՝ ±) | + | + | — | — | + | + | ? | | + | ± | | | ± | ± | ± |

| Հատկանիշներ | Հ | Ի | Թ | Խ | Մ | Բ | Փ | Թր | Հն | Ա | Իլ | Վ | Իտ | Կ | Գ |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 21. Ներկայի *-ē- վիճակացույց ածանցով հատուկ հիմքային ձևերի բացակայություն | + | + | + | + | − | − | ? | | ± | − | | | − | ±? | − |
| *22. Վիճակի և վիճակային անցման իմաստների արտահայտում միևնույն բայով կամ տարբեր բայերով՝ ի տարբերություն ձևաբանական («վիճակացույց ածանցի առկայություն — բացակայություն») արտահայտության եղանակի | + | + | + | + | − | − | + | | + | + | | | − | + | − |
| 23. Տևական և սաստկական *-ʒ- ածանցով բայահիմք (այլ հիմքերի հետ խառնված կամ ոչ պարզ իմաստով՝ ±) | − | − | + | − | + | + | − | | − | − | | | + | ± | ± |
| 24. Ներկայի աթեմատիկ հիմքի 1-ին դեմքի *-mi (կամ երկրորդային *-m) վերջավորության տարածում թեմատիկ հիմքի վրա | + | ± | + | ± | + | − | −? | | − | − | | | − | − | − |
| 25. Ներկայի հոգնակի 2-րդ դեմքի *-te վերջավորության վրա *s-ի հավելում (*-tes) | − | − | − | − | − | − | − | | − | − | | | + | − | − |
| 26. Ներկայի և ապառնու համադրական (վերջածանցական) տարբերակված ձևերի առկայություն (հայերենից տարբեր *-s(i̯)e-ով ձևերը նշվում են ±-ով) | + | ± | + | − | ± | + | + | | + | + | | | + | + | − |
| 27. Կատարյալի (պերֆեկտի) և աորիստի՝ հ.-ե.-ից ժառանգված տարբեր հարացույցերի բացակայություն | − | − | + | + | + | + | −? | | − | + | | | + | + | + |
| *28. Անցյալի (աորիստի) *e- նախահավելվածով ձևեր | + | + | − | − | − | − | + | | + | − | | | − | − | − |
| *29. *-is-ով անցյալ (աորիստ) (համապատասխան *-s-ով ձևեր՝ ±) | + | − | ± | ± | − | − | − | | − | − | | | + | − | − |
| 30. Կրկնավոր հիմքով անցյալ (աորիստ և պերֆեկտ) | + | − | + | − | − | − | − | | + | − | | | + | − | + |
| *31. Անցյալի *-u̯-ով վերջավորություն | + | − | + | + | − | − | −? | | − | − | | | + | − | − |
| *32. *-r-ով բայական վերջավորություններ | + | + | + | + | − | − | + | | − | − | | | + | + | − |
| *33. (Աթեմատիկ) հրամայականի *-dhi- կազմիչ | + | + | − | + | − | − | ? | | + | − | | | − | − | − |
| 34. Հրամայականի (հայերենում արգելականի) *-r-ով վերջավորություն | − | − | + | − | − | − | ? | | − | − | | | + | − | − |
| *35. mē մասնիկով արգելական հրամայական | + | + | + | − | − | − | + | | + | + | | | − | − | − |

Քերականական հատկանիշների նշանակումն ու գնահատումը կատարվում է նույն սկզբունքներով, ինչ հնչյունականներինը։

Քերականական զուգաբանությունների աղյուսակի առանձին կետերի վերաբերյալ հարկավոր է նշել հետևյալը.

*1. -tel- ածանցը հայերենում ներկայացված է ձայնդարձի ստորին աստիճանով (*-tl-)՝ միացած հիմքային -ա- տարրի հետ. երկուսը միասին դերբայակազմ արժեք են ստացել *g′enətl-> ծնաւղ։

*2. *-lo-ն հայերենում հանդես է գալիս որպես, այսպես կոչված, անցյալ դերբայի* (ծնեալ, -ոյ), *այլև անորոշի կազմիչ* (ուտել, -ոյ):

*3. Հայերենը կորցրել է սեռային տարբերությունները՝ պահպանելով միայն առանձին հետքեր։ Ենչավորի (= արական + իգական) և անշունչի հնագույն հակադրության վկայություն է համարվում* նու *«հարս» բառը, որի* նուոյ *սեռականը ցույց է տալիս *-o-ով հիմք, ինչպես հունարենում* νυός *և լատիներենում (*nurus*). մյուս լեզուները **snusos*-ից ծագող ձևերը վերածել են -ā-ով իգականի (հմմտ. ռուս.* сноха*)։ Խեթերենն ընդհանրապես չի տարբերում արականը և իգականը։ Փռյուգերենն ունի -o- հիմքով մեկ բառ՝ տր.* sorou *«աճյունասափոր», բայց այն փոխ է առնված հունարենից և հավանաբար պահպանել է հունարենի իգական սեռը [հմմտ.* **Haas**, ***1966, 222]***։

*4. Հայերենը հնդեվրոպական բաղդատականի ածանցներն ընդհանրապես չի պահպանել, իսկ խեթերենը և թոխարերենը պահպանել են մնացուկների ձևով. հմմտ. է. Բենվենիստի «Թոխարերենը և հնդեվրոպերենը» հոդվածը [ռուս. թարգմ. տե՛ս* ТЯ, ***1959, 99]***։

*5. Գործիականի **bhi*-ն հայերենում առկա է* -բ (անձամ-բ), -ւ (ամա-ւ), -վ (գետո-վ) *տարբերակներով։ Կարծիք կա, որ **bhi*-ն սկզբնապես սպասարկու բառ է եղել։ Հունարենում այն մակբայակերտ արժեք ունի, թոխարերենում հանդես է գալիս որպես սեռականի կազմիչ [հմմտ.* **Иванов**, ТЯ, ***26—27]***։

*6. Հայերենում *-*bh*-ն ներկայացված է միայն եզակի և հոգնակի գործիականում՝* -բ, -բ-f, -ւ, -ւ-f, -վ, -վ-f *(հմմտ. նախորդ կետը)։ Խեթերենում, փռյուգերենում և ալբաներենում ընդհանրապես չի ներկայացված. ալբաներենի հոգնակի սեռական-տրականում ինչպես նաև որոշյալ առման բառերի բացառականում հանդիպող* v*-ն համարվում է ուշ հավելում՝ ձայնավորների միջև եղած հորանջից խուսափելու համար [հմմտ.* **Десницкая**, APCIEB 21, *ծան. 30]*:

*7. Հայերենը հոգնակի *-*oi *վերջավորությունը, եթե այն նույնիսկ ունեցած լիներ, չէր կարող պահպանել բառավերջում։ Ալբաներենում *-*oi>*-i *[ըստ Է. Պ. Հեմպի և Շ. Դեմիրայի]։ Հնարավոր է նաև, որ թոխարերենի հոգնակի վերջավորություններից որևէ մեկը պահպանած լինի **oi*-ը (հմմտ.* i*-ն)։*

*8. Հոգնակի ներգոյականի -*s*-ն հայերենում խառնվել է հոգնակի հայցականի վերջավորության հետ* (ի գետս *«գետերում»* և զգետս *«գետերը»)։ Հաջորդող ձայնավորը պարզ չէ. մյուս լեզուներում այն մասնակի զուգաբանություն է կազմում՝ *-*si *և *-*su*։ Ալբաներենը դրված է հարցականով, որովհետև բյռ.* sh*-ի հանգելը ներգոյականի *-*s*-ին կասկածելի է [հմմտ.* **Десницкая**, APCIEB, 193]:

***9.** Լեզուների մի մասն ունի **mem*- հիմք, բայց այն համարվում է առնմանության արդյունք։ Փռյուգերենի հայց. **mem(e)* ձևը թերևս ուշ կրկնության արդյունք է։*

***10.** Թոխարերենի. բղ. 1-ին դեմքի* ñuk *ձևի* k*-ն թերևս երկրորդական է։*

***12.** Պարզ չէ թոխարերենի և ալբաներենի վիճակը. առաջինն ունի 2-րդ դեմքի համար* cwas *տիպի տրական, երկրորդը՝ ստացականի* y-t *(-*t *հոդով)*

ձև. Յ. Պոկոռնու բառարանում (Pok., 1, 1098) y-t-ն բերված է *t(e)u̯os ձևի տակ։

14. Հայերենի *-o-ով հիմքը երևում է ու-յն ձևի մեջ։ Խեթերենը *k'o-ն պահպանել է ընդհանուր (արական-իգական), *k'i-ն՝ միջին («չեզոք») սեռում։

20. Հայերենը բալթիականի և սլավոնականի նման հատակորեն տարբերում է վիճակայնության *-ĭ- և անվանածանցի *-i̯e/o-ով բայական հիմքերը։ Մյուս լեզուներից, ըստ Ա. Մեյեի [Meillet, 1908, 109—113], հնդիրանականը և հունականը ունեն երկու տիպերի համար էլ *-i̯e/o-, լատիներենը, իտալյանը, կելտականը և գերմանականը՝ *-i̯o/ĭ- [հմմտ. նաև Hamp, AID, 116]։

21. Հայերենում *-ē-ն պիտի խառնվեր *-ī-ի հետ։ Ըստ Ա. Մեյեի [տե՛ս Мейе, 1938, 124] «այս տիպը լավ է պահպանված սլավոնականում, բալթիականում, գերմանականում, լատիներենում և հունարենում, բայց այն բոլորովին չկա հնդիրանականում»։ Ալբաներենը, ըստ Է. Պ. Հեմպի [Hamp, AID, 117], «հարուստ է *-ē- պրետերիտով»։ Փռյուգերենի ավանդված ձևերը հիմք չեն տալիս որոշակի եզրակացության համար։ Ֆ. Շպեխտը նշում է *-ē-ով վիճակացույց բայերի հարացույցի առկայությունը թելային խեցեգործության տարածման շրջանում (սլավոնական-բալթիական, լատինական, գերմանական լեզուներում) և դրա բացակայությունը հայերենում ու հունարենում (իրականում, սակայն, հունարենն ունի *-ē-ով մնացուկային ձևեր) [հմմտ. Макаев, 1964, 43—44]։

22. Ինչպես նշում է և Պորցիգը, սլավոնական, բալթիական, իտալյան և գերմանական լեզուները ձևաբանորեն տարբերում են վիճակի և վիճակային անցման իմաստները. հմմտ. ռուս. сидеть և садиться, լատ. sedeō և sidō և այլն։ Գրաբարը բուն քերականական այդպիսի տարբերակում չունի (հմմտ. նստիմ «1. նստած եմ. 2. նստում եմ»), և անհրաժեշտության դեպքում այն անցկացնում է տարբեր բայերով ու նկարագրական եղանակներով։ Ժամանակակից հայերենը երկրորդաբար տարբերակում է -ած եմ և -ում եմ ձևերով՝ նստած եմ—նստում եմ, կանգնած եմ—կանգնում եմ և այլն։

24. Հայերենում և սանսկրիտում աթեմատիկ հիմքերի *-mi-ն ընդհանրացել է՝ տարածվելով թեմատիկ հիմքերի վրա. սլավոնականում այդ նույն դերը կատարել է երկրորդային *-m վերջավորությունը։

25. Հայերենը և լատիներենը հոգնակի երկրորդ դեմքի *-te-ի վրա ավելացրել են *-s՝ թերևս համաբանորեն և իրարից անկախ ընդհանրացնելով հոգնակիի վերջավորությունը. հմմտ. գրաբ. զնա-յք և լատ. ornā-tis «զարդարում եք»։

26. Հնդեվրոպական մի շարք լեզվախմբերում չկան ապառնու արտահայտության հատուկ վերջածանցավոր ձևեր. մյուս լեզուները, այդ թվում նաև հայերենը, ստեղծել են ապառնու հատուկ ձևեր՝ մասամբ ստորադասական եղանակի, մասամբ, այսպես կոչված, ցանկականի ձևերի բազայի վրա, ընդ որում սանսկրիտը, լիտվերենը, փռյուգերենը, հունարենը, լատիներենը, կելտականը տարածել են *-s(i̯)e/o- ածանցական մասնիկը, որ ավեստերենում և սլավոնականում լոկ մնացուկներ ունի։ Թոխարերենը, գրաբարի նման, ապառնին արտահայտում է ստորադասականի ձևերով. ալբաներենը նախնական ստորադասականի հիմքի վրա կազմել է ապառնիի վերլուծական

ձևեր։ Բոլոր դեպքերում էլ հայերենի և այս լեզուների ապառնիի կազմության ընդհանրությունը ծագումնային-նյութական չէ, այլ տիպաբանական։

27. Աորիստի և կատարյալի (պերֆեկտի) տարբերակում անցկացնում են միայն հնդիրանական, հունական և թերևս փռյուգական խմբերը (փռյուգականի համար հմմտ. եզ. 3-րդ դեմքի աոր. e-daes և պերֆ. dakar ձևերը՝ միևնույն *dhē- «դնել» արմատից)։ Մյուսները կամ դրանք խառնել են՝ մեկնումեկի գերակշռությամբ, կամ պահպանել մնացուկային ձևով. այսպես, խեթերենում պերֆեկտի բայակի վրա կազմավորվել է ներկայի -ḫi խոնարհումը, գերմանականում՝ այսպես կոչված անցյալ-ներկայական (practerito-praesentia) կոչված բայերի խոնարհումը և այլն։ Հայերենում ներկայի արժեք ստացած գիտեմ և գոմ բայերի հիմքային ձևերը (*u̯oid- և *u̯os-) համարվում են պերֆեկտի մնացորդ։ Հայերենի անցյալ կատարյալը կազմվել է անկատարից՝ աորիստի խառնուրդով։

28. Հայերենում *e- նախահավելվածը սահմանափակվել է միայն միավանկ հիմքերով, այն ունեցող մյուս լեզուներում այդպիսի սահմանափակում չկա։

29. *-is-ով անցյալի ձևերը հայերենում պահպանվել են անցյալ կատարյալի -եա-ց-ով և անցյալ ընդունելության -եա-լ-ով ձևերի մեջ՝ *-is-ā->-եա-: Է. Բենվենիստը [հմմտ. Бенвенист, ТЯ, 95] *-is-ով ձևերի հետ միացնում է նաև թոխարերենի և խեթերենի անցյալի -s-ն (հմմտ. 2-րդ դեմքի համար թոխարերենի -s-t և խեթ. -s-ta-), որի դեպքում, ըստ նրա, «չի կարելի խոսել ոչ նորաբանության, ոչ սիգմատիկ աորիստի, ոչ էլ միայն թոխարերենին ու խեթերենին հատուկ փաստի մասին»։

30. Հայերենը պահպանել է միայն մեկ կրկնավոր հիմք՝ արարի «արեց»՝ առնեմ-ից, մինչդեռ սանսկրիտում և հունարենում կրկնությունը կազմության տարածված եղանակ է։

31. Հայերենում *u̯-ն հանդես է գալիս միջին-կրավորական սեռի -ա-ւ վերջավորության մեջ։ Ալբաներենի անցյալի 1-ին և 2-րդ դեմքերի v-ն երկբարդական է, ինչպես հոգն. սեռ.-տր. -v-ն (տե՛ս 6-րդ կետը) [հմմտ. Десницкая, БФ, 60].

33. Հրամայականի *-dhi-ն հայերենում հանդես է գալիս -ջի՛-ր տիպի հրամայականում։ Խեթերենի դեպքում հմմտ. arnu-t, i-t տիպի հրամայականները, որոնց -t-ն գալիս է *-dhi-ից։

34. Հայերենի արգելականի բ-ն ըստ Մեյեի [Meillet, 1936, 11] ծագում է *-r- մասնիկից (հմմտ. հուն. ῥα, լիտվ. ir)։ Սակայն հմմտ. թոխ. Ա purpā-r, թոխ. Բ purwa-r «հրճվի՛ր, վայելի՛ր» (wärp-ից), որտեղ -r-ն կրավորամիջին սեռի 2-րդ դեմքի վերջավորությունն է. ըստ Վ. Կրաուզեի [Краузе, ТЯ, 72] «այդ երևի հին անվանական կազմության է, որին պատկանում է նաև հ. լատ. pakari տիպը»։ Սակայն այս դեպքում էլ հարկավոր է նկատի ունենալ հին լատիներենի r-ի՝ *s-ից ծագելու (ռոտացիզմի) հնարավորությունը [հմմտ. Тронский, 1960, 228 և 233]։

Հայերենի և հնդեվրոպական մյուս լեզուների քերականական զուգահեռ հատկանիշների (զուգաբանությունների) ուսումնասիրությունը հանգեցնում է հետևյալ եզրակացություններին.

1. Ըստ հայերենի հետ ունեցած քերականական մերձավորության աստիճանի լեզվախմբերը դասավորվում են հետևյալ կերպ.

1. Հնդկական՝ 20,5.
2. Հունական՝ 18.
3. Խեթա-լուվական՝ 17.
4. Թոխարական՝ 16,5.
5. Իտալյան՝ 16.
6. Իրանական՝ 13,5.
7. Սլավոնական՝ 13.
8. Փռյուգական՝ 8(→15).
9. Կելտական՝ 10,5.
10. Բալթիական՝ 8,5.
11. Ալբանական՝ 7,5.
12. Գերմանական՝ 6,5։

2. Ըստ հավաստի և կարևոր զուգաբանությունների (*-ով նշվածների)՝ լեզվախմբերը դասավորվում են հետևյալ կերպ.

1. Հնդկական՝ 10,5.
2—3. Հունական՝ 9,5.
2—3. Խեթա-լուվական՝ 9,5
4. Թոխարական՝ 8.
5. Իրանական՝ 7,5.
6—7. Իտալյան՝ 6.
6—7. Փռյուգական՝ 5(→7).
8. Կելտական՝ 5.
9. Սլավոնական՝ 4,5.
10. Ալբանական՝ 3.
11—12. Բալթիական՝ 2,5.
11—12. Գերմանական՝ 2,5.

Ինչպես հնչյունականի դեպքում, այստեղ էլ երկու կարգի տվյալների միջև էական տարբերություն չկա։

3. Համեմատությունը հնչյունական զուգաբանությունների հիման վրա կազմված ցուցակների հետ պարզում է նշանակալից տարբերություններ։ Կարևոր է նշել հատկապես հնդկական խմբի քերականական նշանակալից մերձավորությունը հայերենին. զգալի է նաև խեթա-լուվական, թոխարական և իտալյան լեզուների մերձավորության տեղաշարժը։ Ընդհակառակն, սլավոնական և մանավանդ բալթիական լեզուները քերականապես զգալի չափով ավելի հեռու են կանգնած հայերենից, քան հնչյունապես։

Բնականաբար, ավելի հավաստի է հնչյունական և քերականական հատկանիշների միաժամանակյա համեմատությունը, որ տալիս է հետևյալ պատկերը (տե՛ս էջ 104, 1-ին աղյուսակ)։
Ըստ բուն (*-ով օժտված) զուգաբանությունների ստացվում է հետևյալ պատկերը (տե՛ս էջ 104, 2-րդ աղյուսակ)։

| Լեզվախմբեր \ Ընդհանուր հատկանիշներ | Հնչյունական | Քերականական | Հնչյունա-քերականական |
|---|---|---|---|
| 1. Հնդկական | 8 | 20,5 | 28,5 |
| 2. Իրանական | 10,5 | 13,5 | 24 |
| 3. Թոխարական | 8,5? | 16,5? | 25? |
| 4. Խեթա-լուվիական | 8,5(→9,5) | 17? | 25,5(→26,5) |
| 5. Սլավոնական | 11 | 13 | 24 |
| 6. Բալթիական | 10 | 8,5 | 18,5 |
| 7. Փռյուգական | 12,5(→13,5)? | 8(→15)? | 20,5(→28,5)? |
| 8. Թրակյան | 11(→13) | — | ? |
| 9. Հունական | 14 | 18 | 32 |
| 10. Ալբանական | 8(→10)? | 7,5 | 15,5(→17,5)? |
| 11. Իլիրական | 8,5(→11,5)? | — | ? |
| 12. Վենետական | 6(→10) | — | ? |
| 13. Իտալյան | 6(→7) | 16 | 22(→23) |
| 14. Կելտական | 9,5(→10,5) | 10,5 | 20(→21)? |
| 15. Գերմանական | 9,5 | 6,5 | 16 |

| Լեզվախմբեր \ Ընդհանուր հատկանիշներ | Հնչյունական | Քերականական | Հնչյունա-քերականական |
|---|---|---|---|
| 1. Հնդկական | 6 | 10,5 | 16,5 |
| 2. Իրանական | 6,5 | 7,5 | 14 |
| 3. Թոխարական | 7,5? | 8 | 15,5? |
| 4. Խեթա-լուվիական | 6,5(→8,5) | 9,5 | 16(→17) |
| 5. Սլավոնական | 7,5 | 4,5 | 12 |
| 6. Բալթիական | 7 | 2,5 | 9,5 |
| 7. Փռյուգական | 10,5(→11,5) | 5(→7) | 15,5(→18,5) |
| 8. Թրակյան | 8,5 | — | ? |
| 9. Հունական | 10,5 | 9,5 | 20 |
| 10. Ալբանական | 5(→6)? | 3 | 8(→9) |
| 11. Իլիրական | 7,5? | — | ? |
| 12. Վենետական | 6? | — | ? |
| 13. Իտալյան | 5 | 6 | 11 |
| 14. Կելտական | 5,5 | 5 | 10,5 |
| 15. Գերմանական | 6,5 | 12,5 | 8 |

Ըստ հայերենի հետ ունեցած հնչյունա-քերականական հատկանիշների ընդհանրության հնդեվրոպական մյուս լեզվախմբերը դասավորվում են հետևյալ կերպ.

Ըստ բոլոր հատկանիշների

1. Հունական՝ 32.
2. Հնդկական՝ 28,5.

Ըստ աստղանիշով նշվածների

1. Հունական՝ 20.
2. Հնդկական՝ 16,5.

3. Խեթա-լուվական 25,5 (→26,5)?
4. Թոխարական՝ 25?
5. Փռյուգական՝ 20,5 (→28,5)?
6—7. Իրանական՝ 24.
6—7. Սլավոնական՝ 24.
8. Իտալյան՝ 22 (→23).
9. Կելտական՝ 20 (→21)?
10. Բալթիական՝ 18,5.
11. Ալբանական՝ 15,5 (→17,5)?
12. Գերմանական՝ 16։

3. Փռյուգական 15,5 (→18,5)?
4. Խեթա-լուվական 16 (→17)
5. Թոխարական՝ 15,5?
6. Իրանական՝ 14.
7. Սլավոնական՝ 12.
8. Իտալյան՝ 11.
9. Կելտական՝ 10,5.
10. Բալթիական՝ 9,5.
11. Ալբանական՝ 8 (→9)
12. Գերմանական՝ 8։

Եթե այս պատկերը համեմատենք բացառյալ բառային զուգաբանությունների հիման վրա Ջոլտայի սահմանած հաջորդականության հետ, ապա կարելի է նշել, որ առանձնապես տարբեր է գերմանականի, խեթա-լուվականի, թոխարականի և փռյուգականի դիրքը. գերմանականը մոտ է հայերենին բառայնորեն (3-րդ տեղը) և վերջին տեղում է գտնվում հնչյունա-քերականական հատկանիշներով. ընդհակառակն, խեթա-լուվական, թոխարական և փռյուգական խմբերը հեռու են բառայնորեն (սա մասամբ թերևս բացատրվում է այդ լեզուների բառապաշարի ոչ բավարար հայտնիությամբ), բայց մոտ հնչյունա-քերականորեն։

Ավելորդ չէ նշել, որ ըստ Կրյոբերի և Կրետիենի՝ հայերենի հետ մյուս լեզուներն ունեն մերձավորության հետևյալ աստիճանները՝ սլավոնական (11 ընդհանուր հատկանիշ 74-ից), բալթիական (11), իրանական (11) հունական (9), սանսկրիտ (8), գերմանական (6), իտալյան (4), կելտական (3)։

## 4. ԲԱՌԱՅԻՆ ԶՈՒԳԱԲԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Ինչպես նշվել է, վերջին ժամանակներս մեծ ուշադրություն է հատկացվում բառային զուգաբանություններին, որոնց գնահատման համար մշակվել են համապատասխան սկզբունքներ։ Հայերենի՝ հնդեվրոպական մյուս լեզուների հետ ունեցած բառային զուգաբանությունները քննենք հետևյալ հաջորդականությամբ. նախ՝ կանգ առնենք Ա. Մեյեի և Վ. Պորցիգի ձեռք բերած ընդհանուր արդյունքների վրա, որքանով որ դրանք առնչվում են հայերենի բարբառային դիրքի որոշման հետ. երկրորդ՝ ի մի բերենք և համադրենք հայերենի բառային նյութի ընձեռած՝ մինչև այժմ հայտնի տվյալները (Հ. Աճառյանի, Գ. Ռ. Ջոլտայի և որոշ այլ հետազոտողների տվյալները ճշգրտելու և վերագնահատելու համար)՝ այդ նպատակով օգտագործելով նաև լեզվավիճակագրական մեթոդների օգնությամբ ստացված արդյունքները. երրորդ՝ բաշխենք հայերենի՝ հնդեվրոպական մյուս լեզուների հետ ունեցած առնչությունները ըստ իմաստային տարբեր խմբերի։

Ա. Մեյեն [Meillet, 1908] բերում է բառերի և բառիմաստների մի մեծ խումբ (չորս տասնյակից ավելի), որոնք առկա են «արևմտյան»՝ իտալական, կելտական, գերմանական, բալթիական ու սլավոնական լեզուներում, և բացակայում են «արևելյան»՝ հնդիրանական, հայկական և հունական խմբերում։

Դրանք վերապանցյալս մշակութային-քաղաքակրթական արժեք ունեն և վկայում են «արևմտյան» լեզուներով խոսող ժողովուրդների երկարամյա ինքնուրույն զարգացման մասին՝ բնութագրելով երկրագործությունն ու բուսականությունը (ալյուր, ակոս, հաճար, վարսակ, բակլա և այլն), արհեստագործությունն ու սարքերը (դարբնել, կացին, ղեկ և այլն), կենդանական աշխարհը (ընտանի խոզ, տորդիկ, պիծակ), մարդկանց հարաբերությունները ու բնակավայրը (ժողովուրդ, պարտք, գրավական, խոսք, ճշմարիտ և այլն)։ Սակայն սրանց կողքին Մեյեն նշում է մի կողմից՝ հնդիրանական, բալթիական և սլավոնական, մյուս կողմից՝ իտալական, կելտական և գերմանական լեզուների համար ընդհանուր բառեր և իմաստներ։ Մեյեի բերած բառային տվյալները հիմնականում հաստատում են հնչյունա-քերականական զուգաբանություններ սահմանելու միջոցով նրա ստացած արդյունքները։

Ավելի հանգամանալից և ճշգրտված փաստերի վրա են հիմնված Վ. Պորցիգի տվյալները [Porzig, 1954]։ Պորցիգը հաշվի է առնում ոչ միայն հնչյունական, քերականական և բառային ընդհանուր զուգաբանությունները, այլև տվյալ տարածքներում բացակայող տիպական բառերն ու բառիմաստները։ Տարբերելով արևմտյան և արևելյան տարածքներ՝ Պորցիգը քննում է ոչ միայն դրանց փոխհարաբերությունը, այլև պարզում յուրաքանչյուրի մեջ մտնող խմբերի նեղ կապերը։ Համառոտակի կանգ առնենք Պորցիգի բերած փաստերի վրա՝ նկատի ունենալով հատկապես հայերենը։

Չնայած արևմտյան և արևելյան տարածքների հստակ սահմանազատմանը՝ կան արևմտյան մի շարք նորագոյացումներ, որոնք թափանցել են արևելյան տարածք և հին ձևերը թողել միայն եզրագավառներում։ Այսպես, հ.-ե. *ēghis «օձ» ձևի կողքին, որից ծագում են հայ. իժ, այլև ոզնի <*og′hinii̯o- բառերը, տարածվել են արևմտյան *angʷis-ից ծագող ձևեր, ինչպես հայ. աւձ բառը (հմմտ. նաև հունական բառարանագիր Հեսիքիոսի ավանդած ἄβεις «իժեր» բառը)։ Սկզբնապես թե՛ «մեղր», թե՛ «մեղրագինի» նշանակող և որոշ լեզուներում միայն վերջին իմաստով գործածվող *medhu- բառի կողքին հանդես է եկել միայն «մեղր» նշանակող *meli(t) բառը, որ տարածվել է նաև խեթերենում և հայերենում, ընդ որում վերջինում ներթափանցել է *medhu-ի ձևական ազդեցությունը՝ ստանալով *-u-ով հիմք՝ մեղր, սեռ. մեղու։ Արևելյան տարածքի *ak′ru- «արտասուք» ձևի կողքին արևմտյան, հատկապես կելտա-գերմանական տարածքում հանդես եկող *dak′ro-ն *dak′ru-ձևով առկա է նաև հայերենում՝ արտասուր, հգն. արտասուք և հունարենում՝ δάκρυ (*-u-ով հիմք)։

Պորցիգը նշում է նաև արևմուտքի և արևելքի միջև անցողիկ զուգաբանություններ. հարավային տարածքի *pster- «փռնչալ» (հայ. փռնգամ, փռնչեմ, հուն. πτάρνυμαι, լատ. sternuō, հ.իռլ. srēod) ձևի դիմաց հյուսիսայինն ունի *qus-, *qis-, *qs(n)eu- ձևերը (հնդիրանական, բալթիական, սլավոնական, գերմանական). այսպես էլ, բաշխման մասնակի տարբերությամբ, արծաթի համար հարավում (այս դեպքում ներառյալ հնդիրանականը) տարածված են *areg′-ից ծագող անվանումները (բացի հնդիրանականից նաև հայ., լատ., կելտ., որոշ տարբերությամբ՝ հուն.), հյուսիսում դրանք փոխ են առնված օտար աղբյուրից (հմմտ. գերմ. Silber, ռուս. серебро)։

Արևելյան տարածքի ներսում հայերենի մերձավոր կապերը Պորցիգը ներկայացնում է հետևյալ ձևով։

*1) Հայերենը հունարենի հետ ունի հետևյալ ընդհանրությունները. ա) Նախդիր ձայնավորով բառեր՝ հուն.* ἀστήρ *և հայ.* աստղ, *հուն.* ἀνήρ *և հայ.* այր, *սեռ.* առն, *հուն.* ὀδοντ- *և հայ.* ատամն. *բ)* neu̯n̥-*ի կողքին* *enu̯n̥ *հատուկ ձևից ծագող հուն.* εἰνα- *և հայ.* ինն. *գ)* *u̯es- *«հագնել» արմատից* *-nu-*ով կազմված ձև՝ հուն.* ἕννυμι *և հայ.* զ-գենում. *դ)* *pel- *արմատից* *li̯o-*ով կազմված զուգահեռ ձևեր՝ հուն.* πολιός *և հայ.* ալիք *«սպիտակ մազ». ե)* *g'el- *«շողալ» արմատից ծագող «ծիծաղ, ծաղր» իմաստ՝ հուն.* γελῶς *և հայ.* ծաղր *(նաև* ծիծաղ. *այլ լեզուներում՝* *smei-*ից). զ) «աղալ» իմաստի արտահայտում* *al- *արմատով՝ հուն.* ἀλέω *և հայ.* աղամ, *այլև հուն.* ἄλευρον *և հայ.* ալեւր՝ *mel-*ի կողքին (համեմ. հայ.* մալեմ, մլ-աղաց*). է) «եփել» իմաստի արտահայտում* *eph- *արմատով՝ հուն.* ἕψω *և հայ.* եփեմ՝ *peku̯-*ի կողքին. ը) «օր» իմաստի արտահայտում* *āmōr-*ից ծագող հուն.* ἦμαρ *և հայ.* աւր *ձևերով՝* *del-*ից ծագող ձևերի կողքին (հայ. համեմ.* տիւ*). թ) «ձյուն» գաղափարի արտահայտում* *g'hi̯ōm *ից ծագող հուն.* χίων *և հայ.* ձիւն *ձևերով՝* *sneigu̯-*ից ծագող ձևերի կողքին. ժ) «դատարկ» իմաստի արտահայտում* *k'en- *արմատից ծագող հուն.* κενός *և հայ.* սին *ձևերով. ժա)* *meg'(h)- *«մեծ» արմատից ծագող բայական ընդհանուր ձևեր՝ հուն.* μεγαίρω *«չափազանց եմ համարում, նախանձում եմ» և հայ.* մեծարեմ. *ժբ) միայն երկու լեզվին հատուկ բառեր՝ հուն.* χίων *և հայ* սիւն:

*2) Հայերենը հնդկիրանականի հետ ունի հետևյալ ընդհանրությունները. ա)* *smek'-*ից ծագող «մորուք» բառի* *-u-*ով հիմք՝* *smok'ru-՝ *հ. հնդկ.* smas'ru- *և հայ.* մաւրուք. *բ)* *meigh- *արմատից ծագող «ամպ, մեգ» իմաստի համար առանց* *-l-*ի ձև՝ հ. հնդկ.* megha-, *ավ.* maeγa- *«ամպ» և հայ.* մէգ. *գ) ընդհանուր բառեր՝ հ. հնդկ.* raví- *և հայ.* արեւ. *հ. հնդկ. (վեդ.)* háya- *և հայ.* ձի, *հ. հնդկ. (վեդ.)* r̥jipya- *«ուղիղ թռչող», ավ.* ərəzifyō- *«արծիվ-» և հայ.* արծիւ. *հ. հնդկ. (վեդ.)* arka- *«ճառագայթ. երգ. երգիչ». և հայ.* երգ. *հ. հնդկ.* siṃha *«առյուծ» և հայ.* ինձ:

*3) Հայերենը հ.-ե. լեզուների հետ ունի նաև հետևյալ կարևոր ընդհանրությունները. ա) հունարենի և հնդկիրանականի հետ՝ հ. հնդկ.* haras-, *հուն.* θέρος *և հայ.* ջեր *(*gu̯her-). *հ. հնդկ.* stána-, *ավ.* fštānā *(երկ. թ.), հուն.* στήνιον *և հայ.* ստինք. *հ. հնդկ.* marta-, *ավ.* marəta, *հուն.* μορτός *(ըստ Հեսյուքիոսի)* (*mortos), *այլև հ. պրսկ.* martiya-, *հուն.* βροτός *և հայ.* մարդ (*mr̥tos)? *ավ.* izaēna- *«կաշվյա», հուն.* αἴξ *և հայ.* այծ (*aig'-). *հ. հնդկ.* jarant-, *ավ.* zarant-, *հուն.* γεροντ- *և հայ.* ծեր (*g'eront-՝ *այլուր տարածված* *senos-*ի կողքին). բ) բալթիականի և սլավոնականի հետ՝ լիտվ.* burnà *«բերան», բուլղ.* bъrna *«շրթունք» և հայ.* բերան (*bher- *արմատ՝* *os-*ի կողքին). գ) հունարենի, բալթիականի և սլավոնականի հետ՝ հուն.* ἰχθῦς, *լիտվ.* žuvìs *և հայ.* ձուկն (*g'hđū-). *հուն.* δῶρον *և հ. սլավ.* darъ *և հայ.* տուրք. *հուն.* πτερόν, *ռուս.* перо *«փետուր» և հայ* թիռ (*pter-). *դ) հունարենի և ալբաներենի հետ՝ հուն.* ὄνειρος, *ալբ.* âdërrë *(գեգ.),* ëndërrë *և հայ.* անուրջ (*oner-). *ե) ալբաներենի և սլավոնականի հետ՝ ալբ. (գեգ.)* zâ, *ռուս.* звон, *հայ.* ձայն (*g'hu̯ɔn-). *զ) հունարենի, ալբաներենի, բալթիականի և սլավոնականի հետ՝ հուն.* θείνω, *ալբ.* gjanj, *լիտվ.* geniù, *հ. սլավ.* žьnjǫ *և հայ.* ջնջեմ (*gu̯henįō). *է) հնդկիրանականի, ալբաներենի, բալթիականի և սլավոնականի հետ՝* մաւրուք *բառի* *-r-*ով ձև՝ ալբ.* mjekrë, *լիտվ.* smākras *և այլն. ը) խեթերենի հետ՝* *u̯ed- *արմատին պատկանող խեթ.* u̯etenas *(սեռ. հ.) և հայ.* գետ *բառերի ընդհանուր ձայնավորում,* *bhereg'h-

ից ծագող խեթ. parkuš և հայ. բարձր, սեռ. բարձու բառերի ընդհանուր *-ս-ով հիմք։

Հունարենի հետ ունեցած հատուկ զուգաբանությունները Պորցիգը հատկացնում է այն ժամանակին, երբ «երկու ժողովուրդների նախնիները դեռևս ապրում էին Բալկանյան թերակղզու հյուսիսում։ Սա տանում է երկրորդ հազարամյակի սկիզբը» [Porzig, 1954, 157]։ Ըստ Պորցիգի՝ հայ-հունական հատուկ զուգահեռներից հինգը (ե, թ, ժ, ժա, ժբ) ավելի հին են, քան satəm խմբի ծագումը, երկուսը (ա, բ) ցույց են տալիս ձայնդարձային հին երևույթներ, երեքը (գ, դ, թ) կազմության հին ձևեր են և երկուսը (վ, է)՝ տնային տնտեսության բառային նշանակումներ։ Հայերենի և հնդիրանականի բառային հատուկ ընդհանրությունները վկայում են ոչ թե նրանց՝ հնդեվրոպական բարբառային մեկ շրջանի պատկանելու մասին, ինչպես հայ-հունականները, այլ ցույց են տալիս մի ժամանակ, երբ «հայերի նախնիները Սև ծովի հյուսիսով անցնելիս ընկել են կազմավորվող (werdend) վեդայական մշակույթի ազդեցության ոլորտը» [Porzig, 162]։ Սակայն Ֆ. Ռ. Ադրադոսը և Ռ. Շմիտը [Schmitt, 1967, 260] արդարացիորեն նշում են, որ հատկապես արծիւ, արեւ, երգ, ձի բառերը հայերենը ոչ թե փոխ է առել, այլ ժառանգել է հ.-ե. բնիկատեղծական լեզվից։

Հայերենի բառային զուգաբանությունները ճիշտ գնահատելու համար ամենից առաջ պետք է ունենալ հավաստի բառամիավորների աղյուսակ՝ կազմված հնչյունական և քերականական աղյուսակների համար ընդունված ձևով։ Հ. Աճառյանի կազմած աղյուսակը [Աճառյան, ՀԼՊ, 1, 34—81] մեր նպատակներին հարմար չէ. նախ՝ այստեղ չկան բառերի և արմատների առանձնացման որոշակի սկզբունքներ. միևնույն արմատներին պատկանող բառերը մերթ դիտվում են որպես անկախ միավորներ (հմմտ. *as- «այրել» արմատի տարբեր աճականներով կազմված ձևերից ծագող ազազիմ և անիւն), մերթ բերվում որպես միևնույն միավորի տարբերակներ (հմմտ. աղտ—աղծ, այլ—աղաւաղ և այլն)՝ ակնհայտորեն հայկական հողի վրա ինքնուրույնաբար կազմված միավորների հետ միասին (հմմտ. անկ-անիմ—յ-անգ—ց-անկ). երկրորդ՝ ցեղակից լեզուներից բերված զուգահեռները միշտ չէ, որ անհրաժեշտ գաղափար են տալիս հայերեն բառերի հետ դրանց ունեցած մերձավորության աստիճանի մասին՝ ըստ տարբեր մակարդակների (միայն ըստ արմատի՞, թե՞ նաև ըստ ձայնդարձի, աճականի, ածանցի, հիմքակազմական առանձնահատկությունների, մասնավորված իմաստի ընդհանրության). երրորդ՝ աղյուսակն ինքնին ճշգրիտ գաղափար չի տալիս զուգադիպումների քանակի մասին, և Հ. Աճառյանը համընկնումների քանակի մասին (թե որքա՛ն միավորներ են համընկնում և որքա՛ն լեզուների հետ) խոսում է առանձին. չորրորդ՝ Հ. Աճառյանի բառացանկերը կարիք են զգում ճշտման և լրացման՝ ստուգաբանական նոր հետազոտությունների արդյունքներով, այդ թվում՝ բարբառային տվյալներով։

Գ. Ռ. Ջոլտայի ցանկերը Հ. Աճառյանի աղյուսակի համեմատությամբ որոշ չափով բարելավված են. կատարված են մասնակի ճշգրտումներ, բառերը որոշակիորեն խմբավորված են ըստ առնչվող լեզուների քանակի, դրանց մեջ էլ տարբերակված ըստ առանձին խոսքի մասերի։ Սակայն Ջոլտայի նյութը ևս կարիք է զգում լրացման ու ճշտման. միաժամանակ, ըստ մեր նպատակների, այն պիտի բերվի այնպիսի տեսքի, որ հնարավո-

րությունն ուս միևնույն սկզբունքներով գնահատելու հնչյունական, քերական և բառային տվյալները։ Էլ չենք խոսում այն մասին, որ Ջոնտան նպատակ չի դրել բառերը քննելու ըստ տարբեր իմաստային խմբերի, մի բան, որ սիստեմատիկ կերպով անում է Աճառյանը, թեև առանց իմաստային անցումները և տարածքային կապերը հաշվի առնելու։

Հետաքրքրական փաստեր կան բերված նաև ուրիշ հետազոտողների կողմից՝ հայ-սլավոնական (Հ. Կարստին, Լ. Սարաջևա), հայ-կելտական (Է. Ա. Մակաև), հայ-հնդիրանական (Ե. Խաչատուրովա), հայ-խեթական (Ս. Կամենհուբեր, Տ. Շուլտհայս, Գ. Ջահուկյան), հայ-գերմանական (Հ. Ասմանգուլյան), հայ-փռյուգական (Վ. Գևորգիև, Օ. Հաաս, Ի. Մ. Դյակոնով, Գ. Ջահուկյան), հայ-ալբանական (Հ. Պեդերսեն, Վ. Պիզանի), հայ-իլիրական, հայ-մակեդոնական (Գ. Ջահուկյան), հայ-իտալյան (Մ. Աղաբեկյան), հայ-դակամիզիական (Գ. Ջահուկյան, Ջ. Գրեպին, Մ. Բալտացեանու) զուգահեռների ուսումնասիրության բնագավառում. սրանց արդյունքներն էլ հարկավոր է ի մի բերել և համալրել։

Բառային զուգաբանությունների՝ ստորև բերվող աղյուսակը կազմված է մոտավորապես նույն սկզբունքներով, ինչ հնչյունական և քերականական համապատասխան աղյուսակները։ Բառերի ընտրության, դասավորության և հնդեվրոպական մյուս լեզուներում նրանց ունեցած զուգահեռների գընահատման հարցերում մասնավորապես ընդունվել են հետևյալ սկզբունքները.

1. Առաջին սյունակում տրվում են հնդեվրոպական նախաձևերը, ընդ որում նախ բերվում են հնդեվրոպական արմատական ձևերը Յուլիուս Պոկոռնու «Հնդեվրոպական ստուգաբանական բառարանում» [Pok., IEW] ընդունված այբբենական հաջորդականությամբ՝ միջակ փակագծերի մեջ (համանվանական ցուցիչներով հանդերձ՝ *pel-$_1$, *pel-$_2$, *pel-$_3$ և այլն), ապա տրվում են դրանց պատկանող այն նախաձևերը, որոնք վերականգնըվում են համեմատական տվյալներով հատկապես հայերենի համար՝ առանց փակագծերի։ Եթե Պոկոռնու բառարանում բերված ձևերը, հատկապես արմատական բառերը (*pətēr «հայր», *penk$^{u}$e «հինգ» և այլն) նույնական են հայերեն բառերի նախաձևերի հետ, ապա դրանք կրկնվում են և առանց փակագծերի՝ ընդհանուր սկզբունքը չխախտելու նպատակով։

2. Հայերեն բառերը բերվում են նախաձևերի աջ կողմում, ընդ որում՝ ա) մեկ նախաձևի դիմաց երբեմն կարող են տրվել մեկից ավելի բառեր, եթե դրանք դիտվում են որպես հայերենին հատուկ ածանցումներ կամ բարդություններ. բ) դրանք սովորաբար բերվում են իրար տակ (եթե, մանավանդ, իմաստով բավականաչափ հեռացած են), երբեմն էլ փակագծերի մեջ տրվում են միայն բաղադրիչները. գ) նախաձևերին հավելվող բառամասերը սովորաբար առանձնացվում են գծիկներով կամ առնվում փակագծերի մեջ. դ) գոյականների մոտ տրվում են հին վկայություն ունեցող և նախաձևերին համապատասխանող հոլովաձևերը՝ -ոյ, -ի, -աց, -ին և այլն (*mr̥-to- > մարդ,-ոյ, *bhā-ni- > բան,-ի և այլն)։

3. Յ. Պոկոռնու բառարանում տեղ չգտած հնդեվրոպական արմատական ձևերը և Յ. Պոկոռնու ու Հ. Աճառյանի բառարաններում [Pok., IEW. Աճառյան, ՀԱԲ] չարտացոլված՝ հնդեվրոպական ծագման հայերեն բառերը տըրվում են + նշանով, կասկածելի համարվող նախաձևերը, հայերեն բառերը և զուգահեռները կրում են ? նշանը։ Նոր ստուգաբանված բառերն առնված են այդ բառարաններից հետո լույս տեսած զանազան աղբյուրներից, այդ

թվում ինչպես հայ (Գ. Ջահուկյան, Է. Աղայան և ուրիշներ), այնպես էլ օտար հետազոտողների աշխատություններից, առանց աղբյուրի նշման[3]։ Բացի գրաբար և միջին հայերեն բառերից աղյուսակում ընդգրկված են նաև համեմատաբար հավաստիորեն ստուգաբանվող բարբառային բառերը (բ. նշումով)՝ ըստ Հ. Աճառյանի «Հայերեն գավառական բառարանի» (1913) նյութերի վրա հիմնված այն ստուգաբանությունների, որ տեղ են գտել հատկապես Հ. Աճառյանի «Հայոց լեզվի պատմություն» (1—2, 1940—1951) և Գ. Ջահուկյանի «Հայ բարբառագիտության ներածություն» (1972) աշխատություններում։

4. Հայերենի՝ հնդեվրոպական մյուս լեզուների հետ ունեցած զուգաբանությունները գնահատվում են, ըստ մերձավորության աստիճանի, +-ով կամ ±-ով, ընդ որում՝ ա) + նշանն են ստանում համեմատաբար ակնհայտ, կազմությամբ բացահայտորեն համընկնող և իմաստային առումով նույնական կամ մերձավոր, ± նշանը՝ ոչ այնքան բացահայտ, կազմությամբ մասնակիորեն համընկնող և իմաստով զգալիորեն շեղվող զուգահեռները. բ) բառային այն զուգաբանությունների համար, որոնք տեղ են գտել Գ. Ռ. Ջոլտայի աշխատության մեջ, հաշվի են առնվել հիմնականում նրա տվյալները՝ մասնակի ճշտումներով ու լրացումներով. մնացած դեպքերում նկատի են առնվել Յ. Պոկոռնու ու Հ. Աճառյանի բառարաններում և այլ հետազոտողների աշխատություններում բերված տվյալները. գ) եթե հայերեն բառի նախաձևը ունի նույն բաշխումը, ինչ փակագծերի մեջ առնվածը, ապա + և ± նշանները չեն կրկնվում. առանց այսպիսի նշանների են բերվում նաև հ.-ե. մյուս լեզուներում հատուկ զուգահեռներ չունեցող՝ առկա տվյալներով միայն հայերենի նախավիճակի համար բնորոշ նախաձևերը. դ) միջակ փակագծերի մեջ առնված ձևերի դիմաց զուգահեռները նշվում են պարտադիր կարգով, բացի այն դեպքերից, երբ դրանց տակ բերված հայերեն բառերի պատկանելությունը կասկածելի է. ե) հայերենին զուգահեռ բառամիավորի բացակայությունը կենդանի ներկայացուցիչներ ունեցող լեզվախմբերում բոլոր դեպքերում նշվում է —-ով, միայն մեռած լեզուներով ներկայացվածներում՝ առանց որևէ նշանի. այս դեպքում նկատի է առնվում, որ կարելի է հավաստիորեն խոսել զուգահեռ բառամիավորի ոչ թե բացակայության, այլ վկայված չլինելու մասին. իհարկե, այսպիսի նշանակումը պայմանականություն ունի, եթե նկատի առնենք, որ կենդանի լեզուների վերաբերյալ մեր տվյալները ևս լրիվ լինել չեն կարող, և որ գրավոր ուշ ավանդում ունեցող լեզուներում սկզբնական շատ բառաձևեր կարող են կորած լինել։

5. Վիճակագրական հաշվումները հեշտացնելու նպատակով հիմնական բառաֆոնդի բառերը (ըստ Մ. Սվոդեշի լեզվաժամանակագրական հաշվումների մեջ ընդգրկված ցանկերի) բերվում են առանձին։

6. Հայերեն բառերի մոտ դրված թվերը իմաստային ցուցիչներ են, այսինքն՝ ցույց են տալիս այդ բառերի պատկանելությունը «Բառաիմաստային (թեմատիկ) խմբեր» հատվածում առանձնացված խմբերին և ենթախմբերին։ Ցուցիչներով կարելի է նշված հատվածում գտնել անհասկանալի և դժվար հասկանալի բառերի բացատրությունը։

---

[3] Օտարազգի հետազոտողների ստուգաբանությունների մասին տե՛ս հատկապես Schmitt, 1972, 23—27։

| Նախաձևեր | Հայ. ձևեր | Հ | Իր | Թ | Խ | Սլ | Բ | Թր | Փ | Հն | Ա | Իլ | Վ. | Իտ | Կ | Գ. |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | 2 | 3 | 4 | 5 | 6 | 7 | 8 | 9 | 10 | 11 | 12 | 13 | 14 | 15 | 16 | 17 |
| [*abh-] | | — | — | | | — | — | | + | + | - | + | | — | + | + |
| *abh-ro- | +արբուն-ք4.81 | — | — | | | — | — | | + | — | | + | | — | + | + |
| | +արբեկ?13.15 | | | | | | | | | | | | | | | |
| [*ab-] | | + | — | | | — | — | + | + | — | - | | | + | + | — |
| *(a)d-sk | ց23.54 | | | | | | | | | | | | | | | |
| [*ag'-] | | + | + | + | | + | + | | | + | -- | + | | + | + | + |
| *ag'e- | ածեմ (յ-ածիմ)10.62 | + | + | + | | — | — | | | + | — | | | + | + | — |
| *ag'-ro- | արտ,-ոյ8.12 | + | — | | | - | — | | | + | — | + | | + | — | — |
| | արտ(ա)-23.59 | | | | | | | | | | | | | | | |
| | արտաք-ս (-ին)23.59 | | | | | | | | | | | | | | | |
| [*ag'h-] | | + | + | | | -- | — | | | — | -- | | | — | + | — |
| *eg'hen-? | եղն, -ին3.22 | | | | | | | | | | | | | | | |
| [*aghl(u)-] | | — | -- | | | — | + | | + | + | -- | | | — | — | — |
| *alghi̯- | աղջ(-աղչ,-ա-մուղջ)1.62 | | | | | | | | | | | | | | | |
| [*alg'-] | | — | ±? | | | — | — | | + | + | — | | | — | — | — |
| *alg'i- | այծ,-ի3.36 | | | | | | | | | | | | | | | |
| [*als-] | | + | + | | | + | + | | | — | — | | | + | — | + |
| *als-sk'- | (հ)այց18.35,19.571 | | | | | | | | | | | | | | | |
| [*ak'-, *ok'-] | | + | + | + | + | -- | + | + | + | + | — | | | + | + | + |
| *ak'l-l- | ասեղն6.36 | — | — | | | + | — | | | + | -- | | | + | — | + |
| *ok'li̯ā | +ք. ուի 8.531 | | | | | | | | | | | | | | | |
| [*əl-1] | | + | + | + | + | — | — | | | + | -- | | | + | + | + |
| al-i-o-s | այլ,-ոյ23.63 | — | + | + | | — | — | | | + | — | | | + | + | + |
| [*al-3] | | — | — | + | | — | + | | | + | — | | | + | — | — |
| *al- | +ալ-ար-եմ?16.45 | | | | | | | | | | | | | | | |
| | +աղ(-ամող)12.74 | | | | | | | | | | | | | | | |
| | +աղանդ?22.11 | | | | | | | | | | | | | | | |
| *aləu- (*aleu-) | աղաւաղ (աղեւաղ)12.93 | | | | | | | | | | | | | | | |
| [*al-4] | | [illegible] | — | | +? | — | — | | | +? | - - | | | + | +? | + |
| *al- | +աղանձ?5.231 | | | | | | | | | | | | | | | |
| [*al-5] | | + | + | | | — | — | | | + | -- | | | — | — | — |
| *alā- | աղամ5.56 | | | | | | | | | | | | | | | |
| *alətri̯o- | աղաւրի-ք5.57 | — | — | | | — | — | | | + | - | | | — | — | — |
| *alēu̯ero-? | ալեւր (-իւր),-ոյ5.55 | | | | | | | | | | | | | | | |
| *al-6] | | — | — | | +? | + | + | | | + | - - | +? | | + | + | + |
| *aləbhnii̯ā | աղաւնի3.641 | — | — | | | + | — | | | — | - | | | + | — | + |
| [*alā-] | | + | — | | | + | + | | | + | - - | | | — | — | |
| *al-alā | աղաղակ18.13 | + | — | | | [illegible] | — | | | + | . | | | — | — | — |
| *al-ale-? | +բ.աղաղել18.13 | | | | | | | | | | | | | | | |
| [*alp-] | | + | — | | +? | — | + | | | +? | ! ? | | | — | — | — |
| *alph- | աղփաւն (աղիփ-)?4.84 | | | | | | | | | | | | | | | |
| [*ālu-, *ālo-] | | + | — | | | -- | — | | | — | — | | | +? | —? | — |
| aludi̯o-? | +ալուճ?8.531 | | | | | | | | | | | | | | | |
| [*ambhi-] | | + | + | + | | [illegible] | + | | + | + | + | | | + | + | + |
| *ambhi | ամբ(ողջ)13.13 | | | | | | | | | | | | | | | |
| [*āmer-] | | — | — | ± | | — | — | | | + | — | | | — | — | |
| *āmōr | ամր,-ուր14.41 | | | | | | | | | | | | | | | |
| [*an-1] | | — | — | | + | — | + | | | + | — | + | | + | — | + |
| *Han- | հան,-ոյ?2.47 | | | | | | | | | | | | | | | |
| *Hanti̯ā | հանի2.47 | | | | | | | | | | | | | | | |
| *anero- | աներ?2.61 | — | — | | | — | — | | | — | — | + | | — | — | — |

| 1 | 2 | 3 | 4 | 5 | 6 | 7 | 8 | 9 | 10 | 11 | 12 | 13 | 14 | 15 | 16 | 17 |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| [*an-₂] | | + | + | | | + | + | | | + | — | | | + | + | + |
| *an | + բ.ան23.62 | — | — | | | — | — | | | + | — | | | + | — | + |
| [an(ə)-₃] | | + | + | + | | + | — | | | + | + | | | + | + | + |
| *onə-mo- | Հողմ,-ոյ?1.72 | — | — | + | | — | — | | | + | + | | | + | + | + |
| [*an-₄] | | +? | + | | | + | + | + | + | + | — | + | | + | +? | + |
| *an | ան-23.83 | | | | | | | | | | | | | | | |
| [*andh-] | | + | + | + | | — | — | | | + | + | + | | — | + | + |
| *andho- | անդ,-ոյ (-ի)8.12 | — | — | + | | — | — | | | - | — | | | — | — | — |
| *andh-? | + անդ-ի(-եայ)3.15,3.20 | | | | | | | | | | | | | | | |
| *andhio- | + ընչ-ուղ3.24 | — | — | | | — | — | | | — | — | | | — | + | — |
| [*anətā] | | + | + | | | — | — | | | — | — | | | + | — | + |
| *an(ə)tā | անդ-7.221 | | | | | | | | | | | | | | | |
| [*ang'h-] | | + | + | +? | | + | — | | | + | — | | | + | + | + |
| *ang'hu- | անձուկ12.62 | + | — | — | | + | — | | | + | — | | | + | + | + |
| *ang'həu̯o-? | անձաւ?1.442 | | | | | | | | | | | | | | | |
| [*ang'hen-] | | — | — | | | — | — | | | — | — | | | — | — | + |
| *ang'hen- | անձն,-ին2.1 | | | | | | | | | | | | | | | |
| [*angᵘhi-] | | — | — | + | | + | + | | | + | — | + | | — | + | — |
| (*angᵘhi->) | | | | | | | | | | | | | | | | |
| *aughi-? | աւձ,-ի3.85 | — | — | +? | | — | — | | | — | — | | | — | — | — |
| *ēgᵘhi- | իժ3.85 | + | + | | | — | — | | | + | — | | | — | + | — |
| [*ank-₁] | | — | — | | | — | — | | | + | — | | | — | + | +? |
| ankh-? | + անքատ?11.52 | | | | | | | | | | | | | | | |
| [*ank-, *ang-] | | + | + | + | | + | + | | + | + | — | + | | + | + | + |
| *ang- | անկիւն12.76 | | | | | | | | | | | | | | | |
| [*āno-] | | — | — | | | — | — | | | — | — | | | + | + | — |
| *ānōro | անուր,-ոյ12.821 | | | | | | | | | | | | | | | |
| [+*ant(h)-] | | — | — | | +? | — | — | | | + | — | | | — | — | — |
| *anth- | + անթեղ1.84 | | | | | | | | | | | | | | | |
| | + բ. անթայր1.811 | | | | | | | | | | | | | | | |
| [*ant-] | | + | + | + | + | — | + | | + | + | — | | | + | + | + |
| *anti | ընդ23.55 | + | — | | + | — | + | | + | + | — | | | + | — | + |
| [*antro-m] | | — | — | | — | — | — | | | + | — | | | — | — | — |
| *antri̯om? | այր1.442 | | | | | | | | | | | | | | | |
| [*ap- (*əp-)/ep-] | | + | + | + | + | — | — | | | + | — | | | + | — | — |
| *ōp-n- | ունիմ 11.11 | + | — | | | — | — | | | — | — | | | — | — | — |
| *apho- | ափ,-ոյ4.331 | — | — | | | — | — | | | · | — | | | — | — | — |
| [*appa-] | | — | — | + | | — | — | | | + | — | | | — | — | — |
| *appi̯o. | + բ. ապի2.35 | | | | | | | | | | | | | | | |
| *aph-? | + բ. ափու2.35 | | | | | | | | | | | | | | | |
| [ar-₁] | | + | + | + | +? | + | + | | + | + | — | | | + | + | + |
| *ar- | (յ)ար-եմ12.22,-նչիմ9.943 | — | + | | | + | — | | | + | — | | | — | — | — |
| *arı?- | բ. առի13.15 | + | · | | | — | — | | | + | — | | | — | — | — |
| *ar-ne- | առնեմ9.11 | | | | | | | | | | | | | | | |
| (*ar-ar-) | (ար-ար-ի)9.11 | — | — | | | — | — | | | + | — | | | — | — | — |
| *ar-m- | (յ)արմ-ար9.943 | — | — | + | | + | — | | | + | — | | | + | — | + |
| *ar-mo- | արմ(-ուկն)4.32 | + | + | | | + | + | | | — | — | | | + | — | + |
| *ar-ti | արդ14.18 | — | — | | | — | + | | | + | — | | | + | — | — |
| *ar-tu- (*r̥-tu-) | արդ,-ու12.51 | + | + | ± | | — | ± | | ± | + | — | | | + | — | ± |
| | (գ)արդ,-ու6.71 | | | | | | | | | | | | | | | |
| | արդ(ար)16.73 | | | | | | | | | | | | | | | |

| 1 | 2 | 3 | 4 | 5 | 6 | 7 | 8 | 9 | 10 | 11 | 12 | 13 | 14 | 15 | 16 | 17 |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| *ari-tro-? | +հարիր?13.531 | — | — | | | — | - | | | + | | | | ± | + | + |
| *ri-tro- | (յ)երիր9.11 | — | | | | — | | | | + | -- | | | + | ± | + |
| [*ar-2] | | — | + | | +? | ··· | - | | | + | | | | — | — | |
| ar-nu-mi | առնում11.13 | · | ± | | (±?) | — | — | | | + | · | | | — | — | ±? |
| [*ar-5 | | -- | - | | | — | — | | | + | + | | | — | — | - |
| *or-ի հետ] | | (+) | (−) | | (+) | (+) | (+?) | | | (+) | (−) | (+) | | (+) | (−) | (−) |
| *orənāmi? | ուրանամ18.34 | · | - | | | — | — | | | + | + | | | | —. | — |
| *orəsti- | ուրաստ 18.34 | | | | | | | | | | | | | | | |
| [*ar(ə)-] | | · | | + | | + | + | | | + | | | | | + | + |
| *arə-tro-m | արաւր,-ոյ8.21 | — | | | | ± | ± | | | + | -- | | | + | + | + |
| *arəu- | հարաւ-ունք8.12 | · | · | | | — | — | | | + | — | | | + | + | — |
| [*arbh-?] | | | — | | | - | + | | + | — | — | | | · | — | — |
| *ardh- | (գեղ-)արդն20.26 | | | | | | | | | | | | | | | |
| [*ar(e)g′-] | | + | + | + | + | — | —? | | + | + | — | | + | + | + | + |
| *rg′-n-? | արծնեմ9.81 | — | — | | | — | — | | | +? | — | | | — | — | — |
| *arg′-arg′- | արծարծեմ1.86 | | | | | | | | | | | | | | | |
| *arg′əto- (-n̥to) | արծաթ,-ոյ9.65.11.34 | + | + | + | | · | — | | | ± | -- | | | + | +? | — |
| [*arek-] | | — | - ? | | + | —? | + | | + | — | — | ± | | — | + | + |
| *ark | բ. արգ19.53 | -- | — | | + | — | — | | | + | — | | | + | — | — |
| *arkelo- | արգել18.38.19.59 | — | — | | | — | — | | + | — | ··· | | | — | — | + |
| *ork-mo-? | որմ,-ոյ?2.27 | | | | | | | | | | | | | | | |
| [*+arkŭ-?] | | — | — | | | — | — | | | — | — | | | — | + | — |
| *arkŭ- | արդ-անդ4.47,-ահատեմ 16.35 | | | | | | | | | | | | | | | |
| [*arōd-] | | — | — | | +? | + | — | | | — | — | | | + | — | + |
| *arəd- | արատ?3.641 | | | | | | | | | | | | | | | |
| [*as-] | | + | — | + | + | — | — | | | + | — | | | + | +? | + |
| *a(z)gio-? | աճ-իւն1.84 | — | — | | | - | — | | | + | — | | | — | — | + |
| *azg′h- | ազազիմ15.84 | — | — | | | · | — | | | — | — | | | — | — | + |
| *ozd-? | ոստին?15.84 | — | — | | | + | — | | | + | — | | | — | — | — |
| [*āt(e)r-] | | — | + | | | + | — | · | | — | +? | | | +? | +? | — |
| āter- | այրեմ1.85 | | | | | | | | | | | | | | | |
| [*atos, *atta] | | + | + | | + | + | — | | | · | + | | | — | — | + |
| *atta | +բ. ատտա?2.36 | + | -- | | | — | — | | | — | — | | | — | — | — |
| *att-? | +բ.ատո?2.47 | | | | | | | | | | | | | | | |
| [*au 2] | | — | -- | | | — | — | | + | + | -- | | | — | — | — |
| *au̯- | ագանիմ (-ագ)7.11 | | | | | | | | | | | | | | | |
| | ան-ագան?14.17 | | | | | | | | | | | | | | | |
| *au-ti-? | աւթ,-ի7.11 | — | — | | | — | — | | | + | — | | | — | — | — |
| [*au-4] | | + | + | ± | | + | ± | | | + | +? | | | + | + | + |
| au- | + աւ(աւիկ,-աղիկ, -անիկ)23.34 | | | | | | | | | | | | | | | |
| [*au-5 (հմ. *eu-)] | | + | — | | | + | + | | | — | — | | | — | + | + |
| *au-dhi- | (յ)աւդ (դ-աւդ),-ի9.17 | — | — | | | + | + | | | — | — | | | -- | — | ± |
| *au-dho-? | աւդ6.51 | — | — | | | + | + | | | — | — | | | — | — | ± |
| [*au-6, *au̯ed-] | | + | -- | + | | + | + | | | + | — | | | | - | + |
| *au̯ed- | աւետ,-եմ18.43 | | | | | | | | | | | | | | | |
| *au̯eid- | աւէտ18.43 | — | — | | | ·· | — | | | + | — | | | -- | — | — |
| [*au-7] | | + | ·· | + | | — | + | | | + | -- | | | + | + | + |
| *au- | աւ-իմ(-եալ)17.23 | | | | | | | | | | | | | | | |
| | աւ-իւն9.99 | | | | | | | | | | | | | | | |
| *Hau̯ə- | +հաւան,-իմ16.21 | | | | | | | | | | | | | | | |
| [au-8] | | + | + | +? | +? | + | — | | | + | — | | | + | — | — |
| Hau- | +(հ)աւատ?22.11 | | | | | | | | | | | | | | | |

| 1 | 2 | 3 | 4 | 5 | 6 | 7 | 8 | 9 | 10 | 11 | 12 | 13 | 14 | 15 | 16 | 17 |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| [*au(e)-₉, *au̯-ed-, -r-] | | + | + | + | + | + | + | + | + | + | + | + | | : | + | + |
| *u̯ed- | գետ, -ոյ1.36 | + | : | | + | - - | | | + | +? | + | | | · | | – |
| *i̯uro- | ջուր, -ոյ1.36 | – | – | | | | + | | + | – | | | | – | | – |
| *u̯ers- | + (ձ-)գեռ(-ու)4.57 | + | – | | : | – | – | | | : | · | | | | + | |
| *u̯ors- | + գոռ1.214 | | | | | | | | | | | | | | | |
| *u̯rsi̯i-? | + (գ)գայս, -ի4.57 | | | | | | | | | | | | | | | |
| [*au(e)-$_{10}$] | | + | + | | · | + | + | | | + | · | | | + | \| | + |
| *au-dh- | աւդ, -ոյ1.71 | - | – | | | – | – | | | ±? | – | | | – | | |
| [*au̯ei-] | | + | + | | | – | | | | ± | ± | | | + | ± | – |
| *Hau- | Հաւ3.51, 3.54 | | | | | | | | | | | | | | | |
| [*au̯es-] | | \| | + | + | | + | + | | | + | – | | | + | + | + |
| *aus- | (առ)աւ(օտ)?14.44 | | | | | | | | | | | | | | | |
| [*augh-] | | ± | | | | – | · | | | + | – | | | – | – | – |
| *aughi̯o- | աւձի-ք6.45 | | | | | | | | | | | | | | | |
| [*au-lo-s (:*ēu-l-)] | | – | – | | | + | + | | | + | | | | + | – | + |
| *aulos | աւղ, -ոյ (-ի)12.821 | – | – | | | – | + | | | + | – | | | + | – | + |
| *uli̯o- | ուղ-ի10.71(-արկեմ, յ-ղեմ)10.63 | – | – | | | + | + | | | – | – | | | – | – | – |
| [*au̯o-s] | | – | – | | + | + | + | | | +? | – | | | + | + | + |
| [Hau̯o-s] | Հաւ2.46 | – | + | | + | ± | ± | | | + ? | + | | | + | ± | ± |
| [*baba]- | | + | – | | | + | + | | | · | + | | | + | – | + |
| *babaki̯e- | + պապաչեմ18.14 | | | | | | | | | | | | | | | |
| [*b(h)aˣmb(h)- *p(h)aˣmp(h)-] | | ·· | – | | | + | + | | | + | – | | | + | – | + |
| *bhambh-? | + բ.բամբ-ուշ(>բմբուշ) 5.511 | – | – | | | + | + | | | – | – | | | – | – | + |
| *bhumbh- | *բումբ4.351 | – | · | | | + | + | | | – | – | | | – | – | – |
| *phamph- | փամփ(բ)ուշա4.491 + բ.փ(ա)մփ-15.75 | – | – | | | · | + | | | – | – | | | + | – | + |
| *phaph- | փափ-ուկ15.75 | | | | | | | | | | | | | | | |
| [*bed-] | | | | | | | | | | | | | | | | |
| *bod-ro- | պորտ, -ոյ4.43 | + | – | | | + | – | | | – | – | | | +? | – | +? |
| [*bel-₁]- | | – | – | | | + | – | | | – | – | | | – | – | – |
| *bel- | պեղեմ8.22 | – | – | | | – | – | | | – | – | | | – | : | – |
| *bol- | + բ.պողեմ8.22 | | | | | | | | | | | | | | | |
| [*bel-₂] | | | – | | | + | – | | | + | – | | | – | – | +? |
| *bl̥- | պալ (պաղ)1.44 | | | | | | | | | | | | | | | |
| *bēl- (*bōl-?) | պղպղ(-ա-քար)1.44 | | | | | | | | | | | | | | | |
| [*b(h)(e)u₁] | | – | + | | | + | ± | | | + | – | | | + | – | – |
| *bhu- | բու (-էճ?)3.641 | | | | | | | | | | | | | | | |
| [*b(h)(e)u-] | | + | : | | | + | + | | + | + | – | | | + | + | + |
| *bheu-l- | բոյլ-բոյլ, -ի3.192 | + | – | | | ± | ± | | | ± | – | | | – | + | + |
| *bhu-l- | *բ.բուլ(>պիւլ)5.531 | | | | | | | | | | | | | | | |
| *bu-l- | + բ.պլլիկ4.49.21 + բ.պուպուլ4.492 պ(լ)պլուկ8.55 + բ.պուլիկ5.26 | | | | | | | | | | | | | | | |
| *bu-l-sko- | պ..4.4921 | | | | | | | | | | | | | | | |
| *bheu-t- | + բոյթ4.342 | – | – | | | – | – | | | – | – | | | – | – | + |
| *bhu-t- | + բ.բութ4.941 + բ.բթ-ուկիլ12.631 | | | | | | | | | | | | | | | |

ընդվել են *gambh-, *gm̥bh- նախաձևեր. *gʷebh- հատուկ նախաձևի վերականգնումը պատկանում է Մեյեին, որ *gʷ-ի համար նկատի ունի γέφυρα-ի կողքին βέφυρα և δέφυρα բարբառային ձևերը։ Յոկլը [„Wörter und Sachen" 2, 189] սրանց միացնում է լատ. vibia «գերան» բառը։

Գեջ-ի համեմատությունը սլավոնական (հ. սլ. židъkъ, ռուս. жидкий «հեղուկ» (ած.) և այլն) բառերի հետ պատկանում է Լիդենին [Lidén, 1906, 51] և ընդունվում է Մեյեի ու Աճառյանի կողմից [ՀԱԲ, 1², 551]։ Այս դեպքում սլավոնականից պետք է առանձնացնել հուն. δεῖσα «կեղտ, տիղմ» և կապակծով սրանց հետ միացվող գերմ. բառերը [Pok., 1, 469], եթե չենթադրենք կամ բարբառային *gʷh/gʷ տատանում, կամ հայերենում *gʷedh-i̯o->*gʷhedhi̯o-> գեջ- անցում։

Կրեմ բայի ստուգաբանությունը պատկանում է Աղայանին [1947, 84—85]։ Եթե ճիշտ է, ապա այն պետք է համարել անվանածանցային կազմություն (*-i̯e/i̯o- ածանցի օգնությամբ)՝ *gʷer- «ծանր» ածականից։ Իմաստի համար հմմտ. հատկապես հուն. βρίθω «ծանր եմ. բեռնված եմ, բեռ ունեմ, կրում եմ» բայը։

Կռիւ «կռիվ, վեճ, պատերազմ. ոտքը ամուր դնելու՝ կառչելու՝ հաստատվելու տեղ» (կռուիմ «կառչում եմ») բառի զուգահեռները որոշված են ըստ *-i-ով հիմքի առկայության և իմաստային մերձավորության ամենից ավելի մոտ են հուն. βρίμη «ուժեղ ճնշում, սեղմում. բարկություն, հայհոյանք», βριαρός «ամուր, ուժեղ», հ. վ. գերմ. krēg «համառություն», մ. վ. գերմ. kreig «ջանք, լարում. կռիվ», ն. վ. գերմ. Krieg «կռիվ» բառերը։ Աճառյանը [ՀԱԲ, 2², 671] հայ. և գերմ. բառերի կապը համարում է պատահական։

Կատակ և հ. հնդկ. gádati «ասում է, խոսում է», gada- «խոսք, զրույց, ասացվածք» բառերի համեմատությունը պատկանում է Լիդենին [Lidén, 1906, 81] և ընդունվում է Աճառյանի կողմից։ Հ. հնդկ. բառը Պոկոռնին [Pok., 1, 480—481] բերում է *gʷet- «խոսել» արմատի տակ՝ *t-ի փոխարեն հին հնդկերենում d-ի առկայությունը համարելով երկրորդական։ Մայրհոֆերը [KEWA, 1, 319—320] չմխտելով սա և gad-ի d-ն համարելով vad-ի ազդեցության արդյունք՝ միաժամանակ նշում է գերմ. (նորվ. kvata, վեստֆալ. kwatern «շաղակրատել») ու իրանական (ավեստ. հ. պրսկ. jad- «խնդրել») զուգահեռներ և ենթադրում *gʷed- արմատ։ Բոլոր դեպքերում հայերենի իմաստը հեռու է մնում։

Կոյ (>կու) բառի համար վերականգնվող *gʷou-to- նախաձևը կասկածելի է (*t-ն *-o-ից առաջ տալի՞ս է արդյոք յ), *gʷou-so-ն (Պեդերսեն) չունի զուգահեռներ այլ լեզուներում։ Այդ պատճառով էլ մենք տալիս ենք *-t-ով նախաձև՝ բաց թողնելով սրա ածանց, թե աճական լինելու հարցը. *-t-ից հետո թերևս պետք է ենթադրել *-l-։

Կորիճ-ի ստուգաբանությունը պատկանում է Մյուլլերին [SWAW, 136, 11] և ընդունվում է շատերի կողմից։ Դժվարություն է հարուցում նախաձևի վերականգնումը։ Պոկոռնին [Pok., 1, 485] հուն. βρέφος «սաղմ. ձագ», մ. իռլ. brommach և հ. սլավ. žrěbę (ռուս. жеребенок) «քուռակ, մտրուկ» բառերը բերում է *gʷrebh- հիմնաձևի տակ։ Հաասը [Haas, 1966, 249], նկատի առնելով (նախա)փռյուգ. κορυβαντ- «փռյուգական Կիբելայի քուրմ»

(իբր *«ղավակ») զուգահեռը, հայերենի համար տալիս է* gʷorebhn̥t- նախաձևը, որ կասկածելի է:

Կրծեմ (կուրծ-) բայի ստուգաբանությունը պատկանում է Մյուլլերին [Müller, Armenaca, 6, 4] և ընդունվում է Հյուբշմանի ու Աճառյանի կողմից [ՀԱԲ, $2^{2}$, 666]: Հայերենի համար ենթադրվում է *-g'-ով (փոխ. *-g'h-ի) և երերուն ձայնդարձով (Schwebeablaut) ձև. Պոկոռնին [Pok., 1, 485—486] տալիս է միայն *-g'h-ով *gʷrēugh-/*gʷrŭgh- նախաձևը՝ հենվելով հատկապես հուն. βρύχω «կրճտում եմ. կրծում եմ» բայի վրա, թեև հնարավոր է նաև *-g'-ով տարբերակը: Պեդերսենը և նրա հիման վրա Պոկոռնին [Pok., 1, 474] բխեցնում են *gʷer- «կլանել» արմատից, որ անհավանական է:

Կայտառ-ի ստուգաբանությունը տվել ենք մենք՝ կոքկոռ բառի օրինակով ենթադրելով *gʷhəi-d-> *gʷəi-d-> կայտ-առ փոփոխությունը. Համմտ. հուն. φαιδός «պայծառ, ուրախ», լիտվ. gaidrùs «պայծառ» և այլն:

Եթե ջնջեմ-ի երկրորդ ջ-ն գալիս է *-i̯-ից (*gʷhen-i̯e-), ապա այն զուգահեռներ ունի հուն. θείνω «խփում եմ», ալբ. gjanj «հալածում եմ», լիտվ. geniù, genéti «հատում եմ» ձևերի մեջ: Զոլտան [Solta, 1960, 81] հնարավոր է համարում վերականգնել կրկնավոր ձև՝ հ. հնդկ. jánghanti:

Լեարդ-ի նախաձևի վերականգնումը դժվարություններ է հարուցում. ենթադրվում են նաև *lepr̥t-, *lesr̥t- նախաձևերը, ընդ որում առաջին դեպքում նկատի է առնվում գերմ. (հ. սկանդ. lifr, հ. անգլ. lifer, հ. վ. գերմ. lìber) ձևերը, որոնք ծագում են *leip- արմատից («ճարպոտ, յուղոտ»), երկրորդ դեպքում՝ խեթ. lišši-ն: Բուն *i̯ēkʷr̥t- նախաձևի դեպքում հայ. l-ն բացատրվում է կամ որպես անկանոն հնչյունափոխություն, կամ սկզբնական *li̯-ի (*li̯ēkʷr̥t-) արտացոլում, կամ գերմանականի տիպի նախաձևի ազդեցություն:

Լուծ բառի համար (*i̯ugom) սովորաբար ընդունվում է լուծանեմ բայի ազդեցություն, թեև կան նաև *i̯>l անցման այլ բացատրություններ ևս:

Ջով «ծիլ. պտղենու արձակած թև. չվան» (ճաստաջով) «հասու ծիլերով (ցորեն)» բառի համեմատությունը հ. հնդկ. yáva- «ցորեն. գարի. կորեկ», yawasá- «խոտ. արոտ, մարգագետին», մ.պ. yav, ǰav «գարի», հուն. ζε(ι)αί (հգն.) «կարմրահատ ցորեն», լիտվ. jãvas «հացահատիկ», yávya «ցորենը չորացնելու տեղ», ռուս. овин «ցորենի խրձերը չորացնելու տեղ, չորանոց» բառերի հետ պատկանում է Աճառյանին [ՀԱԲ, $4^{2}$, 131]: Կասկածելի է իմաստային տարբերության պատճառով:

Ցամակ բառի համեմատությունը բալթիական բառերի հետ (լատվ. kamisis, պրուս. caymoys «ուս») պատկանում է Լիդենին [Lidén, 1906, 30] և ընդունվում է Աճառյանի կողմից [ՀԱԲ, $4^{2}$, 548]:

Դուք-ի համար ենթադրվում է դու-ի ազդեցությունը՝ *i̯us> *ջուք> դուք անցմամբ:

Սաստ (սաստիկ, սաստել) բառերի համեմատությունը հ. հնդկ. śiṣṭi- (ավելի ուշ śāsti-) «պատիժ, սաստ, հրաման», śāstár- «պատժող, հրամայող», ավեստ. sāstar- «հրամայող, իշխող», մ.պ. sāstár «իշխող» և այլն բառերի հետ տարածված է [Համմտ. ՀԱԲ, $4^{2}$, 177—178. Pok., 1, 533], բայց կասկածելի. ավելի հավանական է հայերենի՝ իրանական աղբյուրներից փոխառյալ լինելը:

Քուք «ողբ, հառաչանք», քքուիմ «լալիս եմ, ողբում եմ, հառաչում եմ. քրքջում եմ» բառերի մեջ *ս-ին հաջորդող *-k-ի՝ հայ. ս-ի չփոխվելը (հմմտ. *dhugəter> *dhukter-> դուստր) բացատրվում է արմատի բնաձայնականությամբ։ Քուք-ի ստուգաբանությունը պատկանում է Մեյեին [MSL, 12, 214. հմմտ. նաև ՀԱԲ, 4², 597], քքուիմ-ինը՝ Աճառյանին [ՀԱԲ, 4², 604]։ Դժվար թե հ.-ե. այս արմատից լինի քուս- «բամբասանք, չարախոսություն» արմատը։

Խոյլ-ը ենթադրում է *kheul- նախաձև, որը ձայնավորմամբ չի համապատասխանում համեմատվող բառերին՝ հուն. κήλη «ուռուցք», հ. սկանդ. haull, հ. անգլ. hēala, հ. վ. գերմ. hōla «փոշտանկ», լիտվ. բրբռ. kúle «խիյթ», ռուս. кила «փոշտանկ. ծառի խիյթ». Սակայն համապատասխանությունն ակնհայտ է, և կարելի է ենթադրել նախնական բարբառային տարբերություն [հմմտ. ՀԱԲ, 2², Solta, 1960, 162—163]։ Մենք հակված ենք այս բառերին միացնելու խաղուարտ և բրբռ. խիլթ բառերը։ Պետերսոնը [KZ, 17, 277] համեմատում է հ. հնդկ. khōlaka «մրջնադեզ», լիտվ. kulỹs «խուրձ», ռուս. шулята «ամորձիք» բառերի հետ՝ բխեցնելով *keu- «ծռել, կամար կապել» արմատի *kheu-l- ածանցական տարբերակից, որ կասկածով բերում է Պոկոռնին [Pok., 1, 588]։

Սեր-ի զուգահեռներից +-ով նշանակված են ածանցով և իմաստով մերձավոր գերմանական (հ. սկանդ. hyrr «բարեկամական, բարյացակամ», հ. անգլ. hīore, hīere, «հաճելի, մեղմ», մ. վ. գերմ. gi-hiure «մեղմ, հաճելի»), ±-ով՝ միայն իմաստով մերձավոր հնդկական (հ. հնդկ. śēva-, śiva- «բարեկամական, սիրելի») և կելտական (հ. իռլ. cōem, cōim «սիրելի») ձևերը։

Սիղեղ (սեղեղ, սեղեխ և այլն) «սիրեկան» բառի ստուգաբանությունը մերն է։ Եթե այն ճիշտ է, ապա կամ հայասերենի Šilili- դիցանվան հետ մեր կատարած համեմատությունը [ArO, *1961, 377—378*] ճիշտ չէ, կամ հայասերենի մեջ ենթադրելի է սատեմային հիմքով (հայերեն) տարր։

Ցին-ը համեմատվում է կամ հնդիրանական բառերի (հ. հնդկ. s'yenā- «արծիվ, բազե», ավեստ. saēna- «մի մեծ գիշատիչ թռչուն, արծիվ»), կամ էլ հուն. ἰκτῖνος «ցին» բառերի հետ։ Առաջինները ծագում են գույն նշանակող *k'ēi- արմատից, իսկ հունարեն բառը հայերենից դուրս հավաստի զուգահեռներ չունի։ Երկու դեպքում էլ կան հնչյունական դժվարություններ. *ki̯-ն սովորաբար տալիս է չ, ուստի մենք ենթադրել ենք *ski̯-, որ պիտի տար ց։

Աքաղաղ-ի ա-ի համար ենթադրվում է փոքրասիական ազդեցություն [Solta, 1960, 67—68, ծան.], հմմտ. նաև ա-տաղձ՝ *dl̥-ghi̯-ից։ Հնարավոր է աքաղաղ-ի համար ենթադրել հին կրկնավոր ձև։

Ցուլ-ի զուգահեռներից հունարենը σκύλαξ «շնիկ, լակոտ» բառը հայերենին մոտ է իմաստով (կենդանու անուն) և ձայնավորմամբ (+), մյուսները՝ միայն իմաստով (կենդանիների անուններ)՝ ±. հմմտ. լիտվ. kalė̃ «էգ շուն», ալբ. këlysh «ձագ, շան ձագ, լակոտ», մ. իռլ. cailēn, կիմր. colwyn «շնիկ»։ Ցուլ-ի համեմատությունը հուն. բառի հետ պատկանում է Մեյեին [BSL, 79, 20]։

Հնարավոր է սամի և սիմ «կոթող» բառերի իրանական ծագումը, թեև

պահպանված իրանական բառերը իմաստով կամ ձևով հայերեն բառերից հեռու են:

Խինդ-ի ճշգրտված համեմատությունը իրանական համիմաստ բառերի հետ (պհլ. xandītan «խնդալ», xandak «ժպիտ», սոգդ. xand «ծիծաղել» և այլն) պատկանում է Հյուբշմանին [IF Anz. 10, 48]: Ընդունում է Աճառյանը [ՀԱԲ, 2², 267] և ավելացնում խնծիղ (<*խնձիղ) «ցնծություն, հրճվանք» բառը [ՀԱԲ, 2², 267 և 379—380]: Լիովին հնարավոր է խնջույք-ի կապը այս բառերի հետ: Վերականգնվող *khendh- արմատը թերևս կապված է *(s)kand-, *(s)kend- «փայլել, վառվել, լուսավոր» արմատների հետ:

Բալթիկ-սլավոնական համապատասխան բառերի հետ խարեմ-ը միավորվում է ձայնդարձի ստորին աստիճանով (հմմտ. լիտվ. kurìù, kùrti «տաքացնել», ռուս. курить «ծխել»), խարշեմ-ը՝ *-s- աճականով (հմմտ. լատվ. karsêt «շիկացնել» ռուս. красный «կարմիր») [Solta, 1960, 253—254. միայն թե Զոլտան չի նշում, որ *-s- աճական ունի և հայերենին մոտ է նաև հնդկականը. հմմտ. հ. հնդկ. kuṣāku- «կրակ, արև»]: Այս բոլոր դեպքերում զուգահեռներ չունի հայ. խ-ն, ուստի մենք հակված ենք խարեմ, խարշեմ և խորովեմ բառերի համար ենթադրելու իրանական ծագում՝ հավանաբար *su̯el- «ծխալ, այրել» արմատից, թեև իրանական համապատասխան ձևերը չեն պահպանվել:

Սեռն «զուռ, սերտ, խիտ» բառի -ն-ն զուգահեռ ունի ալբ. thjerrë «ոսպ» բառի *k'er-n- նախաձևի *-n-ի մեջ, թեև իմաստով սեռն-ին մոտ են նույն արմատից ծագող լատ. creber «սերտ, խիտ», cresco, -ere «աճել, ստվարանալ» բառերը:

Հ.-ե. *k'er- «աճել. աճեցնել, սնել» արմատից ծագող հայերեն բառերից սերեմ-ի մերձավոր զուգահեռները որոշված են ըստ բայական ձևերի առկայության, ըստ որում հայերենին իմաստով ամենից ավելի մոտ է լատ. creō, -ēre «ստեղծել, սերել, ծնել» բայը: Մյուս ձևերի մերձավորությունը որոշված է ըստ *-s-ով, *-n-ով, *-mn-ով ընդհանուր ձևերի առկայության:

Հայ. սարի «շղթա, կապանք», սարդ բառերի համեմատությունը հուն. καῖρος «հյուսվածքի թել», καιρία «երիզ, ժապավեն» բառերի հետ պատկանում է Պետերսոնին և ընդունվում է Պոկոռնու [Pok., 1, 577] ու Աճառյանի [ՀԱԲ, 4², 187—188] կողմից: Վերջինս սրանց միացնում է սարել, սար-ք բրբռ. սարել «մանել» բառերը: Զոլտան [Solta, 1960, 330—331] նշում է նաև հ. հնդկ. sṛn-khala- «շղթա, կապանք» բառի առկայությունը:

Ցուցանեմ-ի մերձավոր զուգահեռները որոշված են ըստ սկզբնային s-ի առկայության [*skeu-]՝ մ. պրսկ. škōh-, ն. պրսկ. šikōh «հոյակապություն», հուն. θυο-σκόος «զոհագետ», հ. վ. գերմ. scouwōn «նայել», պրուս. au-schaudētwei «վստահել». վերջինս իմաստով բավականաչափ հեռու է և նշանակված է ±-ով [հմմտ. նաև Топоров, 1, 161—163]:

Խուն «քիչ, սակավ» բառերի համեմատությունը ալբ. (h)unjem «իջնում եմ, ցածրանում եմ», únjet «ցած, ստոր» և ռուս. хилый «վտիտ», хулить «հայհոյել» և այլն բառերի հետ պատկանում է Աճառյանին [ՀԱԲ, 2², 420], որ վերականգնում է *q(h)un- արմատ, այլև խուն-ին միացնում է սուն «քիչ» բառը խ/ս այլուր հայտնի հերթագայությամբ (խարիսխ—սարիսխ, դրախտ—դրաստ): Կասկածելի է, մանավանդ որ խ/ս հերթագայությունը բուն հայերենին հատուկ չէ: Սուն-ը մենք խուն-ից անջատել և դրել ենք *k'eu-

«ուռչել. կամար. փոս, խոռոչ» արմատի տակ. հմմտ. հ. հնդկ. śūnam «պակաս», śūnyá- «դատարկ» [Pok., 1, 592]։

*Սոր* «ծակ, խոռոչ» բառի զուգահեռներից +-ով նշանակված են *-r- ածանցով և իմաստի մերձավորությամբ (հմմտ. ավեստ. sūra-, հուն. κόαρ «ծակ, անցք», լատ. caverna «փոս, այր. խոռոչ»), -ով՝ միայն *-r- ածանցով բնութագրվող բառերը։

*Լեսում* «մանրել, փշրել. ճզմել», *լոսեմ* «փոշիացնել» բառերի համեմատությունը հ. հնդկ. kliśnāti «տանջում է, նեղում է», klḗśa- «տանջանք, նեղություն», sam-kliš- «ճզմել», լիտվ. klìšės «խեցգետնի ճանկեր», հ. սլավ. kleštiti «ճնշել, սեղմել» և այլ բառերի հետ պատկանում է Աճառյանին [ՀԱԲ, $2^2$, 276]։ Կան իմաստային և հնչյունական (հ.-ե. *-ei-՝ հայ. *-e/o-ի դիմաց) դժվարություններ։

*Լսեմ* բայի համար *k'lu-k'e- նախաձևի վերականգնումը պատկանում է Մեյեին [BSL, 26, 3]։ Զոլտան [Solta, 1960, 29] ենթադրում է *-s- ածանց, բայց ձայնավորների միջև *-s-ն ընկնում է։

*Կաքաւ*-ը ձևով և իմաստով ամենից ավելի մոտ է հուն. κακκάβη «կաքավ» բառին, ապա նաև լատ. caccilāre, ստ. գերմ. kakkeln «կռկռալ» բառերին, որոնք հանգեցվում են *kakk- բնաձայնական արմատին։ Համատիպ բնաձայնական բառեր կան նաև այլ լեզվախմբերում. հմմտ. ակկադ. qaqabanu, ասոր. qaqqəwā, վրաց. ḳaḳab, մեգր. ḳoḳobe- «կաքավ» և այլն։ Հավանական է հայ. բառի փոխառյալ լինելը (ըստ Աճառյանի հուն.>ասոր.>հայ. հմմտ. ՀԱԲ, $2^2$, 563—564), մանավանդ որ կան հնչյունական նույնացման դժվարություններ։

*Քուղ* «ոլորած դերձան, վուշե թել» բառի համեմատությունը հուն. κλώθω, κλώσκω «մանում եմ», լատ. colus, -ūs «իլիկ. մանած թել» բառերի հետ մերձ է. առանձնապես մոտ են հայերեն և լատիներեն բառերը։ Սակայն հուն. և լատ. բառերի համեմատությունն ընդհանրապես կասկած է հարուցում, իսկ հուն. κλώθω-ն ոմանք դիտում են որպես նախահունական բառ և բխեցնում *gel-ից (հմմտ. գերմ. Kleid- «հագուստ»)։

Հայ. *սրունք*-ի համեմատությունը լատ. crūs համանիշ բառի հետ պատկանում է Հյուբշմանին [ZDMG, 1850, 362]։ Դժվարություն է հարուցում *k'-ի պահպանվելն այս դիրքում։ Վինտերը ենթադրում է *k'$^{u}$rūsni- նախաձև։ Հնարավոր է բառի իրանական ծագումը (հմմտ. ավեստ. sraoni «հետույք, զիստ») կամ խառնում իրանական ձևի հետ։

*Ցամաք*-ը Աճառյանը [ՀԱԲ, $4^2$, 448] համարում է փոխառություն ասորական բարբառային որևէ կորած ձևից՝ նշելով սեմական ṣmq «չորացնել» արմատի առկայությունը (եբր. smq «չորացնել», արաբ. ṣāmiq «ծարավ, քաղցած»)։ Մեր կողմից բերված ստուգաբանությունը նշվել է շատերի կողմից (սկսած Լագարդից) և արտացոլվել Պոկոռնու բառարանում (Pok., 1, 624)։

*Խաղաղ*-ի համեմատությունը հուն. χαλάω «թողնում եմ, թուլացնում եմ, զիջում եմ», լեսբ. ἄ-χολος «անհանգիստ» բառերի հետ պատկանում է Պիզանիին [KZ, 63, 167] և ընդունվում է Զոլտայի կողմից [Solta, 1960, 436—437]։ Հուն. χαλάω-ն այլ հետազոտողներ բխեցնում են *ghē- «դատարկ լինել. թողնել, հեռանալ» արմատից (*ghə-lo-s>χαλ-)։ *Խաղ, խաղամ* բառերի համեմատությունը χαλάω-ի հետ առաջարկել է ավելի վաղ Մեյեն

[Meillet, 1936, 36]։ Երկու համեմատություններն էլ կասկածելի են իմաստային տարբերության պատճառով։

+-ով նշանակված են *khād-ից ծագող և հայերեն խած-ան-եմ-ին մերձավոր հ. հնդկ. khādati, ն. պրսկ. xayad «կրծում է, ծամում է», ±-ով՝ հուն. χνόδων «ատամ, ատամներ», լիտվ. kándu, ką́sti, հ. սլավ. kusati, ռուս. кусать «կծել» զուգահեռները. վերջիններիս կապը հայերենի հետ կասկածելի է. Պոկոռնին [Pok., 1, 560] սրանք դնում է *ken- «սեղմել, կծմթել» արմատի տակ, թեև նշում է հնդիրանական բառերի հետ կապի հնարավորությունը [Pok., 1, 634]։

Չորք, չորեք, քառ- ձևերի նախատիպերի վերականգնումը դժվարություններ է հարուցում, և հետազոտողները այս դեպքում տարամիտվում են։ Չորք-ի (չորեք-) համար մենք ենթադրել ենք *kʷetuores նախաձևը, որը դժվարությունները չի վերացնում [հմմտ. Godel, 1975, 77, ծան.]։

Ուր-ի համար ±-ով նշանակված են *kʷu-, ±-ով՝ *kʷu-r ձևերը։

Ոչ-ի *o-kʷi նախաձևը տրված է ըստ Պիզանիի [RL, 1, 166] և Զոլտայի [Solta, 1966, 456]. համեմատվում է հուն. οὐ-χί համարժեք ձևի հետ։

Լամ-ի զուգահեռներից +-ով նշանակված են՝ *lā- ձևից ծագող և իմաստով հայերենին մոտ լատ. lā-mentum «ողբ» (lā-mentāri «ողբալ»), ±-ով՝ *lā- ձևից ծագող, բայց իմաստով տարբեր հնդկական, հունական, բալթիկյան և սլավոնական ձևերը, ընդ որում հուն. λῆ-ն կարող է ծագել և՛ *lā-ից, և՛ *lē-ից։ Աճառյանը [ՀԱԲ, 2², 257—258] բխեցնում է *plā-k- (*pla-g-) «լայն և հարթ, տարածել» հիմքի ածանցական *plā- ձևից՝ «ծեծել» →«կուրծքը ծեծել, կոծել» → «լալ» անցումով, որ ակնհայտ է, օրինակ, ռուս. плакать «լալ» բայի մեջ. սակայն առանց *-k/g-ի ձևեր չկան, իսկ եթե *plāk/g-ը ծագում է *pelə-/plā- «լայն և հարթ» արմատից, ապա վերջինիս մեջ իմաստային այդ անցումը չկա։ Այս ստուգաբանության հետ կարելի է համաձայնել միայն այն դեպքում, եթե հայերենի համար ենթադրենք սկզբնական աթեմատիկ հիմք՝ *plāk-mi> լամ։

Լաւ-ի համեմատությունը լիտվ. lãbas «լավ» բառի հետ պատկանում է Լագարդին [Lagarde, 1854, 456]։ Բագրատունին, Մյուլլերը [SWAW, 136 25] համեմատում են հուն. λωΐων «ավելի ցանկալի, ավելի լավ» ձևի հետ, որ ծագում է *lāu- «ձեռք բերել, վայելել» արմատից։ Աճառյանը [ՀԱԲ, 2², 268] չի ընդունում ո՛չ մեկը, ո՛չ էլ մյուսը։

Պոկոռնին տարբերում է *leg- «կաթել, լուծվել» [Pok., 1, 657] ու *leug- «սևավուն. ճահիճ» [Pok., 1, 686] նախաձևեր և հայ. լիկ-ը բերում առաջինի տակ. Աճառյանը [ՀԱԲ, 2², 281—282] լիկ-ի համար բերում է *leu-g-ի տակ դրված ձևերը, բայց տալիս է *leig-/lig- նախաձև. լիճ-ը նա կասկածով կապում է լիկ-ի [ՀԱԲ, 2², 282] հետ, այն պայմանով, որ «ապացուցվի, թե հնխ. *gi- տալիս է հյ. ճ» [*gi>ճ անցման համար հմմտ. Jahukian, 1975, 36]։ Որպես հայերենի զուգահեռներ կարելի է նշել հ. իռլ. legaim «լուծվում եմ, հալչում եմ», կիմր. llaith, բրետ. leiz (*lekto-) «խոնավ», հ. իսլ. lekr, ն. վ. գերմ. lack «հոսաճեղք ունեցող», հ. անգլ. leccan «թրջել» և հատկապես երկար ձայնավորով հ. իսլ. lökr «առու» (նաև «ջրափոս»)։ Նույն *leg- արմատին Աճառյանը [ՀԱԲ, 2², 289] հատկացնում է լկիմ «սկսել, հալչել (առավոտյան մասին)» բայը՝ առանց նշելու լիկ-ի հետ սրա ունեցած կապը։

Լիբբ-ը Պիզանին [Pizani, 1959a, 140] բխեցնում է հ.-ե. *leubh- «ցանկանալ» արմատից (*libhri-ի i-ի համար հմմտ. լատ. libet «ցանկալի է»՝ lubet-ի կողքին)։

Աղքատ-ի զուգահեռներից +-ով նշանակված է հունարենը, որ ունի *o-նախահավելվածով ձև՝ ὀλίγος «փոքր». մնացածներն ունեն առանց *o-ի ձևեր, ընդ որում հ. իռլ. líach «խեղճ, թշվառ» և լիտ. likuts «փոքր» ձևերը հայերենին մոտ են մի ուրիշ հատկանիշով՝ վերջին բաղաձայնի *-k-տարբերակով՝ մյուսների *-g-ի դիմաց։ Համեմատությունը պատկանում է Լիդենին [Lidén, 1906, 97]։

Լիզեմ-ը միավորվում է հուն. λείχω և թերևս հ. իռլ. ligim նույնիմաստ բայերի հետ ներկայի ձայնավորմամբ և թեմատիկ կազմությամբ (եթե հ. իռլ. lig-ի -i-ն արտացոլում է սկզբնական *-ei-ը և ոչ *i-ն)։ Լիզանեմ-ը միավորվում է հուն. λιχνεύω և լատ. lingo ձևերի հետ նախնական ռնգային միջածանցով։

Լոյտ-ը Աճառյանը [ՀԱԲ, $2^2$, 296] հանդեցնում է *leud- արմատին, բայց բերում է մի այլ՝ *leid- արմատին պատկանող զուգահեռներ։ Ճշտումը կատարված է մեր կողմից. հմմտ. հ. իռլ. lyta «այլանդակել, անպատվել», պրուս. laustinti «հնազանդեցնել, նվաստացնել», ռուս. лудить «խաբել»։

Բրբռ. լոպկել, լպոկել և մ. հայ. պոլոկել, բրբռ. պլոկել բայերի համեմատությունը *lep- և *leub(h)- արմատներից ծագող բառերի հետ պատկանում է Աճառյանին [ՀԱԲ, $4^2$, 94—95]։ Հայերենի նախաձևերի ճշգրտումը մերն է, ընդ որում *loṷob-ը, որից բխեցվում է լոպ-ը, կարող է ծագել *loṷəb-ից՝ ձայնավորների ներդաշնակությամբ (հմմտ. ճոր, սոր և այլն)։ Հայ. ձևը մոտ է գերմանականին *-b-ով. բալթ.-սլավ. ձևերը կարող են պատկանել ինչպես *-b-ով, այնպես էլ *-bh-ով նախաձևերին։

Լուծանեմ-ի ստուգաբանությունը Պեդերսենինն է [KZ, 39, 352. հմմտ. նաև Pok., 1, 686]։ Մեյեն [BSL, 79, 4] և, նրա հետևողությամբ, Աճառյանն [ՀԱԲ, $2^2$, 293—294] ու Զոլտան [Solta, 1960, 252—253] բխեցնում են *leu- արմատից՝ նկատի ունենալով հատկապես հուն. λύω նույնիմաստ արմատը։ Կարելի է հայերենում ենթադրել երկու արմատների խառնում (կոնտամինացիա)։

Եղուկ «ավաղ, ափսոս. խեղճ, ողորմելի, թշվառ» բառի ստուգաբանությունը պատկանում է Շեֆտելովիցին [BB, 28, 308] և ընդունվում է Աճառյանի կողմից։ Կասկածելի է *-ug- > -ուկ անցման պատճառով. թեև *leug'- արմատը ունի նաև *leug- տարբերակը, բայց *-u-ից հետո հայերենում *g-ն նույնպես քմայնանում է և փոխվում -ծ-ի։ Իմաստի համար հմմտ. հ. հնդկ. -ruj «ցավ, հիվանդություն», հուն. λευγαλέος, λυγρός «ահավոր, տանջալի, վշտալի. խեղճ», լատ. lūgeō, -ēre «սգալ», lūgubris «վշտալի, սգալի»։

Լուցանեմ (լոյց-) բայի զուգահեռը տրված է ըստ Շեֆտելովիցի [ZII, 6, 121]՝ իռլ. loscaid «այրում է», սակայն սա չի ընդունվում Walde-Pokorny-ի բառարանում [հմմտ. Solta, 1960, 41]։ Հ.-ե. *leuk- արմատի մնացած ածանցյալներից լոյս-ի զուգահեռները տրված են ըստ կազմության (հ. հնդկ. roká- «լույս», կիմր. llug «փայլ»), լուսին-ի և լուսան-ի զուգահեռները՝ մասնավորապես ըստ իմաստի։

Մամ «տատ» բառը Լագարդը [Lagarde, 1877, 1414] փոխառություն է համարում պրսկ. mām-ից («մայր»)։ Հյուբշմանը [AG, 191, 341, 513] ընդունում է այս կարծիքը, բայց նշում է նաև հունարենից փոխառված լինելու հնարավորությունը։ Աճառյանը [ՀԱԲ, 3², 242], նշելով պրսկ. բառի իմաստի տարբերությունը, փոխառություն է համարում հունարեն μάμμα, μάμμη «տատ» բառից։ Եթե նկատի առնենք բառի տարածվածությունը բարբառներում՝ տարբեր ձևերով և իմաստներով (մամ, մամա, մամիկ «տատ», մամ «մայր», մամո «մայրիկ») և, մանավանդ, մամա «ուտել» մանկական բառի գոյությունը, ապա կարելի է ավելի հավանական համարել հայ. բառերի բնիկ լինելը, թեև, իհարկե, հնարավոր է որոշ տարածքներում խառնում (կոնտամինացիա) հուն. և պրսկ. ձևերի հետ. ակնհայտ հունական ծագում ունի մամի «դայակ, մանկաբարձուհի» բառը (Պոլսի բարբառ)։

Մատաղ բառի ստուգաբանությունը պատկանում է Շեֆտելովիցին [BB, 28, 29]։ Մյուլլերը [Müller, Armeniaca, 6] և Աճառյանը [ՀԱԲ, 3², 267—268] բխեցնում են *mel- «փշրել, մանրել» արմատի *-d- աճականով *ml̥d- ձևից՝ *մաղտ>մատղ-աշ և *mlad->մաղատ>մատաղ անցումներով, որ քիչ հավանական է, թեև իմաստով հայերենին մոտ են հ. սլավ. mlade, ռուս. младший «կրտսեր», молодой «երիտասարդ, մատաղ» և այլն ձևերը։

Մաստ «ածիկ» և մազդ (բրբռ. մաստ) «պինդ, հաստ, թանձր» բառերից առաջինի մասին Աճառյանը [ՀԱԲ, 3², 265] գրում է. «Կազմությունը և ծագումն ինձ անհայտ է»։ Երկրորդը [ՀԱԲ, 3², 222] նա բխեցնում է արևելաիրան. mästa «մեծ» (ավեստ. masit(a)- «ընդարձակ, մեծ») բառից. սակայն առաջին բառի համար իրանականում չկա համապատասխան իմաստ (հմմտ. նպրսկ. mast «մածուն»), ուստի այն կարելի է թերևս համարել ինքնուրույն հայկական կազմություն։ Երկրորդ դեպքում դժվար է հայերենի համար ենթադրել անմիջական արևելաիրանական աղբյուր, մանավանդ եթե նկատի առնենք հայ. և իրան. ձևերի տարբերությունը (-զդ՝ -st-, -sit- ձևերի դիմաց). ավեստ. masit(a)-ն ծագում է *mas-ից, որ գալիս է հ.-ե. *māk' «երկար և բարակ» արմատից։ Բոլոր դեպքերում էլ հնարավոր է ենթադրել կորած իրանական աղբյուրներ՝ *mad- արմատից։ Եթե այս բառերը (մանավանդ մաստ-ը) հայկական ծագում ունեն, ապա հայերենը պատկանում է հ.-ե. այն բարբառներին, որոնցում *-dt-ն և *-tt-ն տալիս են -st։

Մախ «նախանձ» բառի ստուգաբանությունը հնարավոր է, եթե ճիշտ է Ֆրենկելի կարծիքը [Fraenkel, LFW, 1, 463] հուն. μῆχος «միջոց» և լիտվ. mokėti «կարողանալ, հասկանալ» ձևերի համեմատությունը՝ *makh- նախաձևով. այդ դեպքում հայ. մախ-ը և հուն. μηχανή-ն «գործիք, միջոց. հնարք, խորամանկություն» պետք է ենթադրված լինեն իմաստային ընդհանուր փոփոխության։

Մածուն-ի (մածնում, մածանիմ) արմատի ստուգաբանությունը պատկանում է Լիդենին [BB, 21, 99] և ընդունված է Աճառյանի կողմից [ՀԱԲ, 3², 228—230]. հմմտ. հուն. μαγῆναι «ճմռել», μαγίς «ճմռած զանգված», մ. իռլ. maistrid «խառնել է, հարում», ռուս. мазь «քսուք», масло «յուղ, կարագ», мазать «քսել» և այլն։ Հյուբշմանը [ZDMG, 44, 56] և նրա հետևողությամբ Պոկոռնին [Pok., 1, 694] բխեցնում են *mad- «խոնավ. հյութեղ, յուղոտ, թացած» արմատից՝ *madi̯->մած-։

Մաքիլ-ի համեմատությունը գերմանական բառերի հետ (գոթ. mada,

հ. վ. գերմ. mado «որդ, թրթուր») պատկանում է Պետերսոնին [Petersson, 1921, 32 և հջ.] և ընդունվում է Պոկոռնու կողմից: Համապատասխան ձևերի գոյությունը քարթվելականում՝ հնչյունական օրինաչափ անցումներով (վրաց. matl-, մեգր. munṭur-, ճան. munṭur-, munṭr̥, սվան. maṭ-) ենթադրում է կամ հ.-ե.– քարթվ. հնագույն հարաբերություն, կամ հայ. ձևի փոխառություն:

Մատն-ի մեջ *-t-ի արտացոլումը որպես -տ բացատրվում է -ն-ի հարևանությամբ. հմմտ. ակն [ՀԱԲ, 3², 270]:

Մեջ-ի համար հմմտ. հ. հնդկ. mádhyas, հուն. μέσος, լատ. medius, գոթ. midjis «միջին»: Բալթիկ-սլավոնականում բառերն ստացել են հիմնականում կոնկրետ առումներ (լիտվ. mẽdžias «ծառ», լատվ. mežs «անտառ, փայտեղեն», հ. սլավ. mežda «փողոց», ռուս. межа «սահման»), ուստի նշանակված են ±-ով:

Մոզ-ի զուգահեռները որոշված են *-g'h-ով՝ ի հակադրություն *-g'-ի. հմմտ. հ. հնդկ. mah-, ավեստ. maz- «մեծ»:

Մոյթ-ի զուգահեռներից +-ով նշանակված են *-th-ով (հ. հնդկ. mēthí-, méthi- «մույթ, սյուն»), ±-ով՝ *-t-ով ձևերը:

Մեզ-ի զուգահեռներից +-ով նշանակված են իմաստով հայերենին մոտ և *-gh-ով ու *-l-ի բացակայությամբ բնութագրվող հնդիրանական ձևերը (հ. հնդկ. mēghá- «ամպ», mih- «մեզ», ավ. maēϑa- «ամպ»): Բենվենիստը հակված է մեզ-ը համարելու իրան. փոխառություն:

Աճառյանը [ՀԱԲ, 3², 342] մողես-ը համարում է փոխառություն իրանական աղբյուրից՝ նկատի առնելով պրսկ. mālūs (mālōs) «կանաչ մողես» բառը: Կասկածելի է համարում Մեյեն (նույն տեղում):

Մեղկ-ի զուգահեռներից +-ով նշանակված են *-du/du̯-ով (հմմտ. հ. հնդկ. mr̥du-, իգ. mr̥dvī́, հուն. βλαδύς, լատ. mollis<*ml̥du̯is), ±-ով՝ *-d-ով զուգահեռները. վերջիններիս ձայնավորմամբ հայերենին մոտ են կելտ. (հ. իռլ. meldach «քնքուշ») և հուն. μέλδω «հալչում եմ» ձևերը:

Մարմին, -ոյ բառը ակնհայտ զուգահեռ ունի հ. հնդկ marman- «անդամ, անպաշտպան մարմնամաս» բառի մեջ, որն իր հերթին համեմատվում է հուն. μέλος «անդամ», բրետ. mell, կոռն. mel «կոճ», թոխ. Ա, Բ mälk «կցել», այլև, որոշ կասկածով, լիտվ. mélmenys «երիկամի վրայի միս», լատվ. mélmeni «աճուկ, սրունք. զիստ» բառերի հետ և բխեցվում *mel- «անդամ. կցել» արմատից: Սակայն հայերենի համար անսովոր է *l>ր անցումը, ուստի ավելի հավանական է ենթադրել փոխառություն կամ կորած իրանական աղբյուրից [հմմտ. Pok., 1, 720], կամ, թերևս, Առաջավոր Ասիայի հնդիկներից (անմիջաբար կամ միջնորդված. հմմտ. նաև ջամբ «ուտելիք», ջամբել «մանրելով ուտեցնել, սնել, խնամել» և հ. հնդկ jambhatē «ատամներով բռնում է»՝ բուն հայ. ծամեմ-ի դիմաց՝ *g'embh- արմատից): Զոլտան [Solta, 1960, 426] հայ. և հնդկ. բառերը միացնում է կցորդնավորությամբ, բայց ավելի հավանական է ենթադրել *-meno- ածանցով ձև:

Մեղծ «մուր» բառի համար հմմտ. հ. հնդկ. mála- «կեղտ», maliná- «կեղտոտ, սև», հուն. μέλας «սև», մ. վ. գերմ. māl «բիծ», բալթ. *mēlna «սև» [WP, 2, 275]: Պետերսոնը [Petersson, 1920, 135] բխեցնում է *smel- «դանդաղ այրել, մխմխալ» արմատից, որից հայ. մուլ, մլմլալ. անհավանա-

կան չէ։ Ճիշտ չէ Աճառյանի ստուգաբանությունը [ՀԼՊ, 1, 62]՝ հ.-ե. *smerd- «հոտ արձակել» արմատից։

Մոլ «ծառաբնի մոտ բուսած երկրորդական ճյուղ, ծիլ» բառի ստուգաբանությունը պատկանում է Աճառյանին [ՀԱԲ, $3^2$, 338], որ հայերենին առանձնապես մոտ է համարում հուն. μολεύω «էտում եմ, մոլերը կտրում եմ», այլև βλαστάνω «ծլում եմ, աճում եմ», βλαστός, βλάστη «ծիլ, բողբոջ» և այլն բառերը (որոնցից երկրորդների *mel- «դուրս գալ, ծագել, երևալ» արմատին պատկանելը կասկածելի է)։ Սակայն հմմտ. *mel- «մանրել», որից հայ. մեղմ։

Մաղթեմ-ի բխեցումը *meldh-ից հնարավոր չէ, եթե չենթադրենք *-dh-ի անձայն լինելը և հայերենը չբխեցնենք *-th- անձայնով ձևից [հմմտ. ՀԱԲ, $3^2$, 238—239]։ Բենվենիստը հակված է այն փոխառություն համարելու խեթերենից։

«Մեղր» իմաստն արտահայտելու համար հ.-ե. լեզուն ունեցել է *melit- և *medhu- բառերը, որոնք տարբեր տարածքներ են ընդգրկել։ Հայերեն մեղր (սեռ. մեղու) բառը յուրատեսակ միջին դիրք է գրավում՝ հարելով *melit-ին (հմմտ. սկյութ. μελίτιον, հուն. μέλι, -τος, ալբ. mjal, լատ. mel, հ. իռլ. mil, գոթ. milib, խեթ. milit), բայց *medhu-ի նման ունենալով *-u-ով հիմք։

Բրբռ. մանել «հասկանալ» բայի ստուգաբանությունը մերն է. այն ճիշտ է, եթե մանել-ը «թել մանել» իմաստի փոխաբերական գործածությունը չէ։

Մանր-ի զուգահեռները որոշված են ըստ *-u-ով հիմքի, մանչ-ինը՝ ըստ *-k-ի, թեև այստեղ հայերենն առանձնանում է (չ-ն ենթադրում է *k-ի շնչեղացում (այլապես *-nk>-նգ, *-nki̯>-նջ)։ Զոլտան [Solta, 1960, 354] *-k-ով ձևերի հետ է կապում նաև մանուկ-ը, բայց այստեղ ունենք կամ *-u-ով, *-k-ով և *-n-ով հիմքերի զուգորդում *mьnukon> *մանուկն՝ ն-ի հետագա անկմամբ եզ. ուղղական-հայցականում և պահպանմամբ այլ հոլովներում՝ մանկան, մանկունք և այլն), կամ, ինչպես կարծում է Աճառյանը [ՀԱԲ, $3^2$, 255 և 257], -ուկ- փոքրացուցիչ ածանցի հետագա հավելում (վերջին դեպքում էլ, այնուամենայնիվ, -ուկ-ի ու-ն այստեղ արտացոլում է հին *-u-ն)։ Աճառյանը [ՀԱԲ, 256] մանչ-ի մա-ն համեմատում է լատ. masculus-ի mas-/mās- «տղամարդ. արու» հիմքի հետ և վերականգնում ընդհանուր *mās- արմատ, որ ավելի քիչ հավանական է, քան տրված ստուգաբանությունը [հմմտ. նաև Պալասանյան, 1870, 13]։

Պոկոռնին [Pok., 1, 734] մառախուղ-ը մռայլ-ի հետ միասին դնում է *mer- «սևացնել, մթին գույն, բիծ» արմատի տակ, որ ավելի քիչ հավանական է, եթե չենթադրենք կամ երկու արմատների (*mer- «առկայծել» և *mer- «սևացնել. մթին գույն») սկզբնական կապ, կամ նրանց խառնում (կոնտամինացիա) հայերենում։

Մեռանիմ-ի զուգահեռներից +-ով նշանակված են *-e- ձայնավորմամբ բայերը։

Մահ-ը ամենայն հավանականությամբ իրանական փոխառություն է, թեև համապատասխան բուն իրանական ձևը բացակայում է։

Զմրիմ «թմրել, ընդարմանալ, գլխապտույտ ունենալ» բայը Շեֆտելովիցը [KZ, 53, 260] և, նրա հետևողությամբ, Աճառյանը [ՀԱԲ, $2^2$, 101] համեմատում են հ. հնդկ. mūrcati «պնդանում է, թանձրանում է, ընդարմանում է, շշմում է, թմրում է, ուշագնաց է լինում», պհլ. vē-mār «հի-

մարդ», հուն. βρότος «(վերքից) հոսող արյուն» բառերի հետ, որոնք համարվում են *mer- «մեռնել» արմատի ճյուղավորումը։

Թերևս մամուռ-ի հետ կապված է մուշկ (*մուրշկ) «ընկճվել» բայը՝ հնչյունական նույն համապատասխանությամբ ինչ մոռ և մոշ (*mois-)։

Մաւր-ի ստուգաբանությունը Պետերսոնինն է [KZ, 47, 1916, 281], որ գրեթե միաժամանակ [LUÅ, 1916, 17—18] բացատրել է նաև *mak- «թաց, խոնավ» արմատից։ Պոկոռնին [Pok., 1, 698 և 742] տալիս է երկու ձևն էլ՝ *mak-ri- (հմմտ. մաւրուք) և *məu-ri- նախաձևերով։ Աճառյանը [ՀԱԲ, 3², 379] ընդունում է միայն առաջինը։

Մամուռ-ի զուգահեռներից +-ով նշանակված են կազմությամբ (*-s-ով) և իմաստով (հ. վ. գ. mas, հ. սլավ. мъхъ), ±-ով՝ միայն կազմությամբ մոտ բառերը։

Մուտ, մտանեմ բառերի համեմատությունը գերմանական բառերի հետ (հմմտ. գոթ. ga-mōtjan «հանդիպել») պատկանում է Բուգգեին [Bugge, 1890, 48], որի հետ Մեյեն [MSL. 10, 278] նախ համաձայնել է, բայց հետո հրաժարվել [MSL, 26, 4]։ Մուտ-ը մեր որոշ աշխատություններում կապվել է մոյծ, մուծանեմ բառերի հետ ա/ծ հերթագայությամբ. հմմտ. բուտ և բոյծ, բուծանեմ։

Լատ. mōrum «թութ. մոշ» բառը համարվում է փոխառություն հունարենից (կամ միջերկրածովյան աղբյուրներից), ուստի և չի մտցված հ.-ե. *moro- «մոր, մոշ» հիմքի զուգահեռների մեջ։

Մունջ-ի համար Աճառյանը [ՀԱԲ, 3², 359] տալիս է *mundi̯o- նախաձևը, որ, սակայն, կտար *մունճ։ Մունչ «խուլ» բառը Աճառյանը [ՀԱԲ, 3², 358—359] համարում է բնաձայնական բառ և չի կապում հ.-ե. *mu- արմատի հետ։ Մունջ-ի զուգահեռներից +-ով նշանակված են ատամնային աճականներով և իմաստով հայերենին մոտ բառերը (հուն. μυνδός, լատ. mutus «համր, մունջ»), ±-ով՝ կամ միայն իմաստով մոտ (հ. հնդկ. mūka- «համր»), կամ միայն ատամնային աճական ունեցող, բայց իմաստով համեմատաբար հեռու (հ. վ. գերմ. mutirōn «մռմռալ», լիտվ. mùtė «բերան») բառերը։

Նան, նանի, նանե, նանա բառերի համար հնարավոր է ենթադրել նաև իրանական ծագում (հմմտ. ն. պրսկ. nana «մայր»), եթե չենթադրենք բնիկ և իրանական փոխառյալ ձևերի խառնուրդ (բազմակիություն)։

Նաւ-ը կարող է լինել նաև իրանական ծագում ունեցող բառ. հմմտ. նաւազ, որ ակնհայտ իրանական ծագում ունի (հմմտ. ավեստ. navāza- «նավորդ»)։

Նքոյր (նզոյր) «մազ» բառի ստուգաբանությունը (*neik- «հացահատիկը մաղել՝ քամհարել») պատկանում է Աճառյանին [ՀԱԲ, 3², 477]։

Այր (սեռ. առն) բառի հնդեվրոպական ծագումը կասկած չի հարուցում, բայց վիճելի է նրա բուն նախաձևի հարցը. հետազոտողները հանգեցնում են ոչ միայն *əner-ին, այլև *r̥sen-, *ari̯o- նախաձևերին։ Հնարավոր է համարվում նաև տարբեր հիմքերի զուգակցում։ Արի «քաջ» բառը հատկացվում է սովորաբար այր-ի ար- հիմքաձևին, բայց Մարկվարտը սա չի ընդունում, հատկացնելով *ar-ին, որից առնեմ։

Նիզ «լարում, ջղաձգություն, ուժ տալը (երկունքի, փորացավի ժամանակ)» բառի մերձավոր զուգահեռները որոշված են ըստ «մաքուր» հիմքի՝

*-r(o)- ածանցի և *-g- աճականի բացակայության. իմաստով հայերեն բառի մոտ են հ. հնդկ. nudáti «հրում է, շարժում է», հուն. νύσσω «ծակում եմ, խփում եմ, հրում եմ», մ. ստ. գերմ. nuck(e) «հանկարծակի հարված. նենգություն», լիտվ. niùrkyti «սեղմել, ճզմել» բառերը։

Մերկ-ի հետ մերձավորությունը որոշված է ըստ m- նախաբաղաձայնի՝ ավեստ. maγna-՝ մյուսների n-ի դիմաց։ Զոլտան [Solta, 1960, 228—229] ածանցով մոտ է համարում լատիներեն nudus-ին՝ *nogʷedos-ից, նկատի ունենալով, որ *gʷd-ն հայերենում կարող է տալ րկ. բայց այս ենթադրությունն անհավանական է։

Աճեմ-ը սովորաբար համեմատում են հ.-ե. *au̯eg-ից ծագող ձևերի հետ, սակայն հնչյունապես *au̯eg-, *u̯ōg-, *aug- ձևերից աճեմ-ը չի կարող բխել (եթե չենթադրենք կողմնակի *ag- ձև կամ *u̯-ի անկում *-ō/ə-ից առաջ մեզ անհայտ պայմաններում)։ Պոկոռնին [Pok., 1, 773] առանձնացնելով *ōg- «աճել. հատապտուղ» արմատ՝ բալթիական (լիտվ. úoga «հատապտուղ»), սլավոնական (ռուս. ягода «հատապտուղ»), կելտական (կիմր. aeron «ծառապտուղ»), գերմանական (գոթ. akran «պտուղ») ձևերին կասկածով միացնում է նաև հայ. աճեմ-ը. Զոլտան [Solta, 1960, 76—77] սա համարում է քիչ հավանական՝ մատնանշելով Պեդերսենի կողմից բերված հ. իռլ. ásim «աճում եմ» բայը, որ կարող է լինել հայ-կելտական զուգաբանության նմուշ՝ *-u-ի համապատասխան կորուստով *aug-ի մեջ։

Ութ-ի *optō նախաձևը (*ok'tō-ից) համարվում է *septm̥> եօթն թվականի ազդեցության արդյունք։ Գեորգիևը առաջարկում է *ottō ձևը՝ հենվելով փռյուգ. οττοFοι (*ok'tou̯oi) ձևի վրա։

Բրբռ. ակլակ «դարանակալ» բառի մերձավոր զուգահեռները նշանակված են +-ով ըստ *-l-ի առկայության (իմաստային տարբերության պայմաններում)՝ լատ. oculus «աչք», լիտվ. akýlas «ուշադիր». հուն. ὀφθαλμός «աչք» բառը բացառված է, որովհետև այն ունի լրացուցիչ -θ- տարրը։

Ակն-ի մերձավոր զուգահեռները որոշված են ըստ *-n-ով հիմքի առկայության և *-(e)s- և *-p- կազմիչների բացակայության՝ սլավոնական (հմմտ. ռուս. окно «լուսամուտ») և գերմանական (*aun-< *oku̯en-) խմբերում. որանց միացված է հունարենը այլ հիմունքով՝ ըստ կրկնավոր kk-ի առկայության (հմմտ. հյց. ὄκκον «աչք»՝ ըստ Հեսիքիոսի), եթե հայ. -կ-ն (փոխանակ ք-ի) գալիս է կրկնավոր k(u̯)-ից և ոչ թե արդյունք է ն-ի ազդեցության։

Բրբռ. *անծող (անձող) «ածուխ» բառի *angi̯ol- նախաձևի մեջ *g-ի քմայնացումը երկրորդական է՝ թերևս *angoli-ի -i-ի դրափոխության արդյունք։ *Անծող ձևից կարող էր ծագել ածուխ ձևը՝ ծուխ բառի հետ խառնվելով (կոնտամինացիա). ավելի քիչ հավանական է ենթադրել կամ տարածքային հին l>γ անցում՝ վերջինիս վաղ խլացմամբ (հմմտ. ածուղ գրությունը՝ ածուխ-ի կողքին), կամ պարզապես հին ածուղ-ի ուշ ածուխ գրություն։

Արբանեակ «ծառա» բառի զուգահեռներից +-ով նշանակված են և՛ իմաստով, և՛ *-n- ածանցով (հ. սլավ. rabъ, ռուս. раб «ստրուկ», ребенок «երեխա»), ±-ով՝ միայն իմաստով (գոթ. arbaiþs, հ. վ. գերմ. Arbeit «աշխատանք») կամ միայն ձևով (հուն. ὀρφανός «որբացած, զրկված, որբ») մոտ բառերը։

Որովայն-ի համեմատությունը հուն. ὀρύα «աղիք» և լատ. arvīna

«ճարպ» բառերի հետ պատկանում է Պետերսոնին [IF, 35, 211]։ Աճառյանը [ՀԱԲ, 3², 586—587] գերադասում է Լիդենի ստուգաբանությունը [Lidén, 1906, 22]՝ *krep- «մարմին, կերպարանք» արմատի *krop- ձևից. Պոկոռնին դնում է *prep- «աչքի ընկնել. երևույթ, կերպարանք» արմատի տակ (այստեղից են երևիմ, երեւ բառերը)։ Թեև արգ-անդ, արգ(-ա-համեմ) «փոր, աղիք» բառերը մենք Լիդենի [Lidén, 1906, 21] և Աճառյանի [ՀԱԲ, 1², 302—303] հետևողությամբ դրել ենք *arku̯- արմատի տակ, բայց թերևս, դրանք կարելի է համադրել *oru̯-ին (կասկածելի է որկոր-ը, եթե չենթադրենք oru̯- > *որգ-որ > որկոր անցում)։

Որթ «խաղողի տունկ, խաղող» բառի համեմատությունը ալբ. hardi «որթ» բառի հետ պատկանում է Պեդերսենին [KZ, 36, 99, BB, 20, 231]։ Պոկոռնին [Pok., 1, 782, 823] բերում է միաժամանակ և՛ սա, և՛ Պետերսոնի ստուգաբանությունը (հուն. πτόρθος «ծիլ, բողբոջ, ընձյուղ»՝ *perth- արմատից)։ Աճառյանը [ՀԱԲ, 3², 579—580] գերադասում է ՆՀԲ-ից եկող մեկնությունը՝ որթ-ը կապելով որթ «հորթ» բառի հետ (հմմտ. երինջ «մեծ հորթ» և բրբռ. «խաղողի որթի մատ»)։ Եթե վերջինս ճիշտ է, ապա թե՛ հայ. և հուն. բառերը պետք է դնել *per- «ծնել» արմատի տակ, որից հայ. որթ «հորթ»։

Ազդր-ի համեմատությունը հուն. ὀσφῦς համիմաստ բառի հետ պատկանում է Մեյեին. վերջինս համեմատում է նաև հ. իռլ. odb, կիմր. oddf «պալար, խիլ» բառերի հետ՝ *osbho- > *ozbho- անցմամբ։ Աճառյանը [ՀԱԲ, 12, 86], հենվելով Մեյեի վրա [MSL, 23, 259—260], կապում է հ. հնդկ. sákthi-, ավեստ. haxti- և հուն. ἰσχί, ἰσχίον համիմաստ բառերի հետ, բայց դրանցից առաջիններն ավելի հակված են բխեցնելու *skeng- արմատից [Pok., 1, 930]. հուն. ձևերը հեռու են թե՛ հնդիրանական ձևերից (ըստ Ֆրիսկի), թե՛ հայկական ազդր-ից, և դրանց ծագումն էլ պարզ չէ [Frisk, GEW, 1, 741, Chantraine, DELG 1, 472].

Ձու-ի զուգահեռները որոշված են ըստ *-u̯-ի բացակայության. հմմտ. նախասլավ. *ōi̯a- (ռուս. яйцо), գերմ. *oii̯am։

Աճառյանը [ՀԱԲ, 1², 84], հենվելով Պատրուբանիի վրա [IF, 13, 124—125], ազգ-ը բխեցնում է պհլ. azg «ճյուղ» բառից, որ, սակայն, իմաստով հեռու է մնում, եթե չենթադրենք հենց իրականում «ճյուղ → ազգ» անցում։ Ոզոր-ի («ճյուղ, ճիպոտ») համեմատությունը հուն. ὄσχος և պհլ. azg «ճյուղ» բառերի հետ պատկանում է Աճառյանին [ՀԱԲ, 3², 550], որ, սակայն, անբացատրելի է թողնում հայերենի *ozg'h- ձևը՝ *ozg-ի դիմաց. թերևս ենթադրելի է *azghi̯o- նախաձև։

Աճառյանը [ՀԱԲ, 3², 117—118, 138—139] և Զոլտան [Solta, 1960, 173—174] միացնում են *pā- «սնել, արածեցնել» և *pō(i)- «արածեցնել, պահպանել» արմատներին պատկանող բառերը [Pok., 1, 787 և 839], որոնց համար թերևս հնարավոր է ենթադրել սկզբնական ընդհանրություն [հմմտ. WP, 2, 72 և հջ. Mayrhofer, KEWA, 1, 215]։ Երկրորդ արմատին պատկանող զուգահեռները մենք նշանակում ենք ±-ով։

Բրբռ. մանկ. փափա «կերակուր, ուտելիք» բառի մերձավոր զուգահեռները որոշված են ըստ իմաստի՝ լատ. pāpa, pappa «կերակուր, ուտելիք», pappō, -āre, հ. վ. գերմ. pappen «ուտել»։

Հաւ «ծայր, սկիզբ» և յաւ «ծայր, վերջ» բառերի համեմատությունը

հուն. παύω «դադարեցնում եմ», παῦλα «դադար, վերջ», լատ. pausa «դադար, վերջ» բառերի հետ պատկանում է Աճառյանին [ՀԱԲ, 3², 67 և 390]՝ *paus- «ծայր» արմատից: Պոկոռնին առանձնացնում է *paus- «բաց թողնել» արմատ՝ հունական բառերը բերելով բալթիկ-սլավոնականների հետ միասին (պրուս. pausto «վայրի», ռուս. пустить «(բաց) թողնել», пустой «դատարկ», пустыня «անապատ»): Լատ. pausa-ն համարվում է փոխառություն հուն. παῦσις-ից, թեև Մեյեն [Ernout—Meillet, 1959⁴, 490] կասկածի տակ է առնում սա՝ նկատի ունենալով հուն. բառի ուշ վկայությունը և հուն. ու լատ. բառերի հիմքային տարբեր ձևավորումը:

Կասկածելի է հետ-ը դիտել որպես սիգմատիկ չեզոք (*pedom) և մերձավոր համարել հուն. πέδον, ումբր. peřum, պրուս. pedan «գետին» բառերին՝ ի հավելումն հ. սլավ. pedъ «ոտք, հատակ» ձևի [Solta, 1960, 54]: Մենք դրել ենք *pedo- նախաձև՝ առանց pedom-ը և *pedos-ը տարբերելու: Ոտն-ի զուգահեռները որոշված են դերաշանցապես ըստ իմաստի:

Յատակ-ն ստուգաբանել է և *pəd- նախաձևը տվել Աճառյանը [ՀԱԲ, 3², 386]. կարելի էր ենթադրել *pod- նախաձև, բայց սրան խանգարում է *o > a անցման պայմանների ոչ լիակատար պարզությունը: Վերջին դեպքում հայերենին մոտ կլինեին բալթիկ-սլավոնական լեզուները: Սակայն հնարավոր է բառի իրանական ծագումը:

Հիւանդ-ի նախաձևերից *pēpn̥to-ն վերականգնելու համար հիմք են ծառայել հ. հնդկ. վեդական pāpa- «չար», pāpmán «աղետ, վնաս, ցավ» ձևերը (ըստ Լևիի. հմմտ. Pok., 1, 793), *pěi̯n̥to-ի համար՝ Բրուգմանի *pēu̯nto- և Հյուբշմանի ճշտած *pei̯n̥t- վերականգնումները [ՀԱԲ, 3², 98. հմմտ. հուն. ἀ-πήμαντος «ոչ հիվանդ»]: Թվում է կարելի է ենթադրել *pēi-mn̥-to- նախաձև, բայց լիովին պարզ չեն *m > ւ անցման պայմանները: Աճառյանը [ՀԱԲ, 4², 634—635] համեմատում է հուն. πόνος «աշխատանք, ջանք, գործ. ցավ, տանջանք» բառերի հետ՝ առանձնացնելով այն *(s)pen- «ձգել, լարել. հյուսել» արմատից, որ, սակայն, անհամոզիչ է:

Սար-ի զուգահեռներից +-ով նշանակված են *-o- ձայնավորմամբ (հմմտ. հուն. πόλος «բևեռ, երկնի փաթիլ, մալանչ»), ±-ով՝ *-u- հիմքով զուգահեռները, որոնք, սակայն, ունեն հայերենից տարբեր («անտառ») իմաստ:

Լճում-ին զուգահեռ է հ. հնդկ. *pr̥-nā-mi-ն, որ, սակայն, տարբերվում է -n-ին հաջորդող տարրով՝ (*-nā- ածանց՝ *-nu-ի դիմաց):

Լի-ի համար վերականգնվող երկու նախաձևերից *plē-t-ը հիմնված է հ. հնդկ. prāta-, ալբ. plot- (*plē-to-s), լատ. complētus նույնիմաստ զուգահեռների վրա (հայերենում t-ին հաջորդող ձայնավորի հարցը պարզ չէ, եթե չենթադրենք *t-ի քմայնացում նաև *-o-ից առաջ դանված դիրքում) *ple-i̯os-ը՝ հուն. πλέως զուգահեռի վրա: Աճառյանը [ՀԱԲ, 2², 400—401], հենվելով Հյուբշմանի և այլ նախորդների վրա, այստեղ է դնում նաև յղի-ն. վերջինս կասկածելի համարելով ղ-ի պատճառով՝ Մեյեն դնում է *polō- «ձագ» ձևից [հմմտ. Pok., 1, 843՝ *i̯-polnii̯ā]:

Հեղ (հաղ) «անգամ» բառի ÷-ով նշված մերձավոր զուգահեռները որոշված են ըստ հայերենին իմաստով մոտ ածանցավորի ձևերի (*-plo- «-ից, անգամ»). ±-ով նշանակված է իրանականը՝ ըստ ավեստ. bi-fra- «համեմատություն, նմանություն» զուգահեռի, որ իմաստով հեռու է:

Հոլեմ, հոլոնեմ «ի մի հավաքել» բառերի ստուգաբանությունը [հմմտ. Pok., 1, 799] կասկածելի է, եթե դրանք իրոք ներկայացնում են հոյլ «խումբ» բառի հնչյունափոխված հոլ ձևի ածանցյալները:

Հինգեր-ի (հինգեր-որդ) համեմատությունը գոթ. figgrs, հ. վ. գերմ. Finger «մատ» [*penkʷros] բառերի հետ բերում է Զոլտան [Solta., 1960, 453] («մատ» և «հինգ» իմաստների հարաբերակցության համար հմմտ. Oehl, 1933, 205): Սրանց մենք միացրել ենք կելտականը՝ նկատի ունենալով հ. իռլ. cōicer «հնգյակ» բառը, որ բերում է Պոկոռնին գերմ. բառերի հետ միասին:

Երա-խայր-ի եր(ա)-ի համեմատությունը *per-ից ծագող զանազան բառերի հետ պատկանում է Աճառյանին [ՀԱԲ, 2², 34]: Նախաձևի ճշտումը կատարել ենք մենք՝ նկատի առնելով *prō- «վաղ» նախաձևը. հմմտ. հ. հնդկ. prā-tár-, հուն. πρωΐ և այլն:

Հարաւ-ի զուգահեռներից +-ով նշանակված են բացի «նախկին, առաջին» իմաստից նաև «հարավային» իմաստն ունեցող իրանական ձևերը, ±-ով՝ մնացածները: Հարաւ-ի ստուգաբանությունը մերն է [ԼՀԳ, 1973, 6 20]:

Երէց, -ու բառի զուգահեռներից (հուն. πρέσβυς «ծեր. երեց, ավագ», լատ. priscus «վաղեմի») հունականը կասկածելի է, որովհետև -βυς-ի մեջ ենթադրվում է *gʷous «անասուն» իմաստը [հմմտ. Solta, 417—418]:

Որթ «հորթ» բառի մերձավոր զուգահեռները որոշված են ըստ *-th-ի (հ. հնդկ. pr̥thuka- «անասուն. հորթ, ձագ»), որդի-ի զուգահեռները՝ ըստ *-t-ի, որ այդ դիրքում տալիս է դ: Որդու «խորթ զավակ» բառի ստուգաբանությունը պատկանում է Բուգգեին [KZ, 32, 23 և IF, 1, 451]: Ավելի քիչ հավանական է ընդունել *putri̯o- նախաձևից (*pōu- «փոքր. ձագ»)՝ ենթադրելով *putri̯o-> ուրջ անցում (*i̯->ջ) կամ, ինչպես կարծում է Աճառյանը [ՀԱԲ, 4², 611—612], -ջ-ն դիտել որպես սեռականի մասնիկ (հմմտ. գեղջ)՝ ու-ի հետագա հավելմամբ (հմմտ. հաւրու, մաւրու):

Հերկ-ի միացումը հարկանեմ-ին առաջարկել է Մեյեն [Meillet 1908, 129]. անհավանական է կապը *perk'- «պատռել, հերկել. ակոս» արմատի հետ (*perk->*հերու): Պարզ չէ հերձեմ բայի կապը սրանց հետ:

Գեորգիևը [Urgr. und Urill., 1936, 98] որպես պելազգյան բառ հայ. հարսն, լատ. procus «փեսացու» իմաստին է միացնում նաև հուն. παρθένος «կույս, աղջիկ, երիտասարդ կին» բառը. սակայն այս համեմատությունը ընդունելության չի գտնում հունարենի ստուգաբանողների կողմից [Frisk, GEW, 2, 475, Chantraine, DELG, 3, 858]: Որպես հարսն-ի մերձավոր զուգահեռներ +-ով են նշանակված իմաստով հայերենին մոտ լատ. procus «փեսացու», լիտ. piršti «հարսնախոսել» բառերը:

Թի-ի համեմատությունը հուն. հոմ. πτύον, ատտ. πτεόν «երնելու թի, հեծանոց, հովելի» բառերի հետ պատկանում է Աճառյանին [MSL, 20, 161—162,. ՀԱԲ, 2³, 181—182]. Պոկոռնին [Pok., 1, 827] հուն. բառերը կասկածով միացնում է *peu- «մաքրել, զտել, մաղել» արմատին (այս դեպքում πτ- խումբը հունարենում դիտվում է որպես նորագոյացություն):

Աճառյանը [ՀԱԲ, 2², 182—183] թիթեռն բառի հետ կազմությամբ միացնում և *pet-ից բխեցնում է նաև թիթեղն բառը, որ մենք բերել ենք

*tel- «հարթ, հարթ գետին, տախտակ» արմատի տակ՝ ըստ Պետերսոնի ստուգաբանության [KZ, 47, 259]. *pet-ի *-l-ով կազմությունները իմաստով հայերենից շատ հեռու են և ավելի մոտ *pet- «տարածել» արմատից ծագող ձևերին (հմմտ. հուն. πέταλον «թերթ, թիթեղ»): Թեւ-ի ստուգաբանությունը պատկանում է Աղայանին [1974, 70—71]:

Բրբռ. պիպի «հնդկահավի ձագ» և բիբի «մի թռչուն» բառերի ստուգաբանությունը մերն է. վերջինս նմանաձայն է բ(ի)բեմ «ծլծլալ, ճչճչալ (ձագերի մասին)» բային, որը Պոկոռնին [Pok., 1, 830] դնում է ալբ. bibë «ձագ, բադի ձագ. հնդկահավ» և հուն. πιφιγξ, πιφαλλίς «մի թռչուն» բառերի հետ միասին. հուն. բառը մենք առանձնացրել ենք, որովհետև Ֆրիսկը [GEW, 2, 546] և Շանտրենը [DELG, 3, 209] այն համարում են *pip-ի շնչեղացված տարատեսակը: Աճառյանը [ՀԱԲ, 1², 433 և 449] բ(ի)բեմ-ը համարում է բնաձայն կազմություն (հմմտ. բբչալ):

Լայն-ի միջձայնոր զուգահեռները արաշված են ըստ *-n- ածանցով ձևերի, ընդ որում կելտականն ունի հայերենի հետ համընկնող իմաստ (հ. իռլ. lathan, կիմր. llydan, կոռն. բրետ. ledan «լայն»), հունարենը՝ շերտով (πλάτανος «սոսի, չինարի»՝ *«լայնատարած ճյուղերով»): Հ. սլավ. plesna-ն («ներբան») ունի լրացուցիչ *-s- (*plet-s-na) և իմաստով հայերենից հեռու է, սակայն նշանակված է մեկնումով: Քիչ հավանական է Կլինգենի [GIIA, 1933, 44] համեմատությունը լատ. latus- «լայն» բառի հետ (*stel- «փռել, տարածել»):

Հինգհամ «հավել» բայի ստուգաբանությունը պատկանում է Աճառյանին [ՀԱԲ, 3, 95—96], որը, սակայն, հայերենի նախաձևը չի ճշտում: Նրա մատնանշած բարբառային հինհնալ, հնիկ-հնիկ անել ձևերը ենթադրել են տալիս *pen- նախաձև, հինգհամ-ը՝ *pein- (կրկնությամբ), որոնցից որևէ մեկը այլ լեզուներում չեն հանդիպում: Թերևս հայերենի համար բանալի են տալիս մի կողմից՝ հուն. կրկնավոր ποιπνύω «գնապտին եմ ընկնում», մյուս կողմից՝ գերմ. *inēs-, *fnōs-, *fnas- ձևերը, որոնց հիման վրա մենք վերականգնել ենք *pol-pnes- կրկնավոր նախաձևը:

Ըմպեմ-ի նախաձևի վերականգնումը դժվարություններ է հարուցում: Մենք ենթադրում ենք թեմատիկ կրկնավոր ներկա, ինչպես հ. հնդկ. pibati= հ. իռլ. ibid «խմում է», լատ. bibō (*pi-bō) «խմում եմ» ձևերում՝ *pibeti> *hipeti անցմամբ և ընդ-ի հետագա համելմամբ՝ *ընդ-հիպե> ըմպե: Ումպ-ը կազմվել է հայկական հողի վրա՝ ու-ի համաբանական (անալոգիական) վերականգնմամբ՝ ունդ—ընդարույս, ունչ—ընչացք տիպի զույգերի հիման վրա [հարցի պատմությունը տե՛ս ՀԱԲ, 3², 599—600, Solta, 1960, 90—91]:

Որս բառի համեմատությունը հուն. πόρκος «ուռկան» բառի հետ պատկանում է Պատրուբանիին [KZ, 37, 428]. Աճառյանը [ՀԱԲ, 3², 588] ընդունում է որոշ կասկածով: Կապ ունի՞ արդյոք *pork'os «խոզ» բառի հետ:

Պեդերսենը ըստ-ի հետ կապում է նաև ստոր-ը (հմմտ. լատ. posterus «հետագա»), որ չի ընդունում Աճառյանը [ՀԱԲ, 4², 278] և կասկածելի է համարում Պոկոռնին [Pok., 1, 841]:

Հոյ-ի ստուգաբանությունը պատկանում է Աճառյանին: Կասկածելի է իմաստային տարբերության պատճառով. հոյ-ի սկզբնական իմաստն է

«վախ, սարսափ» և ճոյակապ բառի մեջ երկրորդաբար է ստացել «զարմանա-, հրաշա-» իմաստը:

Փոքր-ի համեմատությունը *pōu- «փոքր(իկ), քիչ» արմատից ծագող ձևերի հետ շատ տարածված է, բայց դժվարություն է հարուցում ճիշտ նախաձևի վերականգնումը. հարկավոր է բացատրել փ- նախաձայնը և -u- կամ *-ō(u)-> հայ. -ո- անցումը. Աճառյանը [ՀԱԲ, 4², 530] -փ-ի համար նշում է հուն. φαῦλος «չնչին, անպիտան» բառը (Էռնու-Մեյեի լատիներենի ստուգաբանական բառարանի հիման վրա) և *-u->-ո անցման համար ենթադրում տարնմանություն *phuku-> *phokhu-: Մերձավոր զուգահեռները որոշված են ըստ նախաձայն *ph-ի (հմմտ. հուն. φαῦλος) և *-k- ածանցի (լատ. paucus, հ. վ. գերմ. fōh «քիչ»):

Ամուրի-ի ստուգաբանությունը արված է ըստ Ադոնցի („Mélanges Boisacq", 1, 12], ընդունում է Գոդելը [Godel, 1975, 79]. հմմտ. հ. հնդկ. putio, ավեստ. puϑra- «որդի, երեխա», օսկ. puklo «երեխա»: Եթե սա ճիշտ է, ապա կամ հնդիրանական ձևերը ծագում են *putro- և ոչ *putlo- ձևից, ինչպես օսկերենը, կամ հայերենն ունի սրանցից տարբեր նախաձև:

Երան-իկ և երջան-իկ ձևերի ստուգաբանությունը պատկանում է Աճառյանին [ՀԱԲ, 4², 662]. նախաձևերի ճշգրտումը մերն է: Աճառյանը ենթադրում է -ան- ածանց (*pri̯-> երջ-, *pri->երի՝ ի-ի անկմամբ -ան-ի մոտ), որ նույնպես հնարավոր է: Սակայն ենթադրվում է նաև իրանական ծագում:

Երես-ը Վան Վինդեկենսը [KZ, 68, 218] համեմատում է թոխ. Ա ere, Բ aräm «տեսք» բառերի հետ և, այսպիսով, բաժանում *prep-ից [հմմտ. և Solta, 1960, 375]:

Թեղի-ի ստուգաբանությունը կասկածելի է. Հյուբշմանն այն համարում է փոխառություն հունարենից. Աճառյանը [ՀԱԲ, 2², 171] համեմատում է միայն լատ. tilia, մ. իռլ. teili «թմբի, լորի» բառերի հետ և նշում հունարենի հետ միացնելու դժվարությունը: Զոլտան [Solta, 1960, 420] հակառակ է համարում հայ-հունական կապը և կասկածելի լատ. ու վենետական (կամ իլլիրական) զուգահեռները, մանավանդ, եթե նկատի առնենք իմաստային տարբերությունը:

Սուտ-ի ստուգաբանությունը՝ *psudo-ից (ըստ հուն. ψεῦδος համանիշի) պատկանում է Բուգգեին (KZ, 32, 25) և ընդունվում է Աճառյանի կողմից [ՀԱԲ, 4², 253]:

Որոճեմ-ի ստուգաբանությունը պատկանում է Պատրուբանիին [ՀԱ, 1968, 26] և կասկածով ընդունվում է Աճառյանի կողմից [ՀԱԲ, 3², 584]: Համեմատված բառերից լատ. rōdō «կրծում եմ» բայը Պոկոռնին բերում է *red-/rod- «քերել, կրծել» և *u̯rōd- (*u̯er- «պատռել, քերծել») նախաձևերի տակ, առաջին դեպքում տալով կելտական (կիմր. rhathu «հղկել, կոկել, հարթել», բրետ. rasa «ածիլել») և գերմանական, (հ. վ. գերմ. rāzi «կծու», երկրորդ դեպքում գերմանական (հ. անգլ. wrōtan «փորել») զուգահեռներ [Pok., 1, 854 և 1, 1163]. հ. հնդկ. rádati «կծում է, կրծում է, կրտում է» բայի պատկանելությունը *red-ին համարվում է կասկածելի [Mayrhofer, KEWA, 3, 39—40], բայց հայ. կարճ ձայնավորով ձևը այն դարձնում է հավանական: Պիսանին *rēd-ը, *reu-ը *rei-ը համարում է *er(ə)- «ցանցառ, հեռու-հեռու. իրարից հեռանալ, բաժանվել» արմատի աճականներով ձևեր:

Առիք «տատասաղ» բառի ստուգաբանությունը կասկածելի է՝ իմաստա-

յին զգալի տարբերության պատճառով. *reik- «լայն բանալ. ձող» նախաձևը համարվում է *rei- «հենել, նեցուկ դնել» արմատի աճականով ձևը՝ նրան համեմատ *reid- նախաձևի հետ միասին. իմաստի զարգացման համար հմմտ. ձեղուն և ձող. ռահք-ի ք-ն հին հոգնակերտ է, բայց այն կարող էր այդպիսին դառնալ ուշ իմաստափոխմամբ *rik-> ռահք>ռահ-ք, թեև հնարավոր է ենթադրել նաև առանց աճականի ձև, ինչպես տրված է աղյուսակում:

Երի «կենդանու լանջամաս, երբուծ» բառի համեմատությունը լիտվ. rie-tas, լատվ. rieta «ոտք», հ. սլավ. ritr «հետույք» բառերի հետ պատկանում է Լիդենին [„Mélanges Pedersen“, 88 և հջ.]. ընդունում են Պոկոռնին [Pok., 1, 863] և Զոլտան [Solta, 1960, 418]: Աճառյանը [MSL, 20, 163. ՀԱԲ, 2², 54—55] կապել է *perə- նախաձևին («առջևը, առաջակողմ» իմաստով), բայց Լիդենի ստուգաբանությունից հետո այս ստուգաբանությունը կորցրել է իր ուժը:

Առեւծ (առիւծ) բառի ստուգաբանությունը պատկանում է Աճառյանին [ՀԱԲ, 1², 259], որ բխեցնում է *reug'- «մռնչալ» նախաձևից՝ իբրև «մռնչացող» սակայն *reug'-ը պիտի տար *(ա)ռոյծ, ուստի ենթադրելի է *rēug'- կամ *reu̯əg'- նախաձև:

Որձամ-ի մերձավոր զուգահեռը որոշված է նախահավելվածի (հուն. ἐρεύγομαι «փսխում եմ») և նշանակված +-ով. մնացածները նշանակված են ±-ով. որձամ-ը ծագում է *որուծ-ամ-ից (<*orug'-):

Արջ-ի ջ-ի համար ենթադրվում է արջն «սև» բառի ազդեցությունը:

Ատոք «լիքը, հասուն (ցորեն, սերմ)» բառը ծագում է *sa- «կուշտ, հագեցած. կշտացնել, հագեցնել» արմատից *-d- աճականով, որ, բացի հայերենից, ունի նաև հունարենը՝ ἄδην «բավականին, կուշտուկուռ»: Յագենամ-ի *sa-u̯- նախաձևի *-u̯- աճականը համանշանակ զուգահեռ ունի սլավոնականում (հմմտ. ռուս. сыт «կուշտ»):

Աղտ «աղ» բառի *sal-d- նախաձևը (*-d- աճականով) զուգահեռներ ունի գերմանական լեզուներում (գոթ., հ. իսլ., հ. անգլ. salt), թրակերենում (Salsovia<*sal-s-t-ou-), իլիրերենում (Saldae). -d-ն որպես բայական տարր (ներկայի կազմիչ) հանդիպում է լատիներենում (sallō, -ere «աղել») և երկրորդաբար (բայից կազմված անվանական ձևերում)՝ բալթիկ-սլավոնական լեզուներում (լիտվ. saldùs, լատվ. salds, ռուս. сладкий «քաղցր»):

Աղ-աւտ-ի ստուգաբանությունը (*sal- «կեղտագորշ» արմատից) պատկանում է Աղայանին [1974, 18—19]:

Քեռի և քոյր բառերի կապը նշում է Աճառյանը [ՀԱԲ, 4², 666—667]՝ մեկնաբանելով առաջինը որպես «այն անձը, որի քույրը խոսողի մայրն է»: Մենք [ՊԲՀ, 1963, 4, 95—96] քեռի-ն համարել ենք *su̯-esor- «սեփական արյունից» ձևից (որպես քոյր-ից անկախ կազմություն)՝ *su̯esri̯o-> քեռի:

Համ-ի համար Լիդենը [Lidén, 1906, 67] տալիս է *sap-mo նախաձևը, որ ընդունում է Պոկոռնին [Pok., 1, 880]: Աճառյանը [ՀԱԲ, 3², 16] մերժում է՝ նշելով, որ *sap-mo-ն պիտի տար *հաւմ (հօմ): Մենք ճշտում ենք կատարել՝ կապելով *sap-ի *sab- տարբերակի հետ (*sab-mo-), որ հանդիպում է գերմանականում (հ. անգլ. sæp, մ, ստ. գերմ. sap(p) «հյութ») և կելտական (<վենետական) ու իլիրական տեղանուններում:

Հյուբշմանը Նիստ-ը համարում է երկրորդական կազմություն՝ Նստիմ-

ից և ոչ անմիջական շարունակությունն *ni-zd-o-ի, որ ունի գերադասելապես «բուն» իմաստը:

Զ-երծանեմ բայի համեմատությունը հ. հնդկ. sr̥játi, sarjati «արձակում է», ավեստ. hərəzaiti, harəzaiti «արձակում է, ազատում է» բայերի հետ կատարել է Լագարդը [Lagarde, 1854, 221], ընդունում են Հյուբշմանը և Աճառյանը [ՀԱԲ, 2², 92—93]: Պոկոռնին [Pok., 1, 900—901] հնդիրանական բառերը անջատում է հայերենից և կապում հ. իռլ. selg «որս», մ. վ. գերմ. selk «կախել, իջնել (ամպերի մասին)» և այլն բառերի հետ, որ ավելի քիչ հավանական է:

Աղբ «կեղտ կղկղանք» բառի համեմատությունը խեթ. šalpa- «կղկղանք» բառի հետ հեղինակինն է [ԼՀԳ, 1979, 3, 23—24]. մյուս լեզուներն ունեն գերադասելապես «յուղ, ճարպ» իմաստը, որ հայերենում ևս պահպանվել է «հողը աղբով պարարտացնել», բրբռ. «պարարտություն» իմաստների մեջ: Աճառյանը [ՀԱԲ, 1², 123—124] բխեցնում է կովկասյան աղբյուրից (լազ. lebi «կեղտ»), Լիդենը և Պետերսոնը կապում են աղտ բառի հետ և բխեցնում *el- «նեխել, հոտել» արմատից (այս դեպքում *-bh- աճականը մնում է անհասկանալի, և իմաստը զգալիորեն շեղվում է [հմմտ. Pok., 1, 355 և Solta, 1960, 279]:

Ամամ «լցնել», աման բառերի ստուգաբանությունը պատկանում է Պետերսոնին [KZ, 47, 279]: Պոկոռնին [Pok., 1, 901—902] այս արմատի տակ բերում է հուն. ἄμη «գույլ», ἀμίς «միզաման», լատ. sentīna «նավի կեղտաջրանոց, կեղտաջուր», հ. իռլ. sem- «ջուրը թափել», լիտ. semiù, sémti «(շերեփով) հանել, լցնել» բառերը և այլն: Աճառյանը [ՀԱԲ, 1², 143—144], հետևելով Պիկտեին, համեմատում է Պոկոռնու կողմից *am- «բռնել» արմատի տակ դրված հ. հնդկ. amatram «աման», լատ. ampla «բռնակ, կանթ», amplus «լայն, ընդարձակ» բառերի հետ՝ ավելացնելով հուն. այն բառերը, որ Պոկոռնին բերում է *sem- արմատի տակ: Վերջինս անջատում է աման-ը ամամ-ից՝ առաջինը բերելով *am- արմատի տակ:

Հիմն-ի համեմատությունը խեթ. šamana- «հիմք» բառի հետ պատկանում է Լարոշին [BSL, 58, 73—77]: Մենք այս զուգահեռը քննել ենք *sē(i)- արմատից անկախ [SCO, 2, 69—70]:

Ընթանամ-ի մերձավոր զուգահեռները որոշված են ըստ ֆիզիկական շարժման իմաստի առկայության՝ ի հակադրություն հայերենի. հմմտ. մի կողմից՝ ավեստ. hant- «հասնել, հասցնել», հ. իռլ. sēt «ճանապարհ», հ. վ. գերմ. sentan «ուղարկել», sindōn «գնալ», լիտ. siunčiù, լատվ. sùtu «ուղարկում եմ» և մյուս կողմից՝ լատ. sentiō, -īre «զգալ» և այլն: Հայ. գալ-ը և զ-գալ-ը ունեն իմաստային միևնույն փոխհարաբերությունը:

Անցանեմ-ի ստուգաբանությունը մերն է [Джаукян, 1967, 175, ծան. 34, 216]. ամենայն հավանականությամբ կազմված է սիգմատիկ աորիստի հիմքից (*sn̥t-s->անց)՝ -ան-եմ-ով: Աղայանը [1974, 19—20] ենթադրում է *-sk-, որը, սակայն, այլուր չի հանդիպում: Պեդերսենը համեմատում է հուն. ἄντομαι «ընդառաջ եմ գնում, հանդիպում եմ» բայի հետ, որ չի ընդունում Աճառյանը [ՀԱԲ, 1², 212—213]:

Աճառյանը [ՀԱԲ, 3², 396], տալով յեռում-ի՝ բերվող ստուգաբանությունը (*ser-s-), ավելացնում է. «Ձևով ու կազմով հյ. յեռ- ճիշտ այն է,

ինչ որ հն. ἔνερθε(ν), ուր ἐν-..., ερθε- -θεν»: Սակայն ἔνερθε «ներքում, մըթնում» բառի մեջ -θε-ն գալիս է *-tl- ածանցից:

Ուստր-ի -տր-ի համար ենթադրվում է դուստր-ի ազդեցությունը. ուս-ը զուգահեռ ունի կիմր. hogen (*sukā) «աղջիկ» ձևի մեջ՝ ընդհանուր *-k-ով, որ հայերենում *-u-ից հետո տալիս է -ս-: Հյուբշմանը [Hübschmann, 1901, 69] համեմատում է հ. անգլ. suhterga «եղբորորդի» բառի հետ, որ անհավանական է համարում Զոլտան [Solta, 1960, 326, ծան.]. իր հերթին Զոլտան հաշվի չի առնում կելտական *-k-ով զուգահեռը և հայերենին ամենից մոտիկ մեկը է համարում հուն. υἱύς, υἱός, թոխ. B soyā «որդի» ձևերը, որոնք հակադրվում են հնդիրանա-գերմանա-բալթիկ-սլավոնական *su-ով ձևերին: Մենք կելտականը նշել ենք +-ով, հունականը և թոխարականը՝ ±-ով,

Հ.-ե. *seug-ը պիտի տար *(h)ոյծ և ոչ հիւծանիմ, ուստի մենք ենթադրել ենք *sēug նախաձև (հնարավոր է նաև *seụ̄g- նախաձևը): Հիւծանիմ-ը զուգահեռ ունի միայն գերմանական լեզուներում՝ գոթ. siuks «հիվանդ», հ. իսլ. sjūkr «հիվանդ, տրտում» և այլն:

Հայ ինձ-ը զուգահեռ ունի հ. հնդկ. simhá- «առյուծ» ձևի մեջ: Նկատի ունենալով, որ սրանք չեն կարող հնդեվրոպական լեզվից գալ, Զոլտան [Solta, 1960, 420—421] որպես երկուսի աղբյուր ենթադրում է որևէ ասիական լեզու:

Խայթ և խիթ «ցավ, վերք. քարանձավ. խութ» բառերը օրինաչափ կերպով համեմատվում են մ. նիդեռլ. heien «խփել, հրել», մ. վ. գերմ. heie «թակ», լատ. caedō, -ere- «խփել, հատել, սպանել, սեղմել», calō, -āre «խփել, թակել, հատել» և այլն բառերի հետ, որոնց համար վերականգնվում է *(s)k(h)ai-, *-d-, *-t- «խփել, խթել, հրել» արմատը [Pok., 1, 917], որոշ հետազոտողներ սրանց միացնում են նաև հ. հնդկ. khidáti «ցավեցնում է, հրում է, ճնշում է», khedā «ճնշում, հոգնածություն» բառերը: Աճառյանը [ՀԱԲ, 2², 325] խայթ և խիթ բառերի հետ ստուգաբանորեն կապում է իմաստով և ձևով ակնհայտորեն որոնց մոտ մի շարք բառեր՝ խէթ, խոթ, խութ խաւթ և այլն, որոնց ձայնավորումը հնարավոր չէ բացատրել ընդունված զուգահեռներով և ենթադրում է *ĕ/ŏ/ə, *ĕu/*ŏu/*əu ձայնդարձներ: Գործն ավելի է բարդանում, երբ նկատի ենք առնում խաչ, խայծ, խեչ, խոչ զուգահեռ ձևերի առկայությունը, որոնցից առաջինի համար նշվում են ն. պրսկ. xada «երկար և ուղիղ ճյուղ. երկար փայտ» և լիտվ. kótas, լատվ. kats «կոթ» զուգահեռները [Lidén, KZ, 56, 211. ՀԱ, 41, 465 և հջ. հմմտ. և Solta, 1960, 308—309]: Պոկոռնին *(s)k(h)ai- նախաձևի տակ է դնում նաև խիթառ-ը (*khid-ro-), որ, սակայն, չի ընդունում Աճառյանը [ՀԱԲ, 2², 371]: Թերևս այստեղ առկա են մասամբ բուն հայերեն ձևերի հետ խառնված փոխառյալ ձևեր, մասամբ հին բարբառային տարբերակներ:

Ճերտ բառի՝ Պոկոռնու բերած [Pok., 1, 919] ստուգաբանությունը չի ընդունում Աճառյանը [ՀԱԲ, 3², 511—512]. հայերենի հետ *-r- ածանցով միավորվում են հուն. σκιδαρός «նեղ, ցանցառ, փխրուն» (ըստ Հեսիքիոսի), մ. անգլ. scateren «ցրել, շաղգել, փշրել», չեխ. skedervá «տաշեղ», ռուս. щедрый «շռայլ», վ. լուժ. šćedrić «փշրել» բառերը: Աղայանը [1974, 128—129], հետևելով Պատրուբանիին, բխեցնում է *sqerd-ից (ավելի ճիշտ պետք է լիներ *skherd-)՝ կապելով քերել, քերթել բառերի հետ:

Ցելում-ին իմաստով և ձևով ամենից ավելի համապատասխանում են գերմանական (հ. իսլ. skilja «բաժանել») և բալթիական (լիտվ. skeliù, skélti «ճեղքել») բայաձևերը [հմմտ. Solta, 1960, 106], ավելի հեռու են մնում հուն. σκάλλω «փորում եմ», ալբ. shtie' «բացում եմ, փայլեցնում եմ, սրում եմ. վառում եմ», խեթ. iškallāi- «պոկել» բայերը: Առաջինները նշանակված են +-ով, երկրորդները՝ ±-ով:

Աղայանը [1974, 77—78, 126—127] *skel-ից է բխեցնում նաև խեղբ «ծիլ, ընձյուղ», խեղեփ «կեռ մազ», շեղբ «դանակի երկաթ» բառերը՝ առանց *-kh-ով և *-skh-ով համապատասխան զուգահեռներ նշելու: Շեղբ բառը Աճառյանը [ՀԱԲ, $3^2$, 508] համարում է փոխառություն ասոր. šelpā «դանակ» բառից:

Խուլ-ի համեմատությունը հուն. κωλός «կաղ» (այլև «խուլ». հմմտ. κωλὸν οὖς «խուլ ականջ») բառի հետ պատկանում է Մեյեին [BSL, 36, 114 և հջ.]: Մենք [Джаукян, 1967a, 118] խուլ-ը ան-խուլ «ամայի, անբնակ», գ-անխուլ «ծածուկ, գաղտնի» բառերի հետ միասին դիտել ենք հ.-ե. կողմնակի շերտի բառ և համեմատել *keu- «ծածկել, փաթաթել» արմատին պատկանող բառերի հետ: Աճառյանը [ՀԱԲ, $2^2$, 415] Մեյեի ստուգաբանությունը չի ընդունում:

Եթե ճիշտ է *skhьl-> սխալ ստուգաբանությունը, և հայերենը հին փոխառություն չէ, ապա թերևս կարելի է հաստատել *skh> շ փոփոխություն առաջին շարքի ձայնորդներից առաջ (հմմտ. *skhed-ri-> շերտ, *skhel-> շեղ և այլն), *skh> սխ փոփոխության՝ այլ դիրքերում:

Քարբ «արքայիկ օձ» բառի համեմատությունը հուն. σκορπίος «կարիճ» բառի հետ պատկանում է Տերվիշյանին և ընդունվում է Աճառյանի կողմից [ՀԱԲ, $4^2$, 561]. ±-ով են նշանակված հայերեն բառից իմաստով հեռու, բայց *-p- անձայնն ունեցող ձևերը:

Քերել, քորել բայաձևերի մերձավոր զուգահեռներից +-ով նշանակված են *e/o ձայնդարձն ունեցող ալբ. ձևերը՝ korr (*kērno-) «կտրում եմ, քաղում եմ» և harr (*skorno-) «քաղհանում եմ». մյուսները նշանակված են ±-ով [հմմտ. Solta, 1960, 106—107]:

Ցայտել-ի համեմատությունը լատ. scateō -ēre (հին scatō, -ere) «բըխել» բայի հետ պատկանում է Մեյեին [հմմտ. Ernout—Meillet, DELL$^4$, 863]: Ընդունում են Աճառյանը [ՀԱԲ, $4^2$, 449] և Զոլտան [Solta, 1960, 389—390]:

Քիւ-ի մերձավոր զուգահեռները որոշված են ըստ *s-ի և անձայնի բացակայության:

Խուղ-ի զուգահեռներից +-ով նշանակված են *-l- ածանց ունեցող և իմաստով հայերենին մոտ գերմանական բառերը (հ. իսլ. skjōl «թաքստոց, ապաստարան, մարագ», հ. ֆրիզ. skūle «խրճիթ, խուղ» և այլն), ±-ով՝ մնացածները: Պոկոռնու [Pok., 1, 951] բերած բառերից խաւար-ը իրանական փոխառություն է [հմմտ. ՀԱԲ, $2^2$, 351 և Ջահուկյան, ԼՀԳ, 1979, 3, 25—26], խուփն-ը՝ խափ-ի ձայնդարձը [ՀԱԲ, $2^2$, 423]. Հնարավոր է խուց-ի սեմական (աքքադական) փոխառություն լինելը (հմմտ. աքքադ. ḫuṣṣu «ցանկապատ. ծածկ». ՀԱԲ, $2^2$, 422—423):

Մինչ-ի ստուգաբանությունը պատկանում է Աճառյանին [ՀԱԲ, $3^2$, 322], կասկածելի է իմաստային տարբերության պատճառով: Ավելի հավանական

է բխեցնել մակբայների և նախդիրների հիմքում ընկած *me- նախաձևից, որից հայ. մերձ (= հուն. μέχρι(ς) «մինչև»)։

Մայրուք-ի զուգահեռներից + -ով նշանակված են *-ru- հիմքով (հ. հնդկ. śmáśru-, խեթ. zama(n)kur (*smokru- կամ *smokur-) բառերը, ± -ով՝ միայն *-r- պարունակողները, որոնք իմաստով էլ ավելի քիչ են մոտ հայերենին։

Մուլ «ծուխ», մկմկալ բառերի ստուգաբանությունը պատկանում է Աճառյանին [ՀԱԲ, 3², 352]. հմմտ. մ. իռլ. smāl, smōl, smūal «կրակ. մոխիր», ստ. գերմ. smelen, smölen «մարմրել, մխմխալ» և այլն։

Բրբռ. մուզ (կա արդի գրական լեզվում) <մոյզ բառի ստուգաբանությունը [Pok., 1, 971] կասկածելի է. հ.-ե. *-gh-ն *-u-ից հետո պիտի փոխվեր ձ-ի։

Հետազոտողները տատանվում են հայ. ողջ-ը՝ *sol-(o-) «ողջ, ամբողջ» հիմքին, թե *al-, *ol- «դրանից դենը» արմատին հատկացնելու հարցում. վերջին դեպքում տալիս են հ. իռլ. oll «ընդարձակ, մեծ», գոթ. alls «ողջ, բոլոր» և այլն զուգահեռները. մենք գրել ենք առաջինը, որովհետև՝ ա) երկրորդ դեպքում ունենք aljo-> այլ անցումը (*al- և ոչ *ol- ձևից), բ) *sol-ին պատկանող լատիներենի և հայ միջև կա իմաստային բացահայտ զուգահեռ [հմմտ. Solta, 1960, 230—231]։ Հայերենի նախաձևը դրվում է *soljo- կամ *solu̯jo-։

Բրբռ. ճխնել «նայել» բառի ստուգաբանությունը պատկանում է Աղայանին [ԲՍՀ, 149—147]։

Հենում -ն-ով ձևի առկայությունը հինեմ ձևի կողքին Մեյեն [Meillet, 1936², 55] բացատրում է հաջորդ ու-ի ազդեցությամբ (հմմտ. զգենում)։ Հենում-ի մերձավոր զուգահեռները զրկված են բուն *s-ի բացակայության, ինչ որում + -ով նշանակված են իմաստով մոտ ձևերը (հմմտ. լիտվ. pìnù, pìnti «հյուսել», հ. սլավ. пьнѫ «լարում եմ»)։ Հենում-ը և հանում-ը գալիս են կամ ձայնդարձի տարբեր աստիճաններից, կամ, ինչպես կարծում է Վինտերը [AID, 202], բարբառային հնչյունային տարբերակներից. թերևս հնարավոր է հանում-ը բխեցնել *pan- «գործվածք» արմատից, որ, անշուշտ, կապված է *(s)pen-ի հետ։

Փանաք «տկար, խեղճ, աղքատ», փանաք-ի «չնչին, անշահ» բառերի համեմատությունը հուն. σπάνις «կարիք, պակասություն», σπάνιος «հազվադեպ. սուղ, պակասավոր», πεῖνα, πεῖνη «քաղց», πένης «աղքատ, չունևոր» բառերի հետ պատկանում է Տերվիշյանին և ընդունվում է Աճառյանի կողմից [ՀԱԲ, 4², 479]։

Փինտ «աղքատ, խեղճ, ողորմելի» բառի ստուգաբանությունը Աճառյանինն է [ՀԱԲ, 4², 505], որն անբացատրելի է թողնում ի-ն (սա կարող էր գալ *ei-ից). մեր տված նախաձևի համար հմմտ. մեջ < *meidhjo- < *medhjo-։

Փին «աղբ, կղկղանք» բառի համեմատությունը հուն. πίνος «կեղտ, ժանգ», πιναρός, πινόεις «կեղտոտ» բառերի հետ պատկանում է Տերվիշյանին և Աճառյանին [ՀԱԲ, 4², 404], փն-թի «կեղտոտ, գզվելի» բառինը՝ Աճառյանին [ՀԱԲ, 4², 507], միայն թե անհամոզիչ է փն-թի-ի աճառյանական մեկնությունը որպես փին+թի «աղբ թի» (որպես պատկերավոր բառ)։ -թ-ն

թերևս անձական է։ Այլ հետազոտողներ հուն. բառերի ծագումը համարում են անհայտ [GEW, 2, 540. DELG, 3, 903—904]։

Ստինք-ի մերձավոր զուգահեռներն են հ. հնդկ. stánaḥ, հուն. στήνιον «կուրծք» (ըստ Հեսիքիոսի). Զոլտան [Solta, 1960, 303—305] նշում է հայերեն և գերմ. ու բալթ. բառերի (հ. իսլ. speni, լիտվ. spenỹs «ստինք») իմաստային մերձավորությունը, բայց սրանք ձևով հակադրվում են հայ-հնդկա-հունական բառերին։

Սպառնամ-ը սերտորեն միավորվում է հ. հնդկ. spr̥ṇāmi «սպանում եմ» (հմմտ. նաև spr̥ṇóti «նա է մղում») բայի հետ. լատ. spernō, -ere- «հեռացնել, արհամարհել», հ. իսլ. sperna «ոտքով հրել» բայերը թեմատիկ հիմք ունեն և հայերենից փոքր ինչ ավելի հեռու են, քան հ. հնդկ. ձևը, որ Զոլտան նկատի չի ունենում [Solta, 1960, 389]։

Փարատեմ բայի աղբյուրը Աճառյանը (ՀԱԲ, 4², 486, 487) համարում է ասոր. pərat «ցրել, (անունը) տարածել» բայը, որ քիչ հավանական է. այստեղ հավանաբար մենք գործ ունենք հնդեվրոպա-սեմական ընդհանուր (նոստրատիկ) ժառանգության հետ, և երկու ստուգաբանությունների միջև ընտրությունը դժվարանում է։ Փարատեմ-ի մեր բերած ստուգաբանության համար տե՛ս Pok., 1, 993. տ-ն այստեղ թերևս գալիս է ներկայի *-d- աճականից և զուգահեռ ունի նիդեռլ. sproeten «սրսկել», sproetelen «բխել» բայերի մեջ։

Փրփուր-ի համեմատությունը հուն. ἀφρός հոմանիշի հետ և վերադրումը *(s)p(h)er- արմատին պատկանում է Մեյեին [BSL, 93, 51 և 35, 110]. ընդունում է Աճառյանը [ՀԱԲ, 4², 535] և ավելացնում օս. ffiur հոմանիշը. սակայն փրփուր-ի օս. բուն անունն է fynk, finkä, որ *faina-ka-ի միջոցով [Абаев, ИЭСОЯ, 1, 498] հանգում է *(s)poimno- նախաձևին [Pok., 1, 1001]։

Փոշի-ի համեմատությունը խեթ. parš- «փշրել» բայի հետ պատկանում է Պիզանիին։ Աճառյանը [ՀԱԲ, 4², 509, 516, 522—523] փոշի-ն փշուր-ի հետ միասին, ինչպես և փուխր-ը հակված է համարելու կովկասյան փոխառություն։

Ստանամ-ի զուգահեռներից +-ով նշանակված են հայերենին կազմությամբ և իմաստով (լատ. prae-stināre «ձեռք բերել, գնել»), ±-ով՝ միայն կազմությամբ մոտ զուգահեռները։

Տոպեմ «ծեծել» բայի զուգահեռները որոշված են ըստ *-b-ի առկայության (*-p-ի և *-bh-ի դիմաց) և ռնգային միջածանցի բացակայության. հմմտ. հ. հնդկ. stábaka- «փունջ», հուն. στόβος «նախատինք, պարծենկոտություն», στοβέω «նախատում եմ», հ. վ. գերմ. stepfen, stapfōn «ամուր ոտք դնել, ամրաքայլ գնալ». բալթիական և սլավոնական ձևերը կարող են ծագել ինչպես *-bh-ով, այնպես էլ *-b-ով ձևերից (լատվ. stabs «սյուն», ռուս. բրբռ. стебать «մտրակել, ծեծել»). հայերեն բառի հետ իմաստով ամենից մոտ են սլավոնականները։ Աճառյանը [ՀԱԲ, 2², 197] տալիս է *(s)tob- նախաձևը, բայց օրինակները բերում է *(s)teu- *-b(h)h-, *-p- արմատի աճանցյալներից։ Կարելի է նշել հ.-ե. արմատների բնաձայնական-նկարագրական բնույթը, որի դեպքում հնարավոր է ձայնավորման տատանում։

Ստեպ, ստիպեմ բառաձևերին ձևով (*steib-՝ *steibh-ի և *steip-ի դիմաց) ամենից ավելի մոտ են հուն. στείβω «տրորում եմ. քայլում եմ. սու-

*բում եմ», հ. չիով.* staibus *«ուժեղ, քաջ» բառերը. սլավոնական բառերը ձևով մոտ են, իմաստով՝ հեռու (հմմտ. ռուս.* стебель *«ցողուն»), իտալերենը (լատ.* stipō, -āre *«ճխտել, ճնշել, կուտակել») և գերմաներենը (հ. անգլ., մ. վ. գերմ.* stīf *«պինդ»)՝ ընդհանրապես։ Իմաստով և ձևով հեռու է հնդկականը։ Աճառյանը [ՀԱԲ, 4², 433]* ստեպ-*ին է միացնում նաև* ստիպ-*ը, որ, սակայն, հնչյունապես և իմաստով հեռու է մնում։*

**Ստեղծանեմ**-*ի համակարգումը* *stel-*ին [ՀԱԲ, 4², 270—271] Զոլտան* [Solta, 1960, 333, *ծան.* 81a] *կասկածելի սակ է գտնում ծ-ի պատճառով, որ Աճառյանը հակված է բացատրելու հայկական հողի վրա. սակայն հմմտ.* *stel-g-, *որ առկա է կելտական, գերմանական և բալթիական խմբերում.* *stel-g-*ի համար կարելի է ենթադրել և* *stel-g′- *տարբերակ, եթե նկատի առնենք բալթիականի ատամնումը հ.-ե. քմայինների արտացոլման մեջ։*

*Բրբռ.* բնալ, բնբնալ-*ի մերձավոր զուգահեռները որոշված են ըստ* *s-*ի բացակայության,* բնկբնկալ-*ինը՝ ըստ ետնալեզվային* կ-*ի առկայության։*

**Ստի** *«թափ, մաղառ» բառի մասին Աճառյանը [ՀԱԲ, 4², 274] գրում է. «Անշուշտ նույնն է* ստեւ *բառի հետ»։ Վերջինս նա [ՀԱԲ, 4², 273] բխեցնում է* *steu̯ə- *«խտանալ, սեղմվել» արմատից, որ Պոկոռնին* [Pok., I. 1035] *stāu-, *stau-/stū- *տարբերակներով կապում է* *stāl-, *stī-, *stḷ-ā- *«խտանալ, լերդանալ» հիմքերի հետ որպես* *stā- *«կանգնել» արմատի աճականով ձև։* Ստե *«անասունի (հաստկողեն ուղտի) բուրդ» բառի համար Աճառյանը նշում է հ. հնդկ.* pṛthu-stu- *«լայնահյուս, լայնածոմ, լայն մազափնջով»,* stupá- *«մազափունջ»,* stuka- *«մազափունջ» բառերը. մյուսները իմաստով հեռու են։* Ստի-*ի զուգահեռները նույնպես իմաստով հեռու են հայերենից. ուստի և հայերեն բառի ծագումը նշված է հարցականով։*

**Ստնգամ** *«ջղաձգվել» բայի համար կարելի է նշել մի կողմից՝ հուն.* στενός (στεν-F-ός) *«նեղ»,* στεῖνος *«նեղվածք, նեղ տեղ, նեղություն»,* στείνομαι *«նեղ եմ զգանում», հ. իսլ.* stinnr *«պինդ», ինչպես նաև լատ.* stinte *«ստացաշիթ»* (*sten- *«նեղ, սեղմել, նեղացնել»), մյուս կողմից՝ ավեստ.* θang- *«ձգել, լարել», լատ.* tēmō (*teŋksmō) *«սայլի ձողի», ռուս.* растягивать *«ձգել»,* тугой *«ձիգ», լիտվ.* tingùs *«ծույլ», հ. իսլ.* þungr *«ծանր» բառերը* (*tengh- *«ձգել, լարել»). Թվում է մենք գործ ունենք միևնույն* *(s)ten-, *-gh- *արմատի հետ։ Երկրորդ արմատի ածանցյալները բերված են փակագծերում։*

**Ստրուկ**-*ի զուգահեռներից +-ով նշանակված են* *strō- *հիմնաձևով և մերձավոր իմաստով (հմմտ. ռուս.* страда *«ծանր աշխատանք. ծանր աշխատանքի ժամանակ՝ հունձ»,* страдать *«չարչարվել, տանջվել», (հին) «աշխատել»), ±-ով՝ մյուս ձևերը։ Սակայն հնարավոր է որ* -ուկ-*ը լինի ոչ թե աշ դրված ածանցական մասնիկ, այլ դա* *-ōg- *ձևից* (*g-*ն առկա է գերմ. և բալթ. ձևերում)։*

**Ստորի** *«ջրալհակահոսանքի գլան, որի վրա փաթաթվում է կապը» բառի ստուգաբանությունը պատկանում է Աճառյանին [ՀԱԲ, 4², 278]. հմմտ. հուն.* στεῖρα *«նավի առաջամասը»,* στήριγξ *«հենակ, հենարան», հ. վ. գերմ.* storro *«ծառաբուն, կոճղ» և այլն։*

**Աստղ**-*ի նախաձևի հարցը դժվարություն է հարուցում. այն մի կողմից՝ մոտ է լատ.* stellā-*ին* (*stēr-lā)՝ *-l-*ի առկայությամբ, մյուս կողմից՝ հունարենին՝* ա- *նախաձայնով* (ἀστήρ). *որանցից առաջինը մենք նշանակել ենք +-ով՝ երկրորդը՝ ±-ով։*

Թոր(ել)-ի զուգահեռներից +-ով նշանակված են առանց *s-ի և աճա-կանի (բալթ. tor «գամողը», լիտվ. termeñti «հեղուլել»), ±-ով՝ միայն առանց աճականի ձևերը, թեև հայերեն թոր(ել) և թարախ բառերին իմաս-տով մոտ ձևեր կան նաև մյուսների մեջ։

Թունդ-ի հնչյունական մեկնաբանությունը Աճառյանինն է [ՀԱԲ, 2², 206—207]՝ *tund->*թունտ>թունդ (երկբարբառային ձայնեղացում ն-ի մոտ). կասկածելի է։ Թերևս նախընտրելի է *-dh- կամ *-t- աճականով ձև, որոն-ցով հայերենը մնում է առանձնակի։

Աճառյանը [ՀԱԲ, 2², 199] և, նրա հետևողությամբ, Զոլտան [Solta, 1960, 378—379] թովել-ը միացնելով թոթովել-ի հետ՝ դրանք բխեցնում են *steu- «բարձրաձայն գովաբանել» արմատից (հ. հնդկ. stàuti, stavatē «գովաբանում է», հուն. στεῦται «խոստանում է (պարծենալով)»), որ անհա-վանական է թե՛ ձևով (առանց *-s-ի արմատը չի հանդիպում), թե՛ իմաս-տով։ Մեր ստուգաբանությամբ (*teu- «բարեկամաբար ուշադրություն դարձնել») հայ. բառին առանձնապես մոտ է կելտականը. հմմտ. մ. կիմր. tut (*teu-to-) «կախարդ, թովող»։

«Քաղցր» իմաստի համար առկա են հ.-ե. *su̯ad-, *dl̥ku- և *saldu-հիմքերը, ընդ որում առաջինը համեմատաբար լայն տարածում ունի, եր-կրորդն ընդգրկում է հունա-լատինական, երրորդը՝ բալթի-սլավոնական տա-րածքը։ Հայերենի նախաձևի հարցը դժվարություններ է հարուցում, վերա-կանգնվում են *su̯l̥k'hu- (Բարթոլոմե), *du̯l̥k'u- (Շեֆտելովից), *dl̥k-sk'u-> *k'l̥d-sk'u (Պետերսոն) և այլ ձևեր, որոնցից ոչ մեկը համոզիչ չէ։ Մենք հիմք ենք ընդունում *su̯ad- արմատը՝ *-l- և *-sk- կազմիչներով (խառնուրդ *dl̥k'u-ի հե՞տ)՝ *su̯ad-l-sk'u- քաղց-ր,-ու (ենթադրվում է *-d-ի անկում *-l-ից առաջ դրված դիրքում)։

Մեյեն [Meillet, 1936², 55] վաթսուն-ի մեջ ա-ի առկայությունը բա-ցատրում է ու-ի ազդեցությամբ, որ քիչ հավանական է։

Քուն-ի զուգահեռներից +-ով նշանակված են *su̯op-no-, *su̯ep-no- (հ. հնդկ. svápna-, ավեստ., xᵛafna-, լատ. somnus (*su̯opnos կամ *su̯ep-nos), հ. իսլ., հ. անգլ. svefn), ±-ով *sup-no-, *sop-no- և այլն նախա-ձևեր ունեցողները։

Քույր-ի զուգահեռներից ±-ով նշանակված են ա) հունարենի՝ Հեսիքիո-սի ավանդած մնացուկային ἔορ (կոչ.) «դուստր, ազգական», ἔορες (հգն.) «ազգականներ» ձևերը, որոնք իմաստով էլ տարբեր են, և բ) *su̯-ի փոխա-րեն *s- նախաձայնով ձևերը (լիտվ. sesuo, ռուս. сестра «քույր»)։

Կապ ունե՞ն արդյոք թարախել բայի հետ թարաղել «արյունաթաթախ դարձնել» (թե՞ «ծեծել») և թարամշել «լուծվել, մեղկանալ, լքվել» բայերը։

Աճառյանը [ՀԱԲ, 2², 150 և 217] թաւն-ը կապում է թանամ-ի հետ և բխեցնում *tā-ի *tāu- արմատներից (թաւն< *tāu-ni-)։

*Tēta> տիտ անցման մեջ բաղաձայնական անհամաչափի բացակայու-թյունը բացատրվում է արմատի մանկական բնույթով (Lallwort)։

Պոկոռնին [Pok., 1, 1061], հենվելով Շեֆտելովիցի վրա, տալիս է նաև թաղար բառը, որը, սակայն, թյուրքական (<սլավ.) ծագում ունի և հան-դիպում է միայն ուշ շրջանում [հմմտ. ՀԱԲ, 2², 146]։

Աճառյանը [ՀԱԲ, 2², 190] թմ(բ)րիմ-ի համար ընդունում է Պե-դերսենի ստուգաբանությունը և, նախնական համարելով բ-ով ձևը, այն հա-

համեմատում է հուն. τύμβος «գերեզմանին մոտեցած, գտում» բառի հետ ու բխեցնում *tumb- արմատից: Սակայն մի կողմից՝ բերված հուն. բառը τύμβος «գերեզմանաթումբ. գերեզման» բառի փոխաբերական գործածությունն է [հմմտ. Frisk, GEW, 2, 944], մյուս կողմից՝ *tumb- ձևը պիտի տար թումպ- (միայն երկբարբառային կարող էր լինել պ-ի ձայնեղացում մ-ի մոտ, բայց պ-ով ձևն ընդհանրապես չի հանդիպում):

Թանձր-ը Հյուբշմանը [AG, 1, 443] համեմատում է հնդեվրոպական *tenk- արմատից ծագող ձևերի հետ, որ ընդունում է Աճառյանը [ՀԱԲ, 2², 152—153], նշելով, սակայն, *tn̥g'hu- նախաձև: Զոլտան [Solta, 1960, 223] դրա հիման վրա հայերենի ու-ով հիմք ունեցող ձևը ամենից ավելի մոտ է համարում լիտվ. táukus «խիտ, հաճախակի» բառին: Հ.-ե. *tenk-ը և *tengh-ը *ten- «ձգել» արմատի *-k- և *-gh- աճականներով ձևերն են [հմմտ. Pok., 1, 1067—1068]:

Թարմ-ի *tr̥-mo- նախաձևը հունարենի հետ կապվում է միայն «կիսով չափ». վերջինս ունի *-mōn աճանցով ձև (τέρμων) «քնքուշ, փափուկ»): Զոլտան [Solta, 1960, 350] նշում է միայն ալբանական և հունական ձևերը՝ Պոկոռնու բառարանում [Pok., 1, 1071] բերված լատ. termes «հատված ճյուղ» և հ. իսլ. þyrma «խնայել» (*þormaz «քնքուշ, թույլ») ձևերի պատկանելությունը համարելով կասկածելի:

Արածեմ-ի (հմմտ. նաև թուրծ «այտ» և թործ «անկյունաձև տաշվածք») զուգահեռներից ±-ով նշանակված են հնչյունապես (*terg'-՝ փխկ. trōg'-ի ու *tōrg'-ի) և իմաստով համեմատաբար հեռու գտնվող ձևերը: Թուրծ-ի ստուգաբանությունը պատկանում է Լիդենին [Lidén, 1906, 33]. կասկածելի է իմաստային նկատառումներով. Թերևս այն համեմատելի է լատ. turgeō, -ēre «ուռած լինել» (հմմտ. այտ և այտնում) բայի հետ, որ ծագում է *tēu- «ուռչել» արմատից:

Աճառյանը [ՀԱԲ, 2, 214], հետևելով Պետերսոնին, թրթուր-ը բխեցնում է *ter- «տրորել, շփել, ծակել» արմատից: Պոկոռնու բառարանում [Pok., 1, 1076] որանից տարանջատված է *ter- «մանրող, ծակող միջատ» արմատը (նախորդի հետ նրա ունեցած կապի մատնանշումով), բայց հայ. բառը չի բերված: Զոլտան նույնպես չունի:

Թառամ (թարշամ) և թոռոմ (թորշոմ) ձևերի զուգահեռները տրված են ըստ ձայնդարձի տարբեր աստիճանների՝ *tr̥s- և *tors-:

Tьtēr- > տատր-ակ անցման մեջ բաղաձայնական տեղաշարժի բացակայությունը բացատրվում է արմատի բնաձայնականությամբ:

*To- > դ-, -դ (դ-ա, դո-յն, այ-դ, -դ) և *tŭ > դու անցումներն օրինաչափ չեն. *t-ի ձայնեղացումն այս դեպքերում դիրքային պայմանավորվածություն ունի:

Թէ-ի (հին ձեռագրերում թէ) համեմատությունը հ. անգլ. þe, հ. սաքս. the և լիտվ. te, -t բառերի և մասնիկների հետ պատկանում է Մեյեին [MSL, 9, 154, ծան. և MSL, 23, 142]. այն ընդունում են Աճառյանը [ՀԱԲ, 2², 179—180] և Զոլտան [Solta, 1960, 398—399]: Հյուբշմանը չի ընդունել՝ երէ-ն համարելով ավելի նախնական: Կասկածելի է նաև հայ. թէ-ի և հիշյալ բառերի պատկանելությունը *t- ցուցական հիմքին:

Թրթակ «ճարտարախոս» բառի ստուգաբանությունը պատկանում է Պետերսոնին [LUÅ, 1916, 90. հմմտ. նաև Pok., 1, 1089, Solta, 1960, 250]:

Աճառյանը [ՀԱԲ, $2^2$, 185] կապում է թիռ արմատի հետ՝ նկատի ունենալով կրկնավոր ձևերը և մեկնելով իբրև «շատ պարծող, ճարտարախոս (լեզու)» [ըստ ՆՀԲ-ի, 1, 823]։

Ընթեռնում-ի զուգահեռները որոշված են ըստ իմաստի մերձավորության՝ խեթ. tar- «ասել, կոչել», լիւվ. tariù, tarti «ասել»։ Հայերենը ցույց է տալիս *ter- նախաձև։ Հուն. τορέω «ծակում եմ. կտրում եմ. հնչում եմ. հստակ հայտարարում եմ» բայը հանգեցվում է *ter- «ծակել» արմատին, թեև իմաստի զարգացումը յուրօրինակ է։

Երեսուն-ի համար սովորաբար արվող *trik'omtə նախաձևը կհանգեցներ *երսուն ձևին, ուստի մենք վերականգնում ենք *trii̯əkomtə նախաձևը։

Արեկ «զորավոր, շատ, առավել, ատոտիկ, գերազանց» բառի համար հմմտ. հ. իռլ. trēn (*tregs-no-) «քաջ, ուժեղ», հ. իսլ. þrek(r) «ուժ, քաջություն» և այլն (*treg- «ուժերը լարել»)։ Պակաս հավանական է հանգեցումը *preg- «պահ, ուժգին» նախաձևին։

Բուգգեն [Bugge, 1889, 13] և Պոկոռնին [Pok., 1, 1095] երեր-ի նախաձևը դնում են *tres-ri-, որ, սակայն, պիտի տար *երեռ (հետագա առնմանությամբ երեր?)։ Ավելի հավանական է երեր-ի հայկական կազմության լինելը՝ *tres->եր-՝ հետագա կրկնությամբ, մանավանդ, որ այն պահպանվել է չկրկնված ձևով բրբռ. երկծալ և երվերալ բայերի մեջ [ՀԱԲ, $2^2$, 48]։

Վայ, վայեմ բառերի մեջ *u̯> վ- համապատասխանությունը (փոխանակ *u̯>գ-ի) բացատրվում է արմատի բնաձայնականությամբ։ Սրանցից վայեմ-ի մերձավոր զուգահեռները որոշված են ըստ բայական ձևերի առկայության՝ լատվ. vajat «վշտանալ, հոլածել», հ. վ. գերմ. weinōn «լալ», թեև առկա են տարբեր կազմություններ։

Գետին բառի համար հմմտ. խեթ. utne (Գյոցե, Պեդերսեն), հուն. οὖδας (Շեֆտելովից) [BB, 29, 27 և 40] զուգահեռները, թեև վերջինիս մեջ (οὖ-ի հնչյունական համապատասխանությունը չի բացատրվում (ō-Fod- ?). հմմտ. նաև հուն. ἔδαφος «գետին» [Frisk, GEW, 2, 442]։ Հ.-ե. նախաձևի վերականգնման նոր փորձ է կատարել Հեմպը [Hamp, 1959a]։

Գիւտ-ի -ւ-ի ծագման հարցը դժվարությունների առիթ է տալիս. այն կարող է լինել հավելական (հմմտ. յատ· և յա-ւ-տ, մատ-չիմ և մաւտ, ապածեմ և արաւտ և այլն), ծագել *-n-ից (հմմտ. *o-ngu̯-> աւծ-անեմ, *angu̯i-> աւձ) [Meillet, $1936^2$, 44] կամ լինել հաջորդող շրթնային տարրի ազդեցության [Պեդերսեն, 1907, 123]։

Գայլ-ի համար հմմտ. գալլ. *u̯ai-lo-s, հ. իռլ. fáel «գայլ»։ Ոմանք այն հանգեցնում են *u̯l̥ku̯os «գայլ» նախաձևին (*u̯l̥ku̯i̯os?), բայց կան հնչյունական դժվարություններ. թերևս կարելի է ենթադրել խառնուրդ (կոնտամինացիա)։

Գեղ-ի ստուգաբանությունը [*u̯el- «տեսնել», որտեղից լատ. voltus, բրետ. guelet «տեսք»] պատկանում է Աճառյանին [ՀԱԲ, $1^2$, 532—533]. Մեյեն [MSL, 8, 290] և Պոկոռնին [Pok., 1, 1137] բխեցնում են *u̯el- «ցանկանալ» արմատից։ Ջոլտան [Solta, 1960, 141—142] հարում է Աճառյանին և իմաստային զարգացման համար բերում տես-ք—տեսօք զուգահեռը։

Գեղմն-ի մերձավոր զուգահեռները որոշված են ըստ ձայնդարձի աստի-

ճանի ընդհանրության՝ լատ. vellus, հ. անգլ. wil- (wil-mod «ճախարակ» բառի մեջ). Զոլտան [Solta, 1960, 142] գերմանականը չի նշում։

Հայերենի միմյանց ածանցյալների հաստատումը հ.-ե. *u̯el- «խաբել?» արմատից լիովին հավաստի չէ (լատվ. wilt, լիտվ. pri-wilti «խաբել», մ. իռլ. fell «խաբեբայություն», հուն. ἐλεφαίρομαι «խաբում եմ, կործանում եմ», ὀλοφώιος «խաբեբայական, նենգ, չարամիտ»)։ Մեյեն [MSL, 9, 150] առաջինն է գող և գաղտ բառերը համեմատել բալթիական ձևերի հետ, Աճառյանը [ՀԱԲ, 1², 506—507, 572—573] որանց ավելացրել է գեղեմ, գաղեմ, գեզա, գողա ձևերը։ Պոկոռնին [Pok., 1, 1140] *u̯el- «խաբել» արմատի տակ հայերեն ձևերը չի բերում։ Հետաքրքրական է նշել, որ հայերենին ամենից ավելի մոտ համարվող բալթիական ձևերը [Solta, 1960, 452—453] բալթիագետները բխեցնում են նաև *u̯el- «ցանկանալ» արմատից [Fraenkel, LEW, 2, 1254—1255]։ Հայերեն բառերի մերձավոր զուգահեռները որոշված են ըստ ձայնդարձի համապատասխան աստիճանի և ատամնային աճականի կամ ածանցի առկայության (հայ. *-d- և բալթ. *-t-)։ Գող-ի համար հմմտ., թերևս, գոթ. wilwan «կողոպտել», wulwa «կողոպուտ» (*u̯el- «պոկել. կողոպտել»)։

Գաղջ-ը դրված է *u̯elk/g- «խոնավ, թաց» արմատի տակ ըստ գերմանական նույնիմաստ զուգահեռների՝ ն. իսլ. valgr, հ. անգլ. wlaec, wlacu, մ. ստ. գերմ. wlec «գոլ, գաղջ», որոնք Աճառյանը [ՀԱԲ, 1², 506 և 571] բերում է որպես հայ. գոլ և լիտվ. vilditi «գոլացնել» բառերի զուգահեռներ. Պոկոռնին [Pok., 1, 1140 և 1145] *u̯el- «գոլ» և *u̯elk/g- «խոնավ, թաց» նախաձևերը գնում է առանձին։ Թերևս *u̯elk/g-ը պետք է դիտել որպես *u̯el-ի աճականով ձև և գաղջ-ը կապել գոլ-ի հետ *-k- կամ *-t- (*-dh-?) աճականով։

Գեր-ի համեմատությունը հուն. ἀείρω «բարձրացնում եմ» բառի հետ պատկանում է Մեյեին [BSL, 79, 9] և ընդունվում է Աճառյանի կողմից [ՀԱԲ, 1², 539—540]։ Հուն. ἀείρω-ն սովորաբար միացնում են (συν-)αείρω «կապում եմ, միացնում եմ» բառի հետ և բխեցնում *u̯er- «կապել, միացնել» արմատից [Pok., 1, 115]. Ֆրիսկը [GEW, 1, 23] սրանք առանձնացնում է և առաջինի ծագումը համարում չպարզված։ Աճառյանը հուն. բառի հետ միասին հիշատակում է նաև *u̯er- «բարձր տեղ» արմատին (հատկապես *-s- աճականով ձևին) պատկանող բառեր (հ. հնդկ. vársman-, հ. սլավ. врьхъ «բարձունք» և այլն), բայց սրանք ընդհանրապես տարբերվում են հուն. բառից։

Երդումն-ի մերձավոր զուգահեռները որոշված են ըստ իմաստի (հմմտ. ou. ord և հ. սլավ. rota «երդում»)։ Դժվարություն է հարուցում ճիշտ նախաձևի վերականգնումը. Հյուբշմանը [AG, 1, 443, IF Anz. 10, 45] և, նրա հետևողությամբ, Աճառյանը [ՀԱԲ, 2², 44] տալիս են *ertu- նախաձևը, որ, սակայն, չի համապատասխանում մյուս ձևերին։ Մեր վերականգնումը ճիշտ է, եթե *u̯r- կապակցության մեջ *u̯-ն ընկնում է (հմմտ. արգառ-ի մասին ասվածը)։

Արգառ «խաղողի որթի կտրած ճյուղ» բառի ստուգաբանությունը Աղայանինն է [1974, 30—31] և հնարավոր է, եթե *u̯r- կապակցությունը իրոք փոխվում է րգ-ի, ինչպես *u̯reig'- կամ *u̯reid-s- > երգիծանք բառում, այլուր *u̯-ն *r-ից առաջ ընկնում է։

Զ-գեստ-ի (գրբռ. զգեստ) մերձավոր զուգահեռներն են (*t-ով) լատ. vestis, գոթ. wasti (*-i̯ā-ով հիմք), թոխ. B wastsi, wästsi «հագուստ, զգեստ» (վերջինս թերևս նորակազմություն է. հմմտ. Pok., 1, 1173): Սակայն հայ. *u-ով հիմքը մնում է անհասկանալի: Զոլտան [Solta, 1960, 248] հայ. զգեստ-ին ամենից մոտ է համարում լատ. vestis-ը:

Գին-ի մերձավոր զուգահեռներից ¦-ով նշանակված են *-ĕ- ձայնավոր ունեցող և իմաստով հայերենին մոտ (լատ. vēnum, հավանաբար նաև հ. հնդկ. vasná «գին», ¦-ով՝ *-o- ձայնավոր ունեցող (հուն. ὦνος «գին») կամ իմաստով հեռու (հ. սլ. вьно «օժիտ») զուգահեռները:

Գիշեր-ի ճիշտ նախաձևի վերականգնումը դժվարություն է հարուցում. *-sp-ով և *-k-ով տարբերակներից (*u̯esperos և *u̯ekeros) հայերենը մոտ է համարվում երկրորդին (հմմտ. լիտվ. vàkaras և ռուս. вечер «երեկո»), բայց *-k-ի փոխանցումը -շ-ի միջձայնավորային դիրքում այլ օրինակներ չունի, մինչդեռ հնչյունաբանորեն հավանական է (հմմտ. *ēghi-> իժ, որտեղ *-gh->-ժ): Միաժամանակ -ի-ի համար ենթադրելի է *-ei->-է->-ի: Այս նկատառումով հնարավոր է ենթադրել նաև *u̯eiskheros նախաձև. ճիշտ չէ *u̯eqhero-ն [Solta, 1960, 297], որ պիտի տար *գեխեր: Պետերսոնը [Petersson, 1921, 231 և հջ.] համեմատում է մի այլ արմատի՝ *u̯eik'- «խոնավ», որ լիովին անհավանական է:

Գարուն բառի համար ելքն են *u̯esr- նախաձևը [ՀԱԲ, 1², 524], բայց այն չէր կարող տալ գարուն, այլ գե(ն)ար-ուն> *գերուն: Թույլ տալ ձայնավորների ներդաշնակություն՝ *գեհար> *գահար անցում, անհավանական է: Այլ պատճառով էլ մենք ենթադրում ենք թուլացած ձայնավորով (Schwa secundum) նախաձև: Հմմտ. նաև արիւն բառի մասին ասվածը:

Աղուես-ի համար որպես մերձավոր զուգահեռ նշանակված է հունարեն ἀλώπηξ-ը, որ ունի ἀ- նախահավելվածը: Թերևս այս արմատն առկա է նաև սլավոնականում (հմմտ. ռուս. лиса «աղվես», որի հնչյունական զարգացումը, սակայն, լիովին պարզ չէ):

Երգիծանեմ-ի ստուգաբանությունը (հ. անգլ. wrītan «փորել, քերծել», հ. սաքս. wrītan «պատռել, վիրավորել, քերծել, գրել» և այլն) պատկանում է Ֆրիսկին [Frisk, 1944, 28 և հջ.], որ հայ. *-s-ն սկզբնական տարրի կազմիչ է համարում: Մեյեն [MSL, 10, 281] բխեցնում է *u̯rēg'-ից [հմմտ. ՀԱԲ. 2, 43. Pok., 1, 1181. Solta, 1960, 245—246]: Սակայն *u̯rēg'-ը կըտար *երգծանեմ, եթե, իհարկե, *u̯r-ն ընդհանրապես տալիս է երգ- և ոչ եր- (*u̯-ի անկում]:

*Ինչպես որ հնչյունական և քերականական զուգաբանությունների մեջ առանձնացվեցին համեմատաբար հավաստիներն ու կարևորները (այդ թվում՝ հատկապես արխաիկ բնույթ ունեցողները և ընդհանուր նորագոյացությունները), այնպես էլ բառային զուգաբանությունների մեջ հարկավոր է տարբերել այն միավորները, որոնք կազմում են հիմնական բառաֆոնդը և համեմատաբար ավելի կայուն են: Սրա համար մենք հիմք ենք ընդունել Սվոդեշի 100 բառանոց ցուցակը: Ստորև բերում ենք համապատասխան աղյուսակը՝ փոխառյալ և անհայտ ծագումով բառերը առնելով փակագծերի մեջ: Այստեղ միավորների համապատասխանությունը գնահատված է այլ սկզբունքներով, քան այդ արված է բառային ընդհանուր աղյուսակի դեպքում: Վերջինիս մեջ գնահատման հիմք է ընդունված ծագման ընդհանրությունը, ընդ որում իմաստա-*

յին նշանակալից շեղումների և տարածքային (հնդեվրոպական-բարբառային) տարբերությունների առկայության դեպքում հայերենի իմաստային հատուկ մերձավորները գնահատված են այնպես, ինչպես կառուցվածքային հատկանիշները (ձայնդարձի միատեսակ աստիճանի, միևնույն աճականի և ածանցի առկայությունը). 100 բառի հիման վրա կազմված աղյուսակում գնահատման հիմք է ընդունված իմաստային մերձավորությունը, մանավանդ որ՝ 1) Սվադեշի ցուցակը կազմված է հինգ իմաստային հիմքի վրա, և 2) ծագումնային ընդհանրության առկայությունը ինքնին պայման է եղել գնահատման համար (ինչպես նշվեց, ոչ բնիկ հնդեվրոպական բառերը չեն գնահատվել)։

| | Հայերեն | Հ | Ի | Թ | Խ | Ս | Բ | Փ | Թր | Հն | Ա | Իլ | Վ | Լտ | Կ | Գ |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1. | ամեն-այն | + | + | ± | | − | − | | | + | − | | | − | − | ± |
| 2. | աճիւն | − | − | | | − | − | | | + | − | | | − | − | + |
| 3. | որով-այն | − | − | | | − | − | | | | − | | | ± | − | − |
| 4. | (կեղեւ) | − | − | | | − | − | | | − | − | | | − | − | − |
| 5. | մեծ | + | + | + | + | − | − | | | + | + | | | − | − | + |
| 6. | հաւ | + | + | | | − | − | | | + | ± | | | + | ± | − |
| 7. | խածանեմ | + | | | | ± | ± | | | | − | | | − | − | − |
| 8. | (սեաւ) | − | − | | | − | − | | | − | − | | | − | − | − |
| 9. | արիւն | + | | + | + | − | − | | | + | − | | | + | − | − |
| 10. | ոսկր | + | + | | | ? | − | | | | + | | | + | + | − |
| 11. | լանջք | | | | | + | − | | | | − | | | | − | ± |
| 12. | այրեմ | − | − | | | ± | | | | | ±? | | | ±? | ±? | − |
| 13. | (մագիլ) | − | | | | | − | | | | − | | | − | − | |
| 14. | ամպ | + | + | | | | + | | | | − | | | − | + | |
| 15. | սառն | | − | | | | + | | | − | − | | | − | | + |
| 16. | գամ | − | | | +? | − | − | | | − | − | | | + | | + |
| 17. | մեռանիմ | | − | | | | + | | | + | − | | | + | − | − |
| 18. | շուն | + | | + | | ? | + | | | + | − | | | ? | + | + |
| 19. | ըմպեմ | + | | | | + | + | | | | + | | | + | + | − |
| 20. | չոր | − | | | | − | − | | | | − | | | + | − | ± |
| 21. | ունկն | − | + | | | | + | | | | + | | | + | + | + |
| 22. | երկիր | | | | | | − | | | + | | | | − | + | + |
| 23. | ուտեմ | + | | | + | + | − | | | − | | | | + | + | + |
| 24. | ձու | | + | | | + | − | | | + | − | | | | + | + |
| 25. | ակն | | + | + | | + | + | | | | | | | | ± ? | + |
| 26. | գէր | | | | | +? | | | | − | | | | | − | − |
| 27. | (փետուր) | − | | | | − | | | | | | | | | − | − |
| 28. | հուր | − | | + | + | + | + | | | | − | | | | − | + |
| 29. | ձուկն | | − | | | − | | | | | − | | | − | | − ? |
| 30. | թռչիմ | + | − | | + | | − | | | + | − | | | + | + | + |
| 31. | ոտն | + | + | + | | + | + | | | + | | | | + | + | + |
| 32. | լի | | + | | | | + | | | + | | | | | + | + |
| 33. | տամ | + | + | +? | | + | + | | | + | + | +* | + | + | − | − |
| 34. | բարի | | | | | − | − | | | | | | | | − | − |
| 35. | (կանաչ) | − | | | | − | − | | | − | − | | | − | | − |
| 36. | (մազ) | − | | | | − | | | | − | − | | | − | − | − |
| 37. | ձեռն | − | − | | + | − | − | | | + | − | | | ±? | | − |
| 38. | գլուխ | − | − | | | + | + | | | − | − | | | − | | − |
| 39. | լսեմ | + | + | + | | | + | | | + | + | | | + | | + |
| 40. | սիրտ | − | − | | + | | + | | | + | − | | | + | + | + |
| 41. | եղջիւր | | + | + | + | + | | | | + | − | | + | + | | + |
| 42. | ես | | − | | − | − | | | | − | − | | | − | − | − |
| 43. | (սպանանեմ) | | − | | | − | − | | | − | − | | | − | | − |
| 44. | ծունր, -կ(ն) | + | + | + | + | − | − | | | + | | + | | + | | + |
| 45. | գիտեմ | | + | | | + | + | | | + | | | | ± | + | + |
| 46. | (տերև) | − | − | | | − | − | | | − | − | | | − | − | − |
| 47. | (ըն-կողմանիմ) | − | − | | | − | − | | | − | | | | − | | − |
| 48. | լեարդ | | + | | | ± | + | | | + | | | | + | ± | − |
| 49. | երկայն (-ար) | + | ± | | ± | − | | | | + | − | | | ± | − | − |
| 50. | ո(ր)ջիլ | + | − | | | − | | | | − | + | | | − | − | − |

* Մեսապերենում։

| | Հայերեն | Հ | Ի | Թ | Խ | Ս | Բ | Փ | Թր | Չն | Ա | Իլ | Վ | Իտ | Ն | Գ |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 51. | մարդ | + | + | | | — | — | | | + | — | | | | — | — |
| 52. | (բազում) | — | — | | | — | | | | | | | | — | | — |
| 53. | մեծ | + | — | + | | + | + | | | + | + | | | + | + | |
| 54. | լուսին | — | | | | + | — | | | — | — | | | + | — | — |
| 55. | լեառն | | | | | — | | | | + | | | | + | + | + |
| 56. | բերան | | — | | | + | + | | | + | — | | | — | + | — |
| 57. | անուն | — | | | | — | + | | | + | + | | | — | — | |
| 58. | (պարանոց) | | — | | | — | — | | | — | — | | | | | — |
| 59. | նոր | + | + | + | + | + | + | | | + | | | | — | — | + |
| 60. | գիշեր | — | — | | | + | + | | | + | | | | | + | — |
| 61. | (քիթ) | — | — | | | | | | | — | — | | | — | — | |
| 62. | ու-չ | — | — | — | | | | | | — | — | | | | — | — |
| 63. | մի | + | + | + | | — | — | | | + | — | | | + | + | + |
| 64. | անձն | — | — | | | — | — | | | — | — | | | — | — | + |
| 65. | տեղ | — | — | | | — | — | | | — | — | | | — | + | — |
| 66. | (կարմիր) | — | — | | | — | — | | | — | — | | | — | — | — |
| 67. | ուղի | — | — | | | + | — | | | — | — | | | — | — | — |
| 68. | արմատ | — | — | | | — | — | | | — | — | | | — | — | — |
| 69. | բոլորակ | — | — | | | — | — | | | — | — | | | — | — | + |
| 70. | աւար | | — | | | — | — | | | — | — | | | + | — | — |
| 71. | ասեմ | —? | —? | | | — | — | | | + | — | | | + | — | — |
| 72. | տեսանեմ | — | + | | | — | | | | + | + | | | +? | + | + |
| 73. | սերմն | — | — | | | — | + | | | + | + | | | + | + | — |
| 74. | նստիմ | + | + | | | + | + | | | + | — | | | | — | + |
| 75. | (մորթ) | — | — | | | — | — | | | — | — | | | — | — | — |
| 76. | քնեմ (քուն) | | + | | | | + | | | + | | | | + | + | + |
| 77. | փոքր | | — | | | — | — | | | +? | — | | | | | + |
| 78. | մուխ | — | — | | | | + | | | + | | | | — | + | + |
| 79. | (կանգնեմ) | — | | | | | — | | | — | — | | | | | |
| 80. | աստղ | + | + | | | — | — | | | + | — | | | | + | — |
| 81. | քար | — | — | | | — | | | | — | — | | | — | + | + |
| 82. | արեւ | + | | | | — | — | | | | — | | | — | — | — |
| 83. | լողանամ | — | — | | | | — | | | + | — | | | + | + | + |
| 84. | պոչ | — | — | | | — | — | | | — | — | | | — | — | — |
| 85. | նա | — | | | + | + | + | | | + | — | | | — | — | + |
| 86. | դա | — | — | + | | + | + | + | | + | — | | | | + | + |
| 87. | դու | + | + | + | | + | + | | | + | + | | | | + | + |
| 88. | լեզու | + | + | + | | + | — | | | — | — | | | + | + | + |
| 89. | ատամն | | + | | | + | | + | | | — | + | | + | + | + |
| 90. | ծառ | — | — | | | | | | | + | — | | | + | — | + |
| 91. | երկու | + | + | + | | | | | | + | | | | + | + | + |
| 92. | ե թամ | + | + | | + | — | | | | + | | | | + | + | + |
| 93. | ջերմ | + | — | + | | + | + | + | + | | | | | — | + | + |
| 94. | ջուր | + | — | + | | — | — | | + | — | | | | | — | + |
| 95. | մեք | — | — | | | | + | | | | | | | — | | — |
| 96. | դ-ի-նչ | | — | | + | + | — | | | + | — | | | + | + | + |
| 97. | (սպիտակ) | — | — | | | — | — | | | | | | | | | — |
| 98. | ո(վ) | + | + | +? | | + | + | + | + | + | + | | | + | + | + |
| 99. | կին | + | + | + | | + | + | ? | | | + | + | | — | + | + |
| 100. | դեղին | — | — | | | + | — | | | — | | | | | — | — |

*Հիմնական բառաֆոնդին պատկանող բառերի զուգաբանությունների աղյուսակի առանձին կետերի վերաբերյալ հարկավոր է նկատի ունենալ հետևյալը.*

15. Սառն *(«սառը, ցուրտ. սառույց») և* ցուրտ *համանիշներից ընտրված է առաջինը որպես ավելի հավաստի ստուգաբանություն ունեցող. վերջինս Պոկոռնին* [Pok., 1, 597] *բերում է* *k'eu̯ero- *«հյուսիս, հյուսիսային քամի» նախաձևի տակ՝ հենվելով Շեֆտելովիցի համեմատության վրա, բայց սա անհավաստի է համարում Աճառյանը [ՀԱԲ, 4², 463—464]։ Թերևս ավելի հավանական է* ցուրտ-*ի հանդեցումը նույն արմատին, ինչ* սառն-*ինը՝ շարժական* *s-*ով* [*sk'ōr-d- > ցուրտ?]։

20. Չոր և ցամաք համանիշներից ընտրված է առաջինը որպես ավելի սովորական. նշենք, որ ցամաք-ը Աճառյանը [ՀԱԲ, 4², 448] համարում է ասորական ծագում ունեցող բառ։

34. Բարի և լավ համանիշներից բերված է առաջինը, մանավանդ որ լավ-ի բալթիական և հունական զուգահեռների միջև ընտրություն կատարելը դժվար է։

45. Ճանաչել և գիտել համանիշներից ընտրված է երկրորդը, մանավանդ որ առաջինի հ.-ե. բուն ձևի վերականգնումը դժվարությունների հետ է կապված։

65. Անձրև և տեղ համանիշներից ընտրված է երկրորդը, թեև վերջինիս իմաստն ավելի նեղ է («հորդ անձրև»). առաջինի ծագումն անհայտ է, երկրորդի հնդեվրոպական ծագումը՝ հավանական (Աճառյանի կարծիքը տեղ-ի ասորական ծագման մասին հավաստի չէ. հմմտ. ՀԱԲ, 4², 392)։

68. Արմատ բառի համար հատուկ զուգահեռներ չեն նշվել, որովհետև հ.-ե. *er «շարժ(վ)ել, բարձրացնել» արմատից ծագելու դեպքում [հմմտ. ՀԱԲ, 1², 326—327] այն չունի իմաստային բացահայտ համարժեք (մնում է իր իմաստով առանձնակի), իսկ *u̯(e)rād- «ճյուղ, արմատ» նախաձևին հատկացնելը հնչյունական դժվարություններ է հարուցում։

75. Մորթ-ի ծագումն անհայտ է. նրա համանիշները՝ մաշկ, կաշի, սեմական ծագում ունեն։

78. Մուխ-ի ծուխ համանիշի ծագումն անհայտ է (խեթակա՞ն)։ Գերադասություն է տրվել առաջինին։

79. Թեև յառնեմ-ը հնդեվրոպական ծագում ունի, բայց իր բազմիմաստությամբ զգալիորեն հեռանում է անգլ. stand բառից, ուստի ընտրված է կանգնեմ-ը որպես վերջինիս բացահայտ համարժեք։

83. Լոգանամ և լողանամ համանիշներից ընտրված է առաջինը որպես ավելի հավաստի ստուգաբանություն և իմաստային մերձավոր զուգահեռներ ունեցող։

84. Պոչ, ագի, ձետ համանիշներից ընտրված է առաջինը՝ որպես ամենից ավելի ընդհանուր իմաստ ունեցող, թեև նրա հնդեվրոպական ծագումը չի հաստատված։ Ձետ-ը բնիկ հնդեվրոպական բառ է, բայց իմաստային բացարձակ զուգահեռներ չունի։

Բառային զուգաբանությունների ուսումնասիրությունը բերում է հետևյալ եզրակացություններին[4].

1. զուգաբանությունների ընդհանուր աղյուսակում համապատասխան գըրանցում ունեցող 1400 միավորի հիման վրա, ըստ հայերենի հետ ունեցած մերձավորության հնդեվրոպական մյուս լեզվախմբերը դասավորվում են հետևյալ հերթականությամբ (բերվող թվերի մեջ ներառված են հարցականով ձևերը և բացառված փակագծերում բերված երկրորդական զուգահեռները).

| | |
|---|---|
| 1. Հունական՝ 878 | 5. Բալթիական՝ 625,5 |
| 2. Գերմանական՝ 783,5 | 6. Սլավոնական՝ 579,5 |
| 3. Հնդկական՝ 661,5 | 7. Կելտական՝ 542,5 |
| 4. Իտալյան՝ 636 | 8. Իրանական՝ 456 |

[4] ԱՄՆ-ի Ֆիլադելֆիա քաղաքում տեղի ունեցած հայագիտական միջազգային կոնֆերենցիայում կարդացած մեր զեկուցման մեջ բերված տվյալները [FICAL, 1980] այստեղ ճշտված են, ուստի և առկա են գնահատման մասնակի տարբերություններ։

9. Թոխարական՝ 256,5
10. Ալբանական՝ 247,5
11. Խեթական՝ 209
12. Փռյուգական՝ 155,5
13. Իլլիրական՝ 125,5
14. Թրակյան՝ 100,5
15. Վենետական՝ 24,5

2. Բառային կարևոր զուգաբանություններում ընդգրկված 100 միավորի հիման վրա՝ ըստ հայերենի հետ ունեցած մերձավորության աստիճանի լեզվախմբերը դասավորվում են նախորդի համեմատությամբ միայն մասնակի տարբերություններով (մասնավորապես իտալյանը տեղաշարժ է ունենում 4-րդից 2-րդ, իրանականը՝ 8-րդից 6-րդ, ալբանականը՝ 10-րդից 9-րդ տեղը).

1. Հունական՝ 56
2. Իտալյան՝ 44
3. Գերմանական՝ 42,5
4. Հնդկական՝ 39
5. Բալթիական՝ 37,5
6. Իրանական՝ 37
7. Սլավոնական՝ 35
8. Կելտական՝ 33,5
9. Ալբանական՝ 19,5
10. Թոխարական՝ 23
11. Խեթա-լուվական՝ 16,5
12. Իլիրական՝ 5
13. Փռյուգական՝ 4
14—15. Թրակյան՝ 2
14—15. Վենետական՝ 9

3. Ի տարբերություն հնչյունական և քերականական զուգաբանությունների՝ բառային զուգաբանությունների դեպքում կենդանի ներկայացուցիչներ ունեցող և միայն մեռած լեզուներով ներկայացված խմբերը դասավորվում են գրեթե որոշակի սահմանազծով, որ բացատրվում է նշված տվյալների բնույթով. կենդանի ներկայացուցիչներ ունեցող լեզվախմբերը գրավում են 1—8-րդ և 10-րդ, միայն մեռած լեզուներով ներկայացվածները՝ 9-րդ և 11—16-րդ տեղերը։

4. Բնականաբար, բառային ընդհանրությունների քննության մեր և Գ. Զոլտայի տվյալները բավականաչափ մոտ են. առանձնապես մոտ են ընդհանուր զուգաբանությունների հիման վրա մեր ստացած տվյալները Գ. Զոլտայի, այսպես կոչված, բացառյալ զուգաբանությունների հիման վրա ստացած տվյալներին։

Բոլոր կարգի տվյալների համադրությամբ կարելի է հանգել հետևյալ ընդհանուր եզրակացությունների.

1. Կենդանի ներկայացուցիչներ ունեցող լեզվախմբերից բոլոր տվյալներով հայերենին ամենից ավելի մոտ է հունականը, ամենից ավելի հեռու՝ ալբանականը. արևմտյան խմբի լեզուները, հեռու լինելով հայերենից կառուցվածքային տեսակետից, բառապաշարով նրան մեծ չափով մոտենում են։

2. Միայն մեռած լեզուներով ներկայացված խմբերից համեմատաբար կայուն են թոխարականի, խեթա-լուվականի և վենետականի տվյալները. առաջին երկուսը բավականաչափ մոտ են հայերենին՝ հնչյունապես զիջելով փռյուգերենին և թրակերենին. վենետականը գրավում է հայերենի նկատմամբ ամենահեռավոր դիրքը։

## 5. ԲԱՌԻՄԱՍՏԱՅԻՆ (ԹԵՄԱՏԻԿ) ԽՄԲԵՐ

Ինչպես նշվել է, Կ. Դ. Բաքի հնդեվրոպական համանիշների բառարանում հայերենին գրեթե տեղ չի տրվել, իսկ Հ. Աճառյանի «Հայոց լեզվի պատմության» մեջ կատարված խմբավորումը հենվում է լոկ հայերեն բառերի առկա

իմաստների վրա։ Հ. Աճառյանը չի քննարկում հնդեվրոպական բառիմաստային խմբերի հետ հայերենի բառիմաստների ունեցած փոխհարաբերությունը, կրած իմաստային անցումները, հնդեվրոպական մյուս լեզուների համապատասխան խմբերի նկատմամբ հայերենի իմաստների բաշխումը։ Հայերենի բառային զուգաբանությունների՝ վերևում բերված ցանկում զգալի չափով հաշվի են առնված նաև իմաստային առնչությունները, բայց հատուկ ուշադրություն չի դարձված հնդեվրոպական բառիմաստային խմբերի և հայերենի բառերի՝ դրանց մեջ գրաված դիրքի հարցերին։ Մինչդեռ սա կարևոր է ոչ միայն հայերենի բարբառային դիրքը որոշելու, այլև հայերենի նախնիների մշակութային վիճակը և մասամբ մակարդակն ու առանձնահատկությունները պարզելու տեսակետից։

Նախորդ շարադրանքի ընթացքում մենք առիթ ունեցանք խոսելու Բաքի բառարանում առանձնացված խմբերի մասին և բերեցինք դրանց պատկանող որոշ բառիմաստներ։ Այստեղ մեր ուշադրության կենտրոնում կլինի հայերենի իմաստային առնչությունների հարցը։

Ըստ Բաքի առանձնացրած 22 թեմատիկ խմբերի բառիմաստները դասավորված են գլխավոր և ավելի մանր բաժանումներով, ընդ որում բացի հիմնական թվային նշանակում ունեցող իմաստային միավորներից երբեմն միևնույն թվահամարի տակ տրվում են հոմանիշներ. սովորական (բուն) հոմանիշները ստորև բերվող խմբերում առանձնացվում են ստորակետերով. Բաքի մոտ տրվող և կետ-ստորակետով առանձնացվողները՝ միջակետերով։ Պետք է նշել, որ թվահամարներով և դրանց թվահամարների տարբերվող միավորների առանձնացման հիմունքները ոչ բոլոր դեպքերում են որոշակի։ Միաժամանակ, Բաքը չունի իմաստների դասակարգման ընդհանրական չափանիշներ, հաճախ առաջնորդվում է կամ անգլերենի լեզվազգացողությամբ, կամ հունարենի և հին հնդկերենի տվյալներով, ուստի և այս կամ այն իմաստի վերագրումը այս կամ այն խմբին և ենթախմբին որոշ դեպքերում պայմանական է։ Իհարկե, մենք հնարավորություն ունեինք կատարել իմաստային հստակ սահմանազատում՝ հենվելով մեր համընդհանուր լեզվաբանական կաղապարի կատեգորիաների վրա. սակայն այս դեպքում հնարավոր չէր լինի հայերենի տվյալները անմիջական համեմատության մեջ դնել ցեղակից լեզուների համապատասխան տվյալների հետ։ Այս նպատակով էլ, հրաժարվելով նման հետևողական դասակարգումից, մենք աշխատել ենք ըստ հնարավորին ճշգրտորեն հետևել Բաքի դասակարգմանը։ Սրա հետևանքը եղել է այն, որ միևնույն բառը երբեմն ընկել է տարբեր թեմատիկ խմբերի և ենթախմբերի մեջ՝ ոչ միայն բառի բազմիմաստության, այլև իմաստային ոչ հստակ խմբավորման հետևանքով։ Նման դեպքերում բառը մեկ անգամ (ըստ հիմնական իմաստի) բերվում է առանց փակագծերի, իսկ երկրորդ և երրորդ անգամ բերվելիս (այդ թվում բարդ և ածանցավոր բառերի կազմում) առնվում է միջակ փակագծերի մեջ։ Միջակ փակագծերի մեջ են առնվում նաև նորակազմ ձևերը։ Բացի վերևում նշվածից՝ ստորև բերվող ցանկը կազմելիս մենք առաջնորդվել ենք հետևյալ սկզբունքներով.

1) Ամեն մի բառահոդվածում բառերը դասավորվում են ըստ իմաստային մերձավորության աստիճանի՝ սովորաբար Բաքի տվյալներին համապատասխան. իմաստային գրեթե համարժեք տարբերակները բերվում են այբբենական կարգով։

*2) Հայերենի հին և միջին շրջանների պատկանող (գրաբար և միջին հայերեն) բառերը տրվում են հին, աշխարհաբար և բարբառային բառերը՝ նոր ուղղագրությամբ. վերջիններս բերվում են առանց խիստ տառադարձության և ունեն բ. նշումը։*

*3) Բառերն ըստ հնարավորին բերվում են արմատական ձևով, այսինքն՝ արմատական բառերին առավելություն է տրվում ածանցավոր և բարդ բառերի նկատմամբ։*

*4) Ածանցավոր, բարդ և հոդնաձև բառերի բաղադրիչները ըստ անհրաժեշտության առանձնացվում են գծիկով. գծիկ է դրվում նաև առանձին գործածված բաղադրամասերի կողքին։*

*5) Սովորական (կլոր) փակագծերի մեջ տրվում են լրացուցիչ բառաձևերը, բառատարբերակները և բառամասերը, ընդ որում առաջին երկուսը՝ բացատով, երրորդը՝ առանց բացատի։*

*6) Նոր գրական լեզվում չգործածվող, դժվար հասկանալի և համանուն բառերը, այլև բազմիմաստ բառերի տարբեր առումները համառոտակի բացատրվում են, ընդ որում բացատրությունները առնվում են չակերտների մեջ։*

*7) Ենթադրական բառաձևերը և բառիմաստները օժտվում են աստղանիշով (*)։*

*8) Անգլերենի տարբեր խոսքի մասերի դիմաց ընդհանուր առմամբ տրվում են հայերեն համապատասխան խոսքիմասային ձևերը, թեև դրանք կարող են երկրորդային (ածանցված) լինել. այս դեպքում փակագծերում տրվում են նախնական ձևերը (հնչյունափոխված ձևերի դեպքում միջակ փակագծերում բերվում են չհնչյունափոխված ձևերը)։*

*9) Բաքի բառարանի համապատասխան թվահամարների տակ բերված իմաստների դիմաց հայերենի հնդեվրոպական ծագման բառերի իմաստային համարժեքների բացակայության դեպքում թվահամարը բերվում է՝ օժտվելով գծով (որպես բացակայության նշան)։ Գծեր են դրվում նաև Բաքի կողմից ներմուծված նոր պարագրաֆների դեպքում (յուղկի, պատառաքաղ, երկուշաբթի, երեքշաբթի և այլն), որպեսզի չներմուծվեն հնդեվրոպացիների մշակույթին անհարիր գաղափարներ։*

*10) Բաքի բառարանում տեղ չգտած իմաստային տարբերակները տրվում են ամենից ավելի մոտ իմաստների կամ տվյալ ենթախմբի ամենավերջին իմաստի թվահամարների տակ՝ 1.111, 1.112, 1.113 և այլն ձևով։ Կասկածելի ստուգաբանությամբ բառերն օժտված են հարցականով։*

*11) Բաքի բառարանում տեղ չգտած դերանվանական և այլ սպասարկու բառերն ու մասնիկները բերվում են մեր կողմից առանձնացված լրացուցիչ (23-րդ թեմատիկ) խմբի մեջ։*

## 1. Ֆիզիկական աշխարհ

*1.1—. 1.11 նյութ.*

*1.21 երկիր (?). 1.212 հող, գետին. 1.2121 բունձ «հողակոշտ». 1.213 փոշի (?). 1.214 աղտ [աղտիւր (եղտիւր) «ճահիճ, ջրարբի մարգագետին»], գայռ «ցեխ, տիղմ», գոռ «ցեղ, կայռ», մաւր «ճահիճ, ցեխ, տիղմ», միծ «ցեխ, հոտած տիղմ», տիղմ (?), բ. տիլ «տիղմ, ցեխ» (?), բ. քոռ «ցեխ».*

1.215 տակ. 1.22 լեառն (?). սար. բլուր. Թումբ (?). 1.23—, 1.24—, 1.125 —.1.26 ցամաք (?). 1.27 եզր.

1.31 ջուր. 1.32—. 1.33 լիճ, լիկ, «լիճ», ավազան». 1.34 ղուզ «(ծովա)ծոց, փոս». 1.35 ալի-ք. 1.351 փրփուր (?). 1.36 գետ. հեղեղ, ողող «հեղեղ», բ. լավ «հեղեղ». առու, կատառն «ջրի նեղ առու» (?). 1.361 յորդ «առատահոս», յորձ-անք. ձոր (?). հուն «գետի ծանծաղ տեղ՝ անցնելու համար». սառ-ցանեմ (սառցանեմ), հալսեմ (հասսեմ?) «սառցել» (?). 1.37 աղբիւր. հոր (?).

1.41 անտառ (?). 1.42 ծառ (?). 1.421 Թուփ (?). 1.43 առաղձ, փայտ. 1.431 շերտ «փայտի երկարավուն կտոր», ցուպ «գավազան», բ. մառ (մեռ) «փայտի շյուղ, որ մարմինն է մտնում», բ. ցլեպ (ցլեփ) «փայտի շյուղ (կտոր)». մոյթ «նեցուկ, հենացից». 1.44 քար, դիլ (գիղ. գլ-որ, գլ-ան) «քար». պալ (պաղ, պղպղաքար) «քար, քարաժայռ», բ. քերծ «մեծ ժայռ», քուրչ «քերծ, ժայռ». 1.441 խութ «ծովաժայռ. (քար)այր, (քար)-անձաւ (?). խոշընդոտ». բ. լափու(կ) «տափակ քար».

1.51 երկին-ք (?). 1.52 արեւ, արեգ(ակն). 1.53 լուսին. 1.54. աստղ. 1.55 կայծ-ակն (?). 1.56 որոտ (?). 1.57 շանդ (շանթ) (?).

1.61 լոյս. 1.611 շող, նշոյլ. 1.62 աղջ(-աղջ,-ամուղջ) «խավար», աղտ(ամուղտ) «խավար», մայր «խավար», մռ-այլ «մութ, խավար. մթություն». 1.63 շուք «ստվեր» (?).

1.71 աւդ. 1.72 հողմ (?). ամպրոպ «փոթորիկ», մրուր (մրրիկ). բուք «ձյան փոթորիկ». 1.73 ամպ.բ.մկլկիլ (*մգլկիլ?) «ամպել» (?)?. 1.74. մէգ, բալ «մեգ, մառախուղ», մառախուղ (?), մառն «մառախուղ, մշուշ» (?), բ. մռ-աժ «մառախուղ» (?). 1.75—.1.75 տեղ «առատ անձրև», Թան, [բ. Թաթավ] «տեղատարափ անձրև». շաղ «ցող, խոնավություն» (?). 1.676 ձիւն. 1.77 սառն (սառոյց, սառնամանիք) «սառույց» (նաև «սառ, ցուրտ»). բ. սլուլ «սառնամանիք» (?), բ. սղին «սառցաշերտ» (?), բ. սղոն «սառցակտոր». լկիմ «սկսել հալչել», բ. հալհալ «սառցահալ». 1.771 կարկուտ. 1.78 [եղանակ].

1.81 հուր, հուն- (հն-ոց) «կրակ», կր-ակ (?., 1.811 բ. անթայր «կայծ» (?), [կայծ (?)]. բ. անձող, (ածուխ?). 1.82 բոց. 1.83 մուխ, բ. մուլ «ծուխ» (մլալ, մլմլալ). 1.83 մուր, մուրճ «մուր», մեղծ «մուր». 1.84 աճիւն «մոխիր» (?). անթեղ «տաք մոխիր» (?). 1.841 [մայր (>բ. մարել, մարմրել)]. 1.85 այրեմ, խարեմ «այրել, դաղել». խանձեմ (?). 1.86 լուցանեմ (լոյց-). արծարծեմ, բ. բերբել «բորբոքել». բորբ-(ոք), բարկ.

## 2. Մարդկություն՝ սեռ, տարիք, ընտանեկան հարաբերություն

2.1 մարդ, որեար (հգն.) «մարդիկ». անձն.

2.21 այր (սեռ. առն). 2.22 կին. 2.23 [այր, արու, արական]. 2.24. [կին, կանացի]. 2.242 սեռ. 2.25 մանչ (?). 2.26 աղիջ (աղջ-իկ). 2.27 մատաղ (մատղ-աշ). 2.28 [դիեցիկ, մանկիկ].

2.31 [այր], ամուսին. 2.32 [կին, ամուսին]. 2.311/321 ամուրի (?). 2.33 [ամուսնանամ]. 2.34 [ամուսնություն, հարսանիք]. 2.35 հայր. բ. ափու (?), բ. ապի, բ. դադո (կոչ.). 2.36. մայր. բ. տատա (?), բ. ադե (?), բ. մա (մնկ.), բ. մամ (նաև «տատ»), նան. 2.37 ծնաւղ.

2.41 ուստր. 2.42 դուստր. 2.43 որդի. 2.44 եղբայր. 2.45 քոյր, բ. դադո (?). 2.46 հաւ «պապ». 2.47 հան(ի) «տատ», բ. ադո «ծեր կին, պառավ» (?),

[բ. մամ]. 2.48 թոռն. 2.49 [թոռն(-իայ, -եայ)].2.51 ա) [հաւրեղբայր]. բ) քեռի (?), [մաւրեղբայր]. 2.52 ա) [հաւրաքոյր]. բ) [մաւրաքոյր]. 2.53 ա) [եղբորորդի]. բ) [քեռորդի]. 2.54 ա) [դուստր եղբաւր(ն)]. բ) [դուստր քեռ(ն)]. 2.55 [հաւրեղբաւրորդի, դուստր հաւրեղբաւր(ն). որդի հաւր(ա)քեռ(ն), դուստր հաւր(ա)քեռ(ն)].

2.56 [(նախա.)հարք]. 2.57 սեր-ք (սերունդ-ք).

2.61 ա) [սկեսր-այր]. բ) աներ (?). 2.62 ա) սկեսուր. բ) —. 2.63 հոր «փե-սայ» (?). 2.64 հարսն, նու. 2. 65 տայգր.... 2.66 ա) տալ. բ) քենի. գ) ներ «տեգոր կին».

2.71 յաւրայ (հաւրու). 2.72 մաւրու. 2.721 ախտան «դայակ»(?). 2.73 ուրջու (?). 2.73 սան. 2.74 [ուրջու(?)]. 2.75 որբ. 2.76 [այրի(?)].

2.81 [ազգ(-ական)]. 2.82 [ըն-տանիք].

## 3. Կենդանիներ

3.11 [կենդանի]. 3.12 որձ. 3.13—. 3.14 [մալեմ]. 3.141 ստերդ, ստերջ. 3.15 տուար, անդի. 3.15 հաւրան, հաւտ (?). 3.16 արածեմ, 3.17 արաւտ (?). 3.18 հովիւ, [անդէ-որդ, տուարած]. 3.19 գոմ (?).

3.20 [տուար, անդեայք]. 3.21 ցուլ. 3.22 եզն. 3.23 կով. բ. բորեկ «թուխ կով», 3.24 որթ. մոզի. երինջ, ընջուղ «երինջ» 3.25 [*հովի «ոչխար» հո-վի-ւ բառում], աւդի «ոչխար» (?), 3.26—. 3.261 առն «արու վայրի ոչ-խար». 3.27—. 3.28 մաքի. 3.29 դառն, որոջ.

3.31—. 3.32—. 3.33—. 3.34—. 3.35—. 3.36 այծ. 3.37 քաղ «արու այծ, նո-խազ» (?). 3.38 ուլ, բուծ «կաթնակեր ուլ (կամ գառ)». ամիկ «մեկ տա-րեկան արու ուլ».

3.41 ձի. 3.42—. 3.43—. 3.44—. 3.45—. 3.46 էշ (?). 3.47—.

3.51 հաւ. 3.511 թառ. 3.52 աքաղաղ (բ. աքլոր). 3.54 [հաւ], մարի «էգ թռչուն, հավ». 3.55 ձագ «կենդանու (հատկապես հավի) ձագ». 3.551 բ. պիպի (<*բիբի?) «հնդկահավի ձագ» (?). 3.56 սագ. 3.57—.

3.61 շուն. 3.612 սկունդ «շուն, շնիկ» (?). 3.62—. 3.63 մուկն. 3.631 գորտ (?). 3.64 [հաւ, թռչուն]. 3.641 ագռաւ. աղաւնի. արծուի (-ծիւ). բու, բուէճ. լոր (?). ծիծառն. կաքաւ (?). կերկեր «սև փարփար» (?). կկու (բ. կուկու, -կ, -լ, -ոփկ). կռունկ. յոպոպ. որոր «մի թռչուն». սարեակ (?). սատրակ (?). ցին. ուրուր. 3.65 ձուկն. 3.66 [ձկնորս]. 3.661 թարբ (թարփ) «ձուկ որսալու կողով». կարթ.

3.71 գայլ. 3.72 առիւծ (-եւծ) (?). կորիւն (?). 3.721 ինձ. լուսան. 3.73 արջ. 3.74 աղուէս. 3.741 բորենի. 3.75 եղն. 3.76—. 3.77—. 3.76—. 3.79 ոռո-ամ. [որս]. երէ (էրէ). 3.791 [թակ-արդ].

3.81 [միջ(ատ). զեռուն]. 3.811 անիծ. լու. մաթիլ. մլ-ուկ «փայտոջիլ». բ. մղմող «ցեց». մրջիւն (բ. մրմունջ). ո(ր)ջիլ (?). սարդ. տիզ. սարդ «սարդոստայն» (?). 3.82 մեղու. բոռ (բորեղ, բրէտ «իշամեղու»?), կէտ «իշամեղու». 3.83—. 3.831 մուն, մլակ. 3.84—. թիթեռն. թրթուր. 3.85. աւձ. իժ. քարբ «արքայիկ օձ». 3.851 ոզնի.

## 4. Մարմնի մասեր, մարմնական գործառություններ և պայմաններ

4.11 մարմին (?). 4.12—. 4.13 միս. 4.131 բ. լապռ (լեպռ) «թաղանթ. թույլ կախված միս». ջիլ (ջիղ). նեարդ. 4.14 ձար «մազ. ձիու մազ», 4.14 ալի-ք

«սպիտակ մազ». բ. կռունձ «գանգուր, գռուզ (մազ)» (?). ստեւ «կենդանու (հատկապես ուղտի) մազ՝ բուրդ». 4.142 մալրու-ք. 4.15 արիւն. 4.16 ոսկր. 4.162 կող(ն). 4.17—. 4.171 [բողկ-ուկ «նորաբույս եղջյուր»]. 4.18 ձետ «պոչ (բրդոտ). առնանդամ», պոչ (?). տուտն (տտուն) «վերջավորություն, ծայր, պոչ», 4.181. երաստ-անք «հետույք», ո.. 4.19. թէկրն (թեկն), կուռն «կռնակ, մեջք» (?), [մէջ-ք], քամակ (?). 4.191 ողն.

4.20 գլուխ (?), կուճի «գլուխ» (մնկ.) (?). 4.202—. 4.203—. 4.204 երես. 4.2041 բ. կռինճ «կնճիռ» (?). մռ-ութ (-ուլ,-ուտ, -ունչ). 4.205—. 4.206 —. 4.207 ծնաւտ, [ծամելի «ծնոտ»]. 4.208 այտ, թուրծ «այտ» (?), թուշ (*թուրշ), թուռ «այտ». 4.209—. կլափն «ստորին ծնոտ» (?).

4.21 ակն (հգն. աչ-ք). 4.22 ունկն (հգն. ականջք?). 4.23—. 4.231 ռունգն (?). 4.24 բերան. 4.241 քիմ-ք. բ. լաքոշ «լայնաբերան» (?). 4.25—. 4.26 լեզու. 4.27 ատամն. 4.271 լինդ. 4.28 ուլն «պարանոց» 4.29 կոկորդ, բ. կուլ (կլաթան) «կոկորդ». 4.291 որկոր «շնչափող», բ. կստուկ «շնչափող, խռչակ».

4.30 ուս. 4.31 թեւ, ձեռն. 4.32 արմ-ուկն. 4.33 [ձեռն]. 4.331 ափ, բ. լափ (ալպ, լըպ, լովազ) «ափ». բուռն. 4.34 մատն. 4.342 բոյթ(ն). 4.35 ոտն, սրուն-ք. 4.351 ոլոք. բումբ. ազդր (?). 4.36 ծունգ(ն) [ծունկ(ն), ծունր]. 4.37[ոտն]. 4.371 կրուկն. 4.38—. 4.39 եղունգն. 4.392 [թեւ (?)]. 4.393—.

4.40 լանջ. 4.41 ստին-ք. տիտ (?). 4.42—. երբուծ «անասունի լանջամիս», երի «անասունի լանջակողմ, երբուծ». [պտուկ «ստինքի պտուկ»]. 4.42 գեղձ. 4.43—. 4.44 սիրտ. 4.45 լեարդ. 4.46 որովայն, փոր (?). 4.47 արգանդ. 4.471 աճուկ, ցայլ-ք «աճուկ». ընդեր-ք. փայծաղն. բ. կզակ «եղի թափանի հաստ մասերը». 4.48 ձու. -որձի (ամ-որձի-ք, մի-որձի). 4.491 փամփ-ուշտ (<փամփ-բուշտ) «միզապարկ». 4.492. բ. պուպուլ (մնկ.) «առնանդամ». 4.4921 պ.., (բ. պլլիկ), բ. մամուխ «կանացի ամոթույք».

4.51 շունչ (?), հագագ «շունչ. շնչափող» (?). [հոգի (ոգի) «շունչ. հոգի. անձ. կյանք»]. 4.511 հեւամ, հինինամ «հեալ» (?). 4.52—. 4.53 հազ (?). 4.54 փռնգամ (փռնչեմ). 4.55 քիրտն. 4.56 թուք (թքանեմ). շողիք «լորձունք, թուք» (?), փրցլիք (?). 4.57 ործ(կ)ամ, [զ-զայռեմ (-իմ) «ործկալ, փսխել», ձ-գեռ-տ (ձգոտալ, գկոտալ)]. 4.58 կիծ- (կծանեմ), խածանեմ. խայթեմ (խոթեմ «խայթել. խոթել»). 4.581 կիճ «խայթոցի ծայր», խայթ (խէթ). 4.59 լիզ(ան)եմ, բ. լկստել, բ. լպստել.

4.61 քուն (-եմ). 462 անուրջ, [տես-իլ]. 4.63 արթուն (զ-արթնում, զ-արթուցանեմ). [զ-գաստ (<զ-գամ)]. 4.64 փուք (փուքս արձակել). 4.65 մէզ (միզեմ), բ. ցէթ(>ցայթ) «մեզ». 4.66 ք.. (-եմ, քակ-որ). կոյ (կու), աղբ, փին «աղբ, կղկղանք». բ. ցեռ, բ. ցրթ(կ)ել «լույծ կղկղել». թրիք. կտիտ (կտտոր), ալ(ր)տուր «կտտոր». 4.67. [մերձենամ, գիտեմ, ք...եմ]. 4.671 բեղմն.

4.71 ծին, (ծնանիմ). 4.72 [ծին (ծնանիմ). երկն (-եմ) «ծննդյան ցավ (քաշել)». բ. ցրդել (ցրթել) «ցնկնել» 4.721 ամուլ. 4.73 յղի. 4.74 կեամ (կեան-ք). 4.75 մեռանիմ (մա(ր)հ?). 4.76 [մեռուցանեմ]. 4.77 դի, դէշ 4.78 թաղեմ (?). 4.79 դամբ(ար)ան.

4.81 արեկ «զորեղ, զորավոր. ուժեղ, ուժգին, սաստիկ». արբուն «ուժ, զորություն. չափահասություն» 4.82 թոյլ (?), նուաղ (?), ներգեւ «նվաղ. տր-

կար, ճոզած», թաւպ «վտիտ, տկար». թաւշնիմ «թուլանալ. թառամել» (?). բ. լավլաւ (լավլակ) «նիհար, վտիտ» 4.83 (առ)ողջ. 4.84 հիւանդ, աղփուն «տկար» (?), խաւթ «հիվանդ». հիւծ(ան)իմ. 4.841 դալ-ուկն «դեղնախտ». թանչ «փորհարինք» (?). բ. լեպ «լեզվի վրայի սպիտակ փառ». լուսն «աչքի սպիտակ բիծ (հիվանդություն)». լորց-ք «ջղաձգություն». խիթ «ցավ (փորի, ոտքի)». ձմեթ «ձյան պատճառած աչքացավ». մարմաջ «մարմնի քոր, եռք», մարմառ «մարմաջ. վերք, հիվանդություն» բ. նիգ «ջղաձգություն, լարում», ստնգամ «ջղաձգվել». 4.85 կեղ «խոց, վերք. ուռուցք, պալար», խոց (?), բողջ «վերք. պալար» (?). այտումն (այտնում). [բլթել (<բլիթ)]. ելունդն «պալար, ուռուցք», պալար, պուտ «բշտիկ (մարմնի վրա)». խաղաւարտ, խոյլ «ուռուցք, պալար». տեւ «կոշտուկ». թարախ. 4.86 [առողջացուցանել]. 4.87—. 4.88 պեղ (*«բույս, խոտ»). 4.89 [դեղ «թույն»].

4.91—. 4.911 թմ(բ)րիմ, զմրիմ «թմրել». 4.92 հեղգ «ծույլ». 4.93—. 4.931 լերկ «անմազ», բ. լղուկ «լերկ, անմազ». 4.94 խեղ «կաղ. հաշմանդամ». 4.95 խուլ (?). 4.96 մունջ. 9.96 թոթով «թլվատ, կակազ» (?). պապանձիմ. 4.97—. 4.971 շիլ, բ. շիպո «շիլ». 4.98 արբեալ (արբիմ, արբենամ) «խմած, հարբած». բ. լուլ (լուլուկուլ), լիլլո «խիստ հարբած» (լ(կ)վիլ «խիստ հարբել»). 4.99 մերկ հոլանի, բոկ «բոբիկ».

## 5. Ուտելիք և ըմպելիք. կերակրի պատրաստում և ամանեղեն

5.11 ուտեմ (աոր. [կերի]). 5.111 բուծանեմ (բոյծ), սնեմ (սուն-, [միա-] սին). լակեմ. լափեմ. ծամեմ, ըմլմեմ «ծամծմել». կլանեմ (կուլ-), յաղեմ «կլանել (?)» (թե՞ «բանել»?). կրծեմ (կուրծ-). բ. մորտել «կրծել, կրծելով ուտել». յագենամ. որոճեմ. 5.12 կեր, կուր (կերակուր), բուտ «ուտելիք» (բտեմ «սնել»), բ. փափա «ուտելիք» (մնկ.). 5.121 բ. լակ. լափ. կիւ «ծամոն». 5.13 ըմպեմ (աոր. [արբի]). 5.14 (ա)նաւթի. քաղց (-նում) (?). 5.15—. 5.16 դիեմ «ծծել, մոր կաթը ծծել». 5.17 բ. հունցել (?).

5.21 եփեմ. 5.211 հում. 5.22 [եփեմ], խարշեմ. 5.23 124 խորովեմ, բ. խարկել, [բովեմ]. 5.231 աղանձ (բ. աղընձել), մուրկ «աղանձ, ցորենի հատիկ» (բ. մրկել «աղանձել»), խայծաղ «աղանձ»). 5.25 հնոց «վառարան» (և «հնոց, բով, քուրա»). 5.26 պոյտն (բ. պուտուկ), բ. բլիկ, բ. բլուղ, բ. պուլիկ «կավե աման». փուռ «մի աման. արկղ». բ. հոտ «մի աման». 1.261 տիկ. 5.27—. 2.28—.

5.31 [աման]. 5.32—. 5.33—. 5.34—. 5.35—. 5.36—. 5.37 տարդալ. 5.38—. 5.39—.

5.41 [կերակուր]. 5.42—. 5.43—. 5.44—. 5.45—.

5.51 հաց (?). բ. բմբուշ «փափուկ՝ լավ թխած հաց». բ. կլ-իկ «կլորիկ հաց». բ. կոլ-ոճ «անեկ հաց» (?). 5.52 բլիթ, բոլեղ «բլիթ, մի տեսակ կլորակ հաց». 5.53—. 5.531 բ. բուլ (>պնիլ) «խմորի գունդ». 5.54 շաղել. 5.55 ալիւր (-իւր). 5.551 նքոյր «մաղ». 5.56 աղամ. բ. մուղ «աղալը». 5.57 աղաւրի-ք, *մուլ. երկան. 5.571 աոռն «սանդի կոթ».

5.61 միս. 5.612—. 5.62—. 5.63—. 5.64 թան «ապուր». 5.65 [դալար(ի)], 5.66—. 5.67 սխտոռն. 5.68—. 5.681 խստոր. 5.69—.

5.70—. 5.701 բողկ. բ. կլմպուզ «ճակնդեղ» (?). 5.71 պտուղ. 5.711 կորիզ (?), կուտ (?). չիր. 5.72—. 5.73—. 5.74 դեղձ. 5.75 [թուզ (?)]. 5.76 որթ «խաղող, խաղողի տունկ». 5.761 [շիւ «խաղողի մնացորդ». արգաւ «որթատունկի էտած ճյուղ»]. 5.77 ընկոյզ (?). 5.78—. 5.79—.

5.80—. 5.801 մոշ (<*մորշ), մոռ «մոշ», մոր(-ի, -ենի). սունկն. 5.81 աղ (աղտ, աղծ-եալ). 5.82—. 5.83 քաց-ախ (?). 5.84 մեղր. 5.85—. 5.86 կաթն, բ. կաղց. 5.861 դայլ (դալ). մածուն. 5.87—. 5.88—. [մաճառակ «թարմ պանիր» (?)]. 5.89 կոգի «կարագ».

5.91—. 5.92 գինի. մաճ-ար «քաղցու, խակակութ գինի» (?). 5.93—. մառ «գինու կամ քացախի փառ». մաստ «ածիկ. գարեջրի համար պատրաստ գարի».

## 6. Հագուստ, անձնական զարդարանք և խնամք

6.11 ագանիմ, զ-գենում (բ. գենալ). 6.111 բ. ցլկանել «(հագուստը) մաշել, պատառոտել». 6.12 զ-գեստ (բ. գեստ). 6.13—.

6.21 հէն-ք (հինուած), [անկուած], ոստայն «բանվածք» (?). 6.22 ասր, բուրդ, գեղմն. 6.221 բ. մալանչ «բրդի փաթիլ». 6.23 կտաւ (?). 6.24—. 6.25—. 6.26—. 6.27 թաղի-ք (?). 6.28—. 6.29—. բ. սերեկ «սեկ, կաշվյա ծածկոց (կափարիչ)» (?).

6.31 բ. սարել «մանել». 6.32 իլ(իկ). 6.33 [գործեմ «հյուսել»], հանում (հենում, հինում, հինեմ) «հյուսել». 6.331 յեռում, յիրեմ (?) «ընդելուզել, իրար միացնել՝ շարել». ստէծ (ստեծ) «գործվածքի պրկաձող». ստորի «գործվածքի փաթաթազլան». [շիւ «ջուլհակի հաստոցի պատկանելիք»]. 6.34—. 6.35—. 6.36 ասեղն. 6.37 հերիմ. 6.38 թել (?). [առ-էջ «կտավի երկայնակի թել»]. 6.381 կծիկ (?), բ. կլ-ոք «թելի կծիկ». 6.39 տոգորեմ «ներկել (ընկղմել)» (?).

6.41 աւթոց «վերարկու, զգեստ. անկողնու ծածկոց». 6.412—. 6.42—. 6.43—. 6.44—. 6.45 աւձի-ք. 6.46—. 6.47—. 6.48—. 6.49—.

6.51 աւդ «կոշիկ». 6.52—. 6.53—. 6.54. 6.55—. 6.56—. 6.57—. 6.58—. 6.59 տեռ «շղարշ», քաւղ (քող) (?).

6.61—. 6.62—. 6.63—.

6.71 (ղ-)արդ. 6.711 դինդ. 6.72 [ակն «գոհար, թանկագին քար»]. 6.73 [մատանի]. 6.74—. 6.75—.

6.81—. 6.82—. 6.83 [անձեռոց].

6.91—. 6.92—. 6.93 [ածելի]. 6.94 աւծ [աւծանեմ]. 6.95—. 6.96—.

## 7. Բնակարան, տուն, կահկարասի

7.11 [աւթեմ «օթեւանել, բնակվել»]. ագանիմ «գիշերել». 7.12 տուն. աւթ. 7.13 խուղ (հիւղ). 7.131 բոյն. բուն, կաղաղ «որջ». 7.14—. 7.15—.

7.21 սենեակ (?). 7.22 դուռն (հգն. դուրք). 7.221 անդ «շեմք» (դր-անդ-ի, անդ-աստակ). դրոյլ «դռնապան». փեղկ «դռան կամ պատուհանի թև. վարագույր». 7.23—. նիգ «սողնակ. գերանակապ՝ շեղակի ձող». 7.24 [բա-

նալի]. 7.25—. 7.26 յատակ. 7.261 մայթ «սալահատակ» (?). 7.27 որմ(ն). 7.28 ձեղուն. ցիւ «ձեղուն, կտուր». [տանիք]. առաստաղ, առիք (?). 7.281 քիւ «տանիքի եզր».

7.31 [կրակետղ]. 7.311 բ. թիթրէն (?), տարթ (?) «աթար, չորացրած քակոր (վառելիք)». 7.32—. 7.33—.

7.41 սար-ք 7.42 [ան-կող-ին]. 7.43 [նստելի]. 7.44 սեղան. 7.45—. 7.46—

## 8. Երկրագործություն, բուսականություն

8.11—. 8.12 արտ, անդ. հարաւունք «ցանք. արտ. սերմ». 8.13—. այգի 8.131 խէչ (<*խայչ) «նեցուկ (բույսի ցողունի տակ)». 8.14—. 8.15—. 8.15 կորի «փոքր ջրանցք (արտը ջրելու համար)». [առոգանեմ (ոռոգանեմ), հոլոսեմ (հոռոսեմ?) «ոռոգել» (?)].

8.21 արաւր. հերկ-եմ (?). 8.212—. ձլեմ «հողն ակոսել, հերկել» (?). 8.22 պեղեմ (բ. պողել), փորեմ (?). 8.23—. 8.24 թի. 8.25 բիր (բրիչ, բրեմ). 8.26 եղան, [հեծանոց (?)] 8.27—. 8.28 բ. ցաք(ան).

8.31 [սերմանեմ]. սերմ(ն). 8.32 քաղեմ. բ. քեղել «քաղել՝ պոկել-հանել». 8.321 ատ-ոք «լավ հասած, լիքը (հացահատիկի մասին)». 8.33—. գերանդի (?). 8.34 բ. մառել «կալսել». 8.35 կամ(ն) (?).

8.41 [բեր-ք, արդիւն-ք, պտուղ. երա-(խայրի) «առաջին (պտուղ, բերք)»]. 8.411 բարդ «խոտի կամ հացահատիկի դեզ». բերրի. 8.42—. 8.421 ծանծ «հացահատիկի կճեպ և հարդ». 8.43—. 8.431 կորկոտ «ձավար. ձավարով ճաշ». 8.44 գարի (?). 8.45—. 8.46—. 8.47—. 8.48—.

8.51 դալար «խոտ, կանաչ», 8.252—. 8.521 թառամ (թարշամ), թոռոմ (թոր-շոմ). 8.53 բոյս. 8.531 ալուճ «մի գեղաբույս». բող «մի բույս». գաղձն, գեղձ «բաղեղ, պատատուկ». գինձ. դաղձ(ն) (դեղձն) «վայրի անանուխ». բ. թալ «մի բույս». թաղթ «մի բույս» (թաղթենի «մի ծառ»). բ. թելուկ. մամուռ. մատիտեղ «մի բույս» (?). մատուտակ «մի բույս» (?). բ. մողկ «ուտելի (դառնահամ) մի բույս». ոսի «փշոտ մի բույս». տատասկ (?). ցաքի «վայրի՝ փշոտ մի բույս». քաղ «քաղհանելի բույս». քեղ «մի բույս (սխտորի տեսա՞կ)». 8.54 արմ(-ատ, -ն). 8.541 բ. դեղդ «մի բույսի արմատ». 8.55 ոստ. ողոռ, կողր «ճյուղ, ոստ». 8.551 արգատ «որթատունկի էտած ճյուղ». բողբոջ. բ. դղբիկ «ծառի պտղալից ճյուղ». ծիլ (ծիղ). ծիւղ «խոխիվ» (ըն-ձիւղ<ըն-ծիւղ). ընձուիմ (<ըն-ծուիմ) «ծլել. ծագել». բ. մոլ «ծառի բարակ ճյուղ». մորչ (մորճ, մորշ) «դալար փայտ՝ ճյուղ, ոստ». շիւ «դալար ճյուղ» (բ.) (այլև «խաղողի ճյուղ. խաղողի մըրնացորդ». «ջուլհակի հաստոցի մի պատկանելիք»). ոճ «ծղոտ, ցողուն. ոճ». պ(լ)պլուկ «ծիլ, բողբոջ. կոկոն». պտուկ «բողբոջ» (և «ստինքի պըտուկ»). ջով «ծիլ, ընձյուղ. պարան». սաեղն «ցողուն. ծիլ. ճյուղ». բ. *ցաք «ճյուղ» (ցաք-ատ «էտիչ»). բ. ցռուկ «նոր ծիլ. նորահաս տունկ» (և «ծծկեր երեխա»). 8.56 թեր «թերթ, տերև». թերթ. բ. մող «մատաղ տերև». սաղարթ (?). 8.57 ծաղիկ (?).

8.60 [ծառ]. 80.601 [մայրան «ծառի պատվաստելու տեղը»]. 8.61 կաղին (կաղնի). 8.62—. 8.63—. 8.64 մայրի. կուենի «մի տեսակ մայրի». 8.65 եղեւին. 8.651 բարտի (?). հացի. թեղաւշ «վայրի մի ծառ». թեղի. նոճ(ի).

*ցախ «հացենի. մացառ. վառելափայտ». 8.66 կաղին. բ. տ-կողին. 8.67 որթ.*

## 9. Ֆիզիկական տարբեր գործողություններ և դրանց հարաբերությունը առանձին արվեստների ու արհեստների հետ՝ համապատասխան գործիքներով, նյութերով ու արտադրանքներով. այլ հասկացություններ

*9.11 առնեմ (աոր. արարի). (յ)երիւրեմ «հորինել. շինել». 9.12 գործ. 9.13 [գործեմ]. 9.14 [կորացուցանեմ, բ. կեռել], կքեմ (կիք- կամ կուք-). ձուլիմ (ձոխիմ<*ձողիմ?) «շեղվել, խոտորվել, ծռվել», բ. ճմիլ «ճկվել, կռանալ». 9.15—. 9.16 կղթեմ (կուղթ-?) «կապել, հանգուցել», հայթեմ «հոդել, իրար կցել». 9.17 տի «կապ» (սամետի, կալոտի), յ-աւդ (գ-աւդ). 9.18 սարի-ք «շղթա». բ. կլմպ-ուր «երդիկից կախված շղթա». 9.19 տոռն «թոկ. պարան». լար. 9.192 [*կուղթ «հանգույց, կապ»?].*

*9.21 հարկանեմ (աոր. հարի) (զարկանեմ). գանեմ, ծեծեմ (?), թոպեմ, ձաղկեմ, ջնեմ (ջին-), տոփեմ «ծեծել», բ. բոկել «բռունցքով խփել, բոթել», բ. դմբել (դմփել), բ. դնգստել, բ. ձաղտել, [բ. թակել «ծեծել»]. 9.22—. մալեմ, լեսում (լոսեմ) (?) «մանրել, փշրել». 9.221 գերծ(ան)եմ (գերծում) «ածիլել». բ. մամուր «քերվածք, տաշվածքի մանրուք». 9.23—. 9.24 —. 9.25 դակու «ուրագ կամ կացին». 9.26 բեկանեմ. 9.27 ցելում, [փեղկեմ], փեռեկեմ. 9.28 երգիծանեմ «պատռել, ճեղքել. պայթեցնել. ծաղրել». ցտեմ «պատառոտել (մարմինը, երեսը)», կեղեքեմ «գիշատել, պատառոտել». փերթ (բ. փռթիկ) «պատառ, կտոր». բ. տրաքել «պայթել, պատռվել». 9.29 տեռեմ «քերթել. կաշտուկակալել», քերեմ «քերել, քերթել», քերթեմ. քորեմ. քերծեմ. բ. քեղրդել «քերել». բ. լոպկել (լպոկել) (?). բ. քեղծվիլ «քերծվել».*

*9.31 ճմլեմ (բ. ճմռել). լմեմ «ճմռել, կակղացնել» 9.32 (ս)փռեմ. ձգեմ (ձըգտեմ. ձիգ). 9.33—. 9.331 հանում (-եմ) (?). 9.34 ցրեմ (ցրուել. ցիր, ցըրիւ), բ. տարտղնել (տարտկնել) «ցրել. բաժանել, բաշխել» (?). 9.342 ճնշեմ. քամեմ. մամուլ. 9.35 հեղում (զեղում). լնում, ամամ «լցնել». ցայտեմ (ցայթեմ), բ. ցրիտցնել (ցրտկեցնել) «ցայտեցնել», բ. ցրքտել «թափել, ցայտել». 9.351 ձագար. 9.36 լուանամ. 9.37 աւելում «ավլել». 9.38 աւել. գերբն «ջնջոց. ավել» (?).*

*9.41 [մարթանք «ճարտարություն, վարպետություն»]. [հ-մուտ]. 9.412 [արուեստ (?)]. 9.42 [արուեստաւոր (?)]. 9.422 [գործի]. 9.423—. 9.43 [ատաղձագործ]. 9.44—. հաստ-ատ-եմ «ամրացնել. շինել, կառուցել». ատեղծանեմ. 9.45—. 9.451 երիթ «մեծ սեպ». թործ «տաշվածք, տաշելով բացված (թործել «տաշելով փոս անել»). 9.46—. թորիծ «ծակ(վածք)». 9.47—. 9.48—. 9.48 մուրճ. թակն (թակ-եղն. թակ-աղ «կոշնակի թակ»).*

*9.50—. 9.51 գերան, [հեծան (?)]. ձող. սիւն. 9.52—. թիթեղն. 9.53 [որմածու]. 9.54—. 9.55 շաղ-ախ (?).*

*9.60 դարբին. 9.61 թեքեմ «կռել» (ուշ «թեքել»), [դարբնեմ]. 9.62 սալ «տափակ քար. կնդան». 9.63 հալեմ. ձուլեմ (ձոյլ). բով «մետաղ հալելու հնոց» (բովեմ «հալվածքը մաքրել. խարկել, աղանձել»). 9.64—. 9.65 արծաթ. 9.66—. 9.67—. 9.68—. 9. 69—.*

9.71—. դուրգն. 9.72—. 9.73—. 9.74—. 9.75—. 9.76 [բ. քաղալակ «կոզով»].

9.81 —. արծնեմ «տաք երկաթով փորագրել». 9.82—. 9.83—. 9.84—. 9.85—. 9.86—. 9.87—. 9.88—. 9.89 [տոգորեմ «ներկել (ընկղմել)» (?)].

9.90 իր. 9.901 իսկ «էություն, իսկություն. էական, իսկական, իսկ (շաղկապ)» 9.91 եմ, գոմ (գոյ). եղանիմ (աոր. եղէ), լինիմ. 9.92 դառնամ. [եղանիմ, լինիմ]. 9.93—. 9.94—. 9.942—. 9.943 յ-արմար, [անկ]. յարնչիմ «համարվել, պատշաճել». 9.95 մարթ «կարելի, հնարավոր». 9.96—. 9.97—. 9.98 փորձ(-եմ). 9.99 ջանամ. գուն, [փոյթ] «ջանք». եռանդն, ափին. 9.992 [եղանակ]. հայթ(հ)այթան-ք «հնար, ճար». 9.993—.

## 10. Շարժում. տեղափոխություն, փոխադրում, նավագնացություն

10.11 տղեմ, տաղտեմ «շարժել». բ. դնդալ «շարժվել». 10.12 [դարձուցանեմ. դարձ]. բ. զվռնել «պտտել. շրջել. դարձնել». 10.13 հոլովեմ (հոլով). բ. կլպնդրիկի «գլուխկոնծի» (?). 10.14 ոլորեմ (ոլոր, ոլորտ), գելում (գելումն) «ոլորել. ճզմել», գալարեմ (գալար), բ. խլլել «ոլորել». կաղաւեմ, բ. կլապտիլ. բ. կոուտել «գալարվել. նստել (օձի մասին)». 10.15 գլ(որ)եմ. թաւալ(-իմ) (?).

10.21 յառնեմ (աոր. յարեայ, հրամ. արի́), ելանեմ. [համբառնամ, բարձրանամ, վերանամ]. 10.22 բառնամ (<բարձնամ), [ելուզանեմ]. 10.23 անկանիմ, փլանիմ (փուլ). իջանեմ (էջ), [ցածնում (ցած)]. 10.24—. 10.25 ընկենում. 10.26 դեդեւեմ «շարժել, տատանել», տատանեմ (?). բ. լլկել «շարժել, ցնցել». երերիմ, բ. լելալ «երերալ, շարժվել». դողամ (դող).

10.31 (գ)նամ. 10.32 թորեմ «հոսել». 10.33 ընկղմեմ (ընկլնում), թաթաւեմ, թաթախեմ, [տոգորեմ]. -մոյն «-խեղդ». 10.34 լողամ (-եմ. լող, լեղ). 10.35 [լողամ]. լոգանամ. 10.36 [նաւեմ]. 10.37 թռչիմ (թիռ-). թռթռեմ, թրթռեմ «թռչկոտել». 10.38 փչեմ (փուչ-?). փուք.

10.41—. 10.42 լպրծեմ (լպիրծ. բ. լպստիլ, լպլպալ, լպստիլ), [բ. լժալ (լիժ)]. 10.43 ոստնում (?). խրտնում (խիրտ-) (?), հարթնում, շրտնում (շիրտ-?), սարտնում (?). բ. լոք «մեծ քայլ, ցատկ». 10.44—. [խաղամ «խաղալ, պարել»] 10.45—. [յածիմ «ման գալ, դես ու դեն շարժվել»]. բ. տորոտալ «դանդաղ քայլել». [տորտորալ «դողդողալով քայլել»]. 10.46 ընթանամ «վազել». սլանամ (?). 10.47 երթամ (աոր. չոգայ). հորդիմ «գնալ. տարածվել». չուեմ «չվել, գնալ (բազմությամբ)». անցանեմ. 10.48 գամ (աոր. եկի). 10.49 [հեռանամ]. փարատեմ «հեռացնել, վերացնել. հեռանալ».

10.51—. [փախթանիմ «փախչել, ազատվել, փրկվել»]. 10.52 [հետեւիմ (հետ)]. 10.53—. 10.54 հասանեմ. 10.55 [գամ, հասանեմ]. 10.56. մատչիմ (մատ), մերձենամ. 10.57 մտանեմ (մուտ) (?). 10.571 մուծանեմ (մոյծ). մխեմ (մուխ-).

10.61 կրեմ (?). բեռն. 10.62 ածեմ, բերեմ. 10.63 [յղեմ (ուղի. ուղ-արկեմ)]. 10.64—. 10.65—. 10.66—. հեծանիմ. 10.661 թամբ. 10.67 մղեմ (մուղ-), խեթեմ «խթել, հրել, խփել», հրեմ (?), [բ. դնդել (դնթել)]. բ. հլոտել «հրել».

10.71 ուղի, հորդան *«ճանապարհ» (հորդ «բացված, տրորված, ուղիղ (ճա-

նապարհ)», հորդեմ «ճանապարհ բանալ»). 10.72 կածան (?). 10.73—. 10.74 կամուրջ (?). 10.75—. 10.751 առեղ (?). 10.76 անիւ (?). բ. հո-լոլ (?). 10.77 ալի «լիսեռ, առանցք, երկանաքար կամ ճախարակ». 10.78 լուծ. 10.781 սամի.

10.81 նաւ. 10.82 [նաւաստի]. 10.83 կուր «նավակ. տաշտ» (?). 10.84 լաստ 10.85 [թի(ակ), թեւ-ճ-ակ]. 10.86 քեղի «ղեկ» (?) [թեւ «ղեկ»]. 10.87 [քեղի «կայմ (?)»]. 10.88 առ-ագ-աստ. 10.89—.

10.91—.

## 11. Ունեցվածք, սեփականություն և առևտուր

11.11 ունիմ (առր. կալայ). 11.12 [տիրեմ (տէր)]. 11.13 առնում. 11.14 կա-լում, (ըմ)բռնեմ (բուռն). բ. գլփել «խլել». 11.15—. 11.16 ստանամ. 11.17—.

11.21 տամ (առր. ետու). ընծայեմ (ընծայ) (?), ձաւնեմ (ձաւն), ձ(ե)րեմ (ձիր). 11.22 [դարձուցանեմ, յետս տամ]. 11.23 [նորոգեմ]. 11.24—. 11.25 գ-երծ(ուց)անեմ, փրկուցանեմ (?). 11.26 [գ-երծ, ողջ]. 11.27 ջնջեմ. աղմկեմ (աղմուկ) «տակնուվրա անել». խաթարեմ (?). գերբեմ (-փեմ) «ավերել (հեղեղի մասին). կողոպտել». 11.28—. 11.29 եղծ(ան)-եմ.

11.31 որոնեմ, խնդրեմ «որոնել, փնտրել, քննել» (?). 11.32 գտանեմ (գիւտ). 11.33—. 11.34 լուծանեմ (լոյծ).

11.41 ան «սեփականութիւն» 11.42 [հարստութիւն (հար-ուստ) «ուժեղ. հարուստ»]. 11.43—. [արծաթ «արծաթ. դրամ»]. 11.44—. 11.45—. 11.646—. 11.47—. 11.48—.

11.51 [հար-ուստ «ուժեղ. հարուստ]. բ. կլմբոս «հարուստ մարդ» (?). 11.52 աղկաղկ, աղքատ, անքատ (?), փանաք, փին-ատ. տրուպ (?). 11.54—. 11.54—. 11.55—. 11.56 [զաղանամ]. 11.57 գող. 11.58 [եղուզակ].

11.61—. 11.62—. 11.63—. 11.64—. 11.65—. 11.66—. 11.67—. 11.68—. 11.69 [հաս. տուր-ք].

11.71 [մուտ-ք]. 11. 11.72—. 11.73—. 11.74—. 11.75—. 11.76—. 11.77—. 11.78—. 11.79 [աւգտիմ (աւգուտ)].

11.81 [գնեմ (գին)]. 11.82—. 11.83 [տուրևառ]. 11.84—. 11.85—. 11.86—. 11.87 գին. 11.88 [մեծագին]. 11.89—.

## 12. Տարածական հարաբերություններ՝ տեղ, ձև, չափ

12.11 եալ (տեղ, տեղի). դիր-ք 12.12 դնեմ (առր. եդի). [դ-ետե-ղեմ]. 12.13 նստիմ (նիստ). 12.14 [(ըն-)կողմանիմ]. դարեմ (դադարեմ), հանգչիմ (հանգիստ) (?), դլամ (դլամ, դուլ), [ս-տեղեմ «հանգչել, կանգ առ-նել»]. 12.15 կամ. 12.16 մնամ. դեգերիմ «մի տեղ մնալ, ժամանակ անց-կացնել» (?). 12.17 [լքանիմ, թողում (թողեալ լինիմ)]. 12.18 լքանեմ (լիք-). 12.19 խաղաղ (?).

12.21 հոլանեմ (հոյլ>հոլ?) «հավաքել» (?), դիզանեմ (դէզ). թեղ «կույտ,

դեզ» (բ. թեղել «դիզել») (?), բ. կոլոն «մեծ կույտ, դեզ» (կոլոնել) (?). 12.22 յ-արեմ «կցել, միացնել» հայթեմ «իրար կցել, հոդել», [հայթ-(հ)այթեմ «կցկցել, նյութել, հնար գտնել», ղ-աւղեմ, յ-աւղեմ]. 12.23—. 12.232—. 12.24 բանամ. 12.25—. 12.26—. [ն-աւաղել «ծածկել»]. 12.27 պաղեմ, գեղեմ, պողեմ, թաքուցանեմ (թաքչիմ), սաղարկեմ «թաքցնել» (սալարիմ «թաքնվել»).

12.31 բարձր, -բերձ. 12.32 ներ-ք-ին, ցած (?). 12.33—. վեր. 12.34 ան-դունդ-ք, [ոտն, յատակ]. հիմն. 12.35 յաւ «ծայր. վերջ». 12.352 կէտ. 12.353 սայր (սայռ «լեռան գագաթ. սայր»). [եզր]. 12.36 կողմն, թեր. բ. թարկ «կողմ, երես». 12.37 [միջին (մէջ)]. 12.88 մէջ.

12.41 աջ. 12.42—. 12.43 մերձ, [մատ], հուպ «մոտ, կից». 12.44 հեռի. 12.45 [արեւել-ք]. 12.46 [արեւ-մուտ-ք]. 12.47—. 12.48 հարաւ.

12.51 ձեւ, արդ «ձև, կարգավորություն, սարք». սոփ «կարգ, պատշաճություն» (?). 12.52 ձագ «չափ» (?). 12.521 ուղուկ «քիլ (երկարության մի չափ՝ բթից ցուցամատ)». 12.53 աճեմ. 12.54 [*ձագեմ (ձակեմ) «չափել» (?)]. 12.55 մեծ, մող «մեծ» (?), տէ- (տի-եզերք, տի-կին, տի-այր >տէր) «մեծ». 12.56 փոքր, մանր. բ. մնիկ «շատ փոքր». 12.57 երկայն, երկար. 12.58—. 12.59—.

12.61 լայն. 12.62 անձուկ. 12.63 հաստ, ստուար (?). 12.631 գէր (?), բ. լ(ա)մբ-ատ, բ. լ(ա)մփուշ (-ոշ) «հաստ ու կոպիտ». բ. բթոկել «ուռչել, գիրանալ». բ. բղբնջել (բղբունջ) «ուռչել-բարձրանալ (թխվածքի մասին)». 12.64 թանձր, մած «խիտ, հոծ. կպչուն», սերտ (?), սեռն «սերտ, խիտ. ղուտ» (?), թաւ «խիտ», թաղկ «խիտ». դոնդող «թանձր ու մածուցիկ նյութ». 12.65 նուրբ. 12.66—. 12.67—. 12.68—.

12.71—. 12.72 գոգ «գոգավոր. գոգ, ծոց» (գոգեմ). 12.721 բ. քոռթիկ «ծառի վրայի փոս». 12.73—. 12.74 կոր, կեռ, բ. կոռ «կեռ», աղամող «շեղ, ծուռ», թիւր (?), ծուռ (?), շեղ. [յեղեմ «ծռել»]. շաղաղեմ «ծռմռել, այլայլել». 12.75 կեռ, գաբ «կեռ, ճանկ» (?). 12.76 անկիւն. 12.77 խաչ. 12.78—.

12.81 [բոլոր(ակ), ոլոր(ակ)], բ. կ(ո)լոր (կլպոր, կոլոլ, կոլոճիկ). 12.82 [ոլոր, ոլորտ-ք]. 12.821 աւզ, անուր «օղակ». լամբ «օղակ կեռ անցկացնելու համար». 12.83—. 12.831 բ. կնճիլ «գնդվել». բ. կռտիլ, կռնձիլ (կըռընծիլ, կռինծ «կծկվել, կուչ գալ». լող «գլան». հոլ. 12.84—. տող «ուղիղ շարք» (?). 12.85 սոր.

12.91—. 12.92—. 12.93 յեղում «փոխել» (յեղյեղեմ «փոփոխել»). այլայլեմ, աղաւաղեմ, աղճատեմ (?). 12.94.— [հետ-ք].

## 13. Քանակ և թիվ

13.11 քան(-ակ). 13.12 թիւ. 13.13 (ամբ)ողջ. 13.14 ամէն (ամենայն). բոլոր, [համ-ուր]. 13.15 յոգն «շատ, բազում». հու- «շատ, հույժ», (հ-լու, հ-մուտ), արբիկ «խիստ կամ քաջ կամ առավել (?)» (?), բ. առի «շատ, հույժ, ամենա-». բուռն, սաստիկ. 13.16 աւել-ի. (յ-աւելում). 13.17 խուն (սուն) «քիչ» (?). [փոքր]. արատ. 13.18 հերիք (?). 13.19 յոլով «բազմություն. բազում». 13.192 բոյլ, հոյլ.

13.21 լի (լիր, լնում). 13.22 սին, ունայն. 13.23 մասն (?). բ. բղող «մեծ կըտոր. բշտիկ». 13.25—.

13.32 մի. 13.33 միայն. 13.34 առաջ-ին. 13.35 հուսկ «վերջին» (?) [յետին]. 13.351 երկու (երկի-, երկո-).

13.41 երեք (երի-, եռ). 13.42 [երիր (երր-որդ)]. 13.43 [երիր մասն]. 13.44 երիցս. 13.45—. 13.46 [եռակի]. 13.47 [եռակի]. 13.48 [երեք-ին (-եան). 13.49 [երրեակ]. 13.51—. 13.52—. 13.531 չորք. (քառ-). հինգ. վեց. ե(ա)ւթն. ութ. ինն. տասն. մետասան. երկոտասան. երեքտասան. չորեքտասան. հնգետասան. վեշտասան. քսան. երեսուն. քառասուն. յիսուն. վաթսուն. եւթանասուն. ութսուն. իննսուն. հարիւր (?).

## 14. Ժամանակ

14.11 [բ. ատեն (?) «ժամանակ, պահ» (ատեան?)]. հալ (հեղ) «անգամ». 14.12 տի(-ք) «տարիք, հասակ». 14.13 նոր, թարմ, բ. թոր «թարմ». 14.14 [մատաղ (մատղաշ)]. 14.15 հին. ծեր. երէց «ավագ». մա(ր)շեմ, 14.16—. 14.17 [ան-ագան «ուշ» («երեկոյան»)]. 14.18 արդ «այժմ» (արդէն) 14.19 փոյթ (փութով «շտապ». [իսկոյն, անդէն «իսկույն, նույն տեղում»].

14.21 [փոյթ «արագաշարժ»]. 14.22 դանդաղ (?). տարտամ «դանդաղաշարժ». 14.23 արտորամ «շտապել». 14.24 [դանդաղեմ (?), անագանիմ (?). յետնիմ, հեղգամ]. 14.25—. [հաւիմ «սկսվել»]. հաւ «սկիզբ». 14.252 տեւեմ, [յերկարեմ]. տոկ «տևականություն, դիմացկունություն». յամառ (?). 14.26 յաւ «ծայր, վերջ». 14.27—. [բոլորեմ, լնում «ավարտել». լիր (լրումն)]. 14.28 [դադարեցուցանեմ]. 14.29—.

14.31 յար «միշտ» (և «կից. հարմար»). 14.32 յ-աճ-ախ (?), ստէպ. 14.33 երբեմն (-եք). 14.34 [ամենեւին ոչ, ոչ երբեք]. 14.35 [անդ-ր-էն, կըրկին (*երկկին), դարձեալ, վեր-ստ-ին].

14.41 աւր, տիւ, տի «օր». [ց-երեկ]. 14.42 գիշեր. 14.43—. 14.44 առ-աւ-աւտ (?). 14.45 [միջաւրեայ]. 14.46 երեկ(-ոյ). 14.47 սերկ (?). [այսաւր (յայսմ աւուր)]. 14.48—. 14.49 [երէկ].

14.51—. 14.52—. 14.53—.

14.61—. 14.62—. 14.63—. 14.64—. 14.65—. 14.66—. 14.67—. 14.68—.

14.71 ամիս. 14.72—. 14.73 ամ. 14.731 հերու. 14.74 ձմեռն. 14.75 գարուն. 14.76 ամառն. 14.77 աշուն (?). 14.78 [(յ)եղանակ].

## 15. Զգայական ընկալումներ

15.11 [զ-գամ (զ-գայումն, -ութիւն), իմանամ «զգալ» (և «հասկանալ. իմանալ») (-ցութիւն)].

15.21 հոտոտիմ. 15.22 [հոտ հարկանեմ]. 15.23 [հոտոտելիք, -ումն]. 15.24 հոտ. 15.25—. 15.26—. 15.261 բ. լակ «հոտած (ձվի, ձմերուկի մասին)». թաւշկանամ «հոտել, ապականվել» (?). [մգլիմ «բորբոսնել, նեխել].

15.32 [համ առնում]. 15.32 [համ ունիմ]. 15.33 [քիմ-ք «քիմք, ճաշակ»]. 15.34 համ. 15.35 քաղցր. 15.36 [աղի. (ան-)ալի]. 15. 15.37 դառն (?). 15.38—. [կծու].

15.41 լսեմ (լու «լսելի»). 15.42 անսամ, մտեմ «լսել, հնազանդ լինել» (մուռ «լուռ ու մունջ լսող»). [լսեմ]. 15.43 [լսելի-ք, -լուθիւն]. 15.44 հունչ. լուր. 15.45 [բարձր].

15.51 տեսանեմ, բ. հիանիլ (*հեսանել). 15.52 [յ-ականեմ]. ձղմեմ «դիտել, սևեռուն նայել» (?). 15.53 [տեսանելի-ք (-ութիւն, -ումն)]. 15.54 [տես (-իլ), երեւ-ոյթ]. 15.55 ցուցանեմ (ցոյց), [երեւեցուցանեմ]. 15.56 երեւիմ. փաղփաղիմ, փողփողեմ, փայլեմ (փայլ). 15.57 [փայլուն, փաղփուն].

15.61—. 15.611 խայծ, խայտ, բղէտ (խայտաբղէտ) «բիծ, պիսակ». 15.62 [լուսաւոր]. 15.63 մութ(ն) (?). աղաւտ (?). նսեմ (?). բ. մուգ (<*մոյգ) (?). 15.64—. 15.65—. 15.66 բոսոր (?). 15.67—. բիլ «բաց կապույտ». 15.68—. 15.69 դեղին (դեղձան, դեղբ).

15.71 [հպիմ (հուպ)]. 15.72—. 15.73—. 15.74—. կարծր. պինդ, տրամ «ամուր, պինդ». 17.741 հաստ-ատ «ամուր, պինդ. հավաստի». մազդ «պինդ, ամուր. թանձր, հաստ» (?). 15.75 մեղկ «փափուկ. մեղմ. թուլամորթ», փափ-ուկ (բ. փա(մ)փ-ուս, -լիկ) (?). մեղմ, մղմեղ «մեղմ, հանդարտ». 15.76 բ. քեռթ(-ա-փռթիկ), բ. քոփ(շտուն) «անհարթ, խորդուբորդ». դերբուկ «խորդուբորդ տեղ, առապար». 15.77 ողորկ, բ. լիժ «ողորկ». 15.78 սուր. 15.79 բութ.

15.81—. 15.82—. 15.83 գէջ, թաց (թանամ), բ. թէն (*թայն) «խոնավ», նայ, տամուկ, թրմեմ (թուրմ), թրջեմ (թուրջ-), շաղեմ «թրջել. շաղախել». 15.831 հիւթ. 15.84 չոր (?), [ցամաք (?)]. ազազուն «չոր, ճղած». ոստին «չոր, անջրդի» (?). 15.85 ջեր (ջեռնում), ջերմ. գոլ, գաղջ. ջերմն «ջերմութիւն, տենդ». 15.86 ցուրտ. հով (զով), ոյծ «ցուրտ, հով». կաղաւեմ «սառչել, ցրտից կուչ գալ». 15.87 ջինջ. բ. կլնդրիկ «կոկիկ» (?). 15.88 կոկր-ոտ «կեղտոտ» (կորկ «կեղտ»), փնթի «կեղտոտ» (փին «կեղտ»). բրոր «պղտոր. դիրտ, նստվածք».

## 16. Զգացմունք (ֆիզիկական որոշ դրսևորումներով). խառնվածքային, բարոյական և գեղագիտական ըմբռնումներ

16.11 հոգի (ոգի), [շունչ]. 16.12 հորձ «հույզ», կիրք, եռանդ [զ-գացումն (զ-գամ)]. 16.13 կիր-ք (?), [անց-ք «կիրք»] 16.14 հոգ «հոգս», [փոյթ «խնամք. շտապ». յանձանձեմ «խնամքը հանձն առնել»]. 16.15 (զ-)արման-ք ((զ-)արմ-ան-ամ), քաղկց «հիացում կամ զորություն» (?). հոյ-«զարմանք, հրաշք» (և «սարսափ, երկյուղ») (?). 16.16 [ան-ակն-կալ]. 16.17—. 16.18 երջան-կ-ութիւն (?), երան-ութիւն (?). 16.19 եղկութիւն (եղուկ) «թշվառություն, դժբախտություն», հիգութիւն (հէգ) «թշվառություն». աղն (-ունք) «աղետ, եղեռն» (?), աղէտ (?). եղեռն «չարիք, փորձանք, ոճիր», [փորձ-անք].

16.21—. հաւանիմ. գողտրիկ «հաճելի, ախորժելի». 16.22 խինդ (?), խնծիղ (?), կայտիռ «ուրախություն» (կայտառ «աշխույժ») (?), խայտան-ք.

*կատակ (՞). 16.23 [խնդաւոր (՞), խնծաւոր (՞)]. 16.24 [երջանիկ (?), երանելի (?), յ-աջ-ող-ութիւն]. 16.25 ծիծաղիմ. խախանք «բարձրաձայն ծիծաղ». բ. փոթկալ «հանկարծ ծիծաղել».[խաղամ «ծաղրել»]. ծաղր, ձաղ «ծաղր». 16.26 խաղամ. 16.27 սիրեմ (սէր). փարեմ «գրկել». 16.28 [սիրելի]. բեղուն «համակիր, սիրող». 16.29 պագանեմ (?).*

*16.31 ցաւ, մորմոք (?), բ. մումուռ (?). լլկեմ (լլուկ), կեղեմ, տաղտ-ապ-եմ (տաղտ-ուկ «ձանձրույթ. նողկանք»), բ. լմկել «նեղել, չարչարել, տանջել». 16.32 [տրտմութիւն (տրտում)]. 16.33 [անձկութիւն «տագնապ, վիշտ». հոգ «հոգս» (նաև «խնամք»)]. [խիթամ], բ. մալամշել, մուշովլիլ «մտահոգ լինել». 16.34 վայեմ (?). 16.35 ողորմ, արգ(-ահատ), [մ-խիթարութիւն (մի՛ խիթար՝ խէթ, խիթամ)]. 16.36 տրտում. 16.37 լամ, ողբամ, (ողբ) ողողանամ, ուլուլամ, քքուիմ (քուք) «լալ, ողբալ», աղատեմ «դառը ողբալ. շատ սիրել, կուրգուրալ». բ. թնալ (թնթնալ, թնկթընկալ) «լալ, հեկեկալ (մանկան մասին)». կեղերջ «գանգատ» (?) տրտունջ. 16.38 արտասուք (արտասուր). 16.39 [յոգւոց հանեմ].*

*16.41 ատելութիւն (ատ(ե)ամ). բ. գան «զզվանք». խոտեմ «արհամարհել, մերժել». 16.42 ցաս-ումն (ցասնում), [բարկութիւն, ղ-այր-ույթ]. 16.43 մոլութիւն (մոլ-ի, մոլիմ «խենթանալ»). աւիմ «ցնորվել, խենթանալ». 16.44 հեռ, մախ «նախանձ» (?), խանտ (խանդ) (?). քէն. 16.45 [ակնածութիւն]. ալարեմ «ամաչել» (?). քարու-ակ «ամոթալի, խայտառակ» (?). 16.46 [մեծարանք]. 16.47 [շուք «փառք, պատիվ»]. 16.48 սէգ, գոռոզ (?), [մեծամիտ].*

*16.51—. [լկնիմ «լրբանալ, լրբաբար հանդգնել, համարձակվել»]. 16.52 [արի]. 16.53 երկիւղ (երկնչիմ), [իւէթ «վախ» (և «խուշընդոտ»)]. [հոյ- «սարսափ, երկյուղ. զարմանք, հրաշք» (?)]. սպարդիմ (սպորդիմ, բ. սպռիլ. բ. սպրդնիլ, բ. սփրթնիլ) «գույնը գցել (վախից, ցրտից)». 16.54—. [սպառնալիք (սպառնամ). փորձութիւն]. 16.55 [երկչոտ].*

*16.61—. 16.62 գեղձիմ (-ամ, գեղձ «տենչալ, փափագել» [անձկ(ան)ամ (անձուկ) «կարոտել, տենչալ»]. 16.63 յոյս (?), [ակն (-կալութիւն)]. 16.64 —. 16.65—. 16.66 ստոյգ, հաւաստի (?). 16.67 սուտ. 16.68 կեղծ(ի)-ք (?). մեղմեղ-անք (մեղ-մեխ-անք, մեղմեղ, մեղմեխ) «կեղծավորություն, խարդախություն, նենգություն». 16.69 [թողութիւն], քաւ «մեղքի թողություն, հանցանքի ներում».*

*16.71 բարի (բարուք), լաւ (?). 16.72 գարշ. 16.73 [արդար]. 16.74 սխալ, մոլոր «թյուր, սխալ», բ. շիլ «սխալ», [ան-ար-դար]. շաղիմ «շփոթվել, սխալվել». 16.75 մեղ-ք. 16.76 [յ-անց-անք (զ-անց-անք)]. 16.77 [սըխալ, մոլորութիւն]. 16.68 սաստ. լոյտ «անարգանք, թշնամանք». 16.79 [բարեբանութիւն].*

*16.81 գեղ-եցիկ (-անի, -աւոր) (գեղ). 16.82 [տ-գեղ, տ-ձեւ].*

## 17. Մտածողություն, միտք

*17.11 միտ-ք. 17.12 [բան «բանականություն» (և «խոսք»)]. 17.13 [զմտաւ ածել]. 17.14 [ունիմ առ...]. 17.15 հաւատամ (?) 17.16 բ. մանել «հասկանալ», [ըմբռնեմ «բռնել. ըմբռնել, հասկանալ»]. իմանամ. 17.17 գի-*

տեմ գէտ). ճանաչեմ (*ծանաչեմ, աոր. ծանեայ. ծանաւթ). 17.18 [թու-իմ (թիւ). երեւիմ]. 17.19 [իմացումն (-ութիւն), ըմբռնումն, հասումն].
17.21 [գիտուն, իմաստուն]. 17.22 բ. լեկեչ «ապուշ, տխմար» (?) [ան-միտ]. 17.23 [աւեալ (աւանդող) «խելապար, խենթ, ցնորված»]. մոլի (մոլե-ալ)]. 17.24 ուսանիմ. 17.25 [ուսուցանեմ]. 17.26 [ուսող «աշակերտ». և «ուսումնական, գիտնական»)]. 17.27 [ուսուցիչ (ուսուցանող)] 17.28—.
17.31—. [ի միտ արկանել]. 17.32 մոռանամ. 17.33 [իմաստ]. 17.34 [մե-կին «պարզ, յայտնի»]. 17.35 [մթին (?)]. 17.36 գաղտ (-նի), գեղտ, բ. կողտ-ուկ, բ. սալար «գաղտնի, ծածուկ». 17.37 [ստոյգ, հաւաստի (?)]. 17.38 [մեկնեմ «բացատրել»]. 17.39 լուծանեմ (լոյծ), [մեկնեմ].
17.41 [մտադրութիւն]. 17.42 [հաւ-ակ «սկզբնապատճառ», հիմն «հիմք. պատճառ»]. յորդոր. 16.43 [թեթուք, երկեւան, երկմտութիւն]. 17.44 խէթ «կասկած»].

## 18. Ձայնական արտահայտություն, խոսք. ընթերցանություն և գիր

18.11 ձայն. դոնչիւն (դոնչեմ), թունդ (թնդամ) «թնդյուն». կերկերիմ «խզվել (ձայնի մասին)». 18.12 երգեմ. գեղգեղեմ (գեղամ «երգ»). տաղ «երգ, ոտանավոր» (?). 18.13 աղաղակեմ (բ. աղաղեմ), գոչեմ, կոնչեմ (կոինչ) (?), բ. ճվալ (ճիվ) (?), ճչել (ճիչ). ճիկ. կարդամ «ձայնել, գոչել, աղա-ղակել, բարձրաձայն կարդալ». 18.13 շչեմ. սուլեմ (սոյլ), բ. շվացնել (շիվ). 18.14 պապաչեմ «ձայն հանել (այծի մասին)» բ. մկ(մ)կալ. դա-դացեմ «գոռոզաբար կռկռալ (աքաղաղի մասին)», բ. գագաչել (-չել) «կռկռալ (հավի մասին)». կարկաչ «ճռվողյուն. կրճտոց. աղբյուրի ձայն». բ. կռավել. ոռնամ. բ. կ(ա)լանչել (?). մռմռամ (-եմ) «մռնչալ», մռնչեմ (-ամ, մռունչ).
18.21 բամ «խոսել, ասել». բաղբանչեմ «ցնդաբանել (?). բ. բլբլալ «շատա-խոսել» (?). բ. լփ-լփ-ացնել (լփռտալ) «կիսատ-պռատ խոսել». բան «խոսք. բառ. լեզու. բանականություն», բայ «խոսք, բայ», բարբառ «խոսք. լեզու. բարբառ», մունչ «խոսք». [առ-ած]. առա-սպել, բանգն (-կն) «առասպել, հեքիաթ». թրթռակ «ճարտարախոս» (?). 18.22 ասեմ. գո՛գ «ասա՛». 18.23 լռեմ (լուռ). [մունջ «համր, լուռ»]. 18.24 [լեզու]. 18.25 [բարբառ]. 18.26 բառ. 18.27—. 18.28 անուն (բ. անում).
18.31 հարցանեմ. 18.32—. 18.33 [ընդ-ունիմ. հաւանիմ]. 18.34 ուրանամ (ուրաստ). 18.35 հ-այցեմ (հայց, այց «հայց. այցելություն»), աղաչեմ, ողոքեմ «աղաչել», [հարցանեմ]. 18.36 [յանձին ունիմ «խոստանալ»]. 17.37—. 18.38 արգելում.
18.41 կոչեմ. 18.42 [կոչեմ, անուանեմ]. 18.43 [ծանուցանեմ, զ-եկ-ուցա-նեմ]. աւետեմ «ուրախ լուր հաղորդել». 18.44 սպառնամ. 18.45 [մեծա-բանեմ].
18.51 [գրեմ (գիր)]. 18.52 ըն-թեռնում. [կարդամ «բարձրաձայն կարդալ»]. 18.53—. գիր. 18.54 [գիր (գրութիւն) «նամակ»]. 18.55—. 18.56—. [թերթ]. 18.57 [գր-իչ (-ոց)]. 18.58—. 18.59—.
18.61 [գիր-ք]. 16.62 [էջ]. 16.63 [տող]. 16.64—. 16.65—. 16.66—. 16.67 [բան-ա-ստեղծ].

## 19. Տարածքային, հասարակական և քաղաքական բաժանումներ. Հասարակական հարաբերություններ

19.11 [երկիր]. 19.12 [հայրենի-ք]. 19.13—. 19.14 դաւառ (?), [կողմն]. 19.15—. 19.151 թաղ. 19.16—. 19.17 [եզր]. 19.171 սիմ «կոթող» (?).
19.21—. 19.22 ազգ (?). արմեն (?). հայ (?). 19.23 ցեղ. [դ-արմ, սեռ. ըն-տանի-ք].
19.31—. 19.32—. 19.33—. 19.34—. 19.35—. 19.36—. 19.37—. 19.38—.
19.41 [տէր (<տի-այր). տանուտէր. տի-կին]. 19.42 ստրուկ (?). ընդոծին. 19.43 արբանեակ «ծառա, սպասավոր», ծառայ (?). 19.44—. 19.45—. 19.46—. [անսամ]. 19.47 թողում (թոյլ տամ) (?). [արտ-ուն-ութիւն (արտ-աւն-ութիւն)]. 19.48 ստիպեմ (ստէպ).
19.51—. 19.52—. 19.53 [ըն-կեր]. 19.54 [դր-ացի]. 19.55—. [եկամուտ, նոր-եկ]. 19.56 հիւր (հեւր). 19.57 [հիւրընկալ]. 19.58—. 19.59 արգե-լում (արգել, բ. արգ). խոչ, [խուժ, խէժ «խոչընդոտ»].
19.61—. [բար-ք]. 19.62 կռիւ (?). 19.63 [նիւթումն]. 19.64 [(ընդ-)հան-ուր]. 19.65—.
19.72—. լիրբ. լպիրշ, բ. լիպող, լկտի, բղջ(ախոհ). շեշտ(ա-մեղտ) «ցոփ. թույլ. մեղկ». լկնիմ «լրբանալ, լրբաբար հանդգնել», բ. լ(ա)կոթ(վ)իլ լկրտ(վ)իլ, լկստվիլ). սեղեղ (սիղեղ) «անառակ մարդ, սիրական».

## 20. Ռազմական գործ

20.11 [մարտնչիմ (մարտ)]. 20.12 մարտ. 20.13 [կռիւ (?)]. 20.14 [խաղա-ղութիւն (?)]. 20.15—. 20.16—. 20.17 [մարտիկ] 20.18—. 20.19—.
20.21—. 20.22 [բիր «մահակ» (և «բրիչ»). 20.222—. 20.23—. 20.24 աղեղն. 20.25 նետ, սլաք «նետ» (կամ «աշտե»), փքին «նետ». 20.26 (գեղ-) արդն. 20.27 [սուր]. թուր. 20.28—. 20.29—.
20.31—. 20.32—. 20.33 [գլխ-անոց]. 20.34—. 20.341 կմբեայ (կումբ) «վահանապորտ». 20.35—. 20.36—.
20.41—. 20.42. 20.43 դաշյթ «հարձակում, գրոհ». 20.44—. 20.45 [դարձա-դարձ «նահանջ». ըն-կրկեմ (կրուկ(ն))]. 20.46 [անձնատուր լինիմ]. 20.47 գերի. 20.48—. 20.49 բ. ակլակ «դարան» (?).

## 21. Օրենք

21.11 [իրաւ-ունք. արդար-ութիւն]. 21.11—. 21.13—. 21.14 [իրաւ-ագէտ]. 21.15 ատեան (?). 21.16—. 21.162—. 21.17—ց 21.18 [ատենակալ. ի-րաւարար].
21.21 բողոք-իչ. 21.22 [մեղաւոր, յանցաւոր]. 21.23 [ականատես. ականջա-լուր]. 21.24 երդնում. 21.25 երդումն.
21.31 [այց առնեմ, մեղադրեմ (մեղադիր լինիմ), (ը)ստ-գտանեմ]. 21.32—. 21.33 [յանցաւոր գտանեմ]. 21.34 [քաւեմ «հանցանքը ներել, արդա-րացնել»]. [արդարացուցանեմ, ան-մեղ առնեմ]. 21.35 [մեղաւոր, յան-ցաւոր]. 21.36 [արդար, ան-մեղ]. 21.37—. 21.38—. 21.39 [արգել-(-ան, -արան)].

21.41 [յ-անց-անք, մեղ-ք], եղեռն. 21.42 [մեռուցումն]. 21.43 [շն-ութիւն]. 21.44—. 21.45 [գող-ութիւն. եղ-ուզ-ակ-ութիւն]. 21.46—. 21.47 [ուր-աստ (-ացութիւն), երդմնազանցութիւն (-աՀաւրութիւն)].

## 22. Կրոն և նախապաշարմունք

22.11 կրաւն «կրոն. կարգուկանոն» (?). Հաւատ (?). աղանդ (?). 22.12 դի-ք. 22.13 [աղաւթ-անոց (-ա-տուն)]. 22.14 *[սեղան, ընծայ (-արան), մատուց(-արան)]. 22.15 [ձաւն, ընծայ «ղոՀ»]. 22.15 տաւն «տոն. (*ղոՀ)». 22.16 [երկիր պագանեմ (երկրպագեմ)]. 22.17 մաղթեմ «աղո-թել. բարի ցանկանալ» (?), [աղաւթեմ]. 22.18 երէց. [ձաւնիչ «ղոՀ մատուցող, քուրմ»]. 22.19 սուրբ.
22.21—. 22.22 [աւետ(արան)եմ]. 22.23 [բարեբանեմ]. 22.24 անիծանեմ (անէծ-) [բանադրեմ]. 22.25—. [յուանամ. ածանեմ]. 22.26—.
22.31 երկին-ք (?). 22.32—. [ան-դունդ-ք «անդունդ, դժոխք, գերեզման»]. 22.33—. 22.34—. 22.35—. 22.36—. 22.37—.
22.41—. 22.42 [թով-չ-ութիւն]. 22.43 թով-իչ [դէտ, Հարցուկ]. 22.44—. 22.45 [երեւ-ոյթ, տես-իլ]. 22.46 [(Հ)ոգի]. 22.47 [ցոյց «նշան»].

## 23. Դերանվանական և սպասարկու բառեր ու մասնիկներ

23.11 ես. 23.12 մեք. 23.13 դու. 23.14 դուք. 23.15 ին-քն (-քեան).
22.21 իմ. 23.22 մեր. 23.23 քո. 23.24 ձեր. 3.25 իւր.
23.31 ս-ա. այ-ս. -ս. 23.32 դ-ա. այ-դ. դո-յն. դ. 23.33 ն-ա. այ-ն. նո-յն. -ն. 23.24 աւա-ս-իկ. աւա-դ-իկ աւա-ն-իկ. 23.35 ա-ս-տ. 23.36 ա-ն-դ.
23.41 ո(վ). 23.42 զ-ի-նչ. 23.43 ո-ք. ո-մն. 23.44 ի-ք. ի-մն. ի-նչ. ի-ր. 23.45 ուրեք. ուրեմն. ուստի. 23.45 ո-ր.
23.51 ի (յ-). 23.52 զ-, ձ- (ձ-գեռն) (?). 23.43 առ. առաջ. 23.54 ց-. 23.55 ընդ. ենթ. 23.56 ըստ. 23.57 վեր. գեր. 23.58 ներ-. 23.59 արտ-. 23.591 մի-նչ.
23.61 եւ (և). ու. 23.62 բ. ան «կամ» (?). 23.63 այլ. 23.64 բա «թե, որ. իրոք, անշուշտ». 23.65 ե-թէ. 23.66 երբ. 23.67 քան.
23.71 ո-չ (?). 23.72 մի՛.
23.81 ան- (ան-անուն), ն- «ան-» (ն-ուաղ) (?). 23.82 տ. (տ-ձեւ). 23.83 ան- «վրա» (ան-ձեռոց). 23.84 նի- «ցած, վար» (նի-ստ). 23.85 ամբ- «շուրջը, երկու կողմը» (ամբ-ողջ).
23.91 -էն (անդր-էն). 23.92 -ք, -չ (ո-ք, ո-չ). 23.93 -ւոր. 23.94 -ձ, -զ, -ս (ին-ձ, քե-զ, ի-ս).

# I. ԿԱՌՈՒՑՎԱԾՔ

## 1. ՀՆՉՅՈՒՆԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔ

Հայերենի, որպես ինքնուրույն լեզվի, գոյության սկզբնական շրջանը մոտավոր հաշվումներով պետք է ընդգրկած լինի բավականաչափ ընդարձակ ժամանակ՝ 1,5—2 հազարամյակ։ Սակայն այդ շրջանի մասին հնարավոր չէ թիչ թե շատ ամբողջական գաղափար կազմել տվյալների սակավաթվության և հատվածայնության պատճառով։ Ներկա աշխատության ներածության մեջ տրված շրջանաբաժանմամբ մենք տարբերեցինք այս շրջանի համար երկու ենթաշրջան՝ սկզբնային և ուշ՝ սրանց սահմանագիծը անցկացնելով մոտավորապես մ. թ. ա. 2000 թ.։ Սակայն այս բաժանումն էլ լոկ ենթադրական է և չունի արտալեզվական ու լեզվական որոշակի կռվաններ։ Այսուհանդերձ, նրկատի առնելով մի կողմից՝ հնդեվրոպական լեզվավիճակի վերականգնման և հայերենի՝ հնդեվրոպական լեզուների ու բարբառների մեջ գրաված տեղի, մյուս կողմից՝ վաղնջականին հաջորդող հնագույն, ապա և հին շրջանների վերաբերյալ տվյալները՝ մենք կարող ենք որոշ ընդհանուր եզրակացություններ անել վաղնջական հայերենի կառուցվածքային և բառային առանձնահատկությունների մասին։ Ավելի հանգամանորեն կարելի է քննել այս շրջանում հայերենի՝ ուրիշ լեզուների հետ ունեցած շփումների ու փոխազդեցությունների հարցը։

Տվյալների համակցված քննությունը մեզ հնարավորություն է տալիս բացահայտելու վաղնջական հայերենի կամ վաղնջահայերենի հնչյունական և, ավելի փոքր չափով, քերականական որոշ առանձնահատկություններ։ Վաղնջահայերենը դեռևս շատ հեռացած չպետք է լիներ հնդեվրոպական բարբառային այն նախավիճակից, որ մենք հնարավորություն ունենք վերականգնելու։ Միաժամանակ, նրա մեջ արդեն ավարտին պետք է հասած լինեին մի շարք պրոցեսներ, որոնք արդեն սկսվել էին հնդեվրոպական միասնության շրջանում։

Ի՞նչ հատկանիշներով է բնութագրվում վաղնջահայերենի հնչյունական կառուցվածքի զարգացման պրոցեսը։

Ձայնավորային համակարգի համար կարելի է վերականգնել հետևյալ պատկերը. 1) դեռևս պահպանվում էին հնդեվրոպական ձայնավորների քանակական տարբերությունները, այսինքն՝ երկար և կարճ ձայնավորները հընչույթային տարբերություն ունեին. 2) հիմնականում պահպանվում էին հընդեվրոպական երկբարբառները. *eu>oy և *ou>oy փոփոխությունները դեռևս տեղի չէին ունեցել. *suesōr >հ. հ. քոյր փոփոխությունը ցույց է տալիս, որ *eu>oy (ոյ) անցումը տեղի է ունեցել միջձայնավորային *s-ի անկումից (*s>*h>—) և երկար ձայնավորների կարգի վերացումից հետո(*ē>i, *ō>u փոփոխություններով և սրանց հետ կապված ā-ի ու a-ի տարբերության



15—455

վերացումով). սրա հետևանքով էլ հնդեվրոպական *eu երկբարբառը և *s-ի անկման հետևանքով ստացված *eō կապակցությունը փոխվում են միատեսակ, այլ կերպ ասած՝ եթե մենք ընդունում ենք երկար և կարճ ձայնավորների տարբերություն, ապա չենք կարող դեռևս ենթադրել *eu>oy (ոյ) փոփոխությունը. 3) պետք է կարծել, որ, այսպես կոչված, երկար երկբարբառները, որոնք հնդեվրոպական լեզվում առանց այն էլ հազվադեպ էին և հանդիպում էին հիմնականում վերջավորություններում, վաղնջահայերենում դադարել էին գոյություն ունենալուց, և հաստատվել էին միաքանակ երկբարբառներ. սա մասամբ հաստատվում է հ.-ե. թեմատիկ հիմքերի տրականի *-ōi վերջավորության գրաբարյան -ոյ արտացոլմամբ (*u̯edōi >գետոյ)՝ հակառակ ընդհանուր օրենքի, թեև կարող էր դեր խաղալ նաև համաբանությունը (եթե չենթադրենք, ինչպես կարծում են այլ հետազոտողներ, տրականի վերջավորության անկում և հետագա վերականգնում). 4) ամենայն հավանականությամբ հնդեվրոպական գերկարճ *ə և *ь ձայնավորները վաղնջահայերենում արդեն վերածվել էին սովորական a (ա) ձայնավորի, որ նպաստել է երկար և կարճ ձայնավորների տարբերության հետագա վերացմանը. Հայտնի է, որ հնդեվրոպական *ə-ն (ըստ ոմանց՝ նրա երեք տեսակները՝ *ə$_1$, *ə$_2$, *ə$_3$) հերթագայվում էր երկար ձայնավորների հետ *ē/*ō/*ə (ə$_1$), *ā/*ə (ə$_2$), *ō/*ə (ə$_3$). Նկատելի է, որ հնդեվրոպական *ь-ն նույնպես հերթագայվում էր, թեև ոչ նույն օրինաչափականությամբ, կարճ ձայնավորների հետ՝ որպես նրանց թուլացած (գերկարճ) աստիճան (հմմտ. արդի հայերենում ի՛/ը, ու՛/ը հերթագայությունը ըստ շեշտի դիրքի). 5) հնդեվրոպական ձայնորդների ինքնուրույն կարգի վերացումը պետք է հասցներ *i-ի և *u-ի երկար և կարճ տեսակների մերձեցմանը բուն ձայնավորներին՝ ի տարբերություն մյուս ձայնորդների, որոնք ձայնավորային աստիճանի վերացմամբ պետք է ավելի մերձենային բաղաձայններին։

Այսպիսով, վաղնջահայերենը պետք է հիմնականում բնութագրվեր ձայնավորների և երկբարբառների հետևյալ տիպերով.

*e *o *a *i *u
*ē *ō *ā *ī *ū
*ei *oi *ai
*eu *ou *au

Վաղնջահայերենում, ամենայն հավանականությամբ, դադարում են անկախ գոյություն ունենալուց հ.-ե. *r, *l, *m, *n ձայնորդների ձայնավոր տիպերը՝ *r̥, *l̥, *m̥, *n̥՝ իրենց երկար զուգատիպերով (*r̥̄, *l̥̄, *m̥̄, *n̥̄) հանդերձ. սրանք հավանաբար արդեն վերածվել էին միևնույն *ar, *al, *am, *an կապակցություններին։ Եթե նկատի առնենք, որ *s>h փոփոխությունը ընդգրկել է հայ-հունա-իրանական նախավիճակային տարածքը, և որ *sr կապակցությունը համապատասխանաբար պիտի վերածվեր hr-ի ու, սրա հետևանքով, թերևս ṙ-ի (ռ), ապա վաղնջահայերենի բուն ձայնորդների շարքը պիտի կազմեին *r, *ṙ, *l, *m, *n ձայնորդները. ł-ն հավանաբար դեռևս գոյություն չի ունեցել որպես l-ի հատուկ տարբերակ, առավել ևս որպես առանձին հնչույթ։ Սրանց պետք է միացնել, թերևս որոշ վերապահությամբ y, w (յ, ւ) կիսաձայնները, որոնք հերթագայվել են i, u ձայնավորների հետ ըստ դիրքի, մի երևույթ, որ դեռևս առկա է գրաբարում՝ ի տանէ, բայց յականէ: Ինչպես կտես-

նենք, վաղնջահայերենում, հավանաբար, արդեն առկա է եղել պայթականների՝ միջձայնավորային և նախաբաղաձայնական դիրքերում շփականանալու երևույթը. այս երևույթի հետագա ավարտումը՝ գրաբարում արդեն առկա անցումներով (*septm̥>եւթն, *pətēr>հայր, *pətros>հաւր և այլն) լրացնում է հիշյալ կիսաձայնների շարքը այնպիսի տեսակներով, որոնք արդյունք չեն հերթագայության, այսինքն՝ y, w կիսաձայններին հաղորդում է հնչույթային անկախություն։

Վաղնջահայերենը բնութագրվել է բաղաձայնական համակարգի հետևյալ փոփոխություններով. 1) հնդեվրոպական քմայնացած ետնալեզվայինների առաջնալեզվայնացման, հատկապես շփականացման և կիսաշփականացման պրոցեսը հասնում է իր ավարտին, այսինքն՝ հ.-ե. *g´h, *g´, *k´ բաղաձայնները համապատասխանաբար փոխվում են j-ի (ձ) ու, միջին դիրքում, z-ի (զ), c-ի (ծ) և s-ի (ս). 2) ամենայն հավանականությամբ իր բոլոր հիմնական առանձնահատկություններով ներկայացված է հնդեվրոպական բաղաձայնների հայկական տեղաշարժը, այսինքն՝ խուլերը վերածվել են շնչեղ խուլերի, ձայնեղները՝ խուլերի, շնչեղ ձայնեղները՝ ձայնեղների (թերևս շնչեղության պահպանումով որոշ խոսվածքներում՝ առանց հնչույթային տարբերակման. պարզ չէ, *p>h փոփոխությունը տեղի՞ էր ունեցել, թե՞ առկա էր որևէ միջակա հնչյուն, առանձնապես f-ն (ավելի քիչ հավանական է ենթադրել *,$p^c$, եթե նկատի առնենք, որ հնդեվրոպական բարբառային շնչեղ խուլ *ph-ից եկած $p^c$-ն մնում է անփոփոխ). այսպիսով տեղի են ունեցել հ.-ե. *p, *t, *k>վ.-հ. *f(?),*$t^c$,*$k^c$,հ.-ե. *b, *d, *g> վ.-հ. *p, *t, *k, հ.-ե. *bh, *dh, gh>վ.-հ. *b(h), *d(h), *g(h) փոփոխությունները. հավանական է հ.-ե. խուլերի ձայնեղացումը ձայնորդներից հետո՝ *rp>rb, *rt>rd և այլն. 3) դեռևս հնդեվրոպական շրջանում հայ-հունա-հնդիրանական տարածքում տարբերակված են եղել շնչեղ խուլերը, որոնք հայերենում կրել են հիմնականում պարզ խուլերից տարբեր փոփոխություններ՝ *ph, *th, *kh>$p^c$, $t^c$, x (փ, թ, խ), ընդ որում *th-ն, ի տարբերություն պարզ *t-ի, չի ձայնեղացել ձայնորդներից հետո՝ *rth>r$t^c$, բայց *rt>rd. 4) հնդեվրոպական հայ-հունա-իրանական տարածքում *s-ի թուլացման և h-ի վերածվելու պրոցեսը հայերենում հասնում է իր ավարտին, ընդ որում անհայտ է, h-ն ընկնո՞ւմ է միջին վանկերում, թե՞ այդ անկումը տեղի է ունենում ավելի ուշ. *s>h փոփոխության հետևանքով հայերենից դուրս եկած հին *s-ին փոխարինում է *k´-ի շփականացմամբ ծագած s-ն (ս)։

Այս փոփոխությունների հետևանքով վաղնջահայերենում պետք է հաստատվեր հնդեվրոպականից մեծապես տարբեր բաղաձայնական համակարգ, որտեղ մեծ թիվ էին կազմում շփականները, կային սուլական կիսաշփականներ, և բացակայում էին շրթայնացված ետնալեզվայինները (ընդհանրապես վերջինները նախահայերենում միայն առանձին հետքեր են թողել, և վաղնջահայերենում շրթնային տարրը հանդես է եկել առանձին արտացոլումների ձևով՝ u, w). շչական շփականները և կիսաշփականները, ամենայն հավանականությամբ, հանդես են գալիս հնագույն շրջանում՝ գերազանցապես երկրորդ քմայնացման հետևանքով։

Այսպիսով, վաղնջահայերենի համար կարելի է վերականգնել բաղաձայնների հետևյալ տիպերը.

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| *b(h) | *d(h) | *g(h) | *ǰ(h) | | |
| *p | *t | *k | *c | | |
| *pʻ | *tʻ | *kʻ | *cʻ | | |
| *f (φ)? | *θ (*δ)? | *x (*γ?) | *s | *z | *h |

Հայտնի չէ, հնդեվրոպական ազատ (բազմատեղ՝ տարբեր վանկերի վրա ընկնող) շեշտի՝ հիմնականում վերջընթեր դառնալու պրոցեսը քննարկվող շրջանում ավարտվե՞լ է արդյոք, թե՞ ոչ, բայց որ այդ պրոցեսը մեծապես նախապատրաստվել է այս շրջանում, կասկած հարուցել չի կարող։

Վաղնջահայերենին պետք է վերագրել հնդեվրոպական վանկի այնպիսի փոփոխությունը, որ այն այլևս չէր վերջանում պայթականներով։ Հայտնի չէ, տեղի ունեցե՞լ էր արդյոք հնդեվրոպական *r-ի՝ հայերենին հատուկ դրափոխությունը՝ *dhabhro->**դարբին**։

## 2. ՁԵՎԱԲԱՆԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔ

Վաղնջահայերենի քերականական կառուցվածքը մեզ հայտնի է շատ ավելի քիչ չափերով, քան հնչյունականը։ Եթե հնչյունական կառուցվածքի վերաբերյալ եզրակացություններ կարելի է անել առանձին բառերի վերականգնման տվյալների, բառափոխառությունների հիման վրա, ապա քերականական կառուցվածքի վերականգնման համար անհրաժեշտ են բառակապակցությունների վերականգնման տվյալներ։ Սակայն բառակապակցությունների փոխառությունը հազվադեպ երևույթ է, արխաիկ բարդությունների ուսումնասիրությունն էլ անհրաժեշտ փաստեր չի ընձեռում։ Կարելի է անել միայն որոշ ընդհանուր եզրակացություններ հնդեվրոպական լեզվի վերականգնման տվյալների ու հայերենի ուշ ավանդված փաստերի համեմատության հիման վրա՝ կատարելով ստացված արդյունքների ժամանակագրական որոշ տարաբաշխում։ Այս դեպքում մեզ օգնում են հնչյունական փաստերը ևս, որքանով ձևաբանական փաստերը պայմանավորված են հնչյունական փաստերի ազդեցությամբ։

Վաղնջահայերենը, անշուշտ, պահպանել էր հնդեվրոպական ձևաբանական կառուցվածքի թեքականությունը։ Սրա հետ միասին այն պետք է բնութագրվեր նախամասնիկների խիստ փոքր դերով և վերջամասնիկների առատությամբ։

Ի՞նչ հավանական փոփոխություններ պետք է ենթադրել վաղնջահայերենի ձևաբանական կառուցվածքի համար. 1) հավաստիորեն կարելի է պնդել, որ այս շրջանում ավարտվում է միջմասնիկավորման վերացման պրոցեսը՝ բայական *-ne- միջամասնիկի և *-ne- վերջամասնիկի՝ վաղուց սկսված փոխազդեցության հետևանքով. առաջինը փոխարինվում է վերջինով. 2) ձայնորդների հնդեվրոպական համակարգի քայքայման հետևանքով *-i-ով և *-u-ով հիմքերը անցնում են ձայնավորային հիմքերի շարքը, իսկ *-r-ով, *-l-ով, *-m-ով, *-n-ով վերջացող հիմքերը ստանում են հատուկ հոլովման տիպերի արժեք. եթե նկատի առնենք, որ բառավերջային *-m>-n փոփոխությունը հիմքեր է ունեցել նախահայերենում, ապա կարելի է ասել, որ վաղնջահայերենում արդեն առկա է *-r, *-l, *-n ձայնորդներով հիմքերի հատուկ հոլո-

վումը. 3) Նկատի ունենալով ինչպես հնդեվրոպական շրջանում նկատվող միտումները (հմմտ. նաև հին հնդկերենի հոլովման առանձնահատկությունները), այնպես էլ հայերենի *s>h փոփոխությունը՝ թերևս h-ի մասնակի անկմամբ, պետք է կարծել, որ վաղնջահայերենում պայթականով վերջացող հիմքերը եզակի ուղղականում լիովին զուրկ էին *s վերջավորությունից. սրա հետևանքով փոխվում է հնդեվրոպական պայթականով վերջացող անբուն (աթեմատիկ) և բնավոր (թեմատիկ) հիմքերի ընդհանուր փոխհարաբերությունը. հայցականի վերջավորության տարածմամբ ուղղականի վրա որոշ բնավոր հիմքեր անցնում են -n-ով հիմքերի շարքը. հնդեվրոպական *-es-ով հիմքերի համար ևս պիտի ենթադրել բնավոր (թեմատիկ) հիմքերի հետ ուժեղ փոխազդեցություն. սրա հետ է կապված թերևս անբուն ձևերի շարժական շեշտի անցումը բնավոր հիմքերին. 4) ամենայն հավանականությամբ վաղընջական շրջանին պետք է վերագրել հիմքերի և վերջավորությունների մեջ իրար հետ հերթագայվող հ.-ե. *e և *o ձայնավորներից մեկնումեկի գերակշռություն ստանալը հոլովման և խոնարհման համակարգերում. ընդհանուր առմամբ կարելի է ասել, որ բնավոր հոլովման մեջ գերակշռություն է ստանում o-ն, բնավոր խոնարհման մեջ՝ e-ն. բնավոր և անբուն հիմքերի փոխազդեցության ուժեղացման դրսևորում պետք է համարել հ.-ե. *-no-ով, *-ro-ով հիմքերի *-ni-ով, *-ri-ով տարբերակների առկայությունը. 5) քանի որ այս շրջանում հնդեվրոպական վերջավորությունների անկումը բացառվում է, ուստի պետք է կարծել, որ հնդեվրոպական հոլովման և խոնարհման վերջավորությունները հիմնականում պահպանվել են՝ ենթարկվելով բաղաձայնների տեղաշարժի, *s>h փոփոխության և հնչյունական այլ երևույթների հետ կապված մասնակի փոփոխությունների, այսինքն՝ հոգն. *-es-ը դարձել է *-eh, եզ. սեռ. *-osi̯o-ն՝ *-ohyo (ուշ՝ *-oyo), գործ. *-bhis-ը՝ *-b(h)ih, խոնարհման ներկայի հգն. 1-ին դեմքի *-mes-ը՝ *-meh, 2-րդ դեմքի *-te-s-ը՝ *-te-h և այլն. 6) դժվար է որևէ բան ասել սեռային տարբերությունների և երկակի թվի մասին. հնարավոր է, որ այս շրջանում դեռևս առկա էին արական, իգական, ու չեզոք սեռերի և եզակի, երկակի ու հոգնակի թվերի հակադրությունները. 7) բայի մեջ հնդեվրոպական կատարյալի (պերֆեկտի) առկայության մասին որևէ տեղեկություն չկա, բայց կասկած չի կարող լինել ներկայի և աորիստի հիմքերի հակադրության շարունակման մասին, ընդ որում *s>h փոփոխությունը պետք է հիմք տար, այսպես կոչված, սիգմատիկ (*s-ով) աորիստի համապատասխան փոփոխության համար. 8) թերևս այս շրջանին է վերաբերում հնդեվրոպական *-sk-ով (*sk´-ով) հիմքերի դերի մեծացումը, հատկապես հաստատուն կերպով ապառնու արժեք ստանալը. *sk (*sk´)>c փոփոխությամբ ստեղծվում է ցոյական հիմքերի հետագա համակարգը։

## 3. ՇԱՐԱՀՅՈՒՍԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔ

Շարահյուսական առումով վաղնջահայերենը պիտի պահպանած լիներ հնդեվրոպական լեզվի հիմնական առանձնահատկությունները։ Ինչպես ցույց է տալիս հնդեվրոպական այլ լեզուների, հատկապես հին հնդկերենի և հին հունարենի համեմատությունը հին հայերենի հետ, վերջինս դեռևս հիմնականում պահպանել է հնդեվրոպական նախադասության համեմատաբար ազատ շարադասությունը. բնականաբար այդ վիճակը պետք է լիներ նաև վաղըն-

ջահայերենում։ Սակայն եթե խնդրառությունը, մասնավորապես ձևական խնդրառությունը հին հայերենում խիստ կարևոր դեր է կատարում, այսինքն՝ բառերի հոլովման ձևավորումը հաճախ կախված է ոչ այնքան նախադասության ընդհանուր իմաստից, որքան խնդրառու բառի բնույթից, ապա վաղնջահայերենում խնդրառության դերը համեմատաբար թույլ պիտի եղած լիներ։ Ընդհակառակն, ուժեղ է եղել համաձայնության դերը. մասնավորապես պետք է նշել որոշչի և որոշյալի՝ սեռով, թվով ու հոլովով համաձայնելու պարտադրականությունը, որ հին հայերենում որոշ չափով խախտված է. նախադաս որոշիչը կարող է չհամաձայնել որոշյալի հետ, այլ դեպքերում էլ համաձայնությունը տեղի է ունենում գերազանցապես ըստ հոլովի, հաճախ նաև ըստ թվի, բայց, իհարկե, ոչ ըստ սեռի, որ հին հայերենում բացակայում է։ Վերջինում նոր երևույթ է նաև հինգ և ավելի թվականների հոլովումը, որ հնդեվրոպականում չի եղել. պետք է կարծել, որ վաղնջահայերենում դեռևս պահպանվել է հնդեվրոպական վիճակը։ Անձնական դերանունների որպես ենթակա գործածվելը կախված է եղել ենթական ընդգծելու պահանջից, ինչպես հնդեվրոպականում և հին հայերենում։

Քանի որ հին հայերենը չունի հնդեվրոպական հարաբերական *i̯o-դերանունը, պետք է կարծել, որ *i̯o-ի դերի թուլացումն արդեն առկա է եղել վաղնջահայերենում՝ ուժեղացնելով հարցական դերանունների հարաբերական դերը։ Միաժամանակ շարունակել են կարևոր դեր խաղալ դերբայական դարձվածները՝ ավելի հաճախակի հանդես գալով երկրորդական նախադասությունների փոխարեն։

## 4. ԲԱՌԱԿԱԶՄՈՒԹՅՈՒՆ

### ա) ՎԵՐՋԱԾԱՆՑՈՒՄ

Թեև բառակազմությունը հնդեվրոպական լեզվում ակնհայտ ձևաբանական արժեք ունի և համեմատաբանների կողմից քննվում է հիմքերի կազմության մեջ, բայց նկատի առնելով հնդեվրոպական հիմքերի՝ վաղնջահայերենում կրած փոփոխությունները՝ մենք նպատակահարմար ենք համարում այն քննել առանձին, մանավանդ որ այս դեպքում տվյալներն ավելի շատ են։

Ինչպես ամեն մի լեզու, այնպես էլ վաղնջահայերենը պետք է ունենար կենդանի և քարացած, գործուն և ոչ գործուն, արդյունավետ և ոչ արդյունավետ ածանցներ։ Այսպես, հայտնի է, որ ազգակցական անունների մեջ հանդիպող հ.-ե. *-tĕr ածանցը դեռևս հնդեվրոպական շրջանում դադարել էր գործուն ածանց լինելուց։ Որոշ ածանցներ համապատասխան անածանց հիմքերի բացակայության պայմաններում այլևս չէին գիտակցվում որպես այդպիսիներ։ Եթե փորձենք հայերենի հնդեվրոպական ծագման բառերի՝ առաջին մասում բերված ցանկի հիման վրա որոշել վաղնջահայերենի՝ հնդեվրոպականից ժառանգած անվանական ածանցները, ապա կստացվի հետևյալ պատկերը. վաղնջահայերենում մասամբ անգործածական են դարձել հնդեվրոպական որոշ ածանցներ, երկրորդները շարունակում են գործել գրեթե նույն չափով, երրորդների գործառության շրջանակները լայնացել են. պետք է նշել հատկապես հնդեվրոպական հիմքակազմիչ տարրերի և գործուն ածանցների զուգորդումների հիման վրա հանդես եկած և լայն գործածություն ստա-

ցած ածանցները։ Վաղնչահայերենի ածանցների՝ ստորև բերվող ցանկում տրվում են վերականգնված վաղնչահայ ձևերը՝ համապատասխան հնդեվրոպական և հին հայկական (գրաբարյան), հազվադեպ նաև բարբառային ձևերով հանդերձ, ընդ որում որպես օրինակներ բերվում են գրանցված գրաբարյան կամ բարբառային բառերը, անհրաժեշտ դեպքերում՝ համապատասխան վերականգնումներով։

Վաղնչահայերենը բավականաչափ հարուստ է բնավոր (թեմատիկ) հիմքեր կազմող ածանցներով.

1) Վ.-հ. *(i)i̯oh (ար.), *-(i)i̯on (չեզ.), *-(i)i̯ā (իգ.) [հ.-ե. *-(i)i̯os, *-(i)i̯om, *-(i)i̯ā] > հ. հ. -ի. այս երկսրդային ածանցը կազմել է գոյականներից և բայերից ածականներ և ածականացված գոյականներ. վաղնչահայերենում այն եղել է դեռևս գործուն և արդյունավետ ածանց, հին հայերենում դադարել է արդյունավետ լինելուց, թեև պահպանվել են ածանցելի և ածանցյալ հիմքերի հակադրություններ. ա) գոյականներ՝ ալի-ք, աղաւնի, աղ-աւր-ի-ք (*աղ-աւր՝ աղամ-ից), ամուրի, այգի, անդի (անդեայ) «տավար» (հմմտ. անդ), արծուի, աւձիք, բարտի, բուենի, գարի (?), գերի (հմմտ. գերեմ), գինի, երկ-սայրի (հմմտ. սայր), կաղնի (հմմտ. կաղին), կոգի «կարագ» (նախապես *«կովային»=հ. հնդկ. gáv-ya-. հմմտ. կով), հանի «տատ» (հմմտ. հան), հացի, հոգի (հմմտ. հոգ, հով), հովանի, մատանի (հմմտ. մատըն), մարի, մաքի, յղի, ներքինի (հմմտ. ներքին), շողի-ք (?), ոզնի, որդի, (ամ-, մի-)որձի (հմմտ. որձ), ուղի (հմմտ. աւղ, որ, սակայն, կապը արդեն խզել է ուղի-ի հետ), սամի, սարի-ք «շղթա, կապանք», ստրի «ջուլհակային հաստոցի գլան», տեղի (հմմտ. տեղ<ետեղ-), ցաքի «մի բույս» (հմմտ. ցաք, ցախ), քանի (հմմտ. քան), քեղի, քենի, քեռի. այստեղ հատուկ խումբ են կազմում ծառանունները՝ բարտի, կաղնի, հացի, մայրի, ավելի ուշ՝ համաբանությամբ՝ եղեւնի. համեմատաբար ուշ է տարածում ստանում -ենի ածանցը, որ ոմանք ուրարտական ազդեցությամբ են բացատրում[1]. փաղաքշական արժեք ունեն հանի-ն՝ կազմված հան-ից, մոզի-ն (հմմտ. հուն. μοσχίον «հորթ, հորթուկ»՝ μόσχος «հորթ, երինջ» բառից), այլև, թերևս, բարբառային ապի-ն (հմմտ. հ.-ե. *appa՝ հուն. ἄππα «հայրիկ, ապի»). բ) ածականներ՝ ամայի (հմմտ. ամամ «թափել, լցնել»), արի (հմմտ. այր, ար-, ար-ու), աւելի (հմմտ. յ-աւելում), կենդանի (հմմտ. կենդան-անամ, ան-կենդան), հովանի, ձրի (հմմտ. ձիր), մոլի (հմմտ. մոլիմ), յղի, (ա)նաւթի, փանաքի «խեղճ» (հմմտ. փանաք), փնթի[2]։ Հնարավոր է ենթադրել, որ ա-ով հիմքերի վրա տարածված սեռական-տրականի -ի վերջավորությունը ծագում է այս ածանցից։ Հ. հ. -ի-ն հաճախ հանդես է գալիս հոգնակիի -ի-ք ձևով՝ աւետիք (հմմտ. աւետեմ), նստիք «գահավորակ» (հմմտ. նստիմ), (հաց)ուտիք (հմմտ. ուտեմ), այլև գործիք, հարսանիք, ցուիք և այլն։ Հավանաբար *-enii̯o- ձևից է ծագում -նի ածանցը՝ գաղտնի (այլև ուշ յայտնի, նախնի):

Մի շարք դեպքերում այս ածանցի *-i̯- տարբերակը՝ ա) ենթարկվել է դրափոխության, բ) վերածվել է ջ-ի, գ) քմայնացրել է նախորդ պայթականները և հետագայում դրանք վերածել համապատասխան շփականների՝ *ghi̯ > ջ, *gi̯ > ճ, *ki̯ > չ. վաղնչահայերենում վերջին երկու փոփոխությունները դեռ չեն կատարվել, բայց դրափոխության երևույթը հավա-

[1] Վ. Բանատյանը [V. Bănăteanu, 1960] բխեցնում է ուրարտական աղբյուրից։

[2] Հ. Աճառյանը [ՀԱԲ 4², 507], ինչպես նշվել է, համարում է բարդություն՝ փին+թի, բայց ավելի հավանական է թ-ի աճական լինելը։

*նաբար արդեն առկա է եղել՝* այլ *(հ.-ե.* *al-i̯o-), այր *(հ.-ե.* *anri̯o-?), ձայն *(հ.-ե.* *gh'hu̯ьui̯i-), ճշոյլ *(հմմտ.* շող), ցայլ, *թերևս նաև* քայլ *(հ.-ե.* *skli̯i- *և* *kli̯il-)*։ Վերջին երկու դեպքերի համար բերենք մի քանի օրինակ՝* անուրջ < *onōri̯o-, մէջ < *meldhi̯o- < *medhi̯o-, ստերջ < *sterdhi̯a *(հմմտ.* ստերդ), լիճ < *lēgi̯ā *(հմմտ.* լիկ*)*, պոչ < *bou̯oki̯o-(?) *և այլն։*

*Որոշ դեպքերում էլ այս ածանցն ունեցող բառերը ենթարկվել են հետագա բաղադրության և նույնիսկ հին հայերենում պահպանել իրենց վերջնաձայնավորը՝* միա-յն < * smii̯ā *-ից (հմմտ.* մի):

*2) Վ.-հ.* *-ik-i̯ā *(հ.-ե.* *-ik-i̯ā. *հմմտ. հ. ս.* КОТОРИЧЬ *«կռվարար»]*[3] > *հ. հ.* -իչ. *բաղադրյալ ածանց, որ կապվել է գործողի անուն և հետագայում լայնորեն տարածվել է ենթակայական դերբայի արժեքով՝* արարիչ, բրիչ, գրիչ, գործիչ, լուծիչ, ստեղծիչ *և այլն. այս ածանցի տարբերակը պետք է համարել համեմատաբար քիչ տարածված* *-uk-i̯ā*-ն > հ. հ.* –ուչ՝ անյարուչ *«չմիացող, անմիաբան»,* ընկալուչ *«ընդունող. փեսա» (հմմտ.* ընկալիչ), թաթաւուչ, մարթուչ, սրտաուչ, տեսուչ:

*3) Վ.-հ.* *-kʿ(o)- *[հ.-ե.* *k(o)-*]* > *հ. հ.* -ք. *հնդեվրոպական լեզվում այս ածանցը կազմել է գոյականներից ածականներ ու գոյականներ (վերջիններս՝ հաճախ փոքրացուցիչ-փաղաքշական արժեքով) և ածականներից գոյականներ. վաղնջահայերենում հավանաբար արդեն դարձել է քիչ գործուն ածանց՝ տալով փոքրաթիվ նոր կազմություններ, իսկ հին հայերենում ընդհանրապես դադարել է այդպիսին լինելուց. սրան մասամբ նպաստել է միևնույն ծագումն ունեցող իրանական փոքրացուցիչ-փաղաքշական* -ak, -īk, -ōk, -ūk *(*>–ակ, -իկ, ոյկ, –ուկ) *ածանցների տարածումը.* ատոք, բարուք *(հմմտ.* բարի), բողոք, բորբոք *(հմմտ.* բորբ), թանաք *(հմմտ.* թան), թուք *(հմմտ. բրբռ.* թու), ճերիք *(?)*, ոլոք, ողոք, շուք *(?)*, սլաք, ցամաք *(?)*, փանաք *«խեղճ»,* փորոք, փուք *«ողբ»,* քուք *«ծեծելու փայտ»։ Առանձին դեպքերում հին հայերենում այս ածանցը պահպանվել է միայն բաղադրություններում՝* արտաք-ս (*և* արտաքոյ), ներք-ին (*և* ներքոյ): *Թերևս հ.-ե.* *-ko-*ի մի տարբերակն է եղել* *kho-*ն որ հանդիպում է* գլուխ,-ոյ *բառում (հ.-ե.* *gōlu-kho-*)։ Եթե ճիշտ է* պոչ *բառի ստուգաբանությունը՝ հ.-ե.* *bou̯oki̯o-*ից* *[*b(h)(e)u- «փչել, ուռչել»],* *ապա սկզբնական* *-ko- *ածանցի* *-k-*ն քմայնացել է հնագույն հայերենում* *-i̯-*ի ազդեցությամբ (հմմտ.* փուք—փչել):

*Մի շարք բառերում առկա* -կ-*ի համար ենթադրվում է սկզբնական* *-g(o)-*մասնիկ, որ կարող է լինել կամ* *-ko-*ի տարբերակը, կամ աճականի և հիմքակազմ* *-o-*ի զուգորդում՝* բոկ *(*boso-go-*)*, տոկ (*dou̯ōg- . *հմմտ.* տեւ-եմ) *և այլն։ Վաղնջահայերենում այն հավանաբար արդեն չի գիտակցվել որպես անկախ ածանց։*

*4) Վ.-հ.* *-lɔh *(ար.)*, *-lon *(չեզ.)* *-lā *(իգ.) (հ.-ե.* *-lōs, *-lōm, *-lā) > *հ. հ.* –լ, *սեռ.* –ոյ. *այս ածանցը հնդեվրոպական շրջանում կազմում էր անուններից անուններ՝ ընդլայնելով ածանցելի հիմքերը, իսկ այն տարածքում,*

---

*³ Համեմատությունը հ. ս. բառերի հետ և* *-ik-i̯ā *ձևի վերականգնումը պատկանում է Ա. Մեյեին [*Meillet, *1936, 75]։ Այն հանգամանքը, որ* -իչ-ը *միանում է աորիստի հիմքին, այս ստուգաբանությունը դարձնում է փոքր-ինչ կասկածելի։*

որին պատկանում էին նախահայերենը, նախասլավոներենը և այլն, անուններ էր կազմում նաև բայերից. վաղնջահայերենում այս գործառությունը ընդարձակվել է՝ հնդեվրոպական դերբայական բուն մասնիկների արտամղումով. նրանով կազմվում են՝ ա) անորոշ՝ ածել,-ոյ, բերել,-ոյ և այլն, բ) անցյալ դերբայ՝ ածեալ,-ոյ, բերեալ,-ոյ, այլև գ) *-ii̯o- (>հ. հ. -ի) մասնիկի հաբակցությամբ (*-lii̯o- >հ. հ. -լի)՝ ապառնի դերբայ՝ երբեմն ենթակայականի արժեքով՝ ածելի, բերելի և այլն և դ) -ց-ի հարադրությամբ՝ բուն ապառնի դերբայ՝ ածելոց, բերելոց և այլն։ Անմիջաբար հնդեվրոպականից եկող *-lo-ով և *-lā-ով կազմությունները համեմատաբար քիչ են և դեռևս վաղնջահայերենում սահմանափակ գործածություն են ունեցել՝ ամուլ, -ոյ, աւղ, -ոյ (և -ից), աքաղաղ, -ոյ (հմմտ. բրբռ. աքլոր), գայլ (*u̯ai-lo-՝ *u̯lku̯i̯o-ի բաղարկությամբ), ընչուղ, -ոյ (?), թել, -ոյ (*tek-lo-?), ծիլ, ծիղ, -ոյ, ձոյլ (հմմտ. ձեւ. վաղնջահայերենում՝ *jew-lo-՝ *jew-ի կողքին), մատաղ, -ոյ, ուլ, -ոյ, շող, -ոյ, քաղ (քող), -ոյ: Առանձին խումբ են կազմում հին հայերենում «ձայնավոր/երկբարբառ+լ/ղ» հնչյունախմբով վերջացող բազմավանկ բառերը, որոնց այդ հնչյունախմբերը հավանաբար դեռևս գիտակցվել են որպես ածանցական մասնիկներ, և որոնց ձայնավորներն ու երկբարբառները գալիս են հին հիմքակազմ տարրերից՝ վ.-հ. *-elo-, *-olo-, *-ilo- և այլն. այս բառերի հոլովաձևերը երբեմն չեն ավանդված կամ ավանդված են համեմատաբար ուշ. վաղնջահայերենում դրանց ածանցային արժեքը ամենայն հավանականությամբ պարզորեն գիտակցվել է՝ անթեղ (հմմտ. բ. անթայր, եթե անթեղ-ը կազմված չէ թեղել բայից՝ ան- նախամասնիկով), բ. անձող (գրբ. ածուխ), արգել (հմմտ. բ. բք–արգ), բորեղ (հմմտ. բոռ), երկիւղ (հմմտ. երկնչիմ), ընչուղ, -ոյ, խնծիղ (հմմտ. խինդ, խնչոյք), մաքիլ, թակաղ (հմմտ. թակ(ն)), տարգալ և այլն։ Բացի թակաղ-ից -աղ ածանց է առանձնացվում խանդաղ-ատ, կախաղ-ան, կենցաղ, այլև յաչաղեմ, յապաղեմ բառերում։ Թեև տորմիղ/լ բառի մեջ կարելի է առանձնացնել -իղ/լ-ը որպես ածանց (հմմտ. տարմ, որ տորմ-ի ձայնդարձային տարբերակն է), բայց տորմ-/տարմ- արմատի ծագումն անհայտ է։

Մի շարք բառերում *-lo-, *-lā- ածանցի *-o-ն և *-ā-ն արտացոլող -ո- և -ա- հոլովիչների փոխարեն առկա է այլ հոլովիչ, հատկապես -ի-ն. այս *-li-ն պետք է համարել *-lo- ածանցի տարբերակը. սրանց հարաբերությունը հավանաբար նույնն է, ինչ *-ni- և *-no- ածանցներինը. կան դեպքեր էլ, երբ տեղի է ունեցել սկզբնական *-o-ի փոփոխություն՝ համատիպ հիմքերի համաբանությամբ. հմմտ. բոյլ, դայլ, դուլ, խուլ, նոյլ, սալ (*k'əlā), բ. սրլոլ «սառնամանիք», քաղ «արու այծ. անասնախառնք» (հմմտ. քաղոց ամսանունը, որտեղ -ո-ն գալիս է *-o-ից)։

Մի շարք դեպքերում հին հայերենում *-lo-ով հիմքերը պահպանվել են միայն բաղադրությունների կազմում՝ բ. ակլակ «դարան», ասեղն (*ak'ilon), սլաք (*k'ū-lā), փրցլի-ք:

5) Վ.-հ. *-mo- (հ.-ե. *-mo-)> հ. հ. -մ. այս ածանցը հնդեվրոպական շրջանում կազմել է ածականներ և գոյականներ. վաղնջահայերենում այն դեռևս պահպանած պիտի լիներ իր ածանցական արժեքը, բայց հին հայերենում դադարել է գործուն ածանց լինելուց՝ պահպանվելով ոչ մեծ քանակությամբ բառերի մեջ՝ թարմ, թուրմ (հմմտ. թրեմ «այլուր շաղախել», թուրջ, թրջեմ), նամ, մեղմ (հմմտ. մալեմ «մանրել», մլմլել «շփել», մեղկ), ողորմ,

որմ (*ork-mo-*?)*, ջերմ (*հմմտ. ջեր «տաքություն»*, ջերմն), սերմ (*հմմտ.* սերեմ, սեր-ունդ), տրամ *«ամուր»*, տիղմ (*հմմտ. բ.* տիղ)։ *Մի շարք դեպքերում այն ներկայացված է բաղադրությունների կազմում՝* աղմ-ուկ, արմ-ուկն, յարմ-ար, ցամ-աք *(?)*։

*6) Հ.-Հ.* *-(e-, o-)no-, *-nā [*Հ.-Ե.* *-(e-, *o-)-no-, *-nā]>*Հ. Հ.* -(ի-ու-)ն. *այս ածանցը հնդեվրոպականում կազմել է ածականներ ու բայանուններ և վաղնջահայերենում, ամենայն հավանականությամբ, պահպանել է իր գործածությունը. հին հայերենում այն ներկայացված է մի քանի կերպ. ա) առանձին բառերի վերջում, որոնց թեք հոլովներում հիմքային* *-o- *ձայնավորը դեռևս պահպանվել է՝* բերան, -ոյ, բոյն, -ոյ, գին, -ոյ, մուն, -ոյ *«մժեղ»*, քուն, -ոյ և գերան, -աց, կեան-ք, -աց (*հմմտ.* կեամ). *բ)* -ն-*ով հիմքերի* ն-*ի մեջ, որը իբրև ածանց չի գիտակցվում՝* աղն *«աղեր»*, բեռն (*bher-no-. *հմմտ.* բերեմ), բուռն, դառն *(?)*, թակն, թէկն, թոռն, լեառն, կոռն, ձմեռն, սառն, սեռն (?), ստեղն, տոռն *«թոկ»*, տոռն *«սանդի կոթ»*. *գ)* -ին, *սեռ.* -ոյ *ածանցի ձևով, որ նույնիսկ ընդարձակել է իր գործածության շրջանակները և շարունակել է բառեր կազմել՝* ամուսին, գետին, դարբին, դեղին (*հմմտ.* դեղ *«բույս, դեղ»*), եղեւին, կաղին (*բ.* ա-կաղին), ոստին *«չոր, անջրդի»*, *այլև* առաջին, լոին, միջին, նրբին, ջերին (*հմմտ.* ջեր *«տաքություն»*, ջերմ) *և այլն. սրա մի տարբերակն է* -յն-*ը, որ ավելացել է* -ա-*ով վերջացող հիմքերի վրա և ստացել* -այն *տեսքը՝ անցնելով* -ի-*ով հիմքերին՝* ամենայն, երկայն (*հմմտ.* երկար), միայն, որովայն, ստայն, ունայն *և այլն. դ)* -ուն-*ի ձևով, որ, թերևս, մասամբ խառնվել է Հ.-Ե. միջին սեռի դերբայական* *-o-mno-*ից* (*-o-meno-) *ծագող* -ուն-*ի հետ՝* աղփուն *«ակար»* (*հմմտ.* աղփի), բեղուն *«պտուղ, բերք»*, իմաստուն (*հմմտ.* իմաստ), ձեղուն (*հմմտ.* ձող?)։

*Մի շարք դեպքերում հին հայերենում առկա են* -ո-*ից և* -ա-*ից տարբեր ձայնավորներով, հատկապես* -ի-*ով հիմքեր, որոնց* -ի-*ն մասամբ գալիս է* *-no-*ի տարբերակը ներկայացնող* *-ni-*ից, մասամբ* *-o-*ով հիմքերից անցել է* -ի-*ով հիմքերին համաբանությամբ (հատկապես* -յն-*ի դեպքում. հմմտ. վերևում քննված* -(ա)յն-*ով բառերը)՝* բան (*bhā-ni-), թաւն (*tap-ni-), այն (*plateno-), մոյն *«վայելչություն»*, (*mou-no-), -մոյն *«-նման»* (*mou-no-), սրունք (*k'runi->*k'uruni-), տաւն (*dāp-ni-) *և այլն*։

*Հ.-Հ.* *-no-*ով հիմքերը ևս հին հայերենում երբեմն ներկայացվում են բաղադրությունների մեջ, որոնք մասամբ գալիս են հնից (հատկապես* -նի-*ով բառերի դեպքում՝* *-n(o)-+*-ijo- *բաղադրյալ ածանցից), մասամբ հետագա կազմություններ են՝* բորենի *(?)*, կուենի, նոլանի, ոզնի, քենի։

*7)* Հ.-Հ. *-(e)ro, *-(e)rā [*Հ.-Ե.* *-(e)ro-, *-(e)rā] >*Հ. Հ.* -ր, *սեռ.* -ոյ *և* -աց. *այս ածանցը հնդեվրոպական լեզվում կազմում էր ածականներ, որոնք մասամբ գոյականացել են. վաղնջահայերենում այն հնդեվրոպականից եկող բառերի մեջ զգալի չափով կորցրած է եղել իր բառակազմական արժեքը, եթե մանավանդ այդ շրջանում է տեղի ունեցել* *-r-*ի դրափոխությունը բաղաձայնից հետո դրված դիրքում՝ «բաղաձայն +r»>«r+բաղաձայն» ձևով. սրան հակառակ «հիմքի ձայնավոր տարր +*-ro-» կապակցության բազայի վրա տարածվում և հին հայերենում ակտիվանում են* -ար, -որ, -ուր *ածանցները։ Հնդեվրոպականից եկող և հին հայերենում իբրև բաղադրյալ չգիտակցվող կամ թույլ գիտակցվող բառերի մեջ բուն ածականները սակավաթիվ են՝* թիւր, -աց, իւր, -ոյ, լուռ, -աց, նոր, -ոյ, չոր (*ուշ* -ոյ, -ից), սուր, -ոյ

(և գոյական)։ Համեմատաբար շատ են գոյականները՝ պահպանված -ո- կամ -ա- հիմքակազմ տարրով՝ ալեւր (ալիւր), -ոյ, աճեր, -ոյ, աճուր, -ոյ, դիր, -ոյ, (և -ից. հմմտ. դնեմ<*դի-ն-եմ), գիշեր,-ոյ, իր,-աց, լար,-ոյ (և -ից, -աց), լուր,-ոյ (հմմտ. լու, ստր. լուայ), ճիւր,-ոյ (?), ձոր,-ոյ, մամուռ (-ոյ ?), մաւր,-աց «ճահիճ», ոլոր (-ոյ?), սէր,-ոյ, սոր,-ոյ «ծերպ, խոռոչ», սուր, -ոյ «թուր» (հմմտ. սուր «սուր»), տուր,-ոյ (հմմտ. ե-տու)։ Մի քանի բառում *-ro-ի փոխարեն առկա է *-ri-ով հիմք (սրանց հարաբերությունը մոտավորապես այնպիսին է, ինչպիսին *-no-ով և *-ni-ով հիմքերինը)՝ բառ,-ից, լիր,-ից, սայր,-ից։ Ինչպես նշվեց վերևում, մի շարք բառերում *-r-ի դրափոխության հետևանքով կապը լիովին խզվել է նախկին *-ro-ով (*-rā-ով) և *-ri-ով հիմքերի հետ՝ արտ, լիրբ, մերկ, մերձ, մուրկ, ճուրբ, շերտ, պորտ, սուրբ։ Հաճախ այդպիսին է վիճակը նաև այն դեպքում, երբ *-ro- ածանցը հանդիպում է միայն բաղադրությունների կազմում (այդ թվում՝ աճած որևէ ածականով)՝ մանավանդ *r-ի դրափոխության պայմաններում՝ ամպրոպ, արբուճ (*abh-ro-), բերրի, դարբին (*dhabh-ro-), թրիք, թուրմ, թուրշ, կորի «փոքրիկ ջրանցք», կրակ (?), ոլորտ։ Եզր բառը հնում ունեցել է *-o-ով հիմք (հմմտ. հ. սլավ. езеро, ռուս. озеро), բայց անցել է հին հայերենի -ր-ով հիմքերի շարքը՝ սեռ. եզեր։ Զգալի թվով բառերում լրացուցիչ -ն-ի առկայության պայմաններում (եզակի հայցականի վերջավորության տարածում ուղղականի վրա, լրացուցիչ *-en- կամ *-no- ածանցների հավելում, համաբանություն) դրանք անցել են -ն-ով հիմքերի շարքը՝ ամառն, եղեռն, կաւառն «նեղ առու», ձմեռն, քիւռն։

*-ro- ածանցն է ենթադրվում նաև հին հայերենի դասական թվականների -իր (երկիր, երիր, չորիր), -րորդ և երորդ ածանցների մեջ. հմմտ. *du̯i-ro- >երկիր (երկրորդ), *penkʷe-ro >հինգերորդ և այլն։

Մի քանի խոսք ասենք նախորդ ձայնավորով և *-ro-ով կազմված -ար, -որ, -ուր ածանցների մասին. սրանց առանձնացումը մասամբ պայմանական է՝ հիմնված համապատասխան այլ բառերի օրինակի վրա, մասամբ իրական՝ համապատասխան ածանցելի հիմքերի առկայությամբ։ Սրանցից -ար-ը խառնվել է հնից եկող -ար- բայածանցի (հմմտ. մեծ-ար-եմ և հուն. μεγαίρω> *μεγαριω) և, թերևս, առնեմ-ի ար- բայահիմքի հետ, -որ-ն էլ հանդիպում է նաև համապատասխան բայահիմքերի կազմում. 1) -ար՝ արդար (զ-արդ-ար-եմ, յ-արդար՝ արդ-ից), գալար (հմմտ. բ. գալ, այլև գել, գիլ), դալար (հմմտ. հուն. θαλερός «մատաղ»), երկար (հմմտ. երկայն և հուն. δηρόν «երկար ժամանակ»), մրար (հմմտ. մուր), մոլար (հմմտ. -մոլ, մոլի, մոլոր), պալար և այլն. 2) -որ՝ բեկոր (հմմտ. բեկ, բեկանեմ), բոլոր, գլոր (հմմտ. գիլ «գլորում», գլել «գլորել»), սին-լքոր (հմմտ. լքանեմ) և այլն. 3) -ուր՝ բլուր, թաքթաքուր և այլն։

Վերջապես, հ.-ե. *-ro-ն է առկա հավանաբար նաև հին հայերենի -եար, սեռ. -ոյ հոգնակերտ-հավաքական մասնիկի մեջ, որ առկա է բանեար, իշեար, որեար «մարդիկ» բառերի մեջ՝ իմաստային անցմամբ։

3) Եթե վաղնջահայերենում տեղի էր ունեցել *sḱ (*sk)>$c^c$(ց) փոփոխությունը, ապա հնդեվրոպական *-sḱ-ով (*-sk-ով) ածանցական կազմությունները պետք է գոյություն ունենային -$c^c$-ի ձևով։ Հնդեվրոպական լեզվում *-sḱ-ով (*-sk-ով) կազմվել են ածականներ, որոնք մասամբ գոյականացել են։ Հին հայերենում մենք ունենք -ց-ով կազմությունների երկու տիպ՝

ա) զուտ անվանական, որոնք զուգահեռներ չունեն բայական ց-ով ձևերի մեջ, և բ) անվանա-բայական, որոնց դեպքում նկատվում է անվանական և բայական ձևերի ակնհայտ զուգահեռություն, այսինքն՝ բայական (հատկապես աորիստային) -ց-ով հիմքերը հանդես են գալիս նաև որպես անվանական կազմություններ։ Ընդհանրապականից նույնությամբ եկած -ց-ով կազմությունները սակավաթիվ են, ընդ որում դրանք սովորաբար կարող են հանդես գալ նաև որպես բայահիմքեր՝ -ն-ով, -ան-ով կամ առանց դրանց, և -ց-ն պահպանվում է ամբողջ հարացույցում՝ այց (այց-եմ՝ հազվադեպ. ավելի հաճախակի է այց առնել հարադրական բայը) և հայց (հայցեմ), հարց (հարց-ան-եմ), ցոյց (ցուց-ան-եմ), քաղց (քաղց-ն-ում). պետք է ենթադրել, որ վաղնջահայերենում առկա էր անվանական և բայական -ց-ով կազմությունների մերձեցման միտում, թեև վերջին ձայնավորների պահպանության պայմաններում անվանական և բայական հիմքերը պիտի տարբերակված լինեին։ Բայցի աորիստային ձևերում -$c^{c}$-ի (-ց-) տարածման հետ կապված այս պրոցեսը այլ ուղղություն է ստանում. այս դեպքում առկա է ոչ թե անվանական և ընդհանուր-բայահիմքային, այլ անվանական և աորիստա-հիմքային զուգահեռություն. այլ կերպ ասած՝ աորիստային շատ հիմքեր կարող են գործածվել կամ որպես ինքնուրույն անվանական ձևեր՝ հաճախ հոգնակերտ -ք-ի հարակցությամբ (բաց՝ բանամ-ից, ընթաց-ք՝ ընթանամ-ից, սառոյց՝ սառնում-ից և այլն), կամ որպես բաղադրությունների երկրորդ բաղադրիչ (առ-ընթաց՝ ընթանամ-ից, երկայնակեաց՝ կեամ-ից, ձագասնոյց՝ սնանիմ-ից և այլն)։

Այս ածանցի հիման վրա կազմված է -ոց, սեռ. -աց ածանցը (*o skā)? աստիճանաբար լայն տարածում է ստացել՝ կազմելով նոր բառեր՝ ութ-ոց «ծածկոց» (*au-ti->ութ+-ոց), հն-ոց (հուն-՝ հուր-ի տարբերակը+-ոց) և այլն. այն կա նաև -ան-ի հետ միացած՝ -ան-ոց ձևով՝ հատկապես տեղացույց նշանակությամբ։ -(ա-,ե-)ցի ածանցը գալիս հ.-ե. *-sk´o- ու *-i̯o- ածանցների միացումից և վաղնջահայերենում պետք է լայն տարածում ստացած լիներ՝ *-$c^{c}$i̯ā ձևով. այն ցույց է տալիս ծագում որևէ տեղից[4]։

Ինչ վերաբերում է երկիցս, երիցս տիպի ձևերին, ապա դրանք կարող են ինչպես ընդհանրապական կազմություններ լինել (հմմտ. հ. վ. գերմ. zwiski «կրկնակի». Meillet, 1936, էջ 101), այնպես էլ կազմված լինել հայկական հողի վրա. վերջին դեպքում անբացատրելի է միայն երկիցս ձևը (փոխ. երկուց-ս), եթե, իհարկե, -ի-ն համաբանական չէ։

9) Հ.-ե. *-so- ածանցն է վերականգնվում հին հայերենի մի շարք բառերում՝ բոց (*bhok´-so-), թուռ (*tur-so. հմմտ. նաև թուշ< *թուրշ), քացախ (*ku̯at-so-) բառերում, բայց ածանցը վաղնջահայերենում արդեն դադարած է եղել գործուն լինելուց։

10) Հ.-ե. *-tero- ածանցը, որ կազմված է եղել *-t(o)- ու *-ero- ածանցներից, հայերենում թողել է միայն առանձին հետքեր և վաղնջահայերենում էլ հավանաբար գործուն չի եղել. նրա առկայությունը հավաստի է միայն ընդեր,-ի,-աց (*en-terā. հմմտ. հուն. ἔντερον, հգն. ἔντερα բառում, հավանական՝ հաստոյր «ուժգին» (հմմտ. հաստ), նքոյր «մաղ» (*neik «մաղել») բառերում և դերանվանական սեռական ոյր «ում», էր «ինչի» ձևերում։ Կասկածելի է եղտիւր բառի համար *elditro- նախաձևի վերականգնումը։

---

[4] Կան նաև -ցի-ի ծագման այլ վարկածներ (Գ. Ղափանցյան, Գ. Ջահուկյան)։

11) Հ.-ե. *-to- ածանցի դիրքային տարբեր փոփոխությունների, այլև *-lo-ի դերբայական դերի աշխուժացման հետ կապված հայերենում խախտվում են *-to-ի միասնության և արդյունավետության հիմքերը. Հավանական է կարծել, որ վաղնջահայերենում մեծ չափով պակասել էր նրա դերը, և խզվել էին նրա տարբեր իրացումների հիմքերը. *-no-ի և *-lo-ի նման այդ ածանցը հնդեվրոպական լեզվում կազմել է բայական ածականներ՝ դերբայական արժեքով, այլև հանդես եկել գոյականներից ածականներ և բայերից գոյականներ կազմելու գործառությամբ. Հին հայերենում այն ըստ դիրքերի ներկայացված է՝ ա) թ-ով՝ արծաթ,-ոյ, թաղթ «ձվի թաղանթ» (?), հիւթ (նիւթ), փերթ, բ) դ-ով (ձայնորդներից հետո)՝ հիւանդ, մարդ (հմմտ. մեռանիմ), սկունդ «շան ձագ» (?), գ) տ-ով (ս-ից հետո)՝ երաստ-անք, դ) -յ-ով՝ բայ «որջ» (հմմտ. բայոց), կոյ և ե) զրոյով՝ առու(*sru-to- կամ *sru-ti-), դի, լի (*plēto- կամ *plejo-), լու «լսված», մարի, տի «տարիք»:

Հ.-ե. *-to- ածանցը հանդես է եկել նաև *-do- տարբերակով (հմմտ. հ. հնդկ. das′át—հուն. δεκάδ- «տասնյակ»). այս ձևն ունեն լաստ, մաստ «ածիկ» (եթե իրանական փոխառություն չէ), սաստ, ցուրտ բառերը:

Առայժմ դժվար լուծելի է հին հայերենի աղքատ, անքատ, արմատ (հմմտ. արմ, զ-արմ, արմն), բ. լմփատ (<լամբատ) «դեր», հաստատ (հմմտ. հաստ), հատատ (?) բառերի -ատ-ի հարցը. այն համեմատում են հ. հնդկ. dr̥ṣad «ջրաղացաքար» և հուն. φυγάς, -άδος «վազող, փախչող» բառերի հետ, որ իմաստապես քիչ հարմար է [հմմտ. Greppin, 1975, 55—56. շփոթում է -ատ «հատված, կտրված» ածանցի հետ, որ, սակայն, ամենայն հավանականությամբ, ծագում է հատ-անե-մ բայի արմատից]: Այս նույն ձևով -ուտ-ը (աղբուտ, աւազուտ, թաւուտ, հացուտ, աղմուտ և այլն) Ս. Բուգգեն [Bugge, 1899, 38] համեմատում է հուն. -ώδης -ի հետ (հմմտ. ἀμαθώδης «ավազոտ»՝ ἄμαθος «ավազ» բառից): Թերևս սրա հետ, նախորդ ձայնավորի տարբերությամբ, կապված է -ոտ-ը՝ բորոտ, լուսնոտ և այլն [հմմտ. Pedersen, 1906, 474], որ ոմանք համարում են հոտ-ից կամ նրա *od- նախաձևից ծագած. այստեղից է -ոտ-ի-ն (սնոտի)՝ մասամբ իմաստով հեռացած (ոսկրոտի). այս նույն ձևով՝ *-ուտ-ի-ից է -տի-ն (մանկտի): Ավելի քիչ հավանական է սրանց հետ -էտ ածանցի կապը, որ հանդիպում է կենդանիների անունների մեջ՝ բրէտ «իշամեղու» (հմմտ. բոռ), այլև առն-էտ, որի հիմքը համարվում է փոխառված ասորերենից (arnāʹā):

12) Հ.-ե. *tro- ածանցը, որ ունի նաև *-tlo-, *-dhro-, *-dhlo-, *-thro- տարբերակները, հին հայերենում լիովին կորցրել է իր արդյունավետությունը, և պետք է կարծել, որ այդ պրոցեսն սկսված է եղել վաղնջահայերենում: Հնդեվրոպականում այս ածանցը կազմել է գործողության միջոցի, գործիքի անուններ, որ շատ լավ երևում է աղաւր-ի-ք և արաւր բառերում: Մնացած բառերից են՝ հաւր-ան «հոտ (անասունների)», մարթ-անք (*mag-thro-), մուր (*mu-tro-), յ-որիւր (*rī-tro-՝ *ar-ից). հմմտ. նաև հարիւր (*ari-tro-՝ հուն. ἀριθμός «թիվ»:

Անհնար չէ ենթադրել, որ այս ածանցի *-dhro- տարբերակից է ծագում -որդ ածանցը՝ r-ի սովորական դրափոխությամբ և իմաստի հետագա լայնացմամբ. ավելի քիչ հավանական են -որդ-ի ծագման այլ վարկածները (որդ-ի բառից կամ լատ. ordo «կարգ» բառի հետ միասին միևնույն հ.-ե. աղբյուրից և այլն): Այս ածանցը, բացի բայական հիմքերից (անցորդ, լողորդ,

մնացորդ և այլն), բառեր է կազմում նաև գոյականներից ու ածականներից՝ այգորդ, այլորդ, անդէորդ, անելորդ, լծորդ, հաղորդ (հմմտ. ալբ. palë «զույգ, ծալք»՝ *pel-ից), միջնորդ, յաջորդ, յետնորդ և այլն, ինչպես նաև դասական թվականներ առանձին (քառ–որդ) և -եր, -իր ածանցների հետ միասին (եր-րորդ, չորրորդ, հինգերորդ և այլն)։

Համեմատաբար ավելի դժվար է հնդեվրոպական անբուն (աթեմատիկ) ածանցների՝ վաղնջահայերենում արտացոլվելու հարցի լուծումը, եթե նկատի ունենանք վերջնավանկերի և վերջնաձայնավորների անկման և թուլացման հետևանքով հին հայերենում նրանց բացահայտման դժվարությունը։ Քիչ թե շատ որոշակի խոսք կարելի է ասել միայն մի շարք ածանցների մասին։ Համեմատաբար լավ են պահպանվել ձայնորդներով վերջացող հիմքերը։

1) Վ.-հ. *-en/-on (հ.-ե. *-en/-on)> հ. հ. -ն այս ածանցը հնդեվրոպական լեզվում կազմում էր ածականներ՝ գերազանցապես գոյականացած. Հայերենում առկա են միայն գոյականներ, որոնց բառակազմական կապը հին հայերենում գրեթե լիովին խզված է. -ն-ն այստեղ հանդես է գալիս միայն որպես հոլովման հիմքի ձևական ցուցիչ՝ ակն (*ok$^{u}$-en-?), անձն, առն «արու վայրի ոչխար», արդն «նիզակ» (գեղ-արդն), եզն, եղեռն, եղն, երկն, ծի-ծառն, ողն, սիւն, ուլն «պարանոց»։ Հ.-ե. *-m> հայ. ն անցմամբ, որ, հավանաբար, առկա է եղել դեռևս հնդեվրոպական շրջանում որպես բարբառային զուգաբանություն, այս հիմքերին միացել են երկու կարգի բառեր ևս՝ 1) բնավոր հիմքերի չեզոք սեռի *-om>*-on վերջավորությամբ բառերը և 2) այն բառերը, որոնց հայցականի *-(o)m>*-(o)n վերջավորությունը տարածվել է ուղղականի վրա. բնականաբար սրանց միացել են նաև այն բառերը, որոնց ն-ն հանդես է եկել համաբանությամբ։

*-en/-on ածանցը մի շարք դեպքերում հանդես է գալիս նախորդ հիմքային տարրերով բաղադրված ածանցների մեջ, որոնք բավական տարածում են ստացել։ Նշելի են հատկապես հ.-ե. *-kŏn> վ.-հ. *-$k^{c}$ŏn> հ. հ. -կն հ.-ե. *-i-ŏn> վ.-հ. *-i-ŏn> -իւն ածանցները։

Վ.-հ. *-$k^{c}$ŏn (հ.-ե. *-kŏn՝ *-ko- ածանցի անցումով *-n-ով հիմքերի շարքը)> հ. հ. -կն (ձայնավորի անկմամբ տեղի է ունեցել -$k^{c}$-ի ապաշնչեղացում *-n-ի մոտ. հմմտ. նաև մատն փխկ. *մաթն). այս ածանցը վաղնջահայերենում բավական տարածված է եղել և հանդիպում է հատկապես կենդանիների ու մարմնի մասերի անվանումների մեջ՝ արմուկն, կրուկն, ունկն, ձուկն, մուկն «1. մուկ կենդանին. 2. մկան». այն առկա է նաև դալուկն «դեղնախտ» բառի մեջ։ Հին հայերենում արմատի և ածանցի փոխհարաբերությունը լիովին գիտակցվում է դիակն բառի մեջ (-կն<*-ā-kon?), բայց արեգակն, կայծակն, փայլակն բառերը հակված են մեկնաբանելու որպես բարդություններ ակն «աչք» բաղադրիչով. -իկ-ով և -ուկ-ով վերջացող մի շարք փոքրացուցիչ-փաղաքշական բառերում, որոնք թեք հոլովներում ունեն ն-ով հիմք, պետք է ենթադրել թերևս վաղնջահայերենում համապատասխան *-$k^{c}$on -ով հիմք՝ ստացված -կն-ի ն-ի հետագա անկումով՝ աղջիկ (*աղջիկն), -կան, ծաղիկ,-կան, մանուկ,-կան: Հավանաբար այս կարգի բառերի հետ բաղարկվելով (խառնվելով) հետագայում լայն տարածում են ստանում իրանական -իկ, -ուկ-ով փոքրացուցիչ-փաղաքշական ածանցները։ Այս -կն-ը պահպանվել է նաև նաւկնեար հավաքական-հոգնակի ձևի մեջ։

Վ.-հ. *-i-ōn (հ.-ե. *-i-ōn. հմմտ. լատ. -iō, սեռ. -iōnis) > հ. հ. -իւն. որոշ դեպքերում թերևս այս ածանցի հետ խառնվել են բնավոր *-no-ով

և նույնիսկ դերբայական *-mno-ով բաղադրությունները՝ զուգորդված նախորդ տարրերի հետ. հմմտ. անիւն, անկիւն, արիւն, ափիւն (?), կորիւն (?), ներիւն, մրջիւն, որքիւն «վերք» և այլն. այս ածանցը հին հայերենում գործուն է եղել և կազմել է բազմաթիվ նոր բառեր, հատկապես բայանուններ բնաձայնական և ոչ բնաձայնական հիմքերից. սրանք հաճախ ունեն -մն-ով զուգահեռներ՝ գոչիւն—գոչումն, լալիւն—լալումն. հմմտ. նաև մրջիւն—մրջիմն:

Հին հայերենում լայն տարածում ունեցող և բայանուններ կազմող -ութիւն ածանցի վերաբերյալ կարծիքները տարամիտվում են, և առայժմ նրա հնության վերաբերյալ հավաստի խոսք ասելը դժվար է, մի կողմից՝ այն զուգահեռ ունի լատ. -tiō, սեռ. -tiōnis բայանվանական ածանցի մեջ, մյուս կողմից հեշտությամբ բացատրվում է հայերենի բազայի վրա՝ -ոյթ և -իւն ածանցներով, մանավանդ որ կան ծերոյթ և ծերութիւն տիպի զուգահեռ ձևեր: Քանի որ այս երկու ածանցներն էլ հնդեվրոպական ծագում ունեն՝ *-eu-ti- ու *-i-ŏn, և քանի որ -իւն-ի -ի-ն կարող է գալ տարբեր աղբյուրներից, ուստի հնարավոր է ենթադրել այս ածանցի ծագում *-eu-ti-ōn ձևից: Սակայն եթե *-ti-ŏn-ը զուգահեռ ունի, ապա *eu-ով ձևը մնում է առանձնակի և պետք է տարածում գտած լինի հայկական հողի վրա, թերևս վաղնջական շրջանից սկսած. նախորդող ու-ի համար հմմտ., թերևս, մի կողմից՝ ծերութիւն (և ծերոյթ. հմմտ. հուն. γραῦς, ավեստ. zaurvan-), յարութիւն (հմմտ. հուն. ὀρούω «նետվել»), մյուս կողմից՝ երիցութիւն (հմմտ. սեռ. երիցու), թողութիւն (հմմտ. թողում) և հոգածութիւն (հմմտ. հոգածու), հոգաբարձութիւն (հմմտ. հոգաբարձու) և այլն:

2) Վ.-հ. *-men/-man (հ.-ե. *-men/-mn̥)>հ. հ. -մն. այս ածանցը հնդեվրոպականում կազմում էր գերազանցապես գործողության անուններ՝ հազվադեպ նաև գործողության առարկայի և արդյունքի նշումով. հանդիպում են նաև գործողության անձի անուններ. հին հայերենում առկա ձևերից հիշենք արմն «արմատ» (հմմտ. արմ, արմատ), ատամն, բեղմն (հմմտ. բեղուն «բերք»), գեղմն «բուրդ», կողմն (հմմտ. կող), հիմն, ջերմն (հմմտ. ջեր «տաքություն», ջերմ), սերմն (հմմտ. սեր-եմ, սերունդ). մի շարք բառերում պահպանվել է -մն-ին նախորդող -ու- (*-eu/-u- սկզբնաձայնավորը՝ այտումն, գելումն (հմմտ. գելում), երդումն (հմմտ. երդու-այ): Այս -ու-ն, գիտակցվելով որպես անհրաժեշտ մաս, մտնում է հետագայում խիստ ակտիվացած -ումն ածանցի մեջ, որ կազմում է բազմաթիվ նոր բայանուններ, երբեմն -իւն-ին կամ -ութիւն-ին զուգահեռ՝ յքումն (հմմտ. յքանեմ), հոլովումն (հմմտ. հոլովեմ) և այլն, ընդ որում նաև կատարյալի հիմքից (իմացումն. հմմտ. իմանամ, իմացայ) և պատճառականի հիմքից (մատուցումն. հմմտ. մատուցանեմ): Հավանական է, որ վաղնջահայերենում -ումն-ը (*-u-men/-u-man) այսպիսի տարածում ունենալ չէր կարող. դեռևս գործում էին հնդեվրոպական հիմնական օրինաչափությունները:

3) Հ.-ե. *-er/-or ածանցը, որ հայերենում պահպանված է ազգակցական անունների (տայգր, քոյր) և, թերևս, վեր (*up-er), ներ- (*en-er-) ձևերի մեջ, դեռևս հնդեվրոպական շրջանում գործուն չի եղել, և վաղնջահայերենում այն, ամենայն հավանականությամբ, իբրև ածանց երբեք չի գիտակցվել:

4) Հ.-ե. *-ter ածանցի *-tel տարբերակը հայերենում պահպանվել է *-ā-ի հարադրությամբ և զրո աստիճանով՝ -աղ ձևով (*-ā-tlā). այն կազմել է և շարունակում է կազմել գործողի (անձի) անուններ՝ հայերենում, այս-

պես կոչված, ենթակայական դերբայի արժեքով. այդ լավ երևում է հ. հնդկ. janitár-, հուն. γενέτωρ, լատ. genitor և հայ. ծնաւղ համիմաստ ձևերի համեմատությամբ։ Այն աչքի է ընկնում մեծ արդյունավետությամբ և կարող է համապատասխան ձևեր կազմել բոլոր բայերից, ընդ որում կան և՛ ներկայի, և՛ աորիստի հիմքից կազմված ձևեր (երբեմն զուգահեռաբար՝ ծնաւղ—ծնանաւղ/-ող)։ Այն հանգամանքը, որ -աւղ-ի հետ միասին հանդիպում է նաև -ող գրությունը, կամ արդյունք է -աւղ-ի աւ-ի վաղ բարբառային մենաբարբառացման, կամ, թերևս *-ātlo -ից ծագող -աւղ-ի և *-olo-ից (համմտ. հուն. -ολης) ծագող -ող-ի խառնվելու։ Վերջին դեպքում պետք է կարծել, որ վաղընջահայերենում դրանք իրարից դեռևս տարբերվելիս են եղել *-āwlā և *-o-lo- ձևերով. վերջինս պետք է հիմք տված լինի *-lijo- ձևի համար (> հ. հ. -լի), որ գործածվում է նաև ենթակայական դերբայի արժեքով՝ գործելի «գործող» [Աբրահամյան, 1953, 35—36]։

Հնարավոր է նաև *-tel-ի *-e-ով ձևի առկայությունը, եթե ճիշտ է *dhu-rotel>դրոյլ «դռնապան» ստուգաբանությունը (համմտ. դուռն, հգն. dur-f. Աղայան, 1974, 62)։

Ինչ վերաբերում է հ. հ. -յր-ի մեջ պահպանված *-ter- ածանցին, որ կազմել է ազգակցական անուններ, սպա դեռևս հնդեվրոպական շրջանում այն դադարել էր գործուն լինելուց՝ եղբայր, հայր, մայր։

5) Հ.-ե. բուն *-tei-/-ti- (և *-thei-/-thi-) և *-teu/-tu- ածանցների *-t-ն հին հայերենում և, հավանաբար, արդեն վաղնջահայերենում ներկայացված է նույն հնչյունական տարբերակներով, ինչ բնավոր *-to- ածանցի *-t-ն, այսինքն՝ -թ, -դ, -տ, -յ հնչյուններով. Նշանակում է՝ հնդեվրոպական ածանցը, որ կազմելիս է եղել բայանուններ (հայերենում՝ նաև թանձրացական դարձած) արդեն կորցրած է եղել իր միասնությունը, դադարել է գործուն ու արդյունավետ լինելուց. այսպես, *-tei-/-ti-ն ներկայացված է -թ-ով՝ աւթ «գիշերում» (համմտ. ագանիմ «գիշերել»), աւթ-ոց «ծածկոց» (*au-ti-+-ոց. համմտ. ագանիմ «հագնել»), կարթ, նաւթի (անաւթի) «քաղցած» (*nagu̯h-ti-i̯o-), -դ-ով՝ բարդ «դեզ» (*bhr̥-ti-), սարդ (*k'r̥-ti-?), -տ-ով՝ սաստ (*k'əs-ti-?), -յ-ով՝ բայ, ընձայ (համմտ. հ. հնդկ. amhiti-). Համմտ. նաև մոյթ (*meu-thi-՝ հ. հնդկ. mēthi- «մույթ, նեցուկ»)։

Ավելի գործուն է եղել *-s-ti- բաղադրյալ ածանցը՝ նախորդ -ե-, -ի-, -ա-, -ու- ձայնավորներով՝ արուեստ (հնարավոր է սրա իրանական ծագումը), ուտեստ, հանգիստ (*sm̥-ku̯i-sti-), առագաստ, զ-գաստ, իմաստ, ու-րաստ, ելուստ, թափուստ, երկրորդաբար՝ գալուստ։

Սակավաթիվ բառերով է ներկայացված հ.-ե. *-teu-/-tu- ածանցը՝ արդ (զ-արդ), զգեստ (*u̯es-tu-. համմտ. զգենում)։

Աստիճանաբար գործուն և արդյունավետ է դարձել հավանաբար հ.-ե. *-ti-ի բազայի վրա ձևավորված *-eu-ti- բաղադրյալ ածանցը, որ հին հայերենում ստացել է -ոյթ տեսքը. այն կազմում է հիմնականում բայանուններ՝ ելոյթ, երեւոյթ (համմտ. երեւիմ), զ-այրոյթ (համմտ. զ-այրանամ և այրիմ և այլն), հազվադեպ՝ այլ անուններ՝ ծերոյթ (համմտ. ծերութիւն)։

Վաղնջահայերենում գործուն է եղել նաև հ.-ե. *-ti-ի բազայի վրա կազմավորված *-on-ti- > հ. հ. -ունդ ածանցը՝ ելունդ, ծնունդ, սերունդ, սնունդ բառերում։ Հավանաբար *-n̥-ti-ից ծագած պետք է համարել մի քանի բառերում հանդիպող -անդ ածանցը՝ աղանդ, արգանդ, եռանդ, ընդ որում վերջի-

նրա ունի նաև -ն-ով աճած ձև՝ եռանդն. դժվար է ասել, թե թաղանդ/թ բառի -անդ/թ-ը կապ ունի՞ արդյոք այս ածանցի հետ:

Հնդեվրոպական լեզուն ունեցել է դերբայական երեք տիպի ածանց՝ 1) ներկայի և աորիստի ներգործական սեռի՝ *-ent/-ont/-n̥t, 2) կատարյալի (պերֆեկտի) ներգործական սեռի՝ *-u̯es/-u̯et և 3) ներկա-աորիստ-կատարյալի կրավորական սեռի՝ *-menos/-mnos:

Սրանցից առաջինը վաղնջահայերենում հավանաբար դեռ պահպանվել է, բայց հետագայում հավաստի հետքեր չի թողել. եթե նկատի առնենք հընդաղույն հայերենում շեշտի առաջ բերած վերջավանկային թուլացումներն ու անկումները, ապա այն չէր կարող պահպանվել ոչ -ուն-ով, -ան-ով բայածականների (արբուն, գիտուն, -ասան, մածան և այլն), ոչ էլ եղունդ, ծնունդ, սերունդ, սնունդ բառերի -ունդ-ի մեջ [հմմտ. Greppin, 1975, 139—146]:

Ավելի հավանական է կարծել, որ հնդեվրոպական *-u̯es-ը (իգ. *-usi̯ā) պահպանվել է հին հայերենի -ու ածանցի մեջ, որ հին հայերենում առկա է միայն մնացուկային ձևով՝ մասամբ կատարյալի կորստի, մասամբ այլ ծագման վերջամասնիկների և հիմքակազմ տարրերի հետ խառնվելու հետևանքով. ամենից առաջ պետք է նշել այն բայածականները, որոնք գործածվում են հարադրական բայերի կազմում՝ հասու, յաղթու (նաև յաղթկու), լսու (լսու լինիմ), ապա համ նշող կծու, բ. մռու ածականները և, վերջապես, այն բարդ ածականները, մասամբ գոյականացած, որոնց մեջ -ու-ով ձևերը կազմում են երկրորդ բաղադրիչը՝ -ածու (ակնածու), -առու (մտառու), -արբու (գինարբու), -արկու (բանսարկու), -ըմպու (գինըմպու), -կալու (ակնկալու), այլև -կացու (վերակացու) և այլն. այս ածանցով կան կազմված նաև գոյականներ՝ ածու (հմմտ. հուն. ἄγυια «փողոց»), դակու «սրագ» կամ «կացին» (?): Այս -ու-ն է, որ հանդես է գալիս մի կողմից՝ որպես -ուած ածանցի առաջին բաղադրիչ (զործուած և առուած և այլն. հմմտ. անհայտ, թերևս խեթ. ծաղման, հիմքով հասու և հասուած), մյուս կողմից՝ որպես -ացու և կու ածանցի երկրորդ բաղադրիչ (հարսնացու, յաղթկու՝ յաղթու-ի կողքին):

-ու-ն պահպանվել է նաև հոգնակերտ -ք-ի հետ զուգակցված -ու-ք ձևով՝ այրուք, գինարբուք, գինըմպուք, քամուք, բ. ծամուք, փլուք և այլն:

Տարբեր ծագում ունեն առու, եղջերու, մեղու և մաւրու, ուրչու «խորթ որդի» բառերի ու-երը:

Հնարավոր է նաև բայածականներ կազմող -ուն ածանցի ծագումը *-mnos դերբայական ածանցից. վերևում հիշված արբուն, գիտուն տիպի բայածականները, ամենայն հավանականությամբ, ծագում են հենց այսպիսի ձևերից (հմմտ. *onōmno->անուն): Այս -ուն-ը խառնվել է *-ono-, *-u-no- տիպի կազմություն ունեցող ածականների հետ:

Հայերենի գործիականի կազմիչը, որ վաղնջահայերենում պիտի ունենար *-bi/-wi (*-vi) տեսքը (>հ. հ. -բ, -ւ, -վ), հավանաբար հանդես է եկել նաև մակբայակերտ արժեքով: Հետաքրքրական է նշել, որ մակբայակերտ արժեքով այն միշտ չէ, որ ունի համապատասխան գոյականների բուն հոլովաձևերի ձայնավորումը. այսպես, արդար, հետ «հետք, ոտք» բառերը հոլովվում են -ա- հիմքով հոլովմամբ, որ համաբանությամբ տարածվել է բոլոր թեք հոլովների վրա, բայց մակբայական արժեքով նրանք ունեն -ե- ձայնավորումը՝ արդարեւ, այնուհետեւ, այսուհետեւ, ուրվհետեւ ձևերում: Պետք է կարծել

որ մակբայական այս մասնիկն է տվյալ, տարբեր ձայնավորումներով, **առաջնաւ (առաջ-ի), բարեաւ, իրաւ (իր, -ի, -աց), իբրեւ (իբր), լրիւ (լիր, -ի, -ից), ստուգիւ (ստոյգ,-ի,-աց), մեղմով (մեղմ,-ոյ), փոքրով (փոյր,-ով), իբրու (*իբրու), այնու-, այսու-** ձևերում։ Այս մասնիկից են կազմված **-եւին (ամենեւին), -ովին (բոլորովին, գլխովին, իւրովի(ն))** ածանցական ձևերը, որոնց մեջ երկրորդ տարրերը կամ սովորական **-ին,-ի** ածանցներն են, կամ գալիս են հին *-bhi-ի **ի**-ի և հաջորդող **-ն**-ի կցորդումից, այսինքն՝ նախնական *-i-ն պահպանվել է հաջորդող *-no- տարրի առկայության պայմաններում։

## բ) ՆԱԽԱԾԱՆՑՈՒՄ

*Հին հայերենը մեծ քանակությամբ նախամասնիկավոր կազմություններ չի պահպանել, ընդ որում դրանք էլ մասամբ կորցրել են իրենց գործունությունն ու արդյունավետությունը։ Այդ է պատճառը, որ հունաբան դպրոցի հեղինակները հունական ածանցավոր կազմությունները պատճենելիս դիմել են նոր միջոցների՝ հաղվադեպ միայն կենդանացնելով հին նախամասնիկավոր կազմությունները։*

*Ա. Մեյեն և հնդեվրոպական համեմատական լեզվաբանության այլ ներկայացուցիչներ նախամասնիկավոր կազմությունները դիտում են որպես սովորական բարդություններ և քննում նրանց հետ միասին* [Мейе, *1938, 297*. Meillet, *1962, 163*]. *այս դեպքում բարդությունների կազմության ընդհանուր սկզբունքները չեն փոխվում, միայն թե առաջին բաղադրիչները լինում են ձևաբանորեն չփոխվող՝ սպասարկու բառեր։*

*Հնդեվրոպականից եկող նախածանցավոր կազմություններից, որոնք և՛ վաղնջահայերենում, և՛ հին հայերենում պահպանել են իրենց գործունությունն ու արդյունավետությունը, պետք է հիշել առաջին հերթին* **ան-** *ժխտական նախամասնիկով բաղադրությունները (համեմ. հ. հնդկ.* a-, *հուն.* ἀ-, *լատ.* in-, *գոթ.* un-՝ *հ.-ե.* *n̥-, *ձայնավորից առաջ՝* *ьn-)՝ **անամպ, անայր, անանձն, անանուն** (*համեմ. հուն.* ἀνώνυμος), **անարգել, անգործ, անդունդ, անեզր, աներկիւղ, անթառամ, անլոյս, անլուսին, անծանաւթ** (*համեմ. հ. հնդկ.* ajñata-, *հուն.* ἄγνωτος, *լատ.* ignōtus, *գոթ.* un-kunþs), **անձայն, անմիտ, անպտուղ, անջուր, անսերմն, անսուտ** (*համեմ. հուն.* ἀψευδής) **անփորձ** (*համեմ. հուն.* ἄπειρος ) *և այլն։ Նմանք այս* *n̥- *ժխտականն են տեսնում նաև* **ամուլ** (*n̥-pōlo-?), **ամուրի** (*n̥-putrii̯o-?) *բառերում, որ կասկածելի է։ Կասկածելի է նաև* **նուաղ** *բառի՝* *nē-u̯al-*ձևից բխեցնելը՝* *ne- *ժխտականով։*

*Հնդեվրոպական ծագում ունի, բայց հին հայերենում արդեն դադարել է գործուն լինելուց* **տ-** *ժխտական նախածանցը, որ համեմատում են կամ հ. հնդկ.* duḥ-, *հուն.* δυσ-, *լատ.* dis- (*հ.-ե.* *dus-), *կամ լատ.* dē- (*հ.-ե.* *dē) *մասնիկների հետ։ Հնչյունական առումով առաջին համեմատությունը խոցելի է. եթե հայերեն բառերը իրոք հին կազմություններ են, ապա վերջին* *-s-*ն բաղաձայններից առաջ չպետք է ընկներ.* **տ-**ն *պահպանվել է հիմնականում հնդեվրոպական հիմքերի մոտ՝* **տ-գեղ, տ-գէտ, տ-հալ, տ-հաճ (?), տ-հաս, տ-ձեւ, տ-մարդի, տ-քնիմ,** *բրբռ.* **տ-կեր, տ-կուռ (տ-կուռն** *«կոնատ»*)։ *Այս կազմությունները վաղնջահայերենում դեռևս գործուն տիպ են եղել։*

Մյուս կարգի նախածանցավոր կազմությունները կարելի է բաժանել երկու խմբի՝ 1) կազմություններ, որոնց նախածանցները գործել են միաժամանակ որպես նախդիրներ, և 2) այլ կազմություններ, որոնք գերազանցապես ժառանգվել են պատրաստի ձևով և այլևս հիմք չեն ծառայել նոր բաղադրությունների համար։ Առաջինները հին հայերենում հիմնականում գիտակցվող կազմություններ են, բայց ոչ այնքան արդյունավետ և իմաստներով ոչ այնքան որոշակիորեն տարբերակվող։ Այս պատճառով էլ հունաբան դպրոցի հեղինակները մասամբ դրանք դարձնում են գործուն՝ որոշակի համապատասխանության մեջ դնելով հունական նախածանցների հետ, մասամբ գործածության մեջ են դնում այլ նախածանցներ։

Բերենք նախ առաջին խմբի նախածանցները և թվարկենք դրանցով կազմված բառերը՝ նկատի ունենալով, որ վերջիններս կարող էին զգալի մասով առկա լինել նաև վաղնջահայերենում։

1) Վ.-հ. *jō- (հ.-ե. *g'hō «հետևում, հետո, համար», որից բալթ. *a-žo, սլավ. za)>հ. հ. զ- (հազվադեպ նաև ձ- հմմտ. զ-գայր և ձ-գեռ-ու). որպես նախդիր հին հայերենում սա հանդիպում է գոյականների տրական (որպես հարկանել, զարկանել բայերի խնդրի ցուցիչ՝ զարկանել զգետնի), հայցական (որպես որոշյալ հայցականի ցուցիչ՝ ըմել զջուրն), բացառական (որպես ասացական, իմացական, զգացական ու հոգեվիճակային բայերի խնդրի ցուցիչ՝ «մասին» իմաստով՝ ասել զնմանէ «ասել նրա մասին», այլև որպես առնել, ունել, բուռն հարկանել, յղել, գալ և այլ բայերի խնդրի ցուցիչ՝ յղել զնմանէ «ուղարկել նրա ետևից». հմմտ. ռուս. ПОСЫЛАТЬ ЗА НИМ) և գործիական «շուրջը» իմաստով՝ զնովաւ «նրա շուրջը», այլև որպես անցանել, ծիծաղել և այլ բայերի խնդրի ցուցիչ՝ ծիծաղել զնովաւ): Որպես նախածանց այն հանդիպում է հնդեվրոպական հիմքեր ունեցող հետևյալ բառերում՝ զանցանեմ, զեղծանեմ, զաչացու «կույր», զալկանեմ «ընկնել» զարդ, զարդարեմ, զարթնում, զարկ, զարկանեմ, զարմ, զարմանամ, զգամ, զգան, զգենում (հմմտ. բրբռ. գենալ), զգեստ, զգեստնեմ, զգլխեմ, զգնամ, զեկուցանեմ (հմմտ. գամ, եկի և զգամ, զ-եկ-), զեղում (հմմտ. հեղում), զեռամ, զեռուն, զինչ, զիջանիմ, զկծեմ, զհետ, զմէ (հմմտ. իմ), զով (հմմտ. հով): Զ-ն, հավանաբար ուշ, դրվել է նաև նախդրավոր այլ կազմությունների մոտ՝ զ-ան-գիտեմ, զառածանեմ, զառամ, զառանցեմ, զառտուղի և այլն։

2) Վ.-հ. *(h)orn- (հ.-ե. *porsō՝ հուն. πόρσω, πόρρω, լատ. porrō «առաջ, ավելի առաջ, հեռու»)>հ. հ. առ-. առաջին հերթին գործածվելով որպես նախդիր՝ տարբեր հոլովներով, սա հին հայերենում արտահայտում է գերազանցապես մերձավորության գաղափար, որ հիմնականում պահպանվում է նաև նախածանցային գործածության դեպքում։ Որպես այսպիսին առ-ը հանդես է գալիս և՛ բայերի և՛ հնից եկող անվանական կազմությունների դեպքում. ապ-ով և ատ-ով սկսվող արմատների մոտ հանդիպում է լրացուցիչ ա (առա-), որ կարող է լինել կամ նախահավելվածային, կամ, թերևս, հ.-ե. *-ō վերջածայնի զրո աստիճանի արտացոլում՝ *porsə->առա-. վերջին ենթադրության ճիշտ լինելու դեպքում մենք գործ ունենք հին կազմությունների հետ. քիչ հավանական է հոդակապ ենթադրելը։ Հունաբան դպրոցի ներկայացուցիչների կողմից առ-ն ստացել է նոր գործածություն՝ հուն. προσ-ի դիմաց։ Առանձնացնենք ոչ հունաբան հին կազմությունները՝ առագաստ (հմմտ. ագանիմ «հագնել»), առածիմ (հմմտ. ածեմ, ածիմ), առակ, առակոռիկ «հա-

կառակող» (առակռուհք «հակառակություն») (?), առանձին, առանց, առասպել, առաստաղ, առավել, առաւաւտ (?), առաւրեայ, առաքինի (հ.-ե. *ken- «ջանալ, աշխատել». հմմտ. մ. կիմր. gochawn, gogawn «գերազանց») (?), առէջ, առընթեր (առ+ընդ+թեր), առլնում, առխեբեմ, առողջ: Առաջ բառը կամ բխեցվում է առ-ին մերձավոր *porsədi̯o-ից, կամ համարվում առ+աջ կազմություն. նրանով կան կազմված զանազան բաղադրություններ՝ նախորդող յ-ով կամ առանց դրա (առաջա և յառաջա- ձևերով), բայց դրանց հնության աստիճանը որոշել դժվար է։

3) Վ.-հ. *andi- (*əndi-?)( հ.-ե. *anti «դիմաց, առջև» և *n̥dhos «տակ». վերջինս հոլովված ձևով գործածված)>հ. հ. ընդ-, հազվադեպ ընտ-՝ դ-ի և տ-ի շփոթությամբ (ձայնավորներից առաջ), ըմ- (շրթնային բաղաձայններից առաջ) և ըն- (այլ բաղաձայններից առաջ). որպես նախդիր արտահայտում է և՛ հ.-ե. *anti-ից եկող («դիմաց, փոխարեն», «հետ, միասին»), և՛ *n̥dhos-ից («տակ») եկող իմաստներ՝ վերջինս մասնավորապես գործիական հոլովով։ Հունաբան հեղինակները հետագայում ընդ-ի հետ միասին օգտագործում են նրա բարբառային տարբերակը՝ ենը։ Նախդիր-նախածանցի երեք տարբերակներից առաջինը սովորաբար գործածվում է առանց հոդակապի. դասական շրջանի հնդեվրոպական արմատներով կազմություններից նշենք ընդարմանամ, ընդաւազեմ, ընդգեղձանիմ, ընդգնիմ, ընդել (ընդելանիմ, ընդելնում, ընդելուզանեմ և ընդելուցանեմ), ընդմիջեմ, ընդմտանեմ, ընդմիտ (ընդմտաւոր), ընդողնիմ «անհոգ նստել» (հմմտ. յողնիմ), ընդոստ, ընդունայն, ընդունիմ. -ա- հոդակապով այն հանդես է գալիս ընդաբոյս (ընտաբոյս), ընդակից (կից-ը *gu̯el- «սեղմել, ներառել» արմատի՞ց), ընտասուն, ընդոծին բառի մեջ պահպանվել է հին *-o-ով հիմքը։ Ըն- ձևը առկա է ընթեռնում, ընկեր, ընկլնում (ընկլուզանեմ), ընկողնիմ, ընկողմանիմ, ընձեռեմ, ընկալուչ (հմմտ. ընդունիմ, աոր. ընկալայ), ընծուիմ (ըն-ծիւղ) բառերում։ Ըմ- ձևը հանդես է գալիս ըմբռնեմ, ըմբերեմ, ըմբերանեմ, ըմպեմ (համաբանական վերականգնմամբ՝ ումպ)։

4) Վ.-հ. *osti- (*əsti?) (հ.-ե. *posti)>հ. հ. ըստ-. որպես նախդիր ունի «ըստ, համաձայն», «դենը, այն կողմը» և հնդեվրոպականին մոտ «հետո, հետևից» (մի ըստ միոջէ «մեկը մյուսի հետևից, հաջորդաբար») իմաստները։ Որպես նախածանց գրվում է ոչ միայն ըստ-, այլև առանց ը-ի՝ ստ- ձևով՝ (ը)ստանձնեմ, (ը)ստգիւտ, (ը)ստգտանեմ, ստգիւել, (ը)ստերիւրեմ, ըստունգանեմ (<ըստունկանեմ), ըստհուն «ներհուն, հմուտ»։

5) Վ.-հ. *i/y- (հ.-ե. *en «մեջ»)>հ. հ. յ- (միայն ձայնավորներից առաջ. բաղաձայններից առաջ ընկել է)։ Համապատասխանում է հին հայերենի ի նախդրին, որ ձայնավորից առաջ գտնված դիրքում ունեցել է յ- ձևը (ի գետոյ, բայց յականէ). քանի որ հ.-ե. *p-ն ու *s-ն երբեմն կարող են փոխվել յ-ի՝ փոխանակ հ-ի (հմմտ. յիսուն՝ հինգ-ի դիմաց, յաւրայ «խորթ հայր» հայր-ի դիմաց), և քանի որ հ-ով բառերը կարող են ունենալ նաև յ-ով տարբերակներ (հմմտ. հատանեմ—յատանեմ), ապա երբեմն դժվար է որոշել սկզբնային յ-ի բնույթը՝ նրա ածանցական, թե ոչ ածանցական ծագումը. այս դեպքում կարելի է նկատի առնել 1) առանց յ-ի ձևերի առկայությունը և 2) բառերի ստուգաբանությունը. հ.-ե. *p-ով և *s-ով բառերի դեպքում յ-ի նախդիր լինելը քիչ հավանական է. նշենք նաև, որ առանց յ-ի մի շարք ձևեր կարող են արդյունք լինել յ-ի հետագա անկման։ Բերենք հնդեվրոպական արմատներով և յ- նախածանցով հիմնական կազմությունները՝ յածեմ,-իմ

(*հմմտ.* ածեմ,-իմ), յականեմ (*հմմտ.* ակն, ականեմ), յաղեմ (*հմմտ.* աղ, աղեմ), յանախ (*հմմտ.* ան), յամառ (*հ.-ե* *omə-?), յայտ (*հ.-ե.* *ai- *«այրել, լուսավորել», թե՞* այց), յայցեմ (*հմմտ.* այց, այցեմ), յանձանեմ (*հմմտ.* յ-անձ-ն), յանձնեմ, յանցանեմ (*հմմտ.* անցանեմ, զանցանեմ), յաշաղեմ, -իմ *«նախանձել» (հմմտ.* աշ-f), յաջողեմ, յաջորդ (*հմմտ.* աջ), յառաջ (*հմմտ.* առաջ), յառնեմ (*հմմտ.* արի՛ *«վեր կաց»),* յար (*հմմտ.* առնեմ, ար-), յարմար, յարդ (*հմմտ.* զարդ), յելուզակ (*հմմտ.* ելանեմ, ելուզակ), յետ (*հմմտ.* ետ, նետ) *(?),* յերիւրեմ (*հմմտ.* երիւր, ստերիւրեմ), յերկար (*հմմտ.* երկար), յերկուանամ, յղեմ (*հմմտ.* ուղի), յղի *(?),* յոգն, յոյս *(?),* յորդ, յորդոր, յորձ (*հմմտ.* յորդ) *(?),* յորձ *«արու ոչխար, խոյ»* (*հմմտ.* որձ):

*Հունաքան դպրոցի ներկայացուցիչների գործածած* ըն- *(բաղաձայնից առաջ) և* ն- *«մեջ» նախդիրները թերևս որևէ բարբառում այդ ձևով պահպանված* ի/յ- *նախդրի տարբերակներն են. Հ. Աճառյանը (ՀԱԲ, $3^2$, 434) այդ* ն-*ն է տեսնում* նուազել *«ծածկել» բայի մեջ (հմմտ. նաև* ընդուազել):

*6) Վ.-հ.* *(a)$c^c$- *(հ.-ե.* *ad-sk´-)> *հ. հ.* ց-. *այս նախդիրը «մինչև» նշանակությամբ հին հայերենում հազվադեպ է հանդիպում որպես նախածանց, բայց պետք է կարծել, որ վաղնջահայերենում համեմատաբար ավելի ակտիվ գործածություն է ունեցել.* ց-*ով կազմություններ են* ցայգ *«մինչև այգ, գիշեր»,* ցանկ *«պատ, պարիսպ» (հմմտ.* անկանիմ), ցերեկ:

*Երկրորդ խմբի նախամասնիկավոր կազմությունները հին հայերենում ներկայացված են հազվադեպ օրինակներով, որոնց մեջ սկզբնական կազմությունը կամ չի գիտակցվում, կամ թույլ է գիտակցվում. վաղնջահայերենում թերևս այս կազմությունների մեջ հանդես եկող նախամասնիկները ավելի ակտիվ դեր են կատարել։*

*1) Վ.-հ.* *ambi- *(հ.-ե.* ambhi *«շուրջը, երկու կողմից»)> հ. հ.* ամբ-. *առկա է միայն* ամբ-ողջ *բառի մեջ (հմմտ.* ողջ, առ-ողջ):

*2) Վ.-հ.* *an- *(հ.-ե.* an *«(թեք հարթության) վրայով, վրա»)> հ. հ.* ան-. *առկա է* անկողին, անձեռոց, *այլև, թերևս, անհայտ ծագման* անդորր (անդոյր. *հմմտ.* դիւր, դոյր) *բառերում. հավանաբար այս ածանցն է առկա նաև* (ն)ամբառնամ, նամբերեմ, նան-ուր *բառերում՝ խառնված իրան. ծագման* (ն)ամ-, (ն)ան- *նախածանցի հետ. անհնար չէ նույն մասնիկի մի այլ տարբերակը* (*nō/nə) *տեսնել* նա-խանձ *բառի մեջ (հմմտ.* խանդ, խանձ), *եթե այն իրանական ծագում չունի։*

*3) Վ.-հ.* *ni- *(հ.-ե.* *ni-, *nei- *«ցած»)> հ. հ.* ն(ի)-՝ նի-ստ (նստիմ), նիւթ (*հմմտ.* նիւթ), նկուղ *ni-gu-la-՝ *geu- *«ծռել» արմատի՞ց. հմմտ. մ. վ. գերմ.* kūle, *մ. ստ գերմ.* kūle, *հ. շվեդ.* kūla *«փոս, խոռոչ») (?), այլև անհայտ ծագման* նայիմ (*հմմտ.* նայիմ), նեցուկ (*հմմտ.* յենում, *առ.* յեցայ):

*4) Վ.-հ.* *(h)am- *(հ.-ե.* *sm̥- *«համա-, միասին»)> հ. հ.* ամ-, ան- *(ոչ շրթնային բաղաձայնից առաջ). առկա է* ամ-ուսին (*հմմտ.* ուսանիմ), ամ-որձիք, *թերևս նաև* անտառ (*sm̥-dəru-՝ *deru-, *doru- *«ծառ» բառից) բառերում։*

*5) Վ.-հ.* *hu- *(հ.-ե.* *su- *«լավ»)> հ. հ.* ն(ը)-. *անկախ բառ է՝ նախամասնիկի արժեք ստացած՝* ն-լու (*հմմտ.* լսեմ, լու, լուր), նմուշ (*հմմտ.* մուշ, մուշնեմ) *բառերում. հետագայում խառնվել է իրանական* hu-*ի հետ, որ առկա է* նզաւր (*հմմտ.* զաւր), նմայեմ, ննար *բառերում, ընդ որում սրանցից առաջինը վերլուծելի է հին հայերենում։*

Հավանաբար վաղնջահայերենում իր անկախությունը արդեն կորցրել էր հ.-ե. *e-, *o-, *ei- դերանվանական մասնիկը, որ հանդես է գալիս ե-րէ, յ-ո-վն, ո-ստ, այ-ս, այ-դ, այ-ն, այլև, թերևս, ա-ճարի և անհայտ ծագման ա-ճաւար բառերում։

Հայտնի չէ, գիտակցվե՞լ է արդյոք ներու բառի կազմությունը վ.-հ. *he-ruyi (հ.-ե. *peruti) բաղադրության մեջ. հավանաբար ոչ, որովհետև ներ-ը որպես բաղադրիչ այլուր չի հանդիպում (*per-ի տարբերակներից են առ-, եռա-(խայրի), ների):

Մասնիկի արժեք է ստացել նաև տի- «մեծ» բառը (հ.-ե. dei- «փայլել», հմմտ. լիտվ. dìdis «մեծ» ?), որ հանդես է գալիս տէր<տի-այր, տի-եզեր-ք, տի-կին բառերում. սրանք բոլորն էլ հին կազմություններ են երևում։

Հուպ բառի մեջ Հ. Աճառյանը տեսնում է *(ek)s-ub- նախաձևը (հմմտ. լատ. sub «տակ»), որ, եթե ստուգաբանությունը ճիշտ է, իբրև բաղադրություն հայերենում չի գիտակցվել։

## գ) ԲԱՐԴՈՒՄ

Հին հայերենում պահպանված բուն հնդեվրոպական բարդությունները սակավաթիվ են, բայց պետք է կարծել, որ դրանք համեմատաբար մեծաթիվ են եղել վաղնջահայերենում։ Նշենք վաղնջահայերենից եկող և հին հայերենում պահպանված մի շարք կազմություններ։

Հայերենի՝ հնդեվրոպական լեզվից ժառանգած բարդությունների տիպերի մեջ առաջին հերթին պետք է հիշատակել տասնավորներ և տասնյակներ նշող թվականները՝ կազմության ընդհանուր եղանակով, բայց հայերենին բնորոշ (վաղնջահայերենում արդեն առկա) առանձնահատկություններով՝ մետասան (<մեա-տասան<միատասան), երկոտասան, երեքտասան, չորեքտասան, հնգետասան (-ե-ն գալիս է հ.-ե. *penkʷe-ի *e-ից՝ *penkʷe-dьk'm̥t-. հմմտ. հ. հնդկ. pañca-das'at, ավեստ. panca-dasa, գոթ. fimftaí-hun), վեշտասան և քսան (*u̯ī-k'm̥tī <*du̯i-k'm̥tī. հմմտ. ավեստ. vīsaiti, հուն. դոր. Fίκατι, լատ. viginti), երեսուն, քառասուն, յիսուն, վաթսուն, յոթանասուն, ութսուն, իննսուն:

Հին պետք է լինեն նաև այն բարդությունները, որոնց առաջին բաղադրիչները թվականներ են, և որոնց այդ բաղադրիչները պահպանել են կազմության արխաիկ ձևեր՝ երկ(ի)-ով (< *du̯i-. հմմտ. հ. հնդկ. dvi-, հուն. δι-, լատ. bi-)՝ երկբայ (-ի-ի սղմամբ նախաշեշտ դիրքում), երկբան, երկբերան(ի), երկբոյս (-բուսի), երկգլուխ (-խի), երկեամ (<երկի-ամ), երկերիւր «երկու հարյուր», երկեւան (երկի+(ն)աւան), երկհամ, երկձայն, երկմիտ, երկայրի. երի-ով (<*tri-. հմմտ. հ. հնդկ. tri-, հուն. τρι-, լատ. tri-)՝ երեամ: Ինչ վերաբերում է երեք-ով և չորեք-ով բարդություններին, ապա դրանք հնդեվրոպականից չեն գալիս, բայց, ինչպես ցույց են տալիս երեքտասան, չորեքտասան կազմությունները (-ե-ի պահպանմամբ) հին են և, հավանաբար, առկա են եղել վաղնջահայերենում։

Ինչպես հայտնի է, հնդեվրոպական լեզուն բարդության բաղադրիչների կապակցման հատուկ միջոց, և մասնավորապես, հոդակապ չի ունեցել։ Հին հայերենում էլ առկա -ա- հոդակապը տարածվել է միայն հնագույն շրջանում, այն էլ համեմատաբար ուշ՝ վերջավորությունների թուլացումից և ան-

կումից հետո։ Վաղնջահայերենում շարունակվում էր հնդեվրոպական բարդությունների կազմության սովորական եղանակը. այսինքն՝ բաղադրիչները միանում էին իրենց սովորական հիմքային ձևով, ընդ որում առաջին անբուն բաղադրիչը վերջավանկում սովորաբար ունենում էր ձայնդարձի զրո աստիճան։ Ասածից բխում է, որ հին բարդություններ պետք է որոնել հին հայերենի այն բառերի մեջ, որոնք կամ զուրկ են -ա- հոդակապից և պահպանում են առաջին բաղադրիչի հիմքային ձևը, կամ -ա- հոդակապը շարունակում է հնդեվրոպական *-ā- կամ սրա ստորին ձայնդարձը ներկայացնող *-ə- ձայնավորը։ Իհարկե, հնարավոր են դեպքեր, երբ բարդությունը գալիս է հնդեվրոպական շրջանից, բայց համաբանությամբ ստացել է -ա- ձայնավորը, մասնավորապես բնավոր -ո-ով ձևը փոխարինվել է ա-ով ձևով (հմմտ. **Զոր-փոր—Զորափոր** տեղանունը)։

Հնդեվրոպական բարդությունները ևս երկու տիպի են եղել՝ կենտրոնաձիգ, որի դեպքում բարդության իմաստը սահմանափակվում է նրա ներսում՝ բաղադրիչների ընդհանուր իմաստով, և կենտրոնախույս, որի դեպքում բարդությունն ունի նաև լրացուցիչ իմաստ։ Առաջին տիպի բարդությունների մեջ մասամբ առկա է բաղադրիչների սովորական շարադասությունը (հմմտ. հուն. πατρ-άδελφος «հորեղբայր», ὁπλο-φόρος «զինակիր»), մասամբ լրացյալը նախորդում է լրացումին (առաջին բաղադրիչի բայահիմք լինելու դեպքում. հմմտ. հուն. φυγο-πτόλεμος «պատերազմախույս», բառացի «խուսապատերազմ»). վերջին տեսակը հայերենը չի պահպանել։ Երկրորդ տիպի բարդությունները հատկացական բնույթի են, այսինքն՝ ամբողջովին անված ածականներ են, որոնք ցույց են տալիս մի բան ունենալը (հմմտ. լատ. magn-animus «մեծահոգի»՝ «մեծ հոգի ունեցող»)։

Քննենք նախ անհոդակապ բարդությունները։

Այստեղ նշենք ամենից առաջ ազգակցական անունները՝ վերևում հիշված հուն. πατρ-άδελφος տիպի, թեև դրանք կարող են մասամբ համաբանական նորակազմություններ լինել՝ **հաւրեղբայր** (*pətr-), **մաւրեղբայր** (*mātr-) **քեռ-այր**, **քեռորդի** (*s̯uesr-)[5], թերևս նաև **եղբաւր-որդի** (*bhrātr-):

Ձայնորդահանգ հիմքով առաջին բաղադրիչ ունեցող բառերից հիշենք **ակնկոր**, **ակնհար**, **անձնատեր**, **չնորդի**, **ունտես**, թերևս նաև **ակներեւ**, **ձկնորս**, **մկնականջ** և այլն. երկրորդ բաղադրիչի՝ ձայնավորով սկսվելու դեպքում հոդակապի բացակայությունը սովորական երևույթ է, և այդպիսի բարդությունները կարող են հին չլինել։

Հնդեվրոպական *-i-ով և *-u-ով հիմքեր ունեցող բառերը, հանդես գալով որպես բարդության առաջին բաղադրիչ, ըստ հնչյունափոխության ընդհանուր կանոնների հին հայերենում կորցրել են այդ ձայնավորները նախաշեշտ դիրքում և համընկել ուղղականի ձևերի հետ։ Սրանք գալիս են հնից, եթե, իհարկե, մենք գործ չունենք հոդակապի բացակայության բարբառային երևույթի հետ։ Ահավասիկ այսպիսի հիմքեր ունեցող բարդությունների մի խումբ՝ **բանբեր**, **բանգէտ** (և **բանագէտ**), **քաղցկեղ**. կասկածելի է **այծքաղ** բառի հնությունը, որ, հավանաբար, պատճենված է հունարենից [ հմմտ. Meillet, *1962, 169*]։

**Հովիւ** բառի մեջ, որ համարվում է հին *(H)ou̯i-pā բարդության հետագա ձևափոխություն, *-i-ն պահպանվել է շեշտի տակ եղած դիրքում։

---

[5] Ընդհանրապես *s̯uesōr- «քույր» ձևն ինքը մեկնաբանվում է որպես հ.-ե. հին բարդություն՝ *s̯uesōr- «յուր արյուն»։

Տանուտէր *բառի մեջ պահպանվել է առաջին բաղադրիչի* ու-*ով հիմքը հավանաբար այն պատճառով, որ սկզբնապես այն ըմբռնվել է որպես սովորական բառակապակցություն՝* տանու տէր, *այսինքն՝ հիմքակազմ* ու-ն *ըմբռնվել է որպես սեռականի վերջավորություն։*

*Հին հայերենի* -ի/ա-*ով հիմքերը, որոնք արտացոլում են հնդեվրոպական* *-ā/ə-*ով հիմքերը, բառաբարդման մեջ, թերևս ավելի մեծ չափով, քան ցեղակից լեզուներում, պահպանել և, ինչպես նշեցինք, որպես հոդակապ տարածել են* -ա-*ով հիմքերը։ Նշանակում է՝ վաղնջահայերենում որպես առաջին բաղադրիչ այսպիսի հիմքեր ունեցող բարդությունները պետք է զգալի թիվ կազմած լինեին։ Թվենք հին հայերենի* ա-*ով հիմք ունեցող բառերով կազմված մի շարք բարդություններ, որոնց մեջ* ա-*ն կարող է ինչպես նախնական լինել, այնպես էլ որոշ մասով կազմված լինել* -ա- *հոդակապի տարածմամբ՝* ամանոր (ամ, -աց), բրածեծ (բիր, -աւ), գիտանարց (գէտ, -աց), երկարաբան (երկար, -աց), ընկերասէր (ընկեր, -աց), իրագէտ (իր, -աց), կենագործ (կեան-ք, -աց), կնամոլ, կնասէր (կին, -աւ), հովուասէր (հովիւ, -աց), մեծաբեռն, մեծագին, մեծատուն (մեծ, -աց), մեղուաբոյն (մեղու, -աց), մտադիր (միտ-ք, -աց), քմազարդ (քիմ-ք, -աց) *և այլն։*

*Սրանց մեջ հատուկ հիշատակության արժանի են* ամենա-*ով բաղադրությունները, որոնց* -ա-*ն գալիս է հնից (հմմտ.* ամենա-յն, *ուշ՝* ամեն-այն) *և որոնց* ամենա-*ն նշանակել է ոչ միայն «ամենա-, ամենից ավելի» ինչպես այժմ (եթե երկրորդ բաղադրիչն ածական է), այլև «ամեն ինչ» (եթե երկրորդ բաղադրիչը բայահիմք է՝* ամենաբեր, ամենագործ *և այլն), «ամեն, ամեն մի» (եթե երկրորդ բաղադրիչը գոյական է՝* ամենագիշեր)՝ ամենաբեր, ամենագեղ, ամենագէտ, ամենագիշեր, ամենագործ, ամենածին, ամենակալ *և այլն։*

*Ինչպես նշվել է, հնդեվրոպական բնավոր հիմքերը մտնում են բարդության կազմի մեջ որպես առաջին բաղադրիչ՝ պահպանելով հիմքային* *-o- *ձայնավորը։ Հին հայերենը այս տիպի բարդությունները չի պահպանել՝ դրանց* *-o-*ն փոխարինած լինելով* -ա- *հոդակապով։ Սակայն վաղնջահայերենում սրանք, անշուշտ, մեծ քանակ պիտի կազմած լինեին։ Ակնհայտ է, որ հին հայերենի* -ա- *հոդակապով բարդությունների այն մասը, որ ունեցել է հնդեվրոպական* *-o- *հիմքով առաջին բաղադրիչ, այդ հիմքային ձևը պահպանել է վաղնջահայերենում։ Այլ կերպ ասած՝ հետևյալ բարդությունները վաղնջահայերենում, ամենայն հավանականությամբ,* -ա-*ի փոխարեն* *-o- *են ունեցել (հմմտ.* գիշերոյն—գիշերայն)՝ այլածին *(հմմտ. հուն.* ἀλλο-γενής), արծաթագին, արծաթագործ, աղամուտ, բուսաբեր, գետամոյն *«գետախեղդ»,* գիշերամարտ, լիաբերան, լիաբուռն, լծակիր (*և* լծակից?), լուսաբեր (*հմմտ. և* լուսաւոր), լուսալի(ր), լուսամուտ, լուսատու, հոգաբարձ, հոգածու, հողագործ, հողածին, հրալից, ձիասէր, միջամուխ, միջամուտ, նորաբեր, նորագործ, նորամուտ, նորատիք, ողջամիտ, ջրադարձ, ջրածին *«ջրից ծնված»,* սորամուտ *«սոր (որջ, ծակ) մտնող»,* ստաբան, սրաթեւ, սրամիտ, սրատես, քնասէր *և այլն։ Միայն* ընդոծին *բառի մեջ է, որ* -ո-*վ հիմքը պահպանվել է։*

*Հին հայերենում նշանակալից թիվ են կազմում այն բարդությունները որոնց երկրորդ բաղադրիչը բայահիմք է և գալիս է համապատասխան հնդեվրոպական բայահիմքերից ու բայահիմքային կազմություններից՝* -ագ (*հմմտ.* ագանիմ *«գիշերել»*), -ած, -առ, -արած, -բեր, -բոյծ, -գործ, -գէտ, -դէզ, -դիր, -երեւ, -զ-երծ, -կալ, -կոյ, -նեղ (*և* -զ-եղ<զ-նեղ), -ման, -նիստ,

–սուն, –տես, –տեւ և այլն։ Այլ դեպքերում այսպիսի բայահիմքերը ներկայացնում են, ինչպես ածանցների կապակցությամբ նշվել է, կատարյալի հիմքը՝ –աց, –եաց, –ոյց ձևերով։ Ածանցների քննության կապակցությամբ մենք արդեն առիթ ենք ունեցել խոսելու այն բարդությունների մասին, որոնց երկրորդ բաղադրիչը բայահիմք է՝ օժտված –ու-ով, –ածու, –արկու, –առու, –երգու, –կալու, –պագու և այլն։

Վաղնջահայերենում առկա մի շարք բարդություններ հետագայում ըմբռնվել են որպես վերջածանցավոր կազմություններ, այսինքն՝ նրանց երկրորդ բաղադրիչները վերածվել են ածանցական մասնիկների (ածանցների և ածանցակերպների)՝ հնչյունական փոփոխությամբ, կամ առանց դրա. –ա– հոդակապը սրանց մեջ մասամբ սկզբնական է, մասամբ համաբանությամբ տարածված։ Այսպիսի կազմությունների մասին մասնակիորեն խոսվել է ածանցների քննության կապակցությամբ, բայց այստեղ դրանց վրա կանգ կառնենք ավելի հանգամանորեն։

–(ա)բար (հ. հ. մակբայակերտ ածանց, որ ծագում է բար–ք բառի արմատից, վերջինս գալիս է հ.-ե. *bher- «բերել» արմատից և բերել բայի ձայնդարձային ձևն է. «բարքով, ձևով» իմաստի համար հմմտ. անգլ. մակբայական -ly<հ. անգլ. lic «նման» [Greppin, 1975, 21—22]՝ ընկերա–բար, մեծա–բար՝ հետագա ընկեր–ա–բար, մեծ–ա–բար ըմբռնմամբ և տարածմամբ այլ հիմքերով բառերի վրա՝ լրբաբար, հայրաբար, մայրաբար, նրբաբար և այլն. սրանց կողքին շարունակում են գոյություն ունենալ –բարոյ բաղադրիչով ածականները՝ հայրաբարոյ, մանկաբարոյ և այլն։

–ագ (հ. հ. ոչ գործուն ածականակերտ ածանց՝ ագանիմ բայի արմատից. քիչ է տարածված)՝ բացաւթեագ, այլև ոչ հնդեվրոպական հիմքով վայր–ագ:

–ած (հ. հ. ածականակերտ և գոյականակերտ ածանց, որ ծագում է ածեմ-ից և պատմական շրջանում փոխվել է դերբայակերտ ածանցի)՝ գոյականակերտ՝ ասած, գործած, ձուլած, որմած, անկած, ածականակերտ՝ արարած, ողորմած, ուսած, ցաւած, քնած (և քնէած). Հանդիպում է նաև –ուած տարբերակով՝ անկուած, գործուած, դարձուած, կիտուած, հատուած, հարուած, յաղուած, ստեղծուած և այլն (հմմտ. Ս. Ա. Աբրահամյան, 1953, 204—211). սրանից են կազմված –ած–ոյ, –ածու և –ուածոյ ածանցները՝ բրածոյ (հմմտ. բրած), հալածոյ, ձուլածու (հմմտ. ձուլած), Քաղուածոյ–ք (հմմտ. քաղածոյ) և այլն. Հին ած–եմ-ի իմաստը պահպանել են ծաղրածու, փայլածու բառերը. Ա. Մեյեն [Meillet, 1962, 181] տարբերում է ածականակերտ –ած-ը գոյականակերտ –ած-ից. վերջինս Գրեպինը [Greppin, 1975, 22] համեմատում է հուն. -γ-ի հետ՝ ἅρπαξ, -αγος և բխեցնում հ.-ե. *-g'-ից.

–ա–կից (հ. հ. ածականակերտ ածանց, որ ծագում է կցեմ բայի հիմքից. հնարավոր է այս բայի հ.-ե. ծագումը՝ *gʷi-sk'- նախաձևից՝ *gʷei- «սեղմել, ներառել, խցկել» արմատից)՝ դրակից (հմմտ. դուռն, դրաց), կենակից (հմմտ. կեանք, –աց), այլև գործակից, երդակից, լծակից և այլն։

–ա–կալ (հ. հ. գոյականակերտ ածանց, որ ծագում է կալում «բռնել» բայի արմատից. ավելի ուշ շրջանում կալել-ը կազմել է բարբառներում և գրական լեզվում «պատել, ծածկվել» իմաստով բայեր՝ ճարպակալել, մսակալել և այլն)՝ երկրակալ, այլև դիակալ, տեղակալ, ձերբակալ և այլն։

–ա–ւոր և –ուոր (հ. հ. լայնորեն տարածված ածականակերտ և գոյականակերտ ածանց, որ ծագում է հ.-ե. *bher- «բերել» արմատի *bhorā

ձևից և զուգահեռ ունի -ա-բեր-ով կազմությունների մեջ. հմմտ. հուն. -φορος, -φορα՝ լուսաւոր— λευκοφόρος)՝ մեղաւոր (հմմտ. մեղ-ք, -աց), մտաւոր, ճիւթաւոր և աղեղնաւոր, ատամնաւոր, գեղարդնաւոր, երկնաւոր, երկրաւոր և այլն. հավանաբար համեմատաբար ուշ են կազմվել բայածանց անունները՝ անցաւոր և այլն։

-եղ (հ. հ. ածականակերտ ածանց, որ հավանաբար ծագում է ճեղում «լցնել» բայի հիմքից և նշանակում է «շատ ունեցող»)՝ թիկնեղ, ճիւթեղ և այլն. սրանից պետք է հետագայում կազմված և տարածված լինեն -եղ-ի և եղ-էն (-էն-ը իրանական աղբյուրից) ածանցները՝ աղտեղի, դեղնեղի (?), մսեղի (և մսեղէն), ճրեղէն, ձիւնեղէն, քարեղէն և այլն։

-(ա)ճար (հ. հ. ածականակերտ և գոյականակերտ ածանց (ածանցակերպ), որ ծագում է ճարում, ճար-կ-անեմ բայերի արմատից և ստացել է ածանցական արժեք)՝ ակնճար, գանաճար, երդմնաճար, երկնաճար «շանթահար», կաղնաճար, ճերկաճար «հերկող» և այլն. Թերևս սրանից է ծագում ուշ ավանդված կոցար (մի թռչուն) բառի -ար-ը (հմմտ. ճատ>-ատ)։

Բարդությունները կարևոր դեր են խաղացել հնդեվրոպական հատուկ անունների կազմավորման մեջ։ Հին հնդկական, հունական անձնանունները հաճախակի են կազմվում բարդության եղանակով։ Վաղնջահայերենը նույնպես պետք է ունենար բարդ անձնանուններ, որոնք, սակայն, չեն պահպանվել։ Դրանց բնույթի մասին միայն որոշ գաղափար են տալիս Ամանոր, Վանատուր (առաջին բաղադրիչը ոչ բնիկ) դիցանունները, Նորայր, Տիրայր, Սկայորդի (առաջին բաղադրիչը ոչ բնիկ, թերևս թրակյան աղբյուրից), Հրաչյա (եթե սա իրանական փոխառություն չէ. հմմտ. ավեստ. Fračya-) անձնանունները. Խորենացու հաղորդած Հաւրոյ անձնանունը կարող է լինել հուն. Πατρο-ով բարդ անձնանունների (հմմտ. Πατροκλῆς) տիպի որևէ հին անձնանվան կրճատ-փաղաքշական ձևը։

Զգալի թվով հին բարդ կազմություններ են պահպանվել բուն հայկական տեղանուններում. սրանց մեջ հաճախակի են հանդիպում այնպիսիները, որոնք կազմված են հիմքերի հնդեվրոպական սովորական հարումով, ընդ որում դժվար է երբեմն տարբերել դրանց բարդությո՞ւն, թե՞ պարզ հարադրություն լինելը. -ո-ով հիմքով՝ Աղոջրիկ (Աղւոյ ջրիկ), Ձորոփոր (Ձորոյ փոր, Ձորափոր), -ի-ով հիմքով (սրա անկմամբ նախաշեշտ դիրքում)՝ Այծ-պըտկունք), -ա-ով հիմքով՝ Մեծազետ, Մեծամաւր։

## դ) ԿՐԿՆՈՒԹՅՈՒՆ

Հնդեվրոպական լեզուն, ինչպես հայտնի է, ունեցել է հիմքերի երկու տեսակ կրկնություն՝ քերականական և բառային. վերջինս հիմնականում սաստկական և արտահայտչական բնույթ է ունեցել։ Հին հայերենը քերականական կրկնության մնացորդներ գրեթե չի պահպանել. միակ հավաստի օրինակը առնեմ, աոր. արարի բայն է։ Կարելի է կարծել, որ վաղնջահայերենում քերականական կրկնությունն ավելի տարածված է եղել, բայց այս կարծիքը հիմնավորելու որևէ փաստ չունենք. ընդհանրապես կարելի է ասել, որ քերականական կրկնությունը հայկական բարբառային գոտում ավելի քիչ տարածում է ունեցել, քան այլ գոտիներում։ Ինչ վերաբերում է բառային կամ սաստկական կրկնությանը, ապա հայերենը ոչ միայն պահպանել է հնդեվ-

րոպական համապատասխան կաղապարները, այլև հանդես բերել նոր կաղապարներ։ Ի տարբերություն բարդման, որ հատուկ է անուններին, կրկնությունն ընդգրկում է և՛ անվանական և՛ բայական հիմքերը։ Հատկապես մեծ թիվ են կազմում բնաձայն և արտահայտչական-նկարագրական բնույթի կրկնավոր հիմքերը։ Պետք է կարծել, որ հին հայերենի հնդեվրոպական ծագման կրկնավոր հիմքերը զգալի մասով գոյություն են ունեցել նաև վաղնջահայերենում։ Բարբառներում և ժամանակակից հայերենում կրկնավորների քանակը մեծ չափով աճել է. կրկնությունը արտահայտչական և գործառական մեծ դեր է խաղում։

Կարելի է տարբերել բառային կրկնության երկու հիմնական տեսակ՝ նույնական նական կամ անփոփոխ և ոչ նույնական կամ փոփոխական։

Նույնական (անփոփոխ) կրկնությունը լինում է առաջին հերթին ձայնավորով սկսվող արմատների դեպքում, սակայն հանդիպում է նաև բաղաձայնով սկսվող արմատների նույնական կրկնություն՝ **աղաղակ** (բ. **աղաղել**. հմմտ. նաև **աղաղանչ** «մի թռչուն»), **աղկաղկ** «աղքատ», **բիբի** «մի թռչուն», **երեր** (**երերիմ**), **թրթռակ** «ճարտարախոս», **կերկեր** «մի թռչուն», **կերկերիմ**, **մռմռամ**, **-եմ** «մռնչալ», **ողողանամ** «ողբալ» (բ. **ոլոլալ**), **ողողեմ**, **որոր**, **պղպղաքար** «մեծ քար», **ուրուր**, **փաղփաղեմ**, **փողփողիմ**, **քարքարոտ** և այլն. վաղնջահայերենում այս կաղապարին են պատկանել նաև այն ձայնավորներով և երկբարբառներով արմատների կրկնությունները, որոնք հետագայում նախաշեշտ դիրքում հնչյունափոխվել են՝ **թրթուր**<***թուրթուր**, **փրփուր**<***փուրփուր** և այլն։

Ոչ նույնական կրկնությունը ներկայացված է մի շարք տիպերով. 1) սկզբնային **հ** կամ **յ** բաղաձայնը բացակայում է երկրորդ կրկնորդում, այսինքն՝ հիմնականը առաջին տարրն է՝ **հագագ**, **հեղեղ**, բ. **հոլոլ**, **հոտոտիմ**, բ. **հոտոտ** (<***հոտհոտ**), **յոպոպ** և այլն. այս տիպը, գերազանցապես հայկական ձևույթներում է՝ կապված *p>**հ**, *s>**հ** փոփոխության և նախաձայնավորային հավելական **հ**-ի առկայության հետ. մասամբ էլ սրանով է բացատրվում **-ատ**, **-ոտ** ածանցների ծագումը, որոնք գալիս են **հատ** (**հատ-անեմ**), **հոտ** արմատներից. 2) առաջին կրկնորդում բացակայում է երկրորդի վերջին տարրը, այսինքն՝ հիմնականը երկրորդ կրկնորդն է՝ **դադար**, **դեդևիմ**, **բաբախեմ**, **թաթաւեմ**, **բոբոքեմ**, **պապաշեմ**, բ. **պուպուլ**, **տատանեմ**, **տատասկ**. 3) երկրորդ տիպն ուղեկցվում է առաջին կրկնորդի ձայնավորի փոփոխությամբ. հայերենի համար բնորոշ են հատկապես սրա երկու ենթատիպերը. առաջին կրկնորդի մեջ **ի** ձայնավոր, որ գալիս է հ.-ե. *ei/oi տարրից (*ei կամ *oi>**է**, անշեշտ դիրքում՝ **ի**)՝ **թիթեղն**, **թիթեռն**, **ծիծաղ**, **ծիծառն**, **սիսեռն**. երկրորդ ենթատիպը ներկայացված է առաջին կրկնորդի **ա** ձայնավորով, որ գալիս է թուլացած *ə կամ *ь ձայնավորից՝ **մամուլ**, **մամուխ**, **մամուռ**. 4) տեղի ունի առաջին և երկրորդ կրկնորդների ձայնավորների հերթագայություն՝ առանց բաղաձայնների փոփոխության՝ **կեռակուռ**, **մղմեղ**, **մղմող** և այլն. 5) առկա է առաջին և երկրորդ կրկնորդների վերջին բաղաձայնների հերթագայություն՝ ուղեկցված կամ չուղեկցված ձայնավորների հերթագայությամբ. այս տիպը մասամբ հնդեվրոպական հիմքեր ունի, մասամբ հատուկ է հայերենին. հնդեվրոպական հիմքեր ունեցող հերթագայություններից պետք է հիշել հատկապես նայերի հերթագայությունը ռնգային ձայնորդների հետ՝ բ. **տարտղնել**, **տնտղեմ** (հմմտ. **տղեմ** «շարժել» և հուն.

δενδίλλω «հայացքը դես ու դեն անել»), որին կարող է գումարվել բաղաձայնական որևէ տարր, հատկապես ջ՝ **բաղբանջեմ**, բ. **մռմռնջ**. սրա կողքին հանդես են եկել հատկապես հայերենի համար բնորոշ հերթագայություններ՝ r/ռ (<*r—*rs)՝ **բարբառ**, **թրթռեմ** «թռչկոտելով գնալ» և այլն, ձայնորդ/պայթական կամ կիսաշփական՝ **բողբոջ**, **բորբոք**, **դողդոջ**, **կարկաչ**, **մարմաջ** և այլն. մի շարք դեպքերում *r-ի դրափոխությունը խախտել է հնդեվրոպական կրկնության կաղապարը՝ **կարկուտ** (*gə-grōdo-), **կոռկոռ**, **տարտամ**, **տրտում** և այլն. կան նաև կրկնավորներ, որոնց կաղապարները որոշակի չեն՝ որպես հետևանք այլևայլ փոփոխությունների՝ **աղաւաղ**, **աքաղաղ** և այլն. եթե **աղտամուղտ**-ը բարդություն չէ, այլ կրկնություն, ապա առկա է մ հավելական ձայնորդով կաղապար, որ հետագայում հայերենում լայն տարածում է ստացել։

## 5. ԲԱՐԲԱՌԱՅԻՆ ՏԱՐԲԵՐԱԿՆԵՐ

### ա) ՀՆՉՅՈՒՆԱԿԱՆ ՏԱՐԲԵՐԱԿՆԵՐ

*Ձևավորվելով հնդեվրոպական լեզվի ընդերքում որպես առանձին բարբառ՝ հայերենը պիտի ունենար խոսվածքային ներքին տարբերություններ, որոնք պիտի պահպանվեին և նույնիսկ մեծանային նրա լեզվական անկախության՝ վաղնջահայերենի շրջանում։ Հնարավոր է բարբառային վաղ տարբերությունների բացահայտման երկու ուղի՝ քննել հնդեվրոպական բարբառային տարբերություններն ու պարզել, թե դրանցից որո՞նք են զուգահեռ դրսևորումներ տվել հայերենում, և քննել հայերենի բարբառային տարբերություններն ու պարզել, թե դրանցից որո՞նք են արխաիկ բնույթի։ Այս երկու եղանակներն էլ օգտագործված են մեր «Հայոց լեզվի նախագրային շրջանի պատմության ակնարկներ» [*Джаукян, *1967] և «Հայ բարբառագիտության ներածություն» (1972) աշխատություններում։ Մեր «Հայոց լեզվի համեմատական քերականություն» աշխատության մեջ էլ [* Джаукян, *1982] տրված են այն եղանակները, որոնցով կարելի է տարբերակել լեզվական զուգահեռ ձևերի (զուգաձևությունների, տարբերակների) բնույթը՝ բարբառային, թե հասարակական-գործառական կամ ոճական արժեք ունենալը։ Հայերենի բարբառային արխաիկ երևույթների բազմակողմանի ուսումնասիրությունը և ժամանակագրական բաշխումը, մանավանդ նախագրային շրջանի համար, ապագայի գործ է. գիտության զարգացման արդի փուլում կարելի է անել միայն ամենաընդհանուր դիտողություններ՝ օգտագործելով Հ. Աճառյանի [ՀԼՊ, 1, 118—122, 2, 114—141], Վ. Վինտերի [*Winter, *1966, 201—211], Է. Աղայանի [1958, 67—80. 1964, 328—333] և մեր տըվյալները [*Джаукян, *1967, 97—153, 177—210, 248—272. *Ջահուկյան, *1972, 245—330. *Djahukian, *1983, 23—34]։*

*Հնչյունական առումով հնդեվրոպականից հայերենին անցնելիս նկատվում են հետևյալ տարբերությունները՝ կապված բաղաձայնների տեղաշարժի, պայթականների առաջին քմայնացման, ձայնորդների ու շփականների և ձայնավորների հին փոփոխությունների հետ.*

1) *հ.-ե.* *bh-*ի դիմաց սովորական* բ-*ի կողքին* պ՝ **բղբջակ** *և* **պղպջակ** (*հ.-ե.* *bhu-l- *և* *bul-. *հմմտ. հ. շվեդ.* bulin *«ուռած» և մ. ստ. գերմ.* puyla *«ուռույցք»*), **բղետ** (**բղէտ**) *և* **պղետ** *«բիծ»* (*հ.-ե.* *bhel-, *bhlei- *«փայլել»*), **բոյտն** *և* **պոյտն** (*հ.-ե.* *bheu- *և* *beu- *«փչել, ուռչել»*).

2) Հ.-ե. *d, *g-ի *դիմաց սովորական* տ, կ-ի *կողքին նաև* դ, գ՝ տոփեմ, դոփեմ (*հ.-ե.* *deph-. *Համեմ. սնսկ.* depiti *«ծեծել»*), կռունկ *և* գրեայ (գրէ) *«կռունկ»* (*հ.-ե.* *ger-. *Համեմ. հուն.* γέρανος *«կռունկ»*).

3) Հ.-ե. *t, *k-ի *դիմաց սովորական* թ, ք-ի *կողքին* տ, կ՝ թեն (<թայն) *«թաց»* (*այլև* թաւն, թանամ, թաց) *և* տեն (<տայն) *«թաց»* (*հ.-ե.* *tāl-. *Համեմ. ռուս.* таять *«հալչել»*), քերթեմ *և* սկրթել *«քերթել»* (*հ.-ե.* *(s)ker-th-. *Համեմ. լատ.* cortex *«կեղև»*, scortum *«կաշի»*).

4) Հ.-ե. *ph, *th, *kh-ի *դիմաց՝ սովորական* փ-, թ-, խ-ի *կողքին նաև* բ, դ, գ *և հ.-ե.* *bh, *dh, *gh-ի *դիմաց՝ սովորական* բ, դ, գ-ի *կողքին* փ, թ, ք՝ փլանիմ *և բ.* բլիլ (*հ.-ե.* *phel-. *Համեմ. հ. վ. գերմ.* fallan *«ընկնել»*), ցախ (*բ.* ցաք-) *և* ցաքան (>*բ.* ծ'ակ'ան) (*հ.-ե.* *(s)k'akhā. *Համեմ. հ. հնդկ.* s'ăkhā *«ճյուղ»* *և* s'ákála- *«ձող, շերտ»*), ընդ *և* ենթ (*հ.-ե.* *n̥dhos *«տակ»* *և* *anti *«հետ. դիմաց, փոխարեն» ձևի կողքին*).

5) Հ.-ե. *p-ի *դիմաց սովորական* հ-ի *կողքին նաև* փ (<ph?)՝ հեք (հեզ, հիւանդ) *և* փեք *«հեզ, խեղճ»* (*հ.-ե.* *pē(i-)- *«ցավեցնել. վնասել, արհամարհել»*), հողի *«շունչ, ոգի»* *և* փուք, փչեմ (*հ.-ե.* *p(h)(e)u- *«փչել, ուռցնել»*).

6) Հ.-ե. *ph-ի *դիմաց սովորական* հ-ի *և* փ-ի *կողքին* պ՝ փաղփաղիմ, փողեմ, փողփողեմ, փայլ *և* պաղ *«փայլ»* (պաղպաջած *բառում*), պաղպաջ *«փայլ, ցոլք»*, պող *«կայծ. կրակ»* (*հ.-ե.* *(s)p(h)el. *Համեմ. հ. հնդկ.* sphulinga- *«կայծ»*).

7) Հ.-ե. *k(h)-ի *դիմաց սովորական* ք-ի *և* խ-ի *կողքին նաև* կ՝ խեղ *և* կեղ *«ծուռ»*, կաղ (*հ.-ե.* *(s)k(h)el-. *Համեմ. հուն.* σκελλός *«կաղ»*, σκολιός *«ծուռ»* *և ատտ.* σχελίς *«կող»*).

8) Հ.-ե. *k-ի (*ku̯) *դիմաց սովորական* ք-ի *կողքին նաև* խ, *որ պետք է գա* *kh-*ով տարբերակից՝* քիւ (*kēu̯o-) *և* խուղ (*khu-lo-), *այլև* հիւղ (*(s)keu- *«ծածկել». Համեմ. հ. հնդկ.* skāuti *«ծածկում է»*, *հ. իսլ.* cūl *«անկյուն, ապաստան»*), քէն *և բ.* խէն (*ku̯oi-nā. *Համեմ. ավ.* kaēnā *«պատիժ, վրեժ». Եթե հայերեն բառերը փոխառություն չեն իրան. աղբյուրից*).

9) Հ.-ե. *g'h-ի *դիմաց միևնույն դիրքում ա)* ձ *և բ)* զ՝ զ-գայռեմ *«զը-կռտալ»*, զ-կռտալ *և* ձ-գռտալ (*g'hō), ոզնի *և բ.* ոձնի (*հ.-ե.* *og'hinljo-. *Համեմ. հուն.* ἐχῖνος).

10) Հ.-ե. *g'-ի *և* *u-*ին հաջորդող* *g-ի *դիմաց սովորական* ծ-ի *հետ միասին* տ՝ արածեմ *և* արատ, արաւտ (*trəg'-. *Համեմ. հուն.* τρώγω *«կրծել, ուտել»*), բոյծ, բուծանեմ *և* բուտ, բտեմ (*bheug-/bhug- *«վայելել». Համեմ. հ. հնդկ.* bhunákti, bhuñjati *«ուտում է, վայելում է»*, bhóga- *«կերակուր օգտագործում. վայելք»*).

11) Հ.-ե. *p-ի *և* *s-ի *դիմաց միևնույն դիրքում ա)* հ, *բ)* յ *և գ)*—՝ հայր, *սեռ.* հաւր (*pətḗr, *սեռ.* *pətrós) *և* յաւրայ *«խորթ հայր»* (*pətr-), հող (*polo-) *և* ոտն (*pod-).

12) Հ.-ե. *rs-ի *դիմաց ա)* ռ *և բ)* րշ՝ թառամիմ, թոռոմիմ *և* թարշամիմ, թորշոմիմ (*ters-/tors-/tr̥s-. *Համեմ. հ. հնդկ.* tr̥syati *«ծարավ է»*, *հուն.* τέρσομαι *«չորանալ»*), *բ.* մառել *«ցորենը կամնելով մանրել»* *և* մա(ր)շեմ (*mer-s-. *Համեմ. հ. հնդկ.* masīm kar- *«փոշիացնել»*, *շվեդ.* morsen *«փշրել». Համեմ. նաև հայ.* մարսեմ?).

13) Հ.-ե. *r̥-ի *դիմաց սովորական* ար-ի *կողքին նաև* ուր՝ դարձ, դառ-

նամ (*dhr̥g'h-. *հմմտ. խեթ.* tarna- *«թողնել. արձակել»)* *և* դուրգն (*dhr̥gh-(?)՝ *dhergh-*ից. իմաստի համար հմմտ. հ. իռլ.* droch *«անիվ»).*

*14) բառասկզբի ձայնավորից առաջ հավելյալդային* ն-*ի, այլև* ո-*ից առաջ հավելյալդային* կ-*ի առկայություն (թերևս հին կոկորդայինից)՝* նաւատ *և* աւատ *(հ.-ե.* *au- *«ընկալել, իմբռնել»)։* ոզնի *և բ.* կոզնի *(հ.-ե.* *og'hi-nijo-. *հմմտ. հուն.* ἐχῖνος, *ռուս.* ёж), ոստ, *բ.* ոստղ *և* կոստղ *(հ.-ե.* *ozdos. *հմմտ. խեթ.* ḫašduir *«ցախ»).*

*15) հ.-ե. ձայնորդներից առաջ ա) ձայնավոր նախահավելված և բ) նախահավելվածի բացակայություն՝* ա-նաւթի *և* նաւթի (*nāgʷh-. *հմմտ. հուն.* νήφω *«զգաստ՝ ժուժկալ լինել». այսպես նաև անհայտ ծագման* ա-նաւսր *և* նաւսր).

*16) հ.-ե.* *e-*ի դիմաց սովորական* ե-*ի և* ի-*ի (ռնգայինից առաջ) հետ միասին այլ ձայնավորներ՝* երեկ-(ոյ) *և* երէկ, *բ.* արակ, յարակու, ցորեկ (*reguos-. *հմմտ. հուն.* ἔρεβος *«խավար»),* վեց (*(ks)u̯ek's. *հմմտ. հուն.* ἕξ) *և* վաթսուն (*(ks)u̯ek's-kontə. *հմմտ. հուն.* ἑξήκοντα), նինեմ, նենում *և* նանում *«հյուսել» (հմմտ. լիտվ.* pìnti *«հյուսել»),* եւթն *և* եաւթն (*septm̥. *հմմտ. լատ.* septem).

*17) հ.-ե. ռնգայիններին նախորդող* *ĕ-*ի և* *ŏ-*ի դիմաց սովորական* ի-*ի և* ու-*ի փոխարեն* ե *և* ո՝ լմեմ, լմլմեմ (դիալեկտում) *և բ.* լոմլոմել, լեմ *«առատ»* (*lem-/lom-), գոմ *(հ.-ե.* *ghom-. *հմմտ. գոթ.* gaunme *«ոչխարի փարախ»),* դոնի *«մի անասնի հաց, պաքսիմատ» (հ.-ե.* *dhōnā. *հմմտ. լիտվ.* dúona *«հաց»), բ.* թոնթորալ *(հմմտ. հուն.* τονθορύζω *«քրթմնջալ, փնթփնթալ»).*

*18) հ.-ե. համապատասխան նախաձևերի դիմաց այնպիսի տարբերակների առկայություն, որոնք արխայիկ բնույթի են և չեն կարող բացատրվել բարբառների ներլեզվական-փոխառությունների սովորական օրինաչափություններով՝* տալ *և բ.* տալվ *(հ.-ե.* *g'ьlōu-. *հմմտ. ռուս.* золовка), կաթն *և բ.* կաղց *(հ.-ե.* *galakt-? *հմմտ. հուն.* γάλα,-ακτος), շուն *և բ.* շըվըն *(հ.-ե.* *k'u̯on. *հմմտ. հուն.* κύων).

## բ) ՁԵՎԱԲԱՆԱԿԱՆ ՏԱՐԲԵՐԱԿՆԵՐ

*Մենք չենք կարող նշել վաղնջահայերենի համար բարբառային բնույթի մեծաքանակ ձևաբանական տարբերակներ։ Սա բացատրվում է մասամբ այս ուղղությամբ կատարված հետազոտությունների անբավարարությամբ, մասամբ էլ օբյեկտիվ պատճառներով. նոր միայն անջատվելով հնդեվրոպական ընդհանրությունից՝ վաղնջահայերենը չէր կարող տարածական շատ տարբերակներ ունենալ։ Հենվելով հին հայերենի և բարբառային արխաիզմների ուսումնասիրության տվյալների վրա՝ այստեղ կփորձենք նշել մի քանի այնպիսի երևույթներ, որոնք կարող էին գոյություն ունենալ վաղնջահայերենում։*

*1) Բարբառներում և գրաբարում առկա են հնդեվրոպական միևնույն արմատական ձևերի ձայնդարձային տարբեր աստիճաններ և տարբեր ձայնավորումներ, որոնք մասամբ պիտի հիմքեր ունենային վաղնջահայերենի խոսվածքային տարբերակներում՝ կապված ձայնդարձի հնդեվրոպական հա-*

*մակարդի ատրիճանական քայքայման և համաբանական պրոցեսների տարածման հետ.* բեկանեմ *և ը.* բոկել *«բանցքահարել» (հ.-ե.* *bheg-, *bheng-. *հմմտ. հ. հնդկ.* baŕákti *«ընկում է, կոտրում է», հ. իսլ.* bang *«խփել», նորվեգ.* bonkan *«խփել, ծեծել»),* թառամ, թարշամ *և* թոռոմ, թորշոմ *(հ.-ե.* *ters-/tors-/tr̥s- *«չորանալ, թառամել»),* լեսում *և ը.* լռսել *«մանրել» (հ.-ե.* *klek-*kleik'-*ի կողքին),* կաղին *և ը.* ո-կողին *(հ.-ե.* *gᵘel-*),* մեղու *և ը.* մողիկ *«մեղու» (հ.-ե.* *mel-*),* պեղեմ *և ը.* պողեմ (*հ.-ե.* *bel-) *և այլն։*

*2) Եթե ճիշտ է այն կարծիքը, որ միջին հայերենում և բարբառների որոշ մասում պահպանված երկակիի* -ուի (-վի) *վերջավորությունը* (աչուի, ոտուի, ձեռուի *և այլն) հիմք ունի հնդեվրոպական երկակիի մեջ, ապա վաղնջահայերենում երկակիի քայքայման պրոցեսը պիտի առաջ բերած լիներ բարբառային տարբերակներ՝ համեմատաբար արխաիկ տարածքով։*

*3) Հին հայերենի հոլովման հիմքերի որոշ տարբերակներ պիտի գային դեռևս վաղնջահայերենից. մասնավորապես* աստեղ *և* աստեղաց *տարբերակները կարող էին գալ սովորական հոգնակիի և հավաքականի ձևերից (հմմտ. հուն. հգն. ուղղ.* ἀστέρες *և հավաք.* ἄστρα*)։*

*4) Բայական համակարգում արդեն վաղնջահայերենում պիտի նկատվեին խոնարհման հիմքերի փոխանցումներ. մասնավորապես հնդեվրոպական ռնգայինով հիմքերի հետագա քայքայումը կարող էր հանգեցնել վ.-հ.* *-ā-ne-mi *և* *-e-mi>*հ.հ.* -անեմ *և* -եմ *ձևերի փոխանցումներին՝* անիծանեմ *և* անիծեմ, թքանեմ *և* թքեմ *և այլն։*

*5) Բայի խոնարհման համակարգում հին հայերենը պահպանել է արխաիկ ձևեր* -ր *կազմիչով. հատկապես հրամայականի ձևերում* -ր-*ով ձևերի փոխարինումը առանց* -ր-*ի ձևերով կարող էր գալ վաղնջահայերենից՝ թերևս այնտեղ ունենալով տարածքային տարբերություններ՝* նստարո՛ւր *և* նստա՛յր:

*Ընդհանրապես վաղնջահայերենում կարող էին լինել հոլովման և խոնարհման զուգահեռ ձևերի, ինչպես նախդրավոր և աննախդիր ձևերի տարածքային տարբերություններ, որոնց ամբողջական բացահայտումը ապագայի գործ է։*

## գ) ԲԱՌԱԿԱԶՄԱԿԱՆ ՏԱՐԲԵՐԱԿՆԵՐ

*Մի շարք դեպքերում բարբառները գրաբարի համեմատությամբ հանդես են բերում արմատակազմական-բառակազմական զգալի տարբերություններ, որոնց հիմքերը թերևս հասել են մինչև վաղնջահայերենի շրջանը.*

*1) գրաբարյան արմատական ձևի դիմաց աճականով կամ հին ածանցով ձև՝* դեղ (*հ.-ե.* *dhel-. *այստեղից նաև* դեղձ, դեղին*) և ը.* դեղդ *«մի բուսարմատ», ը.* դղբիկ *«պտղալից ճյուղ».* խոյլ *(հ.-ե.* *kheul-. *հմմտ. լիտվ.* kūla *«խիտ, պալար») և ը.* խիլք. մոր *(հ.-ե.* *mor-*) և ը.* մոռ, *ը.* մոշ (*մորշ*) (հ.-ե.* *mor-s-*).* քերեմ *(հ.-ե. (*s)ker-, *այստեղից նաև* քերթեմ, քերծեմ) *և ը.* քերցել *«քերթել», ը.* քերփել *«կեղեքել» և այլն.*

*2) գրաբարյանից տարբեր աճական կամ հին ածանց՝* ակն (*հ.-ե.* *okᵘ-) *և ը.* ակլակ (ակլակ մանել *«պահ մտնել, գաղտնակալել». հմմտ. լիտվ.* akýlas *«ուշադիր»).* լպիրծ *և ը.* լպիրտ (*հ.-ե.* *slib-ro-, *նույն արմատից՝*

լիրր). ձաղկ (հ.-ե. *g'halg-) և ք. ձաղտել. ձմեռն (հ.-ե. *g'hel-) և ք. ձմեք *«ձյան պատճառած աչքացավ» և այլն.*

*3) գրաբարյան բաղադրյալ ձևի դիմաց արմատական ձև՝* զգեստ, զգենում (հ.-ե. *u̯es-) և ք. զգեստ, զգենալ, հոլով և ք. հոլ *«շրջան»* (հ.-ե. *ku̯el-). Ճմլեմ և ք. ճմել (հ.-ե. *gen-). սարիք, սարդ և ք. սարել *«մանել»* (հ.-ե. *k'er-), սպարդիմ *«դույնը գցել»* և ք. սպռել (հ.-ե. *(s)p(h)er-). տիղմ և ք. տիղ (հ.-ե. *del-?) և այլն։

# II. ԲԱՌԱՊԱՇԱՐ

## Ա. ՀԻՄՆԱՇԵՐՏ

### 1. ԸՆԴՀԱՆՈՒՐ ԲՆՈՒԹԱԳԻՐ

*Վաղնջահայերենի բառապաշարի միջուկը կազմել են հնդեվրոպական շրջանից ժառանգած բառերը, որոնց թեմատիկ խմբերը բերվել են հայերենի տարածքային բնութագիրը տալու կապակցությամբ։ Բացի արմատական կամ իբրև այդպիսիներ գիտակցված բառերից, վաղնջահայերենի բառապաշարի մեջ մտել են նաև մեծ թվով վերջածանցավոր և նախածանցավոր, բարդ ու կրկնավոր նորակազմություններ։ Սրանց առանձնացման փորձ կատարվեց մեր կողմից վաղնջահայերենի բառակազմական հնարավորությունների քննության հետ կապված։*

*Այժմ փորձենք բերված տվյալների հիման վրա առանձնացնել վաղնջահայերենի բառապաշարի իմաստային խմբերը՝ ըստ անհրաժեշտության կատարելով համապատասխան վերականգնումներ։ Սա հնարավորություն կտա գաղափար կազմելու վաղնջահայերի բնակության վայրերի, կյանքի և գիտելիքների հնարավոր շրջանակի մասին։*

*Ինչպես ամեն մի այլ լեզվի, այնպես էլ հայերենի, այդ թվում նաև վաղնջահայերենի բառապաշարը բաժանվում է երկու հիմնական շերտի՝ մշակութային առումով համեմատաբար չեզոք և մշակութա-քաղաքակրթական որոշակի արժեք ունեցող բառեր։ Առաջին կարգի բառերը բնության, անօրգանական և օրգանական աշխարհի, մարդու հոգեկան կյանքի, նրա ընկալումների, զգացմունքների, մտքի ու խոսքի, մարմնի սովորական գործառությունների, ընդհանուր ու սովորական գործողությունների ու հատկությունների նշանակումներն են և քերականական արժեք ունեցող բառերն ու մասնիկները։ Երկրորդ կարգի բառերը կապված են մարդու և մարդկային հասարակության զարգացման որոշակի աստիճանների հետ, իրենց գոյությամբ պայմանավորված դրանցով. այդպիսիք են տնտեսական, քաղաքական, հոգևոր մշակույթի, ընտանեկան հարաբերությունների անունները։ Բառապաշարի այս երկու շերտերի ուղղագիծ տարբերակումը ոչ միշտ է հնարավոր, եթե նկատի ունենանք, որ մշակութային բառերը հաճախ ծագում են առաջին կարգի բառերից, և որ սրանք համապատասխան պայմաններում կարող են ձեռք բերել մշակութային հատուկ իմաստներ։*

*Վաղնջահայերի մշակույթի և քաղաքակրթության պատկերը գծելիս բնականաբար առաջին պլան են մղվում երկրորդ կարգի բառերը։ Սակայն եթե նկատի առնենք, որ առաջին կարգի բառերը խիստ կարևոր են տվյալ լեզվով խոսող հասարակության բնական պայմանները և հասկացությունների ընդհանուր շրջանակը որոշելու հարցում, ապա հարկավոր կլինի կանգ առնել և նրանց վրա՝ ըստ հնարավորին տարբերակելով հիմնական և երկրորդական իմաստները։*

*Վաղնջահայերենի ժառանգած հնդեվրոպական բառապաշարի բնույթը ուրոշակի դարձնելու նպատակով քննությունը տանենք ըստ առաջին բաժնում տրված թեմատիկ խմբերի հաջորդականության, թեև դրանց մեջ մշակութային և ոչ մշակութային բառերի տարբերակումը հստակորեն չի անցկացված, այսպես, երկրագործության հետ կապված տերմինները տրվում են բույսերի ընդհանուր անվանումների հետ միևնույն բաժնում, տարածքային բաժանումները տրվում են հասարակականների հետ միասին և այլն։*

*Հարկավոր է առանձնահատուկ ուշադրություն դարձնել այն հանգամանքի վրա, որ առաջին մասում տրված թեմատիկ ցանկը կազմված է հատկապես հին հայերենի և բարբառների առկա տվյալների վրա, մինչդեռ վաղընջահայերենից հին հայերենին անցնելիս տեղի ունեցած պիտի լինեն իմաստային զգալի փոփոխություններ, մասնավորապես հնդեվրոպական որոշ բառերի իմաստի նեղացում՝ ավելի լայն իմաստի հատկացումով նոր (փոխառյալ) բառերին, իմաստային անցումներ, հատկապես փոխաբերական իմաստի մղում առաջին պլան և այլն։*

*1.* **Ֆիզիկական աշխարհ:** *Ֆիզիկական աշխարհին վերաբերող բնիկ հընդեվրոպական բառերի մեջ լայնորեն արտացոլված են հնագույն ժամանակներից եկող, յուրաքանչյուր լեզվի անկապտելի մասը կազմող այնպիսի նըշանակումներ, ինչպիսիք են* հող, գետին, ջուր, գետ, առու, աղբիւր, արեւ (արեգ-ակն), լուսին, աստղ, որոտ, լոյս, շող, աւդ, ամպ *և այլն։ Կասկածելի է* երկիր, փոշի, լեառն, ձոր, հուր, անտառ, ծառ, թուփ, որոտ, շանդ (շանթ), շուք, հողմ *և որոշ այլ բառերի բնիկ հնդեվրոպական լինելը (կամ հնդեվրոպական տվյալ ստուգաբանությունը)։*

*Աչքի է ընկնում մի շարք բառախմբերի առատությունը. ցեխի և տիղմի նշանակումներ՝* աղտ, գայռ, գոռ, մաւր, միծ, տիղմ *(?), բ.* տիլ, *բ.* քոռ. *Հոսող և կանգնած ջրերի հետ կապված բառեր՝* ջուր, լիճ, լիկ, գետ, հեղեղ, ողող, *բ.* լավ *«հեղեղ»,* առու, կասառն, յորդ, յորձանք, հուն, առոգանեմ (ոռոգանեմ), աղբիւր. *քարի և քարքարոտ վայրի հետ կապված անվանումներ՝* քար, գիլ, պալ (պաղ, պղպղաքար), *բ.* քերծ, *բ.* քուրչ, խութ-ք, այր, անձաւ, *բ.* լափու(կ). *ձյան, ցրտի և մառախուղի հետ կապված բառեր՝* ձիւն, բուք, սառն (սառոյց), *բ.* սլոլ, *բ.* սղին, *բ.* սղոն, լկիմ, հալհալ, մէգ, բալ, մառախուղ, *բ.* մռաժ: *Հայերենը կարմանալիորեն չի պահպանել լեռան հնդեվրոպական ամենից ավելի տարածված այնպիսի անվանում, ինչպիսին է* *gʷer-/gʷor-*ը, որ առկա է հնդիրանական, ալբանական, հունական, թրակյան, բալթիական, սլավոնական խմբերում, այսինքն՝ արևելյան ողջ տարածքում. այն հայերենում պիտի ունենար* *կեր, *կոր *կամ, թերևս,* *կար (*gʷr̥-) *տեսքը. ձևով և իմաստով մերձավոր* կարկառ *«քարակույտ» (այստեղից* կարկառել*) բառը պատկանում է* կառ *արմատին, որ պահպանվել է* կառչիմ (կառուցանեմ) *բայի մեջ, և որի ծագումն անհայտ է։* Լեառն *բառը հատկացվում է հ.-ե.* *k'lei- *«թեքել, հենել» արմատին որոշ կասկածով, ընդ որում բերված զուգահեռների մեջ գերակշռում է «բլուր» իմաստը (հմմտ. հուն.* κλειτύς *«զառիվայր, բլուր», լատ.* clivus, *գոթ.* hlains *«բլուր»)։ Ինչ վերաբերում է* սար *բառին, ապա նրա սկզբնական իմաստն է «գագաթ», և հայերենի «լեռնագագաթ>լեռ» իմաստը առանձնակի է կանգնած։ Հայերենը չի պահպանել նաև* հովիտ *բառի համար հնդեվրոպական որևէ անվանում, եթե* գոգ *բառին չվերագրենք նախնական այդպիսի իմաստ։*

Դաշտ բառի փոխարեն, որ իրանական ծագում ունի, վաղնջահայերենում, ամենայն հավանականությամբ, գործածվել է անդ (գր. հանդ) բառը (հմմտ. թոխ. Ա ānt, Բ ānte «հարթավայր»), որ հետագայում ստացել է «մշակված դաշտ՝ արտ» իմաստը։

Հայերենը չի պահպանել ծովի հնդեվրոպական որևէ անվանում, մանավանդ ավելի տարածված *mori- (mōri) անվանումը, որ առկա է Եվրոպայի հնդեվրոպական լեզուներում՝ իտալյան, կելտական, գերմանական, բալթիական, սլավոնական, և հայերենում պիտի ունենար *մոր- կամ *մուր ձևը (այստեղից չէ՞ Մուրց գետի անունը հմմտ. և *morisk- «ճահիճ»). Ճիշտ է, ծով-ը համեմատում են հ. իսլ. kaf և հ. իռլ. go «ծով» բառերի հետ, բայց այդ համեմատությունը կասկածելի է. անհավանական է համեմատությունը նաև հուն. ξάψ «ծով» բառի հետ, որ բնիկ հունական չի համարվում [հմմտ. Furnée, 1972, 176]։ Չի պահպանված նաև ծովի հետ կապված կղզու անվանումը. կղզի բառը հավանաբար սեմական ծագում ունի։ Ցամաք բառը մենք կասկածով ենք դրել հնդեվրոպական բառերի ցանկի մեջ (հմմտ. հ. հնդկ. kṣāmá- «այրված, չորացած»). այն կարող է լինել, ինչպես կարծում է Աճառյանը, սեմական ծագման (հմմտ. և ամքել): Բառացանկում մեր կողմից դրված եզր բառը ունեցել է ընդհանրապես «եզր» իմաստը, բայց գործածվել է նաև «ծովի կամ գետի ափ» իմաստով. հայտնի չէ վաղնջահայերենում նրա մասնավորվածության աստիճանը. ափն բառի ծագումը որոշ չէ. նրա կապը հ.-ե. *āpero- «ափ» արմատի հետ կասկածելի է հնչյունական պատճառներով [հմմտ. Pok., 1, 53]։ Սակայն սրանց կողքին կան լճի, ալիքի, փրփուրի հնդեվրոպական անվանումներ։

Հայերենը չի պահպանել ծառի այնպիսի տարածված անվանում, ինչպիսին է հ.-ե. *deru-ն, թեև, որոշ կասկածով, կարելի է նրան հանգեցնել ան-տառ բառը, այլև կան այդ հիմքից ուրիշ ածանցյալներ (տարգալ, տորն «սանդակոթ» և այլն)։ Սրա փոխարեն առկա ծառ բառի հնդեվրոպական ծագումը կասկածելի է, նրա զուգահեռներն էլ ունեն «ճյուղ» նախնական իմաստը։ Ատաղձ, փայտ բառերը սովորաբար նշանակում են պատրաստի փայտը իբրև նյութ, թեև փայտ-ը կարող է գործածվել նաև «ծառ» իմաստով։

2. **Մարդկություն. սեռ, տարիք, ընտանեկան հարաբերություն:** Վաղնջահայերենը պիտի ժառանգած լիներ մարդու սեռի, տարիքի և ընտանեկան հարաբերությունների վերաբերյալ հնդեվրոպական հիմնական անվանումները՝ տարածքային որոշակի սահմանափակումներով։ Սրանց մեջ զգալի թիվ են կազմում համապատասխան մանկական բառերը՝ պահպանված գերազանցապես հայ բարբառներում։ Հնդեվրոպական ցեղակցական անուններին գումարվել են ազգակցության տարբեր աստիճաններ նշող նոր անվանումներ՝ գերազանցապես ժառանգված հնդեվրոպական անվանումների բազայի վրա և նկարագրական բնույթի։

Մարդու, նրա սեռի և տարիքի հետ կապված անվանումներից հիշենք մարդ, անձն, այր, կին, աղիջ, մանուկ, մատաղ: Վաղնջահայերենում լայնորեն պետք է ներկայացված լինեին ազգակցական անունների սկզբնական շատ ձևեր՝ հայր, մայր, ուստր, դուստր, որդի, եղբայր, քոյր, հաւ, հան «տատ», թոռն, սկեսուր, հարսն, նու, յաւրայ, մաւրու, որբ: Կասկածելի է ամուրի, քեռի, աներ, նոր «փեսա», ուրջու «խորթ որդի», այրի բառերի հնդ-

եվրոպական ծագումը։ Մեծ թիվ են կազմում այս բառերի բազայի վրա կազմված բաղադրյալ անունները, որոնք մասամբ գալիս են հնից և զուգահեռներ ունեն հնդեվրոպական այլ լեզուներում՝ հաւրեղբայր, մաւրեղբայր, եղբաւրորդի, այլև հաւրաքոյր, մաւրաքոյր, դուստր եղբոր(ն) և այլն։ Բացակայում են կնոջ ազգականների մի շարք նշանակումներ, որոնք հնդեվրոպականում էլ մասամբ չեն եղել. զոքանչի համար չկա բնիկ հայերեն անուն, աներ բառի հնդեվրոպական ծագումը, ինչպես նշվեց, կասկածելի է։ Կասկածելի է նաև նոր «փեսա» բառի հնդեվրոպական ծագումը, իսկ փեսայ բառի ծագումն անհայտ է։ Բավական շատ են խորթ ազգականների անունները՝ յաւրայ, մաւրու, ուրջու։ Սակայն հայերենը չի պահպանել այրիացած տղամարդու և կնոջ հնդեվրոպական տարածված անվանումները, հատկապես *u̯idheu̯o-, -ā, *u̯idhu- ձևերը, որ պիտի տային *գդեւ կամ *գիդ. այրի բառը, ամենայն հավանականությամբ, կամ հայկական նորակազմություն է, կամ հնդեվրոպական ծագում չունի և պատահմամբ է նման այր բառին։

**3.Կենդանիներ**: Հայերենը հարուստ է ինչպես վայրի, այնպես էլ ընտանի կենդանիների բնիկ հնդեվրոպական անուններով։ Որս, երէ (էրէ), թակարդ, թարբ բառերը ցույց են տալիս որսորդության և ձկնորսության տարածվածությունը, սակայն ձկնորսությունը հավանաբար կապված է եղել ավելի շատ գետերի ու լճերի հետ, և ձկնատեսակների բնիկ հնդեվրոպական անվանումները շատ քիչ են։ Զարգացած անասնապահության մասին են խոսում ոչ միայն կով, եզն, *հովլի «ոչխար» (հովիւ բառում), այծ բառերի և նրանց տարբեր հասակների անվանումների առատությունը՝ հորթ, մոզի, երինջ, որոջ, գառն, ուլ և այլն, այլև այնպիսի անասնապահական տերմինները, ինչպիսիք են հաւրան «հոտ», արաւծեմ, հովիւ, ստերջ, տուար, թերևս նաև գոմ։ Հայերին հայտնի են եղել շունը, ձին (բայց ոչ տարածված հնդեվրոպական անվանումով), էշը։ Վայրի կենդանիների անուններից սովորական են գայլ, արջ, աղուէս, ինձ, լուսան, ոզնի։ Առիւծ, կորիւն անվանումները կազմված կամ մասնավորված են ավելի ուշ՝ հնդեվրոպական համապատասխան հիմքերի վրա։ Բավական շատ են թռչունների, սողունների և միջատների անվանումները՝ հաւ, աքաղաղ, աղաւնի, արծուի, բու, լոր (?), ծիծառն, կաքաւ (?), կկու, կռունկ, յոպոպ, որոր, ցին, ուրուր, անիծ, լու, մաթիլ, մլակ, մրջիւն, ո(ր)ջիլ (?), սարդ, տիզ, մեղու, բոռ, կէա, մուն, մլակ, թիթեռն, աւձ, իժ, քարբ և այլն։ Եթե ճիշտ է կրիայ բառի ստուգաբանությունը, և եթե այն իմաստային ուշ մասնավորման արդյունք չէ, ապա հայերը պիտի բավական վաղ ծանոթացած լինեին այդ կենդանուն։

Վերևում նշվեց, որ հայերենը չի պահպանել ձիու հնդեվրոպական տարածված անվանումը նույն իմաստով (*ek'u̯o-ի *cik'u̯o- տարբերակը տրվել է էշ), այլ առկա է միայն հնդկական զուգահեռ ունեցող ձի բառը (հ. հնդկ. há̆ya- «նժույգ»). Հովատակի, ղամբիկի, մտրուկի համար բուն հնդեվրոպական անունների բացակայությունը խոսում է այն մասին, որ վաղընջահայերի մոտ զարգացած ձիաբուծություն չի եղել։

Հայերենը չի պահպանել խոզի հնդեվրոպական անվանումը (*sus), այլև ընդհանրապես խոզի հետ կապված հնդեվրոպական անվանումներ. խոզ, վարազ, խոճկոր անվանումները համեմատաբար ուշ են հանդես եկել։

Կատվի (կատու, կուզ), վագրի, փղի, կապիկի, ուղտի անունները վա-

ղընջահայերենում չեն եղել. ինչպես կտեսնենք, դրանք հայերենում հայտնի են դարձել ավելի ուշ։ Հետաքրքրական է նշել, որ կատվի ընդհանուր անվանումը հունարենի մեջ [illegible] ձևով մուտք է գործել բավականաչափ ուշ՝ VI դ.։ Դասական հայերենում կատուն հայտնի է կուզ անվանումով, որ իրանական ծագում ունի։

4. **Մարմնի մասեր, մարմնական գործառույթներ և պայմաններ:** Հայերենը պահպանել է մարմնի մասերի և մարմնական գործառությունների մեծաքանակ անուններ, որոնք ընդգրկում են գրեթե բոլոր հիմնական հասկացությունները. մարմնի մասերի անվանումներից նշենք՝ միս, ջիլ, նեարդ, մօրուք, արիւն, ոսկր, կող(ն), թեկն (թիկն), կուռն, ողն, գլուխ, երես, ծընօտ, այտ, ակն (աչք), ունկն, բերան, քիմ-ք, լեզու, ատամն, լինդ, ուղն, կոկորդ, որկոր, ուս, ձեռն, արմունկն, բուռն, մատն, բոյթն, ոտն, ոլոք, ծունգ(ն), եղունգն, լանջ, ստինք, սիրտ, լեարդ, արգանդ, փայծաղն և այլն։ Առանձնապես պետք է նշել զանազան հիվանդությունների ու վնասվածքների անունների առկայությունը՝ մասամբ ժառանգած հնդեվրոպական միասնության շրջանից, մասամբ սրված հնդեվրոպական համապատասխան անվանումների բազայի վրա՝ դրանց իմաստային մասնավորմամբ ու տերմինավորմամբ՝ հիւանդ, դալուկն, թանչ (?), լուսն, խիթ, բ. ձմեռ, մարմաջ, կեղ, բողջ, այտուցն, պալար, խոյլ և այլն։

Մարմնի մասերի ու մարմնական գործառությունների անվանումների մեջ բացակայում են մի շարք կարևոր օղակներ, որոնց առկայությունը վաղընջահայերենում գոնե մասամբ ենթադրելի է։

Առաջին հերթին նշենք հայերենում մաշկի, եղջյուրի, մազի տարածված հնդեվրոպական անվանումների բացակայությունը։ Մաշկ, մորթ, կաշի բառերից ոչ մեկը բնիկ հնդեվրոպական չէ, եղջիւր բառի հնդեվրոպական ստուգաբանության փորձերն առայժմ անհամոզիչ են, իսկ մազի համար պահպանված և թեմատիկ խմբում մեր կողմից տրված ձար բառի՝ մազի ընդհանուր անվանում լինելու հարցի լուծումը դժվար է. այն մեզ հայտնի հուշարձաններում գործածվում է հատկապես որպես կենդանու (ձիու) մազի անվանում. հեր և մազ բառերի ծագումը հայտնի չէ, թեև առաջինը հիշեցնում է, հավանաբար պատահականորեն, գերմանական համապատասխան բառերը (հմմտ. գերմ. Haar). գէս և վարս բառերը իրանական ծագում ունեն և վաղընջահայերենում չեն եղել։ Եղջյուրի համար վաղնջահայերենը թերևս պահպանած է եղել և հետագայում կորցրել է հնդեվրոպական ընդհանուր անվանումը *k′er- արմատից, որից ինչպես նշվել է, ծագում է սար «գագաթ, լեռնագագաթ» բառը։ Թեև մարմին բառը բացահայտ զուգահեռ ունի հ. հնդկ. mármán «անդամ, հոդավորություն. բաց՝ անպաշտպան մարմնամաս» բառի մեջ, բայց ընդհանուր ձևի վերականգնումը դժվարանում է. եթե հնդկական բառը ծագում է *mel- «անդամ, հոդավորել» արմատից [հմմտ. Pok. 1, 720], ապա հայերենը փոխառություն կարող է լինել, որովհետև *l>r անցումը նրան հատուկ չէ։

Գլխի մասերի անվանումներից հայերենը չունի գանգ, ուղեղ, ճակատ, հոնք, կզակ, քիթ, շուրթ նշանակող հնդեվրոպական բառեր։ Հատկապես պետք է նշել հոնքի ու քթի համար տարածված հնդեվրոպական *bhrū- ու *nas- հիմքերի կորուստը և նրանց փոխարինումը անհայտ (ուրարտակա՞ն)

ծագման յանք ու քիթ բառերով. թերևս բնիկ հնդեվրոպական անվանումները վաղնջահայերենում պահպանված են եղել:

Մարմնի այլ մասերի անվանումներից նշենք փետուր, կուրծ (անասնակուրծք), թոք նշանակող հնդեվրոպական բառերի կորուստը: Փետուր բառը բնիկ հնդեվրոպական չէ, բայց կարող է վաղ շրջանում յուրացված լինել հնդեվրոպական որևէ լեզվից և թերևս առկա լինել հենց վաղնջահայերենում (համեմ. հ. հնդկ. pát(a)tra-, հուն. πτερόν, հ. վ. գերմ. fedara): «Կուրծք» նշանակող լանջ բառի գերմանական և սլավոնական զուգահեռները նշանակում են «թոք» (համեմ. հ. վ. գերմ. lungūn (հգն.), ռուս. легкие, բայց հայերենը այդ իմաստի համար օգտագործել է անհայտ ծագման թոք բառը. անհայտ է կուրծք բառի ծագումը, թեև բացառված չէ նրա յուրացված լինելը հնդեվրոպական որևէ լեզվից (համեմ. ռուս. грудь՝ հ.-ե. *g$^{u}$rendh-ից և լիտվ. krūtìs՝ հ.-ե. *krūt-ից): Անասնի կրծքի համար հավանաբար վաղնջահայերենում գործածվել է երբուծ-ի վաղ ձևը. այդ բառը հին հայերենում ունի հատկապես «անասնի լանջամիս» իմաստը, որ, թերևս, ձեռք է բերել կուրծ-ք բառի մուտքից հետո:

Հայերենը չի պահպանել հորանջելու տարածված հնդեվրոպական անվանումը, որ պիտի ունենար *ձէ-/ձի- արմատային տեսքը (հ.-ե. *ǵhei-). թերևս այն դուրս է ընկել ձի բառի հետ համանուն լինելու պատճառով: Բնիկ հնդեվրոպական չեն նաև յոգնեալ, ճաղատ և կոյր բառերն ու նրանց համանիշները՝ խոնջեալ, վաստակեալ, կթոտ և ճեղ, կունդ. հնդեվրոպական ծագման լերկ-ը նշանակում է ընդհանրապես «անմազ» և «մերկ»:

5. Ուտելիք և խմելիք. կերակրի պատրաստում և ամանեղեն: Այս խմբի բառերն ունեն ինչպես ընդհանուր, այնպես էլ մշակութային արժեք ունեցող իմաստներ: Առաջին կարգի իմաստները, բնականաբար, ավելի քիչ են ենթակա փոփոխության, և սրանց հնդեվրոպական ներկայացուցիչները լայն չափերով առկա են հայերենում, այդ թվում, իհարկե, նաև նրա սկզբնական վիճակում՝ վաղնջահայերենում: Սրանք և՛ սովորական չեզոք, և՛ զգացմունքային-արտահայտչական երանգի բառեր են, ընդ որում ուտելու գործողության տարբեր եղանակները ներկայացված են տարբեր բառերով և մարդու ու կենդանիների համար համապատասխան տարբերակումներով՝ ուտեմ, լակեմ, լափեմ, ծամեմ, ըմպեմ, կլանեմ, կրծեմ, որոճեմ: Տարբերակված են ներկայացված նաև կերակրի պատրաստման տարբեր եղանակները՝ եփեմ, խարշեմ, խորովեմ, խարկեմ, բովեմ: Հայտնի չէ կերակրի պատրաստման տեղի մասնագիտացման աստիճանը. վառարան, թոնիր և այլ անվանումներն ուշ են. վաղնջահայերենի համար ենթադրվում է հնոց-ի սկզբնաձևի գոյությունը՝ «վառարան» ընդհանուր իմաստով: Ուտելիքի պատրաստման և պահպանման միջոցներից տարածված են եղել կավե (հողե) ամանեղենը և տիկը: Ամանեղենի այլ տեսակներ նշանակող կաթսայ, սան, տապակ, ափսէ, պնակ, սկուտեղ, գաւաթ, բաժակ, թաս, թակոյկ, սափոր, կուժ, սրուակ, կարաս և այլն բառերը բնիկ հնդեվրոպական չեն, այլ փոխառված են շրջակա հնդեվրոպական և ոչ հնդեվրոպական լեզուներից: Դանակ-ի հնդեվրոպական բնիկ անունը հայտնի չէ, բայց տարգալ-ը բնիկ հնդեվրոպական է:

Օրվա տարբեր ժամանակների հետ կապված նախաճաշի, ճաշի, ընթրիքի անվանումները չկան: Բարբառային ակրատ «նախաճաշ» բառը, եթե այն կապ չունի կեր, կուր ձևերի հետ, ուշ ձևերբերում պետք է լինի:

Խմորի բնիկ հնդեվրոպական անվանումը հայերենը չի պահպանել, բայց հաց բառի հնդեվրոպական ծագումը հավանական է. աղամ, աղաւրիք, ալեւր, բլիթ, բոկեղ, բ. բուլ (>պնկ) «խմորի գունդ» բառերը ցույց են տալիս, որ վաղնջահայերին լավ ծանոթ է եղել հացագործությունը։ Կերակրի պատրաստման հետ կապված նշենք երկան և տոռն «սանդի կոթ» բառերը՝ աղաւրիք և մուլ (մլաղաց) բառերի կողքին։

Վաղնջահայերը պիտի գործածած լինեն և՛ կենդանական (հմմտ. միս), և՛ բուսական կեր։ Բացի զանազան ուտելի բույսերի անվանումներից, որոնց մասին կխոսվի բուսականության հետ կապված բառերի քննության ժամանակ, վաղնջահայերենում պետք է լինեին դալար(ի) սիսեռն, խստոր, բողկ, շիր բառերի նախաձևերը։ Կան նաև գինուն և խաղողին վերաբերող այգի «խաղողի այգի», գինի, որթ անվանումները. հմմտ. նաև արգատ «որթատունկի էտած ճյուղ». սրանք խոսում են խաղողագործության՝ վաղնջահայերին ծանոթ լինելու մասին։ Սոխի, մի շարք պտուղների (տանձ, խնձոր և այլն) անվանումները բնիկ հնդեվրոպական չեն։

Վաղնջահայերը գիտեին կաթից կարագ և մածուն պատրաստելու եղանակները, որոնց մասին վկայում են կոգի (ավելի ուշ փոխարինվում է կարագ բառով) և մածուն բառերը։

6. Հագուստ, անձնական զարդարանք և խնամք: Հայերը և մասնավորապես վաղնջահայերը իբրև հագուստի նյութ պիտի օգտագործած լինեն հատկապես բուրդը։ Բրդի համար կան ասր, գեղմն և բուրդ անվանումները. վերջինս ծագում է *bherdh- «կտրել» արմատից, որ վկայում է բուրդը խուզելու սովորույթի մասին։ Հէն–ք, հենում, ոստայն, ասէծ, ստորի, շիւ, առէջ բառերը խոսում են ոստայնանկության արհեստի զարգացած լինելու մասին։ Կարելու հետ կապված նշենք ասեղն, ներհուն, թել (?), բ. կլոք «թելի կծիկ» բառերը։ Բամբակի և վուշի անվանումները բնիկ հնդեվրոպական չեն։ Վաղնջահայերի մոտ բուսական ծագման թելի օգտագործումը հավանաբար շատ տարածված չի եղել, մանավանդ եթե կտաւ բառը կուտ բառից չի ծագում և բնիկ հնդեվրոպական չէ (հնարավոր է սեմական ծագում)։ Հավանաբար լայն չափերով չի գործածվել նաև կաշին, որի բնիկ հնդեվրոպական անվանումը հայերենում բացակայում է. սերեկ «սեկ, կաշվե ծածկոց» բառի հնդեվրոպական ծագումը հավաստի չէ։

Պահպանվել են հնդեվրոպական ծագման զգեստ, աւթոց, ածիք, տեռ «շղարշ», քող (քաւղ) անվանումները, բայց հագուստի առանձին տեսակների բնիկ հնդեվրոպական անվանումներ գրեթե չկան. ձորձ, բանկոն, շապիկ, քո-րանակ, ղենջակ, վարտիք, գուլպայ, կաւշիկ, մուճակ, մոյկ, խոյր, գդակ, նարմանդ բառերը կամ անհայտ ծագման են, կամ հայտնի փոխառություններ։

Զարդարանքներ նշանակող զարդ, գինդ, մատանի, ակն «թանկագին քար» բառերը բնիկ հնդեվրոպական են, բայց ապարանջան, մանեակ, բա-ճուանդ, քայր և այլն բառերը մուտք են գործել հայերենի մեջ համեմատաբար ուշ։

Անձեռոց, սրբիչ, ածելի, ածանեմ բառերը կազմված են բնիկ հնդեվրոպական արմատներից, մինչդեռ դաստառակ, սանր, խոզանակ, զմելին և այլն ուշ շրջանում մուտք գործած բառեր են։

7. Բնակարան, տուն, կահկարասի: *Հայերենը լավ է պահպանել բնակության, տան և սրա մասերի վերաբերյալ բնիկ հնդեվրոպական անվանումները՝* տուն, աւթ, խուղ, դուռն, անդ, յատակ (?), որմն, ձեղուն, առաստաղ, ցից, հիւ *և այլն։ Սակայն բացակայում են վրանի, բակի, գավթի, փականքի հնդեվրոպական անվանումները.* լուսամուտ *բառը հավանաբար հայկական նորակազմություն է՝ համապատասխան հնդեվրոպական տարրերի հիման վրա* (լոյս,-ոյ և մուտ):

*Ինչպես վառելիք ծառայել է հիմնականում փայտը և չորացրած անասնաղբը, որի համար կան* քակոր, *այլև բարբառային* թիքրէն, ատրթ *բառերը։ Վառարանի հնդեվրոպական հատուկ անվանում չի պահպանվել.* կրակետղ-ը *հավանաբար ուշ կազմություն է։ Չկա նաև ծխնելույզի բնիկ հնդեվրոպական անվանում։*

*Տնային կահույքի վերաբերյալ բնիկ հնդեվրոպական ծագման հայերեն անվանումները սակավաթիվ են. կահույքի հետագայում տարածված անվանումները բնիկ հնդեվրոպական չեն.* սար-ք *բառը, եթե այն իրոք բնիկ հնդեվրոպական և ոչ թե իրանական ծագում ունի, համեմատաբար լայն իմաստով է գործածվում։* Սեղան *բառի բնիկ հնդեվրոպական ծագումը կասկածելի է.* անկողին *և* նստելի *«նստարան, աթոռ» բառերի՝ վաղնջահայերենում նույնակազմ և նույնիմաստ գործածությունը հայտնի չէ։* Մահիճ, աթոռ, բազմոց, գահ, գահոյք, լապտեր, կանթեղ, ճրագ, մոմ *բառերն ուշ ձեռքբերումներ են, որոնք վաղնջահայերենում բացակայել են։*

8. Երկրագործություն, բուսականություն: *Հայերենը պահպանել է ծառերի և այլ բույսերի հնդեվրոպական զգալի թվով անվանումներ։ Ծառանուններից բնորոշ են* կաղնի, մայր(ի), կուենի, եղեւնի, բարտի, հացի, թեղի. *կեչու հնդեվրոպական* *bherəg′- *անվանումն անցել է բարդուն, և ինչ-որ աղբյուրից փոխառվել է* կեչի-ն։ *Հին հայերենը չի պահպանել հաճարենու հնդեվրոպական անվանումը, որ պիտի լիներ* *բագ *(հ.-ե.* *bhāgo-s)։ *Մեծ թիվ են կազմում բույսերի տարբեր մասերի, հատկապես ճյուղի և բողբոջի անվանումները։*

*Հին հայերենում բավական առատ են եղել երկրագործության հետ կապված բնիկ հնդեվրոպական անվանումները, որ խոսում է նաև վաղնջահայերի մոտ երկրագործության բավականաչափ մեծ զարգացման հասած լինելու մասին՝* արտ, անդ, հաւաւնք, այգի, արաւր, հերկեմ *(?)* բիր, բրիչ, սերմն, բերք, արդիւն-ք, պտուղ *և այլն։ Բացի հնդեվրոպական երկրագործական տերմիններից, վաղնջահայերենում պետք է հանդես եկած լինեին իմաստով մասնավորված և երկրագործական արժեք ստացած մեծ թվով բառեր. համմտ. օրինակ,* կորի *«փոքր ջրանցք՝ արտը ջրելու համար»,* ոռոգանեմ, առոք *«լավ հասած, լիքը (հացահատիկի մասին)»,* բարդ *«խոտի կամ հացահատիկի դեզ»,* եղան *և այլն։ Սակայն հին հայերենը չի պահպանել երկրագործական մի շարք կարևոր հասկացությունների՝ շտեմարանի, ակոսի, փոցխի, մանգաղի, հացահատիկի, ցորենի, տարեկանի (հաճարի), վարսակի համար բնիկ հնդեվրոպական անվանումներ։*

9. Ֆիզիկական տարբեր գործողություններ. արվեստներ և արհեստներ՝ նրանց հետ կապված հասկացություններով: *Ֆիզիկական գործողությունների բնիկ հնդեվրոպական նշանակումներ հայերենը լավ է պահպանել՝ հարուստ*

*լինելով համանիշներով և բարբառային տարբերակներով։ Ծռելը, խփելը, պատռելը, քերելը, լցնելը և այլ գործողություններ ներկայացված են բնիկ հնդեվրոպական ծագման դգալի թվով համանիշներով և նշանակման նրբերանգներով՝* կորացուցանեմ, կքեմ, *ք.* կեռեմ *և այլն,* ճարկանեմ (զարկանեմ), զանեմ, ծեծեմ *(?),* թաղեմ, ձաղկեմ, ջնեմ, տոփեմ *և այլն,* ցելում, փեղկեմ, փեռեկեմ, երգիծանեմ, ցտեմ *և այլն,* քերեմ, քերթեմ, տեռեմ, *ք.* քերթել *և այլն,* ճեղում (զեղում), լնում, ամամ *և այլն։*

Արուեստ *բառի և համապատասխան նրա* արհեստ *տարբերակի բնիկ հնդեվրոպական ծագումը կասկածելի է. ավելի հավանական է իրանական ծագումը։ Առանձին արհեստներից հայերի, այդ թվում նաև վաղնջահայերի մեջ լավ զարգացած են եղել կառուցողական արհեստը, ատաղձագործությունը, մետաղագործությունն ու դարբնությունը, կավագործությունը. հմմտ.* առաղձ, երիթ, *«մեծ սեպ»,* թուրծ *«տաշված փոս»,* թուրիծ *«ծակված»,* մուրճ, թակն, զերան, ճեծան *(?),* ձող, սիւն, թիթեղն, շաղ-ախ, դարբին, թեքեմ *«կռել»,* սալ *«տափակ քար. զնդան»,* ճալեմ, ձուլեմ (ձոյլ), բով, ճնոց, դուրգն, արծնեմ *«տաք երկաթով փորագրել» և այլն։*

*Արհեստի հետ կապված նշանակումներից հին հայերենում բացակայում են հետևյալ բառերի բնիկ հնդեվրոպական համարժեքները՝* կառուցանեմ, տաշեմ, ծակեմ, զայլիկոն (շաղափ), սղոց, զամ, (բեւեռ), աղիւս, բրուտ, կաւ, ճիւսեմ, կողով, զամբիւղ, կթոց, սակառ, քանդակեմ, արձան, դուր, ճկար (պատկեր), ներկ *և այլն։*

*Մետաղների անուններից բնիկ հնդեվրոպական է միայն* արծաթ-*ը։* Ոսկի, պղինձ, արոյր, երկաթ, կապար, արճիճ, անագ *բառերը հայերենը ձեռք է բերել այլևայլ աղբյուրներից. դրանք թերևս մասամբ* (ոսկի, երկաթ) *եղել են նաև վաղնջահայերենում։*

*Հին հայերենում բացակայող բառերի մի մասը վաղնջահայերենում, անշուշտ, առկա է եղել. դարմանալիորեն հին հայերենի* կառուցանել, շինել, կերտել, կազմել *համանիշներից ոչ մեկը բնիկ հնդեվրոպական չէ. բնիկ հնդեվրոպական* հաստատեմ *բայը, բացի բուն իմաստից, երկրորդաբար ունի նաև «շինել, կառուցել» իմաստը, որ կարող էր վաղնջահայերենում ավելի լայն գործածություն ունեցած լինել. հնարավոր է նաև* ստեղծանեմ *բայի բակղդնական գործածությունը հենց այդ իմաստով։ Ծակելու հնդեվրոպական նշանակումների համար հիմք ծառայած* *bher-, *ter- *արմատներից հայերենը պահպանել է* բերան *(*«անցք»),* բիր, բրեմ *և* բուր, թրթուր *բառերը, բայց առանց հատկապես այդ գործողությունը նշանակելու. հ.-ե.* *steig- *(*steig´-*?) «ծակել» արմատը հայերենում պահպանվել է* ստէծ *բառի մեջ, եթե, իհարկե, ճիշտ է այս բառի ստուգաբանությունը. թերևս վաղնջահայերենի համար կարելի է ենթադրել սրա բայական ածանցյալը* (ստէծ-, *ստիծեմ), *որ հետագայում փոխարինվել է* ծակեմ *բայով։* Հիւսել *բառի հնդեվրոպական ծագման վարկածը* *tek´ þ-*ից (Վ. Վինտեր) հնչյունապես չի արդարանում, բայց նրա փոխարեն կարող էր գործածված լինել հ.-ե.* *plek´- *«հյուսել» արմատի ածանցյալը՝* *les- (*լեu) *ձևով, որ կարող էր դուրս ընկնել* լեսում *բայի հետ համընկնելու հետևանքով։* Նկար, պատկեր, ներկ *բառերն իրանական ծագում ունեն. հ.-ե.* *peik/g- *(*peik´-*) «գրել, նկարել» արմատը վաղնջահայերենում պահպանված լինելու դեպքում պիտք է հետագայում ունենար* *նէf, *նէկ *կամ* *նէu *ձևը. հմմտ. ռուս.* писать *«գրել. նկարել»։*

Թված գաղափարների որոշ մասը վաղնջահայերենում չի եղել՝ համապատասխան իրույթներին ու գաղափարներին հայերի անծանոթ լինելու պատճառով. սրանց թվին են պատկանում որոշ մասնագիտացված գործիքների, մետաղների անվանումներ։ Բացի դարբին բառից, արհեստավորների այլ կարգի հին նշանակումներ չեն պահպանվել, որ խոսում է աշխատանքի բաժանման տվյալ աստիճանի՝ վաղնջահայերի մոտ դեռևս թույլ արտահայտված լինելու, արհեստագործության՝ հիմնականում տնային բնույթ կրելու մասին։

10. Շարժում, տեղափոխություն, փոխադրում, նավագնացություն: Հայերենում լայնորեն ներկայացված են շարժման ու տեղափոխության տարբեր տեսակների նշանակումները, թեև կարելի է նշել, որ վաղնջահայերենի և հին հայերենի միջև զգալի տարբերություններ են եղել բառերի գործածականության և իմաստային ծավալների հարցում։ Այսպես, հին հայերենի շարժել բայը վաղնջահայերենում հավանաբար դեռևս չի եղել, գործածության մեջ պիտի եղած լինի բնիկ հնդեվրոպական աղեմ (հմմտ. անտղեկի «անշարժ») բայը։ Առկա են ցամաքում, ջրում և օդում շարժվելու տարբեր տեսակների մեծաքանակ բնիկ հնդեվրոպական նշանակումներ, ընդ որում նշանակվում են ինչպես մարդկանց, այնպես էլ կենդանիների շարժման ու տեղափոխման գործողությունների զանազան տեսակները՝ երթամ, գամ, թռչիմ, լողամ, ելանեմ, մտանեմ, իջանեմ, անկանիմ, ընթանամ «վազել», մերձենամ և այլն։ Հեծանիմ բայը խոսում է ձիու՝ իբրև փոխադրամիջոցի գործածության մասին։

Նշենք, որ չի պահպանվել պարելու գործողության բնիկ հնդեվրոպական մասնագիտացված անվանում. խաղ(-ամ) բառը, եթե այն իրոք բնիկ հնդեվրոպական է, բազմիմաստ է։

Վաղնջահայերն ունեցել են ճանապարհի, ճանապարհաշինության և անիվավոր փոխադրամիջոցների հետ կապված զգալի թվով նշանակումներ։ Վաղնջահայերենում ճանապարհ բառը չի եղել, բայց լայնորեն գործածվել է ուղի բառի սկզբնաձևը. ճանապարհ բանալու լայն կիրառության մասին են խոսում նորդ «բացված, տրորված, ուղիղ (ճանապարհ)», նորդեմ «ճանապարհ բանալ» տերմինները։ Առկա են կամուրջ (?), անիւ (?), բ. նոլոլ «անիվ», ալի «լիսեռ, առանցք», լուծ, սամի տերմինները, բայց սայլ, կառք բառերը հանդես են եկել համեմատաբար ուշ։ Չկա փոքր նշանակող հատուկ բառ. փողոց բառի ծագումն անհայտ է, պողոտայ բառը փոխառվել է ավելի ուշ։

Վաղնջահայերը, ինչպես երևում է պահպանված բառերից, ծանոթ են եղել նավագնացությանը և ջրով տեղափոխվելուն։ Դրա մասին են վկայում նաւ, կուր «նավակ», լաստ, թի, ճեղի «ղեկ» կամ կայմ» (?), թեւ «ղեկ», առագաստ բառերը։

11. Ունեցվածք, սեփականություն և առևտուր: Ունենալու, ստանալու և տալու, նվիրելու վերաբերյալ հայերենի ժառանգած բնիկ հնդեվրոպական ընդհանուր նշանակումները բավականաչափ հարուստ են, մինչդեռ նույնը չի կարելի ասել սեփականության, հարստության և առևտրի վերաբերյալ բառերի մասին։ Ունիմ, կալում, առնում, ստանամ, տամ, ընծայեմ (?), ձաւնեմ, ձ(ե)րեմ (ձիր), որոնեմ, գտանեմ բառերը հայերենի բառապաշարի

*կայուն տարրերից են. պահել-պահպանելու, խնայելու, վնասելու, կորցնելու հնդեվրոպական տարածված նշանակումները հին հայերենը չի պահպանել, թեև պետք է ենթադրել, որ դրանք վաղնջահայերենում դեռևս արտահայտվելիս են եղել բնիկ հնդեվրոպական բառերով։*

*Հին հայերենը հարստության և սեփականության հետ կապված բնիկ հնդեվրոպական քիչ նշանակումներ ունի։ Եթե ճիշտ է* աւն *«սեփականություն» բառի ստուգաբանությունը, և եթե այն իրանականից չի ծագում, ապա առկա է բնիկ հնդեվրոպական կարևոր մի անվանում, որ պիտի եղած լինի և վաղնջահայերենում.* կալուած, ստացուած, ինչք *անվանումները երկրորդական կազմություններ են։ Երկրորդական են նաև հարստության ընդհանուր անվանումները, իսկ փողի* (դրամ, ստակ), *քսակի, գանձի, ժառանգելու հետ կապված բնիկ հնդեվրոպական անվանումներ հայերենում ընդհանրապես չկան.* արծաթ *բառի «փող» և «հարստություն» իմաստները երկրորդաբար են առաջացել։ Երկրորդական բնույթ ունի նաև* նարուստ *բառը, որի նախնական իմաստն է «ուժեղ»* (նարում *«խփել, զարկել» բայից). Թերևս հին կազմություն է* մեծատուն *համանիշը։ Ընդհակառակն, հայերենը հարուստ է «աղքատ» իմաստի բնիկ հնդեվրոպական նշանակումներով՝* աղկաղկ, աղքատ, անքատ *(?),* փանաք: *Ագահի, ժլատի բնիկ հնդեվրոպական անվանումներ չկան.* ագահ, ժլատ, կծծի, ռիշտ, գծուծ *և այլ բառեր հնդեվրոպական չեն.* ընչաքաղց, ընչասէր, արծաթասէր *բառերը երկրորդական կազմություններ են։* Գող *և* ելուզակ *բառերը հնդեվրոպական ծագում ունեն, բայց* կողոպուտ, յափշտակել, շորթել, աւազակ, նէն *բառերը ուշ ձեռքբերումներ են, որոնցից վերջին երկուսն իրանական ծագում ունեն և վաղնջահայերենում չեն եղել. Նշենք* կողոպուտ *բառի ակնհայտ նմանությունը հուն.* κλέπτω *«գողանալ, հափշտակել» բային, որ ծագում է հ.-ե.* *k'lep-*ից (հին փոխառությո՞ւն)։*

*Հայերենում չկան փոխի, պարտքի, վճարելու, հաշվի, գրավականի (երաշխիքի), ծախսի, շահի, վնասի, տույժի, վարձի, ռոճիկի, վաճառելու, խանութի, թանկի, էժանի, այսինքն՝ զարգացած առևտրի հետ կապված բնիկ հնդեվրոպական անվանումներ։ Ակնհայտ է, որ ինչպես հնդեվրոպացիների, այնպես էլ վաղնջահայերի մոտ դեռևս զարգացած առևտուր և փոխանակություն չի եղել։ Կարելի է միայն նշել, որ վաղնջահայերը ներքաշված են եղել նախնական առևտրի ոլորտի մեջ. համեմ.* գին, տուր-ք, ագուտ *(եթե վերջինս իրանական ծագում չունի),* մուտ(-ք), նաւ:

12. Տարածական հարաբերություններ՝ տեղ, ձև, չափ: *Հայերենում լայնորեն ներկայացված են տարածական հարաբերությունների բնիկ հնդեվրոպական նշանակումները, որոնք ամեն մի լեզվի բառապաշարի անհրաժեշտ մասն են՝ անկախ ժողովրդի մշակույթի և քաղաքակրթության աստիճանից։ Զգալի թիվ են կազմում տարածության մեջ գրաված տեղի, այլև ձևի ու չափի բայական նշանակումները՝* դնեմ, նստիմ, դարեմ, հանգչիմ, դլամ, կամ, մընամ, դիզանեմ, թեղեմ, յարեմ, բանամ, փակեմ, թաքչիմ *և այլն։ Շատ են տարածության մեջ գրաված տեղի, ձևի, չափի հետ կապված անվանումները՝* բարձր, ներքին, ցած, վեր, հիմք, հաւ (յաւ), կէտ, սայր, եզր, կողմն, թեր, մէջ, աջ, մերձ, հուպ, հեռի, հարաւ, ձեւ, արդ, մեծ, փոքր, մանր, երկայն, երկար, լայն, անձուկ, հաստ, թանձր, մած, թաւ, թաղկ, նուրբ, գոգ, կոր, կեռ, շեղ, անկիւն, բոլորակ, ոլոր *և այլն։ Հին հայերենում չեն պահպան-*

*վել փակելու, ծածկելու բնիկ հնդեվրոպական անվանումներ.* **փակեմ, աղխեմ, խճում (խց(ան)եմ), ծածկեմ, պատեմ** *բայերը բնիկ հնդեվրոպական չեն։ Ծայրի հետ կապված* **ծայր, գագաթն, կատար-ք** *բառերը բնիկ հնդեվրոպական չեն. պետք է կարծել, որ* **սար** *բառը վաղնջահայերենում դեռևս ավելի լայն նշանակություն է ունեցել՝ նշանակելով «գագաթ» ընդհանրապես և ոչ միայն «լեռնագագաթ».* **սայր** *բառի վաղ ավանդված իմաստն է «թրի բերան», թեև հնարավոր է նաև «լեռնագագաթ» իմաստի վաղ գոյությունը (հմմտ. նաև* **սայռ***)։* **Անեակ-ը** *իրանական ծագում ունի, հավանաբար բնիկ հայկական չէ նաև* **ձախ** *բառը, մինչդեռ* **աջ-ը** *բնիկ հնդեվրոպական է. սա բացատրվում է ձախի բառարգելման (տաբուավորման) միտումով, որին տուրք են տվել նաև հայերը։*

*Երկրի կողմերի անվանումներից* **արեւելք** *և* **արեւմուտք** *բառերը բարդություններ են, որոնք թերևս վաղնջահայերենում արդեն գործածական են եղել.* **հարաւ** *բառն իմաստային ակնհայտ զուգահեռ ունի իրանականում (հմմտ. ավեստ.* paurva- *«առաջ. հարավ»), որ խոսում է հայերի, իրանցիների նման, հարավային կողմնորոշման մասին (հին հնդիկների մոտ իշխել է արևելյան կողմնորոշումը՝* pūrva- *«առաջ, արևելյան»)։*

*Ի տարբերություն* **երկայն-ի** *և* **երկար-ի***, հին հայերենը կարճի բնիկ հնդեվրոպական անվանում չի պահպանել.* **կարճ, հակիրճ, համառօտ, ամփոփ, սեղմ** *բառերից ոչ մեկի բնիկ հնդեվրոպական ծագումը չի հաստատված. հ.-ե.* *mreg'hu-*ի* *mr̥g'h- *«կարճ» տարբերակը հին հայերենում պիտի տար* ***մարճ** *ձևը, որ կարող էր դուրս ընկնել իրանական* **մարզ, մարճ** *«երկրամաս» բառի համանունության պատճառով. հնարավոր է ենթադրել նաև հ.-ե.* *(s)ker- *«կտրել» արմատից ծագող մի սկզբնաձևի գոյություն (հմմտ. հ. սլավ.* kratъkъ, *ռուս.* короткий, *այլև լատ.* curtus *«կարճ»). հայ.* **կարճ-ը** *ակնհայտ փոխառություն է հնդեվրոպական որևէ լեզվից (իրանական աղբյուրի՞ց), որ նույնպես կարող էր դուրս մղած լինել սկզբնական, ասենք,* ***քարդ** *տիպի մի ձև։*

*Հին հայերենը չի պահպանել բնիկ հնդեվրոպական անվանումներ նսար* **(անձուկ, անձայտ)***, խոր, ծանծաղ, հարթ, ուղիղ, գունդ, շարք, հավասար և նման գաղափարների համար, թեև կան մերձավոր գաղափարների անվանումներ, որոնցից կարող էին հնում գործածական լինել այլևայլ բառեր։* **Հարթ** *և* **տափարակ** *բառերն ակնհայտորեն փոխառություններ պիտի լինեն հնդեվրոպական այլ (իրանակա՞ն) լեզուներից.* **հարթ** *բառը զուգահեռ ունի հ. հնդկ.* pr̥thu-, *ավեստ.* pərəthu- *«լայն, ընդարձակ» բառերի մեջ, բայց սրանք ծագում են հ.-ե.* *pl̥t(h)u- *ձևից, որ հայերենում պիտի տար* ***հաղթ.** *սպասված* **ղ-ի** *փոխարեն* **r-ի** *առկայությունը արիզմ է, որ առկա է նաև* **մարմին** *բառում. այս դեպքում էլ պետք է ենթադրել շատ հին փոխառություն. նշենք, որ իրանական բառը փոխառված է քարթվելական լեզուներում (հմմտ. վրաց.* parto *«լայն, ընդարձակ»)։* **Տափ, տափարակ** *բառերի համար հմմտ. մի կողմից՝ հուն.* ταπεινός *«ցածր, ցածրադիր», որ կապակցվում համեմատում են հ. իսլ.* þefja *«ճզմել, տոփել, սրբել» բառի ու սրա ցեղակիցների հետ և վերականգնում հ.-ե.* *tap- *արմատը, մյուս կողմից՝ հայ.* **տապակ** *«վահանաձև զարդ» (<իրան.). քիչ հավանական է* **տափ-ի** *կապը* **տոփեմ** *բայի հետ, որ բնիկ հնդեվրոպական է։*

*13.* **Քանակ և թիվ:** *Քանակ և թիվ ցույց տվող բառերը հիմնականում*

բնիկ հնդեվրոպական են։ Սա վերաբերում է ինչպես ընդհանուր անվանումներին (քան-, թիւ, ամբ-ողջ, ամէն, յոգն, յոլով «շատ», անել-ի, բոյլ, հոյլ, լի, սին, ունայն), այնպես էլ թվականներին մինչև հարիւր. կասկածելի է միայն վերջինիս հնդեվրոպական ծագումը. հայերենը կորցրել է հարյուրի բուն հնդեվրոպական անվանումը *k'ṃtom-ից։ Մասն բառի հնդեվրոպական ծագումը կասկածելի է, կէս բառի ծագումն՝ անհայտ։

14. Ժամանակ։ Հայերենը պահպանել է ժամանակի հետ կապված բազմաթիվ բնիկ հնդեվրոպական անվանումներ, այդ թվում՝ ինչպես տարիքի, ժամանակային տևողության, գործողության տարբեր փուլերի, այնպես էլ տարվա եղանակների, ամիսների, օրերի ու նրանց մասերի հետ կապված։ Առաջին կարգի նշանակումներից հիշենք հաղ (հեղ) «անգամ», տի-ք «տարիք, հասակ», նոր, թարմ, հին, ծեր, երէց, արդ, արդէն, փոյթ, դանդաղ (?), տարտամ, հաւ «սկիզբ», տեւեմ, յաւ «ծայր, վերջ», յար, ստէպ, երբեմն, անդրէն, կրկին և այլն։ Ժամանակ բառը, ինչպես հայտնի է, իրանական փոխառություն է. եթե ճիշտ է ատեան բառի հնդեվրոպական և ոչ իրանական ծագման վարկածը, ապա սրա «ժամանակ» նշանակությունը, այնուամենայնիվ, ուշ շրջանի է, և վաղնջահայերենում ժամանակի ընդհանուր անվանման հարցը բաց է մնում։ Վաղ և ուշ բառերի սկզբնական բնիկ հնդեվրոպական համանիշների գոյության հարցը ևս չի լուծված, եթե, իհարկե, անգամ «ուշ» բառի հնդեվրոպական ծագման մեր վարկածը ճիշտ չէ. վաղ, կանուխ բառերի ծագումը հայտնի չէ (վաղ-ը, թերևս, վրաց. xval-ի «վաղը» հետ միասին ուրարտական աղբյուրից է), ուշ-ը իրանական ծագում ունի՝ համապատասխան իմաստափոխությամբ։ Բնիկ հնդեվրոպական ծագում չունեն սկսանիմ, աւարտեմ, պատրաստ և նման տիպի բառերը. հնում կարող էին սկսանիմ-ի փոխարեն գործածական լինել հաւիմ, աւարտեմ-ի փոխարեն՝ բոլորեմ, լնում բայերը։

Օրվա և նրա մասերի համար գործածական են եղել աւր, տիւ, տի, ց-երեկ, գիշեր, երեկ(ոյ), առ-աւ-աւտ (?), օրերի հաջորդման նշանակման համար այսաւր (հին կազմություն է), սերկ (?), երէկ։ Տարվա, նրա եղանակների և ամսվա անվանումները բնիկ հնդեվրոպական են՝ ամ, հերու, գարուն, ամառն, աշուն (?), ձմեռն, (յ)եղանակ, ամիս։ Հայտնի չեն ամսվա և օրվա ավելի մանրամասն բաժանումների վաղնջահայ անվանումները, եթե այդպիսիք եղել են։

15. Զգայական ընկալումներ։ Հոտի, համի, լսելիքի, տեսանելիքի և շոշափելիքի ու մաշկազգայության հետ կապված հիմնական նշանակումները հայերենում բնիկ հնդեվրոպական ծագում ունեն։ Բնիկ հնդեվրոպական են, ամենից առաջ, հենց զ-գամ, իմանամ «զգալ» և «հասկանալ. իմանալ», հոտ (հոտոտիմ), համ, լսեմ, տեսանեմ, հուպ (հպիմ), թերևս նաև շփեմ, շաւշափեմ բառերը և բառարմատները։ Բնիկ հնդեվրոպական են նաև զգայարաններով ընկալվող այլևայլ հատկությունների անվանումները՝ քաղցր, աղի. անալի, դառն (?), կծու. փայլուն, աղատ, մոյգ, բոսոր, բիլ «բաց կապույտ», դեղին (դեղձան, դեղբ). կարծր, պինդ, տրամ «պինդ», մեղկ, մեղմ, փափուկ (?), դերբուկ, ողորկ, սուր, բութ, գէջ, թաց, նայ, չոր (?), ջերմ, գոլ, գաղջ, ցուրտ, հով (զով), ոյծ «ցուրտ», ջինջ, բրոր և այլն։

Հին հայերենը պահպանել է, գույնի հետ կապված բնիկ հնդեվրոպական փոքրաթիվ նշանակումներ, հատկապես բիլ, դեղին, դեղձան: Գոյն, երանգ, ներմակ, սպիտակ, սեաւ, կարմիր, կապոյտ բառերն իրանական փոխառություններ են, քոյր-ի, կանաչ-ի ծագումն անհայտ է: Կարելի է վստահորեն ասել, որ բիլ-ի և դեղին-ի կողքին վաղնջահայերենը պիտի պահպանած լիներ նաև դրանց բնիկ հնդեվրոպական անվանումները: Սպիտակի անվանումները կապված են գերազանցապես փայլելու գաղափարի հետ, և այդ գաղափարի հնդեվրոպական առատ արտահայտման պայմաններում դժվար է ասել, թե հայերենը ո՛ր տարբերակը կարող էր ընտրած լինել. հավանական են, օրինակ, *աղբ կամ *աղաւ (*albho- կամ *alǝu- «սպիտակ». այստեղից են աղաւնի, թերևս նաև ալաւ(ս)ունք «համաստեղություն»), *լուսն (հմմտ. լսնագոյն «սպիտակ», լուսն «աչքի սպիտակ փառ՝ որպես հիվանդություն»՝ *leuk- արմատից, որտեղից լոյս), *արծ (հ.-ե. *areg´-, որտեղից արծաթ, արծնեմ, արծարծեմ) ձևերը: Հնարավոր է թուխ «սև. մութ» բառի հնդեվրոպական ծագման վարկածը (հմմտ. հ. իսլ. þɔka, հ. շվեդ. thökn «մեգ, մառախուղ». հնչյունապես քիչ հավանական է համեմատությունը ռուս. тусклый «աղոտ» բառի հետ՝ *taus- արմատից). սակայն կարող էր գոյություն ունենալ նաև իրան. սեաւ-ի հետ արմատակից բուն հայկական մի ձև. Հ. Աճառյանը նույն արմատից է բխեցնում, օրինակ, նսեմ բառը, թեև կա հնչյունական դժվարություն: Կարմիրի հնդեվրոպական տարածված նշանակումն էր *reudh-, որ հայերենում պիտի տար *երոյդ. թերևս սրա սկզբնաձևն առկա է եղել վաղնջահայերենում: Կանաչի հնդեվրոպական նշանակումները գալիս են *g´hel- «փայլել» արմատից, որ կարող էր նշանակել նաև «դեղին». այն հայերենում պիտի տար *ձել կամ *ձեղ: Հնարավոր է, սակայն, որ դալար բառը հնում գործածվեր ոչ միայն կանաչեղենի, այլև հենց կանաչ գույնի համար. դալ բառի իմաստը Հ. Աճառյանը մեկնում է որպես «մի տեսակ ձուկ», բայց հնարավոր է, որ սա իրոք գույն է նշանակում, ինչպես մեկնված է Նոր հայկազյան բառարանում. այն հանդիպում է հոմանիշների մի շարքում, որտեղ առկա է նաև բիլ-ը, որ Հ. Աճառյանը նույնպես մեկնում է «մի տեսակ ձուկ»:

Հին հայերենում բացակայում են նաև ծանրի և թեթևի բնիկ հնդեվրոպական նշանակումները, որոնք կարող էին ունենալ *կեր (*gᵘ̯er-) և *լեգ (*legᵘ̯h-) կամ լինգ (*lengᵘ̯h-) ձևերը:

16. Զգացմունք (ֆիզիկական որոշ դրսևորումներով). խառնվածքային, բարոյական և գեղագիտական ըմբռնումներ: Զգացմունքի և խառնվածքի հետ կապված նշանակումները, բնականաբար, նախնական բնույթի են և լայնորեն ներկայացված հայերենի բնիկ հնդեվրոպական բառերի մեջ: Լավ են ներկայացված նաև բարոյական տարրական գաղափարների և գեղագիտական տարրական ըմբռնումների դրսևորումները: Վաղնջահայերենում լայն գործածության մեջ գտնվող մի շարք բառեր հետագայում փոխարինվել են ավելի տարածված նշանակումներով և իմաստափոխության են ենթարկվել: Իրանական ծագման յոյզ բառի փոխարեն հնում գործածության մեջ պիտի եղած լինեն, թերևս, նորձ և զգացումն բառերի սկզբնաձևերը: Բնիկ հնդեվրոպական են և վաղնջահայերենից են գալիս նոգ «հոգս», զարմանք, երջանկութիւն, նէգ (նիգութիւն), խինդ (?) ծիծաղ (?), խախանք, ծաղր, ձաղ, սէր,

ցաւ, մորմոք, տրտում, լամ, ողբ, տաղ, ցասումն, մոլիմ, հեռ, մախ *«նախանձ»*, քէն, սէգ, արի, երկիւղ, սպառնամ, գեղձիմ, տռոյգ, սուտ, մեղմեղանք *«կեղծավորություն»*, քաւ, բարի, զարշ, արդար, սխալ, մոլոր, մեղ-ք, սաստ (?), լոյս, գեղ (գեղեցիկ), ա-գեղ *բառերը։*

*Հետագայում սրանց փոխարեն կամ սրանց կողքին հանդես են եկել փոխատու և անհայտ ծագման բառեր՝* բախտ, դժբախտ, թշուառ, ուրախ, տխուր, քաջ, վախ, նենգ, նիշտ, վատ *և այլն։ Մարդու ընդհանուր բախտի և ճակատագրի, հաճելիի և տխրժելիի, համարձակության, երախտիքի և շնորհակալության հետ կապված բնիկ հնդեվրոպական նշանակումները հին հայերենում բացակայում են։ Ցանկություն արտահայտող համանիշների շարքի մեջ* (կամիմ, ցանկանամ, բաղձամ, ըղձամ (իղձ), տենչամ, փափագեմ *և այլն) ընդհանրապես քիչ են բնիկ հնդեվրոպական բառերը. պետք է կարծել, որ վաղընչահայերենում ավելի լայն գործածության մեջ են եղել* գեղձ *«ցանկություն»,* գեղձիմ (-ամ) *բառերի սկզբնաձևերը, որոնք գալիս են հ.-ե.* *u̯el- *«ցանկանալ, ուզել» արմատից։*

*17.* Մտածողություն, միտք: *Մարդու մտքի և մտածողության հետ կապված նշանակումները լայնորեն ներկայացված են հայերենի բնիկ հնդեվրոպական բառերի մեջ՝* միտք, բան *«բանականություն»,* ըմբռնեմ, իմանամ, գիտեմ, ճանաչեմ (*ծանաչեմ), ուսանիմ, մոռանամ, իմաստ, գաղտ, ստոյգ, յորդոր, թերուք, երկեւան, խէթ *«կասկած» և այլն։ Իրանականից փոխառյալ* յիշեմ *բայի հետ միասին հին հայերենում գործածական են եղել համանիշ նկարագրական դարձվածներ։ Հունարենում, լատիներենում, կելտականում, գերմանականում, բալթիականում և սլավոնականում այդ իմաստն արտահայտող բառերը գալիս են* *men- *«մտածել» արմատից. թերևս այստեղից է ծագում բարբառային* մանել *«հասկանալ» բայը, եթե այն* մանել *բայի փոխաբերական գործածությունը չէ. Մեյեն այստեղից է բխեցնում* իմանամ *բայը, բայց սրա արմատը* իմ-ն *է և ոչ* -ման-*ը։ Եթե հայերենը ժառանգել է* *men-*ը «հիշել» իմաստով և հետո կորցրել, ապա այն հին հայերենում պիտի ունենար* *մնեմ *(ավելի վաղ՝* *մինեմ) *տեսքը։*

*18.* Ձայնական արտահայտություն, խոսք. ընթերցանություն և գիր: *Հայերենը պահպանել է ինչպես բնության և կենդանական ձայների տարբեր տեսակների, այնպես էլ մարդկային լեզվի և խոսքի հետ կապված և հնից եկող բազմազան նշանակումներ։ Առաջին կարգի բառերի զգալի մասի բնիկ հնդեվրոպական, թե հայկական բնաձայնական նշանակումներ լինելու հարցը միշտ չէ, որ կարելի է հեշտությամբ լուծել.* ձայն, երգ, տաղ *(?),* կարդամ *«ձայնել, դոչել» ու բնաձայն բառերի կողքին առկա են մեծ թվով բնաձայն տիպի բառեր, որոնք հաճախ ունեն հնդեվրոպական, երբեմն էլ ոչ հնդեվրոպական լեզուներում զուգահեռներ՝* աղաղակեմ, գոչեմ, շչեմ, սուլեմ, կարկաչ, մռմռեմ *«մռնչալ» և այլն։*

*Մարդկային լեզվին և խոսքին վերաբերող հնդեվրոպական նշանակումներից հիշենք* բամ, բան, բայ, բարբառ, ասեմ, գո՛գ *«ասա՛»,* լուռ, մունջ, լեզու, բառ, անուն, նարց *և այլն։ Հին հայերենը չի պահպանել պատասխանելու և մերժելու բնիկ հնդեվրոպական նշանակումները. պատասխանելը հնդեվրոպական տարբեր լեզուներում արտահայտվում է գերազանցապես*

ինքնուրույն կազմություններով, որոնցից է նաև իրանական ծագման պատասխանի-ն (pāt(i)- saxuanī?' pāti «դեմ, դիմաց, հակառակ» + saxuan «խոսք»)։

Գրի և գրելու հետ կապված հին հայերենն ունի գիր (գրեմ), ընթեռնում (թրթռակ «ճարտասան»), կարդամ «ձայնել, բարձրաձայն կարդալ», էջ, տող բառերը, որոնցից վերջին երեքը ակնհայտորեն իմաստային ուշ մասնավորումներ են. գիր-ը (*uēr-) ծագում է *u̯er- «քերել, քերծել» արմատից և նշանակում է հատկապես քարի կամ այլ կարծր նյութի վրա հետք թողնելը (նույն արմատից է գերծում «ածիլել» բայը). հայերենի տիպի իմաստային զարգացում են ունեցել գերմանական խմբի գոթ. writ «գիծ», հ. անգլ. writ «գիր» բառերը։ Ընթեռնում և նրա հետ կապված թրթռակ բառերի սկզբնական իմաստը կապված է ոչ թե ընթերցելու, այլ խոսելու հետ, և իմաստի մասնավորումը տեղի է ունեցել հայերենում։

*19.* **Տարածքային, հասարակական և ժամանակային բաժանումներ. Հասարակական տարբերություններ**։ *Այս բաժնում ընդգրկված հասկացությունների մեջ հին հայերենի բնիկ հնդեվրոպական նշանակումները մեծ թիվ չեն կազմում։ Սա բացատրվում է մասամբ հնդեվրոպացիների և վաղնջահայերի հասարակական պայմանների տարբերությամբ, մասամբ հետագա հասարակական-քաղաքական փոփոխությունների հետ կապված նոր բառերի ներմուծմամբ։* Երկիր, կողմն, ցեղ, զարմ, ընտանիք *բառերը ակնհայտորեն գալիս են հնդեվրոպական ակունքներից և վաղնջահայերենում լայն գործածություն պիտի ունեցած լինեն։ Հավանական է նաև հայերին տրվող* արմեն *և* հայ *անվանումների հնդեվրոպական ծագումը։* Գաւառ *բառի բնիկ հնդեվրոպական լինելը կասկած է հարուցում, իսկ* ազգ *և* գերդաստան *բառերի համար ավելի հավանական է իրանական ծագման վարկածը։ Հին հայերենը չունի* գիւղ, քաղաք, ժողովուրդ, իշխել, թագաւոր (արքայ), թագուհի, իշխան, ազնուական (ազատ, տոհմիկ) *բառերի համար բնիկ հնդեվրոպական համարժեքներ.* գիւղ *և* արքայ *բառերի բնիկ հնդեվրոպական ծագումը խիստ կասկածելի է, թեև կան դրանք հ.-ե. *ueik'- «տուն, բնակատեղի. գյուղ»* (գեւղ <*u̯eik'-lo-?) *և *rek- «կարգավորել, կարգադրել» արմատներից բխեցնելու փորձեր։*

*Հասարակական հարաբերությունների վաղ բնույթի մասին որոշ գաղափար են տալիս* տէր (<տի-այր), տանուտէր, տիկին, ընդոծին, արբանեակ, ծառայ *բառերը. վերջին երկուսի հիման վրա և նկատի առնելով* ստրուկ *բառի հնարավոր հնդեվրոպական ծագումը, կարելի էր եզրակացնել հայերի մոտ ստրկատիրության գոյության հնարավորությունը (հմմտ.* ծառայ *«գերի. ծառա. ստրուկ»), սակայն համեմատաբար ավելի ուշ, քան վաղնջահայ լեզվի շրջանն է։* Ազատ, հրամայեմ, հպատակ *բառերը և նրանց տարածված համանիշները բնիկ հնդեվրոպական չեն, և կարելի է կարծել, որ ազատի ու ոչ ազատի հակադրությունը վաղնջահայերի մոտ խստորեն չի անցկացվել։*

*Հասարակական կյանքի հետ կապված այնպիսի բառեր, ինչպիսիք են* հիւր, սագնեմ *(?)*, բար-ք, նիւթումն, լիրբ *և այլն, բնիկ հնդեվրոպական են և գալիս են վաղնջահայերենից։ Ընդհակառակն, հին հայերենը չի պահպանել*

բարեկամ, թշնամի, սովորոյթ, վէճ, հանդիպիմ *բառերի և նրանց մերձավոր համանիշների բնիկ հնդեվրոպական ձևերը։* Ընկեր, դրացի *ձևերը հնդեվրոպական հիմքի վրա կազմված հին բառեր են և հավանաբար գալիս են վաղընջական շրջանից։ Դժվար է պարզել* եկամուտ, նորեկ *բառերի հնության աստիճանը, բայց կազմության ձևը չի վկայում վաղնջահայերենում նրանց գոյության մասին։* Աւտար(ական)-*ի համար թերևս գործածության մեջ է եղել* եկ *բառի վաղնջահայ ձևը։*

*20.* **Ռազմական գործ**: *Ռազմական գործի հետ կապված բնիկ հնդեվրոպական բառերը հին հայերենում մեծ թիվ չեն կազմում՝* մարտ (մարտնչիմ), կռիւ *(?)*, բիր *«մահակ»*, աղեղն, նետ, սլաք, փքին, (գեղ)արդն, սուր, թուր, կումբ *(?)*, դրոյթ *«հարձակում, գրոհ»*, գերի, ակլակ *«դարան» (?)։ Հավանական է* դարձադարձ *«նահանջ»*, ընկրկեմ (կրունկն-*ից*), անձնատուր *բառերի՝ հին կազմություններ լինելը* (անձնատուր-*ը՝ ուշ համաբանությամբ ձևափոխված)։* Խաղաղ-*ի բնիկ հնդեվրոպական ծագումը և սրանից կազմված* խաղաղութիւն *բառի մեծ հնությունը կասկածելի են։* Մարտիկ *բառի կազմության հնությունը հայտնի չէ. նրա* ի-ա *հոլովումը, ի տարբերություն* աղջիկ, ծաղիկ *բառերի հոլովման տիպի, ցույց է տալիս կազմության ոչ մեծ հնություն. սա նշանակում է, որ «զինվոր» հասկացությունն արտահայտող բնիկ հնդեվրոպական ծագման վաղնջահայ տերմին հին հայերենը չի պահպանել։* Բանակ, զաւր-ք, գունդ, պատերազմ, ռազմ, զինուոր, զաւրական, ռազմիկ, զաւրապետ, սպարապետ, զէն, սպառազէն, պարս, ասպար, նիզակ, աշտեայ, զրահ, վէրտ, նաւշան, սաղաւարտ, վահան, ասպար, նահանջ, պաշտպան, աւար, դարան *և այլ բառեր իրանական ծագում ունեն, որոնց բնիկ հնդեվրոպական զուգահեռները միայն մասամբ են հայտնի կամ հնդեվրոպականում ընդհանրապես չեն եղել։ Ուշ են մուտք գործել նաև ռազմական այլ տերմիններ՝ փոխառված ուրարտական* (բուրգն), *սեմական* (սուսեր, բերդ *և այլն*), *հունական* (ստրատ, ստրատելատ) *և ուրիշ աղբյուրներից։*

*21.* **Օրենք**: *Օրենքի հետ կապված բնիկ հնդեվրոպական տերմինները սակավաթիվ են և արտացոլում են այդ բնագավառի նախնական ըմբռնումները՝* ատեան (?), արդար, մեղ-ք, յ-անց(ան-ք), երդումն, այց, քաւ, արգել(-ան), եղեռն, գող, ուրաստ: *Օրենքի հետ կապված որոշ բառեր կազմվել են բնիկ հնդեվրոպական բառերի ու մասնիկների հիման վրա հենց հայերենում՝* իրաւ (-ունք), մեղաւոր, յանցաւոր, մեղադիր, անմեղ, շնութիւն *և այլն։*

*Օրենքի հետ կապված տերմինների՝ հին հայերենում գործող համակարգի մեջ, բնիկ հնդեվրոպական միջուկի հետ միասին, շատ են իրանական ծագման բառերը, որոնք վաղնջահայերենում բացակայել են՝* աւրէն-ք, հրահանգ, պատուէր (պատուիրան), դատ, դատաւոր, վճիռ, դատախազ, ամբաստանեմ, պատիժ, պատուհաս, վկայ, խոստովանեմ, տոյժ, տուգանք, բանտ, զնդան, ուխտ, դրուժ *և այլն։ Կան նաև այլ ծագման տերմիններ և նորակազմություններ։*

*22.* **Կրօն և նախապաշարմունք**: *Հին հայերենում սակավաթիվ են նաև կրոնի և նախապաշարմունքի հետ կապված բնիկ հնդեվրոպական այն բառերը, որոնց առկայությունը վաղնջահայերենում հավանական է, թեև դրանց կրոնական բնույթն էլ ոչ բոլոր դեպքերում է հավաստելի՝* կրաւն (կրեմ

բայից՝ «կարգուկանոն, օրենք. համար. կրոն» անցումներով. վերջին իմաստի առկայությունը վաղնջահայերենում կասկածելի է), դի-ն, ձաւն «գոհ», ընծայ «գոհ», տաւն, մաղթեմ, ապաւր-ն (?), Նուէց, «ավագ. քահանա», սուրբ «մաքուր. սուրբ», անէծ-ն, անդունդ-ն «անդունդ. դժոխք. գեհեկման», պէտ «գուշակ, կախարդ», բովեմ, (ն)ոգի, ցոյց «նշան»։ Կասկածելի է նաւառ, աղանդ, երկին-ն (որպես պաշտելի տարրեր), այս «չար ոգի» բառերի հնդեվրոպական ծագումը. հին կազմությունները և զարգացածքները են՝ թովիչ, նաւցուկ, ձաւնիչ, երեւոյթ, անսիլ, երկիր պագանեմ:

Նախաքրիստոնեական հայ կրոնի հետ կապված շատ բառեր իրանական ծագում ունեն՝ դեն, պաշտեմ (պաշտաւն), տաճար, մեհեան, բագին, զոհ, յաշտ, մոգ, հմայեմ, վհուկ, աւրհնեմ, սանդարամետ, դեւ, (յուշկա)պարիկ, համբարու «պարիկ», հրաշ-ք, հրեշ և այլն։ Հայ հեթանոսական դիցարանը ձևավորվել է իրանական ազդեցության տակ և հելլենիստական շրջանում կրել հունական ազդեցությունը։ Բնիկ հնդեվրոպական դիցանուններ գրեթե չկան. Ամանոր-ի հնության ստուգանը պարզ չէ, Վանատուր-ի առաջին բաղադրիչը բնիկ հնդեվրոպական չէ։ Աստուած բառի ծագումը պարզ չէ. կան հնդեվրոպական (*i̯ag'i-diu̯-ag'- — Պիզանի), փռյուգիական (հմմտ. Σαβάζιος Մառ), իրանական (Լագարդ), փոքրասիական (Ջահուկյան), ուրարտական (հմմտ. ուրարտ. Aštiuzi- — Մելիքիշվիլի) ծագման վարկածներ։ Հայկական դիցարանի և դիցաբանության վրա զգալի է նաև փոքրասիական և սեմական ազդեցությունը։

23. Դերանվանական և սպասարկու բառեր ու մասնիկներ: Հայերենի, այդ թվում և վաղնջահայերենի բնիկ հնդեվրոպական բառապաշարի անկապտելի մասն են կազմել ես, մեք, դու, դուք, ինքն, իմ, քո, մեր, ձեր, իւր, -ս-, -դ-, -ն-, ո-ք (-չ,-մն,-ր), ի-ք (-մն,-նչ) դերանուններն ու դերանվանական մասնիկները, առ, ընդ, բստ, վեր, զեր, մի-նչ, ներ, ան «կամ», այլ, բա, եթէ, քան սպասարկու բառերը, այլև ձևաբանական և բառակազմական զանազան նախամասնիկներն ու վերջամասնիկները։

## 2. ԲԱՐԲԱՌԱՅԻՆ ՏԱՐԲԵՐԱԿՆԵՐ

Հնդեվրոպական ընդհանրությունից անջատվելուց հետո հայերենի ժառանգած խոսվածքային մասնակի տարբերությունները պիտի զգալի չափով խորանային և բազմանային։ Կառուցվածքային տարբերությունների հետ միասին վաղնջահայերենը պիտի ունենար նաև բառային տարբերություններ՝ վաղնջահայերի տարբեր հատվածներում միևնույն բառերի իմաստային տարբեր առումներ և գործառության հաճախականության տարբերություններ, միևնույն իմաստների համար տարբեր բառերի (հոմանիշների) գործածություն։ Այլ լեզուների հետ ունեցած շփումները պիտի ուժեղացնեին այդ տարբերությունները և առաջ բերեին նոր տարբերություններ, փոխառությունների գործածության տարածքային անհամաչափություն:

Համեմատաբար սակավ են բարբառների պահպանած հնդեվրոպական այն արմատական ձևերը, որոնք բացակայում են հայերենի գրավոր հուշարձաններում, ընդ որում դրանց մեջ առանձնահատուկ տեղ են գրավում մա-

նավանդ բնաձայնական-նկարագրական, պատկերավոր գործածություն ունեցող բառերը՝ ան «կամ» (հ.-ե. *an. համմտ. լիտվ. an-gu «կամ»), ապի (և ափու) «հայր» (հ.-ե. *appa. համմտ. հուն. ἄππα, ἄπφα «հայրիկ,ապի»), ատտա «մայրիկ» (հ.-ե. *atta. համմտ. հ. հնդկ. attā «մայրիկ»), բունձ «հողակոշտ» (հ.-ե. henb*g'h-. համմտ. հ. վ. գերմ. bungo «բունձ, հողակոշտ»), գան «գզվանք». (հ.-ե. *ghen-. համմտ. ռուս. гнус «գզվանք»), գլխել «կորզել, շորթել» (հ.-ե. *ṷel-. համմտ. գոթ. wilwan «թալանել, հափշտակել»), դադու «հայր. մեծ քույր» (հ.-ե. *dhē-dh(ē)-. համմտ. շվեյց. däddi «հայրիկ»), դնդել (>դնթել) «հրել», դնդալ «շարժվել», դնզատել (դնզզել), դմբզել «խնցքահարել», դմբոց «թնդյուն» (հ.-ե. *dhen-, *-dh-, *-gh-, *-bh-. համմտ. նորվ. բրբռ. denta «հրել», հ. անգլ. dengan «խփել, թրխկացնել», անգլ. բրբռ. dump «թմփացնել, ծանր հարվածել»), թալ «մի ուտելի բանջար» (բայց համմտ. թաղթ, այլև թերևս, բրբռ. թելուկ) (հ.-ե. *tāl. համմտ. լիտվ. at(t)olas «աշնան խոտ»), թնալ, թնթնալ, թնկթնկալ (հ.-ե. *(s)ten-. համմտ. ռուս. стенать «հառաչել, հեծեծալ», լատ. tono, -āre «որոտալ»), լապու, լեպու «թույլ կախ ընկած կաշի» (հ.-ե. *leb-, *lāb-. համմտ. իսլ. նորվ. lapa «թույլ կախվել», հ. անգլ. ēar-liprica «ականջի բլթակ»), լափ, լուփ «ձեռքի ափ» (հ.-ե. *lēp(h)-. համմտ. գոթ. lōfa- «ձեռքի ափ»), լաքոշ «լայնաբերան» (հ.-ե. *plā-k- «լայն ու հարթ տարածվել»). լոք «մեծ քայլ» (հ.-ե. *lek-. համմտ. նորվ. բրբռ. lakka «ցատկել. մանրաքայլ գնալ»), լպուկ, (լո)պկել (հ.-ե. *leub/p. համմտ. լիտվ. lùpti «կճեպել, պլոկել»), կ(ո)լոր, կ(ո)լոն (հ.-ե. *gel-. համմտ. հ. հնդկ. *gula- «գնդակ, գունդ»), ճխճիլ (<*ճեխատնել) «տեսնել» (հ.-ե. *(s)pek'-. համմտ. հ. հնդկ. páśyati «տեսնում է»), ճլոտել «հրել» (հ.-ե. *pel-. համմտ. լատ. pellō, -ere «հրել»), ճոտ «կճուճաձև մի աման» (հ.-ե. *ped-. համմտ. լիտվ. pùodas «կճուճ»), ճուպ (ճուպ տալ «սեղմել») (հ.-ե. *ub-. համմտ. հ. հնդկ. ubjáti «ցած պահել, սեղմել»), մա, մամ (հ.-ե. *mā, *mam(m)ā. համմտ. հ. հնդկ mā, ռուս. мама «մայրիկ»), մալամշել, մոլոզվիլ «ախտը՝ մատհող նստել» (հ.-ե. *mel- համմտ. հուն. μέλομαι «հոգ տանել»), մայանչ (հ.-ե. *mel-. համմտ. հուն. μαλλός «բրդի փաթիլ»), մուլ «ծուխ», մլալ, մլմլալ (հ.-ե. *mel-. համմտ. մ. իռլ. smōl, smal «կրակ. ածյուն»), նան (հ.-ե. *nana. համմտ. հ. հնդկ. nanā «մայր(իկ)»), նիզ «շղաձգություն» (հ.-ե. *neu-. համմտ. հուն. νύσσω «խթել, հրել, խփել»), սլուլ «սառնամանիք», սղին «սառցաշերտ», բ. սղոն «սառցակտոր», (հ.-ե. *k'el-. համմտ. լիտվ. šálti «սառչել», pašalis «սառած գետին»), ցեռ (*ցեռն), ցրդել (ցռթել) «ծլտել» (հ.-ե. *sk'er-(d-). համմտ. հ. ֆրիզ. skern «գոմաղբ»), փափա «կերակուր. հաց» (մնկ.) (հ.-ե. *pap(p)a. համմտ. լատ. pāpa, pappa «կերակուր»), քեռթափոթիկ «խորդուբորդ» (հ.-ե. *(s)ker- «կնճռոտվել»), քոռ «ցեխ» (հ.-ե. *ker-. համմտ. ն. պրսկ. karl, karah «կեղտ») և այլն:

Մնացած դեպքերում բարբառներում պահպանված հնդեվրոպական ծագման բառերը, ինչպես մասամբ ցույց է տրվել վաղնջահայերենի կառուցվածքի քննության կապակցությամբ, դրավոր աղբյուրներում և հատկապես դրաբարի հուշարձաններում ավանդված բառերի համարժեք տարբերակներն են, որոնք տարբերվում են գրաբարյան ձևերից ձայնական, աճական, ածանցի, իմաստի դրսևորման առանձնահատկություններով: Մեկ տվյալ դեպքում

*մասնավորապես հետաքրքրում են բարբառային այն գծերը, որոնք ակնհայտորեն արխաիկ բնույթ ունեն և հանդես են եկել նաև վաղնջահայերենում։ Թեմատիկ ցանկում և տարածքային բաշխման աղյուսակում բերված բարբառային ձևերը երբեմն գրանցում են այնպիսի իմաստներ, որոնցով դառնում են իմաստային (թեմատիկ) ավելի հին միակ արտահայտիչները, սակայն մեծ մասամբ դրանք գրավոր աղբյուրներում գործածվող բառերի համանիշներն են, որոնք առանձին դեպքերում հանդես են բերում նրբերանգներ և արխաիկ գծեր։ Խոսենք այդպիսի մի շարք դեպքերի մասին՝ ըստ վաղնջահայերենում դրսևորված թեմատիկ խմբերի։ Դրանց մեջ շատ են հատկապես մասնագիտացված իմաստները։*

*1) Ֆիզիկական աշխարհի նշանակումների մեջ բուն «ժայռ» իմաստն արտահայտված է միայն հնդեվրոպական ծագման բարբառային* fերծ *և* fուրշ *բառերով* (ժայռ *բառի ծագումն անհայտ է)։ Բարբառներում պահպանվել են ցեխի և տիղմի համար* տիլ, fոռ, *սառնամանիքի համար՝* սլուլ, *հեղեղի համար՝* լավ, *սառցահալքի համար՝* ճալճալ, *կայծի համար՝* անթայր, *ծխի համար՝* մուլ *համանիշները։ Առկա են* մառ *«ցլեպ»,* ցլեպ, սղին *«սառցաշերտ»,* սղոն *«սառցակտոր» մասնագիտացված իմաստով բառերը։*

*2) Մարդկություն, սեռ, տարիք, ազգակցություն արտահայտող բառերի մեջ բարբառայինները գերազանցապես մանկական կամ փաղաքշական բնույթի են՝* ապի, դադո, ատատա, մա, մամ, նան *և այլն։*

*3) Կենդանիների՝ գրական հուշարձաններում չպահպանված բարբառային անունները սակավաթիվ են. կարելի է նշել անհայտ (սեմակա՞ն) ծագման* ցեց *բառի հնդեվրոպական ծագման* մղմող *համանիշը, թուխ կովի մասնագիտացված* բորեկ *անվանումը։ Բավական շատ են գրական բառերի բարբառային այն տարբերակները, որոնք հանդես են բերում ինքնուրույն կաղմություն կամ բնորոշ գիծ՝* աfլոր՝ աfապաղ-*ի կողքին,* մորմոնջ՝ մրջյուն-*ի կողքին,* կոզնի, կոնձնի՝ ոզնի-*ի կողքին և այլն։ Բարբառային* կուկու, կուկուկ *ձևերը՝* կկու-*ի լիաձայն և ածանցավոր ձևերն են՝ թերևս բնաձայնական նորակազմություններ։*

*4) Մարմնի մասերի, մարմնական գործառույթների և պայմանների հնդեվրոպական ծագման բարբառային անվանումների մեջ հատկապես շատ են գռեհկաբանություններն ու անպատշաճ բառերը, որոնք հազվադեպ են թափանցում գրավոր լեզվի մեջ* (մամուխ, պուպու, ցէր<ցայր, ցեռ, ցրդել), *մանկական և պատկերավոր բառերը* (կունի, լաfոշ, լկատել, լպստել, լպուկ, լուլ *«խիստ հարբած»,* լամազ *«նիհար, վտիտ»,* շիպո *«շիլ»), մասնագիտացված բառերը և բառաձևերը* (լապո, լեպո, լեպ *«լեզվի վրայի սպիտակ փառ»,* ճիգ *«ջղաձգություն»)։ Կան նաև գրական լեզվի բառերի սովորական համանիշներ՝* կուլ *«կոկորդ»,* կոտուկ *«շնչափող»,* լափ *(և* լովազ) *«ձեռքի ափ»*

*5) Ուտելիքի և խմելիքի, կերակրի պատրաստման և ամանեղենի նշանակումների մեջ, բնականաբար, շատ են մասնագիտացված և կոնկրետ բնույթի անվանումները՝ կապված գյուղական առօրյա կյանքի ու կենցաղի հետ՝* ճունցել *(?),* խարկել *(հմմտ.* խորովեմ), պուտուկ *(հմմտ.* պտյան), բըլիկ, բլոտ, պուլիկ, բմբուշ *«փափուկ՝ լավ թխած հաց»,* բով *«խմորի գունդ»։ Կան նաև դեպքեր, երբ գրական լեզուն պահպանել է միայն ածանցյալ ձևը, բարբառը՝ արմատականը են՝* լակ *(գրաբար հուշարձաններում միայն* լակեմ): *Բարբառների համար բնորոշ են նաև մանկական ձևերը, ինչպես* փա-

փա «ուտելիք, կերակուր»։ Գրական կրծել ձևի կողքին կա բարբառային մոր-տել համանիշը։

6) Հագուստի, անձնական զարդարանքի և խնամքի անվանումների մեջ ընիկ հնդեվրոպական բարբառային այն բառերը, որոնք գրական լեզվում զուգահեռներ չունեն, սակավաթիվ են՝ ցկտել «մաշել, պատառոտել (հագուստը)», սերել «սեկ», կլոճ «թելի կծիկ»։ Գրաբարյան գ-գեստ և զգենում բայերի առանց գ-ի ձևերը պահպանվել են գեստ և գենալ ձևերի մեջ, սարիճ և սարդ բառերի նախնական բայական իմաստը՝ թերևս սարել «մանել. լարել» բայի մեջ։

7) Բնակարանի, տան և կահույքի ընիկ հնդեվրոպական՝ միայն բարբառներին հատուկ անվանումներ ու տերմիններ առայժմ գրեթե չեն արձանագրված։ Զարացրած քակորի՝ որպես վառելիքի թիթրէճ և տարթ անվանումների ընիկ հնդեվրոպական լինելը կասկածելի է։

8) Երկրագործության և բուսականության հետ կապված հնդեվրոպական ծագման բարբառային բառերը պատկանում են գերազանցապես բուսանուններին և բույսի մասերին՝ թալ (հմմտ. գրական հուշարձաններում հանդիպող թաղթ(իկ) և թալլ), թելուկ (?), մողկ, ոսի, դեղդ, դլբիկ, մոլ, ցաք (ցաք-ատ «էտիչ»), ցոուկ։ Պողել և ճեղել ձևերը համապատասխանաբար գրական պեղել և ճաղել բայերի ձայնդարձային տարբերակներն են։

9) Ֆիզիկական գործողությունների, արվեստների և արհեստների ընիկ հնդեվրոպական բարբառային նշանակումների գերակշռող մասը կազմում են գործողություն նշանակող բառերը՝ գերազանցապես բնաձայնական և պատկերավոր-նկարագրական բնույթի՝ գմբել, ղնգստել, տրաքել, լոպկել, տարտղնել, ցրքմել, ցրքմցնել, ընդ որում մի շարք բառեր գրական համապատասխան բառերի խոսքիմաստային, ձայնդարձային և աճականական տարբերակներն են՝ կեռել (հմմտ. կեռ), ծաղտել (հմմտ. ծաղկել), փոթիկ (հմմտ. փերթ), ճեղրդել (հմմտ. ճաղել), ճմռել (հմմտ. ճմլել և ճմիլ)։ Կլմպուռ-ը «երկինքից կախված շղթա» և ճաղալակ-ը «կաղով» գյուղական կյանքի հետ կապված մասնագիտացված բառեր են։

10) Շարժման, տեղափոխության, փոխադրման և նավագնացության հետ կապված նշանակումներից ընիկ հնդեվրոպական բարբառային բառերի մեջ մեծ թիվ են կազմում շարժման և տեղափոխության տարբեր տեսակների բայական նշանակումները՝ ղնդել (>ղնրել), ղնդալ, իլլել, կլապտիլ, կոտտել, լլկել, լելալ, լպստալ (լպստիլ), լժալ, տոռռալ, տոռտոռալ, ճլոտել և այլն։ Հատուկ հիշատակության արժանի է ճոլոլ «անիվ» բայը, որ ներկայացնում է հ.-ե. *ku̯eku̯lo-, *ku̯oku̯lo- «անիվ» բառի ձայնդարձային տարբերակը (*ku̯oku̯ol- >ճոլոլ), եթե, իհարկե, ճիշտ է ճոլովեմ բայի բխեցումը *ku̯el- «պտտ(վ)ել» արմատից. այդ իմաստի համար առկա են գրական լեզվում անիւ, որոշ բարբառներում՝ ակ (<ակն) բառերը։

11) Ունեցվածքի, սեփականության և առևտրի հետ կապված ընիկ հնդեվրոպական զուտ բարբառային նշանակումները սակավաթիվ են՝ գըլփել «խլել» և կլմբոս «հարուստ», ընդ որում սրանք էլ հատուկ են արտահայտչական-պատկերավոր խոսքին։

12) Տարածական հարաբերությունների՝ տեղի, ձևի, չափի ընիկ հնդեվրոպական բարբառային նշանակումները, մասամբ պատկերավոր-արտահայտչական բնույթ ունեն՝ բթոկիլ, բղբնջել, կճնիլ, կոտիլ, կռնձիլ, մասամբ

սովորական բառեր են՝ գրական համապատասխան բառերի համանիշներ և տարբերակներ՝ կոլոճ, կոթիկ, կտռ (հմմտ. կեռ), կ(ո)լոր (կոլոլ). թեղել բայը հին գրական լեզվում չի ավանդված, բայց կա արմատական թեղ գոյականը։

13) Քանակի և թվի բնիկ հնդեվրոպական՝ միայն բարբառներին հատուկ նշանակումները սակավաթիվ են. կարելի է նշել, այն էլ որոշ կասկածով, միայն առի «շատ, հույժ» և բղող «մեծ կտոր» բառերը։

14) Ժամանակի հետ կապված բնիկ հնդեվրոպական բարբառային անվանումները նույնպես սակավաթիվ են։ Ինչպես հայտնի է, ժամանակի ընդհանուր հնդեվրոպական անվանում հայերենը չի պահպանել (ժամանակ բառն իրանական ծագում ունի). որոշ բարբառներում առեան բառի հիման վրա կարգացել է «ժամանակ» իմաստը (առեն «ժամանակ»), բայց այս բառի բնիկ հնդեվրոպական ծագումն էլ կասկած է հարուցում. հնարավոր է իրանական ծագում, թեև նշվող իրանական աղբյուրը հեռու է կանգնած։ Բարբառային թոր բառը թարմ-ի արմատական մաքուր ձևն է՝ միջին աստիճանի ձայնդարձով։

15) Զգայական ընկալումների բնիկ հնդեվրոպական բարբառային նշանակումների մեջ համեմատաբար նկատելի են շոշափելիքի հետ կապված նշանակումները՝ ճեռթափռթիկ, ճափշտուճ, լիժ, կլճդրիկ, թէճ «խոնավ»։ Այլ կարգի բառերից նշենք բարբառային ճիսճիլ (ծագում է հ.-ե. *spek´- տարածված արմատից) և լակ բառերը։ Կոկրոտ «կեղտոտ» բառը գրականության մեջ ավանդված կորկ «կեղտ» բառի տարբերակն է, որտեղ հ.-ե. *r-ն չի դրափոխվել (*$g^{u̯}og^{u̯}ro$->կորկ և կոկր-ոտ)։

16) Զգացմունքի և նրա դրսևորումների, խառնվածքի, բարոյականության հետ կապված և գեղագիտական ըմբռնումների բնիկ հնդեվրոպական անվանումների մեջ համեմատաբար մեծ թիվ են կազմում զգացմունքների և նրանց դրսևորումների բնաձայնական և արտահայտչական-նկարագրական նշանակումները՝ փոթկալ, մռմռո, քճալ (քճքճալ, քճկըրճկալ), սպռիլ, (սըպըրղճիլ, սփրքճիլ, գրական սպառղիմ, սպուրղիմ), լմկել, մալամշել, մոլոգվել։ Այլ կարգի բառերից նշենք շիլ «սխալ» բառը, որ ցույց է տալիս հ.-ե. *skel- «ծռել» և *skhel- «սայթաքել» արմատների կապը. վերջին արմատից են բխեցնում հայ. սխալ բառը։

17) Մտածողության և մտքի բնիկ հնդեվրոպական՝ միայն բարբառներում պահպանված նշանակումները սակավաթիվ են. սալար և գողտ-ուկ համանիշներից առաջինը գրականության մեջ ավանդված սալարիմ բայի արմատն է, գողտ-ուկ-ը՝ գաղտնի բառի ձայնդարձային և ածանցական տարբերակը։ Կարող էր նշանակալից լինել մանել «հասկանալ» բայը, եթե այն մանել բայի փոխաբերական գործածությունը չէ, այլ ծագում է հ.-ե. *men «մտածել» արմատից։

18) Ձայնական արտահայտության և խոսքի, ընթերցանության և գրի հետ կապված հավանական բնիկ հնդեվրոպական նշանակումների մեջ հատկապես մեծ թիվ են կազմում ձայնական արտահայտությունների և խոսքի տարբեր եղանակների վերաբերյալ բառերը, գերազանցապես բնաձայնական և նկարագրական-արտահայտչական բնույթի՝ ճվալ, շվացնել, մկմկալ (հմմտ. մաճի), գագաչել, կռավել, կ(ա)լանչել, բլբլալ, լփլփլացնել (լփռտալ)։ Աղաղեմ բառը աղաղակեմ-ի ավելի հին՝ առանց -ակ ածանցի ձևն է, անում-ը՝ անուն-ի հնագույն տարբերակը, եթե այն ուշ տարնմանության արդյունք չէ։

19) Տարածքային, հասարակական ու քաղաքական բաժանումների և հասարակական հարաբերությունների նշանակումները, բնականաբար, ընդհանուր հայկական բնույթ են կրում և տեղական բարբառային բնիկ հնդեվրոպական դրսևորումներ գրեթե չունեն։ Գրական արգել բառի «բանտ» իմաստը չկա բֆ-արգ բարբառային բառի մեջ, որտեղ պահպանված է «մաքուր» արմատը։ Ինչ վերաբերում է լիպոզ «լպիրշ, լիրբ», լկոթվել, լկատվել բառերին, սրա դրանք գրական լիրբ, լպիրշ, լկնիմ բառերի համանիշներն են և չունեն անառակության, որպես հասարակական որոշակի երևույթի, նշանակման արժեք, այլ հադես են գալիս որպես գնահատումներ։

20—22) Ռազմական գործի, օրենքի և կրոնի ու նախապաշարմունքի բընիկ հնդեվրոպական տեղայնացված բարբառային անվանումներ գրեթե չկան ակլակ «դարան» բառը ակլակ մանել, ակլակ դնել արտահայտությունների մեջ չունի մասնագիտացված՝ ռազմական գործի հետ կապված արժեք։

23) Բնիկ հնդեվրոպական դերանվանական և սպասարկու բառերն ու մասնիկները գերազանցապես ընդհանուր հայկական բնույթի են՝ ներկայացված գրեթե բոլոր բարբառներում համապատասխան հնչյունական փոփոխություններով ու առանձնահատկություններով։ Միակ բացառությունը, որքանով թույլ են տալիս դատելու մեր ունեցած տվյալները, կազմում է ան «կամ» բառը, եթե այն իրոք հնդեվրոպական ծագում ունի։

## 3. ՀԱՅԵՐԻ ԱՆՎԱՆՈՒՄՆԵՐԸ ԵՎ ՍՐԱՆՑ ՀԵՏ ԿԱՊՎԱԾ ԲՆԱԿՈՒԹՅԱՆ ՍԿԶԲՆԱԿԱՆ ՎԱՅՐԵՐԻ ՀԱՐՑԸ

Գոյություն ունի հայերի չորս անվանում՝ հայ, արմեն, սոմեխի և ֆլա։ Առաջինը հայերի ինքնանվանումն է, երկրորդը տրվում է հայերին օտար ժողովուրդների գերակշռող մեծամասնության, երրորդը՝ վրացիների և չորրորդը՝ քրդերի կողմից։ Եթե մի կողմ թողնենք վերջին անվանումը, որ ակնհայտորեն պատկանում է նոր ժամանակներին և պատմական էական կռվաններ չի տալիս, այլև «Ասքանազեան ազգն» (Կորյուն), «տունն Թորգոմայ» (Փավստոս, Ագաթանգեղոս) արտահայտությունները, որոնք հենվում են աստվածաշնչի վրա, ապա մեզ հարկ կլինի քննել առաջին երեք անվանումները։ Դա հնարավորություն կտա պարզելու հայերի նախապատմության, նրանց բնակության սկզբնական վայրերի ու տեղաշարժերի, էթնիկական կազմի ու էթնիկական փոխհարաբերությունների որոշ հարցեր։

Հայ մատենագրության և հայագիտության մեջ քիչ չեն եղել հայ անվանման մեկնաբանության և ստուգաբանության փորձեր։ Ինչպես ամեն մի ժողովուրդ, այնպես էլ հայերը, պահպանել են հայ անվանման ծագման վերաբերյալ ավանդույթներ։ Դրանցից հնագույնը, որ տեղ է գտել Մովսես Խորենացու «Հայոց պատմության» մեջ և այլ աղբյուրներում, հայ անունը կապում է Հայկի անվան հետ, այսինքն՝ վերջինս հանդես է գալիս որպես հայերի էպոնիմ. «Իսկ աշխարհս մեր,— գրում է Խորենացին (գիրք 1-ին, ԺԱ),— կոչի յանուն նախնւոյ մերոյ Հայկայ՝ Հայք»։

Հայագիտության ձևավորման ողջ ընթացքում հայերի ինքնանվանման հարցը չի դադարել հետաքրքրության առարկա լինելուց։ Առաջ են քաշվել այլևայլ ենթադրություններ ու վարկածներ, առաջարկվել հայ անվանման մեկնաբանության պատմական և լեզվաբանական տարբեր ապացույցներ։ Սակայն այսուհանդերձ չի կարելի ասել, որ գիտության զարգացման արդի փուլում մենք ունենք հարցի՝ բոլորի կողմից ընդունված լուծում։

Էթնիկական անունները իրենց բնույթով նման են հատուկ անուններին՝ փաստորեն հանդես գալով որպես այս կամ այն ժողովրդի, ցեղի, տոհմի հատուկ անուն։ Այս առումով նրանց ստուգաբանության ճշգրտությունը հեշտ չէ ապահովել։ Սովորական հասարակ անվան դեպքում մենք գործ ունենք որոշակի իմաստի հետ, և ստուգաբանության դեպքում հնչյունական համապատասխանությունն ստուգվում է իմաստային համապատասխանությամբ. եթե բացահայտվում են տվյալ լեզվին հատուկ հնչյունական օրենքներ, և ցոհացուցիչ կերպով մեկնաբանվում են իմաստային անցումները, ապա ստուգաբանությունն ընդհանուր առմամբ ընդունելի է։ Հատուկ անունների դեպքում մենք հաճախ գործ ունենք մթագնած իմաստների հետ, և ճիշտ ստուգաբանության համար հարկավոր է բազմաթիվ իմաստների միջև ընտրություն կատարել։ Այս պատճառով էլ հատուկ անունների ստուգաբանությունը, մանավանդ հետազոտողի անզգուշության դեպքում, հնարավորություն է տալիս ամեն տիպի կամայական մեկնաբանությունների։ Եվ իրոք. ժողովուրդների անվանումները կարող են կապված լինել ամենատարբեր իմաստների հետ և նշանակել մարդկային ֆիզիկական ու բարոյական հատկություններ, արտադրական գործունեության տարբեր բնագավառներ, աշխարհագրական օբյեկտներ, դիցաբանական և կրոնական հասկացություններ, կենդանիներ (որպես տոտեմներ) և այլն, և այլն։ Հարցը բարդանում է նաև այն պատճառով, որ էթնիկական անունը կարող է կապված լինել որևէ հատուկ՝ անձի կամ վայրի անվան հետ, և այս դեպքում հանդես են գալիս միջնորդված իմաստներ։ Ահա թե ինչո՛ւ հատուկ անունների դեպքում պետք է փնտրել այնպիսի փաստեր, որոնք նեղացնում են հնարավոր իմաստների շրջանակը, գտնել պատմական համապատասխան ապացույցներ, ամենամեծ զգուշություն ցուցաբերել լեզվաբանական ապացույցների, հատկապես հնչյունական անցումների օրինաչափականությունը որոշելիս։ Կոնկրետացնելով մեր խոսքը հայ անվանման ստուգաբանության շուրջը՝ մենք պիտի փորձենք պարզել նախ՝ հայերի ինքնանվանման և Հայկ անձնանվան հնարավոր ստուգաբանական իմաստները, երկրորդ՝ նրանց հետ զուգադրվող հատուկ անունների և էթնիկական անվանումների բնույթն ու փոխհարաբերությունը, երրորդ՝ թե՛ առաջինների, թե՛ երկրորդների հնդեվրոպական և ոչ հնդեվրոպական մեկնության սահմաններն ու հնարավորությունները։

Հայ և Հայկ բառերի ստուգաբանական սկզբնական իմաստները պարզելու համար մենք ունենք հետևյալ տվյալները. 1) Հայկը համարվել է լավ որսորդ, այսինքն՝ մարմնավորել է հայերի տնտեսական գործունեության էական կողմերից մեկը. անձնապես նա բնութագրվել է որպես «գեղապատշաճ և անձնեայ, քաջագանգուր, խայտակն և հաստաբազուկ». 2) աստվածաշնչի թարգմանության մեջ Օրիոնի 'Ωρίων համաստեղության անունը փոխարինված է Հայկի անունով. ժողովրդական երգերից մեկում այդ համաստեղությունը նույնպես կոչվում է Խէք. 3) Հայկ բառը գործածված է նաև որպես հասարակ անուն «հսկա» իմաստով՝ հայկից «հսկաների», հայկաբար, հայկաչափ, հայկասիրտ. այս առումը առկա է նաև «Բառգիրք հայոց»-ում, որտեղ հայք-ը բացատրված է «հսկայք». այս գործածությունը կարող է լինել ինչպես երկրորդական՝ հատուկ անունից առնված, այնպես էլ նախնական բնույթի. 4) նույն «Բառգիրք հայոց»-ում հայ բառը մեկնաբանված է «փոքր». 5) Ղարաբաղի բարբառում հայ նշանակում է «դժվարություն, նեղություն. ջանք» (հմմտ. նաև հայ անել «շտապել»). 6) վերջապես, ինչպես այլ ժո-

ղովուրդների մոտ, hայ բառը գործածվում է նաև «մարդ» և «հարազատ» (ի հակադրություն օտարի) իմաստներով։ Պատահական պետք է համարել hայ անվանման՝ hայ միջարկության, hայhոյել բայի և hայ «ապականություն, աղբ» բառի հետ ունեցած նմանությունը։

Տարբեր ժամանակներում հայերի ինքնանվանումը զուգադրվել է պատմական աղբյուրներում հիշատակված տարբեր անվանումների՝ ժողովրդանունների, երկրանունների, դիցանունների, անձնանունների հետ, փորձ է արվել դրանց մեջ որոնելու հայերի անվանումը և դրանցով պարզելու հայերի սկզբնական պատմության որոշ կողմեր։ Եթե մի կողմ թողնենք hայ և Հայկ անունները հեթիթների և հիքսոսների, այլև ուրարտական Խալդի աստծու անունների հետ կապելու փորձերը, որոնք հենվում են հնչյունական անցումների կամայական մեկնաբանության վրա և զուրկ են գիտական որևէ արժեքից, ապա կարելի է խոսել hայ անվանումը երեք այլ անվանումների հետ զուգադրելու փորձերը՝ Ḫate/i, Ḫajaša և Παίονες, ընդ որում փորձ է արվել նաև կապ տեսնելու վերջին երկուսի միջև։

Դեռևս XIX դ. վերջերին Պ. Ենսենը իր «Խեթերը և հայերը» աշխատության մեջ [Jensen, 1898], հենվելով խեթերի անվանման հին հիշատակումների վրա (ḫt, ḫate, ḫatti, ḫati), հայտնում է այն կարծիքը, որ այդ անվանումը t>j անցմամբ օրինաչափորեն տվել է hայ, և որ, հետևաբար խեթերը հայերի նախնիներն են։ Հայ անվանման այս մեկնաբանությունից գիտնականները չեն հրաժարվում նաև խեթական արձանագրությունների հայտնագործումից և վերծանումից հետո։ Հայ անվանումը միևնույն աղբյուրից են բխեցնում հետագայում Հ. Տաշյանը [1920] և Ի. Մ. Դյակոնովը [Дьяконов, 1961, 364—365. 1968, 236—237]. վերջինս ուշադրություն է հրավիրում մասնավորապես այն հանգամանքի վրա, որ ḫate-ն հնում արևելյան Փոքր Ասիայի և Սիրիայի ժողովուրդների ընդհանուր անվանում է եղել և ուրարտացիների կողմից կիրառվել է հատկապես Փոքր Հայքի բնակչության նկատմամբ։

Խեթական արձանագրություններում Հայասա (Ḫajaša) երկրի վերաբերյալ տեղեկությունների հայտնաբերումից հետո է. Ֆոռերը [Forrer, 1939] և Պ. Կրեչմերը [Kretschmer, 1932] մատնանշում են hայ, Հայք և Հայասա անվանումների ակնհայտ կապը, ընդ որում Կրեչմերը Ḫajaša-ի մեջ տեսնում է Ḫaja-/Ḫajo- հիմքը և -ša տեղանվանական վերջածանցը։ Այս տեսակետը հետագայում լայն տարածում է ստանում՝ ենթարկվելով մասնակի ճշգրտումների։ Թեև Հայասայի լեզվի բուն հայկական հնդեվրոպական բնույթը չի ապացուցված (Գ. Ղափանցյանն այն համարել է հիմնականում խուռական, մենք՝ հինանատոլիական), բայց hայ և Հայասա անվանումների կապի դրույթը շարունակում է ընդհանուր ճանաչում ունենալ. Գ. Ղափանցյանն այդ կապը սահմանում է հայերենի խառնածին բնույթի վարկածի հիման վրա, իսկ մենք հայերենի մեջ ենթադրում ենք հայասական (իմա՝ հինանատոլիական) ուժեղ ենթաշերտ (սուբստրատ)։ Հետազոտողների կողմից մատնանշվում է նաև, որ Ḫajaša-ի -aša-ն պետք է համարել լուվական և հիերոգլիֆա-լուվական տիպի սեռական վերջավորություն՝ համապատասխան ստացական և տեղանիշ արժեքով[1]։

---

[1] Վ. Վ. Իվանովը [Иванов, 1983, 30—32] փորձում է Փոքր Ասիայի հնդեվրոպական (մ.թ.ա. III և II հազ. սահմանագծում) և Էբլայի սեպագիր տեքստերի (մ.թ.ա. III հազ. կեսերին) ḫa-a-ն կապել տեղանվան հետ և ընթերցել որպես Ha-ia- (?)։

Գիտության մեջ հայտնվել է կարծիք նաև հայ անվան՝ հյուսիսային Մակեդոնիայում ապրած և այդտեղից հարավային Մակեդոնիա ու Թրակիա շարժված Παίονες ժողովրդի անվան հետ ունեցած կապի մասին [հմմտ. Աճառյան, 1933, 44]։ Կրեչմերը, Կազարովը, Յոկլը, Կրահեն պայոններին (պեոններ) համարում են իլիրական ժողովուրդ, ընդ որում Կրահեն նրանց անունը համեմատում է իլիրական Paio, Paius անձնանունների հետ։ Ընդունելով այս կարծիքը՝ Ա. Մայերը [Mayer, 1957—1959] նրանց անունը բխեցնում է հ.-ե. *pei̯(ə)-/poi̯(ə)- «պարարտ լինել, առատ բխել» արմատի մի ածանցյալից, որ ունեցել է «մարգագետին» իմաստը (հմմտ. հուն. ποία «խոտ. արոտ, մարգագետին»), այսինքն՝ Παίονες «մարգագետնայիններ»։ Մի շարք հետազոտողներ ավելի հավանական են համարում պայոնների թրակյան ծագումը։ Դ. Դեչևը [Detschew, 1957, 353] բերում է Πα(ι)-ով սկսվող թրակյան համարժատ անձնանուններ (Παης, Παιβης) և գտնում, որ պայոնները եղել են թրակա-իլիրական ժողովուրդ։ Վ. Գեորգիևը [Георгиев, 1960, 39], նշելով, որ Ստրաբոնը պայոններին համարել է փռյուգական ցեղ, իսկ Հերոդոտոսի տեղեկության համաձայն նրանք իրենց համարել են տրոյական տևկրերի շառավիղներ, փորձում է Παίονες անվանումը բխեցնել հ.-ե. *pŏu- «փոքր» արմատից կազմված *pau̯-i̯ŏn բաղդատական ածականից (հմմտ. գոթ. fawai «քչերը», հուն. παῦ-ρος «փոքր»). միաժամանակ նշելով, որ Ḫai̯aša-ի տարածքը մոտավորապես համընկել է հետագա Փոքր Հայքի տարածքի հետ, Գեորգիևը փորձում է վերջինիս փոքր բաղադրիչի հիման վրա հայ և Ḫai̯aša անվանումները բխեցնել համապատասխան *pau̯-i̯os «ավելի փոքր» ձևից, այսինքն՝ վերջին հաշվով ներքին կապ տեսնել հայ, Ḫai̯aša և Παίονες անվանումների միջև։

Ի՞նչ կարելի է ասել հայ անվանման ḫate/i, Ḫai̯aša և Παίονες անվանումների հետ ունեցած կապի մասին։

1) Ինչպես հայտնի է, Ḫate/i անվանումը բուն խեթական չէ, այլ խեթերին է անցել նրանց պետության հին բնակիչներից, որոնք ակնհայտորեն ոչ-հնդեվրոպական բնույթ են ունեցել և, ինչպես ցույց են տալիս լեզվական տվյալները, հայերի հետ որևէ էական առնչություն չեն ունեցել։ Այն հանգամանքը, որ ուրարտացիները Ḫate/i անվանման տակ հասկացել են հատկապես Փոքր Հայքի շրջանը [Дьяконов, 1961, 365], չի կարող ապացույց լինել Ḫate/i-ի՝ հայերի ինքնանվանում լինելու վարկածի համար։

2) Ḫai̯aša երկրի անվան ծագումը, ինչպես կտեսնենք, հայտնի չէ։ Ճիշտ է, այդ անվանումը արտաքնապես նման է ḫate/i անվանմանը, բայց խիստ փոքր հավանականություն կարող է ունենալ այն ենթադրությունը, թե հայասացիները կարող էին խեթերի նման ժառանգել խաթերի անվանումը և այն դարձնել ինքնանվանում. այս դեպքում հայասացիների համար լռելյայն ենթադրվում է բուն հայկական ծագում (հայերենի համար բնորոշ t>y անցումով), որ առայժմ չի հաստատված հայասական լեզվի մնացորդներով. սրանք միայն հատուկ անուններ են և զուգահեռներ ունեն գերազանցապես փոքրասիական-հինանատոլիական, մասամբ էլ նաև խուռական և թրակյան հատուկ անուններում [Ջահուկյան, 1976]։ Իհարկե, կարելի է առաջ քաշել այն վարկածը, որ հայասայի բնակիչների մեջ բուն հայեր են եղել, բայց գործածել են այլալեզու անձնանուններ, դիցանուններ և տեղանուններ, բայց Ḫai̯-

aša-ի Ḫaj-ի՝ Ḫate/i-ից ծագելու հարցը դրանով չի լուծվի. ընդհակառակն, Ḫai-ի մեջ այս դեպքում շատ ավելի հավանական կլինի փնտրել բնիկ հնդեվրոպական արմատ։

3) Հայ և Παίονες անվանումների կապը կարծեք թե աջակցություն է գտնում «Բառգիրք հայոց»-ում բերված հայ «փոքր» բառի մեջ, որ Վ. Գեորգիևին անծանոթ է։ Սակայն այս վարկածի մեջ կան մի շարք թույլ կետեր. ա) «փոքր» իմաստի դեպքում Գեորգիևը ելնում է Փոքր Հայք անվանումից, որ, սակայն, հանդես է եկել Ḫajaša-ի ժամանակներից շատ ուշ և չի կարող հիմք ծառայել մեկնաբանության համար. բ) հայ բառի համար վերականգնված *pəu̯-i̯os նախաձևը կասկածելի է հնչյունական (*ūi̯ >հայ. յ?) և քերականական առումով. հայերենը չի պահպանել *-i̯es/-i̯os-ով բաղդատականի ձև, և հայտնի չէ, թե ընդհանրապես ունեցե՞լ է արդյոք այն. բաղդատականի համադրական ձևեր չունեն նաև այնպիսի հին լեզուներ, ինչպիսիք հին անատոլիական և թոխարական լեզուներն են [Rosenkranz, 1978, 138]. գ) հ.-ե. *pōu-/pəu-«փոքր» արմատից հայերենում պահպանվել են ուլ (*pō(u)-lo-) և, թերևս, փոքր (*phokur?) բառերը, որոնք հեռու են հայ բառից իմաստով և ձևով. դ) պայոնների ցեղակցական պատկանելությունը քիչ հավանական է դարձնում հայ և Παίονες անվանումների միևնույն ծագումը. պայոնների մոտ պահպանված անունները [հմմտ. Detschew, 1957, 359] կամ իլիրական են (Ἀγριᾶνες, Σκίρτιοι, Ἀστραῖον, Stobi և այլն), կամ թրակյան (Βύμαζος, Γαλεψός, Tranupara և այլն)՝ հեռու լինելով հայկական բնույթ ունենալուց. ճիշտ է, հայ ժողովրդի կազմավորման մեջ կարող էր դեր խաղալ թրակյան տարրը, բայց այդ դերի վերագրումը հենց պայոններին զուրկ է պատմական որոշակի հիմքից. ե) վերջապես, կարևոր է նշել հայ,-ng և Παίονες ժողովրդանունների հիմքերի տարբերությունը. առաջինը ենթադրում է բնավոր թեմատիկ հիմք՝ *-o- ձայնավորով, երկրորդը՝ բաղաձայնական հիմք *-n-ով։

Հաշվի առնելով վերևում կատարված քննության արդյունքները և հայերի անվան ստուգաբանության այլևայլ փորձերը՝ կարելի է հանգել հետևյալ ընդհանուր եզրակացություններին.

1) Խիստ փոքր հավանականություն ունի հայերի ինքնանվան բխեցումը խեթական պետության բնիկների անունից եկող Ḫate/i և իլիրական կամ թրակյան ծագում ունեցող Παίονες անվանումներից։ Պատմականորեն և լեզվաբանորեն քիչ հավանական են նաև հայ ինքնանվանումը Ḫajaša անվանման միջնորդությամբ դրանցից մեկնումեկի հետ կապելու փորձերը։

2) Եթե հայերի ինքնանվանումը իրոք կապված է Ḫajaša-ի անվան հետ, ապա հնարավոր է երկու վարկած. ա) եթե այդ երկրի բնակիչները հայեր չեն եղել, այլ հինանատոլիական և, թերևս, մասամբ թրակյան ցեղեր, որոնք ձուլվել են բուն հայերի (արմենների) մեջ որպես ենթաշերտ ու տվել նրանց իրենց անվանումը, ապա Ḫajaša-ի անվան մեջ պիտի փնտրել այդ ենթաշերտին և ոչ թե հայերենին հատուկ հնդեվրոպական ծագման անուն. խեթա-լուվական լեզուներում և թրակերենում բուն Ḫaj-ին համապատասխան հասարակ և հատուկ անուններ չեն հայտնաբերվել. կան միայն առանց սկզբնային h-ի բառեր. մեր «Հայասայի լեզուն և նրա առնչությունը հնդեվրոպական լեզուների հետ» աշխատության մեջ [Джаукян, 1964, 67—68] նշվել են հիեր. լուվ. ajās «պատիվ (?)» բառը, այլև հ.-ե. *aios- (Hajos-?)

«մետաղ, հատկապես պղինձ. ուժեղ, ամուր» կամ *ai- (*Hai-) «հարձակվել, որոնել, գրավել» (>հայաս. ḫai >ուրարտ. ḫaī- «գրավել, տանել») արմատները. Թրակյան տեղանուններում առկա է Λία-δάβα ամրոցի անունը (-δαβα/-δαυα բնորոշ բաղադրիչով<հ.-ե. *dhē-u̯-/dhə-u̯- «նստել. հիմնել»), որի Λία բաղադրիչի ծագումն անհայտ է. այս բոլոր համեմատությունները մնում են միայն քիչ հավանական ենթադրությունների սահմաններում. անհավանական է Ḫai̯-ը հիեր. լուվ. ai̯a-, լուվ. a(i)a-, խեթ. ii̯a- «անել» արմատի հետ կապելու փորձը. բ) եթե Ḫai̯aša-ի բնակիչները հիմնականում հայեր են եղել, բայց կամ ապրել են փոքրասիական և թրակյան ցեղերի հետ միասին, կամ բնիկ հատուկ անունների հետ միասին գործածել են փոքրասիական և թրակյան հատուկ անուններ, ապա Ḫai̯-aša անունը բնականոն կերպով շարունակվում է հայ անվանման մեջ և ամենայն հավանականությամբ բնիկ հնդեվրոպական ծագում ունի։

3) Թե այն դեպքում, երբ Հայասայի հիմնական բնակիչները եղել են հայերը, և հայերի ինքնանվանումը գալիս է Ḫai̯aša անվան արմատից (միայն թե այս դեպքում հարկավոր է բացատրել հայ, -ոց բառի ո-ով հիմքի բացակայությունը Ḫai̯aša անվան մեջ), թե այն դեպքում, երբ հայերի անունն ընդհանրապես կապ չունի Հայասայի անվան հետ, հնարավոր է հայ անվանման բնիկ հնդեվրոպական մեկնաբանությունն ըստ հայերենին բնորոշ օրինաչափությունների։ Ինչպես հայտնի է, հայերենի ա) բառասկզբնային հ-ն կարող է գալ հ.-ե. *p-ից (հմմտ. *pā-tro- >հայ. հաւրան «հոտ»), *s-ից (հմմտ. *sab-mo->համ) և *H կոկորդայինից (հմմտ. Hau̯o-s >հաւ «պապ») կամ հավելվածային լինել (այսինքն՝ հնդեվրոպական զուգահեռներ չունենալ և միայն հայերենին հատուկ լինել՝ որպես ուշ զարգացման արդյունք). բ) ա-ն կարող է գալ հ.-ե. *ă-ից (հմմտ. *sal->աղ) կամ որոշ պայմաններում, *o-ից (հմմտ. *oid->այտնում). գ) հայ. յ-ն ոչ սկզբնային դիրքում կարող է գալ ինչպես հ.-ե. *-te-ից կամ *-ti-ից (հմմտ. *pətēr >հայր), այնպես էլ *-i̯-ից (հմմտ. *u̯edosi̯o >գետոյ՝ սեռ. հոլովաձև)։ Բնական է, որ հետազոտողները որոնումները կատարել են նկատի ունենալով մի կողմից՝ հնչյունական այս պայմանները, մյուս կողմից՝ հայ բառի -ո-ով հիմքը (հայ, -ոց):

Հայագիտության մեջ երկար ժամանակ իշխել է Շպիգելի և Կիպերտի հայտնած այն կարծիքը, որ հայ բառը ծագում է հ.-ե. *poti- «տեր, սանտեր» հիմքից (հմմտ. հ. հնդկ. páti-, ավեստ. paiti-, իրան.>հայ. պետ, լատ. potis «կարող, զորեղ, հզոր» և այլն. իմաստի համար հմմտ. արիական (հնդիրանական) ժողովուրդների անվանումը (հին իրան. հգն. սեռ. aryānām >մ. պրսկ. ērān >Իրան, հ. հնդկ. ariyá- «տեր» և ăriya- «արիացի»). հայ բառի համար պիտի վերականգնվեր *potii̯o- նախաձևը (*pəti- ձայնդարձային ձևը եղակի կլիներ). եթե ճիշտ է մեր սահմանած այն կանոնը, որ *o-ն ա-ի է փոխվում այն դեպքում, երբ հաջորդ վանկերում *-o- չկա, և եթե ճիշտ է Հ. Աճառյանը, որ հոյակապ և հոյանուն բառերի հոյ-ը բխեցնում է *poti-ից, ապա այս ստուգաբանությունը հնչյունապես դառնում է կասկածելի։

Ավելի հավանական է թվում մի այլ ստուգաբանություն. Նկատի առնելով, որ Հերոդոտոսը (V գիրք, գլ. 49) հայերին բնորոշում է որպես «շատ ոչխարներ ունեցողներ», անհավանական չի լինի նրանց անունը բխեցնել հ.-ե. *pōi-/pəi- «արածացնել, պահել» արմատից ածանցված *pəi̯o- կամ

*pəḷ-ḷo- «հովիվ» տիպի նախաձևից (հմմտ. այս արմատից հ. հնդկ. päyú- «պահապան», pālá- «պահակ, պահապան, հովիվ», հուն. πῶυ «հոտ», ποιμήν «հովիվ» և այլն)։

Եթե hայ անվանումն իրոք կապ ունի Հայասայի անվան հետ, ապա պիտի ենթադրել, որ խեթական աղբյուրներում ḫaḷo- ձևը արտահայտելիս տեղի է ունեցել կամ -o-ի անկում -aša-ից առաջ, կամ -o-ի համաքանակյան փոխարինում -a-ով. ինչպես, հնարավոր է ենթադրել նաև Հայասայի բնակչության մի մասի համար o>a արտասանություն։

Վերջում հարկ ենք համարում մատնանշել Ḫaḷaša և հայ անունների նմանությունը Կողքիսի հին Αἶα անվանը և թեսալական Αἶα քաղաքանվանը, որոնք համահունչ են հուն. αἶα «երկիր» և αἶα «մայր, մեծ մայր, տատ» բառերին (հնարավոր է Αἴας անձնանվան կապը սրանց հետ). Բրուգմանը միացնում է վերջին երկու բառերը «մայր երկիր» ընդհանուր իմաստով և համեմատում (հատկապես վերջինը) լատ. avia «տատ» բառի հետ. լատ. avia-ն avus «պապ» բառի հետ միասին ծագում է հնդեվրոպական այն արմատից, որտեղից բխեցվում են հայ. հաւ, խեթ. ḫuḫḫas, լիկ. χuga «պապ» բառերը. սրանց համար վերականգնվում է *au̯o-s կամ, կոկորդայինների հաշվառմամբ, *Ḫauḫo-s նախաձևը. քանի որ խեթ. և լիկ. ձևերի հետ կապված է հայաս. Ḫugganāš անձնանունը, ապա կամ վերջինս հայասացիների մոտ եղել է փոքրասիական փոխառյալ անձնանուն, կամ Ḫaḷaša-ն կապ չունի այս արմատի հետ. եթե ընդհանրապես այս կապը հնարավոր է, ապա պետք է ենթադրել Hauḷo->Hai- (հայ) անցում, որի մեջ *-u-ի անկումն առայժմ չի հաստատված այլ օրինակներով։

Օտարների կողմից հայերին տրվող արմեն անվանումը այնպիսի ձևով, որ կասկած չի առաջացնում նրա բնույթի մասին, առաջին անգամ հիշատակված է Պարսկաստանի թագավոր Դարեհ I-ի Բեհիստունյան արձանագրության մեջ՝ մ. թ. ա. 522—521 թթ. Armina—Հայաստան և arminiya—հայ ձևով։ Հունական մատենագրության մեջ սկսած Հերոդոտոսից (մ.թ.ա. V դ.) Ἀρμένιοι—հայեր և Ἀρμενία—Հայաստան անվանումները հանդես են գալիս պարբերաբար, ընդ որում հույն պատմիչները խոսում են երբեմն ավելի վաղ իրադարձությունների մասին։ Այսպես, Հերոդոտոսը հայերին հիշատակում է փռյուգացիների՝ Եվրոպայից Փոքր Ասիա տեղափոխվելու մասին տեղեկություն տալուց հետո և հայերին համարում «փռյուգական վերաբնակներ» (գիրք VII, գլուխ 73)։ Քսենոֆոնը (մ. թ. ա. 430—355) «Կյուրոպեդիայում» հիշատակում է հայերին Կյուրոսի, այսինքն՝ մ. թ. ա. VI դ. կեսերին տեղի ունեցող իրադարձությունների կապակցությամբ։ Ստրաբոնը (մ. թ.ա. I դ.) հայերին հիշատակում է արգոնավորդների առասպելի կապակցությամբ, որ արտացոլում է վաղ հունական գաղութացման դեպքերը (մ. թ. ա. VIII—VI դ. դ.)։

Գիտնականների որոնումները հանգեցրել են արմենների անվանման ավելի վաղ հիշատակումների հայտնագործմանը։ Յ. Մարկվարտը [Markwart, 1919. 1928] մասնավորապես մատնանշել է արմենների անվանման հնարավոր կապը Հոմերոսի «Իլիականում» հիշատակված Ἄριμοι և ուրարտական թագավոր Մենուայի (մ.թ.ա. 810—778 թթ.) արձանագրություններից մեկում տրված Urme անվանումների հետ։ Հետագայում Urme անվանման հետ զուգադրվում են նաև ուրարտական Սարդուրի թագավորի (մ. թ. ա. 764—

735) արձանագրություններից մեկում հիշատակված Arme երկրանունը, այլև Ասորեստանի թագավոր Թիգլաթպալասար I-ի (մ. թ. ա. 1116—1090) Urume ժողովրդանունը [մուշկերի և աբեշլայցիների անունների հետ միասին. հմմտ. Երեմյան, 1958. 1971, 237—242]։ Urme և Arme անվանումների կապը արմենների անվանման հետ ընդունվում է գրեթե բոլոր հետազոտողների կողմից, բայց ''Αρμου-ի և Urume-ի կապը վիճարկվում է [հմմտ. **Дьяконов,** 1968, 224—227]։

Կան արմենների անվանման հետ այլ կարգի զուգադրումներ ևս, ընդ որում դրանցից մի քանիսը ցույց են տալիս խոր հնություն։ Այսպես, խեթական թագավոր Թուդխալիա IV-ի (մոտ. 1250—1220) տարեգրության մեջ հիշատակված Armana երկրանունը ոմանք հնարավոր են համարում նույնացնել ուրարտական աղբյուրների Arme-ի հետ [**Кифшин,** 1965, 65. **Хачатрян,** 1971, 103]։ Դեռ ավելին. որոշ հետազոտողներ սրանց միացնում են աքքադական թագավոր Նարամ-Սինի (Նարամ-Սուեն) (2236—2200 մ. թ. ա.) արձանագրություններում հիշատակված Armana և Armanu երկրանունները, ընդ որում Armani-ի թագավոր է համարվում ոմն Madakina (հմմտ. նաև Armi երկրանունը՝ Էբլայից)։ Սրանց հարում են թեսալական և փոքրասիական այն տեղանունների մատնանշումները, որոնք հին հեղինակների և նոր հետազոտողների կարծիքով կապ ունեն արմենների անվանման հետ՝ 'Ορμένιον («Իլիական») և 'Αρμένιον (Ստրաբոն) Թեսալիայում, 'Ορμένιον լեռ Բիթյունիայում, 'Αρμήνη նավահանգիստ Սինոպի մոտ, 'Αρμένιον լեռ Հալիս գետի ակունքներում։ Ավելորդ չէ նշել, որ ինչպես նշված հունական, այնպես էլ սեպագիր աղբյուրների Arme և Urme (*Orme) անվանումներում նկատվում է o/a հերթագայությունը, որ, թերևս, կապ ունի հ.-ե. *o-ի՝ հայերենում տեղ գտած երկակի արտացոլման հետ։ Հայտնի չէ, կապ ունի՞ արդյոք **արմեն** անվանումը հնդեվրոպական այնպիսի ջրանունների հետ, ինչպիսիք են Armeno (Տրիենտի շրջանում), Armenta, *Armantia և այլն [**Krahe,** 1963, 32—33], այլև լիտվ. Armenà և այլն [**Трубачев,** 1968, 209]:

Մի կողմ թողնելով այս բոլոր զուգադրումների հավանականության հարցը (arm-/orm- հնչյունազուգորդումների տարածվածության պայմաններում)՝ կանգ առնենք Armen անվան ծագման հարցի վրա։

Արմենների անվան մեկնաբանության փորձեր առկա են դեռևս հայ հին մատենագրության մեջ։ Խորենացին, **հայ** անվանումը կապելով Հայկի անվան հետ, համապատասխանաբար **արմեն** անվանումը բխեցնում է Հայկի հաջորդներից մեկի՝ Արամի անունից և հայերի համար գործածում **արք արամեանք, արամեան ազն** արտահայտությունները։ Արամի անվան մեջ հետազոտողները տեսնում են ուրարտական Aramu թագավորի անվան հիշողությունը։ Սեբեոսը, ի տարբերություն Խորենացու, **արմեն** անվանումը կապում է ոչ թե **Արամ,** այլ **Ար(ա)մանեակ (Արմենեակ, Արմենակ)** անվան հետ. այս անվան տարբերակն էլ, թերևս, պահպանվել է ուրարտական մի այլ թագավորի՝ Erimena-ի (մ.թ.ա. 625—605) անվան մեջ, ընդ որում հնարավոր է սրա հասարակ անուն լինելը, այսինքն՝ ուրարտական վերջին թագավոր Ռուսայի հայկական ծագումը [Ղափանցյան, 1940, 225]։

Եթե հայկական աղբյուրները **արմեն** անվանումը կապում են Արամի կամ Ար(ա)մեն(յ)ակի (Ար(ա)մանյակի) անվան հետ, ապա հունական ավանդությունն այն բխեցնում է արգոնավորդների արշավանքի մասնակից, Թեսա-

լիայի Արմենիոն քաղաքից ծագող Արմենոսի ("Αρμενος) անունից [Հմմտ. Ստրաբոն, գիրք XI, գլ. 4, 8 և 14, 12]։

Հայագիտության շրջանում սկսած XIX դարից կատարվել են արմեն անվանման ստուգաբանության բազմաթիվ փորձեր։ Եթե զանց առնենք արմեն անվանման կամայական մեկնաբանությունների վրա հիմնվող և գիտական արժեքից զուրկ փորձերը, ապա մնացածները կարելի է բաժանել երկու խմբի՝ հնդեվրոպական և ոչ հնդեվրոպական մեկնաբանությունները։

1) Հենվելով այն բանի վրա, որ աստվածաշնչի եբրայական բնագրի Մինի երկրի անունը ասորական տեքստում փոխարինված է Արմինա-ով, մի շարք հեղինակներ (Դարմստետեր, Բոխարտ, դը Կարա, Բասմաջյան) փորձում են արմեն անվանման երկրորդ մասում տեսնել Մինի երկրի անունը, բայց տարաձայնում են Ար- մասի բացատրության մեջ. Դարմստետերը այն բխեցնում է Արարատից՝ նշելով, որ միացումը կատարվել է արհեստականորեն՝ պարսկական պետական պաշտոնական լեզվում. Բոխարտը և Բասմաջյանը բխեցնում են եբրայերեն har «լեռ» բառից, դը Կարան՝ քամյան kar «տեղ, բնակատեղի» արմատից։ Եղել է նաև ար-ը Արա աստծու անվան հետ կապելու փորձ, սակայն այս դեպքում էլ քիչ թե շատ համոզիչ կերպով չի բացատրվում -մեն բաղադրիչը։

2) Մի շարք հեղինակներ արմեն անվան երկրորդ մասում տեսնում են ուրարտական -ini մասնիկը (Մարկվարտ) կամ -ni վերջավորությունը (Պիոտրովսկի), ընդ որում Մարկվարտը վերականգնում է ar(i)m- կամ ar(u)m- հիմքը, որ տեսնում է նաև Արամ ու Արմավիր անունների մեջ, Պիոտրովսկին արմե-ն նույնացնում է Սարդուրիի արձանագրության մեջ հիշատակված Arme երկրի անվան հետ։ Որոշ հայ հեղինակներ էլ փորձում են արմե-ի մեջ վերականգնել Արամ(է) անունը։

Արմեն անվանման ոչ հնդեվրոպական ստուգաբանություններից առաջինը զուրկ է գիտական արժեքից, երկրորդն անբացատրելի է թողնում այդ անվանման այն հիշատակումները, որոնք չեն կարող բխել ուրարտերենից։

Արմեն անվանման հնդեվրոպական ստուգաբանության փորձերի մեջ հիշատակության արժանի են երկուսը.

1) արմեն անվանումը բարդ բառ է, որ բաղկացած է ար- և մեն բաղադրիչներից. Ս. Սիմոնյանը [1939, 35—36] առաջինը կապում է արի «քաջ» բառի հետ, երկրորդը՝ մեկնում որպես men «մարդ», որ, ըստ նրա, հանդես է գալիս մանուկ բառի մեջ։ Իրականում, սակայն, արի բառը այր բառի ածանցյալն է, որ սովորաբար բխեցնում են հ.-ե. *aner- «կենսաուժ. այր, տղամարդ» արմատից (Մեյե), թեև կա նաև *ar(i)i̯o- «պետ, տիրող, հրամայող» հիմքից բխեցնելու փորձ (Մանն)։ Ինչ վերաբերում է ենթադրվող -man «մարդ» բաղադրիչին, ապա նրա հնդեվրոպական բուն ձևն է *manu-s «այր, տղամարդ», որ կապ չունի մանուկ բառի հետ. վերջինս գալիս է *men- «փոքրր» արմատից։ Եթե արմեն-ի ե-ն նախնական է, ապա այդ անվանման մեն-ը չի կարելի բխեցնել *manu-s-ից. այս նույն հիմունքով անհավանական է արմեն-ի համեմատությունը գալլ. Ariomanus անձնանվան հետ, որի առաջին մասը *ario հիմքից է գալիս։

2) Երկրորդ ստուգաբանությունը պատկանում է մեզ [Джаукян и др., 1983, 64]։ Մեր կողմից առաջ է քաշվել այն կարծիքը, որ արմեն անվանումը ստուգաբանորեն կապված է արմ(ն) «արմատ», գ-արմ «ցեղ, սերունդ»

արմատ «արմատ. ցեղ, պարս. հիմք» (հմմտ. Armatana տեղանո՞ւնը) բառերի հետ և գալիս է հ.-ե. *er- արմատի *ormenos անծանցյալից. Հայ. բառերին կազմությամբ, ձևով և իմաստով հատկապես մոտ են հուն. ὄρμενος, «ցողուն, ընձյուղ», գերմ. ermana-, Irmino- «մեծ» և հ. սլավ. raměno «ուժեղ, հզոր» ձևերը։ Հայ. արմ-ը թերևս պահպանված է ուրարտ. armuzi «ընտանիք (?)» բառի մեջ։ Այն հանգամանքը, որ հունարենում այն պահպանված է 'Αρμεν- և 'Ορμεν- տարբերակներով, խոսում է այն մասին, որ՝ 1) *en>ին փոփոխությունը հայերենում կամ տեղի է ունեցել ավելի ուշ, կամ այս բառում ընդհանրապես տեղի չի ունեցել (բուն հայ. փոփոխված տարբերակը առկա է արմն ձևում). 2) հ.-ե. *o-ի o և a արտացոլումների մեջ նկատվում է տատանում, որ կարելի է բացատրել *ormenos-ի վերջին վանկի o-ի առնմանական թույլ ազդեցությամբ։

Վրացիների կողմից հայերին տրվող somexi անվանման՝ ուշադրության արժանի երկու մեկնաբանություն է եղել.

1) Ն. Մառը [Марр, 1938, 51] և Գ. Ղափանցյանը առաջ են քաշել և պաշտպանել այն կարծիքը, որ հայերի somexi անվանումը կազմված է so-/sa- հավաքական նախամասնիկից և բուն mexi բաղադրիչից, որ ծագում է mesxi-ից՝ մուշկերի անվանման քարթվելական ձևից։ Սակայն մ. թ. ա. XII դարից ի վեր հիշատակվող մուշկերի էթնիկական պատկանելության և բնակության վայրերի հարցերը պարզ չեն. ասուր. mušku, ուրարտ. muški-(ni), հիեր. լուվ. muš(i)kaī, հին հրեական. mšk, հուն. μόσχοι անվանումների հետ կապվող ժողովուրդներն ու ցեղերը նույնացվում են ինչպես հնդեվրոպական հայերի, փռյուգացիների, միսիացիների, այնպես էլ վրացական մեսխի ցեղի և նույնիսկ ողջ վրացական ժողովրդի հետ (հմմտ. ավարների կողմից վրացիներին տրվող մոսոկ անվանումը)։ Այս պայմաններում Մառի և Ղափանցյանի ստուգաբանությունը դառնում է քիչ հավանական, մանավանդ, եթե նկատի առնենք նախ՝ somexi-ի so-ի առանձնացման կասկածելիությունը (տեղացույց նախածանց-վերջածանցն ունի sa-+-o տեսքը, ինչպես Sa-kartvel-o «Վրաստան» բառում) և երկրորդ՝ mesx-i-ի մեջ s-ի անկման ենթադրության չհիմնավորվածությունը։

2) Գ. Խալաթյանցը [Халатьянц, 126] ժամանակին առաջ է քաշել այն տեսակետը, որ վրաց. somexi անվանումը ծագում է խեթական և աքքադական արձանագրություններում հիշատակված Zuḫma/Suḫma կամ Suḫmu երկրի անունից։ Այս տեսակետը հետագայում լայն ընդունելություն է գտնում և արտացոլվում Բ. Պիոտրովսկու, Գ. Մելիքիշվիլու, Ի. Դյակոնովի աշխատություններում, բայց կասկածի տակ է առնվում Ս. Երեմյանի կողմից [ՀԺՊ, 1, էջ 240]։ Չխոսելով այն մասին, որ այս երկրի կապը հայերի հետ պատմական հատուկ հիմնավորում չունի, նշենք խեթ. z/s-ի և ասուր. s-ի դիմաց վրաց. s-ի առկայության անհավանականությունը։

Մեզ ավելի հավանական է թվում somexi-ի համեմատությունը խեթական արձանագրություններում հիշատակված Šamuḫa քաղաքի անվան հետ. այդ քաղաքը հիշատակվել է Բարձր երկրի, Bittijariga-ի ու Azzi-ի հետ առնչված և հարևան է եղել Հայասա երկրին։

Վաղնջական շրջանում հայոց լեզվի ունեցած շփումների և փոխազդեցությունների հարցը սերտորեն կապված է վաղնջահայերի բնակության վայրերի և տեղաշարժերի հարցի հետ։ Սակայն հենց այս հարցում է, որ չկա ան-

հրաժեշտ հստակություն և որոշություն։ Հասկանալի է, որ այն լուծելու համար մենք պիտի կարողանանք որոշակի պատասխան տալ երկու այլ հարցի. նախ՝ որտե՞ղ է եղել հնդեվրոպացիների՝ միասնության շրջանում զբաղեցրած բնակավայրը («նախահայրենիքը») և երկրորդ՝ ի՞նչ ժողովուրդների հետ են շփվել վաղնջահայերը և լեզվական ի՞նչ առնչություններ են կրել։

Ինչպես տեսանք հնդեվրոպական լեզվին և հնդեվրոպացիներին նվիրված բաժնում, հնդեվրոպացիների բնակության սկզբնական վայրի («նախահայրենիքի») վերաբերյալ կարծիքները տարամիտվում են։ Այն տարածված կարծիքի կողքին, որ հնդեվրոպացիները միասնության շրջանի վերջին բնակվել են Եվրոպայում՝ Բալթիկ ու Սև ծովերի միջև ընկած վայրերում և հարակից շրջաններում, վերստին առաջ է քաշվել և պաշտպանվում է մի կողմ թողնված այն կարծիքը, թե հնդեվրոպացիների «նախահայրենիքը» պիտի փնտրել Առաջավոր Ասիայում՝ մասնավորապես Հայկական բարձրավանդակում և հարակից շրջաններում։ Երկրորդ կարծիքը, բնականաբար, հայերի նշանակալից տեղաշարժ չի ենթադրում։ Ընդհանուր առմամբ կարելի է ասել, որ երկու կարծիքների միջև ընտրություն կատարելու համար հարկավոր է լուծել այն հարցը, թե հայերը եղե՞լ են արդյոք Եվրոպայում։

Առաջին կարծիքն ընդունելու դեպքում հարկավոր է որոշել այն ուղին, որով հայերը Եվրոպայից շարժվել են դեպի իրենց բնակության պատմական վայրերը, դեպի Հայկական բարձրավանդակը։ Կա այդպիսի երկու հնարավոր ուղի՝ կամ դեպի արևելք՝ հյուսիսսևծովյան շրջանները և ապա Կովկասյան լեռնաշղթայի անցուղիներով դեպի հարավ, կամ դեպի հարավ՝ Բալկանյան թերակղզին և ապա արևելք՝ Փոքր Ասիայով դեպի Հայկական բարձրավանդակը։ Հայագետների մեծամասնությունը բացառում է առաջին ուղին՝ այն հատկացնելով բազմամարդ հնդիրանական ցեղերի շարժմանը։ Այսուհանդերձ փորձեր են արվել հայ-հնդկական վաղ շփումները հատկացնելու հենց հյուսիսսևծովյան շրջանին, և, ինչպես կտեսնենք, կարծիք է հայտնվել հյուսիսսևծովյան շրջանում բնակված և մ. թ. ա. VIII դ. դեպի հարավ շարժված կիմերների՝ հայերի հետ նույնը լինելու մասին։ Շատ ավելի հավանական է համարվում երկրորդ ուղին։ Սրա համար բերվում են ինչպես պատմական, այնպես էլ լեզվական ապացույցներ։

Պատմական ապացույցներ ասելով պետք է հասկանալ հին ավանդությունններն ու մատենագրական վկայությունները։ Ինչպես արդեն նշվել է **արմեն** անվան քննության կապակցությամբ, հին հունական մատենագրության մեջ տարածված է եղել այն կարծիքը, որ հայերը (օտար անվանմամբ՝ արմենները) եկել են Փռյուգիայից։ Մ. թ. ա. V դ. հույն պատմիչ Հերոդոտոսը, խոսելով այն մասին, որ փռյուգացիները Եվրոպայից են անցել Փոքր Ասիա, շարունակության մեջ ասում է, որ «արմենները զինված էին փռյուգացիների նման և փռյուգական վերաբնակներ են» [գիրք VII, գլուխ 73]։ Մի այլ տեղում [գիրք V, գլուխ 49 և 52] նշում է, որ հայերն ապրել են կիլիկիացիների և մատիենների հարևանությամբ, և որ հայերի ու կիլիկիացիների սահմանը Եփրատ գետն է։ Մ. թ. ա. IV դ. հեղինակ Եվդոքսոսը նշում է, որ «արմենները ծագումով Փռյուգիայից են և լեզվով հույժ փռյուգաբանում են»։ Դիոնիսիոս Հալիկառնասացին (մ. թ. ա. I դ.) նույնպես խոսում է հայերի և փռյուգացիների համալեզվության և փռյուգացիների նման զինված լինելու մասին։ Մ. թ. ա. I դարի հեղինակ Ստրաբոնը հայ-արմենների անունը կապում է առասպելական արգոնավորդներից մեկի՝ Թեսալացի Արմենոսի

*անվան հետ՝ նշելով, որ նա ծագում է Բոյբեիս լճի մոտ, Փերեի և Լարիսայի միջև գտնվող Արմենիոն քաղաքից, և որ նրա ուղեկիցները բնակություն են հաստատել Ակիլիսեննեում և Սիսպիրիտիսում՝ մինչև Կալաքեն և Ադիաբեն [գիրք IX, գլուխ IV, 8 և գլ. XIV, 12]։ Հետաքրքրական է նշել, որ հայկական «Աշխարհացոյց»-ում ևս, հավանաբար հունական աղբյուրների հիման վրա, Թեսալիայի հիշատակության մեջ գրված է. «... յորմէ Հայք»։*

*Լեզվական ապացույցները մի քանի տիպի են։*

*Նախ՝ ինչպես տեսանք, նշվում են մի շարք տեղանուններ, որոնք դրսևորվում են Թեսալիայում ու Փոքր Ասիայում և կապված են հայերի անվան հետ՝ Արմենիոն* ('Αρμένιον) *(ըստ Ստրաբոնի) և Օրմենիոն* ('Ορμένιον) *քաղաքներ (ըստ «Իլիականի», II, 2, 734) Թեսալիայում, Օրմենիոն* ('Ορμένιον) *լեռ Բիթյունիայում, Հարմենե* ('Αρμήνη) *նավահանգիստ Սինոպի մոտ, Արմենիոն* ('Αρμένιον, 'Ορμίνιον) *լեռ Հալիս գետի ակունքներում*[2]*։ Այն հանգամանքը, որ* Armen/Ormen- *բաղադրիչների դիմաց ուրարտական աղբյուրներն ունեն, հակառակ արդեն բերված մեկնությունների,* Arme *և* Urme *ձևերը, հեշտությամբ կարելի է բացատրել ուրարտերենի առանձնահատկություններով. այստեղ ն-ն հաջորդ ձայնավորով հանդերձ կարող էր ընկալվել որպես* -ni *վերջավորություն և բաց թողնվել. այլ կերպ ասած ոչ թե* Armen *անվանումն է վերլուծելի* Arm(e)+(i)ni, *ինչպես կարծում են Յ. Մարկվարտը և հետագա որոշ հետազոտողներ, այլ* -n-*ն այստեղ բուն բառամաս է, որ որպես վերջավորություն է ընկալվել միայն ուրարտական աղբյուրներում։ Ինչպես ցույց են տալիս* արմ *և* արմն *կրկնավոր ձևերը, հնարավոր է ենթադրել նաև հենց սկզբից* -ն-*ով և առանց* -ն-*ի տարբերակների առկայություն։*

*Երկրորդ՝ Փոքր Ասիայի տարբեր մասերում, այդ թվում նաև Արևմտյան մասում նշվում են հայկական ծագման տեղանուններ և հատկապես ջրանուններ, որոնց ստուգաբանությունը մյուս տեղանունների համեմատությամբ ավելի հավաստի է. այսպես, ըստ բուլղարացի նշանավոր լեզվաբան Վ. Գեորգիևի* [Georgiev, 1981, 218—219]՝ *արևմտափոքրասիական մի շարք ջրանուններ կարելի է բխեցնել հայկական կամ փռյուգական վաղ ձևերից, ընդ որում ջրանունների բուն իմաստները որոշելիս Գեորգիևը հենվում է մասամբ մատենագրական վանայան վկայությունների և հունական լրացուցիչ անվանումների, մասամբ թուրքական անվանումների վրա, որոնք կարող են լինել հին անունների վերարտադրությունը (թարգմանությունը).*

*Հոմերոսի հիշատակած* Σατνιόεις, *ուշ* Σαφνιόεις *գետանուն (հետագա թրք.* Tuzli-çay *«Աղաղետ»)* <ΣαϜτνιοϜεν(τ)ς <*հայկ. կամ փռյուգ.* *saltnio-u̯ents <*հ.-ե.* *saldnio-u̯ents—*հայ. աղտ «աղ».*

Lysis *(գետ Փռյուգիա-Կաբալիայում և Պիսիդիայում, հետագա թրք.* Boz-çay *«Գորշ գետ»), այլև* Λυσινία, Λυσινόη *(գետին մոտ գտնվող քաղաքների հունականացված անուններ)—հայ. լոյս, -ոյ.*

Σαγγάριος *(Փոքր Ասիայի երկրորդ մեծ գետը՝ հիշատակված Հոմերոսի «Իլիականից» սկսած, թրք.* Sakarya. *թափվում է Սև ծովը)* <*հ.-ե.* *su̯gu̯(o)-

---

[2] *Ինչպես նշվել է, հ.-ե.* *o-*ի* o, a *արտացոլումը բնորոշ է հայերենին. նշենք նաև* en>in *անցումը, որ արտացոլված է* Ορμίνιον *ձևի մեջ։ Հետազոտողները փորձում են այս առանձնահատկությունները բացատրել հունական բարբառներով՝ էոլ.* or՝ ar-*ի և աքայ.* -in՝ en-*ի դիմաց* [Hauschild, 1964, 83]։

ụrjo—հայ. անկանիմ, գոթ. sigquan և հայ. գայլ, հ. հնդկ. vari «ջուր», ալ. vairi «լիճ».

Σίβρος (լիկիական գետ՝ հուն. Ξάνθος «դեղին, ոսկյա» և թրք. Ecen-çay «դեղին գետ». գետի հին մականունը եղել է ἀργύρεος «արծաթյա»)— հայ. սուրբ «մաքուր», վեդ. śubhra- «փայլուն»։

Բացի սրանցից, Վ. Գեորգիևը բերում և փորձում է հնդեվրոպական ձևերով ստուգաբանել երկու այլ ջրանուն ևս (առանց հայկական զուգահեռներ բերելու), որոնց համար կարելի է նշել հայկական համապատասխան ձևեր՝

պիսիդ. Κάραλις լիճ (Strabo, 12, 568, թրք. Kaya-göl «ժայռալից» kaya «ժայռ, լեռ, վիմաքար»)՝ *(s)kərā, *(s)karā կամ *kar(r)ā «ժայռ, քար» նախաձևից +-al(l)i- ածանց—հայ. քար,

տրոյական Κάρησ(σ)ος (թրք. Taş-oluk-dere «քար» +«ջրորդան» + «առու»՝ Kocabaš (Granicus) գետի վտակը)՝ *(s)korā, *(s)korā կամ kar(r)ā «ժայռ, քար»—հայ. քար։

Եթե գնահատենք բերված զուգահեռները, կարելի է ասել, որ ջրանուններից Σατνιόεις-ը և Σαγγάριος -ը չեն կարող բխեցվել հայկական աղբյուրից հնչյունական նկատառումներով. 1) հ.-ե. *s>հայ. հ փոփոխությունը զուգահեռ ունի հունարենում ու իրանականում և պիտի տեղի ունեցած լինի շատ վաղ (հմմտ. նաև Halys գետի անունը, որ թերևս աղի բառի հին ձևն է), մինչդեռ այս ձևերում հ.-ե. *s-ի դիմաց առկա է s (σ) 2). *saldnio-ụents նախաձևը հայերենում չէր կարող տալ Գեորգիևի վերականգնած ձևը. հ.-ե. *d-ն այստեղ *n-ից առաջ պիտի ընկներ։ Մնացած դեպքերում բերված համեմատությունները հնարավոր են, բայց ոչ լիովին հավաստի։

Երրորդ՝ հայերենը բնութագրվում է նշանակալից մերձավորությամբ Բալկանյան թերակղզու և արևմտափոքրասիական հնդեվրոպական այնպիսի լեզուների հետ, ինչպիսիք են հունարենը, փռյուգերենը, և ավելի քիչ՝ թրակերենը։ Մասնավորապես շատ են հայ-հունական բառային բացառյալ զուգաբանությունները, որոնք, ինչպես կտեսնենք, մասամբ կարող են գալ ոչ թե հնդեվրոպական շրջանից, այլ Բալկանյան թերակղզում հայերի և հույների համակեցության ժամանակից, այսինքն՝ ընդհանուր նորագոյացումներ լինել։ Այս զուգաբանությունները կբերվեն հետագա քննության մեջ։ Որոշ հեղինակներ նշում են նաև հայ-բալկանյան ընդհանուր երևույթներ՝ բառային և կառուցվածքային ընդհանուր գծեր, որոնք խոսում են հայերի՝ Բալկանյան թերակղզում գտնվելու օգտին։ Այս փաստերը ևս կբերվեն վաղնջահայերենի շփումների և փոխազդեցությունների՝ ստորև կատարվելիք քննության մեջ։

Չորրորդ՝ կան մի շարք հայերեն բառեր, որոնք փոխառվել են Բալկանյան թերակղզու և հարակից շրջանների լեզուներից, այդ թվում՝ Արևմտյան Փոքր Ասիայի լեզուներից։ Այս բառերի հարցը նույնպես կքննվի ստորև՝ վաղնջահայերենի և հնագույն հայերենի օտար տարրերի ընդհանուր հարցի հետ կապված։ Նշենք միայն, որ այս կարգի մի շարք բառերի բուն պատկանելությունը և ծագումը միշտ չէ, որ պարզ են։ Այսպես, օրինակ, Յ. Մարկվարտը [Markwart, 1928, 211—232] նշում է մանր, սեռ. մանու և ուրիշ բառերը, որոնք գրեթե նույն նշանակությամբ առկա են Թեսալիային սահմանակից Աթամանիայում և Իլիրիայում։ Սակայն առաջինի համար ավելի հավանական է բնիկ հնդեվրոպական ծագումը, մանավանդ որ առկա է մանուկ, -կան ածանցյալը, երկրորդը, հավանաբար, ծագել է փոքրասիական

մակեդոնացիների լեզվից՝ σιβύνη ձևից, որի դիմաց իլիրերենն ունի σιγύνη ձևը [Haas, 1966, 253—254. Ջահուկյան, 1970, 118]։

Ի՞նչ առարկություններ կարելի է բերել հայերի՝ արևմուտքից արևելք տեղաշարժվելու վարկածի դեմ.

1) Հայկական ավանդույթը և, մասնավորապես, Հայկի առասպելը ցույց է տալիս հայկական ցեղերի շարժում ոչ թե արևմուտքից արևելք, այլ հարավից հյուսիս։ Ճիշտ է, այս ավանդույթը կարող է հենվել մասնակի փաստերի ընդհանրացման վրա, բայց այսուհանդերձ այն կարոտ է լրացուցիչ մեկնաբանության։

2) Հայագետների մեծամասնությունը հայերի բուն պատմությունը հնում սովորաբար սկսում էր ուրարտական պետության անկումից հետո, այսինքն՝ VI դարից։ Մի կողմից՝ Հայասայի, մյուս կողմից՝ Ուրմե (Արմե) երկրի հիշատակությունները փոխում են պատկերացումները, և փորձ է արվում այդ պատմությունը տեղափոխելու ավելի վաղ շրջան։ Բնական է համարվում այն ենթադրությունը, որ հայերի երևալը Փոքր Ասիայում պետք է կապված լինի, այսպես կոչված, ծովային ժողովուրդների շարժման հետ՝ մ. թ. ա. XIII դ. վերջերին և XII դ. սկզբներին, և որ հայերը պիտի եկած լինեն փռյուգացիների հետ միասին. սրանց հետ անտիկ հեղինակները հայերին կապում են ցեղակցական մերձավորությամբ. այդ ցեղակցությունը փորձում են ապացուցել նաև մի շարք նոր հեղինակներ։ Սակայն ծովային ժողովուրդների թվարկումների մեջ հայերի անունը չկա։ Ավելորդ չէ նշել, որ եգիպտական աղբյուրներում ծովային ժողովուրդների անվանումները հանդիպում են մ. թ. ա. XIII դարում և XII դ. սկզբներին, ընդ որում եգիպտական գրության եղանակը, որտեղ տրվում են միայն բաղաձայնները, դժվարացնում է դրանց նույնացման հարցը՝ šrdn (սարդե՞ր), kws (kwjš) (աքայայինե՞ր), prst (փղշտացինե՞ր), škrš (սիկուլնե՞ր), rk (լիկիացինե՞ր), trs (տիրսեննե՞ր), djnj (դանայացինե՞ր), wšš, čkr:

3) Ինչպես նշվել է, որոշ հեղինակներ փորձում են ցույց տալ արմեն անվան ավելի վաղ հիշատակումներ։ Այդպիսին է համարվում աքքադական թագավոր Նարամսինի (մ. թ. ա. XXIII դ.) արձանագրություններում հիշատակված Armani երկրանունը (հմմտ. նաև Armi երկրանունը Էբլայից. Древняя Эбла, 1985, 285), թեև բերվում են մի շարք առարկություններ. չխոսելով այն մասին, որ հիմնական արձանագրության ինքնությունը կասկածի տակ է դրվում, նշենք հետևյալը. ա) Armani-ի տեղադրության հարցում կարծիքների միասնություն չկա, և այդ երկրի նույնացումը Հայաստանի հետ կասկածելի է. բ) որպես Armani-ի թագավոր հիշատակված Madakina-ի անունը հայկական բնույթ չունի, իսկ բուն Նարամսինին պատկանող մի արձանագրության մեջ նա կոչված է Red-Adad, որ ակնհայտորեն սեմական բնույթ ունի. գ) հին աքքադերենի և հայերենի համեմատությունը ցույց է տալիս, որ այդ շրջանի համար հայերենում որևէ հավաստի փոխառություն չի կարելի նշել, և որ հետևաբար հայ-աքքադական հարաբերությունների մասին այդ շրջանի համար խոսել դժվար է. դ) Նարամսինի ժամանակներից մինչև մ. թ. ա. XII դ. արմեն անվան որևէ հավաստի հիշատակություն չկա, և ենթադրել, որ արմենները ապրել են այդքան ժամանակ Առաջավոր Ասիայում, բայց չեն հիշատակվել, քիչ հավանական է։

## Բ. ԵԿԱՄՈՒՏ ԲԱՂԱԴՐԻՉՆԵՐ. ՇՓՈՒՄՆԵՐ ԵՎ ՓՈԽԱԶԴԵՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### 1. ՀԱՅ-ՖԻՆՆԱՈՒԳՐԱԿԱՆ ԱՌՆՉՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՐՑԸ

*Ֆիննաուգրական լեզուները սամոդիական լեզուների հետ միասին կազմում են ուրալյան լեզվաընտանիքը, որի կրողների սկզբնական բնակավայրը համարվում է Արևմտյան Սիբիրի հյուսիսային մասը՝ Ուրալյան լեռների և Օբ գետի միջև։ Կարծում են, որ մոտավորապես մ. թ. ա. IV հազարամյակում ֆիննաուգրական ցեղերը բաժանվել են սամոդիականներից և շարժվել Ուրալից դեպի արևմուտք։ Մ. թ. ա. III հազարամյակում ֆիննաուգրերը դեռևս մեկ միասնություն են կազմել, որից այդ հազարամյակի վերջերին բաժանվել են ֆիննա-պերմյան և ուգրական հատվածները՝ առաջինները արևմուտքում, երկրորդները՝ արևելքում* [Гуя, ОФУЯ, 1974, 36. Лыткин, 1975, 84]։ *Տարածված է այն կարծիքը, որ ֆիննաուգրական ցեղերը մ. թ. ա. IV հազարամյակում, սամոդիական ցեղերից բաժանվելուց հետո հարևանության մեջ են եղել հնդեվրոպական ցեղերի հետ՝ գտնվելով վերջիններից ավելի հյուսիս* [Эрдейи, ОФУЯ, 1974, 44]։ *Հնդեվրոպացիների նախահայրենիքը Առաջավոր Ասիայում տեղավորելու դեպքում դժվարանում է հնդեվրոպա-ֆիննական վաղ շփումների հետևանքով կատարված փոխառությունների մեկնաբանությունը։*

*Եթե բացառենք լիովին պատահական զուգադիպությունները, ապա գիտության զարգացման արդի փուլում հնդեվրոպա-ֆիննաուգրական լեզվական ընդհանրությունների մեջ կարելի է պայմանականորեն տարբերել ընդհանրությունների երկու խումբ՝ ժառանգված և ձեռքբերովի։ Ժառանգված ընդհանրությունները նույնպես երկու կարգի են՝ 1) այսպես կոչված, տարրական ցեղակցության բառեր, որոնք պայմանավորված են լեզվաստեղծական ընդհանուր օրինաչափություններով և կարող են հանդես գալ տարբեր բնույթի լեզուների մեջ՝ անկախ նրանց ցեղակցական որոշակի պատկանելությունից՝ դերանվանական ընդհանուր արմատներ, մանկական բառեր, բնաձայնական-նկարագրական բառեր, ձայնարկություններ. 2) եթե ընդունենք նոստրատիկ ընդհանրության վարկածը՝ հնդեվրոպա-ուրալյան հեռավոր ցեղակցության գաղափարով, այդ ընդհանրությունից պետք է ժառանգված լինեն բառեր և բառաձևեր (քերականական և բառակազմական). Նշենք, որ նոստրատիկ ընդհանրության վերականգնված բառապաշարի մեջ առկա են, բնականաբար, դերանվանական ընդհանուր արմատներ, բնաձայնական-նկարագրական բառեր և այլն, որոնք կարող են լինել նաև տարրական ցեղակցության բառեր. այսպիսով, այս երկու շերտերի խիստ որոշակի սահմանազատումը հեշտ չէ։ Բնականաբար, բոլոր դեպքերում էլ որպես հնդեվրոպական լեզու այս ընդհանրություններին մասնակցում է նաև հայերենը, որն էլ հենց նկատի կունենանք ստորև կատարվող քննության մեջ։*

*«Տարրական» ցեղակցության բառերի քննությունը մեր նպատակների համար հատուկ արժեք չունի, ուստի և կբավարարվենք միայն մի քանի օրինակով՝ առնված հայ-ֆիննական զուգադիպումներից՝* ախ — *ֆ.* äh *«ախ»* խտիղ, խտղտել, բ. խ(ու)տուտ — *ֆ.* kutittaa *«խտղտել, խուտուտ ածել»*. կոկոն — *ֆ.* kukka *«ծաղիկ»*. *բ.* կուտիկ *«շան ձագ» — հունգ.* kutya, *մանս.* kutyuw *«շան ձագ»*, ճայ — *ֆ.* kajava *«որոր»*. փուք, փչել — *ֆ.* puhua *«փչել» և այլն։*

Նշանակալից թիվ են կազմում հայ-ֆիննաուգրական այն ընդհանրությունները, որոնք ժառանգվել են նոստրատիկ ընդհանրությունից։ Վ. Մ. Իլիչ-Սվիտիչի նոստրատիկ լեզուների բառարանում [Иллич-Свитыч, 1971—1976] բերված հնդեվրոպա-ֆիննաուգրական ընդհանուր բառերի ու մասնիկների մեջ հայերենի մասնակցությունը կազմում է մի քանի տասնյակ։ Բերենք որոշ օրինակներ՝ ամ (*āmōr-)—ֆ. amu «առավոտ». բարի — ֆ. paras «ավելի լավ», մոկշ. para «լավ. բարիք». բոյս—ֆ. puu «ծառ». բ. բունձ «հողակոշտ»—էստ. pung, pong «ուռուցիկ բան՝ սոխ, բողբոջ», ուդմ. pog «հողակոշտ»[3]. բրել—մանս. (հյուս.) pōr- «փորել, բրել», խանտ. (հյուս.) pori- «ծակել». դնել (դիր)— ֆ. teke- «անել». իմ—ֆ. mina (թեք.՝ minu-) «ես». լակել— էստ. lakka- «լիզել», կոմի lak- «լակել». բ. լափ, լուփ «ափ, բուռ»— ֆ. lapa «թիակ», lappea «տափակ», մոկշ. lapa «թաթ». լմել, լմլմել— կոմի l'am- «ճզմել». բ. լոք «լայն քայլ»—սելկուպ. (կեն.) lāka «քայլ». լուսան— սելկուպ. (կեն.) lokka «աղվես». ծունկ—էստ. küünar «արմունկ». կեր, կերակուր, կոկորդ—ֆ. kurkku «կոկորդ». կռունկ—ֆ. kurke- «կռունկ». ոսկի (հ.-ե. *osk-)—էրզ. ukso, մար. (մարգ.) osko «հացի». ոլ, ճոլովել—սելկուպ. (տազ.) kol'a «շրջան(ակ)», kol'a- «շրջապատել». մալել «մանրել. փշրել»—սաամ. (հյուս.) moala «փշուր», moallana «փշրվել». մարտ, մաշել (մարշել)—ֆ. muru «փշուր», murea «փխրուն», murta «կոտրել». մեղր—ուդմ. բ. möl' «քաղցր փայտահյութ». մեռանել—մար. (լեռ.) merce «թուլություն զգալ, ակար՝ հիվանդ լինել». մոր(ի)—ֆ. marja, էստ. mari «հատապտուղ». շուն—ուդմ. (Գլազով) kyjon (այլ բարբառներում՝ ki(j)on) «գայլ». սառն—ֆ. kirte-, էստ. kits «սառած գետին». սառ «լեռնագագաթ»—ֆ. էստ. kiire «գագաթ». սարի-ք «շղթա, կապանք»—կարել. keärle «կապոց». սին «դատարկ»—հ. հունգ. keny «թեթև». սոր «խորոչ» (հ.-ե. *k'eu-)—ֆ. kaivo «ջրհոր», kaiva «փորել». տալ «ամուսնու քույր»—ֆ. käly «ամուսնու քույր». տառուն, տուտն «ծայր պոչ» (հ.-ե. *dud-?)[4]—ֆ. tutka «ծայր». ցելում «ճեղքել»—ֆ. sali «ճղատել, շերտ-շերտ ճղել», հունգ. szil «կտրել, հատել». փերթ—ֆ. päre, վեպս. päreg «տաշեղ». քերել, քերթել—ֆ. kuore «կեղև», խանտ. (արևել.) kor «քերթել». քաղել, բ. քեղել, քեղքեղել «քերթել, կեղևը հանել»— ֆ. kalvo, kalva «թաղանթ, կեղև» և այլն։

Ձեռքբերովի ընդհանրությունները ենթաշերտային բառեր և փոխառություններ են, որոնք գերազանցապես միջնորդված բնույթի են, մասնավորապես՝ 1) հայերենում հնդեվրոպական նախալեզվից ժառանգված և ֆիննաուգրական լեզուներում հնդեվրոպական նախալեզվից ու նրանից ծագած լեզուներից (իրանական, գերմանական, սլավոնական և այլն) փոխառած բառեր. 2) ֆիննաուգրական լեզուներում նոստրատիկ ընդհանրությունից ժառանգած և հայերենում նոստրատիկ այլ լեզուներից (այդ թվում հնդեվրոպական լեզուներից) փոխառած բառեր. 3) հայերենում և ֆիննաուգրական լեզուներում միևնույն կամ մերձավոր աղբյուրներից (իրանական, թյուրքա-

---

[3] Հ.-ե. ձայնեղներին և խուլերին համապատասխանում են ուրալյան խուլերը. որոշ լեզուներում առկա ձայնեղները համարվում են երկրորդական։

[4] Հնդեվրոպական ձևերը (հայ-գերմանական զուգահեռներով) չունեն Պոկոռնին և Իլիչ-Սվիտիչը։

կան և այլն) փոխառած բառեր։ Սրանց հանգամանալից քննությունը դուրս է մեր նպատակներից։ Բերենք միայն որոշ տիպական օրինակներ։

Ֆիննաուգրական լեզուները հնդեվրոպականից և, ինչպես կարծում են, հնդիրանական (արիական) նախավիճակից զգալի թվով բառեր են փոխառել, որոնք հաճախ զուգահեռներ ունեն հայերենում, ընդ որում բավականաչափ մոտ են հայերենի համար վերականգնվող նախաձևերին։ Այսպես, դեռևս ֆիննաուգրական ընդհանրության շրջանում կատարված հնդեվրոպական այս փոխառություններից, որոնք զուգահեռներ ունեն հայերենում, կարելի է նշել գետ, -ոյ (հ.-ե. *u̯ed-)—ֆ. vete «ջուր» (ըստ ոմանց՝ նոստրատիկ ընդհանրությունից եկող բառեր). մեռանել (հ.-ե. *mer-)—ֆ. marras «մեռած. մահ». որր, -ոյ, որբանեակ (հ.-ե. *orbho-)— orpo «որբ», orpana «զարմիկ, զարմուհի» և այլն [հմմտ. Хакулинен, 2, 1955, 37—38. Collinder, 1977, 145]։ Հնդիրանական նախավիճակից փոխառած ֆիննաուգրական բառերի («մինչարիական շերտ») և հայերենի մեջ առկա զուգադիպություններից նշենք որս, -ոյ —ֆ. porsas «խոճկոր». աղ, -ի (հ.-ե. *sal-)—ֆ. suola և այլն [Лыткин, 1975, 86—87]։

Նոստրատիկ ընդհանրությունից ժառանգած ֆիննաուգրական և նոստրատիկ լեզուներից հայերենի փոխառած ընդհանուր բառերից հիշենք ծորել—ֆ. soro «կաթել», sorotta «կաթել», հունգ. csurog «թափվել, հոսել», սելկուպ. sor «հոսել». բ. ծուլ (ծուլ լինել «ցատկել»)— սամ. (հյուս.) čaello «ցատկել». կար(ել) (եթե քարթվ. աղբյուրից չէ)—ֆ. käärl «փաթաթել», կարել. koärie «կապոց» և այլն։

Բնականաբար, մեզ համար ամենից ավելի մեծ հետաքրքրություն են ներկայացնում հայ-ֆիննաուգրական այն զուգադիպությունները, որոնք կարող էին լինել ֆիննաուգրական ցեղերի և հայերի նախնիների հնարավոր շփման արդյունք, եթե հայերը մյուս հնդեվրոպացիների հետ միասին իրոք բնակվել են Եվրոպայում։ Այս դեպքում կարելի է ենթադրել կամ անմիջական շփում՝ նախքան հայերի շարժվելը Բալկանյան թերակղզին, կամ հնդեվրոպական միջակա օղակներ։ Իհարկե, բոլոր դեպքերում էլ հնարավոր է զուգադիպությունների պատահական բնույթը։ Համենայն դեպս առայժմ դժվար է լիովին բացառել ֆիննաուգրական աղբյուրից հայկական և հայկական աղբյուրից ֆիննաուգրական նախնական փոխառություններ լինելու հնարավորությունը։ Բերենք օրինակներ նախ երկրորդ, ապա, որ մեզ համար հատկապես կարևոր է, առաջին դեպքերի համար։

1. աման (հ.-ե. *sem-). հմմտ. նաև ամամ «լցնել»—ֆ. ammen «դույլ, կթաման».

այգ (հ.-ե. *ai- «այրել, լուսավորել»?)—ֆ. aika «ժամանակ» (եթե կապված չէ լիվերեն համահունչ բառի հետ և սկզբնապես չի նշանակել «չափ») [հմմտ. Хакулинен, 1955, 34, ծան. 4].

երկաթ— վոլգա-պերմ.՝ մար. kürtnö, կոմի kórt, ուդմ. kort «երկաթ». սրանց աղբյուր համարվող հնդիրան. ձևերը չունեն «երկաթ» իմաստը. հմմտ. ավ. karəta- «դանակ», օս. kard «դանակ, թուր» և այլն.

թարմ (հ.-ե. *ter-, *tr̥-mo-)—ֆ. tarmo «էներգիա, ուժ» (բբռ. նաև «ջլապնդություն, ճկունություն») (?).

թեքեմ «կռել, կռելով կոկել. սրել. կրթել» (հ.-ե. *tek-)—ֆ. takoa «կռել».

կուր «տաշտ. նավակ» (հ.-ե. *gu-ro-?) — ֆ. kuiru «մակույկի տեսակ» (բ. kuiri «գդալ»).

մատ, մատչիմ — պերմ. *matin «մոտ».

նոր (հ.-ե. *neu-) — ֆ. nuori «երիտասարդ».

սալարիմ «վախից թաքնվել», սողարկեմ «ծածկել, պահել», սալար «ծածուկ, թաքուն» (հ.-ե. *k'el-) — ֆ.-ու.՝ ֆ. salata «թաքցնել»։

2. կառ «փուշ» (և կառ «ծառի մեծ ճյուղ», եթե նույնություն չէ) — ֆ. kara «փուշ», karas «մատաղ եղևնի, փշատերև ծառի ճյուղ».

կեչի — ֆ.-ու.՝ ֆ. kaski «այրուտ, անտառում այրված տեղ» (բ. «կեչու շիվ»), կար. kaški «կեչի», էստ. kask, վոգ. kahči, ուդմ. kyž-, կոմի kyź և այլն։

կծծի — ֆ. kitsas «կծծի, ժլատ, ագահ» (ցեղակից լեզուներում՝ «նեղ, սուղ, սերտ»).

ոսկի — ֆ.-ու. *vaśkз «ինչ-որ մետաղ»՝ ֆ. vaski «պղինձ», հունգ. vas «երկաթ» և այլն.

սորել «հոսել, ծորալ»$^5$ — ֆ.-ու.՝ ֆ. soro «կաթիլ», sorotta «կաթել».

փորեմ — մանս. (հյուս.) pōr- (*pār-) «փորել, բրել», խանտ. porl- «ծակել»։

Եթե ենթադրենք փոխառություն բառասկզբի *s-ի պահպանվածության ժամանակ, ապա սրանց կարելի է միացնել աղի-ք — ֆ. suoli, մար. šolo «աղիք» զուգահեռը՝ *solijā > աղի-ք անցմամբ։ Հայ. գիւղ և ֆ. kyla «գյուղ» բառերի նմանությունը պատահական պետք է համարել, եթե հայ. բառը կամ հ.-ե. ծագում ունի, կամ փոխառություն է արևելակովկասյան աղբյուրից և ոչ թե արևելակովկասյան բառերը՝ հայերենից. նշենք, մանավանդ, որ ֆիննական բարբառներում և ցեղակից լեզուներում առկա է «տուն» իմաստը։

## 2. ՀԱՅԵՐԵՆԸ ԵՎ ՀՆԱԲԱԼԿԱՆՅԱՆ ԼԵԶՈՒՆԵՐԸ

### ա) ՀՆԱԲԱԼԿԱՆՅԱՆ ԼԵԶՈՒՆԵՐԸ

Եթե ճիշտ է այն կարծիքը, որ հնդեվրոպացիների նախահայրենիքը եղել է Եվրոպայում, և որ հայկական ցեղերը որոշ ժամանակ բնակվել են Բալկանյան թերակղզում, ապա հայերենի և Բալկանյան թերակղզու հին լեզուների փոխհարաբերությունների ուսումնասիրությունը հատուկ նշանակություն է ստանում։ Գիտության զարգացման արդի փուլում հաստատված է, որ այդ լեզուները հնդեվրոպական ընտանիքին են պատկանել և, հետևաբար, բալկանյան հին լեզուների ուսումնասիրությունը կազմում է հնդեվրոպաբանության մի մասը։

Բալկանյան թերակղզու հին լեզուները ընդհանրապես կարելի է բաժանել երկու խմբի. 1) լեզուներ, որոնք հին ժամանակներից հասել են մեր օրերը և այժմ էլ շարունակում են գործածել որպես կենդանի լեզուներ. դրանց թվին են պատկանում հունարենը և ալբաներենը, սովորաբար դրանց թվին է դասվում նաև հայերենը. 2) լեզուներ, որոնք դեռևս հին ժամանակներում դադարել

[5] Աճառյանը [ՀԱԲ, $4^2$, էջ 245] միացնում է սոր «ծակ, խոռոչ» բառի հետ, որ անհավանական է։

են կենդանի լինելուց և ներկայացված են գերազանցապես հատուկ անուններով, հին հեղինակների կողմից կատարված՝ բառերի առանձին գրառումներով (գլոսաներով) և երբեմն՝ արձանագրություններով. նրանց թվին են պատկանում թրակերենը և նրան մոտ մինչհունական այն շերտը, որ նույնացվում է պելասգերենի հետ, փռյուգերենը, միսիերենը, դակերենը, հին մակեդոներենը, իլիրերենը. վերջինս շատ հետազոտողներ համարում են ալբաներենի նախորդը։ Այս լեզուները կրողները մ.թ.ա. II հազարամյակի կեսերին Բալկանյան թերակղզում տեղաբաշխված են եղել հետևյալ կերպ. հյուսիսում և արևելքում բնակվել են թրակյան և դակյան ցեղերը, արևմուտքում և հյուսիսարևմուտքում՝ ալբանացիների նախորդները, իլիրացիները (այդ թվում ըստ ոմանց մեսապները), Մակեդոնիայում՝ հին մակեդոնացիները, փռյուգացիները և, ըստ հետազոտողների, վաղնջահայերը, հարավում՝ հույները, որոնք այստեղ շարժվելով մ. թ. ա. III հազարամյակի վերջերին, աստիճանաբար ձուլել են մինչհույներին (պելասգներին) [Нерознак, 1978, 10]։

Մ. թ. ա. XIII դ. սկսվում է, այսպես կոչված, ծովային ժողովուրդների շարժումը Փոքր Ասիա, որի մեջ ներգրավվում են հունական ցեղերը, փռյուգացիները, թրակացիները, միսիացիները և, ըստ շատ հետազոտողների, վաղնջահայերը։ Ավելի ուշ՝ մ. թ. ա. IX դ. վերջերին, Փոքր Ասիա են տեղափոխվել նաև մակեդոնական ցեղերը։ Այս ժողովուրդների հետ, այսպիսով հայերը կարող էին շփվել ոչ միայն Բալկաններում, եթե նրանք իրոք բնակվել են այնտեղ, այլև Փոքր Ասիայում և նույնիսկ հարակից շրջաններում. հայտնի է, որ թրակացիների տարածման շրջանը բավականին ընդարձակ է եղել, իսկ միսիացիների անունը թերևս պահպանվել է Մուշ անվան մեջ։ Այսպիսով հայերի և հնաբալկանյան լեզուների՝ Բալկանյան թերակղզում շփվելու հարցը կարելի է լուծել՝ հենվելով հատկապես հայ-ալբանական ու հայ-իլիրական և հայ-դակյան ընդհանրությունների վրա. առանձին ուշադրություն կհատկացվի հայ-հունական այն զուգաբանություններին, որոնք կարող են լինել հնդեվրոպական ընդհանրության շրջանից հետո հույների և հայերի համակեցության արդյունք։ Եթե հայերը երբևէ շփվել են պելասգների հետ, ապա այդ պետք է տեղի ունեցած լինի շատ վաղ շրջանում. մ. թ. ա. II հազարամյակի վերջերին պելասգների հիմնական մասը պիտի ձուլված լիներ հույներին և մ. թ. ա. I հազարամյակում պահպանված միայն առանձին կղզյակների ձևով, որոնք հայերի տարածման հնարավոր շրջաններից հեռու են ընկած։

## բ) ՀԱՅ-ԲԱԼԿԱՆՅԱՆ ԲԱՌԱՅԻՆ ԸՆԴՀԱՆՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՐՑԸ

Եթե հայերենը որոշ ժամանակաշրջան գտնվել է բալկանյան հին լեզուների հարևանության մեջ, ապա, բացի առանձին լեզուների հետ ունեցած ընդհանրություններից, նա պետք է ունենար նաև ընդհանրապես բալկանյան լեզուների կամ նրանց մի մասի հետ ընդհանուր բառեր (բառային «բալկանիզմներ»)։ Միայն թե դժվարություն է հարուցում հայ-բալկանյան ընդհանրությունների մեջ հնդեվրոպական միասնության շրջանին պատկանող տարածքային բառերը հետագա ընդհանրություններից տարբերակելու հարցը։

Հայերենի բալկանիզմների առանձնացման մեր հնարավորությունները, ցավոք, սահմանափակ են։ Եթե բացառենք հունարենը, որ հին գիր ու գրա-

կանութիւն ունի և հարատևում է մինչև այսօր, ապա մյուս դեպքերում մենք գործ ունենք կամ կենդանի, բայց միայն XVI դ. գրի առնված ալբաներենի, կամ, ինչպես նշվել է, միայն հատուկ անուններով, սակավաթիվ արձանագրություններով, գլոսաներով և սլավոնական ու ռոմանական լեզուներում որպես ենթաշերտ պահպանված սակավաթիվ բառերով ներկայացված մեռած լեզուների հետ։

Վ. Պորցիգի «Հնդեվրոպական լեզվոլորտի անդամատումը» [Porzig, 1954. Порциг, 1964] և Գ. Զոլտայի «Հայերենի տեղը հնդեվրոպական լեզուների շրջանում» [Solta, 1960] աշխատություններում հայ-բալկանյան բառային ընդհանրություններին հատուկ ուշադրություն չի դարձվել։ Վ. Պորցիգը, բացի հայ-հունական բառային զուգաբանություններից, բերում է նաև այս տարածքին վերաբերող ընդհանուր ալբանա-հունա-հայկական միայն մեկ զուգաբանություն՝ **անուրջ** (onorio-) — հուն. ὄνειρος (էոլ. ὄνοιρος, կրետ. ἄναιρος) -- ալբ. âdërrë (գեգ.), ëndërrë (տոսկ) «երազ, անուրջ»։

Ֆ. Բալտացեանուն հայերենի և դակամիսերենի հարաբերությանը նվիրված իր ուսումնասիրության մեջ [Băltăceanu, 1980] հատուկ ուշադրություն է դարձրել նաև հայ-բալկանյան այն զուգաբանություններին, որ ընդգրկում են հայերենը, դակերենը (այդ թվում՝ ռումիներենում առանձնացվող դակյան ենթաշերտը), հունարենը և ալբաներենը. «Հայերենի, դակա-միսերենի և հունարենի միջև հաստատված համապատասխանությունները (ինչպես նաև ալբաներենի մասնակցությունն այս զուգաբանություններին),—գրում է նա,—ներկայացնում են հայերենի՝ անտիկ հեղինակների կողմից հաստատվող «բալկանյան» ծագման համար կարևոր պատմական մի ապացույց։ Նրանք միաժամանակ հետաքրքրական են Բալկանյան թերակղզու հյուսիսի ժողովուրդների պատմության համար ընդհանրապես և դակերեն լեզվի պատմության համար մասնավորապես» [Băltăceanu, 1980, 144]։ Բալտացեանուն բերում է 12 ընդհանուր բառ, որոնց մասնակցում է հունարենը, և 2 ընդհանուր բառ, որոնց նա չի մասնակցում.

1) **արդն** — հուն. ἀθήρ, ἀνθέριξ «ծայր. ծայրակալ (զենքի). քիստ (հասկի)» — ռում. andrea.

2) **արգել** — հուր. ἀρκέω «արգելել, ետ պահել» — դակ. Arc.

3) **այծ** — հուն. αἴξ — դակամիս. Αἴζισίς (Azizis — անձնանուն) — (ռում. aiț ?).

4) **դամբան** — հուն. τάφος «թաղում. գերեզման, դամբան», τύμβος «գերեզմանաթումբ. գերեզման, դամբան» — ռում. dîmb «թումբ, բլուր, բարձունք».

5) **կաղին** — հուն. βάλανος — ռում. gorun «սպիտակ կաղնի, Quercus dunculata».

6) **մեղկ** — հուն. βλαδύς «թույլ, մեղկ» — ռում. melc.

7) **մոզի** — հուն. μόσχος «մոզի, հորթ» — ալբ. muskhë «ջորի» — ռում. muşcoi «ջորի».

8) **ուլ** — հուն. πῶλος «ձագ. մտրուկ» — ալբ. pelë «զամբիկ» — դակամիս. Pelen.

9) **որդի** — հուն. πόρτις «ցլիկ. պատանի» — դակամիս. -per, -por.

10) **ստերջ** — հուն. στεῖρα — ալբ. shtjerrë «երինջ. գառ» — ռում. ştiră.

11) **ձիւն** — հուն. χίων — ռում. ţiu.

*12) ձոյլ — հուն.* χύτλον *«լվացման ջուր» — ռում.* zoae.

*13) բարտի* (?) *— ալբ.* bredh *«եղևնի» — ռում.* brad *«եղևնի».*

*14) այրեմ — ալբ.* voter *«օջախ» — ռում.* vatră *«օջախ»:*

*Սակայն այս ցանկը խոցելի է տարբեր նկատառումներով.*

*1) մի շարք դեպքերում բերված զուգահեռները չեն սահմանափակվում միայն բալկանյան տարածքով, այլ ընդգրկում են նաև ուրիշ լեզուներ, ընդ որում հայերենը հազվադեպ է բնորոշվում բալկանյան տարածքի լեզուների հետ հատուկ մերձավորությամբ՝* արգել, կաղին, մեղկ, ուլ, որդի, սանր, այրեմ. այծ-*ը զուգահեռ ունի նաև ավեստ.* izaena- *«կաշվյա» (*«այծի կաշուց») բառում, բայց ավելի մոտ է բալկանյան տարածքի լեզուներին.*

*2) ռումիներենի համար որպես դակյան ենթաշերտի բառեր առանձնացվածներից մի քանիսի՝ այդպիսին լինելը կասկածելի է. այսպես, որպես* կաղին*-ի զուգահեռ բերված* gorun*-ի սլավոնական փոխառություն լինելն ավելի հավանական է (հմմտ. բուլղ.* горун *«կաղնու տեսակ», բուլղ. բրբռ. «սպիտակ կաղնի», սերբախորվ.* gorun *«կաղնու տեսակ»՝* gora *«անտառապատ տեղ» նախաձևի՞ց.* **Георгиев и др.**, 1971, 266) *որպես* այրեմ*-ի զուգահեռ բերված ռում.* vatră*-ն կարող է փոխառություն լինել ալբաներենից.*

*3) առանձին դեպքերում բերված զուգահեռները կասկածելի են. հուն.* τύμβος*-ը ստուգաբանորեն հավանաբար կապված չէ* τάφος*-ի հետ և գալիս է* *tēu-, *tŭ- *«ուռչել, արմատից. եթե հայ.* ձոյլ*-ը ծագում է* *g'heu-lo- *նախաձևից և ոչ* *g'heu-tlo*-ից, ապա հուն. բառի, առավել ևս ռում. բառի հետ հատուկ մերձավորություն չունի. ինչպես նշում է նաև Բալտացեանուն,* բարտի*-ի կապը ալբ.* berdh *և ռում.* brad *«եղևնի» բառերի հետ կասկածելի է. ալբ. բառը ծագում է* *bhrazdh- *նախաձևից, որ հայերենում չէր կարող տալ* բարտի. *վերջինս, ամենայն հավանականությամբ, ծագում է հ.-ե.* *bherəg'- *«փայլել. սպիտակ» արմատից, որտեղից ծագում են կեչու անունները (հմմտ. ռուս.* береза*). պատահականորեն նման կամ փոխառություն պետք է համարել վրաց.* bardi, *մեգր.* bərdi, *աբխ.* a-bard *բառանունները:*

*Բերված զուգահեռներից համեմատաբար վստահելի են հետևյալները.*

*1) դամբան — հուն.* τάφος *— ռում.* dîmb *(սակայն հմմտ. հունգ.* dumb *«բլուր»).*

*2) մոզի — հուն.* μόσχος *— ալբ.* mushkë *— ռում.* muşcoi *(բայց հմմտ. նաև վենետ.* musso *«էշ»).*

*3) ձիւն — հուն.* χιών *— ռում.* ţiu*:*

*Սրանց կարելի է միացնել հայ-հնդեվրոպական բառային զուգաբանությունների մեր ցանկում բերված հետևյալ հայ-բալկանյան զուգահեռները.*

*4) ագանիմ «գիշերել» — հուն.* ἰαύω *«քնել, գիշերել»,* αὖλις *«օթևան, իջևան» — թրակ.* Αὐλων-.

*5) անուրջ — հուն.* ὄνειρος *(էոլ.* ὄνοιρος*) — ալբ.* âdërrë *(գեգ.),* ëndërrë *(տոսկ.) «երազ. անուրջ, ցնորք».*

*6) խստոր — հուն.* σκόρ(ο)δον *— ալբ.* hudhrë, hurdhë *(հմմտ. նաև ռում.* leurdă *«ղանձիլ, արջասխտոր»):*

*Իմաստային առումով այս բառերը պատկանում են տարբեր թեմատիկ խմբերի, ընդ որում* ագանիմ*-ը և* անուրջ*-ը կարելի է հանգեցնել իմաստային միևնույն խմբին,* մոզի*-ն և* խստոր*-ը կենդանական և բուսական աշխարհի*

նշանակումներ են, սիմ-ը՝ մշակութային բնույթի բառ, պամբան-ը կապված է թաղման հետ։

Մնացած դեպքերում բերվող զուգաբանությունները կամ հավաստի չեն, կամ ներկայացնում են յուրահատուկ ձայնդարձով, նախահավելվածով, իմաստով և լեզվական այլ առանձնահատկություններով բնորոշվող ձևեր։ Դրանցից են Բալտայեանուի բերած հետևյալ երկու զուգահեռները.

1) արդն—հուն. ἀθήρ, ἀνθέριξ — ռում. andrea. ըստ իմաստի այս զուգահեռը գերադասելի է, բայց ըստ ձևի դժվարություններ է հարուցում, մանավանդ որ թրակ. -αρδις անձնանվանական բաղադրիչը ևս հակված են բխեցնելու հայ. արդն-ի և լիտվ. ar̃das -ի համար վերականգնվող *ardh- արմատից [Detschew, 1957, 23]. լիտվ. ձևը Ֆրենկելը [Fraenkel, 1962, 15] ավելի հավանական է համարում բխեցնել ռուս. арда -ից, որ իր հերթին Ֆասմերը [Фасмер. ЭСРЯ, 1, 85] բխեցնում է կարել. ardo-ից (ֆինն. arta).

2) այծ—հուն. αἴξ — դակամիս. Αἰζιοῖς (ռում. aiț ?). ավեստյան զուգահեռը իմաստով և ձևով հեռու է կանգնած (ձայնդարձի զրո աստիճան՝ հայերենի, հունարենի և դակերենի լիաձայն աստիճանի դիմաց)։

Սրանց կարելի է միացնել հայ-հնդեվրոպական բառային զուգաբանությունների մեր ցանկում բերված հետևյալ զուգահեռները.

3) արմ(ատ) (գ-արմ) — հուն. ὁρμή «գրոհ, հարձակում. ձգտում» (?) — ալբ. jerm «ցնորվածություն, կատաղություն» — հեսյուք. ἀρμάν (հայց.) «կռիվ, մարտ» (?). արմ-ից միայն ածանցով տարբեր արմն և, թերևս, արմեն բառերը զուգահեռներ ունեն հունարենում, գերմանականում և սլավոնականում).

4) դալուկն, դալար — հուն. θαλερός «դալար, մատաղ», θάλλω «ծաղկել, բխել» — ալբ. dal «ելնել. ծագել. ծլել. ընձյուղել» (-a- ձայնավորում՝ ի տարբերություն դեղ-ի).

5) ինն — հուն. ἔνϜα- (εν-νεϜα-ի կողքին) — թրակ. ενεα (*e- նախահավելված. շեղվում է ալբաներենը՝ nëndë).

6) ուրանամ — հուն. ἀρνέομαι «հերքել, ուրանալ» — ալբ. nërroj (*rrenój) «ժխտել, ուրանալ» (յուրահատուկ իմաստ և ընդգալին տարր, ընդ որում հայերենը ձայնավորմամբ շեղվում է՝ *ōr-՝ հուն. և ալբ. *ar-ի դիմաց)։

Որոշ հետազոտողներ [հմմտ. Климов, 1965, 21] նշում են նաև հայ-բալկանյան տիպաբանական ընդհանրություններ՝ հետադաս հոդ, սեռականի և տրականի ձևական համընկում, ապառնիի նկարագրական կազմություն և այլն։

## գ) ՀԱՅԵՐԵՆԻ ԵՎ ՀՈՒՆԱՐԵՆԻ ՎԱՂ ԱՌՆՉՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՐՑԸ

Ինչպես արդեն նշել ենք հայերենի՝ հնդեվրոպական լեզուների մեջ գրաված տեղի հարցի քննության կապակցությամբ, հայերենը և հունարենը բնութագրվում են հնդեվրոպական մյուս լեզուներից առանձնացող ընդհանրությունների այնպիսի գծերով, որոնք խոսում են այդ երկու լեզվի ամենավաղ շփումների մասին։ Հենվելով Հ. Պեդերսենի, Է. Շվիցերի, Ա. Մեյեի և Ջ. Բոնֆանտեի տվյալների վրա [Pedersen, 1924, 222. Schwyzer, 1939, 57. Meillet, 1936², 142. Bonfante, 1937, 15 և հջ.]՝ Վ. Պորցիգը հնդեվրոպա-

կան բառբառային տարբերակմանը նվիրված իր աշխատության մեջ թվարկում է այդ ընդհանրությունները և հայ-հունական վաղ շփումները հատկացնում այն շրջանին, երբ «երկու ժողովուրդների նախնիները ապրում էին Բալկանյան թերակղզու հյուսիսում։ Սա տանում է երկրորդ հազարամյակի ընդերքը» [Porzig, 1954, 157]: Այդպիսի ընդհանրություններ են համարվում հետևյալները. 1) հավելյալ սկզբնաձայնավորի առկայություն. ա) աստղ — ἀστήρ, բ) այր — ἀνήρ, գ) ատամն — ὀδοντ-, 2) սկզբնաձայնավորային ձայնավորի միևնույն տարբերակ՝ ինն — հուն. εἰνά-, ատտ. ἐνα-. 3) զ-գենում — ἕννυμι. 4) ալի-ք — πολιός. 5) ծաղր, -ու — γέλως 6) աղամ — ἀλέω. 7) եփեմ — ἕψω. 8) աւր — ἦμαρ. 9) ձիւն — χιών. 10) սին — κενός. 11) մեծարեմ — μεγαίρω. 12) սիւն — κίων: Պորցիգը հատուկ ուշադրություն է հրավիրում այն հանգամանքի վրա, որ դրանցից հինգը (5, 9, 10, 11, 12) գալիս են հայ-հունական նորաբանությունների այն շրջանից, երբ սատեմայնությունը չէր ձևավորվել, երկուսը (1, 2)՝ ձայնաբանական հին երևույթներ են, երեքը (3, 4, 9)՝ արխաիկ կազմություններ և երկուսը (6, 7)՝ տնային տնտեսությանը վերաբերող բառային յուրահատկություններ։

Իհարկե, Պորցիգի եզրակացությունները անվերապահորեն ընդունելի չեն. 1) վիճելի են նրա եզրակացությունները շփումների հյուսիս-բալկանյան տարածքի մասին. 2) բերված ընդհանրությունները մասամբ կարող են պարզապես հնդեվրոպա-բառբառային արժեք ունենալ, այսինքն՝ գնահատվել որպես բացառյալ (էքսկլյուզիվ) զուգաբանություններ հենց հնդեվրոպական գոյության շրջանի համար. այլ կերպ ասած՝ հարկավոր է տարբերել հնդեվրոպա-բառբառային զուգաբանությունները հետագա շփումների հետևանքով առաջացած, այդ թվում՝ երկու լեզուների՝ իրարից և միևնույն աղբյուրներից կատարած վաղ փոխառություններից. 3) ընդհանրությունները հավասարարժեք չեն. եթե հնչյունական և ձևաբանական զուգահեռները խոսում են հնդեվրոպական միևնույն նյութի ձևափոխությունների մասին, ապա բառային զուգահեռները կարող են լինել ինչպես բառբառային զուգաբանություններ, այնպես էլ փոխադարձ և շրջակա լեզուներից կատարված փոխառություններ. 4) Պորցիգի եզրակացությունը հինգ կետերի՝ նախքան satəm խմբի ձևավորումը տեղի ունենալու մասին չեն համընկնում մեր ժամանակագրական պատկերացումների հետ. սատեմայնությունն ակնհայտորեն ընդհանուր հնդեվրոպական հիմք է ունեցել, և դրանով բնութագրվող միավորների ընդհանրությունը գալիս է հնդեվրոպական շրջանից [Djahukian, 1975]:

Եթե այս նույն սկզբունքներով մոտենանք, այսպես կոչված, բառային բացառյալ զուգաբանություններին, այսինքն՝ այն բառերին, որոնք ընդհանուր են միայն հայերենին և հունարենին, ապա կարելի է ասել հետևյալը։ Հ. Աճառյանը «Հայոց լեզվի պատմության» 1-ին մասում [1940, 86—87] բերում է այդպիսի 41 զուգաբանություն։ Գ. Ռ. Ջոլտան «Հայերենի տեղը հնդեվրոպական լեզուների շրջանում» գրքում որոշ ընտրությամբ թողնում է 27-ը, բայց դրանց միացնում է 25 այնպիսի բառեր, որոնք, այլ լեզուներում զուգահեռներ ունենալով հանդերձ, հայերենի և հունարենի դեպքում առանձնանում են այս կամ այն կարևոր ընդհանուր հատկանիշով [Solta, 1960, 462—466]: Մեր տվյալներով, որոնք ճշտված են նորագույն աղբյուրներով, դրանց թիվը հասնում է շուրջ ութ տասնյակի [Джаукян и др., 1983]: Այս բոլորի համադրությամբ առանձնացնենք այն բառերը, որոնք

*1) մշակութային ակնհայտ արժեք ունեն և կարող են ընդհանուր փոխառություններ լինել, 2) իմաստով և ձևով այնքան մոտ են, որ կարելի է ենթադրել իրարից կատարած վաղ փոխառություն կամ փոխազդեցություն.* 1) ալեւր (ալիւր), -ոյ — ἄλευρον. 2) աղաւրի-ք — ἀλετρίς (*հգն.*) *«աղացված, ալյուր»*, ἀλετρεύω (*անվանածանց բայ*) *«աղալ»*. 3) աղուէս — ἀλώπηξ. 4) աման, -ոյ — ἀμνίον *«զոհի արյան գավաթ»*[6]. 5) արդածին — ἀρτιγένης. 6) աւել (աւելել) — ὄφελμα, ὄφελτρον (*ըստ Հեսիքիոսի*) (ὀφέλλω). 7) աւթ — ἰαυθμός. 8) աւձի-ք — αὐχήν *«պարանոց»*. 9) դակու *«ուրագ կամ կացին»* — θηγάνη *«հեսան»*. 10) դամբան (դամբարան) — τάφος *«դամբան»* (τάφρος *«փոս»*, θάπτω *«թաղել»* (*հմմտ. նաև ալբ.* dîmb). 11) եփեմ — ἕψω (*հմմտ. ալբ.* epû(m) *«եփել, թխել, խորովել»՝ աոր.* *'pī. *պատահական նմանությո՞ւն, թե ընդհանուր հայ-հունական փոխառություն*). 12) թարփ *«ձկնորսական կողով»*, թարբ *«վանդակաձև հյուսվածք»* — τάρπη (τάρπος) *«ուռենու ճյուղից հյուսված մեծ կողով»*. 13) թեղի — πτελέα *«ծփնի, կնձնի»* (*բայց հմմտ. լատ.* tilia *«լորենի»*). 14) թի — πτεόν 15) խստոր — σκόροδον (σκόρδον. *հմմտ. նաև ալբ.* hurdhë). 16) կաղին, -ոյ — βάλανος. 17) կամուրջ — γέφυρα. 18) ճերիւն — περόνη *«քորոց»*. 19) մոզի — μοσχίον[7]. 20) որս — πόρκος *«ուռկան, թարփ»*. 21) ռումբ *«նետաքար, նիզակ»* — ῥόμβος (ῥόμβος) *«հոլ. գափ, թմբուկ. պտույտ»* (ῥέμβομαι *«թափառել, ման գալ» բայից. հմմտ. նաև* ῥάμφος *«ծուռ կտուց»*, ῥαμφή *«կեռ դաշույն»*, ῥομφαία *«թրակյան սուր»*). 22) ռունգն — ῥύγχος *«մռութ, կտուց»* (*հմմտ. նաև փռյուգ.* δρυγγος *«քիթ»*). 23) սիւն — κίων. 24) սուտ — ψεῦδος:

*Միանգամայն հնարավոր է, իհարկե, որ այս ընդհանրությունների մի մասը ուշ շրջանի լինի և պատկանի երկու լեզուների ընդհանուր փոխառությունների թվին՝ կատարված թերևս իրարից անկախ. այդպիսիք կարող են լինել, մասնավորապես.* խստոր — σκόρ(ο)δον (*ալբ.* hurdhë, hudhrë), ռումբ — ῥόμφος, ռունգն — ῥύγχος *զուգահեռները, մանավանդ որ վերջին երկու բառերում ձայնավոր նախահավելվածով* եր- (ար-, որ-) կամ եռ- (առ-, ոռ-) *ձևերի փոխարեն հանդիպում են բնիկ և վաղ փոխառված բառերի համար անսովոր* ռ-*ով սկսվող ձևեր:*

## դ) ՀԱՅԵՐԵՆԸ ԵՎ ԱԼԲԱՆԵՐԵՆԸ

*Հ. Պեդերսենը* [Pedersen, 1906] *և ավելի ուշ Վ. Պիզանին* [Pisani 1950, 159] *խոսել են հայ-ալբանական մերձավոր կապերի մասին և ի թիվս այլ ապացույցների բերել նաև բառային զուգաբանություններ: Իր «Հնդեվրոպական լեզվոլորտի անդամատումը» գրքում Վ. Պորցիգը* [Porzig, 1954] *հայ-ալբանական հատուկ զուգաբանություններ չի տալիս: Գ. Զոլտան* [Solta, *1960] բերում է հայ-ալբանական բացառյալ (միայն երկուսին հատուկ)*

[6] *Սովորաբար կապում են* ἀμάω *«հավաքել» բայի հետ* [*հմմտ.* Pok., I, 901], *սակայն այլ հետազոտողներ ժխտում են այդ կապը* [*հմմտ.* Chantraine, DELG, I, 76]:

[7] *Հետաքրքրական է նշել, որ Վ. Բրանդենշտայնը* [Brandenstein, "Festschrift Debrunner", 82] *այս բառը կապում է մուշկերի անվան հետ: Վերևում նշվեցին բալկանյան և ոչ բալկանյան այլ զուգահեռներ ևս (ալբ., ռում., վենետ.):*

և մի երրորդ լեզու ընդգրկող մի քանի բառային զուգաբանություն.

1) դարձ (դառնամ<*դարձնամ, առր. դարձայ)—ալբ. dredh «պտտել, ոլորել, դարձնել. մանել». այլ հետազոտողներ սրանց ավելացնում են իրանական (պրսկ. darz «թել», պահլ. darzīk «դերձակ». հավանաբար իրան. աղբյուրից են հայ. դերձան, դերձակ, ճանդերձ), խեթական (tarna- «թողնել») և թոխարական (Ա. tärna-, tärk- «թողնել, արձակել») բառեր, բայց սրանց պատկանելությունը Ջոլյանի կասկածելի է համարում և խոսում հայ-ալբանական բացառյալ զուգաբանության մասին.

2) գինդ—ալբ. vëth «գինդ». հ.-ե. այլ լեզուներում *u̯endh- արմատն այսպիսի անվանական կազմությամբ չի ներկայացված.

3) դայլ—ալբ. dhallë «մածուն» (իմաստա-ածանցական զուգաբանություն) (?)։

Երկու այլ դեպքերում հայ-ալբանական զուգաբանությունները առանձնակի չեն.

1) թարմ—ալբ. trim «քաջ». հ.-ե. *-m-ով ձև ունի նաև հունարենը՝ τέραμων «փափուկ». ինչպես տեսնում ենք, այստեղ ըստ կազմության առկա է հայ-հունա-ալբանական զուգաբանություն, որտեղ իմաստով հայերենը և հունարենը ավելի մոտ են.

2) միս—ալբ. mish- թոխ. Բ misa (հգն.) (*mēns-<*mēms-) կան նաև այլ զուգահեռներ, բայց ամենից ավելի մոտ են այս երեք լեզուների ձևերը։

Հայ-հնդեվրոպական բառային զուգաբանությունների մեր ցանկում տեղ են գտել հայ-ալբանական հետևյալ բացառյալ զուգաբանությունները.

1) բիբի «մի թռչուն» (բնաձ. բառ. հմմտ. բիբեմ, բբեմ)— ալբ. bibë «ճուտ. հնդկահավ» (հմմտ. նաև հուն. πίφιγξ, πιφαλλίς «մի թռչուն»?) (հ.-ե. *b(h)ib(h)-՝ *pip-ի կողքին).

2) գինդ—ալբ. vëth «գինդ, ականջող» (հ.-ե. *u̯endh-).

3) բ. կատուկ «խոչակ, խոչափող» — ալբ. zgurdhë «փորոտիք» (հ.-ե. *gu̯er-).

4) որջիլ—ալբ. erjgëz «մանր ոջիլ, անիծ» (հ.-ե. *er(e)gh-՝ *erek-ի կողքին).

5) որթ (խաղողի) — ալբ. (h)ardhi «խաղողի վազ, որթ». սակայն հնարավոր է համարվում հայ. բառի համեմատությունը նաև հուն. πτόρθος «ընձյուղ, բողբոջ» բառի հետ, որին կասկածով միացվում է նաև լատ. pertica «ձող» բառը [Pok., 1, 1959, 823],

6) սեռն «զուտ. սերտ, խիտ» (սեռնիմ «լցվել, խտանալ») — ալբ. thjerrë «ոսպ» (*«սնունդ») (նույնածանց կազմություն՝ *k'er-n-՝ *k'er- «աճել, աճեցնել, սնել» արմատից)։

Եթե ճիշտ է հատկացվում ալբ. dhallë «մածուն» բառը հ.-ե. *dhēl- արմատին, ապա առկա է հայ. դայլ — ալբ. dhallë իմաստա-բառակազմական զուգահեռը։

Բառային այս զուգադիպություններից կարևոր են մանավորապես գինդ — vëth և որթ — hardhi զուգահեռները, որոնք մշակութային հատուկ արժեք ունեն։ Մյուսներից քիչ թե շատ էական է որջիլ — ergjëz զուգահեռը։ Հետաքրքրական է նշել, որ որթ — hardhi զուգահեռը հիշեցնում է նաև բասկյան ardao «գինի» բառը [Hamp, AID, 112] և ենթադրում է ընդհանուր մշակութային աղբյուր-փոխառություն։

Վ. Գեորգիևը [Георгиев, 1957. 1958 և այլն] առաջինն է փորձել Հընդեվրոպական որոշակի առանձնահատկությունների հիման վրա առանձնացնել դակերենը (դակամիսիերենը) թրակերենից. նախորդ հետազոտողների մոտ դակյան լեզվական մնացորդները սովորաբար տրվել են թրակերենի մնացորդների անվան տակ [հմմտ. Detschew, 1957]։ Գեորգիևն էլ հենց առաջին անգամ փորձել է ցույց տալ ռումիներենում որպես դակյան ենթաշերտ հանդես եկող բառերի մեջ այնպիսի մի զուգադիպություն, ինչպիսին է ռում. <դակ. z- (հմմտ. ռում. zgîi) )—հայ. գ-։ Հայ-դակամիսիական զուգադիպումների հարցը հետագայում հատուկ քննության է արժանանում մեր [Ջահուկյան, 1968. 1970], ապա Ջ. Գրեպինի [1976] և, ավելի հանգամանորեն, Ց. Բալտացեանուի (Băltăceanu, 1979. 1980) աշխատություններում։

Թրակերենի մնացորդներից դակերենի տարրերի առանձնացման հետ միասին ռումիներենի ուսումնասիրողները ընտրել են մի երկրորդ ուղի՝ փորձելով ռումիներենի մեջ տարբերել ենթաշերտային այն բառապաշարը, որի մեջ, անշուշտ, էական բաժին ունի դակերենը։ Զուգահեռաբար նրանք փորձել են առանձնացված նյութը հիմնավորել նաև հայերենի փաստերով [հմմտ. վաղ փորձերի համար Hasdeu, 1875. 1887—1898 և հետագայում՝ Reichenkron, 1958. 1960. 1966a,b. Poghirc, 1967. 1973. Russu, 1967]։ Այս ուսումնասիրողների մեջ մեր նպատակի համար հատուկ հիշատակության արժանի է Գ. Ռայխենկրոնը, որ փորձում է ռումիներենի ենթաշերտի առանձնացումը կատարել մասնավորապես հայերենի հետ համեմատելու միջոցով։ Դակերենի տարրերն առանձնացնելիս (թվով 130 բառ) նա ելնում է մի կողմից՝ հնդեվրոպական նախաձևերից, մյուս կողմից՝ ալբաներենի և հայերենի տվյալներից։ Ըստ հեղինակի՝ դակերենը, հայերենի նման, երկշերտ է՝ բաղկացած թրակերենին մոտ արևելյան և իլիրերենին մոտ արևմտյան շերտերից։ Հայերենի շերտերից մեկը, ըստ Ռայխենկրոնի, բալկանյան ծագում ունի և դակերենի հետ միասին կազմում է թրակերենի մի ճյուղը։ Մասնավորապես նա նշում է միայն հայերենում, հունարենում և դակերենում պահպանված որոշակի թվով բառերի նախահնդեվրոպական ծագումը։ Սրանց հետ միասին նա հայերենի համար կարևոր է համարում կառուցվածքային այնպիսի գծերի առկայությունը, ինչպիսիք են հ.-ե. *o-ի երկակի արտացոլումը (*o>o և *o>a), բաղաձայնների տեղաշարժը, «s+բաղաձայն» խմբերի յուրատեսակ փոփոխությունը, հ.-ե. *to- և *g'hō նախամասնիկների առկայությունը։ Բառապաշարի բնագավառում Ռայխենկրոնը կատարում է հայ-ռումինա-հունական և հայ-ռումինական մի շարք համեմատություններ, որոնք մասամբ հիշվեցին հայերենի բառային «բալկանիզմների» քննության կապակցությամբ. արդն — ռում. andrea. (յ)աւելում — հուն. ὀφέλλω — ռում. învolt, învoalbe. բեկանեմ — ռում. a bocăni, boacan. թաւալեմ — ռում. a tăvăli. թուփ — ռում. tufa. լքանեմ — ռում. a lehai, a lehni. ձոյլ — ռում. zoae. մեզ — ռում. (tā)mînzi, comînji. սիւն — հուն. κίων — ռում. (< դակ.) ţîu. սխալիմ — ռում. (<դակ.) scîlcia. ստեպ — ռում. teafár. տոփեմ — ռում. a zdupăi, dupac. փերթ — ռում. a fărîma և այլն։ Հնդեվրոպական աղբյուրից բխեցվող այս համեմատությունների կողքին բերվում են նաև այնպիսիները, որոնց հնդեվրոպական ծագումը (մանավանդ հայերենի դեպքում) հավաստի-

որեն չի ապացուցվում՝ շարժեմ — ռում. a scorni (բխեցվում են հ.-ե. *(s) ker-ից)։ Այս նույն ձևով Հաժդեուն ավելի վաղ փորձել է համեմատել հայ. շիրիմ-ը ռում. şiroadă «տակառ, չան», şirimpîu «ջրանցք» բառերի հետ։

Ռայխենկրոնի համեմատությունները կամ անհավաստի են, ինչպես նշվել է հետազոտողների կողմից, կամ չեն խոսում հայ-դակյան հատուկ կապերի մասին (հայերենը զուգահեռներ ունի նաև այլ լեզուներում)։ Դրանցից մի քանիսի մասին մենք առիթ ունեցանք խոսելու հայ-բալկանյան ընդհանուր զուգադիպությունների հարցի կապակցությամբ։ Ավելորդ ենք համարում խոսել այլ հեղինակների առաջարկած առանձին զուգադիպությունների մասին, որոնք միևնույն բնույթի են։

Դակերենի մնացորդների մեջ բավականին մեծ թիվ են գրավում բուսանունները, անձնանունները, ցեղանունները և տեղանունները։ Սրանց համեմատությունը հայերենի հետ հատուկ մերձավոր կապեր չի բացահայտում։ Ջ. Գրեպինը [1976] փորձել է որոշել հայերենի՝ դակերենից կատարած փոխառությունները։ Հայերեն բառերի՝ դակերեն և ռումիներեն բառերի հետ ունեցած նմանության հիման վրա նա նշում է 5 այդպիսի բառ.

1) դեղ «խոտ, դեղ» — դակ. dela «խոտ, դեղ».
2) դեղին - դակ. διέλλεινα «բաց գույնի բույս».
3) դրուագ — դակ. dru- «փայտ».
4) դոն «մի տեսակ մոլախոտ» — դակ. δύν «եղինջ (urtica)».
5) արդն — ռում. andrea (դակ. arden)։

Սրանցից արդն-ի մասին մենք առիթ ենք ունեցել խոսելու. այն ավելի շատ կարելի է համարել ընդհանուր բալկանիզմ, քան դակյան փոխառություն, եթե մերժենք հայ. բառի կապը լիտվ. և թրակ. բառերի հետ։ Մյուս բառերից դրուագ «այունազլխի զարդ» բառի բխեցումը դակ. dru «փայտ» բառից և համեմատաբար ուշ հանդիպող դոն «մի տեսակ մոլախոտ» բառի համեմատությունը դակ. δύν «եղինջ (urtica)» բառի հետ՝ կասկածելի են, մանավանդ որ δύν-ի մեկնաբանությունը և ստուգաբանությունը հավաստի չեն։ Ինչ վերաբերում է դեղ (հմմտ. խաշն-դեղ, ճակն-դեղ, կապն-դեղ) և dela -δηλα, -διλ(λ)α (հմմտ. δουοδήλα, πριαδίλα, προπεδίλα, teudila), դեղին և διέλλεινα «բանջի, բույսաս (ծաղկավոր խոտ)» զուգադիպումներին, ապա դրանք ավելի հավանական է կապել ցեղակցական կապով (եթե, մանավանդ, գալիս են *dhel-ից, ինչպես կարծում են Դեչևը և Ռուսուն, և ոչ *g'hel-ից, ինչպես կարծում է Գեորգիևը). Նկատենք, որ հայ դեղ-ը ունի նաև այլ ածականներով ձևեր՝ դեղձ, դեղբ, իսկ դեղին-ը իմաստով հեռու է դակ. διέλλεινα բուսանունից և ունի ավելի լայն ու ընդհանուր իմաստ. Թերևս հնարավոր լիներ հակառակ փոխառություն ենթադրելը, եթե ընդհանրապես խոսք կարող է լինել փոխառության և ոչ թե ցեղակցական կապի մասին. վերջին դեպքում էլ պետք է նշել բառակազմական ակնհայտ մերձավորությունը։

Հետաքրքրական է նշել, որ դակյան մի շարք բուսանուններում -δηλα, διλ(λ)α բաղադրիչների փոխարեն հանդիպում է -zila-ն (հմմտ. usazila), որ Ռուսուն բխեցնում է *g'il-ից՝ բերելով նաև հայ. ծիղ-ը (Բոլտացեանուն տալիս է և ծիլ-ը. անկախաբար մենք էլ հայ. ծիլ-ը և ծիղ-ը բխեցրել ենք միևնույն աղբյուրից)։

Այլ տիպի համեմատություններից հիշենք Δρομιχαίτης դակյան անձնանվան տոմաշեկյան Տրամախայր մեկնությունը, որ անհավանական է. ա-

*վելի հավանական է* -[illegible] *բաղադրիչը համեմատել հայ.* խայտ-*ի հետ* [Ջահուկյան, *1970, էջ 57։*]

*Եթե ճիշտ է Գեորգիևը, որ դակ.* Vedea *գետանունը կապում է հ.-ե.* *u̯ed- >*հայ.* գետ *բառի հետ, ապա ստկա է հայ-դակյան ծագումնային մերձավոր կապ (բայց ոչ փոխառություն)։*

*Ինչ վերաբերում է Ջ. Գրեպինի բերած այն զուգահեռներին, որոնց դակյան եզրերը նա վերականգնում է լոկ վերջինիս համար սահմանված հնչյունական համապատասխանությունների, ապա դրանք անհավաստի պետք է համարել՝* բերդ *(իրականում սա սեմական ծագում ունի),* գրէ (գրեայ) *«կռունկ»,* տուռն *«շեղջ, կույտ»,* տռռեմ, պար, տալաւոր *(այժմ ցույց է տրված, որ իրանական ծագում ունի),* կուր *«նավակ, մակույկ» (<հ.-ե.* *gur-?)[8], կուր *«վնասակար միջատ»։ Սրանցից* գրէ (գրեայ) *բառը զուգահեռ ունի ռում.* grui *«կռունկ» բառի մեջ (Գրեպինն այս զուգահեռը չի նշում), որը Ռուսուն* [**Russu**, 1970] *հիշում է տեղական շերտի պատկանող և ալբաներենում զուգահեռներ չունեցող բառերի թվում, բայց որը իրականում գալիս է լատ.* grus, *սեռ.* gruis *«կռունկ» բառից։ Այս բառերի մեջ տրված է նաև* măceș *«մասրենի» բառը, որ հիշեցնում է հայ.* մասուր-*ը։*

## 3. ՀԱՅԵՐԵՆԸ ԵՎ ՄԻՋԵՐԿՐԱԾՈՎՅԱՆ ԵՆԹԱՇԵՐՏԻ ՀԱՐՑԸ

### ա) ՀԱՐՑԱԴՐՈՒՄԸ

*Պ. Կրեչմերի «Հունարեն լեզվի ներածություն» աշխատությունից* [**Kretschmer**, 1896*) հետո լայն հիմքեր է նետում այն կարծիքը, որ նախքան հնդեվրոպացիների տարածվելը Փոքր Ասիայում և հարակից շրջաններում տիրապետող են եղել ոչ հնդեվրոպական լեզուները և ժողովուրդները։ Այս տեսակետի հետ են կապված, այսպես կոչված, միջերկրական ու ասիանիկ լեզուների և հնդեվրոպական լեզուների մեջ համապատասխան ենթաշերտերի առկայության վերաբերյալ վարկածները։ Եթե ասիանիկ լեզուների վարկածը, որ պաշտպանվում էր նաև հայ հետազոտող Գ. Ղափանցյանի կողմից, XX դարի երկրորդ կեսին դադարում է ուշադրություն գրավելուց (պարզվում է ասիանիկ կոչված լեզուների ծագումնային տարասեռությունը), ապա միջերկրական ենթաշերտի վարկածը, որ ժամանակին պաշտպանվել է Ա. Մեյեն ու, նրա հետևողությամբ, Հ. Աճառյանի կողմից, շարունակում է լայն ուշադրության առարկա լինել։ Միջերկրական ենթաշերտի պրոբլեմին XX դարի երկրորդ կեսին նվիրված աշխատություններից հիշատակենք Բ. Տեռաչինիի* [**Terracini**, 1951], *Վ. Չիխարժի* [Čihař, 1954], *Ջ. Ալեսիոյի* [**Alessio**, 1955], *Յ. Հուբշմիդի* [**Hubschmid**, 1960, 1961, 1964], *Դ. Հեստերի* [**Hester**, 1968], *Վ. Գեորգիևի* [**Georgiev**, 1961, 1981] *հոդվածներն ու գրքերը։ Այս հետազոտողների մի մասը շարունակում է աշխատանքը միջերկրական ենթաշերտի ընդհանուր առանձնահատկությունները, հասարակ և հատուկ անունները բացատրելու ուղղությամբ, մյուսը, հատկապես Վ. Գեորգիևը, բացառում է միջերկրական ենթաշերտի գաղափարն ընդհանրապես։ Բնականաբար ենթադրվում է, որ միջերկրական քաղաքակրթությունը և միջերկրական*

---

[8] *Հմմտ. նաև միքեն. հուն.* ki-u-ro-i, *որ համարում են սեմ. աղբյուրից (եբր.* kiyyōr *«աման»)։ Եթե հայ.* կուր-*ը կապ ունի ֆինն.* kulru *«մակույկի տեսակ» (բրբռ.* kuiri *«գդալ») բառի հետ, ապա ավելի հավանական է հայ. բառի հնդեվրոպական ծագումը։*

շրջանի լեզուները ազդել են ոչ միայն հունարենի, այլև հայերենի վրա՝ առաջ բերելով ոչ ցեղակցական ընդհանրություններ: Իր «Հայոց լեզվի պատմության» 1-ին մասի «Միջերկրական կամ էգեական քաղաքակրթության ազդեցությունը» գլխում Հ. Աճառյանը [1940, 100—104] հակիրճ կերպով խոսելով հունարենի և լատիներենի վրա այդ քաղաքակրթության թողած ազդեցության մասին, անցնում է հայերենի մեջ միջերկրական բառերի առկայության հարցին: Նա տարբերում է փոխառությունների երկու շերտ՝ 1) անուղղակի՝ հիմնականում հունարենի, մասամբ էլ այլ լեզուների միջնորդությամբ, և 2) ուղղակի՝ «այն ժամանակվա, երբ հայերը գտնվում էին դեռ եվրոպական հողի վրա և շփման մեջ էին Միջերկրականի և Էգեական ծովի շրջաբնակ ազգերի հետ»: Վերջիններիս մեջ նշվում են հետևյալ չորս բառերը. 1) գինի — հուն. Ϝοινος (լատ. vinum. Հնդեվրոպական լեզուներից փոխ են առել կովկասյան և ֆիննա-ուգրական լեզուները, ըստ ոմանց՝ միջերկրական աղբյուրից են ծագում նաև սեմականները). 2) իւղ (եւղ) — հուն. ἔλαιον «ձեթ», ἐλαία «ձիթենի» (լատ. oleum, olivum «ձեթ»). 3) թուզ — հուն. τῦκον (σῦκον), լատ. ficus. 4) սպունգն — հուն. σφόγγος, σπόγγος, լատ. — fungus:

Ի՞նչ կարելի է ասել այս ընդհանրությունների մասին: 1) Ինչպես արդեն գրել ենք, հնարավոր է գինի բառի հնդեվրոպական ստուգաբանությունը՝ *u̯ei- «ծռել, ոլորել» արմատից (որպես «գալարվող»), թեև սեմական *u̯ainu-ն (արաբ., եթովպ. u̯ain, եբր. ja̯jin, ակկադ. īnu) վկայում է սեմա-հնդեվրոպական հնագույն կապերի մասին. հայերենի օրինաչափ համապատասխանությունը հ.-ե. նախաձևին խոսում է հայերեն բառի ոչ փոխառյալ լինելու օգտին: 2) Վ. Գեորգիևը [Georgiev, 1960, 48] հակված է հ.-ե. ծագում վերագրել նաև հուն. ἔλαιον-ին՝ այն հանգեցնելով հ.-ե. *loi-u̯o նախաձևին՝ e- նախահավելվածով. հմմտ. լիտվ. lãjus «ճարպ». սակայն նախ՝ լիտվ. բառը փոխառություն է համարվում բելոռուսերենից [Fraenkel, LEW, 1, 335]. երկրորդ՝ հուն. բառը նշանակում է բուսայուղ (ձեթ), մինչդեռ լիտվականը՝ կենդանական յուղ (ճարպ). երրորդ՝ Գեորգիևը իր վերականգնման ժամանակ նկատի չի ունենում հայերենը, որի ձևը հնարավոր չէ բխեցնել ոչ *loi-u̯o-ից, ոչ էլ անմիջապես հունարենից: Մնում է իրոք ենթադրել մեկ ընդհանուր աղբյուր և այն էլ սեմականից տարբեր, որովհետև սեմականում կա ձեթի այլ անվանում (հմմտ. ասոր. zēt > հայ. ձէթ)[9]: 3) Թուզ բառը չի կարող բխեցվել հունարենից, և նրա համար պետք է ենթադրել մի այլ աղբյուր՝ *tugh- տիպի նախաձևով, որի մեջ խուլի և շնչեղ ձայնեղի զուգակցումը հնդեվրոպականի համար բնորոշ չէ (եթե *gh-ն աճական չէ). միաժամանակ հայերենի աղբյուրի համար շնչեղ ձայնեղի ենթադրումը անսովոր է, բայց հնարավոր: 4) Սպունգն բառի մեջ o > ու անցումը ռնգայիններից առաջ հայերենում իրոք ենթադրում է հին փոխառություն. հայերենի բուն հունական փոխառությունների մեջ ε > ի և o > ու անցումները նշված դիրքում սովորական չեն: 5) Սպունգն բառից տարբեր, բայց ծագումնային առումով նրան մոտ աղբյուրից է ծագում հավանաբար նաև սունկ(ն) բառը, թեև Հ. Աճառյանը, հետևելով Ս. Բուգգեին ու Հ. Պեդերսենին և հա-

[9] Ակկադ. ellu(m) «քունջութի լավ ձեթ» բառը հակված են կապելու ellu(m) «մաքուր» բառի հետ [հմմտ. Soden, AHW, 1, 205], որ, սակայն, կասկածելի է (փոխառություն՝ բազարկությամբ հանդե՞րձ):

կառուցման մեջ ընկնելով հուն. σπόγγος-ի ու հայ. սպունգն-ի մասին իր ասածի հետ, այն բխեցնում է հ.-ե. *spongos նախաձևից (ըստ է. Լիդենի՝ *spongos>*psongos> սունկ)։ Հայերենին զուգահեռ բառեր տալիս են նաև կովկասյան լեզուներում՝ վրաց., մեգր., ճան. soko-, սվան. sok̦(w)-, բեժիտ., ղունզ. ʒoklo, ցեզ. ʒikly, բացբ. ʒokl. որոնց համար ենթադրվում է կամ փոխառություն հայերենից (Աճառյան), կամ ընդհանրական (Կլիմով)։ Բոլոր դեպքերում էլ մնում է ենթադրել հայերենի և հունարենի որոշ բառերի համար լեզվական ընդհանուր աղբյուրներ, որոնց «միջերկրական» անվանումը պայմանական պետք է համարել։ Նախքան հայերենի և հունարենի ընդհանուր փոքրասիական և լայն առումով, առաջավորասիական աղբյուրների քննությանն անցնելը մի քանի խոսք ասենք «միջերկրական» կոչվածի առանձնահատկությունների և սրանց՝ հայերենի առանձնահատկությունների հետ ունեցած կապի մասին։

Վ. Ջիխարժը, որի վրա մենք հենվելու ենք ստորև տրվող բնութագրության մեջ, լայնացնում է միջերկրական ենթաշերտի գաղափարը՝ խոսելով «հնդեվրոպական ենթաշերտի» մասին (Պ. Ֆուշեի տերմինը)։ Ի մի բերելով նախորդ, հատկապես իտալական, հետազոտողների տվյալները՝ Ջիխարժը նշում է «միջերկրական լեզուների» մի շարք առանձնահատկություններ, որոնք մենք կքննենք հայերենի առանձնահատկությունների հետ ունեցած հարաբերության մեջ։

## բ) ՀՆՉՅՈՒՆԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ

1) Միջերկրական ենթաշերտի համար բնորոշ է ձայնեղների խլացումը և պարզ խուլերի շնչեղացումը (հմմտ. Padus—Patavium—տեղանուն, Adri—Atri — տեղանուն, bala—pala, κυπάρισσος κυφάρισσος և այլն). մի բան, որ զուգահեռ ունի բաղաձայնների գերմանական և հայկական տեղաշարժերի մեջ. ահա թե ինչու Հ. Գյունտերը այդ տեղաշարժերի մեջ տեսնում էր ենթաշերտի ազդեցություն, իսկ Վ. Բրանդենշտայնը հայկական տեղաշարժը վերագրում էր տրակյան ազդեցությանը։ Ինքը Ջիխարժը հերքում է այդ կարծիքը՝ հայկական տեղաշարժը համարելով մ. թ. ա. VII դ. ոչ վաղ։ Նշենք, որ այս կարծիքը հիմնավորված չէ, և այժմյան շատ հետազոտողներ տեղաշարժը հակված են համարելու հնդեվրոպական բարբառային զուգաբանություն։

2) Բառասկզբում բացակայում է r-ն, մի երևույթ, որ լայնորեն տարածված է Փոքր Ասիայում և Կովկասում. այդպես է վիճակը նաև հայերենում։

3) L և r ձայնորդների հերթագայությունը (cala—cara, tala—tara, Holconius—Horconia vitis և այլն) տարածված է տարբեր լեզուներում (ըստ Ջիխարժի՝ նաև հայերենում(?))։

4) Առկա է շրթնային b—m հնչյունների հերթագայությունը. այս առումով նշենք հուն. γέφυρα և հայ. կամուրջ, հուն. ἦμαρ — հայ. աւր բառերի փոխհարաբերությունը, բառեր, որոնց (մանավանդ երկրորդին) վերագրվում է հնդեվրոպական ծագում, և որոնց φ—մ, μ—ւ համապատասխանությունը դժվար բացատրելի է։

Միջերկրածովյան ենթաշերտի բաղաձայնական համակարգի համար բնորոշ է պարզ և կրկնակ բաղաձայնների հերթագայությունը (baca—bacca, cara—carra և այլն). այս երևույթը չկա հայերենում, որի համար

*բնորոշ է կրկնակի բաղաձայնների պարզումը (միայն թե* rr*-ն* ***անցնում է*** *ռ-ի)։*

*5) Միջերկրածովյան ենթաշերտի համար բնորոշ է* ā *ձայնավորի առատությունը. այս երևույթը բնորոշ է նաև հայերենին։*

*6) Արևելյան Միջերկրածովքի, Արևելյան Անատոլիայի և Հայաստանի համար բնորոշ է* a- *նախահավելվածի առկայությունը։*

*Հայերենը չի բաժանում երկու էական առանձնահատկություն՝ 1)* a *և* e *ձայնավորների հերթագայությունը* (tala — tellus *«հող») և 2) առաջնավանկային շեշտը, թեև առկա է ուժային (ոչ երաժշտական) շեշտ, ինչպես միջերկրածովյան ենթաշերտում։*

## գ) ՁԵՎԱԿԱԶՄՈՒԹՅՈՒՆ ԵՎ ԲԱՌԱԿԱԶՄՈՒԹՅՈՒՆ

*1) Միջերկրական ենթաշերտի համար բնորոշ է քերականական սեռի բացակայությունը, մի առանձնահատկություն, որ կա և հայերենում. այստեղ հնդեվրոպական քերականական սեռը վերացել է։*

*2) Առկա է հոգնակիի -r- կազմիչը, որը բնորոշ է նաև հայերենի հավաքական կազմություններին* (**-եար>-եր**):

*3) Միջերկրական ենթաշերտի համար բնորոշ՝ բուսանունների և կենդանական անունների կրկնավոր կազմության հատկանիշը հաճախ բաժանում է և հայերենը, բայց այս դեպքում քիչ հավանական է ազդեցություն ենթադրել։*

*4) Դժվար է որոշակի բան ասել առանձնացվող ածանցների մասին* (-itanus, -esso/-isso, -anka/-enka- -ax, -ex, -ix. -ena, -an-, -te, -etio, -eta- (-etan, -ate), -assos, -inthos *և այլն), որոնց մի մասն այժմ մեկնաբանվում է որպես հնդեվրոպական* (-inthos, -assos *և այլն), մյուսների հարաբերությունը հայերեն համապատասխան ածանցների հետ պարզ չէ. հնարավոր է պատահական զուգադիպություն, ինչպես միջերկրածովյան տեղանվանական* -ena (Cadena, Artena *և այլն) և Ուրարտուի ու Հայաստանի տեղանվանական* -en, -in- *ածանցների դեպքում։ Պատահական չէ՞ արդյոք* դրասանգ, ժառանգ, խոշտանգ *բառերի -անգ-ի նմանությունը միջերկրական* -anka *ածանցին։*

## դ) ԲԱՌԱՊԱՇԱՐ. ՄԻՋԵՐԿՐԱԿԱՆ ԵՎ ՓՈՔՐԱՍԻԱԿԱՆ ՀԱՄԱՐՎՈՂ ԲԱՌԵՐ

*Միջերկրական ենթաշերտի բառապաշարի համար բնորոշ բառերը պատկանում են հատկապես երկու հիմնական խմբի՝ 1) երկրաձևային-տեղանվանական և 2) միջերկրածովյան բուսական աշխարհին վերաբերող։* Իւղ, գինի, թուզ, սպունգն, սունկն *բառերի մասին արդեն ասվել է. այստեղ կանգ առնենք այլ հնարավոր զուգահեռների վրա։ 1) Հայ.* **քար** *բառի մասին արվում է երկու ենթադրություն. այն սովորաբար վերագրվում է հնդեվրոպական* *kar- *«կոշտ» (և «քար») կամ* *(s)ker- *«կտրել» արմատներին՝ հնդեվրոպական այլ զուգահեռներով (հ. իռլ.* carrac *«ժայռ», հ. կիմր.* carrecc *«քար, ժայռ», հ. հյուս.* horgu *«քարակույտ» և այլն). սակայն կան հետազոտողներ, որոնք այդ բոլորը, հայերենով հանդերձ, բխեցնում են միջերկրական ենթաշերտից* (cara/carra *«ժայռ, քար»). որոշ հետազոտողներ* **քար***-ի հետ են կապում* կարկառ *«քարակույտ» բառը, բայց ըստ Աճառյանի այն* կառ *արմատի կըրկ-*

նավոր ձևն է։ 2) Հայ. թաղ-ել «հողի տակ ծածկել» բայի արմատը թերևս կապված է միջերկրական համարվող tala «հող, երկիր» (tara, tarra տարբերակներով) բառի հետ. 3) հայ. կամուրջ-ի և հուն. γέφυρα -ի՝ հնդեվրոպական աղբյուրից բխեցնելու փորձերը քիչ համոզիչ են, և թերևս հնարավոր է ենթադրել ընդհանուր աղբյուր՝ միջերկրականին հատուկ՝ φ/m հերթագայությամբ և -ur- ածանցական մասնիկով. 4) հայ. կաղամախ բառը, որ զուգահեռներ ունի կովկասյան լեզուներում և թրակ. καλαμιν-δαρ (-δαρ՝ «ծառ») բառի մեջ կարող է պատկանել այս ենթաշերտին [Сараджева,1981, ИФЖ, 4,227—229], 5) հայ. աղախր, եղախր «ճահիճ» բառը՝ a/e հերթագայությամբ (եթե, իհարկե, բառը հնդեվրոպական ծագում չունի, և հերթագայությունը ուշ բնույթի չէ՝ ըստ նախահավելվածային ձայնավորի) միջին օղակներով կարող է կապված լինել պիրենեա-լիգուրա-ալպիական շրջանի sala «ճահճային վայր» բառի հետ. 6) հայ. վազ (խաղողի) բառը Հ. Աճառյանը [ՀԱԲ, 4[2], էջ 293] կապում է վազ-ել «ցատկել» բայի հետ, բայց թերևս հնարավոր է կապ տեսնել միջերկրական baca «վազ» (հմմտ. լատ. baca «պտուղ», թերևս նաև Βάκχος աստծու անունը) բառի հետ՝ ինչ որ միջին օղակով։

Սովորաբար կամ միջերկրական, կամ արևելյան ծագում է վերագրվում հայ. սրինգ և հուն. σῦριγξ, -ιγγος բառերին (Հ. Ֆրիսկ, Պ. Շանտրեն և ուրիշներ), որոնք Հ. Աճառյանը բխեցնում է փոքրասիական աղբյուրից, արևելյան ծագման մասին է խոսում արևելքում տարածված զուռնա բառը, որ ամենայն հավանականությամբ կապված է այս բառերի հետ (հմմտ. նաև հիեր. լուվ. šurna «եղջյուր»?)։ Հունարենի հետազոտողները նշում են σῦριγξ, σάλπιγξ, φόρμιγξ երաժշտական գործիքների համար բնորոշ ընդհանուր -ιγγ-, ածանցը։

Միջերկրական ենթաշերտի քննության հարցն ավարտենք հայերեն և հունարեն՝ ծագումով ընդհանուր մի զույգի մատնանշումով, որի համար նույնպես ենթադրվում է, թեև որոշ կասկածով, միջերկրական կամ էգեական ընդհանուր աղբյուր՝ գարի—հուն. κρῖ, κριθή. Թեև հունարեն բառերը փորձում են հանգեցնել հ.-ե. *g'herzd(h)- նախաձևին, բայց թե՛ հայերենի, թե՛ հունարենի համար կան հնչյունական դժվարություններ, և հնարավոր է համարվում այստեղ տեսնել էգեական ծագում ունեցող թափառող բառ (հմմտ. նաև վրաց. keri) [տե՛ս Frisk, GEW, 2, 18—19. Chantraine, DELG, 2, 583)։

Հայ. կասկ «շագանակ» (կասկենի «շագանակենի») և հուն. κάστανα զույգի համար ավելի հնարավոր է համարվում փոքրասիական ընդհանուր աղբյուր ունենալը, քան թե մեկի մյուսից (հայերենի՝ հունարենից կամ հունարենի՝ հայերենից) ծագած լինելը [հմմտ. Frisk, GEW, 1, 799. Chantraine, DELG, 2, 504]։

Ընդհանուր առմամբ հայերեն և հունարեն մի շարք բառերի աղբյուրը փնտրում են փոքրասիական լեզուների մեջ. բացի վերևում հիշված հայ. սրինգ—հուն. σῦριγξ, հայ. կասկ— հուն. κάστανα բառերից, Աճառյանը փոքրասիական ծագում է վերագրում նաև հետևյալ բառերին. 1) կարիճ — καρίς, -ίδος «խեցգետին». հունարենի ավելի նոր հետազոտողներից Հ. Ֆրիսկը καρίς-ը համարում է հուն. κάραβος «ծովախեցգետին» բառի կրճատ ձևը, ընդ որում Պ. Շանտրենը վերջինս բխեցնում է միջերկրական աղբյուրից. 2) սեխ — հուն. σικύα, σεκούα «դդում կամ սեխ» (ըստ Հեսիքիոսի), σίκυος «վարունգ». փոքրասիական աղբյուր ենթադրելը կասկածելի է. 3) փանդիռն — πανδοῦρα (φάνδουρος, πανδούριον). Հնարավոր է, իրոք, փոքրասիական, հատկապես լիդի-

ական ծագում, թեև կան նաև այլ վարկածներ. հմմտ. նաև վրաց. panduri, չեչ. pondur, օս. fändur (-ur) և այլն. 4) արագիլ — πελαργός. ավելի տարածված է հուն. բառի՝ բարդություն լինելու կարծիքը՝ *πελaF-αργός «սևավուն սպիտակ». եթե վերջինս ճիշտ է, ապա կամ նմանությունը պատահական է, կամ հայերենը շատ հին փոխառություն է հունարենից. քիչ հավանական է հայ. բառի շումերական ծագման վարկածը (Ղափանցյան)՝ arikgilim «երկարոտն մի թռչուն» բառից:

Հ. Աճառյանի բերած ալիպս — ἄλιψ (և λίψ) «քար» զուգահեռը անհավանական է և՛ իմաստային, և՛ ձևական առումով. alips-ի վերջին s-ն վերջավորություն է, իսկ հիմքը համեմատվում է նախառոմանական libba «քարի սալիկ» բառի հետ (հմմտ. նաև հուն. ἠλίβατος «զառիվեր, բարձր») [Furnée, 1972, 378], մինչդեռ Աճառյանը -s-ն դիտում է որպես հայ. բառի բաղադրիչ, այսինքն՝ հայերենի համար հիմք է ընդունում հուն. ձևը:

Ինչ վերաբերում է Հ. Աճառյանի որպես փոքրասիական նշած ագարակ, աստուած, սայլ բառերին, ապա դրանցից երկրորդի մասին կխոսվի տարբեր առիթներով, ագարակ բառի մասին՝ հնդեվրոպա-սեմական առնչությունների կապակցությամբ։ Սայլ բառը համարվել է կամ բնիկ հայ-փռյուգական ժառանգություն հ.-ե. *k'at- «կռվել, պայքարել» արմատից, կամ փոխառություն հարևան ժողովուրդներից. Ռ. Շմիտը [G, 144, 1967, 148—151] փորձել է ապացուցել σάτιλλα «մի համաստեղություն» (*«սայլ, կառք») բառի թրակյան ծագումը։

## 4. ՀԱՅԵՐԵՆԸ ԵՎ ԽԵԹԱ-ԼՈՒՎԱԿԱՆ ԼԵԶՈՒՆԵՐԸ

### ա) ԽԵԹԱ-ԼՈՒՎԱԿԱՆ ՎԱՂ ՇՐՋԱՆԻ ԼԵԶՈՒՆԵՐԸ

Ինչպես նշվել է հնդեվրոպական լեզուների քննության ժամանակ, խեթա-լուվական կամ (հին) անատոլիական լեզուները պատկանում են հնդեվրոպական լեզվաընտանիքին և ներկայացված են վաղ և ուշ շրջանի լեզուներով։ Ուշ շրջանի հնդեվրոպական լեզուների պատմությունը ժամանակագրորեն համընկնում է հայերենի զարգացման հնագույն շրջանի պատմության հետ, և այստեղ խոսք կարող է լինել միայն վաղ շրջանի անատոլիական լեզուների՝ սեպագիր խեթերենի (նեսերենի), պալայերենի, լուվիերենի և հիերոգլիֆյան լուվերենի մասին։ Առաջին երեքի գրավոր հուշարձանները պատկանում են մ. թ.ա. XVII—XIII դ. դ.։ Հիերոգլիֆյան լուվիերենի հուշարձանները սկիզբ առնելով սեպագիր լեզուների ավանդման շրջանում՝ XVI դարից, հիմնականում գրված են ավելի ուշ՝ մ. թ. ա. X—VIII դ. դ., այսինքն՝ խեթական թագավորության անկումից հետո։

Փոքր Ասիայում գտնվող խեթական ցեղերի ստեղծած քաղաք-պետությունների միավորումը կատարվել է մ. թ. ա. XVIII դ.՝ Անիտտայի (Anitta) կողմից։ Խեթական պետության ամրապնդման և ուժեղացման մեջ մեծ է հատկապես Թաբառնայի (T/Labarna) դերը։ Խեթական պետության պատմությունը ավանդաբար բաժանում են երեք շրջանի՝ հին (մ. թ. ա. XVIII—մ. թ. ա XVII դ. դ.), միջին (մ. թ. ա. XVI—մ. թ. ա. XV դ. I կես) և նոր (մ. թ. ա.XV դ. II կես—մ. թ. ա. XIII դ.) թագավորությունների։ Խեթական պետությունն իր նվաճումների և տարածման ընթացքում շփման մեջ է մըտ-

*նում հին աշխարհի նշանավոր պետությունների՝ Եգիպտոսի, Միտանիի, Ասորեստանի և Հայասայի հետ։ Քաղաքական և մշակութային փոխազդեցությունը հանգեցնում է լեզվական փոխազդեցության։ Խեթերենի վրա նշանակալից ազդեցություն է թողնում նաև խեթական թագավորության հին բնակիչների՝ խաթերի լեզուն։ Խեթերենի և պալայերենի մեջ մուտք են գործում կրոնի և պաշտամունքի, պետության և նյութական մշակույթի հետ կապված մեծ թըվով բառեր* [Камменхубер, ДЯМА, 1980, 27—33]: *Բացի խեթական թագավորության մեջ մանող ժողովուրդներից, ծայրագավառներում ապրել են մեծ թվով ժողովուրդներ, որոնք գտնվել են կիսանկախ վիճակում։ Դրանցից արևելյան ծայրագավառներում գտնվող մի շարք ժողովուրդներ հավանաբար կարևոր դեր են խաղացել հայ ժողովրդի կազմավորման պրոցեսում։*

*Խեթական թագավորության կործանումը կապված է արևմուտքից, այսպես կոչված, «ծովային ժողովուրդների» շարժման հետ։ Մ. թ. ա. XIII դարից հետո խեթա-լուվական ժողովուրդների մնացորդները դեռ բավական երկար շարունակում են իրենց գոյությունը՝ վերջիվերջո ձուլվելով Փոքր Ասիայի բնակչությանը և կորցնելով իրենց լեզուն։*

## բ) ԽԵԹԱ-ԼՈՒՎԱԿԱՆ ԼԵԶՈՒՆԵՐԻ ԵՎ ՀԱՅԵՐԵՆԻ ԱՌՆՉՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ. ՓՈԽԱՌՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*Այն հարցի լուծումը, թե որտե՞ղ, ե՞րբ և ինչպիսի՞ ազդեցություն կարող էին թողնել խեթա-լուվական լեզուները հայերենի վրա, կախված է մի այլ՝ հնդեվրոպացիների և, սրա հետ կապված, հայերի սկզբնական բնակավայրի հարցի լուծումից։ Այժմ, երբ կարելի է հաստատված համարել, որ հայերի պատմությունն սկսվում է մ. թ. ա. VI դարից շատ ավելի վաղ, հայերի և խեթա-լուվական ժողովուրդների շփման հնարավորության հավանականությունն ավելի է մեծանում։ Կարելի է ընդունել խեթա-լուվական լեզուների՝ հայերի վրա ազդելու երկու ճանապարհ՝ անմիջական և միջնորդված։*

*Խեթա-լուվական լեզուների կրողների և հայերի անմիջական շփումը կարող էր լինել մինչև խեթական պետության կործանումը, եթե հայերն իրոք բնակվելիս են եղել Հայկական բարձրավանդակում ու նրան հարող շրջաններում մինչև «ծովային ժողովուրդների» արշավանքները և եթե նրանց մուտքը չի կապված «ծովային ժողովուրդներից» փոյուգացիների շարժման հետ. նշել ենք, որ ծովային ժողովուրդների թվարկումների մեջ հայերի անունը չի հանդիպում։ Խեթական պետության կործանումից հետո հայերի շփումը խեթա-լուվական ժողովուրդների հետ կասկած չի հարուցում։ Ճիշտ է, չի կարելի հայերենի վրա խեթա-լուվական ազդեցության հիմնական աղբյուրը համարել հիերոգլիֆյան լուվերենը* [Дьяконов, ПС, 360] (*ինչպես կտեսնենք, խեթա-լուվական լեզուներից հայերենի կատարած փոխառությունները հիերոգլիֆյան լուվերենի համապատասխան բառերի հետ հատուկ մերձավորություն չեն ցուցաբերում), բայց ակնհայտ է, որ հայերը բավական երկար ժամանակ շփման մեջ պիտի լինեին այդ լեզուներով խոսողների հետ։ Եթե Հայասայի հիմնական լեզուն խեթա-լուվական է եղել, ինչպես կարծում է հեղինակը* [**Djahukian**, 1969. Джаукян, 1974], *ապա կասկած չի կարող լինել, որ հայերենի խեթա-լուվական ծագման բառերի առյուծի բաժինը գալիս է այդ լեզվից։*

Զգալի թիվ պետք է կազմեն նաև հայերենի՝ խեթա-լուվական լեզուներից ու անմիջաբար կատարած փոխառությունները. դրանք կարող են գալ խուռաուրարտական, սեմական և այլ լեզուների միջնորդությամբ. ինչպես հայտնի է, խեթա-լուվական լեզուների ներդրումն այդ լեզուների մեջ բավական մեծ թիվ է կազմում։

Ինչպես հայտնի է, խեթերենի վերաբերյալ տեղեկությունների համար գիտությունը պարտական է XX դ. սկզբների Բողազքյոյ վայրում Հ. Վինկլերի կատարած պեղումների հետևանքով խեթական թագավորների գրադարանի հայտնագործմանը (1906—1912 թթ.) և չեխ գիտնական Բ. Հրոզնու կողմից դրանց վերծանությանը (1915)։ Սակայն մինչ այդ՝ XIX դ. վերջերին Պ. Յենսենը [Jensen, 1898] ուշադրություն է դարձնում տարբեր աղբյուրներում պահպանված hat- անվան՝ հայերի ինքնանվանման հետ ունեցած նմանության վրա և փորձում է խեթերին համարել հայերի նախնիներ։ Խեթերենի տեքստերի ընթերցումից և նրա հնդեվրոպական բնույթի ապացուցումից հետո սկսվում է հայ-խեթական առնչությունների ինտենսիվ ուսումնասիրությունը։ Սկզբնապես հետազոտողները բավարարվում են հայ-խեթական աչքի ընկնող բառային ընդհանրությունների մատնանշումով՝ առանց հստակորեն տարբերակելու ծագումնային ընդհանրություններն ու հնարավոր փոխառությունները. այս առումով պետք է հատկապես նշել Ն. Մարտիրոսյանի [1924. 1926. 1929] և Գ. Ղափանցյանի [1931. 1940. 1946. 1961] աշխատությունները։ Հ. Աճառյանը թեև անդրադարձել է այս հարցին [1925. 1940], բայց հատկապես չի զբաղվել խեթերենի՝ հայերենի մեջ կատարած բառային ներդրման հարցերով. նա նշել է միայն որպես միակ հավաստի օրինակ խեթ. Muršiliš և հայ. Մուշեղ անձնանունների նմանությունը։ Հայ-խեթական առնչությունների հարցին հատուկ հոդվածներ են նվիրել նաև Ի. Մ. Դյակոնովը [Дьяконов, 1956. 1961] և Տ. Շուլտհայսը [Schultheiss, 1961], բայց Գ. Ղափանցյանի համեմատությամբ նրանք նոր հավաստի նյութ գրեթե չեն բերում։ Հայ-խեթական ցեղակցական փոխհարաբերության հարցն զբաղեցրել է Ջ. Բոնֆանտեին [Bonfante, 1939], Հ. Պեդերսենին [Pedersen, 1945], Գ. Ռ. Զոլտային [Solta, 1960], Ա. Կամենհուբերին [Kammenhuber, 1961], Ա. Վան Վինդեկենսին [Vindekens, 1980], Մ. Մորանիին [Morani, 1981]։ Հայ-խեթական ծագումնային ընդհանրությունների և խեթա-լուվական լեզուներից հայերենի կատարած փոխառությունների սահմանազատման համեմատաբար լրիվ քննությունը կատարել ենք մենք [Ջահուկյան, 1967, 1970]։ Մեզնից հետո հայերենի խեթական փոխառությունների մասին խոսել և լրացուցիչ նյութ ներքաշելու փորձեր են կատարել Ն. Մկրտչյանը [Mkrtschjan, 1974] և Ջ. Գրեպպինը [Greppin, 1980. 1982]։

Ի մի բերելով եղած տվյալները՝ կարելի է մատնանշել հայերենի բառապաշարի մեջ հետևյալ բառերը, որոնց աղբյուրը կարող են լինել խեթա-լուվական լեզուները.

բրուտ «խեցեգործ, կավագործ», բրտեղէն «խեցեղեն», բ. բրտին «կավ», բ. բրտնոց «կավահանք»—խեթ. purut- «կավ».

գորգ — խեթ. kurka- «ծածկոց (?)».

դանդալոն «դեղեցմանային խավար» — խեթ, dandu- «մահ» (danduki- «անցավոր, մահկանացու» բառերում) (?).

ընթրի-ք — խեթ. etri- «ուտելիք, կերակուր, կերակրում» (?).

լախուր (նեխուր) «մի բույս՝ կարոս, apium nodiflorum» — GIŠlaḫḫ-

ura- «տերևավոր բույս» (ըստ Գրեպինի. Ց. Փրիդրիխի բառարանում՝ խեթ. GIŠlaḫḫuranuzzi «պտուղ»).

խալամ (հալամ) «անասունի չորացած գանգ» (խալամովին «գլուխն էլ հետը») — խեթ. ḫalanta- «գլուխ»,

բ. խախուրթ «կոկորդ» (ըստ Ղափանցյանի) — խեթ. UZUḫuḫḫurti-, լուվ. UZUhuḫarta- «կոկորդ».

խաղամ «շարժվել, գնալ. արշավել, վազել» (տարբեր խաղամ «խաղ անել. ծաղրել. խայտալ» բայից) — խեթ. ḫalāi- «շարժվել»?

խառն, խառնեմ «խառնել. տաշ քաշել», խուռն «ամբոխ. բազմություն» — խեթ. ḫarnamnija- «խառնել (?). գրգռել. հալածել».

խիշտ «անկողին» (*«հանգստավայր». խշտիք «խղճուկ անկողին», խշտել «հանգիստ տալ, օթևանել») — խեթ. Éḫeštā-, Éḫešti- «դամբարան (?)».

խողեմ «ցրել, վանել» — խեթ. ḫullāi-, ḫulija- «կռվել. վիճել. տապալել» (?)

խողխողեմ «մորթել, փողոտել, չարաչար սպանել» — խեթ. ḫulḫulijā- «կռվել. կռվում խփել, սպանել».

խոխում, -ոց «ձոր. առվամեջ, հոսանքի անցած տեղ», խոխոմեմ «ոռոգել, լավ ջրել», խոխոմեալ «ջրառատ» — խեթ. ḫunḫumazzi-, ḫunḫuu̯an- «մակընթացություն, հոսանք հեղեղ(?)», ḫunḫuešnant-, ḫunḫuneššar- «ալիք, կոհակ».

խոյս (խուսել, խոյս տալ «փախչել»), — խեթ. ḫuja- «վազել», ḫuu̯āi- «վազել. փախչել, մազապուրծ լինել» և ḫuiš- «ապրել. փրկվել» (բաղարկությո՞ւն).

ծուխ, -ոյ — խեթ. tuḫḫu(u̯ā)i- «ծուխ (?)».

կշտամբել — խեթ. kušduu̯āi- «կշտամբել, նախատել, անվանարկել, զրպարտել».

կոշնել (կօշնել) «ձոնել; ընծայել» (ըստ Երեմիայի բառարանի) — խեթ. kuššan- «ռոճիկ, աշխատավարձ, վարձատրություն, գին».

հատ, -ոյ (հատանեմ, հատու «սուր, կտրուկ», կտոր < գ-հատ, ընդհատ «տարբեր», նհատ «թերի», հատ «որթի հատած ճյուղ») և յատ-անեմ «հատել, էտել», յատ «որթի հատած ճյուղ — խեթ. ḫattāi- «հատել, կտրել. ծակել. պատռել».

հե(ն)գ(ն) «ծաղր. հեճուկ, հակառակություն», հենգնեմ «ծաղրել» — խեթ. ḫinganijau̯ar- «զվարճություն, զվարթություն, ուրախություն».

հնձան — խեթ. GIŠhanza(n) «մի տեսակ սարք, աման».

(հ)ուկեմ — խեթ. ušk- «տեսնել» և ḫušk- «սպասել» (բաղարկությո՞ւն).

շեղջ (շիղջ) «կույտ, շեղջ (հատկապես հացահատիկի)» — խեթ. šeli- «հացահատիկի շեղջ (?)».

շեռ «մեզ» — խեթ. šeḫur-, սեռ.-unaš «մեզ».

ոսկալիմ «չորանալուց ճաքճքել» — խեթ. iškallāi- «պատռել, ճեղքել. պոկել (?), շորթել (?)».

տառեղն «արագիլ» — խեթ. tarlā «մի թռչուն» (ըստ Գրեպինի).

փախ (փախչիմ, փախնում, փախուստ) — խեթ. parḫ- «հալածել, քշել, որսալ. հարձակվել. արշավել տալ, սուրալ տալ (ձիու մասին)», parḫanu- «հալածել տալ. արշավել տալ», parḫeššar- «շտապում, աճապարանք» (հ.-ե. *per-).

*փշուր (փշրեմ)* — *խեթ.* paršur- *«բրդոշ (?), մանր կտորներից կերակուր»,* paršulli-, paršiul- *«փշուր, բեկոր»,* parš-, paršāi-, paršija- *«փշրել, ջարդել»։*

*Այս բառերին կարելի է ավելացնել հետևյալ հատուկ անունները.*

*Ամատունի* — *հիեր. լուվ.* Amatuu̯ana (*ցեղանուն, ուրարտական միջնորդությա՞մբ. հմմտ. -ունի*).

*Հարմա (անձնանուն), Արմաւիր (տեղանուն)* — *խեթ., լուվ., հիեր. լուվ.* Arma-, arma, *լիդ.* Armāv- *«լուսին. լուսնաստված».*

*Մուշեղ (անձնանուն)* — *խեթ.* Muršiliš (*անձնանուն*).

*Տորք (անձնանուն)* — *խեթ.* Tarḫuna-, *լուվ.* Tarḫund-, *հիեր. լուվ.* Tarḫu(n)t-, *լիկ.* Trqqñt (*որոտի աստված. հայերենին ձևով ամենից ավելի մոտ է լիկ.* Τορκος *անձնանունը, և կարելի է ենթադրել լիկիական միջնորդություն*)։

*Ըստ բերված բառերի խեթա-լուվական լեզուների և հայերենի միջև կարելի է հաստատել հնչյունական հետևյալ համապատասխանությունները. («խեթական բառերը բերվում են առանց հատուկ նշման).*

| *Խեթ.* | *Հայ.* | *Օրինակներ* |
|---|---|---|
| p/b | *փ* | parḫ- — *փախ*. paršur- — *փշուր* |
| | *ր* | purut- — *բրուտ* (?) |
| t/d | *թ* | etri- — *ընթրիք* |
| | *տ* | tarlā- — *տառեղն*. Éḫešti- — *խիշտ* |
| | *ծ* | tuḫḫu(u̯ā)i- — *ծուխ* |
| k/g | *ք* | ? |
| | *կ* | kušduu̯āi- — *կշտամբել*. kuššan- — *կոշնել* |
| | *գ* | kurka- — *գուրգ* |
| z | *ձ* | GIŠḫanzan- — *հնձան* |
| š | *շ* | šeli- — *շեղջ* |
| | *ս* | ḫušk- (*և* ušk-) — (*հ*)*ուշկեմ* |
| ḫ/(ḫ) | *խ* | ḫalanta- — *խաղամ* (*հաղամ*). ḫulḫulija- — *խողխողել*. tuḫḫu(u̯ā)i- — *ծուխ* |
| | *հ* | šinganiiau̯ar- — *հենգն*. ḫattāi- — *հատանել* |
| | — | ḫeḫur/n- — *ք. շեռ(ն)* |
| r | *ր* | kurka- — *գուրգ* |
| | *ռ* | ḫarnamnija- — *խառն* |
| | — | parḫ- — *փախ*. paršūr- — *փշուր* |
| l | *լ* | laḫḫura- — *լախուր*. ḫalanta- — *խաղամ* |
| | *ղ* | ḫulḫulija- — *խողխողել* |
| m | *մ* | Muršiliš- — *Մուշեղ* |
| | | ḫunḫumazzi- — *խոխոմ, -աց* |
| n | *ն* | GIŠḫanzan- — *հնձան* |
| | — | ḫunḫumazzi- — *խոխոմ* |
| a | *ա* | ḫalanta- — *խաղամ*. ḫalāi- — *խաղալ*. ḫarnamnija- — *խառն* |
| e/i | (*ը*) —′ | paišūr- — *փշուր*. GIŠḫanzan- — *հնձան* |
| | *ի* | Éḫešti- — *խիշտ*. ḫinganiiau̯ar- — *հենգն* |
| | *ե* | šeii- — *շեղջ* (*շիղջ*). šeḫur- — *ք. շեռ* |
| | (*ը*) —′ | etri — *ընթրիք* |
| u | *ու* | UZUḫuḫḫurti- — *ք. խախուրթ*. tuḫhu(u̯ā)i- — *ծուխ* |
| | *ո* | kurka- — *գորգ*. ḫulḫulija- — *խողխողել* |
| | (*ը*) —′ | purut- — *բրուտ* |

*Հնչյունական համապատասխանությունների աղյուսակի կապակցությամբ կարելի է անել հետևյալ դիտողությունները.*

*1) Խեթա-լուվական տեքստերում խուլերով և ձայնեղներով արտահայտված հնչյունների դիմաց, առաջին հայացքից առանց որևէ հետևողականության, առկա են ինչպես շնչեղ խուլեր ու խուլեր, այնպես էլ ձայնեղներ։ Եթե խեթա-լուվական և հայերեն բառերի համապատասխանությունները ճիշտ են, ապա հայերենի հնչյունները ավելի հարազատորեն են արտացոլում խեթա-լուվական լեզուների հնչյունական առանձնահատկությունները, քան դրանք տրված են սեպագրերի միջոցով։ Հնարավոր է ենթադրել ինչպես խեթա-լուվական տարբեր լեզուների հնչյունական տարբերություններ, այնպես էլ նրանց և հայերենի միջև զանազան միջնորդ լեզուներ։ Հնդեվրոպական ծագում ունեցող խեթական բառերի հնչյունական աղբյուրները նկատի ունենալով՝ կարելի է ենթադրել խեթա-լուվական լեզուներում որոշակի բաղաձայնական տեղաշարժեր [հմմտ.* Ջահուկյան, *1970, 132—133]։*

*2) Խեթա-լուվական* š *և* ḫ(ḫ) *շփականների դիմաց հայերենն ունի սովորաբար* շ *և* խ, *բայց առանձին դեպքերում առկա են* ս *և* հ. *Նկատի ունենալով* Ḫajaša- *և* Հայ-ս *անվանումների հնարավոր նույնությունը՝ մենք* ḫ—հ *և* š—ս *համապատասխանությունները հակված ենք վերագրելու հայասական ներդրմանը։ Եթե ճիշտ է խեթ.* ḫalanta- *և հայ.* խալամ (հալամ) *բառերի համապատասխանությունը, ապա առկա է* հ-*ի արտացոլման տատանում՝ թերևս աղբյուրների տարբերության հետևանքով։ Նշենք նաև* հիղ (հիւղ) *և* խուղ *բառերի հարաբերությունը, եթե առաջինի աղբյուրն իրոք հայասերենն է (հմմտ.* Laḫirḫila *քաղաքանունը). հնարավոր է երկրորդի բնիկ հնդեվրոպական ծագումը (բնիկ հայկական և հայասական ձևերի բաղարկությո՞ւն)։*

*3) Խեթա-լուվական* u *և* o, e *և* i *ձայնավորների հատուկ տարբերակում սեպագրերում չկա.* o-*ն ընդհանրապես հատուկ նշանակում չունի։ Այս պատճառով էլ պետք է կարծել, որ խեթա-լուվական ձայնավորների տարբերակումը հայերենում ավելի հարազատորեն է անցկացված, քան այդ հնարավորություն են տալիս սեպագրերը։ Միաժամանակ նշենք, որ խեթա-լուվական* i, u *(հավանաբար նաև* a*) ձայնավորները հայերենի նախագրային շրջանում համեմատաբար ուշ շրջանում (մ. թ. II—III դդ.) թուլացել են (փոխվել* ը-*ի) կամ ընկել։ Էլ ավելի վաղ (մ. թ. VI—V դդ.) պիտի ընկած լինեին նաև խեթական վերջավանկային ձայնավորները՝ բնիկ ձայնավորներին հար և նման. եթե ճիշտ են* purut- *և* բրուտ, etri-*և* ընթրի-*ք համապատասխանությունները, ապա հայերենի բուն աղբյուրների համար պետք է ենթադրել լրացուցիչ վերջնաձայնավորներով ձևեր՝* *buruti- *և* *etrija-*։ Նույն ձևով* šeḫur-*ի դիմաց բ.* շեռ-*ի առկայությունը ենթադրում է* šéḫur- > šehr- > շեռ(ն), šeli-*ի դիմաց* շեղջ *ձևինը՝* šelį- > շեղջ *փոփոխություն։ Այսպիսով,* į > ջ *և* hr > ռ *փոփոխությունները պատկանում են հայերենի զարգացման ոչ թե վաղնջական, այլ հնագույն շրջանին։*

*Մի շարք դեպքերում նկատելի է հայերեն և խեթա-լուվական բառերի զուգադիպություն, բայց նրանց ակնհայտ բնաձայնական-նկարագրական բնույթը կասկածելի է դարձնում որոշակի կապ հաստատելու հնարավորությունը.*

*բ. լխլխալ «թույլ լինելով կամ խախտվելով շարժվել. շարժվել, տատանվել» — խեթ.* laḫlaḫija- *«հուզված լինել (?)»,* laḫlaḫima- *«շարժում, հուզմունք»* (?).

ր. լպռտել (և լպպել «անհոգաբար ուտել») — խեթ. lip(p)- «լիզել, լպըռտել» (li-lipāi-՝ կրկնավոր ձև).

քրթմնջել (քրթմնջումն, -ին, քարթմնջումն) — խեթ. kartimija- «բարկանալ, ոխ ունել», kartimijanu-, kartimnu- «բարկացնել»:

Մի շարք այլ դեպքերում խեթա-լուվիական և հայերեն բառերի իմաստային նմանությունն ակնհայտ է, բայց հնչյունական զանազան պատճառներով դժվարանում է դրանց առնչության հարցի լուծումը.

ապա «հետո» (յապաղել «ուշացնել») — խեթ. appa «հետո» (խեթական բառի վերջին ձայնավորի արտահայտվելը անբացատրելի է. ավելի հավանական է հայ. բառի իրանական ծագումը՝ ապ(ա)- նախածանցի հետ միասին).

արուարձան «քաղաքամերձ բնակավայր» (արուարձանեայ «սահմանակից», արուարձային «արվարձանի բնակիչ», արուարձական «սահմանակից») — խեթ. $^{É}$arzana- «հյուրանոց, իջևան (?)», arzanant- «բնակեցված (?)» և լուվ. Arzila — վայրի անուն (?) (անբացատրելի է հայ. բառի արու- բաղադրիչը. կա նաև հայ. բառի իրանական ծագման կարծիք).

բա(ղ)խեմ — խեթ. u̯alḫ- «խփել, բախել» (ըստ Շուլտհայսի, սակայն ա) անհավանական է u̯ > բ փոփոխությունը, բ) հայերեն բառի ղ-ն ուշ շրջանի հավելում է. եթե նկատի առնենք u̯ > գ փոփոխությունը, ավելի հավանական է կապ տեսնել խեթ. բառի և հայ. գահել «խփել, զարկել» բառի միջև).

քրքիր «փխրուն, փափուկ» (քրքրեմ «քայքայել, խախտել. պարզել. պըրպըտել, տնտղել») — խեթ. kurkurāi- «խեղել, այլանդակել. աղճատել, աղավաղել» (հայերեն բայի ձայնավորումը տարբեր է խեթ. բառի ձայնավորումից՝ ի՝ խեթ. u-ի դիմաց):

Տարբեր հետազոտողների կողմից առաջարկված հետևյալ համեմատությունները կասկածելի են՝ հայերեն և խեթա-լուվիական բառերի իմաստային ակնհայտ տարբերության պատճառով.

խախաց «պանրի մակարդ» (խախացեմ «մակարդել») — խեթ. ḫaḫḫima- «պնդություն (?)», ḫaḫḫalija- «պնդանալ».

խեղբ (խիղբ) «ծիլ, ընձյուղ» կամ «արմատի մազմզուկ» — խեթ. ḫu̯elpi- «մատաղ. թարմ (կանաչ), խակ» (?).

խուլեմ «ցրել, վանել» — խեթ. ḫullāi-, ḫullija- «հաղթել» (ḫulḫullija- «կռվել. կռվում խփել, սպանել»).

խորթ — խեթ. ḫartuu̯a-, հիեր. լուվ. ḫartu- «հետնորդ, սերունդ».

խորխ «օձի շապիկ, մորթ, կաշի» — ḫaḫri- «սառծանիք».

կատաղի (կատաղիմ, կատաղենամ) — խեթ. kattau̯annalli-, լուվ. kattau̯atnalli- «վրեժխնդիր».

կոտոր, -ոյ (կտուր «բուրդ. խուզում», կտոր, կտիր, բ. կտար) — խեթ. kutriš- «կարճություն».

մաթուզ «մորու ծառ, arbutus» — հիեր. լուվ. matusa (ma-tú-sà) «մի բույս» (հայ. բառը հանդիպում է ուշ շրջանում, և նրա մեջ զ-ն՝ հիեր. լուվ. s-ի դիմաց համեմատությունը դարձնում է կասկածելի. Աճառյանը, ՀԱԲ, $4^2$, էջ 637, մաթուզ-ը բխեցնում է աղամաթուզից).

շեշտ «շեշտակիորեն, ուղղակիորեն. շեշտ» — խեթ. šešd- (šišd-) «երկար նստել, հանգստանալ. աճել. բարգավաճել».

ուռան «աշտանակ» կամ «վառարան, հրարան» — խեթ. ur-, u̯ar- «այրել».

սկիս (<գ-կիս-՝ սկսանիմ, սկիզբն) — խեթ. kiš- «դառնալ. պատահել».

փարթել «արտամղվել, արտաքամվել, ծակոտիներով դուրս գալ (հեղուկի մասին)» — խեթ. partāi- «քաշել-հանել, պղղել».

քծնեմ (քծին) — խեթ. genzuu̯āi- «բարեկամաբար վարվել. խնայել. սեր տածել, ուշադիր լինել»։

Կան դեպքեր, երբ հայերենի և խեթա-լուվական լեզուների բառային զուգադիպումների առկայության պայմաններում դժվարանում է նրանց բնույթի մեկնաբանության հարցը.

1) Մի շարք դեպքերում հնարավոր է հայերեն բառերի բնիկ հնդեվրոպական ծագումը, և կամ պետք է հրաժարվել այդ բառերի աղբյուրը խեթա-լուվական լեզուներում փնտրելուց, կամ գտնել ավելի ընդունելի մեկնաբանություն.

աղանդ «կրոն. աղանդ. կախարդանք» (աղանդեմ «աղանդ սահմանել. կախարդել», աղանդաւոր «աղանդապետ») — խեթ. alu̯anzaḫḫ(a?)- «կախարդանք», alu̯anzaḫḫ- «կախարդել», alu̯anzatar-, alu̯anzeššar- «կախարդանք», aluanzena- «կախարդանք» (սակայն հմմտ. հուն. ἄλη «թափառում, խռովք», լատվ. aluōt «շրջել. մոլորվել». թոխ. Ա, Բ āl- «բաժանվել. հեռանալ» < հ.-ե. *al- «թափառել, մոլորվել». այստեղից են, թերևս, հայերեն և խեթերեն բառերը).

ափ, -ոյ (ափեմ «բռնել, ձեռք քցել») — խեթ. ep(p)-, ap(p)- «բռնել, տեղ գրավել» (սակայն հնարավոր է հայ. բառի ծագումը հ.-ե. *ap- *ēp- «բռնել, վերցնել, հասնել» արմատի aph- տարբերակից, եթե, մանավանդ, ճիշտ է համեմատությունը հուն. ἀφή «շոշափում. հոդավորում. բռնում» բառի հետ).

ափն — խեթ. u̯appu- «գետափ» (քիչ հավանական է հնչյունապես, մանավանդ եթե հայ. բառը համեմատելի է հուն. ἤπειρος, դոր. ἄπειρος «ափ. ցամաք» և հ. անգլ. ōfer «ափ» բառերի հետ՝ հ.-ե. *āpero-ից. հայերենը ենթադրում է *ph-ով նախաձև և թերևս *r/n-ով հիմք՝ *āp(h)er/n-).

խանդ (խանտ) (խանդաղ-), խանձեմ «այրել» — խեթ. ḫandāiš «ջերմություն, շոգ», (և ḫantii̯āi- «հոգալ, խնամել». հմմտ. ant- «ջերմ» և hanzana- «սև»?). հայ. բառերը Հ. Աճառյանը, [ՀԱԲ, 2², էջ 329—330], հակված է բխեցնելու հ.-ե. *(s)kand- «լուսավորել. վառվել» արմատից, սակայն *kh-ով տարբերակ այլ լեզուներում չի ավանդված. հնդեվրոպական ծագման բառերի մեր աղյուսակում այս բառերը դրված են հարցականով։

հանեմ — խեթ. ḫan- «դատարկել, պարպել, ջուրը հանել» (եթե հայերենը խեթ. šanna «մեկ», šannapili- «դատարկ. առանձին», šannapileš- «դատարկել» բառերի šann-ի հետ միասին չի պատկանում հ.-ե. *sen- «առանձին, մեկուսի» արմատին. հնարավո՞ր է արդյոք հուն. ἄντλος «նավամբարի ջուր», ἀντλέω «ջուրը հանել» բառերի հետ միասին բխեցնել միևնույն հ.-ե. արմատից. քիչ հավանական է, բայց հնարավոր խեթ. բառի բխեցումը հայերենից).

հաց, -ի, -ից — խեթ. NINDAḫaz(z)it/da «մի թխվածք» (հմմտ. նաև NINDAharzazu «յուղահաց» < խուռ. ? հայ. բառն ավելի ընդհանուր իմաստ ունի և թերևս գալիս է հ.-ե. *pokti- ձևից՝ հ.-ե. *pəku̯- «եփել, թխել»).

հիղ(-ք) (հեղ, հող, հիւղ) «խրճիթ, խուղ» — խեթ. (É)ḫīla- «բակ. ցանկապատված տեղ, փարախ». Հմմտ. նաև հայտն. Lahir-ḫila քաղաքանունը (համեմատությունը հնարավոր է, եթե հիղ-ը և նրա տարբերակ հող-ը տարբեր են խուղ-ից, որ բխեցվում է *khu-lo- նախաձևից՝ հ.-ե. *(s)keu- «ծածկել». Հմմտ. հ. իռլ. cül «անկյուն. ապաստան, թաքստոց». Հնարավոր է ենթադրել երկու ձևերի բաղարկություն).

բ. մառ, բ մեռ «շյուղ, մարմնի մեջ մտնող փուշ» (բ. մառել «ծակելով խոցել» և բ. մառել «կպչել») — խեթ. marri̯a- «փշրել, մանրել (?)» (երկուսն էլ հ.-ե. mer- «տրորել» արմատի՞ց).

նուաղ «թույլ, մեղմ. թերի» — լուվ. niu̯alli- «անմեղ» (?) (համեմատությունը կասկածելի է ըստ իմաստի. հայերեն բառը հնարավոր է բխեցնել *nē-u̯al- «ոչ ուժեղ» ձևից՝ *nē- «ան-» և *u̯al- «ուժեղ լինել»?).

շաղ, -ից «ցող. կաթիլ» (շաղախ) — խեթ. šalli̯a- «հալչել, լուծվել» (?), šalu̯ina «շաղախ» (հայ. բառերը Պետերսոնը համեմատում է լիտվ. švelnùs «մեղմ, փափուկ» բառի հետ, որ այնքան էլ հավանական չէ. մյուս կողմից՝ հայ. և խեթ. բառերն իմաստով և ձևերով զգալիորեն տարբեր են).

շանթ (շանդ), -ից — լուվ. Šantaš «որոտի աստված» (հայ. բառը Պետերսոնը բխեցնում է *k'eu- «լուսավորել» արմատից ածանցված *k'u̯n̥t- ձևից, որ բերվում է նաև մեր կողմից՝ հարցականով).

տող — խեթ. tuli̯a «խորհրդաժողով, դատանստում» (հայ. տող և, թերևս, տաղ բառերը համեմատում են հ. անգլ. talu «պատմություն. շարք», հ. հյուս. tal «հաշիվ, թիվ, խոսք» և այլ բառերի հետ. եթե այս ստուգաբանությունը ճիշտ է, ապա հնարավոր է բացատրել նաև խեթ. բառը. Աճառյանը [ՀԱԲ, $4^{2}$, էջ 418] համեմատում է վրաց. toli «հավասար. հասակակից», ṭoleba «բաղդատել» բառերի հետ և բխեցնում ուրարտերենից).

տուփեմ «ծեծել, կոխոտել» — լուվ. dup(p)i-, հիեր. լուվ. *tupi- «խփել» (հայ. բառը սովորաբար բխեցնում են հ.-ե. *deph-ից, որտեղից, թերևս, նաև խեթա-լուվական բառերը, եթե նմանությունը չի՛ հիմնված բնաձայնության վրա. վերջինիս ապացույցը հայերենում դոփել բառի առկայությունն է, որ հավանաբար չի կարելի բխեցնել խեթա-լուվական աղբյուրից, եթե նրան հատուկ է եղել ձայնեղների խլացումը)։

2) Առանձին դեպքերում խեթա-լուվական և հայերեն բառերի նմանությունը կարող է պատահական լինել, եթե հայերեն բառերն իրոք հայկական հողի վրա կատարված կազմություններ են (ինչպես կարծում են հայագետները, այդ թվում՝ նաև Աճառյանը), և եթե մենք գործ չունենք փոխառությունների և հայկական ձևերի բաղարկության հետ.

սպանդ «զոհ. զոհաբերություն» (սպանանեմ-ի՞ց) — խեթ. šippand- «զոհաբերել, զոհել».

քորոց (քորեմ-ի՞ց) — խեթ. URUDUkuruzzi «կտրելու գործիք»։

3) Հետևյալ դեպքերում ավելի հավանական է հայերեն բառերի իրանական ծագումը, և խեթա-լուվական ու հայերեն բառերի նմանությունը պատահական պիտի համարել.

աշխար «ողբ, լաց, կոծ,», աշխարեմ «ողբալ, կոծել» — խեթ. išḫaḫru- (ešḫaḫru-) «արտասուք, լաց», íšḫaḫruu̯a- «լալ».

իշխան, իշխեմ (հմմտ. իրան. xšī- «իշխել, տիրել» բայը և նրա ածանցյալները) — խեթ. išḫa-, հայց. išḫan- «տեր» լուվ., հիեր. լուվ. u̯ašḫa-).

*հպատակ* (< *իրան.* hu-pātak-. *հմմտ. ավ.* hupāta- *«լավ. պաշտպանված»*) — *խեթ.* ḫapati- *«հնազանդ. հպատակ. ծառա (?)»։*

*4) Հետևյալ դեպքերում խեթա-լուվական և հայերեն բառերի զուգադիպությունը, թերևս, պատահական չէ, բայց հայերեն բառերը հնարավոր չէ բխեցնել խեթա-լուվականներից.*

*ջախել, ջախջախել — խեթ.* zaḫ(ḫ)- *«խփել»* zaḫḫāi- *«ճակատամարտ, մարտ, կռիվ». այստեղ նախ՝ խեթ.* z > *հայ. ջ անցումը չի բացատրվում, եթե նկատի առնենք, որ պայթականների երկրորդ քմայնացումը տեղի է ունեցել հնագույն շրջանում, երկրորդ՝ կան նաև կովկասյան զուգահեռներ՝ վրաց.* ǰax- *«խփել, զարկել», ճան.* ǰax- *«մրճահարել», ուտ.* caxpesun *«ծեծել, փշրել, կոտրել» [հմմտ. Աճառյան, ՀԱԲ, 4², էջ 119].*

*տորր «տունկի ճյուղ, խաղողի որթի թել» (տորրել «ճյուղավորվել, ճյուղեր արձակել», տորրանոց «այգի») — հիեր. լուվ.* tuu̯arš- *«խաղողի որթի ճյուղ»*[10] *(= հուն.* θύρσος. *հայ. և խեթա-լուվական ձևերը ձևով տարբեր են և ենթադրում են տարբեր աղբյուրներ)։*

*Վերևում մենք առիթ ունեցանք խոսելու այն մասին, որ եթե խեթ.* ḫan- *«դատարկել, պարպել, ջուրը հանել» բառն իրոք կապ ունի հայ.* **հանեմ** *բայի հետ, և որ եթե վերջինս բխում է հ.-ե.* *sen- *արմատից, ապա հնարավոր է խեթ. բառի աղբյուրը համարել հայերենը։ Այս ենթադրության հնարավորության դեպքում կարելի է մատնանշել խեթա-լուվական մի շարք այլ բառեր, որոնց աղբյուրը կարող էր լինել հայերենը։ Արդեն հիշված բառերից կարելի է նշել հայ.* հաց (< *հ.-ե.* *pok$^{u}$ti-) *և խեթ.* NINDAhaz(z)it/da *«մի թխվածք», հայ.* տող (< *հ.-ե.* *del-/dol-) *և խեթ.* tulija- *«խորհրդաժողով, դատարանատուն»։ Առաջ տանելով վերլուծությունը կարելի է բացատրել այս տիպի հնարավոր և այլ բառեր.*

*ալի-ք* (*polijo-՝ *հ.-ե.* *pel-*ից*) — *լուվ.* a(a)li- *«ծով (?)». առկա է որպես հատուկ անունների բաղադրիչ.*

*ասր* (*հ.-ե.* *pok'u-r) — *խեթ.* SÍGešri- (SÍGeššari-) *«բուրդ, ասր».*

*թլիփ «եզր» — խեթ.* telipuri- *«շրջան, գավառ (?), երկրամաս (?)». հայ. բառի ծագումն անհայտ է, բայց այն դժվար է բխեցնել խեթ. բառից, որ ավելի մասնավոր իմաստ ունի.*

*լուծ* (*հ.-ե.* *i̯ugom) — *խեթ.* luzzi- *«կոռ, պարտադիր աշխատանք». մի կողմից՝ հայ. բառի հնդեվրոպական ծագումն անկասկած է և մյուս կողմից՝ խեթ. բառի իմաստը՝ նեղ, եթե դրանք ընդհանրապես կապված են.*

*խուղ (հիւղ, հիղ, հեղ)* (*հ.-ե.* *khu-l-) — *խեթ.* Éḫīla *«բակ. փարախ. գոմ»*

*հարկանել* (*հ.-ե.*) *perg-) — *խեթ.* ḫark- *«ոչնչանալ»,* ḫarganu- (ḫarqanu-) *«ոչնչացնել». քիչ հավանական է խեթ., հայ. և իռլ. ձևերի հիման վրա հ.-ե. մի նոր արմատ վերականգնելը, մանավանդ որ հայ. և իռլ. ձևերը կարելի է բխեցնել հ.-ե.* *perg-*ից.*

*մատաղ «մատղաշ, դեռատի, մանկահասակ. մատաղ կենդանի՝ զոհելու ենթակա, զոհ»* (*հ.-ե.* *mad-) — *լուվ.* SISKURmantalli- *«զոհատեսակ». հայերեն բառի իմաստն ավելի լայն է, և նրա բխեցումը լուվերեն բառից ավելի քիչ հավանական).*

*տաղ «երգ. ոտանավոր»* (*հ.-ե.* *del-. *հմմտ. նաև տող*) — *խեթ.* tallija-

[10] *Ըստ Գրեպինի. Մերիջին* [Meriggi, 1962, 136] *տալիս է «խաղողի այգի» իմաստը։*

«ձայն տալ, հայցել (աստվածներին)» (հմմտ. նաև talaja talalata օտարազգի. (հայ. > խեթ. ?) կապակցությունը միասին երգի մեջ).

փող «նեղ անցք. փողրակ, խողովակ», փողրակ «ջրի խողովակ» — խեթ. DUGpulla- «մի տեսակ աման», DUGpulluri(ja)- «մի տեսակ աման». հայ. բառերի ծագումը հայտնի չէ (հ.-ե. *(s)p(h)el- «ճեղքել» արմատի՞ց. հմմտ. հ. վ. գերմ. spuolo «կոճ. փող, խողովակ, փետրափող»), բայց իմաստները ավելի լայն են:

Մի քանի խոսք խեթական թագավորության բնիկների՝ խաթերի, լեզվի՝ հայերենի վրա թողած հնարավոր ազդեցության մասին: Այդ ազդեցությունը կարող էր արտահայտվել անմիջական ճանապարհով և այլ լեզուների, հատկապես խեթերենի, միջնորդությամբ: Ստորև բերվող զուգադիպությունների ցանկը, որից բացառված են մանկական և բնաձայն բառերը (հմմտ. հայ. մամ և խաթ. mamma «մայր»), հավաստի ապացույցներ չի տալիս նման ազդեցության մասին. քիչ թե շատ հավաստի կարող էր լինել հայ. ջնար—խաթ. zinar զուգահեռը, եթե նախ՝ խաթ. z-ի դիմաց հայերենը չունենար ջ, որ համեմատաբար ուշ ձեռքբերում է, երկրորդ՝ խաթ. բառը (նրանից փոխառված է խեթ. համարժեքը) բնիկ լիներ, կամ չունենար Առաջավոր Ասիայում, հատկապես սեմական լեզուներում տարածված՝ եբր. kinnōr (որտեղից հուն. κινύρα) ու արամ. kinnārā, ասոր. kennārā «կիթառ» (որտեղից հայ. քնար) բառերի հետ և երրորդ՝ հայերեն ջնար-ի և քնար-ի հետ միասին չլինեին վրաց. čianuri «ջութակ» և knari «քնար» տարբերակները, որոնք ենթադրում են նույնպես տարբեր աղբյուրներ (knari-ն հայերենի՞ց՝ նրան բնորոշ i-ի անկմամբ).

ահա — խաթ. ahā «ծիսական մի կանչ».

հագածիմ «կերուխումի ետևից ընկնել» (հագածեալ «ագահ», հագածելի «ախորժելի, հաճելի») — խաթ. LUḫaggazuel «մատռվակ (?)».

ջնար — խաթ. zinar- «Իշտարի գործիք» և «երաժշտությո՞ւն (բացականչություն)».

փաղ-, բաղ- «համա-, -կից» — խաթ. pala (bala, ṷala) «և, նաև»:

Վերջապես նշենք, որ խեթական տեքստերում որպես փոխառյալ երկու թեք սեպանշանով նշված բառերի մեջ հանդիպող akkuša «որսափոսեր, ծուղակներ» ձևը (հգն.) հիշեցնում է հայ. ակաւ բառը, որի ծագումը հայտնի չէ. հմմտ. և akkuša-ի համար խեթ. aggala- «ակոս», որ Բենվենիստը [Benveniste, 1962, 107] համեմատում է հուն. ὄγμος «ակոս» բառի հետ:

Հայերենի խեթական փոխառությունների փոքրաքանակության պայմաններում դժվար է հայերենում փնտրել խեթական ծագման ածանցներ: Եղած մասնակի զուգադիպումները պետք է համարել կամ պատահական, կամ երկու լեզուներում հնդեվրոպական միևնույն աղբյուրից ժառանգած: Հատկապես աչքի զարնող է գործիքի անուններ կազմող -ոց-ի (հալոց (հալեմ), հորոց (հորեմ) և այլն) զուգադիպությունը խեթ. -uzzi համատիպ ածանցի հետ (išḫuzzi- «գոտի» (išḫija- «կապել»), URUDUkuruzzi- «հատոց, կտրելու գործիք» և այլն). որանցից հայերենը բխեցվում է հ.-ե. *-o-sko-ից, որից խեթական ածանցը չէր կարող ծագել. նրա համար ենթադրելի է *-tl-ով հնդեվրոպական ձև. այս դեպքում նմանությունը կամ պատահական է (եթե փոխառությունը բացառվում է), կամ, թերևս, հայերենի՝ նույն *-tl-ով ձևից բխելու արդյունք (հմմտ. նաև լիկ. atanazi — հայ. ատենացի):

## Ե. ՀԱՅԵՐԵՆԸ ԵՎ ՀԱՅԱՍԵՐԵՆԸ

### ա) ՀԱՅԱՍԱՅԻ ԵՎ ՀԱՅԱՍԵՐԵՆԻ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅԱՆ ՎԻՃԱԿԸ

*Մ. թ. ա. XIV—XIII դդ. խեթական աղբյուրները պատմում են* Ḫaiaša-Azzi *երկրի մասին, որ դիմադրավել է խեթական պետությանը և պատերազմներ մղել նրա դեմ։ Թե որքա՜ն կարևոր դեր է խաղացել Հայասան հին աշխարհի պատմության մեջ և որքա՜ն վտանգավոր եղել խեթական պետության համար, երևում է թեկուզ նրանից, որ հետազոտողները այդ պետության արևելյան և հարավ-արևմտյան հարաբերությունների չորս հիմնական ոլորտներից մեկը համարում են հայասականը՝ դնելով այն խուռականի, աքքադականի և եգիպտականի կողքին* [Kronasser, 1956, 20]։

*Դեռևս 1920-ական թթ. հետազոտողները ուշադրություն են դարձնում* Ḫaiaša *երկրի անվան և հայերի ինքնանվանման* (Hay-k') *նմանությանը։ Հայասա երկրի աշխարհագրական դիրքի, քաղաքական պատմության և լեզվի մասին գրվում են զանազան ուսումնասիրություններ, որոնցից առանձնապես հիշատակելի են Է. Ֆոռերի* [Forrer, 1931], *Է. Կավենյակի* [Cavaignac, 1932. 1934], *Ն. Ադոնցի* [Adontz, 1946], *Գ. Ղափանցյանի* [Капанцян, 1948], *Հ. Մանանդյանի* [Манандян, 1956], *մեր* [Djahukian, 1961. Джаукян, 1964] *և Ի. Մ. Դյակոնովի* [Дьяконов, 1968] *աշխատությունները։*

*Հայասա երկրի տեղադրության և սահմանների մասին հետաքրքրական տեղեկություններ են պարունակում Վ. Խաչատրյանի «Խեթական պետության արևելյան շրջանները» աշխատությունը և զանազան հոդվածները* [Хачатрян, 1971. 1972. 1973]։

*Մեզ հետաքրքրող հարցի՝ Հայասայի լեզվի և հայերենի փոխհարաբերության մասին գիտնականները հայտնել են երեք տարբեր կարծիքներ.*

*1) Ոչ միայն Հայասայի անունն է կապված հայերի անվան հետ, այլև հայասացիները հայերի անմիջական (ուղղակի) նախորդներն են, նրանց լեզուն՝ հայերենի հիմքը։ Այս կարծիքը ամենից ավելի հստակ կերպով ձևակերպված է Գ. Ղափանցյանի կողմից։ Սակայն երբ նկատի ենք առնում, որ Գ. Ղափանցյանը հայերենը համարում է խառնածին լեզու՝ հնդեվրոպական և ոչ հնդեվրոպական (այդ թվում՝ խուռա-ուրարտական) տարրերի խառնուրդով, և որ, սրա հետ կապված, նույնպիսի բնույթ է վերագրում հայասերենին, ապա նրա վարկածի արժեքը զգալիորեն պակասում է։ Նշենք, որ հայ որոշ հետազոտողներ դեռևս շարունակում են պաշտպանել հայասերենի՝ հայերենի ուղղակի հիմք լինելու տեսակետը՝ առայժմ առանց լեզվական հիմնավորման։*

*2) Հայասայի և հայերի անունների նմանությունը պատահական է, և Հայասան ոչ մի կապ չունի Հայաստանի ու հայերի հետ։ Այս տեսակետը ամենից ավելի հստակորեն ձևակերպել է Ի. Մ. Դյակոնովը, որ Հ. Տաշյանի նման* հայ *անունը բխեցնում է խեթերի անունից* (hati->հայ), *իսկ Հայասայի լեզվին, ըստ Գ. Ղափանցյանի բերած զուգահեռների, հատկացնում հիմնականում խուռական բնույթ*[11]։ *Նշենք, որ վրացական որոշ հետազոտող-*

[11] *Այս կարծիքն է հայտնել նաև Վ. Բենեցյանուն* [Бэнецьяну, 1961, 105—106]՝ *նշելով, որ հայասական անձնանունների և դիցանունների որոշ բաղադրիչներ հանդիպում են նաև նուզյան աղյուսներում* [*հմմտ.* Purves, 1943]։ *Իրականում նուզյան տեքստերի*

ներ կապ են տեսնում Ḫajaša-ի և Կողքիսի հին անվան՝ Aza-ի միջև, թեև այս տեսակետը չի հիմնավորվում այլ կարգի տվյալներով։

3) Հայասայի անունը կապված է հայերի անվան հետ, բայց հայասերենը հայերենի անմիջական հիմքը չէ, այլ հայերենից տարբեր հնդեվրոպական լեզու, որ հանդես է գալիս նրա մեջ որպես կողմնակի շերտ (ենթաշերտ, սուբստրատ)։ Այս տեսակետը հայտնել է տողերիս գրողը՝ հենվելով հայասական անունների փոքրասիական և հատկապես խեթա-լուվական զուգահեռների վրա, որոնք թվով գերակշռում են Գ. Ղափանցյանի և ուրիշների բերած խուռական զուգահեռներին։ Ըստ այս տեսակետի Հայասայի բուն լեզուն ցեղակից է խեթա-լուվական լեզուներին, իսկ հայերենը ձևավորվել է արմենների լեզվի հիմքի վրա՝ հայասացիների լեզվի ուժեղ ազդեցությամբ. դրանով էլ բացատրվում է haj և armen անունների փոխհարաբերությունը։

## բ) ՀԱՅԱՍԱԿԱՆ ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԸ

Հայտնի է, որ Հայասայի լեզվի մասին գաղափար են տալիս միայն հատուկ անունները, որոնք երեք կարգի են՝ անձնանուններ, դիցանուններ և տեղանուններ։ Նախքան դրանց հանգամանալից քննությունը, հարկ ենք համարում Հայասայի վերաբերյալ մեր անգլերեն և ռուսերեն աշխատությունների [Djahukian, 1961. Джаукян, 1964] համեմատությամբ երեք վերապահություն անել։

1) Այստեղ քննարկումից հանված են Իշուվայի ու այլ երկրների հատուկ անունները, և խոսվում է միայն Հայասա-Ազզիի հատուկ անունների մասին։ Սա արվում է մի կողմից՝ քննության միասնությունը չխախտելու և օտարամուտ տարրերը բացառելու նպատակով, մյուս կողմից՝ Իշուվայի լեզվի վերաբերյալ մեր եզրակացությունների փոփոխության հետևանքով. եթե նախկինում մենք առանց բավարար քննադատության ընդունել էինք Գ. Ղափանցյանի կարծիքը Հայասայի և Իշուվայի բնակչության լեզվական ընդհանրության մասին, ապա այժմ հակված ենք կարծելու, որ Իշուվայի բնակչությունը եղել է խուռալեզու կամ խոսել է խուռերենին մոտ լեզվով։ Այս կապակցությամբ հանված են Aiššiia և Arihpizzi- անձնանունները, որոնցից առաջինը պատկանել է Հայասայի Դուկկամային համանուն պախուվական Դուգամայից ծագող մի անձնավորության, երկրորդ՝ իշմերիգացի մեկին։ Հանված է նաև Gabildīš-ը, որի անձնանուն լինելը կասկած է հարուցում[12]։

2) Մատնանշվում են միայն այն զուգահեռները, որոնց բնույթը որևէ կասկած չի հարուցում, որոնց դեպքում գիտնականների եզրակացությունները հիմնականում միանման են։ Ավելի քիչ տեղ են գրավում համապատասխան զուգահեռներով չհիմնավորվող ստուգաբանական մեկնությունները։

3) Նախորդ աշխատության լույս տեսնելուց հետո հանդես են եկել նոր

---

Ann-, Mutt-, mu- տարրերը հնանատոլիական ծագում ունեն, -ni, -li տարրերը ընդհանուր են հնանատոլիական և խուռական հատուկ անունների համար, որոշ կարգի նմանություններ էլ (հմմտ. նուզ. Mar(r)- և հայաս. Mariia-) հավանաբար պատահական բնույթ ունեն. Իզուր չէ, որ խեթերը խստորեն տարբերում էին հայասացիներին խուռիներից։

12 Կապ կա՞ արդյոք մի կողմից՝ Išmeriga-ի անվան և խեթ. išmeri- «սանձ» բառի (հ.-ե. *ismen/r-՝ ըստ Է. Լարոշի), մյուս կողմից՝ Gabildīš-ի և Gapiliuanta տեղանվան (Gapil(i)- բաղադրիչների միջև։

ուսումնասիրություններ ու փաստեր, որոնք մասնակիորեն փոխել են հեղինակի տվյալները և եզրակացությունները։ Այս բոլորն անհրաժեշտ են դարձրել վերստին անդրադառնալ Հայասայի լեզվի հարցին, հաշվի առնել եղած քննադատական դիտողությունները և կատարել որոշ ճշտումներ [Ջահուկյան, 1976]։ Դիտողությունները երկու կարգի են՝ ընդհանուր և մասնակի։ Ընդհանուր բնույթի դիտողությունն այն է, որ հայասական նյութն անբավարար է հիմնավոր եզրակացություններ անելու համար։ Սրա հետ ընդհանրապես չի կարելի չհամաձայնել, բայց հարկավոր է նկատի առնել, որ նախ՝ երբեմն բավական ճիշտ եզրակացություններ են արվել նաև ավելի քիչ փաստերի հիման վրա և երկրորդ՝ այդ նույն հիմունքով պետք է մերժվեն նաև Հայասայի մյուս հետազոտողների եզրակացությունները։ Մասնակի դիտողությունները վերաբերում են առանձին փաստերի և ստուգաբանությունների, որոնք մեր քննադատներին բավարար չափով հիմնավորված չեն թվում։ Այս կապակցությամբ կարելի է ասել հետևյալը. նախ՝ մեր քննադատների բերած փաստերը քննության առնված հատուկ անունների ընդհանուր թվի համեմատությամբ մեծ թիվ չեն կազմում և քննադատության ճիշտ լինելու դեպքում էլ ընդհանուր եզրակացությունները չեն խախտում (մանավանդ եթե նկատի առնենք մեր արած վերապահումը խեթական հատուկ անունների վերաբերյալ). երկրորդ՝ մեր բերած մի շարք ստուգաբանություններ առաջարկված են ուրիշների կողմից կամ հենվում են ուրիշների հայտնի եզրակացությունների վրա, սակայն մեր քննադատները, չառարկելով դրանց դեմ առանձին վերցրած (հմմտ. Anniịaš, Muttiš, Terittituniš և այլն), առարկում են մեր աշխատության դեմ, որտեղ դրանք ի մի են բերվում և հիմք տալիս համապատասխան եզրակացությունների համար. երրորդ՝ որոշ դեպքերում մեր ընդդիմախոսները կրկնում են այն, ինչին պատասխանված է մեր ռուսերեն աշխատության մեջ [Джаукян, 1964, 7], և ինչին ավելորդ ենք համարում այստեղ վերստին անդրադառնալ։ Առանձին հարցերի մասին ավելի հանգամանորեն կխոսվի հայասական հատուկ անունների քննության ժամանակ։

Մեզ ավանդված բուն հայասական անձնանուններն են Anniịa- [An-ni-ịa-], Ḫuqqanā- [Ḫu-uq-qa-na-a-], Karanni- [Kar-an-ni-], Mariịa- [Ma-ri-ịa-], Mutti- [Mu-ut-ti-], U̯annī- [U̯a-an-ni-i-]:

Այս անձնանուններից երեքի խեթա-լուվական բնույթը կասկածներ չի հարուցում։ Anniịa-, Ḫuqqanā- և Mutti- անձնանուններն ունեն խեթա-լուվական վստահելի զուգահեռներ, որոնց հիմքերը միանգամայն գոհացուցիչ կերպով մեկնաբանվում են հնդեվրոպական ծագում ունեցող խեթա-լուվական հասարակ անուններով։ Նուզիի աղյուսների հատուկ անունների հետազոտող Պ. Պուրվեսը An(n)-, Mutt- բաղադրիչներով հատուկ անուններին անվերապահորեն վերագրում է փոքրասիական-խեթա-լուվական ծագում։ Հավանական է նաև Karanni-ի խեթա-լուվական-փոքրասիական բնույթը։

Հայաս. Anniịa- անվան համար հմմտ. խեթ. և լուվ. Anna-, Annania-, Annanza-, Analla-, Animaššani-, Annitti-, Anniu̯ašu-, Anniu̯iịani-, (ար.), Annita- (իգ.)։ Սրանք, ըստ Է. Լարոշի և այլ հետազոտողների, կազմված են խեթ. anna- և լուվ. anni(ịa)- «մայր» հիմքերից, որոնք ծագում են հ.-ե. *(H)an- «արական կամ իգական նախնի» արմատից. այս արմատն ամենայն հավանականությամբ ունի մանկական բնույթ և տարած-

ված է նաև ոչ հնդեվրոպական լեզուներում (թյուրքական, աբխազ-ադըղեական և այլն)։ Բերված հատուկ անունների խեթա-լուվական բնույթը հավաստելու համար հիմք է ծառայում երկու հանգամանք. ա) թեև ըստ Գ. Ղափանցյանի հայասերենի Anni̯a- անվան նման անուններ կրում են նաև խուռիական (Anni̯a), եգիպտական (Ania) ծագում ունեցող անձինք, բայց նախ՝ խուռիական անունը ըստ Պուրվեսի պետք է համարել խեթա-լուվական ծագման, և երկրորդ՝ խուռիերենում ու եգիպտերենում չկա an- «մայր» անունով արմատ. բ) այդ բաղադրիչով հատուկ անուններ տարածված են գրեթե ողջ Փոքր Ասիայում, թեև ուշ շրջանում դրանք կարող են խառնված լինել լատինական և քրիստոնեական ծագում ունեցող անունների հետ. այդ հատուկ անունների մեջ հանդիպում են ոչ միայն իգական, այլև արական անձնանուններ՝ հատկապես փռյուգիական, իսավրական, կարիական։ -i̯a-ն փոքրացուցիչ-փաղաքշական բնույթի մասնիկ է, որ տարածված է հնդեվրոպական և ոչ հնդեվրոպական լեզուներում։

Հայաս. Ḫuḫḫana անձնանունը զուգահեռներ ունի Ḫuḫ(ḫ)a- բաղադրիչով խեթական անունների մեջ՝ Ḫuḫḫazitti-, Ḫuḫanani-, Ḫuḫarmati-, Ḫuḫa-šarpa-, Ḫuḫazulma-, որոնք, ըստ Է. Լարոշի, ծագում են խեթ. ḫuḫḫa- «պապ» հիմքից[13]։ Այս հիմքը հանդիպում է նաև խեթա-լուվական այլ լեզուներում (հիեր.-լուվ. ḫuḫa-, լիկ. χuga «պապ») և գալիս է *(H)au̯(H)o- «պապ (մոր կողմից)» հիմքից (այստեղից՝ հայ. հաւ «պապ»)։ Համանմանպես մոտ է հայասական անձնանունը լիկիական ձևին։ Սովորաբար այս անուններին են միացնում նաև լիկիական Γογγ; անձնանունը [Heubek, 1959, 62]։ Լարոշը բերում է նաև կապադովկյան (Ḫ)ugani̯a [(Ḫu)-ga-ni-a] անձնանունը (ըստ ICKI 96, 16)։

Հայաս. Mutti- անձնանվան համար Յ. Ֆրիդրիխը [KF, 1, 359—379] նշում է խեթ. Muu̯atti- (=լիկ. Μοτατς; անձնանունը)՝ ենթադրելով u̯a > u անցում (կոնտրակցիա)[14]։ Ֆրիդրիխի կարծիքն ընդունում են Գ. Ղափանցյանը և Է. Լարոշը։ Muu̯a- (>Mu-) բաղադրիչը գալիս է խեթա-լուվական muu̯a- «ուժ» հիմքից, որ ծագում է հ.-ե. *meu̯ə-ից «շարժել»։ Այս կարծիքը հաստատվում է երկու այլ փաստով. ա) -mu- բաղադրիչը հանդիպում է նաև հայաս. Tärü-mu- դիցանվան մեջ, որի Tärū-ն նույնական է խեթական Tarau̯aš դիցանվանը, և հանդիպում է նաև խուռիների մոտ (համեմ. նաև խեթ. Tāru-lilli- „Tāru- աստծուն նվիրված, աստվածային»)։ Ինչպես խեթ. Kapparii̯amu- դիցանունը հետազոտողները մեկնաբանում են որպես «Kappari̯a-ի ուժ», այնպես էլ Tārūmu-ն կարելի է մեկնաբանել որպես «Tārū-ի ուժ». բ) ինչպես կտեսնենք, ամենայն հավանականությամբ համապատասխան u̯a > u անցում առկա է նաև հայաս. Karanni-ի մեջ՝ խեթ. Karau̯ani-ի համեմատությամբ, և, հետևաբար, ընդհանուր առմամբ հայասերենին հատուկ է։

Եթե հայաս. Karanni- անձնանունը իրոք կապված է խեթ. Karau̯ani- անձնանվան հետ (հնչյունական հարաբերությունը այնպիսին է, ինչպես հա-

---

[13] Է. Լարոշը [Laroche, 1952, 111—112], հիշատակում է նաև ḫuḫa- (թանկագին քարի անուն) բառը (հատկապես մեկ ḫ-ով ձևերի համար), բայց այն հավանական է համարում վերևում բերված կարծիքը։

[14] Mu-u̯a- > mu- անցման համար հմմտ. նաև Mutta, Muttanani, Mutalli- (Muu̯atalli-ի տարբերակը), Panamuti- [Laroche, RHA, 17, 57, 1955, BSL, 55, 1959]։

յաս. Mutti- և խեթ. Mu̯atti-, համմտ. նաև. Kunni- և Ku̯anni-), իսկ այդ լիովին հավանական է, ապա նրա նկատմամբ կարելի է կիրառել այն ստուգաբանությունը, որ տալիս է Է. Լարոշը Karau̯ani-ի համար: Ըստ Է. Լարոշի [Laroche, 1952, 136] վերջինս կազմված է խեթ. karau̯ar «եղջյուր» բառից, որ, ինչպես հայտնի է, ծագում է հ.-ե. *k'erəu- հիմքից |- խեթ. -ar կամ *k'erə- հիմքից -|- խեթ. -u̯ar [Kronasser, 1956, 64—65] և կապված է խեթ. ḫaršan «գլուխ» բառի հետ: Այս դեպքում խեթ. անձնանվան համար կարելի է նշել հուն. κάρανον «գլուխ», լատ. κάρανος «տեր» և մակեդ. Κοράνος (կամ κοράνος — հատուկ անուն՝ «թագավոր») զուգահեռները [Frisk, GFW, 1, 788]: Այս բոլոր ձևերի արմատն է հ.-ե. *k'er- «մարմնի վերին մաս՝ գլուխ, գագաթ, եղջյուր», որտեղից հայ. սար: Եթե այս ստուգաբանությունը ճիշտ է, Karanni-ի աղբյուրը, ի տարբերություն հայերենի, centum տիպի լեզու է: Ուգարիտյան տեքստերում հանդիպող ակկադ. $^{m}$Kar-ra-nu անձնանվան հետ նմանությունը այս բացատրության դեպքում պետք է պատահական համարել, եթե չենթադրենք փոխառություն:

Հ.-ե. միևնույն արմատից ծագող խեթ. ḫaršan «գլուխ» բառը բավական տարածված բաղադրիչ է խեթա-լուվական հատուկ անուններում՝ Ḫaršanḫila-, Ḫaršumna- և այլն:

Պակաս հավանական է հետևյալը. Karanni-ն բաժանել Kar- և anni- բաղադրիչների՝ երկրորդը նույնացնելով հայտնի Annija-ի մեջ ևս արտահայտված anni- «մայր» բառի և առաջինը համեմատելով կար. Kar-, լիկ. kar-, ker- (kerēi<*karon) բաղադրիչների հետ (համմտ. Karḫuḫa- դիցանունը, որի երկրորդ բաղադրիչը հիշյալ խեթ. ḫuḫḫa- «պապ» բառն է). այս Kar-ը նույնացվում է կարիացիների անվան հետ և հանգեցվում է Kar- դիցանվանը [Гиндин, 1967, 108—114]:

Uannī- անձնանունը Է. Լարոշը [Laroche, 1952, 114] բխեցնում է լուվ. u̯an(n)iš հատուկ անունից, որի իմաստը, սակայն, նա հետագայում որոշում է որպես «քարի սյուն, կոթող» և համեմատում հիեր.-լուվ. u̯an-(a)i- նույնիմաստ բառի հետ [Laroche, 1959, 106]: Նա հիշատակում է նաև հիեր.-լուվ. Uana անձնանունը: Մենք կավելացնեինք Οὐαν- բաղադրիչով այն փոքրասիական հատուկ անունները, որոնք կապ չունեն հուն. Fαναξ-ի հետ: Հին անատոլիական Uanni-ն Վ. Դրեսլերը նույնացնում է փռյուգ. Uena-uja (<Uana-u̯ija) անվան առաջին մասի, այլև (նվազ հավանականությամբ) անատ. Tuttuu̯ani-, Urau̯ani- և այլ հատուկ անունների -u̯ani բաղադրիչի հետ [Dressler, 5, 10, 1, 1964, 110]: Այս u̯en- հիմքով անունները չպետք է շփոթել u̯in- հիմքով անունների հետ:

Marija- անձնանվան համար հնարավոր է երկու ենթադրություն:

1) Հայաստանի անձնանունների մեջ փոքրասիական տարրի ակնհայտ դերակշռության պայմաններում պատահական պետք է համարել նմանությունը խուռիական, ակկադական ու այլ անձնանունների և համեմատել խեթ. Marakkui-, Maraššali-, Maraššalija-, պիսիդ. Μαρα-μο(ας), բիթ. Μαρας, լիկ. Marra, Ια-μαρας, Οὐα-μαρας անձնանունների և լիդ. Marivda դիցանվան, այլև Mer-, Meri- բաղադրիչներով փոքրասիական այլ անձնանունների հետ: Փոքրասիական Mara-/Mari-/Meri- բաղադրիչի նախնական իմաստը պարզ չէ. ոմանք այն համեմատում են լիկ. ᴮ mara- «ավագների խորհուրդ», ո-

մանք լիկ. marti «սահմանում է, կարգադրում է, հրամայում է», ոմանք խեթ. $^{GIŠ}$māri- «նիզակ» բառերի հետ [Гиндин, 1967, 116][15]։

2) Marija-ն կարելի է համեմատել խուռ. marijannu և ուրարտ. mari- բառերի հետ, որոնք ծագում են հ. հնդկ. márya- «այր, երիտասարդ, կտրիճ, սիրեկան, փեսացու» բառից. խուռերեն բառը մեկնաբանվում է որպես «երիտասարդ մարտիկ, կառամարտիկ, ազնվական ազնվականության ներկայացուցիչ, ազնվական» [Friedrich, 1952, 322, 327], ուրարտականը՝ որպես «ազնվական» [Дьяконов, 1963, 327]. Հայասական ձևը զուրկ է խուռերենին բնորոշ -(a)nni- [ակկադականացված ձևով՝ -(a)nnu] բաղադրիչից և միաժամանակ, ի տարբերություն ուրարտերենի, ունի -a- տարրը, այսինքն՝ հայասերենը կամ բառն առել է հին հնդկական ցեղերից անմիջաբար, կամ խուռական միջնորդությամբ, բայց դեն նետելով իր համար ոչ բնորոշ տարրը [Marija-ի համար հմմտ. նաև Иванов, ПС, 3, 1979, 101—112][16]։

## գ) ՀԱՅԱՍԱԿԱՆ ԴԻՑԱՆՈՒՆՆԵՐԸ

Մեզ ավանդված հայասական դիցանուններն են Baltaik [Ba-al-ta-ik], Šillili... [Ši-il-li-li...], Tārūmuš [Ta-a-ru-u-mu-uš], Terittitūniš [Te-ri-it-ti-tu-u-ni-iš], Unagaštaš [U-na-ga-aš-ta-aš], Zakk(an...) [Za-ak-k(an-...)], այլև սկզբից վնասված նշանախմբեր ունեցող և ենթադրաբար վերականգնվող (Izzišt)anuš [(Iz-zi-iš-ta)-an-nu-uš] և (Kar)ḫuḫuš [(Ka-ar)-ḫu-ḫu-uš]։ Հանդիպում են նաև հայաս. աստվածների՝ գաղափարագրական ($^{d}$U.GUR, $^{d}$Inanna) և գաղափարագրական-լրացական [$^{d}$U takšanaš «հավասարության աստված» (խեթ. takšatar, սեռ. takšannaš «հավասարության») կամ «միջօրեի աստված» (խեթ. takšan, սեռ. -aš «կապ, հոդ. միջօրե»)[17] նշանակումներ։

Հայասական դիցանուններից երկուսը՝ (Kar)ḫuḫuš (եթե հավաստի է Kar- բաղադրիչի վերականգնումը), Tārūmuš, փոխառյալ աստվածություններ են։ Սրանցից առաջինը զուգահեռ ունի լուվ. Karḫuḫaš-ի [Kar-ḫu-ḫa-aš] մեջ, որ Կարքամիշի գլխավոր աստվածություններից երրորդն էր [Meriggi, 1962, 70]: -ḫuḫuš (հայաս. -ḫuḫuš) բաղադրիչը նույնն է հայաս. Ḫuqqanā-ի կապակցությամբ քննված ḫuḫ(ḫ)aš «պապ» խեթա-լուվական բառի հետ և ցույց է տալիս, որ հայասացիները դիցանունն ամբողջությամբ փոխ են առել, առանց կապելու իրենց համապատասխան ḫuqqa- «պապ» բառի հետ. սա

---

15 Ի միջի այլոց, Լ. Ա. Գինդինը Marija-ն քննում է հին անատոլիական հատուկ անունների մեջ առանց որևէ վերապահության։ Է. Լարոշը [Laroche, 1952, 113] համահունչ խեթական Marri- անձնանունը համեմատում է խեթ. marri «դենը, այն կողմը» կամ marrija- «թափել» բայի հետ։ Հալիսի հետ նույնացվող $^{ÍD}$Maraššanta-ն ($^{ÍD}$Maraššanija-) մեկնաբանվում է որպես «կարմիր գետ», և նրա անունը կապվում լուվ. mar(r)u(u̯a)š «կարմիր» բառի հետ։

16 Հայերենում առկա այնպիսի ակնհայտ հնդկական փոխառության համար, ինչպիսին է ջամբ «ուտելիք, կերակուր» (ջամբել «մանրելով կերցնել, սնուցանել, խնամել») կարելի է ենթադրել հայասական միջնորդություն։

17 Takšanaš-ի առաջին մեկնությունը Է. Ֆոռերինն է, երկրորդը՝ մերը։ Կան նաև $^{URU}$Takšana քաղաքանուն և Takšanuman անձնանուն (-uman-ը ածանց է=հայ.-ացի):

երևում է նաև դիցանվան հիմքի այլ ձայնավորումից (a-ի փոխարեն u)։ Tārūmuš-ի Tārū- բաղադրիչը, ամենայն հավանականությամբ, նույնն է խաթական Tārū-ի (ժամանակի աստված) հետ, որ, ինչպես նշվել է, ավանդված է նաև խեթերի և խուռիների մոտ։ Խեթերի մոտ այս աստծու անունից կազմված է Tārū-lılli-ն «Թարու աստծուն նվիրված, թարուական, աստվածային»։ Mutti- անձնանվան քննության ժամանակ մենք բերեցինք Յ. Ֆրիդրիխի և է. Լարոշի կարծիքը, ըստ որի mu-ն խեթա-լուվական muụa- «ուժ» հիմքի կրճատ ձևն է։ Լարոշն այդ mu-ն տեսնում է նաև Tārūmuš դիցանվան մեջ՝ նկատի ունենալով խեթ. Kapparijamuš «Կապպարյան ուժ» դիցանունը։ Այսպիսով, հայաս. Tārū-mu-ն նույնպիսի կազմություն է, ինչ խեթ. Kapparija-mu-ն և նշանակում է «Թարուի ուժ»։

Unagaštaš դիցանվան -aštaš բաղադրիչի համար Գ. Ղափանցյանը բերում է մի կողմից՝ խեթ. -ašti- ածանցով կազմությունները՝ նկատի ունենալով նաև հայ. -աստ ածանցը, մյուս կողմից՝ խուռա-ուրարտ. -išta, -išti կազմությամբ հատուկ անունները (խուռ. Enništa, Ithišta կամ Ithišti, Tarhišti, ուրարտ. Argišti)։ Մի կողմ թողնելով -išti բաղադրիչով խուռական և ուրարտական անձնանունների ծագման հարցը[18], նշենք, որ Գ. Ղափանցյանն անուշադրության է մատնում ձայնավորման տարբերությունները։ Հայասերենի -ašta-ի դիմաց խուռերենը և ուրարտերենն ունեն -išti կամ -išta, խեթերենը՝ -ašti-. վերջինս կազմում է վերացական գոյականներ չափ նշանակող ածականներից (հմմտ. talukašti- «երկարություն», palhašti- «լայնություն» և այլն). այն սովորաբար համեմատվում է սլավ. -ostь-ի հետ և բխեցվում հ.-ե. *-os-tei-ից[19]։ Խեթերենի հայկական զուգահեռները ցույց են տալիս, որ ածանցի սկզբնական դործառությունն ավելի լայն է եղել։ Եթե հայասական -ašta-ն իրոք կապված է խեթ. -ašti-ի, սլավ. -ostь-ի և հայ. -աստ-ի հետ, ապա Unagaštaš-ը կարող է հանդես գալ որպես դիցանուն վերացական երևույթի անձնավորման հիման վրա, որ հնարավոր է, բայց քիչ հավանական։ -aštaš-ի համար թերևս կարելի է ենթադրել խեթ. -ašti-ից տարբեր ծագում (*-os-tos?)։ Նշենք, որ Փոքր Ասիայում տարածված են եղել -αστα(ς)-ով և -αστις-ով վերջացող անձնանուններ՝ գերադանցապես իգական սեռի անձերի համար՝ կար. Αλαστα, փռյուգ., լիկ., պիս. Αρμαστα (պիսիդ. նաև Αρμαστις), լիկ., պիս. Ερμαστα, լիկ. Μαμαστα, պիսիդ. Μαμαστος, իսավր.-կիլ. Κρεσασεστις, փռյուգ.-լիկ. Παπυστις։ Հայաս. -aštaš-ի հարցի լուծումը շատ բանով կախված է Unag(a)-ի բնույթից, որ Ղափանցյանը թողնում է առանց մեկնաբանության՝ չգտնելով իր նշած լեզուներում համապատասխան զուգահեռներ[20]։

---

18 Բացառված չէ ուրարտ. Argišti անձնանվան՝ հ.-ե. աղբյուրից փոխառյալ լինելը։

19 Է. Բենվենիստը [Benveniste, 1962, 89], հենվելով հատկապես հայկական նյութի վրա, խեթ. -ašti-ն մեկնաբանում է ոչ թե -aš-ti, այլ -a-šti- ձևով, այսինքն՝ a-ն համարում է հիմքակազմ տարր (հմմտ. հայ իմաստ)։

20 Անհնար չէ dUnagaštaš-ի համար ենթադրել dU nagaštaš ձև (հմմտ. dU takšanaš), և այդ դեպքում nagaštaš-ը համարել ինչ-որ nagaštiš գոյականի սեռական հոլովաձև (nagaštajaš>nagaštaš). հմմտ. խեթ. nakki- «ծանր», այլև (հայերեն -աստ-ով զուգահեռների բայական ծագումը հաշվի առնելու դեպքում). nah(h)- «վախենալ. հարգել, պատվել, ակնածել, պաշտել, շրջահայաց լինել», որին վերագրում են հ.-ե. ծագում և առուգաբանորեն կապում հ. իսլ. nār «հանգիստ, պարկեշտ» բառի հետ։ Մեր վերոհիշյալ աշխատության մեջ Unagaštaš ը բխեցված էր հ.-ե. *ongṷ- «օծել» արմատից։

Անձնանունների մեջ հայկական և խեթա-լուվական մեծ թվով բացահայտ զուգահեռների առկայությունը հիմք է տալիս հավանական համարելու Tarittitūniš դիցանվան մասին Գ. Ղափանցյանի հայտնած կարծիքը, ըստ որի Teri(t)-ը համապատասխանում է խեթ. teri «երեք» և -titūniš-ը՝ հայ. տտուն, տուտն («վերջավորություն, աղի, պոչ») բառերին. ըստ այդմ ամբողջ բաղադրությունը պիտի նշանակած լինի «եռատտուն, եռագի»: Միայն թե այս դեպքում ճիշտ լինել չի կարող Terittitūniš-ի ղափանցյանական համեմատությունը հուն. Τριτών-ի հետ (Պոսեյդոնի որդու անունը), որ հակված են բխեցնելու հ.-ե. *trīto- (*triįəto-) «խոնավ տարր, ծով» նախաձևից [Pok., 1, 1096. **Frisk**, GEW, 2, 933—934][21]: Գ. Ղափանցյանը չի նշում նաև տտուն-ի հնարավոր բուն հնդեվրոպական ծագումը:

Սակայն հնարավոր է -titūniš-ի մի այլ մեկնաբանություն ևս: Սրա tit- բաղադրիչը մեծաթիվ զուգահեռներ ունի Բալկանյան թերակղզու և Փոքր Ասիայի հատուկ անունների մեջ. հմմտ. նախահուն. Τιθωνός (Էոսի ամուսինը), Τιτάν, հգն.-ᾶνες (տիտանները՝ Ուրանոսի և Գեայի զավակ-աստվածները), Τιτώ (արշալույսի դիցուհին), թրակ. -titha, -tita (բաղադրիչ Germe-titha դիցանվան և Nusa-tita անձնանվան մեջ), Τιθα, Τιθοτες (անձնանուններ), Τιτις (դիցուհու անուն), լիկ. Τιταχαζος, պիսիդ. Τιτυασσος (անձնանուններ), խեթ. Titai, Tittija (կապպադ. Didia, անձնանուններ) և այլն: Նկատի ունենալով Հին Փոքր Ասիայի բառարանի տվյալները և d/t հնչյունական տատանումը՝ հետազոտողները, սկսած Պ. Կրեչմերից, հավանական են համարում համեմատությունը հ. հնդկ. dīti- «լույս, փայլ», ալբ. ditɛ «օր» և այլ բառերի, այդ թվում նաև հայ. տիւ «օր» բառի հետ (հ.-ե. *dei- «փայլել, շողալ») [հմմտ. **Гиндин**. 1967, 87—90][22]:

Եթե Šillili... դիցանվան մնացած վերջամասը ստորակետի վերջավորություն է (*Šilliliš), ապա կարելի է առանձնացնել -(i)li- ածանցը, որ հանդիպում է փոքրասիական ու մասնավորապես խեթ. հատուկ անուններում և ցույց է տալիս պատկանելություն, վերաբերություն կամ սերում: Խեթ. -ili-ով այս հատուկ անուններից շատերը կազմված են տեղանուններից, ժողովուրդների անուններից և դիցանուններից՝ Antaratli-, Arnili- (հմմտ. հայաս. Arnija քաղաքանունը և զուգահեռ Arn- բաղադրիչով տեղանունները). Ḫaitili-, Ḫakkarpili-, Ḫarapšeli (հմմտ. Ḫarapšeki-), Ḫattušili-, Katapaili-, Kaškaili-, Tarḫunzili- և այլն: -ili- ածանցը ծագում է կամ հ.-ե. *l-ով ածանցային ձևից, կամ, որ ավելի հավանական է համարվում, խաթական պատկանելության ածանցից, որ առկա է նաև խեթ. դերանունների կազմության մեջ: Այս դեպքում թերևս ճիշտ է šil(l)-ի մեր համեմատությունը խեթ. šeli- «հացահատիկի շեղջ» կամ, ավելի հավանականորեն, šēli- «սիրահարված(?), նվիրված(?)» հիմքի հետ: Սակայն, ինչպես կտեսնենք, հնարավոր է նաև բառի հայկական մեկնությունը, եթե այն կապված է հայ. սիղեղ (սեղեղ, սիղեխ, սեղեխ) «սիրեկան» բառի հետ:

---

21 Տտուն և տուտն ձևերի՝ հայկական -titūniš-ի հետ կապ ունենալու դեպքում անհավանական է teri(t)-ի խեթական մեկնությունը:

22 Հատկանշական է, որ մեր կողմից այս արմատին է վերագրվել հայ. տի- (տիեզերք, տի-կին, տի-այր>տէր) բաղադրիչը (հմմտ. լիդ. didis «մեծ»), և նշվել են համապատասխան բառեր կովկասյան, խուռի-ուրարտական լեզուներում, խաթերենում [Djahukian, 1969, 71—72]:

Žakk(an).. և Baltaik դիցանունների մեկնաբանության հարցը ավելի դժվար է։ Եթե բացառենք Գ. Ղափանցյանի կողմից առաջինի համար բերվող խեթ. Zaggaga զուգահեռը (ճշտել Zappiqaga) և լուվ. -zagani-ն, ապա կարելի է նշել խեթ. Zaḫapauteni իգական անձնանունը, որի առաջին մասը թերևս կապ ունի այս դիցանվան հետ[23]։

Baltaik-ի համար հնարավոր է երկու ենթադրություն. 1) կամ -ik ածանցը խուռական ծագում ունի (այն հանդիպում է նուզյան աղյուսներում՝ լինելով հատուկ անունների կազմիչ՝ անորոշ իմաստով), և այդ դեպքում թերևս ամբողջ դիցանունը հայասացիներին է անցել խուռական աշխարհից. Գ. Ղափանցյանը Balta-ի կապակցությամբ հիշատակում է ակկադ. baltu «կենդանի» բառը. 2) կամ -ik-ն ունի փոքրացուցիչ-փաղաքշական արժեք ու հ.-ե. ծագում, և այս դեպքում հնարավոր է Balta-ի համար ևս ենթադրել հ.-ե. ծագում(*bhl̥-to- «փայլուն»?)։ Համահունչ լիդիական baλta բառի բնույթը պարզ չէ [Gusmani, 1964, 75]: Ոչինչ չի ասում նաև Baltuiḫi ցեղանունը, որ հանդիպում է ուրարտական արձանագրություններում։

## դ) ՀԱՅԱՍԱԿԱՆ ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐԸ

Մեզ ավանդված հայասական տեղանունները (քաղաքանուններ, մասամբ նաև երկրանուններ) հետևյալներն են՝ Arḫita [Ar-ḫi-ta, A-ar-ḫi-i-ta], Aripša [A-ri-ip-ša-a, A-ri-ip-ša-aš, A-ri-ip-ša-a-an], Arnii̯a [Ar-ni-i̯a], Arzii̯a [Ar-zi-i̯a], Azzi [Az-zi], Ḫai̯aša [Ḫa-i̯a-ša], Ḫalimana [Ḫa-li-ma-na], Ingalau̯a [In-ga-la-u̯a], Kam... [Ka-am...], Gašmiaḫa [Ga-aš-mi-i̯a-ḫa], Gazū [Ga-zu-u], Laḫirḫila [La-ḫi-ir-ḫi-la], Paḫḫutei̯a [Pa-aḫ-ḫu-u-te-i̯a], Parai̯a [Pa-ra-i̯a], Pateu... [Pa-a-te-u...], Bittii̯ariga [Bit-ti-i̯a-ri-ga][24], Šapaguru̯anta [Ša-pa-gu-ur-u̯a-an-ta], Tamatta [Ta-ma-at-ta], Duggama(na) [Du-ug-ga-am-ma-na, Du-uq-qa-am-ma, Du-uk-kam-ma-an-na, Du-uk-ka-am-ma-an-na], Ura [U-ra]: Հայտնի է նաև մի քաղաքանուն, որի ընթերցումը կասկածելի է՝ Qa?-ad-ma?(ku?)-ša?(ta?)։ Հայասայի տերիտորիայում հիշատակված են Laḫa [La-ḫa-a] անունը կրող լեռներ։

Հայասական տեղանունների համեմատությունը փոքրասիական այլ տեղանունների հետ հնարավորություն է տալիս պարզելու կազմության ակնհայտ զուգահեռությունը և բացատրելու կազմիչների մեծ մասի ծագումը։ Կարելի է, իհարկե, ենթադրել, որ հայասական տեղանունները Հայասայի բուն լեզվից անկախ կազմություններ են, սակայն ավելի հավանական է կարծել, որ հայասական անունների գոնե մի մասը տեղական բնույթ ունի, և որ, հետևաբար, նրանց լեզուն կարելի է կապել փոքրասիական և, հատկապես, խեթա-լուվական լեզուների հետ։

Հայասական տեղանունների մեջ կարելի է առանձնացնել ածանցական

---

[23] Անհավանական է համեմատությունը խեթ. zaḫ(ḫ)- «խփել, ջախջախել» բայարմատի հետ, որ պահպանված է հայ. ջախել, ջախջախել և բարբ. ու ուտ. համիմատ բառերում.

[24] Քաղաքը, թերևս, բուն հայասական չէ, այլ մերթ ընդ մերթ եղել է Հայասայի կազմում։

կազմություններ և բարդություններ։ Առաջինները վերջածանցավոր բնույթի են և բացահայտ զուգահեռներ ունեն փոքրասիական, երբեմն էլ ավելի հեռու տարածված տեղանունների մեջ։ Դեռ ավելին, դրանց կազմությունը մեծ մասամբ խեթա-լուվիական բնույթ ունի և կարող է բացատրվել հնդեվրոպական հիմքի վրա։ Հայաստանի տեղանունների մեջ տեղ գտած վերջածանցները հետևյալներն են [հմմտ. **Капанцян**, 1956, 409—462. **Garstang—Gurney**, 1959. **Monte—Tischler**, 1978].

*1)* -(a)ḫa (Gašmiaḫa). *այս ածանցն զգալի տարածում ունի Փոքր Ասիայի արևելյան մասերում և հարակից շրջաններում։ Գ. Ղափանցյանը* [**Капанцян**, 1956, 433] *բխեցնում է խուռա-ուրարտ. -*ḫi *ստացական ածանցից՝ -*ḫa *ձևի* a-*ի մեջ տեսնելով տեղացույց վերջավորություն։ Նկատի ունենալով ածանցի տարածման ոլորտը՝ այս կարծիքը կարելի է հավանական համարել, թեև հնարավոր է մատնանշել նաև խեթա-լուվիական աղբյուր. հմմտ. խեթ. բայանվանական* -eš-ḫa-, -aš-ḫa- *բաղադրյալ ածանցի* -ḫa-*ն ինչպես նաև* -(a)ša *ածանցի լիկ. Ա* -ehi, -ahi *տարբերակը (լիկ. Բ* esi-*ի դիմաց)։*

*2)* -(a)ša [Ḫai̯aša, *թերևս նաև* Aripša *և* Qa?-ad-ma?(ku?)-ša?(-ta?)]. *այս ածանցը, ի տարբերություն* -(a)ḫa-*ի, տարածված է Փոքր Ասիայի հատկապես արևմտյան մասի տեղանուններում և ակնհայտ խեթա-լուվիական ծագում ունի. այս լեզուներում այն կազմում է սեռական հոլովին զուգահեռ ստացական ածականներ՝ խեթ.* -ašša (ḫantašša *«ճակատային»՝* ḫant- *«ճակատ» բառից), հիերոգլ.-լուվ.* -aša, *լուվ.* aššı, *լիկ.* B -esi, *լիկ. Ա* -ehi, -ahi*՝ բխելով հ.-ե. սեռական հոլովի* *osi̯o *վերջավորությունից։ Այսպիսով,* Ḫai̯a-ša- *բառն իմաստով նշանակում է «*ḫai̯-*ական»։*

*3)* -(i)i̯a (Arnii̯a, Arzii̯a, Parai̯a, Paḫḫutei̯a)[25]. *այս ածանցը լայն տարածում ունի փոքրասիական տեղանուններում և նույնն է հայտնական անձնանունների* -ii̯a *ածանցի հետ* (Annii̯a, *թերևս նաև* Marii̯a)*։ Ամենայն հավանականությամբ այն ծագում է հ.-ե.* *-ii̯o- *ածանցից։ Որոշ դեպքերում միևնույն տեղանունները հանդիպում են երկու տարբերակով՝ և՛* -(i)i̯a-*ով, և՛ առանց* -(i)i̯a-*ի՝* Ḫuu̯alušša *և* Ḫuu̯aluššii̯a, Marašanta *և* Maraššantii̯a, Tapik(k)a *և* Tapikkii̯a, Uilušša *և* Uiluššii̯a, Zidakapišaš *և* Zitakapiššii̯a*։ Թեև* -(i)i̯a-*ով կազմություններ կան նաև ոչ փոքրասիական տեղանուններում, բայց փոքրասիական-խեթա-լուվիական տեղանունների* -(i)i̯a-*ի նույնությունը խեթա-լուվիական լեզուների* -(i)i̯a- *ածանցի հետ կասկած չի հարուցում. այս* -(i)i̯a-*ով հիմքերը ներթափանցվում են* -i-*ով հիմքերի հետ, որոնց ներկայացուցիչը Հայաստանում* Azzi *տեղանունն է. հմմտ. խեթ.* ḫante-zi-(i̯a)-(<*(H)anti-tii̯o-), *լուվ.* tati(i̯a)- *«հայր»,* anni(i̯a)- *«մայր», լիկ.* kbi-(ja) *«այլ» և այլն։*

*4)* -(i)t(t)a (Arḫita, Tamatta). *դժվար է ասել,* -(i)ta- *և* -tta- *ածանցները միանգամայն տարբեր ածանցնե՞ր են, թե միևնույն ածանցի տարբերակները։ Գ. Ղափանցյանը դրանք միացնում է և օրինակներ բերում փոքրասիական ու հարակից շրջանների տեղանուններից։ Սակայն նրա բե-*

---

25 *Վերջինիս* -tei̯a-*ն Վ. Խաչատրյանը* [**Хачатрян**, 1971, 119, *ծան.* 1] *նույնացնում է խուռ.* tea- *«մեծ» բառի հետ՝ մեկնաբանելով ամբողջ կազմությունը որպես* Paḫḫuu̯a *Մեծ։*

բած օրինակները ակնհայտորեն տարբեր բնույթի ու ծագման են, մանավանդ եթե նկատի առնենք անձնանվանական զուգահեռները (հմմտ. խեթ. Annita, իգ. Annitti՝ հայա. Annija- կողքին) [հմմտ. Капанцян, 1956, 426—429]: Անհնար չէ խեթական ծագում ունեցող տեղանունների մեջ տեսնել հ.-ե. *-t- տարրն ունեցող ածանցական կազմություններ. հմմտ. խեթ. -(a)tt- և -ta- ածանցներով բայանվանական կազմությունները [հմմտ. Иванов, 1963, 187—188][26]:

5) -mana, -ma [Ḫalimana, Duggama(na)]. -ma վերջածանցով կազմությունները ևս բավական հաճախադեպ են փոքրասիական տեղանունների մեջ: Գ. Ղափանցյանը շեշտում է -ma-ի գոյածանցական բնույթը՝ բերելով Pergam(a) (ըստ Ղափանցյանի՝ խեթ. bargu- «բարձր» բառից), Tarkuma (Tarku աստծու անունից), Datima [Datt(a) աստծու անունից], Aladarma (aladdari- «հացահատիկ» բառից) օրինակները, թեև նշում է նաև խեթ. -ima բայանվանական վերջածանցի հետ կապելու հնարավորությունը [Капанцян, 1956, 424—425]: Թեև -mana-ն համարվում է միևնույն -ma-ն՝ աճած -na-ով, բայց -mana-ն Ḫalimana անվան մեջ թերևս կարելի է դիտել որպես ինքնուրույն ածանց՝ խեթ. -mana-ին զուգահեռ (հմմտ. arunamana- «ծովային»՝ aruna- «ծով» բառից):

6) Թեև -u̯a-ն համարվում է տեղանվանական ամենատարածված ածանցներից մեկը [Капанцян, 1956, 436—437], և նրան վերագրվում է «ամբացված կառույց» նշանակություն [Brandenstein, ZO, 2, 1927. B, 1937, 737], բայց -u̯a-ով բոլոր կազմությունները միևնույն արժեքը չունեն: Մի շարք դեպքերում կարելի է առանձնացնել u̯-ն որպես հիմքակազմ տարր և u̯-ն որպես ներհատվածային հնչյուն: Այս առումով դժվար է որոշակի բան ասել Ingalau̯a-ի ածանցական կազմության մասին, թեև հանդիպում են Ištanuu̯a (Ištanu դիցանունից), Uataru̯a և այլ տեղանուններ: -u̯a-ով կազմությունները մասամբ հ.-ե. բնույթի են (հմմտ. Aḫḫijau̯a—աքայացիների անունը), մասամբ (Միտաննիին մերձավոր շրջաններում) թերևս խուռ. ծագում են խուռ. սեռականի -u̯e-ից [Дьяконов, 1968, 86]:

7) -u̯anta (Šapaguru̯anta). այս ածանցը հանդիպում է փոքրասիական տեղանունների մեջ -u̯ant/da ձևով [Капанцян, 1956, 417. Laroche, REA, 19, 69, 1961, 64] և նույնն է խեթ. -u̯ant- (-mant-) ածանցի հետ, որ ածականներ է կերտում բայերից ու գոյականներից (հմմտ. kartimiiau̯ant- «բարկացկոտ»՝ kartimmija- «բարկանալ» բայից, kištuu̯ant- «քաղցած»՝ kašt- «քաղց» գոյականից, šamankuru̯ant- «մորուքավոր»՝ zamankur- «մորուք» գոյականից և այլն). -u̯ant-ը բաղկացած է -u̯- և -(a)nt- տարրերից, որոնք հ.-ե. ծագում ունեն [Kronasser, 1956, 427. Иванов, 1963, 189, 195]. Ամենայն հավանականությամբ միևնույն -u̯ant/da- ածանցն է առկա հին անատոլիական տեղանուններում՝ Gapilu̯anta, Paraššuu̯anda, Tanlu̯anda, Tapšanuu̯anta, Uašatuu̯anda, Ulianau̯anda (Uinuu̯andaš), կար. Alabanda,

[26] Անհնար չէ ենթադրել, որ հայա. -(t)ta-ն ծագում է -nta-ից, այսինքն՝ տեղի է ունենում n-ի անկում, ինչպես կապադովկերենում [հմմտ. Laroche, REA, 19, 69, 1961]: Վ. Խաչատրյանը [Хачатрян, 1971, 127] Tamatta-ի -at(t)a-ն համարում է հավաքական նշանակություն ունեցող խեթ. -atar ածանցի տարբերակը, սակայն վերջինս բաղկացած է -a- հիմքակազմ տարրից և -tar-/-tan- բուն ածանցից, որ վերացական անուններ է կազմում (սա էլ ունի *-t- և *-er-/-en- զուգահեռները):

լիկ. Arnab/ųanda, որոնցից երկրորդի Arna- բաղադրիչի համար հմմտ. հայաս. Arnija քաղաքանունը։

Ի՞նչ կարելի է ասել այս տեղանունների մասին։

-(i)ja վերջածանցով կազմություններից Arnija-ի Arn- բաղադրիչը բազմաթիվ զուգահեռներ ունի ինչպես փոքրասիական (հմմտ., օրինակ, կար. Ἄρνισσα, լիկ. Arnab/ųanda, Ἀρνεαι և այլն), այնպես էլ բալկանյան և ավելի արևմուտք ընկած տեղանունների մեջ։ Սրանց համար, եթե մանավանդ մենք գործ ունենք գետանունների և գետերի հետ կապված տեղանունների հետ, ենթադրում են հ.-ե. ծագում՝ *orno-, *ornā «ալիք, հոսանք, հեղեղ գետ» (*er- «շարժել, հուզել» արմատից, որտեղից խեթ. arāi- «բարձրանալ», arnu- «շարժել, հասցնել, տանել, բերել»)[27]։

Arzija տեղանուն հանդիպում է նաև խեթական և լուվիական այլ տեքստերում. հմմտ. լուվ. arzijaššiš «արզիական» և խեթ. A.ŠÀ ar-zi-ja-aš «Արզիայի դաշտ» [Laroche, 1959, 32]։ Ա. Գյոզեն Ars-, Arz [հմմտ. լիկ. erze, Arsis, պիսիդ. Arsas և այլն, ավելի հին Arzanaḫsu, Arza(u)ųa] բաղադրիչը նույնացնում է խեթ. Ěarzana- «հյուրանոց, իջևան», arzanant- «տեղավորված, տեղավորված» բառերի արմատի հետ [Goetze, 1954, 78]:

Paraja տեղանվան Par(a)- հիմքը խեթա-լուվիական լեզուներում ներկայացված է լայն ճյուղավորմամբ և հանդես է գալիս հատուկ անուններում (այդ թվում՝ տեղանուններում՝ հմմտ. խեթ. Parijana, Parašša(?), կար. Parableia և այլն). այն ծագումնաբանորեն կապված է խեթ. para «առաջ, դուրս, հեռու», parija(n) «միջով, այն կողմը, դենը», paru «հեռու, ավելի հեռու», լուվ. parran «առաջ, դուրս» և այլ բառերի հետ։ Սրանք բոլորն էլ ծագում են հ.-ե. *per- արմատից [այստեղից են հուն. πόρος-ը և թրակ. παρα-ն (տեղանունների բաղադրիչ)՝ «գետանց, անցահուն, ուղի» իմաստով]։ Paraja անվան մեր համեմատությունը թրակ. Βέρ(ρ)οια, Beroe տեղանվան հետ (հ.-ե. *bher-, որից հայ. բերրի) [Джаукян, 1964, 59] ավելի քիչ հավանական է, թեև ոչ անհնար, եթե նկատի առնենք թրակա-փոքրասիական և թրակա-հայասական այլ զուգահեռների առկայությունը ևս [Откупщиков, 1973, 5—29. Ջահուկյան, *1970*, *79—81*]։ Կարելի է նույնիսկ ենթադրել Հայասայում թրակյան շերտ։

Paḫḫuteja տեղանվան Paḫḫu- բաղադրիչը ամենայն հավանականությամբ առկա է նաև Paḫḫuųa ու Paḫḫurina երկրանուններում և թերևս պահպանվել է Պախուենից վանքի անվան մեջ [Хачатрян, 1971, 119]։ Սակայն համապատասխան խեթա-լուվիական հիմք առայժմ դժվար է նշել։ Եթե բացառենք կապը Բաքոսի անվան հետ (լիդ. Baki-, հուն. Βάκχος, Βακχεῖος և այլն), որ մենք նախկինում ենթադրում էինք [Джаукян, 1964, 60—61[28]], ապա անհավանական չէ կապը կամ խեթ. panku- «ամբողջ, բոլոր. ամբողջ զորք, ամբողջություն, ժողով. ազատանի» բառի հետ, որ ծագում է հ.-ե. *bhṇghu- հիմքից [հմմտ. հ. հնդկ. bahu- «խիտ, հարուստ, շատ», հուն. παχύς

[27] Է. Ֆոռերը („Glotta", 26, 1938, էջ 178) arna=arinna «աղբյուր» հիմքը համարում է լուվիական ծագման։ Է. Լարոշը [Laroche, 19, 1961, 64] գտնում է, որ Arn-ով բոլոր տեղանունները չի կարելի բխեցնել միևնույն աղբյուրից և մանավանդ լուվերենից [հմմտ. նաև Гиндин, 1967, 39—95]:

[28] Որոշ հետազոտողներ կապ են տեսնում Բաքոսի անվան և խեթ. GIŠpaḫ(ḫ)iša- «փայտ (?), ճիպոտ (?)» բառերի միջև։

«հաստ», հայ. (<իրան.) բազում «շատ»], կամ խեթ. paḫḫur, paḫḫuu̯ar «կրակ» բառի հետ (հ.-ե. *peu̯ōr-, *pūr-, սեռ. *punes, ներգ. *puu̯enI. հմմտ. հայ. հուր, հն-ոց). Թեև վերջին համեմատությունը նվազ հավանական է թվում հիմքերի տարբերության պատճառով, բայց նրա օգտին է խոսում հայ. Պախուենից ձևը, որ եթե կապ ունի Paḫḫu-ի հետ, ապա ճշտիվ համապատասխանում է խեթ. բառի տր.-ներգ. paḫḫuenI ձևին։

-(i)t(t)a ածանցով կազմված տեղանուններից Arḫita-ի համար միանգամայն հավանական է համեմատությունը խեթ. irḫa- (arḫa-) «շարք, շրջագիծ, եզր, սահման», հիեր. լուվ. arḫa- «սահման» (հգն. «շրջան, գավառ, տարածք»), խեթ., լուվ., հիեր. լուվ. arḫa- «դուրս» և այլ բառերի հետ [Капанцян, 1948, 60. Джаукян, 1964, 74—75], որոնք, ըստ Բելարդիի [Belardi, RL, 2, 187—202], բխում են հ.-ե. *erə-, *orə- «նոսր, հեռու, հեռանալ, հեռացնել» արմատից։ Ընդհանուր իմաստը պետք է լինի «սահմանային, եզրական»։ Նկատի ունենալով Արխիտայի եզրային դիրքը՝ Հայասայի հարավային մասերում (Իշուվայի մոտ) գտնվելը՝ ավելի քիչ հավանական է նրա անունը բխեցնել արևմտակովկասյան աղբյուրից (հմմտ. աբխազ. арха «հարթություն» և բրբռ. т|а «վայր տեղ»)։

Եթե Tamatta տեղանվան -tt-ն իրոք խեթա-լուվական ածանցական մասնիկի տարր է, ապա պատահական պետք համարել ակկադ. Teman և սար. Thama տեղանունների հետ ունեցած նմանությունը և այն հիեր. լուվ. Ta-a-ma տեղանվան հետ միասին (հմմտ. նաև խեթ. Tamattaša?) բխեցնել հիեր.-լուվ.-լիկ. tam- արմատից (հմմտ հիեր. լուվ. ta-ma-ḫa «կառուցեցի», լիկ. tam- «կառուցել») [Kronasser, 1956, 127. Gusmani, 1964, 208]. վերջինս, եթե ընդհանուր վերականգնումը ճիշտ է, գալիս է հ.-ե. *dem- «կառուցել» արմատից։ Այս դեպքում Tamatta-ի ընդհանուր իմաստն է «կառուցված, շինված, շեն»[29]։

-mana ածանցով կազմված Ḫalimana քաղաքանվան Ḫali- անկախ բաղադրիչի գոյությունը հաստատվում է խեթական աղբյուրներում հիշատակված Ḫaliu̯a և Ḫalila (վերջինս կաշկացիների երկրում) տեղանունների գոյությամբ (Ḫali-ի հետ հավանաբար կապ չունեն ավելի հեռու ընկած Ḫallau̯a և Ḫalluu̯a վայրերի անունները)։ Ḫalip- բաղադրիչով Ḫalipašuu̯a, Ḫalipšiura, Ḫaliputa տեղանուններում թերևս իրոք պետք է վերականգնել Ḫalip- և ոչ Ḫali- բաղադրիչը, եթե դրանք կապվում են խալիթների անվան հետ [Хачатрян, 1971, 127]։ Ḫali- բաղադրիչը մենք հակված ենք կապելու խեթ. ḫali(i̯a)- «պահակախումբ. պահակ, գիշերային պահակ» բառի հետ, որ իր հերթին ստուգաբանորեն կապում են ḫalii̯a- «ծնկի գալ» բայի հետ և բխեցնում հ.-ե. *(s)kel- «թեքել. թեք. հնդ. կրունկ, ծունկ, ազդր» արմատից [Kronasser, 1956, 38], թեև սա կասկածելի է [Tischler, 1, 130][30]։

Այլ է վիճակը, եթե Ḫalimana անունը կապ ունի Almina (Almena) քաղաքի (Խեթական պետության արևելյան ծայրագավառում) անվան հետ. համանուն քաղաքանուններ ('Αλμήνη, Almana) հայտնի են նաև Պափլագոնիայում և Բալկանյան թերակղզում. բալկանյան քաղաքանունը համարվում

---

[29] Վ. Խաչատրյանը [Хачатрян, 1971, 127] այս անվան հետ է համեմատում Tamluta տեղանունը։

[30] Հմմտ. նաև ḫall- «փարախ», որի ծագումն անհայտ է (փոխառությո՞ւն) [Tischler, 1, 128—129]:

է թրակյան և բխեցվում հ.-ե. *al- «աճել, աճեցնել, սնել» արմատից՝ -m- բաղադրիչով [Detschew, 1957, 13]:

Dugama անունով վայր հիշատակված է նաև Ուրմիա լճից հարավ [Меликишвили, 1960, 425]: Վերջինիս անունը կարող է ծագած լինել քաղաքացիների տարաբնակությամբ, եթե նմանությունը պատահական չէ։ Հայասա Duggama(na)-ի հիմքը անհավանական չէ համեմատել խեթ. dug(g)-, duk(k)- «տեսանելի լինել, հարգվել» բայարմատի հետ, որից խեթերենում -a- ածանցով կարող էր կազմվել dugga- գոյականը՝ «տեսանելիություն, հարգանք» իմաստով[31]։ Թերևս այս նույն տարրն է փոքրասիական այլ հատուկ անուններում՝ կար. tukλo-, tùk-, լիկ. Tok-oleis, Duk-eris, իսավր. Dukkos, եթե դրանց d/tug/k-ը կապ չունի լուվ. duua- «դնել» բայի հետ [խեթ. dä(i)-], որ գալիս է հ.-ե. *dhē- «դնել» արմատից։

Ածանցական կազմություն ունեցող Gašmlaḫa, Ḫaḻaša, Ingalaųa, Šapaguruanta, թերևս նաև Azzi տեղանունների հիմքերի բնույթի մասին առայժմ դժվար է որևէ հավաստի բան ասել։ Gašmi-ի մեջ համեմատությունը հայ. կազմ, հուն. κόσμος և Ingalaųa-ի Ingal-ի նույնացումը ակկադ. ekallu <շումեր. é-gal բառերի հետ (Գ. Ղափանցյան) կասկածելի են։ Ingalaųa-ի հետագա Անգեղտուն անվանումը (որպես «անգեղ տուն՝ անգղի տուն») կարող է ժողովրդական ստուգաբանության արդյունք լինել։ Հազիվ թե որևէ կապ լինի Šapagur-ի և լիկ. Բ sabaci «առաջնորդներ» բառի կամ ցակյան Saboces (Σαβῶκοι) ցեղանվան միջև (հմմտ. նաև փռյուգիական Σαβάζιος դիցանունը, որից ծագած են համարում հայ. աստուած բառը)։ Մեկ այժմ հավանական է թվում Azzi- համեմատությունը ատտիկյան ''Αζεια-ի հետ, որ Տոմաշեկը կապում է Հեսիքիոսի բառարանում հիշված ἄζον «մեծ, բարձր» բառի հետ [Tomaschek, 2, 1894, 55]. Նախ՝ Azzi երկիրը, ըստ խեթական աղբյուրների, սահմանակից է «Բարձր երկրին» և հիմնականում նույնացվում է հայկական աղբյուրների Բարձր Հայքի հետ. երկրորդ՝ այս դեպքում կարելի է ճիշտ համարել Azzi-ի նույնացումը Աձորդ-ի հետ՝ նկատի ունենալով, որ հետազոտողների կողմից ''Αζωρος-ի անունը կապվում է թրակյան ''Αζωροι, 'Αζώριον քաղաքանվան հետ [Detschew, 1957, 7]։ Սա, ինչպես այլ դեպքերում, ենթադրել է տալիս Հայաստանում թրակյան տարր[32]։

Հայասայական մյուս տեղանուններից Ura-ն ակնհայտորեն խեթա-լուվիական ծագում ունի. հմմտ. լուվ. և հիեր. լուվ. ura- «մեծ», որ հանդիպում է նաև որպես տեղանունների բաղադրիչ և տեղանուն. հմմտ Arez-ura, Ura-Ḫatušaš, կար. Yr-omos, It-yra, լիկ. Ura-, Ora- և այլն [Laroche, 1959, 102]

Aripša քաղաքանունը մենք այժմ հակված ենք բացատրելու արևմտա-

---

[31] Այն համեմատվում է այլ. duket «թվալ, երևալ, տեսք ունենալ» բայի հետ. հմմտ. Friedrich, HW, 1. Ergänzungsheft, 21։

[32] Թրակյան քաղաքանունը հավանաբար կապ չունի թրակյան այն անձնանունների Αζ- (Αζ- և այլն) բաղադրիչի հետ, որ համեմատվում է կիլ. Αζης և սկյութ. Αζιας. Αζος. Αζαγος անձնանունների հետ [Detschew, 1957, 7]։ Սկյութական անունները ծագում են իրան. *hatya- «իսկական, արդար, ճիշտ», *hatya-ka- ձևերից, որոնք իրենց հերթին բխում են հ.-ե. *sn̥t-io-ից («ուղղություն վերցնել, գնալ»)։ Հետաքրքրական է նշել, որ Azzi և Ḫaiaša անունների իրանական ծագման դեպքում դրանք, բաղբառային տարբերությամբ, կարող էին միևնույն բանը նշանակել, որ, սակայն, անհավանական է։ Նշենք, որ կան խեթ. իգ. Azzija, Azzari անձնանունները, որոնց ծագումը հայտնի չէ։

կովկասյան (աբխազ-ադըղեական) հողի վրա։ Ինչպես հայտնի է ըստ խեթական արձանագրության՝ Aripša-ն ծովային դիրք ուներ և գտնվում էր կաշկացիների երկրի մերձակայքում։ Իսկ կաշկացիներն իրենք չերքեզների նախնիներն են, ինչպես ենթադրում են շատ հետազոտողներ՝ նկատի ունենալով չերքեզների կաշագ, կեշագ, կոսոգ ինքնանվանումը[33], ապա Aripša-ի -pša-ն կարելի է մեկնել կաբարդ., ադըղ. псы «ջուր» բառով, որ շատ տարածված է հյուսիսային կովկասյան տեղանուններում (հմմտ. Ցուափսե), այս դեպքում Ari-ն նույնպես կարող է արևմտակովկասյան ծագում ունենալ։

Նկատի ունենալով հայասական անունների գերակշռող մեծամասնության խեթա-լուվական զուգահեռների ակնհայտությունը՝ կարելի է ընդունել Գ. Ղափանցյանի կողմից Laḫirḫila-ի երկրորդ մասի՝ ḫila-ի համեմատությունը խեթ. Ēḫila «բակ. փարախ, գոմ» բառի հետ (սակայն հմմտ. նաև հայ. հիւղ, որ հանդիպում է նաև հուղ, հիղ, հեղ ձևերով և նույնն է խուղ բառի հետ)։ Այս համեմատությունը հաստատվում է խեթ. Parsanḫila և կար. Suaggela (<*Suu̯aḫila) տեղանունների միջոցով, որոնց մեջ նույնպես առկա է ḫila- տարրը. կարևոր է նշել, որ համապատասխան լիկ. qla-ն մեկնաբանվում է «տաճար»։ Սակայն դժվար է համաձայնել Laḫir- բաղադրիչի ղափանցյանական մեկնության հետ. Գ. Ղափանցյանն այն համեմատում է ակկադ. Laḫirā անձնանվան հետ՝ ամբողջ տեղանունը մեկնաբանելով որպես «Լախիրի հյուղ» [Капанцян, 1948, 60, ծան.]։ Հայասական տեղանվան մեջ սեմական տարրի այսպիսի զուգակցումը քիչ հավանական է, թեև առայժմ դժվար է հավաստի որևէ բան ասել Laḫir-ի բնույթի մասին։ -r/n-ով հիմք ենթադրելու դեպքում այն կարելի է համեմատել խեթ. Laḫinaššiš (Laḫinn-ից) տեղանվան և Laḫinaziti- անձնանվան հետ։ Անհնար չէ կապ տեսնել Հայասայում հիշատակվող Laḫḫa լեռների և Laḫirḫila քաղաքի անունների միջև, բայց այս դեպքում անբացատրելի է մնում Laḫir-ի -ir-ը։ Խեթ. Laḫḫueri անձնանունը Է. Լարոշը համեմատում է խեթ. GIŠlaḫḫura «զոհասեղան(?)», իսկ Laḫḫa- անձնանունը՝ laḫḫa- «ռազմական արշավանք» բառերի հետ, բայց այս անձնանունների կապը Laḫir-ի հետ կասկածելի է։

Եթե մի կողմ թողնենք Pāteu... պակասավոր տեղանունը հետագա Բթառիճ գյուղի անվան մեջ պահպանված խեթ. աղբյուրների Bittii̯ariga (Pattii̯ariga?) տեղանվան հետ նույնացնելու փորձը [Капанцян, 1948, 59], որ չի հաստատվում վերջինիս ավելի ստույգ ընթերցմամբ, ապա Pāteu-ի համար կարելի է նշել փոքրասիական և ոչ փոքրասիական, հնդեվրոպական և ոչ հնդեվրոպական մեծաթիվ զուգահեռներ։ Սակայն հայասական անունների փոքրասիական զուգահեռների հավաստիությունը մեզ հիմք է տալիս կանգ առնելու նրանց վրա. հմմտ. հին անատ. Paduu̯a անձնանունը և նրանից կազմված Paduu̯anda տեղանունը, որոնք համեմատվում են լիկ. pad-mruwa, կար. pdov, pede- հատուկ անունների (այդ թվում՝ նաև տեղանունների) հետ, և որոնց համար որոշ կասկածով նշվում է հ.-ե. *ped/pod- «ոտք» արմատը (այստեղից են խեթ. pata- «ոտք», peda- «տեղ, վայր» բառերը)։ Սրանից պետք է ենթադրել, որ քաղաքն ունեցել է հարթավայրային դիրք[34]։

---

[33] Կա նաև հակառակ կարծիքը. հմմտ. Волкова, 1973, 22:

[34] Մեր „Хэйасский..." աշխատության մեջ [Джаукян, 1964, 79] այս տեղանունը համեմատված է խեթ. paltar «սկուտեղ(?)» («զամբյուղ(?)») և հայ. պյստ բառերի հետ,

Bitti̯ariga-ի երկրորդ մասը պահպանված է հայկական տեղանուններում հաճախակի հանդիպող առիճ-ի (առիճն, առինջ) մեջ, որ պետք է ունենա «գյուղ, շեն» իմաստը [Աճառյան, ՀԱԲ, 1, 258]։ Եթե առաջին մասը կապ չունի Pāteu...-ի հետ և արտասանվել է ձայնեղ B-ով, ապա կարելի է նշել խեթ. peda- «տանել», լիդ. hita- «խլել» բառերը (կամ խեթա-լուվական համահունչ այլ բառեր)։

Kam... պակասավոր քաղաքանվան այս բաղադրիչը հանդես է գալիս փոքրասիական և ոչ փոքրասիական բազմաթիվ տեղանունների մեջ. նշենք առաջին հերթին լիդ. Kamandōlos, ուշ լուվ. Kam-ure- (տեղանվան կազմում), որոնք համեմատում են լիկ. hri-kṃ̃ma-ի հետ և վերականգնում ընդհանուր *kam(a)- արմատը։ Հմմտ. նաև Kamisa, Kamala, Kamama, Kamaḫana և այլն տեղանունները։ Պարզ չէ սրանց կապը հ.-ե. *kam-er- և *kam-p- հիմքերի հետ («ծռել, կամար կազմել» իմաստով). հնարավոր է, որ բոլոր տեղանունների մեջ մենք գործ ունենք հնդեվրոպական արմատի հետ, և նույնիսկ *kam-p-ի և *kam-er-ի տակ Յ. Պոկոռնու «Հնդեվրոպական ստուգաբանական բառարանում» բերվող մի շարք ձևեր անմիջական հնդեվրոպական չեն։ Պուրվեսի նշած նուզյան Kamari-ն, որ հիշատակում է Ղափանցյանը՝ համեմատելով հ.-ե. *kam-er- նախաձևից ծագող բառերի հետ [Капанцян, 1948, 224], խուռական չէ. խուռիերենում համապատասխան արմատ չի հայտնաբերված։

Առայժմ դժվար է որևէ հավաստի խոսք ասել Gazū տեղանվան մասին, որ Գ. Ղափանցյանը [Капанцян, 1948 88] համեմատում է, մի կողմից, կաշկայական G/Kazzapa քաղաքանվան, մյուս կողմից՝ Պոնտոսում հիշվող Gazziura (-ura բաղադրիչի համար հմմտ. Ura քաղաքանվան մասին ասածը) ամրոցի անվան հետ։ Եթե ճիշտ է առաջին համեմատությունը, ապա Gazū-ն կապ չունի Պալա երկրում (հետագա Պափլագոնիայում) գտնվող Gaššu լեռնանվան ու խեթ. Gaššu անձնանվան հետ, և թերևս կամ պետք է որոնել կովկասյան աղբյուր, կամ ընդունել անվան ստուգաբանական կապը ուրարտ. gazuli «գեղեցիկ, լավ» բառի հետ (այսինքն ենթադրել հայասական տեղանուններում կովկասյան կամ ուրարտական շերտ)։ Եթե ճիշտ է երկրորդ ենթադրությունը, ապա հայասական քաղաքանունը հին անատոլիական ծագում ունի (հմմտ. -ura-ով տեղանունները)[35]։

## Ն) ԵԶՐԱԿԱՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Վերևում բերված փաստերի հիման վրա կարելի է անել հետևյալ հիմնական եզրակացությունները։

1) Հայասական հատուկ անունների մեջ ակնհայտորեն գերակշռող են փոքրասիական տարրերը։ Հայասական անձնանունները, դիցանունները և տեղանունները մեծ մասամբ զուգահեռներ ունեն փոքրասիական համապա-

որ պակաս հավանական է։ Բայց հավանական է նաև համեմատությունը խեթ. Pitašša տեղանվան հետ, որ Վ. Գեորգիևը [Георгиев, 1958, 172—173] բխեցնում է հ.-ե. *pídos «աղբյուր» նախաձևից։

[35] Ինչ վերաբերում է Gazzi-ին, ապա Է. Լարոշը [Laroche, RHA, 19, 1961] այն նույնացնում է խեթ. gazzi- (մի տեսակ աման) բառի հետ։

*տասխան հատուկ անունների մեջ։ Որոշ դեպքերում մենք գործ ունենք պարզ փոխառությունների հետ, բայց ընդհանրությունների զգալի մասը կարելի է բացատրել հայասացիների մեջ փոքրասիական լեզվական տարրի առկայությամբ և նույնիսկ գերակշռությամբ։ Կարելի է նշել նույնիսկ որոշ օրինաչափ համապատասխանություններ. այսպես, հայասերենին բնորոշ է խեթական միջձայնավորային* ḫḫ-*ի դիմաց համապատասխան պայթականի առկայություն (հմմտ. խեթ.* ḫuḫḫa- *և հայաս.* Ḫuqqa-, *թերևս նաև խեթ.* Tarḫu- *և հայաս. >հայ.* Տորք, *ինչպես կար.* Tark-, Ōtork-, *լիդ.* Trok-, Targ-, *ուշ լուվ.* Tark-, Trok-), uu̯a>u *ամփոփումը (հմմտ. հայաս.* Mutti-՝ Muu̯attl-*ից*)[36]։

*2) Նկատի ունենալով, որ հայասական անունների հետ զուգահեռներ ունեցող լեզուները հնդեվրոպական բնույթի են, և որ համեմատվող անունների մեջ առանձնացվող տարրերը մեծ մասամբ հնդեվրոպական ծագում ունեն, կարելի է եզրակացնել Հայասայի բնակչության զգալի մասի համար փոքրասիական-հնդեվրոպական ծագում։ Դեռ ավելին. կարելի է ցույց տալ հայասական զուգահեռների հատուկ մերձավորությունը հին անատոլիական հ.-ե. լեզուներից լուվա-լիկիական խմբին (լուվերեն, հիեր. լուվերեն, լիկիերեն)։*

*3) Հայասայի անուններում կարելի է մատնանշել արևմտակովկասյան, խուռա-ուրարտական, թերևս նաև սեմական տարրեր, բայց բնիկ փոքրասիական-հնդեվրոպական տարրը ակնհայտորեն գերակշռում է։ Եվ սա հասկանալի է, եթե նկատի առնենք Հայասայի՝ Միտանիից ունեցած զգալի հեռավորությունը և նրա ազդեցության ոլորտից դուրս լինելը։*

*4) Մեր «Հայերենը և հնդեվրոպական հին լեզուները» աշխատության մեջ* [Ջահուկյան, *1970, 79—81*] *բերված են զգալի թվով թրակա-հայասական զուգահեռներ։ Այժմ անդրադառնալով այդ հարցին՝ կարելի է անել երեք հնարավոր ենթադրություն. դրանք՝ ա) կամ նույն տիպի զուգաբանություններ են, ինչպիսիք առկա են Բալկանյան թերակղզու և Փոքր Ասիայի հատուկ անունների միջև* [**Откупщиков**, 1973, 5—29], *բ) կամ պատահական նմանություններ են, գ) կամ ենթադրել են տալիս հայասական տերիտորիայում թրակյան էթնիկական տարր։ Ճշմարտությունը հավանաբար ընդգրկում է երեք ենթադրությունը միաժամանակ, այսինքն՝ մի շարք զուգահեռներ պատահական բնույթ են կրում, մնացած դեպքերում կարելի է նշել մի կողմից՝ թրակա-հայասական զուգաբանություններ՝ պայմանավորված ավելի հնում գոյություն ունեցած մերձավոր կապերով, մյուս կողմից՝ Հայասայում թրակյան էթնիկական տարրի առկայություն։ Վերջին դեպքում պետք է կարծել, որ Հովհաննես Դրասխանակերտցու կողմից Հայկի պապին՝ Թիրասին, թրակացիների նախահայր համարելը իրոք հին հարաբերությունների արձագանք է։ Որ Հայաստանում և մերձավոր վայրերում հնում եղել են թրակյան ցեղեր, երևում է Ստրաբոնի հայտնի տողերից. «Ասում են նաև, թե ինչ-որ թրակացիք (կոչված սարաբարաս*[37]*, այն է՝ գլուխ կտրող) բնակվել են Հայաստանից վերև Գուրանացոց և Մարաց մոտ»* [Ստրաբոն, *1940, 68*]: *Թեև* սարապարաս

[36] *Դժվար է ասել, կապ կա՞ արդյոք Տորքի հոր՝ Պասքամի անվան և խեթ.* Paškuu̯a-*դիցուհու անվան միջև (հմմտ. նաև կար.* Bskove- *անձնանունը, խեթ.* Paškuu̯attl-*ն և այլն), որոնք Է. Լարոշը բխեցնում է խեթ.* paškuu̯āi- *«անուշադրության մատնել, արհամարհել» բայից։ Սակայն Պասքամի համար հմմտ. խեթ.* pašk- *«ամրացնել»։*

[37] *Փոխանակ* սարապարաս։

բառը բացատրվում է իրանական աղբյուրով (հմմտ. ավեստ. sarah- «գլուխ» և par- «ծակել, կտրել»), բայց այն թրակացիների միջնորդությամբ է Հունաստան հասել [Detschew, 1957, 423]: Հայասացիների և հայերի՝ թրակացիների հետ ունեցած վաղ շփումների մասին են խոսում, օրինակ, հետևյալ փաստերը. Սկայ-որդի անվան Սկայ-ը թրակյան սկայ ցեղանունից է և ոչ սակերի անունից, ինչպես կարծում է Գ. Ղափանցյանը. Տորք անունը իր ո ձայնավորմամբ կարող է աղբյուր ունենալ կամ կարիերենը (հմմտ. Ōtork), կամ, որ ավելի հավանական է, թրակերենը (հմմտ. Τορκος. Τορκους անձնանունը, որ ծագում է նույն աղբյուրից, ինչ փոքրասիական դիցանունը). Թրակյան և հայասական մի շարք անունների նմանությունը թերևս պատահական չէ՝ թրակ. Ἄρνη (տեղանուն) և հայաս. Arnija (ընդհանուր փոքրասիական Arn- հիմքից), թրակ. Βερ(ρ)οια (քաղաքանուն) և հայաս. Paraja, թրակ. Κασμιλος (ցեղանուն) և հայաս. Gašmlaḫa, թրակ. Patavissa (տեղանուն) և հայաս. Pāteu..., թրակ. -tit(h)a (դիցանվան և անձնանվան բաղադրիչ) և հայաս. Terittitūniš (բալկանյան և փոքրասիական այլ զուգահեռներով) և այլն.

5) Հայասայի լեզվի և հայերենի փոխհարաբերության մասին կարելի է նշել հետևյալը.

ա) Եթե հայասացիների զգալի մասի լեզուն իրոք պատկանել է խեթա-լուվական լեզուների խմբին, ապա հայերենի և խեթա-լուվական լեզուների բառային ընդհանրությունների զգալի մասը պետք է գա հայասերենից. Մեր «Հայերենը և հնդեվրոպական հին լեզուները» գրքում (Երևան, 1970) բերված են այդ զուգահեռները, և նույնիսկ փորձ է արված որոշ դեպքերում տարբերակել բուն հայասական բառերը խեթա-լուվական այլ բառերից. Միաժամանակ, եթե իրոք Հայասայի տերիտորիայում կային թրակյան ցեղեր, այդ նույն գրքում բերված փոխառությունների զգալի մասը պետք է եկած լինի նրանցից.

բ) Հայասայի պատմության, աշխարհագրության, լեզվի ուսումնասիրողները նշել են զգալի թվով զուգահեռներ հայասական անձնանունների, դիցանունների ու տեղանունների և հնից ավանդված հայկական անձնանունների, դիցաբանական անունների ու Հայկական բարձրավանդակի մի շարք տեղանունների միջև, որոնք բերված են մեր „Хайасский язык и его отношение к индоевропейским языкам“ աշխատության մեջ (դրանք այս կամ այն առիթով մասամբ հիշատակվեցին վերևում): Այստեղ մեր նպատակից դուրս ենք համարում դրանց հանգամանալից քննությունը. Եթե նկատի առնենք, որ պահպանվածը եղածի մի չնչին մասն է, ապա կարելի է խոսել այն խոր ազդեցության մասին, որ թողել է Հայասան Հայաստանի օնոմաստիկայի վրա[38].

գ) Ինչպես հայտնի է, խեթական տեքստերում այլ լեզուներից փոխ առնված բառերը նշանակվում են երկու թեք սեպաձև նշանով. Թեև ըստ Է. Լարոշի՝ դրանք զգալի մասով լուվական ծագում ունեն, բայց հանդիպում են նաև ոչ լուվական բառեր՝ քերականական յուրահատուկ ձևերով [հմմտ. Kronasser, 1962]: Հնարավոր է, որ սրանց մեջ լինեն հայասական բառեր և բառաձևեր. Հատկանշական է, որ Հ. Կրոնասերի առանձնացրած -(a)ḫa, -ta, -u̯a, -ll

[38] Զանազան հետազոտողների կողմից անցկացված զուգահեռներին այստեղ ավելացնենք Arḫita (քաղաք)—Երխերր (գավառ Աղձնիքում), Duggamana (քաղաք)—Թերման (համապատասխանում է նախկին Տուրուբերանի Մարդաղի գավառին), Ḫalmana (քաղաք)—Ալաման (ասուր. Alamun՝ գյուղ Վասպուրականի Անձևացիք գավառում), Ura (քաղաք)—Ուրի (Հուրի գյուղ՝ Գուգարքի հին Քաջաց քաղաքը) և այլն.

ածանցները հանդիպում են նաև հայաս. հատուկ անուններում, իսկ tamala-ta- (կահկարասու նյութ, տաշտ) բառի առաջին բաղադրիչը համընկնում է հայ. տամալ(ի)-ի հետ։

դ) Եթե հայասացիների հիմնական կամ թեկուզ զգալի մասի լեզուն իրոք պատկանում է հնդեվրոպական լեզուների խեթա-լուվական կամ հին անատոլիական խմբին, ապա պետք է հայերենին ձուլվելու ընթացքում նրա մեջ թողած լինի զգալի թվով հնդեվրոպական ծագման այնպիսի բառեր, որոնք չեն բացատրվում հայերենի բուն օրինաչափություններով։ Այս նույն վիճակը պետք է լինի, եթե հայասացիների կազմի մեջ մտել են թրակյան ցեղեր։ Այսպիսով, լիովին հնարավոր է, որ հայերենում պահպանված հնդեվրոպական շատ արմատներ, որոնք անմիջապես չեն գալիս հնդեվրոպական լեզվից և հայերենի բուն հնդեվրոպական միջուկին չեն պատկանում, ունենան անատոլիական-հայասական և թրակյան ծագում։ Նշանակում է՝ մեր „Очерки по истории дописьменного периода армянского языка" գրքում [**Джаукян**, 1967] առանձնացված հնդեվրոպական այն բառերի մի մասը, որոնք շեղվում են բուն հայերենի հնչյունական օրինաչափություններից, պետք է բացատրվի որպես անատոլիական-հայասական և, թերևս, որպես թրակյան։

6) Վերևում նշվեց հայասացիների մեջ թրակյան տարրի հնարավոր առկայության մասին։ Ընդհանրապես Հայասայի բնակչությունը չէր կարող լիովին միատարր լինել, և հնարավոր է խեթա-լուվական ու թրակյան ցեղերի հետ միասին նաև բուն հայկական տարրի առկայությունը։ Սա մանավորապես հավանական է, եթե Hajaša անունը կապ ունի հայերի անվան հետ, և հայ անունը գալիս է հայերենի բուն հնդեվրոպական շերտից. այս դեպքում կարելի է ենթադրել նաև հայասական մի շարք հատուկ անունների բուն հայկական ծագումը՝ Šillill(-) — հայ. սիղեղ (սեղեղ, սիղեխ, սեղեխ) «սիրեկան» (հ.-ե. *k'ei-, *k'ei-l- «պառկել. հանգստանալ. հանգստավայր, տուն. սիրելի», որտեղից հ. հնդկ. śīla- «սովորություն, բնավորություն», հ. իռլ. cé(i)le «ընկեր, ամուսին»), Terittitūni- — հայ. երի- (հ.-ե. *tri-. հմմտ. երի-ց-ս) և տուտն, տտուն (հ.-ե. *dud-? հմմտ. իռլ. toti «մութ», tota «ծայր քիթ», մ. անգլ. tote «ծայր» և այլն. սակայն հնարավոր է բառերի հուզա-պատկերավոր բնույթը), -ḫila — ճիղ (խուղ < հ.-ե. *khu-lo-) և այլն։

7) Խեթական պետության արևելյան ծայրագավառներում գտնվող երկրների ժողովուրդների մեջ, անշուշտ, նույնպես եղել են խեթա-լուվական բնույթի ժողովուրդներ։ Ընդհանրապես այս ծայրագավառներում պետք է բնակված լինեին անատոլիական-հայասական, խուռա-ուրարտական, կովկասյան և այլ բնույթի ժողովուրդներ։ Անհնար չէ, որ դեռևս խեթական շրջանում այստեղ լինեին բուն հայերենով կամ նրան մերձավոր լեզուներով խոսող ցեղեր։ Այս մասին կարելի է որոշ եզրակացություններ անել պահպանված հատուկ անունների հիման վրա։ Այսպես, խեթական Առնուվանդա թագավորի կնքած պայմանագրի մեջ հիշատակված է իշմերիգացի ոմն Aliųašu, այս անձնանունը գրեթե նույնությամբ համընկնում է հայ. աղուէս, սեռ. աղուեսու բառի ենթադրական այն ձևի հետ, որ պետք է միացնող օղակ լիներ հայերենի և հնդեվրոպական նախաձևի միջև (*ųlōpek'u- > *alōpek'u- > *aluųesu- > աղուէս, սեռ. աղուեսու)[39]։ Խեթ. տեքստի a-ն (e-ի դիմաց) կա-

[39] Հետաքրքրական է նշել, այս կապակցությամբ, նույն պայմանագրի՝ թերևս կենտումային հնդեվրոպական լեզվի պատկանող Lupakiu-ta-ն՝ Aliųašu-ի համեմատությամբ (?)։

րող էր արտացոլել e-ի նախնական բաց արտասանությունը։ Նույն պայմանագրում հիշատակված է Arziuta անձնանունը, որ թերևս կապ ունի հայ. արծուի, սեռ. արծույ բառի հետ. այս բառն իբրև հատուկ անուն օգտագործված է նաև ավելի ուշ՝ ուրարտական տեքստերում Arşibi-ni ձևով (Մենուա թագավորի ձիու անունը). անհնար չէ ենթադրել, որ Arziuta-ն բաղկացած է Arziu- հիմքից և -ta ցուցական հոդից, որ կարող էր խեթերի կողմից ընկալվել որպես անվան բաղկացուցիչ մաս։ Այս նույն ձևով Armatana տեղանունը, որ պահպանվել է հետագա Արմտան-ի մեջ (Մեծ և Փոքր Արմտաններ) և թերևս արմատով ընդհանուր է արմենների անվան հետ [Երեմյան, 1963, 40], ամենայն հավանականությամբ նույն ծագումն ունի, ինչ հայերենում պահպանված արմ||արմն, արմատ, զ-արմ բառերը (որոնք ծագում են հ.-ե. *er- «շարժ(վ)ել, հուզել, բարձրացնել» արմատից՝ *-m- կամ *-men- մասնիկներով. հմմտ. հուն. ὄρμενος «դողում, ընձյուղ», ὄραμνος «ճյուղ» և այլն) [հմմտ. ՀԱԲ, 1, 326—327]։

Խեթական տեքստերում հիշատակված Maldija-ն (հետագա Մալաթիան) որ ուրարտ. տեքստերում բերվում է Melite(j)a ձևով, ամենայն հավանականությամբ կապված է հ.-ե. *meli-t- «մեղր» արմատի հետ (հմմտ. հայ. մեղր, հուն. μέλι, -τος, սկյութ. μελιτον, խեթ. milit «մեղր» և այլն)։ Մնձուր, (Մազուր) լեռան (որից Մնձուր գավառ և Մնձուր գետ) անունը (խեթ. Muzuri, հուն. Μουζωδων, Μουζωθον, Μουντιθον, արաբ. Mazur, թուրք. Mizur, Muzur, Munzur, Menzur) թերևս կապված է հ.-ե. *men- «ցցվել» արմատից ծագող *mn̥t- «լեռ» նախաձևի հետ (հմմտ. ավ. mati- «լեռան գագաթ», լատ. mons, -tis, կոռն. meneth, բրետ. menez «լեռ» և այլն)։

8) Անհնար չէ Խորենացու հիշատակած՝ Հայկի հաջորդների և նախարարական տների որոշ անունների մեջ տեսնել հայասական թագավորների անունների և դիցարանական անունների արձագանքը՝ թրակյան հատուկ անունների հետ միասին. հմմտ. Արա (փոքրասիական դիցանուն), Տորք (փոքրասիական դիցանուն), Կադմոս (Կարիական լեռների աստված, Թեբեի առասպելական հիմնադիր)[40], Հայկակ, Հոյ (հմմտ. Ḫajaša), Սկայորդի (հմմտ. թրակ. Σκαιοι ցեղանունը) և այլն։

9) Եթե ճիշտ է Վ. Գեորգիևի կարծիքը էտրուսկերենի խեթա-լուվական ծագման մասին [Georgiev, 1962, 1970—1971, 1974][41], ապա հայաս-էտրուսկյան որոշ զուգադիպումներ լիովին հասկանալի են դառնում, և Հայասային նվիրված մեր աշխատություններում բերված փաստերը նոր լուսաբանություն ստանում։ Այս դեպքում հայ-էտրուսկյան զուգադիպումները պետք է բացատրել որպես հայասերենի՝ հայերենի մեջ ունեցած ներդրման արդյունք։

---

[40] Կադմոս անունը հույները հավանաբար փոխ են առել փյունիկեցիներից. փյունիկյան qdm արմատը նշանակում է «արևելք»։

[41] Գեորգիևի կարծիքը առայժմ ընդունելություն չի գտել, մանավանդ որ էտրուսկյան ազգակցական անունների և թվականների հնդեվրոպական ծագումը չի հաստատված.

# I. ԿԱՌՈՒՑՎԱԾՔ

## 1. ՀՆՉՅՈՒՆԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔ

*Եթե վաղնջական շրջանի համար նախաշրջանների առանձնացումը պայմանական բնույթ է կրում, ապա հնագույն շրջանի վերաբերյալ տվյալներն այնպիսիք և այնքան են, որ մենք կարող ենք որոշակիորեն գծել նախաշրջանների կառուցվածքային և բառապաշարային հիմնական առանձնահատկությունները։ Դեռ ավելին. ինչպես մասամբ ցույց է տրվել ներածական մասում, հնարավոր է որոշակի փուլեր առանձնացնել նաև ուշ հնագույն շրջանի համար։ Այնուհանդերձ նպատակահարմար է հնագույն շրջանի բնութագիրը տալ ոչ թե ըստ նախաշրջանների, այլ ըստ կառուցվածքի և բառապաշարի տարբեր կողմերի՝ դրանցից յուրաքանչյուրի ժամանակագրական համապատասխան բաշխումներով ու մասնանշումներով։*

*Նկատի ունենալով վաղնջահայերենի քննության մեջ բացահայտված վիճակը և հաշվի առնելով գրավոր շրջանի պարզացման վաղ (հատկապես դասական հայերենին հատուկ) փուլի առանձնահատկությունները՝ կարելի է գծել հնագույն շրջանի հնչյունական կառուցվածքի որոշակի պատկերը։*

*Հնագույն հայերենը բնութագրվում է ձայնավորային համակարգի հետևյալ հիմնական առանձնահատկություններով. 1) վաղնջահայերենի՝ հնդեվրոպականից եկող քանակային տարբերությունները աստիճանաբար վերանում են, և հայերենը զրկվում է երկար և կարճ ձայնավորների հնչույթային հակադրությունից. եթե այս դեպքում երկար* a-ն (ā) *առանց որևէ տարբերության համընկնում է հ.-ե.* *a-*ից,* *ə-*ից և* *ь-*ից ծագող, այլև վանկարար ձայնորդների վերացմամբ զուգընթաց հանդես եկած լրացուցիչ կարճ* a-*ի* (ă) *հետ, ապա երկար* e-*ն և* o-*ն* (ē, ō) *որպես ավելի նեղ ձայնավորներ վերածվում են* i-*ի և* u-*ի. այսինքն նախ՝ հին* e : ē *և* o : ō *քանակական հակադրությունը վերածվում է* e:i *և* o:u *որակական հակադրության, երկրորդ՝ ավելանում է* i *և* u *ձայնավորների ընդգրկումը. վերջիններս անկախ ծագման բնույթից* (*ĭ>i, *ī>i, *ē>i *և* *ŭ>u, *ū>u, *ō>u) *հնագույն շրջանի վերջերին՝ մոտավորապես մ. թ. III դարից սկսած ենթարկվում են անշեշտ վանկերում միևնույն փոփոխության՝ թուլացմամբ* (i>ə, u>ə) *կամ սղմամբ. հավանական է ենթադրել, որ այս շրջանում են կատարվում* e>i *և* o>u *փոփոխությունները ռնգայիններից առաջ՝* *heno >*hino (>հին), *conur>*cunur (>ծունր) *և այլն. 2) եթե վաղնջահայերենի* a *տարրն ունեցող* au, ai *երկբարբառները հնագույն հայերենում պահպանվում են նույնությամբ (գրաբարի վաղ հուշարձաններում դրանք գրվում են* աւ, այ*), ապա* oi *երկբարբառը համընկնում է* ei-*ի հետ (գրաբարի հուշարձաններում այն գրվում է* է-*ով) և, համապատասխանաբար,* eu *և* ou *երկբարբառները միատեսակ կերպով փոխվում են* oi-*ի (գրաբարի հուշարձաններում այն գրվում է* ոյ*), որ, այսպիսով, բռնում է* ei-*ի փոխված*

*նախկին* oi *երկբարբառի տեղը. 3) մասամբ միջձայնավորային* *s>*h-*ի անկման հետևանքով հանդես եկած ձայնավորային կապակցությունների, մասամբ էլ ձայնավորների և նախկին պայթականների շփականացման հետևանքով ծագած կիսաձայնների կապակցությունների բազայի վրա հանդես են գալիս նոր երկբարբառներ, որոնք լրացնում են գոյություն ունեցող երկբարբառների քանակը և ընդլայնում գործածության շրջանակները՝ հ.-ե.* *su̯esōr>*hweur>kᶜoir (քոյր), *հ.-ե.* *septm̥>*eutᶜan (>եւթն), *հ.-ե.* *pətros>*hauro (>հաւր) *և այլն. 4) աստիճանաբար հաստատվում է հնդեվրոպական լեզվում բացակայող՝ բարձրացող երկբարբառների և եռաբարբառների համակարգ՝* ia, ua, iai *և այլն։*

*Այս բոլոր փոփոխությունների հետևանքով հնագույն հայերենի զարգացման դեռևս վաղ շրջանում պետք է գոյություն ունենար ձայնավորների և երկբարբառների հետևյալ համակարգը.*

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| e | o | a | i | u | | | | |
| ei | oi | ai | ui | eu | au | iu | ia | ua |
| iai | uai | uau | uoi | | | | | |

*Վաղնջահայերենի ձայնորդների կարգը շարունակում է գոյություն ունենալ գրեթե նույնությամբ, թեև մասնակի փոփոխություններ են տեղի ունենում նրանց իրացումներում. 1)* l *ձայնորդը աստիճանաբար հանդես է գալիս դիրքային երկու տարբերակի ձևով՝* l *և* ł, *որոնք շրջանի վերջերին վերածվում են անկախ հնչույթների՝ հանդես գալով միևնույն դիրքերում ևս. հմմտ. գրաբարյան* աղի *և* աճալի. *2) բառասկզբնային* y *և* w *կիսաձայները հետագա ուժեղացմամբ վերածվում են* ǰ *և* g *բաղաձայնների, ընդ որում* g-*ն այս դեպքում թերևս անցնում է* gw *միջակա աստիճանով. հմմտ.* *yuro> *ǰuro (>ջուր), *yani > *ǰani (> ջան-), *woiniyo> *gwolniyo > *gwlniyo (>*վրաց.* γwino) > *giniyo (>գինի). *և այլն. Հնարավոր է, որ* *y>ǰ *փոփոխությունն ընդգրկած լինի նաև ետբաղաձայնական դիրքը (վանկասկիզբը). հմմտ.* *genyemi > *ǰinǰemi >ջնջեմ). *բառասկզբնային* *w-*ի վերածվելը* g-*ի տեղի է ունեցել վաղ հնագույն շրջանի վերջերին. այդ պատճառով էլ այն ընդգրկում է ուրարտական փոխառությունները (հմմտ.* Uelikuni >Gela(r)k'uni *տեղանունը), բայց չի ընդգրկում իրանական վաղ փոխառությունները, որոնք գերազանցապես պարթևերենից են և պատկանում են ուշ հնագույն (նախագրաբարյան) շրջանին.* w>g *փոփոխությունն ունենում է նաև մի այլ հետևանք՝ փոփոխվում են* w *պարունակող նաև այլ կապակցություններ. այսպես,* *su̯-*ից առաջացած* *hw-*ն վերածվում է* k'-*ի* (ք)՝ *հ.-ե.* *su̯idrom > *վ.-հ.* *hwirton > *k'irtun (>քիրտն). *3)* *s> h *փոփոխության հետևանքով* r-*ի կողքին հանդես է գալիս* ṙ-*ն՝* rh-*ից և* hr-*ից* (*rs, *sr). *4) կիսաձայնների, որպես երկբարբառների երկրորդ տարրերի, կազմն ընդլայնվում է՝ պայթականների շփական տարբերակների կիսաձայնացման հետևանքով՝ հ.-ե.* *pətḗr> *վ.-հ.* *hatir >*հնգ. հ.* *háyir (> հայր), *հ.-ե.* *pətrós > *վ.-հ.* *hatro >*հնգ. հ.* *hauro (> հաւր) *և այլն.* *t>y *փոփոխության համար հմմտ. փոխառյալ* սայլ *բառը՝* σάτιλλα-*ից։*

*Հնագույն հայերենը բնութագրվել է բաղաձայնական համակարգի հետևյալ փոփոխություններով. 1) այս շրջանի ամենից ավելի նշանակալից փո-*

փոխություն պայթական բաղաձայնների երկրորդ քմայնացումն է, որի հետևանքով առաջանում են *ǰ, č, č$^{c}$ շշական կիսաշփականները և մասամբ, միջձայնավորային դիրքում, ž, š շփականները. այս փոփոխությունն ընդգրկում է ինչպես ետնալեզվային g, k, k$^{c}$, այնպես էլ առաջնալեզվային d, t, t$^{c}$ պայթականները y-ից և առաջին շարքի e, i ձայնավորներից առաջ. հմմտ. հ.-ե. *g$^{u}$hermo- > վ.-հ. *germo > հնդ. հ. *ǰermo (> ջերմ). հ.-ե. *gem- > վ.-հ. *kem- > հնդ. հ. *člm- (ճիմ-, ճմլել). հ.-ե. *ligh- > վ.-հ. *lig- > հնդ. հ. *liž- (բրբռ. լիժ «ողորկ»). հ.-ե. *u̯eikero- > հնդ. հ. *geišero (> գիշեր) և այլն. պայթական բաղաձայնների քմայնացման և կիսաշփականացման այս պրոցեսներն ակնհայտորեն զուգահեռ են y-ի ուժեղացման և ǰ-ի վերածվելու պրոցեսին, ընդ որում որոշ դեպքերում դժվար է դրանց հստակ տարբերակումը. այսպես, գրաբ. ստերջ բառը կարող է ծագած լինել ինչպես հ.-ե. *sterḭā, այնպես էլ *sterdhḭā ձևից. 2) եթե վաղնջահայերենում հ.-ե. *s-ից ծագող h-ի՝ միջին վանկերում ընկնելու հարցը դժվար է դրականորեն լուծել, ապա հնագույն հայերենում այդ պրոցեսի ավարտվելը կասկած չի հարուցում. հենց այս շրջանում է հ.-ե. *su̯esōr-ից ծագած վաղնջահայ *hwe(h)ur-ը դառնում k$^{c}$oir (քոյր)։

Բաղաձայնական կազմի կրած այս փոփոխությունների հետևանքով վաղնջահայերենի բաղաձայնական համակարգը հնագույն հայերենում ստանում է հետևյալ տեսքը.

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| b(h) | d(h) | g(h) | ḭ(h) | ǰ(h) | z | ž |
| p | t | k | c | č | s | š |
| p$^{c}$ | t$^{c}$ | k$^{c}$ | c$^{c}$ | č$^{c}$ | x | h |

Հնագույն հայերենի վանկը վաղ շրջանում, նախքան շեշտահաջորդ վանկերի թուլացումն ու անկումը, սահմանափակված է եղել այնպիսի տիպերով, որոնց համար բացառվում է պայթականով վերջանալը. վաղ հնագույն շրջանի վանկը կարող էր վերջանալ միայն ձայնավորով կամ երկբարբառով (այսինքն՝ լինել բաց վանկ), ձայնորդով և շփականով [Джаукян, 1978, էջ 139]։

Հնագույն հայերենի շրջանի համար խիստ կարևոր են շեշտի հետ կապված փոփոխությունները։ Հնդեվրոպական ազատ երաժշտական շեշտը այս շրջանի վաղ ենթաշրջանում արդեն վերածվել էր հիմնականում վերջընթեր ուժային շեշտի. ավելի ճիշտ, այդ շեշտը մեծ չափով պայմանավորված էր ձևաբանական գործոնով՝ լինելով շարժական և ընկնելով ուղիղ հոլովներում հիմքային ձայնավորի և թեք հոլովներում՝ վերջավորության վրա։ Սրա հետևանքը լինում է վաղ հնագույն ենթաշրջանի վերջերին շեշտահաջորդ վանկերի թուլացման կամ անկման պրոցեսի ավարտը, այսինքն՝ շեշտահաջորդ ձայնավորներն ընկնում են, իսկ նախաշեշտ ձայնավորները թուլանում են կամ սղվում. *órbo>órb (որբ), սեռ. *orbóyo>orbóy (որբոյ)։ Շեշտի հետ կապված երկրորդ կարևոր պրոցեսը, որ ավարտվում է մ. թ. II դարի վերջերին կամ III դարի սկզբներին, նախաշեշտ վանկերի որոշ ձայնավորների ու երկբարբառների փոփոխությունն է. 1) վերին շարքի i և u ձայնավորները դրա հետևանքով միավանկ հիմքերում թուլանում և փոխվում են ə-ի, իսկ բազմավանկ բառերում սղվում են, եթե բաղաձայնների այնպիսի կուտակում

չի ստեղծվում, որ պարտադիր է դարձնում ə-ի արտասանությունը. Համեմատ. *dinem > dənem (դնեմ), *huroi (սեռ. հ.) > hərol (հրոյ). 2) միջին շարքի e և o ձայնավորներով կազմված ei և oi երկբարբառները նեղանում և փոխվում են վերին շարքի i և u ձայնավորների՝ *seirem > sirem (սիրեմ), *loisin lusin (լուսին), *loisoi (սեռ. հ.) > lusoi (լուսոյ). 3) տարբեր աղբյուրներից ծագող ia բարձրայող երկբարբառը, որի i-ն a-ի ազդեցությամբ լայնանում է և մոտենում e-ին (գրաբարում գրվում է եա), շեշտից առաջ կարճանում է և վերածվում e ձայնավորի՝ *keac$^{c}$i > kec$^{c}$i (կեցի «ապրեցի»)։ Այս բոլոր փոփոխությունները ընդգրկում են ոչ միայն հնդեվրոպական ծագման բառերը, այլև իրանական, ասորական, հունական և այլ կարգի այն փոխառությունները, որոնք կատարվել են մ. թ. III դարից առաջ։ Այս փոփոխությունների հետևանքով ստեղծվում է մի վիճակ, երբ՝ 1) նախաշեշտ վանկերում ei, oi, ia (ea) երկբարբառները չեն հանդիպում՝ փոխարինված լինելով i, u, e ձայնավորներով. 2) առաջանում են մեծ քանակությամբ ə-ով վանկեր, իսկ i-ով և u-ով վանկերը մեծ մասամբ գալիս են ei-ով և oi-ով վանկերից. միայն մի քանի միավանկ, հատկապես i-ով և u-ով սկսվող բառերում նախաշեշտ i-ն և u-ն պահպանվում են՝ himan (հիման. համեմատ. հիմն), usoi (ուսոյ. համեմատ. ուս). 3) բառակազմության և թեքման մեջ հաստատվում են շեշտի դիրքով պայմանավորված հերթագայություններ՝ gír—gərói, húr—hərói, séir > siról, lóis > lusól, keánk$^{c}$—kenác$^{c}$, keác$^{c}$—kec$^{c}$í և այլն։

## 2. ՁԵՎԱԲԱՆԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔ

Ձևաբանական կառուցվածքի առումով Հնագույն հայերենի վաղ և ուշ ենթաշրջանների միջև արմատական տարբերություն է առաջանում շեշտահաջորդ ձայնավորների թուլացման ու անկման և ավելի ուշ՝ շեշտանախորդ վանկերի ձայնավորների ու երկբարբառների կրած փոփոխությունների հետևանքով։ Հնագույն հայերենը վաղնջահայերենի նման շարունակում էր մնալ թեքական լեզու, թեև խոնարհման մեջ, ինչպես կտեսնենք, աստիճանաբար մեծանում է նկարագրական-վերլուծական ձևերի թիվը։

Հնագույն հայերենի համար կարելի է վերականգնել հոլովական համակարգի հետևյալ կարևոր փոփոխությունները. 1) շարունակվում է ձայնավորահիմք և ձայնորդահիմք հոլովումների հակադրության պրոցեսը՝ հնդեվրոպական բնավոր (թեմատիկ) և անբուն (աթեմատիկ) հիմքերի հակադրության փոխարեն. այդ պրոցեսը իր ավարտին է հասնում հատկապես ուշ Հնագույն ենթաշրջանում՝ շեշտահաջորդ վանկերի թուլացումից կամ անկումից հետո. թեմատիկ -o-ով հիմքերին հար և նման հոլովվում են նաև նախկին a-ով, i-ով և u-ով հիմքերը, այսինքն՝ բոլոր ձայնավորահանգ հիմքերը սկսում են հոլովվել միատեսակ՝ այդ տեսակետից հակադրվելով ձայնորդահանգ հիմքերին. 2) այս պրոցեսին ուղեկցվում է երկակի թվի և սեռային տարբերությունների վերացման պրոցեսով. երկակի թվի վերացումը տեղի է ունենում նաև խոնարհման համակարգում, ընդ որում հոլովման մեջ պահպանվում են միայն երկակի թվի առանձին հետքեր, որոնք համակարգ չեն կազմում. սեռային տարբերությունների վերացումը ունենում է նաև այն հետևանքը, որ հ.-ե. ար. *ii̯os, չեզոք *-ii̯om- և իգ. *-ii̯ā ձևերի բազայի հիման վրա հանդես

է գալիս i-ով վերջացող բառերի մեկ միասնական հոլովում. միայն արա- կան սեռի բառերը շարունակում են մնալ o-ով հիմքերի մեջ, իսկ ստորև սեռերով հոլովվող ածականները և իգական սեռի գոյականները սկսում են հոլովվել միատեսակ հարացույցով, որ իր մեջ պարունակում է մասամբ արականի և մասամբ իգականի ձևեր. Համմտ. հին հայերեն **որդի**, *սեռ.-տր.* **որդւոյ**, *գործ.* **որդւով** և **բարի**, *սեռ.-տր.* **բարւոյ**, *գործ.* **բարեաւ**. 3) նախկին -ā-ով հիմքերի մեջ, շեշտահաջորդ ձայնավորների թուլացման և անկման ընդհանուր պրոցեսի հետ կապված, սեռական-տրական ընկած վերջավո- րությունների փոխարեն հանդես է գալիս համանմանաբար նախկին *-i̯o- ածան- ցից ծագող -i վերջավորությունը, և նախկին *-ā-ով հիմքերի հոլովումը վե- րակառուցվում է i/a- հիմքերի ձևով. Համմտ. հին հայերեն **ամ**, *սեռ.-տր.* **ամի**, *գործ.* **ամաւ** և այլն. 4) ինչպես որ նախկին *-ā-ով հիմքերի սեռական- տրականի նախկին վերջավորությունները փոխարինվում են *-i̯e- ածան- ցից ծագող ձևերով, այնպես էլ հոգնակի սեռական-տրականում այդպիսի դեր է ստանձնում նախկին *-sko- (>$c^c$=ց) ածանցը, որ, սակայն, ի տար- բերություն նախորդի, տարածվում է բոլոր հիմքերի վրա՝ հիմքային տարրե- րի (այդ թվում՝ ձայնավորների) պահպանմամբ հանդերձ. Համմտ. հին հայե- րեն *սեռ.-տր.* **ամաց, գետոց, սրտից, վարդուց, անձանց, մանունց**. 5) բացի նախկին թեմատիկ հիմքերից, մնացած դեպքերում բացառականի ընդհանուր վերջավորություն է դառնում նախկին *-etes/-etos-ից ծագող -ei (-է) վերջավորությունը. 6) շեշտահաջորդ ձայնավորների թուլացման ու անկման և սրա հետևանքով հոլովական որոշ ձևերի խառնման հետ կապված մեծա- նում է *en > i/j (ի/յ) և *g'hō > z (զ) նախդիրների դերը, որոնցից առաջինը դառնում է բացառականի և ներգոյականի կազմության պարտադիր տարր, իսկ երկրորդը՝ որոշիչ հայցականի պարտադիր ցուցիչ. Համմտ. հին հայերեն **ամ**, *բցռ.* **յամէ**, *ներգ.* **յամի**, *որոշյալ հայց.* **զամ**:

Հնագույն հայերենի խոնարհման համակարգը ենթարկվել է հետևյալ էական փոփոխություններին. 1) մի կողմից՝ բնավոր (թեմատիկ) և անբուն (աթեմատիկ) հիմքերի մերձեցումը և մյուս կողմից՝ բնավոր (թեմատիկ) խոնարհման մեջ e/o հերթագայության վերացումը հօգուտ e-ի (հոլովման մեջ գերակշռություն է ստանում o-ն), հանգեցնում են մի վիճակի, երբ խո- նարհման բոլոր տիպերի համար հաստատվում է միևնույն կաղապարը՝ ձայ- նավորների և երկբարբառների տարբեր խրացումներով. այդ պրոցեսը իր ա- վարտին է հասնում ուշ հնագույն շրջանում՝ շեշտահաջորդ ձայնավորների անկման հետևանքով. Համմտ. հին հայերեն **բերեմ, բերես, բերէ** (=berei), **բերեմք, բերէք** (=beretk^c), **բերեն** և **մնամ, մնաս, մնայ, մնամք, մնայք, մնան**. 2) հնդեվրոպական բնավոր (թեմատիկ) ու անբուն (աթեմատիկ) հիմ- քերի նախկին տարբերությունը ներկայի և սիգմատիկ (*-s-ով) ու ասիգմա- տիկ (առանց *-s-ի) հիմքերի տարբերությունը աորիստի ձևերում փոխարին- վում է ածանցավոր և անածանց (եթե ածանցներ չհամարենք նախկին հիմ- քակազմ ձայնավորները) հիմքերի տարբերությամբ, ընդ որում ներկայի հա- մակարգում այն դրսևորվում է որպես -n- ու -$\check{c}^c$- (-ն- ու -չ-) ունեցող և չու- նեցող, իսկ աորիստի համակարգում՝ որպես $c^c$ (ց) ունեցող (ցոյական) և չունեցող (ոչ ցոյական) հիմքերի տարբերություն. այս տարբերությունն ա- վելի է ուժեղանում շեշտահաջորդ ձայնավորների անկումից հետո, մանա- վանդ որ նախկին հիմքակազմ ձայնավորներն ընկալվում են որպես վերջավո- րության տարրեր (այսինքն՝ հ.-ե. *-ǝ-mi-ի փոխարեն, որտեղ *-ǝ-ն հիմքա-

կազմ տարր է, *-mi-ն՝ բուն վերջավորություն, սկսում է հանդես գալ -am-ը որպես միասնական վերջավորություն). գերակշռող մեծամասնությամբ ներկայի և աորիստի հիմքերը հակադրվում են այնպես, որ ներկայի ածանցավոր հիմքերին համապատասխանում են աորիստի անածանց (ոչ ցոյական), անածանց հիմքերին՝ աորիստի ածանցավոր (ցոյական) հիմքերը. հմմտ. հին հայերեն ուս-ան-(իմ)—ուս-(այ), բայց մն-(ամ)—մն-աց-(ի). ընդհանուր առմամբ խոնարհման ողջ համակարգը տոգորում է ներկայի և աորիստի հիմքերի հակադրությունը. 3) հ.-ե. *-sk (*sk´)-ից եկող $c^c$-ով (ց-ով) հիմքերը, որոնք դեռևս վաղնջահայերենում արդեն սկսել էին ընդարձակել իրենց գործածության շրջանակները, այս շրջանում մեծ չափով հանդես են գալիս խոնարհման համակարգում՝ ոչ միայն աորիստում, այլև ապառնիում և, այսպես կոչված, ստորադասականում. հմմտ. հին հայերեն գրեցի, ապ. գրեցից, հրամ. գրեցէք, ստոր. գրիցեմ. 4) մասամբ հնչյունական և մասամբ ձևաբանական ընդհանուր փոփոխությունների հետ կապված հնդեվրոպական ըղձականի և ստորադասականի (կոնյունկտիվի) ձևերը վերանում են, ընդ որում հնդեվրոպական ստորադասականի փոխարեն հանդես են գալիս, ինչպես տեսանք, -ց-ով ստորադասականի նոր ձևեր. 5) հ.-ե. *-lo- ածանցով կազմված դերբայական ձևերի ընդլայնման և տարածման հետ կապված մեծանում է այդ դերբայներով և օժանդակ բայով կազմված վերլուծական-նկարագրական ձևերի տեսակարար կշիռը. հին հայերենում հանդես են գալիս -եալ եմ, -լոց եմ տիպի եղանակային ձևերը, այլև -լի է տիպի ստորոգական գործածության ձևերը. 6) չնայած այս բոլոր պրոցեսներին՝ խոնարհման համակարգում դեռևս շարունակում են գործել մեծ քանակությամբ արխաիկ անկանոն ձևեր, շարունակում է մեծ մնալ տարահիմք (սուպլետիվ) ձևերի տեսակարար կշիռը։

## 3. ՇԱՐԱՀՅՈՒՍԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔ

Վաղնջահայերենի համեմատաբար ազատ շարադասությունը, որ նա ժառանգած է եղել հնդեվրոպական լեզվից, հնագույն հայերենում հիմնականում պահպանվում է և անցնում հին հայերենին. ենթակայի և ստորոգյալի, որոշչի և որոշյալի, հատկացուցչի և հատկացյալի, խնդրի և խնդրառուի շարադասությունը կախված է ինչպես նախադասության բնույթից ու տրամաբանական շեշտից, այնպես էլ նրա ոճական կիրառության առանձնահատկություններից. այսպես, որոշչի ետադաս գործածությունը ավելի հատուկ է եղել ճարտասանական և հանդիսավոր, նախադասը՝ առօրյա-կենցաղային, սովորական խոսքին։ Խախտված է որոշչի և որոշյալի համաձայնության պարտադրականությունը. եթե ետադաս որոշչի համաձայնությունը որոշյալի հետ գրեթե ընդհանուր բնույթ ունի, ապա նախադաս որոշիչները սովորաբար չեն համաձայնում։ Որոշչի և որոշյալի համաձայնությունն ընդգրկում է, ի տարբերություն հնդեվրոպականի և, հավանաբար, վաղնջահայերենի, հինգ և ավելի թվականների որոշչային գործածությունը։

Հնագույն հայերենում աստիճանաբար զարգանում է ձևական խնդրառությունը՝ խնդրի հոլովական ձևավորման կախվածությունը ոչ այնքան նախադասության ընդհանուր իմաստից, որքան խնդրառու բառի հետ ունեցած

հարաբերությունից՝ ըստ պատմական պայմանավորվածության. այդպիսիք են հին հայերենում, օրինակ, հետևյալ դեպքերը. «բուռն հարկանել զձեռա-նէ» («բռնել ձեռքից»), «յղել զնողոյ և զջրոյ» («ուղարկել հողի և ջրի ետևից»), «ծիծաղել զնովաւ» («ծիծաղել նրա վրա»), «նախանձել ընդ ումեք» («նախան-ձել մեկին»), «ասէ ցիս» («ասում է ինձ») և այլն։

Համանաբար հնագույն հայերենում է զարգանում երեք դեմքերին հարա-բերակից ս, դ, ն եռադաս հոդերի լայն կիրառությունը. ըստհանրապես այս շրջանին պետք է վերագրել ցուցականների եռադիմության համակարգը՝ սա, դա, նա, այս, այդ, այն, սոյն, դոյն, նոյն։ Միաժամանակ կարևոր է նշել, որ նախ՝ տեղի է ունենում այս, այդ, այն դերանունների և հոդերի դիմային յու-րատեսակ համաձայնություն («ղայրն գայն», «զբանս զայսոսիկ» և այլն), երկրորդ՝ հատուկ որոշյալ արժեք է սկսում ձեռք բերել ն հոդը։ Ամենայն հա-վանականությամբ հնագույն հայերենի շրջանում է զարգանում զ նախդրի (<հ.-ե. *g'hō)՝ որոշյալ հայցական նշանակիչի գործառությունը։

Հնդեվրոպական *jo- հարաբերական դերանվան փոխարեն հարցական-ների հարաբերական գործածության՝ թերևս վաղնջահայերենում սկսված պրո-ցեսը այս շրջանում ավարտվում է։ Դերբայական դարձվածների հետ միասին հանդես են գալիս շաղկապների բավականաչափ լայն շրջանակով ներկայաց-ված երկրորդական (ստորադաս) նախադասություններ. շաղկապներր ձևա-վորվում են մասամբ հնդեվրոպական սպասարկու բառերի և հարցական դե-րանունների հիման վրա՝ և, եթէ, այլ, քանի և այլն, մասամբ եղած միջոցների զուգորդմամբ ու բաղադրմամբ՝ զի, և—և, եթէ—եթէ, քանզի, քանի եթէ, մինչ զի, այսինքն և այլն, մասամբ փոխառյալ բառերի և նրանց ու բնիկ բառերի զուգորդման ու բաղադրման միջոցով՝ կամ, թէպէտ, յորժամ և այլն (կամ-ը, պէտ-ը, ժամ-ը իրանական ծագում ունեն)։

Հնդեվրոպական ծագման ի,զ, առ, ց, ընդ, ըստ նախդիրների կողքին հնագույն հայերենում ստորճանաբար նշանակալից արժեք են ձեռք բերում զգալի թվով նախադրություններ և նույնիսկ ետադրություններ՝ կազմված մասամբ հնդեվրոպական բառերի, մասամբ էլ իրանական և այլ կարգի փոխ-առությունների հիման վրա. հնդեվրոպական բառերի հիման վրա են կազ-մավորվել առանց, առաջի, բա(յ)ց ի, գաղտ, զկնի «ետևից. հետո», զհետ, իբրև, ի ձեռն, ի մէջ, ի ներքոյ, ի ներքուստ, ի վերայ, ի վերոյ, ի վերուստ, նեռի, նետէ, մատ ի/առ, մերձ ի, մինչև ի/առ/ց, քան և այլն. իրանական և այլ կարգի փոխառությունների ու անհայտ ծագման բառերի հիման վրա են ձևավորվել աղագաւ (և յաղագս), զաւրէն, ընդդէմ, ի սակս, ճանդէպ, ճան-դերձ, յանդիման, շուրջ, չափ, պէս (և որպէս), վասն և այլն։

## 4. ԲԱՌԱԿԱԶՄՈՒԹՅՈՒՆ

### ա) ՎԵՐՋԱԾԱՆՑՈՒՄ

Վաղնջահայերենից ժառանգելով բառակազմական հիմնական կաղապար-ները և իրացման միջոցները՝ հնագույն հայերենը դրանք մասամբ փոփո-խել է, մասամբ լրացրել նոր կաղապարներով ու նոր միջոցներով (իրացում-ներով). վաղնջահայերենի մի շարք գործուն ու արդյունավետ կաղապարներ ու միջոցներ դադարել են այդպիսին լինելուց, և առաջացել են նորերը։ Հին

բաղադրությունների մի մասը դուրս է եկել գործածությունից և փոխարինվել նորերով, հայերենի մեծաքանակ փոխառությունները հիմք են տվել բառակազմական նոր միջոցների ու նոր եղանակների առաջացման համար։

Վաղնջահայերենից հնագույն հայերենի ժառանգած վերջածանցների համակարգը քննելիս հարկավոր է նկատի ունենալ երկու կարևոր գործընթաց. 1) բնավոր (թեմատիկ) և անբուն (աթեմատիկ) հիմքերի հակադրության աստիճանական փոխարինումը ձայնավորահանգ և ձայնորդահանգ հիմքերի հակադրությամբ համապատասխան ազդեցություն է թողնում նաև բնավոր և անբուն հիմքեր կազմող ածանցների փոխհարաբերության վրա. շեշտահաջորդ վանկերի թուլացումից և անկումից հետո բնավոր և անբուն հիմքերի, այլև դրանք կազմող ածանցների հակադրությունն ընդհանրապես դադարում է որևէ նշանակություն ունենալուց. 2) ինչպես այլ դեպքերում, այնպես էլ վաղնջահայերենից հնագույն հայերենին անցնելիս տեղի են ունեցել հիմքերի վերատարալուծման և պարզեցման երևույթներ, որոնք լայն չափեր են ընդունել մանավանդ վաղ հնագույն ենթաշրջանի վերջերից՝ շեշտահաջորդ վանկերի թուլացումից և անկումից հետո. հիմքային ձայնավորների անկումը բառավերջում և նրանց պահպանումը բառամիջում հանգեցնում է այն բանին, որ դրանք գիտակցվում են մասամբ որպես հիմքերից անկախ տարրեր և անցնում հաջորդ բաղադրիչներին, տվյալ դեպքում՝ վերջածանցներին, մասամբ որպես անկախ կազմիչներ, ինչպես -a- (**-ա-**) հոդակապի դեպքում. վերջինիս տարածումը էական նշանակություն է ունենում ոչ միայն բարդության, այլև վերջածանցման համար, որտեղ առաջանում են հոդակապավոր և անհոդակապ ածանցների խմբեր. հոդակապավոր ածանցները մասամբ գալիս են նախկին բարդություններից՝ սրանց երկրորդ բաղադրիչների ածանցացումով, մասամբ արդյունք են համաբանական և այլ կարգի երևույթների։ Այս երկու գործընթացները քիչ դեր չեն խաղում որոշ ածանցների գործուն և կենսունակ լինելուց դադարելու մեջ։

Բացի ներքին զարգացմամբ պայմանավորված երկու գործընթացներից, հին հայերենի վերջածանցների կազմավորման համար էական դեր են խաղում նաև արտաքին ենթաշերտային ազդեցությամբ և մեծաքանակ փոխառություններով պայմանավորված երևույթները։ Օտար աղբյուրներից ծագող արմատական և վերջածանցավոր ձևերի միաժամանակյա առկայությունը առաջ է բերում վերջածանցների ինքնուրույն գործածություն, և օտար ածանցներն սկսում են բառեր կազմել նաև բնիկ հայերեն հիմքերից։

Հնդեվրոպական շրջանից եկող և վաղնջահայերենում դեռևս գործող բնավոր (թեմատիկ) ածանցները (*-ko->հ. հ. **-ք**, *-mo->հ. հ. **-մ**, *-ro->հ. հ. **-ր**, *-tero->հ. հ. **-յր**, **-դեր** և այլն) հնագույն հայերենում իրենց «մաքուր» ձևով հիմնականում դադարում են գործուն լինելուց՝ պահպանվելով մասամբ նախորդ ձայնավորների, մասամբ իրար ու այլ ածանցների հետ զուգակցված բաղադրյալ ածանցների ձևով։ Շեշտահաջորդ վանկերի թուլացումից և անկումից հետո «ձայնավոր+նախկին բնավոր ածանց» կապակցությունները ընկալվում են որպես միասնական ամբողջություններ և տարածվում իբրև այդպիսիններ, ընդ որում որոշ դեպքերում գերակշռություն է ստանում ձայնավորներից մեկը, այլ դեպքերում հանդես են գալիս ածանցի ձայնավորային տարբերակներ։ Այս նույն բանը նկատվում է նաև նախկին անբուն ածանցների դեպքում, որոնք համեմատաբար լավ են պահպանվում։

*Եթե նախկին բնավոր և անբուն ածանցներից ծագած տարբերակները բերենք հին հայերենում ավանդված ձևով, ապա կարելի է ասել, որ հնագույն հայերենը ունեցել է վաղնջահայերենի ածանցների և նույնիսկ վերջավորությունների հիման վրա կազմված հետևյալ հիմնական ածանցները՝* **-ի(-ք), -նի, -իչ (-ուչ), -ել (-իլ, -ալ, -ուլ), -եալ, -չի, -լոց, -ող** *(ոչ գործուն),* **-ին, -ա-յն, -ուն, -ար, -որ, -ուր, -իր, -(ե)րորդ, -եար, -ացի (-եցի), -ացու, -ոց (-ան-ոց), -աց(-ք) (-եաց, -ոյց), -ից-ս, -ոտ, -ոտի, -ուտ, -տի, -որդ, -իկ(ն), -ուկ(ն), -իւն, -ութիւն, -ու-մն, -աւղ (-ող), -եստ (-իստ, -աստ, -ուստ), -ոյթ, -ունդ, -ու(-ք), -աւ (-եաւ, -եւ, -իւ, -ով, -ու), -ովի(ն) (-եւի(ն), -ուստ** (*«-ից». հմմտ.* **ուստի**): *Սրանց հետ միասին գործում են նախկին բարդությունների երկրորդ բաղադրիչների հիման վրա ստեղծված այլևայլ ածանցներ՝* **-արար, -ապ, -ած (-ած-ոյ, -ած-ու, ած-ոյ-ք, -ու-ած), -ա-կից, -ա-կալ, -ա-մած, -ա-տուր (-տուր), -եղ (-եղ-ի), -ա-նար (>-ար)**: *Թերևս փոխառության հիման վրա է ծագել* **-ատ<-հատ** *ածանցը «հատված, կտրված» իմաստով։ Այս ածանցները գործում են նաև ենթաշերտային ծագման և փոխառյալ շատ հիմքերի վրա՝ նշանակալից չափով ավելացնելով ածանցյալ բառերի քանակը՝* **վայր-ի, դատ-իչ, վայել-ուչ, վար-ել, դիւր-ին, սակ-այն, խաւս-ուն, մթ-ար, փոք-որ, ճախճախ-ուտ, փոխան-որդ, ասպետ-ութիւն, պահ-եստ** *և այլն։*

*Թվարկվածներին միանում են այն ածանցները, որոնք ծագել են ենթաշերտային ազդեցության և փոխառությունների հիման վրա, երբեմն էլ բարբառային տարբերակների՝ ստանդարտ լեզվի մեջ թափանցելու միջոցով։ Սրանց մասին մենք առիթ կունենանք խոսելու հայերենի կրած օտար ազդեցությունների քննության հետ կապված, բայց այստեղ դրանք բնութագրենք ընդհանուր ձևով։ Հայերենի մեջ, անշուշտ, մեծ տեղ են բռնում ուրարտական և իրանական ծագման ածանցները, որոշ դեպքերում էլ ածանցների բուն աղբյուրներն ընդհանրապես հայտնի չեն։ Իրանական ազդեցությունը որոշ դեպքերում չափազանցված է, զուգադիպումները՝ երբեմն պատահական. մի շարք դեպքերում էլ այն ալտահայտվել է միայն գոյություն ունեցող ածանցների տարածման առումով։ Հայերենի մեջ մուտք գործած ածանցների մի մասը գործուն և արդյունավետ է, մյուսները հանդիպում են միայն հազվադեպ օրինակների մեջ։ Ստորև բերվող ածանցների համար նախ տրվում են հնդեվրոպական, ապա այլ ծագման հիմքերից կազմված բառեր, ընդ որում ընտրվում են միայն հին հիշատակություններ ունեցողները. սակայն նկատելի է, որ գրավոր շրջանում տարածված մի շարք ածանցներ դասական փուլի հուշարձաններում ավելի փոքր հաճախականություն ունեն՝ մանավանդ հնդեվրոպական հիմքերի դեպքում. այսպիսով, բերվող որոշ ածանցներ նախագրային շրջանում սակավադեպ գործածություն պիտի ունեցած լինեն, որոշ օրինակներ էլ թերևս մատենագրական կազմություններ են՝ ոչ այնքան հաճախադեպ.*

*-ա-գար (իրան.)՝ աչագար, գլխագար, այլև խելագար.*

*-(ա-)գին (իրան.)՝ գորովագին, հիվանդագին, ողբագին, սրտագին, ցասագին, այլև ահագին, դիւագին, կաթոգին (կաթո- հիմք), ուժգին, վշտագին և այլն.*

*-ա-գոյն (համեմատական ածականի արժեքով. հմմտ. նաև մկբ. -ա-գոյնս) (իրան.)՝ բարձրագոյն, երկայնագոյն, լաւագոյն, հնագոյն, երկարագոյնս, լայնագոյնս, այլև խոնարհագոյն, հեշտագոյն և այլն.*

-ա-ժէտ (իրան.)՝ լուսնաժէտ (ուշ), որկորաժէտ, այլև ախտաժէտ, նեն-գաժէտ (ուշ).

-ախ՝ ճարախ, յ-աճ-ախ, շաղախ, քացախ.

-ակ՝ գիտակ, երգակ, թրթրակ, լծակ, յաջողակ, սաորնակ, տեղեակ, այլև դիտակ, պահակ, վրիպակ և այլն.

-ակ (իրան.՝ -ա-կ(ն)-ի բաղարկութեամբ. համեմ. գիակն, այլև՝ -եակ, -իկ, -ոյկ, -ուկ)՝ անսասակ, գաւառակ, թիակ, որդեակ, այլև երամակ, կըղ-զեակ, վահանակ, վիշապակ և այլն.

-ա-կան (իրան.)՝ առաջելական, արուական, գաղթական, այլև ազգա-կան, իշխանական և այլն. իրանական ծագման բառերում հանդիպում են նաև առանց ա-ի ձևեր՝ գուժկան, վարձկան.

-ա-կեր (-ա-կար, -ա-կեար) (իրան.)՝ պատ(ա)կե(ա)ր, այլև վնասա-կար, համեղակեր և այլն.

-ակի՝ կողմնակի, երկակի, եռակի, քառակի, այլև վաղվաղակի, ուղղա-կի և այլն.

-այ(-ք) (համեմ. և -եայ(-ք). մասամբ՝ միայն իրան. հիմքերի հետ, կամ ամբողջովին իրան.)՝ աշնանայք, միջերկր(ե)այ, արկր(ե)այ, փոսկր(ե)այ, այլև ակամայ, կամայ.

-ային (-այ + -ին և իրա՞ն.)՝ անկողնային, աշնանային, գարն(ան)ային, մարդկային, ջերմային, այլև աշխարհային, դաշտային և այլն. Համեմ. նաև -այնի՝ գարնանայնի.

-այլ՝ մռայլ, այլև շռայլ (շեռ. համեմ. արբ-շի՞ռ).

-ան (մասամբ կամ լրիվ իրա՞ն. հոգնակիի -ան-ը իրանական ծագման է)՝ գլան, դեղձան, թռչան, խարան, կցան, ջնջան, սրբան «հետույք», այլև իշխան, ժաման և այլն.

-անակ (մասամբ իրա՞ն.)՝ (յ)եղանակ, այլև գանձանակ, փոխանակ և այլն.

-անար (հ.-ե.?)՝ անդանար (ուշ), սատանար, ուրանար (ուշ).

-անդակ (իրան.)՝ այլանդակ, այլև ածանդակ, բովանդակ և այլն.

-անի (համեմ. կենդ-ան-ի)՝ լեզուանի, հոլանի «մերկ» (հոլ-ն առանձին չի գործածված), հովանի, այլև պիտանի.

-անի (հավաքական իմաստով.նախորդի հետ նո՞ւյնը)՝ գլխանի, երի-ցանի, կանանի, այլև աւագանի և այլն.

-ան-ք՝ բամբասանք, զարմանք, մաղթանք, մեծարանք, մեղադրանք, այ-լև գրկանք, հրապուրանք և այլն.

-ան-ուտ՝ յորձանուտ (յորձան-ից՝-ուտ-ով), այլև հոսանուտ և այլն.

-ա-պան (իրան.)՝ դռնապան, լանջապան, այլև բանտապան, պարտա-պան և այլն. անհոդակապ տարբերակը բնիկ հիմքերով հին կազմություննե-րի մեջ չի հանդիպում.

-ա-պատիկ՝ կրկնապատիկ, եռապատիկ, այլև բիւրապատիկ, հազարա-պատիկ և այլն.

-ա-պէս (իրան.)՝ մեծապէս, ստուգապէս, այլև արագապէս, արժանա-պէս և այլն. անհոդակապ -պէս-ով և նրանից կազմված -պիսի-ով ձևերը հանդիպում են միայն դերանվանական հիմքերի դեպքում՝ այսպէս, -պիսի, որպէս, -պիսի և այլն.

-ա-ստան (իրան.)՝ այգեստան, անդաստան, ձիաստան, Հայաստան. այ-լև բուրաստան, դաստաստան, Հրէաստան և այլն.

-ա-վար (հմմտ. վար-ել<իրան.)՝ ամպավար, գոռծավար, այլև զաւրավար, կառավար և այլն.

-ատ (<հատ-)՝ միջատ, ունչատ, պնչատ, այլև գունատ, թլփատ և այլն (ոչ շատ հին կազմություններ).

-արան (իրան.)՝ աւթարան, գելարան, գործարան, այլև գանձարան, դատարան, պահարան և այլն.

-արար (հայ. -արար, մասամբ էլ իրան. -a-δar-՝ վերջին դեպքում երբեմն առանց անկախ գործածվող հիմքերի)՝ աղմկարար, կենարար, կենդանարար, արբարար, տնարար, այլև խոհարար, հանդերձարար, վնասարար և այլն։

-արէն/-երէն (իրան.)՝ փոխարէն, յունարէն, այլև ասորերէն, հայերէն և այլն (բնիկ հայերեն հիմքերի հետ չի հանդիպում).

-արիմ (հմմտ. -երիմ)՝ հաւատարիմ.

-աւանդ(ակ) (իրան.)՝ բարձրաւանդ(ակ), այլև գահաւանդ(ակ) և այլն.

-աւէտ (իրան.)՝ գինեւէտ, ընչաւէտ, թիկնաւէտ, այլև խաշնաւէտ, շահաւէտ և այլն.

-ան(-ք)՝ գեղան, գողան(-ք), գործան (=գործոն), կրան(-ք), գրան-ք, այլև կարան.

-աւրէն (-օրէն) (իրան.)՝ կենդանաւրէն, մարդկաւրէն, այլև աշխարհաւրէն, իշխանաւրէն և այլն.

-բն (<-մն?)՝ սկիզբն (սկսանիմ).

-եակ (-ի+-ակ-ից՝ համաբանորեն տարածված)՝ վեցեակ, տասնեակ, այլև մաշկեակ և այլն.

-եայ(-ք) (հմմտ. -այ)՝ այծեայ, անդեայ (և անդի), բրդեայ, հնգամեայ (=հնգամեան), այլև բեհեղեայ, պաշտաւնեայ և այլն.

-եան (իրան. և հայ. -ի+-ան? հաճախ հերթագայվում է -եայ-ի հետ)՝ արդեան «այժմյան», սերկեան, քառասնամեան, այլև ժամանակեան և այլն. Ծագմամբ սրա հետ կապվա՞ծ է արդյոք -եան(-ք) հավաքականը՝ գործեան, գրեան(-ք), այլև խոզեան, մոգեան և այլն. Հավանաբար մտնում է անձներական թվականների -(ե)քեան/-(ե)քին ածանցի կազմի մեջ՝ ամենեքեան/ամենեքին, երկոքեան/երկոքին, երեքեան/երեքին և այլն։

-եխ՝ զոռեխ (հ.-ե. *gher-՝ բնաձ.?), կեռնեխ (հ.-ե. *ger-՝ բնաձ.?), մեղեխ «կայնի կոթ» (հ.-ե. *mel- «փշրել, խփել, աղալ»?).

-եղէն (-եղ+-էն. վերջինս իրան. թե՞ բրբռ. -էն<-այն)՝ արծաթեղէն, բրդեղէն, հողեղէն, հրեղէն, այլև երկաթեղէն, ոսկեղէն և այլն.

-եմ՝ համեմ (ուշ), այլև խոհեմ.

-ենի (-եան+-ի)՝ լոբենի, հայրենի(-ք), այլև արմաւենի, թզենի, վայրենի, վարդենի և այլն.

-երիմ (հմմտ. -արիմ)՝ մտերիմ, այլև ոխերիմ (և ոխորիմ).

-եց-իկ (-եաց+-իկ)՝ գեղեցիկ, դիեցիկ, երգեցիկ, ընկեցիկ.

-էճ (իրա՞ն.)՝ բուէճ.

-էտ (?)՝ բրէտ (հմմտ. բոռ), կրէտ (հ.-ե. *ger-՝ բնաձ.?), այլև առնէտ (?).

-իճ՝ ուտիճ, լուիճ (ուշ), այլև դառնիճ «դառը. դառնահամ մի բույս», խառնիճ «մանր մորեխ», ճահ/խիճ (հմմտ. ճախ-ին), պատաղիճ «բաղեղ», պատիճ «կեղև» (ուշ).

-իկ (մասամբ *-իկ(ն)-ից, մասամբ էլ իրա՞ն.)՝ աղջիկ (-կան), Աստղիկ (-կան), փոքրիկ (-կան) և հայրիկ, ձկնիկ, մայրիկ, մանկիկ, այլև եզեգնիկ, կարմրիկ, պատանեկիկ (-ակ+-իկ) և այլն. հավանաբար նույն ծագումն ունի հավաքականի -իկ-ը՝ մարդիկ (-կան).

-իկ (իրան. հմմտ. նաև -ացիկ, -եցիկ, -ուցիկ)՝ թափանցիկ, մարտիկ, այլև (ան)աշխարհիկ, տոհմիկ և այլն.

-իմ (հմմտ. -ար-իմ, -եր-իմ)՝ միայն օտար հիմքով՝ ուշիմ, թերևս նաև կրճիմ(ն), ճղճիմ.

-իտ՝ միայն օտար հիմքով՝ ձրձիտ «գիշատիչ» (ձրձել «կորզել, կեղեքել»), թերևս նաև կրկիտ.

-իւղ (<*-i-ōl-?)՝ երկիւղ.

-կեան/-կէն (-իկ+-եան կամ -էն, թե՞ իրան.)՝ միայն օտար հիմքով՝ ժանտկէն, ծակոտկեան (-կէն), կոճկէն, հիւսկէն, ճանճկէն (հմմտ. ճանճիկ).

-կին՝ կրկին, երեքկին, չորեքկին, հնգեկին և այլն (չորեք-ը, հնգե-ն հիմքային հին ձևեր են, և կին-ը պետք է համարել հին արմատ կամ մասնիկ).

-կոտ (-իկ/-ուկ+-ոտ. հմմտ. տաղտուկ—տաղտկոտ)՝ ծիծաղկոտ, մոռացկոտ, նախանձկոտ (և նախանձոտ) (հ.-ե.?), փութկոտ (և փութոտ), այլև դանդաղկոտ, վախկոտ, փախչկոտ և այլն.

-կու (-իկ/-ուկ+-ու)՝ յաղթկու (հ.-ե.?), այլև հուժկու.

-ոգ՝ նորոգ.

-ող՝ գոռող.

-ոյ(-ք)՝ (մասամբ իրանական ծագման բառերում. իրա՞ն.)՝ բարոյք, երեկոյ, խնչոյ-ք (խնճոյ-ք), հեռոյ, այլև ազդոյ, ամաւթոյ-ք, արգոյ, հաճոյ-(-ք). այս ածանցն է առկա նաև -ածոյ բաղադրյալ ածանցի մեջ.

-ոյզ (հմմտ. -ոյց)՝ -ելոյզ, *ընկլոյզ, *-փլոյզ.

-ոյկ (իրան.)՝ խարոյկ (խար-<հ.-ե., թե՞ իրան.), այլև ձորձոյկ (? ձորձմոյկ?), պարոյկ.

-ոյն (-ոյ՝ տարբեր աղբյուրներից՝ հոլ. վերջավորություն և ածանց+-ն, եթե ոչ հիմքային -ո- տարր+-յն)՝ գիշերոյն, իսկոյն, միահաղոյն, ողջոյն և մեզոյն (=մեզէն), քեզոյն (=քեզէն).

-ոյս (հմմտ. -ոյց)՝ -կորոյս.

-որ-(ե)այ(-ք)՝ արտոր(ե)այ, այլև կալորայ, վանոր(ե)այ(-ք).

-շի՝ բոլորշի, լայնշի.

-ոչ (այլև -աչ?)՝ խոռոչ.

-չեայ (-իչ+-եայ)՝ առհաւատչեայ, աւետչեայ.

-ուլ (ոչ բնիկ բառերո՞ւմ)՝ թաթուլ, կափուլ.

-ուկ (հմմտ. -ակ, -իկ՝) ծիծեռնուկ, մանկուկ, որթուկ, այլև մժղուկ, կանեփուկ և այլն. քարացած կազմություններ են դերբուկ, մանուկ և այլն.

-ուկ՝ հարցուկ, յեղյեղուկ, այլև պարծուկ (=պարտուկ) և այլն.

-ուհի (իրան. հնագույն շրջանում հավանաբար չի եղել)՝ արդարուհի, երանուհի, սրբուհի, այլև թագուհի, իշխանուհի և այլն.

-ունի (-ուն+-ի)՝ ծերունի, տէրունի, այլև արքունի և այլն.

-ունչ (հմմտ. -իչ, -ուչ)՝ անտերունչ.

-ուստ (հմմտ. ուստի)՝ ամենուստ, այլուստ, արտաքուստ, այլև արքունուստ, նախուստ և այլն.

-ուրդ (հմմտ. -որդ?)՝ կացուրդ, այլև ժողովուրդ, խորհուրդ և այլն.

## բ) ՆԱԽԱԾԱՆՑՈՒՄ

Հնագույն հայերենում շարունակում են պահպանվել վաղնջահայերենի որոշ նախածանցներ՝ մասամբ մնալով գործուն և արդյունավետ, մասամբ դադարելով այդպիսին լինելուց։ Սրանց կողքին սկսում են հանդես գալ նոր նախածանցներ՝ բնիկ բառերի և փոխառությունների հիման վրա. վերջիններիս մեջ մասնավորապես պետք է նշել իրանական նախածանցները։

Ժխտական նախամասնիկներից ան-ը շարունակում է նորանոր կազմություններ տալ՝ որպես գործուն և արդյունավետ ածանց հասնելով մեր օրերը։ Բնիկ հնդեվրոպական հիմքերի հետ միասին սկսում են հանդես գալ փոխառյալ հիմքեր, հնդեվրոպական շրջանից ժառանգված և վաղնջահայերենից եկող կազմությունների կողքին՝ նոր կազմություններ։ Այն հանգամանքը, որ իրանական փոխառությունների մեջ նույնպես հանդիպում են an- ժխտականով կազմություններ՝ ձայնավորով սկսվող հիմքերից առաջ (բաղաձայններից առաջ հանդես է եկել an-ի a- տարբերակը. հմմտ. ակամայ), հիմք է տալիս իրանական համատիպ կազմությունների հայանալու, իբրև հայկական կազմություններ ընկալվելու, և, սրա հետ կապված, ան-ի բառակազմական դերի աշխուժացման համար. այս առումով իրանական ձայնավորակիր հիմքերի դեպքում դժվար է որոշել ան- ժխտականով կազմությունների՝ պատրաստի կերպով փոխառված, թե հայկական հողի վրա հանդես եկած լինելու հարցը. հմմտ. անազատ, անազդ, անախտ, անապական, անաշխատ, անապաշխար, անարգ, անարժան։ Այսպիսի դեպքերում հարցի լուծման հենակետ է ծառայում իրանական լեզուներում նման կազմությունների առկայության կամ բացակայության, նրանց իմաստային և գործառական առանձնահատկությունների որոշումը։ Ըստ հնարավորին բացառելով ան-ով և ձայնավորասկիզբ հիմքերով իրանական և հենց գրավոր ավանդման շրջանում հայ հեղինակների ու թարգմանիչների կազմած գերազանցապես սակավ գործածական բառերը՝ դասական հայերենում հանդիպող ան-ով և փոխառյալ հիմքերով մնացած կազմությունները կարելի է վերագրել նախորդ՝ հնագույն շրջանին՝ անբավ, անբնակ, անզաւակ, անզաւր, անխաբ, անխառն, անխրատ, անճաշտ, անպաշտ և այլն։ Հավանական է նաև ան-ով և որոշ կարգի բաղադրյալ հիմքերով կազմությունների՝ անիրաւ, անձեռնհաս և այլն, մասնավորապես ան-ով և բայական հիմքերով այնպիսի կազմությունների՝ հնագույն շրջանին պատկանելը, ինչպիսիք են անարար, անզգայ, անիմաց և այլն։ Թեև ան—ելի կաղապարով կազմված բառերը վերագրվել են ետ-դասական շրջանին, բայց դասական շրջանում ան—ալի, ան—ելի կաղապարներով կազմությունների առկայությունը ևս [Առաքելյան, 1976, 263] ենթադրել է տալիս այդ կաղապարներով կազմությունների թերևս ավելի վաղ՝ հնագույն շրջանի վերջերին հանդես գալը, մանավանդ որ առանց -ալի, -ելի մասնիկների կազմությունները կամ ընդհանրապես չեն հանդիպում, կամ հանդիպելու դեպքում իմաստային տարբերակում ունեն՝ անիմանալի, անազդելի, անբժշկելի, անջնջելի, անփոփոխելի և այլն։ Սրանք սկզբնապես պատկանել են բարձր ոճին և տարածված են եղել ստանդարտ (ավելի ուշ՝ գրական) լեզվում։ Ընդհակառակն, ժողովրդախոսակցական լեզվի համար բնորոշ պետք է համարել ան- ժխտականի փոխարեն առանց նախադրության գործածությունը՝ առանց հասանելոյ (=անհաս), առանց գիտութեան (=անգէտ) և այլն։

Տ- ժխտականով հիմքերը V դարում սակավաթիվ են, և պետք է կարծել, որ նրանց սահմանափակման և տ-ի անարդյունավետ դառնալու պրոցեսը տեղի է ունեցել հատկապես հնագույն շրջանում։ Սրանով պետք է բացատրել ա-ով ձևերի կողքին ան-ով զուգահեռ կամ մերձավոր (նույնիմաստ և մերձիմաստ) ձևերի հանդես գալը V դ. և հետագա աղբյուրներում՝ ագեղ—անգեղ-(եայ), ագէտ—անգէտ, ահան—անհանոյ, ահաս—անհաս, աճեւ—անճեւ, ար-մարդի—անմարդի, աfնիմ—անfուն։

Իրանական բառերի զանգվածային փոխառությունը հիմք է տալիս իրանական ծագման ժխտական նախամասնիկների անկախ գիտակցման համար։ Դրանցից դժ-ը դժգոհ—գոհ, դժկամ—կամ տիպի զույգերում ակնհայտորեն գիտակցվել է իբրև այդպիսին և նույնիսկ ավել դժմիտ կազմությունը՝ դըժնեամիտ բարդության կողքին. դժպհի, դժուար տիպի բառերում այն պիտի գիտակցվեր աղոտ կերպով։ Դժ-ով կազմությունների կողքին V դ. և ուշ հանդես են գալիս զուգահեռ ան-ով կազմություններ՝ անգոհ, անկամ և այլն։ Ապ(ա)-ով իրանական կազմությունները մնացել են ընդհանրապես մեկուսի, և ապ(ա)-ն բուն հայկական հիմքերի համար չի գործածվել՝ ապաշնորհ—շնորհ, ապերախտ—երախտիք, ապերասան—երասան, ապուշ—ուշ և այլն. սրանց կողքին V դ. և ուշ գործածված են նաև բուն հայկական կազմություններ՝ անշնորհ, աներասան, աներախտ և այլն։ Իրանական ան-ի ա- տարբերակը հայերեն փոխառություններում խիստ հազվադեպ է և իբրև ժխտական հավանաբար շատ աղոտ է գիտակցվել. հմմտ. ակամայ—կամայ։

Մնացած նախածանցավոր կազմություններից շարունակում են իրենց գոյությունը վաղնջահայերենից եկող այն բառերը, որոնց նախածանցները համընկնում են նախդիրների հետ՝ առ-, զ-, յ- (ի), ընդ-, ց-։ Դժվար է սրաշակիորեն ասել, թե այդ նախդիր-նախածանցներով կազմությունները հատկապես ո՛ր շրջանում են հանդես եկել, եթե մենք գործ ունենք հնդեվրոպական ծագման հիմքերի հետ. բնականաբար, հնագույն կամ հին հայերենին են վերաբերում V դարում, հատկապես նրա առաջին կեսին ավանդված այն կազմությունները, որոնց հիմքերը կամ փոխառյալ ու անհայտ ծագման են և պետք է մուտք գործած լինեն նշված շրջաններում, կամ այդ շրջաններին վերաբերող բաղադրություններ են։ Նախդիր-նախածանցներով կազմությունների մեջ պետք է տարբերել երկու տիպ։ Անվանական և անուններից ծագող մակբայական կազմությունների մեջ այս մասնիկները փաստորեն պահպանում են իրենց նախդրային արժեքը, և առկա են յուրատեսակ բառացած՝ պատրաստի կամ քարացած ձևեր՝ առաքուր (աքուր «ոտք»), առժամայն, առհաւատչեայ, առտնին, զառաջեաւ, զկնի, ընդդէմ, յանկարծ, յապաւով, յայայ, յարգ, յորժամ, յաւօր, ցորչափ և այլն։ Երկրորդ տիպը ներկայացնում են բայերը և բայանունները, որոնց մեջ, սակայն, ոչ հնդեվրոպական հիմքերով կազմությունները սակավաթիվ են՝ զարգանամ, զարհուրիմ, զբաղիմ, ըմբոշխնեմ, ընդգրկեմ, ընդվզիմ, յապաղեմ, յարձակեմ (-իմ)։ Առ-, ըստ-, ց- նախդիրները հնագույն շրջանում դադարել էին գործուն բայական նախածանցներ լինելուց. դասական հայերենում հանդիպում և հավանաբար հնից են գալիս առանձնակի կանգնած առածիմ, առնում բայերը. պետք է կարծել, որ ց-ն վաղնջահայերենում գործուն բայածանց չէր, իսկ զ-, ընդ- (ըմ-), յ- նախածանցները որպես բայակազմիչներ դարձել էին սակավ արդյունավետ։

Նախդիր-նախածանցների կողքին հանդես են գալիս բնիկ ու փոխառյալ

*արմատների և հիմքերի բազայի վրա ծագած նախածանցներ, որոնք հատուկ են հարաբերաբար այս շրջանում գործող նախադրություններին։ Սրանք բայանուններին ու բայերին տալիս են գերազանցապես տարածա-ժամանակային կարգի հետ կապված իմաստային երանգներ։ Բուն բայակազմիչ արժեք ունեցողները սակավաթիվ են և նրանց մեծ հնությունը՝ կասկածելի՝* գերազանցեմ, հետազատեմ, ներգործեմ, վերածեմ, վերաբերեմ։ *Ավելի համախոսելի են և թերևս բավականաչափ հին (հնագույն շրջանին են պատկանում) հետևյալ ոչ բայական կազմությունները*[1].

ապա-՝ ապագայ.

առաջ(ա)-՝ առաջակայ *և* յառաջ(ա)-՝ յառաջագլխ, յառաջագիր, յառաջադէմ, յառաջադիր, յառաջախաւս, յառաջակայ, յառաջամիտ, յառաջատեղ.

բաց(ա)-՝ բացարձակ, բացաբեազ (բացաբեայ).

ճամ(ա)- *(հույ. և իրան. նախածանցների բաղադրիչմամբ)*՝ ճամամայր, ճամամիտ.

ճեռա-՝ ճեռաբճակ, ճեռագճաց.

ճետ(ա)- *«հետո» և «հետևից»*՝ ճետագճաց, ճետաճաճ, ճետամուտ, ճետափրփիր.

մերձ(ա)-՝ մերձակայ.

միջ(ա)-՝ միջախառն, միջամուխ, միջամուտ (լինիմ), *և* միջնա-՝ միջնաբերդ, միջնատուն *(«ներքնատունս, և միջնատունս, և վերնատունս...», Ծն., զ, 16)*, միջնորմ.

նախ(ա)-՝ *(ոչ բայական)* նախաբոյս, նախադուռն, նախածանուք, նախակարգ, նախամեծար, նախատեղծ.

յետ(ա)-՝ յետագայ, *այլև* յետեւախաղաց, յետնածեր, յետսամիտ.

ներքնա-՝ ներքնագունդ, ներքնատուն *և* ներքսա-՝ ներքսակողմն.

վեր(ա)-՝ վերակացու, վերարկու *և* վերնա-՝ վերնակողմն, վերնատուն.

ստոր(ա)-՝ ստորոտ.

տար(ա)-՝ տարագիր, տարաժամ.

փոխ(ա)-՝ փոխադարձ։

## գ) ԲԱՐԴՈՒՄ ԵՎ ՀԱՐԱԴՐՈՒՄ

*Վաղնջահայերենի բարդությունների քննության կապակցությամբ խոսվեց -ա- հոդակապի ծագման և տարածման մասին։ Նշվեց, որ հնագույն հա-*

*[1] Սրանց մեջ հունաբան հեղինակների գործածած բազմաթիվ նախածանցներ. ընդհանրապես չեն հանդիպում՝* բաղ(ա)-, գեր (ա)-, ներ (ա)-, մակ (ա)-, փաղ(ա)- *և այլն։ Ի միջի այլոց նշենք, որ Վ. Առաքելյանը իր «Դասական և հետդասական գրաբարը» հոդվածում վիճարկելով դասական շրջանի սահմանազատման գրույթը և բերելով մի շարք ճիշտ փաստեր, նկատի չի առնում նախ՝ դասական և հետդասական շրջաններում հանդիպող միատեսակ կազմությունների քանակական հնչյունական տարբերությունը, երկրորդ՝ հունաբան հեղինակների մուծած կամ լայն գործածություն հաղորդած ածանցների՝ գրական լեզվի մշակման որոշակի ուղղություն ներկայացնելը և, այսպիսով, դասական լեզվի զարգացման որոշակի փուլ նշանավորելը, երրորդ՝ իր բերած մի շարք կազմությունների ոչ հայկական բնույթը. այսպես,* ապա- *նախածանցի գոյությունը դասական հայերենում ցույց տալու նպատակով նա բերում է* ապագովեմ, ապախտրեմ, ապաշնորհ, ապաճարկ, ապերասան(ուրիճ) *բառերը, որոնց հիմքերն իրանական են (այդ թվում նաև* ճարկ *«տուրք» բառինը, որ Հ. Աճառյանը [ՀԱԲ, 3, 53] սխալմամբ միացնում է* ճարկանեմ *բայի արմատի հետ), և որոնք հետևաբար կարող են պատրաստի ձևով փոխառված լինել։ Հավանաբար այդպիսին է նաև* ապալեզ *բառը։*

լերենի վաղ փուլում՝ մինչև վերջավորությունների թուլացումը և անկումը, շարունակվել է վաղնջահայերենում եղած վիճակը։ Մենք առայժմ հնարավորություն չունենք բուն հնդեվրոպական հիմքերով բարդությունների դեպքում որոշել դրանց հնության աստիճանը, եթե չկան կազմության հնդեվրոպական զուգահեռներ։ Մասնավորապես այն բարդությունները, որոնց առաջին բաղադրիչները նախկին բնավոր (թեմատիկ) հիմքերից են գալիս, բայց -ո-ի փոխարեն ունեն -ա- հոդակապ, կարող են ինչպես նախկին բարդությունների համաբանական ձևափոխությունները լինել (հմմտ. **ընդոծին—ընդածին, Զորոփոր—Զորափոր** զուգահեռ ձևերը), այնպես էլ հանդես եկած լինել հնագույն շրջանի այն փուլում, երբ տեղի է ունեցել -ա- հոդակապի տարածումը։ Սրանց ցուցակը բերվեց վաղնջահայերենի բարդությունների քննության կապակցությամբ (հմմտ. **լուսաբեր, հողագործ, ձիասէր, նորաբեր** և այլն)։ Ածանցման քննության կապակցությամբ նշվեց, որ -ա- հոդակապը տարածվում է նաև շատ վերջածանցների վրա, որոնք բաղաձայնով սկսվելու դեպքում հանդես են գալիս սովորաբար -ա- հոդակապի հարադրությամբ՝ **-ա-ւոր, ա-բար, -ա-հար** և այլն։ -ա- հոդակապի դիրքն ավելի է ուժեղանում իրանական մեծաքանակ փոխառությունների և, համապատասխանաբար, -ա- պարունակող իրանական մի շարք ածանցների տարածման հետ կապված՝ **-ական, -աստան** և այլն, ընդ որում առանձին դեպքերում, ինչպես կտեսնենք իրանական փոխառությունների քննության ժամանակ, տեղի է ունենում հայկական և իրանական ծագման ածանցների բաղարկություն (կոնտամինացիա). հմմտ. dātavar > **դատաւոր**։ Դեռ ավելին. որոշ դեպքերում թերևս -ա-ն տարածվել է նաև իրանական փոխառությունների վրա։ Եթե հնդեվրոպական ծագման բաղադրիչներով բարդությունների դեպքում մենք միշտ չէ, որ կարող ենք որոշել դրանց կազմման ժամանակը, ապա բաղադրիչներից մեկի՝ հնագույն շրջանին պատկանելու և V դ. առաջին կեսին հանդիպելու դեպքում կարելի է անվրեպ կերպով խոսել բարդման ժամանակի մասին, եթե, իհարկե, կարողանանք բացառել գրական շրջանում կատարված կազմությունները (մանավանդ հունաձև պատճենումները)։ Այս կարգի բառերի մի մասը բաղադրյալ ձևերի մեջ կամ չի հանդիպում, կամ հանդիպում է խիստ հազվադեպ, մյուս մասը այնքան է մերվել հայերենին, որ տալիս է զգալի թվով, երբեմն էլ մեծաթիվ բարդություններ ու ածանցումներ. կան դեպքեր, երբ այս կարգի բառերը հանդես են գալիս գրեթե նախածանցների արժեքով՝ **ապա-, զուգա- (զոյգ), փոխա- (փոխ)** և այլն։ Հնագույն հայերենի շրջանում կատարված փոխառությունները բարդությունների մեջ հանդես են գալիս ինչպես սկզբնադիրքում (ներառյալ նաև **-ապետ, -ածու, -ակալ, -ա-րար, -արկու** բաղադրիչներով բարդությունները, որոնց երկրորդ բաղադրիչները դարձել են փաստորեն ածանցներ, ավելի ճիշտ ածանցակերպներ), այնպես էլ վերջնադիրքում։ Ընդամին հարկավոր է նշել, որ նախ՝ փոխառյալ բաղադրիչներով բարդությունների մյուս բաղադրիչները կարող են լինել ինչպես բնիկ հնդեվրոպական, այնպես էլ միևնույն կամ մի այլ աղբյուրից փոխառյալ, երկրորդ՝ սրանց մեջ հանդես են գալիս նաև բայական բարդ հիմքեր (հմմտ. **ակնարկեմ, բռնադատեմ, սպանդագործեմ** և այլն), որոնք նախորդ շրջանին հատուկ չեն, երրորդ՝ ամենից շատ բարդության մեջ են մտնում կարճ բառերը։ Այսպես կոչված, դասական հայերենի երկերում հանդիպող այս կարգի հիմնական բարդությունները փոխառյալ առաջին (1) և երկրորդ (2) բաղադրիչներով հետևյալներն են.

1. ախտաբեր, այլն(ա)կատակ, անապատակեաց, անդամալոյծ, անդրիագործ, անուշահամ, անուշահոտ, աշակերտասէր, առատաձեռն, առատամիտ, ասպարաբեկ, ասպարակիր, արագագիր, արագագնաց (երագագնաց), արագաթեւ, արագոտն, արագընթաց, արձակավայրք, աւարառու, աւտարաձայն, աւտարամիտ, աւտարասէր, աւրէնուսոյց, բազմակալ (<բազմակալյալ), բանտամուտ, բանտարգել, բարձրընտիր, բարձերէց, բարձակից, բժաբեր, գահագլուխ, գահերէց, գաւառապետ, գնդաձեւ, դայեկորդի, դաշտահողմն, դաշտաձեւ, դիցասէր, դիւահար(ել) գառագլուխ, զէնընկէց, զինակիր, թագազարդ, թագակալ, թագակապ, թագաւորագիր, թմրկահար, ժամադիր, ժամակալ, ժանգաբեր, ժանգակեր, ժանտագործ, ժանտահոտ, խահարար, խաւարազգած, խաւարակեաց, խաւարասէր, խնձորաբեր, խորտկարար, խրատ(ա)տու, ծխալից, կամագնաց, կամածին, կամակատար, կամարածու *«գոտի կապող» (վերջածանցավոր կազմության արժեք ստացած)*, կամարակապ, կամարաձեւ, կայսերագիր, կայսերակերպ, կառավար, կառապետ, կառամուտ, կշռարար, կպրաշաղախ, համարագրութիւն, հանապազաւր(եայ) (*Համմտ.* զաւրհանապազ), հանդարտասիրտ, հանդիսատես, հրամանաբեր, հրամանատու, հրամանառու, հրէակողմն, ճակատամարտ, ճակատատեղ(ի), ճաշագործ, ճարտարաբան, ճարտարագործ, ճարտարախաւս, մակաղատեղ, մահաբեր, մահածին, մահարձան, մահիկեղջիւր, մանակալ, մարգագետին, մարգարտազարդ, մարմարակուռ, մարմարապատ, մեհենատեղի, մետաքսանէշ, մշտաբուղխ, մշտագնաց, մշտակատար, մշտնջենական, մոգակրաւնիկ, յաշտածին, յաւիտենադիր, յուզախնդիր, նշանագիր, նշանագործ, նշանակիր, նուագածու, նափրաբեր, շաբաթամուտ, շաբաթակրաւն, շահաբեր, շատակեաց, շինակեաց, շինարար, շղթայագործ, շնորհազարդ, շնորհալից, շնորհակալ, շուշանագործ, ոխագիր, ոխակալ, ուշակալ(ու), ուշարար (յուշարար), պահակափոխ, պաճուճազարդ, պանդոկապետ, պատառակալ, պատառալի(ր), պատասխանատուութիւն, պատգամագնաց, պատգամախաւս, պատուակալ, պատկերագործ, պատկերակուռ, պատկերասէր, պատուհասակոծ, պատրաստաբան, պարզամիտ, պղնձագործ, պղնձահատ, պղնձաձոյլ, պոռնկորդի, ռոճկակեր, սահմանադրութիւն, սայլատուն, սեւագործ, սեւադեղ, սկախտոն *«ցեխոտ»*, սկայագործ, սկայազն, սկայազաւր, սպանդագործեմ, սպիտակարար, սպիտակաձի, վահանակիր, վահանափակ, վանատու(ր), վանդակագործ, վանդակակապ, վաստակաբեկ, վաստակասէր, վատանուն, վատասիրտ, վարդաբեր, վարձահատոյց, վարսակալ, վիմահատ, վինակակալ, վինակատու(ութիւն), վիշապաքաղ, վշտաբեր, վշտածին, վշտակեաց, վշտատես, վրանագործ, տարազագործ(ութիւն), տղայաբարոյ, տղայակոտոր, ցեցակեր, փառասէր, քաղաքագիւղ, քաղաքամէջ *և այլն.*

*2.* յաղթանդամ, մեծարգի, մեծարգոյ, հայրանարգու, ակնարկեմ, բանսարկութիւն, յուղարկեմ, ներարձակ, ձիարձակ, ներաբնակ, միաւրինակ, միաբուն, բարձրագահ, երկնագոյն, ընդդատել, բարեդէմ, երկդիմի, երկդրամեան, չորեքդրամեան, մեծազաւր, հեծելազաւր, յորժամ, գիշերախառն, ծրխախառն, բարեխրատ, ինքնակամ, բարեկամ, դիւակամ, չարակամ, լայնալամար, աստուածակերտ, ձեռակերտ, փայտակերտ(իկ), քարակերտ, հաւասարակշիռ, միակշիռ, ակնկոյր, սնակուշտ, երեքհազարեան, հինգհազարեան, վեցհազարեան, դիւրահամար, խոտահամբար, զաւրհանապազ (*Համմտ.* հանապազաւր), կիսաման, ջրամարգք, լորամարգ(ի), մտայոյզ, խռովայոյզ, մաղձայոյզ, խաչանշան, միանշան, մատնանշան, բարենշան, քաղցրանուագ, հն-

գեշահ, մեծաշան, մարդաշատ, նորաշէն, մարտաշէն, յոգնաշնորհ, ամենայուշ, գիշերապահ, շաբաթապահ, տեղապահ, կողմնապահ, կենդանապահ, դռնապահ, կռապարիշտ, մառախլապատ, միջապատ, մարմնապատ, եւթնապատիկ, մեծապատիւ, հասարակապատիւ, միապատիւ, մարդապատկեր, յայտապատկեր, մարմնապարար, որովայնապարար, երկրապարար, կրկնապարիսպ, միաանման, կամնաայլ, արծաթասպիտակ, ակնավայել, համավաճառ, ծիրանեվաճառ, գինեվաճառ, մսավաճառանոց, արգելավանք, իջաւան, աւթեւան, մեծավաստակ, սնավաստակ, մտավարժ, ինքնավկայ, այլատարազ, մեծափառ, արագափոխ, լումայափոխ, կերպարանափոխ, մայրաքաղաք, գետնաքարշ *և այլն։*

*Այս բարդությունները որոշ մասով, անշուշտ, հատուկ են գրական լեզվին և, հավանաբար, կազմվել են հենց դասական շրջանի հեղինակների կամ թարգմանիչների կողմից։ Նկատի ունենալով բարդությունների գործածականությունը, սովորականությունը և ժողովրդական լեզվին հատուկ լինելը՝ կարելի է դրանցից առանձնացնել մի շարք բարդություններ, որոնք հավանաբար գալիս են հնագույն շրջանից։ Այդպիսիք կարող են լինել, օրինակ,* 1. անդամալոյծ, անուշահամ, անուշահոտ, աշխատասէր, առատաձեռն, ասպարակիր, արագընթաց, աւարառու, բանտարգել, բարձերէց, գահերէց, գաւառապետ, գնդաձեւ, դայեկորդի, դաշտակողմն, զաւրագլուխ, զաւրանիստ, զինակիր, թագակալ, թագաւորազգի, թմբկահար, ժամադիր, ժամակալ, ժանգակեր, ժանտահոտ, խրատ(ա)տու, ծխալից, կամակատար, կամարակապ, կամարաձեւ, կայսերագիր, կառավար, հանապազաւր(եայ), հանդիսատես, ճակատամարտ, ճարտարաբան, ճարտարագործ, մակաղատեղ, մահաբեր, մահարձան, մաճակալ, մարմարապատ, մեհենատեղի, նշանագիր, նուագածու, շահաբեր, շինարար, շնորհակալ, պահակափոխ, պանդոկապետ, պատկերագործ, պարզամիտ, պղնձաձոյլ, պոռնկորդի, վահանակիր, վանատու(ր), վատանուն, վատասիրտ, վարսակալ, վիշապաման, տղայաբարոյ, ցեցակեր, փառասէր, քաղաքամէջ, 2. յաղթանդամ, մեծարգոյ, ակնարկեմ, յաղարկեմ, հերարձակ, միաւրինակ, երկնագոյն, բռնադատել, բարեդէմ, երկդիմի, երկաթապատ, հեծելազաւր, մեծազաւր, գիշերախառն, ծխախառն, բարեկամ, ինքնակամ, չարակամ, փայտակերտ, քարակերտ, ակնկոյր, խոտահամբար, կիսամահ, բարենշան, խաչանշան, հոգեշահ, մարդաշատ, նորաշէն, գիշերապահ, դռնապահ, տեղապահ, մառախլապատ, միջապատ, եւթնապատիկ, կրկնապարիսպ, կամնաայլ, գինեվաճառ, իջաւան, աւթեւան, պահակափոխ, տեղափոխ, գետնաքարշ *և այլն։*

*Հնագույն հայերենի շրջանում սկսվում և հին հայերենի շրջանում տարածում են գտնում բառակազմության և հատկապես բայակազմության մի շարք նոր երևույթներ։ Մենք արդեն ունեցանք նշելու, որ հանդես են գալիս բարդ հիմքերով բայեր, բայց դրանց քանակը մեծ չէ։ Այս երևույթը զգալի չափով պայմանավորված է բառակազմական մի այլ երևույթի՝ վերլուծական բնույթի, այսպես կոչված, հարադրական կազմությունների, մասնավորապես, բայերի տարածմամբ։ Սրանց հիմնական բաղադրիչները կոչենք հարադրյալներ, հավելվող բաղադրիչները՝ հարադիրներ և բաղադրությունները ամբողջովին առնված՝ հարադրություններ։ Կարելի է տարբերել հատկապես բայական հարադրությունների երկու տեսակ՝ անվանա-բայական և մասնիկա-բայական։ Անվանա-բայական հարադրությունները կազմվում են անվանական բաղադրիչից և բայից, ընդ որում հիմնական իմաստն արտահայտում է ան-*

վանական մասը, իսկ բայը կատարում է յուրատեսակ բայական վերջավորության դեր՝ պատասխանի տալ—պատասխանել: Այս կարգի հարադրությունների տարածումը կապված է առաջին հերթին այնպիսի բառերի հանդես գալու հետ, որոնք ինքնին չեն կարողանում դառնալ բայական հիմքեր (մասամբ՝ այսպիսիք են դառնում աստիճանաբար). դրանք փոխառյալ անուններն են կամ բայական հիմքերի համար անսովոր կազմությունները՝ որոշ մասը նույնիսկ անհոլով: Մանիկա-բայական հարադրությունները կազմվում են նախդրությունների և մակբայների հետ համընկնող բաղադրիչից (հարադրից) և որևէ բայից, որի իմաստը լրացվում է այդ բաղադրիչով՝ գերազանցապես տարածա-ժամանակային մտքի առումով: Մանիկ-հարադիրները փաստորեն փոխարինում են համապատասխան բայական նախածանցներին (նախդրայիններին), որոնք հնագույն շրջանում և հին հայերենի դասական փուլում լայն տարածում չունեին. դրանք լայնորեն կիրառվում են միայն հունաբան հայերենի տարածման հետ կապված: Այս կարգի մանիկա-բայական հարադրությունները հիշեցնում են ժամանակակից անգլերենի ետմանիկավոր և ժամանակակից հայերենի՝ հատկապես բարբառներից եկող նախամանիկավոր կառույցները՝ get up—վեր կենալ:

Հարադրությունները երբեմն փոխաբերական, դարձվածաբանական կապակցություններ են՝ բաղադրիչների միասնական ըմբռնմամբ՝ եղջիւր ածեմ «խրոխտանալ»: Հատկապես անվանա-բայական հարադիրներից կարող են կազմվել համապատասխան տիպի անվանական բարդություններ, որոնց երկրորդ բաղադրիչները հետագայում ընկալվում են որպես ածանցակերտներ՝ ակն ածեմ—ակնածու, պատասխանի տամ—պատասխանատու և այլն:

Անվանա-բայական հարադրությունների անվանական բաղադրիչները կարող են հարադրության կազմի մեջ մնալ անփոփոխ (այց առնեմ «այցելել») կամ հոլովված ու նախդրով օժտված ձևով (զմտաւ ածեմ «մտածել»): Վերջիններս ավելի հաճախադեպ են: Որպես բայական բաղադրիչ՝ համապատասխան սպասարկու իմաստով՝ հանդես են գալիս շատ գործածական բայեր՝ ըստ իմաստի հաճախ կազմելով ներգործականի և կրավորականի, ենթակայականի և սաստկայականի զանազան հակադրություններ: Մի կողմ թողնելով հոլովված և նախդրով օժտված անուններով կազմված մեծաքանակ հարադրությունները՝ բերենք դասական մատենագրությունից առնված «անփոփոխ անուն + բայ» կաղապարով կազմված հարադրությունների օրինակներ, որոնցից շատերը, անշուշտ, հասնում են հնագույն շրջանը՝ ածեմ ակն, եղջիւր, ձայն. առնեմ այց, ժաման, խոստովան, պաշտաւն, պատասխանի, սպառ. արկանեմ խաղ, ձայն, ձեռն. բառնամ ձայն, կական. կացուցանեմ ազատ, թափուր, մերկ. հարկանեմ բուռն, զան, հուր. տամ պատասխանի, տեղի. տանիմ խնամ, փոյթ. ունիմ ակն, խնամ և այլն:

Որպես մանիկա-բայական հարադրությունների մանիկային հարադիրներ հանդես են գալիս ինչպես բնիկ, այնպես էլ փոխառյալ մակբայա-նախդրական բառեր: Բերենք հատկապես դասական փուլի մատենագիրներից առնված գործածության օրինակներ՝ արտաքս ածեմ, ելանեմ, ընկենում, հանեմ. ընդդէմ կամ, լինիմ. ընդ մէջ ճանկանիմ, հանցանեմ. ի բաց առնեմ, առնում, գնամ, ելանեմ, կամ, ոստնում, տամ. ի դուրս բերեմ, ելանեմ, կորզեմ. ի խոնարհ արձակեմ, ընկենում, իջանեմ, կախեմ. ի մէջ ածեմ, անցանեմ, բերեմ, մտանեմ. ի ներքս դիմեմ, ընթանամ, կրեմ, մտանեմ, տանիմ. ի

վայր արկանեմ, ընկենում, հարկանեմ. ի վեր առնում, արձակեմ, բարձրանամ. բերեմ, հայեմ, հանեմ. յառաջ ածեմ, գնամ, ընթանամ. յետս անկանիմ, դառնամ, դարձուցանեմ, հարկանեմ *և այլն։*

### դ) ԿՐԿՆՈՒԹՅՈՒՆ

*Հնագույն հայերենում շարունակվում է վաղնջահայերենից եկող շատ կրկնավորների գործածությունը, սակայն դրանց կաղապարների մի մասը դառնում է քիչ գործուն, մյուսը՝ ոչ գործուն և անարդյունավետ։ Սրանց փոխարեն սկսում են հանդես գալ կրկնության նոր կաղապարներ և նոր տիպեր։*

*Նոր հանդես եկած կրկնությունների առաջին տիպը կապված է* -ա- *հոդակապի գործածության հետ. հոդակապավոր կրկնությունների մեջ կարելի է տարբերել մի քանի տեսակ. 1) անփոփոխ կրկնորդներով՝* գույնագույն, մեծամեծ. *2) երկրորդ կրկնորդի սկզբնային պարտադիր* մ *բաղաձայն՝ առաջին կրկնորդի մեջ բաղաձայնի բացակայության կամ մի այլ բաղաձայնի առկայության պայմաններում՝* աղխամաղխ, արհամարհեմ, խառնամառն. *3) երկրորդ (հիմնական) կրկնորդի առաջին բաղաձայնի կրկնություն առաջին կրկնորդում՝ հաջորդ* ա*-ով և նրան հաջորդող շրթնայինով* (մ, փ)՝ ծամածուռ, կամակոր *«ծամածուռ»,* սափասում. *4) առաջին բաղադրիչի ձայնավորի փոփոխություն՝ տեղափոխում երկրորդ բաղադրիչի մեջ* ու*-ով՝* ժանտաժուռն:

*Կրկնությունների երկրորդ տեսակը նախդրավորներն են, որոնց մեջ թեև նախդիրները իրենց հիմնական արժեքը պահպանում են, բայց ողջ կրկնությունն ստանում է բառային մեկ միավորի արժեք՝ մասամբ հանդես գալով իբրև մեկ ամբողջություն* (խառնիխուռն), *մասամբ իր ներսում պահպանելով բաղադրիչների որոշ ինքնուրույնություն* (մերթ ընդ մերթ, մի ըստ միոջէ):

*Վերջապես, կրկնությունների երրորդ տեսակը հարադրական կրկնությունն է, որի դեպքում կրկնորդները դեռ լիովին չեն կորցրել իրենց բառային ինքնուրույնությունը՝* պառակ-պառակ *«խումբ-խումբ»,* պատառ-պատառ *և այլն։*

*Այս տիպը լայնորեն ծավալվում է հետագայում՝ ունենալով նաև խոսքամասային փոխանցման դեր՝ գոյականներից կերտելով մակբայներ։*

## 5. ԲԱՐԲԱՌԱՅԻՆ ՏԱՐԲԵՐԱԿՆԵՐ

### ա) ՍՏԱՆԴԱՐՏ ԼԵԶՈՒ ԵՎ ԲԱՐԲԱՌՆԵՐ. «ՎԻՊԱՍԱՆԱԿԱՆ ՀԱՅԵՐԵՆ»

*Վաղնջահայերենից ժառանգելով բարբառային որոշ տարբերություններ՝ հնագույն հայերենը հայերի բազմացման և տարածման հետ կապված պիտի հանդես բերեր բարբառային նոր տարբերություններ, խորացներ եղած տարբերությունները։ Մենք վստահելի տեղեկություններ չունենք այն մասին, այս շրջանում կա՞ր արդյոք որևէ ընդհանուր վերբարբառային լեզու, յուրատեսակ կոյնե, որ գործածվում էր տարբեր բարբառների ներկայացուցիչների ի մի հավաքվելու ժամանակ՝ բանակում, առևտրական հարաբերություններում, արքունիքում։ Մի շարք հանգամանքներ մեզ թելադրում են այդպիսի ստանդարտ լեզվի գոյության փաստը, ցույց տալիս, որ բարբառները հակադրվում էին ոչ միայն իրար, այլև մի ընդհանուր վերբարբառային լեզվի։ Եթե հնա-*

*գույն հայերենի զարգացման վաղ փուլում դժվար է խոսել այդ մասին, ապա ուշ՝ նախագրաբարյան շրջանում, միասնացման միտումների հետ կապված, ստանդարտ լեզվի կազմավորման փաստը դրեթե կասկած չի հարուցում։*

*Ամենից առաջ՝ այդպիսի ընդհանուր լեզվի գոյությունը պետք է անհրաժեշտորեն կապված լիներ հայ ժողովրդի կազմավորման պրոցեսի հետ։ Եթե հնագույն հայերենի զարգացման վաղ փուլի համար կարելի է խոսել միայն ցեղային մի շարք միությունների մասին, ապա ուշ փուլում, հատկապես հայ ժողովրդի կազմավորման ավարտի հետ կապված, պիտի ուժեղանային համապատասխան միասնացնող միտումները և անհրաժեշտ դարձներին մեկ ընդհանուր լեզվի գոյությունը։*

*Ուրարտական պետության անկումը միաժամանակ նշանավորում էր հայ ինքնուրույն պետականության ստեղծումը և հայ ժողովրդի կազմավորման ավարտը։ Ընդհանուր պետությունը կարիք պիտի զգար ընդհանուր միասնական լեզվի, որ պիտի գործեր պետական-պաշտոնական, ռազմական և այլ ոլորտներում։ Սրան պիտի միանար կրոնական ոլորտում մեկ միասնական ծիսական լեզվի կիրառության պահանջը։ Վերջապես, տեղից տեղ շրջող գուսաններն ու երգիչները, երկրի մի կողմից մյուսը տարածվող պատմությունները, առասպելները, հեքիաթները, վիպական ստեղծագործությունները չէին կարող չհասցնել արտահայտության որոշ եղանակների ստանդարտացման և միասնացման։ Որ հնագույն շրջանի նախագրաբարյան փուլում այդպիսի ստանդարտ լեզու իրոք գոյություն է ունեցել, երևում է հայ գրական լեզվի սկզբնական վիճակից. գրաբարը հենց սկզբից հանդես է բերում զգալի միասնություն, մշակվածություն, արտահայտության եղանակների միատեսակություն, որոնք կարող էին լինել զարգացման բավական երկարատև ուղի անցած լինելու հետևանք։*

*Ինչպես հայտնի է, ժողովրդական բանահյուսության, վիպական ստեղծագործությունների և մանավանդ աղոթքների, անեծքների լեզուն ստանդարտ է լինում, պարունակում է արտահայտության ստանդարտ և արխաիկ եղանակներ։ Այս առումով ժողովրդական ստեղծագործությունների, կրոնական հին բանաձևերի լեզվի ուսումնասիրությունը հատուկ կարևորություն է ստանում։ Իհարկե, ժողովրդական ու գուսանական ստեղծագործություններում, վիպական հին հատվածներում ու ավանդություններում ստանդարտ լեզվի առանձնահատկությունների հետ միասին չեն կարող հանդես չգալ տեղական, բարբառային գծեր, բայց ամբողջությամբ առնված դրանք կարող են գաղափար տալ ստանդարտ լեզվի հիմնական առանձնահատկությունների մասին։ Հարկավոր է նկատի ունենալ, որ հնագույն շրջանի բարբառային տարբերությունները էլ չէին կարող շատ մեծ լինել և հասնել այն աստիճանի, ինչպիսին մենք տեսնում ենք գրավոր ժամանակաշրջանի հատկապես միջին շրջանում՝ կապված պետականության կորստի, մասնատվածության ուժեղացման, մասսայական գաղթերի հետ։ Նշենք, որ հնագույն շրջանի լեզվի ուսումնասիրությունը զգալի նպաստ է մատուցում նաև հատուկ անունների ուսումնասիրությունը, որոնց կառուցվածքի մեջ բացահայտվում են հին գծեր։*

*Հ. Աճառյանը իր «Հայոց լեզվի պատմության» 2-րդ մասում փորձել է հատուկ քննության ենթարկել Խորենացու ավանդած վիպասանական տասներկու և Ագաթանգեղոսի ու ավելի ուշ շրջանի հեղինակ Մագիստրոսի (XI դ.) ավանդած մեկական հատվածների լեզվական առանձնահատկությունները։*

*Մենք ևս բերենք այդ հատվածները՝ գաղափար տալու համար հնագույն հայերենի ուշ՝ նախագրաբարյան փուլի որոշ առանձնահատկությունների մասին, որքանով, իհարկե, դրանք արտացոլում են այդ ժամանակի լեզուն՝ ենթարկված, բնականաբար, լեզվական հետագա փոփոխությունների ազդեցությանը։ Նշենք, որ այդ հատվածներից հնագույնը վերաբերում է Վահագն աստծուն, որ, ինչպես ցույց է տալիս անունը, իրանական ծագում ունի և, հետևաբար, բուն առումով հանդես է եկել հնագույն շրջանում։ Բացառված չէ, իհարկե, որ երգը ավելի հին ակունքներ ունենա, քան* Վահագն *անունը, և տեղի ունեցած լինի հին հավատքի նոր վերագրում [հմմտ.* Иванов, *1983]։ Մյուս հատվածները պատմում են Երվանդունիներից մեկի, Արտաշիսյան հարստության նշանավոր թագավորների և Արշակունյան թագավորական հարստության հիմնադրի Տրդատ I-ի կյանքի դեպքերը։*

1. 1. *Երկնէր երկին, երկնէր երկիր,*
   2. *Երկնէր և ծովն ծիրանի.*
   3. *Երկն ի ծովուն ունէր և զկարմրիկն եղեգնիկ.*
   4. *Ընդ եղեգան փող ծուխ ելանէր.*
   5. *Ընդ եղեգան փող բոց ելանէր.*
   6. *Եւ ի բոցոյն վազէր խարտեաշ պատանեկիկ.*
   7. *Նա հուր հեր ունէր,*
   8. *Բոց ունէր մաւրուս,*
   9. *Եւ աչկունքն էին արեգակունք։*

*Խոր. Ա. լա*

2. 10. *Հատուած գնացեալ Վարդգէս մանուկն*
   11. *Ի Տուհաց գաւառէն, զՔասաղ գետով,*
   12. *Եկեալ նստեալ զՇրէշ բլրով,*
   13. *զԱրտիմէդ քաղաքաւ, զՔասաղ գետով.*
   14. *Կռել կոփել զդուռնն Երուանդայ արքայի։*

*Խոր. Բ. կե.*

3. 15. *Քեզ ասեմ, այր քաջ Արտաշէս,*
   16. *Որ յաղթեցեր քաջ ազգին Ալանաց,*
   17. *Ե՛կ հաւանեաց բանից աչագեղոյ դստերս Ալանաց՝*
   18. *Տալ զպատանիդ.*
   19. *Զի վասն միոյ քինու ոչ է օրէն դիւցազանց՝*
   20. *Զայլոց դիւցազանց զարմից բառնալ զկենդանութիւն,*
   21. *Կամ ծառայեցուցանել(ով) և ի ստրկաց կարգի պահել,*
   22. *Եւ թշնամութիւն յաւիտենական*
   23. *Ի մէջ երկոցունց ազգաց քաջաց հաստատել։*

*Խոր. Բ. ծ.*

4. 24. *Եւ ուստի՞ տացէ քաջն Արտաշէս*
   25. *Հազարս ի հազարաց և բիւրս ի բիւրուց*
   26. *Ընդ քաջազգւոյ կոյս օրիորդիս Ալանաց։*

*Խոր. Բ. ծ.*

5. 27. *Հեծաւ արի արքայն Արտաշէս ի սեաւն գեղեցիկ,*
   28. *Եւ հանեալ զոսկէօղ շիկափոկ պարանն.*

29. Եւ անցեալ որպէս զարծուի սրաթեւ ընդ գետն,
30. Եւ ձգեալ զոսկէօղ շիկափոկ պարանն՝
31. Ընկէց ի մէջք օրիորդին Ալանաց,
32. Եւ շատ ցաւեցոյց զմէջք փափուկ օրիորդին,
33. Արագ հասուցանելով ի բանակն իւր։
Խոր. Բ. ծ

6. 34. Տեղ ոսկի տեղայր ի փեսայութեանն Արտաշիսի,
35. Տեղայր մարգարիտ ի հարսնութեանն Սաթինկանն։
Խոր. Բ. ծ.

7. 36. Տենչայ Սաթինիկ տիկին տենչանս՝
37. Զարտախոյր խաւարտ և զտից խաւարծի
38. Ի բարձիցն Արգաւանայ։
Խոր. Ա. լ.

8. 39. Վիշապազունք գողացան զմանուկն Արտաւազդ՝
40. Եւ դեւ փոխանակ եդին։
Խոր. Բ. կա.

9. 41. Ճաշ գործեալ Արգաւանայ ի պատիւ Արտաշիսի,
42. Խարդաւանակ լեալ նմին ի տաճարին վիշապաց։
Խոր. Ա. լ.

10. 43. Արտաւազդայ ոչ գտեալ, քաջի որդւոյն Արտաշիսի,
44. Տեղի ապարանից ի հիմնանալն Արտաշատու,
45. Նա անց գնաց և շինեաց ի մէջ Մարաց զՄարակերտ։
Խոր. Ա. լ.

11. 46. Մինչ դու գնացեր
47. Եւ զերկիրս ամենայն ընդ քեզ տարար,
48. Ես աւերակացս որպէ՞ս թագաւորեմ։
Խոր. Բ. կա.

12. 49. Դու յորս հեծցիս յազատն ի վեր ի Մասիս,
50. Զքեզ կալցին քաջք,
51. Տարցին յազատն ի վեր ի Մասիս,
52. Անդ կացցես և զլոյս մի տեսցես.
Խոր. Բ. կա.

13. 53. Ո՞ տայր ինձ զծուխ ծխանի
54. Եւ զառաւօտն նաւասարդի,

55. Զվազելն եղանց և զվազելն եղջերուաց.
56. Մեք փող հարուաք և թմբկի հարկանէաք։
Մագ. ԼԳ.

14. 57. Իբրև զսէգն Տրդատ, որ սիգալովն

58. Աւերեաց զԹումբս գետոց և ցամաքեցոյց
59. Իսկ ի սիգալն իւրում՝ զյորձանս ծովուց։
Ագաթ. 123

Այս հատվածների քննությունը Հ. Աճառյանը փաստորեն սահմանափակում է բառապաշարի ծագումնային շերտերի վերլուծությամբ, որի մասին մենք կխոսենք հնագույն հայերենի բառապաշարին նվիրված բաժնում։ Նա հատվածների հնչյունական և քերականական առանձնահատկությունների հատուկ քննություն չի կատարում, այլ անում է որոշ անցողակի դիտողություններ (մաւրուս բառի տարբերակների, մէջֆ հայցականի, հաստւցանելով դերբայական ձևի մասին)։ Մինչդեռ այս երևույթների քննությունը ևս բացահայտում է հետաքրքրական պատկեր։

Վիպասանական հատվածների լեզվի հնչյունական և քերականական առանձնահատկությունները, բնականաբար, հիմնականում համընկնում են դասական հայերենի առանձնահատկությունների հետ։ Նշելի են միայն մի քանի էական գծեր. 1) դեռևս հնագույն հայերենի շրջանում նկատվել են երկբարբառների պարզման երևույթներ. ճիշտ է, է-ն թերևս հայ բարբառների մեծ մասում արտասանվել է երկբարբառային (ei) արտասանությամբ, բայց ընկեաց>ընկէց փոփոխությունը վկայում է է-ի հնարավոր մենաբարբառային արտասանության մասին. 2) զմէջֆ ձևը ցույց է տալիս խոսակցական լեզվում անեզական անունների քայքայման պրոցեսի մասին. մէջֆ բառն ընկալվել է (ինչպես աշխարհաբարում) որպես ոչ հոգնակի ձև և չի դարձել զմէջս. 3) Հատուած գնացեալ Վարդգէս Մանուկն... նախադասության մեջ հատուած ձևը գործածված է բուն դերբայական արժեքով, որ վկայում է խոսակցական լեզվում -ած-ով ձևերի դերբայացման վաղ պրոցեսի մասին. 4) ժողովրդախոսակցական լեզվին է հատուկ նաև անորոշի գործիականի մակդերբայական գործածությունը՝ համապատասխան -եալ-ով ձևերի փոխարեն՝ հաստւցանելով, սիգալովն, թերևս նաև ծառայեցուցանելով. 5) սովորական է անցյալ դերբայի դիմավոր արժեքով գործածությունը՝ առանց օժանդակ բայի՝ Հատուած գնացեալ Վարդգէս մանուկն... եկեալ նստեալ... սա հար և նման է սլավոնական լեզուներում հ.-ե. *-lo-ով ձևերի զարգացմանը։

Բառակազմական առումով վիպասանական հայերենը աչքի է ընկնում ժողովրդախոսակցական և բանաստեղծական լեզվին հատուկ -իկ փոքրացուցիչ-փաղաքշական ածանցի հաճախադիպությամբ, ընդ որում այն դրվում է ոչ միայն գոյականների, այլև ածականների վրա՝ կարմրիկ, եղեգնիկ, պատանեկիկ, աշիկ. այն հանգամանքը, որ աշիկ-ը աղջիկ, մանուկ տիպի բառերի նման ստանում է -ունք հոգնակի ձևը, խոսում է -իկ-ով, -ուկ-ով ձևերի մեջ սկզբնական -ն-ի անկման և, հետևաբար, հնդեվրոպական *-i-kon, *-u-kon տիպի ձևերից նրանց ծագած լինելու մասին. այլ կերպ ասած՝ այդ ածանցի տարբերակները, ինչպես նշել ենք, բնիկ հնդեվրոպական ծագում ունեն և հետո են միայն խառնվել իրանական համապատասխան ածանցների հետ, այսինքն՝ ուղղակիորեն իրանականից չեն գալիս։ Հանդիպում են ըզգալի թվով բարդություններ՝ համեմատաբար կարճ բաղադրիչներով և որոշակի առանձնահատկություններով՝ 1) «ածական+գոյական» տիպի ոչ այնքան հաճախադեպ կազմություններ՝ խաչազգի, ոսկէաւղ, շիկափող. 2) «հատկացուցիչ+հատկացյալ» արժեքով բաղադրիչներ ունեցող բարդություններ՝

արեգակն (*եթե սա իրոք բարդություն է*), դիւցազն, վիշապազն (-գունք). *3) աչագեղ-ի բաղադրիչների ու սովորական շարադասություն (փոխանակ* գեղաչեայ *ձևի), ընդհանուր առմամբ բարդությունների կազմության այս տիպերը գալիս են հնից։*

*Վիպասանական հատվածներում տարածված հարադրությունները ևս խոսում են հնագույն հայերենում հարադրման բառակազմական եղանակի տարածվածության մասին՝* նաշ գործեալ, խարդաւանակ լեալ, փող հարուաք։

*Էլ ավելի բնորոշ և էական են վիպասանական հատվածների շարահյուսական առանձնահատկությունները, որոնց մեջ զուգորդվում են խոր հնությունից եկող երևույթները նոր սաղմնավորվողների հետ։*

*Շարադասական առումով վիպասանական հատվածների համար բնորոշ են հետևյալ առանձնահատկությունները. 1) ենթակայի և ստորոգյալի շարադասությունը ազատ է՝ ամբողջովին կապված տրամաբանական շեշտի՝ ենթակայի վերհանման ու ընդգծման անհրաժեշտության, այլև խոսքի ռիթմի հետ՝* երկնէր երկին, ուստի ազգէ քաջն Արտաշէս, տենչայ Սաթենիկ տիկին, կալցին քաջք, *բայց* վիշապազունք գողացան, մինչ դու գնացեր, դու յորս նեծցիս *և այլն. ենթական սովորաբար չի դրվում, եթե ինքնին հասկանալի է՝* քեզ ասեմ. *2) գերակշռում է ածականների նախադաս և գերազանցապես անհամաձայն գործածությունը՝* զկարմրիկն եղեգնիկ, խարտեաշ պատանեկիկ, հուր հեր, բոց մօրուս, քաջ(ն) Արտաշէս, քաջ ազգին, զոսկէաւղ շիկափոկ պարանն, սէգն Տրդատ, *բայց ըստ անհրաժեշտության (ռիթմ, համաձայնող բառերի ընդմիջարկում, ոտանավորի չափ) ածականները կարող են դրվել նաև նախադաս համաձայն և ետադաս՝* աչագեղոյ դստերս, քաջազգւոյ կոյս աւրիորդիս, քաջի որդւոյն և ծովն ծիրանի, թշնամութիւն յաւիտենական. *ստացական և այլ դերանունների գործածությունը սովորաբար ետադաս է՝* ի քանակն իւր, զերկիրս ամենայն, ի սիգալն իւրում. *3) անհամաձայն՝ չընդգծվող բացահայտչի և բացահայտյալի կապակցության եղանակը հետևյալն է. սովորաբար նախադրվում է հատուկ անունը որպես հատուկ անվան բացահայտիչ, համաձայնությունը հազվադեպ է՝* զՔասաղ գետով, զՇրէշ բլրով, զԱրտիմէդ քաղաքաւ, Երուանդայ արքայի, Սաթենիկ տիկին, *բայց* արքայն Արտաշէս. *վերջին դեպքում հատուկ անունը հոդ է ստանում. 4) գերակշռում է հատկացուցիչների նախադաս գործածությունը՝* զդուռնն Երուանդայ արքայի, բանից աչագեղոյ դստերս Ալանաց, աւրիորդիս Ալանաց, զմէջք փափուկ աւրիորդին, ի փեսայութեանն Արտաշեսի, ի հարսնութեան Սաթինկան, ի տաճարին վիշապաց, տեղի ապարանից, զծուխ ծխանի, զառաւօտն Նաւասարդի, զվազելն եղանց, զվազելն եղջերուաց, զբոմբս գետոց, զյորձանս ծովուց, *բայց* եղեգան փող, դիւցազանց զարմից... զկենդանութիւն, ի սարկաց կարգի. *5) շատ ցցուն է հոդերի սկզբնական ցուցական արժեքը՝ մանավանդ առաջին և երկրորդ դեմքերի համար՝* դստերս, տալ զպատանիդ (*«այդ, քեզ մոտ գտնվող պատանին»*), աւրիորդիս, զերկիրս ամենայն. *6) սովորական է բայի մոտ համարմատ բայական գոյականի կիրառությունը՝* տեղ ոսկի տեղայր, տենչայ Սաթենիկ տիկին տենչանս. *7) սովորական է նախադրությունների կիրառությունը՝* ի մէջ Մարաց, *ընդ որում նկատվում է նախադրությունների և մակբայների գործառական դեռ ոչ շատ հստակ տարբերակում՝* դու յորս նեծցիս յազատն ի վեր ի Մասիս. *8) տարածված է, այսպես կոչված, սեռականով ենթակայի գործածությունը անցյալ դերբայի մոտ, ընդ որում*

*նաև վերջինիս դիմավոր արժեքի դեպքում՝* Նաշ գործեալ Արգայանայ, Արտաւազդայ ոչ գտեալ...

*Ցավոք սրտի, գասական փուլից չեն պահպանվել աղոթքների, անեծքների՝ հեթանոսական շրջանից եկող բանաձևեր, որոնք պիտի գրեթե նույնությամբ փոխանցված լինեին սերնդից սերունդ։ Ավելի ուշ շրջաններից պահպանվածները չեն կարող բավարար հիմք լինել հնագույն հայերենի առանձնահատկությունների վերականգնման համար։*

*Ինչպես վերևում նշվեց, հնագույն հայերենը գերակշռող ընդհանուր գծերի կողքին պետք է ունենար նաև տեղական առանձնահատկություններ, այդ թվում՝ ստանդարտ լեզվի առանձնահատկություններից շեղումներ ու տարբերություններ։ Բնակչության բնական աճը, հայերի տարածման վայրերի ընդլայնումը, տնտեսական պայմաններին համապատասխան տարբեր վայրերի թույլ կապը, տարածման տարբեր վայրերում տարբեր ժողովուրդների հետ շփվելը, ստանդարտ լեզվի թույլ տարածվածությունը և այլն,—այս բոլորը չէին կարող հիմք չտալ բարբառային տարբերությունների խորացման և բազմացման համար։ Եթե վաղնջահայերենի բարբառային տարբերությունների վերականգնման հիմնական աղբյուրը հնդեվրոպական վերականգնված ձևերի՝ հայերենում առկա տարբերակների ուսումնասիրությունն է, ապա այս դեպքում մենք ունենք երկու այլ հիմնական ուղի՝ հին հայերենի հուշարձաններում պահպանված տարբերակների ուսումնասիրությունը և արդի հայերենի բարբառների արխաիկ գծերի ու հնագույն տարբերությունների վերականգնումը։ Որոշ նյութ կարող են տալ նաև հայերեն բառերի՝ այլ լեզուներում կատարված փոխառությունները և հայկական հատուկ անունների՝ անտիկ հեղինակների կողմից արված հիշատակությունները։ Նկատի ունենալով ուրիշ լեզուների բարբառների պատմական ուսումնասիրությունների տվյալները՝ դժվար չէ կռահել, որ հայ բարբառները պետք է ունենային և իրոք ունեցել են տարածական-հասարակական պայմանավորվածություն՝ իրենց սահմաններով հիմնականում համընկնելով հին վարչա-տարածքային բաժանումների և հատկապես նախարարական տների սահմանների հետ։ Տարածական տարբերություններին պետք է միանային հասարակական-գործառական և ոճական տարբերությունները։*

*Գրաբարի հին հուշարձաններում տեղ գտած շեղումները հանգամանալից կերպով ուսումնասիրվել են Ա. Այտընյանի «Քննական քերականություն աշխարհաբար կամ արդի հայերեն լեզվի» աշխատության մեջ [1866]՝ լրացվելով հետագա ուսումնասիրողների կողմից։ Հայ բարբառների արխաիկ գծերի բուն գիտական ուսումնասիրությունը կատարվել է Հ. Աճառյանի, Է. Աղայանի, մեր, Ն. Սիմոնյանի և ուրիշների կողմից։ Այդ տվյալներն ի մի են բերված մեր «Հայ բարբառագիտության ներածության» մեջ [1972], որտեղ միաժամանակ լայնորեն կիրառված են հայ բարբառների արխաիկ գծերի և ժամանակակից բաշխման հիման վրա ավելի հին բաշխման պատկերը վերականգնելու մեթոդները։*

*Այդ աշխատության մեջ* [Ջահուկյան, *1972, 180—192] V դ. բարբառային վիճակը վերականգնելու փորձը շատ բանով կարելի է տարածել նաև հնագույն շրջանի, հատկապես նրա նախագրաբարյան փուլի վրա, ուստի հարկ ենք համարում համառոտակի կանգ առնել ձեռք բերված արդյունքների վրա։ Այստեղ տարբերված են հետևյալ վեց բարբառային գոտիները՝ 1) արևմտյան կամ բյուզանդահայ բարբառ, որ պիտի ընդգրկեր պատմական*

Հայաստանի արևմտյան շրջանները, հատկապես Փոքր Հայքը և Մեծ Հայքի արևմտյան շրջանները՝ Ծոփքը, Բարձր Հայքը, Տայքը. 2) հարավ-արևմտյան կամ արևելյան Կիլիկիայի բարբառ, որ պիտի ընդգրկեր Փոքր Հայքին հարավից հարող շրջանները՝ հատկապես Կիլիկիայի արևելյան մասի և հին Կոմագենեի հայկական բնակչությունը. 3) ծայր հարավ-արևմտյան կամ անտիոքահայ միջբարբառ, որ պիտի ընդգրկեր նախորդից հարավ-արևմուտք տարածված շրջանների հայկական բնակչությունը. 4) հարավ-կենտրոնական բարբառ, որ պիտի ընդգրկեր Մեծ Հայքի հարավ-կենտրոնական և հարավային շրջանները՝ Տուրուբերանը (Տարոնը), Վասպուրականի հարավ-արևմտյան մասը, Աղձնիքը, Մոկքը, Թերևս նաև Կորճայքը. վերջինս, ինչպես ցույց են տալիս Թրակացու քերականության թարգմանության մեկնիչների տվյալները, պիտի նշանակալից յուրահատկություններ ունենար. 5) հարավ-արևելյան միջբարբառ, որ պիտի ընդգրկեր Մեծ Հայքի հարավ-արևելյան շրջանները՝ Վասպուրականի հյուսիս-արևելյան մասը և Պարսկահայքը. 6) հյուսիս-արևելյան բարբառ, որ պիտի ընդգրկեր Մեծ Հայքի հյուսիս-կենտրոնական և հյուսիս-արևելյան շրջանները՝ Այրարատը, Գուգարքը, Արցախը, Ուտիքը, Սյունիքը և Փայտակարանը: Այսպիսով, բուն Հայաստանը, այդ թվում Փոքր Հայքը և Մեծ Հայքը պիտի բաժանված լինեին չորս հիմնական բարբառային գոտու, որոնց սահմանները պիտի համապատասխանեին ամենաընդհանուր բաժանումներին, և խոսվածքային տարածքների, որոնց սահմանները մոտավորապես պիտի համապատասխանեին հին նախարարական տների ընդգրկած տարածքների սահմաններին, այսինքն՝ պայմանավորված լինեին որոշակի հասարակական-վարչական տարբերություններով: Հայ բնակչության հետագա տեղաշարժերը և գաղթերը մեծապես փոխում են այս պատկերը, բայց կարելի է ասել, որ հայերի տարածումը տեղի է ունեցել գերազանցապես չհատվող գծերով. այլ կերպ ասած, շարժումն արևելք և հյուսիս տեղի է ունեցել հիմնականում արևելյան և հյուսիսային շրջաններից, դեպի հարավ՝ հարավային շրջաններից: Ավելի ուշ հայտնի են նաև հատվող գծերով շարժվելու զգալի թվով դեպքեր, հատկապես շարժում արևելքից արևմուտք. այդպիսին է եղել, օրինակ, Վասպուրականի Սենեքերիմ Թագավորի ձեռնարկած զանգվածային տեղաշարժը դեպի Փոքր Հայք՝ Սեբաստիայի և Լարիսայի շրջանները, ավելի ուշ՝ Ղարաբաղից շարժումը դեպի Կենտրոնական Անատոլիա՝ Բուրդուրի շրջանը և այլն:

Ստորև կփորձենք տալ հնագույն հայերենի հնարավոր բարբառային տարբերակների կառուցվածքային և բառապաշարային նկարագրի ուրվագիծը՝ հենվելով կատարված ուսումնասիրությունների տվյալների համակցված քննության վրա: Այս դեպքում հարկավոր է նկատի ունենալ, որ նախ՝ եղած տվյալների հնության աստիճանը հաճախ պարզ չէ, և հնարավոր են անախրոնիզմներ, երկրորդ՝ միշտ չէ, որ հնարավոր է կատարել բարբառային տարբերակների տեղայնացում, և հաճախ արձանագրվող տարբերակը մնում է որպես ընդհանուր փաստ:

## բ) ՀՆԶՅՈՒՆԱԿԱՆ ՏԱՐԲԵՐԱԿՆԵՐ

Հնագույն շրջանի և հատկապես նրա զարգացման ուշ՝ նախագրաբարյան փուլի համար կարելի է նշել հետևյալ հնարավոր բարբառային տարբերակների գոյությունը:

Բաղաձայնական համակարգ. 1) հնդեվրոպական շնչեղ ձայնեղներից ծագող ձայնեղ բաղաձայնները բաշխվել են չորս հիմնական գոտու՝ շնչեղության և խլության տարբեր աստիճաններով. կենտրոնական և արևմտյան բարբառային տարածքին, այդ թվում Բարձր Հայքի, Այրարատի, Տարոնի շրջաններին հատուկ է եղել ձայնեղների շնչեղ-ձայնեղ (բʰ, դʰ, գʰ, ձʰ, ջʰ), հյուսիսային տարածքին, այդ թվում՝ հատկապես Տայքին և Գուգարքին՝ ձայնեղ (բ, դ, գ, ձ, ջ), հարավային տարածքին, հատկապես Աղձնիքին՝ շնչեղ-խլացած (փ, թ, ք, ց, չ՝ թերևս մասնակի՝ միայն բաղաձայնասկզբի խլացմամբ) և արևելյան ու հարավ-արևելյան տարածքներին՝ խլացած (պ, տ, կ, ծ, ճ) արտասանությունը. առաջին երկու գոտիներին ու սկզբնային դիրքի ուժեղ խլացումը ամենայն հավանականությամբ հատուկ չի եղել. 2) ոչ սկզբնային դիրքերում (հատկապես ր-ից հետո, ձայնավորների միջև և բառավերջում՝ ձայնավորից հետո) արևմտյան և մասամբ հյուսիս-արևելյան տարածքներում նկատվել է խուլ բաղաձայնների թույլ արտասանություն, որ հետագայում հանգեցրել է նրանց ձայնեղացմանը. հնագույն շրջանի համար խուլերի ձայնեղացման լիովին հավաստի դեպքեր չեն արձանագրված. Ֆ. Ֆեյդի մատնանշած և մեր կողմից բերված Ἠλέγερδα-ն կարող է մեկնաբանվել ոչ միայն Եղեկերտ, այլև Եղէգ-Երդ. 3) Ռ-ին հաջորդող ձայնեղ և խուլ բաղաձայնների խառնումը սովորական է եղել և թերևս ընդհանուր տարածում գտել. սակայն կարելի է արձանագրել, որ այդ դիրքում ձայնեղների խլացումը ավելի հատուկ է եղել արևելյան, խուլերի ձայնեղացումը՝ արևմտյան և կենտրոնական շրջաններին. 4) քմայնացած բաղաձայնները, եթե այս շրջանում նրանք գոյություն են ունեցել, կապված են եղել հարմարեցման՝ համապատասխան քմայնացած ձայնավորների ազդեցության հետ. կարելի է կարծել, որ Թրակացու քերականության թարգմանչի գեամ օրինակը (գամ-ի դիմաց) արտացոլել է գ՚ամ արտասանությունը. քմայնացումն ընդհանրապես բնորոշ է եղել արևմտյան որոշ շրջանների ու արևելյան շրջանների մեծ մասին (հատկապես հարավային) և հավանաբար պայմանավորված է եղել ենթաշերտային ու առշերտային ազդեցությամբ. 5) ինչպես հայտնի է, հայերենի բառասկզբնային հ-ն տարբեր ծագում և տարբեր հնություն կարող է ունենալ. հնդեվրոպական կոկորդայինից (*H), *p-ից և *s-ից եկող և բարբառային էական սահմանափակում չունեցող հ-ի կողքին առկա են որոշակի տարածքներով սահմանափակված՝ սկզբնային շնչի հավելական առկայության կամ, ընդհակառակն, բացակայության դեպքեր. այս երևույթը ամենայն հավանականությամբ բնութագրել է նաև հնագույն շրջանի բարբառային տարբերությունները. դատելով ձայնավորներին նախորդող սկզբնական շնչի՝ ժամանակակից բարբառներին հատուկ բաշխումից՝ կարելի է ասել, որ ձայնավորների ուժեղ և շնչային սկիզբը ավելի հատուկ է եղել արևելյան տարածքի ծայրագավառներին գրեթե ամբողջությամբ (Արցախ, Ուտիք, Սյունիք, Փայտակարան, Պարսկահայք), հարավ-կենտրոնական բարբառային գոտուց՝ Տուրուբերանին ու Վասպուրականին, այլև Բարձր Հայքի և Փոքր Հայքի որոշ տարածքների (Կարնո, Սեբաստիայի, Դարենդեի և այլն). անհավանական չէ կարծել, որ յ-ի բառասկզբնային անկայունությունը (անկումը), որ նկատվում է դեռևս V դ. հուշարձաններում (յայրատիմ—այրատիմ և այլն), կապված լինի հ-ի տարածման նվազականության հետ, եթե, մանավանդ, նկատի ունենանք հնդեվրոպական *p-ի դիմաց սպասված հ-ի փոխարեն երբեմն յ-ի

հանդես գալը. հմմտ. նայր—յաւրայ «խորթ հայր», նինգ—յիսուն և այլն. 6) ն-ի դիմաց խ-ի առկայությունը բարբառային երևույթ, որ նկատելի է հատկապես Վասպուրականի և Պարսկահայքի տարածքներում, ըստ որոշ հետազոտողների՝ պայմանավորված է ուրարտական ենթաշերտի ազդեցությամբ. այս դեպքում ն>խ անցումը իրոք հանդես է եկել հնագույն շրջանում, և Անձաւինձոր—Անձախինձոր (Վասպուրական), Հեր—Խեր (Պարսկահայք) տարբերակների գոյությունը բավականաչափ հին կարող է լինել. 7) խ-ի դիմաց տարնմանական ն-ի առկայությունը նույնպես կարող է հնագույն հայերենում հանդես եկած լինել և ընդհանրացած լինել հատկապես բարբառային որոշ տարածքներ. արդի բարբառներում այդ երևույթը չունի հատուկ տեղայնացում՝ հանդես գալով կցույթների ձևով և ընդհանրացվելով ինչպես արևելյան, այնպես էլ արևմտյան որոշ բարբառներ ու խոսվածքներ. դրանից զատ են, եթե նկատի առնենք հին վիճակը, հատկապես բուն Հայաստանից դուրս գտնվող հարավ-արևմտյան (արևելյան Կիլիկիայի) ու ծայր հարավ-արևմտյան (անտիոքահայ) և Մեծ Հայքի հարավ-կենտրոնական (Աղձնիքի, Տուրուբերանի, Վասպուրականի, Մոկքի) բարբառները. այն հանդես է գալիս դասական հայերենի հուշարձաններում՝ խաղբ—նաղբ, խուղ—նիւղ (նիղ, նեղ). եթե այս երևույթը հին է, ապա նախ՝ հիշյալ տարածքներում ղ-ն դեռևս հնագույն շրջանում ետ գնացած և թավ արտասանություն է ունեցել՝ մոտ լինելով խ-ին. երկրորդ՝ որոշ դեպքերում երևույթը պայմանավորվել է ու-ի քմայնացման հետ (հմմտ. խուղ—նիւղ). երրորդ՝ նկատվել են ղ-ի և լ-ի փոխանցման դեպքեր՝ ծուլամ—ծուղամ, չիլ—չիղ և այլն՝ ոչ միշտ բարբառային տարբերակմամբ. 8) բառավերջի ն-ն ունեցել է տարածքային տարբեր բաշխում՝ համապատասխանաբար ազդելով հոլովման մեջ ն-ով հիմքերի առատության կամ նվազության վրա. ն-ի վերջային ուժեղությունը և առատությունը հատուկ է եղել մասնավորապես Մեծ Հայքի արևելյան ծայրագավառներին՝ Արցախին, Ուտիքին, Սյունիքին, Փայտակարանին. նշանակում է՝ հնում նկատվող -ն-ի անկման դեպքերը կարող են բնութագրել կենտրոնական և արևմտյան շրջանները, ն-ի հավելական գործածությունը՝ նշված արևելյան ծայրագավառները՝ ծունգն—ծունգ, կաղմն—կաղմ:

*II.* **Ձայնավորային համակարգ.** 1) Հնագույն հայերենի վերջին՝ նախագրային փուլում, պետք արդեն հանդիպեին երկբարբառների միաբարբառացման որոշ տարածքներ. ինչպես հայտնի է, այդ երևույթն աստիճանաբար ընդլայնվում է և հին շրջանի վերջերից ընդգրկում գրեթե բոլոր բարբառները, թեև որոշ բարբառներում էլ նկատվում են հակառակ երևույթի դրսևորումներ. Արտաշեսի վերաբերյալ վիպասանական հատվածում ընկենուլ բայի անցյալ կատարյալի ընկլց ձևը՝ փոխանակ ընկեաց-ի ցույց է տալիս նման տարածքների առկայության փաստը. ցավոք սրտի, մենք չունենք այս երևույթի տեղայնացման հաստատուն կռվաններ. եա>ե փոփոխության համար հմմտ. դասական հայերեն (զ)առաջեւ, առեմ, սեմ՝ փոխանակ (զ)առաջեաւ, առեամ, սեամ ձևերի. այն հանգամանքը, որ Փարպեցու մոտ հանդիպում է դղեկ ձևը փոխանակ դղեակ-ի, ցույց է տալիս, որ այս պրոցեսն ընդգրկել է նաև կենտրոնական՝ Այրարատի տարածքը. հավանական է կարծել, որ ամենեքեան—ամենեքին տիպի զուգահեռ ձևերի դեպքում մենք գործ ունենք ոչ թե տարբեր ածանցների, այլ միևնույն ածանցի հնչյունական տարբեր դրսևորումների հետ. Գուեայ—Գուէ տարբերակների առկայությունը

դասական հայերենում խոսում է նկարագրվող երևույթի մի այլ դրսևորման մասին՝ եռաբարբառի փոխարեն երկբարբառ, եթե է-ն արտասանվել է որպես երկբարբառ. 2) բարբառային հնագույն տարբերություն պետք է համարել **եւ—իւ** երկբարբառային տարբերակների գոյությունը՝ փակ վանկերում առաջինը երկրորդով փոխարինելու ընդհանուր միտումով. այսպիսիք են հնդեվրոպական, իրանական և անհայտ ծագման շատ բառեր՝ **ալեւր—ալիւր, աղբեւս—աղբիւս, աղբեւր—աղբիւր, ապտեւր—ապտիւր, առեւծ—առիւծ, բեւր—բիւր, գեւղ—գիւղ, դեւր—դիւր, եղջեւր—եղջիւր, երկեւղ—երկիւղ, եւղ—իւղ, թեւր—թիւր, հարեւր—հարիւր, հեւս—հիւս, հեւր—հիւր** և այլն. ստուգաբանական քննությունը և սեռական-տրականի **-եր<*-եւր.** (**եղջեր<*եղջեւր**) ձևը ցույց է տալիս **եւ**-ի հնությունը. այս երևույթի որոշակի տեղայնացման հնարավորություն մենք առայժմ չունենք. երբեմն միևնույն աղբյուրներում հանդիպում են զուգահեռաբար երկու ձևերն էլ. հմմտ. աստվածաշնչում **ալեւր** և **ալիւր**. կարելի է միայն ենթադրել որ **-եւր**-ով ձևերը պիտի հանդիպեին սահմանափակ թվով վայրերում՝ եզրային կամ մեկուսացած տարածքներում. 3) Թրակացու քերականության թարգմանչի բերած **գեաւմ** (**գʲöմ**) ձևը՝ **գամ**-ի դիմաց՝ ցույց է տալիս ձայնավորների քմայնացման և դրանով պայմանավորված՝ բաղաձայնների քմայնացման առկայության փաստը V դարում և թերևս ավելի վաղ. ձայնավորների քմայնացման փաստերի առկայության մասին են խոսում այնպիսի տարբերակներ, ինչպիսիք են՝ **խուղ—հիւղ**, թերևս նաև **շիղ—շիւղ, ուղեղ—ուղիղ** և այլն, եթե, իհարկե, սրանք ուշ գրչագրական ներմուծումներ չեն. 4) երկբարբառների մենաբարբառացման և եռաբարբառների երկբարբառացման պրոցեսին զուգընթաց գոյություն է ունեցել հակառակ պրոցեսը՝ ցույց տալով երկու հակադիր տարածքների առկայությունը. այս տարածքները միաժամանակ գրանցում են երկբարբառների և ձայնավորների արտասանության նեղացման և լայնացման պրոցեսների առկայության փաստը, երկբարբառների եռաբարբառացման և ձայնավորների արտասանության լայնացման պրոցեսների՝ հնագույն շրջանին հատուկ մի դրսևորումն է **եւ**-ի դիմաց **եաւ**-ի առկայությունը՝ **գեւղ** (**գիւղ**)—**գեաւղ, եւթն—եաւթն, մեւք—մեաւք, ձեւք—ձեաւք**. ձայնավորների լայնացման երևույթը ժամանակակից բարբառներում սահմանափակ տարածում ունի՝ հատուկ լինելով արևմըտյան և արևելյան եզրային որոշ տարածքների. 5) ինչպես նկատել է Ա. Այտընյանը, V դարում արդեն առկա են վերջընթեր վանկի **ա**-ի թուլացման դեպքեր, որոնք կարող էին հանդես գալ թերևս նաև ավելի վաղ. սրա լավագույն վկայությունն է **արմտիք** բառը՝ փոխանակ **արմատիք**-ի. այս երևույթը ավելի հատուկ է արևմտյան տարածքի բարբառներին և լայնորեն հանդես է գալիս միջին հայերենում. սրա հետ մասամբ կապված են նաև **ա** հոդակապի սղման դեպքերը. 6) **ի**-ով վերջացող բառերի **ի**-ի կորուստը համեմատաբար ուշ երևույթ է և հնագույն շրջանում միայն մասնակի տարածում պիտի ունեցած լինի՝ **հիւսիսի—հիւսիս**:

III. **Շեշտ.** Ինչպես ցույց են տալիս ձայնավորների փոփոխությունների տիպերը, հնագույն հայերենի զարգացման ուշ՝ նախագրաբարյան փուլում, արդեն պիտի նկատելի լինեին երկու կարգի տարածքներ. արևմտյան տարածքում նկատելի է վերջնային շեշտի հետ միասին սկզբնավանկային բավական ուժեղ շեշտ, որ զգալի է եղել արևելյան տարածքի համեմատությամբ, և երկու շեշտերի զուգորդումը առաջ է բերել, ինչպես տեսանք, վերջընթեր **ա** ձայնավորի զգալի թուլացում. Հայտնի չէ, թե ե՞րբ է հաստատվել արևելյան

*տարածքների վերջընթեր շեշտը, բայց պարզ է, որ այդ տարածքներում վերջընթեր վանկը չի ենթարկվել թուլացման, և հետևաբար, բառն ունեցել է շեշտային այլ հարաբերակցություն։*

### գ) ՁԵՎԱԲԱՆԱԿԱՆ ՏԱՐԲԵՐԱԿՆԵՐ

*Ելնելով V դարի և հատկապես գրավոր հայերենի հուշարձանների տվյալներից՝ հնագույն հայերենի նախագրային փուլի համար կարելի է տարբերակել քերականական մի շարք այնպիսի հատկանիշներ, որոնք պիտի բնութագրվեին տարածքային սահմանափակումներով, այսինքն՝ բարբառային բնույթ ունենային։ Դրանց մեջ կան այնպիսիները, որոնք սկսվելով այս շրջանում՝ որոշ սահմանափակ տարածքներում, հետագայում գրեթե ընդհանուր տարածում են գտնում. այդպիսին է, օրինակ,* -եար *հավաքական-հոգնակերտը։ Ի մի բերելով եղած տվյալները՝ կարելի է գծել բարբառային հնագույն տարբերակների հետևյալ սխեմատիկ պատկերը.*

*1)* -ք *հոգնակերտի գործածությունը դեռ հնագույն շրջանում սահմանափակվում է մի շարք հավաքական-հոգնակերտ մասնիկների տարածմամբ. Եթե մի կողմ թողնենք* -ունք *հավաքական-հոգնակերտը, որ գրաբարի հին հուշարձաններում էլ գործածվում է ոչ ձայնորդահանգ հիմքերի համար՝* -ք-*ի հետ միասին և, հավանաբար, ընդհանուր տարածում է ունեցել, ապա կարելի է խոսել հետևյալ հավաքական-հոգնակերտների մասին. ա) արդեն սաղմնավորվում է* -եար *հավաքական-հոգնակերտի գործածությունը, որը, ինչպես նշվել է, ժամանակակից բարբառներում և գրական լեզվում ընդհանուր տարածում է ստանում. դժբախտաբար, հնարավոր չէ նշել սրա գործածության հնագույն տարածքները, բայց կարելի է ասել, որ այն ընդգրկել է կենտրոնական շրջանները և արդեն ունեցել է* եա>ե *փոփոխությամբ պայմանավորված* -եր *տարբերակը.* -ե(ա)ր-*ը հանդիպում է ինչպես բնիկ, այնպես էլ իրանական և անհայտ ծագման բառերի վրա. հմմտ. մի կողմից՝* բանեար, որեար, *մյուս կողմից՝* բարձկնեար, վարժեար *և այլն. Փարպեցու մոտ և այլուր հանդիպում են* -եր-*ով ձևեր՝* բաներ, հայեր, հարկեր, ձեռներ. բարձկնեար, նաւկնեար, քաղաքկնեար *ձևերը ցույց են տալիս սկզբնական* բարձիկ(ն), նաւիկ(ն), քաղաքիկ(ն) *ձևեր, որոնք հաստատ պետք է լինեին խոսակցական լեզվին.* ն-*ն հետագայում գիտակցվում է որպես վերջավորության տարր. բ)* -ուի *հոգնակերտը, որի* -ու-*ն համարվում է երկակի վերջավորության մնացորդ (հմմտ.* երկու*)՝ աճած* ի *ձայնավորով, V դ. սակավադեպ է՝* շնուի (շնի), *բայց միջին հայերենում և բարբառներում դառնում է հաճախադեպ. Եթե* -ու-*ն իրոք կապ ունի հնդեվրոպական երկակիի հետ, ապա այն պետք է գա վաղնջահայերենից. Հենվելով արդի բարբառների տվյալների վրա՝ կարելի է ասել, որ այն ավելի տարածված է եղել արևմտյան և հարավային տարածքներում. գ)* -(ո)տի *հավաքական-հոգնակերտը V դ. քիչ է հանդիպում՝* արմտի, մանկտի, մեռելոտի, ոսկրոտի, սնոտի, փորոտի. *այն հանգամանքը, որ այն դրվում է միայն հնդեվրոպական ծագման հիմքերի վրա (ներառյալ* փո՞ր-*ը) և* մեռելոտի, սնոտի, փորոտի *բառերում պահպանում է հիմքային* ո *ձայնավորը, խոսում է նրա հնդեվրոպական ծագման և խոր հնության մասին. հայտնի չէ միայն, ե՞րբ է տեղի ունեցել իմաստային տեղաշարժը դեպի հոգնակի-հավաքական իմաստ. այս տեղաշարժը նույն բնույթի*

է, ինչ -նաւ-ինք, որի r-ն արտացոլում է Հ.-Ե. *-ro-ն (-նաւ-ով բառերը հոլովվում են -ո- հոլովմամբ՝ -նաւ, սեռ. -նոյ. զատելով արդի բարբառային բաշխումից՝ -(ո)տի-ն ավելի տարածված պիտի լիներ հարավ-արևմտյան շրջաններում. դ) -անի հավաքական-հոգնակերտը V դ. բավական տարածված է և հանդիպում է ինչպես հնդեվրոպական (գլխանի, կանանի), այնպես էլ իրանական և անհայտ ծագման (ազատանի, աւագանի) հիմքերի վրա. Հնարավոր է ենթադրել հնդեվրոպական տարրերի և իրանական հոգնակիի ձևերի (հմմտ. պարթ. -ān հոգնակերտը) բաղարկում (կոնտամինացիա). Ելնելով բարբառային արդի բաշխումից՝ կարելի է ասել, որ -անի-ն, որ հետագայում ներկայացված է գերազանցապես -նի ձևով, տարածված է եղել հայ բարբառների արևմտյան շրջաններում՝ ընդհատվող գծերով և հյուսիս-արևելյան շրջաններում՝ հոծ կերպով. նրանից զերծ են եղել հարավ-կենտրոնական (Տուրուբերանի, Վասպուրականի) և հարավ-արևելյան (Պարսկահայքի) շրջանները. ե) -անի հոգնակերտի հետ ծագումնաբանորեն հավանաբար կապված է -(ե)ան հոգնակերտը, որ դրվում է ինչպես բնիկ հնդեվրոպական (գրեան, իշ(ե)ան), այնպես էլ իրանական և այլ ծագման հիմքերի վրա (բերդեան, ճոխացեան). Հանդիպում է նաև -ք հոգնակերտով՝ գրան(ե)անք. Հաճախադեպ է V դ. ուշ հեղինակներից Փարպեցու մոտ՝ գործեան, թղթեան, իշան, ձիան. ինչպես նախորդի, այնպես էլ այս դեպքում պետք է ենթադրել հնդեվրոպական -ն-ով և իրանական հոգնակի ձևերի բաղարկում՝ առաջինների իմաստային համապատասխան անցումով. ըստ հետագա բարբառային տվյալների՝ այն պետք է հնում էլ լայն տարածում ունեցած լիներ՝ չհանդիպելով միայն արևմտյան և արևելյան եզրային որոշ տարածքներում. զ) -ստան ածանցը, որ իրանական ծագում ունի, հավանաբար դեռ հնագույն հայերենի նախագրաբարյան փուլում պիտի բավական տարածված լիներ և հանդիպեր հավաքական-տեղանիշ արժեքով՝ այգեստան, անդաստան, ձիթաստան «ձիթենիների տեղ. ձիթենիներ» և այլն. այս ածանցը աստիճանաբար դուրս է մղում նաև երկրներն ըստ ժողովուրդների կոչելու (Հայք «Հայեր. Հայաստան») հին սովորույթը և առաջ բերում տարբերակում՝ Հայաստան, Մարաստան (հմմտ. նաև Մարաց աշխարհ) և այլն. բուն իրանական կազմություններ են գերդաստան, շահաստան և այլն. է) -որ(ե)այ(ք) հավաքական-հոգնակերտը թերևս ծագմամբ զուգահեռ է -նաւ հավաքական-հոգնակերտին՝ ունենալով ընդհանուր -r- տարրը. այն հանդիպում է և՛ բնիկ, և՛ ոչ բնիկ հիմքերի մոտ՝ արտոր(ե)այ(ք), կայորայ, վանոր(ե)այ(ք) (հմմտ. նաև վաներայ(ք) և վանեար). ըստ բարբառային հետագա տվյալների՝ այն սկզբնապես պիտի տարածված լիներ կենտրոնական և, որոշ սահմանափակումներով, արևելյան տարածքներում։

2) Հոլովման համակարգում դեռևս դասական մատենագրության մեջ նկատվում են այնպիսի շեղումներ, որոնք պետք է տարածքային սահմանափակություն ունենային և թերևս մասամբ սկսված լինեին հնագույն շրջանում. ա) այսպիսին է ուղղականի և հայցականի ձևերի շփոթումը, ինչպես ցույց են տալիս դասական հայերենի որոշ նմուշներ (հմմտ. Բուզանդ) և վիպասանական հայերենը (հմմտ. ցանեցոյց զմէջք)՝ ուղղականի գործածությունը որպես հայցական. ք-ի բուն արժեքի թուլացման պրոցեսը արտահայտվում է նաև անեզական բառերի եզակի ըմբռնման և հավաքական մասնիկների տարածման մեջ. սրա կողքին տարածված է նաև ուղղականի փոխարեն հայցականի գործածությունը, որ բավական հաճախադեպ է տեղանուն-

ների մեջ և տարածվածություն է գտնում V դ. որոշ երկերում. ակնհայտ է, որ այս զուգորդությունները պետք է ուժեղ լինեին հատկապես այն տարածքներում, որտեղ ուղղականի և հայցականի հակադրությունը և դրա հետ կապված գ-ի հոլովականակերտ դերը համեմատաբար թույլ է եղել. իբրև այդպիսիք պետք է նշել հատկապես հյուսիս-արևելյան տարածքները. բ) հոլովման մեջ -ա-ով հիմքերի եզակի սեռական-տրականում ի-ի տարածումը հավանաբար տեղի է ունենում այս շրջանում. այն հանգամանքը, որ բնավոր (թեմատիկ) և անբուն (աթեմատիկ) հիմքերի նախկին հակադրությունը հայերենում փոխարինվում է ձայնավորահանգ և ձայնորդահանգ հիմքերի հակադրությամբ, պայմաններ է ստեղծում վերջավանկերի անկումից հետո ի-ի հետագա տարածման համար. այն մասամբ սկսում է ընդգրկել նաև -ո-ով և -ու-ով հիմքերը. նկատի ունենալով ի հոլովման բաշխման արդի բարբառային վիճակը՝ կարելի է ասել, որ նրա տարածման միտումը դասական հայերենում և հավանաբար նաև հնագույն շրջանի վերջին փուլում հատկապես ուժեղ է եղել ծայր հարավ-արևմտյան և արևելյան տարածքներում. գ) դեռևս հնագույն շրջանի վերջերին կարող էին լինել հոլովումների և նրանց բնորոշ տարրերի փոխանցման դեպքեր՝ ի-ով հիմքերի դիմաց ի-ա-ով հիմքեր, -ն-ով ձայնորդահանգ հիմքերի մեջ -ին-ի փոխարեն -ան-ի տարածում, բացառականի -է վերջավորության անկում կամ, ընդհակառակն, տարածում այլ հիմքերի վրա, անկանոն հիմքերի համաբանական ձևափոխություններ և այլն, բայց դժվար է դրանց ընդգրկման տարածքային սահմանների որոշումը. կարելի է անել միայն որոշ ընդհանուր եզրակացություններ՝ հենվելով արդի բարբառների փաստերի վրա. այսպես, նկատի ունենալով արդի -էն-ով և -ից-ով բացառականների տարածումը, կարելի է ասել, որ է-ն ավելի թույլ դիրքեր է ունեցել արևելյան տարածքներում. դ) դերանվանական հոլովումից անվանականին անցած -մ վերջավորությունը ամենայն հավանականությամբ տարածքային սահմանափակություն է ունեցել՝ հանդիպելով մասնավորապես արևելյան տարածքներում, որտեղ նրա հիման վրա առաջացել է այժմյան արևելյան բարբառների ներգոյականը՝ ճորում. ե) դեռևս հնագույն հայերենի շրջանում պետք է ստեղծված լինեին ցուցական դերանունների -իկ-ով ձևերի (հմմտ. մեսր. այսորիկ՝ այսր-ի դիմաց) գործածության տարբերություններ ունեցող տարածքներ. դատելով -իկ-ով ձևերի այժմյան բաշխումից՝ կարելի է ասել, որ դրանք տարածված են եղել հատկապես ծայր հարավ-արևմտյան Փոքր Հայքի և Մեծ Հայքի արևելա-կենտրոնական ու արևելյան տարածքներում. զ) հավանաբար, դեռևս հնագույն շրջանում տարածքային հարաբերություններ պետք է ունենային սոյն, դոյն, նոյն դերանունների -ին-ով ձևերը՝ նորին—նորուն, նոցին—նոցուն(ց) և այլն, թեև առայժմ այդ տարածքները ճշտորոշել հնարավոր չէ. կարելի է կարծել, որ մենք գործ ունենք համապատասխան ձայնդարձային տարբերությունների հետ, եթե -ին-ը ծագում է *-en-ից և ոչ *-in-ից (*-en>-ին և *-on>-ուն?)։

3) Խոնարհման համակարգում նկատելի են հետևյալ երևույթները. ա) ածանցավոր և անածանց բայական ձևերի՝ դեռևս վաղնջական շրջանում նկատվող տարբերությունները (հմմտ. անիծանեմ—անիծեմ) այս շրջանում խորանում են և, ամենայն հավանականությամբ, տալիս տարածքային տարբերություններ. դատելով -ն- ածանցով և անածանց ձևերի հետագա բարբառային բաշխումից՝ կարելի է ասել, որ ածանցավոր ձևերը ավելի բնորոշ

են եղել արևմտյան, անածանց ձևերը՝ արևելյան տարածքներին, բայց ոչ հոծ կերպով. Հմմտ. դասական հայերենում ավանդված անիծանեմ—անիծեմ, անջատանեմ—անջատեմ, առածանեմ—առածեմ, ածանեմ—ածեմ, զատանեմ—զատեմ, զեղծանեմ—զեղծեմ, թքանեմ—թքեմ, խփանեմ—խփեմ, լքանեմ—լքեմ, ներկանեմ—ներկեմ, սուզանեմ—սուզեմ, տարածանեմ—տարածեմ և ուշ բարբառային թքնել—թքել, զա(ր)նել—զարկել, (կլանել>կլնել>) կլլել—կլուլ, կուլ տալ, պաքնել—պաքել, պաչել, սպանանել>սպաննել—սպանել տարբերակները. բ) երկրորդ (-իմ) լծորդության բայերի փոխարեն դասական մատենագրության մեջ երբեմն հանդիպում են առաջին լծորդության (-եմ) ձևեր՝ ճեմիմ—ճեմեմ, մոլորիմ—մոլորեմ, յորդիմ—յորդեմ, պայթիմ—պայթեմ. Նկատի ունենալով բարբառային հետագա վիճակները՝ կարելի է ասել, որ այսպիսի փոխանցումը ավելի հատուկ է արևելյան տարածքներին և հանգեցրել է -իլ լծորդության հետագա վերացմանը. Ինչպես հայտնի է, արևելահայ բարբառային հիմքի վրա բարձրացած արդի գրական լեզուն զուրկ է -իլ լծորդությունից՝ ի տարբերություն արևմտահայերենի. -իլ լծորդության դիրքերի ուժեղությունը հատուկ է եղել արևմտյան և հարավ-կենտրոնական տարածքներին. գ) -ում լծորդության ուժեղությունը և նույնիսկ ընդլայնումը՝ ի տարբերություն այդ լծորդությունը այլ ձևերով փոխարինելու միտման, անշուշտ, նույնպես տարածքային տարբերություն է ունեցել. կարելի է ասել, որ առաջին երևույթը բնութագրել է արևմտյան տարածքների մեծ մասը, երկրորդը՝ արևելյան տարածքները. դասական հայերենում նկատելի են արգելում—արգելեմ, արձակում—արձակեմ, լիզում—լիզ(ան)եմ, կիզում—նրկիզեմ, յաւելում—յաւելեմ և զերծանեմ—զերծում, դիզանեմ—դիզում, կլանեմ—կլնում, սկսանիմ—սկսնում. դ) հաճախակի է ածանցական -նում և -չիմ տիպի բայաձևերի փոխանցումը՝ զարթնում—զարթչիմ, թաքնում—թաքչիմ, թռնում—թռչիմ, ուռնում—ուռչիմ, փախնում—փախչիմ. Բարբառային հետագա տվյալները հստակ պատկեր չեն տալիս, բայց կարելի է ասել, որ -չիմ-ով ձևերը ավելի բնորոշ են եղել հյուսիս-արևելյան շըրջանների մեծ մասին և հյուսիս-արևմտյան որոշ շրջանների. ե) լայն չափեր է ստանում -եալ և -լոց տիպի դերբայներով կազմված բաղադրյալ ժամանակների գործածությունը, ընդ որում կարելի է ասել, որ արևելյան տարածքներում նկատվում է այս գործածությունը ընդլայնելու միտում. Հավանաբար այս տարածքների համար է բնորոշ եղել դասական հայերենում նկատվող -լոյ եմ տիպի ապառնի ձևերի և -եալ լինիմ, -լոյ լինիմ ձևերի ներգործական ու չեզոք իմաստով, այլև լ -լիս տիպի կառույցի գործածությունը. զ) Հավանաբար տարածքային տարբերություն է ունեցել -աղ տիպի դերբայը -իչ տիպի դերբայական ձևերով փոխարինելու միտումը. է) անհավանական չէ կարծել, որ -ուկ-ով դերբայական ձևերի (բաներթուկ, աւաղուկ, պարծուկ և այլն) գործածությունը դասական հայերենի որոշ հուշարձաններում իր հիմքերն է ունեցել հնագույն շրջանի վերջերին. Ըստ հետագա բարբառային տվյալների՝ այն տարածված է եղել արևմտյան և հարավ-կենտրոնական բարբառային տարածքներում. ը) տարածքային տարբերություններ պիտի ունենային անցյալ կատարյալի հոգնակի 2-րդ դեմքի -էք և -իք վերջավորությունները, որոնցից երկրորդը դասական հայերենում սահմանափակ գործածություն ունի՝ յաւելիք, կոտորեցիք, ծախեցիք և այլն, բայց հետագայում ընդհանուր տարածում է գտնում. թ) այդպիսի տարբերություններ պիտի տային նաև հրամայական -այք և -էք (կալայք—կալէք, տարայք—տարէք),

-այք և -արուք (գրեցայք—գրեցարուք), *անցյալ անկատարի* -էր *և* -իր (կոչէր—կոչիր) *ձևերը և այլն։*

## դ) ՇԱՐԱՀՅՈՒՍԱԿԱՆ ՏԱՐԲԵՐԱԿՆԵՐ

*Հնագույն հայերենի շարահյուսական տարբերակները, ի տարբերություն ձևաբանականների, ավելի քիչ են հայտնի։ Այնուամենայնիվ կարելի է որոշ ընդհանուր դիտողություններ անել։*

*Հնագույն հայերենի որոշ տարածքներում արդեն պետք է նկատելի լինեին նախադասության անդամների համաձայնության և սովորական շարադասության ավելի հաճախակի խախտման դեպքեր։ Դրանց մասին են վկայում վիպասանական հատվածներում և V դ. դասական հայերենի հուշարձաններում հատկացուցիչների՝ նախադաս, սովորաբար ետադաս ու համաձայն գործածվող որոշիչների՝ նախադաս և անհամաձայն* (արքայից արքա, զմեր թագաւորն, շան գլուխ, իւր որդւոյն, յայս տեղւոջս, երեք ժամու), *ենթակայի և ստորոգյալի՝ անհամաձայն գործածության դեպքերը* (թափէր թեւք, ոչ թաղեցաւ ոսկերք, եղեւ... փորձութիւնք). *վերջիններս ավելի են խորանում անեզական բառերի եզակի ըմբռնման և հավաքական-հոգնակերտ մասնիկների տարածման հաճախացման հետ կապված։*

*Հոդերի գործածության տարածքային տարբերություններ պիտի տային այնպիսի երևույթներ, ինչպիսիք են հատկացուցչի հոդառության սահմանափակման միտումը, որ բնութագրում է հետագա արևելյան բարբառները,* ումն, ում, իմն, ինչ *անորոշ դերանունների փոխարեն* մի-*ի գործածությունը՝ երբեմն անհամաձայն* (բռամբ մի ալիւր, սուտ եղբաւր մի), *երբեմն հոդով և նախադաս* (մին մի Րաղաւք, զմին պանդուխտ), *ցուցական հոդերի ստացական իմաստը* (զանձն, ոտնս), *ստացական լրացում ունեցող գոյականների և հատուկ անունների հոդառությունը* (զմեր թագաւորն, զմարզպան Սուրէնն, զՑղիայն)։ *Այս երևույթները հետագայում խոր հիմքեր են նետում աշխարհաբարում՝ երբեմն արևմտահայ և արևելահայ տարածքների համապատասխան տարբերակմամբ։*

*Նախդիրների գործածության մեջ* զ *և* ի *նախդիրների սահմանափակման միտումը պիտի հանդես գար արևմտյան ու արևելյան տարբեր տարածքներում և շրջանցեր հատկապես ծայր հարավ-արևմտյան ու հարավ-կենտրոնական շրջանները։ Դժվար է ասել, տարածքային ի՞նչ սահմանափակումներ է ունեցել նախդիրները համապատասխան նախադրություններով և ետադրություններով փոխարինելու պրոցեսը՝* ի մէջ, ի ներքոյ, ի վերայ, պէս, ի... դէմս, ի ճամար, ի... տեղի (ի տեղիս) *և այլն։ Նշենք, որ արդի որոշ բարբառներում դեռ կա* ի մէջ, ի վերայ *նախադրությունների ժառանգորդների նախադաս գործածությունը՝ ի հակադրություն ավելի տարածված ետադաս գործածության։*

*Թերևս տարածքային սահմանափակումներ են ունեցել շաղկապների գործածության այնպիսի դեպքեր, ինչպիսիք են* զի-*ի փոխարեն* որ-*ի,* եթէ-*ի փոխարեն* թէ-*ի,* յորժամ-*ի և* իբրեւ-*ի փոխարեն* երբ-*ի հանդես գալը, որ Ա. Այտընյանը համարում է աշխարհաբարի ազգնավորման ընդհանուր պրոցեսի մի մասը։*

## Ե) ԲԱՌԱԿԱԶՄԱԿԱՆ ՏԱՐԲԵՐԱԿՆԵՐ

*Հնագույն հայերենում բառակազմությունն աստիճանաբար վերածվում է ձևաբանությունից անկախ բնագավառի և բուն առումով պիտի քննվի բառապաշարին վերաբերող մասում, բայց նկատի ունենալով նախահայերենի և վաղնջահայերենի կառուցվածքային առանձնահատկությունների քննության ընդհանուր սխեման՝ այստեղ քննությունը կտանենք միևնույն ձևով. սրանով հնարավորություն կտրվի հետապնդելու ոչ միայն տվյալ շրջանն ընդհանրապես, այլև, անհրաժեշտության դեպքում, հետևելու լեզվի կառուցվածքի առանձին բնագավառների ձևավորման պրոցեսին։*

*Բառակազմական տարբերակների քննությունը երկու հայեցակետ ունի՝ մի կողմից՝ բարբառային սահմանափակություն ունեցող ածանցների վերհանումն ու նրանց տարածման շրջանների որոշումը, մյուս կողմից՝ բառակազմական առանձին ձևերի՝ ածանցումների ու բարդությունների, գործածության տարբերությունների, նրանց տարածման սահմանափակումների և առկայության ու բացակայության շրջանների սահմանումը։*

*Առաջին հայեցակետը իր հերթին կարող է հենվել մի կողմից՝ հնից եկող փաստերի վերլուծության, մյուս կողմից՝ արդի բարբառների տվյալների վրա։ Գիտության զարգացման արդի վիճակում մենք չենք կարող ընդարձակ եզրակացություններ անել հայերենի վաղ գրավոր հուշարձանների (դասական հայերենի) ընձեռած փաստերի տարածման աստիճանի և բարբառային սահմանափակման ու տարածման գոտիների մասին։ Կարելի է միայն ասել, որ լայն գործածություն ունեցող ածանցները՝* ան– *ժխտական նախածանցը,* –ական, –աւոր, –(ան)ոց, –ումն, –ութիւն *և այլն վերջածանցները ընդհանուր տարածում պիտի ունենային, բայց գործածականներն, ընդհանրապես, կարող էին հատուկ լինել առանձին տարածքների, մանավանդ եթե դրանք համանշային շարքեր են կազմում իրար և ընդհանուր տարածում ունեցողների նկատմամբ կամ արդի բարբառներում տարածման որոշակի գոտիներ ունեն՝* տ–, դժ– *նախածանցները,* –անի (ըեզուանի, մարդուանի), –եղ (նիւթեղ, մազեղ), –եղի (մսեղի, կթեղի), –ին (ոսկին, պատուակին), –ուտի (ատարուտի. *հմմտ. նաև* մեծոլոտի), –ուլ (բարուլ, կափուլ), –ունի (արմունի, ծերունի) *և այլն։*

*Կան նաև ավանդված և բարբառային մի շարք ածանցներ, որոնք հանդիպում են հնդեվրոպական ու ոչ հնդեվրոպական հիմքերի մոտ և հանդես են բերում հին կերպարանք. հնարավոր է նրանց՝ հնագույն շրջանից գալը։ Առաջին տիպի ածանցներից հիշենք* կապանչ *«շղթա» բառի* –անչ*-ը*[2]*։ Մյուս (բարբառային) ածանցներից նշենք հետևյալները.*

–ան *(հմմտ.* –ին, –ուն)՝ յողան.

–աշ՝ բեղաշ.

–ինճ *(գրական լեզվում միայն ոչ բնիկ բառերում. բարբառներում հանդիպում է բնիկ հիմքերի մոտ)*՝ թփինճ, փորճարինճ, *այլև* գանինճ, նախատինճ *և այլն.*

–ոչ՝ տկ–ռ–ոչ, բրդոչ, *այլև* դանդալոչ.

---

[2] *Հ. Աճառյանը [ՀԱԲ, 2, 519] հղում է Կ. Սարաֆյանի «Բանալի գիտութեան»-ը [1788], բայց հմմտ. նաև* Ա. Բագրատունի, *1852, 683։*

ջուն (*նաև ուշ ավանդված բառերում*)՝ բրդուն, բրուն, գդալուն, *այլև ուշ ավանդված*՝ պարկուն:

*Ածանցների և ածանցակերպների գործածության տարբերությունները հնագույն շրջանում պետք է բավական լայն չափեր ընդունած լինեին, սովորական պիտի լինեին մի տարածքի ավելյալ ածանցի փոխարեն մյուս տարածքում մի այլ ածանցի գործածության դեպքերը: Սրան պիտի միանային ածանցավոր ձևերի դիմաց համանիշ բարդությունների գործածության դեպքերը: Լայնորեն պիտի տարածված լինեին նաև բառաբարդման տարբերությունները՝ բարդության մի բաղադրիչի փոխարեն՝ մի այլ համանիշ բաղադրիչ (երբեմն բնիկի և փոխառյալի տարբերությամբ), ավելյալ բաղադրիչի հիմքային մի ձևի դիմաց մի այլ ձև,-ա- հոդակապով ձևի դիմաց՝ անհոդակապ ձև, սովորական բարդության փոխարեն՝ հարադրական բարդություն, հարադրության մի բաղադրիչի փոխարեն՝ մի այլ բաղադրիչ: Ահավասիկ օրինակներ բառակազմական տարբերակների ամենից ավելի բնորոշ դեպքերի համար.*

*1) Արմատական ձևերի դիմաց՝ ածանցավոր, ածանցավորների դիմաց՝ կրկնածանցավոր ձևեր*՝ ամուր «*ամրոց*»—ամրոց—ամրական, բարբառոս (ած.)—բարբառսական—բարբառսիկ, բոլոր—բոլորակ, բոշխնեմ—ըմբոշխնեմ, գէտ—գիտուն, դի—դիակն, գոգ (ած.)—գոգաւոր, գուբ—գբութիւն, դատ—դատաստան (իրան.), դէտ—դիտաւոր, զեղջ—զղջումն, տարաշխարհ—տարաշխարհական և այլն: Անշուշտ, բարբառային բնույթ է ունեցել -ութիւն ածանցի համընդհանուր գործածությունը՝ ապանդութիւն, երդութիւն, լալութիւն, հրաժեշտութիւն և այլն:

*2) Մի ածանցի (երբեմն ածանցական իմաստով հոլովաձևի) փոխարեն մի այլ ածանց, բարդության մի բաղադրիչի փոխարեն՝ մի այլ բաղադրիչ*՝ ախտաբեր—ախտաժէտ, անձնակամ—ինքնակամ, անձնիշխան—ինքնիշխան, անցական—անցաւոր, աշխատանք—աշխատումն, արժանաւոր—արժանի, բազմագութ—մեծագութ, գաղտնի—գողտուկ, դամբան—դամբարան, դաստակերտ—ձեռակերտ, զաւրաւոր—զաւրեղ, փութանակ—փութով, քառակուսի—քառանատ և այլն:

Թերևս համաբանական բնույթ ունեն տարածված ածանցական ձևերի ածանցները ավելի արդյունավետ ածանցներով փոխարինելու դեպքերը՝ զարհուրումն՝ *փոխանակ* զարհուրանք-*ի*, սպառնութիւն և սպառնումն՝ *փոխանակ* սպառնալիք-*ի* և այլն:

*3) Բաղադրության մի հիմքային ձևի փոխարեն՝ մի այլ հիմքային ձև, հոդակապավոր ձևի փոխարեն՝ անհոդակապավոր ձև*՝ անուանադիր—անուանադրութիւն—անուանդրութիւն և այլն:

*4) Համադրական բարդության դիմաց՝ հարադրություն, հարադրության մի բաղադրիչի դիմաց՝ մի այլ բաղադրիչ*՝ ամբաստանեմ—ամբաստան լինիմ, աշխատեմ—աշխատ առնեմ, աշխատիմ—աշխատ լինիմ, աչառեմ—ակն առնում, աչս արձակեմ—աչս արկանեմ, արգել առնեմ—արգել արկանեմ (լինիմ, տամ), գլորեմ—ի գիլ հանեմ, պատասխանեմ—պատասխանի տամ և այլն:

# II. ԲԱՌԱՊԱՇԱՐ

## Ա. ՀԻՄՆԱՑԵՐՏ

### 1. ԸՆԴՀԱՆՈՒՐ ԲՆՈՒԹԱԳԻՐ

Հնագույն հայերենի բառապաշարի միջուկը շարունակում էին մնալ վաղընջահայերենից ժառանգված **արմատական և ոչ արմատական** բառերը, որոնց գումարվել էին վաղնջահայերենում փոխառված և կազմված բարդ ածանցավոր և կրկնավոր բառեր։ Իհարկե, վաղնջահայերենին հատուկ որոշ քանակությամբ բառեր բնական մաշման հետևանքով դուրս էին եկել, կադապարվել էին մեծաթիվ փոխառություններից, բայց հնդեվրոպական արմատների բառակազմական արժեքը մնում էր էական, և վաղնջահայերենից ժառանգված բառերի ընդհանուր տեսակարար կշիռը շարունակում էր մեծ լինել։ Այս առումով հնագույն հայերենի վիճակի մասին էական գաղափար է տալիս վիպասանական հատվածների բառապաշարի քննությունը, եթե նկատի ունենանք, որ, ինչպես նշվեց, այդ հատվածները պիտի կազմավորված լինեն հնագույն հայերենի շրջանում, հատկապես նրա ուշ փուլում և բառապաշարի տեսակետից հիմնականում պիտի արտացոլեին այդ փուլի առանձնահատկությունները. պահպանված 183 բառից հանելով օտար ժողովուրդների անվանումները (Ալանք, Մարք) և մնացածները վերախմբավորելով ըստ արմատական ընդհանրության՝ Հ. Աճառյանը [ՀԼՊ, 2, 72—75] կատարել է համապատասխան վիճակագրական հաշվումներ և ցույց տվել, որ դրանցից 73-ը բնիկ հնդեվրոպական են (45%), 30-ը՝ պարսկերենից փոխառյալ (18%), 51-ը՝ անծանոթ ծագման (31%), 4-ը՝ ուրարտա-վրացական (ծուխ, ծիրան, տեղ*, գաւառ) (2%), 2-ը՝ ասուրական (քաղաք, փոխ) (1%), 1-ը՝ ասորական (ցամաք) և 1-ը՝ հունական (թե՞ հռոմեական՝ մարգարիտ)։ Ըստ այսմ Հ. Աճառյանը եկել է այն եզրակացության, որ «վիպասանական հայերեն լեզվի մեջ անծանոթ և հնդեվրոպական բառերը կազմում էին մեծագույն տոկոսը. պարսկերեն փոխառությունները թեև հետագային գերազանցելու էին բընիկ հայերեն բառերից (960 ընդդեմ 924-ի), բայց այդ շրջանի բուն հայկական բառերից դեռ պակաս էին, իսկ ասորական փոխառությունները դեռ այնքան քիչ էին, որ համեմատությամբ բնիկ, պարսիկ ու խալդյան բառերի՝ տոկոս էլ չէին կազմում։ Զարմանալի է, որ այդ հնագույն ժամանակից ունենք նաև մի հունական փոխառյալ բառ (մարգարիտ), որ լեզվի պատմության հետ համաձայնեցնելու համար՝ պետք է համարել ավելի հռոմեական փոխառություն, քանի որ լատինական margarita, margaritum ձևերը դեռ Կիկերոնի և Տակիտոսի ժամանակից գործածական են» [ՀԼՊ, 2, 75]։

Ընդհանուր առմամբ ճիշտ համարելով Հ. Աճառյանի կարծիքը բնիկ բառերի հնագույն շրջանում ունեցած գերակշռության մասին՝ հարկ ենք համարում կատարել որոշ ճշգրտումներ ու դիտողություններ։

* Վրիպում. ՀԱԲ-ում համարում է ասորական։

1) Հ. Աճառյանի կողմից անծանոթ ծագման համարված մի շարք բառերի ծագումը այժմ կարելի է որոշված համարել. ա) ամենայն հավանականությամբ հնդեվրոպական ծագում ունեն անցանեմ (անց- < *sn̥tset՝ *sent- «ուղղություն վերցնել, գնալ» արմատից, որտեղից հայ. ընթանամ, ավեստ. hant «հասնել», հ. իռլ. sēt «ուղի, ճանապարհ», հ. անգլ. sīð «ուղևորություն. ուղի, ճանապարհ. անգամ», sendan, հ. վ. գերմ. senten «ուղարկել», լիտվ. siunčiù «ուղարկել» և այլն), առ-աւ-աւտ-ի առ- նախածանցը և -աւ- արմատը (հ.-ե. *au̯es- «լուսավորել», *aus-ōs- «արշալույս», որտեղից հ. հնդկ. uṣ-ra- «առավոտյան», հուն. էոլ. αὔως «արշալույս», ἄγχ-αυρος «առավոտին մոտ», αὔριον «վաղը», լատ. aurōra «արշալույս», լիտվ. aušrà «արշալույս», թերևս նաև ռուս. утро «առավոտ»), հանեմ (-ում) (*sm̥-numi?՝ հ.-ե. *sem- «հանել, թափել» արմատից, որտեղից հայ. ամամ «դատարկել», աման, լատ. sentīnō «ջուրը հանել», հ. իռլ. sem- «թափել, դատարկել», լիտվ. sémti «հանել». պարզված չէ հարաբերությունը խեթ. ḫan- «հանել, ջուրը քաշել» բայի հետ), հիմն (-անայ) (*semn̥՝ հ.-ե. *sēi- «ցցել, ցանել» արմատից, որտեղից խեթ. šamana- «հիմք, հիմնաքար»), յորձանք (*ordhi̯o-՝ հ.-ե. *er- «շարժման մեջ դնել, հուզել, բարձրացնել» արմատից, որտեղից հուն. ἐρέθω, ἐρεθίζω «գրգռել, հուզել, շարժման մեջ դնել», հայ. յորդ, յորդորեմ, հորձ), տեղ (-ամ) «առատ անձրև» (հ.-ե. *del- «կաթել» արմատից, որտեղից մ. իռլ. delt «ցող, շաղ», բրետ. delt «թաց»), ցաւ (*k'sāp-՝ հ.-ե. *k'sā- «այրել» արմատից, որտեղից հ. հնդկ. kšāpáyati «այրել է տալիս»), փափուկ (հմմտ. բրբռ. փափլիկ, փամփլիկ՝ հ.-ե. *pha(m)ph- «ուռչել» արմատից, որտեղից լիտվ. pam̃pti «ուռչել», pamplỹs «հաստափոր», հայ. փամփ(ր)ուշտ): Հնարավոր է նաև մի շարք այլ բառերի հնդեվրոպական ծագումը՝ գաւառ (հմմտ. գոթ. gawi «երկիր, գավառ»), գնամ (հմմտ. հ. վ. գերմ. gān «գնալ»), երկիր (հմմտ. հ. վ. գերմ. erda «երկիր»), թեւ (*ptei̯u-՝ հ.-ե. *pet- «թռչել» արմատից, որտեղից հայ. թիռ), լինիմ (հմմտ. հայ. եղանիմ, ելանեմ՝ հ.-ե. *el- «շարժ(վ)ել» արմատից, որտեղից հուն. ἐλάω, ἐλαύνω «քշել, շարժել, տանել. ուղևորվել, շարժվել»), կամ (= հուն. ἔβην «քայլեցի. վեր կացա», հ. հնդկ. a-gām «գնացի»՝ հ.-ե. *gʷā- «գնալ. գալ» արմատից) և այլն: Հ. Աճառյանը քեն բառը այստեղ դնում է իրանական փոխառությունների շարքը, բայց «Հայերեն արմատական բառարանում» [4², 575—576] ընդունում է Ա. Մեյեի կարծիքը բառի բնիկ լինելու վերաբերյալ: Այս բոլորը խոսում են բնիկ հնդեվրոպական բառերի է՛լ ավելի մեծ կշռի մասին, քան նշում է Հ. Աճառյանը:

2) Համապատասխանաբար պետք է պակասեցնել անծանոթ ծագումով բառերի քանակը. այդ բառերի մի մասը, ինչպես տեսանք, հնդեվրոպական ծագում ունի, մյուս մասը փոխառյալ է. այսպես, իրանական ծագում ունի շատ բառը (հմմտ. սողդ. š't, պրսկ. šād «շատ, առատ»), հավանական է նաև ազն, բանակ, խառդաւանակ և այլ բառերի իրանական ծագումը:

3) Ճշտումներ պետք է կատարել նաև այլ կարգի փոխառությունների բնույթի հարցում. «խալդի-վրացական» համարված բառերից ծուխ բառի համար բերվող վրացական զուգահեռները (çuxwa «ցավ, տրտմություն», çuxri «աղջամուղջ, երեկո» չեն խոսում «կովկասյան» *çux «մուր, ծուխ, մութ» արմատ վերականգնելու օգտին. հնարավոր է կամ ընդհանուր (ուրարտական), կամ, թերևս, խեթա-լուվական աղբյուր (հմմտ. խեթ. tuḫḫu(u̯a)i- «ծուխ»). տեղ «առատ անձրև» և գուսան բառերի հնդեվրոպական ծագումը

ավելի հավանական է. «Հայերեն արմատական բառարանում» Հ. Աճառյանը տեղ բառի աղբյուրը համարում է ասորերենը (ṭ ılā «ցող»), որ քիչ հավանական է։ Կասկածելի է, ինչպես նշում է և Հ. Աճառյանը, մարգարիտ բառի հունական ծագումը։

Հնագույն հայերենի բառապաշարի՝ վաղնջահայերենից եկող բնիկ և փոխառյալ շերտերը արդեն քննվել են նախորդ բաժնում, իսկ փոխառյալ բառերի քննությունը կկատարվի ստորև. այստեղ մնում է խոսել այն բառերի մասին, որոնք պիտի կազմված լինեն հայերենի բառակազմական միջոցներով հենց հնագույն շրջանում։ Ի՞նչ չափանիշներ կան այս բառերի առանձնացման համար։

1) Բնականաբար, հնագույն շրջանին են պատկանում այն բառերը, որոնք պիտի հանդես գային այդ շրջանում հայ ժողովրդի համար բնորոշ բնական պայմանների, արտադրական հարաբերությունների, քաղաքական, իրավական և գաղափարական հարաբերությունների ու հաստատությունների հետ կապված։ Մասնավորապես պետք է նշել դասակարգային հասարակության ու պետության առաջացման ու զարգացող առևտրի ձևավորման, քաղաքական ու իրավական նոր գաղափարների, կրոնական նոր պատկերացումների և հատկապես շրջանի վերջերին քրիստոնեության մուտքի հետ կապված բառերն ու տերմինները։ Այսպես, V դ. և հատկապես դասական մատենագրության մեջ հանդիպող հետևյալ բառերի համար կարելի է ենթադրել դեռևս հնագույն շրջանում սկիզբ առած գործածություն. ա) բնական նոր պայմանների, նոր բույսերի և նոր կենդանիների հետ ծանոթանալը բերում է բառերի նոր գործածություններ, նոր փոխառություններ, նորակազմություններ. բնորոշ է, մանավանդ, բնիկ հնդեվրոպական արմատների օգտագործումը նոր կենդանիներ և բույսեր նշանակելու համար՝ առեւծ (առիւծ՝ հ.-ե. *reug- «մռնչալ» արմատից), կորիւն (հ.-ե. *gʷrebh- «ձագ»), դեղձ (հ.-ե. *dhăl-, *dhel- «ծաղկել, կանաչել» արմատից, որտեղից դեղին, դեղձան) և այլն. ինչպես կտեսնենք փոխառությունների քննությունից, ավելի հաճախադեպ են զանազան փոխառությունները (բադ, բազէ, գոմէշ, կապիկ, ոչխար, փիղ, անանուխ, կաղամբ, կանեփ, սոխ, վարդ և այլն), որոնցից կազմվում են հայերենի հողի վրա նոր բաղադրություններ. բ) հասարակական-տնտեսական նոր հարաբերությունների, սեփականության նոր ձևերի, առևտրական հարաբերությունների հետ կապված տեղի է ունենում հնդեվրոպական արմատների իմաստային մասնավորում, հանդես են գալիս նորակազմություններ. այսպես, հավանաբար այս շրջանում է տեղի ունենում աղքատ և հարուստ բառերի իմաստային մասնավորումը՝ «կարոտ, խեղճ» և «զորեղ, ուժեղ» սկզբնական իմաստներից (վերջինիս համար հմմտ. հար-, հարկանեմ, հարում, հարուած), արծաթ բառի «դրամ» իմաստը, տուրեւառ բառի կազմումը, ծանրագին, մարդագին բառերի հանդես գալը և այլն. մեծ քանակությամբ բառեր են կազմվում փոխառյալ բառերից հենց հայկական հողի վրա՝ հաստավաճառ, սեպհականութիւն, վաճառանոց և այլն. գ) հանդես են գալիս պետական-վարչական որոշակի տերմիններ, իրավական և ռազմական նորամուծությունների հետ կապված նոր բառեր, բառերի նոր կիրառություններ, նոր կազմություններ. հավանաբար այս շրջանից են գալիս դասական հայերենում վկայված այնպիսի բառեր, ինչպիսիք են բնիկ արմատներից կազմված անձնատուր (լինիմ), իրաւունք, հայրենիք և այլն, բնիկ և փոխառյալ հիմքերից կազմված աւրէնդիր, աւրէնուսոյց, բարձերէց, գահերէց, գաւառա-

պետ, գեղջերէց, կայսերագիր, մեղապարտ, պարտատէր *և այլն. պետական-վարչական և իրավական ու ռազմական տերմինաբանության մեջ մեծ թիվ են կազմում, ինչպես կտեսնենք, փոխառությունները (հատկապես իրանական փոխառությունները), որոնցից հայկական ածանցներով կազմվել են մեծ թվով նոր բառեր, այդ թվում՝ անուններից բայեր՝* ազատեմ, աքսորեմ, գաղթեմ, դեսպանութիւն, թագաւորութիւն, իշխանութիւն, հպատակեմ, հպատակութիւն, պետութիւն, վկայեմ, վկայութիւն *և այլն. դ) Հայերի ներգրավումը կրոնական նոր ոլորտներում, հայկական կրոնի վրա իրանական ազդեցությունը, ապա քրիստոնեության մուտքի հետ կապված ասորական և հունական տերմինների մուտքը հիմք են տալիս հնդեվրոպական արմատների նեղ իմաստ գործածության, նոր կազմությունների, փոխառյալ և բնիկ հիմքերի զուգորդման. այսպես, հավանաբար այս շրջանում են ստացել նեղ՝ կրոնական իմաստ* աղանդ *«դես ու դեն ընկնելը, մոլորվելը, մոլորություն. աղանդ, հերձված»,* աղաւթք *«աղաչանք, աղերսանք. աղոթք» (հմմտ.* աղաչեմ), երէց *«ավագ. քահանա»,* կրաւն *«կարգ, օրենք, սովորություն. կրոն» (հմմտ.* (կրեմ), սուրբ *«մաքուր. սուրբ» և այլն. քրիստոնեության մուտքով* դիք *բառն ստանում է միայն հեթանոսական աստծու իմաստ՝ ի հակադրություն* աստուած *բառի. ավելի խիստ հակադրությամբ հեթանոսական աստծու համար ստեղծվում է* չաստուած *բառը. այս բառերից կազմվում են նոր բառեր՝* աղանդագործ, աղանդաւոր, այլաղանդ, աղանդութիւն, աղաւթ(ա)կե(ա)ր, երիցապետ, կրաւնաւոր, հոգեկրաւն, միակրաւն, նորակրաւն *և այլն. կրոնական տերմիններ են կազմվում հնդեվրոպական նաև այլ արմատներից՝ այս շրջանին հատուկ ածանցներով կամ բարդության միջոցներով ու եղանակներով՝* բարեպաշտ, բազմամեղ, դիցապաշտ, լուսնապաշտ, հայրապետ, մեղանչական, մեղապարտ, մեղացածին, մեղսաբեր, մեղսածին, մեհենատեղի *և այլն. իրանական, ապա նաև ասորական ու հունական կրոնական բառերից ու տերմիններից կազմվում են նոր բառեր ու տերմիններ՝* աստուածապաշտ, աւրհնութիւն, եկեղեցական, զոհանոց, հեթանոսական, սատանայութիւն, քարոզութիւն, քրիստոնէութիւն *և այլն. դեռ ավելին.* դրախտ *բառը իր սկզբնական «ծառ, ծառաստան, պարտեզ» իմաստից անցում է կատարում «եդեմ» իմաստին հենց հայերենում. ե) մշակութային նոր արժեքները իրենց հետ բերում են մշակութային նոր բառեր ու տերմիններ հագուստեղենի, բնակարանի, կահույքի և ամանեղենի, արհեստների և արվեստների վերաբերյալ՝ մասամբ հնդեվրոպական արմատներից ու հիմքերից, մասամբ դրանց և փոխառյալ հիմքերի ու այլ տարրերի զուգակցմամբ. իմաստային նեղացման և մասնագիտացման արդյունք են* դարբին, էջ *(հմմտ.* իջանեմ), թանաք *(հմմտ.* թանամ), կուր *«արտը ոռոգելու նեղ ջրանցք» բառերի հայտնի իմաստները. հավանաբար այս շրջանին են պատկանում արհեստագործության վերաբերող* ատաղձագործ, արծաթագործ, արծաթազաւծ, արծաթահանք, արծաթեղէն, հացարար (-ոց, -ութիւն), նաւորդ, նաւապետ *և այլն, մշակութային արժեք ունեցող* բանալի, կրակետղ, մեղուանոց *և այլն բառերը. բազմաթիվ հայերեն նոր բառեր են կազմվում մշակութային արժեք ունեցող փոխառություններից՝* բժշկութիւն, բուժեմ, գմբեթարդ, թարգմանեմ (-ութիւն), խորանարդ, կաւշկագործութիւն, մարգարտազարդ, մագաղաթեայ, պաստառակալ, պատուաստեմ, տախտակագործ, տախտակամած *և այլն։*

*2) Հնագույն հայերենի շրջանին են պատկանում այն ածանցավոր կազ-*



25—455

մությունները, որոնց ածանցները հանդես են եկել հենց այս շրջանում, և որոնց ամբողջովին բնիկ կամ ամբողջովին փոխառյալ լինելը բացառվում է, սրանք առաջին հերթին հիբրիդային բառերն են՝ ա) բնիկ արմատով (հիմքով) և այս շրջանում փոխառված ածանցով, բ) այս շրջանում փոխառված հիմքով և բնիկ ածանցով, գ) մի աղբյուրից փոխառված արմատով (հիմքով) և մի այլ աղբյուրից փոխառված ածանցով: Բնիկ արմատական և այս շրջանում գործածություն ստացած ածանցներով կազմությունները հիմնականում բերվեցին ածանցման քննության հետ կապված, և այստեղ դրանք կրկնելու հարկ չկա. նշենք միայն մի քանի տիպական օրինակ՝ այգեստան, աշապար, ասպնջական, բամբասանք, բարձրագոյն, գործարան, դռնապան, երգեցիկ, կենսարար, հրեղէն, մեծապէս, չորեքկին, ակռանի, փոքրիկ և այլն: Փոխառյալ հիմքով և բնիկ ածանցներով մի շարք բառեր հիշատակվեցին հնագույն շրջանին պատկանող բառերի առանձնացման առաջին՝ իմաստային, չափանիշի քննության հետ կապված. այս կարգի բառերի թիվը ընդհանրապես մեծ է, և բոլորի թվարկումը մեզ հեռու կտաներ. բերենք մի քանի տիպական օրինակ. խուռա-ուրարտական հիմքով՝ խարխարուն, խնձորի և այլն. իրանական հիմքով՝ ազատութիւն, ազդեցութիւն, առատութիւն, բազմաւոր, բազմութիւն, բաժանումն, բիւրաւոր, դեսպանութիւն, երամովին, երաշխաւոր, զինուոր (զինու-ւոր ձևից՝ թերևս իրան. zēnāvar ձևի բաղարկմամբ), խաւարին, կարմրութիւն, մանկանացու, յիշողութիւն, նշանացի, շինութիւն, պաշտպանումն, տանջանք և այլն. սեմական հիմքով՝ կնքաւոր, կնքիչ, կշռաւոր, մաշկեղէն, սատանայաւոր և այլն. զգալի թիվ են կազմում նաև ան-ով ու այլ նախամասնիկներով և փոխառյալ հիմքերով կազմությունները՝ անգոյն, անվիշտ: Տարբեր աղբյուրներից փոխառված բաղադրիչներ ունեցող ածանցավոր բառերի հարցը քիչ թե շատ միանշանակ լուծում է ստանում իրանական ծագման ածանցների դեպքում. ուրարտական և այլ կարգի ածանցների գոյությունը հայերենում հնարավոր է, բայց վերջնական լուծումը առայժմ դժվարանում է նյութի պակասության պատճառով. առանձնապես տարածվում են իրանական ծագման -ական, -(ա)ստան, -ա-պէս վերջածանցներով կազմությունները. հմմտ. սեմական հիմքով և -ական-ով՝ բերդական, գաղթական, սատանայական, քնարական և այլն:

3) Հնագույն հայերենի շրջանին են պատկանում այն բարդությունները որոնք՝ ա) բնիկ հնդեվրոպական բաղադրիչներ ունեն, բայց իրենց կազմության տիպերով վաղնջահայերենին հատուկ չեն եղել (մասնավորապես -ա- հոդակապով այն բարդությունները, որոնց -ա-ն ակնհայտորեն նոր բնույթ ունի և չի բացատրվում վաղնջահայերենով) և բ) հիբրիդային բնույթ ունեն, այսինքն՝ կազմված են տարասեռ՝ բնիկ և փոխառյալ կամ տարբեր աղբյուրներից փոխառված բաղադրիչներով. այս երկու կարգի բարդությունների մասին էլ խոսվել է հնագույն հայերենի բառակազմության նվիրված մասում: Այստեղ հարկ ենք համարում նշել, որ -ա- հոդակապով ու բնիկ բաղադրիչներով բարդությունների այն մասը, որ անվերապահորեն կարելի է վերագրել հնագույն հայերենի շրջանին, մեծ թիվ չի կազմում. ինչպես նշվել է, վաղնջահայերենում բնավոր (*-o-) հիմքով առաջին բաղադրիչ ունեցող բարդությունները կարող էին համաբանորեն ստանալ *-o-ի փոխարեն -ա-, և այս դեպքում հարկավոր է առաջնորդվել իմաստով ու լրացուցիչ այլ հատկանիշներով: Համեմատաբար ավելի վստահորեն կարելի է խոսել -ա- հոդակապով այն բարդությունների՝ հնագույն հայերենի շրջանին պատկանելու մասին,

որոնք ունեն ձայնորդահանգ հիմք, թեև այստեղ էլ կարելի է ենթադրել հին կազմություն՝ -ա-ի համաբանական տարածմամբ, ինչպես հայտնի է, երբեմն տալիս են այսպիսի զուգահեռ ձևեր՝ -ա-ով և առանց -ա-ի. ականատես (բայց ակնհար), անձնատուր (բայց անձնսիրութիւն), աս(ե)ղնագործ, եղնգնաւոր, թիկնամէջ, մատնացոյց (բայց մատնցոյց), աստ(ե)ղագէտ, պատեղատուն և այլն. կազմության տիպով վաղնջահայերենին չպատկանող բառերից հիշենք ամենացոյց, ամենակերակրիչ, միակամի, ակնկառոյց և այլն։

Բերենք մի քանի օրինակ դասական հայերենի երկերում հանդիպող հիբրիդային բարդություններից, որոնք կարող են գալ ավելի հնից. ա) բնիկ առաջին և փոխառյալ երկրորդ բաղադրիչներով՝ ակնահաճոյ, ամենազաւր, ամենաբաւ, մեծապանծ, մեծափառ, միակշիռ, միջնաշխարհ, նորաշէն և այլն. բ) բնիկ երկրորդ և փոխառյալ առաջին բաղադրիչներով՝ անդամալոյծ, աշխարհագիր, աշխարհասէր, առատաբեր, առատաձայն, բերդակալ, բերդամէջ, դահագլուխ, գլխընկէց, ժամագիր (-գրութիւն), մահաբեր, նշանագիր, շինամէջ, սատանայածին, քնարահար և այլն։

## 2. ԲԱՌԲԱՌԱՅԻՆ ՏԱՐԲԵՐԱԿՆԵՐ

Հնչյունական և քերականական տարբերակների հետ միասին հնագույն հայերենը չէր կարող չունենալ բառային նշանակալից քանակությամբ տարբերակներ։ Դրանք պիտի արտահայտվեին ինչպես միևնույն կամ մերձավոր իմաստների համար տարբեր բառերի առկայության, այնպես էլ միևնույն բառերի իմաստային տարբեր զարգացումների մեջ։ Այս տարբերակների հայտնաբերման հիմնական աղբյուրը մնում են V դ. և հատկապես նրա վաղ փուլի (դասական հայերենի) հուշարձանները, որոնց գումարվում են ուրիշ լեզուների՝ հայերենից կատարած փոխառությունները և արդի բարբառների լեզվական տվյալների հիման վրա կատարված պատմական վերականգնումները։ Բնականաբար, դասական հայերենի հուշարձաններից հարկավոր է առանձնացնել բառային այն տարբերակները և հատկապես համանիշային շարքերը, որոնք կարող էին գործածության մեջ լինել նաև հնագույն շրջանում։ Սրանք հիմնականում լայն գործածություն ունեցող բառերն են, այդ թվում՝ հնագույն շրջանում հայերենի կատարած փոխառությունները։ Եթե համանիշների որոշ եզրեր ուշ են ավանդված, բայց հնդեվրոպական ծագում ունեն, դրանք, բնականաբար, բերվում են։ Բառային տարբերակները և հատկապես համանիշային շարքերը տարբեր բնույթ կարող էին ունենալ. այս առումով պետք է առանձնացնել բարբառային, գործառական և բառային տարբերակներ։ Գիտության զարգացման արդի փուլում այդ երեք շերտերի հստակ տարբերակման մեր հնարավորությունները դեռևս սահմանափակ են, բայց որոշ եզրակացություններ այսուհանդերձ կարելի է կատարել։ Ինչպես մի այլ առիթով մեր կողմից նշվել է [Джаукян, 1982. 8—10], տարածական բաշխման առումով բարբառային տարբերակները պիտի տային համեմատաբար հստակ պատկեր, որ պիտի տարածվել նաև այն պատմական ու գործառական տարբերակների վրա, որոնք բնութագրել են լեզվի գործածության տարբեր տարածքները։

Բառային տարբերակները ընդհանրապես կարող են լինել բառահնչյունական, բառակազմական և բառաիմաստային։ Բառահնչյունական տարբե-

*բակներ անելով այստեղ պետք է համարել բառային հատկապես այն տարբե-րակները, որոնց հնչյունական տարբերությունները մասնակի կամ առանձ-նակի բնույթ ունեն։ Բուն հնչյունական ընդհանուր և օրինաչափ տարբերու-թյունների մասին մենք խոսել ենք հնչյունական տարբերակների քննության կապակցությամբ։ Այստեղ նկատի ունենք՝ առանձին բառերի և բառախմբե-րի համար բնորոշ տարբերությունները, որոնք են տարածքային տարբեր ընկալումների և կրկնության ձևերի, միևնույն հարևան լեզվի տարբեր բար-բառներից և զարգացման տարբեր փուլերից կատարված փոխառությունների, հնչյունական ու գործուն պրոցեսների առաջ բերած տարբերությունների և այլն՝* առասան—երասան, արճնատ—արուխտ, բաղբանջ—բարբանջ—բար-բաշ, երանիկ—երջանիկ, երկայն—երկար, խնդն—խինդ *և այլն։*

*Ավելի էական և ավելի տարածված են արմատակազմական և բառակազ-մական տարբերակները, որոնց մասին մենք խոսել ենք բառակազմական տարբերակների քննության կապակցությամբ։*

*Բառաիմաստային տարբերակների երկու հնարավոր դեպքերից,—միև-նույն իմաստների արտահայտություն տարբեր բառերով և միևնույն բառե-րի իմաստային տարբեր գործածություններ,—այստեղ ուշադրությունը կկենտ-րոնացնենք առաջինի վրա։ Որ միևնույն իմաստները բարբառային տարբեր տարածքներում տարբեր բառերով արտահայտելու դեպքեր իրոք եղել են, և որ դրանք ժամանակակիցների կողմից նկատվել են. երևում է Եզնիկ Կող-բացու հայտնի վկայությունից («Եղծ աղանդոց»). «Յորժամ մեք ասեմք թէ սիք շնչէ, ստորնեայք ասեն՝ այս շնչէ»։ Եթե նկատի ունենք, որ Եզնիկը Այ-րարատի Կողբ գյուղից էր, ապա պարզ կլինի, որ այստեղ արտահայտված են հյուսիսային և հարավային շրջանների բարբառային տարբերակները։ Հաշվի առնելով մի կողմից՝ V դ. դասական հեղինակների բառագործածու-թյունը (մանավանդ եղբերից մեկի կամ մի քանիսի բնիկ լինելու դեպքում) և մյուս կողմից՝ արդի բարբառային տարբերությունները [հմմտ.* Ջահուկյան, *1972, 147—156], մի շարք դեպքերում դժվար չէ որոշել բառային համա-նիշների բարբառա-տարածական բնույթը. ակնհայտորեն այդպիսի տարած-քային տարբերակումներ պիտի ունենային* աղտ—կեղտ, խածանեմ—կծա[illegible] ապաղ *«սառը»*—սառն *զույգերը։ Մի շարք դեպքերում այդպիսի տարբերու-թյուններ պիտի եղած լինեին, բայց արդի բարբառներում հոմանիշային զույգերը կամ դրանց առանձին եզրերը չեն պահպանվել՝* այտնում—ուռնում, արկանեմ—արձակեմ—ձգեմ, մորթ—որովայն—փոր, *կամ պահպանվել են ի-մաստային փոփոխություններով՝* թռչուն—հաւ *«թռչուն, հավք. տնային հավ»,* մաքուր—սուրբ *«մաքուր. սուրբ» և այլն։ Բարբառային տարբերություններ պետք է ենթադրել առարկայական կոնկրետ իմաստներ ունեցող շատ հոմա-նիշների (հատկապես նույնանիշների) համար՝ առարկան տարբեր բառերով անվանելու դեպքում՝* թէկն>թեկն—մէջք—կուռն, ուլն—պարանոց—վիզ, ուս—նուս *և այլն։*

*Տարածական տարբերությունների կողքին համանիշային շարքերը պիտի արտահայտեին նաև գործառական, ոճական կամ իմաստային սովորական տարբերություններ (հատկանշման տարբեր աստիճաններ ու եղանակներ, ո-ճական տարբերակներ և այլն). եթե հնագույն շրջանի վերջին փուլում հայ ժողովրդի և հայ պետականության կազմավորման կապակցությամբ արդեն առկա էր որոշ ստանդարտ լեզու (կոյնե)՝ ի հակադրություն բարբառների,*

ապա զգալի թիվ պիտի կազմեին բարձր և հասարակ, պաշտոնական և առօրյա ոճերի տարբերությունները։ Իրենց հատուկ բառերը պիտի ունենային եկեղեցական-կրոնական և բանաստեղծական ոլորտները։ Ապագային թողնելով այս բոլոր տարբերությունների համապատասխան քննությունը՝ այստեղ բերենք դասական հայերենի հուշարձաններում առկա այն համանիշային շարքերը (նկատի են առնվում միայն հին իմաստները), որոնք կարող էին հատուկ լինել նաև հնագույն հայերենին, մասնավորապես նրա զարգացման ուշ փուլին. դրանք տրվում են ըստ շարքերի առաջին անդամների այբբենական հաջորդականության, ընդ որում շարքերի ներսում համանիշները դասավորվում են հետևյալ սկզբունքներով.

1. Եթե շարքերի մեջ կան հնդեվրոպական ծագման բառեր, ապա նախ բերվում են դրանք, ընդ որում առավելություն է տրվում հավաստի հնդեվրոպական ծագման ձևերին՝ անհավաստի, և արմատական ու առաջնային ձևերին՝ ոչ արմատական ու երկրորդային ձևերի նկատմամբ։ Կիսահնդեվրոպական բարդ կազմությունները, հատկապես հնդեվրոպական երկրորդ բաղադրիչով, տրված են ոչ հնդեվրոպականների հետ միասին՝ որպես ոչ նախնական կազմություններ։

2. Դասական փուլի, հատկապես V դարի առաջին կեսի երկերում չհանդիպող բառերը, եթե հնարավոր է համարվում հնագույն շրջանում դրանց առկայությունը, երբեմն էլ համեմատության համար, բերվում են շարքերի վերջում՝ փակագծերի մեջ առնված ուշ նշումով. հնդեվրոպական ծագման բառերի համար, բնականաբար, այդպիսի նշում չի տրվում. այդ նշումը չի տրվում նաև բառական այն ձևերի համար, որոնց արմատները դասական շրջանում հանդիպում են։

3. Եթե շարքերի մեջ հնդեվրոպական ծագման բառեր չկան, ապա առաջին տեղում բերվում են, ըստ հնարավորին, արմատական և հասարակ գործածության բառերը, մանավանդ եթե դրանք առկա են նաև ժամանակակից գրական լեզվում։ Նախածանցներով սովորաբար շարքեր չեն սկսվում՝ բացի այն դեպքերից, երբ բնիկ հնդեվրոպական արմատները նախածանցներով են հանդիպում։

4. Շարքերը, ըստ հնարավորին, կազմվում են միևնույն խոսքի մասերին պատկանող ձևերից, ընդ որում՝ ա) այլ խոսքի մասերի պատկանող համանիշները, ըստ անհրաժեշտության, տրվում են փակագծերում (փակագծերում են տրվում նաև իմաստով փոքր-ինչ հեռու կանգնած բառերը), բ) միայն ոչ արմատական ձևով հանդիպող, բայց տվյալ խոսքի մասին արմատով պատկանող ձևերից հետո դրվում է գծիկ, գ) խոսքամասային տարբերակներից գերադասություն է տրվում, ըստ հնարավորին, արմատական և դասական շրջանի երկերում հանդիպող ձևերին, դ) բացի վերևում հիշված դեպքերից, շարքերի մեջ պահպանվում է այբբենական կարգը։

5. Հիմք է ընդունված այբբենական հին կարգը, մասնավորապես և-ը գրվում է եւ, ու-ն տրվում է ո-ի տակ, օ-ն բերվում է աւ ձևով՝ ա տառի տակ։

6. Սպասարկու բառերը սովորաբար չեն բերվում. դրանց մասին, ըստ անհրաժեշտության, խոսվել է քերականական կառուցվածքի տարբերակների հետ կապված։

7. Բարբառային բառերը չեն բերվում. դրանցից հնդեվրոպական ծագում ունեցողները քննվել են վաղնջահայերենի բարբառային տարբերակ-

ներին նվիրված հատվածում. մնացածները կամ ուշ փոխառություններ են, կամ անհայտ ծագման բառեր, որոնց հանդես գալու ժամանակը պարզ չէ։

Ագանիմ—ածանիմ—զգենում—զգածիմ—(ս)փածանիմ
ագանիմ—ալթագայիմ
ազազուն—ոստին—չոր—ցամաք—գոսս—սորոստ
ազդր—բարձ-ք—երան-ք—զիստ
ալի-ք—կոհակ-ք (ուշ)
ախոռ—ասպաստան
ախորժական—հաճոյ—հեշտ—կամակ (որպես ած.՝ ուշ)
ածեմ—բերեմ
ակն—գոհար
աղագաւ (յաղագս)—սակս—վասն
աղախին—նաժիշտ
աղաղակեմ—գոչեմ—կարդամ—ձայնեմ—կանչեմ—կոչեմ
աղամ—լեսում (հմմտ. մալեմ)
աղանձ—մուրկ
աղանձեմ—խորովեմ (—տապակեմ)
աղաչեմ—հայցեմ—ողոքեմ—աղերսեմ—եղձանամ—խնդրեմ—պաղատեմ—
փարեմ
աղաւաղեմ—այլայլեմ
աղաւթեմ—մաղթեմ
աղաւրի-ք—երկան—մուլ (մլայոց)
աղբ(ախուղբ)—խուղբ
աղբ—թրիք—կոյ (կու)—բոկոր—աղտատ—կղկղանք
աղէտ—աղն—եղեռն—չարիք—փորձանք
աղիք—աղիորդ—կոյս
աղմուկ—խուճապ—խռով—շփոթ
աղտ—կեղտ—փին (փնթի)
աղքատ—աղկաղկ—տնանկ—փանաք—փինատ—ցականեալ
աճառ—խաղճ
աճեմ—առաւելում—մեծանամ—մալանամ—ամեթանամ—ւարդանամ—
յալանամ—յաւթանամ—ստճանամ
աճին—դալար—մախիր
աճուկ—ցայլ-ք
ամ—տարի
ամամ—լնում
աման—անաւթ
ամբար (համբար(ակ))—մառան—շտեմարան—ննյակ—մթերանոց (ուշ)
(ամբ)ողջ—ամէն (-այն)—բոլոր—բաւանդակ (բովանդակ)—համակ—
համայրէն
ամայի—անապատ (ած.)
ամորձիք—կոկովանք (ուշ)
ամուլ (կնոջ մասին)—ստեք (աղամարդու մասին)—սերդ (սերջ՝ կենդանու
մասին)
ամպ—թուղբ (առանձին՝ ուշ)
ամպրոպ—մրրիկ—փոթորիկ

ամփոփ—կարճ(առոտ)—հակիրճ—համառոտ
այլանդակ—տձեւ—անհեթեթ—անճոռնի
այծեամն—յամոյր
այս—դեւ
այսաւր—սերկ
այտ—թուշ—թուռ—թուրծ
այտնում—ուռնում—ըմփորտիմ
այտումն—բողջ—ելունդն—խաղաւարտ—խոյլ—պալար
այր—մարդ
այր (քարայր)—անձաւ (պաղանձաւ, քարանձաւ)
այրեմ—խարեմ—խարշեմ—կիզում—վառեմ—տոչորեմ
այց (հայց)—զնին (զննութիւն)—խծբիծ—խոյզ—կտիտ—կրկիտ—
հետապատութիւն—յոյզ—քնին (քննութիւն)
անարգար—անիրաւ—անաւրէն—ապիրատ
անաւթի—քաղցեալ—անսուաղ—նքթեալ—նքողեալ—սովեալ (հմմտ. դորսովիմ)
անգոսնեմ (անկոսնեմ, անկուսնեմ)—արհամարհեմ—խշտրեմ—խոտեմ—
նշկահեմ (—հապանաս)
անդ—արտ—հարաւունք
անդ (անդաստակ, դրանդ(ի))—սեամ (շեմ՝ ուշ) (հմմտ. բարաւոր)
անդեայ—տուար (դուար)—արջառ—պախրէ—պաճար
անդունդ—խորխորատ—վիհ
անդունդ—դժոխք—տարտարոս
անդրէն—դարձեալ—կրկին—վերստին
անէծք—աւրեր—նզովք
անկողին—խշտի-ք (խշտեակ)—մահիճ
անհաստատ—վեղխ—խախուտ—խարխարուն—խարխուլ—յողդողդ
անձն—ինքն
անձնիւր (անցնիւր)—իւրաքանչիւր
անձուկ—նեղ
անմիտ—ախմախ—անսպայ—ապուշ—բախած—մորոս—յիմար—շղու-
(աբարոյ)—պանդպյր—ախմար (ուշ)
անողորմ—անագորոյն—անգութ—ապառամ—բիրտ—դաժան—դժխեմ—
դժնեայ—ժանտ—վայրագ (վիրագ)—վայրենի—անաղարմ (ուշ)
անուանեմ—կոչեմ—յորջորջեմ
անուր—աւղակ
անուրջ—տեսիլ—երազ
անջատեմ—անջրպետեմ—աւձատեմ (աւցտեմ)—բաժանեմ—զատեմ—որոշեմ—
տրոհեմ—քակեմ—քեցեմ
անսուրբ—անմաքուր—ապախտ—պիղծ—փիծ (առանձին՝ ուշ)
անփորձ—անվարժ—խամ
աշխատիմ—ղալակիմ—ճգնիմ
աշտարակ—բուրգն
ապաստան—ապաւէն—պատսպարան
ապարահ—դաշտան—դեղ—տեռատես
ապարան—պալատն (պաղատն)
ապուռ—աւար—կապուտ—կողոպուտ

*ապստամբ—անհնազանդ—ընդվզեալ—ըմբոստ—խեռ—հեստ—ստահակ—վտարանջեալ*
*առագաստ «վարագույր»—վարագույր—վիժակ*
*առակ «օրինակ»—ուրինակ*
*առանձին—բաժան—ի բաց—զատ—յատուկ—ուրոյն (—հեռի. հմմտ. անջատեմ)*
*առանցք—սռնի—ալի (ուշ)*
*առաջին—անդրանիկ—նախկին*
*առաստաղ—ձեղուն—առիք*
*առաւօտ—այգ—վաղորդայն*
*առաքեալ—հրեշտակ—պատգամաւոր—սուրհանդակ*
*առիգած—ղենչակ*
*առհաւատչեայ—գրաւ—երաշխիք (ուշ)*
*առն—խոյ*
*առողջացուցանեմ—ապաքինեմ—բժշկեմ—բուժեմ*
*ասեմ—բամ—գոգեմ—խաւսիմ*
*աստուած (քրիստ.)—դիք (հեթանոս.)*
*ասր—բուրդ—գեղմն—գլաթ—կիղն—ստեւ*
*ատեան—դատարան*
*ատեան—ժողով*
*ատոք—հասուն—վականակ*
*արած—սպի*
*արահետ—կածան (հին՝ «նեղ անցք»)—շաւիղ*
*արատ—բիծ—խայտ—խարի—պիսակ—կմայեակ (ուշ) (—լուսն)*
*արբանեակ—ծառայ—սպասաւոր*
*արբենամ—ախալալկիմ*
*արբուցիչ—մատռուակ*
*արգահատեմ—գթամ—խղճամ*
*արգել—խութ—խափան—խոչընդոտ—կրճիմ(ն) (—յառգղեմ)*
*արգելան—բանտ—բաստարան—զնդան (ուշ)*
*արդ—այժմ*
*արդար—անմեղ—անպարտ*
*արդէն—յառաջ(ն) (յառաջագոյն)—կանխաւ—նախ—վաղ*
*արդիւնք—բերք—պտուղ—արգասիք (հմմտ. քաղ)*
*արդն—կայծոն—նիզակ*
*արթուն—զգաւն—զգաստ—լուրջ*
*արեկ—զաւրաւոր (-եղ)—հզաւր—ուժգին*
*արի—աշխոյժ—կորովի—քաջ*
*արծաթաւէր—դաւշաքաղ*
*արծարծանեմ—բորբոքեմ*
*արկղ—տապան*
*արմ(ատ)—տակ (—ունջ)*
*արմանամ (զարմանամ)—զմայլիմ—հիանամ—սխրանամ—սքանչանամ*
*արուարձան—թաղ*
*արուեստաւոր—ճարտար*
*արաւս—խոպան—կորդ*

արեւածայրք — այգ — արշալուրջք
արտորամ — փութամ — արագեմ — երագեմ — աճապարեմ — ճեպեմ — շութափեմ — շտապեմ
արու — որձ
աւար — ապուռ — կապուտ — կողոպուտ
աւգնիմ — ձեռնտու լինիմ — աւժանդակեմ — աւճան լինիմ — սատարեմ — նպաստեմ (որպես բայ՝ ուշ)
աւդի — *հովի — ոչխար
աւթոց — ծածկոց — (ծածկոյթ)
աւղ — լումբ — դահակ
աւեալ — մոլի — խելագար — խենթ (ուշ)
աւթեւան — իջեւան (իջավան) — հանգրուան — պանդոկ — վան
աւժիտ — պաշտատական
աւծեմ — մարզեմ
աւր (աւրագիշեր) — տիւ
աւր — տիւ — ցերեկ
աւր — մաղձ
ափ — ագուռ
ափսէ — պնակ — սկաւառակ — սկուտղ

բագին — մեհեան
բազում — շատ
բաժակ — գաւաթ — խառնարան — տաշտ
բալ — մառ(ն) — մառախուղ — մէգ — մուղա — թուղր — մրրիկ — մշուշ (ուշ)
բակ — գաւիթ
բաղայք — բարուր — պատրուակ
բամբասող — բանսարկու — շոգմոգ — չարախօս — փասքուս — քսու (— լատրատեմ)
բայ(ոց) — բոյն — կաղաղ — սոր — որջ
բանակ — գունդ — զաւրք — լակիշ — լաշկար — սահ
բարաւոր «դռան վերին սեմ» — բարապան
բարեխաւս — ջատագով
բարի — լաւ — առաքինի — քաջ
բարկ — կայծակն — շանթ
բարկ — կծու
բարկանամ — զայրանամ — սրտմտիմ — ցասնում — գժգմ(ն)իմ
բարձրաւանդ(ակ) — գահ — գահաւանդ(ակ) — դար
բաւական — հերիք
բաւթ — գոյժ
բեկոր — կտոր — հատոր (այս ձեւով՝ ուշ) (— նշխար)
բերան — երախ
բերդ — ամուր (ամրոց) — դղեակ
բերկրիմ — զուարթանամ — զուարճանամ — ուրախանամ — ցնծամ
բերրի — յուռթի — արգաւանդ (ուշ)
բեւեռ — ոռն — գամ (առանձին՝ ուշ) — հեղոյս (առանձին՝ ուշ)
բղէտ — խայտ — պիսակ (հմմտ. արատ)
բիր — ձաղկ — ջին — գաւազան — մահակ — ջալոտ(ի)
բիրտ — խաղտ — կոշտ — կոպիտ

բիւրեղ—վան
բոլորակ—բոլորշի—գնդաձեւ (ուշ)
բոզ—անգտի—պոռնիկ—սամտի
բոլորեմ—լնում—կատարեմ—վախճանեմ—վճարեմ—աւարտեմ (որպես բայ՝
ուշ)
բոկեղ—բլիթ—նկանակ—պան
բողբոջ—ընձիւղ—մոլ—պ(ը)պլուկ—պտուկ—ջով—խեղբ—ծիլ (ուշ)
բողոք—կեղերջ—տրտունջ—քանքատ(եմ) (գանգատ(իմ)՝ ուշ)
բոյլ—երախան—երամ—խումբ—հոյլ—ճահուկ—ջոլիր—ջոկ—տարմ—տորմ
բոյս—տունկ
բոշխնեմ—ըմբոշխնեմ—վայելեմ
բորոտ—ուրուկ—պիսակ
բուծանեմ—բտեմ—սնուցանեմ
բուռ—կիր (ուշ)
բռնեմ—ըմբռնեմ—կալում—ունիմ
բռնցի—կռփաւ—մուրցացի
բրդեմ—մալեմ—մանրեմ—կոտորեմ—ջարդեմ—փխրեմ—փշրեմ (—բեկանեմ)
բրեմ—պեղեմ—փորեմ
բրուտ—խեցագործ

գալարեմ—ոլորեմ
գագաթն—ծայր—կատար
գագաթն—կատափն—գանգ/կ (ուշ) (—խոլամ «անասնի չորացած գանգ»)
դահուսրակ—բասալեռն—դեսպակ—ժանուար—լկտի-ք
գաղեմ—թաքուցանեմ—ապարկեմ—կեղչեմ—ծածկեմ—պահեմ
գաղթական—նժդեհ—պանդուխտ—վտարանդի (հմմտ. եկամուտ)
գաղձն—բաղեղն (ուշ)—պատատուկ (ուշ)
գաղտնի—թաքուն—ապար—ղամխուլ—ծածուկ
գայթիմ (գթեմ)—սայթաքիմ
գայլիկոն—գչիր (ուշ)—շաղափ (ուշ)
գայռ—տիղմ—ցեխ
գանեմ—թակեմ—ծեծեմ—տափեմ
գառն—բուծ—որոջ—ամարու (ուշ)
գարշելի—զազիր—նողկալի
գարշիմ—զզուիմ—խորշիմ—նողկ(ա)ամ—պժգամ
գաւառ—կողմն—մարզ—նահանգ
գաւիթ—ղունար—կամար
գաւտեմարտ(ութիւն)—ըմբշամարտ
գգուեմ—փայփայեմ
գելում—պրկեմ
գեղեցիկ—չնաշխարհիկ—չքնաղ
գեհեն—դժոխք—տարտարոս
գեղեւ—կոյս
գեղձ—տենչանք—ցանկութիւն—փափագ—իղձ (այս իմաստով առանձին՝
ուշ)—բաղձ(անք) (ուշ)
գեղջեայ (գեղջուկ՝ ուշ)—շինական
գերծում—վիրամ—ածելեմ (ուշ)—սափրեմ

գերմակ—նաշիհ (—ալիւր)
գերփեմ—եղծ(ան)եմ—փլուզանեմ—ապականեմ—աւերեմ—խաթարեմ—
խախտեմ—խարխալեմ (խարխարեմ)—քանդեմ—քակացեմ
գէջ—թաց—տամուկ—խոնաւ
գէտ—թովիչ—հարցուկ—դիւթ—իղձ—կախարդ(ասար)—կիւս—հմայ(ող)—
վհուկ—քաղդեայ (քաւդեայ)
գէր—յոյր—պարարակ—պարարտ
գինդ—գորշապահանգ
գիր—թուղթ—նամակ
գիր-ք—մատեան
գիշեր—ցայգ
գիւղ—առիճ—աւան—շէն
գիրկ—գոգ—խինձ—խորշ—ծոց
գլեմ—գլորեմ—հոլովեմ—թաւալեմ—շրջեմ
գլխաւոր—իշխան—պետ
գոլ—ջեր—ջերմութիւն—տապ—շոգ (այս իմաստով՝ ուշ)
գոլորշի—շոգի
գողանամ—խորեմ
գոմ—ախոռ—մակաղ—փարախ (—մսուր) (հմմտ. հանգրուան)
գոյն—թոյր—երանգ—երփն
գոյք—աւն—ինչք—ստացուած—աղխ—կահ—կարասի—սեպհականութիւն
գուշեմ—փորոտամ (-եմ)
գովեստ—դրուատ(իք)
գործ—աշխատութիւն—երկ—վաստակ
գորով—խանդաղատութիւն (խանդաղատանք՝ ուշ)
գրգռեմ—դրդեմ—սադրեմ
գրիչ—դպիր

դաժան—դառն—խիստ
դալար—թարմ—մորճ—կանաչ
դալարի-ք—բանջար—կանաչ
դակու «կացին կամ ուրագ»—կացին
դամբան (դամբարան)—գերեզման—շիրիմ
դաշն—պայման—սակ
դաշոյն—վաղակաւոր—վաղր—խարր (ուշ)
դարան—պահարան
դաւ—դաւաճանութիւն—դրժութիւն—խարէութիւն—խարդախութիւն—խար-
դաւանակ—մանկ—նենգ—կել (կէլ) (ուշ)
դեդևիմ—երերիմ—դանդաչիմ—սասանիմ—տատանիմ—տարուբերիմ
դեղ—խոտ
դեղ—բոյժ—դարման—ճար—սպեղանի
դեռ—տակաւին
դերբուկ—առապար—կորէք
դեւ—խարամանի—սատանայ
դէզ—բարդ—թեղ—զրահան—կարկառ—կոյտ—մթեր—յաւրան—շեղջ—տուն
(—խոկեմ)

դեմ (ընդդեմ)—հակառակ—յանդիման—ներհակ (ուշ)
դէտ—պահապան
դի(ակն)—գէշ—շաղիղ
դիտեմ—զննեմ—հայիմ—նայիմ
դժկամակ—տհաճ
դիմակ—պատրուակ—քաւղ
դիպիմ—հանդիպիմ—պատահիմ
դող—սարսուռ «դող ցրտից կամ վախից»
դորսովիմ «քաղցից նվաղել»—նքողիմ
դրոյլ—դռնապան—բարապան—դարապան—դարապետ
դրոշմ—կնիք

եզր—յաւ—տուտն (ատուն)—ամբոկ—աւարտ—բաւ—զրաւ—ծայր—կատար—սպառ—վախճան—վերջ
ելանեմ—ամբառնամ—բարձրանամ—վերանամ
էկ—գալուստ
եկ—եկամուտ—նորեկ—աւտարական (հմմտ. գաղթական)
եղան—հեծանոց
եղանակ—ձեւ—կերպ—տարազ—սարաս (ուշ) (հմմտ. ձեւ)
եղանիմ—լինիմ
եաղ (տեղի)—վայր
երակ—մայր
երան «մեղմ քամի»—սիք
երասանակ—դանդանաւանդ—շրուշակ—սանձ—պախու(ր)ց—վարապան
երաստան—որ
երբեմն—մերթ
երբուծ «կրծքամիս»—երի
երգ—տաղ
երգիծանեմ—հերձանեմ (-ում)—ճեղքեմ (-ում)—պատառեմ
երդումն—խոստումն—ուխտ
երես-ք—դէմ-ք
երեւեցուցանեմ—ցուցանեմ—յայտ առնեմ
երեւոյթ—տեսիլ—ուրուական—ցնորք
երէց—աւագ
երթամ—չուեմ—գնամ—խաղամ
երիթ—սեպ—ուռն
երինջ—ընչուղ
երիվար—նժոյգ (—ձի)
երիւրեմ (յ-երիւրեմ)—յաւրինեմ
երկայնեմ—յերկարեմ—ձգեմ—մեկնեմ—յառեմ—պարզեմ—տարածեմ
երկեւան (<*երկի-հաւան)—թեթուք—խէթ—կասկած—կարծիք—շուշտ—վարանումն—տարակոյս
երկնչիմ (երկիւղ)—ծլիմ—պախիմ—պակնում—վեհերեմ (—հոյ) (հմմտ. զարհուրիմ)
երկրագործ—հողագործ—մշակ
երջանիկ—երանիկ (-ելի)—բախտաւոր

եւ—ու
եփեմ—եռացուցանեմ (—խոհակերեմ)

զամբիլ—կողով—որթ—սակառ «մեծ կողով»—սապատ—կեղթ (ուշ)
զանկապան—սանապան
զառիվայր—շեպ
զարդարեմ—պաճուճեմ—պճնեմ—փեթևեռեմ
զարհուրիմ—սարսափիմ—սարսեմ—սոսկամ (հմմտ. երկնչիմ)
զարմ—սերունդ—ցեղ—ճետ—տոհմ
զաւրագլուխ—զաւրապետ—զաւրավար—սպարապետ
զաւրեղ—աշխույժ
զաւր(ութիւն)—կար—կարիշն—ույժ
զբաղիմ—պարապիմ—պատաղիմ
զբաւսանամ—զուարճանամ
զգամ—ազդ առնում
զդայռեմ (ձգոտամ)—ոստկամ—ժայթքեմ—փախեմ (—անդրոյթք՝ ուշ)
զգեստ—ագանելիք—հանդերձ—ձորձ—փածանելիք—քոթանակ
զգոյշ—ուշադիր—ուշակալու
զերծ—ազատ—յապահով
զերծանիմ—ազատիմ—ճողոպրիմ—պրծանիմ—փրթանիմ—փրկիմ
զինեմ—վառեմ
զլանամ—զրկեմ
զղջ(ան)ամ—ապաշաւեմ—ապաշխարեմ—ստրջանամ (—փաշաման)
զմ(բ)ռիմ—ընդարմանամ—թմ(բ)րիմ

էգ—մատակ

ըմբոստ—անհնազանդ—ապարասան—խեռ—հակր—ստամբակ
ըմպեմ—*արբանեմ (կոր. արբի)—խմեմ («խմել» իմաստով՝ ուշ)
ընդեր-ք—փորոտի-ք—ախոնդ(անք) (ուշ)
ընթանամ—սլանամ—սուրամ—վարգիմ
ընթեռնում—կարդամ «բարձրաձայն կարդալ»
ընծայ—ձաւն—ձիր—դահամն—նուէր—շնորհ—պատարագ—պարգեւ
ընծայ—ձաւն—զատիկ—զեն(ումն)—զոհ—ջաղ—յաշտ—ողջակէզ—
պատարագ—սպանդ
ընկենում—ձգեմ—արկանեմ—արձակեմ
ընկեր—զովող
ընկղմեմ—ընկլուզանեմ—թաթախեմ—թաթաւեմ—մխրճեմ (մկրտեմ)—
սուզանեմ
ընկողմանիմ—գայռամ—պառակիմ
ընկրկեմ—նահանջեմ
ընչաքաղց—ագահ

թագաւոր—արքայ
թագուհի—բամբիշն—դշխոյ
թակարդ—գառագիղ—ծուղակ—հաղբ—որոգայթ—վարմ (—երագազ—ցանց)

թաղանթ—պարուտակ
թաղեմ—խորեմ
թամբ—կորդին—համետ
թանամ—թրջեմ—*խոնաւացուցանեմ
թանաք—մելան
թանձր—ստուար (հմմտ. թաւ)
թաշկինակ—դաստառակ—սուդար—վարշամակ
թառամ—թարշամ—թոռոմ—թորշոմ—խամդուր
թարախ—շարաւ—ցամն
թարթ—թարթափ
թաց—խոնաւ—նայ
թաւ—սեռն—սերտ—խիտ—կուռ—հոծ—սեղմ—պայա (հմմտ. թանձր)
թաւն «ուժեղ անձրեւ»—տեղ—տարափ (—անձրեւ)
թել—թեզան—շաղամաթ—քուղ—դերձան (ուշ)
թեկն—մէջ-ք—կուռն—քամակ
թեղաւշ—մայրի—սոճի (ուշ)
թեղի—կնձնի
թեր—կողմն—կոյս
թեր «տոկոս»—շարիատ—վաշխ—տոկոս(իք)
թերթ—տերեւ
թերի—նուազ—պակաս—սուղ
թեւ—բազուկ
թեքեմ—կռեմ—կոփեմ
թի(ակ)—թեւճակ
թիւ—համար—հաշիւ
թշնամի—դիմադարձ—հակառակորդ—ոսոխ
թոթով—քաղթնատ—թլուատ (ուշ)
թոյլ—կթոտ—տկար—մեղկ
թորեմ—ծորեմ—հոսեմ
թուլանամ—թալ(կ)անամ—թաւշնիմ—կթիմ—նուաղիմ
թուր—սուր—սուսեր
թռչուն—հաւ
թրթրակ—հռետոր (հռիտորայ)—ճարտարասան (>ճարտասան)—
ճարտարախաւս

ժամանակ—ամանակ (ուշ)
ժառանգ—սպայազատ
ժլատ—կարկամ—կծծի—կչիր—ճղճիմ
ժխոր—խղուըրտիւն
ժողխիմ—նեխիմ
ժողովեմ—հաւաքեմ—ձաձեմ (ուշ)

իբր—զիարդ—որպէս
իգասէր—ճակաճան—մատակախազ—իգախազ (ուշ)—իգամոլ (ուշ)
իմանամ—ըմբռնեմ—հասու լինիմ—հասկանամ (ուշ)
իսկ—հաստատուն—ստոյգ—հաւաստ(ի)—ճիշտ—ճշգրիտ—ճշմարիտ—վաւեր

լակեմ—լափեմ
լամ—արտասուեմ—ողբամ—ողողանամ—քուքամ—քքուիմ—աշխարեմ— գեր գործեմ—կականեմ—կոծիմ (-ամ)—կողկողիմ—սգամ
լամբար—բաղմակ—լապտեր—կանթեղ—ճրագ
լանջ-ք—կուրծ-ք
լար—առասան—խառան—չուան—պարան
լաց—ողբ—սուգ—քուք—գեր—եղեր—կոծ
լեսում—մալեմ—մանրեմ—խորտակեմ—ջախջախեմ—փշրեմ
լերկ—լեշկ
լի—լեցուն—ակաղձուն—լիքը—պատարուն
լիճ—լիկ
լիրբ—լպիրշ—անամօթ—անպատկառ—ժպիրհ—լկնեալ
լիրբ—լկտի—լպիրծ—անառակ—վեղխ—յալրատ—շաղաշուտ—շուայտ— շքթեալ—պակշոտ—վաւաշ—ցոփ
լից—կաճ—կոլոփոց—յոյդ—կոռ (ուշ)—վէպ (ուշ)
լլկեմ—խոշտանգեմ—խոշեմ—կտտեմ—չարչարեմ—տանջեմ—տագնապեմ— տաժանեմ (ներգործ.՝ ուշ)—տառապեմ—տառապեցուցանեմ—տոշկեմ— տուայտեմ—ցականեցուցանեմ
լմեմ—ճմլեմ—կակղեմ
լնում—հեղում—թափեմ—վայթեմ—վիժեմ
լոյծ—հեղուկ
լորձն—շողիք—տողուկ
լուծանեմ—արձակեմ—քակեմ
լումայ—խեբեւէշ
լուսամուտ—պատուհան (—երդ)
լսեմ—ունկն դնեմ (ունկնդիր լինիմ)—անսամ

խախանք—քրքիչ—քրքանք (ք(ր)քուիմ) (—ծիծաղ).
խախաց—մակարդ
խածանեմ—կծանեմ—հարթեմ
խաղ—կայթ—կաքաւումն—պար—ցուց
խաղաղ—հանգիստ—հանդարտ
խայտառակեմ—անարգեմ—դարուլեմ—ծանակեմ—նաբաղեմ—նախատեմ— նշաւակեմ—պախարակեմ—պարսաւեմ
խանդանք—նախանձ—մախ(անք) (հմմտ. քէն)
խառնեմ—շաղդանեմ—շփոթեմ
խառնիճ—խարագուլ—մարախ (մորեխ՝ ուշ)
խարայն—խորգ—քուրձ
խարազան—մտրակ
խարտեաշ—շէկ (առանձին՝ ուշ)
խարխախ—պատուանդան
խեթ—խոթ—խոլոր (ուշ)
խեթեմ—հրեմ—մղեմ—յարդգեմ
խեղ—հաշմ
խիզախ—համարձակ
խիթ—ցաւ
խիթ—խոյթ—կոկորդիլոս—նհանգ—տիտեռն

խլեմ—կորզեմ—յափշտակեմ—շոպեմ—շորթեմ
խնդամ—խայտամ—բերկրիմ—զուարթանամ—զուարճանամ—խրախանամ—
ուրախանամ—ցնծամ—հրճուիմ (ուշ)
խնդրունդ—անհարթ—խոժոռ—խոշոր—խորտաբորտ—խորթ (ուշ)
խնցոյք—խրախճանք
խոլեմ—հալածեմ—վանեմ—վարեմ—քշեմ
խողխողեմ—մորթեմ—փողոտեմ
խողովակ—ցնցուղ—փող (փող(ո)րակ՝ ուշ)
խոնարհ—համեստ—պարկեշտ (հմմտ. հլու)
խոպան—կորդ
խոստանամ—ուխտեմ
խորշիմ—քասքնիմ
խորշոմ—կնճիռ («խորշոմ» իմաստով՝ ուշ)
խուժդն (խիժդն)—խստութիւն
խուղ—հիւղ—խրճիթ—տաղաւար
խուն (բրբռ. սուն)—դոյզն—դուն—սակաւ—սուղ
խուփն—կափարիչ
խռիւ—խո(ր)շոտ
խտիր—զանազանութիւն (ուշ)
խրթին—խարուրեալ

ծախեմ—սպառեմ—վատնեմ
ծաղր—կատակ(անք)—այպն—խաղ—հենգն—ցոյց
ծաղրածու—զաւեշտարար—հտպիտ—միմոս—խեղկատակ (ուշ)
ծամեմ—ծանծաքեմ—ծասկ/քեմ
ծանուցանեմ—զեկուցանեմ—յայտնեմ—տեղեկացուցանեմ
ծառայ—արբանեակ—սպասաւոր
ծառայ—ստրուկ
ծարաւիմ—պապախեմ—պապակիմ—պասքիմ (պասուք)
ծեր—ալեւոր
ծնաւտ—ծամելիք
ծուռ—գել—թիւր—կեռ—կոր—շեղ—խոտոր—ծեք (—ձոխիմ)

կաթ(իլ)—կայլակ—շիթ
կաթսայ—սան
կաղամ—խռշտամ
կայծակն—շանթ
կայտառ—առոյգ
կաշի—խաղախ—մաշկ—մորթ
կաշկանդեմ—կապեմ—պարաւանդեմ—շղթայեմ (որպէս բայ՝ ուշ)
կապարճ—պատկանդարան
կառուցանեմ—շինեմ
կարաւտ—նիազ
կարիք—աղց—հարկ—պէտ-ք
կարծր—պինդ—տրամ—ամուր—բիրտ—խեփ—խիստ—կոշտ—կոպիտ—մեստ
(ուշ)

կարկանդակ—քաքար
կարճ(ատ)եմ—կրճատեմ—յապաղեմ—յատանեմ—բշտեմ
կաշիկ—մոյկ/կ
կեղ—խոց—վէր-ք
կեղեւ—պատեան—պատիճ—կճեպ (—խեճեպ, փոճոկ) (ուշ)
կեր(ակուր)—ուտելիք—խոհ (խահ, խոխ, խախ)—խորտիկ—ջամբ
(—համադամ «համեղ կերակուր») (հմմտ. ուտեստ)
կէս—խեղեփ
կզակ—կլափն
կոթ—մեղեխ
կոկորդ—սոսորդ—փող
կող—կուշտ—պառակ
կողմն—կոյս
կոնք—դաշխուրան
կոշտ—գուղձն (ուշ)
կոչ—հրաւէր
կորճ—պասկուճ
կուզ—կատու (ուշ)
կուճ (կիճ?)—մարմար
կունդ—ճեղ—ճաղատ (ուշ)
կուպր—ձիւթ
կուտ—կորիզ
կուր—բուտ—խար—ճարակ
կուր—մակոյկ—նաւակ
կսկծիմ—մորմոքիմ—ցաւիմ—դարհայիմ—դոփամ—վշտանամ—վշտագնիմ
կտակ—անդարձ
կրակ—հուր
կրաւն—աւրէն—կանոն—կարգ
կրաւն—քէշ—դեն (ուշ)—կեշտ (ուշ) (հմմտ. հաւատ)
կրթեմ—մարզեմ—վարժեմ—հրահանգեմ (որպես բայ՝ ուշ)
կրեմ—տանիմ

հալ (հեղ)—անգամ
համբարու—հրէշ—ճիւաղ—յուշկապարիկ—պարիկ
համբաւ—հռչակ
հայիմ—նայիմ
հայցեմ—խնդրեմ—յուզեմ (—պահանջեմ)
հանգիստ—խաղաղ—անդորր—անքոյթ—հանդարտ
հանգիստ—դադար—դուլ—խաղաղութիւն
հանգոյց—կնճիռն—կշկուռ (ուշ)—կուղթ (ուշ)
հանգրուան—մակաղատեղ—փարախ
հառաչեմ—թառանչեմ—հեծեմ (հեծեծեմ)
հատանեմ—կտրեմ
հատակ—տի-ք
հասու (ձեռնհաս)—հմուտ—տատակ—բաւակ—կարող
հարթնում—խլանում—շրանում—սարանում



26—455

մոլորիմ—սխալիմ—գայթիմ—վրիպիմ
մոլեգին—ամեհի—գակատեալ—կատաղի
մոյթ—նեցուկ
մոյն—խեղդեալ—հեղձեալ—մղձկեալ
մութ(ն)—աղջամուղջ—մառայլ—մուղտ—խաւար
մուլ—մուխ—մրրիկ—ծուխ
մուն—մժեղ
մունջ—համր
մուրճ—կռան—ուռն
մրրիկ—փոթորիկ
մուր—մուրճ—ձանձախարիթ (?)—մեղծ (?)

յագենամ—զմայլիմ—զողոքիմ—յաւրանամ—յափրանամ—յղփանամ—կշտանամ (ուշ)
յախուռն—յամբայր
յածիմ—թափառիմ—կոպանիմ
յառաջամարտիկ—ախոյեան—նահատակ—շահատակ
յառնեմ—կանգնիմ—յոտն կամ
յատակ—թափ—խոր-ք—տակ—ունջ—ալ-ք (ուշ)
յար («միշտ» իմաստը՝ ուշ)—հանապազ—միշտ
յարեմ—հայթեմ—յաւդեմ—բաղեմ—խառնեմ—կցեմ
յարմար—արժան(ի)—ճահ—համեմատ—պատկան (առանձին՝ ուշ)—պատշաճ—վայելուչ
յաւդ—խաղ(ալիկ)
յաւակն—միտ—ժմեղա—ժպիրհ—խոխոռ—յանդուգն—յախորտ (—իշխեմ—խիզախեմ)
յելուզակ—աւազակ—հէն—հուղկահար (ուշ)
յեղում—դարձուցանեմ—յեղափոխեմ—փոխեմ
յեռում—ընդելուզանեմ—յիրեմ—փողփողեմ
յետին—հուսկ—վերջին
յետին—տրուպ—անարգ—չածած—նուաստ (հմմտ. մնոտի)
յետոյ—ապա
յղեմ—յուղարկեմ—առաքեմ
յղի—ծննդական—բեղնաւոր
յոգն—յոլով—բազում—շատ
յոգնիմ—խոնջիմ—պարտասիմ—վաստակ լինիմ
յոռի—վատ—վատթար—քեծ—քրէիքուր (—չար)
յորդ—առատ
յորդորեմ—դրդեմ—թելադրեմ—սադրեմ
յորդորումն—խրախոյս—քաջալերութիւն
յորդումն—զեղումն—յորձանք—բղխումն (—հոսանք—վտակ)
յուսահատ—վհատ

նեխ—երր—փուտ
նետ—սլաք (?)—փքին (—հերձուկ (?)՝ ուշ կազմութիւն)
նիրգեւ—նիհար—վտիտ—նզար (ուշ)
ներքինի—մալեալ—ամորձատ—թաղասմաւոր—կուրտ—քածաւարտ

նժդեհ—պանդուխտ—վտարանդի
նիւթ—ատաղձ—հիւթ—տարր
նկար—պատկեր
նիւթեմ—նաւթճեմ—պաճարեմ—հայթ(հ)այթեմ
նման—գունակ—հանգոյն—պէս—հանգէտ (առանձին՝ ուշ)—քատակ (ուշ)
նուրբ—ցիր—անաւսր—անգայտ—ցանցառ (ուշ)
նսեմ—աղաւտ
նքոյր—մաղ (—խարբալեմ)

շամբ—խարձ—եղեգնուտ
շաւշափեմ—շփեմ
շող—նշող (նշոյլ)—ճաճանչ—ճառագայթ—շառայլ—շառաւիղ
շողամ—փաղփաղիմ (փայլիմ)—փողփողեմ—ցոլամ («շողալ» իմաստով որպես բայ՝ ուշ)
շողոմ—շողոքորթ—ստկող—փաղաքուշ—քծնող
շուք—փառք
շպարիմ—սնգուրիմ (սնգոյր)
շփեմ—մարձեմ

ողորկ—կոկ—հարթ—յիղկ (ուշ)
ողորմ—գութ—կարեկցութիւն (ուշ)
ոճ—ստեղն—ցաւղուն
ոմն—ոք
ոռնամ—մռնչեմ
ոսկր—վանգ (ուշ)
ոստ—ոզոր—կողր—ճիւղ (ճեղ)—ուռ—ուղէղ (ուշ) (—բարունակ—շիւ)
ոստնում—վազեմ
ոտն—սրունք—ճիւ—աթուր (առանձին անգործած.)—աք
որդի—ծնունդ—սեր(ունդ)—զաւակ—տղայ
որդն—բոտոտ—ճճի
որեար—ամբոխ—բազմութիւն—գունդ—ժողովուրդ—պարոյր—ռայ
որթ—մողի (հմմտ. ձագ)
որթ—վազ (ուշ)
որկոր—ստուցն (ուշ)
որմ—ցանկ—պատ—պարիսպ
որոնեմ—պտռեմ (ուշ)—փնտռեմ (ուշ) (հմմտ. հայցեմ)
որովայն—փոր—գանձակ—նախիճ

ուլ—ամիկ—բուծ—ալոջ
ուլն—պարանոց—վիզ—ճիտ (ուշ)—շլնի (ուշ)
ուղեղ—խել
ուղի—աղագ—ճանապարհ—ճապաղ (հմմտ. արահետ)
ուղուկ «մի չափ»—քիլ
ուղտ—շառաւն
ունայն—սին—դատարկ—զուր—թափուր—նանիր—պարապ
ունչ—քիթ

ուշ—անագան
ուս—նուս
ուսուցանեմ—խրատեմ—կրթեմ—վարդապետեմ—վարժեմ—հրահանգեմ
(որպես բայ՝ ուշ)
ուտեմ—փաղաղեմ (—ըմբոշխնեմ—ճաշակեմ)
ուտեստ—սնունդ—թոշակ—հոգ—նպար(ակ)—պարէն—պիհ—ռոճիկ
ուտիճ—ցեց
ուրանամ—ժխտեմ—մերժեմ
ուրուր—ցին
ուրջու—խորթ («խորթ որդի» իմաստով՝ ուշ)

չափ—սակ

պագանեմ—համբուրեմ
պալ (պաղ)—պղպղաքար—ապառաժ—ժայռ—խարակ—վէմ
պահակ—պահապան
պահեմ—պաշտպանեմ—պատսպարեմ—պահպանեմ (որպես բայ՝ ուշ.
պահապան-ից)
պայքարեմ—գուպարեմ (-իմ)—մաքառիմ
պաշարեմ—պատեմ
պապանձիմ—կարկիմ—համրիմ (—անամ)
պատանի—պարմանի (ուշ)
պատատեմ—փաթութեմ (փաթաթեմ՝ ուշ)
պատերազմ—ռազմ
պատկինեմ (պատկէն)—պատուաստեմ—պատրուսեմ (ուշ)
պատնէշ—պատուար
պարսաւեմ—բասրեմ
պուտ—բուշտ (առանձին՝ ուշ)
պտուղ—միրգ

ջան-ք—ջուն—փոյթ—ճիգն
ջերմն—տենդ
ջինջ—սուրբ—անապակ—անխառն—զուտ—մաքուր—յստակ—վճիտ

ռունգն—ծուծք—պինչ—փող

սաղաւարտ—գլխանոց (ուշ)
սայր—սլաք—սուրն—տէգ
սառն—սառոյց—պաղ
սաստեմ—բասրեմ—դսրովեմ (դսրով առնեմ)—եպերեմ—կշտամբեմ—
յանդիմանեմ—նախատեմ—պախարակեմ
սար—բարձունք (—լեառն )
սարիք—տի—կապ—վարակ
սար-ք—աճառ (աւճառ)—կազմած—հանդերձանք—սպաս
սեաւ—արջն
սեղան—բագին—զոհարան (-անոց)
սեղեղ (սիղեղ)—հոմանի

սենեակ—սրսկապան
սերմ—հատ—ունդ
սէր—գորով—խանդաղատութիւն—տռփ (տռիփ, տարփ)
սնոտի—չնչին—աննշան—բալախ—պձուձ (հմմտ. յետին)
սոր—փոր(ոք)—խոռոչ—խորշ—ծակ—ծերպ (հմմտ. ճեղք)
սուտ—խաբ—կեղծիք
սպանանեմ—սատակեմ
սպիտակ—ճերմակ (ձիու մասին)
սպրդեմ—սողոսկիմ (ուշ)
ստէպ—յաճախ
ստին-ք—տիտ (?)—ծիծ (ուշ)
ստնտու—դայեակ—տիտան (ուշ)
սփածանելի—ղենչակ
(ս)փռիմ—ծաւալիմ—ճապաղիմ—տարած(ան)իմ

վահան—ասպար
վարազ—կինճ
վարձ(-ք)—կաշիկ-ք—մահակ—սխուր—վճար
վերարկու—կրկնոց—մեկնոց—աղաբողոն—նափորտն—փիլոն
վնաս—ահոկ(ութիւն)
վրան—խորան—մաշկն—տաղաւար

տաղտկացուցանեմ—թախանձեմ—ձանձրացուցանեմ
տամ—յանձնեմ
տանիք—ցիւ (ցուիք)—սամալի
տապտամիմ—դանդաղիմ—յամեմ—յապաղիմ—ուշանամ
տեռ—քող (քաւղ)—շղարշ (առանձին՝ ուշ)
տիղմ—ոիկ—ցիխ
տիրեմ—իշխեմ (—նուաճեմ)
տղեմ—շարժեմ
տոկամ—տեւեմ—ըմբերեմ—համբերեմ—ժոյժ ունիմ—հանդուրժեմ
տոյժ—տուգան-ք
տողան—դաս—դարգ—երաստ—կարգ—շար-ք
տոռն—կառան—ճոպան—մալուխ—չուան—պարան
տրտմիմ—թախծիմ—կղծկիմ—վշտանամ—տխատիմ—տխրիմ
տուր-ք—հաս—բաժ—հարկ—սակ

ցած—խոնարհ—խոնչ—ստոր
ցայտեմ—ցնցղանամ (ցնցուղ)
ցնցոտի—գրգլի—թամբատ—քուրջ (ուշ)
ցոյց—նշան
ցուպ—քուք—գաւազան—մական (ուշ)
ցռուկ—քիթ
ցր(ու)եմ (ցիր, ցրիւ)—ցանեմ—ցնդեմ—վարակեմ

փակ(անք)—աղխ
փակեմ—կափեմ

փայտատ—կացին—տապար
փարթ—քաղիրթ
փափուկ—կակուղ
փերթ—աւշ—պատառ
փշուր—խրխոր (ուշ)
փոկ—հրապար
փողոց—գռեհ
փոշի—մղեղ
փութանակի (փութով)—արագ (երագ)—ճեպով—շտապիւ—շոյտ—վաղ—
վաղվաղակի (հմմտ. արագորամ)
փուշ—պսեմն (—տատասկ)

քաղ—նոխազ—քաւշ
քաղ—հունձ—կութ
քաղցր—անոյշ
քամեմ—կթկթեմ—մզեմ
քանդակեմ—դրաւշեմ
քար—գիլ
քարակոփ—քարահատ—կաղատոս
քաւեմ—թողում—խնայեմ (անխնայեմ)—ներեմ
քեղի—ղեկ
քեռի—մաւրեղբայր (ուշ)
քերթեմ—տեռեմ—մորթեմ
քէն—հեռ—խեռ—ոխ—վրէժ (հմմտ. խանդանք)
քղանցք—դրաւշակ
քուն—մրափ «նինջ»—նինջ—նիրհ

## 3. ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐ

Ի տարբերություն հնդեվրոպական այլ հին ժողովուրդների (հնդիկներ, իրանցիներ, հույներ և այլն)՝ հայերը հակում են ունեցել բուն հայկական անձնանունները փոխարինելու այլազգի անձնանուններով, այսինքն՝ գործածելու սեփական լեզվական միջոցներով չբացատրվող (ոչ պարզ էտիմոնով), միայն անձնանվանական գործառություն ունեցող միավորներ։ V դ. և ավելի վաղ գործածված անձնանունների մեջ մեծ թիվ են կազմել իրանական ծագում ունեցողները։ Վաղ հայկական պետական կազմավորումների, Արտաշիսյան և Արշակունյան հարստությունների թագավորների անունները հիմնականում իրանական ծագում ունեն։ Իրանական տարրը մեծ թիվ է կազմում նաև Խորենացու տված, այսպես կոչված, հայկազնյան առասպելական թագավորների և նրանց սզգակիցների անունների մեջ [Ջահուկյան, 1981, 3, 48—63]։

Ի մի բերելով օտար և հայ աղբյուրների տվյալները՝ կարելի է մատնանշել V դ. և ավելի վաղ գործածված անձնանունների իմաստային և բառակազմական մի շարք տիպեր։ Նշենք, որ ի տարբերություն հասարակ անունների, հատուկ անունների գեպքում ժամանակագրական տվյալները երկակի բնույթ ունեն. այստեղ հարկավոր է նկատի առնել ոչ միայն մատենագրա-

կան աղբյուրների, այլև այդ աղբյուրների մեջ հիշատակված անունները կրող անձերի ապրած ժամանակը։ Ստորև բերվող անձնանունների համար նկատի են առնվել երկու կարգի տվյալներն էլ, այդ թվում՝ նաև առասպելական անձերի վերաբերյալ տեղեկությունները [Հմմտ. **Hübshmann,** 1893, **Justi,** 1895. Աճառյան, 1942—1962]։

*Բնիկ հայերեն արմատներով կազմված անձնանուններն ըստ կազմության կարելի է բաժանել չորս խմբի՝ 1) պարզ, 2) ածանցավոր, 3) հոլովման կամ խոնարհման ձև ունեցող և 4) բարդ, ընդ որում 1-ին, 2-րդ և 4-րդ տիպերի անձնանունների առանձնացման չափանիշները երկակի են. կարող են լինել ինչպես ածանցավոր և բարդ հասարակ անունների ամիջական փոխանցմամբ (կոնվերսիայով) առաջացած, այսինքն՝ անձնանվանական առումով փաստորեն պարզ կամ նախատիպ, այնպես էլ պարզ հասարակ անուններից հատուկ անձնանվանական (հատկապես փոքրացուցիչ-քաղաքշական) ածանցներով կազմված անձնանուններ։*

*Ի տարբերություն հնդկական, իրանական, հունական անձնանունների՝ բուն հայկական ծագման անձնանունների մեջ բարդությամբ կազմվածները սակավաթիվ են, գերազանցապես* -այր *բաղադրիչով՝* Զարմայր *(հնարավոր է իրանական ծագում. հմմտ. պրսմ.<իրան.* Zrmr*),* **Տոռայր, Սոնայր** (սոն *«մուրճ» կամ»?*+այր), Տիրայր. *Սյունեցու քերականության մեջ (VIII դ.) հանդիպում է նաև* Կորայր, *որ թերևս հին անուն է։ Հակառակ այլ լեզուների՝* -տուր *բաղադրիչով հնագույն անձնանուններ գրեթե չկան.* **Տեառնտուր** *անունը կրել է մի եպիսկոպոս, որ ապրել է V դ. երկրորդ կեսին և VI դ. սկզբներին.* **Աստուածատուր** *անունը հանդիպում է VI դարից ոչ վաղ. Համեմատաբար ավելի ուշ շրջանից են նաև* **Խաչատուր** *(XI դ.),* **Տիրատուր** *(VII դ.) և այլ անձնանուններ, որոնք կապված են հատկապես քրիստոնեության հետ։ Հայերի մոտ գործածության մեջ են եղել նաև* **-որդի** *բաղադրիչով անձնանունները, ինչպես* **Սկայորդի (սկայ-**՝ *թրակ.* Σκαιοί *ցեղանունի՞ց)։ Եթե* **Հրաչեայ** *անձնանունը իրոք հայկական ծագում ունի և ոչ իրանական (հմմտ. ավեստ.* Fračya- *անձնանունը), ապա պետք է ենթադրել համատիպ կազմությամբ այլ անձնանունների գոյությունը ևս։*

*Զգալի թիվ են կազմել փոքրացուցիչ-փաղաքշական* **-ակ, -իկ, -ուկ** *ածանցներով անձնանունները՝ կազմված մասամբ հասարակ անուններից, մասամբ այլ անձնանունների կրճատ ձևերից։ Հնդեվրոպական հիմքերից այս ածանցներով կազմված անձնանուններից են՝* **Այրուկ, Դատրիկ, Եզնիկ, Եղբայրիկ, Երանեակ, Ընձակ, Լուսիկ** *(հնում՝ արական),* **Խաչիկ, Խնդակ** *(?),* **Հաւուկ, Ձագիկ, Ձոյիկ, Մրջիմնիկ, Տիրիկ, Տիրուկ**: *Հնարավոր է նաև* **Արմենակ (Արմէն**<*ormenos՝ *հ.-ե.* *er- *«հուզել. բարձրացնել» արմատից, որտեղից նաև* արմ(ն), արմատ, զարմ), **Թաթիկ** (թաթ<*tag-t-՝ *հ.-ե.* *tag- *«շոշափել, դիպչել, բռնել» կամ* *tata—*մանկական բառ?),* **Յուսակ, Յուսիկ,** (յ-)ոյս՝ *հ.-ե.* *euk- *«վարժվել» արմատի՞ց. այստեղից* ուսանիմ), **Յոլակ** (*sk'i̯o-lo-՝ *հ.-ե.* *sk'āi- *«ցոլցլալ, առկայծել» հիմքից?) անձնանունների հիմքերի հնդեվրոպական ծագումը։ Եթե* **Ամպակ**-*ը և* **Առնակ**-*ը իրանական ծագում չունեն, ապա նրանց հիմքերը* (Ամպ-, Առն-) *բնիկ հայկական են։ Հայտնի չէ* **Կայպակ, Կողթեակ, Կոռնակ, Հայդիկ** *անձնանունների ծագումը։* **Հայկակ** *անձնանունը կազմված է* **Հայկ**-*ից։*

*V դ. և ավելի վաղ տարածված են եղել* -ոց *(հ.-ե.* *osk'o-?) *ածանցով անձնանունները, որոնցից* Տիրոց-*ը և* Քաղոց-*ը հնդեվրոպական հիմքեր ու-*

նեն։ Այլ ծագման հիմքերով անձնանուններից հիշատակելի են Ափոց, Բաբոց, Մաշտոց, Վարդից։

Անհայտ է -իթ-ով կամ -ութ-ով վերջացող Գնիթ (գին-ի՞ց. համա. նաև ծագումով անհայտ Գարեգին), Գուութ (համա. գոռո՞վ), Զուիթ անձնանունների ծագումը[1]։

Հազվադեպ են իրանական ծագում ունեցող -ուկ[ն] ածանցով կազմված իգական անձնանունները՝ Սաագուկն (հիմքի ծագումն անհայտ է), Ոգուկն (ոգի-ն հ.-ե. ծագում ունի՝ *pou̯i̯o-)։

Հոլովման և խոնարհման ձևերից են կազմված Զամն, Տիրանամ (եթե կապ չունի Տիրան-ի հետ) անձնանունները։ Եթե Արազ-ը հնարովի անուն չէ և իրոք կապված է ուրարտ. Araza դիցանվան հետ, ապա -ազ-ը սեռականի վերջավորություն չէ։

Նշանակալից թիվ են կազմում և հասարակ անունների սովորական փոխանցմամբ (կոնվերսիայով) կազմված հատուկ անունները։ Սրանց մեջ ըստ իմաստի կարելի է առանձնացնել մի քանի խումբ.

1) Կենդանիների անուններից կազմված անձնանուններ, որոնք թերևս անձնանունների հնագույն՝ տոտեմական շրջանից եկող, շերտն են ներկայացնում՝ Արտոյտ, Ընծուղ, Կորիւն. սրանց պետք է միացնել փոքրացուցիչ-փաղաքշական -իկ, -ուկ ածանցներով կազմված անձնանունները՝ Այծեմնիկ (?) հանդիպում է Սատվածաշնչում, որպես Տաբիթա անվան թարգմանություն. ավելի ուշ՝ XII դարից կա Այծեամն անունը), Գառնիկ, Եզնիկ, Ընձակ, Հաւուկ, Ձագիկ, Մրջիւնիկ։

2) Ազգակցական հարաբերություններ ցույց տվող բառերից կազմված անձնանուններ՝ Դուստր, Եղբայր, Հայր, Հառոյ (*pətro. համա. հուն. Πατρο- -ով կազմված անձնանունները), Որդի։

3) Մարմնի մասերի անվանումներից կազմված անձնանուններ՝ Թաթիկ, Թաթուլ (թաթ<Հ.-Ե.?), Ձեռն (հասարակ անո՞ւն)։

4) Բնության մարմինների և երևույթների անվանումներից կազմված անձնանուններ, որոնք թերևս գալիս են հեթանոսական շրջանից՝ Արեւ (համա. Յրեւ, Ոեւ?), Լուսիկ. սրանց թվին է պատկանում նաև Աստղիկ դիցուհու անունը, որը, քրիստոնեության մուտքի հետ կապված, V դ. որպես սովորական անձնանուն չի հիշատակվել։

5) Վերացական անուններից կազմված անձնանուններ (համա. հունական համապատասխան անձնանունները)՝ Գիտ, Յոյս (այլև Յուսակ, Յուսիկ)։

6) Գոյականներից և ածականներից կազմված բնութագրիչ անձնանուններ՝ Արքուն, Գեղամ (եթե կապված է գեղ արմատի հետ), Հոյ (համա. հոյ-ակապ?). համա. նաև Քաջ (ծագումն անհայտ)։

7) Այլ բառերից կազմված անձնանուններ՝ Գինդ (գինդ «ականջօղ, օղ, շրջանաձև պարղ»), Սյամ, Սուր (եթե իրանական ծագման չէ), Տէր (համա. նաև Տիրոտ)։

Այսպիսի անձնանունների թիվը, անշուշտ, ավելի մեծ է եղել հեթանո-

[1] Հնարավոր է -իթ ածանցով անունների իրանական ծագումը, մանավանդ եթե այդ ածանցը կապ ունի Բեհիստունի արձանագրության մեջ հիշատակված Ḫaldita անվան -ita-ի հետ. վերջինս սովորաբար համեմատում են հ. պ. Xšaϑrita- (<մեդ.)?, ավ. Zairita- անձնանունների -ita-ի հետ [համա. Eilers, 1940, 220, Bănățeanu, 1957, 80. Schmitt, 1980, 10—11]; Ի. Մ Դյակոնովը Ḫaldita-ն ամբողջովին համարում է ուրարտական՝ ենթադրելով *Ḫalditai̯ə սկզբնաձև։

ության շրջանում, բայց քրիստոնեության մուտքով դրանք դուրս են եկել գործածությունից և փոխարինվել քրիստոնեական պաշտոնական անձնանուններով։

Ավելորդ չենք համարում բերել քննարկված հնդեվրոպական հիմքերով անձնանունների ցանկը. այն անձնանունները, որոնց հիմքերի հնդեվրոպական ծագումը կասկածելի է, բերվում են հարցականով.

Ամպակ (Ամբակ) (հ.-ե.?)
Այծեմնիկ
Այրուկ
Անանուն
Անգեղ (հ.-ե.?)
Առնակ (հ.-ե.?)
Արբուն
Արեւ
Արմենակ (հ.-ե.?)
Արտոյտ
Գառնիկ
Գեղամ (հ.-ե.?)
Գինդ
Գիտ
Դուստր (Դստրիկ)
Եղնիկ
Եղբայր(իկ)
Երանեակ
Զարմայր
Զոմն
Ընձակ
Ընձուղ
Լուսիկ
Խաչիկ
Խնդակ
Կենան (կեան-ի՞ց)
Կորիւն
Հայր
Հաւուկ
Հաւրոյ
Հոյ
Հրաշեայ (հ.-ե.?)
Ձագիկ
Ձեռէս (հատարակ անո՞ւն)
Ձուիկ
Մխիթար (խէթ, խիթամ)
Մրջիւնիկ
Յոյս (հ.-ե.?)
Յուսակ (հ.-ե.?)
Յուսիկ (հ.-ե.?)
Նորայր
Ոգ-ուհի
Որդի
Սլաք
Սուր (հ.-ե., թե՞ իրան.)
Տեառնատուր
Տէր
Տիրայր
Տիրանամ
Տիրիկ
Տիրոտ
Տիրոց
Յոլակ (հ.-ե.?)
Ուռնայր
Քաղոց։

Բնիկ հայկական դիցանուններից են Ամանոր-ը և Աստղիկ-ը. որանցից առաջինը բարդ անուն է՝ բաղադրիչների՝ հայերենի համար անսովոր շարադասությամբ, ընդ որում ամա-ի մեջ պահպանվել է ամ «տարի» բառի հիմքային հին ձևը. սա խոսում է կազմության արխաիկ բնույթի մասին (հմմտ. վիպասանական աշագեղ)։ Ամանոր-ի երկրորդ՝ Վանատուր անվանումը պարունակում է բնորոշ երկրորդ -տուր բաղադրիչը (հմմտ. Տեառնատուր անձնանունը)՝ օտար ծագման առաջին բաղադրիչով։ Աստղիկ-ը փաղաքշական ածանցով կազմություն է։

Փոքրասիական Տորք-ի Անգեղեայ մականվան՝ Խորենացու կողմից տրված մեկնաբանությունը որպես ան-գեղ (=ագեղ) պետք է համարել ժողովրդական ստուգաբանություն. ավելի հավանական է դրա կապը Անգեղտուն գավառի և նախարարական տոհմի անվան հետ։ Հայտնի չէ սրա կապը մի

կողմից՝ **Անգեղ** դիցանվան հետ, որով Աստվածաշնչում թարգմանվել է Nergāl (հուն. 'Εργέλ) աստծու անունը, և մյուս կողմից՝ **Անգեղ** անձնանվան հետ, որ Հայկի սերնդին պատկանող Փառնավազի որդու՝ Բազարատի երկրորդ անունն է։ Կապ ունի՞ արդյոք անգղ թռչնանվան հետ, ինչպես կարծում է Ն. Ադոնցը։ Թերևս հնարավոր է անգղ-ի հնդեվրոպական ծագումը *ank- «ծռել, թեքել» արմատից. թռչունը կարող էր այսպես կոչվել ըստ կտուցի ձևի. հմմտ. նույն արմատից ծագող թոխ. Ա onkaläm, Բ onkolmo «փիղ»՝ ըստ կնճիթի ձևի)։

**Նանե** դիցուհու անվան՝ նան բառից ծագելը քիչ հավանական է. ավելի հավանական է սրա փոխառյալ լինելը (հմմտ. աքքադ. Nanāja):

## 4. ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐ

Եթե նախագրային շրջանի համար մեր առանձնացրած բուն հայկական, այսինքն՝ հնդեվրոպական ծագման հիմքերով կազմված անձնանունների թիվը հինգ տասնյակից հազիվ է անցնում, ապա Հայկական բարձրավանդակի համապատասխան տեղանունների թիվը բավականաչափ մեծ է։ Սա բացատրվում է ոչ միայն այն հանգամանքով, որ տեղանունների թիվը գերազանցում է անձնանունների թիվը, այլև նրանով, որ հայերը, ընդհանուր առմամբ, չփոխելով գործածության մեջ եղած տեղանունները, ամեն մի նոր հիմնադրված բնակավայրի պետք է տային նոր անուն. եթե այդ վայրը արդեն հայտնի լեռան, գետի, անձի անունով չի կոչվել, ապա պետք է տրվեին հայկական համապատասխան լեզվամիջոցներով։ Հարկ ենք համարում նշել, որ սովորական բառերի (հասարակ անունների) և անձնանունների հնության աստիճանը որոշելու համար կիրառած եղանակներն այս դեպքում տարբեր են. եթե նախագրային շրջանի հասարակ բառերը և անձնանուններն առանձնացնելիս առաջնությունը տրվել է V դ. մատենագրական տվյալներին, ապա այս դեպքում նկատի են առնվել նաև ավելի ուշ հեղինակների տվյալները, մանավանդ եթե այդ տեղանունները հիշատակված են պատմական վաղ իրադարձությունների կապակցությամբ։ Հայտնի է, որ տեղանունները շատ ավելի կայուն են, հեշտությամբ և առանց անհրաժեշտության չեն փոխվում, մինչդեռ անձնանունների գործածությունը մեծ չափով կապված է քաղաքական, մշակութային, կրոնական գործոնների հետ. այստեղ մեծ դեր են խաղում տվյալ ժամանակի ըմբռնումները, մոդան, անձնական հակումները։

Այս առումով նախագրային շրջանի ներկա քննության մեջ նկատի են առնված ոչ միայն V դ. հեղինակների, այլև «Աշխարհացոյց»-ի տվյալները [Երեմյան, 1963], որոնք, հավանաբար, արտացոլում են ավելի վաղ տեղանվանական փաստեր, այլև ավելի ուշ հեղինակների, օրինակ՝ Թ. Արծրունու տվյալները։ Կարելի է ասել, որ այս դեպքում մեզ համար ընդհանուր առմամբ հիմք են ծառայել գերազանցապես Հ. Հյուբշմանի՝ հայկական հին տեղանունների քննության արդյունքները [**Hübschmann, 1904. Հյուբշման,** 1907]՝ հետագա ուսումնասիրությունների արդյունքների հաշվառմամբ։

Բուն հայկական տեղանունները ըստ կազմության չորս տիպի են՝ 1) բաղադրյալ (տեղանուն-բառակապակցություններ), 2) բարդ, 3) ածանցավոր

և 4) պարզ, ընդ որում սրանց հարաբերությունը համապատասխան հասարակ անունների հետ այնպիսին է, ինչպես անձնանունների դեպքում։ Հարկավոր է նկատի ունենալ, որ բաղադրյալ տիպը կազմում է տեղանունների առանձնահատկությունը. անձնանուններին այն հատուկ չէ։

Բաղադրյալ տեղանունները հաճախ ունեն զուգահեռ բարդ տարատեսակներ՝ մասամբ ըստ էության՝ Ագռավուց քար—Ագռաւաքար, մասամբ ըստ գրության՝ Ձորոյ փոր—Ձորոփոր (Ձորափոր):

Բաղադրյալ տեղանունները կազմված են երեք հիմնական կաղապարային սխեմայով՝ 1) որոշիչ+որոշյալ (ածական+գոյական, 2) բացահայտիչ+բացահայտյալ (գոյական+գոյական) և 3) հատկացուցիչ+հատկացյալ (սեռական հոլովով գոյական+գոյական)՝ բաղադրիչների երկու հնարավոր շարադասությամբ։

Առաջին կաղապարի համար կարելի է նշել երկու դրսևորում. 1) մի դեպքում ածականն ունի տեղանվանական հատուկ գործածություն (հմմտ. մեծ, փոքր, վերին, ներքին, ստորին, միջին, միւս), այսինքն՝ ավելանում է արդեն գոյություն ունեցող տեղանվան վրա՝ հակադրվում իրական կամ ենթադրական մի այլ ածականի. հմմտ. Մեծ Հայք—Փոքր Հայք և Բարձր Հայք (չկա Ստորին Հայք). 2) մի այլ դեպքում ածականն ունի ոչ բուն-տեղանվանական գործածություն, այսինքն՝ կապակցությունն առնված է ամբողջությամբ, և կարող է դիտվել որպես շարահյուսական բարդություն և գրվել իբրև մեկ բառ. այսպիսիք են Բարձր բերդ (Բարձրբերդ), Երկայն ուղք (Երկայնուղք), Մեծ այր, Մեծ քար, Սուրբ խաչ, Սուրբ տիկին: Քանի որ պարզ չէ երկրորդ բաղադրիչների բնույթը, դժվար է որևէ բան ասել Մեծիրանք, Մեծկուանք տեղանունների մասին, որոնց երկրորդ բաղադրիչները որպես տեղանուններ չեն հանդիպում. կապ ունե՞ն արդյոք դրանք իրան (?) և կոյ, կու (<հ.-ե. *gʷōu- «կղկղանք, գոմաղբ») բառերի հետ։ Ինչ վերաբերում է Նորշիրական-ին, ապա այն իրան. Nō-Šērakān-ի (?) առաջին բաղադրիչի՝ հայերեն համարժեքով փոխարինված, այսինքն՝ հայերենի հետ բաղադրված կազմություն է։

Երկրորդ կաղապարով կազմված անունների երկրորդ բաղադրիչները սովորաբար տեղանվանական տերմիններ են, առաջինները՝ բուն տեղանուններ, որոնք կարող են գործածվել նաև ինքնուրույնաբար, առանց երկրորդ բաղադրիչների։ Իբրև երկրորդ բաղադրիչներ կարող են ծառայել և ծառայում են գերազանցապես բնիկ հնդեվրոպական ծագման բառեր՝ ակն, աղբիւր, այր, բլուր, գաւառ, գետ, դուռն, թումբ, լին, հող, ձոր, ջուր, սար, փոր (հմմտ. նաև ոչ հնդեվրոպական ագարակ, աշխարհ, աւան, գիւղ (?), ծով (?), հովիտ, քաղաք բառերը)՝ Գայլ գետ, Գետք աւան և այլն։

Յուրատեսակ միջին դիրք են գրավում առաջին և երկրորդ կաղապարների միջև Նոր գիւղ, Նոր քաղաք տիպի կազմությունները, որոնց բուն անվանական արժեք ունեցողը առաջին բաղադրիչն է։

Երրորդ կաղապարը ամենատարածվածն է. իբրև հատկացուցիչ կարող են հանդես գալ գոյականի ինչպես եզակի, այնպես էլ հոգնակի սեռականի ձևերը՝ և՛ առաջադաս, և՛ ետադաս գործածությամբ. որպես հատկացյալ ծառայում են գերազանցապես տեղանվանական այն տերմինները, որոնք թվարկվեցին երկրորդ կաղապարի կապակցությամբ. Ագռաւուց քար (Ագռաւաքար), Աղաւնոյ գետ, Առնոյ ոտն (Ոտն Առնոյ), Առուենից ձոր, Արեւու բլուր, Ար-

տոց գետ, Արքայից գաւառ, Աւետեաց բլուր, Աւետեաց խաչ, Գինոյ բլուր, Դարբնաց քար (Դարբնաքար), Դից մայրի, Կամրջաց ձոր (Կամրջաձոր), Հալուց թառ, Ձորոց գետ, Մայրոց գոմ, Մանկան գոմ, Տուարածոյ տափ (Տուարածատափ), Ցախաց քար, Ցլու գլուխ և այլն. ինչպես տեսնում ենք, այս կաղապարի իրացումների մեջ առկա են նաև փոխաբերական իմաստով կապակցություններ՝ Ցլու գլուխ, այլև Եղջիւր խոյի և այլն։ Այս կաղապարին են պատկանում նաև այն տեղանունները, որոնց մեջ հատկացյալը անձնանուն է՝ Բակուրի վանք, Քարն Բաղակայ, Որբոքոյ[2] քար, Ամբառայ բերդ և այլն։

Յուրատեսակ միջին դիրք են գրավում երկրորդ և երրորդ կաղապարների միջև այն բաղադրյալ տեղանունները, որոնց մեջ հատկացուցիչը փոխարինված է համապատասխան հարաբերական ածականով՝ Գինական գետ (հմմտ. Գինոյ բլուր), Իննակնեան տեղիք, Ոտական գետ և այլն։

Որպես խիստ հազվադեպ՝ չորրորդ կաղապար կարելի է առանձնացնել այն դեպքը, երբ տեղանունը նախադասության արժեք ունի՝ Ընծայեաց Աստուածածին. համառոտ կազմության ունի բարդության արժեք ստացած Էջմիածին տեղանունը։

Բարդ տեղանունները ներկայացված են երկու հիմնական տիպով՝ առանց -ա- հոդակապի և -ա- հոդակապով։

Առանց -ա- հոդակապի բարդությունները մասամբ արդեն քննված բաղադրյալ տեղանունների՝ միասնաբար ըմբռնվող ու գրվող տարատեսակներն են, որոնք բնորոշվում են նրանց հատուկ կաղապարներով, մասամբ իսկական բարդություններ, որոնք ունեն բարդությունների համար բնորոշ՝ բաղադրիչ հիմքերին հավելվող իմաստներ (հատկապես ուղղականաձև առաջին բաղադրիչի՝ սեռականի իմաստ, ամբողջ բաղադրության համար՝ «ունեցող» հավելյալ իմաստ և այլն). հմմտ. Աղաղբիւր, Աղբերականք, Աղոջրիկ (Աղւոյ ջրիկ), Անգեղտուն, Գայլաձոր (Գայլեձոր, Գլաձոր), Երկայնորդք, Ծիծռանքար, Հոնընկէց (Հոն-՝ հոների անունի՞ց), Որդանհայր և Այծպտկունք, Արագածոտն, Արծաթաղբերք, Գետեզր, Լուսակունք, Ծաղկոտն և այլն։

-ա- հոդակապով բարդությունները, ինչպես նշվել է, տարածվել են հնդեվրոպական ձայնավորների՝ շեշտահաջորդ դիրքերում թուլանալու և ընկնելու հետ կապված, այսինքն՝ բուն նախագրաբարյան փուլում։ Այսպիսով, օրինակ, սկզբնական *meg´a-ից ծագող մե՛ծա- հիմքը պահպանվել է երկու ձևով՝ շեշտահաջորդ դիրքում՝ մեծ ձևով՝ մե՛ծա->մեծ, շեշտանախորդ դիրքում՝ մեծա- ձևով՝ Մեծագետ, Մեծա-մաւր՝ Մաւր(ն) մեծ, սեռ. Մաւրի(ն) մեծի ձևերի կողքին։ Արխաիկ կազմության տեղանունների մեջ մենք ունենք նաև հիմքային այլ ձայնավորների պահպանման օրինակներ, ընդ որում այդ ձայնավորները դժվար է տարբերակել սեռականի համապատասխան կազմիչներից։ Հիմքային ձայնավորների անկումից հետո բարդությունների մեջ պահպանված ա ձայնավորը, ընկալվելով որպես սեռականի կազմիչից տարբեր տարր (հնդեվրոպական ա-ով հիմքերը եզակի սեռական-տրականում ստանում են ի հոլովիչը՝ փոխանակ սպասված ա-ի. հմմտ. մեծ, սեռ. մեծի, հգն. սեռ. մեծաց, մինչդեռ գայլ, սեռ. գայլոյ, հգն. սեռ. գայլոց)՝ տարածվել է նաև նախապես այլ հիմքերով առաջին բաղադրիչներ ունեցող բարդությունների վրա. այս պրոցեսի մասին են վկայում ստանվող ձևերը՝ Ձո-

[2] Հին անձնանուն որբ բառի՞ց։

րափոր (Ձորոյ փոր՝ հին -ո- հիմքակազմիչով) և Ձորափոր (ավելի նոր՝ համաբանությամբ տարածված -ա- հոդակապով), ձայնորդահանգ հիմքերի դեպքում հնարավոր է երեք տարբերակ՝ Անգեղտուն (Անգղ-ը կարող է լինել հին հիմքի ձև կամ ավելի նոր՝ սեռականի հոլովաձև), Սամեղարյուր (հին հիմքի ձևի և համաբանությամբ տարածված -ա- հոդակապի զուգորդում) և Սամղարյուր (ավելի նոր կազմություն՝ ուղղականաձև հիմքից՝ առանց -ա- հոդակապով)։ Երկինք ա հոդակապով բարդության օրինակներ՝ Աւծուաքեր, Բոլորաւար, Գայլակալ, Գայլատուն (բայց հմմտ. Գայլուձոր, Գլաձոր), Գեղարդաձոր, Գեղարդասար, Գիշերաձոր, Գոմաձոր, Եղնանիստ, Երիցաքար, Կամրջաձոր, Նորատուս, Ջերմաձոր և այլն։

Բուն հայկական ծագման տեղանունների մեջ ածանցավոր կազմությունները բաղադրյալ և բարդ տեղանունների համեմատությամբ ավելի փոքր տեղ են գրավում։ Մասնավորապես քիչ են բուն հայկական հիմքերով և հայկական ածանցներով կազմությունները։

Խիստ սակավաթիվ են նախածանցավոր կազմությունները. վկայված համեմատաբար հին տեղանունների մեջ կարելի է նշել, այն էլ պայմանականորեն, բուն հայկական հիմքով և ածանցով՝ Առբերան(ի)-ն, որ փաստորեն նախդրավոր կապակցության (առ բերան(ի)) միասնացումն է որպես տեղանուն և ոչ թե բուն նախածանցավոր կազմություն. Հ. Հյուբշմանը նույն Առբերան-ը համարում է հուն. Περιστόμιον բառից կաղապարված, որ անհավանական է, հիմքի համար հմմտ. Բերան (վայր Գեղարքունիքում) և Տուրուբերան (նահանգ)։ Ամբերդ (Անբերդ) անվան մեջ հիմքը սեմական է, իսկ Ամ-ի համար կարելի է անել երկու ենթադրություն. այն կամ բուն հայկական ծագում ունի՝ *sm̥- «համա-, միա-, միասին», կամ ծագում է պարթևական համապատասխան am-/an- նախածանցից։

Սակավաթիվ են նաև այն վերջածանցավոր կազմությունները, որոնք պարունակում են բուն հայկական (հնդեվրոպական) ծագման հիմքեր և ածանցներ։

Հնդեվրոպական ծագման ածանցներից առաջին հերթին պետք է հիշել -ի-ն (*-ii̯o-, *-ii̯ā), որ ընկալվում է նաև որպես համապատասխան սեռականի կազմիչ (վերջինս, թերևս, ծագում է այս ածանցից) և հանդիպում է ինչպես եզակի, այնպես էլ հոգնակի ձևով՝ 1) Արծաթի, Երերի, Երկայնարտի, այլև անծանոթ ծագման առաջին բաղադրիչով՝ Ըշկամայրի, Թաղամայրի, 2) Ականիք (հմմտ. Ականք), Հացիք, Նորիք, այլև Փլարիք:

Հավանական է, ինչպես նշվել է վաղնջահայերենի քննության կապակցությամբ, -ուտ տեղանվանական կազմիչի հնդեվրոպական ծագումը *-ōd-ից (հմմտ. հուն. -ώδης՝ λυσσώδης «կատաղի», νοσώδης «հիվանդոտ»)՝ Թեղուտ, Կաղնուտ, այլև Ընկուզուտ և այլն։ -ուտ-ի հետ թերևս կապված է նաև -ոտ-ը (*-od-?)՝ Կաշկառոտ։

Հազվադեպ, երբեմն եզակի գործածությամբ հանդիպում են նաև այլ վերջածանցներ՝ -ար (*-əro-? հմմտ. Երեւարք, եթե վերջինս կապ ունի երեւալ բայի և ոչ թե երիվար «լավ ձի» գոյականի հետ), -եալ (*-lo-. հմմտ. Երեւեալ)[3], -ոց (*-o-sk-. հմմտ. Մոխրոց) և այլն։

---

[3] Եթե Երեւեալ և Երեւար տեղանունները ծագում են երեւ- արմատից (հ.-ե. *prep-), ապա հնարավոր է ենթադրել Երեւան անվան մեջ ուրարտ. Erebuni-ի հետագա ձևափոխություն այդ արմատի ազդեցությամբ (ժողովրդական ստուգաբանություն)։

Տեղանվանակազմական արժեք ունի հոգնակիի -ք վերջավորությունը (հ.-ե. *-es), որ կարող է հանդես գալ ինչպես առանձին, այնպես էլ այլ կազմիչների հետ միասին՝ գերազանցապես հավաքական արժեքով։ Սրանց մեջ հատկապես պետք է նշել այն դեպքերը, երբ անցում է կատարվում ժողովրդանունից կամ ցեղանունից դեպի տեղանունը՝ Հայք «հայեր» > «Հայաստան», այսպես էլ Անձաւացիք (Անձեւացիք), Արբեղեանք, Բզնունիք, Խոռխոռունիք և այլն. -ունի-ք-ով ձևերը ամենայն հավանականությամբ գալիս են ուրարտերենից։ Հոգնակիաձև (-ք պարունակող) այլ տեղանուններից, բացի հիշատակված Ականիք, Հացիք ձևերից, հիշենք Գոմկունք (գոմիկ եզ. ձևից), Գոմք, Դալարինք, Դրունք, Եղրարք, Երեւարք, Թեղենիք, Ցրունք, այլև Կուտակք, Կտրանք և այլն։ Տեղանունների մեջ բավական շատ են -անք-ով ձևերը՝ Կարանք, Ցրանք և այլն. Ջ. Գրեպինը [Greppin, 1976, 61] հայ. -ան ածանցը (գողան-ք, կրան-ք և այլն) բխեցնում է հ.-ե. *-tenos-ի (հմմտ. հ. հնդկ. -tana-, լատ. -tinos) *-tnos ձևից, որ, ճիշտ լինելու դեպքում, կարող է հիմք տալ նաև տեղանունների մեկնաբանության համար։ -ք-ով տեղանունների տարբերակներն են իբրև հայցականաձև ըմբռնվող -ս-ով ձևերը (հմմտ. Բլուրս, այլև Ժողովս), որոնք երբեմն կարող են հանդիպել և՛ ք-ով և՛ -ս-ով. սրանք չպետք է շփոթել վրացական սեռականից (-isi) ծագող և հայերենում համապատասխանաբար -իս ձևով հանդես եկող տեղանունների հետ։ -իս-ով ձևերից Ագուլիս (հին Արգուլիս), Թմնիս ձևերի հիմքերի ծագումը հայտնի չէ (ժողովրդական ստուգաբանություն է Ագուլիս-ի՝ այգի+լի ստուգաբանությունը). անհնար չէ այս անունների հնդեվրոպական ծագումը՝ Արգուլիս < *arkeu-lijo- (*arku- արմատը հիմք է տվել բուսանունների համար՝ ռուս. ракита «ուռենու տեսակ», հուն. ἄρκευθος, լատ. ērcis «գինի») և Թմնիս < *temenijos (հ.-ե. *tem(ə)- «մթին», որտեղից մ. իռլ. temen, ռուս. темный)։

Բավական տարածված են իրանական և անհայտ ծագման որոշ ածանցներ, որոնք երբեմն հանդիպում են հնդեվրոպական հիմքերի հետ միասին։ Դրանցից առաջին հերթին հիշատակելի են փոքրացուցիչ -ակ, -իկ, -ուկ ածանցներով կազմությունները, որոնք զուգահեռներ ունեն անձնանունների համապատասխան փոքրացուցիչ-փաղաքշական ձևերի մեջ՝ Անդակ (?), Բրլրակ, Երնջակ (ըստ Օրբելյանի՝ կապված Երնջիկ կնոջ անվան հետ), Թեղեակ, Զորակ, Գետիկ, Մկնիկ, Ջերմուկ, այլև Բերդիկ, Գեղիկ (հմմտ. Գեղ), Բռաստիկ, Բրգնիկ, Դրախտիկ, Հայելեակ, Նախաջաւանիկ (հմմտ. Նախճաւան՝ Նախջաւան)։

Այժմ լայն տարածված -ական ածանցը (< պարթ. -(a)kān) բնիկ հայկական հիմքերի հետ խիստ հազվադեպ է հանդիպում՝ Գինական գետ, Ոստական գետ և Ողական, Ունեկան. այլ հիմքերով կազմություններից հմմտ. Ամրական, Բաղասական, Բիւրական, Կովսական, Փառականք և այլն։ Այսպես նաև -եան-ը (հմմտ. իրան. -ijān՝ ուրարտ. -iani-ի կողքին)՝ Արտաշիսեան, Արտաւանեան, Գաբեղեանք, Գազրիկեան, Հանդիսեանք և այլն։

Հայկական -աւոր-ը (հ.-ե. *-ā-bhor-՝ *bher- «բերել» արմատից) հանդիպում է ոչ բնիկ հիմքերի հետ, որ ենթադրել է տալիս պարթ. -vār վերջածանցի հետագա ձևափոխությունը՝ բաղարկությամբ (հմմտ. dat(a)vār > դատաւոր)՝ Երազգաւորք, Երաշխաւոր և այլն։

Այժմ նույնպես լայն տարածված՝ երկրանուններ կազմող -(ա)ստան ա-

*ծանցը, որ իրանական ծագում ունի, նախագրային շրջանում լայն տարածում չի ունեցել և բնիկ հայերեն հիմքերի վրա գրեթե չի դրվել. այսպես,* Հայք *անունը ակնհայտորեն ավելի հին է, քան* Հայաստանը: Գողթն-*ից ավելի ուշ կազմված է* Գողթնաստան:

*Թեև* -եստ-ը *հնդեվրոպական ծագման ածանց է (*-esti-), բայց* Առեստ, Տափեստ *տեղանունների մեջ նրա առկայությունը դժվար է բացատրել։*

*Նշանակալից թիվ են կազմում հնդեվրոպական և ոչ հնդեվրոպական ծագման այն տեղանունները, որոնք արմատական հասարակ անունների հատուկ գործածություններ են՝ առնված ինչպես եղակի, այնպես էլ հոգնակի ձևով։ Թվարկենք տեղանունների համար հիմք ծառայած հնդեվրոպական ծագման բառերը։ Սրանց մեջ ամենաստվար խումբը կազմում են աշխարհագրական օբյեկտների՝ բնակավայրերի, ֆիզիկական աշխարհի առարկաների, տվյալ վայրին բնորոշ, այդ վայրում աչքի ընկնող իրերի, շինությունների անվանումները՝* Անուղ *«ածուխ» (<*անձող. *հմմտ. հ.-ե.* *ang-?), Ակունք, Աղտք, Այրք, Բերան *(փոխաբերաբար՝ «գետաբերան»),* Բլուր, Բլուրս, Գոմք, Դրունք, Լին, Խաչ, Կամուրջ (*բբռ.* Կարմունջ), Կից *«կցման տեղ» (հ.-ե.?),* Հորք, Ձոր, Ձորք, Որթք, Ջուր *և այլն։ Երկրորդ խումբը կազմում են կենդանիների անունները՝ տրված կամ նմանությամբ, կամ դրանց առատության հիման վրա և այլն՝* Առեւծ, Արծիւ (Արծուիք), Արջք, Գայլ, Լոր, Ծիծառն *և այլն. ավելի բնորոշ է այդպիսի անունների՝ բարդությունների կազմում հանդես գալը, դրանց հատկացուցչային և բացահայտչային գործածությունը՝* Արծուաբեր (<Արծուաբերդ?), Արջաձոր (Արջուց ձոր), Գայլակալ *և այլն։ Երրորդ խումբը կազմում են անձերի հատուկ և հասարակ անունները՝ սովորաբար բնակավայրի հիմնադիրների կամ որևէ բանով այն հայտնի դարձնողների՝* Եղբարք, Երէց *և այլն։ Կան նաև այլ հատկանիշներով տրված անուններ՝* Աշունք, Ջարդ *և այլն. հնարավոր է նաև օբյեկտը բնորոշող ածականների գործածությունը տվյալ օբյեկտը նշանակող անվան հետ միասին կամ առանց դրա՝* Դեղձան գետ *(հմմտ. նաև* Կապոյտ, Կապոյտք, Կարմիր *և այլն)։*

## Բ. ԵԿԱՄՈՒՏ ԲԱՂԱԴՐԻՉՆԵՐ. ՇՓՈՒՄՆԵՐ ԵՎ ՓՈԽԱԶԴԵՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### 1. ՀԱՅԵՐԵՆԸ ԵՎ ԽՈՒՌԻ-ՈՒՐԱՐՏԱԿԱՆ ԼԵԶՈՒՆԵՐԸ

#### ա) ԽՈՒՌԻ-ՈՒՐԱՐՏԱԿԱՆ ԼԵԶՎԱԸՆՏԱՆԻՔԸ

*Լեզվաբանության մեջ այժմ տարածված է այն կարծիքը, որ խուռերենը և ուրարտերենը կազմում են մեկ լեզվաընտանիք [հմմտ. հատկապես* **Дьяконов,** 1960, 369—423, **Diakonoff,** 1971]: *Հնարավոր է, որ այդ ընտանիքը հնում ավելի բազմանդամ է եղել, բայց նրան պատկանող այլ լեզուների մասին մենք առայժմ շատ բան չգիտենք։ Օ. Մասոնը հակված է խուռական բարբառ համարելու Կիպրոսում հայտնաբերված և մ. թ. ա. II հազարամյակի 2-րդ կեսին պատկանող կիպրամինոյական այն արձանագրությունների լեզուն, որոնց գիրը ծագում է կրետե-մինոյական գծային վանկագրից* [**Masson,** *1972, 159—163]։ Կարծիք է հայտնվել նաև մ. թ. ա. VIII—II դդ. կիպրական վանկագիր արձանագրությունների՝ հունարենով չմեկնվող մասի*

լեզվի՝ էտեոկիպրերենի, խուռերենին և ուրարտերենին ցեղակից լինելու մասին [Джаукян, 1976, 155—163]:

Խուռա-ուրարտական լեզուները առաջավոր Ասիայի հին և ամենատարածված լեզուներից են։ Մ. թ. ա. III—I հազարամյակներում նրանք խոսվել են Հայկական բարձրավանդակի հարավային շրջաններում և հարևան վայրերում։ Խուռական բնակչությունը տարածված է եղել մասնավորապես հյուսիսային Միջագետքում, հյուսիսային Սիրիայում, Փոքր Ասիայի հարավ-արևելյան և արևելյան շրջաններում։ Ուրարտացիները բնակվել են խուռիներից ավելի հյուսիս ընկած շրջաններում, մասնավորապես Վանա լճի հարավ-արևելյան շրջանում, որտեղից նրանք հետո տարածվել են դեպի հյուսիս և արևելք։

Խուռերենը ներկայացված է մ. թ. ա. III հազարամյակի երկրորդ կեսից մինչև XII դ. ժամանակահատվածին, ուրարտերենը՝ մ. թ. ա. IX—VI դդ. պատկանող սեպագիր արձանագրություններով. սակայն ուրարտացիները ասուրական աղբյուրներում հիշատակվում են ուրարտերենի գրավոր ավանդման ժամանակաշրջանից շատ ավելի վաղ՝ մ. թ. ա. XIII դարից։

Խուռերենի և ուրարտերենի հետազոտողները այդ լեզուների միջև նշել են քերականական և բառային նշանակալի թվով զուգադիպումներ, որոնք մասամբ ընդհանուր են նաև էտեոկիպրերենի համար, որքանով այդ հնարավոր է պարզել։ Բառային զուգադիպումների քանակը մի քանի տասնյակի է հասնում՝ ընդգրկելով ինչպես անուններն ու բայերը, այնպես էլ ուրիշ խոսքի մասեր. 1) գոյական անուններ՝ խուռ. umini—ուրարտ. ebani «երկիր» (էտեոկիպր. umie), խուռ. ḫari—ուրարտ. ḫare «ճանապարհ», խուռ. pala—ուրարտ. pili «ջրանցք», խուռ. šala—ուրարտ. sila «դուստր», խուռ. šau̯ala—ուրարտ. šali «տարի», խուռ. taše—ուրարտ. taše «նվեր» (էտեոկիպր. taši?), խուռ. tini—ուրարտ. tini «անուն» և այլն 2) դերանուններ՝ խուռ. išaš—ուրարտ. ieše «ես», խուռ. ma/e—ուրարտ. mani «նրան», խուռ. uli—ուրարտ. uli(e) «ուրիշ», խուռ. au̯enne/a—ուրարտ. aini(ei) «ինչ-որ մեկը», խուռ. šue(ne)—ուրարտ. šuini «բոլոր, ամբողջ» և այլն. 3) բայեր՝ խուռ. ak-—ուրարտ. ag- «տանել, անցկացնել», խուռ. ar-—ուրարտ. ar- «տալ», խուռ. haš-—ուրարտ. ḫaš- «լսել», խուռ. man(n)-—ուրարտ. man- «լինել, գոյություն ունենալ», խուռ. tan- «անել»—ուրարտ. tan- «անել, շինել» և այլն. 4) մակբայներ և սպասարկու բառեր՝ խուռ. au̯eš—ուրարտ. aše «երբ», խուռ. ad/ti/e-—ուրարտ. edini «համար», խուռ. uja—ուրարտ. ui/e «ոչ, չ-» և այլն։

Այս բոլոր համեմատությունների հավանականությունը գրեթե կասկած չի հարուցում, բայց խուռա-ուրարտական ցեղակցության հարցը լուծելիս հարկավոր է նկատի ունենալ հետևյալ խանգարիչ հանգամանքները. 1) խուռերենը և ուրարտերենը ունեն կառուցվածքային նշանակալից տարբերություններ, և նրանց քերականական ձևերի հանգեցումը միևնույն աղբյուրներին ոչ միշտ է հավաստի, մանավանդ որ համապատասխան զուգահեռներ կան և այլ լեզուների հետ. 2) խուռերենի և ուրարտերենի՝ այժմ հայտնի թըվականների մեջ չկան համոզիչ զուգադրումներ. 3) պարզ չէ, թե բառային համեմատություններից որի՛ դեպքում մենք գործ ունենք ցեղակցային կապի վկայության և որի՛ դեպքում՝ փոխառության հետ. շատ պետք է լինեն հատկապես ուրարտերենի՝ խուռերենից, և երկու լեզուների՝ աքքադերենից կատարած փոխառությունները։

Զանազան կարծիքներ են հայտնվել խուռա-ուրարտական և այլ լեզվաընտանիքների փոխհարաբերության վերաբերյալ։ Եթե մի կողմ թողնենք ուրարտերենը անմիջականորեն հայերենի հիմքը համարելու (Հ. Սանդալչյան, Ա. Սաֆրաստյան և ուրիշներ) [Sandalgian, 1900. Safrastian, 1935], այլև «ասիանական վարկածի» սահմաններում դրանք հայերենի հետ մերձավոր ցեղակցությամբ կապելու (Գ. Ղափանցյան) անհաջող փորձերը, ապա հարկ կլինի կանգ առնել հետաքրքրություն ներկայացնող երկու այլ տեսակետի վրա։

1954 թ. Ի. Բրաունը և Գ. Ա. Կլիմովը [Браун—Климов, 1954] հանդես են գալիս ուրարտա-նախյան (ուրարտա-վեյնախյան) ցեղակցության գաղափարով, որ հետագայում փորձում է հիմնավորել է Յ. Դ. Դեշերիևը [Дешериев, 1963]։ 1967 թ. մենք, ի թիվս խուռա-ուրարտական, հնդեվրոպական, քարթվելական և արևմտակովկասյան ընդհանրությունների, քննել ենք նաև խուռա-ուրարտական և արևելակովկասյան (նախյան-դաղստանյան) ընդհանրությունները՝ հանգելով դրանց միջև քիչ թե շատ մերձավոր կապերի բացակայության գաղափարին [Джаукян, 1967a, 171] Սակայն որոշ ժամանակ անց Ի. Մ. Դյակոնովը [Дьяконов, 1978, 25—38] վերարծարծում է խուռա-ուրարտական և նախյան-դաղստանյան լեզուների ցեղակցության գաղափարը՝ բերելով նոր փաստեր և հենվելով վերջիններիս նախաձևերի վրա. նա նշում է ձևաբանական որոշ կազմիչներ և 52 բառային ընդհանրություն, որ նրա կարծիքով շուրջ չորս հարյուր խուռական և երկուսուկես հարյուր ուրարտական ճշգրտված իմաստով բառերի առկայության պայմաններում մեծ թիվ է կազմում։ Սակայն բերված նյութի անկողմնակալ քննությունը ցույց է տալիս, որ այն ակնհայտորեն անբավարար է արևելակովկասյան և խուռա-ուրարտական լեզուների մերձավոր ցեղակցության (մեկ լեզվաընտանիքի պատկանելու) հարցը լուծելու համար։

1) Ինքը Դյակոնովը կասկածելի է համարում խուռ., ուրարտ. ar- «տալ» և նախ. -aδλ·, ուրարտ. gazuli «լավ, գեղեցիկ» և նախ. γaz-, խուռ. kē, ուրարտ. gē «(ինչ-որ) տարողություն» և ինգուշ. բբբռ. gī «տաշտ», խուռ. kiši (kizi) «երեսուն» (ki «երեք» և ši «տասնյակ», թեև «տաս»՝ խուռ. eman) և դաղ. *c'V, խուռ. niši (nizi) և դաղ. χV-nč'- զուգահեռները.

2) Չի կարելի մերձավոր ցեղակցության ապացույց համարել ակնհայտորեն փոխառյալ բնույթի հետևյալ բառերը. ուրարտ. arṣibi «արծիվ» և չեչ., ինգուշ. b-arẑu, բացբ. arc'iv, լակ. b-arzu (arẑiw. հմմտ. հայ. arcui, arciw «արծիվ» < հ.-ե. *ṛg'ipii̯o-)[1]. խուռ. marianne «կառավար, երիտասարդ մարտիկ. ազնվական», ուրարտ. mari «բարձր պաշտոնյա, նշանավոր մարդ» և նախ. mayr (mari) «տղամարդ, այր. արի, քաջ»[2]. խուռ. ušḫu «արծաթ» և ավար. ʻarac, անդ. orsi, դարգ. arc, լակ. arcu, թաբաս., ագուլ. ars (վերա-

---

[1] Նախ.-դաղ. բառերը, ամենայն հավանականությամբ և ուրարտերեն բառը ծագում են հայերենից (ուրարտերենում՝ հայկական հին ցեղերի լեզվից). սա միակ լեզուն է, որտեղ հ.-ե. *g'-ն տալիս է ծ (ուրարտ. ṣ, բացը c'). Ճիշտ չէ նախ.-դաղ., ուրարտ. և քարթվել. բառերը բխեցնել իրանական աղբյուրից, որտեղ հ.-ե. *g'>z կամ d։

[2] Խուռերեն և ուրարտերեն բառերը ծագում են առաջավոր Ասիայի հնդկական հին ցեղերի լեզվից. հմմտ. հ. հնդկ. marya- «մարդ, երիտասարդ մարդ»<հ.-ե. *meri̯o-, որի *mьrii̯o- տարբերակից թերևս ծագում է հայ. մարի «էգ թռչուն» բառը։ Եթե նախյան բառերը սրանց հետ կապ ունեն, ապա փոխառություն են։

*կանգնվում են* (ḫ?)warc$^{w}$-, *(w)arcḫ$^{w}$- *արմատաձևերը*)[3]. *Հետաքրքրական է նշել, որ Ի. Մ. Դյակոնովը խուռ.* ḫabalgi-*ն* (*«երկաթ»*) *փոխառություն է համարում խեթ.* ḫabalki-*ից, սա էլ՝ արևելակովկասյան աղբյուրից, բայց զուգահեռն ընտանեկանորեն գտնում է ցեղակցական կապերն ապացուցող միավորների թվում։*

*3) Իմաստային և հնչյունական տեսակետից կասկածելի պետք է համարել նաև հետևյալ (հաճախ խուռ. և ուրարտ. բառերին իր իսկ Դյակոնովի վերագրած կասկածելի իմաստներով) զուգահեռները. ուրարտ.* aṭ- *«սկսվել (?)» և լեզգ.* at' *«գալ»* (*at'-), *ուրարտ.* erṣid- *«բնակեցնել»* (*և «վերադարձնել»?*) *և նախ.* *er̃-*«վերադարձնել»*[4], *խուռ., ուրարտ.* ḫari- *«ճանապարհ» և բեժիտ.* hino, *ցեզ., խվարշ., գունզ.* huni, *դարգ.* hune, *լակ.* ḫḫullu (*h$^{w}$a+n/l), *խուռ.* itt- *«գնալ» և նախ.* *idd- *«վազել»*[5], *խուռ.* kerae *«երկար, տևական» և ավար.* ḫeraw, *ախվախ.* wa-qḫar-oλda, *բագուլ.* wa-hə-ruw, *դարգ.* bu-qḫnaw, *լակ.* qḫunaw *«հին»* (*qhV+ *ձայնորդ*), *խուռ.* muši (mūzi) *«վեհ(?)» (աստվածների մակդիր) և նախ.* butt, *ավար.* mocc', *ախվախ., կարատ., չամալ.* bo(r)cc'o, *բագուլ.* bocc'w *և այլն* (*m$^{w}$a(r)ζ̌-) *«լուսին», ուրարտ.* šuri *«զենք»* (*հգն. «զինված ցեղ(?)»՝ կամայական մեկնություն*)[6] *և նախ.* sur *«զորք», ուրարտ.* ṣi- *«հոսել(?)» կամ «տեղալ(?)»,* ṣue *«ծով, լիճ» (նաև «ջուր»?) և դարգ.* bi-c'es, *լակ.* da-r-c'-an, *արչ.* ba-c'-as, *լեզգ.* c'-(ur-)-un (*c'w- *«հալչել»*)[7], *խուռ.* te-ae, *ուրարտ.* ṭe-ae *«շատ» և ինգուշ.* t'e *«վերև», ուրարտ.* teq- *«խոնարհվել» և նախ.* teq- *«սողալ» և այլն։*

*4) Խիստ սակավաթիվ են այն համեմատությունները, որոնք ընդգրկում են միաժամանակ խուռերենն ու ուրարտերենը և նախյան ու դաղստանյան լեզուները. սովորաբար համեմատվում են այդ զույգերի միայն մեկական եզրերը։*

*5) Ապացուցողական արժեքից զուրկ են մշակութային արժեք ունեցող և լեզվից լեզու անցնող (հաճախ Առաջավոր Ասիայում լայն տարածում ունեցող) բառերը, որոնք մասամբ բերվեցին՝ խուռ.* ḫabalgi- *«երկաթ, պողպատ» և նախ.-դաղ.* *ba-lḳi-l/n, *խուռ.* ḫinzurez̃ *և նախ.-դաղ.* *'inč- (*հմմտ. հայ.* խնձոր, *ասոր.* xazzūrā, *արամ.* xazzūr), *խուռ.* puruli *«տուն» և դաղ.* bV-ττλ'- (*եթե* b-*ն դասանիշ չէ*), *ուրարտ.* šuri *«զենք»* (*հմմտ. հայ.* սուր) *և նախ.* *sur *«զորք», խուռ.* ašḫu *«արծաթ» և դաղ.* *(ḫ?)warc$^{w}$-, *(w)arcḫ$^{w}$- (*հմմտ. հայ.* արծաթ)*։*

---

[3] *Դաղստանյան (և նրանց նման քարթվելական) ձևերը ակնհայտորեն ծագում են հ.-ե. աղբյուրից. ինչը Դյակոնովը գրում է. «Չի՞ կարելի արդյոք կապ տեսնել հ.-ե.* *rg'-*ի հետ. հմմտ. հայ.* արծաթ, *հուն.* ἄργυρος, *փռյուգ.* arz, *լատ.* argentum» [Дьяконов, 1978, 34, *ծան.* 23]։

[4] *Անհնար չէ կարծել, որ ուրարտ.* erṣi- *հիմքը ծագում է սեմական (աքկադ.) աղբյուրից (հմմտ. աքկադ.* 'rṣ (erṣetu, irṣitu) *«հող, երկիր, շրջան, հովիտ»), և այս դեպքում «վերադարձնել» իմաստ ենթադրելը կամայական է։*

[5] *Մինչդեռ մեր կողմից կատարված խուռ.* itt- *«գնալ» և հ.-ե.* *i-t-, *i-dh- *«գնալ» համեմատությունը ավելի հավանական է։*

[6] *Անհավանական չէ այս դեպքում էլ ուրարտ. բառը դիտել որպես փոխառություն հին հայկական ցեղերի լեզվից՝ հ.-ե.* *k'ōro- > *հայ.* *suro- (> սուր) > *ուրարտ.* šuri (šurə).

[7] *Հայ.* ծով-*ը համարվում է ենթաշերտային (սուբստրատային) բառ։ Եթե հայ. բառը ծագում է հ.-ե. աղբյուրից (հմմտ. իռլ.* go *«ծով»՝ ըստ* Stokes-*ի*, IF, *12, 191), ապա պետք է անել հակառակ ենթադրությունը։*

6) Ինչպես կտեսնենք, խուռա-ուրարտական մի շարք բառեր նույն հաջողությամբ, երբեմն էլ ավելի մեծ հավաստիությամբ կարելի է համեմատել հնդեվրոպական և նոստրատիկ այլ լեզվաընտանիքների համապատասխան բառերի ու արմատների հետ։ Եթե բացառենք փոխադարձ շփումների ու ենթաշերտային ազդեցության հետևանքով ծագած բառերն ու փոխառությունները, ապա մնացած զուգադիպումները լավագույն դեպքում կարող են դիտվել հեռավոր և ոչ մերձավոր ցեղակցության, թերևս նոստրատիկ ժառանգության արդյունք. այս դեպքում էլ պիտի ապացուցվի արևելակովկասյան լեզուների նոստրատիկ ծագումը[8]։

7) Գերազանցապես նոստրատիկ զուգահեռներ ունեն նաև այն քերականական կազմիչները, որոնք Դյակոնովը բերում է որպես խուռա-ուրարտական և նախյան-դաղստանյան լեզուների մերձավոր ցեղակցության ապացույց (հմմտ. էրգատիվ, բացառ.-գործ., ուղղորական հոլովների, հոգնակիի, ածականի կազմիչները և այլն)։

8) Խիստ մեծ են խուռա-ուրարտական և նախյան-դաղստանյան լեզուների կառուցվածքային-տիպաբանական տարբերությունները. մասնավորապես պետք է նշել դասի քերականական կարգի և նախամասնիկավորման բացակայությունը խուռերենում և ուրարտերենում՝ արևելակովկասյան լեզուների համար նրանց բնորոշ լինելու պայմաններում։ Ինչպես նշում է նաև Դյակոնովը, միանգամայն տարբեր են բայական կառուցվածքները։

Երկրորդ տեսակետը պատկանում է մեզ [Джаукян, 1963]. առաջ քաշելով հնդեվրոպական ու խուռա-ուրարտական լեզուների ցեղակցության գաղափարը՝ մենք հետագայում հատուկ աշխատություն ենք նվիրել խուռա-ուրարտական լեզուների՝ նոստրատիկ ընդհանրությանը պատկանելու հարցին [Джаукян, 1967б]: Նոստրատիկ լեզվաբանության գաղափարի առաջ քաշողը՝ Հ. Պեդերսենը, իր ժամանակին նկատել է խուռա-ուրարտական էրգատիվի -še և հնդեվրոպական ուղղական (հին «ակտիվ») հոլովի *-se/o վերջավորությունների համընկումը։ Հետագայում հետազոտողները նշում են նաև այլ զուգադիպումներ՝ առանց դրանց իրական բնույթը ճշգրտելու և առանց համակարգային համեմատության։ Մենք հանդես ենք եկել համակարգված և հնչյունական որոշակի օրինաչափությունների ենթարկված այնպիսի համեմատություններով, որոնք ընդգրկում են երկու լեզվաընտանիքների քերականական կառուցվածքի և բառապաշարի հիմնական բաղադրիչները՝ իրենց քանակով ու հավաստիությամբ մեծ չափով գերազանցելով խուռա-ուրարտական և արևելակովկասյան հավաստի համեմատությունները։

Ահավասիկ մի քանի օրինակ խուռա-ուրարտական և հնդեվրոպական այն զուգահեռներից, որոնք արտացոլում են գտել նաև հայերենում. խուռ., ուրարտ. ag- «տանել», «անցկացնել»—հ.-ե. *ag´- «քշել, տանել» (հայ. **ածեմ**). խուռ., ուրարտ. ar- «տալ»—հ.ե. *ar- «բաժին հանել, հատկացնել. յուրացնել, ստանալ» (հայ. **առնում**). ուրարտ. arniuše «գործ, արարմունք»—հ.-ե. *ar- «հարմարեցնել, կապել, սարքել» (հայ. **առնեմ, արարք**). ուրարտ. at- «ուտել»—հ.-ե. *ed- «ուտել» (հայ. **ուտեմ**). ուրարտ. bauše «խոսք,

---

[8] Հմմտ., օրինակ, Դյակոնովի ցուցակի և Իլիչ-Սվիտիչի նոստրատիկ բառարանի հետևյալ զուգադիպումները՝ ըստ համարների՝ 3 և 108, 12 և 211, 13 և 116 (216"), 20 և 138, 29 և 323 (326"), 44 և 66 և այլն. հմմտ. նաև մեր՝ հիշատակված աշխատության մեջ բերված օրինակները։

հրաման»—հ.-ե. *bhā «խոսել, ասել» (հայ. բամ, բան, բառ). ուրարտ. d- «անել»—հ.-ե. *dhē- «դնել, անել» (հայ. դ-ն-եմ, կատ. եդի). խուռ. inu- «ինչպես», anni «այն», -ni (որոշիչ հոդ), ուրարտ. ini «սա», -ni «նրան», -ni (որոշիչ հոդ)—հ.-ե. *e-no- «այն, այս» (հայ. նա, -ն). ուրարտ. kue/i «իսկ, նույնիսկ, նաև»—հ.-ե. *kᵘe «և, նաև» (հայ. -ք՝ ո-ք, ի-ք). խուռ., ուրարտ. man- «լինել. գոյություն ունենալ»—հ.-ե. *men- «մնալ» (հայ. մնամ). ուրարտ. -me «ինձ»—հ.-ե. *me (*eme—1-ին դեմքի անձնական դերանվան թեք հոլովների հիմքը. հայ. իմ, ինձ, ի-ս). ուրարտ. me/i «մի՛» —հ.-ե. *mē «մի՛» (հայ. մի՛). ուրարտ. pari/e «մինչև, դեպի»—հ.-ե. *per(i) «առաջ, այն կողմը» (նաև *peros, *pr̥- *prō և այլն. հայ. առ, հեռի). խուռ., ուրարտ. taše «նվեր»—հ.-ե. *dō- «տալ» (հայ. տամ, տուր-ք). խուռ., ուրարտ. uli «այլ, ուրիշ»—հ.-ե. *al-, *ol- (դերանվանական հիմք, որտեղից *alijos>հայ. այլ) և այլն։

Ինչպես նշվեց, երկու տեսակետները կարելի կլինի համաձայնեցնել, եթե խուռա-ուրարտական և արևելակովկասյան լեզուների ցեղակցության կողմնակիցները մերձավոր ցեղակցության գաղափարից անցնեն հեռավոր ցեղակցության գաղափարին և ապացուցեն արևելակովկասյան լեզուների պատկանելությունը նոստրատիկ ընդհանրությանը[9]։

### բ) ՀԱՅԵՐԵՆԸ ԵՎ ԽՈՒՌԵՐԵՆԸ

Խուռերենը, որ, ինչպես տեսանք, ներկայացված է մինչև մ. թ. ա. XII դ. հասնող գրավոր հուշարձաններով, դրանից հետո էլ մի քանի դար շարունակում է մնալ խոսակցական լեզու։ Խուռիների հիմնականում արամեալեզու դառնալու պրոցեսը ավարտվում է հավանաբար մ. թ. ա. I հազարամյակում։ Խուռերենը ծաղկում է ապրել և լայնորեն տարածվել հատկապես մ. թ. ա. XVI—XV դդ.՝ Միտանի պետության հզորության ժամանակաշրջանում. ինչպես հայտնի է, Միտանի պետության հիմնական բնակչությունը եղել են խուռիները։ Նրանց հետ միասին զգալի դեր է խաղացել նաև հնդկական տարրը, ինչպես երևում է խուռական արձանագրություններում պահպանված հնդկական բառերից, այդ թվում նաև անձնանուններից և դիցանուններից։ Միտանիին մ. թ. ա. 1400 թ. մոտերքը խորտակիչ հարված է հասցնում խեթական թագավոր Շուպիլուլիուման։ Թեև դրանից հետո միտանական պետությունը որոշ ժամանակ քարշ է տալիս իր գոյությունը, բայց նրա պատմական բախտը արդեն որոշված էր։

Խուռի-ն (Ḫurri ) խուռական ցեղերի ինքնանվանումն է, որ հանդիպում է խուռական տեքստերում և անցել է խեթերին, հրեաներին (ḥōrī, աստվածաշնչի հունարեն թարգմանության մեջ՝ χορaῖος), այլև եգիպտացիներին (ḫ'r՝ հավանաբար ḫuru- ձայնավորմամբ)։ Եթե հայ. խոռ «ժլատ» բառը իրոք կապված է խուռիների անվան հետ (Գ. Ղափանցյան), ապա այն խոսում է,

[9] Բացի նշված աշխատություններից, խուռա-ուրարտական լեզուների՝ նոստրատիկ ընդհանրությանը պատկանելու հարցը մենք քննել ենք դեռևս չտպագրված մի հոդվածում՝ հենվելով Իլ Իլ-Սվիտիչի նոստրատիկ բառարանի վրա և նշելով մի քանի տասնյակ ընդհանրություն։

հին հրեական ձևի հետ միասին, -o- ձայնավորման օգտին։ Ակկադացիներն օգտագործում են Միտանի (Mittani) անվանումը, թեև խուռիների ապրած երկիրը նշանակելու համար ավելի վաղ նրանք գործածել են նաև Շուբարտու (Šubartu, շումեր. Šubir), ավելի ուշ՝ Խանիգալբատ, Խալիգալբատ (Ḫanigalbat, Ḫaligalbat) անվանումները։ Կարծիք կա, որ Հերոդոտոսի հիշատակած մատիենները (Ματιηνοί) եղել են խուռիների մնացորդները [Diakonoff, 1971, 15]։

Հայերենի՝ խուռերենից կատարված փոխառությունները կարող էին լինել անմիջական, եթե նկատի առնենք խուռալեզու բնակչության հետ հայկական ցեղերի շփման հավանականությունը, և միջնորդված, մասնավորապես ուրարտերենի միջնորդությամբ։ Կան դեպքեր էլ, երբ հայերենի՝ խուռերենին մոտ բառի աղբյուրը կարող է լինել ուրարտերենը, եթե այդ բառը հավասարապես պատկանել է երկուսին էլ որպես ցեղակից լեզուների. սրանք էլ փոխառություններ են կատարել ոչ միայն իրարից, այլև միևնույն աղբյուրներից։ Եթե մատիենները իրոք խուռական ժողովուրդ են եղել՝ մասամբ կամ լիովին պահպանած իրենց լեզուն, և եթե պատմական Հայաստանի հարավային մասերում հայերի տարածման ժամանակ բնակվել են խուռալեզու ցեղեր, ապա հնարավոր է ենթադրել նաև խուռական ենթաշերտային ազդեցություն։

Իր «Հայոց լեզվի պատմության» մեջ Հ. Աճառյանը բավարարվում է ընդհանուր դիտողություններով և բերում տեղանուններ ու ցեղանուններից ծագած հասարակ անուններ, որոնք կարող են գալ խուռիներից՝ ուրարտացիների միջնորդությամբ, այլև Հայաստանի այլ ժողովուրդների լեզուներից։ Դրանցից ոչ մեկի խուռական կոնկրետ աղբյուրը չի մատնանշվում։

Ավելի հանգամանալից հետազոտություն է կատարել Գ. Ղափանցյանը։ Այդ հարցին նա նվիրել է հատուկ հոդված [Капанцян, 1951], որի ճըշգըրտված տարբերակը հետագայում տեղ է գտել նրա «Հայոց լեզվի պատմության» մեջ [Ղափանցյան, 1961, 104—130]։ Առաջինում նա բերում է 23 հասարակ և 16 հատուկ անուն, երկրորդում՝ 20 հասարակ և 14 հատուկ անուն, որոնց աղբյուրը կարող է խուռերենը լինել։ Դժբախտաբար, ինչպես այլ դեպքերում, Գ. Ղափանցյանը ելնում է հայերի ու խուռերի «ասիանիկ» ծագման սխալ վարկածից և օգտագործում անհամարժեք ու անհավաստի տըվյալներ։ Այսպես, 1) առանց որևէ լուրջ հիմքի նա խուռական բառերի հետ է համեմատում հնդեվրոպական ծագման մի շարք բառեր՝ գեղ, երկար, գինդ, թովել, նէր (ներ) «տագերկին», սէր, ընդ որում խուռական բառերի իմաստը, երբեմն էլ հնչյունական ձևը դրա համար բավարար հիմքեր չեն տալիս (gelti «բարեկեցություն, ավետիք», ḫindena «?», kiral «երկար». tiḫi- «բառ. գործ. բան», Nerḫulen—հատուկ անուն (?), šir- «նման լինել, համապատասխանել»). 2) խուռական բառերի համար կամայականորեն ենթադրում է հայերենին մոտ իմաստներ՝ ծառայ—խուռ. šarri «թագավոր» (< ակկադ. šarru), պաղատել—խուռ. pal- (մեկնաբանում է «խնդրել, ուզել», մինչդեռ ենթադրվել է «հարցնել». հետագայում ճշտված է «իմանալ») [Friedrich, HW, 1. Ergh., 1957, 36], խաշնղեղ —խուռ. Ḫašuntarḫi (դիցանուն՝ իբր բուսական աշխարհի հետ կապված), շոշոկել «կոտրատվել, նազ անել»—խուռ. Šauška (դիցուհու անուն, որ համապատասխանում է Իշտարին). կապակցելի են նաև կանճոխ (կանչուխ) «գավազան, ցուպ, ձող»—խուռ. kanzu-

(ինչ-որ բույս), տուղտ—խուռ. tuldi (ինչ-որ բույս?), ափափայ «դժվարամատույց վայր»—խուռ. papa «լեռ» համեմատությունները. 3) չի ճշտում խուռական բառերի բնիկ, թե փոխառյալ լինելը և տալիս է այնպիսի զուգահեռներ, որոնց դեպքում հայերենի աղբյուրը կարող է լինել նաև ուրիշ լեզվի բառ՝ աստել «ամուսնության համար նշանած ընտրել, աղջիկ ուզել» —խուռ. ašti- «կին. կին ամուսին» (ավելի վաղ նշել է, որ խուռերենի աղբյուրն էլ աքքադերենն է), փոխ, փոխեմ—խուռ. puḫ- (puḫizari, puḫugari և puziqarri «փոխ. փոխհատուցում»)[10], շանթ —խուռ. Šantaluggan (որպես դիցանուն հանդիպում է Բողազքյոյի և իրրև անձնանուն՝ Նուզիի տեքստերում. փոքրասիական Šanta դիցանվան և հայ. շանթ-ի հնարավոր կապը վաղուց է նշվել. խուռ. անունը ակնհայտորեն փոքրասիական ծագում ունի. -luggan բաղադրիչն էլ ծագում է լուվ. luk(k)- «լուսանալ» արմատից. հմմտ. lukkāi- «վառել»), ուրի-(որդ)—խուռ. ibri (iu̯ri, iru̯i) «թագավոր» (եթե ուրիորդ-ը իրոք մեկնաբանելի է «տիրորդի», ինչպես կարծում է Ղափանցյանը, ապա նրա ավելի հավանական աղբյուրը համապատասխան ուրարտ. euri «տեր» բառը կարող է լինել)։ Ինքը Ղափանցյանը «Հայոց լեզվի պատմության» մեջ տեղ չի տալիս ավելի վաղ կատարված մի շարք համեմատությունների, որոնք ակնհայտորեն սխալ են՝ պայիկ «առասպելական էակ»—խուռ. Pai- (հատուկ անունների բաղադրիչ), ծիրանի (իբր թե ոչ ծիրան բառից, այլ «ծիածան» իմաստով համանունից)—խուռ. Tiranna (շումեր. ծագման բառ, որ հանդիպում է լուռ. Ar-tiranna անձնանվան մեջ, ըստ Ղափանցյանի՝ Tiranna —աստվածացվող ծիածան), բաղայք «պատրվակ», բաղբաղել «կցկցել՝ սուտ պատճառներ հորինել» —խուռ. pali «կեղծ» (իրականում հայ. բառերը ծագում են բաղ- «կից» արմատից. հմմտ. բաղել «կցել»), պաշար—խուռ. paš(š)- «ուղարկել»։

Գ. Ղափանցյանի համեմատություններից անվերապահորեն ընդունելի կարելի է համարել երկուսը՝ խնձոր—խուռ. ḫinzuri (հավանաբար այստեղից են սոր. xazzūrā, արամ. xazzūr «խնձոր», որոնք Հ. Աճառյանը բխեցնում է հայերենից. փոխառյալ են նաև արևելակովկ. «խնձոր» նշանակող բառերը՝ միջնորդված կերպով), խոռ «ձլատ» և խուռ. ḫurri (խուռերի ցեղանունը)։ Փոխ-ը կարող է ծագած լինել ինչպես խուռական, այնպես էլ աքկադական աղբյուրից։ Քիչ թե շատ հավանական է աստել բայի բխեցումը խուռ. ašti «կին. կին ամուսին» բառից։ Տուղտ-ի աղբյուրը կարող է լինել խուռ. tuldi-ն, եթե Ղափանցյանի տված իմաստային մեկնաբանությունը հաստատվի։

Գ. Ղափանցյանը բերում է նաև հատուկ անուններ, որոնց աղբյուրը կարող է լինել խուռերենը։ Սրանցից քիչ թե շատ հավանական են՝ Ակիթ—խուռ. Akitta/i, Արտիթ—խուռ. Arditi (Artiidi, Ardiidi), Բութ—խուռ. Puttu (Puddu, Pata)[11]։ Մնացածներից Բազ-ը, Բազուկ-ը, Ձիկ-ը ամենայն

---

[10] Իր «Հայոց պատմության» մեջ [էջ 116] Գ. Ղափանցյանը գրում է. «Հ. Աճառյանը իր Արմ. բառ.-ում (VII, 189) հայոց բառը դնում է ասորերենից փոխառություն, բայց, ինչպես տեսնում ենք, այդ փոխառությունը, եթե իրոք եղել է, կատարվել է խուռիտ-արիմների միջոցով»։

[11] Ավելի քիչ հավանական է հայ. Բութ (Բուտ) անվան բխեցումը ասորերենից՝ «եկեղեցական տեսուչ» [Հ. Աճառյան, ՀԱնԲ, 1, 422]։

հավանականությամբ, իրանական ծագում ունեն [առաջին երկուսի մասին տե՛ս Ջահուկյան, 1981, 55, 58]. 2) Զազա, Խուշուշ անունները հանդիպում են ուշ շրջանում և չեն կարող ծագել խուռական աղբյուրից. 3) Դադէ (Դադիու) անվան համար կարելի է նշել խեթա-լուվական, փռյուգական և այլ, Դու-պու-ի համար՝ սեմական, փռյուգական, թրակյան զուգահեռներ. ամենից ա-վելի հավանական է Դադէ-ի ուրարտ. ծագումը՝ Dada(i). 4) Խութայ (Խու-թաս) անձնանունը ամենայն հավանականությամբ ծագում է Խութ տեղանու-նից [Աճառյան, ՀԱնԲ, 2, էջ 555]. 5) Հոյ անձնանվան համար, որ հաղոր-դում է Խորենացին, ավելի հավանական է հայկական ծագում (հմմտ. նոյ–ա-կապ). 6) Խնձոր, Խնձորիկ միջնադարյան անունները հայկական նորակազ-մություններ են. 7) հնչյունական առումով մերժելի է Համուժ անվան բխե-ցումը խուռ. Hambizi (Hamburzi) անունից, որ ինքն էլ ծագում է շումե-րերենից՝ թերևս աքքադական միջնորդությամբ։ Քիչ հավանական է Կուառ անձնանվան (ըստ Զենոբ Գլակի՝ հնդիկ Դեմետրե կամ Գիսանե իշխաննե-րից մեկի որդու անունը) համեմատությունը Նուզիի տեքստերում հան-դիպող Kuari անձնանվան հետ, որին Ղափանցյանը վերագրում է հնդկական ծագում. Հ. Աճառյանը համարում է Կուառս գյուղի անունից հորինված՝ այն ստուգաբանելու համար։

Հետագա հետազոտողներից Ջ. Գրեպինը [Greppin, 1979] Գ. Ղափանց-յանի համեմատություններից ընդունելի է համարում ութը՝ ատեմ, խնձոր, ներ, պաղ-ատ-եմ, պեղեմ (pali «ջրանցք»), փոքր, տուղտ, ծառայ, որոնց գումարում է Ի. Մ. Դյակոնովի տված թարմ-ա-ջուր—խուռ. tarmane «աղ-բյուր» և իր կողմից առաջարկված ազարակ (խուռ. au̯ari «դաշտ») և կատ (խուռ. kate «(հացա)հատիկ») համեմատությունները։ Սրանցից ներ, պաղ-ատ-եմ, ծառայ բառերի համեմատությունը, ինչպես նշվեց, անընդունելի է, եթե պեղեմ-ը իրոք կապ ունի pali «ջրանցք» բառի հետ, ապա այդ կա-պը գալիս է ուրարտ. ցեղակցից՝ pili-ից։ Թարմ-ը (հ.-ե. *tər-mo-՝ *ter-ից. հմմտ. հուն. τέρχνον «փափուկ») իմաստային առնչություն չունի tarmane (ուրարտերեն) բառի հետ, որին վերագրված «աղբյուր» իմաստը կասկածելի է։ Ազարակ-ի բխեցումը au̯ari-ից հնարավոր է հնչյունապես, բայց քիչ հա-վանական է, եթե նկատի առնենք ավելի հավանական զուգահեռների առկա-յությունը։ Կատ-ը հնչյունապես դժվար է բխեցնել խուռերեն բառից, մանա-վանդ որ անհնար չէ նրա հնդեվրոպական ծագումը [Ջահուկյան, ՊԲՀ, 1965, 1, 257—258]։ Ի. Մ. Դյակոնովը [ДЯМА, 1980, 359] խուռական ծագում է վերագրում հայ. ալխ «ցեղ, կարմ. ժողովուրդ» (*alla(e)ḫḫi «տիրային»՝ allae «տիրուհի», ուրարտ. «տեր»), ալախին (*alla(e)ḫḫini «տնտեսու-թյան կառավարիչ,-չուհի»), ծառայ (խուռ. sarri «կողոպուտ»), սակայն այս համեմատությունները իմաստային առումով անհամոզիչ են։

Օգտագործելով եղած հետազոտությունները և դրանց ավելացնելով մի քանի հավանական համեմատություն՝ խուռական ծագում կարելի է վերա-գրել հետևյալ հայերեն բառերին, ընդ որում որոշ դեպքերում հնարավոր է ենթադրել նաև զուգահեռ որևէ աղբյուր կամ ուրարտերենում չարձանագրված համարժեք.

1. անագ—խուռ. anagi «անագ» (հայերեն բառը սովորաբար համեմատ-վում է ասոր. anāku, շումեր. niggi, naggu բառերի հետ, բայց ամենից ա-վելի մոտ է խուռ. ձևին).

2. *աստ «կին» (աստեմ «ամուսնանալու համար նշանած ընտրել, կին ուզել», աստող «աղջիկ ուզող, նշանած, փեսացու»)—խուռ. aštl- «կին. կին ամուսին» (<աքքադ. (բաբել.) aššatu- «կին ամուսին»)—Ղափ.

3. խաղող — խուռ. ḫaluli «ինչ-որ պտուղ» (Նուզիի, Բողազքյոյի տեքստերում)[12].

4. խնձոր — ḫinzuri «խնձոր» — Ղափ.

5. խոռ «ժլատ» — ḫurri (խուռիների ինքնանվանումը) — Ղափ.

6. նուռն — խուռ. nuranti «նուռ» (< աքքադ. nurimdu' nurmû-ից). Հայերեն բառը կարող է փոխառություն լինել և սեմական աղբյուրից.

7. տուղտ «բույսի տեսակ՝ althaea pallida WK» — խուռ. tuldi «ինչ-որ բույս» — Ղափ.։

Ըստ իմաստային խմբերի խուռական փոխառությունները բաշխվում են հետևյալ կերպ.

2. Մարդկություն՝ սեռ, տարիք, ընտանեկան հարաբերություն. 2.33 աստեմ. 2.63 աստող.

5. Ուտելիք և խմելիք. 5.72 խնձոր. 5.76 խաղող. 5.771 նուռն.

8. Երկրագործություն, բուսականություն. 8.531 տուղտ.

9. Ֆիզիկական տարբեր գործողություններ. արհեստներ և արվեստներ, համապատասխան գործիքներ և նյութեր. 9.69 անագ.

Սրանց կարելի է ավելացնել կասկածելի երկու բառ, որոնց աղբյուրը կարող է անմիջապես սեմական լինել.

8. փոխ — խուռ. puḫ- (puḫizzari, puḫugari «փոխ(անակություն), փոխհատուցում» (< աքքադ. puḫḫu «փոխել». pūḫu «փոխանակություն») (?). Հայ. բառը ըստ Աճառյանի ծագում է աքքադերենից.

9. քաքար «մի տեսակ խմորեղեն, կարկանդակ»—խուռ. kakkari (հմմտ. աքքադ. kakkaru, արամ. kan/kkərā, եբր. kaggara). Հնարավոր է նաև հայ. բառի սեմական ծագումը. Հ. Աճառյանը (ՀԱԲ, 4², էջ 568) բխեցնում է ասոր. kakārīϑā «մեղրահաց» բառից։

Ինչպես տեսնում ենք, բերված բառերը գերազանցապես մշակութային բնույթի են։ Բացառություն են կազմում աստ-ել, խոռ և փոխ բառերը, որոնցից երկրորդը կազմված է խուռիների անունից՝ նրանց վերագրվող հատկության հիման վրա, իսկ առաջինի և երկրորդի խուռական ծագումը կասկածելի է. մանավանդ աստել բայ կազմելը *աստ-< ašti- գոյականի հիման վրա քիչ հավանական է։

Խուռ. tuni «հացի տեսակ» բառին նման է հայ. դոն (թոն) «հացի տեսակ՝ պաքսիմատ» բառը, բայց նախ՝ Հ. Աճառյանը հակված է հայ. բառին վերագրելու հ.-ե. ծագում (*dōnā «հացահատիկ», թեև պետք է լիներ *դուն), երկրորդ՝ tuni-ն կարող է ծագած լինել tuni «պատվանդան» բառից՝ «թխված tuni-ի ձևով» անցումով [հմմտ. Haas—Wilhelm, 1974] Իմաստային առումով անհավանական են ամբասիկ «մշկահոտ տանձ»—խուռ. ambašš!- «զբոսայգի (?)», անձող «կավատ»—խուռ. anz- «խոստանալ» (Ֆարբեր—Բուշ) կամ «խնդրել» (ըստ այլոց), ոսկի—խուռ. ušḫu- «արծաթ» համեմատությունները։

[12] Խուռ. բառի համար տե՛ս Haas—Wilhelm, 1974, 90։ Ուրարտերենում կա ḫalull/e բառ, բայց այն թարգմանվում է «ծես, արարողություն» [Меликишвили 1960, 396] կամ «հացկերույթ» [Дьяконов, 1963, 88]։

Կան դեպքեր էլ, երբ մենք գործ ունենք, այսպես կոչված, «տարրական ցեղակցության» բառերի հետ՝ բնաձայնություններ, մանկական բառեր և այլն, որոնց դեպքում զուգադիպումներն անխուսափելի են. Հմմտ. խութ., ammati «պապ, նախնի»—հայ. բրբռ. մա, մամ «մայր» (հ.-ե. *am(m)a, *ma, *mam(m)ā «մայր»), խութ. attai, ուրարտ. ate «հայր»—հայ. բրբռ. ատտա (Ակն) «մայր» (հ.-ե. *atta «հայր, մայր»), խութ. zizzija «կուրծք, ստինքներ, ծծեր»—հայ. ծիծ և այլն։

## գ) ՀԱՅԵՐԵՆԸ ԵՎ ՈՒՐԱՐՏԵՐԵՆԸ

Ինչպես նշվել է, ուրարտացիները ասորական աղբյուրներում հիշատակվում են դեռևս մ. թ. ա. XIII դ. սկսած։ Սակայն մինչև IX դ. 60-ական թվականները չի եղել կենտրոնացված ուրարտական պետություն, և ասուրները գործ են ունեցել ուրարտական ցեղամիությունների ու նրանց առաջնորդների հետ, որոնց նրանք թագավորներ են անվանում։ IX դ. հիշատակվում է միասնական պետության առաջին թագավորը՝ Արամուն, որի անունը հավանաբար պահպանվել է Խորենացու հիշատակած առասպելական Արամ թագավորի անվան մեջ։ VIII դարը ուրարտական պետության հզորության շրջանն է։ Այդ դարի վերջերին սկսվում է ուրարտական պետության աստիճանական անկման պրոցեսը, որ ավարտվում է VI դ. սկզբներին։ Սակայն Ուրարտու անվանումը դեռ երկար ժամանակ պահպանվում է ժողովուրդների հիշողության մեջ. պարսկական թագավոր Դարեհ I-ի (522—486 մ. թ. ա.) բեհիսթունյան նշանավոր արձանագրության մեջ, որ գրված է երեք լեզվով՝ հին պարսկերենով, էլամերենով և բաբելերենով, հին պարսկերենի Armina և էլամական Ḫarminuja անունների դիմաց բաբելական տեքստում հանդիպում է Uraštu անունը, որ ասուրերեն Urartu-ի բաբելական տարբերակն է։ Հավանալի է, որ ուրարտական պետության մեջ մեծ դեր են խաղացել հայկական ցեղերը, թերևս ներկայացուցիչ ունեցել ուրարտական գահի վրա (հմմտ. Erimena՝ Ուրարտուի վերջին թագավոր Ռուսայի հայրը) և Ուրարտական պետության կործանումից հետո դարձել երկրի առաջավոր ուժը։

Ուրարտացիների երկիրը ասուրները (ասորեստանցիները) սկզբնապես կոչել են Uruaṭri, հետագայում՝ Urarṭu։ Ուրարտացիներն իրենց կոչել են biainli, իրենց երկիրը՝ Biaina։ Այս անունը պահպանվել է Վան (սեռ. Վանայ) անվան մեջ։ Կարծիք կա, որ Urarṭu անունն էլ պահպանվել է Այրարատ անվան մեջ։

Ուրարտացիների դարավոր համակեցությունը հայերի հետ, ապա և նրանց հետ ձուլվելը պետք է հիմք տար նախ փոխառությունների և առշերտային (ադստրատային), ապա ենթաշերտային (սուբստրատային) ազդեցության համար։ Ուրարտական ազդեցությունն արտահայտվել է ոչ միայն բառապաշարի, այլև հայերենի հնչյունական և քերականական որոշ առանձնահատկությունների մեջ։ Ուրարտական ազդեցությանը կարելի է վերագրել քերականության մեջ եզակի թվում ի հոլովման և հոգնակի թվում հոլովման -ա-ով հիմքերի գերակշռությունը, -ն-ով հիմքերի առատությունը (հատկապես հնդեվրոպական ռնգային հիմքով զուգահեռներ չունեցող հայերեն հիմքերի զգալի թիվը), -ք հոգնակերտի կայունացումը և այլն, հնչյունաբանության մեջ՝ վերջընթեր շեշտը, որ հանգեցնում է վերջնավանկերի ձայնավոր-

ների թուլացմանը՝ փակ և անկման՝ բաց վանկերում, երկար և կարճ ձայնավորների տարբերության վերացումը, թերևս ձայնավորներից հետո յ-ի հավելումը բառավերջում (-այ, -ոյ, -է<-եյ) [Джаукян, 1963, 147], հարավարևելյան բարբառներում ճ-ի խ արտասանությունը և այլն։

Առանձնապես մեծ ազդեցություն թողած պիտի լինի ուրարտերենը հայերենի բառապաշարի վրա՝ ինչպես հասարակ անունների, այնպես էլ տեղանունների մեջ։ Ճիշտ է, պահպանված ուրարտական բառերի և հայերեն բառերի զուգադիպումները թվով մեծ չեն, բայց հնարավոր է որոշ եզրակացություններ անել նաև կողմնակի տվյալների հիման վրա։ Միաժամանակ հարկավոր է նկատի ունենալ հակառակ ազդեցության հնարավորությունը, որ հաճախ հաշվի չի առնվում հետազոտողների կողմից։

Ամենից ավելի հանգամանալից կերպով հայ-ուրարտական լեզվական առնչությունների հարցով զբաղվել է Գ. Ղափանցյանը։ Իր «Ուրարտուի պատմությունը» աշխատության մեջ [1940, 42—44] նա բերում է ուրարտերենի և հայերենի համար ընդհանուր 29 բառ, «Հայոց լեզվի պատմության» մեջ [1961, 131—139] որոշ կրճատումով և հավելումով՝ 20-ը. 1) աւելի, յաւելում— ուրարտ. abilid- «միացնել, ավելացնել». 2) բաբայ «բլուր»—ուրարտ. baba «լեռ, սար» (=խուռ. bap/b-), 3) աւան — ուրարտ. ebani «երկիր» (=խուռ. umini), 4) որխար «մարդիկ, ժողովուրդ» (ըստ Ղափանցյանի՝ «տերեր, մեծեր»), աւրիորդ «օրիորդ» (ըստ Ղափանցյանի՝ աւրի «տեր» + որդ(ի/)— ուրարտ. euri «տեր» (=խուռ. ibri, iu̯ri, iru̯i), 5) հատանեմ—ուրարտ. ḫat- (ḫatubi-ի «կտրեցի, բաժանեցի». Թարգմանությունը Ղափանցյանինն է. ուրիշ հետազոտողները թողնում են առանց մեկնության), 6) հուշեմ —ուրարտ. ḫuš- «գցել», 7) խրկիր — ուրարտ. qi(u)ra «հող» ( = խուռ. hab(u)r-), 8) պախրէ «տավար, արջառ, նախիր», պախրայ «գոմ» —ուրարտ. paḫini «արջառ, խոշոր եղջերավոր անասուն, եզ», 9) պեղեմ—ուրարտ. pili «ջրանցք» ( խուռ. pala՝ շումեր. pa-ի կողքին), 10) սան «կաթսա»—ուրարտ. šani «աման», 11) շերտ, շերտեմ—ուրարտ. šerd- «բաժանել, առանձնացնել» (ըստ Ղափանցյանի՝ «ճեղքել», ընդ որում նա հիշատակում է նաև արաբ. šarṭ «մարմինը շատտել», ասոր. šəraṭ «պատառոտել» բառերը), 12) յոյր «պարարտ» — ուրարտ. u̯irl «պարարտ» (?)» (մեկնությունը Ղափանցյանինն է. ընթերցումը և մեկնությունը կասկածելի են), 13) ուղի, ուղիղ —ուրարտ. ul- «գնալ, ուղևորվել» (չեզոք), «տանել» (ներգ.), 14) ուղխ—ուրարտ. ulḫ- (ըստ Ղափանցյանի՝ «ոռոգել, հոսեցնել». Մելիքիշվիլին կասկածով մեկնում է «հրամայել»), 15) տոլի «վայրի խաղող» —ուրարտ. uduli (Ղափանցյանը մեկնում է «խաղող», Մելիքիշվիլին և Դյակոնովը՝ «խաղողի այգի». Ղափանցյանը նշում է նաև արաբ. duali (sic) և ասերերեն toli «խաղող» զուգահեռները. ուրարտ. բառն ավանդված է uldi և մեկ անգամ՝ uduli ձևով. ինչպես կարծում է Մելիքիշվիլին, վերջինս թերևս uldi-ի բարբառային տարբերակն է), 16) ծով — ուրարտ. ṣue (ըստ Ղափանցյանի՝ «ծով», ըստ ուրիշների՝ «լիճ». ուրարտերենից փոխառյալ է համարում Ղափանցյանը նաև վրաց. Zγva «ծով» բառը), 17) ծէս —ուրարտ. ṣišuli (ըստ Ղափանցյանի՝ «ծես, արարողություն». ուրիշները չեն մեկնում. Ղափանցյանը նշում է նաև վրաց. çesi նույնիմաստ բառը՝ իբրև ուրարտ. բառին «ազգակից»), 18) բրբռ. որ(ո)փել «հեղուկը՝ գինին, ջուրը և այլն, բաժակով կամ գդալով վերցնել և նորից թափել ամանը» —ուրարտ. urb- «զոհել» (=խուռ. urb-ar- «զոհել». Մելիքիշվիլին տալիս է

urpu- ընթերցանությունը, որ ճիշտ չի համարում Դյակոնովը, УПД, էջ 92), 19) ուրու «տեսիլք, ցնորք»—ուրարտ. uruli (ըստ Ղափանցյանի՝ «հոգի». կասկածելի է), 20) զեղ-, զեւղ (զիւղ)—ուրարտ. ṷeli (ըստ Ղափանցյանի՝ «զորագունդ». Մելիքիշվիլին տալիս է «ժողով, հավաք» և «ջոկատ» իմաստները՝ երկուսն էլ կասկածով. Դյակոնովը տալիս է «ջոկատ, աշխարհազոր» իմաստները)։

«Ուրարտուի պատմության» մեջ Ղափանցյանը ավել է նաև այլ զուգահեռներ՝ ինքն, սեռ. ինքեան—ուրարտ. inukani «նույն այդ», աստեն —ուրարտ. ištini «այստեղ», անդեն —ուրարտ. edini «այնտեղից», մեհ-ութիւն «նվիրվածություն», մեհիմ «նվիրել» (ըստ Ղափանցյանի. Աճառյանը մեկնում է «գիտություն, ուսում» և «ներս սպրդել»), — ուրարտ. meše «տոպրք», շտոզանեմ «խառնել» և «բաժանել, քակել»—ուրարտ. suṭuq- (ըստ Ղափանցյանի՝ «ավերել (?)», ըստ ուրիշների՝ «պոկել, շորթել, հեռացնել»), արմ, արմատ, զ-արմ — ուրարտ. armuzi «սերունդ» (և «ընտանիք»), սար — ուրարտ. šeri «առանձին» (ըստ Ղափանցյանի՝ šeri «ավելցուկ» և šer «բարձր»). ողջ — ուրարտ. ulguše (ըստ Ղափանցյանի՝ «առողջություն». սակայն երկլեզվյան արձանագրության մեջ ulguše-ն համապատասխանում է աստր. balaṭu «կյանք» բառին), փխուր, փշուր—ուրարտ. ipḫ- «ջարդել, փշրել», կապին (մի չափ) —ուրարտ. kapi (մի չափ), պատ, փաթ —ուրարտ. patari «քաղաք», այլև Արա—ուրարտ. [d]Ar'a (դիցանուն), արածեմ, արաւատ—ուրարտ. [d]Araṣa (դիցանուն)։

Գ. Ղափանցյանի բերած փաստերը, մանավանդ տեղանունների բնագավառում, լրացվում են մի շարք հետազոտողների կողմից (Ի. Մ. Դյակոնով, Վ. Ի. Բեներյանու, Ս. Երեմյան, Գ. Ջահուկյան, Ն. Հարությունյան, Մ. Իսրայելյան, Ջ. Գրեպին, Հ. Ղարագյոզյան և ուրիշներ)։ Ավելի վաղ ուրարտական արձանագրություններում հիշատակված տեղանունների և հայ նախարարական տների ազգանունների նմանության մասին խոսել են Կ. Բասմաջյանը և ուրիշները։

Իր «Հայոց լեզվի պատմության» 1-ին մասում, որ լույս է տեսել Գ. Ղափանցյանի «Ուրարտուի պատմության» հետ միաժամանակ՝ 1940 թ., Հ. Աճառյանը բավարարվում է միայն ուրարտա-հայկական մի բառացանկով, որտեղ բերված բառերը «շատ նման են հնչում». 1) abilidu-—աւելի, յաւելուլ, 2) atu-—ուտել, 3) agu- «տանել»—ածել (*agō), 4) arniuše—առնել, 5) aliki—այլ ոք, 6) ḫarḫaršu- —խարխարել, 7) ieše—ես, 8) qiura «երկիր»—գաւառ, 9) paru-—բռնել, 10) susi «պարիսպ»(?)—սիւս «պարսպապատ որստեղի», 11) šia- —չուել, 12) teru-—դիր, 13) uli—այլ, 14) uliše—ուրիշ, 15) ui—ու։ Սակայն այս նմանությունները Աճառյանը պատահական է համարում և ավելի կարևոր գտնում հայերենի այն չստուգաբանված բառերի թվարկումը, որոնք կարող են ծագած լինել փոքրասիական ոչ հնդեվրոպական լեզուներից և ուրարտերենից։

Ի մի բերելով եղած տվյալները՝ կարելի է տարբերել, եթե բացառենք պատահական նմանությունները և «տարրական ցեղակցության» բառերը, զուգադիպումների երեք հիմնական խումբ՝ 1) հեռավոր ցեղակցության արդյունք հանդիսացող բառեր. դրանց թվին են պատկանում հատկապես դերանունների, մի շարք բայերի և սպասարկու բառերի այն զուգադիպումները, որոնք մասամբ բերվեցին մեր կողմից խուռա-ուրարտական լեզուների արտաքին

ցեղակցության հարցը քննելիս. դրանց թվին են պատկանում նաև Հ. Աճառյանի և Գ. Ղափանցյանի կողմից հիշատակված մի շարք «նմանություններ». 2) ուրարտերենից հայերենին անցած բառեր (փոխառություններ և ենթաշերտային բառեր). 3) հայերենից ուրարտերենին անցած բառեր։ Քննենք երկրորդ կարգի բառերը և մի քանի խոսք ասենք երրորդ կարգի զուգադիպումների մասին։ Նշենք, որ կան նաև միևնույն աղբյուրներից հայերենում և ուրարտերենում փոխառված, այլև ուրարտերենի միջնորդությամբ հայերենին անցած բառեր. վերջիններս կքննվեն ուրարտական փոխառությունների թվում։

Ամենից առաջ պարզենք ուրարտա-հայկական հնչյունական համապատասխանությունների ընդհանուր պատկերը ամենից ավելի հավաստի հատուկ և հասարակ անունների զուգադիպությունների հիման վրա.

| Ուրարտ. | Հայ. | Օրինակներ |
|---|---|---|
| b | բ | baba «լեռ» — բարայ «բլուր» |
| | | burgana — բուրգն |
| | | Abilianl — Աբեղեանք |
| | վ, ւ | Biaina — Վան, -այ |
| | | abili-d(u)- — աւելի, յաւելուլ |
| d | դ (?) | — |
| | տ | Diau(e)ḫl — Տայք |
| g | գ | Giarniani — Գառնի (հմմտ. և garini «բերդ, ամրոց») |
| | | burgana — բուրգն |
| p | փ | Şupani — Ծոփք |
| | պ | pill «ջրանցք» — պեղ-ել |
| | | Tušpa — Տոսպ, -այ |
| t | թ | tia(u)- «ասել, պատմել» — թուել «ասել, պատմել», թիւ ասել (?) |
| | տ | Alištu — Աղստեւ |
| k | ք | Ṷelikuni — Գեղա(ր)քունի |
| | կ | Uškiani — Ոսկեան-ք |
| ţ | տ | Ţuarașini — Տուարած(-ա-տափ) |
| | | Ţušpa — Տոսպ. -այ |
| | | ulţu — ուղտ, -ու |
| q | կ | qarbi/e «ժայռ(?)» — կարբի (?) |
| | | Qurlani (երկիր) — Կուր (գետ) |
| s | շ | Sirimutara — շիրիմ (?) |
| š | ս | šani «աման» — սան «կաթսա» |
| | | Alištu — Աղստեւ |
| | շ | Anaše — Այաշ(կերտ) (?) |
| ș | ծ | șue «լիճ» — ծով |
| | | Șupani — Ծոփ-ք |
| z | ձ | Alzini — Աղձնի-ք |
| | զ | Ḫuzana — Խոզան |
| ḫ | խ | ḫarḫar-š(u)- — խարխարել (խախխալել) |
| | | Ḫuzana — Խոզան |
| | | Aḫuriani — Ախուրեան |
| | հ | ḫubi — հովիտ |
| r | ր | Erimena — Արմեն (արմեն) |
| l | լ (?) | — |
| | ղ | Alia — Աղի(ովիտ) |

| 1 | 2 | 3 |
|---|---|---|
| | | Alištu – Աղստեւ |
| m | մ | Erimena – Արմեն (արմեն) |
| n | ն | šani «աման» — սան «կաթսա» |
| | | U̯elikuni — Գեղա(ր)քունի |
| | լ (?) | Anaša — Ալաշ(կերտ) |
| i | յ (?) | . . |
| l | ի́ | tla(u)- «ասել, պատմել» — թլու (առել) |
| | (ę)— | Alištu — *Աղիստ-եւ > Աղստեւ |
| | ե | pili «ջրանցք» — պեղել |
| u̯ | վ | U̯elikuni — Գեղա(ր)քունի |
| | -վ, ւ (?) | . . . |
| u | ու | burgana — բուրգն |
| | | Quri(ani) — Կուր |
| | | uiṭu — ուղտ |
| | (ę)_′ | Ṣupani — Ծոփ-ք |
| | ո | Ṭušpa — Տոսպ, -այ |
| a | ա | baba «լեռ» — բարբայ «բլուր» |
| | | abili-d(u)- — յաւելուլ |
| e | ե | U̯elikuni — Գեղա(ր)քունի |
| | ա | Erimana — Արմեն (արմեն) (?) |

*Աղյուսակի հիման վրա կարելի է անել մի քանի եզրակացություն. 1) ուրարտական ձայնեղներն արտացոլված են հիմնականում որպես ձայնեղներ. Հնարավոր է, որ նրանց հատուկ է եղել (ոչ սկզբնադիրքո՞ւմ) շփական* β, δ, γ *արտասանությունը, որ հիմք է տվել* b*-ի երկակի արտացոլման և գրության մեջ* b*-ի և* u̯ *-ի խառնման համար. 2) սովորական (շնչե՞ղ) խուլերն արտացոլված են հիմնականում որպես շնչեղ խուլեր,* Š*-ից հետո գտնըված դիրքում՝ որպես սովորական խուլեր. Հավանաբար որոշ տարածքներում եղել է քմայնացում. Հմմտ.* Giarniani—Գառնի *(թերևս և* Ziuquni — Ձուկն). *3)* ṭ, q*-ն արտացոլված են որպես սովորական (ոչ շնչեղ) խուլեր քանի որ* p̣*-ի համար հատուկ նշան չի եղել, այն արտահայտվել է* p*-ով. 4) ուրարտ.* š *-ն և* s*-ն հավանաբար արտահայտել են համապատասխանաբար* ս *և* շ *հնչյունները, թեև կան հակառակ արտացոլման փաստեր. այս առումով է ենթադրվել, որ նրանց տարբերությունը եղել է ոչ թե շչականի և սուլականի, այլ ուրիշ կարգի. 5)* ṣ*-ն և* z*-ն արտահայտել են ամենից առաջ կիսաշփականներ՝ հավանաբար սուլական բնույթի՝* ծ, ձ. *բուն ուրարտական բառերում* ճ, *ջ-ի առկայությունը հավաստիորեն չի պարզված.* Zabaḫe—Ջաւախ-f *համապատասխանությունը խոսում է լոկ այն մասին, որ ուրարտացիները կարող էին ջ-ն արտացոլել* z*-ով, բայց ոչ ուրարտերենում ջ-ի գոյության մասին.* z*-ն կարող էր արտահայտել նաև* զ *շփականը. 6)* ḫ*-ն արտահայտել է հիմնականում* խ. ḫubi—Խովիտ *համապատասխանությունը կարող է ուղղակի ուրարտա-հայկական չլինել (հմմտ. հայ. հավելուրդային* -տ-*ն, որի բնույթը պարզ չէ). 7)* r, l, m, n *ձայնորդներն արտացոլված են հիմնականում որպես* ր, ղ, մ, ն. *Հնարավոր է* l*-ի բառասկզբնային* լ *արտացոլումը, բայց հավաստի օրինակներ չկան. 8) բառասկզբի* u̯*-ն արտա-*

*ցոլված է որպես գ. այլ դիրքերում թերևս արտացոլումն այնպիսին է, ինչպես հ.-ե. ծագման բառերում. սա խոսում է* ṷ>գ *հնչյունափոխության՝ ուշ կատարվելու մասին. 9)* a, e, i, u *ձայնավորները արտացոլված են հիմնականում նույնությամբ. թերևս եղել է բաց* e (əe?) *որի պատճառով առկա է* Erimena—**Արմեն** *համապատասխանությունը. պետք է նկատի ունենալ, որ ըստ գրության առանձնահատկությունների* o-*ն արտահայտվել է* u-*ով,* e-*ն՝ երբեմն* i-*ով։*

*Այսպիսով, քիչ թե շատ հավաստի են հայերենի՝ ուրարտերենից կատարված հետևյալ փոխառությունները. 1)* **բաբայ** *«բլուր»—ուրարտ.* baba *«լեռ» 2)* **բուրգն**—burgana *«բուրգ» բերդ, ամրոց»*[13], *3)* **խարխարեմ** (**խարխալեմ**) *«քանդել, խախտել»—ուրարտ.* ḫarḫar-š(-u)· *«քանդել», 4)* **ծով**—*ուրարտ.* ṣue*«լիճ», 5)* **սան** *«կաթսա»—ուրարտ.* šani *«աման» (<աքքադ.). 6) ուղտ,-ու —ուրարտ.* ulṭu *«ուղտ» (<աքքադ.)։*

*Հայերենի ուրարտական փոխառությունները ըստ իմաստային խմբերի բաշխվում են հետևյալ կերպ.*

1. **Ֆիզիկական աշխարհ.** *1.22 բաբայ 1.32 ծով.*

3. **Կենդանիներ.** *3.78 ուղտ.*

5. **Ուտելիք և խմելիք. կերակրի պատրաստում և ամանեղեն.** *5. 27 սան.*

11. **Ունեցվածք.** *11.27 խարխարեմ (խարխալեմ).*

20. **Ռազմական գործ.** *20.36 բուրգն։*

*Եթե ա) ուրարտական* t-*ն և* k-*ն կարող էին արտացոլվել նաև որպես խուլեր՝* **տ** *և* **կ**, *բ) ուրարտական բարբառներում առկա է եղել* r/l *հերթագայությունը կամ ըստ հայերի արտասանական առանձնահատկությունների* r-*ն և* l-*ն ընկալվել են ոչ այնքան հստակ տարբերակված, գ) ուրարտ.* š-*ն գոնե արտացոլվել է (որոշ տարածքներում) ինչպես շ, ապա վերևում բերվածներին կարելի է ավելացնել հետևյալ բառերը ևս. 7)* **խաղաղ**—*ուրարտ.* ḫarare *«խաղաղություն, բարօրություն», 8)* **կամ** *«կենալ, կանգնել, երևան գալ»*—ka- *«կանգնել, երևալ»*[14], *9)* **կորդ** *«խոպան, անմշակ»—ուրարտ.* quldi/e(ni) *«կորդ, խոպան, անմշակ, ամայի», 10)* **ուրիշ** (**որիշ**)—*ուրարտ.* uliše *(էրգատիվ հոլով) «ուրիշ»։ Միաժամանակ, եթե ուրարտ. ներքոհիշյալ բառերի ընթերցումը ճիշտ է, և եթե որոշ տարածքներում ուրարտական ձայնեղները հայերենում արտացոլվել են ինչպես խուլեր, ապա հնարավոր է հայ.* **տոլի** *(տոլլի) «խաղող» բառի ծագումը ուրարտ.* uduli (uldi) *«խաղողի այգի» («խաղող»?) բառից։ Այս նույն պայմաններում հայ.* **տի-ն** (**տիկին, տի-եզերք, տի-այր>տէր**) *կարող է ծագած լինել ոչ թե հ.-ե.* *dei-*ից (հմմտ. լիտվ.* didis *«մեծ»), այլ ուրարտ.* ṭeae *«մեծ» բառից։*

*Կան հայ-ուրարտական բառային մի շարք զուգադիպումներ, որոնց դեպքում դժվար է որոշակի ընտրություն կատարել հայերեն (երբեմն էլ ուրարտերեն) բառերի բնիկ, թե փոխառյալ լինելու հնարավոր ենթադրությունների միջև. այս դեպքերում հարցը կարելի է լուծել միայն կողմնակի փաստերի և դատողությունների հիման վրա, այն էլ ոչ բոլոր դեպքերում լիովին համոզ-*

---

[13] *Հ. Աճառյանը [ՀԱԲ, 1² 488] բխեցնում է ասորերենից* (būrgā *«աշտարակ»՝ հ.-ե. ագըյուրի՞ց), բայց ուրարտական ծագման օգտին է խոսում* **-ն**-*ն (<*-ni*)։ Ուրարտ. բառը նշանակել է «բուրգ, ամրոց». հմմտ.* burganani šidišṭuni *«*burganani *կառուցեց» արտահայտությունը. համապատասխան* burgala-(ni)-*ն նշանակում է «օժանդակ զորք (?)»։*

[14] *Եթե ճիշտ է տրված* ka-*ի իմաստը [հմմտ.* **Дьяконов,** 1963, 89]։

ված լինելով այդ լուծման՝ բացարձակ ճշգրտության մեջ. 1) աճել, յաճյում բառերը ակնհայտ զուգահեռներ ունեն մի կողմից՝ հուն. ὀφέλλω «մեծացնել, ավելացնել» (*obhel-) և մյուս կողմից ուրարտ. abili-d(u)- «միացնել, ավելացնել» բառերի մեջ. Նկատի ունենալով, որ նախ՝ հայերենը և հունարենը ունեն համանմանական աճել, աճեմ և հուն. ὀφέλλω «ավելել» զուգահեռները, երկրորդ՝ ուրարտերեն abili-d(u)- բայաձևը կազմված է abili («ավելին»?)+d(u)- («անել») բաղադրիչներից, որ ցույց է տալիս բայական կազմության երկրորդական բնույթը (բառացի՝ «ավելի անել»?) և երրորդ՝ ուրարտական բառը զուգահեռ չունի խուռիերենում,—կարելի է ենթադրել, որ հայ. աճել արմատը բնիկ է (*obhel-՝ *o- հավելված+*bhel- «ուռչել, բխել»?), և ուրարտ. abili-ն փոխառություն է հայերենից. 2) թիւ, թուեմ «ասել, պատմել», թուիմ «համարվել, կարծվել» բառերի համար նշվում են մի կողմից՝ հ. հնդ. taviti «ուժեղ է», tavas- «ուժեղ, ուժ», ավեստ. tavah- «ուժ, զորություն», հուն. ταῦς «մեծ, շատ» (ըստ Հեսյքիոսի), մյուս կողմից՝ ուրարտ. atibi «տասը հազար» զուգահեռները. ամենից ավելի նպատակահարմար է ուրարտ. բառը դիտել որպես հեռավոր ցեղակցության (նոստրատիկ) ժառանգություն (հմմտ. հ.-ե. *tēu-, որտեղից թոխ. B tumаn «տասը հազար», ռուս. тысяча, գերմ. tausend «հազար»). այս առումով թերևս կապ ունեն նաև հայ. թիւ ասել «առանց եղանակի կարդալ», թուել «ասել, պատմել» և ուրարտ. tia(u)- «ասել», tini «անուն», այլև խուռ. tiwi- «բառ. բան» բառերը (հմմտ. նաև խեթ. te- «ասել» և ավեստ. day- «ասել, խոսել»?). Թերևս կարելի է ենթադրել հայերեն և ուրարտերեն բառերի հետագա բաղարկում (խառնուրդ). 3) ծառ բառը համեմատվում է մի կողմից՝ հուն. γέρρα «ճիպոտ» (ըստ Հեսյքիոսի), γέρσανα «ցախ» (ըստ Հեսյքիոսի), հ. սկանդ. kjarr «թուփ» (հ.-ե. *g'ers- «ծռել. ճյուղ, թուփ»), մյուս կողմից՝ ուրարտ. zari/e (ṣari/e) «(պտղատու) այգի» բառի հետ. Նկատի ունենալով հայ. և ուրարտ. բառերի իմաստային տարբերությունը՝ պետք է կամ նմանությունը համարել պատահական, կամ ենթադրել հայ. բառի բաղարկում (կոնտամինացիա) ուրարտերեն բառի հետ. 4) շերտ, շերտել բառերը կարելի է մի կողմից բխեցնել հ.-ե. *skher-d-ից (*sker- «կտրել, հատել». շ-ի համար հմմտ. շեղ<*skhel-՝ *skel-ից «կտրել, հատել»), մյուս կողմից կապել ուրարտ. šeri «առանձին», šer(i)-d(u-) «առանձնացնել, հեռացնել» բառերի հետ. սակայն նախ՝ ուրարտ. š-ն հավանաբար արտասանվել է ս (հմմտ. ուրարտ. Tušpa—հայ. Տոսպ), երկրորդ՝ šer(i)-d(u) —բայը կազմված է šeri «առանձին»+d(u)- «անել» բաղադրիչներից, ուստի նմանությունը պետք է պատահական համարել. 5) ուղի բառը համեմատվում է մի կողմից՝ հուն. αὐλός «սրինգ. խողովակ», αὐλών «կիրճ. հովիտ. փոս. ջրանցք. նեղուց», ռուս. улица «փողոց» (հ.-ե. *au-lo-s «խողովակ, երկարավուն խոռոչ»), մյուս կողմից՝ ուրարտ. ul(a)- «գնալ», ul(u)- «տանել», թերևս նաև ulušt- «առաջնորդել» բառերի հետ. նմանությունը պետք է պատահական համարել, մանավանդ եթե նկատի առնենք հայերենի սկզբնական ոչ բայական (անվանական) արժեքը. ուղարկել և յղել (*յ-ուղել) բայերն ակնհայտորեն երկրորդական բնույթի են. Իհարկե, կարելի է ենթադրել հայերեն ուղի-ի բաղարկում (կոնտամինացիա) ուրարտերեն բառերի հետ՝ իմաստային մերձեցումով. 6) սուր «սուր, հատու. սուր, սուսեր. բահի բերան» բառը համեմատվում է մի կողմից՝ մ.վ. գերմ. hār «հեսան», մ. ն. գերմ. haren «սրել, սուր, լինել» (սուր, -ոյ< *k'ō-ro- և

hār < *kē-r-` *k'ē(i)- «սրել» արմատից, որից նաև սայր և սլաք), մյուս կողմից՝ ուրարտ. šurl/e «զենք» բառերի հետ. սակայն հայ. բառը ունի ուրարտ. բառից տարբեր իմաստային շրջանակ, հ.-ե. միևնույն արմատից ծագող հիմքային տարբերակներ (սայր, սլաք) և հ.-ե. այլ լեզուներում անընդհատ զուգահեռներ, ուստի և սրա բնիկ լինելը գրեթե անկասկած է. եթե ուրարտ. բառի հոգնակիին ճիշտ է վերագրվում «զինված ուժեր» իմաստը (ըստ Դյակոնովի), ապա այն ավելի է հեռանում հայ. բառի իմաստից. այս պայմաններում կամ նմանությունը պետք է դիտել որպես պատահական, կամ ուրարտ. բառը ծագած համարել հայկական աղբյուրից. վերջին դեպքում պետք է բացառել խուռ. šau- «զենք» բառի կապը ուրարտ. šurl/e-ի հետ. 7) ցեղ բառը մի կողմից՝ կապված է համարվում ցելում «ճեղքել» բայի հետ (հ.-ե. *skel- «կտրել»), մյուս կողմից՝ հիշեցնում է ուրարտ. zil(i)bi «սերմ, սերունդ» բառը. եթե նկատի առնենք հնչյունական տարբերությունը, և եթե ուրարտ. բառը հայերենից չի ծագում, նմանությունը պետք է պատահական համարել։

Որոշ դեպքերում, թերևս, պետք է ենթադրել հայերենի և ուրարտերենի՝ ոչ թե իրարից, այլ մի երրորդ աղբյուրից կատարված փոխառություններ. ա) հայերեն կապիճ և ուրարտ. kapi բառերը, որոնք նշանակում են սորուն մարմինների (հատիկների) մի չափ, ծագում են իրանական աղբյուրից, որտեղից նաև հուն. καπίθη, արաբ. qafīz, վրաց. ķabiçi (kabiçl) համիմատ բառերը[15]. բ) քիչ հնարավոր է, որ հայ. հովիտ-ը անմիջական փոխառություն լինի ուրարտ. ḫubi «հովիտ» («շրջան (?)») բառից, և պետք է ենթադրել մի երրորդ աղբյուր. գ) ամենայն հավանականությամբ իրար հետ կապված են ուրարտ. lpḫ(u)- «ջարդել, փշրել»—հայ. փուխր—վրաց. pxvna «փշրել», pxvieri «փխրուն» և ուրարտ. ni-psi-d(u)- «կտրել (?)» (եթե ni-ն կարելի է առանձնացնել)—հայ. փշուր—վրաց. pšvna «ծեծել, կալսել», pšvneta «տրորել», ադըղ. pšaxwe «ավազ» բառերը, բայց կապի բնույթը պարզ չէ։

Առանձնապես պետք է նշել հնդիրանական ցեղերի ազդեցությունը ուրարտերենի վրա։ Վերևում խոսվեց ուրարտ. kapi բառի իրանական ծագման մասին։ Եթե ճիշտ է Ի. Մ. Դյակոնովի կողմից ուրարտ. mari բառի «ազնվական, տոհմիկ» (знатный) մեկնությունը [Дьяконов, 1963, 89] և համեմատությունը խուռ. marjannu «երիտասարդ մարտիկ, կառավար. ազնվական. տոհմիկ» բառի հետ, ապա ուրարտ. բառը ևս ծագում է հին հնդկերենից (հմմտ. marya- «տղամարդ, երիտասարդ մարդ») անմիջաբար կամ, թերևս, խուռերենի միջնորդությամբ։ Անհնար չէ, որ Ardini քաղաքանվան, Ardiunak տեղանվան, Šelardi դիցանվան, Şinuardi դիցուհու անվան մեջ հետազոտողների կողմից առանձնացվող ardi-ն իրոք նշանակի «պատված» [Джаукян, 1963, 36] և ոչ թե բնիկ ուրարտական լինի, այլ գա սկյութների լեզվից. հմմտ. ալան. ард «պատված» (հ.-ե. *art-, *ṛt-) [Абаев, 1958, 61]։

Արիական տարրեր պետք է լինեն նաև ուրարտական աղբյուրներում ավանդված հատուկ անունների մեջ. հմմտ. թերևս Aria շրջանի (Սևանա լճից արևելք), անունը Kuštašpili անձնանունը (Qumaḫa երկրի թագավորի անունը. հմմտ. պրսկ. Guštāsp < Wištāspa, թեև w>g բարբառային անցման այդքան վաղ վկայությունը համեմատությունը դարձնում է կասկածելի)[16]։

---

15 Հմմտ. սվան. kpč (kapīč < kapikä [տե՛ս Боголюбов, 1957, 106—108]։

16 Այս նույն ձևով ուրարտ. šali և խուռ. šaṷala «տարի» բառերը մոտ են հնչում պրսկ.

Ուրարտերենի՝ r-ով բառ չսկսելու պայմաններում պետք է կարծել, որ Rusa թագավորի անունը բուն ուրարտական ծագում չունի. և թերևս գալիս է իրան. աղբյուրից՝ rōšan- «լուսավոր» հիմքից (հ.-ե. *leuk-, որտեղից հայ. լոյս)՝ -n-ի գիտակցմամբ որպես -n(i) հոդ (հմմտ. ուրր. Rusani հոդավոր ձևը՝ անհոդ Rusa և էրգատիվ Rusaše ձևերի կողքին). Հավանաբար իրանական ծագում ունի նաև Batu անձնանունը (հմմտ. ավեստ. Wāta «հողմի ոգի>աստված»), թեև w->b- բաղաձայնային անցման այսպիսի վաղ վկայությունը փոքր ինչ կասկածելի է դարձնում համեմատությունը. Հայ. Բատ անձնանունը գալիս է կամ սրանից, կամ անմիջաբար իրանական աղբյուրից[17]:

Պատահական չէ՞ արդյոք ուրարտական և արիական հետևյալ բառերի նմանությունը՝ ուրարտ. tašm(u)- «գերել», tašmuše «գերի» և հ. հնդկ. dāsá- «ստրուկ. թշնամի». ուրարտ. šuri/e «աշխարհ. թագավորություն», šaue/i «իշխող», šat(u)- «վերցնել» և իրան.՝ ավեստ. xsaϑra- «տիրապետություն, թագավորություն», xšayat «իշխում է, տիրապետում է» և այլն (հ.-ե. *k þē(i)-):

Ուրարտուում թերևս դեր է խաղացել նաև թրակյան տարրը, որի մասին վկայում են զգալի թվով փաստեր. Հատկանշական են, մասնավորապես, Diușini անձնանունը (=թրակ. Diuceres, կրճատ՝ Διούζης), Išpilibria տեղանունը (-bria= թրակ. βρία «քաղաք») և այլն. հմմտ. նաև Uedur (գրված նաև Uduri ձևով) ցեղանունը և տեղանունը՝ կազմված Etiuhi/ni երկրանվան հետ. այն շատ մոտ է հնչում թրակյան βεδυ (vedū < *uedō-) «ջուր» բառին, որ ցեղակից է հայ. գետ, -ոյ բառին [այս և այլ փաստերի մասին տե՛ս Երեմյան, 1968. Ջահուկյան, 1976. Джаукян, 1984, Պետրոսյան, 1976, 1977, 1979 ա, բ. Карагезян, 1931]:

Թրակացիների կամ փոքրասիական ժողովուրդների միջոցով է անցել ուրարտացիներին փռյուգիական Σαβάζιος (Σεβάζιος, Sebadius և այլն) աստծու պաշտամունքը Šebitu ձևով. Հավանաբար սրա անունից է կազմված Šebeteria տեղանունը, եթե վերջինս մակեդոնական սավադների ցեղանունից չէ (Σαβάδαι)[17]: Փռյուգիական Սաբաձիոսի անունից են բխեցնում Մառը և, նրա հետևողությամբ, Աճառյանը հայ. աստված բառը, որ հնչյունապես քիչ հավանական է:

Այս կապակցությամբ նշենք հայաս. Huggana և ուրարտ. Huka անձնանունների նմանությունը (վերջինս հիշատակված է որպես ստրուկի անուն) [Дьяконов, 1963, 98]: Ինչպես հայտնի է, հայաս. Huggana-ն փոքրասիական՝ խեթա-լուվական ծագում ունի:

Կան հայ-ուրարտական մի շարք զուգադիպումներ էլ, որոնց բնույթը պարզ չէ, և որոնց նմանությունը հավանաբար պատահական է. 1) գեղ (գեւղ, գիւղ)—ուրարտ. ueli «շրկատ (?), հավաք (?), աշխարհազոր (?)» (ըստ Ղափանցյանի). 2) կարախ «քաջ», կարախել «քաջանալ, զորանալ»—ուրարտ. kar(u)- «հաղթել, նվաճել, (եթե կարախ-ը կապված չէ կարեմ բայի հետ.

---

sāl «տարի» բառին, որ ծագում է *sard-ից (հմմտ. հայ. նախասարդ, երիտասարդ), բայց դժվար է ենթադրել այդքան վաղ *rd>l անցումը:

[17] Ուրարտերենի իրանական փոխառությունների մասին տե՛ս նաև Грантовский 1970: Սաբաձիոսն սկզբնապես եղել է սավադների աստվածը, ապա ստացել լայն բնույթ. Աքքադական աղբյուրներում հիշատակված է կապպադովկյան Sabazia անձնանունը, որ հավանաբար կապ ունի Σαβάζιος-ի հետ:

*ուրարտ. կամ խուռ. ծագման մասին է խոսում* -alu-ը). 3) ճետ (jabe-n) *«խեռ, անհնազանդ» — ուրարտ.* ḫašḫi *«խռովարար, անհնազանդ (?)»*[18], 4) հոր *«ջրհոր. հոր, խոր փոս» (հ.-ե.* *per-*ից) — ուրարտ.* ḫurišḫi *«ստորին (?)»*, *5)* շտողանեմ *«խառնել (?)» («խածանել, քանդել» ?) — ուրարտ.* šuinq(u)- *«պոկել, խածանել. հնացնել»*, *6)* սիւս *«ցանկապատված տնատեղի» (իմաստն ըստ Աճառյանի) — ուրարտ.* susi/e *«սրբատեղի»*, *7)* սողամ (*-իմ*), սողոսկիմ *— ուրարտ.* sulušt(i)- *«երեսի վրա ընկնել, խոնարհվել»* *8)* փար, պատ *— ուրարտ.* patari/e *«քաղաք» (ըստ Ղափանցյանի)* *10)* փողոց — բղլ. usi *«ուղին (արձանագրությամբ)»*։

*Բացի ուրարտական այն փոխառություններից, որոնց աղբյուրը պահպանված է ուրարտական սեպագիր արձանագրություններում, և որոնցից հատվածները բերվեցին վերևում, կան փոխառություններ, որոնց ուղղակի աղբյուրը հայտնի չէ, և որոնց մասին կարելի է դատողություններ անել կողմնակի փաստերի հիման վրա։*

*Նախ՝ մեծ թիվ պետք է կազմեն ուրարտական ծագումով բառերը բառապաշարի այն շերտում, որի հնդեվրոպական ծագումը և մեզ հայտնի լեզուներից փոխառյալ լինելը չի ապացուցված։ Հ. Աճառյանը իր «Հայոց լեզվի պատմության» առաջին մասում (էջ 181—185) բերում է չստուգաբանված բառերի մի քանի խումբ, որոնց աղբյուրը գոնե մասամբ կարող է ուրարտերենը լինել. 1) գույների անուններ՝* գորշ, երփն, թոյր, թուխ, լուրջ (լուրթ), խաժ, խարտեաշ, ծաւի, կանաչ, նամակ *«գորշախայտ»*, ճիր *«հակնթագույն, երկնագույն»*, ննդիկ *«զուտ սև»* շառագոյն, չէկ. *2) մետաղների անուններ՝* երկաթ, կապար, ոսկի. *3) բույսերի անուններ՝* եղին, կոտիմն, վարսակ, ցորեն, *բարբառային* մանդակ, մունուղեզ, օղին *և այլն, այլև* ծիրան *և* խնձոր, *4) ամանների անուններ՝* անաւթ, գուշ, խաւեակ, խուփն, խբարդեայ, խեցի, ծափ, կանոյր, կայթ, կարաս, կեռլիկ, կճուճ, կուր, ճաղաղակ, մեսուր, պուտուկ, սափոր. *5) ոստայնանկությանը վերաբերող՝* ազբն, առէջ, բարաք, գորգ, թել, իլ, ծոպ, կապերտ, կարժ, կծիկ, կկել (կկոց), կարել, ճյուսել, մանել, շաղամար, ոստայն, սռէծ *և այլն. 6) ընտանեկան հարաբերությունների նշանակումներ՝* աղջիկ, աներ, եղար, զաւակ, զոքանչ, թայրաթոռ, թոռն, լաճ, խնամի, կոյս, փեսայ, քեռի. *7) դրամների անուններ՝* բնիոն, խերեւեշ, նաֆարակիտ. *8) գրի հետ կապված բառեր՝* գիծ (գծել), էջ, թանաք, թուղթ, կածին *«գրիչ»*։

*Աճառյանի բերած բառերից մի քանիսի ծագման մասին այժմ կարելի է խոսել ավելի որոշակիորեն. 1)* խնձոր *բառը ծագում է խուռերենից* (ḫinzuri) *կամ, թերևս, ուրարտերենից, եթե նրանում եղել է խուռերենի համարժեքը. 2) հավանական է հետևյալ բառերի հնդեվրոպական ծագումը՝* կուր *«տաշտ»* (*gu-ro-՝ *geu- *«ծռել» արմատից՝ ըստ Լիդենի*), պուտուկ (պոյտն-*ից՝* *beud- *արմատից՝ ըստ Պետերսոնի*), առ-էջ, էջ (իջ-անել-*ի արմատը՝* *ei-dhi- *կամ* *ei-ghi-՝ *ei- *«գնալ» արմատից՝ ըստ Պեդերսենի*), թել (*tek-lo-՝ *tek- *«գործել, հյուսել»՝ ըստ Ջահուկյանի*), քեռի (*sṷesuiḷo-՝ *ըստ Ջահուկյանի*), թանաք (*համմ.* թանալ *«թրջել»*), թոռն (*torno-՝ *ter- *«քնքուշ, թույլ» արմատից՝ ըստ Վիդեմանի. ընդունում է նաև ինքը Աճառյանը. ՀԱԲ, 2², 198*), ճոր (*soṷo-ro-՝ *ըստ Ջահուկյանի*), սռէծ (*steig'-՝ *steig-*ի կողքին «ծակել. սուր». համմ. նաև* սռեծ < steg'-՝ steg-*ի կողքին «ձող»*՝

---

[18] *Իմաստն ըստ Ի. Մ. Դյակոնովի* [Дьяконов, *1963, 88*]։

*ըստ Ջահուկյանի*), **ոստայն** (*հմմտ.* **ոստ**), **իլ** (*ēl-՝ *el- *«ծռել» արմատից՝ ըստ Լիդենի*). *3) հնարավոր է* **անօթ** *բառի սեմական* (*հմմտ. աքքադ.* unū-tu, *հմմտ. նաև եգիպտ.* hnw.t *«եղջյուր. գինու աման»՝ ՀԱԲ, I², էջ 215*), **կոյս** *բառի՝ խեթա-լուվիական* (*հմմտ. խեթ.* kūša *«հարսնացու»?*), **վարսակ, խառեակ, կանոյր, գաւակ** *բառերի՝ իրանական,* **լաճ** *բառի՝ քրդական* (*հմմտ.* lāj) *կամ քարթվելական* (*վրաց. մեգր.* lač) *ծագումը:*

*Մնացած դեպքերում Աճառյանի կարծիքը մնում է ուժի մեջ, մանավանդ որ որոշ դեպքերում կան նոստրատիկ զուգահեռներ:*

*Երկրորդ՝ կան հայերեն բառեր, որոնք զուգահեռներ ունեն կովկասյան լեզուներում, բայց իմաստային կամ հնչյունական պատճառներով չի կարելի դրանք բխեցնել իրարից: Հ. Աճառյանը բերում է մեկուկես տասնյակ այդպիսի բառ՝* **ընկոյզ** *(ունի նաև սեմական զուգահեռներ),* **ծեփել, ծիրան, ծիրիլ, կաղամախի** *(ունի զուգահեռ նաև փռյուգերենում՝* καλαμίν-δαρ*),* **կարաս, կարասիֆ, կրթել, կռել** *(կուռ, կռան),* **կտաւ, ճանճար, ճակ** *«էգ»,* **ճմար, տող, փանդանեմ** *«ցրել» (հմմտ. քարթվ.* *pant- *«ցրել»),* **փառ** *«զգեստ»: Սրանցից* **կտաւ**-*ը ամենայն հավանականությամբ ծագում է* **կտաւ**-*ից (իմաստային հարաբերության համար հմմտ. ավար. բեժ.* лъелъ *«սերմ, կուտ» և «կտավ»),* **փառ**-*ը՝ իրանական աղբյուրից (իրան.* *par-, *parwa- *(ըստ Բեյլիի), որոնք ծագում են հ.-ե.* *pel-, *pel-u̯o- *նախաձևերից՝* *pel- *«ծածկել»). մնացած դեպքերում Աճառյանի կարծիքը մնում է հավանական:*

*Երրորդ՝ կան հայերեն մի շարք բառեր, որոնք զուգահեռներ ունեն նոստրատիկական լեզուներում, բայց բուն հնդեվրոպական ծագում չունեն (շեղվում են հայերենի հնդեվրոպական օրինաչափություններից) կամ ընդհանրապես չկան հնդեվրոպական այլ լեզուներում: Սրանց հավանական աղբյուրը շատ դեպքերում կարող է լինել ուրարտերենը, մանավանդ որ մի քանիսը քարթվելական զուգահեռներ ունեն. հմմտ.* **աղիփ** (**աղփուն** *«թույլ, տկար»*), **խորխ, խուղ, գ-ան-խուղ, կար** (**-ել**) *(եթե քարթվ. աղբյուրից չէ),* **կլոր** *(եթե հ.-ե. ծագում չունի՝* *gu-l-*),* **կոտոր, կոփ, կոփեմ, կափուցանեմ, կուրտ,** (**կրտել**), **լեպ** *(բրբռ.),* **լոպկել, պուրծ, պրծանիմ/փրծանիմ** *(բայց հմմտ.* **փրթանիմ**<*հ.-ե.? ձևերի բաղարկությո՞ւն), բրբռ.* **պոռթել** *և այլն* [**Джаукян**, 1979, 93—94]:

*Կարելի է նշել նաև հայերեն այլ բառեր, որոնք զուգահեռներ ունեն քարթվելական և կովկասյան մյուս լեզուներում, բայց որոնց աղբյուրը կարող է լինել մի երրորդ լեզու՝* **ծիր, պոուկ, վաղ** (**վաղիւ**) *(վրաց.* xval *«վաղը») և այլն:* **Տուտն** (**տտուն**) *բառը համարվում է հ.-ե. ծագման, բայց ունի նաև քարթվելական զուգահեռներ (ճան.* dud *«գագաթ», մեգր.* dud- *«գլուխ», սվան.* dudūl- *«ծծի պտուկ»). Թերևս սրանք մանկական բառեր են և պատկերավոր կազմություններ, որոնք համընկնում են ըստ «տարրական ցեղակցության», հազիվ թե սրանց հետ կապ ունի ուրարտ.* dude-*ն, որ Ի. Մ. Դյակոնովը մեկնում է որպես «սահմանային»* [**Дьяконов**, 1963, 88]:

*Չորրորդ՝ կարելի է որոշ եզրակացությունների հանգել ուրարտական վերջածանցների հայերեն համարժեքների հիման վրա* [**Джаукян**, 1984b] *ուրարտական հիմնական վերջածանցներն են՝ 1) գոյականական՝* -ḫl/e (šu-ḫl/e *«կործանում»՝* š(u)- *«կործանել, ավերել, [illegible]» բայից),* -ḫini (+ *հգն. թ. կազմիչ* -li՝ Argisti-ḫini-li- *«Արգիշտական» — քաղաքանուն),* -še (ta-še *«նվեր»,* gunu-še *«ճակատամարտ»),* -š-ḫi (šuri-š-ḫi *«զենք» կամ «պա-*

հեստ»), -tuḫi (taršua-tuḫi «տղամարդություն»). 2) ածականական՝ -(i)ni/e (rusa-ini «ռուսայան, Ռուսա թագավորին վերաբերող», Ḫaldi-ni «խալդյան, Խալդ աստծուն վերաբերող»), -(u)ḫi (diau-ḫi «դիաուոյան, տայոց»), -(u)si (bad-usi «հոյակապ», in-usi «այսպես»). 3) բայական՝ -(a)ḫ- (*nap-aḫ(u)- «ղոպել, խաղացնել» ?, tam-ḫ(u)- «հեռացնել»), -an- (ked-an(u)- «ուղարկել»), ar- (šepuị-ar(u)- «փչացնել» ?), -š- (ḫarḫar-š(u)- «քանդել»), -št- (sul(u)-št «երեսի վրա ընկնել, խոնարհվել»), -(u)l- (ter-ul(u)-, «դնել»):

Այս առումով անհնար չէ, որ հետևյալ բառերը գոնե մասամբ ուրարտական ծագում ունենան. 1) խ-ով վերջացող (հմմտ. ուրարտ. -ḫi/e) հետևյալ գոյականները և ածականները՝ ա) –ախ-ով՝ թիրախ (եթե ճիշտ չէ Աճառյանի կարծիքը թիր-ի իրան. ծագման մասին՝ tir «նետ», բնդ. որում չի բացատրվում –ախ-ը), խաղախ «նավ(ակ)», խիզախ, ձախ, կախ, կամախ «ընձա», մախ «նախանձ», փարախ (հմմտ. վրաց. parexi «փարախ», հնարավոր է կամ հայ. բառի կովկասյան ծագումը, ինչպես կարծում է Հ. Աճառյանը, կամ հայ. և վրաց. բառերի ուրարտական ծագումը). բ) –եխ-ով՝ զե(ղ)խ, մեղեխ, «կացնի կոթ», մեղմեխ «նենգ, կեղծավոր», մժեխ (մժիխ, մժեղ), ճեխ, պարեխ «ժայռ, քարոտ տեղ» (հմմտ. վրաց. parexi «քարայր. անդունդ», որ Աճառյանը համարում է հայերենից փոխառյալ), ցեխ (ցիխ). գ) –իխ-ով մաճաճիխ, պարիխ «փառոց, կապերտ, գորգ, խսիր». դ) –ոխ-ով՝ կոխ, ճոխ, ռոխ. ե) –ուխ-ով՝ բուխ, բխել, թուխ, թխել, կանչուխ (կանճոխ) «գավազան, ցուպ, ձող», կաճուխ. 2) –սխ-ով վերջացող (հմմտ. ուրարտ. -šḫi/e ) հետևյալ գոյականները՝ խարիսխ (հմմտ. վրաց. xarisxi «սատիճան»), խորիսխ «մեղրահաց, մոմով մեղր». 3) –ինճ-ով վերջացող (հմմտ. ուրարտ. -ini/e)՝ ոչ հնդեվրոպական ծագման ածականները՝ դիւրինճ, խորինճ (խոր), խրթինճ, ճեշտինճ. 4) –ող– հիմքով բայերը (հմմտ. ուրարտ. -ul-)[19]՝ զովողիմ «մասնակից լինել, գողանալ» (զովող «գործակից» Աճառյանը համեմատում է վրաց. zav- «համաձայնություն» արմատից ծագող բառերի հետ, որ կասկածով բերված է քարթվելական փոխառությունների նաև մեր ցանկում, խճողեմ՝ խճել-ի կողքին), ձախողիմ (սրա նմանությամբ յ–աջ–ող–իմ):

Ուրարտական հատկացական -ḫi/e ածանցը, որ հաճախադեպ է տեղանունների մեջ և հունարեն արտահայտվում է χ-ով (հմմտ. Diauḫi — Τάοχοι), հայերի կողմից կարող էր ընկալվել որպես հոգնակերտ ք-ի համարժեք և արտահայտվել նրա միջոցով՝ Abiliani/eḫe — Աբեղեանք, Diau(e)ḫi — Տայք և այլն:

Եթե Sarduri հատուկ անունը կազմված է, ինչպես կարծում են, Sardi աստվածուհու անունից [հմմտ. Меликишвили, 1960, 440][20], ապա -uri-ն ածանց է և նրան համապատասխանող –ուր-ով կամ –ուր-ով վերջացող անունների մեջ թերևս մասամբ առկա են ուրարտական հիմքեր՝ 1) –որ-ով՝ ախլախճոր «ձնծաղիկ», ախճթոր (աղճթոր, աղխճթոր, ախյճթոր) «ծառայական, ստոր, դժնհիկ», աղտոր «մի բույս՝ սմաղ», բճղոր (խառնաբճղոր), գլթոր (գխտոր, գխթոր) «մի տեսակ ներկանյութ», ժխոր, խեփոր «խեցեմորթի պատյան» (խեփ–անալ «կարծրանալ»), խոլոր (խոլոռ) «խոժոռ, խեթ», խոշոր (և խոժոռ), խրխոր «փշոտ», կոտոր, պղտոր (հմմտ. պիղծ), սալոր (շր–

---

[19] Եթե -ող-ը դերբայական աղ-ի տարբերակը չէ, այլ խառնվել է նրա հետ:

[20] Կապված չէ՞ արդյոք Թրակ. Σαρδοι (Σερδοι) ցեղանվան հետ:

լոր) (բայց հմմտ. ակկադ. -šal-luru(m) «[illegible]»?), սովոր, ստոր, ցնոր, փոթոր «ոլորուն» (փոթ «ծալք»՝ փաթ-ի կողքին). Իհարկե, կան նաև -որ-ով բուն հայկական կազմություններ՝ հնդեվրոպական համապատասխան արմատներից (բեկոր, բոլոր, գլոր, ոզոր, քակոր և այլն), բայց հնարավոր է, որ սրանց մեջ -որ-ը գա ուրարտական որ-ից՝ վերջինիս ընդհանրացմամբ (հմմտ. և -որ-ով բայական կազմությունները). 2) -ուր-ով՝ աթուր[21], ամուր, բարուր «պատրվակ», գանգուր, թափուր (թափ-), յախուր (նեխուր), կելուր-ք «հնարք» (կել «նենգություն»), կտուր «տանիք», կտուր (կց-կտուր՝ կից. հմմտ. կտոր), մաքուր, մսուր, տխուր (եթե տ-ն ժխտական չէ), փետուր (եթե ծագում է փետ-ել բայից և ոչ թե հ.-ե. *petr-ից՝ մի այլ հ.-ե. լեզվի միջնորդությամբ), փթուր (սակայն հմմտ. նաև փշուր, փուր). -ուր-ով վերջացող բառերի մեջ նույնպես կան հ.-ե. (ամուր<*aəō-ro-, բլուր<*bhōl-, թրթուր< *tōr-tōr-, մրուր<*mutro- և այլն) և այլ ծագման բառեր, բայց հնարավոր է բերված բառերի մի մասի ուրարտական ծագումը:

Գ. Ղափանցյանը [1961, 142] ուրարտական -ունի ածանցն է տեսնում արեգունի, գողունի բառերի մեջ: -ունի-ով են կազմված նաև անզաւակունի, արքունի, խխնջունի, խնամունի, ծերունի, տերունի, տիկնունի բառերը, որոնցից արեգ, գող, տէր (<տի-այր), տի-կին հիմքերը հնդեվրոպական են, զաւակ, արքայ, խխունջ, խնամի բառերը՝ անհայտ ծագման (ուրարտակա՞ն)[22]:

Եթե ընդունենք, որ Ղափանցյանը ճիշտ է, և որ ուրարտ. բառավերջային ձայնավորը մասամբ պահպանվել է, մասամբ ընկել (հմմտ. արծուի և արծիւ զուգահեռ ձևերը), ապա կարելի է նշել -խի-ով, -նի-ով վերջացող բառերի մեջ ևս ուրարտական ձևերի հնարավոր առկայությունը: Սրանցից -նի-ով վերջացողները գրաբարում մասամբ գիտակցվել են որպես արմատական, մասամբ ածանցական (այդ թվում՝ հավաքական իմաստով) բառեր. վերջիններիս մեջ զգալի թիվ են կազմել հնդեվրոպական ծագման բառերը, սակայն թերևս եղել են նաև ուրարտական ծագման բառեր: Անհնար չէ, օրինակ, ափնի «հնձից հետո մնացած հասկեր. խաղողի որթ», անձոռնի, ծ(ղ)խնի, նրդնի (ննդնի, ննդի) «սապատավոր», պատանի, պարմանի բառերի ուրարտական ծագումը:

Ուրարտական -ni վերջածանցի հիման վրա է Վ. Բենեցյանուն [Bănăteanu, 1960, 359—375; 1961, 85—107; 1961b, 515—540] փորձում մեկնել -ենի-ով ծառանունները, -անի-ով հավաքականները, այլև -ունի-ով տեղանուններն ու նախարարական տների անունները[23]: Թեև ի վնաս -ենի-ով ծառանունների ուրարտական ծագման է խոսում խնձորենի, ընկուզենի ձևերի ուշ վկայությունը՝ ի տարբերություն խնձորի, ընկուզի ձևերի, որոնց -ի-ն հնդեվրոպական ծագում ունի (*-ijā), սակայն հնարավոր է ենթադրել -ենի-ի բարբառային պահպանում և հետագա տարածում:

---

[21] Ըստ Քուշմանյան-Աճառյանի [ՀԱԲ, 12, 90] փոխառություն է հյուսիս-կովկասյան աղբյուրից, այդ բերվող ուտ. tur-ն ինքը կարող է փոխառյալ լինել:

[22] Հմմտ. նաև ժողովրդական հեքիաթներում հաճախ հանդիպող նավլունի բառը, որ մատենագրության մեջ պահպանվել է նաւելին, նաւալանի և այլ ձևերով («մեծ ձուկ»): Հնարավոր է արքայ բառի ծագումը ἄρχων «առաջնորդ, կառավարիչ, իշխող» բառից՝ սեմական միջնորդությամբ [հմմտ. Schmitt, 1980b, 14]:

[23] Ավելի ուշ Վ. Բենեցյանուն փորձում է ապացուցել հայ. գործ. հոլովի -ւ (-վ, -բ) վերջավորության և -եալ է իմ կառույցի ուրարտական ծագումը:

Հինգերորդ՝ բաղաձայնական -n-ով հիմք ունեցող ու հնդեվրոպական բառերը գոնե մասամբ պետք է ունենան ուրարտական ծագում կամ հայերենին անցած լինեն ուրարտերենի միջոցով, եթե նկատի առնենք ուրարտական nɨ-ով հիմքերի գոյությունը և -ni որոշիչ հոդի առկայությունը (վերջինս կարող էր ընկալվել հայերի կողմից որպես բառամաս)՝ բռդեռն (բռդիռն) «մի բզեզ», գուղձն, եղեամն, եղերդն, եղէգն, լիսեռն, լոռձն, խաշն, խոլորձըն, խուռձն, կառափն, կառն «թաղիք», կառն «թարախ», կառ(ն) «փուշ», կնճիռն, կոտիմն, հիւսն(?), նիգն, նկուռն, մանգառն «մի խոտաբույս», շուրթն (հմմտ. շուռ և շուրջ), ոլոռն, ոսպն, որդն, սռմն, ուղն «ուղեղ», ուռն «մուրճ, կռան», պնեղն, սաղմն, սկիզբն, ցակն «աղքատություն»։

Ուրարտ. i-ով հիմքերի առատության պայմաններում[24], կարելի է հայերենի ի հոլովում ունեցող և չստուգաբանված բառերի մեջ ևս փընտրել ուրարտական հիմքեր՝ ախոյեան, ակումբ, ամբէտ «խլուրդ», անգոյս «աքացի», անաւր, ապառաժ, արփ «եթեր», աքիս, բաղձ, բիծ, գայտ «խիտ», գաւիթ «նախասենյակ», գէշ «դիակ», գիծ, գաւս «չոր, անպտուղ», դիւր, «հարթ. հարթ տեղ», փագիր, թախիծ, թաղ «արվարձան, ժլատ, խազմ «կռիվ», խախաց «մակարդ», խառ «ճահիճ», խառն-ք, խուռձ, «եղեգնուտ, շամբ», խեղդ, խիղճ, խիստ, խիտ, խոնաւ, խոշոր, խրամ, խրաց «կոշկի կապ», ծախ, ծայր, ծերպ, ծիրտ, ծոպ, կաճ (կայճ) «թաղիք», կայթ «կողով», կայմ, կանաչ, կանեփ (<ուրարտ.<սկյութ.?), կապերտ, կոպ (կոփ), կուրծ-ք (հ.-ե.?), համբ «խումբ», հաշմ (խաշմ), հեստ «անհնազանդ», հապաղ, հոխ, մազ, մախաղ (հմմտ. վրաց. maxali «մախաղ, տոպրակ»), մաղ, մաղձ, մայր «երակ», մթեր, յոխորտ, յուռութ, նեղ, շեշտ, շփոթ (հմմտ. վրաց. špoti), ողկոյզ, ուղխ «պարտեզը ջրելու փոքրիկ առու», պաղ, պտոյտ, սեղմ, սոյթ «ուժեղ քամի», սուլոր, ստոր, տենչ, ցնոր-ք, ցոփ, փթիթ, փութ, փող «կոկորդ», փոս։

Կարելի է նշել ուրարտ. հատուկ անուններից հասարակ անուններ և հասարակ անուններից հատուկ անունների ծագման դեպքեր։ Առաջինի համար տիպական օրինակ է ախոռան «սրնթաց և ահեղ» բառը, որ ծագում է Ախուրեան գետի անունից [հմմտ. Աճառյան, ՀԱԲ, $2^2$, 99. ՀԼՊ, 1, 199]։ Երկրորդ տիպի անցումը երկու կարգի է լինում՝ 1) ուրարտական հասարակ անուն>ուրարտական հատուկ անուն>հայ. հատուկ անուն և 2) ուրարտական հասարակ անուն>հայ. հատուկ անուն. Հնարավոր է ենթադրել, որ երկրորդ դեպքում միջին օղակը կորած է. հմմտ. ուրարտ. qarbi/e «ժայռ»>հայ. Կարբի, ուրարտ. garini>«ամրոց, բերդ» (հմմտ. ուրարտ. Gianiani)>հայ. Գառնի[25] և այլն [տե՛ս Арутюнян, 1970 427]։

Ուրարտ. մի արձանագրության մեջ նշված Širimutara («երկիր» Զըլգըր լճից հարավ-արևմուտք) անվան Širim(u)- բաղադրիչը թերևս պահպանված է հայ. շիրիմ բառի մեջ։ Զուգադրելով հայ. շիրիմ «գերեզմանաքար» բառը վրաց. širimi «[illegible]», ճան. širimi «ավազ» և այլ բառերի հետ՝ Հ. Աճառյանը (ՀԱԲ, $3^2$, էջ 521) հայերեն բառի նախնական իմաստը համա-

---

[24] Թեև i-ն կարող էր լինել ծագած ə ձայնավորի նշանակում, երբեմն էլ սեպագրային ավելադրություն

[25] Թերևս ուրարտերեն garini-ից են ծագում կովկ. «պատ, ցանկապատ» նշանակող մի շարք բառեր՝ վրաց. ɣore «քարե պատ», աբխազ. aguara «ցանկապատ», օս. goren «ցանկապատ, պատ» [այս բառերի համար տե՛ս Абаев, 1, 1958, 524]։

*րում է «քար» և վերջիններս դիտում որպես հայերենից փոխառյալ. եթե վերևում բերված զուգադրությունը ճիշտ է, ապա մենք գործ ունենք հայերենի և քարթվելական բառերի միևնույն աղբյուրի հետ՝ ուրարտ. բառի առաջին* i-*ն հայերենում պահպանվել է (չի վերածվել* ը-*ի) մեզ անհայտ պատճառով* (*ěi>*ē>i?)։

*Ուրարտական ծագում ունեցող հայկական անձնանունների քանակը սակավաթիվ է. քիչ թե շատ հավաստի կարելի է համարել ասուրական աղբյուրներում հիշատակված ուրարտ.* Aramu-*ն, որ հայերին է անցել* **Արամ** *ձևով։ Եթե* Erimena *թագավորի անունը կապ ունի արմենների անվան հետ, ապա այն կարող է լինել թե՛ հատուկ և թե՛ հասարակ անուն, ընդ որում ոչ թե ուրարտերենի ներդրում հայերենում, այլ* **արմեն (Արմեն)** *անվան հին հիշատակում։ Եթե ուրարտ.* e-*ն արտասանվում էր լայն* (ə? *հմմտ.* Erimena— **արմեն**, Meliteja — **Մալաթիա**), *ապա թերևս ուրարտ.* Menua *անվան մեջ նույնպես առկա է հայ.* **Մանուկ**-*ի առանց փոքրացուցիչ ածանցի ձևը* (**Մանու**-<*հ.-ե.* *mə: u- *«փոքր»). որոշ հեղինակներ* Menua-*ի մեջ (էրգատիվ հոլովը՝* Menuaše) *տեսնում են* **Մանավազ** *անունը, բայց սա իրանական ծագում ունի. եթե նմանությունը պատահական չէ, ապա խոսք կարող է լինել ուրարտական (>հայ.) անվան իրանական ազդեցությամբ հետագայում ձևափոխվելու մասին։*

*Հավանական է* **Դադէ (Դադիու)** *անձնանվան ուրարտական ծագումը՝* Dada (Dadi)՝ *խուռ.* Dada-*ի կողքին։*

*Ուրարտական պանթեոնի ազդեցությունը հայկականի վրա, որքանով կարելի է դատել եղած փաստերից, մեծ չի եղել։ Գ. Ղափանցյանը նշում է ուրարտ.* Ar'a—*հայ.* **Արա** *և ուրարտ.* Araza-*հայ.* **արած- (արատ՝** *որպես արոտի աստված) զուգահեռները* [**Ղափանցյան**, *1940, 43], բայց սրանք կասկածելի են. 1)* Ar'a-*ն աստվածուհու անուն է,* **Արա**-*ն՝ արական անձնանուն, 2) երկրորդ դեպքում էլ ուրարտ. դիցանունը համեմատվում է հայերեն բայահիմքի հետ։ Ավելի հավանական է* Araẓa-*ի և հայ.* **Արաց** *ամսանվան կապը, մանավանդ որ հնում վերջինս համարվել է Հայկի որդիներից մեկի անունը։*

*Վաղուց ի վեր կարծիք է հայտնված* **-ունի**-*ով վերջացող նախարարական տոհմանունների և համապատասխան* **-ունիք**-*ով վերջացող գավառանունների ուրարտական ծագման մասին*[26]*։ Ճիշտ է, այս դեպքում ուրարտ.* -i *ձայնավորը պետք է ընկած լիներ, բայց թերևս հատուկ անունների մեջ այն պահպանվել է հատուկ գործածության պայմաններում։ Բուն ուրարտական արձանագրություններում* -uni-*ով հատուկ անունների (հատկապես տեղանունների և ցեղանունների) քանակը շատ մեծ չէ՝* Adaḫuni, Aḫiuni, Alduni, Aḫuni, Azameruni, Dirguni, Eruni, Ḫulmeruni, Irpuni, Libliuni, Luḫiuni, Luipruni, Maqaltuni, Mušuni, Qaduqaniuni, Qi/eḫuni, Qirpununi, Rašuni (*անձնանուն՝* Ruišiani *երկրի թագավոր*), Tariuni, U̯elikuni (U̯elikuḫi < **Գեղա(ր)քունի**), Uḫuni, Urieiani, Ziuquni, Zi(u)quni (*դիցանուն*)։ *Սրանք դիտարկելով մեծամասնությամբ հավաստի զուգահեռներ չունեն հայկական հատուկ անուններում։ «Աշխարհացույց»-ում հանդիպող* **-ունի**-*ով վերջացող*

---

[26] *Առաջիններից մեկը այդ մասին է խոսել Կ. Բասմաջյանը [«Բանասեր», 4, 193—196, 239—251, 214—217. հմմտ. նաև* **Բասմաջյան**, *1914, 55—57]։ Հետագայում արվել են մեծ թվով ճշտումներ։*

տեղանունները և մասնավորապես գավառանունները կենտրոնացած են հին Ուրարտուի տարածման հիմնական վայրերում՝ Վասպուրականում՝ Բոզունիք (հմմտ. Բուզունիք նախարարական տոհմանունը), Բուժունիք, Երուանդունիք (հետագա ձևափոխությունն՝ Երմանդունիք-ից), Կրճունիք, Մեծնունիք (հմմտ. Մեհնունիք նախարարական տոհմանունը), Պալունիք, Պարսպատունիք, Վարաժնունիք, Տրպատունիք, Տուրուբերանում՝ Ապահունիք, Ասպակունիք (Ասպակունեաց ձոր), Արշամունիք (հետագա ձևափոխություն), Բզնունիք, Խոր-խոռունիք, Այրարատում՝ Արշարունիք, Հաւնունիք[27], Վարաժնունիք, այլև Կորճայքում՝ Կարթունիք, Սյունիքում՝ Գեղա(ր)-քունի-ք (հմմտ. և հենց Սիւնիք), Արցախում՝ Վայկունիք: Բավականին շատ են հինականում նախարարական այն տոհմանունները, որոնք կապված չեն «Աշխարհացույց»-ում բերված տեղանունների հետ: Սրանց մեջ առկա են իրանական ծագման հիմքեր (իրանական տարրի առկայություն, ուրարտական անվան ձևափոխություն և -ունի-ի հետագա տարածում)՝ Բագրատունի, Պահլաւունիք, Տրդատունիք, Վազրապպունիք և այլն: Մյուսներից առանձնապես հայտնի են՝ Ամատունի, Արծրունի, Գնթունի, Գնունի, Մաղխազունի (հմմտ. մաղխազ < հասարակ անունը), Մանդակունի, Որդունի, Սահառունի, Սլկունի (և Սաղկունի), Վահեւունի, Տրունի և այլն[28]: Այս բոլոր դեպքերում կան հետագա հավելումներ և համաբանական կազմություններ (հմմտ. Uelikuni > Գեղարքունի, որտեղ u̯ > գ և Վահեւունի կամ Վահունի, որի դեպքում չկա օրինաչափ անցում, և որը ակնհայտորեն ուշ կազմություն է կամ հին անվան ձևափոխություն):

Ուրարտական հատուկ անուններում զգալի թիվ են կազմում նաև -ani-ով, ini-ով վերջացողները: Առանձնահատուկ տեղ են գրավում -iani-ով վերջացողները, որոնց դեպքում վերջին i-ն հայերենում չի ներկայացված՝ Abiliani > Աբեղեան(ք), Aḫuriani > Ախուրեան և այլն: Այսպիսով, -եան-ով նախարարական այն տոհմանունների և աշխարհագրական այն հին անունների դեպքում, որոնք վերջանում են -եանք-ով, և որոնց հիմքերը մեզ ծանոթ ձևերով չեն բացատրվում (երբեմն էլ մեկնվում են, բայց իբրև արդյունք ժողովրդական ստուգաբանության), հնարավոր է գոնե մասամբ ենթադրել ուրարտական ներդրում: Այսպես, «Աշխարհացույց»-ի գավառանուններից Վասպուրականում կան՝ Գաբիթեան, Գազրիկեան, այլև Տարգրեան (<Տանկրիայն), Այրարատում՝ Աբեղեանք, Բասեան, Գաբեղեանք, Ծոփաց կողմում (Չորրորդ Հայքում)՝ Խորձեան, Հաշտեան: Ինչպես տեսնում ենք, -ունի-ի համեմատ սրանց տարածքային բաշխումը տարբեր է, բայց դարձյալ ընդգրկվում են Վասպուրականը և Այրարատը: Գավառանունների մեջ զուգահունչեր չունեցող նախարարական տոհմանուններից հիշենք մի քանիսը՝ Առաւեղեան, Առաւենեան (Առուենեան, Առաւանեան), Դիմաքսեան, Քողեան և այլն: Հանդիպում են և զուգահեռ -ունի(ք)-ով ձևեր՝ Մաղխազունի—Մաղխազեան և այլն. վերջինս, անշուշտ, նորակազմություն է՝ -եան-ի հետագա տարածման և հայկական ու իրանական ծագման բառերի հետ բաղարկվելու արդյունք:

Եթե հայ. հովիտ-ը իրոք կապ ունի ուրար. ḫubi-ի հետ, ապա հայե-

---

[27] Սա պետք է նույնացնել ոչ թե Abuni- (Apuni) երկրի, այլ Abnuluani- թագավորի կամ ցեղի անվան հետ. սրանց երկիրը գրավել է Արգիշտին՝ խոսելով Տայքի գրավման մասին.

[28] Նախարարական անունների ցուցակները տե՛ս հատկապես Адонц, 1908, 236—321:

բենի նովլիո բաղադրիչով տեղանունները (հատկապես գավառանունները) պետք է հիմնականում ուրարտ. շրջանից գան և մասամբ ուրարտ. ծագում ունենան. հմմտ. Վասպուրականում՝ Աղի-նովլիտ, Արճիշակ-ովիտ, Կոգ-ովիտ, Կուղան-ովիտ, Այրարատում՝ Կոգ-ովիտ, Մոկքում՝ Արգաստ-ովիտ, Ծոփքում (Չորրորդ Հայք)՝ Բալա-նովիտ: Սա առավել ևս հաստատվում է երկու փաստով. 1) Աղիովիտը տեղադրմամբ համապատասխանում է ուրարտ. Alia-ին[29]. 2) ուրարտ. Tuaraṣini ḫubi-ն համապատասխանում է հայ. Տուարածատափին: Անհնար չէ կարծել, որ Արգաստ-ովիտ-ի առաջին բաղադրիչը գալիս է Argišti-ի անունից: Նույն Argišti-ն է ենթադրվում նաև Արճեշ քաղաքանվան մեջ:

Տեղանունների -եւան և, թերևս, -(ա)ւան բաղադրիչով շատ անուններ կարող են ուրարտական կազմություններ լինել՝ մասամբ բաղարկված իրան. ծագում ունեցող աւան (հմմտ. հ. պրսկ.āvahanam, պրթ. āvān «ավան, բնակատեղի») բառի հետ. հմմտ. Նախճ-աւան «նախճերի ավան»[30] (ավելի ուշ, ժողովրդական ստուգաբանությամբ՝ Նախիջեւան), Ալեւան (Փայտակարանում) և այլն:

Զգալի է եղել նաև հայկական ցեղերի լեզվական ներդրումը ուրարտերենի մեջ: Վերևում մենք առիթ ունեցանք հիշատակելու հ.-ե. *r̥gipiįo- ձևից ծագող հայ. *arcivio (>արծուի, արծիւ) բառի փոխառությունը ուրարտերենում որպես հատուկ անուն՝ Arṣibi-n (Մենուա թագավորի ձիու անունը)[31]: Ամենայն հավանականությամբ նույն հիմքն է առկա նաև ուրարտ. Arṣibedini դիցանվան մեջ, ընդ որում երկրորդ՝ -di- բաղադրիչը կարող է արտացոլել հայ. դի-ք «աստված» բառի հիմքը (հ.-ե. *dhēs-, հգն. *dhēses): Արդեն նշվել է որ, վստահելի հ.-ե. զուգահեռներ ունեցող հայ. աւելի, թիւ, ծառ, պեղեմ, սուր, ցեղ բառերն են (թերևս ուրարտ. abili-d(u)- «ավելացնել», a-tibi «տասը հազար», zarl/e «այգի», pili «ջրանցք», šurl/e «զենք», zil(i)bi «ցեղ, սերմ, սերունդ», բառերի աղբյուրը: Ակնհայտորեն հայկական ծագում ունի Ṭuaraṣini-ն, որ պահպանվել է Տուարած(-ա-տափ) տեղանվան մեջ. այն բաղկացած է տուար (< հ.-ե. *dḷpəro-) և արած- (հ.-ե. *trəg'-) հիմքերից՝ տուարած-ի հետագա կրճատմամբ (հապլոլոգիա):

Այս փաստերը մեզ իրավունք են տալիս ուրարտերենի բառապաշարի և ուրարտական արձանագրություններում ավանդված հատուկ անունների մեջ փնտրելու հայերեն տարրեր:

Անհնար չէ ենթադրել, որ ուրարտ. aniarduni «անկախ» բառը ոչ թե բուն ուրարտական լինի, այլ հայերենից փոխառյալ՝ ան- ժխտական նախածանցով և յ-ար «կից, միացած» արմատով կազմված անյար «չհարող, անջատ» բառից: (+ուրարտ. du-ni): Հնարավոր է նաև, որ ուրարտ. arniuše «գործ, արարք, սխրանք» բայանունը կազմված լինի հայերենից փոխառված առնել «անել, շինել» բայի հիմքից և ոչ թե բուն ուրարտական ծագում ունենա:

Եթե արմեն-հայերի անունը պահպանված է Erimena թագավորի և Arme

---

[29] Հմմտ. նաև Աղի գետանունը:

[30] Նախճերը հյուսիսկովկասյան նախյան ցեղերի նախնիներն են (հմմտ. չեչենների ինքնանվանումը՝ нохчо, нохчи, բրբռ. нахчо): «Աշխարհացոյց»-ում հիշատակված Նախճամատ-ը ստուգաբանվում է նախյան լեզուներով՝ «նախճա-լեզու» [հմմտ. Дешериев, 1963, 25]:

[31] Հայերենից են փոխառված վրաց. arçivi-ն և համապատասխան կովկասյան այլ ձևերը:

երկրի անունների մեջ, ապա մենք ունենք հայերենի՝ ուրարտական աղբյուրների միջոցով ավանդված մի վկայություն ևս։ Նշենք, որ Erimena անունը (Errimena ձևով) հանդիպում է նաև Ասորեստանի թագավոր Թուկուլտի-Նինուրտա I-ի ժամանակվա սեպագիր տեքստերում՝ օտարերկրացիների (գերիների և գաղթականների) թվարկման մեջ [հմմտ. Фрайданк, ДВ, 2, 1976, 87—88]։

Եթե հայկական ցեղերն իրոք ապրում էին ուրարտական պետության մեջ՝ ուրարտացիների հետ կողք-կողքի, ապա նրանց լեզուն պետք է հետքեր թողած լինի ուրարտական հատկապես հատուկ անունների մեջ։ Այդ մասամբ երևաց ուրարտ. Arṣbini ձիանվան, Arṣibedini դիցանվան, Erimena անձնանվան մասին ասածից։ Նշենք մի քանի այլ հավանական դեպք։

1) Alaini տեղանվան մեջ թերևս առկա է հայերեն աղ(ի)- հիմքը. եթե -aini-ն ուրարտական ածանցական մասնիկ չէ՝ ժառանգված հայերենի կողմից, ապա թերևս ամբողջ բառը զուտ հայկական կազմություն է՝ ածանցական հին ձև։

2) Ուրարտ. Ziuquni աստծու և նրան պաշտող Ziukuni երկրի (շրջանի) անվան մեջ թերևս պահպանվել է հայ. ձուկն, հգն. ձկուն-ք բառի հին ձևը. այդ երկիրը գտնվել է Վանա լճի հյուսիս-արևմտյան ափին, որտեղ հնարավոր էր ձկան աստվածացումը։

3) Եթե ardi-ն իրոք նշանակել է «աստված» և առկա է Şinui-ardi, Šel-ardi դիցանունների մեջ, ապա Şinui- բաղադրիչը կարող է պարունակել հայ. ծին բառի հին ծինո բաղադրիչը, ընդ որում ծին-ը կարող է հնում ունեցած լինել (ինչպես հ.-ե. այլ լեզուներում) նաև «սերունդ, զարմ, ցեղ» իմաստը։

Հնարավոր է նաև Arni, Aṷi, Irmušini դիցանունների մեջ տեսնել հայ. այր բառի սեռ. առն (թե՞ ուրարտ. ar(a)ni «ողորմածություն, շնորհ»), հաւ «պապ» (հ-ի անկման համար հմմտ. Aldi ձևը՝ Ḫaldi դիցանվան կողքին), -սին (սն-ել) հիմքերը, բայց բոլորն էլ մնում են ենթադրությունների սահմաններում։ Ավելի հավանական է ենթադրել Turan դիցանվան հայկական ծագումը՝ տուր-ք բառի հիմքից։ Talapura դիցանունը թերևս ունի հայ. -aworā > աւոր ածանցով հիմք (*թաղաւոր?, բայց հմմտ. ուրարտ. pura «ստրուկ»?)։

4) Šeriazi երկրի (շրջանի) անվան մեջ կարող է առկա լինել ինչ որ *Սեր-ք տեղանվան հգն. սեռական Սերեաց-ի հին ձևը (վերջին անշեշտ ձայնավորով՝ KUR Šeriazi=երկիր Սերեաց). այդ երկիրը պետք է գտնված լինի այժմյան Էրզրումից հարավ-արևելք՝ Diauḫi-ից (=Տայքից) հարավ. եթե սա ճիշտ է, ապա հ.-ե. *sk (*sk)>հայ. ց փոփոխությունը պետք է մ. թ. ա. VIII դարից առաջ կատարված լինի (տեղանունը հանդիպում է Արգիշտի թագավորի արձանագրությունում)։

5) Սարդուրիի արձանագրության մեջ հիշատակված է Մալաթիա քաղաքի մերձակայքում գտնված Karniši «լեռնային երկիրը». հնարավոր է, որ այս անվան մեջ առկա լինի հայ. քար (հգն. ուղղ. քարինք, հայց. քարինս) բառը, նույնիսկ սրա հգն. հայց. քարինս-ի նախնական ձևը։ Սակայն, ինչպես նշվել է, հայ. բառի հնդեվրոպական (*kar- «կարծր») լինելը կասկած է հարուցում, և Karniši-ն կարող է պարունակել այդ հիմքը նաև անկախ հայերենից։

6) Եթե գիւղ (գեղ-) բառի գ- նախահնչյունը *ṷ-ի հետուրարտյան շրջանի ձևափոխությունը չէ (հմմտ. Uelikuni > Գեղա(ր)քունի) և ուրարտ-

կան շրջանում որոշ տարածքներում արդեն արտասանվել է հենց ց-ով, ապա թերևս նրա հոգնակի ձևն է պահպանված Giluarani-ի մեջ, որ Գ. Մելիքիշվիլին Меликишвили, 1960, 427] համարում է «ինչ-որ տոհմա-ցեղային միավորի անվանում»։ Ինչպես հայտնի է, **գիւղ**-ը հանդիպում է **գեւղեան**, **գեղենի**, **գեղաւրայ-ք** (**գեղաւրէք**) հոգնակի-հավաքման ձևերով և Gilurani-ի մեջ կարելի է տեսնել ինչ-որ հավաքական ձև։

7) Maqaltuni բնակավայրի (գտնվել է Igani երկրում՝ Չըլդըր լճի հարավ-արևմտյան ափին) անունը, ինչպես նշվել է, կարող է հայկական կազմություն լինել՝ **տուն** բաղադրիչով. Հնարավոր է առաջին մասն էլ նույնացնել **մակաղ** «ոչխարների փարախ» բառի հետ, որ սեմական փոխառություն է (համմտ. եբր. miḵəlā «փարախ»). Հ. Աճառյանը [ՀԱԲ, 3², 231] բխեցնում է ասորական կորած ձևից, բայց այն կարող էր լինել ավելի վաղ շրջանի փոխառություն։

Անհնար չէ կարծել, որ նույն **տուն** բառի ձայնեղ բաղաձայնային տարբերակն է առկա barzudibiduni կոմպլեքսի մեջ, որ ինչ-որ շինության անուն է և հանդիպում է É «տուն» գաղափարագրով. այն մեկ անգամ գրված է նաև barzudibidu (ni-ն դիտվել է ուրարտագետների կողմից որպես որոշիչ հոդ), մեկ անգամ էլ՝ barzidibiduni։ Այս դեպքում barzu-ի մեջ էլ կարելի է տեսնել **բարձր**-ի հին **բարձու** հիմքը (համմտ. նաև barzani «?» և Barṣia-դիցուհու անուն). անհայտ է մնում dibi-ն։

8) Eraṭele բնակատեղի անվանման մեջ թերևս առկա է հայ. **անղ(ի)** (հին **եաղ**) բառը. Era-ն կարող է լինել կամ ցեղանուն, կամ հայ. **երա-** «նախկին, առաջին» (համմտ. **երախայրի** «առաջին պտուղ») և հայ. **երայ** (**երէ**) «որսի կենդանի» հիմքերից որևէ մեկը։

9) Uškiani լեռնանունը թերևս կապված է հայ. **ոսկի** բառի հետ. եթե **ոսկի** բառը ուրարտական ծագում ունի (որ հնարավոր է), ապա Uškiani-ն ամբողջովին ուրարտական կազմություն է, այլապես այն փոխառված է հայ. **Ոսկեան** տիպի նախաձևից (համմտ. **Ոսկեանք**):

## 2. ՀԱՅԵՐԵՆԸ ԵՎ ՍԵՄԱԿԱՆ ԼԵԶՈՒՆԵՐԸ

### ա) ՍԵՄԱԿԱՆ ԼԵԶՈՒՆԵՐԸ ԵՎ ԲԱՐԲԱՌՆԵՐԸ

Սեմական լեզուները սովորաբար բաժանում են երեք խմբի՝ հյուսիս-արևելյան, հյուսիս-արևմտյան և հարավային։ Հյուսիս-արևելյան խումբը ներկայացված է մեռած աքքադերենով, որ ունեցել է երկու բարբառ՝ ասուրերեն (ասորեստաներեն) և բաբելերեն։ Հյուսիս-արևմտյան խմբին են պատկանում՝ ա) այսպես կոչված, քանաանական լեզուները՝ եբրայերենը (հրեերենը, իվրիտը), սրան մերձավոր մովաբերենը, փյունիկերենը, ուգարիտերենը, և բ) արամեերենը իր բազմաթիվ բարբառներով, որոնք բաժանվում են արևմտյան (հինարամեական, պալմիրյան, նաբաթեական, պաղեստինա-արամեական) և արևելյան (ասորական, մանդեական, բաբելոնա-թալմուդյան) բարբառների։ Հարավային խումբը ներկայացված է արաբերենով, հարավ-արաբական հին ու նոր լեզուներով (հին՝ սաբեերեն, մինեերեն, կատաբանե-

րեն, նոր՝ մեհրի, շահրի, սոկոտրի) և եթովպական լեզուներով՝ գեեզ (հին գրավոր լեզու), ամհարերեն, տիգրե, տիգրինյա, հարարի, գուրագե[1]։

Սեմական լեզուները ակնհայտ ցեղակցության մեջ են եգիպտական, բերբերական և քուշական լեզուների հետ, որոնք միավորվում են քամական լեզուների անվան տակ և սեմական լեզուների հետ կազմում են սեմա-քամական լեզուների ընդհանրությունը։ Մ. Կոհենը և ուրիշ հետազոտողներ սեմական լեզուները ոչ թե հակադրում են մնացած երեքին, այլ դիտում նրանց հետ միասին որպես նույն ընտանիքի հավասարազոր անդամներ։

Սեմա-քամական ցեղերի սկզբնական բնակավայրը համարվում է հյուսիսային Աֆրիկան։ Սեմա-քամական ընդհանրության տրոհումից հետո, մ. թ. ա. V—IV հազարամյակներին սեմական ցեղերը գրավեցնում էին Արաբական թերակղզին՝ զբաղվելով հիմնականում անասնապահությամբ և վարելով քոչվորական կյանք։ Այստեղից նրանք տարածվում են հյուսիս։ Մ. թ. ա. III հազարամյակում սեմական այն ցեղերը, որոնք հետագայում հայտնի են դառնում ակկադացիների անվամբ, սիրիական տափաստաններից սկսում են թափանցել Միջագետքի հյուսիսային մասը։ Աստիճանաբար ակկադները տարածվում են նաև հարավ և խառնվում տեղական շումերական բնակչության հետ։ Միջագետքում հաստատվելուն ուղեկցում է տեղի ունենում նրանց անցումը հողագործության։

Սեմական լեզուները կառուցվածքա-տիպաբանական առումով աչքի են ընկնում հետևյալ առանձնահատկություններով։

1) **Հնչյունաբանություն։** Ձայնավորական կազմը հարուստ չէ. սկզբնապես եղել են միայն a, i, u ձայնավորներ՝ իրենց երկար և կարճ տարբերակներով։ Բաղաձայնական կազմը բնորոշում են՝ ա) սովորական խուլ և ձայնեղ բաղաձայնների կողքին հատուկ սաստկական (էմֆատիկ) բաղաձայնների (ṭ, ḍ, ṣ, ẓ) ու նրանց մերձավոր q-ի, բ) s, š, z շփականների կողքին t, d (θ, δ) շփականների առկայությունը, գ) կոկորդային բաղաձայնների առատությունը՝ ʾ (կոկորդային պայթյուն), h, ḥ, ʿ (նախորդին համապատասխանող ձայնեղ կոկորդային)։ Սեմական նախալեզվի համար վերականգնում են արտասանությամբ s-ի և š-ի միջև դտնվող ś շփականը, որի գոյությունը ենթադրվում է հրրայերեն մի շարք բառերում՝ շատ հնում։ Սեմական նախալեզվի և ժառանգ լեզուների բաղաձայնների փոխհարաբերությունը կարելի է արտահայտել 787-րդ էջի աղյուսակով [Гранде, 1942, 54, 59]:

**Բառակազմություն և ձևաբանություն:** Սեմական լեզուների մեջ արմատների հիմնական մասը եռաբաղաձայն է. բառակազմական և ձևաբանական իմաստներն արտահայտվում են ձայնավորների հերթագայության և նախածանցների ու վերջածանցների միջոցով։ Անվան մեջ տարբերում են արական և իգական սեռեր, եզակի, երկակի և հոգնակի թվեր, այսպես կոչված, լծորդային (հատկացուցիչ ունեցող) և բացարձակ (հատկացուցիչ չունեցող) վիճակներ. արամեերենի և հատկապես ասորերենի համար բնորոշ է նաև անվան, այսպես կոչված, սաստկական վիճակը (status emphaticus), որ ար-

---

[1] Ի. Մ. Դյակոնովը [Дьяконов, 1965, 10] արաբերենը՝ մի կողմից, և հարավ-արաբական ու եթովպական լեզուները՝ մյուս կողմից, առանձնացնում է որպես առանձին՝ հարավ-կենտրոնական և հարավ-եզրային խմբեր՝ այսպիսով տարբերելով սեմական լեզուների չորս խումբ։

| Նախասեմ. | Աքքադ. | Արամ. | Եբր | Արաբ. | Եթովպ. |
|---|---|---|---|---|---|
| *t | t | t | t | t | t |
| *ṯ (*θ) | š | t | š | ṯ | s |
| *ṭ | ṭ | ṭ | ṭ | ṭ | ṭ |
| *θ̣ | ṣ | ṭ | ṣ | ẓ | ṣ |
| *d | d | d | d | d | d |
| *ḏ (*δ) | z | d | z | ḏ | z |
| *δ̣ | ṣ | ʿ (q) | ṣ | ḍ | ḍ |
| *s | s | s | s | s | s |
| *ṣ | ṣ | ṣ | ṣ | ṣ | ṣ |
| *ś | s | s | ś | š | š |
| *š | š | š | š | s | s |
| *z | z | z | z | z | z |
| *c | — | ʿ | ʿ | ʿ | ʿ |
| *γ | — | ʿ | ʿ | ġ | ʿ |
| *ḥ | — | ḥ | ḥ | ḥ | ḥ |
| *ḫ | ḫ | ḥ | ḥ | ḫ | ḫ |

*տահայտվում է որոշյալության* -ā *կազմիչով. արաբերենում այն փաստորեն դարձել է անվան սովորական վերջավորություն։ Եռահոլով համակարգը (ուղղական՝* -u-*ով, սեռական՝* -i-*ով և հայցական՝* -a-*ով) պահպանվել է ոչ բոլոր լեզուներում և ոչ համատիպ գործածությամբ. այն նույնությամբ առկա է փաստորեն միայն աքքադերենի հին տեքստերում և դասական արաբերենում։*

*Բայական համակարգի համար բնորոշ է, այսպես կոչված, բայատեսակների գոյությունը (սովորական, սաստկական, պատճառական և այլն)։ Ժամանակային տարբերությունները թույլ են արտահայտված և հանդես են գալիս գերազանցապես կերպային տարբերությունների զուգորդությամբ։*

## բ) ՍԵՄԱ-ՀՆԴԵՎՐՈՊԱԿԱՆ ԱՌՆՉՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ՀԱՅԵՐԵՆԸ

*Սեմական լեզուների և հայերենի բառապաշարի ու նույնիսկ քերականական կազմիչների միջև կան զգալի թվով զուգադիպություններ, որոնք հայերենի՝ այդ լեզուներից կատարած փոխառությունների արդյունք չեն։ Դրանց մեջ կարելի է առանձնացնել մի քանի շերտ։*

*Առաջին շերտը կազմում են այն զուգադիպությունները, որոնք, ինչպես այլ առիթներով նշվել է, անկախ ցեղակցական հարաբերություններից և շփումներից, առկա են գրեթե բոլոր լեզուների մեջ և պայմանականորեն կոչվում են «տարրական ցեղակցության բառեր»։ Դրանք առաջին հերթին ձայնարկությունները, բնաձայնությունները և մանկական բառերն են, ընդ որում հայերենի այդ կարգի բառերը մասամբ գալիս են հնդեվրոպական ընդհանրության շրջանից, մասամբ ինքնակա կազմություններ են.*

*աղաղակ, բրբռ. ալաղել «լալ, գոռալ» (հ.-ե.* *alā — *բացականչություն), — սեմ.* *hll, *աքքադ.* alālu *«ցնծության երգ երգել, ցնծալ», եբր.* hillēl, *ասոր.* hallel *«գովել», արաբ.* hallala *«ցնծալ».*

*բրբռ. մնկ. բիբի, պիպին «երեխա» աքքադ.* bāḫu, bībû(m), *արաբ.* bäbba *«փոքր երեխա».*

*ծիծ* — *աքքադ.* zīzu «*ծիծ*», *եբր.* zīz, *արամ.* zīzat «*կուրծ, ստինք (կենդ.)*».

*մռմռալ, -ել* «*մռնչալ, (բրբռ.) մրթմրթալ, քրթմնջալ*» (*հ.-ե.* *murmur-, *mormor-) — *արաբ.* mrmr «*մրթմրթալ, քրթմնջալ, դառնանալ, բարկանալ*», *եբր.* mrmr «*չարանալ*» (*այլև* «*մրթմրթալ, քրթմնջալ*»).

*Հայ. փուք, փչել (փուչ)* [*հ.-ե.* *p(h)(ə)u- «*փչել*»] *սեմ.* *pwḥ/ḫ (*արամ.* puaḥ «*փչել*»)։

*Երկրորդ շերտը կազմում են այն զուգադիպությունները, որոնք սեմա-հնդեվրոպական հնագույն ցեղակցության արդյունք են և գալիս են խոր հնությունից: Անհամաչափ այդպիսի բառերի մի շարք՝ առնված Վ. Մ. Իլլիչ-Սվիտիչի բառարանից* [Иллич-Свитыч, 1971—1976]. *այստեղ զգալի թիվ են կազմում բնաձայնական-նկարագրական արմատները, որոնց մասին խոսվեց վերևում.*

*այրել* (*հ.-ե.* *āter-) — *եբր.* ḥty/w «*կրակ առնել (բերել)*».

*անուն* (*բրբռ. անում*)(*հ.-ե.* *nom-) — *աքքադ.* nabû(m) «*անվանել, կոչել*», *արաբ.* nb' «*հայտարարել, հաղորդել*».

*ուխեն* (*հ.-ե.* *au-) — *արաբ.* hwv «*ցանկանալ, սիրել*», *ուգար.* hwt «*ցանկություն*», *եբր.* 'wy «*ցանկանալ*» (*սեմ.* *hwy, *հմմտ. նաև եգիպտ.* aba- «*ցանկանալ*»?).

*աւր* (*հ.-ե.* *āmer-) — *աքքադ.* amāru(m), *ուգար., եթովպ.* 'mr «*տեսնել*», *քուշ.* > *գեեզ.* 'āmīr «*օր*».

*բերել* (*հ.-ե.* *bher-) — *աքքադ.* (*բաբ.*) bāru(m), ba'āru «*բռնել, որսալ*» (*սեմ.-քամ.* *br)?.

*բող, բողբոջ* (*հ.-ե.* *bhel-) — *արաբ.* 'abl «*նորաբույս խոտ, ստղարթ*»[2], *ասոր.* ībel, *եբր.* 'abal «*մարգագետին, հովիտ*» (*սեմ.-քամ.* *'bl).

*բրել, բրիչ* (*հ.-ե.* *bher-) — *արաբ.* brw/y «*կտրել-հանել*», *հր.-արամ.* brz «*ծակել*».

*գլուխ* (*հ.-ե.* *ghel-) — *արաբ.* ǰalǰala, *արամ.* gulgultā, *եբր.* gulgōlet-, *աքքադ.* gulgull(at)u(m) «*գանգ. գլուխ*».

*դնել* (*հ.-ե.* *dhē-) — *արաբ.* wdᶜ «*դնել*» [*սեմ.* *(w)dᶜ].

*ելանել* (*հ.-ե.* *el-) — *արաբ.* ᶜlw, ᶜly, *արամ.*, *եբր.* 'ly/w «*ելնել, բարձրանալ*» (*ճիշտ չէ Վ. Մ. Իլիչ-Սվիտիչի համեմատությունը հ.-ե.* *al-*ի հետ, որտեղից հայ.* այլ).

*եղն(իկ)*(*հ.-ե.* *el-n) — *արաբ.* iyyal «*այծյամ*», *արամ.* 'yl, *ասոր.* 'aylō «*եղնիկ*».

*եմ, էակ* (*հ.-ե.* *es-) — *արաբ.* (la-)isa «*(չ)կա*» (*ժխտականով*), *աքքադ.* ašu «*կենդանի էակներ*», išû(m) «*ունենալ*», *եբր.* yēs, *արամ.* īt(ai) «*է*».

*թակել* «*ծեծել*» [*հ.-ե.* *(s)teb/p-?] — *ասոր.* ṭpḥ «*բռնցքահարել*», *արամ. եբր.* ṭbḥ «*սպանել*» (*այլ կերպ Իլիչ-Սվիտիչը*, Опыт,[2] *էջ 108*)։

*թորել, թրել, թրջել, թրմել (թուրմ), թարախ* [*հ.-ե.* *(s)ter-] — *արաբ.* ṭry «*թրջվել, փափկել (հողի մասին)*» [*սեմ.-քամ.* *ṭ(y)r].

*լակել* [*հ.-ե.** lak(k)] — *արաբ.*, *եբր.* lqq «*լիզել*».

*լմել, լմլմել* (*հ.-ե.* *lem-) — *աքքադ.* lmn «*ծամել, որոճալ*» (*բայց սա*

---

[2] *Աքքադական անվանական ձևերը տրվում են առանց պասական արաբերենի* -u(n) *վերջավորության*

կապվում է lêmu, laḫamu բայերի հետ, որոնք ունեն այլ արմատ՝ միջին կոկորդայինով).

լու (հ.-ե. *bh/plus-) — արաբ. burɣuṯ, ասոր. purta'nā «լու».

ծին, ծնանիլ (հ.-ե. *g'en-) — արաբ., ուգար. gny, եբր. gny/w «ստեղ-ծել, արարել. ձեռք բերել».

կեր, կուր, կոկորդ (հ.-ե. *gʷer-) — արաբ. ǰr' «կլանել, կուլ տալ», ասոր. gagarətō, եբր. gargərōt «կոկորդ».

կին (հ.-ե. *gʷen-) — աքքադ. kinītu «հարճ», արամ. knt, ասոր. kənō-tō «ընկեր».

կռունկ (հ.-ե. *ger-) — արաբ. kurkīy, արամ. kurki̯ā «կռունկ», աքքադ. kurku «հավքի անուն» (?) (փոխառությո՞ւն շումերերենի՞ց).

հանի-դի-ստ (հ.-ե. *kʷei-) — ասոր. qw', եբր. qwy «մնալ, սպասել».

հոլով «թավալում, գլորում», հոլ (հ.-ե. *kʷel-) — արաբ. qlb «պտտել, գլորել».

ձուկն (հ.-ե. *g'hdu-, *g'hi̯u-) — ուգար. dgu «ձկներ» (հավաք.), եբր. dāg.

ճմլել, բրբռ. ճմռել (հ.-ե. *gem-) — աքքադ. kamû(m) «կապել» (ասու-րեր. ekmem «սեղմել, ճմլել»).

մալել «մանրել», մլ-աղաց «ջրաղաց», մեղկ, մեղմ (հ.-ե. *mel-) — արաբ. mlḫ «պոկել. կտրել», արամ., եբր. mll «տրորել».

մաշել (*մարշել), մարտ «կռիվ» (հ.-ե. *mer-) — եբր. mrḥ, ասոր., աքքադ. mrq «տրորել».

մարի «էգ թռչուն» (հ.-ե. *mer-) — արաբ. mar' «տղամարդ», 'im-rā'at «կին», ասոր. mārā «տեր», աքքադ. māru(m) «տղա. ձագ».

մաւր, -մոյն «խեղդ» (հ.-ե. *meu-) — արաբ. mā, ասոր. mai̯i̯ā (հգն.), եբր. mayim (հգն.), աքքադ. mā'ū, mū «ջուր».

մեռանիլ (հ.-ե. *mer-) — արաբ. mrd «հիվանդ լինել», ասոր. mar'ā «հիվանդ».

մի՛ (հ.-ե. *mḗ) — արաբ. mā «ոչ».

մնալ (հ.-ե. *men-) — արաբ. 'mn «ապահով լինել», ասոր. 'amīn «ա-մուր», եբր. n-'mn «կայուն՝ վստահ լինել».

որովայն (*krep-?) — արաբ. qurb «աճուկ», qirbat «տիկ», եբր. qereb, աքքադ. qerbu(m) «ներս, միջնամաս».

ուտել (հ.-ե. *ed-) — աքքադ. ta'û(m) «ուտել. արածել» (սեմ. *t'w).

սառն, սառնուլ (հ.-ե. *k'er-) — ասոր. qarḥā «վատ եղանակ», եբր. qe-raḥ «սառույց. ցուրտ», աքքադ. qarḫu(m) «սառույց».

սար (հ.-ե. *k'er-) — արաբ. qurnat «եղր», արամ. qarnā, եբր. qeren, աքքադ. qarnu(m) «եղջյուր».

սարի-ք «շղթա, կապանք» (հ.-ե. *k'er-) — արաբ. karr «թոկ» (սեմա-քամ. *kr).

տալ «ամուսնու քույր» (հ.-ե. *g'ʙlōu-) — արաբ. kanna (kalna), մեհ-րի kelōn «հարս» [սեմ.-քամ. *kl(l)].

ցելուլ, ցեղ (հ.-ե. *skel-) — արաբ. sl' «ճեղքել», ասոր., եբր. sala, «ժայռ».

փերթ (հ.-ե. *(s)p(h)er-) — արաբ. fry «կտրել, ճեղքել», արամ. pr' «քանդել», ասոր. prq «փրկել» (> հայ. փրկել), prq «անջատել» և այլն.

*քար* (*հ.-ե.* *ker-) — *արաբ.* qāra «*ժայռ, բլուր*».

*քերել, քերթել* (*հ.-ե.* *ker-) — *արաբ.* qurāma «*հացի կեղև*», *եբր., արամ.* qərum «*կեղև, կաշի*».

*քէն* (*հ.-ե.* *ku̯ol-n-) — *արամ.՝ մանդ.* qlna «*խանդ*» (*սեմ.* *qn' «*քանդել*»)[3].

*քիմ-ք* (*հ.-ե.* *ku̯em-) — *արաբ.* qmm «*խմել*»։

*Երրորդ շերտը կազմում են այն զուգադիպումները, որոնք արդյունք են սեմականից կատարված հնդեվրոպական հնագույն փոխառությունների։ Ինչպես նշել ենք հնդեվրոպական բառապաշարի քննության ժամանակ, նախորդ հետազոտողների տվյալների հիման վրա Վ. Մ. Իլիչ-Սվիտիչը* [**Иллич-Свитыч, 1964**] *առանձնացնում է 24 այդպիսի բառ։ Թեև նա չի պարզում նախասեմերենի կրողների և հնդեվրոպացիների տարածական շփման հնարավորության հարցը և չի խոսում այդ բառերի տարածման ուղիների մասին, բայց նրա բերած նյութը արժանի է ուշադրության։ Այստեղ դրանցից բերենք այն բառերը, որոնք արտացոլված են նաև հայերենում. 1) կով (հ.-ե.* *gu̯ou-) — *եգիպտ.* gw, *ագադ.* kuwā, *կաֆֆա* gaû, gō *և այլն «եզ»* (*չկա սեմականում, հմմտ. նաև շումեր.* gud «*եզ*», *որ ոմանք համարում են հնդեվրոպականի աղբյուրը*). *2*) *արտ* (*հ.-ե.* *ag'ro-) — *արաբ.* ḥadr «*բակ, բնակավայր*», *ասոր.* ḥērəṭa «*ճամբար*», *եբր.* ḥāṣēr «*ցանկապատված հողամաս, բակ*» *և այլն* (*սեմ.* *ḥdr. *սակայն հմմտ. շումեր.* agar «*արտ*»). *3*) *ցախ* (*հ.-ե.* *(s)k'ăkhā)—*աքկադ.* šakāku «*տափանել*». *4*) *անդ* «*հանդ*» (*հ.-ե.* *andh-) — *արաբ.* ḥnṭ «*հասնել, պտուղ տալ*», *արամ.* ḥiṭṭā «*ցորեն*», *եբր.* ḥnṭ «*բողբոջել*» (*սեմ.* *ḥnṭ). *5*) *դոն* «*մի տեսակ հաց. պաքսիմատ*» (*հ.-ե.* *dhōnā) — *արաբ.* duḫn, *արամ.* duḫ(î)n, *եբր,* duḫan, *աքկադ.* duḫnu «*կորեկ*». *6*) *երկան* (*հ.-ե.* *gu̯rānā) — *արաբ.* grn «*աղալ*», *եբր.* gōren «*կալ*», *7*) *գինի* (*հ.-ե.* *u̯oino-) — *արաբ.* wayn-un «*սև խաղող*», *եբր.* yayin, *աքկադ.* înu «*գինի*» [*եթե չենթադրենք հակառակ փոխառություն կամ փոխառություն միևնույն* (*միջերկրական*) *աղբյուրից և՛ սեմականում, և՛ հնդեվրոպականում*]. *8*) *դուռն* (*հ.-ե.* *dhu̯er-) — *արաբ.* ṭawār «*ցանկապատ*», ṭūr «*բակ*», *ասոր.* ṭəyarā «*փարախ*», *եբր.* ṭūr «*քարե պատ. սյունաշար*». *9*) *նաւ* (*հ.-ե.* *nāu-) — *արաբ.* 'inā' «*պտուտակ*», *եբր.* 'onī «*նավ*», *աքկադ.* unūtu «*աման*» (>*հայ. անաւթ*?). *10*) *տաւն* (*հ.-ե.* *dap-) — *արաբ.* dbḥ «*զոհել*», *ասոր.* dəbḥā «*զոհաբերություն*». *11*) *աստղ* (*հ.-ե.* *ster-) — *աքկադ.* Ištaru «*Իշտար, աստված՝ աստղով խորհրդանշված*», *եբր.* ‘Aštōret, *փյունիկ* ‘strt — *Աստարտա*. *12*) *այս* «*քամի. չար ոգի, դև*» (*հ.-ե.* *ansu-, *եթե* *ansi̯o- >*այս*) — *արաբ.* ḫanzab «*դև, սատանա*». *13*) *եւթն* (*հ.-ե.* *septm̥) — *արաբ.* sab‘at, sab‘, *աքկադ.* sibittu, sību «*յոթ*»։

*Չորրորդ շերտը կազմում են այն զուգադիպումները, որոնք արդյունք են անմիջական կամ միջնորդավորված փոխառության։ Հետագա քննության մեջ մենք կանգ կառնենք հայերենի՝ սեմական փոխառությունների հարցի վրա նախ ընդհանրապես, ապա ըստ հնարավորին դրանք կխմբավորենք ըստ աքկադական, արամեական ու հատկապես ասորական, թերևս նաև վաղ արաբական աղբյուրների։ Նշենք, որ բացառում ենք եբրայերենը, որի ազդեցությունը կապված է հատկապես աստվածաշնչի թարգմանության հետ. բուն*

---

[3] *Վ. Մ. Իլիչ-Սվիտիչը չի տալիս հ.-ե. այս զուգահեռը։*

եբրայերենը մ. թ. ա. VI դարից որպես խոսակցական լեզու արտամղվում էր արամեերենի կողմից։ Սրա հետ կապված նշենք, որ նաև սեմա-հայկական որոշ զուգադիպությունների դեպքում հնարավոր է ենթադրել հակառակ շարժում՝ սեմական լեզուների՝ հայերենից կատարած փոխառություններ. ինչպես կտեսնենք, դրանք գերազանցապես հատուկ անուններ են, մասամբ էլ, թերևս, հասարակ անուններ։

Այս կապակցությամբ հարկ ենք համարում կանգ առնել հայերենի և շումերերենի փոխհարաբերության հարցի վրա։ Ինչպես հայտնի է, շումերները Միջագետքի հնագույն բնակիչներն են և մեծ ազդեցություն են գործել աքքադացիների վրա, որոնք նրանցից փոխ են առել մեծ թվով բառեր։ Շումերերենի գրավոր հուշարձանները սկիզբ են առնում մ. թ. ա. IV հազարամյակի վերջերից։ Աքքադացիների՝ Միջագետքում բնակություն հաստատելուց հետո շումերները աստիճանաբար դառնում են աքքադալեզու. շումերերենը որպես խոսակցական լեզու դադարում է գործածվելուց մոտավորապես մ. թ. ա. II հազարամյակի կեսերից, թեև աքքադական դպիրները շարունակում էին այն գործածել որպես գրավոր լեզու։ Շումերերենի ցեղակցության հարցը դեռևս բաց է մնում, թեև եղել են այն տարբեր լեզուների, այդ թվում՝ նաև հնդեվրոպական լեզուների հետ կապելու փորձեր (Շ. Օտրան)։ Սակայն կասկած չի կարող լինել, որ շումերերենը նշանակալից ազդեցություն է գործել շրջակա լեզուների, մանավանդ աքքադերենի և աքքադացիների միջնորդությամբ այլ լեզուների վրա։ Նշենք, որ աքքադերենն իր հերթին ազդել է շումերերենի վրա։

Տարբեր ժամանակներում փորձեր են արվել հայերենը կապելու շումերերենի հետ և նույնիսկ ցեղակցական կապեր հաստատելու նրանց միջև։ Սակայն այդ փորձերը կատարվել են գերազանցապես պատմահամեմատական լեզվաբանության նվաճումներին անտեղյակ մարդկանց կողմից և գիտականորեն անհավաստի են[4]։

Իհարկե, հայերենի և շումերերենի միջև կան բառային զուգադիպումներ, բայց դրանք հարկավոր է շերտավորել ըստ հնարավոր աղբյուրների ու անցման ուղիների և բացառել պատահական զուգադիպումները. շումերական միավանկ բառերի մեծաքանակության և դրանց հաճախակի համանունության դեպքում այդպիսի նմանությունները անխուսափելի են։ Հարկավոր է նկատի առնել, որ մ. թ. ա. III հազարամյակում հայերենը նոր է սկսել իր գոյությունը որպես ինքնուրույն լեզու՝ հնդեվրոպականից անկախ։ Հատկանշական է նաև քերականական կառուցվածքների խիստ մեծ տարբերությունը։

Շումերա-հայկական զուգադիպումները մի քանի կարգի են՝ 1) բնաձայնական բառեր, ձայնարկություններ և մանկական լեզվի բառեր՝ ընդհանուր տարբեր լեզուների համար, ինչպես բբռ. ադե— ad, ad-da «հայր. մայր» աղաղակ—elalu «աղաղակել. ոռնալ». բաղբաճչել—bal «խոսել». բբռ.

[4] Հմմտ., օրինակ, **Gulbenkian,** 1960։ Այստեղ հեղինակը կամայական համեմատություններ է կատարում՝ առանց հաշվի առնելու հնչյունական օրենքները, առանց տարբերելու հայերենի բնիկ և փոխառյալ բառերը, հին և նոր ձևերը, առանց հիմնավորելու իմաստային անցումները. հմմտ. դէմ-ք (<իրան.)—շումեր. damu, ջիղ (հ.-ե. *g'hīslā )—շումեր. gir «ջղայնություն», թուշ—շումեր. dug (tuk), ողն—շումեր. ir, ur «ողնաշար» և այլն։ Անթույլատրելի են, մանավանդ, հայերեն բառերը արմատների կամայական մասնատումներով մեկնելու փորձերը։

պլպլի «հնդկահավի ձագ» — bibe «բադ». բրբռ. մնկ. մա «մայր» — ama «մայր». փուք, փուչ-, փչել (< հ.-ե. *phu-k-), բուք (< հ.-ե. *bhu-k-) — bu «փչել» և այլն. 2) Առաջավոր Ասիայի ժողովուրդների մեջ տարածված մշակութային բառեր, որոնց սկզբնաղբյուրը կամ շումերերենն է՝ այլ լեզուների մեջ տարածված աքքադերենի միջոցով ու նրա միջնորդությամբ, կամ աքքադերենը, կամ որևէ այլ, երբեմն անհայտ լեզու՝ ագարակ — agar «դաշտ, արտ» — աքքադ. ugaru(m) և այլն. անագ — nagga — աքքադ. anāku — խուռ. anagi և այլն. թոնիր — tunur, tinur — աքքադ. tinūru(m) — արամ. tannurā և այլն. կաշի — kuš — աքքադ. kušu(m) և այլն. կատու — gad(a/u) «վուշ. կտավե հագուստ» — աքքադ. kitū և այլն. մաշկ — maškum — աքքադ. mašku(m) և այլն. զիզ — ziz — աքքադ. sāsu(m) և այլն. 3) Հավանաբար պատահական նմանություններ՝ գէզ, գեզ «տրատ, պատառվածք» — guz «կտրատել, պատառոտել». եղեւին (հ.-ե. *el-eu-) — erin «մայրի». խզել (խուզ-), խուզել (խույզ-) — ḫaz «կտրել-անջատել. ջարդել», մորճ «դալար ճյուղ» (հ.-ե. *mer-?) — mu, muduru «ճիպոտ, գավազան» և այլն: Կան նաև առայժմ դժվար բացատրելի զուգադիպություններ. եթե դրանք պատահական չեն, և եթե շումերերենը չի պահպանում նոստրատիկ ընդհանրությունը, ապա այստեղ կարելի է տեսնել տարբեր կարգի միջնորդող օղակներ. հմմտ. ուդի «ոչխար» (հ.-ե. *oṷi-?) — udu «ոչխար. մանր եղջերավոր անասուն». գնալ — gin «գնալ. ուղարկել». ելանել (հ.-ե. *el-) — il «բարձրացնել, տանել. բերել». ծագ «ծայր» — zag «կողմ. սահման. ըսկիզբ. դրսի կողմ. բաց դաշտ. անապատ». կամակոր «ծուռումուռ» (եթե կամ-ի մ-ն կոր-ի հնչյունափոխված կրկնավորը չէ) — gam «թեքվել» — աքկադ. kamāsu(m) «թեքվել. ծնկի գալ». կար (հմմտ. նոստր. *kär∧, քարթվ. *ḳar-/ḳer- «կապել») — kar «կապել» և kar «կապանք». կին (հ.-ե. *gṷen-, նոստր. *küni) — gin «աղախին. ստրկուհի». կոկ «ողորկ, հարթ» — gug «թանկագին քար մաքուր. փայլուն». կով (հ.-ե. *gṷou-) — gu(d) «եզ. խոշոր եղջերավոր անասուն» (բայց հմմտ. áb «կով»). կոր (հ.-ե. *geu-?) — gur «պտտել, շուռ տալ». կուռ, կռել (ըստ Աճառյանի՝ ուրարտերենից) — kur «հաստատցնել. հաստատնալ» (?). մրջիւն (հ.-ե. *mōr-, *mur-?) — marun (šurun ?) «մրջյուն» (?). ոսկի — guškin «ոսկի». պատ — bad «պատ. ամրոց, բերդ». պար — bar «կողմ. պատել, շրջապատել». քող (քուղ) — kulla «ծածկոց, քող» և այլն: Այս առումով հետաքրքրական է նշել, որ կան նաև համաբնույթ շումերա-ուրարտական զուգադիպումներ՝ ուրարտ. du- «անել» — շումեր. du «անել. կառուցել». ուրարտ. qi(u)ra «երկիր» — շումեր. kur «տեղ, վայր». ուրարտ. tiau- «ասել», tini «անուն» — շումեր. de «խոսել» և այլն:

## գ) ՀԱՅԵՐԵՆԻ ՍԵՄԱԿԱՆ ՓՈԽԱՌՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Ամփոփելով իր նախորդների, հատկապես Հ. Հյուբշմանի, հետազոտությունների արդյունքները՝ Հ. Աճառյանը տարբերում է հայերենում ասորերենից կատարված 27 և ասորերենից կատարված 211 փոխառություն: Կազմելով հայերենի նախագրային շրջանում սեմական լեզուներից կատարած փոխառությունների հնարավոր ցանկը՝ մենք կատարել ենք հետևյալ փոփոխությունները, հավելումները և ճշտումները:

*1) Հայերենի աքքադական համարվող փոխառությունների ցանկից հանել ենք այն բոլոր բառերը, որոնց աքքադական ու ընդհանրապես սեմական բնույթը չի հաստատվում աքքադական նորագույն բառարանագրության տըվյալներով* [**Soden**, AH, 1965—1981. The Assyrian dictionary, 1956 *և հջ.*]. *դրանց համար երբեմն կարելի է ենթադրել ավելի հավանական այլ աղբյուրներ, որոշ դեպքերում էլ գործ ունենք հին սխալ ընթերցումների հետ։*

*2) Ավելացված են այն բառերը, որոնք նորագույն հետազոտությունների (այդ թվում՝ նաև հեղինակի աշխատությունների) հիման վրա պետք է սեմական ծագում ունենան [Հմմտ.* **Джаукян**, 1981. **Djahukian**, 1962. **Дьяконов**, 1982]:

*3) Հանված են այն բոլոր բառերը, որոնց սեմական ծագումը կասկածելի է, և որոնք փոխառված են միայն V դարում ու ավելի ուշ։ Այս դեպքում, բնականաբար, ոչ միշտ կարող են լինել V դարում և ավելի վաղ կատարված ասորական փոխառությունների ժամանակագրական հստակ տարբերակման չափանիշներ։ Մեր կողմից հանված են՝ ա) հայկական աղբյուրներում V դ. հետո վկայված ասորական բոլոր փոխառությունները առանց վերապահության. այն դեպքերում, երբ ժամանակագրական դժվարություններ կան (օրինակ՝ հունաբան վաղ երկերի համար), հարցը լուծվել է հօգուտ V դարի, մանավանդ, եթե բառիմաստը ենթադրում է վաղ փոխառություն. բ) V դ. վկայված այն փոխառությունները, որոնք ասորական բառերի մատենագրական սովորական տառադարձություններ են և մատենագրական աղբյուրներում հանդիպում են 1—2 անգամ, այն էլ միևնույն հեղինակի մոտ. բացառություն է արված միայն* ապուղայ *և* ռ(ա)բունայ *բառերի համար, որոնք իրենց նշանակությամբ պետք է հին լինեն.* ապուղայ *բառը հանդիպում է կանոնագրքում և նշանակում է «ձեթի տիկ»՝ տկի այն տեսակը, որոնցով ասորի վաճառականները ձեթ էին բերում Հայաստան վաճառելու.* ռաբունայ *«գրավական, ավանդ» բառը հանդիպում է 2 անգամ, բայց տարբեր հեղինակների մոտ, և ունի այնպիսի իմաստ, որ ենթադրում է փոխառության հնություն. գ) մեկնություններում որպես օտարազգի հիշատակված բառերը։ Ստորև բերում ենք այս կարգի բառերի ցանկը.*

***աստրատիգայ** «զորապետ, ստրատեգ». Հմմտ. ասոր.* estratīgā < *հուն.* στρατηγός.

***ատեսարոն** «չորս ավետարան». Հմմտ. ասոր.* ditsron *(առանց ձայնավորների նշանների գրված)* < (τὸ) διατεσσάρων.

***ափիղատոս** (< *ափիմղատոս ?) «հոգաբարձու, տեսուչ, վերակացու». Հմմտ.* apīmlatūs < *հուն.* ἐπιμελετής.

***բեթթիկա** «պանդոկ, իջևան». Հմմտ. ասոր.* bīt- *«տուն» և* tīqā < *հուն.* θήκη.

***բուծին, -ոյ** «պատրույգ», Հմմտ. ասոր. (ուշ.)* būṣīnā *(աքքադ.* buṣīnum, buṣīnnu-) *«պատրույգ. աշտանակ. մոմակալ. խունկառ բույսը» (սեմ. աղբյուրից է պրսկ.* būzīn).

***դասպինիա** «դժվարաշնչություն». Հմմտ. ասոր.* dispənīā < *հուն.* δύσπνοια.

***թոհ և բոհ** (թոխ և բոխ) «ամայի». Հմմտ. ասոր.* tōh wə vōh, *եբր.* tōhu vā bōhu *«ամայի և անապատ» (հանդիպում են մեկնություններում որպես օտարազգի բառեր. հայ. թարգմանությամբ «աներևույթ և անպատրաստ»).*

իբրամէն, -ու (< *դ(ի)բրամէն. դարբէոմին) «Մնացորդաց գիրք». հմմտ. ասոր. dibre-yomin, եբր. dibre-hayāmīn.

խարագուլ «մանր մորեխ». հմմտ. ասոր. ḥargəlā «մորեխ» (ḥargāla, ն. ասոր. ḥargūl, եբր. ḥargōl, արաբ. ḥarǰal).

մդրիշայ «երգ». հմմտ. ասոր. madrāšā.

մղաւաշէ, -ից «կենդանակերպ». հմմտ. ասոր. malvāšē.

մուղ, -աւք «էգ էշ». հմմտ. ասոր. mūlā.

յաթ «տարր, նախանյութ». հմմտ. ասոր. yāṯā «գոյություն, նյութ» (նշված է որպես ասորական բառ).

յամոյր, -ի, -աց «վայրի այծ, այծյամ». հմմտ. ասոր. yaḥmūrā, եբր. yaḥmūr (արաբ. yaḥmur «ցիռ»).

յապանաս «արհամարհանք, թշնամություն». հմմտ. ասոր. yapanas.

նաբաղել «անարգել». հմմտ. ասոր. nabbel «անարգել», եբր. nbl «նախատել», nābāl «խենթ» (Նաբաղ անձնանվան մեկնություն).

նածր-(ացի) «Նազովրեցի, քրիստոնյա». հմմտ. ասոր. naṣrāyā (արաբ. naṣrānī. Նազովրեցի ձևը հուն. Ναζωραῖος-ից է կազմված).

շումրայ (շամրայ) «վայրի սամիթ». հմմտ. ասոր. šamārā, šamrā, šūmrā. արաբ. šumra (ըստ Աճառյանի՝ šamrā > *շամրայ, ապա արաբ. ազդեցությամբ՝ շումրայ. ըստ Հյուբշմանի՝ արաբերենից, բայց Հյուբշմանը տեղյակ չէ V դ. վկայությանը).

շուփայ «աչքի դեղ, ծարիր». հմմտ. ասոր. šəyāpā (այստեղից արաբ. šiǰāf և պրսկ. šāfā. հայերենի համար պետք է ենթադրել երկրորդական ասոր. ձև՝ šūpā կամ šāpā > *շափայ, եթե հայ. թարգմանիչը սխալ չի կարդացել šəyāpā-ն).

պապկայ, -ի, -ից «թութակ». հմմտ. ասոր. pap(a)gā (արաբ. babaγā, պրսկ. bapγa և այլն).

պողոտայ, -ի, -ից. հմմտ. ասոր. plātīā < հուն. πλατεῖα.

պրակսաւաթայք (պրակս ուաթ(ե)այք, պրակսաւթույք, պրաքսաւթայք) «Գործք առաքելոց»-ի անվավերական գրքեր. հմմտ. ասոր. prqsvtā (առանց ձայնավորների նշանների) < հուն. Πράξεις αὐτῶν «նրանց գործերը».

սաբա «ծեր». հմմտ. ասոր. sābā «ծեր».

տաքսատ «զորախումբ». հմմտ. բյուզ. հուն. ταξάτος «բերդապահ զորք» (> ասոր. ? > հայ.՝ Եփրեմ Ասորու երկերում).

տոփայ «լաստ». հմմտ. ասոր. ṭaupā «տկալաստ».

փուտկայ (փութկայ), -ի «պանդոկ». հմմտ. ասոր. pūṯqā < հուն. πανδοχεῖον (որա πανδοχεῖον ձևից է հայ. պանդոկ-ը).

քորայ «երկիր». հմմտ. ասոր. kōrā > հուն. χώρα։

4) Ընդհանրապես չեն բերվում եբրայական համարված բառերը, որոնք հայերենի մեջ մուտք են գործել աստվածաշնչի և եբրայական գրականության թարգմանության միջոցով V դ. և ավելի ուշ՝ հատկապես հունարենի միջնորդությամբ՝ որպես եբրայերեն բառերի հունարեն տառադարձումների համապատասխան հայերեն տառադարձումներ։

Հայերենի սեմական փոխառությունների՝ ստորև տրվող ցանկը կազմված է հետևյալ ձևով. հայերեն բառի կողքին տրվում են սեմական համապատասխան բառերը, ընդ որում՝ 1) մեկից ավելի լեզուներից զուգահեռներ բե-

բելու դեպքում նախ տրվում են հայերենին ամենից ավելի մերձավոր ձևեր ունեցող լեզուները, ապա մյուսները. 2) արամեական ձևերը հիմնականում տրվում են առանց տարբերակման, բացառությամբ ասորերենի, որ տրվում է **ասոր.** նշմամբ. սրանից տարբեր արամեական ձևերը տրվում են **արամ.** ընդհանուր նշումով. 3) եթովպական և հարավ-արաբական ձևերը սովորաբար չեն տրվում։ Ցանկի ավարտումից հետո կփորձենք ճշտել հայերենի բուն աղբյուրները՝ ըստ առանձին լեզուների։

աբեղայ, -ի, -ից. հմմտ. ասոր. ab̲īlā.

ադեն, -այ (ադին) «եդեմ, դրախտ». հմմտ. ասոր. 'ad̲en, եբր. 'ēd̲en. արաբ. 'adn. եբր. ձևից է հուն. 'Εδέμ, որից հայ. եդեմ.

աթութայ-ք, -ի, -ից «տառ(եր), տառանշան(ներ), գիր (գրեր)». հմմտ. ասոր. āṯūṯā (āṯ-ի հոգնակին).

ախմախ «հիմար, տխմար». հմմտ. արաբ. aḥmaq (հգն. ḥumāqā) «հիմար, տխմար» (ḥmq «հիմար լինել»).

ակուր «բրիչ» (ուշ ավանդված). հմմտ. աքքադ. aqqullu (akkullu < շում.).

աղխ, -ի, -ից «փականք. օղակ. ունեցվածք, ապրանք. բազմություն, ցեղ, գարմ, ժողովուրդ, մարդիկ». հմմտ. արաբ. 'ahl, ասոր. yahlō «ցեղ», արամ. 'ahəlā «ընտանիք. ունեցվածք, ազգականներ. մարդիկ», եբր. 'ōhel «վրան», աքքադ. ālu «տեղ, վայր. քաղաք».

աղց, -ի, -ից «կարիք». հմմտ. ասոր. ālṣā.

ամարու «գառնուկ». հմմտ. ասոր. 'emrā, արամ., եբր. immar, արաբ. īmmar, amarra և այլն.

ամղան «վերարկու». հմմտ. ասոր. āmlōn (āmelā).

այպն «ամոթ, ծաղր». հմմտ. արաբ. 'ayb «պարսավանք. արատ, թերություն. ամոթ».

անաւթ, -ոյ (ուշ՝ -ի, -ից) «անոթ, աման. գույք, կահ-կարասի. գործիք, միջոց. զինամիջոց». հմմտ. աքքադ. (ն. ասուր.) anūtu, այլև unūtu(m), enūtu(m) «անոթ, աման. գործիք, պիտույք, գույք, կահ-կարասի»[5].

ապուղայ, -ի, -ից «ձեթի սրվակ». հմմտ. ասոր. āp̄aulā [< լատ. ampulla «(կաշեպատ) լայնափոր շիշ»].

առնէտ, -ի, -ից. հմմտ. ասոր. arnā'a.

ատշիլ «ծարավել». հմմտ. արաբ. 'aṭiša «ծարավել», 'aṭaš «ծարավ», 'aṭiš «ծարաված, ծարավի» ('ṭš).

աքսոր-ք, -ից. հմմտ. ասոր. ak̲soria (ek̲soria < հուն. 'εξορία).

բասր-ել (բասիր) «պարսավել, անարգել». հմմտ. ասոր. bəsīr «անարգ», bəsar «արհամարհել, մերժել».

բարկ «կայծակ»[6]. հմմտ. արամ. barqā, եբր. bāräq, արաբ. barq, ուգար. brq, աքքադ. be/irqu.

---

[5] Ավելի քիչ հավանական է համեմատությունը խեթ. ḫan- «քաշել, հանել (հատկապես շերեփով և այլն)», հուն. ἄντλον «նավամբարի ջուր», ἀντλέω «քաշել, հանել» բառերի հետ, որոնց ընդհանրությունը (է. Բենվենիստ) ինքնին կասկածելի է։

[6] Հ. Աճառյանը միացնում է բարկ «կծու, թունդ, դժնյա, բարկացկոտ. շատ սաստիկ. հրաշեկ, խիստ տաքացած», բարկանալ «զայրանալ» արմատի հետ (<հ.-ե. *bhr̥gʷos, *bhorgʷo-s)։

բերդ, -ի, -աց. հմմտ. ակկադ. birtu(m), արամ. bīrtā «բերդ, ամրոց».

բոտոտ «ճիճու, որդ. փայտի ցեց». հմմտ. ասոր. beltīta «փայտի որդ», արաբ. baṭīṭa, buṭīṭia (նվազական) «ծառի որդ».

բուռ «կիր, գաջ». հմմտ. ակկադ. pūlu(m) (pīlu, pēlu) «կրաքար» (ակկադերենից է հուն. πῶρος-ը «տուֆ, փխրաքար»?).

գագաթն. հմմտ. qaqqadu(m), kaqqadu(m) «գլուխ, գագաթ», եբր. qodqōd.

գադիշ, -ի, -ից, «դեզ». հմմտ. ասոր. gədīšā, եբր. gaḏīš.

գաղութ, -ի (այստեղից գաղթել, գաղթ). հմմտ. արամ. (ասոր.) gä-lūṯ-ā «աքսոր, գաղթ», եբր. gālūṯ.

գզաթ, -ու «բուրդ». հմմտ. ասոր. gezzeṯa, եբր. gizzā, gizzaṯ, ակկադ. gizzatu (սեմ. gzz «խուզել» արմատից. կապ ունե՞ն արդյոք սրա հետ գեզ «բիծ, ճեղք», գզել, գզգզել).

գուբ, -ոյ «հոր, փոս. բջիջ, փոսրակ». հմմտ. արամ. (ասոր.) gubb,-ā «գուբ, փոս. ջրհոր. բանտ», gōb, ակկադ. gubbu «ջրամբար»[7].

դար, -ու. հմմտ. արամ. (ասոր.) dārā, dār, ակկադ. dāru(m) «տևողություն, հավիտենություն».

դարգ «կարգ, շարք». հմմտ. արամ. (ասոր.) dargā «կարգ, աստիճան», darəgā «աստիճան».

զույգ, -ի, -ից, -աց. հմմտ. ասոր. zaugā «զույգ. կրկնակ. նման» < հուն. ζεῦγος «լուծ. զույգ».

զոպայ, -ի, -ից (ծոթրինակերպ մի բույս). հմմտ. արամ. (ասոր.) zōpā «զոպա».

զունար «գոտի» (ուշ ներմուծում). հմմտ. արաբ. zunnār «գոտի».

թանգար (թանկար), -ի, -աց «վաճառական». հմմտ. արամ. (ասոր.) taggār(ā), (մանդ.) tangārā, արաբ. tājir, ակկադ. tamkāru(m), damk/garu(m).

թարգման, -ի, -աց. հմմտ. արամ. targəmāna (turgəmānā), (ասոր.) targmānā, ակկադ. ta/urgumannu(m), targamannu(m).

թարշիշ, -ի (մի թանկագին քար). հմմտ., եբր. taršiš (> հուն. θαρσίς > հայ. թարսիս).

իլուլ (եբրայական տոմարի 6-րդ ամիսը). հմմտ. ասոր. īlūl, եբր. əlūl.

լումայ (լոմայ), -ի, -ից «մանր դրամ». հմմտ. ասոր. lūmā < *nūmā (< լատ. nummus?).

խանձարուր, -ոյ. հմմտ. ասոր. ʻazrurā.

խանութ (հանութ), -ի. հմմտ. ասոր. ḥānūṭā.

խարամանի (խարամայնի, խարամուն, այլև ժողովրդական ստուգաբանությամբ, Ահրիման-ի հետ զուգորդվելով՝ հարամանի) «չար, սատանա. չար օձ». հմմտ. ասոր. ḥarmān(ā) «օձ».

խարբ, -ի «սուր, թուր». հմմտ. արամ. (ասոր.) ḥarbā, եբր. ʻḥareḇ.

խարբալ-ել «մաղել. տակնուվրա անել. վնասել, վտանգել». հմմտ. արամ. (ասոր.) ʻarbālā «մաղ», ʻarbēl «մաղել».

խ(ի)լայ «պարգև տրված զգեստ. կանացի շղարշ» [խ(ի)լայել «զգեստ

---

7 Բայց հմմտ. հ.-ե. *gnpā «փոս, հոր». հ.-ե. սեմական հնավոր զուգաբանություն?

նվիրել»]. Համմ. ասոր. *ḫil'ā, արաբ. ḫil'a(t) [որտեղից խ(ի)լայթել «զգեստ նվիրել» ?].

խլուրդ. -ի (խլդրդն). Համմ. ասոր. ḥūldā, եբր. ḳoleḏ, արաբ. ḫuld. Համմ. նաև ասոր. ḥuldūḏā «դաշտամուկ».

խմոր, -ոյ (խմորել, անխմոր, խմեալ). Համմ. արամ. ḥm', (ասոր.) ḥma' «թթվել, խմորվել», եբր. ḥmṣ, արաբ. ḥamḍ.

խոռ «ծակ, փոս, խոռոչ, ծերպ, խորամ». Համմ. աքքադ. ḫurru, արամ. ḫōrā, (ասոր.) ḥurā, եբր. ḥōr, ḥūr «ծակ» արաբ. ḥurr «ծակել».

ծարիր (ծարոյր, ծարիւր, ծարոտր), -ոյ, -ի, -ից «աչքի սև ներկ». Համմ. ասոր. ṣəḏīḏā, աքքադ. ṣadīdu?.

ծիր, -ոյ «շրջապիծ» (ուշ՝ ծրել «գծել, գրել») (քարթվ. *ç₁er- «պատկերել. գրել» արմատի կողքին). Համմ. աքքադ. ṣirû «եզր», այլև eṣēru(m), ասոր. eṣāru(m) «նկարել, գծագրել» (ուրարտերենի միջնորդությամբ փոխառվա՞ծ).

ծնծղայ, -ի, -ից. Համմ. արամ. ṣalṣəlā, (ասոր.) ṣiṣṣəlā, ṣeṣṣəlā, եբր. ṣelṣəlīm, եթովպ. ṣanaṣəl, ṣanaṣəlat.

ծոմ (ուշ -ոյ. ծոմել «ծոմ պահել, օրական միայն մեկ անգամ ուտել»). Համմ. արամ. (ասոր.) ṣōm, ṣōmā, ṣaumā, եբր. ṣōm, արաբ. ṣaum.

ծրար «կապոց. կծիկ. քսակ. (ուշ) ծրար» (ծրարել). Համմ. ասոր. ṣə-rār(ā) «քսակ», եբր. ṣərōr «կապոց, տրցակ», արաբ. ṣurra «դրամ պահելու շորի կտոր».

կաթսայ (կատսայ), -ի, -ից. Համմ. ասոր. qaḏsā (< հուն. κάδος).

կապար, -ոյ (և -ի, -աց?). Համմ. աքքադ. abāru(m) (< շում. ?), արամ. ab(b)ār(ā)?.

կարկուրայ, -ի, -ից «նավակ». Համմ. ասոր. qarqūrā.

կացին, -ոյ (ուշ -ի, -աց). Համմ. արամ. (ասոր.) ḥaṣṣīnā, աքքադ. ḫaṣ-ṣinnu(m), արաբ. ḥaṣīn, այլև եգիպտ. krḏn, եբր. garḏ/zen, արաբ. karzan.

կաւատ, -ի, -աց. Համմ. արաբ. qawwād «միջնորդ, կավատ» (qwd «առաջնորդել, տանել»).

կիր. -ոյ. Համմ. աքքադ. qīru, արամ., արաբ. qīr[8].

կղզի. Համմ. ասոր. qazartā, արաբ. ǰazar, ǰazīra.

կմախ-ք (կմախի-ք «մեռելի ոսկր»). Համմ. աքքադ. kima(ḫ)ḫu(m) (gi-māḫu) «գերեզման» (< շում. ?). Թերևս աքքադերենից են արամ. (պալմ., նաբ.) gmḥ, gwḥ «գերեզմանախորշ».

կնիք, -ոյ. Համմ. աքքադ. kanīku(m) «կնքված փաստաթուղթ», kunuk-ku(m) «կնիք».

կշիռ, -ոյ «կշեռք. կշիռ. կշռադատություն» Համմ. աքքադ. gišrinnu(m) «կշեռք» (< շում.), այլև gišru(m) «պահանջ. կամուրջ» (> արամ., մ. եբր. gišr, արաբ. gisr «կամուրջ»).

կողեռ «երեխա, մանուկ», կողեռն «ուղտի ձագ». Համմ. արաբ. ǰazūr «ուղտ, ուղտի ձագ».

---

[8] Հ. Աճառյանը [ՀԱԲ, 2², էջ 593] համարում է «ասորեստանյան փոխառություն, որ թեև չի պահված ասորերենում, բայց կա մյուս սեմական լեզուներում, ինչպես եբր. gīr, արամ. gīr, արաբ. jīr ...»։ Սակայն q-ով ձևերի համար հմմ. Soden, AH, 2, 923։

կոթող, -ի «Նշանաքար, արձան, կոթող». Հմմտ. աքքադ. kudurru «սահման. սահմանաքար»?.

կուպր. Հմմտ. արամ., ասոր. kuprā, եբր. kōpēr, աքքադ. kupru(m).

հալաւ «զգեստ». Հմմտ. աքքադ. ḫalāpu(m) «ներս սողոսկել. հագնել», naḫlaptu(m) «զգեստ. վերարկու».

հաբլ-ք (խաբլ-ք) «որոգայթ, թակարդ. թակարդի թոկ». Հմմտ. արամ. (ասոր.) ḥablā «թոկ», եբր. ḥebel «թոկ. թակարդ», արաբ. ḥabl «թոկ», ḫibāla «թակարդ», աքքադ. ḫabālu «կապել», naḫbalu(m) «թակարդ».

հաշիւ, -ի. Հմմտ. արամ. (ասոր.) ḥəšīb «կարծված, համարված, հաշված», ḥšāb, եբր. ḥāšab, արաբ. ḥisāb (սեմ. *ḥš/sb «հաշվել»).

հեգ, -ի, -ից (ուշ՝ -ոյ) «վանկ» (հեգել). Հմմտ. ասոր. həgā «կարդալ».

հեգենայ, -ի, -ից «գիր, այբուբեն». Հմմտ. ասոր. hegjānā «կարդալ, հեգել, ընթերցանություն, արտասանություն».

հեթանոս, -ի, -աց. Հմմտ. ասոր. htnws (առանց ձայնավորների գրության) (< հուն. ἔθνος).

հռետոր «ճարտասան, հռետոր». Հմմտ. ասոր. rhiṭōrā (< հուն. ῥήτωρ > հայ. հռետոր).

հրեայ, -ի, -ից. Հմմտ. արամ. (ասոր.) jūdājā (īhūdājā), jəhūdājē, եբր. հգն. yəhūdīm, արաբ. yahūd (Հմմտ. նաև պրսկ. yahūd).

ձանձախարիթ «մուկ, ու. մուկ կարմիր. մուր.» Հմմտ. ասոր. zəkorīṭā «որդան կարմիր».

ձէթ, -ոյ. Հմմտ. արամ. (ասոր.) zēt (zaitā), zait, եբր. zayit, արաբ. zayt.

ձիւթ, -ոյ. Հմմտ. արամ. ziptā, (ասոր.) zeptā, եբր. zepet, արաբ. zift (Հմմտ. նաև պրսկ. zift).

ղեկ (ղեակ), -ի, -աց. Հմմտ. ասոր. lēqā.

մագաղաթ, -ի «մագաղաթ. գիրք». Հմմտ. արամ. (ասոր.) magalləṭā, məgilləṭā, եբր. məgillā(t) «թղթապալար, փաթեթ (որպես գիրք)».

մակաղ «ոչխարի փարախ». Հմմտ. եբր. mikəlā «ոչխարի փարախ».

մահիճ, -ի, -աց «անկողին, անկողնակալ». Հմմտ. արաբ. mahja‘ «ննջարան» (hj‘ «քնել. հանգստանալ»).

մանանայ, -ի, -ից. Հմմտ. ասոր. mannā, եբր. mān.

մանգաղ, -ի, -աց. Հմմտ. արամ. (ասոր.) maggəlā (< *mangəlā), եբր. maggāl (Հմմտ. նաև պրսկ. mangāl < սեմ.).

մաշկ, -ի, -ից. Հմմտ. արամ. maškā, (ասոր.) meškā, աքքադ. mašku(m) (Հմմտ. եգիպտ. mśk3, mśḳ).

մաշկն, -ին «վրան, խորան». Հմմտ. ասոր. maškan «վրան, խորան», աքքադ. maškanu(m) «դնելու տեղ. կալ. տեղ. շղթա», եբր. miškān «բնակարան. խորան».

մաքս, -ի. Հմմտ. արամ. maksā (miksā) > արաբ. maks, (ասոր.) maksā, եբր. makes, աքքադ. miksu(m).

մզել (մուզ-). Հմմտ. աքքադ. mazû, mazā'u «մզել, քամել».

մծղնեայ, -ի, -ից (մի աղանդ). Հմմտ. ասոր. məṣalləjānē «աղոթական՝ մեսալյան աղանդ».

մատրակ, -ի, -աց. ասոր. maṭrəqā «մտրակ, խարազան. խթան», արաբ. miṭraq «բուրդ ճաղկելու փայտ, գավազան», miṭrāq «գավազան. սուր».

նաշիհ, -ոյ (նաշհի) «մանր աղացած՝ նուրբ ալյուր». հմմտ. ասոր. nəšīpā.

շաբաթ, -ու. հմմտ. ասոր. šabbəṯā < եբր. šabbāṯ.

շալակ, -ի, -աց «պարկ. պատապարակ». հմմտ. արաբ. šallāq «մորթյականի տոպրակ».

շամփուր, -ի, -ոց. հմմտ. ասոր. šappūḏā «անթրոց, կրակխառնիչ», արաբ. šaffūd «շամփուր».

շաուան «ուղտ». հմմտ. արաբ. šārif, հգն. šawārif «ծեր էգ ուղտ».

շար «3600 տարվա շրջան». հմմտ. աքքադ. šār(u) «3600».

շուբիղ, -ի, -աց «նեղ ճանապարհ, արահետ. ոտնահետք». հմմտ. արամ. (ասոր.) šəḇīlā «ճանապարհ. հետք», եբր. šəḇīl «նեղ ճանապարհ», արաբ. sabīl «ճանապարհ».

շափիղայ (շափուղայ, շափիլայ) «մի թանկարժեք քար». հմմտ. ասոր. sapīlā, եբր. sappīr ?.

շեփորայ (շիփորայ), -ի, -ից, շեփոր, -այ. հմմտ. ասոր. šīpōrā, եբր. šōpār (սեմականն աղբյուրից է պրսկ. šēpōr, šapōr).

շղթայ, -ի, -ից. հմմտ. արամ. šīšiltā, šōšiltā, (ասոր.) šēšaltā, (ն. ասոր.) šišilt'ə, եբր. šelšeleṯ, արաբ. silsila(t).

ոլոռն (հմմտ. նաև՝ հոլոքի «մի բույս» ?). հմմտ. աքքադ. ḫallūru(m) (ḫi/ullūru, ḫallāru), արաբ. ḫullar, եբր. ḫārūl, արամ. ḫurlā «ոլոռ, սիսեռ».

ուռբաթ, -ու. հմմտ. ասոր. ərūḇəṯā (> արաբ. ʿarūba(t).

պախրէ, -ի, -ից (ուշ՝ պախրայ) «տավար, արջառ, նախիր. պարէն, ինչք». հմմտ. ասոր. baqrā, եբր. bāqār «արջառ. կով. ցուլ», արաբ. baq(a)ra(t) «եզ. կով» (արաբերենից է պաքարայ «արջառ. եզ»).

պաղպաղ [*«խառն, ձուլված» (?)՝ միապաղաղ «միաձույլ, միազանգված. հարթ. պարզ» բառերում]. հմմտ. աքքադ. balālu(m) «սրսկել, ցողել. խառնել, ձուլել, միաձուլել») ?.

պատ «չորս կողմ, բոլորտիք. պատ», փաթ-, փոթ. հմմտ. աքքադ. paṭu(m) «սահման. շրջան, գավառ» (բայց հմմտ. ուրարտ. patari «քաղաք»)?

ռ(ա)բունայ (ըռբունայ) «գրավական, ավանդ». հմմտ. արամ. (ասոր.) raḥbōnā, ʿarəbbōnā, եբր. ʿerāḇōn, արաբ. ʿarabūn, rabūn.

սակուր, -ի, -աց (սակր, -եր) «սայրատապար». հմմտ. արամ. (ասոր.) seqūrā, saqūrta «սակուր», արաբ. ṣaqūr «քարտաշի մուրճ» (< լատ. secūris «տապար, կացին»).

սանդ. -ի, հմմտ. աքքադ. samādu(m) «աղալ», sam/ndu(m) «աղացած», samidu(m) «մի տեսակ ալյուր», sāmidu(m) «ջրաղացպան»?.

սատանայ, -ի, -ից. հմմտ. ասոր. saṭāna (< եբր. sāṭān «հակառակորդ, սատանա», որտեղից հուն. σατάν > հայ. սատան).

սափրել «ածիլել». հմմտ. ասոր. spr «ածիլել».

սեռն «սառնույք». հմմտ. արամ. (ասոր.) sarnā, եբր. seren, sarnē[9].

---

[9] Եթե հայ. բառը կապ չունի հ.-ե. *k'ers- «կապք» բառի հետ: Կապ կա՞ արդյոք սեռն և լիսեռն բառերի միջև

սիք, -ոյ «մեղմ քամի». համմտ. ակկադ. zīqu (sīqu) «քամի» (շումեր. siq «քամի»), արամ. (ասոր.) zīqa «փոթորիկ», արաբ. ṣīq[10].

սխտր «վարձ». համմտ. եբր. zokar, seker, sākār «վարձ», արաբ. sakarat «բանվոր», եթովպ. səkūr «վարձված»[11].

սխրանալ «հիանալ, զարմանալ, սքանչանալ». համմտ. արաբ. sḥr «կախարդել. հիացնել», siḥr «կախարդանք, դյութանք».

սկահ (սկիհ) «բաժակ». համմտ. ասոր. esqəpā (< հուն. σκάφη «տաշտ. նավակ. կոնք, ջրաման», σκαφίς «դույլ. կողով. կոնք. ջրաման»).

սուսեր, -ի, -աց. համմտ. ասոր. sapsērā (համմտ. նաև հուն. σαμψήρα, մ. պ. *šafšēr կամ *šamšēr, պրսկ. šamšīr)?.

սրիկայ. համմտ. ասոր. srīqā «անպիտան մարդ. դատարկ, ունայն», sraq «կողոպտել», արաբ. sāriq «գող».

սրո(վ)բէ. համմտ. ասոր. srapē (հայերեն ձևն ազդվել է քերովբէ ձևից. համմտ. հուն. σεραφίμ < եբր. հգն. sərāpīm).

տարի. ակկադ. dārītu(m) «տևողություն, հավիտենություն» (սրա հետ կապված են եգիպտ. tr «ժամանակ. ժամանակամիջոց» և քուշ.՝ ադ., բիլ. tarī «անգամ, պահ. շրջան». տե՛ս դար).

տերև, -ոյ. համմտ. ասոր. ṭərep, ṭarpā, եբր. terep, tārāp,

տղայ, -ոյ (ուշ՝ -ի, -ից). համմտ. արամ. (ասոր.) ṭalya «տղա», եբր. tāle «գառնուկ, նորածին գառ», արաբ. ṭālā «գառ. ուլ. եղնիկի ձագ», ṭalay «գառնուկ. ուլիկ».

ցեց, -ոյ. համմտ. ակկադ. säsu(m), արամ. sās(ā), եբր. sās, արաբ. sū-s(un) (համմտ. նաև հուն. σής < սեմ.?).

ցից, -ոյ (ցցել «անկել», ցցունք «մազափունջ»). համմտ. ակկադ. ṣiṣ-ṣu(m) «ձող. լուծ. ատամնափեղ, կապանք», ասոր. ṣeṣṣā «գամ, մեխ, բևեռ».

փածանիլ «հագնվել». համմտ. ակկադ. paṣānu(m) «պատել, ծածկել, փաթաթել, քողարկել».

փեգանայ (փեգենայ) «բատատ, սպանդ (մի բույս՝ ruta)». համմտ. ասոր. pēgānā (< հուն. πήγανον).

փիլիսոփայ, -ի, -ից. համմտ. ասոր. pīlōsōpā (< հուն. φιλόσοφος > փիլիսոփոս).

փոխ, -ոյ, փոխել. համմտ. ակկադ. puḫḫu(m) «փոխանակել», pūḫu(m) «փոխանակում, փոխարինում».

փրկել. համմտ. ասոր. prq «փրկել, ազատել», purqānā «փրկություն», եբր. pereq «ազատել», արաբ. farq «բաժանել»[12].

քահանայ, -ի, -ից. համմտ. արամ. kāḫanā) (kahenā), հգն. kāhanāje, (ասոր.) kāhnā, եբր. kōhēn, եթովպ. kāhne «քահանա», արաբ. kāhin «հմայող, կախարդ. անտես, մատակարար».

քաղդեայ (քաւդեայ), -ի, -ից «հմայող, դուշակ». համմտ. ասոր. kaldājā «մոգ, աստղահմա».

---

[10] Հ. Հյուբշմանը և Հ. Աճառյանը ենթադրում են ասոր. բրբռ. ձև՝ ṣ·ոq (?)։

[11] Ըստ Հ. Աճառյանի [ՀԱԲ, 4² 225] ասորական բարբառային որևէ ձևից։

[12] Սակայն համմտ. հ.-ե. *(s)p(h)er- «ցրել, ցանել», *sphreu-g-, որտեղից լիտվ. sprūgti «փախչել, ազատվել, խույս տալ»։

քանոն (քանոն) «մանկաւայուն. ճաղ. քանոն. կանոն». Համմտ. ասոր. kanūntā' qanūnā ձևի կողքին (< հուն. κανών, որտեղից հայ. կանոն)[13].

քանքար, -ոյ և -ի, -աց «մի կշռաչափ. այդ չափով ոսկու կամ արծաթի գումար. տաղանդ, շնորհք». Համմտ. արամ. kankərā (kakkərā), ասոր. kakkərā, եբր. kikkār, աքկադ. kakkaru,

քարոզ, -ի, -աց և -ոյ «մունետիկ. ենթադիշտ. քարոզ». Համմտ. արամ. (ասոր.) kārōzā «մունետիկ», kārōz «հրավիրակ, քարոզ», արաբ. krz «քարոզել».

քուշ, -ի, -իւ «արու այծ», քուշել «հարձակվել». Համմտ. ասոր. kebšā, եբր. kebeś, արաբ. kabš, աքկադ. kabsu «մատաղ խոյ».

քաքար, -ի, -աց «մի տեսակ խմորեղեն, կարկանդակ». Համմտ. ասոր. kakārīṭā «մեղրահաց», աքկադ. kakkaru «կլոր հաց» (Համմտ. նաև խուռ. kakkar, խեթ. kaggari).

քերովբէ «մի հրեշտակապետ». Համմտ. ասոր. k(ə)rōbā, հգն. krōbē (< եբր. kərūb, հգն. kərubīm > հուն. χερούβ, հգն. χερουβίμ).

քթեթ «կտավե հաստաբակ զգեստ. շորի կտոր. (բրբռ.) հարսանազգեստ». Համմտ. աքկադ. kitītu(m) (kitittu, kitintu) «կտավե զգեստ», kitû(m) «կտավ», այլև արամ. kittūna, kuttīnā, եբր. kuttōnet (արևմտասեմ. ki/e/attān. Համմտ. նաև ասոր. qeṭṭau)[14].

քնար, -ի, -աց. Համմտ. արամ. kinnārā, (ասոր.) kennārā, եբր. kinnōr.

քշտել «կարել, հատել. հարկածել. դիպցնել. քսել». Համմտ. աքկադ. kašātu(m) «կտրել, հատել».

քուեայ (քուէ), -ի, -ից. Համմտ. արամ. թալմ. qubiā (< հուն. κυβεία «խաղանարդ. վէգ»).

քուսիթայ «կրոնավորի գլխարկ, կնգուղ». Համմտ. ասոր kōsīṭā [< աքկադ. kusītu(m) «զգեստ»?].

քուրայ, -ի, -ից. Համմտ. արամ. kūr(ā), (ասոր.) kūrā, եբր. kūr, աքկադ. kūru(m).

քուրմ, -ի, -աց. Համմտ. արամ. (ասոր.) kūmrā, եբր. kōmer, աքկադ. kumru(m), kumir(t)u։

Կան դեպքեր, երբ հայերեն բառերն ունեն սեմական ակնհայտ զուգահեռներ, բայց այդ բառերի բուն աղբյուրների հարցի լուծումը կապված է դժվարությունների հետ։

1) Մի շարք դեպքերում հնարավոր է հայերեն բառերի նաև հնդեվրոպական մեկնությունը։ Առանձին դեպքերում կարելի է առավելություն տալ այս կամ այն ստուգաբանությանը, մյուս դեպքերում վճռական խոսք ասելը դժվարանում է.

բողկ. Համմտ. աքկադ. puglu(m), արամ. ասոր. puglā «բողկ» (արաբ.

---

[13] Հնարավոր է ենթադրել նաև մ. իրան. որևէ ձև՝ իբրև հուն. և հայ. բառերի միջնորդ օղակ։

[14] Հ. Հյուբշմանը [AG, 208] և Հ. Աճառյանը [ՀԱԲ, 675—676] ասոր. բառը փոխառություն են համարում հայերենից. ընդհանրապես Հ. Աճառյանը հնարավոր է համարում ընդհանուր աղբյուրը համարել հայերենը [կռա բառից. հմմտ. Ջահուկյան, 1976, 45—46]։ Եթե բուն աղբյուրը շումերերենն է, ապա հայերենը պիտի համարել փոխառյալ։

fuγl) և ակկադ. buqlu(m) «ածիկ», սիր. buqlā «ծիլ, ընձյուղ», արաբ. baql «կանաչեղեն, բանջարեղեն». Աճառյանը համարում է բող-ի աճականով ձևը և բխեցնում է հ.-ե. *bhel-ից. ըստ Պոկոռնու [IEW, 1, 103]՝ ծագում է *bol-ից, որտեղից հուն. βολβός «սոխ». հնարավո՞ր է արդյոք ենթադրել սեմական փոխառություն հայերենից.

խույց. հմմտ. ակկադ. ḫuṣṣu(m) «եղեգնաշեն խրճիթ» (Աճառյան ՀԱԲ, 2², էջ 422—423). Պատրուբանին, Պետերսոնը և Պոկոռնին [IEW, 1, 956] բխեցնում են հ.-ե. *(s)keu- «ծածկել» արմատից (*khu-sk'o-)՝ խուղ բառի հետ միասին.

կաքաւ, -ու (ուշ -ոյ, -ի, -այ). հմմտ. ակկադ. kakkābanu «մի թռչուն՝ խայտահա՞վ (цесарка)», սիր. qaqqəba(nā) «կաքավ». բայց հմմտ. նաև հուն. κακκάβη «կաքավ» (հ.-ե. *kakk-?).

բրբռ. մռու «կծու». հմմտ. արաբ. murr, եբր. mar, ակկադ. marru(m) «դառն» (սեմ. mrr «դառը լինել») (Մկրտչյան). բայց հմմտ. նաև բրբռ. մռմռու՝ մարմաջ, մորմոք բառերի կողքին, որոնք թերևս ծագում են հ.-ե. *mer- «տրորել» արմատից. հմմտ. գերմ. Schmerz «ցավ», անգլ. smart «ցավել. կսկիծ, ուժեղ (ցավ)» և այլն. իմաստային հարաբերության համար հմմտ. կծանել և կծու.

տամալ, -ոյ (և տամալի, -ւոյ, -եայ) «տանիք». հմմտ. ակկադ. tamlī-u(m), tamlû(m) «լիցք, տեռաս, հողահարթակ. բլուրք» (malū(m) «լի լինել, լցվել» բայից) [Աճառյան, ՀԱԲ, 4³, 367]. ավելի հավանական է բառի հնդեվրոպական ծագումը՝ *dem(ə)- «կառուցել, միացնել, դարսել» արմատից. որա *dom- ձևից ծագում է հայ. տուն բառը, որից և տանիք. հմմտ. նաև հայաս. Tamatta տեղանունը.

տարածել. հմմտ. ակկադ. taraṣu(m) «ձգել, տարածել» (արամ. «ուղղել»). հնարավոր է մեկնել նաև որպես տար+ածել կազմություն.

տեղ «առատ անձրև». հմմտ. սիր. ṭālā «ցող» (եբր. ṭal «ցող, անձրև») [Աճառյան, ՀԱԲ, 4², 392]. ավելի հավանական է տեղ-ի հ.-ե. ծագումը՝ *del-ից [հմմտ. Pok., 1. 196]. հմմտ. հատկապես մ. իռլ. delt «ցող» (այլև գետանուններում), բրետ. delt «խոնավ» և այլն.

ցամաք, -ի, -աց. հմմտ. եբր. ṣmq «չորացնել», ṣōməqīm «չորացած (ստինք)», այլև ṣimmūqā «չամիչ» [Աճառյան, ՀԱԲ, 4², 448՝ սիր. բրբռ. կորած մի ձևից]. բայց հմմտ. նաև հ. հնդկ. kṣāma «այրված, չորացած» (հ.-ե. *ksā- «այրել»). եթե հայ. բառը ծագում է սեմական աղբյուրից, ապա նրա հետ կապված է և սեմական ծագում ունի նաև ամքիլ բրբռ. բառը.

ցիր, ցրիւ. հմմտ. ակկադ. zarû(m) (sarum), սիր. zarā'u «ցրել» (սեմ. *d̲rū, *z/d̲rū/i), zēru(m), zīru «սերմ» (սեմ. *d̲ar', z/d̲ar'). ավելի հավանական է բառի հնդեվրոպական ծագումը՝ հ.-ե. *(s)ker- «ցատկել» արմատից, որտեղից հ. հնդկ. kirátl «ցրում է, ցանում է, թափում է, նետում է».

փարատ «անջատ», փարատել «հեռացնել, ցրել». հմմտ. սիր. prṭ «ցրել. տարածել. անջատել», ակկադ. parāṭu «պոկել-հեռացնել. մաքրել». բայց հմմտ. հ.-ե. *(s)p(h)er- «ցրել, ցանել» (Pok., 1, էջ 993):

Որոշ դեպքերում հավանաբար մենք գործ ունենք պատահական նմանությունների հետ. ահա մի քանի օրինակ. հմմտ. ա) հայ. այս «քամի. չար ոգի, դև» — արաբ. 'ayṭ «մոլեգնել, ոգևո բերել, անիրավություն անել» (Մկրտ-

չյան). ավելի հավանական է ենթադրել հայ. բառի հ.-ե. ծագումը *ansi̯o-ձևից (հ.-ե. *ansu- «ոգի, չար ոգի»). հմմտ. հ. հնդկ. ásu-, ավ. anhu- «կենսաշունչ, շունչ, կյանք». բ) հայ. եփել — աքքադ. epu(m) «թխել, եփել, խորովել». հայ. բայը ավելի վստահելի զուգահեռ ունի հունարենում՝ ἕψω «եփել» (-so-ով ներկա. հմմտ. δέψω և δέφω «տրորել, ճմռել»՝ հայ. տոփել զուգահեռով). գ) հայ. մաքառել — աքքադ. maḫaru(m) «դեմ գնալ, դիմագրել. դիմել. ընդունել». հմմտ. նաև հուն. μάχομαι «մաքառել, մարտնչել, կռվել» (հնչյունական հարաբերության համար հմմտ. ἄρχων «առաջնորդ, իշխող. տիրող» և հայ. արքայ). հուն. μάχομαι-ը կասկածով հանգեցնում են հ.-ե. *mag'h-ին. թերևս հունարենի և հայերենի համար պետք է ենթադրել մի ընդհանուր (ենթաշերտայի՞ն) աղբյուր:

2) Մի շարք այլ դեպքերում սեմական զուգահեռների հետ միասին առկա են նաև իրանական զուգահեռներ, և հայերեն բառերի անմիջական աղբյուրների հարցի լուծումը դժվարանում է. հարկավոր է նկատի ունենալ, որ՝ ա) արևելքում տարածված, հատկապես մշակութային արժեք ունեցող բառերը կարող են անցած լինել հայերենին ոչ բուն աղբյուրից. սեմական ծագում ունեցողները՝ իրանական և իրանական ծագում ունեցողները՝ սեմական միջնորդությամբ. բ) հնարավոր են պատահական համընկումներ. գ) կան դեպքեր, երբ առկա է տարբեր ձևերի բաղարկում.

ագուռ (ոչ ավանդված). հմմտ. աքքադ. agurru(m), որտեղից արամ. āgūr, արաբ. āǰurr և այլն, և պրսկ. āgūr (այստեղից է թերևս, հայերենը).

ալան «ազնվական (?), իշխան (?)» (ալանազգի բառում. հմմտ. նաև Ալան անձնանունը). ըստ Յուստիի [Justi, 1895, 13, 484] Ալան անձնանունը իրան. ծագում ունի (հմմտ. Andalan, Zandalan. սակայն հմմտ. նաև ālān, հայ. ալան< *aryana «արիացի»). ըստ Հ. Աճառյանի [ՀԱԲ, 1², 120 ՀԱնԲ, 1, 97]՝ ասոր. ʻalānā «առաջնորդ. եկեղեցական առաջնորդ» բառից.

անանուխ, -ոյ. հմմտ. աքքադ. (a)nanḫu, nanaḫu «մի բույս՝ անանուխ». համարվում է փոխառություն. ըստ Ցիմեռնի՝ փոխառված է արամ. nanʻā-ից (ասոր. nānʻā). ըստ Հյուբշմանի և Աճառյանի՝ սեմական բառերը առնված են իրան. աղբյուրից, որից և համարվում է հայերենը. հմմտ. պրսկ. nānxāh, nānuxēh «հացհամեմ»՝ nān «հաց» և xᵛāh «համեղ» արմատներից.

ապրսամ (ապուրսամ, ապրասամ) «բալասան». հմմտ. ասոր. apūrsāmā, pursāmā (< իրան., որտեղից նաև հայերե՞նը),

դոյլ, -ի, -ից և -ոյ. հմմտ. ասոր.-արամ. daula (աքքադ. dalu(m), եբր. dəlī, արաբ. dalw) կամ մ. պ. (< սեմ.) dōl.

թագ, -ի, -աց. իրան. *tāg- բառից անմիջաբար կամ սեմականի միջնորդությամբ (հմմտ. արամ. tāgā, արաբ. tāǰ). Օ. Մեյեն հակված է երկրորդ կարծիքին՝ նկատի ունենալով պարթ. t > հայ. թ անցումը փոխանակ ավելի սովորական պարթ. t > հայ. տ անցման.

թոնիր, -ոյ. հմմտ. աքքադ. tinūru(m), tenūru(m) (շումեր. tunur, tinur). աքքադերենից են ինչպես սեմական այլ լեզուների, այնպես էլ իրանական ձևերը՝ առաջին a կամ i և երկրորդ ü ձայնավորով. հայերեն ձևը իր ձայնավորմամբ կանգնած է առանձնակի.

թութ, -ոյ. հմմտ. արամ. (ասոր.) tūtā և մ.պ.(< արամ.) *tūt. Հյուբշմանը և Աճառյանը ավելի հավանական են համարում իրանական աղբյուրը.

խուրձ, -ոյ «քուրձ». հմմտ. ասոր. xurgā «մախաղ, պարկ, պայուսակ»

(արաբ. xurǰ, որտեղից, թյուրք. միջնորդությամբ, բրբռ. խուրջին) < մ. իրան. *xvarg (xvarγ), որտեղից թերևս անմիջաբար հայերենը.

մանիշակ, -ի, -այ. հմմտ. ասոր. mənīškā (< իրան. ? հմմտ. մ. պ. vanavšak. պ. banafša). մանուշակ ձևը անմիջաբար իրան. աղբյուրից է. սակայն հնարավոր է ենթադրել հայերենում բարբառային տարբերակներ և ասոր. ձևը փոխառություն համարել հայերենից.

նաւթ, -ոյ և -ի. հմմտ. աքքադ. naptu(m). արամ. (ասոր.) napṭā, nepṭā, արաբ. napṭ և պրսկ. naft. ոմանք ընդհանուր աղբյուր են համարում սեմականը, ուրիշները՝ հնդեվրոպականը. հմմտ. ավեստ. *napta- «խոնավ, թաց» (հ.-ե. *enebh- «թաց. ջուր. ամպ» արմատից). Հյուբշմանը և Աճառյանը նաւթ-ը բխեցնում են պհլ. *naft ձևից:

շկապել «վռնդել, վանել». հմմտ. ասոր. šəqap «հարվածել, խփել. դուրս հանել, դուրս քշել, նետել» և պրսկ. šikāftan «ճեղքել» ?

շուշան, -ի, -այ, հմմտ. արամ. šūšanəṭā, (ասոր.) šūšanṭā, հդն. šušannē, արամ. եբր. šūšan, šōšān, šōšannat, արաբ. sūsan < բուն եգիպտ. ššn-ից) և մ. պ. šūšan, sūsan (< սեմ.).

պատառել. հմմտ. աքքադ. paṭāru(m) «արձակել», եբր. pṭr «պատռել, տարանջատել», արաբ. fṭr «ճեղքել. դանել. ստեղծել» (սեմ. *pṭr «բաժանել. պատռել, ճեղքել») և պրսկ. fatārdan fatārīdan «պատռել».

սափիրայ (սափորեայ) «շափյուղա». հմմտ. ասոր. sapīlā (եբր. sappīr) և հուն. σαπφεiρος (որանց բաղադրությո՞ւնը).

սակամոնիա «մի դեղաբույս՝ convolvulus scamonia». հմմտ. ասոր. saqmunia և պրսկ. saqmūniyā, այլև հուն. σκαμμωνία. հավանական է ասորական աղբյուրը.

փիղ, -ի, -աց. հմմտ. մ. պ. pīl (ըստ Հյուբշմանի և Աճառյանի) կամ արամ. pīl(ā), (ասոր.) pīlā.

քօթանակ «հագուստ». հմմտ. եբր. kuttōneṭ, արամ. kittūna, kuttīna, փյուն. ktn «կտավե զգեստ» (> հուն. χιτών)՝ բոլորն էլ աքքադերենից (հմմտ. kitū(m) «կտավ» < շումեր.). սեմական բառը կարող է հայերենին անցած լինել իրանական միջնորդությամբ (հմմտ. -ակ ածանցը).

քրսամն «մի ընդեղեն, ոսպնավիկ». հմմտ. պրսկ. karsana և արաբ. karsanna (ըստ Աճառյանի՝ պարսկերենից կամ ասոր. մի ձևից):

Նախկինում կասկածով կամ առանց կասկածի սեմական աղբյուրից համարվող մի շարք բառերի իրանական ծագման հարցը այժմ կարելի է լուծված համարել հօգուտ իրանականի.

դարգիճ «պատգարակ». Հ. Աճառյանը [ՀԱԲ, $1^{2}$, 637], Հյուբշմանի հետևողությամբ, մատնանշում է ասոր. dargušta «պատգարակ», արամ. dargaš «անկողին» բառերը՝ ավելացնելով, որ դրանք բնիկ սեմական չեն և կարող են հայերենի հետ փոխառյալ լինել իրանականից. դարգիճ-ի իրանական ծագումը երևում է -իճ ածանցից. ըստ Բոգոլյուբովի (ВЯ, 1974, 6, 107—108) աղբյուրն է *dragīča- ձևը՝ *drag- «քաշել» արմատից.

զուրկ, զիրկ (զրկել). Հ. Աճառյանը [ՀԱԲ, $2^{2}$, 97] հայերեն բառերը բխեցնում է ասորերենից՝ նկատի ունենալով sraq «կողոպտել», srīqā «զուր, ունայն, դատարկ» բառերը, բայց հետագայում, մեր մատնանշումով, այստեղից բխեցնելով սրիկայ բառը [ՀԱԲ, $4^{2}$, 668]՝ զուրկ-ը մեկնաբանում է որպես զ-ով

կազմությամբ և -ուրկ-ը համեմատում է լատ. urgeō, -ēre» «վարել, քշել, պատճառել, ստիպել և այլն» բառի հետ, որ անհավանական է. ավելի հավանական է զուրկ-ի իրանական ծագումը. համեմ. զուր < zūr.

քաղաք, -ի, -աց բառի աղբյուրը Հ. Աճառյանը համարում է ակկադերենը, բայց kalakku(m) «փոս, փորվածք. նկուղ, գետնափոր պահեստ» (< շումեր.) և kalakku(m) «արկղ» բառերից ոչ մեկը չի կարող հայերենի աղբյուր լինել. բառը, Հ. Բեյլիի՝ իրանական ծագում ունի. համեմ. մ. պ. kl'k (kalāk) «բերդ, ամրոց» [տե՛ս նաև Schmitt, 1981, 170]:

Կան բառեր, որոնց սկզբնաղբյուրը սեմականն է կամ որոնք ավանդված են սեմականում, բայց սեմական սուլականների փոխարեն համապատասխան շչականների առկայությունը որպես հայերենի հավանական աղբյուր ցույց է տալիս իրանական լեզուներից որևէ մեկը.

խիճ. համեմ. աքքադ. ḫiṣṣu «խիճ» (արամ., եբր. ḥaṣāṣ, արաբ. ḥaṣā).

ճապուռ «մագիլ, ճիրան». համեմ. աքքադ. ṣup(u)ru(m) «եղունգ. մագիլ, ճիրան, ճանկ» (արամ. ṭēprā, եբր. ṣipporen, արաբ. ẓufr).

ջնար, -ի, -աց «քնար, տավիղ. կիթառ». համեմ. աքքադ. zannaru(m) «մի տեսակ քնար» (անծանոթ ծագման) և խեթ. zinnar «1. երաժշտական գործիք. 2. (կանչ արարողության ժամանակ՝ խաթերենից) երաժշտությո՞ւն». զուգահեռ քնար բառը, ինչպես տեսանք, սեմական ծագում ունի (եբրայերենից է հուն. κινύρα-ն):

Թեև վարել բայը զուգահեռ ունի աքքադ. ṷarum «վարել, տանել, առաջնորդել, ղեկավարել» բայի մեջ, բայց նմանությունը պատահական է, հայ. բառը ծագում է իրան. աղբյուրից. համեմ. vaδ- «վարել, քշել» (< հ.-ե. *ṷedh-):

3) Առանձին դեպքերում, մանավանդ մատենագրական փոխառությունների դեպքում, դժվար է որոշել հայերեն բառերի ասորական, թե հունական աղբյուր ունենալը, մասնավորապես ասորական այն բառերի դեպքում, որոնք իրենց հերթին փոխառված են հունարենից.

կապելայ (կապեղայ՝ կապել/ղիոն, կապլիոն և այլ ձևերի կողքին) «պանդոկ, գինետուն, հասարակաց տուն». համեմ. ասոր. qapēlā «գինետուն, պանդոկապետ» < հուն. καπηλεία, καπηλεῖον, καπήλιον «գինետուն» (կապելիոն, կապեղիոն ձևերը հունարենից են, թեև հայ. և ասոր. բառերի իմաստի տարբերությունը խոսում է նաև կապելայ, կապեղայ ձևերի՝ հունարենից փոխառվելու կարծիքի օգտին՝ καπηλεία-ի՞ց).

կոմս, -ի, -ից (կոմէս). համեմ. ասոր. qōms < հուն. κόμης. կոմես ձևը անմիջապես հունարենից է, կոմս-ը՝ ասորերենից.

մամոնայ, -ի «ունեցվածք, հարստություն». համեմ. ասոր. māmōnā կամ հուն. μαμ(μ)ωνᾶ (< եբր.).

նափորան, -աց «վերարկու, փիլոն, շուրջառ». համեմ. հուն. ἀναφέρω «բարձրացնել, տանել, կրել», (ἀ)ναφορά «բարձրացում. կրում», ուշ ἀναφορίζομαι «կրել». հայերենն առնված է հունարենից կամ անմիջաբար, կամ ասորերենի միջնորդությամբ.

սիւնհոդոս «եկեղեցական համաժողով». համեմ. ասոր. sunhodos < հուն. σύνοδος, ասոր. աղբյուրի օգտին է խոսում հ-ն, հունարենի օգտին՝ իւ-ն.

սպեղանի. համեմ. ասոր. ēsplenyā «սպեղանի» < հուն. σπλήνιον «կոմ-



30—455

պրեռ»․ ըստ իմաստային մերձավորության հավանական է ասորական աղբյուրը:

Մարանաթայ *«Նզովք»* բառը ակնհայտ տառադարձություն է հուն. μαράν αθά-ի, որ իր հերթին տառադարձված է արամ. mār-ān 'aṭā «Մեր տերը եկավ» նախադասությունից:

Սուփն բառի աղբյուրը կարող է լինել ինչպես ասոր. sūḇīnā-ն, այնպես էլ դրա սկզբնաղբյուրը, որի մասին խոսվել է:

4) Վերջապես, կան դեպքեր, երբ դժվար է ընտրություն կատարել սեմական և ոչ սեմական հին ու նոր աղբյուրների (խուռիերեն, ուրարտերեն և այլն) միջև.

անագ, -ի, -աց (ու՝ -ոյ). համմտ. աքքադ. anāku(m) (եբր. anāk, ասոր. anəkā, արաբ. ānuk) և խուռ. anagi. ընդհանուր աղբյուրը պարզ չէ. փոխառյալ է համարվում և աքքադերենը. հայերենի համար հավանական է խուռական կամ ուրարտական աղբյուրը.

ատեղ «աղջիկ ուզել», ատասել «փեսացու». համմտ. աքքադ. aššatu(m) (< *antatum. համմտ. ուգար. att, արամ. intəṭā, ittəṭā) «կին, կին ամուսին». aššutum «ամուսնություն» և խուռ. ašti- «կին, կին ամուսին» (< աքքադ.):

բուրգն, -ան, համմտ. ասոր. būrgā (< հ.-ե.) և ուրարտ. burgana «բուրգ, ամրոց» (և «օժանդակ կորք»).

նուռն. համմտ. աքքադ. narimdu և խուռ. nuranti (< աքքադ.). ի՞նչ հարաբերություն ունեն սրանք մ. պրսկ. anār, պրսկ. nār բառերին.

սան, -ի, -ից (և ու?) «կաթսա». համմտ. աքքադ. šannu(m) «մետաղյա կաթսա կամ գավաթ» (< շումեր.) > ուրարտ. šani «աման»:

Եւղ բառի աղբյուրը, ինչպես նշել ենք, ավանդաբար համարվում է միջերկրածովյան մի լեզու, որտեղից նաև հուն. ἐλαίον «ձեթ», ἐλαία «ձիթենի. ձիթապտուղ»: Աքքադերենն ունի ulû(m) «լավ յուղ, լավ կարագ» բառը, որի հավանական աղբյուրն է համարվում շումերերենը [Soden, AH, 3, 1411]:

Միջերկրական ծագում է վերագրվում նաև թուզ, -ոյ բառին, որի համար կան մի կողմից՝ հունարեն և լատիներեն, մյուս կողմից՝ սեմական զուգահեռներ. համմտ. հուն. (բեովտ.) τῦκον, (հոմեր.) σῦκον, լատ. ficus և աքքադ. tīttu(m), հգն. tīnātu(m) (արամ. tēn/ttā, եբր. ṭə'ēnā, արաբ tīn). Հավանական է հունարենին, հատկապես τῦκον-ին մոտ աղբյուր՝ *tugho- տիպի՝ *gh-ի սովորական քմայնացմամբ u-ից հետո և -o- հիմքային ձայնավորի պահպանմամբ թեք հոլովներում. սեմական ձևերը հեռու են:

Հայ. անձրեւ բառը զուգահեռ ունի սոմալ., եբր. anẓar համանիշի մեջ, բայց նմանությունը պետք է պատահական համարել: Պատահական պետք է համարել նաև ուգարիտ. šrn(') «հացահատիկի տեսակ՝ ցորե՞ն», եթովպ. šernāi «ցորեն» և հայ. ցորեան բառերի նմանությունը, եթե չենթադրենք հին միջնորդ օղակ:

Հայերենի սեմական փոխառությունների քննության հետ կապված մի քանի խոսք ասենք այն համընկումների մասին, որոնց համար կարելի է ենթադրել հայկական կամ ուրարտական աղբյուր:

Եթե օտարների կողմից հայերին տրվող արմեն անվանումը բուն հայկական ծագում ունի և առնվել է հայերի մոտ հնում գործածվող *արմեն «ցեղ, զարմ» բառից (համմտ. արմ, արմն «արմատ», արմատ «արմատ. ցեղ, զարմ. հիմք. խարիսխ», զ-արմ «ցեղ, զարմ»), որ զուգահեռներ ունի հուն. ὅρμενος

*«բողբոջ, ցողուն», գերմ.* *ermana-, *irmana- *«մեծ», հ. սլավ.* raměnъ *«հզոր» բառերի մեջ և ծագում է* *er- *«հուզել, բարձրացնել» արմատից, ապա աքկադ.* armannu(m), armanû *«ծիրան, ծիրանի ծառ», ասոր.* ḫazzurā armǝnāi̯ā *«ծիրան» (բառացի՝ «հայկական խնձոր»), արաբ.* tuffāh-al-armanī *«ծիրան» (բառացի՝ «հայկական խնձոր») բառերի աղբյուրը վերջին հաշվով հայերենն է։*

*Վերևում խոսվեց* բողկ *անվան հնարավոր սեմական փոխառության մասին հայերենից, եթե այստեղ առկա չէ պատահական նմանություն։ Այստեղ նշենք հայ.* դդում, *-ոյ բառի և մյուս կողմից՝ աքկադ.* dug/kdumu *«մի բուսանուն» բառերի նմանությունը. և՛ հայերեն, և՛ աքկադերեն բառերի ծագումն անհայտ է. եթե դրանց միջև կապ կա, ապա ենթադրելի է մի ընդհանուր աղբյուր (ուրարտերե՞նը)։ Թերևս ուրարտերեն* uldi, uduli *«խաղողի այգի» բառն է նաև հայ.* տոլի *«խաղողի որթ», ււռ.* ṭul *«խաղող», եբր.* dalii̯ā(h), *արաբ.* dāliyat *«խաղողի որթ» բառերի աղբյուրը [սեմական ձևերի համար տե՛ս* **Гранде**, 1972, 15]։

*Հ. Հյուբշմանը* [AG, 308] *ասոր.* qǝṭṭau *«բամբակ» բառի աղբյուրը համարում է* կտաւ *բառը։ Հ. Աճառյանը [ՀԱԲ,* 2², *676], նշելով բառի տարածվածությունը Առաջավոր Ասիայի լեզուներում, գրում է. «Եթե Հայաստանը հայրենիքն է կտավի, ուրեմն այս բոլոր բառերը ծագում են Հայաստանից, այն է Հայաստանի բնիկ խալդիների լեզվից, որտեղից փոխառյալ է նախ ասորերենը և այստեղից էլ տարածված ամեն կողմ»։ Եթե նկատի ունենանք* կուտ *և* կտաւ *բառերի կապը և* կուտ*-ի հնդեվրոպական ծագման հնարավորությունը (**gudo-*)* [Ջահուկյան, *1965, 157—158. 1976, 46—47], ապա կարելի է* կտաւ*-ի բուն աղբյուրը համարել հայերենը, որի կրողները, ապրելով ուրարտացիների կողքին, նրանց պիտի բառեր տված լինեն։* Կտաւ *բառը երկրորդաբար նորից կարող էր փոխառվել ասորերենի կողմից։ Նշենք, որ հայերենը ևս իր հերթին ուշ շրջանում փոխ է առել սեմական աղբյուրից* ֆթեթ *«կտավի հասարակ զգեստ» և, պարսկական ու թյուրքական միջնորդությամբ, բրբռ.* ֆ(ա)թան *բառերը։*

*Հ. Աճառյանը [ՀԱԲ,* 1², *261], նշելով* առն *«արու վայրի ոչխար, շիկերե» բառի հնդեվրոպական ծագումը* (*r̥sen, *հմմտ. հուն.* ἄρσην, ἄρρην *«արու»* ἀρνειός *«խոյ»), հայերենից փոխառյալ է համարում ասոր.* arnā *«լեռնայծ» և վրաց.* arni *«վայրի ոչխար» բառերը։ Եթե Աճառյանը ճիշտ է, ապա հավանական է ենթադրել հայ. բառի և բնիկ ասորերեն ձևի բաղադրությունը, մի ձև, որի համար նշում են սեմական զուգահեռներ* arm/u̯- *բաղադրիչով՝ աքկադ.* armu *«լեռնային արու այծ»,* aru̯(i)um, armû *«արու այծյամ», արաբ.* uru̯īya, *հաբաշ.* aru̯ā *«լեռնայծ», եթովպ.* aru̯ē *«անասուններ»։*

*Անշուշտ, գրական ձևերի կողքին կան սեմական ծագում ունեցող բարբառային ձևեր, բայց դրանց հնության աստիճանը և փոխանցող բուն ուղիները ոչ միշտ են պարզ. այսպես, բարբառային* դոդ *«մեծ կճուճ» բառը զուգահեռներ ունի արամ.* dūd(ā), *ասոր.* dūdu *«կճուճ» (աքկադ.* dudu, *եբր.* dūd) *բառերի մեջ, բայց դժվար է ասորերենը համարել հայերենի բուն աղբյուրը։ Այս նույն ձևով էլ* կոտ *«փայտի աման, կարաս, տարողության չափ» բառը զուգահեռ ունի աքկադ.* kūtu(m), kuttu(m), kutû *«մի մեծ աման» (ուգար.* kt) *բառերի մեջ, բայց հայերենի բուն աղբյուրը անհայտ որեն այլ է։*

## դ) ՀԱՅԵՐԵՆԸ ԵՎ ԱՔՔԱԴԵՐԵՆԸ

Միջագետքում աքքադական-սեմական ցեղերի ազդեցության ուժեղացումը մ. թ. ա. XXIV դարում կապված է Աքքադի թագավոր Սարգոնի (Շառռուկին) անվան հետ։ Հաղթանակ տանելով գրեթե ողջ Շումերի վրա իր իշխանությունը տարածած Լուգալզագիսիի դեմ և շարունակելով պայքարը Շումերի նշանավոր քաղաքների հետ՝ Սարգոնը հասնում է հյուսիսային և հարավային Միջագետքի (լայն առումով՝ Աքքադի և Շումերի) միավորմանը։ Սարգոնի հաջորդների իշխանությունը տևում է մինչև մ. թ. ա. XXIII դ. վերջը՝ ընկնելով գուտիական լեռնային ցեղերի հարվածների տակ։ Մ. թ. ա. XXII դ. վերջին տասնամյակներից մինչև հաջորդ դարի վերջին տասնամյակները Միջագետքում գերիշխող ուժ են դառնում շումերական Ուր քաղաքի թագավորական III հարստության իշխողները։ Արևելքից Էլամի և արևմուտքից ամուրեական սեմական ցեղերի ճնշման տակ Ուրի իշխանությունը կործանվում է։ Հետագա շրջանում զգալի ազդեցություն է ձեռք բերում Միջագետքում կենտրոնական աշխարհագրական դիրք ունեցող Բաբելոնը, որի հզորությունը տևում է մինչև մ. թ. ա. XVIII դ. կեսերը։ Դրանից հետո բաբելոնական թագավորությունը դեպի անկում է գնում և բավական երկար ժամանակ ընկնում կասիտների իշխանության տակ։ Ասուրական թագավորների ուժեղացմամբ, մանավանդ Միտանական պետության թուլացումից հետո, Բաբելոնն աստիճանաբար մղվում է երկրորդ պլան։ Ասորեստանը դառնում է հին արևելքի հզոր պետություններից մեկը, որի արշավանքներին է ենթարկվում նաև Ուրարտուն։ Մի քանի դար տևող հզորությունից հետո Ասորեստանը թուլանում է և մ. թ. ա. 612 թ.փաստորեն դադարում ինքնուրույն գոյություն ունենալուց. այդ թվականին Ասորեստանի մայրաքաղաք Նինվեն գրավվում է Բաբելոնի թագավոր Նաբուպալասարի և մեդական զորքերի կողմից։ Նաբուպալասարի հաստատած բաբելոնական թագավորությունը մ. թ. ա. 538 թ. գրավվում է Կյուրոսի զորքերի կողմից և մտնում պարսկական պետության կազմի մեջ։

Աքքադերենը իր երկու բարբառներով՝ ասուրերենով (ասորեստաներենով) և բաբելերենով, որոնք գրի են առնված սեպագրով, անցել է զարգացման մի քանի շրջան։ Հին աքքադերենի շրջանում՝ մ. թ. ա. XXIV—XXI դդ. այն դեռևս միասնական լեզու էր. միայն այդ շրջանի վերջերին նկատվում են բարբառային տարբերակման նշանները։ Հետագայում կարելի է խոսել ասուրերենի (ասորեստաներենի) և բաբելերենի անկախ զարգացման մասին, ընդ որում դրանցից յուրաքանչյուրը մ. թ. ա. XX—VII դդ. անցնում է իր զարգացման հին (մ. թ. ա. II հազարամյակի մոտավորապես I կեսը), միջին (մ. թ. ա. II հազարամյակի մոտավորապես II կեսը) և նոր (մ. թ. ա. X—VII դդ.) շրջանները։ Նոր շրջանում ուժեղանում է արամեերենի ազդեցությունը, տեղի է ունենում ձայնավոր վերջավորությունների անկում։ Բաբելերենի համար առանձնացնում են նաև, այսպես կոչված, ուշ բաբելերենի շրջանը, որ տևում է մ. թ. ա. 605 թ. մինչև մ. թ. սկիզբը։

Ասուրերենի (ասորեստաներենի) և բաբելերենի անկախ զարգացման շրջանում այլևս չկան ṯ (θ), ś, ', γ, ḥ հնչյունները. ասուրերենում համընկել են s և š հնչյունները։ Սաստկական (էմֆատիկ) բաղաձայնների հակադրությունը ոչ սաստկականներին թույլ է։ Ընդհանրապես չեն տարբերվում ṣa-ն և za-ն, ṭi-ն և di-ն, bu-ն և pu-ն։ Երբեմն շփոթվում են q-ն և g-ն։ Բառա-

*սկզբում տեղի է ունենում ձայնեղների և խուլերի, սաստկականների և ոչ սաստկականների տարբերությունների դիրքային չեզոքացում։*

*Աքքադերենը հայերենի վրա կարող էր ազդել ինչպես անմիջաբար, այնպես էլ միջնորդված կերպով։ Հայկական ցեղերը կարող էին անմիջական շփման մեջ մտնել ոչ միայն պատմական Հայաստանի հարավային շրջաններում (այդ թվում՝ ուրարտական պետության կազմում), այլև Փոքր Ասիայի աքքադական գաղութների հարևանությամբ։ Իբրև աքքադերենի և հայերենի միջնորդ օղակներ կարող էին ծառայել մասնավորապես ուրարտերենը, իրանական լեզուները, այլև արամեերենը՝ իր տարբեր վիճակներով և տարբեր բարբառներով. հարկավոր է նկատի առնել, որ աքքադերենն ընդհանրապես ուժեղ ազդեցություն է թողել Առաջավոր Ասիայի սեմական ու ոչ սեմական լեզուների վրա, և այդ ազդեցությունից, լինի այն անմիջական թե միջնորդված, չէր կարող վերծ մնալ նաև հայերենը [հմմտ.* **Zimmern,** 1917]:

*Մինչև Հ. Աճառյանի «Հայերեն արմատական բառարան» [1—7, 1927—1935] և «Հայոց լեզվի պատմություն» [1, 1940] աշխատությունները տարբեր հեղինակների կողմից հայերենի և աքքադերենի միջև բառային համեմատություններ կատարվել են, բայց դրանք չեն համակարգվել։ Հ. Հյուբշմանը իր «Հայերենի քերականության» մեջ [*AG, *2, 1897] աքքադական փոխառությունները քննում է ասորականների հետ միասին։ Հ. Աճառյանը իր հիշյալ աշխատություններում թվարկում է աքքադերենից կատարած 29 փոխառություն։ Հայերենի՝ աքքադերենից կատարած փոխառություններին անդրադարձել են նաև Գ. Ղափանցյանը [1945], Ն. Ադոնցը [1972, 362—392], Ն. Մկրտչյանը [1970,* **Мкртчян,** 1979], *Գ. Ջահուկյանը* [**Джаукян,** 1980. **Djahukian,** 1982, *Ի. Մ. Դյակոնովը* [**Дьяконов.** 1981]:

*Առանց մտնելու այն հիմունքների քննության մանրամասնությունների մեջ, որոնցից ելնելով մենք մերժել ենք մի շարք ստուգաբանություններ և առաջարկել ուրիշները, այստեղ նշենք հետևյալը. ստորև կազմված ցանկից հանված են այն բոլոր բառերը, որոնք կամ չեն հավաստվում աքքադական նորագույն բառարանագրության տվյալներով, կամ հավասար իրավունքով կարող են վերագրվել սեմական այլ լեզուների, հատկապես արամեերենին՝ ասորերենով հանդերձ։ Հանված են նաև համեմատաբար կասկածելի ստուգաբանությունները։ Ավելացված են որոշ նոր հավանական ստուգաբանություններ։ Հայերեն բառերի աքքադական աղբյուրները որոշելիս նկատի են առնվել մասնավորապես հետևյալ հանգամանքները. Թողնվել են այն բառերը, որոնք՝ 1) սեմական այլ լեզուներում չունեն վստահելի զուգահեռներ. 2) աքկադերենում փոխառված են շումերերենից. 3) հնչյունական տեսքով ամենից ավելի մոտ են աքքադական բառերին, ընդ որում հաշվի են առնվել այնպիսի երևույթներ, ինչպիսիք են՝ ա) հայկական տեղաշարժին համապատասխան աքքադական ձայնեղների խլացումը և բ) արամեա-ասորական միջնադիրքային* f, ϑ, χ-*ի* (p̄, ṯ, k̲) *դիմաց աքքադական սովորական պայթականների առկայությունը. 4) հոլովվում են* -ոյ *հոլովմամբ, որ թերևս արտացոլում է աքկադ.* -u *վերջավորությունը.*

*1. ակուր «բրիչ — աքքադ.* aqqullu (akkullu, ankullu) *«բրիչ. նիզակ»* (< *շումեր.*).

***2. անութ, -ոյ «անոթ, աման. գույք. կահույք, կահ-կարասի. գործիք-միջոց. զինամիջոց» — աքքադ. (ն. ասուր.)*** anūtu, *այլև* unūtu(m), enū,

tu(m) «անոթ, աման. գործիք, պիտույք. գույք. կահույք, կահ-կարասի».

3. բուռ «կիր, գաջ» — աքկադ. pūlu (pīlu, pēlu) «կրաքար» (< հուն. πῶρος «տուֆ. փխրաքար») ?

4. գագաթն — աքկադ. qaqqadu(m) [kaqqadu(m)] «գլուխ, գագաթ».

5. ծիր, -ոյ «շրջագիծ» (ուշ՝ ծրել «գծել») — աքկադ. ṣirû «եզր» [հմմտ. նաև eṣēru(m) «նկարել, գծագրել»].

6. կապար, -ոյ (և -ի, -այ ?) — աքկադ. abāru(m) [հմմտ. նաև արամ. ab(b)ar(ā)]?

7. կիր, -ոյ — աքկադ. qīru [հմմտ. նաև արամ. qīr]?

8. կղզի — աքկադ. *gzr (հմմտ. ասոր. gazartā, արաբ. ǰazar, ǰazīra) ?.

9—10. կմախ-ք «մեռելի ոսկրոտի». կմախի-ք «մեռելի ողք» (հմմտ. նաև Կամախ տեղանունը) — աքկադ. gimaḫu [kima(ḫ)ḫu(m)] «գերեզման» (< շումեր.) [հմմտ. նաև արամ. (պալմ., նաբ.) gmḫ «գերեզմանախորշ» < աքկադ.?]?

11. կնիք, -ոյ — kanīku(m) «կնքված փաստաթուղթ», kunukku(m) «կնիք».

12. կշիռ, -ոյ «կշեռք. կշիռ. կշռադատություն» — աքկադ. gišrinnu(m) «կշեռք» (< շումեր.), այլև gišru(m) «պտհանգ, կամուրջ» (< արամ. gišr).

13—14. կողեռ «երինջ, մատակ». կողան «ուղտ. ուղտի ձագ» — աքկադ. *gzr (հմմտ. արաբ. ǰazūr) «ուղտ. ուղտի ձագ»)?

15. կոթող, -ի «նշանաքար, արձան, կոթող» — աքկադ. kudurru «սահման. սահմանաքար».

16. հալաւ «զգեստ» — աքկադ. ḫalāpu(m) «ներս սողոսկել. հագնել», naḫlaptu(m) «զգեստ. վերարկու»?

17. մզել (մուզ) — աքկադ. mazû, mazā'u «մզել, քամել».

18. շար «3600 տարի» — աքկադ. šār(u).

19. ոլոռ (և հուլուռի «մի բույս») — աքկադ. ḫallūru(m) (ḫi/ulluru, ḫallaru).

20. պալար «-խտոն, -ձույլ» (միա-պալար «միաձույլ, միապանդված. հարթ, պարզ») — աքկադ. balālu(m) «սրսկել, ցողել. խառնել, ձուլել, միաձուլել»,

21. պատ «չորս կողմ, բոլորտիք. պատ» (և պաթ-, պութ) — աքկադ. paṭu(m) «սահման. շրջան, գավառ» (բայց հմմտ. ուրարտ. patari «քաղաք»)?

22. սանդ, -ի — աքկադ. samādu(m) «աղալ», sam/ndu(m) «աղացած», samīdu(m) «մի տեսակ ալյուր», sāmidu(m) «ջրաղացպան» ?

23. սիք, -ոյ «մեղմ քամի» — աքկադ. zīqu (sīqu) «քամի» [շումեր. siq. հմմտ. նաև արամ. (ասոր.) ziqā «փոթորիկ», արաբ. ṣīq] ?

24. դարի — աքկադ. dārītu(m) «տեւողություն, հավիտենություն»?

25. ցից (ցցել «անկել», ցցունք «մազափունջ») — աքկադ. ṣiṣṣu(m) «ձող. լուծ. ոտնակոճղ. կապանք» (հմմտ. ասոր. ṣeṣṣā «գամ, մեխ, բևեռ»).

26. փածանել (-իմ) «հագնվել» — աքկադ. paṣānu(m) «պատել, ծածկել, փաթաթել, քողարկել».

27. փուխ, -ոյ (փուխել) — աքկադ. pūḫu(m) «փոխ, փոխանակում, փոխարինում», puḫḫu(m) «փոխանակել» (> խուռ. puḫ- > հայ. փոխ?).

28. քաքար, -ի, -աց «մի տեսակ խմորեղեն, կարկանդակ» — աքկադ.

kakkaru «կլոր հաց» (համմտ. նաև սում. kakārītā «մեղրահաց» և խուռ. kakkar, խեթ. kaggari).

29. քթեթ «կտավե հասարակ զգեստ. շորի կտոր. (բրբռ.) հարսնազգեստ» — ակկադ. kitītu(m) (kitittu, kitintu) «կտավե զգեստ», kitû(m) «կտավ».

30. քշտել «կտրել, հատել. հարվածել. դիպցնել. քսել» — ակկադ. kašāṭu(m) (kšṭ) «կտրել, հատել»։

Համեմատաբար հավաստի ակկադա-հայկական համապատասխանությունների (անմիջական և միջնորդված փոխառությունների) միջև կարելի է հաստատել հնչյունական հետևյալ համապատասխանությունները (ըստ ըսկզբնային և միջին դիրքերի).

| Ակկադ. հնչյուններ | Հայ. հնչյուններ | Օրինակներ |
|---|---|---|
| b | պ | balālu(m) — (միա)պաղաղ? |
| | | *bqr — պախրէ «տավար»? |
| | | abāru(m) — կապար? |
| | բ | Bēl — Բէլ |
| d | տ | dāritu(m) — տարի? |
| | դ | dug/kdumu — դդում? |
| | թ? | kudurru(m) — կոթող? |
| g | կ | gimaḫu(m) [kima(ḫ)ḫu(m)] — կմախ-ք. կմախիք «մեռելի ոգը» |
| | | gišrinnu(m) — կշիռ |
| | | *gzr — կղզի |
| | | *gzr — կոզեռ «երեխա». կողոն «ուղտի ձագ» |
| | գ? | |
| p | փ | paṣānu(m) — փածանիլ |
| | | pūḫu(m), puḫḫu(m) — փոխ, փոխել |
| | պ | paṭu(m) — պատ (փաթ, փոթ. համմտ. ուրարտ. patari «քաղաք»)? |
| | բ? | pūlu(m) [*būlu(m)?] — բուռ «կիր, պաշ»? |
| t | թ | kititu(m) — քթեթ «կտավե զգեստ» |
| | տ? | |
| k | ք | kitītu(m) — քթեթ «կտավե զգեստ» |
| | | kašāṭu(m) (kšṭ) — քշտել |
| | կ | kanīku(m), kunukku(m) — կնիք |
| | | kudurru(m) — կոթող? |
| ṭ | տ | kašāṭu(m (— քշտել |
| | | paṭu(m) — պատ (փաթ, փոթ)? |
| q | գ | qaqqadu(m) [*gaggadu(m)?] — գագաթն |
| | կ | aqqullu(m) — ակուր «բրիչ» |
| z | ս | ziqu(m) [siqu(m)] — սիք |
| | զ | mazû(m) — մզել |
| s | ս | sam/ndu(m) «աղացած» [samādu(m)] «աղալ» — սանդ? |
| | ց? | sāsu(m) — (արամ. sās) — ցեց? |
| ṣ | ծ | paṣānu(m) — փածանիլ |
| | | ṣiru(m) և eṣeru(m) — ծիր և ծրել? |
| | ց | ṣiṣṣu(m) — ցից |
| š | ք | kašāṭum — քշտել |
| | ս | šallūru(m) — սալոր (բրբռ. շլոր)? |
| | | šannu(m)(> ուրարտ. šani) — սան |
| ḫ | խ | pūḫu(m) — փոխ |
| | — | ḫullurū(m) [ḫallūru(m)] — ոլոռն? |
| l(l) | լ | ḫullūru(m) [ḫallūru(m)] — ոլոռն? |
| | | šalluru(m) — սալոր? |
| | ղ | balalu(m) — (միա)պաղաղ? |
| | ր | aqqullu(m) — ակուր «բրիչ»? |
| | ռ | pūlu (*būlu?) — բուռ «կիր, պաշ»? |

| 1 | 2 | 3 |
|---|---|---|
| r | ր | daritu(m) — տարի? |
| | | ṣiru(m) — ծիր |
| | ռ | *gzr — կոզեռ «եբկիրատ», կոզոն «ուղտի ձագ» |
| | դ | kudurru(m) — կոթող? |
| m | մ | mazû — մզել |
| n | ն | Nanāi — Նանե |
| | | anūtu [unūtu(m), enūtu(m)] — անութ |
| ị | ? | |
| ụ | ? | |

*Մի շարք դեպքերում հայերեն (հատկապես ուշ շրջանի կամ բարբառային) բառերի համար կարելի է նշել կամ իրոք նշվում են ակկադական համարժեքներ, բայց պատմական, իմաստաբանական, հնչյունական և այլ նկատառումներով դրանք կասկածելի կամ պատահական պետք է համարել (ակնհայտորեն սխալ ստուգաբանությունները չեն բերվում).*

*ակութ «կերակուր եփելու վառարան» (հանդիպում է միջին շրջանում և բարբառներում). Հմմտ. ակկադ.* akukūtu *«խանձող» (առնված է անծանոթ լեզվից).*

*ալապ, -ի, -այ «ճանապարհ, ուղի. միջոց, հնար». Հմմտ. ակկադ.* alāku(m) *«գնալ»,* alaktu *«ընթացք. ճանապարհ, ուղի»*?

*ալախին, -ի, -այ, -այց. Հմմտ. ակկադ.* alaḫḫinu(m) *«ջրաղացպան»* (< *խուռ.* ?).

*խծուծ «վուշի թափթփուկ» (ուշ՝ խծծել «կորզել, պատառոտել», խըզուզ «կալի մնացորդ»). Հմմտ. ակկադ.* ḫaṣāṣu(m) *«պոկել, փրցնել» (եբր., եթ.* ḥṣṣ *«անջատել»),* ḫuṣṣaṣu *(ասոր.* ḫaṣṣaṣu) *«պոկված, փրցված». Ավելի հավանական է համարվում հայ. բառերի քարթվելական աղբյուրը.*

*խոզ, -ի, -ից, -ով. Հմմտ. ակկադ.* ḫuzīru(m) [*սեմ.* *ḫa(n)zīr].

*ծպտիլ «զգեստափոխվել, կերպարանափոխվել, վտանգից խուսափել, խույս տալ. հալածել». Հմմտ.* ṣubātu(m) *«կտոր. հագուստ, զգեստ».*

*կաշառ, -ոյ կամ -ի, -աց. Հմմտ. ակկադ.* q(i)āšu(m) *«նվիրել»*

*բրբռ. մալուխ «սրածայր ձող (լծի փոկն ամրացնելու, արևը ծակելու, հինվածքը բացելու, գետինը քանդելու և բանջար հանելու համար և այլն)». ակկադ.* malāḫu *«պոկել, հանել».*

*բրբռ. մանկեռ. Հմմտ. ակկադ.* naqāru. *«պատռել, քերել հանել»,* maqqārum *«մի գործիք».*

*շոր. Հմմտ. ակկադ.* šerʾtu (šerʾitu՝ šerʾu-*ից*) *«աստվածային մի ըզգեստ».*

*պախ «փախ». Հմմտ. ակկադ.* palḫu(m) *«սարսափելի, ահավոր».*

*սատար. սատարել. Հմմտ. ակկադ.* sadāru(m) *«դասավորել. կայունացնել» (արամ., մ. եբր. «կարգավորել»)։*

*Բացի հասարակ անուններից, հայ մատենագրության մեջ գործածված են նաև ակկադական ծագում ունեցող հատուկ անուններ, մասնավորապես անձնանուններ և դիցանուններ։ Դրանք մասամբ այն անձնանուններն են, որոնք հայոց պատմության հետ առասպելաբար առնչված ասորեստանցիներին են կրում և հայ պատմիչների, հատկապես Մովսես Խորենացու կողմից սո-*

փոխառված են այլևայլ աղբյուրներից, այդ թվում՝ նաև ժողովրդական վեպերից ու առասպելներից՝ Բէլ, Նինոս, Շամիրամ։ Սրանից հետո միասին կան հատուկ անուններ, որոնք կրում են հայ անձեր և աստվածներ.

*Նանէ* (աստվածուհի՝ Արամազդի դուստրը). հմմտ. աքկադ. Nanāi(a) (աստվածուհի. պաշտամունքը տարածված է եղել ողջ Առաջավոր Ասիայում. բուն աղբյուրը դժվար է որոշել)[15].

*Կարդոս* (Արա Գեղեցիկի որդու երկրորդ անունը). հմմտ. աքկադ. qar-du(m) «մարտական, հերոսական» (աստվածների և թագավորների մակդիր)[16]։

Աքկադական որոշ անուններ մուտք են գործել Աստվածաշնչի միջոցով՝ Սենեքերիմ, Ադրամելեք և Սարասար (Սանասար)։ Վերջինս դարձել է «Սասնա ծռեր» ժողովրդական վեպի հերոսներից մեկի անունը։

Այս կապակցությամբ հարկ ենք համարում մի քանի խոսք ասել աքկադական աղբյուրներում հիշատակված վայրերի անունների մասին, որոնք հիշատակված են Ուրարտուի կապակցությամբ, տեղադրվում են Ուրարտուում և ընդհանրապես պատմական Հայաստանի տարածքում։ Եփրատի վերին հովտում տեղադրվող Armanuni$^{KI}$ քաղաքանունը ակնհայտորեն կապված է հայերի անվան հետ։ Ուրարտուում տեղադրվող $^{URU}$Šarni տեղանունը կարող է կապ ունենալ հայ. **սառն** բառի հետ։

Աքկադական փոխառությունների խմբավորումն ըստ իմաստային դաշտերի տալիս է հետևյալ պատկերը.

1. **Ֆիզիկական աշխարհ.** *1.25 կղզի. 1.72 սիք.*

2. **Մարդկություն՝ սեռ, տարիք, ընտանեկան հարաբերություն.** *2.27. կոդեռ «երեխա, մանուկ».*

3. **Կենդանիներ.** *3.781 կոզռն «ուղտի ձագ».*

4. **Մարմնի մասեր, մարմնական գործառույթներ և պայմաններ.** *4.771 կմախ-ք «մեռելի ոսկրոտի». 4.781 կմախիք «մեռելի ողբ».*

5. **Ուտելիք և խմելիք. կերակրի պատրաստում և ամաններ.** *5.17 -պաղաղ «-խառն, -ձույլ». 5.261 անաւթ. 5.52 քաքար «կարկանդակ». 5.571 սանդ. 5.67 ղլոռն.*

6. **Հագուստ, անձնական զարդարանք և խնամք.** *6.11 փածանել (-իմ) «հագնվել». 6.12 հալաւ. 6.231 քթեթ «կտավե զգեստ».*

7. **Բնակարան, տուն, կահ-կարասի.** *7.27 պատ. 7.41 [անաւթ] «կահույք, կահ-կարասի».*

8. **Երկրագործություն, բուսականություն.** *8.23 ակուր «բրիչ».*

9. **Ֆիզիկական տարբեր գործողություններ, արվեստներ և արհեստներ.** *9.22 քշտել. 9.342 մղել. 9.422 [անաւթ] «գործիք». 9.511 ցից. 9.551 բուռ «կիր», կիր. 9.63 [-պաղաղ] «-խառն, -ձույլ» 9.68 կապար. 9.831 կոթող.*

11. **Ունեցվածք, սեփականություն և առևտուր.** *11.62 փոխ. 11.831 [կշիռ].*

12. **Տարածական հարաբերություններ՝ տեղ, ձև, չափ.** *12.33 գագաթն 12.88 ծիր «շրջագիծ». [պատ] «չորս կողմ, բոլորտիք».*

---

[15] *Այս մեկնության դեպքում ճիշտ չպետք է համարել* **Նանէ** *անունը խուռա-խեթական* Ninata-*ի հետ կապելու (Գ. Ղափանցյան) կամ հայ.* **նան, նանէ, նանի** *բառերից բխեցնելու (Կ. Կոստանյան) փորձերը։*

[16] *Ավելի քիչ հավանական է Հ. Աճառյանի ենթադրությունը անվան ասորական ծագման մասին (հմմտ.* **Կարդոն** *եպիսկոպոս Անտիոքի)։*

14. Ժամանակ. *14.121 շար «3600 տարի». 14.73 տարի*

18. Ձայնական արտահայտություն, խոսք. ընթերցանություն և գիր. *18.51 [ծրել (ծիր)] «գծել, գրել».*

19. Տարածքային, հասարակական և քաղաքական բաժանումներ. *19.441 կնիք։*

*Հայերենի ակկադական փոխառությունները, այսպիսով, պատկանում են գերազանցապես մարդկային քաղաքակրթության և մշակույթի բնագավառներին՝ ուտելիք, հագուստ և բնակարան, արհեստ և առևտուր, ժամանակի և տարածության հետ կապված գաղափարների։ Սակավաթիվ են այն բառերը, որոնք մշակութային արժեք չունեն և արտահայտում են հիմնականում հայերին անծանոթ կամ քիչ ծանոթ առարկաներ ու երևույթներ։ Ընդհանրապես չեն ներկայացված շարժման և տեղափոխության, մարդու հոգեկան հատկությունների, այլև պատերազմի և կրոնի հետ կապված հասկացությունները։*

## ե) ՀԱՅԵՐԵՆԸ ԵՎ ԱՐԱՄԵԵՐԵՆԸ. ՀԱՅԵՐԵՆԸ ԵՎ ԱՍՈՐԵՐԵՆԸ

*Մ. թ. ա. II հազարամյակի վերջերին արամեական ցեղերը հարավից շարժվելով զբաղեցնում են Սիրիայի (Ասորիքի) և Միջագետքի հյուսիսային շրջանները։ Արամեերենը աստիճանաբար դառնում է տիրապետող լեզու՝ արտամղելով ամորհերենը, խուռերենը, ակկադերենը. Նոր բաբելոնական թագավորության շրջանից սկսած ակկադերենը հիմնականում միայն գրավոր լեզու է։ Պարսկական թագավորության շրջանում արամեերենը ավելի է տարածվում՝ դառնալով Առաջավոր Ասիայի ընդհանուր հաղորդակցման լեզուն. այդ պետության մեջ այն գրասենյակային պաշտոնական լեզու է և գրականության մեջ հայտնի է «թագավորական արամեերեն» անունով։ Նրանով արձանագրություններ են հայտնաբերված նաև Փոքր Ասիայում և Եգիպտոսում։*

*Արամեերենի գրավոր հուշարձանները սկիզբ են առնում մ. թ. ա. I հազարամյակի գրեթե սկզբներից, ընդ որում մինչև մ. թ. ա. VII դարը համարվում է հին արամեերենի շրջան։ Մ. թ. ա. VI դարից սկսվում է թագավորական արամեերենի շրջանը։ Մեծ քանակությամբ արամեական գրավոր հուշարձաններ են հանդես գալիս նաև հետագայում՝ գրված տարբեր բարբառներով։ Մեծ թիվ են կազմում արամեերենով գրված վաղ քրիստոնեական հուշարձանները. դեռ ավելին. աստվածաշնչից Եզրի (մ. թ. ա. V—IV դդ.) գրքում նույնությամբ առնված են արամեերեն լեզվով գրված պաշտոնական հատվածներ, Դանիելի գրքի (մ. թ. ա. II դ.) առանձին գլուխներ գրված են արամեերենով։ Արամեերենի ընդհանուր ազդեցությունը շարունակվում է մինչև արաբական նվաճումները։ Մ. թ. VII—XV դդ. արամեերենն աստիճանաբար արտամղվում է արաբերենի կողմից՝ պահպանվելով առանձին կղզյակների ձևով։*

*Արամեական արձանագրությունները գրված են փյունիկյան գրի տարատեսակով։ Արամեական գիրը հետագայում օգտագործվում է իրանական մի շարք լեզուների, այդ թվում պարթևերենի և միջին պարսկերենի համար։*

*Արամեական արձանագրություններ են հայտնաբերված նաև Հայաստանում, որոնք խոսում են հայ իրականության մեջ որպես պաշտոնական գրավոր փաստաթղթերի լեզու արամեերենի խաղացած դերի մասին։ Արամեե-*

ընի հետ այդ տեսակետից մրցել և հելլենիստական շրջանում կարևոր դեր է խաղացել հունարենը։

Առանձնապես կարևոր է եղել արևելաարամեական բարբառներից մեկի՝ որպես գրական լեզու հանդես եկած ասորերենի, հայերենի կյանքում խաղացած դերը։ Ասորերենի կրողները՝ ասորիները, հնում հիմնականում բաժանել են արամեական ցեղերի ընդհանուր բախտը։ Պարսկական պետության անկումից հետո մ. թ. ա. III—I դարերում Ասորիքը (Սիրիան) եղել է Սելևկյանների թագավորության կենտրոնը։ Մ. թ. ա. 136 թ. այստեղ ստեղծվում է Օսրոյենեի թագավորությունը՝ Ուռհա (Եդեսիա) մայրաքաղաքով։ Մ. թ. ա. 83 թ. այն ընկնում է Տիգրան II-ի տիրապետության տակ, մ. թ. ա. 66 թ. վերածվում հռոմեական նահանգի, ապա IV դ. մտնում Բյուզանդական կայսրության կազմի մեջ։ Արաբական նվաճումներից հետո Ասորիքի ասորիները աստիճանաբար դառնում են արաբախոս։

Ասորիները, որպես քրիստոնեական կրոնը առաջինն ընդունած ժողովուրդ, մեծ դեր են կատարել այդ կրոնը տարածելու մեջ։ Ասորերենի գրավոր հուշարձաններն սկսվում են մ. թ. սկզբներից, բայց ասորական գրականության ծաղկումը կապված է քրիստոնեության մուտքի հետ. մ. թ. III—VII դդ. ասորական գրականությունը հարուստ նմուշներ է տալիս՝ հարատևելով մինչև XIII—XIV դդ.։

Ասորական գիրը արամեական գրի մի տեսակն է և սկզբնապես հայտնի է եղել «էստրանգելո» անունով։ V դ. նրա հիման վրա ստեղծվում են յակոբյան կամ արևմտյան («սերտո» կոչված) և նեստորական կամ արևելյան գրատեսակները։ Ձայնավորների նշանակման սովորությունը սկսվում է VI դարից, ընդ որում արևմտյաններն օգտագործում են հունական ձայնավորանիշերի մանր տեսակները, իսկ արևելյանները՝ կետերը, որոնք դրվում են տողավերևում կամ տողատակին։ Կան բարբառային տարբերություններ. արևելյանների ā-ին արևմտյանների մոտ համապատասխանում է ō-ն, արևելյանների ō-ին՝ հաճախ արևմտյանների ū-ն։

Հայերի և արամեացիների, հատկապես ասորիների, հարաբերություններն սկսվել են հին ժամանակներից, բայց առանձնապես սերտ բնույթ են ստացել մ. թ. ա. II դարից սկսած՝ նախ Ծոփքի թագավոր Զարեհի և ապա Տիգրան II-ի օրերում։ Օսրոյենեի թագավորներն իրենց կոչում էին ասորիների և հայերի թագավորներ. նրանց տիրույթներում մեծ թիվ էր կազմում հայ տարրը։ Հայաստանի՝ քրիստոնյա դառնալուց հետո այդ կապերն ավելի են սերտանում։

Հ. Հյուբշմանը և Հ. Աճառյանը հայ-արամեական լեզվական հարաբերությունները հանգեցնում են փաստորեն միայն հայ-ասորական հարաբերություններին։ Իրականում այդ հարաբերություններն ավելի լայն են եղել[17]. մասնավորապես պետք է հատուկ կերպով նշել արևմտյան բարբառներին հարող, այսպես կոչված, «թագավորական արամեերենի»՝ հայերենի վրա ազդելու հնարավորությունը, եթե մանավանդ նկատի ունենանք Պարսկական պե-

[17] Ա. Գ. Փերիխանյանը [Периханян, 1963] տարբերում է հայերենում արամեական երկու շերտ՝ հյուսիսային Միջագետքի արամեական բարբառից և ասորերենից կատարված փոխառություններ. առաջինները գերազանցապես արքունական-վարչական, երկրորդները հիմնականում քրիստոնեական-գրքային բնույթի են։ Առաջինների մեջ կան այնպիսիները, որոնք պետք է անցած լինեն իրանական, թերևս նաև պարթևական միջնորդությամբ։

ության մեջ նրա կատարած դերը։ Այսպիսով, մինչև V դարը ընկած շրջանի համար պետք է տարբերել հայ-արամեական հարաբերությունների երեք հիմնական փուլ.

1) Ընդհանուր արամեական և հատկապես արևմտա-արամեական ազդեցության փուլ, որ ընդգրկում է վաղ ժամանակներից, հատկապես մ. թ. ա. VI դարից մինչև մ. թ. ա. IV—III դդ. այս փուլում հայերենի վրա արամեերենի ազդեցությունը կարող էր հանդես գալ մի կողմից՝ պաշտոնական գրական լեզվի գործածության, մյուս կողմից՝ հարավի արամեախոս բնակչության հետ շփվելու ճանապարհով։ Հաջորդ փուլում էլ պետք է նշել Տիգրան II-ի կողմից Պաղեստինից Հայաստան բերված և մեծ քաղաքներում բնակեցված արամեախոս հրեաների լեզվի հնարավոր ազդեցությունը (բուն հրեերենը Պաղեստինում դադարել էր կենդանի խոսակցական լեզու լինելուց շատ ավելի վաղ)։

2) Հայ-ասորական էթնիկական փոխազդեցության փուլ. մ. թ. ա. II դ.—մ. թ. II դար. այս փուլում հայերի և ասորիների շփումը տեղի է ունենում ինչպես աշխարհագրական հարևանության, այնպես էլ քաղաքական սերտ հարաբերությունների պայմաններում. Օսրոյենեի պետության մեջ մեծ թիվ էին կազմում հայերը, Հայաստանի հարավային շրջաններում՝ ասորիները. Տիգրան II-ի ժամանակ Ասորիքը շուրջ 17 տարի գտնվել է հայկական քաղաքական գերիշխանության տակ։

3) Ասորական կրոնաքարոզչական և դպրոցական ազդեցության շրջան՝ մ. թ. III—IV դդ. այս փուլում ասորիները, որպես քրիստոնեություն ընդունած առաջին ժողովուրդը, լայն քարոզչական գործունեություն են սկսում Հայաստանում, իսկ հայերի՝ քրիստոնեություն ընդունելուց հետո ազդում հայերենի վրա ինչպես կրոնական-եկեղեցական բնագավառում (հայկական եկեղեցում ծիսական լեզուներ են եղել ասորերենը և հունարենը), այնպես էլ դպրոցական ուսուցման միջոցով. մինչև հայ գրերի գյուտը Հայաստանում գործում էին ասորական և հունական դպրոցներ, օգտագործվում էին ասորերեն լեզվով քրիստոնեական գրքեր, հայերն էլ գնում էին Ասորիք, հատկապես Ուռհա (Եդեսիա)՝ վերջինիս քրիստոնեական մեծ դպրոցում սովորելու համար։

Հայ գրերի գյուտից հետո ասորերենի ազդեցությունը տեղի է ունենում գերազանցապես մատենագրական ճանապարհով՝ ասորերենից կատարված թարգմանությունների միջոցով։

Հայերենի՝ արամեերենից և, մասնավորապես, ասորերենից կատարած հնագույն փոխառությունները վերևում բերված ցանկի համաձայն հետևյալներն են (ըստ հնարավորին առանձնացվում են վաղ արամեական և համեմատաբար ուշ շրջանի բուն ասորական փոխառությունները).

Ա. Վաղ արամեական

1. *բարկ «կայծակ» — արամ.* barqā *«կայծակ».*

2. *բերդ, -ի, -այ — արամ.* bīrtā *«բերդ, ամրոց» [բայց հմմտ. նաև աքկադ.* birtu(m)].

3. *գաղութ (գաղթ, գաղթել) — արամ.* gālūt(ā) *«աքսոր. գաղթ» (ասոր.* gālūṭā).

4. *գուբ, -ոյ «հոր. փոս. բջիջ. փողրակ» — արամ.* gubb(ā) *«գուբ, փոս, ջրհոր, ջրամբար» [բայց հմմտ. ասոր.* gubbā, *աքկադ.* gubbu(m)].

5. դար, -ու — արամ. dār(ā) «դարաշրջան» [բայց հմմտ. ասոր. dārā «դարեր, ժամանակներ», աքկադ. dāru(m) «տևողություն, հավիտենություն»].

6. դարգ «կարգ, շարք» — արամ. darg(ā) «կարգ, աստիճան» (ասոր. dargā).

7. թանգար (թանկար), -ի, -աց «վաճառական» — արամ. (մանդ.) tāngārā, taggar(ā) (ասոր. taggārā).

8. խարբ, -ի «սուր, թուր» — արամ. (նաև ասոր.) ḥarbā.

9. խմ-որ (խմեալ «խմորված», անխմոր «չխմորված») — արամ. ḥmʻ «թթվել, խմորվել» (ասոր. ḥmaʻ).

10. խոռ «ծակ, փոս, խոռոչ» — արամ. ḥōrā «ծակ» [ասոր. ḥura. բայց հմմտ. աքկադ. ḫurru(m)].

11. կացին, -ոյ — արամ. ḥaṣṣinā [ասոր. ḥaṣṣinā, աքկադ. ḥaṣṣinnu(m)].

12. կուպր — արամ. (նաև ասոր.) kuprā [բայց հմմտ. աքկադ. kupru(m)].

13. հաբլ-ք (խաբլ-ք) «որոգայթ, թակարդ. թակարդի թոկ» — արամ. (նաև ասոր.) ḥablā «թոկ».

14. հաշիւ, -ի — արամ. (նաև ասոր.) ḥəšīb «կարծված, համարված հաշված».

15. ձէթ, -ոյ — արամ. (նաև ասոր.) zēt, այլև zait(ā).

16. ձիւթ, -ոյ — արամ. ziptā (ասոր.) zeptā).

17. մագաղաթ, -ի «մագաղաթ. գիրք» — արամ. (նաև ասոր.) magallətā «թղթագլար, փաթեթ (որպես գիրք)».

18. մանգաղ, -ի, -աց — արամ. (նաև ասոր.) maggəlā.

19. մաշկ, -ի, -ից — արամ. maškā [ասոր. meškā, բայց հմմտ. աքկադ. mašku(m)].

20. մաքս, -ի — արամ. (նաև ասոր.) maksā.

21. շաւիղ, -ի, -աց — արամ. (նաև ասոր.) šəbīlā «ճանապարհ, հետք».

22. շղթայ, -ի, -ից — արամ. šīšltā (ասոր. šēšaltā).

23 սակուր (սակր) «ռազմատապար» — արամ. sāqurlā, (նաև ասոր.) seqūrā.

24. ցեց, -ոյ — արամ. sās(ā) (բայց հմմտ. աքկադ. sāsu(m) և հուն. < սեմ. σής).

25. քանքար, -ոյ և -ի, -աց «մի կշռաչափ. այդ չափով ոսկու կամ արծաթի գումար. տաղանդ, շնորհք» — արամ. kankərā, (նաև ասոր.) kakkərā.

26. քնար, -ի, -աց — արամ. kinnarā (ասոր. kennarā).

Բ. Բուն ասորական[18]

27. աբեղայ, -ի, -ից — ասոր. abilā.

28. ադեն, այ (ադին) «եդեմ, դրախտ» — ասոր. ʻəden.

29. աթութայ-ք «տառեր, տառանշաններ, գրեր» — ասոր, aṭutā (āṭ-ի հոգնակին).

[18] Սրանք առանձնացնելիս նկատի ենք առել հատկապես՝ 1) հայերեն բառերի՝ միայն ասորերենում հանդիպելը կամ ասորերեն ձևերին ամենից ավելի մոտ լինելը, 2) բնորոշ վերջնահնչյուններ ունենալը, 3) ասորական բառերի՝ հունարենից փոխառյալ լինելը՝ հայերեն բառերի՝ ասորերեն ձևերին ավելի մոտ լինելու պայմաններում, 4) բառերի՝ ո՛ր իմաստային դաշտերին պատկանելը և այլն։

30. աղց, -ի, -ից — ասոր. ālṣā.

31. ամարու «գառնուկ» — ասոր. amrā (բայց հմմտ. արաբ. amarra).

32. ամղան «վերարկու» — ասոր. āmlōn (āmelā).

33. ապուպայ, -ի, -ից «ձեուի ափի» — ասոր. āpaulā |< լատ. ampulla «(կաշեպատ) լայնափոր շիշ»|.

34. առնէա, -ի, -ից — ասոր. arnā'a.

35. աքսոր-ք, -ից — ասոր. aksoria (eksoria < հուն. ἐξορία).

36 բասրել (բասիր) «պարսավել, անարգել» — ասոր. bəsīr «անարգ», bəsār «արհամարհել, մերժել».

37 գադիշ. -ի, -ից «դեզ» — ասոր. gədīšā.

38. զոյգ, -ի, -ից, -աց — ասոր. zaugā «զույգ. կրկնակ, նման» (< հուն. ζεῦγος).

39. զոպայ, -ի, -ից «ծոթրինակերպ մի բույս» — ասոր. zōpā.

40. թարգման, -ի, -աց — ասոր. targmānā.

41. թարշիշ, -ի «մի տեսակ թանկագին քար» — ասոր. taršīš (< հուն. θαρσίς).

42. իլուլ «եբրայական տոմարի 6-րդ ամիս» — ասոր. īlul.

43. լումայ (լոմայ), -ի, -ից «մանր դրամ» — ասոր. lūmā (< լատ. nummus).

44. խանձարուր, -ոյ — ասոր. 'azrurā.

45. խանութ (հանութ) — ասոր. ḥānūtā.

46. խարամանի (խարամայնի, խարամուն, հարամանի) «դև, սատանա, չար օձ» — ասոր. ḥarmānā «օձ».

47. խարբալ-ել «մաղել. տակնուվրա անել, վնասել, վտանգել» (վաղ արամ. փոխառություն) — արամ.-ասոր. 'arbālā «մաղ», ասոր. 'arbēl «մաղել».

48. խ(ի)լայ «պարզված զգեստ. կանացի շոր» — ասոր. *ḥil'ā (հմմտ. արաբ. ḥil'a).

49. խլուրդ (խլիրդն) — ասոր. ḥūldā «խլուրդ», ḥuldūdā «դաշտամուկ».

50. ծարիր (ծարոյր, -իւր, -ուր), -ոյ և -ի, -ից «աչքի սև ներկ» — ասոր. ṣədīdā.

51. ծոմ — արամ.-ասոր. ṣōmā.

52. ծրար «կապոց. կծիկ. քսակ. (ուշ) ծրար» — ասոր. ṣərārā «քսակ» (եբր. ṣrōr «կապոց, տրցակ»).

53. կաթսայ (կասսայ), -ի, -ից — ասոր. qadsā (< հուն. κάδος).

54. կարկուրայ, -ի, -ից «նավակ» — ասոր. qarqurā.

55. հեգ, -ի, -ից «վանկ» — ասոր. həg̱ā «կարդալ».

56. հեգենայ, -ի, -ից «գիր, այբուբեն» — ասոր. heg̱jānā «կարդալը, հեգելը, ընթերցանություն, արտասանություն».

57. հեթանոս, -ի, -աց — ասոր. htnws (առանց ձայնավորների գրություն) (< հուն. ἔθνος).

58. հռիտորայ «ճարտասան, հռետոր» — ասոր. rhitōrā (< հուն. ῥήτωρ > հայ. հռետոր).

59. հրեայ, -ի, -ից — ասոր. jūdājā.

60. ձանձախտրիթ «մուզ, սև. (մուգ) կարմիր. մոր» — ասոր. zəkōrītā «որդան կարմիր».

61. ղե(ա)կ, -ի, -աց — ասոր. lēqa.

62. մանանայ, -ի, -ից, — ասոր. mannā.

63. մաշկն, -կնի «վրան» — ասոր. maškan «վրան, խորան».

64. մծղնեայ, -ի, -ից «մի աղանդ» — ասոր. məṣalləɉanē «աղոթա-կան՝ մեսալյան աղանդ».

65 մատրակ, -ի, -աց. — ասոր. maṭrəqā (բայց հմմտ. արաբ. miṭraq «բարակ ձողիկով փայտ, գավազան», որ հայերենին ձևով մոտ է, իմաստով՝ հեռու).

66. նաշխհ, -ոյ «մանր աղացած՝ նուրբ ալյուր» — ասոր. nəšīpā.

67. շաբաթ, -ու — ասոր. šabbəṯā (< եբր. šabbāṯ).

68. շամփուր, -ի, -աց — ասոր. šappudā «անթրոց, կրակխառնիչ».

69. շափիղայ (շափիւղայ, շափիլայ) — ասոր. sapīlā.

70. շեփորայ (շիփորայ), -ի, -ից (շեփոր, -այ) — ասոր. šīpōrā (հմմտ. նաև պրսկ. šēpōr).

71. ուրբաթ, -ու — ասոր. ərūbaṯā.

72. պախրէ (ա շ՝ պախրայ), -ի, -ից «տավար. պարեն. ինչք» — ասոր. baqra «տավար. կով. ցուլ» ?

73. ռ(ա)բունայ «վարդապետ, ավագ» — ասոր. rahbōnā.

74. սատանայ, -ի, -ից — ասոր. saṭānā (< եբր. sāṭān).

75. սափր-ել «ածիլել» — ասոր. spr.

76. սկահ (սկիհ) «բաժակ» — ասոր. esqəpā (< հուն. σκάφη).

77. սպսեր, -ի, -աց — ասոր. sapsērā.

78. սրիկայ — ասոր. srīqā «դատարկ. անպիտան մարդ».

79. սրո(վ)բէ (ձևափոխված՝ քերովբէ-ի նմանակությամբ) — ասոր. srapē.

80. տղայ — ասոր. ṭaljā.

81. փեգանայ (փեգենայ) «մի բույս՝ սատապ, ապանդ. ruta» — ասոր. pēgānā (< հուն. πήγανον).

82. փիլիսոփայ, -ի, -ից — ասոր. pīlōsōpā (< հուն. փիլիսոփա).

83. փրկ-ել, փրկան-ք — ասոր. prq «փրկել, ազատել», purqānā «փըր-կություն».

84. քահանայ, -ի, -ից — ասոր. kāhanā (հմմտ. արամ. kāhanā).

85. քաղդեայ «հմայող, գուշակ» — ասոր. kaldāɉā «մոգ, աստղահմա».

86. քանուն (քանոն) — ասոր. kanūntā և qanūnā (< հուն. κανών > հայ. կանոն) ?.

87. քարոզ, -ի, -աց և -ոյ «մունետիկ, երաժիշտ. քարոզ» — ասոր. kā-rōzā «մունետիկ», kārōz «հրավիրակ».

88. քուշ «արու այծ» — ասոր. kebša «մատաղ խոյ» (հմմտ. նաև արաբ kabš).

89. քերովբէ «մի հրեշտակադաս» — ասոր. k(ə)rōbā, հգն. krōbē (< եբր. kərub).

90. քոսիթայ «կրօնաւորի գլխարկ, կնգուղ» — ասոր. kōsītā.

91. քուրայ, -ի, իւ — ասոր. kūrā [արամ. kūr(ā)].

92. քումր, -ի, -աց — արամ. — ասոր. kūmrā [հմմտ. նաև ակկադ. kumru(m)].

Արամեական և ասորական ձևերից զգալիորեն շեղվում են մի շարք բառեր՝ ավելի մոտ լինելով եբրայական, եթովպական համապատասխան ձևերին. այս դեպքում պետք է ենթադրել կամ Հայաստանում բնակված հրեաների մոտ պահպանված (բաղարկված) հին ձևեր, կամ արամեական և ասորական բարբառային ձևեր, կամ այդ լեզուների և հայերենի միջև միջնորդ այլ օղակներ.

1. գզաթ, -ու «բուրդ» — ասոր. gezzetā՝ եբր. gizzaṯ և ակկադ. gizzatu ձևերի կողքին.

2. ծնծղայ, -ի, -իւ — ասոր. ṣiṣṣəla (ṣeṣṣəlā), արամ. ṣalṣəlā, եթովպ. ṣanaṣəl, ṣanaṣəlat ձևերի կողքին.

3. մակաղ «ոչխարի փարախ» — եբր. mīkəlā.

4. սեռն «սաւանոցք» — արամ. — ասոր. sernā՝ եբր. seren ձևի կողքին.

5. սկուռ «վարձ» — եբր. səkar, seker, sakar «վարձ», եթովպ. səkūr «վարձված».

6. տերև, -ոյ — ասոր. tərep, tarpā՝, եբր. terep ձևի կողքին.

7. քուեայ (քուէ), -ի, -իւ — արամ. թալմ. quṷja՝ q-ի փխման անսովոր ք-ով (< հուն. κυβεῖα «խաղամոլութ. վեգ»).

Հայերենի և արամեերենի ու հատկապես ասորերենի բառային զուգադիպությունների միջև կարելի է հաստատել հնչյունական հետևյալ համապատասխանությունները.

| | | |
|---|---|---|
| b | բ | bəsīr — բասիր (բասրել) |
| -b (w) | բ | abīlā — աբեղայ |
| | | ərubətā — ուրբաթ |
| | ւ(վ) | ḥašib — հաշիւ |
| | | kebšā — քաւշ «արու այծ» |
| | | šabīlā — շաւիղ |
| d | դ | dār(ā) — դար |
| | | dargā — դարդ «կարգ, շարք» |
| -d (ð) | դ | ‛əden — ադեն |
| | | gədišā — գադիշ «դեզ» |
| | ր | ṣədidā — ծարիր |
| | | īhudāįā — հրեայ |
| g | գ | galūṯā — գաղութ |
| ḡ (γ) | գ | pēḡānā — փեգենայ (բոյս) |
| p | փ | pēgānā — փեգենայ (բոյս) |
| | | pīlōsōp̄ā — փիլիսոփայ |
| -p̄ (f) | փ | sap̄ilā — շափիղայ? (ասոր. s > հայ. շ?) |
| | ւ(վ) | tərēp̄ — տերև ? |
| | | zip̄tā — ձիւթ |
| | բ | srāp̄ē — սրո(վ)բէ |
| | հ | našīp̄ā — նաշիհ «նուրբ ալյուր» |

| | | |
|---|---|---|
| | | esqəpā — սկահ |
| t | թ | targ(ə)mānā — թարգման |
| | | taršiš — թարշիշ |
| -t (ḏ) | | atūtā — աթութայք |
| | | zet — ձէթ |
| k | ք | kāh(a)nā — քահանայ |
| | | kaldaiā — քաղդեայ «հմայող, գուշակ» |
| | | kārōzā — քարոզ |
| | | kebša — քաւշ «արու այծ» |
| | | kinnarā (ասոր kennara) — քնար |
| | | kūrā — քուրայ |
| -k (x) | ք | aksoria — աքսոր |
| ṭ | տ | ṭaliā — տղայ |
| | | ṭərep — տերեւ |
| q | կ | qadsā — կաթսայ |
| | | qarqūrā — կարկուրայ |
| | | qəṭṭau — կտաւ ( > ասոր ?) |
| z | զ | zōpā — զոպայ (մի բույս) |
| | | zaugā — զոյգ (au > ոյ) |
| | ձ | zəkōrīṭā — ձանձախարիթ «մուգ (կարմիր)» |
| | | zeṭ — ձէթ |
| | | zīptā — ձիւթ |
| | | 'azrurā — խանձարուր |
| s | ս | spr — սափրել |
| | | sərīqā (srq) — սրիկայ |
| | | srāpē — սրո(վ)բէ |
| | | bəsīr — բասիր (բասրել) |
| | շ? | sapīlā — շափիղայ |
| | | šappūdā — շամփուր |
| ṣ | ծ | ṣərar(ā) — ծրար |
| | | ṣiṣṣəlā — ծնծղայ |
| | | ṣōm(ā) — ծոմ |
| | ց | ālṣā — աղց «կարիք» |
| š | շ | šəbīlā — շաւիղ |
| | | šīpōrā — շեփոր (բայց հմմտ. պրսկ. šēpōr < սեմ.) |
| | | šišiltā — շղթայ |
| | | šūšantā (հգն. šūšannē) — շուշան (բայց հմմտ. եբր. šūšān) |
| | | nəšīpā — նաշիհ |
| h | հ | həgā — հեղ |
| | | heglānā — հեղենայ |
| | | ihudaiā — հրեայ |
| ḥ | խ | ḥānūṭā — խանութ (հանութ) |
| | հ | ḥarbā — խարբ |
| | | ḥəšīb — հաշիւ |
| ' | --- | ḥil'ā — խ(ի)լայ «նվիրված զգեստ» |
| ' | խ | 'azrurā — խանձարուր |
| | | 'arbala — խարբալ-եղ «մաղել» |
| l | լ | lūmā — լումայ |
| | | ilūl (< եբր. ə'ūl) — Ելուլ (ամսանուն) |
| | ղ | abīla — աբեղայ |
| | | ṭaliā — տղայ |
| r | ր | 'azrurā — խանձարուր |
| | ռ(ն) | *arnā'āt (arnā'ā) — առնէտ |
| m | մ | magallətā — մագաղաթ |
| | | mangəla (maggəlā) — մանգաղ |
| | | mannā — մանանայ |
| n | ն | nəšīpa — նաշիհ «նուրբ ալյուր» |
| i (j) | յ? | ihūdaiā — հրեայ |
| | ---? | ṭaliā — տղայ |

| | | |
|---|---|---|
| a | ա | abīlā — աբեղայ |
| | | taršīš — թարշիշ |
| ā | ա | ạtūtā (հգն.) — աթղւթայք |
| | | dārā — դար |
| ə | ա | 'ədcn — ադէն |
| | | gədīšā — գադիշ |
| | | šəbīlā — շաւիղ |
| | (ը) | ṣərār(ā) — ծրար |
| e | ե | hegiānā — հեգեհնայ |
| ē | է | zēt (zait) — ձէթ |
| | ե (եա) | lekā — ղեկ (ղեկակ) |
| ō | ո | ṣomā (ṣūm) — ծոմ |
| | | zōpā — զոպայ |
| | | kārōzā — քարոզ |
| i | ի | zipta — ձիւթ |
| | ե | šipōra (?) — շեփորայ |
| ī | ի | ilūl — խլուլ |
| | | ḥəsir — բասիր (բասրել) |
| | | pilōsopā — փիլիսոփայ |
| | (ը) | ḥil'ā — խլայ (խիլայ) |
| | | kinnārā (kennārā) — քնար |
| | | ṣiṣṣəlā — ծնծղայ |
| | | šišilta — շղթայ |
| u | ու | gubbā — գուբ |
| ū | ու | qarqūrā — կարկուրայ |
| | | gālūt(a) — գալութ |
| | | kūrā — քուրայ |
| | | lūmā — լումայ |
| | (ը) | ihudāiā — հրեայ |
| au | ու | āpaulā — ապուղայ |
| | ոյ | zauga — զոյգ |

Կան զգալի թվով հայերեն բառեր, որոնց աղբյուրը սովորաբար համարվում է ասորերենը, բայց բերված զուգահեռները բավարար չափով համոզիչ չեն.

անկան (անգան) «աման» (բրբռ. նաև «տաշտ»). Համմտ. ասոր. aggānā «ջրաման» (արամ., եբր. aggān, աքքադ. agannu).

դամարիլ «շվարել». Համմտ. ասոր. dūmā'ā «հիացում, ապշություն», dəmīrā «հրաշալի». պատահակա՞ն է արդյոք նմանությունը հայ. բմբիլ բային.

խարտ, -ի «խարտավածք» (խարտ-ել). Համմտ. ասոր. ḥrat «կլոել. ձեվել. քերել. փորել» (եբր. ḥeret «գրիչ. քանդակելու գործիք», արաբ. ḥarṭ «ճախարակով հղկել»).

կասկարայ, -ի, -ից. Համմտ. ասոր. kaskārā «կողով»[19].

կատու, -ոյ (ուշ). Համմտ. ասոր. qaṭṭū[20].

կեղև, -ոյ (կեղևել). Համմտ. ասոր. qəlāpā «գրքի թերթ», qəlāp «կեղևել,

---

[19] Համմտ. նաև հուն. ἐσχάρα «կասկարա», որից թալմ. asqalā. Հուն. բառը, ըստ ոմանց՝ հնդեվրոպական ծագում ունի, ըստ այլոց [Ерштедт, 1953, 26–27]՝ փոխառություն է եգիպտերենից:

[20] Կասկած չի հարուցում հայ. բառի փոխառյալ լինելը, բայց բուն աղբյուրը դժվար է որոշել. ամենից ավելի մոտ է հայերենին ասորերեն ձևը, բայց արդյո՞ք նա է հայերենի աղբյուրը և ոչ թե ընդհանրական ձևով ընտանի կատուն հայերենում կոչվել

7. Բնակարան, տուն, կահ-կարասի. *7.14 մաշկն «վրան».*

8. Երկրագործություն, բուսականություն. *8.33 *մանգաղ. 8.421 գաղիշ «դեղ (ցորենի, խոտի)». խարբալ-ել «մաղել». 8.531 զոպայ «ծոթրինակերպ մի բույս». փեգանայ (փեգենայ) «սատափ, սպանդ.* ruta». *8.56 **տերեւ.*

9. Ֆիզիկական տարբեր գործողություններ.արհեստներ և արվեստներ, համապատասխան գործիքներ և նյութեր. *9.18 *շղթայ. 9.192 ծրար «կապոց, կծիկ». 9.25 *կացին. 9.441 քանուն (քանոն). 9.551 *կուպր. *ձիւթ. 9.631 քուրայ. 9.93 աղց «կարիք».*

10. Շարժում և տեղափոխություն. փոխադրում, նավագնացություն. *10.651 մտրակ. 10.66 *շաւիղ. 10.77 սեռն «առանցք». 10.93 կարկուրայ «նավակ». 10.86 դե(ա)կ.*

11. Ունեցվածք, սեփականություն և առևտուր. *11.25 փրկել. 11.431 լումայ «մանր դրամ». 11.441 քանքար «մի կշռաչափ և նրա չափով ոսկի և արծաթ». 11.461 [թարշիշ] «մի թանկագին քար». [շափիղայ] «մի թանկագին քար». 11.45 [ծրար] «քսակ». 11.66 *հաշիւ. 11.67 ս(ա)րումայ «գրավական, ավանդ». 11.78 **սխուր «վարձ». 11.84 *թանգար «վաճառական». 11.86 խանութ (հանութ).*

12. Տարածական հարաբերություններ՝ տեղ, ձև, չափ. *12.72 *գուբ «հոր, փոս. *խոռ «ծակ, փոս, խոռոչ». 12.841. *դարգ «կարգ, շարք».*

13. Քանակ և թիվ. *13.351 դոյզ.*

14. Ժամանակ. *14.121 *դար. 14.61 շաբաթ «մեկ շաբաթ, մեկ յոթնյակ». 14.63—14.66 [(երկու-, երեք-, չորեք-, հինգ)շաբաթ(ի)]. 14.67 ուրբաթ. 14.68 [շաբաթ] «շաբաթ օր». 14.72 ելուլ «եբրայական տոմարի 6-րդ ամիս».*

15. Զգայական ընկալումներ. *15.63 [ձանձախարիթ] «մուզ». 15.66 [ձանձախարիթ] «մուզ (կարմիր)». 15.81 *[քանքար] «տաղանդ».*

16. Զգացմունք. խառնվածքային, բարոյական և գեղագիտական ըմբռնումներ. *16.72 սրիկայ. 16.78 բասր-ել (բասիր) «պարսավել, անարգել».*

17. Մտածողություն, միտք. *17.21/27 փիլիսոփայ.*

18. Ձայնական արտահայտություն, խոսք. ընթերցանություն և գիր. *18.111 եփոր(այ). 18.121 **ծնծղայ. *քնար. 18.211 թարգման. հռետորայ «հռետոր». 18.521 հեգ «վանկ» (հեգ-ել «վանկ կապել»). 18.53 աթութայ-ք «տառեր, գրեր». հեգենայ «գիր, այբուբեն». 18.561 մագաղաթ. 18.61 *[մագաղաթ] «գիրք».*

19. Տարածքային, հասարակական և քաղաքական բաժանումներ. հասարակական հարաբերություններ. *19.221 հրեայ. 19.451 [քանուն] «կանոն». 19.61 *մաքս.*

20. Ռազմական գործ. *20.222 *սակ(ու)ր «ռազմատապար». 20.27 *խարբ. սուսեր. 20.35 *բերդ.*

21. Օրենք. *21.321/331 **քուեայ (քուէ). 21.371 աքսոր-ք. *գաղութ (գաղթ).*

22. Կրոն և նախապաշարմունք. *22.18 քահանայ. 22.182 քուրմ. 22.182/183 աբեղայ. 22.1821 [քուսիթայ] «կրոնավորի գլխարկ, կնգուղ». 22.211 մծղնեայ «մի աղանդ». 22.22 քարոզ. 22.26 ծոմ. 22.311 ադեն «եդեմ, դրախտ». 22.331 սրո(վ)բէ. քերովբէ. 22.34 սատանայ. 22.35 խարամանի «դև». 22.36 հեթանոս. 22.431 բոզդեայ (բուդեայ) «հմայող, գուշակ»։*

*Հայերենի արամեա-ասորական փոխառությունների իմաստային խմբերի ուսումնասիրությունը հանգեցնում է հետևյալ եզրակացությունների.*

1. Այդ փոխառությունները իրենց բնույթով մոտենում են իրանականներին և տարբերվում հնդկականներից՝ ընդգրկելով, բացի դերանուններից և սպասարկու բառերից, մնացած բոլոր խմբերը։ Այլ կերպ ասած՝ այդ փոխառությունները չեն սահմանափակվում քաղաքակրթական-մշակութային բնագավառներով։

2. Չնայած արամեա-ասորական փոխառությունների լայն ընդգրկմանը՝ դրանց քանակական բաշխումն ըստ իմաստա-թեմատիկ խմբերի միատեսակ չէ. այնուամենայնիվ ամենից ավելի բազմանդամ են քաղաքակրթական-մշակութային և կրոնական բնագավառները՝ ուսմունքի, հոգևորականի, երկրագործության, արհեստագործության, փոխադրամիջոցների, առևտրի, գրի և գրականության, այլև ժամանակի հետ կապված հասկացությունները։ Համեմատաբար սակավաթիվ են ֆիզիկական աշխարհի, մարդկային տարիքների, մարմնի մասերի, բնակարանի, տարածական հարաբերությունների, քանակի ու թվի, հոգեկան աշխարհի, այլև հասարակական հարաբերությունների, ռազմական գործի և օրենքի հետ կապված բառերն ու տերմինները։ Մեծաթիվ են հատկապես կրոնի, տոմարի և գրի հետ կապված անվանումները, որոնք համեմատաբար ուշ շրջանի են և կապված քրիստոնեության մուտքի ու Հայաստանի ասորական դպրոցների կյանքի հետ։

3. Ժամանակագրական առումով համեմատաբար վաղ շրջանի են մարդու առօրյա կարիքների և տնտեսական գործունեության, տարածական ըմբռնումների, ռազմական գործի, քաղաքական կյանքի և օրենքի հետ կապված անվանումները։ Համեմատաբար նոր են գրի և կրոնի հետ կապված անվանումները։

## գ) ՀԱՅԵՐԵՆԸ ԵՎ ԱՐԱԲԵՐԵՆԸ

Հայերենի վրա արաբերենի գործած համեմատաբար ուժեղ ազդեցության մասին կարելի է խոսել միայն VII դարից սկսած, երբ Հայաստանն ընկնում է Արաբական խալիֆաթի տիրապետության տակ։ Հ. Հյուբշմանը և Հ. Աճառյանը ընդհանրապես ժխտում են մինչ այդ հայերենում արաբական ծագման բառերի առկայությունը [Hübschmann, 1892, 123—258. 1895, 1, 259—280. Հյուբշման, 1894. Աճառյան, ՀԼՊ, 2, 169—217]։ Սակայն կան V դ. մատենագրության մեջ հիշատակված մի շարք բառեր, որոնք սեմական լեզուների համապատասխան բառերի մեջ ամենից ավելի մոտ են արաբականներին։ Այսպիսի դեպքերում Հ. Հյուբշմանը և Հ. Աճառյանը կամ ընդհանրապես ժխտում են հայերեն բառերի սեմական ծագումը, կամ ենթադրում փոխառություն ասորական բարբառներից։

Եթե նկատի առնենք արաբական տարբեր ցեղերի առկայությունը Իրանի և Բյուզանդիայի սահմանամերձ վայրերում VII դարից ավելի վաղ, Հայաստանի հարավային շրջաններին մերձավոր վայրերում «յուրատեսակ ասորա-արաբական կոյնեի» առկայությունը [Пигулевская, 1964, 34], ապա թերևս այստեղից կարելի է բխեցնել հիշյալ բառերի մի զգալի մասը [Մրկրտչյան, 1980—1984][21], թեև որոշ դեպքերում էլ կարելի է ենթադրել մեր-

[21] Դժբախտաբար, հեղինակը հավանական բառերի հետ միասին բերում է նաև անհավանական զուգադիպություններ։

ձավոր սեմական այլ աղբյուր։ Արաբները, մասնավորապես, դեռ նախքան իսլամի հանդես գալը բնակվում էին Հյուսիսային Միջագետքում և V դ. հայ մատենագրության մեջ կոչվում էին իրանական աղբյուրից փոխառյալ բառով տաճիկ (tačīk), որ նշանակում էր և՛ «արաբ», և՛ «արագավազ»։

Հայերենի սեմական փոխառությունների՝ վերևում բերված ցանկից կարելի է առանձնացնել մի շարք բառեր, որոնց քիչ թե շատ հավանական աղբյուրը կարող է լինել արաբերենը («սաորա-արաբական կոյնեն»).

1. ախմախ «հիմար, ախմար» — արաբ. aḥmaq (ḥmq «հիմար լինել»).

2, աղխ «փականք. օղակ. ունեցվածք, ապրանք. բազմություն. ցեղ, զարմ, ժողովուրդ» — արաբ. 'ahl «ընտանիք. ցեղ. մարդիկ» (հմմտ. և γalaq, հգն. aγlaq «փականք, կողպեք»?).

3. այպն «ամոթ, ծաղր» — արաբ, ‘ayb «պարսավանք. արատ, թերություն. ամոթ».

4. առշել (-իմ) «ծարավել» — արաբ. ‘aṭiš «ծարաված, ծարավի», ‘aṭaš «ծարավ», ‘aṭiša «ծարավեց» (‘ṭš «ծարավել»).

5. բատատ «ճիճու, որդ. փայտի ցեց» — արաբ. baṭīṭa, buṭīṭia (նվազական) «ծառի որդ».

6. զունար «գոտի» (ուշ նորմուծու՞մ) — արաբ. zunnār «գոտի».

7. կաւատ — արաբ. qawwad «միջնորդ, կավատ» (qwd «առաջնորդել տանել»).

8. մահիճ «անկողին, անկողնակալ» — արաբ. mahǰa‘ «ննջարան» (hǰ‘, «քնել, հանգստանալ»).

9. շալակ «պարկ. պատգարակ» — արաբ. šallāq «մուրացկանի տոպրակ».

10. շաաւն «ուղտ» — արաբ. šārif, հգն. šawārif «ծեր էգ ուղտ».

11. սխրանալ «հիանալ, զարմանալ, սքանչանալ» — արաբ. sḥr «կախարդել. հիացնել», siḥr «կախարդանք, դյութանք»։

Իմաստային, հնչյունական և այլ նկատառումներով քիչ հավանական պետք է համարել հայերեն և արաբերեն բառերի հետևյալ համեմատությունները.

խայրի «պտուղ». հմմտ. արաբ. ḫayr «լավ. լավ բան, բարիք».

խաբ, -ի, -ից, խաբել. հմմտ. արաբ. ḫabb «խաբեբա» (ḫbb «շորորավազքով գնալ». հմմտ. նաև պրսկ. xab «խարդախություն». Լ՚ին համեմատում է հ. սլ. хабити «փչացնել», սերբ. хабен «վատ» բառերի հետ.

խիլ «որոնում», խլել «խլել, կորզել, հափշտակել». հմմտ. արաբ. ḫl‘ «հանել. նվիրել. տեղահան անել».

հաշմ, -ի «խեղ, խեղանդամ, հաշմանդամ». հմմտ արաբ. ḫašīm «թույլ. փխրուն». hašm «ջարդելը, փշրելը, ջարդում, փշրում», hšm «ջարդել, փշրել, ճզմել»).

հատ-անել. հմմտ. արաբ. ḥādd «սուր», ḥadd «սահման», ḥdd «սահման դնել, սահմանափակել». ավելի հավանական է հայ. արմատի խեթալուվիական ծագումը.

շառափ «լույս, ճառագայթ». հմմտ. արաբ. šaraf «փառավորություն, շուք», այլ՝ ակկադ. šarāpu(m) «այրել» (սեմ. *ś/šrp).

շարխատ «տուրք, վաշխ». հմմտ. արաբ. sarwat «վաճառք, մանրածախ առևտուր».

սափրոց, սափրել «հարդարել» (ուշ՝ «ածիլել, համարել»). Հմմտ. արաբ. sa-dir «առանց երկար մազերու ունող».

վարան, -ի «տարակույս». Հմմտ. արաբ. wahrān «վախեցած. անհանգստացած» (whr «վախեցնել. դժվարին վիճակի մեջ դնել»).

վլթար. Հմմտ. արաբ. wadlar «վատնել. վտանգել, կործանել»:

Մի շարք այլ դեպքերում հայերեն բառերի համար բերվող արաբական զուգահեռները սխալ է պատահական նմանության արդյունք համարել.

1) Բավականաչափ հիմքեր չկան մերժելու հետևյալ բառերի հնդեվրոպական ծագումը.

ամուլ, -ոյ «չբեր». Հմմտ. եբր. aml «չորանալ, թառամել, ցամաքել» և արաբ. mḥl «անպտուղ լինել», māḥil «անպտուղ» (երկրի, հողի, տարվա մասին). սակայն հնարավոր է ամուլ < հ.-ե. *n̥-pölo- (Մեյե).

խաթարել «քակել. քանդել, ավերել». Հմմտ. արաբ. ḫaṭar «վնաս, վը-տանգ». սակայն հմմտ. հուն. ἀ-σκηθής «անվնաս», գոթ. skaþjan «վնասել» (հ.-ե. *sketh-/skəth-).

խարել «այրել», խարավել, խարշել, խարույկ, ք. խարկել. Հմմտ. արաբ. harr «ջերմություն». սակայն հմմտ. հ. իսլ. hyrr «կրակ», լիտվ. kárštas «տաք, կիզիչ» (հ.-ե. *ker-).

մարտ. Հմմտ. արաբ. muʿarid «հակառակորդ, հակաճառող, ընդդիմադիր». (ʿrd «պատահել. դրսեցել. առաջարկել. (III ձև) հակադրվել, առարկել». սա-կայն հմմտ. հուն. μάρναμαι «մարտնչում եմ» (հ.-ե. *mer-).

շերտ, -ի, -ից «կտոր, բեկոր. փայտի կտոր, ցանկապատի ցից, կացին». Հմմտ. ասոր. šəraṭ «պատառոտել», արաբ. srṭ «պայման դնել. (II ձև) քերթ անել. պատառոտել. (V ձև) հատվել». Հմմտ. նաև ուրարտ. šerid- «առանձնացնել». ավելի հավանական է շերտ < հ.-ե. *skhedro-՝ *sk(h)ed «ճեղքել, կտրել» արմատից (հմմտ. լիտվ. skedervà «տաշեղ», լատվ. šķe-dens «վառելափայտ»)[22].

շրթնուլ «խրտնել». Հմմտ. արաբ. šurūd «փախուստ» (šrd «փախչել. թափառել» (IV ձև՝ ašrada «խրտնեցրեց, վախեցրեց, փախցրեց»). բայց հմմտ. խրտնուլ՝ շ/խ (հ.-ե. *skh/kh-) հերթագայությամբ (հ.-ե. *(s)ker-d- «ցատկել, վեր թռչել»). Հնչյունապես հեռու է սարսնուլ բայը.

տրուպ, -ի, -այ «ստորին, նվաստ. փոքր, խեղճ». Հմմտ. արաբ. turba «փոշի, հող», turābi «փոշոտ, հողոտ» (trb «փոշոտ լինել»). Հ. Աճառյանը համեմատում է ռուս. дробь «կոտորանք», дребезги «փշուրներ» բառերի հետ:

2) Առանձին դեպքերում ավելի հավանական է իրանական աղբյուր են-թադրելը.

նկատել. Հմմտ. արաբ. nqd «չափել. քննարկել, քննել. քննադատել». ավելի հավանական է իրան. *ni-kāta- (հ.-ե. *kʷei- «ուշադրություն դարձ-նել, նկատել»?).

Հավանական է նաև ստորև բերվող բառերի իրանական ծագումը, թեև դրանց բուն աղբյուրը հայտնի չէ. մատնանշվող արաբ. զուգահեռների նմա-նությունը պատահական պիտի համարել.

22 Անհավանական է շորթել-ը կապել շերտ-ի հետ և բխեցնել միևնույն աղբյուրից:

հրոս «ասպատակող զորք». հմմտ. արաբ. ḥāris «պահապան», ḥaras «պահակախումբ».

վարկ «համարում, կարծիք. վճիռ». հմմտ. արաբ. waraq «տերև. թերթ. թուղթ», warq «արծաթե փող»?

վեհեր «վախկոտ». հմմտ. արաբ. wahr «վախ» (whr «վախեցնել. դժվարին վիճակի մեջ գնել»).

վհատ. հմմտ. արաբ. wāḥada «միևնակություն» (wḥd «միևնակ լինել»).

ջալլ(ե)ամն, -ման բառի համար Հ. Աճառյանը մատնանշում է արաբ. ẓalīm, հգն. ẓilmān (ẓūlmān?) կուգահեռը, բայց ẓ > ջ անցումը անհավանական է. եթե այս բառերը կապված են, ապա պետք է ենթադրել դրանց միջակա օղակ։

3) Հ. Աճառյանը իրավամբ առանձնացնում է ռայ-f «բազմություն. հանդես» բառը ավելի ուշ ավանդված ռայ «դրոշակ» բառից, որի աղբյուրն իրոք արաբ. rāja «դրոշակ» բառն է։

Արաբական հին փոխառությունները ըստ իմաստային դաշտերի կարելի է խմբավորել հետևյալ կերպ.

2. Մարդկություն. սեռ, տարիք, ընտանեկան հարաբերություններ. 2.331 կաւատ.

3. Կենդանիներ. 3.78 շառաւն «ուղտ». 3.84 բատոտ «ճիճու, որդ, ծառի ցեց».

5. Ուտելիք և խմելիք. կերակրի պատրաստում և ամանեղեն. 5.15 տաշել (-իմ) «ծարավել».

6. Հագուստ. 6.57 զունար «գոտի».

7. Բնակարան, տուն, կահ-կարասի. 7.23 աղխ «կողպեք». 7.42 մահիճ.

10. Շարժում, տեղափոխություն, փոխադրում, նավագնացություն. 10.611 շալակ «պարկ. պատգարակ».

16. Զգացմունք. խառնվածքային, բարոյական և գեղագիտական ըմբռնումներ. 16.15 սխրանալ «հիանալ, զարմանալ, սքանչանալ». 16.25 այպն «ծաղր» 16.46 [այպն] «ամոթ».

17. Մտածողություն, միտք. 17.22 ախամախ «հիմար, տխմար»։

Այսպիսով, արաբական հնագույն փոխառությունները արմատապես տարբերվում են ակկադական և, զգալի չափով, արամեա-ասորական փոխառություններից։ Դրանք առավելապես առօրյա կյանքի բառեր են, հատկապես մարդկային հարաբերությունների, հատկությունների, գործառությունների, մարդկանց բնակության և տեղափոխության հետ կապված հասկացությունների նշանակումներ։

## 3. ՀԱՅԵՐԵՆԸ ԵՎ ԻՐԱՆԱԿԱՆ ԼԵԶՈՒՆԵՐԸ

### ա) ԻՐԱՆԱԿԱՆ ԼԵԶՈՒՆԵՐԸ ԵՎ ԲԱՐԲԱՌՆԵՐԸ

Հնդեվրոպական լեզվաընտանիքում իրանական լեզուներն առանձնապես մոտ են հնդկական լեզուներին, որոնց հետ միասին հնում կազմել են հընդիրանական հիմք-լեզուն։ Իրանական վաղ լեզվավիճակը բավականաչափ մոտ է հնդկական վաղ լեզվավիճակին. ավեստայի լեզուն հնչյունապես, քերականապես և բառապաշարով դեռևս այնքան քիչ է տարբերակվում վեդա-

յական հնդկերենից, որ կարելի է խոսել նրանց՝ ինչպես երկու բարբառների մասին և կազմել ընդարձակ զուգահեռ տեքստեր։

Իրանական հիմք-լեզուն առանձնակի գոյություն է ունեցել հավանաբար մ. թ. II հազարամյակում։ Հնդկական ցեղերից բաժանվելուց հետո իրանական ցեղերը բնակություն են հաստատում Միջին Ասիայում և հարակից շրջաններում։ Այստեղ էլ կազմավորվել են զրադաշտական կրոնի սրբազան գրքի՝ Ավեստայի հնագույն մասերը։ Մ. թ. ա. II հազարամյակի վերջերին և I հազարամյակի սկզբներին նրանք տարածվում են արևմուտք՝ մինչև Միջերկրածովյան տափաստանները, և հարավ-արևմուտք՝ իրանական կոչված լեռնաշխարհը, այժմյան Իրանի տերիտորիան. արևելքում նրանք հասնում են մինչև հնդկական ցեղերի տարածման սահմանները։

Հնդիրանական լեզուները հնդեվրոպական լեզվաընտանիքում հնչյունական առումով առանձնանում են հետևյալ էական հատկանիշներով. 1) հ.-ե. երկար և կարճ *ĕ, *ŏ, *à, ձայնավորները ներկայացված են որպես երկար և կարճ հնդիրանական (արիական)[1] *a. համեմ. հնդկ. bharāmi, ավ. barāmi և հայ. բերեմ (հ.-ե. *bhere-), հ. հնդկ. ka, ավ. ka- և հայ. ո(վ) (հ.-ե. *kᵘ̯o-), հ. հնդկ. ájāmi, ավ. azāmi և հայ. ածեմ (հ.-ե. ag'-) և այլն. 2) հ.-ե. *ə ն արտացոլված է որպես i. համեմ. հ. հնդկ. pita, հ. պրսկ. pitā և հայ. հայր. 3) հ.-ե. *s-ն i, u, r, k հնչյուններից հետո վերածվում է շշականի՝ հ. հնդկ. ṣ, իրան. š. Հայերենն այս հատկանիշը բաժանում է միայն r-ից հետո գտնված դիրքում, այն էլ ստուգաբանական րշ/ռ տարբերակներով. համեմ. մի կողմից՝ հ. հնդկ. ni-ṣicāti, ավ. ni-šasta- (անց. դերբայ) և հայ. նստիմ (հ.-ե. *ni-si-zd-, *ni-zd-) և մյուս կողմից՝ (հ. հնդկ. tṛṣṇa-, tarṣa- «ծարավ», ավ. taršu- «չոր» և հայ. թառամ/թարշամ (հ.-ե. *ters-/tr̥s-). 4) l-ն հիմնականում փոխվում է r-ի. համեմ. հ. հնդկ. roká-, rócas-, ավ. raocah- և հայ. լույս (հ.-ե. *leuk-).

Իրանական հիմք-լեզուն (ընդհանուր լեզուն) իր հերթին տարբերվում է հնդկականից հնչյունական հետևյալ էական հատկանիշներով. 1) *bh, *dh, *gh շնչեղ ձայնեղները ներկայացված են իբրև պարզ ձայնեղներ, այսինքն՝ իրանական լեզուները պայթականների այս երկու շարքերը չեն տարբերակում. 2) *p, *t, *k, խուլերը նախաբաղաձայնական դիրքում ներկայացված են իբրև *f, *ϑ, *x. 3) *ph, *th, *kh շնչեղ խուլերը ներկայացված են իբրև *f, *ϑ, *x շփականներ. 4) *s-ն հիմնականում փոխվել է *h-ի։

Իրանական ընդհանուր լեզվի մասնատման և իրանական ցեղերի տարբերակման հետևանքով առաջանում են բարբառներ, որոնց բաղայի վրա հետագայում ձևավորվում են իրանական լեզուները։ Մ. թ. ա. I հազարամյակում, ինչպես ցույց են տալիս եղած տեքստերը և հին հեղինակների վկայությունները, իրանական ժողովուրդների լեզվական տարբերությունները դեռևս բարբառային բնույթ են ունեցել, և իրանական բոլոր բարբառներով խոսողները կարող էին իրար հասկանալ։ Այլ կերպ ասած՝ իրանական լեզվախմբի զարգացման հին շրջանը ներկայացված է միայն բարբառային տարբերություններով, որոնք միջին շրջանում սկսում են փոխվել լեզվական տարբերությունների։ Դեռ այժմ էլ իրանական որոշ լեզուներով (օրինակ, պարսկերենով և տաջիկերենով) խոսողները կարող են իրար հասկանալ, թեև մեծ

---

[1] «Արի» անվանումն սկզբնապես հատուկ է եղել և՛ հնդիկներին, և՛ իրանական ցեղերին։

*մասամբ տարբերությունները խորացել են մինչև անհասկանալիության աստիճան. իրար, օրինակ, չեն կարող հասկանալ օսը և պարսիկը, օսը և քուրդը, քուրդը և աֆղանը և այլն։*

*Ինչպես նշել ենք հնդեվրոպական լեզուների քննության ժամանակ, իրանական բարբառները և լեզուները իրենց հերթին ըստ հնչյունական, քերականական և բառային առանձնահատկությունների բաժանվում են արևմտյան և արևելյան խմբերի, որոնց մեջ էլ տարբերվում են հարավային և հյուսիսային ենթախմբեր։ Քանի որ այս ներքին տարբերությունները կարևոր են հայերենի փոխառությունների բնույթը որոշելու առումով, համառոտակի կանգ առնենք նրանց վրա։ «Արևմտյան» և «արևելյան» անվանումների հիմքում ընկած է իրանական բարբառների վաղ տարածումը, որ այժմ զգալիորեն խախտված է. այսպես, արևելյան խմբին պատկանող օսերենը այժմ ընկած է արևմտյան մի շարք լեզուների տարածման հիմնական շրջաններից արևմուտք։*

*Հայերենի փոխառությունների հայեցակետից մեզ համար էական են հատկապես հյուսիսային և հարավային բարբառների ու լեզուների տարբերությունները, մանավանդ, որ հայերենի փոխառությունները կրում են արևելյան որոշ գծեր։ Հայերենը հնում տևականորեն շփվել է հիմնականում հյուսիս-արևմտյան լեզուների՝ մեդերենի (մարերենի) և պարթևերենի ու սրա ուշ վիճակի՝ պահլավերենի հետ. հարավ-արևմտյան լեզուներից միջին պարսկերենի և նոր պարսկերենի ազդեցությունը նրան է եկել համեմատաբար ուշ։*

*Արևմտյան և արևելյան խմբերի հնչյունական տարբերությունները հանգում են հետևյալին* [Оранский, *1960, 217—218. 1963, 37—38. 1979, 128—*146. Расторгуева, ЯН *1, 196—197.* ОИЯ, *1, 87—97]. 1) ընդհանուր իրանական բառասկզբնային* b, d, g *ձայնեղ պայթականները արևմտյան խմբում նույնությամբ պահպանվում են, իսկ արևելյան խմբում վերածվում են* β (v, w), δ, γ *ձայնեղ շփականների. ավեստերենը ցույց է տալիս, որ ձայնեղ պայթականները բառամիջում՝ միջձայնավորային դիրքում ընդհանրապես վերածվում էին ձայնեղ շփականների. 2) արևելյան խմբի* c, j *սուլական կիսաշփականների դիմաց արևմտյանում առկա են համապատասխան* č, ǰ *շչականները. 3) ընդհանուր իրանական բառասկզբնային* h*-ն արևմտյանում պահպանվում է, արևելյանում՝ ընկնում. 4) ընդհանուր իրանական* -ft-, -xt- *կապակցությունները արևմտյանում պահպանվում են, արևելյանում՝ ձայնեղանում՝ վերածվելով* -βd-, -γd- *կապակցությունների։*

*Հյուսիս-արևմտյան և հարավ-արևմտյան խմբերի հիմնական հնչյունական տարբերությունները, հատկապես միջին շրջանում, կարելի է ներկայացնել 491-րդ էջի աղյուսակով* [Оранский, 1960, 213—217. 1979, 147—176. Расторгуева, ЯН, 1, 197. ОИЯ, 1, 97—115][2]։

*Միջին իրանական շրջանի հյուսիս-արևմտյան և հարավ-արևմտյան բարբառների տարբերությունների քննության կապակցությամբ հարկավոր է մի քանի դիտողություն անել. 1) բուն միջին պարսկերեն ասելով հասկանում են հատկապես սասանյան շրջանի (մ. թ. III—VII դդ.) պարսկերենը, մինչդեռ իրանական լեզուների զարգացման միջին շրջանն ընդգրկում է մ. թ. ա. IV—III դարերից մինչև մ. թ. VIII—IX դարերը։ Սա նշանակում է, որ մի-*

---

[2] *Հայերենի փոխառությունների առումով այս հարցն ընդարձակ կերպով քննված է իտալացի հայագետ Ջ. Բոլոնյեզիի գրքում* [Bolognesi, *, 1960]։*

| Հ.-ե. | Ընդհ.-իրան. | Հյուսիս-արևմտյան | Հարավ-արևմտյան |
|---|---|---|---|
| *d(h) | *d | d, δ, h | d, δ, y, h |
| *d(h)u̯ | *dv | b | d |
| *g'(h) | *(ẑ?) | z | d |
| -g'(h) | (-ẑ?) | z | y |
| *g(h) | *g | g, γ | g, γ, y, v |
|  | *ǰ | ž, ǰ | z |
| *pr | *fr | fr>hr | fr |
| *-t- | *-t- | d | d, y |
| *tr | *θr | hr>rh, h | s |
| *tn | *θn | θn>hn, n | šn |
| *ti̯ | *θy | θy>hy, h | š (հմմ. šiy) |
| *k'(h) | *(ŝ?) | s | θ |
| *-k'(h) | *(-ŝ?) | s | h |
| *k'u̯ | *sv | sp | s |
| *k(h)m | *xm | xm | (h)m |
| -st | *st | št | st |
| *sn | *sn | sn | sn |
| *su̯ | *xv | f | f (հմմ. hv) |
| *rd(h) | *rd | rd, rz | l |
| *rt | *rθ | rθ>rh, h | hl |
| *rn | *rn | rn | rr |
| *r̥ | *r̥ | ər, ur, ir | ur, ir |
| *u̯ | *v | v | v>b |
| *-u̯- | -v- | v | — |

ջին պարսկերենը պարթևերենի համեմատությամբ, որ սկսվում է միջին շրջանի սկզբներից, ունի ոչ միայն բարբառային տարբերություններ, այլև ժամանակային հաջորդականություն։ Հյուսիսային բարբառների տարբերակիչ գծերը սկզբնապես ավելի ընդհանրական բնույթ են ունեցել և ավելի շատ տարածված եղել. միջին պարսկերենի որոշ տարբերություններ արշակունյան շրջանի պարթևերենի հետագա վիճակից՝ պահլավերենից, ավելի ուշ են զարգացել։

2) Հյուսիս-արևմտյան և հարավ-արևմտյան բարբառային որոշ տարբերություններ հանդես են եկել նաև ավելի վաղ՝ հին կոչված շրջանում՝ արտահայտվելով մի կողմից՝ մեդերենի (մարերենի) ու մասամբ ավեստերենի և մյուս կողմից՝ հին պարսկերենի տարբերությունների մեջ։

3) Նոր պարսկերենը միջինի համեմատությամբ ենթարկվել է զգալի փոփոխության, որ խորացրել է հատկապես պարթևերենից ու պահլավերենից նրա ունեցած տարբերությունները։ Մասնավորապես պետք է նշել բառասկզբի v>b, g անցումները, արշակունյան շրջանի ոչ սկզբնային դիրքի p, t, k խուլերի՝ միջին պարսկերենում β, δ, γ-ի փոխվելը և նոր պարսկերենում սրանից b, d, g դառնալը, նույն շրջանի ձայնավորահաջորդ č-ի միջին պարսկերենում ǰ, ž-ի, ապա z-ի փոխվելը և այլն։ Ահա թե ինչու հայերենը միևնույն բառը փոխ առնելով իրանական լեզուների զարգացման տարբեր շրջաններում և տարբեր բարբառներից՝ դրանք երբեմն պահել է որպես միանգամայն տարբեր բառեր. հմմտ. վաճառ և բազար:

4) Բարբառային որոշ կարգի տարբերությունների փոխհարաբերության պարզաբանման հարցը դժվարանում է այն փոխառությունների պատճառով, որ հին շրջանում կատարել են հին պարսկերենը մեդերենից (մարերենից),

միջին շրջանի հարավ-արևմտյան բարբառները՝ հարավ-արևելյաններից[3]։ Ուշ շրջանի հայ փոխառությունների ճշգրիտ աղբյուրի որոշումը հաճախ դժվարանում է ինչպես իրանական լեզուների՝ միմյանցից, այնպես էլ արաբերենի, պարսկերենի, թուրքերենի՝ միմյանցից կատարած մեծաթիվ փոխառություններով։

## բ) ՀԱՅԵՐԵՆԻ ԿՐԱԾ ԻՐԱՆԱԿԱՆ ԱԶԴԵՑՈՒԹՅԱՆ ՇՐՋԱՆՆԵՐԸ

Իրանական լեզուների՝ իրանագետների կողմից տարբերվող հին, միջին և նոր շրջանները չեն համընկնում հայերենի զարգացման համապատասխան շրջանների հետ։ Այս տարբերությունները կապված են ինչպես երկու կողմերի զարգացման առանձնահատկությունների, այնպես էլ դրանց շրջանաբաժանման տարբեր սկզբունքների հետ։

Ամենից առաջ՝ հայերենի պատմությունը սկսվում է անմիջապես հնդեվրոպական միասնության շրջանից, իրանական լեզուներինը՝ հնդիրանական միասնության տրոհումից հետո, այսինքն՝ հայերենինը՝ մ. թ. ա. մոտավորապես III, իրանական լեզուներինը՝ մոտավորապես II հազարամյակի սկզբներից։

Երկրորդ՝ իրանական լեզուների գրավոր հուշարձանները սկսվում են հայերենի գրավոր հուշարձաններից ավելի քան մեկ հազարամյակ առաջ. հին պարսկերեն տեքստերը մ. թ. ա. VI—IV դարերից են. ավեստան գրի է առնվել համեմատաբար ուշ՝ միջին շրջանում (կանոնական տեքստը կազմվել է սասանյան շրջանում), բայց իր հնությամբ գերազանցում է հին պարսկերենին՝ հասած լինելով երկարատև բանավոր ավանդությամբ և թերևս արշակունյան շրջանում ունենալով որոշ գրառումներ։

Երրորդ՝ եթե նոր պարսկերեն գրական լեզուն, սկիզբ առնելով IX դարում, գրեթե անփոփոխ կերպով հասել է մեր օրերը, ապա այդ ժամանակաշրջանում հայերենը, անցնելով գրավոր զարգացման իր հին շրջանը, թևակոխել է նախ՝ միջին և ապա նոր հայերենի շրջանները։

Վերջապես, հայերենի գրավոր պատմության շրջանաբաժանմանը հակադրվող «հին, միջին և նոր շրջաններ» անվանումները իրանական լեզուների (և ոչ թե մեկ լեզվի) դեպքում ստանում են այլ իմաստ։ Էլ չենք խոսում այն մասին, որ հին շրջանի մեջ ներառվում է նաև նախքան գրավոր ավանդություն ստանալն ընկած փուլը՝ հնդկականից բաժանվելուց հետո։

Կարելի է ասել, որ իրանական ժողովուրդների վերաբերյալ առաջին տեղեկությունների ժամանակներից էլ[4] սկսվում է հայ-իրանական շփման պատմությունը, եթե մանավանդ հայերը կազմել են ուրարտական պետության հիմնական ժողովուրդներից մեկը։ Այդ շփումը ուժեղանալով ու թուլանալով, ընդգրկելով հայ ժողովրդը երբեմն գրեթե ամբողջությամբ, երբեմն էլ որոշ տարածքներում, շարունակվում է մինչև մեր օրերը։

Հայոց լեզվի նախագրային շրջանի զարգացման պատմության հնագույն

---

[3] Հմմտ., օրինակ, պարսկերենի հետևյալ պարթևաբանությունները՝ šahr «քաղաք», mihr «սեր», pūr(<puhr) «որդի» և այլն։

[4] Ըստ Է. Ա. Գրանտովսկու [Грантовский, 1970], որ հենվում է հատկապես հատուկ անունների ուսումնասիրության վրա, իրանական ցեղերն Իրանում երևացել են դեռևս XI դ. մ. թ. ա.։

*շրջանը համընկնում է մասամբ իրանական լեզուների զարգացման հին և մասամբ միջին շրջանների հետ։ Հայերենի և իրանական լեզուների, հատկապես պարսկերենի սերտ հարաբերությունները հետագայում էլ շարունակվում են մինչև VII դ. արաբական արշավանքները, ապա նոր թափ ու ընթացք ստանում նոր պարսկերենի շրջանում։*

*Հին շրջանի իրանական այն բարբառները, որոնց հետ հայերենը պիտի շփված լինի, սկյութերենը, մեդերենը (մարերենը) և հին պարսկերենն են։ Եթե կիմերները իրանական ժողովուրդ են եղել, ապա կիմերերենը նույնպես պիտի մտցնել սրանց մեջ։ Նշենք, որ իրանական ազդեցությունը հայերենի վրա այս շրջանում համեմատաբար թույլ պետք է եղած լինի, և այդ ազդեցության շատ հարցեր մնում են չլուծված, մանավանդ որ ոչ բոլոր դեպքերում կարելի է հեշտորեն տարբերել հին շրջանի և միջինի պարթևական փուլի հայկական փոխառությունները։ Քանի որ կիմերերենի և հայերենի փոխհարաբերության հարցն ունի յուրահատուկ կողմ, քննությունն սկսենք նրանից։*

### դ) ԿԻՄԵՐԵՐԵՆԻ ՀԱՐՑԸ ԵՎ ՀԱՅԵՐԵՆԸ

*Կիմերները մեծ դեր են կատարել Առաջավոր Ասիայի մ. թ. ա. VIII—VII դդ. պատմության մեջ։ Կիմերների մասին տեղեկություններ են հաղորդում բազմաթիվ աղբյուրներ, սակայն այդ տեղեկությունները համառոտ են, միօրինակ, կցկտուր և հնարավորություն չեն տալիս քիչ թե շատ ամբողջական գաղափար կազմելու նրանց սկզբնական բնակության վայրերի, էթնիկական բնույթի և լեզվական պատկանելության մասին* [**Блаватский**, *1948, 1.* **Ельницкий**, *1949, 14—18.* **Крушкол**, *1952, 89—91.* **Иессен**, *1953, 100—110.* **Кручков**, *1958, 176—195.* **Артамонов**, *1974, 20—23, 1950, 41.* Дьяконов, 1981, 90—100. Երեմյան, *1968, 90—92*]։ *Սկզբնական բնակավայրը հայտնի է միայն ամենաընդհանուր ձևով. այն ընկած է եղել հյուսիսսևծովյան շրջանում։ Սակայն եղած տեղեկությունների հիման վրա առայժմ հնարավոր չէ ավելի որոշակի սահմաններ նշել։ Հետազոտողները կիմերների բնակության սահմանները մերթ ընդարձակում են՝ ընդգրկելով ողջ հյուսիսսևծովյան շրջանը մինչև Թրակիա, մերթ նեղացնում՝ սահմանափակելով Թամանյան թերակղզու հյուսիսային մասով, հատկապես ներկայիս Ֆոնտան (Ֆանտալովկի) թերակղզով։ Առաջին դեպքում հավանաբար կիմերների անվան տակ միավորվում են, առանց էթնիկական պատկանելության հստակ տարբերակման, այլևայլ ցեղեր և ցեղախմբեր, երկրորդ դեպքում փորձ է արվում ճշտորոշել բուն կիմերների բնակության վայրը։ Կիմերների անունով մնացած զանազան աշխարհագրական անունների և դրանց տեղադրության քննությունը հարցն ամբողջապես չեն լուծում, եթե նկատի առնենք հին հեղինակների աղոտ պատկերացումները իրենց երկրից հյուսիս ընկած վայրերի մասին և ուշ փոխանցումների հնարավորությունը։*

*Կիմերները եղել են քոչվոր ժողովուրդ, լայնորեն զբաղվել են ձիաբուծությամբ և մարտեր են մղել հեծելազորով։ Սրանով էլ բացատրվում են նրանց մեծ շարժունակությունը և մարտական սկզբնական խոշոր հաջողությունները։ Կիմերների քանակի ոչ շատ մեծ լինելը երևում է թեկուզ այն փաստից, որ մարտական որոշ հաջողություններից հետո նրանք խիստ թուլա-*

նում են և հավանաբար շուտով հեռանում պատմական ասպարեզից՝ դադարելով գոյություն ունենալուց որպես ինքնուրույն ժողովուրդ։

Նշած աղբյուրների համադրությունը ցույց է տալիս, որ կիմերները մ. թ. ա. VIII դ. վերջին տասնամյակներում սկյութների ճնշման տակ՝ թողնում են իրենց սկզբնական բնակատեղին և շարժվում հարավ՝ Առաջավոր Ասիա։ Հերոդոտոսը տեղեկություն է տալիս շարժման արևելյան ուղու մասին. ըստ նրա՝ կիմերները շարժվել են Սև ծովի արևելյան ափերով։ Ստրաբոնը հակված է ընդունելու կիմերների շարժման արևմտյան ուղին՝ Թրակյան Բոսփորով և Բոսֆորի նեղուցով դեպի Լիդիա, Իոնիա, Պափլագոնիա։ Արդի որոշ հետազոտողներ, նկատի ունենալով Սև ծովի արևելյան ափերով ձիավոր քոչվորների մեծ զանգվածի շարժման դժվարությունը, ենթադրում են, որ կիմերները անցել են Անդրկովկաս նախ Դարյալով և Ալագիրով, ապա շարժվել դեպի արևելա-սևծովյան ափերը [Дьяконов, 1956, 237]։ Ասիայում հիշվում է կիմերական երկու հիմնական բնակատեղի՝ Մանա երկրի Ուրմիա լճի հարավային կողմերում և Կապադովկիան (Գամիրք)։

Ասորական աղբյուրները մ. թ. ա. VIII դ. նախավերջին տասնամյակի առաջին կեսին (720—715 թթ. միջև), մինչև Սարգոն II-ի արշավանքը Ուրարտու (714 թ.) [Пиотровский, 1946а, 296. 1959, 232 և հջ.], տեղեկություններ են տալիս ուրարտացիների հետ կիմերների բախման և ուրարտացիների պարտության մասին։ Սակայն հետագայում, ինչպես երևում է, կիմերները դաշն են կնքում ուրարտացիների հետ և վտանգ սպառնում Ասորեստանի համար։ Մ. թ. ա. 697 թ. Տեուշպայի առաջնորդությամբ նրանք ներխուժում են Ասորեստան, բայց պարտություն են կրում։

Արևմուտքում, ըստ Ստրաբոնի՝ Հոմերոսի ժամանակներում կամ ավելի վաղ, կիմերները ասպատակում են գրեթե ողջ Փոքր Ասիան, ընդ որում Ստրաբոնը նրանց նույնացնում է տրերների հետ, որոնք թրակյան ցեղ են եղել։ Կիմերների հարվածի տակ, հավանաբար ուրարտացիների մասնակցությամբ, մ. թ. ա. 676—674 թթ. ժամանակամիջոցում կործանվում է Փռյուգական պետությունը։ Մ. թ. ա. VII դ. կեսերին կիմերները գրավում են Լիդիան՝ առանց այնտեղ երկար ժամանակով հաստատվելու։ Ընդհարվելով սկյութների հետ և պարտվելով նրանց առաջնորդ Մադիեսից՝ կիմերներն ապաստան են գտնում Փոքր Ասիայի հյուսիսային մասերում՝ Սինոպի մերձակայքում։ Մ. թ. ա. VII դ. վերջերին կիմերները նոր պարտություն են կրում լիդիական թագավոր Ալիատից և դադարում քաղաքական ուժ ներկայացնելուց։

Կիմերական լեզվական տվյալները արտակարգ սուղ են. մեկ հասարակ անուն, կիմերական ժողովրդի անունն ու նրանցից կազմված հատուկ անունները և երեք անձնանուն (կիմերական առաջնորդների անուններ)։ Ահավասիկ դրանք.

1) հուն. κιμμέριοι (ուշ նաև κίμμεροι «կիմերներ», այլև Κιμμερίη, Κιμμέρια τείχεια, πορθμήια Κιμμέρια, Βόσπορος Κιμμέριος Κιμμερικόν (քաղաք) և այլն, աքքադ. gamirra, gimmirâi, gimirri (բաբել.), եբր. (աստվածաշնչում) Gomer, Gamer, հայ. Գամիրք (Կապադովկիայի հայկական անունը).

---

5 Ըստ Հերոդոտոսի՝ «Երկիրը, որտեղ հիմա բնակվում են սկյութները, նախապես պատկանում էր կիմերներին» (Herod. IV, 11), թեև, իհարկե, չի կարելի խոսել կիմերների և սկյութների բնակության վայրերի սահմանների համընկնելու մասին [հմմտ. Блаватский, 1948, 10]։

6 Ս. Երեմյանը [1963, 46] կիմերների անվան հետ է կապում Կեմերեկ գյուղի անունը։

2) *Հուն.* Λυγδαμις *ակկադ.* D/Tugdammī (mTug-dam-mi-i, *ընդ որում* mi-*ն կարող է ընթերցվել նաև* me) [Дьяконов, 1956, 240, *ծան.*].

3) *Ակկադ.* Teušpâ.

4) *Ակկադ.* Sandakšatru (Sa-an-dak-šat-ru, *ընդ որում* šat/ṭ/d *նշանը կարող է ընթերցվել նաև* kur, mat/d, lat/d, nat/d, k/gin՝ Sandakkurru *և այլն*) [**Дьяконов**, 1956, 239].

5) *Հուն.* ἄργιλλαι *«ստորերկրյա բնակարաններ» (հղն.)։*

*Կարծիք կա, որ* kimmer- *անվանումը տրվել է կիմերներին ոչ միայն ուրիշների կողմից, այլև եղել է նրանց ինքնանվանումը* [Дьяконов, 1956, 238][7]*։ Ըստ տարբեր ուսումնասիրողների՝ այդ անվանումը պահպանվել է վրաց.* gmiri *«հերոս, հսկա», օս. (վրաց. միջնորդությամբ)* goymiri *(իրոն.)*, gumeri, gämeri *(դիգոր.) «հսկա, կուռք», հ. ռուս.* коумиръ, коумиръ *«կուռք» ձևերի մեջ* [Миллер, 1881, 125. **Абаев**, ИЭСОЯ, 1, 530. **Фасмер**, 2, 1967, 416. Попов, 1973, 11], *ընդ որում օսերենի «կուռք» իմաստը բացատրվում է ռուսերենի ազդեցությամբ՝ անցած եկեղեցական գրքերի թարգմանության միջոցով* [Абаев, ИЭСОЯ, 1, 238]*։*

*Բացի կիմերների անվան հետ այս կամ այն ձևով առնչվող Կապադովկիայի հին հայկական* Գամիրք *անունից, որ թերևս կազմված է ասուրա-կանի* Gamer *անվան հետ, կարելի է հիշել տեսնել կիմերների և Լենինականի հին* Կումայրի (>Գյումրի) *անունների միջև, թեկուզև ավելի շատ հա-կում կա* Կումայրի-*ի* -այր- *բաղադրիչը նույնացնելու հայ.* այր *«քարայր, քարանձավ» բառի, իսկ* Կում-*ը՝ Առաջավոր Ասիայի մի շարք տեղանուն-ների* kum *բաղադրիչի հետ և վերջինիս ակունքը փնտրելու խուռիերենում* [**Капанцян**, 1948, 50]. Կումայրի-*ի՝ կիմերների անվան հետ կապված լինե-լը մեզ հավանական է թվում հատկապես այն պատճառով, որ* Շիրակ *տե-ղանունը համապատասխանաբար կարող է բացատրվել սարմատական* սի-րակ (σιράκ=շիրակ) *ցեղի* [Анфимов, 1952, 63] *(որ մ. թ. ա.* III–II *դդ. արդեն հաստատվել էր Մանիչ գետի հովտում) անվամբ, եթե կիմերների կազմում կային նաև այս ցեղի ներկայացուցիչներ։ Այս դեպքում կիմերնե-րի անվան սկզբնամասի հնչյունական փոփոխությունը* Կումայրի *տեղանվան մեջ պետք է համարել բաղարկման արդյունք։*

*Կիմերների անվան ստուգաբանությունը հայտնի չէ։ Շատ բան այստեղ կախված է մյուս անունների մեկնությունից, մանավանդ որ* կիմեր-*ը, ինչպես տեսանք, պահված է նաև* g- *բաղաձայնով և տարբեր ձայնավորումներով։ Պոսիդոնի-ոսը կիմերներին նույնացնում է կիմբրերի* (κίμβροι) *հետ։ Օ. Ն. Տրուբա-չովը, ինչպես կտեսնենք, ենթադրում է թրակյան ծագում։*

*Եթե մի կողմ թողնենք կիմերների մոնղոլական, ֆիննական և կովկաս-յան ծագման վերաբերյալ վարկածները, որոնք զուրկ են որևէ լուրջ հիմքից, ապա կարելի է հիշել հետևյալ կարծիքները.*

*1) Ամենից տարածված կարծիքն այն է, որ կիմերները սկյութների նման*

---

*բայց նմանությունը կարող է պատահական լինել (թրք.* **Կեմերեկ** < *հայ.* **Կամարակ**. *հմմտ.* **Էվերեկ** < **Ավերակ**)։

[7] *Կիմերների անվան թյուրքական մեկնության փորձը Շրադերի կողմից* (ćomru *«նրա-տակյալ քոչվոր») այդ ժամանակաշրջանի համար զուրկ է պատմական հիմքից [հմմտ.* **Vasmer**, *1923, 5]։ Լուրջ չեն հույների ստուգաբանական բառախաղերը* κιμμέριοι – χειμέριοι, κιμμέριοι – ζειμέριοι *և այլն։*

իրանական ծագում ունեն (ի միջի այլոց, ըստ Կալիմաքոսի՝ կիմերները սկյութների նման «ձի կթողներ» են)։ Այս կարծիքը հենվում է հատկապես Sandi-kšatru և Teušpâ անունների ստուգաբանության վրա։ Առաջինի համար նշվում է -kšatru «իշխանություն» (=ավ. xsaθrəm, հ. հնդկ. kśatram, իրան. աղբյուրից ծագող հայ. աշխարհ) բաղադրիչը. վերջինս ավելի մոտ է, սակայն, հին հնդկական, քան իրանական ձևերին, որոնք k-ի դիմաց ունեն x (= սեպագիր ḫ ?)։ Երկրորդի մեջ ուշադրություն է դրավում -spā-ն, որ կարող է արտացոլել իրանական անունների -asp- «ձի» բաղադրիչը։ Ֆ. Յուստին առանց վարանման երկուսն էլ դնում է իրանական անձնանունների շարքը՝ առաջինը մեկնելով որպես Sanda-xšaθra «գոհացուցիչ (պատշաճ) իշխանություն ունեցող» (հմմտ. ավ. sand-), երկրորդը նույնացնելով Հերոդոտոսի գրքում հիշատակված իրան. > հուն. Τεΐσπης (=բիհիսթունյան արձանագրության Čaišpiš, Աքեմենի որդու անունը), Τέασπις անձնանվան հետ [Justi, 1895, 152][8]։ Sandakšatru անձնանվան «զուտ» իրանական մեկնության դեմ բերվում է երկու առարկություն. ա) Sand- բաղադրիչը զուգահեռներ ունի փոքրասիական հատուկ անուններում. նույն ժամանակների ասուրական աղբյուրները հիշատակում են կիլիկյան Sandasarma և Sanduarri անձնանունները, որոնց Sand(a)- բաղադրիչը նույնացվում է Սանդոն դիցանվան հետ [Дьяконов, 1956, 240][9]։ Ավելորդ չէ հիշել, որ շատ հետազոտողներ կապ են տեսնում Սանդոն (Շանդոն) աստծու անվան և հայ. շանդ (շանթ) բառերի միջև. բ) նշվում է šat/ṭ/d-ի kur և այլն ի, հետևաբար, Sandakšatru-ի Sandakkurru և այլն ընթերցումների հնարավորությունը։ Teušpâ-ի հիշյալ մեկնության կողքին Յ. Մարկվարտը [Marquart, 1896,] և Ի. Մ. Դյակոնովը [Дьяконов, 1956, 240] հնարավոր են համարում վերականգնել իրանական Tavaspa- «հզորաձի» նախաձևը (tava- «հզորություն» և aspa- «ձի»), բայց այս դեպքում էլ անբացատրելի է մընում -e- ձայնավորումը [Vasmer, 1923, 6]։ Կիմերական մյուս անձնանուններից Dugdamīš-ը ևս կապվում է իրանական աղբյուրի՝ Զրադաշտի մոր անվան Duγδō-vā-ի մեջ պահպանված Duγδa-ի հետ, բայց այս դեպքում նկատի չի առնվում հուն. Λυγδαμις տարբերակը (*dl նախնական հնչյունի երկտիպ արտացոլում), որ հայտնի է նաև այլուր և կարող է փոքրասիական ծագում ունենալ [Vasmer, 1923, 5][10]։ Կիմերների անվան իրանական

---

[8] Մ. Ֆասմերը [Vasmer. 1923, 5] նշում է երկու ընդունելի զուգահեռ՝ հ. հնդկ. candrá «լուսավոր» կամ čānta- «հանգիստ» (իրան. *sānta-) բառերի իրանական հնարավոր համարժեքները՝ ճիշտ չհամարելով Լեման-Հաուպտի վերականգնած zantu-γšaθrya՝ zantav- «երկրամաս, մարզ» [հմմտ. Lehmann-Haupt, Kimmerier, PREA, 21, 1] և Մարկվարտի վերականգնած s(p)əntaxšaθra- [Marquart, 1896] ձևերը (p-ի անկում ենթադրելը այդքան վաղ շրջանի համար կասկածելի է համարում)։ Teušpâ-ի հիշյալ մեկնությունն էլ նա կեղծ է համարում՝ նշելով, որ č-ն t-ով կարող է արտահայտվել հունարենում, բայց ոչ ասուրերենում, որտեղ այն կարտահայտվեր š-ով։

[9] Գ. Շրամը [Schramm 1973] նշում է, առանց հարաբերությունը ճշտելու, սեծոնյան Σανδαρξεου (ա . հ.) անձնանունը՝ անհավանական համարելով ավեստ. sand- «կատարել» բայի հետ Լ. Զգուստայի [Zgusta, 1955, 203] կատարած համեմատությունը։

[10] Յ. Մարկվարտը այն մեկնում է ինչպես իրան. Duγδamaēši- «կթոցխաշավոր, կթվող ոչխար ունեցող» (հմմտ. ավեստ. Dauramaēši «գեր ոչխար ունեցող»)։ Լեման-Հաուպտը նշում է այս անունը կրող երեք անձ՝ Նաքսոսից, Կնոսոսից և Սիրակուզայից։ Մ. Ֆասմերը բերում

Հավաստի մեկնության փորձ մեզ հայտնի չէ։ Կիմերների իրանական ծագման վարկածի դեմ բերվող գլխավոր առարկությունն այն է, որ պահպանված միակ կիմերական անունը իրանական հավաստի ստուգաբանություն չունի։ Մ. Ֆասմերը [Vasmer, 1923, 7] գտնում է, որ հիշյալ անձնանունների իրանական ծագումը հավաստելը խոսում է միայն իշխողների՝ իրանական անուններ կրելու, բայց դեռևս ոչ կիմերների և նրանց լեզվի իրանական ծագման մասին։ Ի. Մ. Դյակոնովը [Дьяконов, 1956, 241] կիմերներին համարում է իրանալեզու ժողովուրդ, բայց VII դ. ենթարկված փոքրասիական նշանակալից ազդեցության։ Նա, միաժամանակ, բավարար հիմքեր չի տեսնում կիմերներին ծագմամբ թրակացիների հետ կապելու համար։

Ձ) Նախկինում առաջ քաշվել և վերջին ժամանակներում վերարծարծվել է կիմերների թրակյան ծագման վարկածը։ Այն պաշտպանողները (հատկապես Օ. Ն. Տրուբաչովը) բերում են երեք կարգի ապացույցներ՝ պատմական, աշխարհագրական և լեզվական [Трубачев 1975, 41-42. 1976, 40-41]։ Պատմական առումով կարևոր է համարվում անտիկ աշխարհի ավանդույթը կիմերների և թրակացի-տրերների կապի մասին[11]։ Աշխարհագրական առումով նշվում է կիմերների՝ ասիական Բոսփորում գտնվելու և սինդերից ու մեոտներից բնակավայրերն սահմանազատված լինելու փաստը, որ խանգարում է կիմերների իրանական ծագման վարկածին։ Վերջապես լեզվական առումով նշվում է հատկապես նրանց ինքնանվանումը թրակյան լեզվական նյութի հիման վրա բացատրելու հնարավորությունը (ըստ Տրուբաչովի՝ Κιμμέριοι < թրակ. *kir(s)-mar-io- «սևծովյաններ»)[12], այլև պահպանված միակ հասարակ անվան (գլոսայի)՝ ὄργιλλαι բառի, ակնհայտ բալկանյան՝ մակեդոնա-թրակյան բնույթը[13]։ Ի միջի այլոց նշենք, որ Լ. Զգուստան հյուսիսսևծովյան անձնանուններին նվիրված իր աշխատության մեջ [Zgusta, 1955], մեկ տասնյակից ավելի անձնանունների համար ենթադրում է կիմերական աղբյուր, թեև կասկածով (այդ անձնանունները կրող այլ էթնիկական տարր այս վայրերում նա չի գտնում)՝ Σαία, Σειτάλκης, Σεύθη, Σισος, Σκιλοῦρος, Ταρσηίος, Χαίας, Ανοπτηνις, Δροβολοσι, Σκόζος (այս անձնանունը Մարկվարտը կապում է սկյութների անվան հետ, որ Ֆասմերը ժխտում է)։

---

[10] Սոնդվալի հիշած Ανσβαρσυς տեղանունը (Մերձավոր)։ Վ. Ի. Աբաևը [Абаев, 1963, 136] մեկնում է օս. tux-domäg «ուժով սանձող» բառով՝ միաժամանակ բերելով Յ. Հարմատայի կարծիքը կիմերների իշխող խավի իրանական ծագման մասին [Harmatta, 1946-1948, 131]։

[11] Ի. Մ. Դյակոնովը [Дьяконов, 1956, 234] Ստրաբոնի այս տեղեկությունը համարում է անբավարար իրազեկության արդյունք։

[12] Տրուբաչովը այս գնահատում հաշվի չի առնում հետևյալը. 1) թրակերենին էր հատուկ բաղաձայնների տեղաշարժը, և հ.-ե. *k-ից ծագող թրակյան kh-ն կարող էր նշանակվել հուն. χ-ով, որովհետև նախ՝ շնչեղությունը հունականից ավելի թույլ էր, և երկրորդ՝ մ. թ. ա. III դ. հուն. φ, θ, χ-ն արդեն շփականացել էին [տե՛ս. Detschew, 1960, 149]. 2) կիմերների անվան k-ն այլուր արտահայտված է նաև g-ով, որ ցույց է տալիս k-ի kh հնչված լինելու վարկածի անհավանականությունը. 3) հ.-ե. *kers-ը այլուր ներկայացված է ոչ թե kirs-, այլ kris- ձևով. հմմտ. Κρισος գետանունը, որտեղ k-ն տրված է κ-ով և ոչ χ-ով, որովհետև գտնվում է այլ բաղաձայնից առաջ [տե՛ս. Detschew, 1956, 150]։

[13] Տրուբաչովը [Трубачев, 1976, 40, ծան. 1] նշում է միայն Հեսիքիոսի ὄργιλλαι· οἰκήματα μακεδονικά (մակեդոնական բնակարաններ), ալբ. ragal(ë) «խրճիթ» և ռում. argea «հյուղ, գետնափոր տուն» զուգահեռները։

3) Վերջապես, գերմանացի գիտնական Գ. Շրամը [Schramm, 1973] հանդես է եկել այն յուրահատուկ տեսակետով, որ կիմերերենը մոտ է հին հայերենին և նույնիսկ նրա վաղ նախավիճակն է։ Շրամը փաստորեն հենվում է միայն աշխարհագրական սակավաթիվ հատուկ անունների մեկնության վրա՝ ենթադրելով դրանց մեջ բաղաձայնների այնպիսի տեղաշարժ, ինչպիսին տեղի է ունեցել հայերենում։ Ըստ Օ. Տրուբաչովի՝ Շրամն ունի կիմերների զբաղեցրած տարածության վերաբերյալ ոչ հստակ պատկերացում, խիստ ընդլայնում է կիմերների տարածման շրջանը և ընդգրկում աշխարհագրական այնպիսի անուններ, որոնք պատկանում են էթնիկական այլ միջավայրերի։ Գ. Շրամը Դոնի հին Τάναϊς և Կուբանի հին Ὕπανις[14] անունները վերագրում է կիմերների լեզվին և նրանց մեջ տեսնում բաղաձայնների տեղաշարժ՝ *Kūbhani- > *Kübäni- > K(h)upani- և *Dānoụi- (*Dānaụi-) > Tanaụi-։ Հատկանշական է, որ Շրամը կիմերերենի մնացորդները հայերենով ստուգաբանելու ոչ մի փորձ չի անում և նկատի չի առնում, որ բաղաձայնների տեղաշարժը հատուկ է ոչ միայն հայերենին[15]։ Հայերենի՝ արևելքից ծագելու հնարավորության մասին ավելի վաղ խոսել է Է. Կավենյակը [Cavaignac, 1963, 47—54]։

Ի՞նչ կարելի է ասել կիմերների լեզվի մասին եղած տվյալների համադրության հիման վրա։

1) Եղած տվյալները ակնհայտորեն անբավարար են կիմերների մասին քիչ թե շատ վստահելի եզրակացություններ անելու համար։ Հին հեղինակները աղոտ գաղափար են ունեցել կիմերների լեզվի, էթնիկական կազմի ու աշխարհագրական տեղադրման մասին, և նրանց տեղեկությունները կարելի է ընդունել միայն վերապահորեն, մանավանդ որ կիմերները շփոթվել են մերթ տրերների (թրակյան ցեղ), մերթ սկյութների հետ։ Պետք է կարծել, որ նախ՝

---

չմտ. նաև թրակ. Ἄργιλος քաղաքանունը, որ Ἄργιλος անձնանվան և Ἀργι-δαυα տեղանվան Ἀργι- բաղադրիչի հետ միասին Դ. Դեչևը [Detscew, 1957, 23] բխեցնում է հ.-ե. *ar(e)k- «փակել» արմատից՝ համեմատելով լատ. arx «ամրոց», arceō «փակել, ներփակել», հայ. արգել բառերի հետ. Նա դժվար բացատրելի է համարում միայն *k-ի դիմաց թրակ. γ-ի առկայությունը։ Սակայն կա նաև *ar(e)g- զուգահեռ արմատը (Pok., 64), որից բխեցվում են մակեդ., տոխ. (< մակեդ.) ու կիմերական հիշյալ բառերը, և որից թերևս ծագում է թրակյան արմատը։ Կիմերների անվան ստուգաբանության մեկնության դեպքում ժխտվում է Temarunda բառի կիմերյան (այլև խեթյան, լուվիական) ծագումը, եթե վերջինս կազմված է tem- «մութ, սև» + arun- «ծով» (համա. խեթ. aruna-) + -d(h)ā < *dhē- «դնել (կրծքով), կաթ տալ, ծծեցնել» բաղադրիչներից) (ըստ Պլինիոսի Temarunda-ն սկյութների լեզվով նշանակում է matrem maris «մայր ծովի»)։

[11] Այս անվանումը միջին դարերում համընկնում է Cuphis, Κωφῆνα (հայց. հ.), Κωφής ձևերով և համեմատվում է Քաբուլ գետի հին Κώφης, Κωφήν անվան հետ։

[12] Գրքի վերջում Շրամը, որպես հիմնադրույթ, գրում է. «X լեզվի, այն է՝ ենթադրվող կիմերերենի համար արտացոլված հնչյունական հատկանիշները լիովին համապատասխանում են նաև հայերենին։ Միակ շեղումը՝ հայ. k'-ի և Ὕπανις-ի նախաձայն h-ի համապատասխանության անճշտությունը կարող է հույների կամ կարերի մեղքը համարվել, որոնք Կուբանի անունը փոխ են առել։ Նաև պատմական տվյալների համաձայն լիովին հավանական է, որ մ. թ. ա. VIII դարում Սև ծովի հյուսիսային ափերից Առաջավոր Ասիա քշված կիմերները, որոնց հետքերը մ. թ. ա. շուրջ 600 թ. կորչում են, և հայերը, որոնք հենց նույն ժամանակ կործանվող կամ մեդացիների կողմից նվաճված ուրարտական պետությունը ներխուժեցին, միևնույն ժողովուրդն են»։

ակզբնապես կիմերները հյուսիսածովյան վայրերի հիմնական բնակիչները չեն եղել, երկրորդ՝ դաշնակից են եղել թրակյան տոհմերին կամ ընդհանրապես ներկայացրել են տարալեզու ցեղախումբ, երրորդ՝ անկախ էթնիկական կազմից, ունեցել են, բացի բուն կիմերական անձնանուններից, նաև այլ ծագման անձնանուններ։ Կարելի է նույնիսկ ենթադրել, որ կիմերների մի զատված (տրերնե՞րը) շարժվել է Առաջավոր Ասիա՝ Ստրաբոնի, իսկ բուն զանգվածը՝ հիմնականում Հերոդոտոսի նշած ուղիով, ընդ որում հետագայում նրանք արևմուտքում կարող էին վերամիավորվել պատերազմական գործողությունների ժամանակ։ Կիմերների՝ Մանայում գտնվելու փաստը խոսում է նույնիսկ նրանց շարժման երրորդ ուղու՝ այժմյան Ադրբեջանի տերիտորիայով հարավ շարժվելու հնարավորության մասին։ Ստրաբոնի կողմից որպես տրերների առաջնորդի անուն հիշատակված Κώβος-ը իրոք բուն թրակյան անձնանուն է և չի կարող մտցվել բուն կիմերական անձնանունների շարքը։

2) Եթե մի կողմ թողնենք Sandakšatru անձնանվան Sandakkurru և այլ ընթերցումները, որոնք քիչ հավանական են, ապա կարելի է ասել, որ ավելի համոզիչ է պահպանված կիմերական անձանունների մեծ մասի արիական (հնդիրանական) մեկնությունը. Sandakšatru-ն և Teušpā-ն, թերևս նաև Dugdamīš-ը կարող են գոհացուցիչ լիովին բացատրվել հնդիրանական հողի վրա։ Եթե դրանք չեն խոսում կիմերների արիական ծագման մասին, ապա գոնե վկայում են նրանց՝ հնդիրանական ծագման վերնախավ ունենալու փաստը։ Մինչդեռ կիմերների մնացորդները ամբողջապես թրակյան հողի վրա բացատրելու փորձերը առայժմ արդյունավետ չեն։ Ճիշտ Sanda-ի համար կարելի է նշել թրակյան որոշակի զուգահեռներ, բայց նախ՝ դրանք ակնհայտորեն փոքրասիական բնույթի են (հմմտ. թրակ. Σανδανος գետանունը, որի համար Դ. Դեչևը նշում է լիդ. Σανδανις և կիլիկ. Σανδακος անձնանունները, լիդ. Σανδαινα տեղանունը, կար. Sandalloa կղզանունը, այլև թրակ. Σανταβινθος անձնանունը և հունականացված Ξανδ(ι)οι ցեղանունը) [Detschew, 1957, 420], երկրորդ՝ բոլոր դեպքերում Sanda(a)-ն չի կարելի կտրել -kšatru-ից, և եթե վերջինս ճիշտ է ընթերցվում, ապա Sanda(a)-ն նույնպես պետք է բացատրել հնդիրանական հողի վրա։ Կիմերների էթնիկական անվան թրակյան մեկնությունը քիչ է համոզիչ, իսկ ἄργιλλαι-ի զուտ թրակյան բնույթ ունենալու տեսակետը կասկածելի է։

Պետք է հատկապես նշել կիմերական լեզվական մնացորդներից մի քանիսի զգալի մերձավորությունը հին հնդկական բառերին, մանավանդ եթե ընդունենք սինդերի հնդկական ծագման վարկածը [Kretschmer, 1943, 35—42. Трубачев, 1976, 44—63]. ա) կիմեր. ἄργιλλαι և հ. հնդկ. argala-, -ā զուգահեռի առկայությունը, որի համար առայժմ հայտնի չէ իրանական զուգահեռ. բ) Sandakšatru-ի kšatru բաղադրիչի՝ հնդկականին ավելի մոտ ձևը. հմմտ. հ. հնդկ. kṣatram «իշխանություն, զորություն»՝ ավեստ. xšaθrəm, հ. պրսկ. xšaçam ձևերի դիմաց. այս դեպքում Sanda-ի համար ևս կարելի է նշել հ. հնդկ. ծագում. հմմտ. Śaṇda և Śāṇda անձնանունները, այլև śānta- «հանգիստ, անխռով» և shaṇdha «ներքինի» բառերը. գ) Dugdamīš անունը, հատկապես նրա dugda- բաղադրիչը հին հնդկերենով բացատրելու հնարավորությունը. հմմտ. հ. հնդկ. dugdhá- «կթված»։ Սրանց հակառակ՝ որոշակի հնդկական զուգահեռներ չունեն կիմերների անունը և Teušpâ-ն։ Վերջինս ավելի շուտ իրանական կերպարանք ունի։

3) *Կիմերների լեզվի մնացորդների համեմատությունը հայերենի հետ առայժմ քիչ արդյունավետ է. հավանական թվացող զուգահեռները մասամբ բուն կիմերական կամ բուն հայկական չեն, մասամբ կասկածելի են. մասամբ հավասարապես կարող են մեկնաբանվել ոչ հայկական զուգահեռներով*[16]*։ Այսպես, կիմեր.* ἄργιλλα *«ստորգետնյա բնակարան» բառը հավասար հավանականությամբ կարող է համեմատվել ինչպես հայ.* արգել *բառի*[17], *այնպես էլ թրակյան* Ἄργιλος, *մակեդոնական* ἄργελλα, *ալբանական* ragal(ë) *համիմաստ բառերի հետ. առաջին դեպքում այն կբխի հ.-ե.* *ar(e)k-*ից՝ հայերենին հատուկ* rk > րգ *հնչյունափոխությամբ, երկրորդ դեպքում՝ հ.-ե.* *ar(e)g-*ից։ Եթե կիմերերենը իրոք արիական լեզու է, ապա հավանական է երկրորդ ենթադրությունը, և կիմեր.* ἄργιλλα-*ն կարելի է համեմատել նույն արմատից ծագող հ. հնդկ.* argala-, argala *«սողնակ, պարպանակ, նիգ» բառի հետ, որ թերևս կարող էր անվանել խուղի, զուգահեռ ձև՝ շեղվող իմաստով։ Քիչ հավանական են ինչպես կիմերների անվան համեմատությունը հայ.* կիմիր-ական *բառի հետ (երկնքի յոթ գոտիներից մեկը՝ ըստ Ա. Շիրակացու), այնպես էլ* Sandakšatru-*ի* Sandakkurru *ընթերցմամբ այն կապելը հայ* շանդ, շանթ *և* կուռ (կռել, կուռ-ն), կուր (=կեր), կուռն *բառերի հետ.* շանդ-*ի հոլովումը ցույց է տալիս* -i-*ով և ոչ* -a-*ով հիմք. նշենք, որ* կուռ-*ը Հ. Աճառյանը համարում է ուրարտական փոխառություն, իսկ* կուր-*ը և թերևս* կուռն-*ը բնիկ հնդեվրոպական են* (*gurō- >կուր, *gur-no-> կուռ-ն)։ *Կարելի է կարծել, որ Կուրանի անվան բաղաձայնական տեղաշարժի ենթարկված* Ὕπανις *ձևում սպասված* kh-*ի դիմաց* h-*ի առկայությունը ոչ թե հույների կամ կարիերի մեղքն է, ինչպես ենթադրում է Շրամը, այլ թերևս հայերեն* հուպ *(հմմտ. բրբռ.* հուպ տալ, հուպ անել *և այլն) արմատի հետ բաղարկման ենթարկվելու արդյունք. սակայն այս ենթադրությունը խախտվում է, երբ նկատի ենք առնում, որ բաղաձայնների նման տեղաշարժի ենթարկվել է նաև թրակերենը, որ սրան վերագրող* Ὕπ(π)ιος *գետանվան արմատը բխեցնում է նույն* *ub- *արմատից, ինչ հայերեն* հուպ-*ը, և որ այն հավասարապես կարող էր հիմք տալ համատիպ բաղարկման համար։* Teušpā *անունը կարող էր մեկնաբանվել հայերենի հնչյունական օրենքներով ինչպես «աստվածապահ»՝* Teus- <*հ.-ե.* *diuos *(dieus *«աստված» բառի սեռականը) և* -pâ- > *pā *«պահել, սնել, արածացնել», սակայն նման մեկնություն հնարավոր է նաև թրակերենի հողի վրա (առաջին բաղադրիչի համար հմմտ. թրակյան հունականացված* Διοσ- *բաղադրիչների կողքին տեղաշարժի ենթարկված* τιο- *և* Tius *ձևերը)։ Հատկանշական է, որ Լ. Ջգուստայի կազմից որպես կիմերական առանձնացված հիշյալ տասնմեկ անձնանուններից ոչ մեկը հավաստի հայկական զուգահեռ չունի։ Կիմերների «հայկականության» վարկածի դեմ է խոսում նաև այն փաստը, որ կիմերական* Dugdamī- (Λυγδαμις) *անձնանունը ընդհանրապես հայկական կերպարանք չունի. ինչպես ցույց է տրված մեր «Հնդեվրոպական բաղաձայնների խմբերի արտացոլումը» հոդվածում (ՀԱ, 1976), հայերենը չէր կարող այդ շըր-*

[16] *Հետաքրքրական է նշել, որ Սոսիփանոս Բյուզանդացին (ինչպես և Եվստաթիոսը) Պանտիկապեոնը* (Παντικάπεον) *հիմնադրված է համարում ոչ թե միլեթցիների (ինչպես* **նշում են** *Ստրաբոնը, Պլինոսը, Ամիանոսը), այլ կոլքերի թագավոր Այետոսի* (Αἰήτου) *որդու կողմից։*

[17] *Ի միջի այլոց, այս բառն ունի նաև «քանդ» իմաստը, որ մոտ է կիմերականին, և նրա մեջ* -ել-*ը մասնիկ է [հմմտ. բրբռ.* բՙարգ *բառը.* Աճառյան, *ՀԱԲ, I*[2], *304]։*

ցանում ունենալ պայթական բաղաձայնով վերջացող վանկ, մանավանդ որ ա-ից հետո հայերենում տեղի է ունենում լրացուցիչ քմայնացում՝ *gh > ձ, *g > ծ, *k > ս հետագա անցումներով. հմմտ. օրինակ *dhugəter > *dhukter > դուստր:

*Հետաքրքրական է նշել, որ աստվածաշնչում՝ Եզեկիելի մարգարեության մեջ, որի գրվելու ժամանակը դնում են մ. թ. ա. 593—571 թթ. միջև, Գոմերը (=կիմերներ) և Թոգարման (=հայերը) հիշատակվում են տարբերակված՝ առանձին: Այսպես էլ Դարեհ I-ի Բեհիսթունյան արձանագրության մեջ (մ. թ. ա. 522—521 թթ. դեպքերի նկարագրությունը) կիմերները (որոնց անվան տակ այդ ժամանակ նկատի են առնվում սկյութները) և արմենները (Արմինա=Ուրարտու, Ուրաշտու) նշվում են իրարից անկախ:*

*Այսուամենայնիվ, հայերի և կիմերների փոխհարաբերության հարցի քննությունը չի կարելի սրանով սպառված համարել: Տրամի վարկածը անընդունելի համարելով հանդերձ՝ չի կարելի մոռանալ, որ կիմերները, հավանաբար հանդես եկած լինելով որպես հայ ժողովրդի բաղադրատարր, պետք է զգալի հետքեր թողած լինեն հայերենի և հայկական հատուկ անունների մեջ:*

## դ) ՀԱՅԵՐԵՆԸ ԵՎ ՍԿՅՈՒԹԵՐԵՆԸ

*Ի տարբերություն կիմերների, որոնց լեզվական պատկանելության հարցը դեռևս լիովին պարզված համարել չի կարելի, սկյութների լեզվի իրանական բնույթը կասկած չի հարուցում: Սկյութները սակյան ցեղեր են և խոսել են հյուսիս-արևելյան իրանական բարբառով: Նրանց հետ ցեղակցորեն մերձակից են եղել սկյութների հարևանությամբ նույնպես հյուսիսսևծովյան վայրերում բնակություն հաստատած սարմատները (սավրոմատները), այլև Կասպից ծովից արևելք՝ այժմյան Թուրքմենիայի տերիտորիայում բնակված դախերը և որանցից ավելի արևելք գտնված մասսագետները: Սկյութների հաջորդներն են համարվում Խորենացու հիշատակած ալանները և հետագայում՝ օսերը: Կասպից ծովից արևելք տարածված սակյան ցեղերի հետնորդներին է պատկանել միջին շրջանի իրանական գրավոր լեզուներից մեկը՝ խոտանասակերենը, որի գրավոր հուշարձանները հայտնագործված են XX դ. սկզբին Չինական Թուրքեստանում՝ թախարական տեքստերի հետ միաժամանակ և պատկանում են մ. թ. VII—X դդ.: Սկյութերենից գրավոր կապակցված տեքստեր չկան: Սկյութերենը հայտնի է գերազանցապես անտիկ հեղինակների պահպանած զգալի քանակությամբ սկյութա-սարմատական անձնանուններից, տեղանուններից, ցեղանուններից և փոքրաթիվ հասարակ անուններից: Հարկավոր է նշել, որ սկյութների անվան տակ խառնված են նաև ոչ սկյութական ցեղեր, և ստորև բերվող լեզվական տեղեկությունները փոքր-ինչ ավելի լայն բնույթ պետք է կրած լինեն: Այսուհանդերձ բոլոր դեպքերում էլ խոսքը վերաբերում է Միջին Ասիայից արևմուտք շարժված և հյուսիս-արևելյան իրանական բնույթ ունեցող այն ցեղերի լեզվին, որոնք հանդես են եկել մասնավորապես սկյութների և սարմատների անվան տակ:*

*Սկյութների վերաբերյալ մատենագրական տեղեկությունները, այլև հնագիտական տվյալները վերաբերում են նրանց մ. թ. ա. VIII—VII դդ. մինչև մ. թ. IV—V դդ. պատմությանը: Ինչպես տեսանք կիմերների վերաբերյալ*

հատվածից, ըստ Հերոդոտոսի՝ կիմերները մ. թ. ա. VIII դ. վերջերին հարավ են շարժվել հյուսիսսևծովյան վայրերից՝ այդ ժամանակ Հյուսիսային Կովկասում բնակվող սկյութների ճնշման տակ։ Որոշ ժամանակ անց Դերբենդի կիրճով անցել, այժմյան Ադրբեջանի տերիտորիայով դեպի հարավ շարժվել, այստեղ հիմնավորվել և Առաջավոր Ասիայի զանազան վայրերը ասպատակել են սկսել նաև իրենք՝ սկյութները։ Սկյութների վերաբերյալ առաջին վավերական տեղեկությունները Ասորեստանի թագավոր Ասարհադոնի ժամանակներից են՝ մ. թ. ա. VII դ. 70-ական թվականներից, ընդ որում սկյութները ասորեստանյան աղբյուրներում հիշատակվում են ašguzâi (asguzâi) ձևով (հմմտ. նաև բաբելերեն ïškuzâi և եբրայերեն aškūz՝ ս-ի երկրորդական երկարացումով) [Дьяконов, 1956, 242, ծան. 1]։ Իշպակայի առաջնորդությամբ և Մաննա երկրի բուն բնակիչների դաշնակցությամբ նրանք հանդես են եկել Ասորեստանի դեմ։ Մ. թ. ա. VII դ. կեսերին ընդհարվելով կիմերների հետ և պարտության մատնելով նրանց՝ սկյութները Առաջավոր Ասիայում դառնում են հզոր ռազմա-քաղաքական ուժ, որ վտանգ է սպառնում այլ երկրների գոյությանը. նրանք ներխուժում են Ասորիք և Պաղեստին, հասնում մինչև Եգիպտոսի սահմանները։

Իրենց բնակության հիմնական վայրերում շփման մեջ մտնելով իրանալեզու՝ հյուսիս-արևմտյան բարբառով խոսող և լեզվով այն ժամանակ սկյութերենին բավականին մոտ (նրանց համար հասկանալի) մեդերի (մարերի) հետ՝ սկյութները երկար ժամանակ հանդես են գալիս նրանց հետ յուրատեսակ դաշնակցության մեջ, որտեղ առաջնություն են ձեռք բերում մերթ առաջինները և մերթ երկրորդները։ Ըստ Հերոդոտոսի՝ սկյութները 28 տարի (հավանաբար մ. թ. ա. 652—625 թթ.) բացարձակ գերակշռություն են ստանում։ Մ. թ. ա. VII դ. վերջերին Մեդիայի (Մարաստանի) և Բաբելոնի հարվածների տակ Ասորեստանի կործանվելուց հետո էլ սկյութները դեռ երկար ժամանակ շարունակում են քաղաքական նշանակալից ուժ ներկայացնել, որ երևում է աստվածաշնչի վկայությունից (Երեմիայի՝ մ. թ. ա. 593 թ. վերագրվող հատվածից)։

Հավանաբար Մեդիայի և նրա կազմում գտնվող սկյութների հարվածների տակ է կործանվել ուրարտական պետությունը։ Ավելի ուշ սկյութները այլևս այս վայրերում չեն հիշատակվում՝ գտնվելով հավանաբար Մեդիայի բացահայտ գերիշխանության տակ։

Ընդհակառակը, հյուսիսսևծովյան վայրերում սկյութները շարունակում են երկար ժամանակ քաղաքական նշանակալից ուժ ներկայացնել։ Մեդիան նվաճած և առաջնություն ստացած պարսիկները Դարեհի առաջնորդությամբ մ. թ. ա. 513 թ. ներխուժում են Սկյութիայի սահմանները Դանուբից հյուսիս, բայց, ապարդյուն կերպով փորձելով իրենց ենթարկել սկյութներին, ստիպված են լինում ետ քաշվել։ Այդ ժամանակ սկյութները անցում էին կատարում նախնադարյան համայնական կարգերից դեպի դասակարգային հասարակությունը, և սկյութական առաջնորդների իշխանությունը ժառանգական էր։ Աստիճանաբար ցեղային միություն է կազմվում, և մ. թ. ա. IV դ. կեսերին տեղի է ունենում սկյութների միավորումը մեկ պետության մեջ։ Այս միավորված սկյութներն էլ մ. թ. ա. 339 թ. Ատեասի (Ἀτέας=(H)atya-) գլխավորությամբ կռվել են Փիլիպպոս Մակեդոնացու դեմ և պարտություն կրել։ Այդ ժամանակներից էլ հավանաբար սկսվում է սկյութական պետության գոյությու-

նը մերձդնեպրյան և մերձազովյան տափաստաններում։ Մ. թ. ա. III և II դարերի սահմանում իրանական մի ուրիշ ցեղախմբի՝ սարմատների ճնշման տակ սկյութները իրենց մայրաքաղաքը, որ առաջ գտնվում էր Դնեպրի ստորին հոսանքի շրջանում, տեղափոխում են Ղրիմ։ Սկյութների հետագա առաջխաղացումը դեպի հունական քաղաքները կանգնեցվում է Պոնտական պետության կողմից։ Իր նեղ սահմաններում սկյութական պետությունը հարատևում է մինչև մ. թ. III դ.։

Լինելով ուրարտական պետության ժողովուրդներից մեկը՝ հայերը պետք է շփման մեջ մտած լինեին սկյութների հետ։ Եթե ճիշտ է Գ. Ղափանցյանի և Բ. Պիոտրովսկու կարծիքը սկյութական թագավոր Պարտատուայի (Պրոտոթյես) և, ըստ Խորենացու՝ Նինվեի կործանմանը մասնակցած Պարույրի անունների կապի մասին, ապա այն խոսում է հայերի և սկյութների միջև հնագույն մերձավոր առնչությունների առկայության օգտին։ Այս է՛լ ավելի հետաքրքրական կլինի, եթե նկատի ունենանք, որ Պարույրը համարվում է Սկայորդու հաջորդը, և որ վերջինիս անունը սովորաբար կապում են սակերի, իսկ մենք՝ թրակյան ցեղերից մեկի՝ սկայների անվան հետ. սկյութների մեջ թրակյան ցեղերի առկայությունը անհնար չէ։

Հայ և օտար աղբյուրները բազմաթիվ տեղեկություններ են հաղորդում հայերի և ալան-օսերի հետագա հարաբերությունների մասին։ Հայտնի է, որ մ. թ. ա. II դարում Արտաշես I-ի ժամանակ ալանները որոշ ժամանակ գտնըվել են հայերի գերիշխանության տակ և երբեմն-երբեմն ապստամբել։ Հետագայում, հատկապես հայ Արշակունիների օրոք, հայերը հաճախակի են ենթարկվել ալանների արշավանքներին և պատերազմներ մղել նրանց դեմ։ Այդ պատերազմներից մեկը արձագանք է գտել «Արտաշես և Սաթենիկ» վիպական շարքի՝ մեր կողմից արդեն բերված այն հատվածներում, որ մեզ ավանդել է Մովսես Խորենացին. ըստ այդ հատվածների՝ պատերազմի ժամանակ հայերի ձեռքը գերի է ընկնում ալանների թագավորի որդին, և վերջինիս քույրը՝ արքայադուստր Սաթենիկը, հայերի զորքը ալաններից բաժանող գետի մյուս ափից դիմում է Արտաշեսին՝ խնդրելով վերադարձնելու իր եղբորը։ Սաթենիկը դուր է գալիս Արտաշեսին, և քանի որ ըստ ալանների սովորույթի Սաթենիկին կին վերցնելու համար հարկավոր էր մեծ գումար վճարել, Արտաշեսը որոշում է Սաթենիկին առևանգել։ Ամեն ինչ վերջանում է Արտաշեսի և Սաթենիկի ամուսնությամբ։ Հետազոտողները հակված են կարծելու, որ այստեղ խառնված են տարբեր ժամանակների դեպքեր, և խոսքը վերաբերում է Տրդատ առաջինի թագավորության շրջանին. ինչպես հայտնի է մ. թ. 72—74 թթ. հայերը պատերազմներ են մղել հյուսիսից ներխուժած ալանների և նրանց ցեղակիցների դեմ։

Հայ մատենագրության մեջ հաճախ է հիշատակվում մերձկասպյան շրջանում գոյություն ունեցող մազքութների թագավորությունը, որտեղ նույնպես իշխում էին պարթև Արշակունիները։ Իրանական պարթևական ծագում է վերագրվում Բաղասական երկրում բնակություն հաստատած ապահացիներին, որոնց մի հատվածը մ. թ. I դարում հաստատվում է Ապա(ր)հունիքում՝ տալով վերջինիս իր անունը [հմմտ. Еремян, 1967, 56. ՀԺՊ, 1, 713]։

Հայերենի և սկյութերենի լեզվական առնչություններն ուսումնասիրելիս կարելի է դիմել ինչպես ուղղակի, այնպես էլ անուղղակի տվյալների։

Ուղղակի տվյալները սկյութերենի լեզվական այն մնացորդներն են, ո-

րոնք ունեն հայերեն համապատասխան զուգահեռներ։ Այս դեպքում պետք է նկատի առնել նախ՝ սկյութական անունների հունական ու ոչ հունական տառադարձումների բուն հնչման վերականգնման դժվարությունը, երկրորդ՝ հին շրջանի իրանական լեզուների միաձևության մեծ աստիճանը, և սրա հետ կապված՝ շատ բառերի սկյութական, թե ոչ սկյութական լինելը որոշելու, սկյութական բառերի սկզբնական ճշգրիտ ձևերն ու իմաստները վերականգնելու դժվարությունները։

Անուղղակի ապացույցները երեք կարգի են.

1) Հայերենի իրանական այն բաղադրիչների առանձնացումը, որոնք արևելա-իրանական հնչյունական առանձնահատկություններ ունեն՝ c, j առնական կիսաշփականների առկայությունը՝ համապատասխան č, ǰ շշականների փոխարեն (եթե այդ տարբերությունը կար սկյութական շրջանում), բառասկզբի h-ի անկումը (բացի hi, hu, hv կապակցություններից, որոնց մեջ h-ն փոխվում է x-ի), արևելա-իրանական լեզուներին հատուկ բառասկզբնային b, d, g-ի β (v, w), δ, γ արտացոլումը, որ, սակայն, այս դեպքում հնարավոր չէ ստուգել սկյութերենի եղած տվյալներով, որովհետև բաղաձայնական այդ երկու կարգերը հունարեն պետք է արտահայտվեին միատեսակ՝ β, δ, γ-ով [Абаев, 1949, 209. ОИЯ, 1, 329]. Հայերենը, δ, γ չունենալով, դրանք բառասկզբում պիտի արտահայտեր d, g-ով (բառամիջում δ-ն՝ r-ով), իսկ β-ն կարող էր արտահայտել v-ով, որ հետագայում (եթե v>g անցումը տեղի է ունեցել մ. թ. ա. VIII—VI դդ. հետո. հմմտ. ուրարտ. Uelikuni > հայ. Գեղարքունի) պիտի փոխվեր g-ի, սակայն սկյութ. β—հայ. g համապատասխանություն չի նկատվում, հյուսիս-արևելյան բարբառախմբին հատուկ երևույթներից պիտի հիշատակել նաև նախաձայնավորային d-ի և բառասկզբի dv-ի պահպանումը, -t- տարրով հոգնակին. նշենք նաև, որ սկյութերենում արդեն նկատվում են օսերենին հատուկ p, t, k>b, d, g ձայնեղացումը միջին դիրքում (բայց ոչ հետևողականորեն), ti>c(i) անցումը և այլն։

2) Հայերենի այն բաղադրիչների առանձնացումը, որոնք ընդհանուր են օսերենին և իրանական բնույթ ունեն. այս դեպքում էլ հնարավոր է միջնորդված ուշ փոխառություն, և օսերենի նյութը ըստ հնարավորին պիտի ստուգել սկյութերենի նյութով, ընդ որում հարկավոր է նկատի առնել սկյութերենի զարգացման վաղ և ուշ շրջանների առկայությունը։

3) Հայերենի այն բաղադրիչների առանձնացումը, որոնք զուգահեռներ ունեն արևելյան, մասնավորապես հյուսիս-արևելյան լեզուներում և հատկապես խորեզմերենում ու սողդերենում, որոշ չափով նաև բելուջերենում [Baily, HbO, 1958. Герценберг, 1965]. այս դեպքում էլ, իհարկե, չի կարելի բոլոր դեպքերում խոսել հենց սկյութական համապատասխան իրակությունների գոյության մասին։

Սկյութերենին և հայերենին հատուկ հնչյունական զուգահեռ երևույթներից պետք է նշել հատկապես հետևյալները. 1) խուլերի ձայնեղացումը ձայնորդներից հետո, թեև սկյութերենում սա տարածված է (ոչ հետևողականորեն) նաև այլ դիրքերի վրա, ինչպես հայերենի ուշ շրջանի բարբառներում. հմմտ. հ.-ե. *pont- > իրան. *pant- > սկյութ. pant-, fand- «ճանապարհ», հ.-ե. *art-, *r̥t- > իրան. art- > սկյութ. arta, arda «սրբված» և հ.-ե. *anti > հայ. ընդ, հ.-ե. *art-, *r̥t- > հայ. արդար և այլն. 2) բաղաձայնահաջորդ ձայնորդի դրափոխությունը բաղաձայնից առաջ. հմմտ. հ.-ե. *put-

ro- > իրան. *puθra- > սկյութ. purϑa և հ.-ե. *dhabh-ro- > հայ. դարբին և այլն. 3) բառասկզբի որոշ դիրքերում h-ի անկումը. Համմտ. հ.-ե. *septm > իրան. hafta > սկյութ. avd և հայ. եւթն. 4) սկյութերենում ու մերձավոր լեզուներում n-ի առնմանումը հաջորդող s-ին և հայերենում n-ի անկումը s-ից առաջ. Համմտ. man-sag «մարդ-եղջերու» > Μασσαγεται և հ.-ե. *-ns (հգն. հայց. վերջավ.) > հայ. -ս։

Բուն սկյութա-հայկական բառային զուգաբանությունները քիչ են և ոչ միշտ են խոսում սկյութական լեզվական ուղղակի ազդեցության մասին։

## ե) ՀԱՅԵՐԵՆԸ ԵՎ ՄԵԴԵՐԵՆԸ (ՄԱՐԵՐԵՆԸ)

*Մեդերենը հայերենի հետ ամենից ավելի վաղ շփման մեջ մտած իրանական լեզուներից մեկն է, ընդ որում այդ շփումը բավական երկարատև է եղել։ Ինչպես նշել ենք, մեդերենը հյուսիս-արևմտյան իրանական լեզու է, որի ազդեցությունը հատկապես ուժեղ է եղել մեդական պետության գոյության շրջանում։*

*Մեդացիները սեպագիր արձանագրություններում հիշատակվում են մ. թ. ա. IX դարից սկսած (*ma-dâi, amadâi, matâi*)։ Նրանք բնակվելիս են եղել իրանական բարձրավանդակի հյուսիս-արևմտյան ու Ատրպատականի (այժմյան Ադրբեջանի) հարավային մասերում և զբաղվել են հիմնականում անասնապահությամբ (մանավանդ ձիաբուծությամբ) ու հողագործությամբ։ Մեդական ցեղամիության հիմքի վրա՝ մ. թ. ա. VII դ. սկիզբ է առնում մեդական թագավորությունը՝ Էկբատան մայրաքաղաքով (այժմյան Համադանի մոտ)։ Կիաքսար թագավորի ժամանակ մեդացիները բաբելացիների դաշնակցությամբ մ. թ. ա. 612 թ. գրավում են Ասորեստանի մայրաքաղաք Նինվեն և 605 թ. վերջնական հարված հասցնում Ասորեստանին։ Հնարավոր է, որ Ասորեստանի կործանմանը իրենց մասնակցած լինեն հայերը մեդացիների հետ միասին։ Մեդական թագավորությունը մեծ չափով ընդարձակում է իր սահմանները՝ հասնելով արևմուտքում մինչև Հալիս գետը։ Կիաքսարի որդի Աստիագը (Աժդահակ) արդեն պայքարի մեջ է մտնում մեդացիների նախկին դաշնակից բաբելացիների հետ։ VI դ. կեսերին Մեդիան (Մարաստանը) հաղթվում է իրանական մի այլ ժողովրդի՝ պարսիկների թագավոր Կյուրոսի կողմից և ընկնում Պարսկաստանի գերիշխանության տակ։*

*Մեդացիները իրենց լեզվով արձանագրություններ չեն թողել, և մեդերենի մասին մեր ունեցած տեղեկությունները խիստ կցկտուր են։ Բացի հատուկ անուններից, մեդական բառեր են պահպանվել հունական աղբյուրներում և հին պարսկական սեպագիր արձանագրություններում. վերջիններս թույլ են տալիս ասելու, որ հին պարսկերենում զգալի թիվ են կազմել մեդական փոխառությունները։ Մեդերենի՝ հին պարսկերենի վրա ունեցած ազդեցության հարցի մասին խոսել են շատերը, այդ թվում նաև Ա. Մեյեն իր «Հին պարսկերենի քերականության» մեջ [*Meillet*, 1931, 7—13]։ Եղած աղբյուրների հիման վրա մեդերենի վերականգնման փորձ է կատարել Մ. Մայրհոֆերը [*Mayrhofer*, 1968]։ Մեյեից ավելի վաղ Հ. Հյուբշմանը իր «Պարսկական ուսումնասիրություններ» աշխատության մեջ [*Hübschmann*, 1895, 231] մեդական աղբյուրից փոխառյալ է համարել հայ.* բրինձ, գանձ, պղինձ *բառե-*

ից, որոնց մեջ առկա է ձ՝ փոխանակ չ-ի (հմմտ. նաև Կանձակ)՝ ն-ից հետո գտնվող դիրքում։

Հայերենի մեդական փոխառությունները հավաստիորեն առանձնացնելուն խանգարում է հատկապես երկու հանգամանք. 1) մեդերենը և պարթևերենը, զարգացման տարբեր փուլեր ներկայացնելով և բարբառային տարբերություններ ունենալով հանդերձ, ունեցել են ընդհանուր շատ գծեր. երկուսի էլ քիչ հայտնի լինելու պայմաններում մենք հաճախ չենք կարող բացարձակ ճշգրտությամբ ասել, թե հայերենն այս կամ այն բառի աղբյուրը դրանցից հատկապես ո՛րն է. 2) մեդերենը զգալի ազդեցություն է թողել հին պարսկերենի, պարթևերենի՝ միջին իրանական հարավային բարբառների վրա, մի հանգամանք, որ նույնպես դժվարացնում է փոխառությունների բուն աղբյուրների որոշումը [մեդերենի և պարսկերենի փոխհարաբերության մասին տե՛ս **Herzfeld,** 1934].

Մեդերենը հին պարսկերենի համեմատությամբ ունի մասնավորապես հետևյալ առանձնահատկությունները.

| Հ.-ե. | Մեդերեն | Օրինակներ | Հին պարսկ. | Օրինակներ |
|---|---|---|---|---|
| *g'h | z | zūra- «բռնություն, զոռ»<br>vazrka- «մեծ» | d | dān- «իմանալ»<br>daraniya- «ոսկի» |
| *tr | θr | Miθra (Միհր)<br>xšaθra- «իշխանություն»<br>čiθra- «սերունդ» | ç | Miça (Միհր)<br>xšaça «իշխանություն»<br>čiça- «սերունդ» |
| *ti̯ | θ(i)y | xsayaθiya- «թագավոր» | š(i)y | hašiya- «ճշմարտություն» |
| *k' | s | asa- «քար» | θ | aθa(n)ga- «քար»<br>θah- «ասել» |
| *k'u̯ | sp | spaka- «շուն»<br>aspa- «ձի» | s | saka- «շուն»<br>asa- «ձի» |
| *su̯ | f | farna «փառք» | (x)uv | (x)uva- «ինքը» |

Մեդերենի առանձնահատկությունների մի մասը ունի նաև պարթևերենը, որը, սակայն, որոշ դեպքերում հանդես է բերում ինքնուրույն գծեր. այսպես, եթե *g'h > z, *k' > s, *k'u̯ > sp անցումները հատուկ են նաև նրան, ապա մեդական θr-ի դիմաց պարթևերենը ավելի ուշ ունի θr > hr անցումը, θ-ի դիմաց՝ s, f-ի դիմաց (եթե տվյալները ճիշտ են)՝ xv, vx:

Միջին մեդերենը պետք է ավելի մոտ լիներ պարթևերենին։ Այսպես, Ա. Փերիխանյանը տալիս է միջին մեդերենի, պարթևերենի և միջին պարսկերենի հնչյունական փոխհարաբերության հետևյալ պատկերը.

| | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| Իրան. | -θr- | xv- | xš | sp- | -rz- | -rd- | -sy- | -d- | -f- |
| Մ. մեդ. | -hr- | f- | axš- | asp-, sp- | -rr- | -r(r)- | s-, -s(i) | -h- | -h- |
| Պարթ. | -hr- | vx | š- | isp-, sp- | -rz | -rd- | -sy- | -d- | -f- |
| Մ. պարս. | -s- | xv | š- | s- | -l- (<-rd-) | -l- | sy- | -y- | -f- |

Ըստ այս աղյուսակի, հայերենը որոշ դեպքերում պետք է ավելի մոտ լիներ միջին մեդերենին, քան պարթևերենին. այսպես, իրան. xš խումբը միջին մեդերենում ներկայացված է axš-ով, պարթևերենում՝ š-ով (հմմտ.

աշխարհ, աշխէտ, *թերևս նաև* աշխատ, աշխար *«ողբ, լաց»*, աշխարաւանդ *խումբը միջին մեդերենում ներկայացված է* f-*ով, պարթևերենում՝* xv-*ով (հմմտ.* փառ-f, *այլև* Փառէն, Փառներսեհ, Փառոխ, Փառնակ, Փառնաւազ, *թերևս նաև* Փառանձեմ) *և այլն։*

## գ) ՀԱՅԵՐԵՆԸ ԵՎ ՀԻՆ ՊԱՐՍԿԵՐԵՆԸ

*Մեդական պետության դեմ Կյուրոսի տարած հաղթանակից հետո Պարսկաստանը դառնում է Առաջավոր Ասիայի ամենահզոր պետությունը, որի տիրապետությունը տարածվում է նաև Հայաստանի վրա։ Դարեհ I-ի ժամանակ հայկական լեռնաշխարհում կազմվել էին 13-րդ և 18-րդ սատրապությունները։ Պարսկաստանի Աքեմենյան թագավորների տիրապետությունը շարունակվում է մինչև Ալեքսանդր Մակեդոնացու կողմից Դարեհ III-ի ջախջախումը։*

*Աքեմենյան թագավորները թողել են սեպագիր արձանագրություններ, որոնք և գաղափար են տալիս հին պարսկերենի մասին։ Այդ լեզուն պատկանում է հարավ-արևմտյան իրանական բարբառներին։ Բացի իրանական արձանագրություններից, որոնց բառապաշարը շատ հարուստ չէ, հին պարսկերենի մասին գաղափար են տալիս նաև մի շարք կողմնակի աղբյուրներ։ Հատկապես մեծ նյութ է տալիս այն հատուկ անունների իրանական ձևերի վերականգնումը, որոնք պահպանվել են աքքադական, էլամական, ուրարտական և հունական աղբյուրներում [հմմտ.* Gershevitch, 1969a, в. Mayrhofer, 1973. 1979. Hinz, 1973. 1975, *հմմտ. նաև* Грантовский, 1970]:

*Լինելով Աքեմենյան Պարսկաստանի տիրապետության տակ՝ հայերը, անշուշտ, պետք է ենթարկվեին նրա լեզվական ազդեցությանը։ Սակայն այդ ազդեցությունը շատ ուժեղ լինել չէր կարող, որովհետև այն էթնիկական մերձավոր շփման արդյունք չէր, այլ պետական ազդեցության։ Բուն հին պարսկական ծագման բառերի առանձնացումը կապված է զգալի դժվարությունների հետ, եթե նկատի առնենք հին մեդերենի և հին պարսկերենի, ընդհանրապես հյուսիս-արևմտյան և հարավ-արևմտյան բարբառների փոխազդեցությունները, հին փոխառությունների վրա միջին շրջանի փոխառությունների մակաշերտումը, հին պարսկերենի քիչ հայտնի լինելը, հին իրանական շրջանից միջին իրանականին անցնելու ոչ կտրուկ բնույթը և այլն։*

## ե) ՀԱՅԵՐԵՆԸ ԵՎ ՄԻՋԻՆ ԻՐԱՆԱԿԱՆ ԼԵԶՈՒՆԵՐԸ

*Միջին իրանական լեզուների հետ հայերենի շփումը շատ ավելի երկարատև է եղել, քան հին իրանական լեզուների հետ։ Եթե սրան գումարենք այն փաստերը, որ Հայաստանում երկար ժամանակ իշխել են իրանական ծագման թագավորներ, և որ հայկական կյանքում ընդհանրապես մեծ դեր է խաղացել իրանական տարրը, ապա պարզ կլիներ այդ ազդեցության չափը։ Մանավորապես ուժեղ է եղել պարթևական ազդեցությունը։ Ոչ միայն Հայաստանում իշխել են ծագմամբ պարթև թագավորներ, այլև սասանյան տիրապետության շրջանում էլ շփումը Հայաստանի և Պարսկաստանի միջև հիմնականում իրականացել է հյուսիսային իրանական ճանապարհով. բուն միջին պարսկերեն*

բառերը կարող էին հայերենի մեջ թափանցել պետական պաշտոնյաների ու փաստաթղթերի միջոցով, պարթևերենում տարածված միջին պարսկական փոխառությունների միջնորդությամբ, հայ գրի ստեղծումից հետո՝ նաև գրական փոխառությունների ձևով։ Եթե պարթևերենի կողքին որոշ ժամանակ գոյություն է ունեցել միջին մեդերենը, ապա այն նույնպես պիտի նշանակալից ազդեցություն թողած լինի հայերենի վրա։ Համեմատաբար փոքր պիտի լինեն իրանական այլ ժողովուրդների, այդ թվում ալաներենի բառային ներդրումը։

Պարսկաստանի թագավոր Դարեհ III Կոդոմանի՝ Գավգամելայի հայտնի ճակատամարտում (331 թ. մ. թ. ա.) Ալեքսանդր Մակեդոնացուց պարտվելուց հետո Հայաստանում ստեղծված պետական միավորների թագավորները, հատկապես Երվանդունիները և Արտաշիսյանները, իրանական անուններ են կրել։ Ինչպես հայտնի է, Արշակունիների թագավորական հարստության հիմնադիր Տրդատ I-ը պարթևական ծագում ուներ, և մինչև 428 թ. հայկական գահի վրա բազմում էին նրա հաջորդները։ Այս պայմաններում պարթևական ազդեցությունը պետք է շատ ուժեղ լիներ, և իրոք, հայերենը ձեռք է բերում մեծ քանակությամբ պարթևական ծագման բառեր։

Ցավոք սրտի, վաղ պարթևերենը, եթե նկատի չառնենք հայերենի՝ նրանից կատարած համեմատաբար հին փոխառությունները, քիչ է հայտնի։ Պահպանված արձանագրությունները և մանիքեական տեքստերը [հմմտ. հատկապես Boyce, 1954, 1977; Gignoux, 1972. ОИЯ, 1, 147—232], մեր գիտելիքների շրջանակները զգալիորեն ընդարձակելով հանդերձ, ներկայացնում են պարթևերենի զարգացման համեմատաբար ուշ շրջանը (մ. թ. I դարից ոչ վաղ)։ Հայերենի՝ իրանական փոխառությունների առաջիկա ցանկերում այս կարգի պարթևական զուգահեռները ըստ անհրաժեշտության կնշվեն։

### բ) ՀԱՅԵՐԵՆԻ ԻՐԱՆԱԿԱՆ ՓՈԽԱՌՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Հայերենի՝ իրանական լեզուներից կատարած փոխառությունները ամփոփված են Հ. Հյուբշմանի «Հայերենի քերականության» I-ին գրքում [Hübschmann, AG, 1895] և Հ. Աճառյանի «Հայոց լեզվի պատմության» 1-ին մասում [1940]։ Քանի որ Հ. Աճառյանը բերում է Հ. Հյուբշմանի ցանկը գրեթե ամբողջությամբ՝ կատարելով որոշ հավելումներ ու ճշգրտումներ, հետագա քննության մեջ կհենվենք այդ ցանկի վրա։ Վերջինս ընդգրկում է 1405 բառական միավոր, որոնցից «հին շրջանի» բառերը ըստ հեղինակի մտահղացման առանձնացված են շեղատառով։ Սակայն Հ. Աճառյանի «հին շրջանի» ըմբռնումը զգալիորեն տարբերվում է մերի ըմբռնումից և չունի տարբերակման որոշակի չափանիշներ. այստեղ հանդիպում են մեծ թվով այնպիսի բառեր, որոնք մերի շրջանաբաժանմամբ փաստորեն պատկանում են միջին շրջանին (XII—XVI դդ.) կամ չունեն ժամանակագրական ճշտորոշում։ Այնուամենայնիվ ցանկը կարող է օգտակար լինել հայերենի նախագրային շրջանի՝ իրանական աղբյուրներից կատարված փոխառությունները որոշելու համար, եթե այս նյութավորով շեղատառ տպվածներից առանձնացնենք V դարից ու ուշ ավանդվածները, որոնց մեծ մասը, անշուշտ, գա-

չի է ավելի վաղ շրջաններից։ Ավելի ուշ ավանդված բառերի մեջ նախագրային շրջանում փոխառվածների քանակը խիստ փոքրաթիվ պետք է լինի, այլ կերպ ասած՝ կարող էին լինել խոսակցական լեզվում գործածված և V դ. գրականության մեջ չավանդված փոքրաթիվ բառեր, բայց այդ բանը ճըշտելու որոշակի **միջոցներ** այժմ չկան։

V դ. գրականության մեջ ավանդված իրանական փոխառությունների՝ ստորև բերվող ցանկը կազմված է, բնականաբար, Հ. Հյուբշմանի և Հ. Աճառյանի ցանկերի հաշվառումով, **բայց հենվում է այլ սկզբունքների** վրա և մասնավորապես ունի հետևյալ **էական տարբերությունները**։

1) Եթե Հ. Աճառյանը հիմնականում սահմանափակվում է հայերեն բառերի նոր պարսկական, պահլավական և ավեստայական զուգահեռների մատնանշմամբ (հազվադեպ տրվում են հին պարսկական, սոգդական և սանսկրիտական զուգահեռներ), ապա մեր ցանկում նախ տրվում են ծագման համապատասխան նշանով (<) հայերեն բառերի իրանական հնարավոր ձևերը, ապա բերվում են իրանական գրավոր հուշարձաններում ավանդված իմաստով և ձևով մերձավոր բառերը. Ճիշտ է, շատ դեպքերում հայերեն բառերի նախատիպ տրվող ձևերը համընկնում են բերվող իրանական զուգահեռների հետ, բայց նկատի է առնված, որ այն դեպքերում էլ, օրինակ, միջին պարսկերենի՝ հայերենի հետ համընկնող ձևերը կարող էին հայերենին անցած լինել ոչ անմիջապես, կամ՝ որ հայերենի աղբյուրը կարող էր լինել նրա պարթևական կրկնակը։ Իրանական պատմական բարբառագիտության և իրանական լեզուների պատմության մեր իմացությունը այժմ հնարավորություն չի տալիս բոլոր դեպքերում ճշտորոշելու հայերեն բոլոր բառերի բուն աղբյուրները։ Միջին պարսկերեն և պարթևերեն ձևերի բացակայության դեպքում հայերենի համար վերականգնված աղբյուր-ձևերը օժտվում են աստղանիշերով։

2) Հ. Աճառյանի աշխատություններից հետո և նույնիսկ նրա հրատարակությունից առաջ **հանդես են եկել** նոր ստուգաբանություններ, հրատարակվել նոր նյութեր, որոնք ավելացրել են եղած ստուգաբանությունների քանակը։ Այս առումով ներկա ցանկը պարունակում է զգալի թվով նորույթներ, թեև այս հարցում մենք հանդես ենք բերել զգուշություն և ընտրել ամենից ավելի հավանականները։ Ոչ բոլոր դեպքերում են ընդունվել նաև իր իսկ Հ. Աճառյանի ստուգաբանությունները. դրանց մեջ կան կասկածելիներ։ Ընդհանրապես իրանական ձևերը ճշտված են ըստ իրանագիտական նոր՝ մեզ մատչելի աղբյուրների։

Բացի Հ. Հյուբշմանից [AG, 1—2], Ա. Մեյեից [Meillet, 1911. 1916. 1920. 1921. 1922. Մեյե, 1978], Ռ. Գոտիոյից [Gauthiot, 1919], Հ. Աճառյանից [ՀԱԲ, 1—$4^{2}$. ՀԼՊ, 1], հայերենի իրանական փոխառությունների հարցին ուսումնասիրություններ են նվիրել Է. Բենվենիստը [Benveniste, 1927, a, b. 1929. 1945. 1958. 1961. 1964 b. 1966], Մ. Լերուան [Leroy, 1935. 1958, 1960. 1961], Հ. Բեյլին [Bailey, 1956. 1960. 1964. 1980. 1983], Ջ. Բոլոնիեզին [Bolognesi, 1948 a, b. 1951 b. 1958. 1959. 1960. 1961. 1962 b. 1966], Վ. Բելարդին [Belardi, 1950, 1960, 1962. 1978], Ռ. Շմիտը Schmitt, 1975b, 1980b], հայ հետազոտողներից Է. Աղայանը [1974], Գ. Ջահուկյանը [Ջահուկյան, 1981ա, բ], Ա. Փերիխանյանը [Périkhanian, 1968. 1969. 1982, Периханян, 1973, 1982] և այլք. Ջ. Բոլոնիեզիի մենագրության մեջ [Bolognesi, 1960] ի մի են բերված մինչև 1960 թ. այս բնագավառում

կատարված հետազոտությունների հիմնական արդյունքները։ Այս հարցի վերաբերյալ կարևոր տեղեկություններ կան ինչպես նշված, այնպես էլ ուրիշ իրանագետների և հայագետների աշխատություններում, որոնցից հիմնականները տրված են գրականության ցանկում։ Հայերեն բառերի իրանական զուգահեռները ճշտված են ըստ նորագույն աղբյուրների. մեր աշխատության գրականության ցանկում բերված են սրանցից միայն հիմնականները. աղբյուրների ավելի հանգամանալից տեսությունը կարելի է գտնել իրանագիտական ընդհանրացնող աշխատություններում [հմմտ. հատկապես HbO. 1. Abt., 4. B., 1. Abschn., Leiden-Köln, 1958. ОИЯ, 1–3, 1979–1982]: Մեզ համար կարևոր աղբյուրներ են ծառայել, մասնավորապես, սովետական հետազոտողներից (այբենական կարգով)՝ Վ. Ի. Աբաևի, Մ. Կ. Անդրոնիկաշվիլու, Մ. Ն. Բոգոլյուբովի, Լ. Գ. Գերցենբերգի, Ա. Լ. Գրյունբերգի, Ի. Մ. Դյակոնովի, Ի. Ի. Զարուբինի, Ջ. Ի. Էդելմանի, Վ. Ա. Լիվշիցի, Բ. Վ. Միլերի, Տ. Ն. Պախալինայի, Ա.Ն. Ռագոզայի, Վ. Ս. Ռաստորգուևայի, Ս. Ն. Սոկոլովի, Ի. Մ. Օրանսկու, Ա. Ա. Ֆրեյմանի, օտար հետազոտողներից Հ. Վ. Բեյլիի, Է. Բենվենիստի, Մ. Բոյսի, Ի. Գերշևիչի, Հ. Էլֆենբայնի, Ֆ. Ժինյուի, Վ. Բ. Հենինգի, Վ. Հինցի, Հ. Հումբախի, Դ. Ն. Մակ-Քենզիի, Մ. Մայրհոֆերի, Գ. Մորգենստիեռնեի, Ռ. Շմիտի և ուրիշների աշխատությունները։ Ըստ անհրաժեշտության հարկ է եղել դիմելու նաև Հ. Աճառյանի օգտագործած հեղինակներից Ռ. Գոտիոյի, Հ. Հյուբշմանի, Պ. Հոռնի, Յ. Մարկվարտի, Ֆ. Յուստիի, Հ. Ս. Նիբերգի և ուրիշների աշխատություններին։

Այսուհանդերձ, ինչպես նշվեց, բոլոր դեպքերում էլ կատարվել է որոշակի ընտրություն, և ցանկում տեղ չեն գտել ոչ այնքան հավանական ստուգաբանությունները։ Չեն բերվել նաև այն բառերը, որոնց իրանական ծագումը կասկած չի հարուցում (եթե նկատի առնենք նրանց հնչյունական, բառակազմական և այլ կարգի առանձնահատկությունները), բայց եղած իրանական աղբյուրներում համապատասխան բառեր չեն հայտնաբերված, առաջարկված վերականգնումներն էլ հնչյունական և կամ իմաստային նկատառումներով անհրաժեշտ հավանականությունը չունեն։ Ահա թե ինչո՞ւ ստորև բերվող ցանկում չկան, օրինակ, հետևյալ բառերը, թեև, ինչպես նշեցինք, նրանց զգալի մասի իրանական ծագումը հավանական է[18]. ամբարհաւաճ, ապարան «դաշտան», ապարաւշ, ապիմակ (ապիկա՞մ), առեան (հ.-ե.?), արդու «մի չափ», արուարձան, աւազակ, աւժանդակ, աւձել, աւճան, գերեզման, երազ, զատ, խորան, կարապ, կարճ, կիրճ, հանգրուան, ճառ, ճշմարիտ, մազ, մանաւանդ, մողէզ (մողէս), յանդուգն, յաշտել, նկատել, նկուղ, նշաւակ, շար, շէկ, պաճոյճ, պանդուխտ, պատան (պատեհ), պատանի, պատկառ, պատճառ, պատնէշ, պատում (պատմել), պատրուակ, պար, պարոյր, սոր-(ակալ) «ախոռապան», վախճան, վառել «այրել», վառել «զինել», վիրգ, վճիտ, տագնապ և այլն։

3) Հ. Աճառյանը «Հայերեն արմատական բառարանում» և «Հայոց լեզվի պատմության» մեջ հետևողական չէ իրանական և հայկական բառակազմական ձևերի սահմանազատման հարցում. ակնհայտորեն իրանական կազմությունները նա մասամբ բերում է որպես անկախ հայերեն բառեր, մասամբ դնում հայկական կազմությունների մեջ. այսպես, մի կողմից՝ դաշն

[18] Առաջարկվող զուգահեռները և վերականգնումները այստեղ չեն բերվում՝ տեղ խնայելու նպատակով. եթե թվարկվեն բոլոր առաջարկները՝ մեր առարկություններով հանդերձ, կունենանք մի առանձին ընդարձակ աշխատություն։

և **դաշնակ** տրվում են որպես անկախ հայերեն արմատական բառեր, այնինչ՝ նրանց հարաբերության քննությունը դիտվում է որպես իրանական փոխառության հարց, մյուս կողմից՝ ակնհայտ իրանական կազմություն ունեցող **վարդավիրայ** ու **ռահվիրայ** բառերը «Հայերեն արմատական բառարանում» բերվում են **վարս** ու **ռահ** բառերի տակ և հիշյալ բառացանկում չեն տրվում որպես առանձին իրանական բառեր։ Այս նույն ձևով էլ Հ. Աճառյանը չի ճշտել իրանական որոշ բաղադրիչների անկախ գործածականության և, հետևաբար, հայերեն ինքնուրույն բառային միավոր կամ հայկական բառակազմական մասնիկ դարձած լինելու հարցը. այսպես, **-դուխտ**-ը («դուստր, աղջիկ») գործածված է միայն որպես անձնանունների, **-շապ**-ը («քաղաք»), **-ոստ**-ը («գետ»)՝ միայն որպես տեղանունների երկրորդ բաղադրիչ, բայց դրանք դրված են որպես անկախ բառեր և՛ «Հայերեն արմատական բառարանում», և՛ «Հայոց լեզվի պատմության» համապատասխան բառացանկում։ Այդ նույն ձևով իբրև անկախ բառեր են դրված **ապ-** «ձի», **բագ-** «աստված» բաղադրիչները, որոնք հանդիպում են միայն բաղադրություններում։ Չի պարզված բայահիմք հանդիսացող անունների և համապատասխան բայաձևերի փոխհարաբերության հարցը. այսպես, բառացանկում **դէտ** և **դիտել** ձևերը բերված են միևնույն համարի տակ, մինչդեռ **բաշխ** և **բաշխել** ձևերը տրված են որպես առանձին բառեր, ընդ որում **բաշխ**-ի դեպքում ընդգծված և առանձնացված է նրա իմաստային մեկ՝ «հարկ» առումը։ Քննության չի առնվում իրանական ածանցների և եզրային բաղադրիչների՝ հայերենում անկախ գործածություն ստանալու և հայերեն ածանցների հետ բաղադրվելու հարցը, մինչդեռ այն հաճախ կարող է վճռական լինել իրանական փոխառությունների քանակը և հայերենի բառապաշարի մեջ յուրացվելու աստիճանը որոշելիս։ Այսպես, իրան. **համ-** նախամասնիկը և նրանից հայ. **-այն** մասնիկով կազմված **համայն** բառը, **վարտիք** և **անդրավարտիք** բառերը տրվում են առանձին համարներով, փաստորեն որպես անկախ իրանական փոխառություններ. **դաստաւար** բառը, որի դեպքում իրան. -var վերջածանցը բաղարկված է հայ. **-աւոր** ածանցի հետ (հ.-ե. *-bhora), դրվում է որպես անկախ իրանական փոխառություն, մինչդեռ **թագաւոր**-ը տրվում է **թագ** բառի տակ։ Այս կապակցությամբ հետաքրքրական է նշել, որ **-ւոր** բաղադրիչը իբրև այդպիսին չի դիտակցվել **տաղաւար** բառի մեջ և մնացել է իրանական ձևով։ Հավանաբար իրանական ծագում ունեցող **մանեւոր**-ը ավանդված է նաև **մանեւար** ձևով։ **Կաւշակար**-ի **-կար**-ը (-kar) վերաիմաստավորվել է **կարել** բայի արմատի բաղարկությամբ։

Հնարավոր թյուրիմացություններից խուսափելու համար մենք ընդունել ենք հետևյալ միասնական սկզբունքները. բարդ և նախածանցավոր իրանական փոխառությունները տրվում են անկախաբար, իսկ իրանական ածանցներով այն կազմությունները, որոնց բաղադրյալ հիմքերը հայերենում առանձին ավանդված են, բերվում են այդ հիմքերի տակ։ Նշենք, որ հայերենում իբրև անկախ ածանցներ գործածվող իրանական -pān (հայ. **-պան**), -pat (հայ. **-պետ**) և այլ բաղադրիչներով ձևերի դեպքում դրանց իրանական, թե հայկական կազմություններ լինելու հարցը դժվարանում է. այս դեպքում հարցը սովորաբար լուծվում է հօգուտ իրանականի, եթե համապատասխան իրանական ձևերն ավանդված են, թեև, իհարկե, սա չի ապահովում հնարավոր սխալներից։ Այն դեպքերում, երբ իրանական անածանց և ածանցավոր ձևերի հարաբերությունը չի դիտակցվում (բաղադրող և բաղադրյալ հիմքե-

որ իմաստով շատ հեռու են), դրանք բերվում են առանձին՝ գոյշ և գուշակ։

4) Ցանկից հանված են այն բառերը, որոնց իրանական ծագումը Հ. Աճառյանը «Հայերեն արմատական բառարանում» իրավամբ կասկածելի է համարում, բայց «Հայոց լեզվի պատմության» ցանկում տալիս է համապատասխան թվահամարներով. այսպես, կանեփ բառի իրանական ծագումը կամ իրանցիների (սկյութների) միջոցով տարածված լինելը հայտնի է, բայց անհայտ է հայերենի բուն աղբյուրը. կաղլար-ի (մի բույսի անուն) բուն աղբյուրի իրանական լինելը կասկածելի է (Հ. Հյուբշմանը փոխառություն է համարում հունարենից). սանդալ բառի աղբյուրը Հ. Աճառյանը «Հայերեն արմատական բառարանում» համարում է հունական կամ իրանական, բայց «Հայոց լեզվի պատմության» բառացանկում այն բերում է իրանական փոխառությունների մեջ. իրականում հայերեն բառի աղբյուրը հունարենն է (σάνδαλον, որը փոխառված է և պարսկերենի կողմից [հմմտ. Frisk, GEW, 2 675]։ Ընդհակառակն, կան մի շարք բառեր, որոնք հունական ծագում ունեն, բայց հայերենին են անցել իրանական (պարթևական) միջնորդությամբ, հետևաբար պետք է դրվեն վերջիններիս մեջ՝ լամպար (լամբար), կաղապար, սանտր և այլն [Meillet, 1920, 10—12]։

5) Բառացանկը կազմելիս ընդունված են նաև մի շարք մասնակի սկզբունքներ, որոնց մասին հարկ ենք համարում մի քանի խոսք ասել. ա) ի տարբերություն Հ. Աճառյանի՝ օ-ով բառերը տրվում են հին աւ գրությամբ և, հետևաբար, բերվում այբբենական այլ կարգով. դրանով իսկ ավելի պարզ է դառնում իրանական համապատասխան ձևերի հետ նրանց ունեցած հնչյունական կապը. բ) եթե հայերեն բառերի և նրա հետ համեմատվող իրանական բառերի իմաստները հիմնականում համընկնում են, իրանական բառերի իմաստները չեն տրվում. Հ. Աճառյանի ցանկում դրանք ընդհանրապես չեն տրվում. գ) ժամանակակից հայերենում չգործածվող և ժամանակակից իմաստից տարբեր իմաստ (իմաստներ) ունեցող բառերի մոտ չակերտների մեջ տրվում են նրանց հին իմաստները՝ Հ. Աճառյանի ցանկի համեմատությամբ ավելի հաճախակի և ավելի հանգամանորեն. դ) իրանական լեզուների համար կիրառվում են սովորական համառոտագրություններ (տե՛ս համառոտագրությունների ցանկը), ընդ որում միջին պարսկերենի մանիքեական և պազենդական տարբերակները գրվում են միայն ըստ անհրաժեշտության՝ պազ. և մնք. նշումներով. մանիքեական պարթևերենի ձևերը սովորաբար տրվում են առանց մնք. պրթ. նշման՝ պարզապես պրթ. ձևով. ե) անունների մոտ փակագծերի մեջ տրվում են նրանց հոլովման տիպերը՝ ի, ի—ա, ո, ու, ան—անց ձևով. զ) եթե հիմքերն անկախ գործածությամբ չեն հանդիպում, նրանց մոտ դրվում է գծիկ.

*ագահ* (ի-ա) < ā-garh- (?) (*ā-gr̥d-՝ հ.-ե. *gl̥dh-). հմմտ. ավ. gərəδa-, այլև վրաց. (< իրան.) anga(a)ri (?).

*ազատ* (ի-ա) «ազնվական. ազատ» < ā-zāt(a)-. հմմտ. ավ. āzāta-, մ. պ. āzāt, պ. āzād,

*ազգ* (ի-ա) < azg-. հմմտ. մ. պ. azg «ճյուղ» (?).

*ազդ* < azd(ā), հմմտ. հ. պ. azdā, պրթ. ʼzd (azd) «ծանոթ, հայտնի», մ. պ. azd «լուր, տեղեկություն. ազդ».

*ազն* (ին-ան) (ազնիւ) < ā-zn(a)-. հմմտ. ավ. ā-sna- «բնածին, ազնվական,

ազնիվ», մ. պ. (թուրֆ.) 'zn-, (գրք. պհլ.) āznāvar ( > վրաց. aznauri) «ազնվական».

ախոռ < ā-xvar. հմմտ. մ. պ. āxvar, պ. āxūr.

ախոռապետ < āxvar(a)pet.

ախորժ (ի) < *ā-xvarž-. հմմտ. ավ. hvarəz- «բարեգործ», մ. պ. xvārak «քաղցրություն, երանություն», օս. xvarz-, xorz- «լավ».

ախորժական (?) < *āxvaržakān.

ախտ (ի) < axtl-, հմմտ. ավ. axti- «տանջանք, ցավ, ախտ, հիվանդություն», մ. պ. axt «վատ, ագեղ. հիվանդ».

ախտաժէտ < *axtižat (?). տե՛ս -ժետ (-ժէտ, -ժատ).

ախտարք (-աց) «աստղ. բախտ. աստեղահմա» < axtar. հմմտ. մ. պ. axtar «համաստեղություն», (մնք.) 'xtr (axtar) «աստղ», պ. axtar «աստղ. բախտ».

ախտարակ < axtarak.

ակահ «անտեղյակ» < ākāh, հմմտ. մ. պ. ākāh, ākās (և ավ. ākas-, պրթ. 'gs).

ակամայ (ի) < a-kāmāy. հմմտ. պրթ. 'g'm'y (agāmāy), մ. պ. akāmak «անվճռական». տե՛ս կամ-ք, կամայ.

ահ (ի), արհ- «ահ, վախ, սարսափ» < ahr-. հմմտ. մնք. 'hr's'd «վախեցած, զարհուրած» (դերբ.), 'hr'y «վախեցնող, զարհուրեցնող»[19].

ահագին < *ahr(a)gīn.

արհական < *ahr(a)kān.

արհաւիր < *ahr(a)βīr (?[20]).

զ-արհուր < ahr-.

ահեակ (ի-ա) «ձախ» < *ā-hōyak (?). հմմտ. ավ. haoya- (փխվ. havya-), մ. պ. hōyak.

ահեկան (-ի) — հայկական տոմարի 9-րդ ամիս < *āhrakān (āhr- < āθr- «կրակ» ձևից՝ որպես «կրակային»).

ահոկ «հանցանք, վնաս. մեղապրանք» < āhōk. հմմտ. մ. պ. āhōk «հանցանք, մեղք. արատ. մեղապրանք», պ. āhō.

աճառ, աւճառ «(ձիու)սարք. հանդերձանք» < afčārr (*abi-čārna-). հմմտ. մ. պ. afčār «գործիք, սարք», պ. afzār, avzār «գործիք. համեմունք»)[21].

ամբաստան (ի-ա) «հայցվոր, գանգատավոր. հայց, գանգատ» < anbasān. հմմտ. մ. պ. anbasān «հակառակորդ, հայցվոր, գանգատավոր. առարկություն», (մնք.) 'mbs'n «հակառակորդ» [Периханян, 1973, 434].

ամբար, համբար (ի-ա) «մթերանոց. մթերք» < (h)ambār ((h)anbār). հմմտ. պրթ. 'mb'rg (ambārag) «ամբար», մ. պ. (h)anbār «հավաքում. պաշար», պ. anbār «ամբար, մթերանոց».

համբարապան < *hambār(a)pān. տե՛ս համբարակ.

ամբարիշտ. տե՛ս պարիշտ.

ամբարտաւան < *anbārtavān. հմմտ. պ. anbārda «լցված, լի. ամբարտավանությամբ լի, ամբարտավան».

---

19 Է. Բենվենիստը [Benveniste, 1945, 68—69] համեմատում է ավ. aθi-ի հետ:

20 Երկրորդ բաղադրիչը ծագում է հ.-ե. *bhōi-/bhi- «վախենալ» արմատից. հմմտ. խոտ.-սակ. birrai «վախենում եմ»:

21 Ըստ Դաուսեթի [BSOAS, 1970, 64 և հջ.] աճառ < հ. պ. aćarna- «կահույք. սարքավորում»:



33—455

ամբոխ <*anbōx. Հմմտ. մ. պ. hanbōh, պ. anbóh (x/h հարաբերության համար հմմտ. մ. իրան. tōxm/tōhm>հայ. տոհմ).
ամիճ (ո) «մսեղին կերակուր» < *amič. Հմմտ. մ. պ. amič «սորփ մսով կերակուր. բանջարեղեն».
անաշխարհիկ (անաշահիկ) «պանդուխտ, օտարական» <*anaxšahrīk (պրթ. կամ մ. մնք.). Հմմտ. մ. պ. anšahrīk «աքսորուկ»(< «օտարական»).
անապակ (ի-ա) <*anāpak. Հմմտ. ավ. anāpa- «անջուր» (իմա՛ «անխառն (գինի)»), պ. nāb «զուտ, անխառն».
անապատ (ի-ա) <an-āpāt. Հմմտ. մ. պ. an-āpāt. տե՛ս ապատ.
անարի (ո-ա) «վիթխարի, անճոռնի» < *an-arī. Հմմտ. ավ. anairya-, մ. պ. anēr «ոչ արի».
անգամ <(h)an-gām. Հմմտ. մ. պ. hangām «ժամանակ, ժամանակամիջոց. տարվա եղանակ», պ. (h)angām «ժամանակ, ժամանակամիջոց». տե՛ս հանգամանք.
անդաճել (անդիճել, անտիճել) «մտածել, խորհրդածել» <andāč- (*ham-tāč-). Հմմտ. մ. պ. andāčak «ապացույց. օրինակ», (մնք.) hnd'č-, այլև 'nd'č-, 'n'dxtv «չափել, նախատեսել. դատել», պ. andāča[22].
անդամ (ո, -ւք) <an-dām (han-+dā-(<*dhā-)). Հմմտ. ավ. handāman-, պրթ. hnd'm (handām), մ. պ., պ. andām.
անդարձ (ի) «կտակ, կտակագիր» < *andarj (ham-darz/j). Հմմտ. պրթ. 'ndrz (andarz) «պատգամ, պատվիրան», մ. պ. (h)andarz «կտակ». (հ)անդերձապետ <(h)andarj(a)pet. Հմմտ. մ. պ. andarzpat.
անդերձապետ. տե՛ս անդարձ.
անդոհ «մտատանջություն» <andōh. Հմմտ. մ. պ., պ. andōh.
անոյշ (ի) <anōš. Հմմտ. պրթ. 'nwšyyn «անուշ, քաղցր», մ. պ. anōš «նեկտար, անմահության ըմպելիք», պ. nōš «կենաց ջուր. անուշահամ բան. քաղցր ըմպելիք».
անուշակ «անմահական» < anōšak. Հմմտ. պրթ. 'nwšg «անմահական, հավերժական».
աշակերտ (ի-ա) <ašākert. Հմմտ. մ. պ. (մնք.) hš'gyrd (hašāgerd), պ. šāgird.
աշխատ «հոգնություն, չարչարանք. աշխատանք» <*axšāt. Հմմտ. պրթ. 'xš'dyy, 'xš'dyft, մ. պ. (մնք.) axšād «նեղություն, չարչարանք».
աշխար (-ել) «լաց» <*axšaδ. Հմմտ. պրթ. 'xšd (axšād), 'bxš'h, մ. պ. 'axš'd, 'bxš'y, պ. baxšāy «ներել» (*apa-xšad-՝ xšad- «խղճալ» արմատից (?) [Benveniste, 1964b, 7][23]. տե՛ս ապաշխարել.
աշխարաւանդ «թագի կապ» <?+βand «կապ». տե՛ս բանդ.
աշխարհ (ի-ա) <(a)xšahr(a)-. Հմմտ. ավ. xšaθra-, հ. պ. xšaça- «թագավորություն, իշխանություն», մ. պ. šahr «երկիր. նահանգ. քաղաք», պ. šahr «քաղաք».

---

22 Հ. Աճառյանը [ՀԱԲ, I², 187, 189] սրանց միացնում է նաև պ. andīša «խորհուրդ, մտածում, մտատանջություն» բառը (>հայ. անդիշայ «մտածմունք»), որը, սակայն, ծագումով տարբեր է:

23 Պրթ. բառը մեր համեմատն է: Սրանց հետ ստուգաբանորեն չեն կապված սողդ. 'γš'ywn-, յաղն. xšī- «լալ» բայերը, որոնք հայ. բառին իմաստով ավելի մոտ են:

աշխէտ «կարմիր, հրագույն» < *(a)xšēt. Համմտ. ավ. xsaēta- «փայլուն, լուսափայլ», մ. պ. šēt «փայլ. կարմիր», պ. šēd «արև».

աշտեայ (ի) < aršti-. Համմտ. ավ., հ. պ. aršti- մ. պ. aršt.

աշտուճ, աստուճ (ո) «չոր, ցամաք» («աշտուճ հայ» «ցամաք հաց») <? *astūč (?). Համմտ. խոտ.-սակ. astaucä «ցամաք»(?)

ապականել «անհետացնել, ջնջել, վերացնել, փչացնել, կեղտոտել» < apa-kan-. Համմտ. մ. պ. apakan- «վեր պցել», apakanīšnīh «ապականում, փչացում» [Bailey, 1956, 105. Периханян, 1973, 435—436]. տե՛ս վկանդել.

ապակի (ո-ա) (ապիկի) < *āpakī (*āpikī). Համմտ. մ. պ., սոգդ. āpakēnak, սոգդ. āpakēč, պ. ābgīna «ապակի. շիշ».

ապահար(ա)զան < apa-harazan(a)-. Համմտ. ավ. apaharəzana- «արձակում» (harəz- «արձակել»). տե՛ս արձակ.

ապաշաւ (ի, ի-ա) «զղջում. խնայելը, խղճալը» < apa-šav. Համմտ. ավ. apašav- «ետ գնալ. դառնալ, հեռանալ» («արածից ետ գնալ, զղջալ»).

ապաշխարել «զղջալ. մեղքը լալ» < apaxšaδ-. Համմտ. պրթ. 'bxš'h, մ. պ. 'pxš'd, 'bxš'y, պ. baxšāy «ներել» [Benveniste, 1964, 7][24]. տե՛ս աշխար.

ապ(ա)սպարել «հանձնել» < apa-spār- (api-spār-). Համմտ. մ. պ. apispār, պրթ. 'bysp'r.

ապ(ա)ստամբ (ի-ա) < apa-stamb. Համմտ. մ. պ. apa- «ապա» և հ. պ. stamba- «ապստամբել», մ. պ. stambak «անզուսպ, բռնակալ», պ. sitamba «զոռ. խռովարար». տե՛ս ստամբակ.

ապաստան (ի, ի-ա) < apa-stān. Համմտ. մ. պ apastān.

ապատ «շեն, շեն տեղ, բնակելի տեղ» < āpāt. Համմտ. պրթ. 'b'd (ābād), մ. պ. āpāt(ān), պ. ābād(ān).

ապարան (ի, ուշ՝ ի-ա) < apaδān(a)-. Համմտ. հ. պ. apadāna- «պալատ ապարանք. սյունազարդ դահլիճ», պրթ. 'pdn «պալատ».

ապարանջան < *aparanǰan. Համմտ. պ. abranǰan.

ապարասան «անհնազանդ, ըմբոստ» < *apārasan. Համմտ. մ. պ. apā-, apē-, պ. bē- «ապա-, ան-» և մ. պ., պ. rasan «երասան» (հայ. երասան, առասան).

ապարթանել «հանդգնել, խրոխտալ» < apartan-. Համմտ. մ. պ. apartanīh «հպարտություն, ամբարտավանություն», պ. bartan «հպարտ, ամբարտավան».

ապաւանդակ «վրանի պարան» < *apa-vandak. (apa- և vand- < հ.-ե. *u̯endh- «ոլորել, հյուսել»[25]). տե՛ս վանդակ.

---

[24] Հ. Աճառյանը [ՀԱԲ, 1², 228] բերում է Յ. Մյուլլերի ստուգաբանությունը՝ մ. պ. apāxš, avāxš «բարկացած, զղջած, ապաշխարած»։

[25] Վ. Բելարդին [Belardi, 1978, 10] վերականգնում է իրան. *upa-bandaka- (>apa-vandaka) նախաձև, որ ավելի քիչ հավանական է։

ապաւէն < *apa-vēn. հմմտ. ավ. apa- (հայ. ապա-) և vaēna- «նայել».
ապենիազ «անկարօտ» < apēniyāz. հմմտ. մ. պ. apēniyāz, պ. bēniyāz (niyaz «կարիք»), տե՛ս նիազ.
ապերատ «անիրավ, անարդար» < apēdāt. հմմտ. մ. պ. apōdāt, պ. bēdād.
ա(պ)շոպ «շփոթութիւն, խառնակութիւն, կռիւ» < *ä(p)-šōp, հմմտ. մ. պ. äšōp, պրթ. պ. äšōb.
ապուխտ < *a-puxt «ան-եփ». հմմտ. մ. պ. a- «ան»- և puxt «եփած».
ապուշ < *ap(ē)-uš (?). հմմտ. պրթ. 'by'wš «անզգա, անուշադիր», մ. պ. (մնք.) abīhōš, պ. bē-hōš «ապուշ». տե՛ս ուշ.
ապուռ «աւար, կողոպուտ» < apurr. հմմտ. մ. պ. ap(p)urr «կողոպուտ», ap(p)urtan, ap(p)ar-, (մնք.) 'pr «կողոպտել».
ապրդում «ձիու թամբի փոկ» < *apar-dum (apar- «վերը» + dum «պոչ»)(?) հմմտ. պ. pärdum, päldum «ձիու թամբի փոկ».
առասան «թոկ» < rasan. հմմտ. մ. պ., պ. rasan, տե՛ս երասան, ապերասան.
առասանակ < rasanak.
առատ (ի-ա) «առատաձեռն, անարատ, պայծառ. առատ, լեցուն» < rāt(a)-. հմմտ. ավ. rātā- «շնորհ», մ. պ. rāt «վեհանձն, բարեբարո», պ. rād «առատաձեռն, կորովի».
ասպազէն (ի-ա) «ձիասարք» < *asp(a)-zēn. հմմտ. ավ. aspa-, մեդ. *aspa «ձի» և ավ. zaēna-, մ. պ. zēn «զենք» (հայ. զէն).
ասպաճարակական «հովվական» < asp(a)čarakakān. հմմտ. ավ. aspa-, մեդ. *aspa, մ. պ. asp «ձի» և մ. պ. čarak (հայ. ճարակ) + -akān (եթե հայերեն կազմություն չէ՝ *ասպաճարակ-ից).
ասպաստան (ի-ա) «ախոռ» < aspastān (asp(a)- «ձի» + -stān > հայ.-ստան). հմմտ. մ. պ. aspastān, պ. asbistān.
ասպաստանիկ «ախոռում պահված, լավ խնամված» < aspastanik.
ասպատակ (ի-ա) äspa-tak(a)-. հմմտ. մ. պ. aspatāk (ավ. aspa-, մեդ. *aspa, մ. պ. asp «ձի» և ավ. taka- «վազք», մ. պ. tak «վազք, արշավ» պ. takīdan «արշավել»).
ասպար «վահան» < aspār. հմմտ. հ. պ. spāra- (Vāyaspāra-), պրթ. 'spr (ispar), մ. պ. spar, (մնք.) ispar, պ. sipar.
ասպարեզ (ի-ա), ասպարէս < asparēz, asparēs. հմմտ. մ. պ. asp(a)rēs, asprēz, aspras.
ասպետ (ի-ա) «ձիավոր ազնվական» < 'aspet (*aspa-pati-). հմմտ. հ. հնդկ. aśva-pati- «ձիապետ, ձիատեր».
ասպ(ա)նջական (ի) «հյուրընկալ» < aspanjakān. ašpinjakān. հմմտ. հ. պ. ašpinja- «հյուրասիրություն, հյուրընկալություն», մ. պ. aspinj-, aspinj- «օթևան, բնակարան», պ. sipanj «հյուր», սոգդ. (< իրան.) 'šp(y)zkn' (aspazzakānā) «maiordomus».
ատակ «կարող, ձեռնհաս» < *at(t)ak (*at(t)āvaka- < *ati-tāvaka-)[26]. հմմտ. մ. պ. attūk «ընդունակ, կարող», attān «վճարունակ».
ատրագոյն «հրագույն» < *āturgōn (?) (թե՞ հայկական կազմություն՝ ատր- «կրակ» արմատից՝ առանձին փոխառված գույն բառով. հմմտ. ուշ ատրաշէկ, ատրորակ).

---

[26] հմմտ. ati-tavāna- > attān

ատրագունակ < *ātur(a)gūnak(?)

ատրուշան < *āturōšan (*ātṛ-aušana- «կրակարան». *atṛ- «կրակ» (տե՛ս ատրագոյն) և *auš- < հ.-ե. *eus- «այրել»).

արագ, երագ < *rag (հ.-ե. *leguh-). Համմտ. ավ. raγu-, հդ. ravī-, պրթ. rg.

արգ- «հարգ, արժեք արժանիք», յ-արգ, գ-արգ (անարգ «ստոր») < arg- (հ.-ե. *alguh-). Համմտ. ավ. arəg- «արժել», սողդ. 'rγ (arγ), օս., arγ «գին», պրթ. 'rg'w (argāv) «արժանավոր», (մնք.) 'nrg'wyft «անարգանք». տե՛ս արժ-.

արժ- (արժ-էք, արժ-ել) < arž-. Համմտ. ավ. arəǰa «արժեք, արժանիք, արժանի», մ. պ. arǰ, arž, պ. arz «գին», արժեք». Համմտ. արգ-.

արժան (ի) < aržān. Համմտ. պրթ. 'rj'n (aržān), մ. պ. (մնք.) arzān.

արժանի < *aržānī (թե՞ հայկ. կազմություն).

արկ-անել < (h)ark-. Համմտ. ավ. harək- «արձակել, գցել».

արձակ (ի-ա) (յարձակիլ) *(h)arǰak/(h)arzak (*hṛǰ/z-). Համմտ. ավ. harəz-, պրթ. hyrz «արձակել». տե՛ս ապահարզան.

արմաւ (ո, ու) < armāv. Համմտ. մ. պ. armāv, պ. xurmā.

արշա- «սպիտակ (?), լուսափայլ (?)» (արշալուրջ-ք բառի մեջ, որ ժողովրդական ստուգաբանությամբ դարձել է արշալոյս) < aruša-. Համմտ. հ. պ. aruša-, ավ. auruša- «սպիտակ».

արշաւ-ել < aδ-šav- (*ati-šyav-). Համմտ. իրան. ati- նախածանց և ավ. š(v)av-, հ. պ. šiyav-, մ. պ. šav- «գնալ, ուղևորվել, շարժվել».

արոյր (-ի) < rōδ. Համմտ. ավ. raoδita «կարմիր, կարմրավուն», մ. պ. rōδ, rōi, պ. rōy «անագ. պղինձ. արոյր».

արուեստ (ի) < aruvast (*arvat-ta-). Համմտ. հ. պ. aruvasta- «ամրություն, առույգություն, պնդակազմություն», պրթ. 'rwst «առաքինություն», այլև արամ. (< իրան.) 'rwst «ճարտարություն» (բաղարկություն հայ. -եստ-ով հիմքերի հե՞տ).

արուճանակ «նկարի ուրվագիծ» < arucānak (?). Համմտ. պ. arčang, artang «նկարների հավաքածու».

արուսեակ «լուսաստղ, վեներա (մոլորակ)» < arusak (?) (arus- «սպիտակ, լուսափայլ» արմատից). Համմտ. ավ. auruša-, հ. պ. aruša-, մ. պ. arūs «սպիտակ».

արջն «սև, մութ» (նաև արջ-՝ արջ-ասպ բառում) < *arǰ- (հ.-ե. *ergu̯-/orgu̯- «մութ»). Համմտ. չեչ.-ինգուշ. (<իրան.), Iаьржа, բացբ. Iаьрчlи «սև».

աւազան (ի-ա) < *āvazān. Համմտ. մ. պ. *əvzan > ասոր. avzānā «մկրտության ավազան», սողդ. ''aw'zh (āwaza) «լիճ».

աւան (ի-ա) < āvān (*ā-vahana-). Համմտ. հ. պ. āvahana- «բնակավայր» պրթ. āvān.

աւար (ի-ա, ո) < āvār. Համմտ. պրթ. 'w'r, մ. պ. āvār, բելուջ. āvār.

աւարտ (-ի) < āvart-. Համմտ. պրթ. (մնք.) an-āvard «անվերջ, անավարտ».

աւգուտ (ի) < aβgūt (*abi-gāva- բայահիմքից). Համմտ. հ. պ. abigāva- (> արամ. 'bgw), պրթ. 'bg'w «աճ, հավելում», հ. պ. abiǰav-, մ. պ. aβzūdan, պ. afzūdan «ավելացնել».

աւգտակար < *aβgūt(a)kār.

աւեր (-ի) < avēr. հմմտ. պրթ. 'wyrn, մ. պ. (պազ.) avīrān, պ. vērān.
աւերակ < *averak.
աւշարակ < afšarak. հմմտ. պ. afšara «պարարահյութ, քամուք».
աւշինդր < *afšind-. հմմտ. ուշ հայ. ախոինժ (ախոինդ) < հուն. կամ արաբ.
աւշնան «օճառախոտ» < afšnān. հմմտ. պ. ušnān.
աւտար (ի-ա) < *avtar (*avitara-). հմմտ. ավ. aiwitara-.
աւրէն (ի-ա) < aβδēn. հմմտ. մ. պ. aδvēn(ak).
աւրինակ < aβδēnak.
աւրհն(-ել) < ā-frīn-. հմմտ. ավ. āfri-vana-, պրթ. 'fryn (afrīn-) «օրհնել», մ. պ., պ. āfrīn «օրհնանք».
բագ «բաժին. ժառանգություն» < bag. հմմտ. ավ. baga-, baγa-, մ. պ. (պազ.) bag «բաժին, մաս».
բագին (ի-ա) «զոհասեղան» < *bagīn? հմմտ. ավ. baga-, baγa-, հ. պ. baga-, մ. պ. bag «աստված».
բազէ (ի) < bāz-. հմմտ. մ. պ., պ. bāz.
բազմակ «ճրագ» < bazmak. հմմտ. պրթ. bzmg և սոր. (< իրան.) mazmak «ճրագ. աշտանակ».
բազմ(-իլ) < bazm-. հմմտ. պ., ափղ. bazm «հացկերույթ, խնջույք».
բազմական < *bazmakān.
բազուկ (ի-ա) «թև» < bāzūk. հմմտ. ավ. bāzu-. մ. պ. bāzūk.
բազում (ի-ա) < *bazum (հ.-ե. *bhn̥g'hu-). հմմտ. խոտ.-սակ. baysga «հաստ. շատ, բազում», բելուջ. baz «հաստ», bāz «շատ, բազում».
բաժ (ի) «բաժին, մաս. տուրք, հարկ» < bāž. հմմտ. մ. պ. bāž, այլև հ. պ. bāǰi- «տուրք». տե՛ս բագ «բաժին», բաժակ.
բաժան (-ել) < bāžān.
բաժին < bāžīn.
բաժակ (ի-ա) < bāžāk. հմմտ. ավ. *baǰina-, արամ. (< իրան.) bzk. տե՛ս բագ «բաժին», բաժ.
բախտ (ի) < baxt (*bhak-to- < *bhag-to-). հմմտ. ավ. baxta- «բաժին, վիճակ, բախտ», մ. պ., պ. baxt. տե՛ս բագ, բաժ, բաշխ.
բահ(ու) < *ba(r)h (barϑra-). հմմտ. պ. bēl, քրդ. bēr «բահ, թի», այլև վրաց. (< իրան.) bari «բահ».
բամբիշն (-ան) «թագուհի» < bānbišn. հմմտ. մ. պ. bānbišn.
բանուկան «պալատական տիկիններ» < bānūkān. հմմտ. մ. պ. bānūkān «տիկիններ» (bānūk «տիկին» բառի հոգնակին).
բանդ (բանտ) (ի-ա) < band. հմմտ. ավ. banda-, մ. պ., պ. band «կապ, կապանք, շղթա», սոգդ. βand «բանտ».
բանտական < *band(a)kan (?).
բանտապան < *band(a)pān (?).
բանտապետ < *band(a)pet (?).
բաշխ (ի) «ողորմություն. հարկ, տուրք» < baxš (հ.-ե. *bak-s- < *bag-s-). հմմտ. ավ., մ. պ. baxš-, սոգդ. βγš- «բաշխել, բաժին հանել», պ. baxš «բաժին, մաս». տես. բագ, բաժ, բախտ.
բաշխիշ «պարգև» < baxšišn.
բաստարան «բանտ» < *bastaδān(a)- (ձև° bast + հայ. -արան). հմմտ. ավ.

basta- «կապված» (banda- «կապել» բայից), մ. պ. bastan «կապել, բանտարկել».

բար- «դուռ» (բարաւոր «դռան սեմ») < *bar-. Համմտ. պրթ. br (ավ. dvar-, մ. պ. dar)[27].

բարակ «նուրբ» bārak, համմտ. պ. bārīk, բելուջ. bāraγ.

բարապան (ի-ա) «դռնապան» < bar-pān (?) Համմտ. պրթ. br (bar = ավ. dvar-, մ. պ. dar «դուռ») և -pān (հայ.-պան) ածանց. տե՛ս դարապան.

բարապետ «դռնապան» < *bar-pet (?). Համմտ. պրթ. br (bar = ավ. dvar-, մ. պ. dar) «դուռ» և -pet ? (հայ. պետ). տե՛ս դարապետ.

բարգաւաճ (ի) «պերճ, փառավոր, անվանի, ծաղկած, զարգացած» < *bar-gavač(i)-. Համմտ. սոգդ. βrγ'wcy «երջանիկ, ունևոր, բարգավաճ».

բարձ (ի) < barj/barz. Համմտ. ավ. barəziš-, օս. baz, պ. bāliš.

բարսմունք (հգն. սեռ. -մանց) «ոստեր, որ կրակապաշտները բռնում են կրակի առջև» < *barsman-(?). Համմտ. ավ. barəsman-, մ. պ. (պազ.) barsum, պ. barsam[28].

բաւ «ծայր, սահման, ավարտ» < bav-. Համմտ. ավ. bav- «դառնալ», baoyo «ավելի երկար», սոգդ. β'w «բավական», β'wwny «ավարտ». տե՛ս բաւանդակ (բովանդակ).

բաւակ < *bavak.

բաւական < *bavakān.

բաւանդակ (բովանդակ) < bavandak. Համմտ. մ. պ, bavandak, bovandak. տե՛ս բաւ.

բդե(ա)շխ (ի-ա) «կուսակալ» < *bidixš(a)- (< *pitiaxša- < *pati-xšāh) (?). Համմտ. մ. պ. bitaxš «կուսակալ, փոխարքա», այլև արամ. (< պրթ.) bṭḫš-

բժիշկ (ի-ա) < bižišk. Համմտ. մ. պ. bižišk, bijišk, bisišk, (մնք.) bzišk, պ. bizišk, bijišk.

բիժ (ո) «աչքի ճիպռ» < bīž. Համմտ. պ. bij.

բիւր (ու) «տասը հազար. շատ» < bēvar (*baivar-). Համմտ. ավ. baēvar-, մ. պ. bēvar, (թուրֆ.) bywr, պ. bēvar, bīvar, օս. birä, berä, bewrä[29].

բնակ (ի-ա) «բնակարան, բնակավայր» < bunak. Համմտ. մ. պ. bunak «ճամբար, բնակավայր», պ. buna «տուն, բնակարան».

բոյժ (ի-ա) «դեղ» (բուժ-ել) < bōž (հ.-ե. *bheug(h)- «հեռացնել, մաքրել, փրկել»). Համմտ. ավ. baog- (bunja-), պրթ. bwj (bōž). փրկել», մ. պ. (պազ.) bōžišn «փրկություն».

բոյր (բուրել) < *bōδ. Համմտ. ավ. baoiδi-, պրթ. bwd, սոգդ. bwδ, մ. պ. bōδ, պ. bōy.

---

27 Բար-ը կարելի է առանձնացնել, եթե բարաւոր-ը հայ. կազմություն է բար-ից և ոչ թե *bar-var ձևի հայերեն փոխառությունը։

28 Ըստ Յ. Մարկվարտի [«Հուշարձան», 282]՝ հին փոխառություն է (հ. պ. *barsmanah-)։

29 Վ. Ի. Աբաևը [ИЭСОЯ, I, 262] հայ բիւր-ը համարում է ալանական փոխառություն (համմտ. իրանական biwrä), բայց նկատի չի առնում հայերենի միջին փուլերի հնչյունափոխության երևույթները մ. թ. II դ. վերջին կամ III դ. սկզբին հայերենին ամենից ավելի մոտ է սակ. byurru-ն (-u-ով հիմք)։

բուրաստան «պարտեզ» < bōδastān. համմտ. պրթ. bwdyst'n, սողդ. bwδstn.

բուրվառ < bōδ-var (?). համմտ. սողդ. βwδβrn.

(ըմ-) բոշխն-ել «վայելել» < bauxšna- (*baug- < հ.-ե. *bheug- «վայելել»). համմտ. ավ. baoxšna- «վայելք».

բոր- (բոր-ոտ) < *bor-. համմտ. սողդ. βr'wk' (βārūkə) «բորոտ».

բորակ (ի-ա) < *bōrak. համմտ. պ. bōra.

բուն (ի-ա) «ծառի բուն. հիմք. ընիկ» < bun(a)-. համմտ. ավ. bŭna- «հիմք. հատակ», պրթ. bwn, մ. պ., bun «հիմք».

բնակ «բուն, հարազատ» < *bunak.

բնիկ < *bunīk?

բրինձ < birinj (մեջ. ?). համմտ. պ. birinǰ.

գահ (ու) < *gāh(u)-. համմտ. ավ. gātu- «տեղ. աթոռ», հ. պ. gāθu-, պրթ. g'h (gāh), մ. պ. (մնք.), պ. gāh «գահ».

գահաւոր (ախաղոս) < *gāh-var (?).

գահաւոր(ակ) «պատգարակ, գահ» < *gāh-vār(-ak) (?)

գահնամակ «գահացուցակ» < gāhnāmak. համմտ. հայ. (< իրան.) գահ և նամակ.

գանձ (ու, ի) < *ganj. համմտ. հ. պ. *ganza-, մ. պ. ganǰ.

գանձանակ (ի-ա) «գանձարան» < ganjānak. համմտ. պ. ganǰēna.

գանձաւոր (ի-ա) «գանձապահ» < ganj(a)var(a)-. համմտ. պ. ganǰvar.

գանձակ «փոր, ընդերք» < *ganjak, համմտ. պ. ganǰa «պարկ. քսակ»(?).

-գար (ուշ՝ նաև գար-) «ցավ. հիվանդություն» (աչագար, գլխագար, լեզուագար, խելագար) < *gar. համմտ. ավ. garənu- «քոս», խոտ.-սակ. ggārīva «դժբախտություն», մ. պ. garr, պ. gar «քոս» (համմտ. և հ. հնդկ. gara- «մի հիվանդություն»).

գաւազան (ի-ա) «անասուն քշելու փայտ. ծեծի փայտ. գավազան» < *gavāzan(a)-, համմտ. ավ. gavāza-, պ. gavāza, gāvazana «անասուն քշելու փայտ».

գեր «ողբ, լաց, կոծ» < *gar. համմտ. սողդ. zγ'yr (-γēr) (*uz-garaya-), օս. gär, γär «ճիչ, աղմուկ».

գերդաստան «ծառաների և գերիների ամբողջություն. ընտանիք, կալվածք» < *gard(a)stān(a)-[30]. համմտ. հ. պ. *garda- «ծառա, ստրուկ» (որպես «տնային, տանը պատկանող, οἰκέτης») և հ. պ. -stāna- «տեղ» (հայ. -ստան).

գերդաստական «ծառա» < *gard(a)stakān (?).

գերդաստանիկ «ծառա» < *gard(a)stānīk.

գէս (ո) «մազ» < gēs. համմտ. մ. պ., պ. gēs.

գիսակ < *gēsak.

գիսաւոր < gēs(a)var. համմտ. մ. պ. gēsvar.

գմբեթ (ի-ա) < gumbaθ. համմտ. մ. պ. gumbaθ, gmbat (< ասոր. qubbəθā).

գոմէշ (ո, ի-ա) < gōmēš. համմտ. մ. պ., պ. gāvmēš, պ. gāmuš.

գոյն (ի, ո) < gōn (gūn?). համմտ. ավ. gaona- «կերպ, եղանակ, գույն», մ. պ. gōn, պ. gūn «գույն».

---

30 Հ. Աճառյանը [ՀԱԲ, 1², 541] համարում է բնիկ հնդեվրոպական՝ *gherdh- արմատից, բայց *ghe->գե- անցումը հայերենի համար սովորական չէ։

*գունակ* «*նման, պես*» < *gōnak. *հմմտ. պրթ.* gwng, *մ. պ.* gūnak, gōnak.

*գոյշ (գ-գոյշ)* < gōš. *հմմտ. ավ.* gaoš- «*լսել, ականջ դնել*», gaoša-, *մ. պ., պ.* gōš- «*ականջ*».

*գուշակ* «*մատնիչ. ազդարար. (ուշ) գուշակող*» < gōšak. *հմմտ. մ. պ.* gōšak «*լրտես*».

*գոնջ* «*հաշմանդամ*» < *gōnǰ (?). *հմմտ. պ.* gunǰ «*սապատավոր*».

*գովել* < gōβ. *հմմտ. հ. պ.* gaub-, *մ. պ.* gōβ, gultan «*ասել*», *սոգդ.* γwβ- «*գովել*».

*գո(ր)շապահանգ* «*ականջօղ*» < *gōš(a)-pahang-. *հմմտ. ավ.* gaoša-, *հ. պ.* gauša-, *մ. պ.* gōš «*ականջ*» *և* pa-hang (*հայ. պահանգ*).

*գումար* < gumār (*vi-mār-?). *հմմտ. մ. պ.* gumār- «*նշանակել*»[31].

*գումարտակ* < gumārtak.

*գունդ (ի, ի-ա)* «*գունդ. գնդաձև իր (անիվ, գլուխ և այլն)*» < gund. *հմմտ. ավ.* gunda-, *մ. պ.* gund «*խմորի գունդ*».

*գնդակ* < gundak.

*գունդ* «*խումբ. զորախումբ*» < gund. *հմմտ. մ. պ.* gund «*զորաբանակ, զորախումբ, գունդ*».

*գուշակ. տե՛ս գոյշ.*

*գուպար* «*ըմբշամարտ, կռիվ*» < *gu-par (*vi-pära-՝ *հ.-ե.* *per- «*կռվել*» *արմատից*). *հմմտ. ավ.* pərət- «*մարտ*», *խոտ.-սակ.* purr (*pr̥-nu-), «*հաղթել, պարտության մատնել*». *տե՛ս պարտել.*

*գրապան (ի-ա)* «*հագուստի վզամաս. եզր. ուսանոց. թիկնոց. գրպան (ուշ)*» < *gir(a)pān (?) (< *griva-pāna-). *հմմտ. մ. պ.* grivpān, *պ.* girēban, girēvān «*հագուստի վզամաս, փողկապ*», giribān «*գրպան*».

*գրապանակ* «*հմայակ, կախարդական գիր*» < *gir(a)pānak (?).

*գրաւ (ի-ա) (գրաւ-ել)* < graβ. *հմմտ. մ. պ.* graβ, *պ.* girav.

*գրաւական* < graβakān. *հմմտ. մ. պ.* gravakān.

*գրիւ (ի-ա) (հացահատիկի մի չափ)* < grīv. *հմմտ. պրթ.* gryw.

*գրուան (ի-ա) (մեկ կամ մի քանի գրիվ)* < grīvān (*հգն.*).

*գրոհ (ի)* «*ժողովուրդ, ամբոխ, բազմություն. բանակ*» < grōh. *հմմտ. մ. պ.* grōh, *պ.* gurōh.

*դագ* «*նենգություն, դառ. թակարդ. (ուշ) խաբեական*» < *dag. *հմմտ. պ.* daγā «*կեղծիք, խաբեություն*».

*դաժան (ի-ա)* < dažan (*հ.-ե.* *dhegʷh-). *հմմտ. պ.* dižan, dažan, dužan «*դաժան. տխուր*», *այլև սոգդ.* δ(')n «*տաքություն*». *տե՛ս դժնդակ, դժնեայ.*

*դահամն (-ունք, -անց)* «*ընծա, նվեր (մահացածաց ուտելեղենով)*» < dāh(r)am (?). *հմմտ. ավ.* dāθrəm «*ընծա, նվեր*».

*դահանակ* «*հասպիս (մի տեսակ ազնիվ քար)*» < *dahanak. *հմմտ. պ.* dah(a)na.

---

31 *Հ. Աճառյանը [ՀԱԲ, 1², 591] իրան. բառը հնարավոր է համարում բխեցնել ասուր.* gamaru «*լրացնել, վերջացնել*», gumūru «*ամբողջացնել*» *ձևերից, որ անհավանական է։*

դահեկան-ի) (մի ոսկյա դրամ) < *dahakān ? Համմտ. պ. dahgānī- մի հին ոսկե դրամ (dah «տաս» բառից՝ «տասանոց»)[32].

դահիճ (ի-ա) < *dahīč. Համմտ. ասոր. (< իրան.) daxšā (< *dəxeš ?).

դահլիճ < *dahlīč. Համմտ. պ. dahlīz «նախասրահ», աֆղ. (պ.) dahlīz, dahlīj «պատշգամ, սեմ».

դայեակ < dāyak (հ.-ե. *dhēi-). Համմտ. մ. պ. *dayak, պ. daya.

դանգ, դանկ (ի-ա) (մի կշիռ և դրամ) < dang. Համմտ. մ. պ., պ. dang.

դանդանաւանդ (ի-ա) «սանձ» < *dandān(a)βand(?). Համմտ. մ. պ., պ. dandan «ատամ» և մ. պ., պ. band «կապ».

դաշն (ին-ան) < *dašn. Համմտ. մ. պ. dašn.

դաշնակ «եղանակ, կերպ» < dašnak.

դաշտ (ի-ա) < dašt. Համմտ. մ. պ., պ. dašt, սողդ. ʿγšt (ʿaxšt).

դաշտան (ի, ի-ա) < daštan. Համմտ. մ. պ. daštān (ավ. daxšta- «նշան, դաշտան, ամսական»).

դաշտանիկ «դաշտան ունեցող» < daštānik.

դաս (ու) < das. Համմտ. խոտ.-սակ. dasa «բաժին, դաս, կարգ»[33].

դաստակ «դաստակ. սրի կոթ» < dastak. Համմտ. մ. պ. dastak, պ. dasta «կոթ, բռնատեղ».

դաստակերտ (ի, ի-ա) «ագարակ, ունեցվածք, շինվածք» < dasta-kart(a)-. Համմտ. հ. պ. *dasta-karta- «շինվածք, կառուցվածք», մ. պ. dastkart «դաստակերտ»[34].

դաստապան (-ի) «սրի կոթ» < *dastapan. Համմտ. մ. պ. dastpānak «կրակի ունելի», պ. dastbāna «ձեռնոց».

դաստառակ «ջնջոց. սրբիչ» < *dastārak. Համմտ. պ. dastar «թաշկինակ».

դաստիարակ (ի-ա) < *dastyārak. Համմտ. պ. dastyār «օգնական».

դատ (ի) < dāt. Համմտ. հ. պ. dāta-, մ. պ. dāt «օրենք, արդարադատություն».

դատախազ (ի-ա) < dāt(a)-xvāz.-xvāz-ի համար Համմտ. մ. պ. xvāstan (hvāz-), սողդ. γwz- «ուզել, խնդրել, պահանջել». Տե՛ս և մատախազ[35]

դատաստան < datastān. Համմտ. մ. պ. dātastān.

դատաւոր < dāt(a)vār (?).

դարան (ի-ա) «պահարան, պահատեղ, թաքստոց» < dāran(a)- (dār- «պահել»). Համմտ. ավ. darəna- «ապաստան», օս. darän «մակաղատեղ».

դարպան (ի-ա) «դռնապան» < *dar(a)pān(a)-. Համմտ. մ. պ. darpān, պ. darbān. Տե՛ս բարապան.

դար(ա)պաս < *dar(a)pās (?). Համմտ. պ. darvāza «քաղաքի դարպաս», darēvas «դրանդի».

դարապետ (ի-ա) «դռնապան» < *dar(a)pet-. Համմտ. մ. պ. dar «դուռ» և pat, pet «պետ».

---

32 Հ. Աճառյանը [ՀԱԲ, I², 615] համարում է պարթևական ձևից (հ. պ.)՝ ըստ Հակոբյանի։

33 Ի՞նչ հարաբերության մեջ է այս բառը օս. dasun «դարսել, հիմնել, կառուցել», սողդ. (ʿys-) «կառուցել», ղալա dēsī «դաստ» բառերի հետ։

34 Ա. Փերիխանյանը [Периханян, 1973, 458] karta- < *kr̥ta ձևը հանում է kar- «հայտարարել, հրապարակել» արմատից։

35 Ավելի ուշ -խազ-ով կազմվում են գինեխազ, իգախազ։

դարաստան (ի-ա) «ծառաստան» < *dāristān. համմ. մ. պ. dār «ծառ» և -(i)stān (հայ. ստան).

դարդիճ «պատգարակ» < *dragič (?) (*drag- «քաշել») (?). համմ. ասոր. (< իրան.) dargūštā «պատգարակ, օրորոց», արաբ. (< իրան.) dargāš «անկողին»[36].

դարման (ո, ի) < darmān. համմ. մ. պ., darmān «բժշկություն. դեղ», պ. darmān «ճար, դեղ».

դաւ (ո) < *daβ. համմ. ավ. dab- «խաբել, նենգել», պրթ. db (daβ) «դավ, խաբեություն».

դաւաճան < *daβ(a)čan. -ճան-ի համար տե՛ս -ճան.

դեհկան «կուսակալ» < *dēhkān (dēh > հայ. դեհ «կողմ» և -kān). համմ. ավ., հ. պ. dahyu- «երկիր, նահանգ», մ. պ. dēh, պ. dih «գյուղ».

դեսպակ «պատգարակ» < *dēspak (*dvi-aspaka-). համմ. մ. պ. (գրաբ. պհլ.) by'spk, հր. (< իրան.) dīspaq «կառք».

դեսպան < dēspan. համմ. մ. պ. bag-dēspan «աստվածային սուրհանդակ».

դերձակ (ի-ա) < darjak/darzak. համմ. մ. պ. darzīk. տե՛ս հանդերձ.

դեւ (ի-ա) < dēv. համմ. ավ. daēva-, պրթ. dyw (dēv), մ. պ., պ. dēv.

դէմ (ի-ա) < dēm. համմ. մ. պ. dēm, պ. dīm.

դիմակ < dēmak.

յ-անդիման < (h)andēman. համմ. մ. պ. hndymn.

դէտ (ի-ա) (դիտել) < *dēt ?. համմ. մ. պ. dītan, պ. dīdan «տեսնել».

դիտաւոր < *dēt(a)vār (?).

դիտակ «աչքին երևացող՝ տեսանելի բան» < *dētak (?).

դժգոյն < duž-gōn. համմ. մ. պ. duž- (հայ. դժ-) և հայ. (< իրան.) գույն.

դժխեմ (դշխեմ) «դաժան» < duš-xēm. համմ. մ. պ. dušxēm, պ. dužxīm «չարաբարո, վատ բնություն ունեցող».

դժկամակ < duškāmak. համմ. մ. պ. duškām-kartārīh. պ. dižkām.

դժնդակ < *dižandak. համմ. պ. dižand «դաժան, չարաբարո». տե՛ս դաժան, դժնեայ.

դժնեայ (ի) «դաժան, դժնդակ» < duž(a)n- (?). համմ. պ. dužan, dižan «դաժան, չարաբարո». տե՛ս դաժան, դժնդակ.

դժնիկ (ի) «մի տեսակ փուշ» < *duž(i)nik. համմ. պ. dūža «մի տեսակ փուշ», dūžna «մեղու. խայթոց, կնճիթ», dižīna «հերյուն, քիլ» (?).

դժոխ (ո) < dužox (*duž-axva-). համմ. ավ. daožahva-, duž-anhav-, պրթ. dwjx (dožāx), մ. պ. dōšaxv- (dōzaxv), (պազ.) dōžax, պ. dōžax.

դժուար (ի-ա) < dužvār. համմ. պրթ. djw'r (dižvār), մ. պ. dušxvār, (պազ.), պ. dušvār.

դժպարտ «չարաչար հաղթված» < *duš-part-. համմ. մ. պ. duž-, duš- (հայ. դժ-) և հայ. (< իրան.) պարտ- (պարտ-ել «հաղթել»).

դիպակ (ի-ա ?) «մի տեսակ գործվածք» < dēpāk. համմ. մ. պ. dēpāk, պ. dēbā.

դիւան (ի-ա) «դահլիճ, ատյան. դպրոց» < dēvān. համմ. մ. պ. dēvān «արխիվ», պ. dīvān «ատյան, դիվան. երգերի ժողովածու».

---

36 Իրան. ստուգաբանությունը ըստ Մ. Ն. Բողոլյուբովի [Боголюбов, 1974, 107–108]։ Հ. Աճառյանը [ՀԱԲ, I², 637] բերում է սեմ. զուգահեռներ, բայց նշում սրանց իրան. ծագման հնարավոր լինելը։

դմակ < *dumak. համմտ. ավ. duma-, մ. պ. dum(b), dumbak, պ. dum, օս. dymäg, dumäg.

դոյլ < dōl (թե՞ ասոր. (< իրան.) daula). համմտ. մ. պ. dōl «ջրհոր (կենդանակերպ)», պ. dōl «դույլ».

դորակ (ի) (հեղուկների մի չափ) < dōrak. համմտ. մ. պ. dōrak, dōlak, այլև ասոր. (< իրան.) dauraqa «մեծ ջրաման».

դպիր (ի-ա) «քարտուղար, գրագիր» < dipīr (*dipi-bara-). համմտ. հ. պ. dipī(y) «արձանագրություն» (փխ.), պրթ. dbyr (dibīr), մ. պ dipīvar, մ. պ. dipīr «դպիր, գրագիր, քարտուղար».

դսրով «նախատինք» < *dusrav (*duš-srava-). համմտ. ավ. dušsravah-, մ. պ. (պազ.) dusrav «վատահամբավ».

դրախտ (ի-ա) «պարտեզ, ծառանոց» < draxt. համմտ. մ. պ. (պազ.) draxt, պ. diraxt «ծառ».

դրամ (ի, ո) (?) (1. մի կշռաչափ. 2. դրամ) < dram (< հուն. δραχμή). համմտ. մ. պ. dram, պ. diram.

դրուատ (ի-ա) < *druvata- (հ. պ.՝ ըստ Մարկվարտի). համմտ. ավ. drvatāt-, մ. պ. drūt «առողջություն», պ. durōd «օրհնություն, բարեմաղթություն. աղոթք», այլև արամ. (< իրան.) drwt «խաղաղություն. բարեմաղթություն».

դրուժ- (դրուժ, դրժ-ել) < druž-. համմտ. ավ. druža-, հ. պ. durujiya-, մ. պ. druxtan, družitan «ստել, դրժել».

դրուժան «խաբեբա» < družan (drōžan?).

դրաւշ (ո, ի) < drafš. համմտ. ավ. drafša-, պրթ. drfš (drafš), մ. պ. drafš, պ. dirafš «դրոշ».

դրաւշակ «դրոշ» < drafšak.

դրաւշակ «քղանցք» < drafšak.

երախ «բերան, երախ» (բրբ. ռեխ) < *rax. համմտ. սոգդ. rγ'h, յաղնոբ. rax «բերան, երախ»[37].

երախտ- < *raxt-, համմտ. հ. հնդկ. rakta- «գունավորված. կարմիր. հուզված. համակիր, սիրահարված». տե՛ս երանգ.

երակ (ի-ա) < rak. համմտ. պրթ. (թուրֆ.) rhq, սոգդ. r'k, մ. պ. (թուրֆ.) rg, պ. rag.

երամ < *ram. համմտ. մ. պ. ramak, պ. ram(a). տե՛ս նաև ռամիկ.

երամակ < ramak.

երամական «շքախումբ» < *ramakān.

երան (-ք) (ի-ա) < rān. համմտ. մ. պ., պ. rān «ազդր, սրունք».

երանգ (ո, ի-ա) < rang. համմտ. պրթ. (թուրֆ.) rng, մ. պ., պ. rang «գույն».

երաշխ- (երաշխիք) < *raxš-. համմտ. օս. aräxsun, aräxsən «համապատասխանել. կարողանալ», այլև հ. հնդկ. rakš- «պահել, պաշտպանել».

երաշտ < *rašt. համմտ. պ. rašt «շատ չոր. հող, փոշի».

երասան < rasan. համմտ. մ. պ., պ. rasan. տե՛ս ռասան.

երիտասարդ < *rētak-sard-. համմտ. մ. պ. rētak «երիտասարդ, պատանի» և ավ. sarəda-, մ. պ., պ. sāl «տարի». տե՛ս նաւա-սարդ.

---

[37] Կապ ունե՞ն արդյոք ավ. sraxti- «կող. անկյուն», պ. rux «այտ» բառերի հետ, որոնք բխեցվում են Հ.-ե. *srak$^{u}$- նախաձևից

երկ (ո) < *ark. հմմտ. մ. պ. (մնք.) arq, սոգդ. 'rk «գործ, աշխատանք»,
զամբի(ւ)ղ «կողով» < *zanbīl. հմմտ. պ. zanbīl, zanbīr.
զան, զան- «կերպ, ձև, տեսակ» < zan(a)-. հմմտ. մեդ. *zana- (> արամ. zn) «տեսակ. բաժին», ավ. zana- «մարդկային սեռ, ցեղ», պրթ. zng (zanag), սոգդ. znk (zanak) «տեսակ».

զանակ «մաս, կտոր» < zanak.

զանգակ < *zangak. հմմտ. պ. zang, zangul(a), տաջ. (< իրան.) zagga «զանգակ», zangü «հնչյուն».

զանգապան (զանկապան) «ոտնապան» < *zang(a)-pān. հմմտ. ավ. zanga-, մ. պ. zang «սրունք» և ավ. -pāna-, մ. պ. -pān «-պան» (հայ. -պան),

զառնաւուխտ «կիրպառ, դիպակ» (*«ոսկեհյուս») < *zarna-vuft. հմմտ. սոգդ. zyrn-wfc. առաջին բաղադրիչի համար հմմտ. ավ. zarəna-, մեդ. zarna- «ոսկի» (մեդ. zarnakara- «ոսկերիչ») և երկրորդի համար՝ ավ. ubda- «գործված, հյուսված», պ. bāftan «գործել, հյուսել».

զարտակ «դեղին» < zartak. հմմտ. մ. պ. zartak «ձվի դեղնուց», սոգդ. zyrtk (zërtäk), պ. zarda «դեղին».

զաւակ (ի-ա) < *zavak. հմմտ. սոգդ. ''zwn (?).

զաւշ- (առանձին՝ ուշ) «վատ. անհագ, ագահ, ցանկասեր. անամոթ, անպարկեշտ» < zauš-. հմմտ. ավ. zaoša- «հաճույք. ցանկություն», պրթ. zwš (zōš) «սեր».

զաւր (-ու, -աց) < zāv(a)r (?). հմմտ. ավ. zāvar-, պրթ. z'wr (zāvar), մ. պ., պ. zōr «զորություն», սոգդ. z'wr «զորություն, ուժ. զորք».

զբաւս- < *uz-baus-. հմմտ. խոտ.-սակ. būsa «կատակ, զվարճություն».

զգոյշ. տե՛ս գոյշ.

զեն «զոհ» (զենուլ «մորթել, զոհել») < z(i)yān. հմմտ. սոգդ. wzy'n (ōzyān), այլև ուշ հայ. զեան «վնաս».

զէն(-ք) (ու) < zēn. հմմտ. ավ. zaēna-, մ. պ. zēn «զենք».

զինապետ < *zēn(a)pet.

զմրուխտ (ի-ա, ո) < *zumurruft. հմմտ. մ. պ. 'wzmbwrt, պ. zumurrud.

զինին < *zinīn (?). հմմտ. ավ. a-zinavant- «զգաստ, աշխույժ», zaēnl-, մ. պ. zēnavand «աշխույժ», սարըկ. zenin «զգաստ, սրատես».

զոհ(ի) < zōhr. հմմտ. ավ. zaotar- «քուրմ. զոհաբերող», zaoθra- «զոհահեղուկ», մ. պ. (պազ.) zōr «օրհնաջուր».

զուր < zūr. հմմտ. ավ. zūrah-, հ. պ. zūra- «անարդարություն. սուտ», պրթ. zwr (zūr), մ. պ., պ. zur «սուտ».

զրադատ < *zūr(a)dat.

զրպարտ- < *zūrpart.

զրահ (ի) (զրեհ) < zrah. հմմտ. ավ. zrāδa-, մ. պ. zrāh, zrēh, պ. zirih.

զրահավառ, զրահաւոր < zrāh(a)vār (?).

թագ (ի-ա) < tāg. հմմտ. մ. պ. t'g, այլև արամ. (< իրան.) tāg, արաբ. (իրան.) tāj.

թագաւոր < tāg(a)vār (?).

---

[33] Այս ստուգաբանությունը կասկածի տակ է առնում Է. Բենվենիստը [Benveniste, 1964b, 33–34]։

թակույկ (ի-ա) «մեծ շրաման» < takōk. Համմտ. մ. պ. takōk «մսի աման», պ. takōk «գինու ըմպանակ».

թմբուկ (ի-ա) < *tumbuk. Համմտ. պ. tunbak, tanbūk, tanbak.

թշնամ-(անք) «անարգանք, նախատինք, հայհոյանք» < duś-nām «վատ անուն». Համմտ. մ. պ., պ. dušnām.

թշնամի (ու-ա) < dušman. Համմտ. ավ. duš-mainyu-, պրթ. dwšmyn (duš-mēn), մ. պ. dušman, dušmēn, պ. dušman.

թշուառ (ի-ա) < *duš-xvarr (*duš-xvarna-). Համմտ. ավ. dušxvarənah- «վատաբախտ».

թոշակ (ի-ա) «ճանապարհի պաշար. աշխատավարձ. կերակուր» < tōšak. Համմտ. մ. պ. tōšak, պ. toša «սնունդ, ուտելիք, ճանապարհի պաշար».

թութ (ո) < tūt. Համմտ. մ. պ., պ. tūt (< սեմ.), թե՞ արամ.-ասոր. tūtā.

ժահ (ու) «աղտեղութիւն» < *žah. Համմտ. պ. zahēdan «հոսել», zahō «ականջի կեղտ».

ժամ (-ու, ի-ա) < *žam- (?). Համմտ. մ. պ. zamān, պրթ. ǰm'n, սոգդ. zm'n «ժամանակ» (Համմտ. նաև մ. պ., պ. han-gām «ժամանակ», հայ. (< իրան.) անգամ, հանգամանք) [տե՛ս Bolognesi, 1960, 45][39].

ժաման < žamān. Համմտ. մ. պ. zamān.

ժամանակ < žamānak. Համմտ. մ. պ. zamānak.

ժայռ (ժեռ, ժիռ) < *žayr(?). Համմտ. սարըկ. žer «քար, քարաժայռ, ժայռ».

ժանգ (ժանկ) (ո) < *žang. Համմտ. պ. žang, zang.

ժանուար (ի-ա) «գահավորակ» < *žanβar (*ǰani-bara-). Համմտ. պ. žanbar, zanbar «մի տեսակ պատգարակ».

ժանտ (ի, ի-ա) «դաժան. չար, վատ» < *žant. Համմտ. ավ. gainti-, մ. պ. gand «ժանտահոտութիւն», սոգդ. γntk «վատ».

-ժետ (-ժէտ, ուշ՝ -ժատ) < žat «-հար». Համմտ. մ. պ. žat (*ǰata-՝ ǰan- «խփել, սպանել» արմատից).

ժիր (ի-ա) < žīr. Համմտ. ավ. ǰīra- «արագաշարժ, ժիր», պրթ. žīr, պ. zīrak «խելացի», աֆղ. žīr «փութկոտ».

իշխ-(ել) < xšī- (?). Համմտ. ավ. xša(y)-, հ. պ. xšaya- «իշխել».

իշխան (ի-ա) < xšān(a)-. Համմտ. սոգդ. 'γšywny «տէր, թագավոր», պրթ. 'xšynd (xšayant) «իշխան»[40].

լամբար (լամպար, ղամբար) < *lampað (պրթ.) < հուն. λαμπάς, -δος (?)[41].

-խազ (ի) «քար» (դայլա-խազ) < *xāz. Համմտ. պ. xāz «մի տեսակ քար».

-խազ (ի-ա). տե՛ս դատախազ, մատախազ.

խան (ի) «ափսե. սինի» (ուշ՝ խոն «սեղան») < *xvān. Համմտ. պ. xān, xōn «սեղան», աֆղ. xvān «սկավառակ. ափսե». տե՛ս խուան-.

խար «անասնակեր» < xvār. Համմտ. մ. պ., պ. xvār «կեր». տե՛ս խոհ, խորտիկ.

խարազան (ի-ա) < *xarāzān(a)-. Համմտ. ավ. xara-, պ. xar «էշ» և ավ. az- «քշել».

---

39 Հ. Աճառյանը [ՀԱԲ, $2^2$, 223] ժամ-ը համարում է հայերենում ժամանակ-ից կազմված՝ ան-ի առանձնացմամբ որպես մասնիկ:

40 Ի՞նչ հարաբերության մեջ է հայ. և իրան. բառերի հետ խեթ. išḫa- «տեր» բառը, որ ոմանք կապում են հայերենի հետ:

41 Ըստ Ա. Մեյեի [MSL, 17, 248], որ նշում է հուն. δ-ի փոխման հայ. ռ-ն:

խարակ «պարսպատ, կարծր քար. քար» < *xārak. Համմ. պ. xara «մի տեսակ կարծր քար».
խարբուզ «իշայծյամ» < *xarbuz. Համմ. մ. պ. *xar-buz (xar «էշ» և buz «այծ»).
խավար (ի-ա) < xvāvar. Համմ. մ. պ. xvarvaran, (պազ.) xvāvar, պ. xāvar «արևմուտք. ստորերկրյա (խավարի) աշխարհ».
խոհ (-ի) (խոհ-, խոխ) «կերակուր» < *xva(r)h (xvar- «ուտել, խմել»). Համմ. ավ. xvarəϑa- «սնունդ, կերակուր», պ. xvāl «կերակուր». Տե՛ս խոր, խորակ, խորտիկ.
խոհակեր «խոհարար» < *xva(r)h(a)kar.
խոյզ (ի) (խուզել «որոնել») < *xōz. Համմ. խոտ.-սակ. kuys (kauz-) «որոնել».
խոյր (ի) «գլխարկ, թագ» < *xōδ. Համմ. ավ. xaoδa- «սաղավարտ», հ. պ. xauda «գլխարկ», պրթ. xwd (xōδ), պ. xōy «սաղավարտ».
խոնարհ (ի-ա) < *xvānahr (*hu-ā-naϑra-. naϑ- «ցած» արմատի համար համմ. շուղն. nēϑ «ցած, խոնարհ»).
խոշապետ «կյուրապաղատ, արքունի իշխան» < ? + pet.
խոստ- «խոստում, ուխտ» < *xvast. Համմ. մ. պ. xustuk, xustavān «խոստովանող», պ. xust «խոստովանություն».
խոստաւոր < *xvast-var (?).
խոստովան < *xvastuvān (?).
խորակ «մի տեսակ խմորեղեն» < *xvarāk. Համմ. պ. xōrak «կերակուր». Տե՛ս խոր, խոհ, խորտիկ.
խորտակ-ել «կոտրատել, ջարդել» < xurtak (*hu-artaka-) «փոքր». Համմ. մ. պ. hwrtk (xvartak), xurtak «մանր, փոքր», պ. xurda «փոքր. մանրը. կոտրատանք, մանրուք».
խորտիկ (ի-ա) (բաղադրություններում) «կերակուր, համադամ» < xvartīk. Համմ. ավ. xvarəti- «ուտելիք, կերակուր», մ. պ. xvartīk «ապուր, արգանակ», սոգդ. γwrt (xvart) «ուտելիք, ճաշ». Տե՛ս խոր, խոհ, խորակ.
խուժ «վայրենի, բարբարոս» < xūž-. Համմ. հ. պ. Ḫūža, մ. պ. Xužistan, պ. Xužistan, xūzī «խուժիստանցի».
խուժան < xūžān.
խումբ (ի) < xumb (հ.-ե. *kumb(h)-). Համմ. շուղն. xum «կույտ», վախ. xum «հացահատիկի կույտ, շեղջ».
խուն- (խունաւագութիւն) < xvān «սեղան». Համմ. պ. xān, xon «սեղան». Տե՛ս խան «ափսե, սինի».
խունկ (ո, -ուք) < *xunk. Համմ. պ. xunk, xung.
խրատ (-ու) < xratu-. Համմ. մեդ. *xratu- (> ակկադ. iḫratuš), ավ. xratu-, հ. պ. xraϑu-, պրթ. xrd, մ. պ. xrat «իմաստություն».
կազմ < *kāz- (*kaz-) «կարգավորել, կառուցել»). Համմ. պ. kāza «տուն» (?).
կախարդ (ի-ա) < ka-xvard(a)-. Համմ. ավ. kaxvarəδa-.
կախարդասար (ի-ա) «կախարդ. կախարդական» < *kaxvarda-sar(a)-. Համմ. ավ. kaxvarəδa- (հայ. կախարդ) և ավ. sarah-, մ. պ. sar «գլուխ» («կախարդների գլուխ՝ կախարդապետ»).

կահ (ի, ու) < *ka(r)h (*karθra-). Համեմ. պ. kālā «ունեցվածք, կահույք».
կաղապար (-ի) < kalapaδ < հուն. καλα-πόδιον (καλο-) «կոշիկի կաղապար» («ոտքի փայտյա կաղապար») [Meillet. 1920, 10—12].
կամք (ի-ա, ո), կամ (շաղկապ) < kām(a)-. Համեմ. ավ., հ. պ. kāma-, պրթ. k'm (kām), մ. պ. kām.

կամակ-ք (ի-ա) «ախորժելի բան, հաճոյ ստեղիք» < kāmak(a)-.

կամակար «ինքնակամ» < kām(a)kār. Համեմ. պրթ. k'mg'r (kāmgār).

կամայ < *kāmāy.

կամար (ի-ա) «գոտի» < kamar(a)-. Համեմ. ավ. kamarā-, մ. պ., պ. kamar.
կապար «մի տեսակ բույս՝ capparis spinosa L.» < kapar. Համեմ. խոտ.-սակ. khavara-, պ. kabar (բայց համեմ. նաև հուն. κάππαρις).
կապէն-ք (ի-ա) «շնության վարձ» < kāpēn. Համեմ. պ. kābīn «հարսնանվեր».
կապիկ (ի-ա) < kapīk. Համեմ. մ. պ. kapīk, պ. kabī.
կապիճ (ի-ա) (հատեղենի մի չափ՝ 0,1 գրիվ) < kapīč. Համեմ. հ. պ., > հուն. καπίθη, մ. պ. kapīč, պ. kafīz, այլև, թերևս, ուրարտ. (< իրան. ?) kapi.
կապոյտ < kapōt. Համեմ. մ. պ. kapōt, պ. kabūd.

կապուտակ < kapōtak. Համեմ. նաև հ. պ. kapautaka- «մի կապույտ հանքաքար».

կաս-ել (-ուլ) «մանրել. ցորենը ծեծել. կալսել» < kas- «մանր-(ել)». Համեմ. ավ. kasu- «մանր», խոտ.-սակ. kas- «մանրել, փշրել», մ. պ. kas «մանր», վախան. kas- «կալսել».
կասկ «կեղևահանված և եփված գարի. հաճար» (ուշ ?) < kask. Համեմ. խոտ.-սակ., chaska, պ. kask, մունջան., յազգուլ. kåsk «գարի».
կար «ուժ, կարողություն» < kar-. Համեմ. պրթ. karī «ակտիվություն», մ. պ. kār- «ուժ ունենալ, ի վիճակի լինել, կարողանալ» (?)[42].

կարի < karī (թե՞ kaδī).

կարապետ (ի-ա) «առաջնորդ, ուղեցույց» < *kārapet. Համեմ. հ. պ. *Kārapati- (> էլամ. karabatiš) [Համեմ. **Gershevitch**, AM, 1951—1952, 144].
կարաւան < karavān. Համեմ. մ. պ. kārāvan, պ. karvān.
կարկեհան «մի հանքաքար» < *karkēhan (*karkaδan (?) < հ. հնդ. karketana). Համեմ. մ. պ. klgyh'n (kargēhan), խոտ.-սակ. kirkīyaṃ, այլև ասոր. (< իրան.) qorkednā, արաբ. (< իրան.) karkahan (karkahān), karkand.
կարմիր (ո) < karmir. Համեմ. սողդ. krm'yr, մ. պ. kālmīr (?).
կաւշիկ (ի-ա) < *kafšik. Համեմ. մ. պ. kafš(ak), պ. kafš.

կաւշակար < kafškar (վերաիմաստավորված և ձևավորված հայերենում).

կերպ (ի) < karp (kerp) (?). Համեմ. ավ. kəhrp-, մ. պ. karp «կերպարանք, կերպ».
կերպաս (ո, ու) < *karpas (*kerpas ?). Համեմ. պ. kirpās, kirbās «բամբա-

---

42 Ա. Մեյեն [Meillet, 1916. 128] և, նրա հետևողությամբ, Հ. Աճառյանը [ՀԱԲ, 2², 542] համեմատում են սողդ. k'δy (kāδe) «շատ, հույժ» բառերի հետ։

43 Հ. Աճառյանը [ՀԱԲ, 2², 630] այս համեմատությունները դնում է կասկածելիների շարքում. Համեմ. ավելի ուշ ավանդված պահլավական բառը։

*կե գործվածք», բելուճ.* kurpas, kirpās *«բամբակ» (համմտ. հ. հնդկ.* karpāsa- *«բամբակենի»).*

*-կերտ (բաղադրություններում)* < kart. *համմտ. ավ.* kərəta-, *հ. պ.* karta-, *մ. պ.* kart *«արված, կերտված».*

*կիրթ* < kirt (*kṛt-՝ *kar- *«անել» արմատից). համմտ. պրթ.* qyrt, kyrd (kirt/d) *«արված»,* kyrdg'r (kirda-gār) *«ամեն. հզոր. ստեղծող, արարիչ» (բուն իմաստի համար համմտ. յարուց կիրթել «պայուց անել՝ դարձնել») (?).*

*կնդրուկ (ի-ա) «մի տեսակ խունկ»* < *kundurük. *համմտ. պ.* kundur *«կընդրուկ»,* kundurak *«խեժ».*

*կնճիթ «քունջութ, սուսամ»* < kunčit. *համմտ. մ. պ.* kunčit, kunjīt, *պ.* kunjid, kunjīt.

*կոյտ (ի)* < *kōt. *համմտ. պ.* kōd *«կույտ, դեզ».*

*կոյր (ի. ի-ա)* < kōr. *համմտ. մ. պ., պ.* kōr, *սողդ.* kwr (kōr).

*կոտակ «կարճահասակ, փոքր»* < kōtak. *համմտ. մ. պ.* kōtak, *պ.* kōdak *«երեխա» (և ավ.* kutaka- *«փոքրիկ»).*

*կուզ (ի, ո) «կատու»* < kūz. *համմտ. ասոր. (< իրան.)* gūzā *և քրդ.* kuže *«կուզ, կզաքիս»,* kūžä, kuzik *«կուզ».*

*կուժ* < *kūž. *համմտ. պ.* kūza, *քրդ.* kūz(ik).

*կուշտ (ի-ա) «կող, փոր»* < *kušt. *համմտ. մ. պ., պ.* kušt, *զազա* kišt *«կող».*

*կշտապանակ «մի տեսակ զարդ»* < kušt(a)pānak.

*կռոգպետ «արհեստապետ»* < *kirrug-pet. *համմտ. պրթ. մնք.)* kirrōg, *ասոր. (< իրան.)* kārugpat.

*կտակ* < *gitāk ? *համմտ. մ. պ.* gt'k (*gitāk < *արամ.* < gtt' + -āk) (?).

*կտապ «մի տեսակ խմորեղենի»* < kutāp. *համմտ. պ.* kūdab *կամ* gūdab.

*կրպակ (ի-ա) «խանութ. դինետուն»* < *kurpak. *համմտ. պ.* kurba *«խանութ».*

*հազար (ի-ա)* < hazār. *համմտ. մ. պ., պ.* hazār, *պրթ.* hz'r (hazār) *և ավ.* hazanra-).

*հազարապետ (ի-ա)* < hazār(a)pet.

*հազարավուխտ (ո) (պարսկական մի տիտղոս)* < *hazār(a)vuft (?). *համմտ. պ.* hazaräft. *տե՛ս հազար և զառնաւուխտ (?).*

*հակիրճ* < hakirč (*hakṛtčit *«մեկ անգամ»). համմտ. ավ.* hakərət, *մ. պ.* hakirč, hakarč, hakurč *«մեկ անգամ» (ժխտմամբ՝ «ոչ մի անգամ, երբեք»), պ.* hargiz (*hargiz < hakrič) *«ոչ մի անգամ, երբեք» (?).*

*հաճ (ո)* < hač-(?). *համմտ. ավ.* hačaiti *«ուղեկցում է, հետևում է»,* haxman *«ընկերություն, միասնություն»* (?)[44].

*համակ «բոլոր, ամբողջ»* < hamāk. *համմտ. մ. պ.* hamāk, *պրթ.* hmg.

*համասպրամ «անուշաբույր (ծաղկի մասին)»* < *ham(a)spram. *համմտ. մ. պ.* sp(a)ram, *պ.* siparam, isparam *«ռեհան», սողդ.* sprγwm (sparγum), sprγmk (sparγmak) *«ծաղիկ», այլև ուշ հայ. (< իրան.) շահ(ա)սպրամ.*

*համար (ո, ու)* < hamār. *համմտ. մ. պ. (զրադ.)* āmār, *պ.* hamār *«հաշիվ, թիվ, չափ».*

---

[44] *Ըստ Ա. Մեյեի. ընդունում է Հ. Աճառյանը [ՀԱԲ, 3², 15]՝ բերելով ավ. ձևերը և միաժամանակ մ. պ.* sačītan, *պ.* sazīdan *«պատշաճել» բառերը, որոնք սրա հետ կապ չունեն։*



34—455

համարակար «հաշվակալ» < hamar(a)kar(a)-. Հմմտ. հ. պ. *hamar-akara- «հաշվակալ», պրթ. hmrkr «տնտեսը».

համօրէն < hamaβδēn. Հմմտ. մ. պ. ham-aδvēn (aδvēn՝ aβδēn-ի կողքին, որտեղից հայ. օրէն) [տե՛ս Периханян, 1973, 483][45].

համբարակ «շտեմարան» < *hambārak. Հմմտ. մ. պ. anbārak, hambār, պրթ. 'nb'rg (ambārag). Տե՛ս (հ)ամբար։

համբարակապետ < *hambārak(a)pet.

համբարու «պարիկ» < hambaru. Հմմտ. պ. hambaruna «տան ոգի».

համբաւ (ու, ո, ի-ա) < *ham-bāv. Հմմտ. խոտ.-սակ. pra-vā «զրույց», այլև հ. հնդկ. sabhā «ժողով» (*«խոսակցություն»).

համբոյր (ի) < *ham-bōδ. Հմմտ. սոգդ. (մնք.) 'nβyδ (*ham-baudaya-) «համբուրել».

հանապազ «միշտ» < *han(a)-pāz (*hama-pāza-, որտեղ pāza-ն հ.-ե. *pag'- «ամրացնել, կապել» արմատից) (?).

հանգամանք (-աց) < hangām. Հմմտ. մ. պ. hangām «ժամանակ, ժամկետ, հանգամանք», պ. hangām «ժամանակ». Տե՛ս անգամ[46].

հանգանակ (ի-ա) < hanganak (*ham-kanaka-. kan- «գնել, գցել» արմատի համար հմմտ. հ. պ. avā-kan- «գնել», խոտ.-սակ. kan- «գցել, գնել», պ. afgandan «գցել», z-gandan «լցնել», այլև հայ. (< իրան.) ապականել, զկանդել).

հանգոյն «նման» < hangōn. Հմմտ. մ. պ., պ. hamgōn (և ավ. hamagaona-).

հանգունակ < hangōnak.

(հ)անգրէճ (հանգրիճել «հավաքել, մեջ քշել») < han-grēč. Հմմտ. խոտ.-սակ. hamggalj, hamgrīs-, hamgrīt- «հավաքել» (ham- և հ.-ե. *ger- «հավաքել»).

հանդարտ < *han-dart (han-, ham- և dart. վերջինիս dar-ը հ.-ե. *dher- «պահել» արմատից, որտեղից հայ. դար-եմ, դադար).

հանդերձ (ի, ո) «զգեստ. հանդերձանք. միասին» < handarj (handarz). Հմմտ. մ. պ. handarz «զգեստ. հանդերձանք» (*darz- «ամրացնել, կապել». տե՛ս դերձակ) [Հմմտ. Периханян, 1973, 487].

հանդէս (ի) < handēs. Հմմտ. han-, ham- և ավ. daēs-, խոտ.-սակ. dīs- (հ.-ե. *deik'- «ցույց տալ»).

հանճար (ո) «խելք, միտք, իմաստություն» < hančar (han- նախածանց և *kar-/čar- «հիշել, մտածել»). Հմմտ. մ. պ. hang'r- «մտածել, խորհել», hngryšn «խորհրդածություն» [Bolognesi, 1959][47].

հաշտ < *ašt. Հմմտ. ավ. axšti-, մ. պ. aštih, պ. āštī «խաղաղություն».

հասարակ «ընդհանուր» < *hasarak. Հմմտ. մ. պ. hasar [Հմմտ. **Bolognesi, 1960**, 52. **Périkhanian, 1968**, 25].

հարազատ (ի-ա) < *haδazāt(a)- (*haδa- «միասին» և *zāta- «ծնված»). Հմմտ. ավ. haδōzāta- «հարազատ, համարյուն».

---

45 Հ. Աճառյանը [ՀԱԲ, 3², 17] գրում է որպես հայ. կազմություն (տե՛ս համ-ի տակ)։

46 Հ. Աճառյանը [ՀԱԲ, 3², 36] «հանգամանք» բառը իրանականում չի գտնում, բայց հմմտ. **Периханян, 1973**, 488։

47 Հ. Աճառյանը [ՀԱԲ, 3², 41] տալիս է պ. hanǰar «ճանապարհ, կերպ, եղանակ» զուգահեռը, որ ավելի քիչ հավանական է։

հարկ «տուրք» < ḥark. Հմմտ. պրթ. ḥark- (ḥarkpty «հարկապետ»), մ. պ. hark[48].

հաւասար < hāvasār. Հմմտ. պրթ. h'ws'r (hāvāsār), մ. պ. hāv(a)sār «նման, հավասար».

հաւաստ (ի) < (h)avast. Հմմտ. պրթ. 'wstykn (avastēkan).

հաւրուտ (հաւրատ) «մի ծաղիկ» (ավանդաբար «հաւրուտ և մաւրուտ» կապակցությամբ) < haurvat (?). Հմմտ. ավ. haurvatāt (կրճատ՝ haurvat՝ amərətat-ի հետ միասին) «լիություն» (զրադաշտական ոգի իրան. դիցաբանության մեջ).

հզաւր (ի-ա) < *hu-zāv(a)r- Հմմտ. ավ. hu- «լավ» (թե՞ հայ. հօ՝ հ-յու, հ-մուտ) և ավ. zāvar-, մ. պ. zōr «զորություն» (հայ. զաւր).

հէն (ի) «ավազակ. թշնամի բանակ» < hēn. Հմմտ. ավ. haēnā, հ. պ. hainā, մ. պ. hēn «թշնամի բանակ».

հիրիկ «մի ծաղիկ» < hērīk. Հմմտ. մ. պ. hērīk, պ. hīrī [Bolognesi, 1959 b].

հմայ-ք (-ից) < humāy. Հմմտ. ավ. humāyā-, մ. պ. humay «օրհնված» (= հ. հնդկ. su-māya- «հրաշալի զորություն. խաբեություն»).

հնար (ի) < hunar. Հմմտ. ավ. hunara-, պրթ. hwnr (hunar), մ. պ. hunar «ճարտարություն, հնարամտություն».

հպատակ (ի-ա) < *hu-pātak. (*hu- «լավ» + *pā- «պահել, պահպանել»՝ «լավ պահպանված», Հմմտ. ավ. hupāta-, մ. պ. pātāk «պահպանված, պաշտպանված».

հրահանգ (ի-ա) «ուսում, կրթություն, հրահանգ» < *hrahang. Հմմտ. մ. պ. frahang «հրահանգ, կրթություն», պ. farhang «գիտություն. հասկացողություն. պատիվ».

հրամայ-ել < *hramay-. Հմմտ. մ. պ. framāy-, սոգդ. ffrāmāy-. տե՛ս հրաման, հրամատար.

հրաման (ի-ա) < *hramān. Հմմտ. հ. պ. framānā, պրթ. frm'n (framān), մ. պ. framān, պ. farmān. տե՛ս հրամայ-ել, հրամատար.

հրամ(ան)ատար (ի-ա) < *hramātār. Հմմտ. հ. պ. framātā(r)-, մ. պ. framātār, պ. framaδār.

հրաշ (ի-ա) «հրաշք. հրեշավոր բան» (և հրէշ (ի)) (?) < hraš(a)-. Հմմտ. ավ fraša- «ուժեղ, հզոր», հ. պ. fraša- «հրաշալի, հիանալի, նշանավոր», մ. պ. fraš «հրաշալի» (fraša-murγ «սիրամարգ» «հրաշահավ»). հրաշազան < *hraš(a)zan.

հրապարակ (ի-ա) < *hrapaδak. Հմմտ. պրթ. hra-, մ. պ. fra- «առաջ. հեռու» և մ. պ. pāyak «աստիճան, ճանապարհ» (*pāδaka-՝ *paδa- «ոտք» արմատից).

հրապոյր < *hra-pōδ (*fra-pauda-. վերջինիս համար Հմմտ. պրթ. pwd- «շարժվել», մ. պ. pwd «շարժում», պ. pōy «աճապարանք»).

հրասախ (ի-ա) «փարսախ» < hrasax. Հմմտ. սոգդ. fsx (fəsax < *farsax) և ասոր. (< իրան.) parsaxa, արաբ. (< իրան.) farsax.

հրաւէր < *hravēδ Հմմտ. ավ. fravaēd- «նկատել», սոգդ. prw'yδ (frawēδ) «խուզարկել. հրավիրել».

---

48 Հ. Աճառյանը [ՀԱԲ, 3², 53 և 60] միացնում է ճարկանեմ բայի արմատին

հրեշտակ (ի-ա) «սուրհանդակ, պատգամավոր, առաքյալ, միջնորդ, հրեշ-տակ» < hrēštak. Հմմտ. պրթ. fryštg (frēštag), մ. պ. frēštak, պ. fi-rēšta, firišta (և ավ. fraēšta- «պատգամավոր»).

հրեշ (-ի, -ից) «ցուցանք, հրեշավոր կենդանի». տե՛ս հրաշ.

հրովարտակ (ի-ա) < *hravartak. Հմմտ. մ. պ. fravartak «նամակ, գրու-թյուն, հրովարտակ».

հրո(ր)տից (հգն. սեռ.) «հայկական տոմարի վերջին ամիսը» < *hrōrt (*fra-vart-). Հմմտ. մ. պ. fravartīkān, պ. farvardagān «ավելյաց ամիս».

ղամ-ղայել «կարկառված, պճնված» < *lam-. Հմմտ. պ. lām «կարկառանք»:

ճախարակ (ի-ա) < čarxak. Հմմտ. ավ. čaxra- «անիվ», պ. čarx «անիվ, ճա-խարակ», čarxa «ճախարակ». տե՛ս ճախր.

ճախր-(ել) < čarx-. Հմմտ. պ. čarx «պտույտ, անիվ. ճախարակ». տե՛ս ճա-խարակ.

ճակատ (ի-ա) < čakāt. Հմմտ. սողդ. čk't (čakāt) «ճակատ», պ. čakād «գա-գաթ».

ճակնդեղ < *čakundar (ժող. ստուգ. -dar > -դեղ). Հմմտ. պ. čagundar (?).

ճաճան(չ)ավուխտ «գույնզգույն» < ? + vuft «հյուսված, -հյուս». վերջինիս համար հմմտ. զառնա-ւուխտ.

ճամբար «բանակ, բանակատեղի» < čambar. Հմմտ. մ. պ. čambar «շրջա-նակ» (և «բանակ ?»).

-ճան (դաւաճան, խրախճան, ճակաճան «իգամոլ», ճոխաճան) «սիրող, ցան-կացող, -սեր, -մոլ» < čan-. Հմմտ. ավ. čanah- «ցանկություն, պա-հանջ», հ. պ. (< մեդ.) -čanah- «սիրող, ցանկացող, -սեր, -մոլ» (Aspa-čanah- «ձիասեր»).

ճանապարհ (ի-ա) < *čaranaparh. Հմմտ. ավ. čar- «գնալ, շրջել» և ավ. pə-rətu- «գետանց», մ. պ. puhl «կամուրջ».

ճանբակ «մի խնկաբեր բույս» < *čambak. Հմմտ. մ. պ. čambak (< հ. հնդ. čampaka-):

ճաշ (ո) < čāš. Հմմտ. մ. պ., պ. čāšt «նախաճաշ», աֆղ. çašal «ճաշել»: ճաշակ (ի-ա) < čāšak.

ճար < čār. Հմմտ. ավ. čāra-, մ. պ., պ. čār.

ճարակ (ո, ի-ա) «անասնախոտ» < čarak. Հմմտ. մ. պ. čarak, պ. čarak «արոտ, ճարակ».

ճարպ (ո) < čarp. Հմմտ. մ. պ. čarp, պ. čarb «գեր, ճարպոտ».

ճարտար (ի-ա) < *čartār (*kar-/čar- «անել» արմատից). Հմմտ. հ. պ. čar-tanaiy (անորոշ) «անել, պատրաստել», մ. պ. kartar «ճարտար»[49].

ճարտուկ «ճանճկեն, բծավոր, պիսակավոր» < čartūk. Հմմտ. պ. čarta, čarda «ձիու գույն. թխակարմիր (ձիու մասին)».

ճեմ (ի-ա) < *čam (?). Հմմտ. պրթ. č'm «ճեմում, քայլք», čmg «ընթացք», պ. čām «ճեմում, նազաճեմ քայլվածք», čamān «ճեմող, ճեմաքայլ գնացող».

---

[49] Է. Բենվենիստը (Бенвенист, 1965, 25) օս. cərd, curd «արագաշարժ» բառերը հայ. բառերի հետ միասին հանգեցնում է *čartu- հիմքին (հմմտ. ավ. čarətu- «վազքի տա-րածություն, երկարության չափ» բայց իմաստը հարմար չէ. Հմմտ. նաև մ. պ. vičārt «իմաստուն, խոհական, բանիմաց» (?):

ճեմիշ «զուգարան, արտաքնոց» < ?. հմմտ. պ. čašm, čašma «աղբյուր» քրդ. češma «զուգարան, արտաքնոց» (?).

ճեպ (ո, ի-ա <*čap. հմմտ. մ. պ. čapuk ( > հայ. ճապուկ).

ճետ «ցեղ, սերունդ» (անճետ/իանել «ցեղը ջնջել»)< čīt կամ čyāt- (*čyavata-) (?). հմմտ. ավ. čiθra- «ծագում» և օս. cäv ät «ցեղ, սերունդ».

ճերմակ < *čarmak. հմմտ. պ. čarma «սպիտակ (ձիու մազին)».

ճրագ (ի-ա, -ունք) <*čirāg. հմմտ. սողդ., պ. čirāγ.

մազդեզն (-ան, -ունք) «զրադաշտական կրոն» <mazdēzn. հմմտ. մ. պ. mazdēsn, mazdayasn (և ավ. mazda-yasna- «մազդայապաշտ, զրադաշտական»).

մակոյկ (ի-ա) «նավակ» < makōk. հմմտ. մ. պ. makōk «մաքոք, ոստայնանկի կկոց» (*«նավակ»).

մահ (ու) *ma(r)h(u)-. հմմտ. ավ. mərəθyu-.

մահիկ (ի-ա) «նորալուսին» <*māhīk. հմմտ. ավ., հ. պ. māh-, մ. պ., պ. māh «լուսին».

մահակ (ուշ՝ մահիկ) «վարձ» < *māhak «ամսավարձ» (?).

մաճ (ո) < *māč. հմմտ. պ. āmāj.

ման «մի կշռաչափ» <*man (< սեմ. հմմտ. պ. բբլո. man «լիտր» (թե՞ սեմ. որևէ լեզվից).

մանկ (մանգ) (ի-ա) (բաղադրություններում) «նենգություն, խորամանկություն» <*mang. հմմտ. սողդ. mnk «խաբեբայություն», պ: mang, օս. mäng(ä) «կեղծ, սուտ».

մանուշակ (ի-ա) <*manavšak (?) (vanavšak (?). հմմտ. մ. պ. wn'pšk (vanafšak), պ. banafša և ասոր. ( < իրան.) mənīškā[50].

մաշկապարճէն (ի-ա) «թագավորական հարեմի վրան» < maškāparčēn. հմմտ. մ. պ. maškāparćēn (maškāparzēn?).

մատակ (ի-ա) «էգ կենդանի» <mātak. հմմտ. մ. պ. mātak, պ. māda.

մատակախազ <mātak(a)-xvāz. -խազ-ի համար տե՛ս դատախազ.

մատակարար (ի-ա) <*mātak(a)-δār(a)-. հմմտ. պրթ. mtkdr (matakdar) [Оранский, 1979, 68], մ. պ. m'tyy'l, այլև mātak «հիմք», պ: māya «նյութ. մակարդ»[51].

մատենիկ «հեծյալ, հեծելակային (?)» (ուշ՝ մատեան) <*mātyānīk (?).

մատեան (ի) «թուղթ. գիրք» <mātyān (mātīkān). հմմտ. մ. պ. (վաղ) mātīkān, (ուշ) mātyān.

մատուռակ (ի-ա) <*maturuak (?). հմմտ. մ. պ. mtwrwn «գինու աման».

մար (ու) (մի չափ) <*ma(h)r (*māθra-՝ հ.-ե. *mē- «չափել» արմատից). հմմտ. հուն (< իրան.) μάρις.

մարախ (ո) «մորեխ» <*maδax. հմմտ. ավ. maδaxa-, բելուջ. maδax, պ. malax.

մարգ «մարգագետին, խոտավետ տեղ» <*marg. հմմտ. ավ. marəγa-, պրթ. mrg (marγ), սողդ. mrγ (marγ), պ. marγ և ասոր. (<իրան.) margā.

-մարգ «թռչուն» (լորա-մարգ, այլև սիրամարգ) <marg. հմմտ. ավ. mərəγa-, սողդ. mrγy, պրթ. mwrg (murγ), մ. պ. murγ, պ. murγ (բլր-բլո.) marγ.

---

50 Մանիշակ ձևը փոխառություն է ասորերենից (<իրան.)։

51 Հ. Աճառյանը [ՀԱԲ, 3², 267] բացատրում է «մատակ (?)+հայ. -արար»։

մարգարէ (ի) < mārgar- (*ma(n)θra-kāra-). հմմտ. պրթ. m'rygr (mārēgar), սողդ. m'rkr'k (mārkarēk) «մարգարե, գուշակ», բակտր. μαρογα(ργο) «կախարդ».

մարգաց (հայկական տոմարի 11-րդ ամիս) < *margaz. հմմտ. հ. պ. margazana- «թռչունների թխսի ժամանակը».

մարերի (հայկական տոմարի 10-րդ ամիս) < *maδyārya. հմմտ. ավ. maiδyāirya- (*maδyai-yārya-) «տարեմիջյան».

մարզ (ի) «երկրամաս» < marz. հմմտ. ավ. marəza-, մ. պ. marz և ասոր. (< իրան.) marzā.

մարզպան (ի-ա) < marzpān. հմմտ. մ. պ. marzpān, պրթ. mrzwpn (marzupān).

մարզ-ել < marz- «մարզել» < «շփել, օծել». հմմտ. ավ. marəz- «շոշափել, շփել, քսել», մ. պ. marz, պ. muštan «շփել, տրորել». տե՛ս մարձել.

մարզիկ «դինվոր» < *marzīk.

մարձ-ել «շփել, օծել, (մարմինը) յուղով տրորել» < marj-/marz-. հմմտ. ավ. marəz- «շոշափել, շփել, քսել». տե՛ս մարզել.

մարզիկ «մարզիչ» < *marjīk/*marzīk.

մաւրուտ «մի ծաղիկ» (սովորաբար «հաւրոտ և մաւրոտ» կապակցության մեջ») < *maurvat ? հմմտ. ավ. amərətatāt, մ. պ. amurdāt, «անմահություն. բուսապահապան ոգի» (իրան. դիցաբանության մեջ).

մեհեան (ի, ի-ա) < mehyān (*mihrakān «միհրական, Միհր աստծուն նվիրված») (?). հմմտ. հայ. (< իրան.) մեհեկան (հայկական տոմարի 7-րդ ամիս՝ «միհրական»)[52].

մեհեկան (հայկական տոմարի 7-րդ ամիս) < *mehakān (*mihrakān «միհրական, Միհրին նվիրված»), հմմտ. մ. պ. mihragān, պ. mihrgān «պարսից տոմարի յոթերորդ ամիս». տե՛ս մեհեան.

մեհեւանդ «մանյակ» < ?-βand. հմմտ. մ. պ., պ. band «կապ».

մենթան (ի-ա) «հագուստ» < *nēmtan. հմմտ. պ. nēmtan «մի տեսակ կարճ զգեստ» (> թրք. mintan, հայ. բրբռ. մինթան(ա)).

մերժ-(ել) < *marž-. հմմտ. մ. պ. mrz, պրթ. (թուրֆ.) nmrz «մաքրել», սողդ. wmrz «քանդել, խախտել, հանել, պոկել» (?).

միշտ < *mišt-. հմմտ. ավ. mišti-.

միրգ (ո) < *mirōg հմմտ. սողդ. mγδ'k (*migda-).

մշակ (ի-ա) < mišak(a)- (*mixša-ka-). հմմտ. խոտ.-սակ. mäṣṣa- «դաշտ» (?).

մշտիկ «տրցակ՝ սրսկելու համար, սրսկիչ» < *muštīk. հմմտ. մ. պ. mušt «ափ, բուռ», պ. mušt «ափ, բռունցք».

մոգ (ու, ի-ա) < mo(u)-. հմմտ. ավ. moγu-, հ. պ. magu-, մ. պ. moγ, պ. muγ, mōγ.

մոգպետ (ուշ՝ մովպետ) < mogpet (ուշ՝ movpet). հմմտ. պրթ. mgbyd (maγbed), մ, պ. moγpet, (ուշ) movpet.

մոմ (ո) < *mōm. հմմտ. պ. mūm.

մոյկ < mōk. հմմտ. մ. պ: mōk. տե՛ս մուճակ.

մոյր (ո) «մուրացկանություն, ողորմություն» (մուր(ան)ալ) < *mōδ. հմմտ. սողդ. mwd (mōδ) «ողորմություն».

մուրակ < *mōrāk.

---

52 Ա. Մեյեն [Meillet, 1912, 246] և, նրա հետևողությամբ, Հ. Աճառյանը [ՀԱԲ, $3^2$, 296] -եան-ը համարում են հայկական ածանց։

*մուրիկ* < morik.

*մոլպետ.* *տե՛ս մոգ* (*մոգպետ*).

*մուճակ* «*կոշիկ*» < mōčak. *Համեմ. մ. պ.* mōčak, *բելուջ.* mōzag, *պ.* mōza. *տե՛ս մոյկ.*

*մուրհակ* (*ի-ա*) < muhrak (muhr «*կնիք*» *բառից*). *Համեմ. մ. պ.* muhr(ak) «*կնիք*».

*մուրտ* (*ո*) «*մի տեսակ թուփ*» < mūrt. *Համեմ. մ. պ.* mūrt, *պ.* mūrd.

*յազ-* «*զոհ, զոհաբերություն*» < yaz-. *Համեմ. ավ.* yaz- «*պաշտել, զոհել, նվիրատվություն*», *պրթ.* yz- (yaz-), *մ. պ.* yaz- «*պաշտել*». *տե՛ս յաշտ.*

*յանդիման.* *տե՛ս դէմ.*

*յաշտ* (*ի*) «*զոհ*» < yašt(i)-. *Համեմ. ավ.* yašti- «*պաշտամունք, աղոթք*», *մ. պ.* yašt «*զոհ, պաշտամունք, երկրպագություն*». *տե՛ս յազ.*

*յասմիկ* (*ուշ՝ յասմիկն*) «*մի անուշահոտ ծաղիկ,* jasminum fruticans L.» < *yāsmīk (yāsmīn), *պ.* yās(a)min, *բելուջ., աֆղ.* yasmin.

*յաւանակ* «*ձագ, մատղաշ կենդանի*» (*հատկապես էշի, ձիու, եղնիկի*) < yavānak. *Համեմ. ավ.* yavan-, *մ. պ.* yuvān, *պ., աֆղ.* javān «*մատաղ, երիտասարդ*».

*յաւէժ* (*ի*) (*ուշ՝ յաւերժ*) < yāvēž. *Համեմ. ավ.* yavaēji- «*մշտակեաց*». *տե՛ս յաւէտ.*

*յաւէտ* «*ավելի, շատ. միշտ, հավիտյան*» < yāvēt. *Համեմ. մ. պ.* yāvēt «*հավիտյան*» *և ավ.* yavaētāt «*հավիտենություն*». *տե՛ս յաւէժ.*

*յաւիտեան* < yāvētān (?). *Համեմ. մ. պ.* yāvētān, *պ.* jāvēdān.

*յիշ-(ել)* < iš- (uš-, ōš-*ի կողքին*). *Համեմ. ավ.* uši- «*ուշք*», *մ. պ.* (h)ōš «*խելք, բանականություն*», *սողդ.* 'šyh «*հիշատակ, հիշողություն*», *հատկապես քրդ.* hiš «*գիտակցություն, միտք*». *տե՛ս (յ)ուշ.*

*յոյզ(ի)* «*որոնում. խռովություն, իրարանցում, հուզմունք*» < yōz. *Համեմ. ավ.* yaoz-, *հ. պ.* yaud- «*հուզվել*», *պրթ., մ. պ.* ywz (yōz) «*հուզել*», *պ.* yōz «*որոնում, հույզ*».

*յովազ* (*-ի*) < *yavaz. *Համեմ. պ.* yōz *և արաբ.* (< *իրան.*) yōzā.

*յուշկապարիկ* (*ի-ա*) (*վշկապարի-ք*) «*առասպելական մի էակ*» < *(v)uškaparīk? *Համեմ. պ.* vušk «*էշ*» *և մ. պ.* parīk «*պարիկ*» (*հայ. պարիկ*).

*նազ-(ել)* < nāz. *Համեմ. պրթ.* n'z (nāz), *պ.* nāz.

*նախ* < naxv (*nauh/x-). *Համեմ. պրթ.* nḥswst, *մ. պ.* (*պազ., մնք.*) naxust, (*մնք.*) naxvīn «*առաջին*».

*նախակ* «*առաջնակարգ դիրք կամ պաշտոն*» < *naxvak.

*նախարար* (*ի-ա*) < *naxv(a)-δār(a)-. *Համեմ. պրթ.* nḥwδr (*ըստ այլ կարծիքի՝* naf(a)-δār(a)- > *նահարար և, բաղարկությամբ, նախարար. վերջինիս համար համեմ. սողդ.* nāfdār «*ցեղապետ*»).

*նախճիր* «*կոտորած* (*որսի, պատերազմի ժամանակ*)» < naxčīr. *Համեմ. պրթ.* nḥšyr, *մ. պ.* naxčīr «*որս*», *սողդ.* nγš'yr «*վայրի կենդանի*».

*նահանգ* (*ի-ա*) < *nahang. *Համեմ. մ. պ.* nsng (*պատմ. գրություն*) [**Периханян**, 1973, 500][53].

---

[53] *Հ. Աճառյանը [ՀԱԲ, 3², 422] բերում է ասորերենից՝* nagu, nanga «*երկրամաս, երկիր*»

*նահանջ* < na-hanj (?) (na- *ածանց՝ ավ.* na-zdyah-, *պ.* nazd *«մոտ» և* hanj-՝ *ավ.* θanj-, *սոգդ.* hanj- *«քաշել»*). (*Համմտ. պրթ. (մնք.)* nhynj-, *մ. պ. (մնք.)* nhynz- *«նահանջել». տե՛ս պահանջ*[54].

*նահապետ (ի-ա)* < *nāfapet (*nāfa- *«պորտ. ցեղ» և* pet pat, *«պետ»*). *Համմտ. ավ.* nāfa- *«պորտ. ընտանիք»*, nafah- *«ընտանիք»*, *սոգդ.* n'β (nāf) *«ժողովուրդ» և մ. պ.* pet, pat (*իրան.* *pati-) > *հայ. պետ.*

*նամակ (ի-ա)* < nāmak. *Համմտ. մ. պ.* nāmak, *պ.* nāma *«գրություն, նամակ»*.

*նարաւտ «գոյնզգոյն թել» (նարաւտաներկ) «ներկարար»* < nar-. *Համմտ. խոտ.-սակ.* nar- *«ներկել» (իրանական աղբյուրի՞ց է նաև ներկ)*.

*նարգէս (նարկէս, նարկիս և այլն)* < narkīs (?). *Համմտ. պ.* nargīs *և ասոր.* (< *իրան.*) nargis.

*նաւազ (ի-ա) «նավավար»* < *nāv-äz. *Համմտ. ավ.* navāza-.

*նաւակատիք (-եաց) «բացման հանդես, տարեդարձ»* < *nava-kati- (?). *Համմտ. ավ.* nava-, *պ.* nav, nō *«նոր» և* ?.

*նաւասարդ (ի-ա) (հայկական տոմարի 1-ին ամիս)* < *navasard(a)- (*nava- *«նոր» և* *sarda- *«տարի»*). *Համմտ. սոգդ.* nwsrδ (nausard) *«առաջին ամիս», խոտ.-սակ.* nauhasalye *«նոր տարվա» և ասոր.* (< *իրան.*) nausardīl *«նոր տարի». սարդ-ի համար տե՛ս երիտասարդ.*

*նաւթ (ի, ո)* < naft. *Համմտ. ավ.* napta- *«թաց, խոնավ», պ.* naft *«նավթ»*.

*նաքարակիտ (ի) (մի մանրադրամ)* < *[illegible]karatāk (?). *Համմտ. սոգդ. (բուդդ.)* n'krt'k, (*քրիստ.*) nqṭy *«արծաթ»*.

*ներկ. տե՛ս նարաւտ.*

*նզով (ի)* < *ni-zav. *Համմտ. ավ., մ. պ.* ni- *«ցած» և ավ.* zav- *«կանչել»*.

*նժդեհ (ի) «պանդուխտ»* < *niždeh (niž- *«արտա-, դուրս» և* deh- *«երկիր, նահանգ»*). *Համմտ. ավ.* niž- *և (uz- ածանցով)* uz-dahyu-, *մ. պ.* uz-dēhīk *«տարագիր»*.

*նիազ «կարոտ, նվազ, պակաս»* < niyāz. *Համմտ. մ. պ.* niyāz *«պետք, կարիք», պ.* niyāz *«կարիք. խնդիրք»*.

*նիզակ (ի-ա)* < nēzak. *Համմտ. մ. պ.* nēzak, *պ.* nēza *և ավ.* naēza- *«ծայր. (հատկապես ասեղի)»*.

*նիշ. տե՛ս նշան* (?).

*նիրհ* < *nihr (*nidrā-). *Համմտ. հ. հնդ.* ni-drā *«քուն» (հ.-ե.* *drē- *«քնել»*),

*նկան (ի-ա) «մի տեսակ հաց»* < *ni-kān. *Համմտ. խորեզմ.* knd, pknd *«հաց» (*«թաղված», իմա՛ «մոխրի տակ թաղված՝ խորոված»), այլև բրահուի* (< *բելուջ.*) nikān *«օրապահիկ, կերակրաբաժին»*[55].

*նկանակ* < nikānak:

---

[54] *Առաջին ստուգաբանությունը պատկանում է Ա. Մեյեին* [Meillet, *1922. Համմտ. նաև ՀԱԲ, 3², 423*]*։ Եթե պրթ.* nhynj- *«ետ կանգնել, նահանջել, ետ պահել» բայի համար կարելի է վերականգնել* nahenj- (*և ոչ* nihenj, *ինչպես անում են՝ նկատի ունենալով ավ.* nivaxta-, *մ. պ.* nihaxtan- *«սանձել, ետ պահել» ձևերը), ապա մենք ունենք հայերենի համար լավ զուգահեռ։*

[55] *Ռ. Գոտյոն* [Gauthiot, *1919, 29*] *տարբերում է այս ձևերը մ. պ.* nān, *սոգդ.* nγn *«հաց» ձևերից* [*այսպես նաև* Աճառյան, *ՀԱԲ, 3², 455—456*], *մինչդեռ այլ հեղինակներ* Benveniste, 1964, 13—20, ОИЯ *1, 43*] *վերջիններս բխեցնում են առաջիններից (որպես բարբառային տարբերակներ)։*

նկար (ու) < *nikār. հմմտ. մ. պ. (մնք.) nīgār, պ. nigār։
նկարէն < *nikārēn. հմմտ. պ. nigaren.
նկուն «կորացած, նվաստ. ընկճված, արհամարհված» < nikūn (*ni- «ցած» և *kav- «կորանալ, ծռվել»). հմմտ. մ. պ. nikūn, պ. nigūn «թարս, շուռ տված», sar-nigūn «գլխիկոր».
նհանգ (ի-ա) «կոկորդիլոս» < *nihang. հմմտ. պ. nihang և ասոր. (< իրան.) nihangā.
նման < *ni-mān. հմմտ. իրան. ni- և մ. պ. manāk, (պազ.) mānā «նման», mān-, պ. mānistan «նման լինել».
նշան (ի-ա) (նաև նիշ ?) < nišān. հմմտ. մ. պ., պ. nišān.
նշանակ < nišānak. հմմտ. մ. պ. nišanak.
նշխար (ի-ա) «հացի կտոր, կերակրի մնացորդ» < *niš(x)vār. հմմտ. պ. nišx(v)ār, nišxūr «որոճում» և «անասնակերի մնացորդ».
նշկահ-(ել) «արհամարհել. վտարել» < *niš-kah- (*niš- «արտաս-, դուրս», և *kah- «շարժվել»). հմմտ. խոտ.-սակ. khasta «եկած», այլև հ. հնդկ. kásati «դնում է, շարժվում է», niṣ-kāsayati «վտարում է».
նշմար(-ել) < *ni-šmar- (*ni- և *šmar- < հ.-ե. *(s)mer- «մտածել, հիշել, մտադրվել»). հմմտ. ավ. mar- «նկարել, նշմարել», պ. šumār «համար, թիվ, հաշիվ».
նշտիր (ո) «վիրաբուժական դանակ» < *ništir (?). հմմտ. պ. našar, nīštar, քրդ. nīšter և ասոր. (< իրան.) neštarkā.
նոխազ (ի-ա) < *noxāz հմմտ. մ. պ. n(u)hazik «այծեղջյուր», պ. nuhāz «նոխազ».
նոճ (ի, ո) < *nōč. հմմտ. հ. պ. nauča- «մայրի», պ. nōǰ, nōž «նոճի».
նուագ (ի-ա) «երգ, երգի եղանակ» < nivāg (*ni-vāka-). հմմտ. մ. պ. ni-vāk, nw'g (ni-vāg), խոտ.-սակ. nvāka, nvāga, պ. navā.
նուազ (ի-ա) «պակաս, բաժակ» < *nivāg. հմմտ. պ. nifāγ, nufāγ.
նուազ < *ni-vaz. հմմտ. ավ. ni-vaz- «իջեցնել», խոտ.-սակ. nuvays- «ցած հոսել» (հ. հնդկ. ni-vah-, որտեղից ni-vāha- «նվազում»).
նուաստ < *nivast.
նուարդան (ի-ա) «ծածկոց» < *ni-vartan(a)-. հմմտ. օս. nəvärdən «փաթաթել» [հմմտ. Бенвенист, 1965, 97].
նուէր (ի-ա) < nivēδ. հմմտ. ավ. ni-vaēd- «ձոնել, նվիրել», մ. պ. (ավեստայի թարգմ.) nivēδēm «ձոնում եմ, նվիրում եմ».
նուիրակ «բուժակ» < *nivēδak.
նուիրակ «առաքյալ պաշտոնյա» < nivēδak. հմմտ. պ. nuvīd «լուր».
նպաստ < *ni-upastā (?). հմմտ. հ. պ. upastā «օգնություն, նպաստ».
նպատակ (ի-ա) «նշանակետ» < *ni-pātak. pāt-ի համար հմմտ. յաղնոբ. pāt, օս. fat «նետ».
նպար(ակ) < ni-pār-. pār-ի համար հմմտ. խոտ.-սակ. pāra-, մ. պ. pēš-pārak «թխվածք», այլև հայ. (< իրան.) պարէն [Bailéy, BZ, 230][56].
շահապ (ի-ա) «իշխող, պետ, նահանգապետ» < šah(r)ap (šahr(a)- < xšaϑra- «երկիր, նահանգ» և *pā- «պահել»). հմմտ. պրթ. ḫšhrp (xšahrap) և հուն. (< իրան.) σατράπης (> հայ. սատրապ).

---

[56] Է. Բենվենիստը [Benveniste, 1964, 20--21] ni-pāra-ի pāra-ն նույնացնում է համբար բառի աղբյուրի՝ ham-para-ի pāra-ի հետ։

շահապետ «պետ, իշխան, պահապան» < Šah(r)(a)pet (šahr(a)- < xšaθra «երկիր» և pet, pat «պետ»). Հմմտ. մ. պ. šahrapat «քաղաքապետ».

շամբլիտակ «մի տեսակ ծաղիկ» < *šamblitak. Հմմտ. մ. պ. samblit, պ. šanbalīd.

շապիկ < šapīk. Հմմտ. մ. պ. šapīk «ծիսական շապիկ», պ. šabī «գիշերային. գիշերազգեստ».

շապաստան-տակարպետ «պաշտոնական մի տիտղոս» < *šapastan-takarpet. Հմմտ. մ. պ. šapastan «պալատի խորհրդակցություն, պալատի խորհրդակցության սենյակ», պ. šabistān «ննջարան. խուց. հարեմ» և մ. պ. takārpat (հայ. տակառապետ «մատռվակապետ»).

շատ (ի) «բազում» < *šāt «շատ, բազում» («ուրախ» իմաստի կողքին). Հմմտ. սոգդ. š't, պ. šād- «հարուստ, շատ, առատ» (šādāb «առատաջուր» > «հյութեղ»).

շատրվան (ի-ա) «վարագոյր» < šāturvān. Հմմտ. մ. պ. šāturvān «հնչյունական (?)», պ. šādurvān «մեծ վարագույր կամ զորք (արքայական օթյակի առջև կախվող)».

շեպ «զառիվայր» < *šēp. Հմմտ. մ. պ. nī-šēp- «խորք», պ. šīb «զառիվայր» (և ավ. xšvaepā- «ետնամաս»).

շէն (ի-ա) «շինված. գյուղ» < *šēn. Հմմտ. սոգդ. šēn «հանգստավայր».

շիշ < šīš. Հմմտ. պ. šīš.

շնորհ (ի-ա) < *šnōhr. Հմմտ. մ. պ. hu-šnōhr, (պազ.) avē-šnohr, պրթ. 'šnwhr (išnōhr) և ավ. xšnaoθra- «գոհունակություն» (xšnav- «գոհանալ» արմատից).

շպետ «հովիվ» < *šu-pet. Հմմտ. ավ. fšu- «(մանր եղջերավոր) անասուն». պրթ. šu- (su-bān «հովիվ» և մ. պ. pat «պետ», հայ. (< իրան.) պետ.

շտապ (ի) < *štāp. Հմմտ. մ. պ. ōštāftan, պ. šitaftan «շտապել», մ. պ. ōštāp, պ. šitāb «շտապում».

ոյժ (ո) (յ-ոյժ, ժ-ոյժ < զ-ոյժ) < ōž. Հմմտ. ավ. aojah-, պրթ., մ. պ. ōž. ուժգին < *ōžgīn.

ոստիկան (ի-ա) «վերակացու, իշխան, կուսակալ» < ōstikān. Հմմտ. մ. պ. ōstikār, (պազ.) ōstiyān «հավատարիմ, վստահելի», մ. պ. ōstkānīh (մի պաշտոնի անուն).

ուխտ (ի) < *uxt(i)-. Հմմտ. ավ. uxti- «խոսք», սոգդ. wγt- «ասված».

ուշ (ի, ո) «ուշք, միտք. ուշ» < uš(i). Հմմտ. ավ. uši- «ուշք», պրթ. 'wš (uš) «ուշք, միտք», 'wšy (ušī) «հիշողություն», մ. պ. (h)ōš «խելք, բանականություն». տե՛ս յիշել, ապուշ.

ուրախ (խրախ < *հուրախ) < *urvāxm(?). Հմմտ. մ. պ urvāxman-, (մնք.) hurvāxm.

չաման (ո) «մի համեմիչ բույս» < *čaman (< սեմ.). Հմմտ. թրք. (< իրան.) čemen.

պախ «խաշած միս» (պախաճճամ «կարկանդակ, թխվածք, ըմպելիք») < *pax (հ.-ե. *peku- «եփել»). Հմմտ. ավ. pak-, մ. պ., պ. puxtan, սոգդ. pwγš-, pγs, պ. (գյուղ. բրբռ.) paxtmūn, paxa, աֆղ. paxavul «եփել, խաշել».

պախուճուանդ (ի-ա) «մի տեսակ կամարաձև զարդ» < *paxūč(a)-βand(a)-

(?). Համեմ. սոգդ. pγwč'h «պաճուճված, զարդարված» և ավ. banda-մ. պ., պ. band «կապ». տե՛ս բանդ (բանտ), դանդանաուանդ, մեհեւանդ։

պակաս < upa-kas (upa- ածանց և kas- «փոքր, պակասավոր»). Համեմ. ավ. kasu-, սոգդ. kas «փոքր», պ. kāstan «պակասել».

պահ, պարհ (ու) < *pahr (*pāθra-). Համեմ. պրթ. p'hr (pāhr), մ. պ. pās «պահակ».

պա(ր)հակ < pah(r)ak. Համեմ. պրթ. phrg (pahrag).

պա(ր)հակապան (պարհիկապան). < pahrakpān. Համեմ. պրթ. phrgb'n (pahragbān).

պահակիր (ի-ա) «պահապան» < *pāhr(a)kar.

պահապան (ի-ա) < *pahr(a)pān.

պահանգ (պահանկ) «պատի մեջ ագուցված գերան՝ պատը պահելու համար» < upa-hang (upa- նախածանց և hang- < θang- «քաշել»). Համեմ. ավ. θang- «քաշել»). տե՛ս պահանջ և զորշապահանգ.

պահանջ < upa-hanǰ (upa- նախածանց և hanǰ- < θanǰ- «քաշել, ձգել». Երկրորդի համար համեմ. ավ. θanj-, սոգդ. hanǰ-).

պաճար (ի-ա) «նախիր. խոշոր եղջյուրավոր անասուն. անասուն» (պաճարք «միջոց, հնարք», պաճարել «հայթայթել, հնար գտնել») < *upa-čār (upa- ածանց և čār- «ճար». վերջինիս համար համեմ. հայ. ճար[57].

պայազատ (ի-ա) «ժառանգորդ» < *payāzāt (*pati-āzāta-. āzāta-ի համար տե՛ս ազատ). Համեմ. խոտ.-սակ. paysāta- «հարազատ»[58].

պայման (ի-ա) < paymān (*pati-māna-). Համեմ. մ. պ. paymān, պ. paymān, պրթ. pdm'n.

պայուսակ (ի-ա) < *payūsak. Համեմ. մ. պ. patvāsak, պ. payūza «շապիկ» և ասոր. (< իրան.) payūsag կամ payvasang «վզնոց, ցանց».

պայքար (ի-ա) < paykār (*pati-kāra-). Համեմ. ավ. paiti-kāra-, մ. պ. (պազ.) patkār, պ. paykār.

պանդոյր (-որք) «անմիտ, տխմար» < pand-. Համեմ. խոտ.-սակ. pandara.

պանիր < panīr. Համեմ. մ. պ. panīr, panēr, պ. panīr.

պաշար (ի-ա, ո) < *pašar (?). Համեմ. սոգդ. pš'βr, այլև. արամ. (< իրան.) 'wpšr «պաշար, օժանդակություն»,

պաշտել. տե՛ս պարիշտ.

պաշտպան (ի-ա) < *paršt(i)pān(a)- «թիկնապահ». Համեմ. մ. պ. puštēpān, պ. puštbān (առաջին մասի համար համեմ. ավ. paršti-, պրթ., մ. պ., պ. pušt «մեջք, թիկունք»). տե՛ս փուշտիպան.

պառակ (-իմ) < *parak. Համեմ. պ. para «կող» (?).

պառաւ (-ունք, -անց) < *pārāv. Համեմ. պ. pārāv.

---

[57] Պակաս, պահանգ, պահանջ պաճառ բառերում Է. Բենվենիստի [Benveniste, 1965, 111] տարանջատած pa- ածանցի փոխարեն (համեմ. հ. սլավ. po-, լիտվ. po-) այլ հետազոտողներ սովորաբար տարանջատում են upa- ածանց՝ պաճար < *upa-čār(a)-: Այս բառերին Բենվենիստը միացնում է նաև պատառ բառը, որ իրականում կազմված է պատ-ից -առ ածանցով:

[58] Ա. Փերիխանյանը [Périkhanian, 1971, 11] պայազատ-ի համար վերականգնում է upāya-zāta- իրանական նախաձև (համեմ. մ. պ. zātan «ժառանգել»)։

պաստառ (ի-ա) «ծածկոց» < *upa-starr (*upa-starna-). Համմտ. ավ. upastarəna-.

պատասխանի (ո-ա) < *pat(i)saxvan. Համմտ. պրթ. pswx (passox), սողդ. p'c'γ(')n, մ. պ. păssaxv, պ. pāsux.

պատգամ (ի-ա) < patgām (*pati-gama-). Համմտ. մ. պ. pagtām (*pat-gām?), (մնք.) padgām «պատգամ, լուր».

պատերազմ (ի-ա) < pat-razm. Համմտ. մ. պ. pātrazm. տե՛ս ռազմ.

պատիր «խաբեական» < *patīδ. Համմտ. սողդ. pt'yδ- «մուրալ, խաբեությամբ խլել», pt'yδ «աղքատություն».

պատիւ (ո, -ի, -է) < *pativ. Համմտ. սողդ. ptβy, թոխ. Բ (< իրան.) peti.

պատկան «նետ» < *patkan. Համմտ. պ. paykān.

պատկանդարան (ի-ա) «նետամաման, կապարճ» < *patkān-dārān. Համմտ. հայ. (< իրան.) պատկան և դարան.

պատկեր (ի-ա) < patkar. Համմտ. հ. պ. patikara-, պրթ. pdqr, մ. պ. patkar, պ. paykar.

պատճէն (ի) < patčēn (*pati-čayana-). Համմտ. մ. պ. (ուշ) pačēn.

պատմուճակ (ի-ա) «հանդերձապետ» < *patmōčak. Համմտ. մ. պ. pat- և mōčak (հայ. մուճակ). տե՛ս պատմուճան.

պատմուճան (ի-ա) «հանդիսավոր զգեստ» < patmōčan (*pati-mauk/č-). Համմտ. մ. պ. patmōčan «զգեստ» (patmōxtan հագնել»). տե՛ս մուճակ և պատմուճակ.

պատշաճ (ի) < patšač. Համմտ. մ. պ. pat- և sačītan, պ. sazīdan «սազել» (հայ. բրբռ. սազել).

պատշգամ (ի-ա) «վերնահարկի սենյակ, սրահ, պատշգամբ» < patškamb (*pati-skamba-). Համմտ. մ. պ. patiškamb, պ. paškam.

պատուաստ (ի) < patvast (*pati-basti-). Համմտ. մ. պ. patvastan «կցել», պ. payvastan «հարել, կից լինել».

պատուար (ի-ա) < *patvār (*pati-vāra-). Համմտ. մ. պ. pat- և պ. bārū «պատ. պարիսպ».

պատուէր < patvēδ. Համմտ. ավ. paiti-vaēδ «ծանուցել, իմացնել», մ. պ. (մնք.) ptvyd- «ծանուցում», սողդ. ptwδ- «հանձնել».

պատուիրակ < *patvēδak.

պատուիրան < *patvēδān.

պատուհան (ի, -աւք) (հին՝ *պատուրհան) < *patuhrān (*pati-frāna-) [**Benveniste**, 1958, 63] (?).

պատուհաս (ի) < *pātūhrās. Համմտ. մ. պ. pātūfrạs, pātafrās, պ. pādafrāh.

պատսպար-ել < pat-spar. Համմտ. մ. պ. pat- և spar, պ. sipar «վահան» (հայ. ասպար).

պատրաստ < *patrast (*patirāsta-). Համմտ. պրթ. pdr'y- (padrāy-) «պատրաստել», մ. պ. patrāstan, պ. payrāstan (pīrāstān) «զարդարել, հանդերձավորել».

պատրոյկ (պատրոյգ) (-ի) < patrōk (*pati-rauka-). Համմտ. մ. պ. pat- և rōk- «լույս», rōč «օր» (հ.-ե. *leuk-, որտեղից հայ. լոյս, լուսանել).

պատրուճակ «տանելի կենդանի. ոչխար. ուտելեղեն, օրվա ուտելիք, օրապահիկ» < *patrōčak. Համմտ. մ. պ. patrōč «օրվա ուտելիք, օրապահիկ» (rōč «օր», rōčik «օրվա ուտելիք, թոշակ». տե՛ս ռոճիկ).

պարար «գիրացում» < *upa-δār, (*upa-dāra-) հմմտ. սողդ. pδ'r «կերակրել, պահել», pδ'rty «կերակուր, սնունդ, պահպանում», խոտ.-սակ. padar- «պահել» (գերբ. padaḍa) [Бенвенист, 1965, 110][59].
պարարակ <* upaδārak,
պարարտ < upaδart.
պարաւանդ (ի-ա) «կապանք, շղթա» < *pāδaβand (*pāda-banda- «ոտնա-կապ»). հմմտ. պ. pā(y)-band «ոտնակապ».
պարեգաւտ (ի) «վերնազգեստ, կապա» < *paragaud. հմմտ. հուն. (< իրան.) παραγαύδης, παραγαύδιον «ծիրանաքղանցք զգեստ»[60].
պարեկ «պահակ, պահապան» < pāhrak. հմմտ. հայ. (< իրան.) պա(ր)հակ (տե՛ս պա(ր)հ-ի տակ).
պարեհնակ «շապիկ» < *parahanak ? հմմտ. մ. պ., պ. pērāhan.
պարէտ (ի-ա) < *upa-δēt (*upa-daitā-). հմմտ. պրթ. (Նիսա) pδxt. -δēt-ի համար հմմտ. հայ. (< իրան.) դէտ.
պարզ (ո) < *pārz «զուտ, մաքուր». հմմտ. մ. պ. (մնք.) p'rwd «զտված, մաքրված».
պարիկ (ի-ա) «առասպելական մի ոգի» < parīk. հմմտ. ավ. pairikā- «կախարդանք», մ. պ. parīk «չար ոգի», սողդ. parīk «հավերժահարս», պ. parī «փերի» (հայ. բրբռ. փերի).
պարիշտ (ամ-բարիշտ ամ-պարիշտ, պաշտել < *պար(ի)շտել) < *parīštā (*pari-stā-). հմմտ. մ. պ. parīst-, parast-, պ. parast «պաշտող».
պարիսպ (ի-ա) < *parisp (*pari- «շուրջը» *spā- «դցել»). հմմտ. պրթ., մ. պ. prysp (parisp) «պատ, պարիսպ».
պարկէն (ի-ա) «քաղաքի պարիսպների շուրջը փորված խրամ» < *parkēn, հմմտ. մ. պ. (մնք.) pargīn, պ. pārgīn «կեղտաջրի փոս».
պարհ. տե՛ս պահ.
պարս (ի) «պարսատիկ, քարանետ փոկ» < *pars «կապ, պարսատիկ», հմմտ. թալմուդ. (< իրան.) parsakā «թոկ, փոկ».
պարսատիկ < *parsatīk (?).
պարտ (ու) < part(u)-. հմմտ. ավ. par- «դատապարտել», pära- «պարտք», pəša- (*pṛtā) «պարտական, հանցավոր» սողդ. 'prtk (əpartak) «մեղապարտ, հանցավոր»[61].
պարտաս-ել (-իմ) «հոգնել» < par-tās-. հմմտ. խորեզմ. prc's- «հոգնել», սողդ. t's'δ «մտատանջ».
պարտբաշխի «գրավ» < part-baxši. հմմտ. հայ. (< իրան.) պարտ և բաշխ.
պարտ-ել «հաղթել» (-իմ «հաղթվել, պարտվել») < *part. հմմտ. ավ. pə-rət-, մ. պ. ni-part «կռիվ», խոտ.-սակ. purr (*pṛ-nu-) «հաղթել, պարտության մատնել». տե՛ս գուպար.
պարտէզ (ի-ա) < *pardēz. հմմտ. ավ. pairi-daēza- «ցանկապատ», պ. pālēz «պարտեզ».

---

[59] Հ. Աճառյանը [ՀԱԲ, 4², 58] պարար-ը և պարարտ-ը համեմատում է սողդ. parašt «պարարտ» բառի հետ՝ r/š իրան. հերթագայությամբ։

[60] Անսովոր է միայն d > ա անցումը, մանավանդ որ վրացերենն էլ ունի տ-ով ձև՝ paregavlaṭi:

[61] Հ. Աճառյանը [ՀԱԲ, 4², 68] միացնում է պարտ(-f) բառին՝ որպես փոխաբերական գործածություն

պետ (ի-ա) < pet (pat). Հմմտ. ավ. paiti-, հ. պ. *-pati-, մ. պ. pat, պրթ. byd (bed).

պեշասպիկ (պեշասպիկք) «ծիսական սուրհանդակ» < *pēšaspīk (pēš «առաջ» և asp «ձի»). Հմմտ. սոգդ. (< իրան.) pēšaspīg «առաջապահնայց».

պես < *pēs. Հմմտ. paēsa- «զարդարանք», paēs- «զունավորել, զարդարել» (և հ. հնդկ. pēša- «ձև, կերպարանք, գույն»). տե՛ս պիսակ.

պէտ(-ք) < *pēt (*pa-ita-՝ pa- ածանցից և *i- «գնալ»). Հմմտ. մ. պ. apāyēt, պ. bāyad «պետք է»[62].

պիտակ < *pētak (*paitaka-).

պիհ «պարէն, ուտելիք» < pihv. Հմմտ. ավ. pitwa- «սնունդ. ուտելիք», պրթ. pyd (piδ), մ. պ. (pyhw (pihv) «միս».

պիսակ «սև նշան. բորոտ» < *pēsak. Հմմտ. ավ. paesa- «բորոտություն» (paēsa- «զարդարանք» ձևից). տե՛ս պէս.

պղինձ (ո) < *pilinj (?) Հմմտ. պ. birinj «արույր. բրոնզ. դեղին պղինձ».

պողովատ «պողպատ» < *pōlāvat. Հմմտ. մ. պ. pūlāvat, պ. pōlād, պողովատիկ < *pōlāvatīk.

պսակ (ի-ա) «պսակ. թագ. գլխազարդ» < *pusāk. Հմմտ. ավ. pusa-, պրթ. pwsg, սոգդ. 'ps'k և թոխ. Ա (< իրան.) pässāk, psuk.

ջատագով «դատապաշտպան, բարեխոս» < *jātagōβ (*yāta-gauba-՝ *yāta- «բաժին, պատճառ, հիմք» և *gauba- > gōβ «ասել. գովել» > հայ. գով). Հմմտ. մ. պ. yāta(k)gōβ.

ջատուկ «կախարդ» < jātūk (*yātūka-). Հմմտ. ավ. yātu-, մ. պ. yātūk պ. jādū (հայ. բրբռ. ջադու).

ջոկ (ի, ո) «խումբ» < *jōk (*yauka-?). Հմմտ. պ. jōx և արաբ. (< իրան.) jauq. Հմմտ. նաև հայ. ճահուկ «ջոկ, խումբ» (?)[63].

ռազմ < razm. Հմմտ. պրթ. rzm (razm), մ. պ., պ. razm և ավ. rasman «զորաշարք, զորաբանակ» (raz- «շարել, կարգավորել»). տե՛ս պատերազմ.

ռահվիրայ «ուղեհարթող, ուղի բացող» < *rāh-virāy (rāh «ճանապարհ» և -vi-rāy- «կարգավորել»). Հմմտ. մ. պ., պ. rāh և մ. պ. vi-rāy- (ավ. raz-, հ. պ. rad- «ուղղել, կարգավորել»՝ vi- ածանցով). պրթ. wyr'z[64]. տե՛ս և վարսավիրայ.

ռամիկ (ի-ա) (ուշ՝ ռամ) «հասարակ ժողովուրդ» < ramīk. Հմմտ. մ. պ., սոգդ. rm «ժողովուրդ», մ. պ. (մնք.) ramkānīk «ժողովրդային, ցեղային». տե՛ս երամ.

ռոճիկ (ի-ա) «օրապահիկ, օրվա ուտելիք, թոշակ» < rōčīk. Հմմտ. մ. պ. rōčīk (rōč «օր» բառից).

ռոտաստակ «գլխավոր քաղաք» < rōtastāk. Հմմտ. մ. պ. rōtastāk «երկիր. բնակատեղի», պ. rōstā «գյուղ».

---

[62] pa- ածանցի համար հմմտ. Бенвенист, 1965, 109—111 (հմմտ. նաև պա-կաս, պա-տառ և այլն). Հ. Նիբերգը [Nyberg, 1931, 17—18] և, նրա հետևողությամբ, Հ. Աճառյանը [ՀԱԲ, 4², 79] տալիս են upa- ածանցը։

[63] Թերևս ավելի հավանական է, արաբականից փոխառությունն ենթադրելը, եթե մանավանդ նկատի առնենք Խորենացու ջոկատ ձևը։

[64] Հ. Աճառյանը [ՀԱԲ, 4², 139] տալիս է ռահ բառի տակ, որ V դ. առանձին չի գործածվել։

սակ (ի) «հարկ, տուրք» < sak. հմմտ. մ. պ. sāk, պ. sa(v).
Սակաստան (Սակստան անդերձայրեն «որսատեղանայեր») < *sakistan «շնանոց» (sak «շուն» բառից. հմմտ. մ. պ. sak (*sva-ka-).
սահ «գունդ, բանակ, զորագունդ» < *sāh. հմմտ. ավ. spāδa-, հ. պ. spāda-, մ. պ. spāh (հայ. սպահ), պ. sipāh[65].
սահման (ի-ա) < sāhman (*sā(n)h- «հայտարարել, սահմանել, որոշել»). հմմտ. մ. պ. sāhmān, պ. sāmān.
սալար (սալար) «զորավար, զորապետ» < sālār (= sardār < *sāradāra- «գլխավոր»). հմմտ. մ. պ., պ. sālār «զորապետ», պ. sālār «առաջնորդ».
սարաւարտ < *sāravart (*sāra- «գլուխ» և *var- «ծածկել»). հմմտ. ավ. sāravāra-, մ. պ. sārvār.
սամոյր «մի կենդանի (Martes zibellina, соболь). սամույրի մուշտակ» < samōr. հմմտ. մ. պ. samōr, samūr. պ. samūr.
Սանդարամետ (ի-ա) «ստորերկրյա աշխարհ» (Սպանդարամետ — այդ աշխարհի ոգին < s(p)andāramat (*spanta- «սուրբ» և ārmati «իմաստություն»). հմմտ. մ. պ. spandāramat «երկրի աստված».
սապատ «կողով» < *sapat. հմմտ. պ. sabad, քրդ. sevi.
սատակ «պարզ» < *sātak. հմմտ. պ. sāda.
սատեր (-ի) «մի դրամ և կշիռ» < sater (< հուն. στατήρ). հմմտ. մ. պ. sater, սողդ. st'yr, խորեզմ. 'str(y)k.
սարեակ < *sārīk (-īk-ի վերափոխմամբ -եակ-ի). հմմտ մ. պ. sār, պ. sārī.
սարոյ «նոճի» < sarō (?). հմմտ. պ. sarū(n), sarv.
սեաւ < s(i)yāv. հմմտ. ավ. syāva-, պրթ. sy'w (syāv), մ. պ. siyāv-, պ. siyāh.
սեւակ «թանաք» < s(i)yāvak.
սեպուհ (ի-ա, -եայց) «ազնվականության մի աստիճան, ասպետ» (< *(վ)սեպապու(ր)հ) < visyapuhr(a)-. հմմտ. ավ. vīsō-puθra- (vis- «իշխանական տուն» և puθra- «որդի»), մ. պ. (մնք.) vīspuhr «իշխան».
սիկ (ո) «ցեխ, տիղմ» < *sik. հմմտ. հ. պ. θika, մեդ. *sika- (Sikayuvatiš տեղանվան մեջ) «խիճ», մ. պ. sygd, սողդ. šykth, պ. six «ավազ» (?).
սիրամարգ (ի-ա) (< *սինամարգ) < *sēnamarg(a)- (*sēna- «մի գիշատիչ թռչուն» և *marg(a)- > հայ. մարգ «թռչուն»). հմմտ. ավ. saēnomərəγo, մ. պ. sen-murg, պ. simurγ «առասպելական մի թռչուն».
սկաւառակ «պնակ, (կերակր)աման» < *sukavarak (?). հմմտ. պ. sukōra, sukurra.
սմբակ (ի-ա) < *sumbak. հմմտ. մ. պ. sumb, պ. sum և արաբ. (< իրան.) sunbak.
սմնակ «մի տեսակ ծաղիկ» < *sumnak. հմմտ. պ. sumna- (suman «հասմիկ»).
սնգոյր (ի-ա, ո) «շպար, երեսի ներկ» < *singafr (?). հմմտ. հ. պ. sinkabru-, պ. šangarf «կինաբար (հանքանյութ և նրանից պատրաստված, ներկ)» [Benveniste, 1964, 22][66].

---

[65] S/sp հարաբերության համար հմմտ. Սպանդարամետ/Սանդարամետ։

[66] Հ. Աճառյանը [ՀԱԲ, 4², 235] բերում է սանսկ. բառը, բայց տալիս է այլ մեկնաբանություն։

սնդուս «մետաքսե կտոր, դիպակ» < *sundus. Համմտ. պ. sundus.

սոթ «ոսինդ» (< *սաւթ ?) < *saft. Համմտ. պ. saft (?).

սոխ (ո) < *sōx. Համմտ. պ. süx.

սոլ (ո, -ու) < *söv(?). Համմտ. մ. պ. sōl «սոլ», (մնք.) sōlg «քայլած»,

սուգ (ո) < *sūg. Համմտ. պ. sūg, suk.

սպահ (ի) «գունդ, զորաբանակ» < *spah. Համմտ. ավ. spāδa-, պ. sipāh. տե՛ս սպայ, սպարապետ.

սպայ (ի) «գունդ, զորաբանակ» < *spāy (= *spah). Համմտ. ավ. spāδa-, սոգդ. sp'δ, պ. sipāh. տե՛ս սպահ, սպարապետ.

սպայապետ < *spāy(a)pet (= *spah(a)pat).

սպառ «վերջ» < *spar (*sparna-). Համմտ. ավ. asparənah- «լիակատարություն». տե՛ս սպուռ.

սպաս (ու) «սպասարկում, սպասավորություն. սպասք» < *spas. Համմտ. մ. պ. (մնք.), պրթ. ispas, սոգդ. sp's (spās) «հսկել, ծառայել», sp's'k (spāsāk) «ծառա».

սպասաւոր «ծառա, մատակարար» < *spasvar (?).

սպասիկ (սպասեկ) «խնամակալ, պահապանող» < spasīk. Համմտ. մ. պ. (մնք.) ispasīg.

սպարապետ (ի-ա) < spāδ(a)pet (*spāda-pati-). Համմտ. մ. պ. spāhpat, պ. sipāhbad.

սպիտակ (ի-ա) < spētak. Համմտ. մ. պ. spētak, պ. sifād և ավ. spaēta-.

սպոյժ- (սպուժ-) «դանդաղում» < spōž. Համմտ. մ. պ. spōz, spōǰ, պ. sipōz- (sipoxtan).

սպուռ (սպառ ի սպուռ կապակցության մեջ) «վերջ» < spurr (*spurna-). Համմտ. ավ. asparənah- «լիակատարություն», մ. պ. spurr «վերջ, ավարտ» (spurr būtan «սպառվել, ավարտվել»), պրթ. 'spur (ispurr), տե՛ս սպառ,

ստահակ (ի-ա) «լիրբ, ըմբոստ» < *stāhvak. Համմտ. մ. պ. vi-stāxv «վստահ», (պազ.) vastāx «վստահ, ինքնավստահ, համարձակ, անպատկառ, լիրբ», պ. gustāx «հանդուգն, համարձակ, լկտի», այլև հայ. (< իրան.) վստահ.

ստամբակ «ըմբոստ, բռուն, անսաստ» < stambak. Համմտ. մ. պ. stamba- «ապստամբել», մ. պ. stambak «անզոր, բռնակալ, կատաղի», պ. sitanb «զոռ. խռովարար». տե՛ս ապ(ա)ստամբ.

ստաշխն (-խն—ամբ) «խունկ» < *staxš-: Համմտ. հուն. (< իրան.) στακτή (σταξή).

սրահ (ի) «դահլիճ. վարագույր» < *srāh (*srāδa-. Համմտ. մ. պ. srāδ, պ. sarāy և հր. (< իրան.) srāh «նախասրահ», արաբ. (< իրան.) suradig. «վարագույր».

սրահակ < *srāhak (*srāδa-ka-).

սրուակ (ի-ա) < *sruvak. Համմտ. ավ. sr(u)vā-, մ. պ. srūv, պ. surū, sarūn «եղջյուր».

սրսկ-ել (սրսկ-) < *srisk-. Համմտ. ավ. srask «կաթկթել, սրսկել» մ. պ. srixt «կաթկթել», մ. պ. sirišk «կաթիլ. արտասուք»[67].

վագր (-եր) < vagr. Համմտ. մ. պ. b(w)pl (baβra), պ. babr (vavr < vaγr) և հ. հնդկ. vyāghrá-.

---

[67] Հ. Աճառյանը [ՀԱԲ, 4², 286] սրսկայան «ներքնակենյակ. վարագույր» բառը համարում է այս նույն արմատից իբր «ջրերի սրսկումը ծածկող»:

վազ «ցատկ. արշավ» (վազ-ել) < vaz-. Համեմ. ավ. vaz- «գնալ, շարժվել, թռչել», պրթ. wz- (vaz-) «թռչել».

վահան (ի-ա) < varhr-an (*var- «ծածկել»). Համեմ. ավ. vərəθra-, օս. vart.

վաճառ (ի-ա, ու) < vāčārr- (*vahā-čārna-). Համեմ. մ. պ. vāčār, պ. bāzār «շուկա».

վաճառական < vāčārakān. Համեմ. պրթ. w'c'rg'n, մ. պ. vāčārakānīh;
վաճառապետ < vāčār(a)pet.

վան (-ել) < van- 1. «նետել, ցրել, վանել. 2. նվաճել». Համեմ. հ. պ. van- «ցրել, նետել», խոտ.-սակ. uysvan- (*uz-van-) «նետել, ցրել», պ. (սամանի) bāvandan, (բախտիարի) van- «նետել, գցել» և ավ. van- «հարվածել, նվաճել», մ. պ. vānītan «նվաճել, ընկճել»[88].

վան (ի-ա) «բնակություն, բնակարան» < *van (*vahana-). Համեմ. հ. պ. ā-vahana-, պրթ. āvān (հայ. աւան).

վանդակ (ի-ա) < vandak (*vand- < հ.-ե. *ṷendh- «ոլորել, հյուսել»). Համեմ. մ. պ. vndk (vandak), այլև հ. հնդկ. vandhúra- «կառքի կողով, հյուսվածք». տե՛ս ապաւանդակ.

վախշ (ի) «տոկոս» < vaxš. Համեմ. մ. պ. vaxš «տոկոս» (*«աճ»), vaxšītan «մեծանալ, աճել».

վաշտ (ու) «զորախումբ» < *vašt. Համեմ. պ. gaštī «պարեկ, պահակախումբ», gurdān «գումարտակ».

վաշտկան < *vaštkān.

վառ «թագավորական քող» < varr (*varna-). Համեմ. մ. պ. wl (varr) և ավ. varəna-.

վասն «համար, պատճառով» < *vasn. Համեմ. ավ. vasna-, հ. պ. vašna- «կամք», ավ. vasnā, հ. պ. vašnā (գրծ. հլ.) «կամքով», պրթ. vsn'd (vasnād), սոգդ. wsn «համար, պատճառով».

վատ (ի-ա) < vat. Համեմ. մ. պ. vat, պ. bad.

վատթար (ի-ա) < vattar. Համեմ. մ. պ. vattar.

վատգոհար «սատրապացեղ, գռեհիկ» < *vatgōhar (vat «վատ» և gōhar «ցեղ»). Համեմ. մ. պ. vatgōhr, պ. badgōhar.

վար (վարել «տանել, քշել, հերքել») < vaδ-. Համեմ. ավ. vad- «տանել, քշել».

վարագոյր < vār(a)-gōδ (?). Համեմ. պրթ. brgwd.

վարազ (ի-ա) < varāz(a)-. Համեմ. ավ. varāza-, մ. պ. varāz, պ. gurāz.

վարապան «կրծքի զրահ» < varapān. Համեմ. ավ. varah-, մ. պ. var, պ. bar «կուրծք» և -pān (հայ. -պան).

վարուանդ «ձիու սանձ» < var(a)-βand. Համեմ. մ. պ. varband, պ. barband.

վարդ (ի) < *vard. Համեմ. ավ. varəδa- «մի բույս (հավանաբար վարդ)», պրթ. v'r, պ. gul «ծաղիկ. վարդ».

վարդապետ (ի-ա) «ուսուցիչ. վարպետ. դպիր» < vard(a)-pet. Համեմ. պրթ., մ. պ. wrdpt (առաջին բաղադրիչի համար համեմ. հ. պ. vard- «աշխատել, անել» = ավ. varəz- «ազդել, գործել, անել»).

վարժ < varž. Համեմ. ավ. varəza- «գործ, կատարում, գործունեություն», մ. պ.

---

[88] Առաջին իմաստի համար համեմ. E. Benveniste, BSL, 47, 1951, 26 և O. Szemerényi, S. 12, 2, 1966 199–200: Հ. Հյուբշմանը և Հ. Աճառյանը [ՀԱԲ, 4², 302] տալիս են միայն երկրորդ իմաստը:



35—455

varz «գործ, վարձ, վարժություն», varž «վարժություն», պ. varz «արհեստ, գործ, զբաղմունք».

վարձ (ո) <*varǰ/varz. հմմտ. պ. varzā «վաստակ», varzidan «վաստա-կել».

վարձակ «պարտեզ» < *varǰak/varzāk. հմմտ. հուն. (< իրան.) βαρζα, վարձկան < *varzkān/varǰkān.

վարմ (ի-ա) «ցանց, թակարդ» < varm. հմմտ. սողդ. wrmā-.

վարշամակ (ի-ա) «թաշկինակ, գլխաշոր» < *varšāmak. հմմտ. սողդ. w'š'my, պ. vāšāma, bāšāma «գլխաշոր».

վարունգ < *vā(h)rung (?). հմմտ. մ. պ. vātrang, (մնք.) w'drwng, պ. bād(ī)rang.

վարս (ի) < vars. հմմտ. ավ. varəsa- մ. պ., սողդ. vars «վարս», պ. gurs «խոպոպիկ».

վարսավիրայ < *vars(a)-viräy. հմմտ. ավ. varəsa-, մ. պ. vars (հայ. վարս) և մ. պ. vi-räy- = virāδ-, պրթ. wyr'z- «կարգավորել, հարդարել». տե՛ս վիրա-լ.

վարտի-ք (-եաց) < *vartī (*var- «ծածկել»). հմմտ. մանք. wera «վարտիք», այլև արաբ. (< իրան.) andarvart, andarvardiyya «անդրավարտիք».

վաւեր «ստոյգ, հաստատուն» < vāvar. հմմտ. մ. պ. vāvar, պ. bāvar.

վաւերական < *vāvarakān (?). հմմտ. մ. պ. vāvarīkān.

վեհ (ի) < veh (*vahya- «ավելի լավ»՝ բաղդ. աստիճան vahu-ի). հմմտ. մ. պ. veh, պ. bih և ավ. vahya-.

վերտ «հյուսված զրահ» < *vart. հմմտ. օս. vart «վահան», տե՛ս նաւարտան, վահան, վարտի-ք.

վէգ «վեճ, կռիվ» < *vēg. հմմտ. ավ. vaēγa- «հարված».

վէժ (վիժել) < vēž. հմմտ. ավ. vaēg-, մ. պ. vēxtan, vēž «թափահարել, նետել», խոտ.-սակ. bīǰs- «թափել».

վէճ < *vēč (հ.-ե. *u̯elk- «ուժ գործադրել, կռվել, հաղթել»). հմմտ. խոտ.-սակ. bīja- «կռվել».

վէմ (ի-ա) < vēm. հմմտ. պրթ. vym (vēm), մ. պ. vēm «վեմ, քար» և ավ. vaēmā «քարաժեռպ, ժայռաժեռպ».

վէս < *vēs. հմմտ. ավ. Vaēsaka (անձնանուն), խոտ.-սակ. Bīsā- (անձնանուն), maisalä «վես, հպարտ».

վիժակ (ուշ՝ վէժ) «վարագույր, ծածկոց» < vēžak (հ.-ե. *u̯ei-g(h)-). հմմտ. խոտ.-սակ. pvīys (*pa(ti)-vaiz-) «ծածկել».

վիճակ (ի-ա) < *vēčak? (< իրան. *vaik-?).

վին (ի-ա) «մի տեսակ քնար» < vīn. հմմտ. մ. պ. vīn «մի տեսակ երաժըշտական գործիք», սողդ. wyn' և հ. հնդկ. vīṇā «քնար».

վիշապ (ի-ա) < *vēšāp. հմմտ. ավ. višāpa- (aži- «իժ» բառի մակդիր՝ «թունահյութ»).

վիշտ (ի-ա) < višt. հմմտ. սողդ. ''wyštk «վիշտ, նեղություն», խոտ.-սակ. āviṣṭa- «վշտացած, նեղացած», այլև հ. հնդկ. viṣṭi- «նեղություն. տարապարհակ աշխատանք».

վշտագին < višt-gīn (?).

վիրա-լ (վիրայ-ել) «սափրել» < vīrāy-. հմմտ. մ. պ. vīrāy-, vīrāstān «կար-

գավորել, հարդարել». տե՛ս վարսա-վիրայ, ռահ-վիրայ:
վիկայ (ի) <vi-kāy. հմմտ. ավ. vīkaya-, պրթ., wg'h, մ. պ. vikāy, պ. guvāh.
վիկանդ-ել «նվաճել» <*vi-kand-՝ vi- ածանց և kan- «դնել, գցել». վերջինիս համար հմմտ. հ. պ. ava-kan- «դնել», խոտ.-սակ. kan- «գցել, դը-նել», պրթ. 'bgn «գցել», pr'gn «ցրել», մ. պ. (զրադ.) aβkandan «գը-ցել» և հայ. (<իրան.) ապա-կանել[69].
վճար «վարձ. վերջ. ավարտ: վճիռ» <vičār. հմմտ. մ. պ. vičār «վճիռ», պ. guzār «վճար, հատուցում».
վճիռ <vičīr. հմմտ. մ. պ. vičīr.
վնաս (ու, ի) «վնաս. մեղք, հանցանք» <vinās. հմմտ. պրթ. ('b)n's, մ. պ. vinās «վնաս. մեղք, հանցանք», (մնք.) wn'h (wināh), պ. gunāh «մեղք, հանցանք»
վնասակար <*vinās(a)kār.
վնասապարտ <vīnas(a)part (?).
վստահ <*vistāhv. հմմտ. մ. պ. vistāxv «վստահ», պ. gustāx «համարձակ, հանդուգն, լկտի». տե՛ս ստահակ.
վտակ (ի-ա) *vitak (vi- ածանց և tak- «հոսել»). հմմտ. ավ. vi-taxti- «հալք», պ gudāxtan «հալչել».
վտանգ (-ի) <vitang. հմմտ. մ. պ. (մնք.) vidang «վտանգ. դժբախտու-թյուն».
վտար-ել <vi-tar- (vi- ածանց և tar- «անցնել»). հմմտ. պրթ. w(y)d'r (vi-dār) «անցկացնել», մ. պ. vitartan «անցնել. մեռնել», սոգդ. wytr- «ու-ղևորվել, հեռանալ».
վտաւան (ի-ա) «մեկ տպարեկ, մեկ նեղընկեց (տարածություն)» <*vitā-van-. հմմտ. պրթ. wt'wny «ներընկեցություն, նեղածկություն».
վրան < viδān. հմմտ. պրթ. wyd'n, մ. պ. wy'n.
վրէպ <virēp. հմմտ. պ. virēb, vurēb «թյուր, ծուռ, խոտոր».
վրիպակ <*virēpak.
վրիպական <*virēpakān.
տախտ (ի?) «գահ, աթոռ» <taxt. հմմտ. մ. պ., պ. taxt.
տախտակ (ի-ա) <tāxtak. հմմտ. մ. պ. tāxtak, պ. taxta.
տակ (-ի) «տակ, հատակ, խորք, արմատ. ցեղ» <*tak. հմմտ. պ. tak «տակ, հատակ, խորք».
տակ «(մարգարտա)շարք. արցակ» <tāk. հմմտ. մ. պ. tăk «հատ, կտոր, գումար», պ. tāy «ճյուղ, հատ».
տակառապետ (պարսկական մի տիտղոս) <*takār(a)pet. հմմտ. հայ. (<իրան.) տակառ, պ. taγār (հայ. թաղար) «կուժ, սափոր» և հայ. (<իրան.) պետ, մ. պ pat, pet.
տակ-առ «քիչ-քիչ, հետզհետե» <*tāk. հմմտ. պ. tak «քիչ. միակ».
տաղաւար (ի-ա) «հյուղ, մացառաշեն խրճիթ. վրան» < tālavar (հ.-ե. *tāl-) հմմտ. պրթ. t'lw'r, պ. tālar «դահլիճ».
տաճար (ի-ա) «պալատ. սեղանատուն. աղոթատուն» <tačar(a)- հմմտ. հ. պ. tačara- «պալատ», պ. tajar «ձմեռանոց».

---

69 Ըստ այլ կարծիքների [Հ. Աճառյան, ՀԱԲ, 4², 344—345]՝ «բանդել» արմատից, որ իմաստով չի համապատասխանում։

*տաճարապետ* < tāčar(a)pet.

*տաճիկ* «արաբ. արաբական» < tāčik (*tak/č- «վազել»). Համմտ. մ. պ. tāčīk, պ. tāzī (> հայ. բրբռ. թազի).

*տանջ-, -տանջ* < tanj-. Համմտ. պրթ. tng, tnng «վիշտ, տանջանք, ցավ», պ. tanjidan «սեղմվել, կուչ գալ». տե՛ս թանգ (թանկ).

*տաշ-ել* < taš-. Համմտ. ավ. taš-, մ. պ. tāšītan. տե՛ս տաշտ.

*տաշտ* (ի) «բաժակ, թաս» (ուշ՝ «կոնք») < tašt. Համմտ. ավ. tašta-, մ. պ., պ. tašt.

*տապ* (ո) < tap. Համմտ. ավ. tap- «տաք լինել», մ. պ. tap «տաք» պ. tāb. «տաքություն, տապ». տե՛ս տաւթ.

*տապակ* (ի-ա) «տապակելու աման» (և «վահանաձև մի զարդ» ?) < tāpak. Համմտ. մ. պ. tāpak, պ. tāva (հյ. բրբռ. թավա), այլև տաւր. (< իրան.) ṭabaqā.

*տապաստ* «գետնատարած, տապալված, փռված» < *tapast. Համմտ. մ. պ. tapast(ak), պ. tabast «սփռոց», taftan, tabīdan «ոլորել» (և tabast «փչացած» ?). տե՛ս տապաստակ.

*տապաստակ* «բազմոց» (ուշ՝ տապաստ «սփռոց») < tapastak. Համմտ. մ. պ. tapast(ak), պ. tabast «սփռոց, ծածկոց», taftan, tabīdan «ոլորել». տե՛ս տապաստ.

*տապար* (ի-ա) «կացին» < tapar. Համմտ. պ. tabar, tavar.

*տար* «հեռու. զատ» (տար-՝ տարաշխարհիկ, տարադէմ, տարադիմիկ, տարաժամ, տարակոյս, տարապարտ) < tar-. Համմտ. ավ. tar- «անցնել», tara-, taro- «տարա-, անցա-, ավելի», պ. tara «միջով. միջով դէնը», սողդ. tr-zmn «տարաժամ».

*տարազ* (ու) «արվեստավոր գործվածք. միջոց, ձև, եղանակ» < tarāz. Համմտ. պ. tarāz «տարազ, հագուստ, արդուզարդ», tarz «կերպ, ձև».

*տարփ* «տարփանք» (այս ձևով ոչ ավանդված. ավելի վաղ՝ տրփի, տփի) < tarp. Համմտ. հ. պ. *trpi- (էլամ. Turpiš, Tirpiš, թերևս նաև Tarpiš) «հաճույք, բավարարություն» (վեդ. tṛpát «հաճույքով, գոհությամբ»), ավ. θrąfs- «գոհություն, բավարարություն», պ. tulf (*tṛfra-)» «գերհագեցում»[70].

*տաւթ* (ո) «տապ, ուժեղ տաքություն» < taft. Համմտ. ավ. tapta- «տաք», tafta- «տապ ունեցող, ջերմող», պ. taft «տապ, տօթ». տե՛ս տապ.

*տաւիղ* (ի-ա) «տավղային քնար» < *taβil. Համմտ. հուն. (< պրթ.) ταβάλα, ταβῆλα «մի երաժշտական գործիք» (ըստ Հեսիքիոսի).

*տէգ* (ի-ա) «նիզակի ծայրի սուր երկաթ» < *tēg. Համմտ. ավ. taēγa- «սուր. սուր ծայր, սայր», պ. tīγ (tēγ) «սուր, սուսեր, ծայր».

*տոհմ* (ի, ի-ա) < tōhm. Համմտ. ավ. taoxman- «սերմ, սաղմ. ազգակցություն», հ. պ. taumā «ցեղ, տոհմ», մ. պ. tōhm «սերմ», պ. tuxm «սերմ».

*տոհմական* «առատ բերք» < tōhmakān. Համմտ. պրթ. tōxmagān «ընտանիք» ?.

*տոհմիկ* «ազնվական» < *tōhmīk.

---

[70] Այստեղից հայ. բրբռ. թլփել, թլֆել «նվաղել»? (եթե ոչ արաբ. tlf «կործան(վ)ել, փչանալ»)։ Այս համեմատության մեջ կասկած է հարուցում p-ի դիմաց փ-ն (մինչդեռ t-ի դիմաց՝ տ)։

տոյժ (ի) (տուժել) < *tōž. հմմտ. մ. պ. tōž-, tōxtan «տուժել, հատուցել», սոգդ. tw'γ «վճարել, հատուցել». տե՛ս տուգան-ք.

տուգան-ք < *tugan. հմմտ. մ. պ. tōž- և սանս. (< իրան.) ṭūgānā «նեղված, հարստահարված, տառապած». տե՛ս տոյժ.

տրէ (հայկական տոմարի 4-րդ ամիս) < *tīr-ē (tīr-). հմմտ. մ. պ. tīr «սիրիուս աստղ», պ. tīr «արեգակնային 4-րդ ամիս».

փադան (ուշ՝ փա(ն)դամ) «լաչակ» < *padān (*pati-dāna-). հմմտ. մ. պ. padām, պ. fadām.

փաշաման «զղջում» < pašāmān. հմմտ. մ. պ. pašāmān, (մնք.), պ. pašīmān «զղջացած», pašīmānī «զղջում».

փառ-(ք) (ի-ա) < farr (*farna-). հմմտ. պրթ. frh (farrah), մ. պ., պ. farr և ավ. xvarənah-, հ. պ. farnah-.

փարգաստ «չլինի թե, քավ լիցի» < *pargast. հմմտ. պ. pargast.

փիղ (ի-ա) < pīl. հմմտ. մ. պ., պ. pīl.

փուշտիպան (ի-ա) «թիկնապահ» < *puštipān. հմմտ. մ. պ. puštīkpān-, պ. pušt(ī)ban. հին ձևը տե՛ս պաշտպան.

փուտ (ո) (փտել, -իլ) < pūt. հմմտ. մ. պ. pūtak «փտած, նեխած», պ. pūd «հին, փտած» և ավ. pūiti- «փտուտ, փտում, նեխում»[71].

քաղաք (ի-ա) < *kalāk (*katāka-). հմմտ. մ. պ. kl'k (kalāk) «բերդ, ամրոց», (թուրֆ.) qdg, պ. kada «տուն, բնակարան».

քանդ «քարի վրա փորագրություն» (քանդ-ել «ավերել. տանջել. քարի վրա փորագրել») < kand. հմմտ. մ. պ., պ. kandan «քանդել, փորել, քանդակել, փորագրել».

քանդակ < kandak.

քարշ (-ել) < karš-. հմմտ. ավ. karš-, մ. պ. kašītan, պ. kašīdan.

քէշ (ի) (քեշտ, ուշ՝ կեշտ) «զրադաշտական կրոն» < kēš. հմմտ. մ. պ., պ. kēš, kīš.

քնար-ուկ «մի տեսակ ծառ և նրա պտուղը» < kunār. հմմտ. պ. kunār „Zizyphus spina Christi".

քսակ < *kīsak. հմմտ. պ. kīsa (> հայ. բրբռ. քիսա).

քրքում (-ի) «շաֆրան, զաֆրան» < *kurkum. հմմտ. պ. kurkum։

Վերևում բերված ցանկում իրանական հիմնական փոխառությունների թիվը հասնում է 712-ի, համապատասխան վերջածանցային և վերջածանցակերպային ձևերի հետ միասին առնված՝ 837-ի (մովպետը և պարեկապան-ը մոգպետ-ից և պարհակապան-ից տարբեր բառեր համարելու դեպքում՝ 839-ի)։ Սակայն իրականում այդ թիվը շատ ավելի մեծ է. ինչպես կտեսնենք փոխառությունների հնչյունական և բառակազմական առանձնահատկությունների քննության ժամանակ, կարելի է առանձնացնել հնարավոր իրանական ծագման մեծաքանակ բառեր, որոնց բուն աղբյուրների վերաբերյալ առայժմ հայտնի իրանական տվյալներում վկայություններ չեն պահպանվել։

[71] Նման սովորական բառի փոխառությունը (եթե, մանավանդ, նկատի առնենք ո հոլովումը՝ մի կողմից և իրանական ածանցական ձևերի բացակայությունը հայերենում՝ մյուս կողմից) կասկածելի է. թերևս անմիջապես ծագում է հ.-ե. *put-ի *phu-t- հնարավոր տարբերակից։

Նախքան իրանական փոխառությունների հնչյունական, ձևաբանական, բառակազմական առանձնահատկությունների և իմաստային-թեմատիկ խըմբերի քննությանն անցնելը կանգ առնենք բուն հայկական ու իրանական ծագման բառերի հնչյունական առանձնահատկությունների համընկման դեպքերի և իրանական հնագույն փոխառությունների ժամանակագրական շերտերի տարբերակման այն եղանակների վրա, որոնք առաջ են բերում գնահատման տարբերություններ։

Լինելով հնդեվրոպական առանձին խմբերի պատկանող լեզուներ՝ հընչյունական նշանակալից տարբերություններով հանդերձ, այնուամենայնիվ որոշ դեպքերում հայերենը և իրանական լեզուները ունեն այնպիսի բառային ձևեր, որոնք արտաքնապես կարող են համընկնել և, հետևաբար, առաջ բերել տարբերակման դժվարություններ։ Հայերենի՝ հնդեվրոպական լեզուների մեջ գրաված տեղի վերաբերյալ հարցի քննարկումից պարզվեց, որ տարբերակիչ հատկանիշների հետ միասին հայերենը և իրանական լեզուները ունեն նաև ընդհանուր հատկանիշներ. նկատի ունենալով իրանական հնչյունների հայկական փոխառություններում արտացոլվելու առանձնահատկությունները՝ կարելի է ասել, որ հետևյալ դեպքերում մենք կունենանք հայերենի հ.-ե. ծագման բառերի և իրանական փոխառությունների հնչյունական էական համընկումներ հատկապես՝ 1) հ.-ե. *a, *ā, *i, *ī, *u, *ū ձայնավորների. 2) հ.-ե. *m, *n, *r և *l ձայնորդների (վերջինս իրանականում տալիս է հիմնականում r). 3) հ.-ե. *bh, *dh, *gh, *ph, *th, *kh, *k´ և մասամբ *g´h, *s բաղաձայնների և 4) հ.-ե. *sp, *st ու որոշ այլ կապակցությունների դեպքում։ Հայերեն փոխառությունների մեջ՝ ձայնավորների և երկբարբառների երկարության ու կարճության իրանական տարբերությունները վերանում են, և ստացվում են միևնույն ա, ի, ու արտացոլումները. *ph, *th, *kh-ի դեպքում իրանական փոխառությունների f, ϑ, x-ն հայերենում արտացոլվում են փ, թ, խ և համընկնում հայերեն համապատասխան արտացոլումների հետ. *g´h-ի միջձայնավորային z և k´-ի s (բացի հին պարսկերենից) արտացոլումները համընկնում են հայերեն համապատասխան արտացոլումների հետ. *s-ի բառասկզբի որոշ դիրքերում հայերենում տալիս է հ և համընկնում իրանական համապատասխան արտացոլումների հետ։ Եթե սրանց գումարենք *g´h-ի բաղբառային հնարավոր իրանական j արտացոլումը որոշ դիրքերում, հատկապես r-ից հետո (հմմտ. դերձակ, հանդերձ և այլն), ձայնավորների հերթագայությունները, որոնց դեպքում հ.-ե. *e, *ē, *o, *ō, ձայնավորների թուլացած *ə, *a ստորինները (հմմտ. նաև հ.-ե. *r̥ > հայ. ar, մասամբ նաև հ.-ե. *o- > հայ. a-) կարող են հայերենում արտացոլվել որպես ա և համընկնել իրանական բուն (ոչ թուլացած) արտացոլումների հետ, ուշ շրջանի իրանական ä-ի հայ. է անցումը, համընկումների քանակն ավելի կմեծանա։ Զգալի համընկումներ կարող են տալ և բնաձայն արմատները։

Վերևում հիշված պայմանների՝ մեկ բառի մեջ համընկնելու դեպքում առաջանում են երկակի գնահատման տարբերություններ, երբեմն էլ հնարավոր է խոսել հայկական ու իրանական ձևերի բաղարկման մասին։ Այսպիսի երկակի գնահատման հնարավորության դեպքում հարցը հօգուտ բառի իրանական ծագման լուծելիս հաշվի են առնվում համապատասխան հնդկական ձևերը, իրանական բառակազմական կաղապարները, իրանական բաղադրությունների և համանիշների առկայությունը կամ բացակայությունը, իմաս-

տային և բառակազմական առանձնահատկությունները, գործածականությունը և այլն։ Այստեղ հանդիպում ենք դեպքերի, երբ հարցի լուծումը դժվարանում է. այսպես, արուեստ բառի -եստ-ը կարծես խոսում է նրա հայկական ծագման մասին՝ հ.-ե. *ar- «կցել, հարմարեցնել» արմատից (հմմտ. լատ. ars «արվեստ»), բայց կա իմաստով փոքր ինչ տարբեր հ. պ. arvastam բառը [Ջահուկյան, 1981գ]. բիր-ը համարվում է բնիկ հայերեն բառ՝ *bhi-ro-՝ bheı- «խփել» արմատից, բայց հավասար իրավունքով այն կարող է համարվել իրանական փոխառություն, մանավանդ եթե կապված է բահ-ի հետ (*bher- «ծակել, կարել, ճղել», եթե ոչ *bhedh-ից՝ «փորել»)[72]. դայեակ, ստուեր բառերը Յ. Պոկոռնին դնում է բնիկների, Հ. Աճառյանը՝ փոխառությունների շարքում. դառնամ (դարձ) բայը համարվում է բնիկ, բայց նույն հաջողությամբ կարող է դիտվել որպես իրանական. դժվար է նաւ բառի բնիկ, թե իրանական լինելու հարցի որոշումը (հ.-ե. *nāu-), մանավանդ որ կան և՛ բնիկ հայկական, և՛ իրանական բաղադրություններ (հմմտ. նաւապ «նավավար», որի մեջ az-ը գալիս է հ.-ե. *ag'-ից. այստեղից է հայ. ածեմ-ը). հնարավոր է ենթադրել բաղարկություն. յատակ-ը Հ. Աճառյանը բխեցնում է հ.-ե. աղբյուրից (*ped-՝ *ped- «ոտք» արմատից), բայց հնարավոր է իրանական ծագում՝ *ā-tak (հմմտ. տակ<tak). ըստ ավելի մեծ հավանականության և տարածված կարծիքների՝ բու, գաւառ, թել, յաւ, սար-f, սաստել (սաստիկ), սխալ, սկունդ, սրուն-f, քէն բառերը դրված են բնիկների շարքում, բայց գրեթե հավասար հաջողությամբ կարող են բխեցվել և որոշ հետազոտողների կողմից բխեցվում են իրանական աղբյուրներից՝ բու (հ.-ե. bhu-) — պ. būf, būm (բայց բուէն-ի -էն-ը իրանական ծագում ունի, և բուէն-ը պետք է համարել իրան. կազմություն). գաւառ (հ.-ե. *ghəu-/ghēu-) — ավ. gava- «գավառ, շրջան»(?), օս. γäv «գյուղ». թել (հ.-ե. *tek-lo-) — խոտ.-սակ. ttīla «թել». յաւ «վերջ» (հ.-ե. *paus-) — ավ. yav «տևողություն». սար-ք (հ.-ե. *kr̥-/ker-) — մ. պ. spar «վահան» (sp > s անցման համար հմմտ. սպանդարամետ—սանդարամետ) (Վ. Բելարդի, Ջ. Բոլոնիեզի). սաստ (հ.-ե. *k'ās-) — ավ. sāstar- «իշխող». սխալ (հ.-ե. *skhəl/skhel-) — հ. հնդկ. skhalatē «սայթաքում է, մոլորվում է». սկունդ (հ.-ե. *k'u̯ont-) — վախ. skən, իշկ. skьnůk, յազգ. sək°on- «շան ձագ, սկունդ». սրուն-ք (հ.-ե. *krūs-) — ավ. sraoni- «հետույք. ազդր». քէն (հ.-ե. *ku̯oinā) — ավ. kaēna- «պատիժ, հատուցում, վրեժ», մ. պ. kēn «քեն, վրեժ» և այլն։ Է. Բենվենիստը [REA, 1, 273] սրանց միացնում է դէզ (հմմտ. ավ. daēz- «դիզել»), հաս (հասանել) (հմմտ. պրթ. has «հասակ. ծագում»), սամի (հմմտ. ավ. yuyō-səmi = վեդ. yugaśmayá-, որտեղ səmi = սամի), այլև իր (հմմտ. պրթ. 'yr «իր, բան»), սուրբ (հմմտ. վեդ. śubhrá- «փայլուն. գեղեցիկ») բառերը, որոնց իրանական ծագումը կասկածելի է. մանավանդապես իր բառը ակնհայտ ստուգաբանական շարք է կազմում ի-մն, ի-նչ, ի-ք բառերի հետ (հ.-ե. *ku̯l-), իսկ սուրբ-ը իմաստով հեռու է վեդայական բառից և ունի հայերենին բնորոշ *bhr > րբ դրափոխությունը։ Համեմատաբար ավելի հավանական պիտի համարել աւգուտ բառի իրանական ծագումը (հմմտ.

---

72 Հ. Աճառյանը [ՀԱԲ, $1^2$, 392—393] կապում է բահ-ի հետ, բայց համարում բնիկ հայկական՝ սխալ հիմունքով վկայակոչելով մահ բառը, որ իրականում նույնպես իրանական ծագում ունի։

հ. պ. abıgāva- > արամ. ʼbgw, պրթ. ʼbgw «աճ, հավելում», հ. պ. abi-jāv-, պ. afzūdan «ավելացնել), որ Է. Բենվենիստը բերում է „աւգնել, աւգնական բառերի հետ միասին՝ առանց որանց աղբյուր ծառայած ձևերը ճշտելու։ խարել, խարոյկ, խարշեմ բառերը մենք դրել ենք ընիկ հնդեվրոպականների շարքում, բայց նույնքան հնարավոր է նրանց իրանական ծագումը (հմմտ. -ոյկ ու մ. պ., պրթ. -ōk և հ.-ե. *rs > իրան. rš): Առայժմ մենք ավելի հավանական ենք համարել առհան, աւետ, երանիկ, երջանիկ, մաշել, մոշ, որմ, սաուար, փոր բառերի ընիկ հնդեվրոպական, քան իրանական ծագումը։ Նրանց համար առաջարկված իրանական զուգահեռները բավականաչափ համոզիչ չեն։

Մի քանի խոսք ժամանակագրական հարցերի մասին, որոնց կանդրադառնանք նաև իրանական փոխառությունների հնչյունական առանձնահատկությունների քննության կապակցությամբ։

V դ. ավանդված հայ. բառերը ժամանակագրական առումով միատարր չեն։ Սրանց մեջ կան ինչպես այդ դարից առաջ կատարված հին և միջին իրանական, այնպես էլ հենց այդ դարում կատարված միջին իրանական փոխառություններ, որոնք գալիս են սասանյան փուլից։ Այս փոխառությունների տարբերակման համար հարկավոր է նկատի ունենալ և՛ արտաքին՝ իրանական, և՛ ներքին՝ հայկական, փաստերը։ Առաջին դեպքում բնական է կարծել, որ հին և միջին իրանական փոխառությունները կարելի է տարբերել առաջին հերթին հայերեն բառերի՝ հին, թե միջին իրանական ձևերին մերձավոր լինելու առթիճանով։ Սակայն այս չափանիշն էլ բացարձակ արդյունք չի տալիս, եթե նկատի ունենանք համաբանական (անալոգիական) համահարթման և ժողովրդական ստուգաբանության ու վերաիմաստավորման հնարավորությունը։ Այսպես, հայտնի է, որ հին իրանական շրջանում հոլովական վերջավորությունները հիմնականում պահպանվում են, միջին շրջանում ընկնում. կարծեք թե հեշտ է ըստ այդմ անվերապահորեն հին իրանական համարել այն բոլոր փոխառությունները, որոնց մեջ առկա են թեք հոլովների հոլովիչ ձայնավորների, ինչպես նաև բարդությունների առաջին բաղադրիչների մեջ հին իրանական հիմքային ձայնավորներին համապատասխան ձայնավորներ. սակայն եթե այս սկզբունքը ու, ի ձայնավորների դեպքում թերևս որոշ չափով արդարացնում է իրեն (հմմտ. խրատ, սեռ. խրատու, ախտ, սեռ. ախտի՝ ավ. xratu-, axti- ձևերի կողքին), ապա -ա-ով հիմքերի դեպքում բացարձակ արդյունքներ չի տալիս. հոլովման -ա-ով հիմքերի դեպքում հնարավոր է համաբանական ազդեցություն, եթե նկատի առնենք անձերի անուններից շատերի հոլովվելը ի–ա հոլովմամբ և բարդությունների ու ածանցումների մեջ ա հոդակապի համաբանական տարածումը. վերջին հանգամանքով է բացատրվում ու-ով և ի-ով հիմքերի՝ բարդությունների և ածանցումների մեջ ա-ով հիմք, այսինքն՝ ա հոդակապ ստանալը (հմմտ. ախտ, սեռ. ախտի, բայց ախտաժէտ). մանավորապես հեշտությամբ է տարածվել ա հոդակապը միջին իրանական այն բարդությունների փոխառության դեպքում, որոնց բաղադրիչները հայերենում գիտակցվել են. այսպես, -պետ-ով բարդությունները, անկախ հին, թե միջին շրջանում փոխառված լինելուց, ունեն, հազվադեպ բացառություններով, -ա- հոդակապ, այսինքն՝ դիտակցվում են մեծ մասամբ որպես հայկական բարդություններ, մանավանդ եթե առաջին բաղադրիչները

անկախ գործածություն ունեն. բացառություն են կազմում միավանկ առաջին բաղադրիչներ ունեցող մարդպետ, մարզպետ, մոգպետ բառերը։ Հարկավոր է նկատի առնել նաև միջին իրանական որոշ արտածքներում առանձին արխաիկ ձևերի պահպանված լինելու հնարավորությունը, ձևեր, որոնք կարող էին հայերենի անմիջական աղբյուրը լինել։ Բերենք մեկ օրինակ. հայ. համարակար «հաշվակալ, հաշվապահ» բառը կարող էր գալ ինչպես հ. պ. hamarakara- այնպես էլ պրթ. hamārkar ձևից (այսպիսի նախաձև վերականգնում են հայ. բառի համար Հ. Հյուբշմանը և, նրա հետևողությամբ, Հ. Աճառյանը)։

Հայկական նյութին աղբյուրները ժամանակագրական հարցերի լուծման համար կարևոր են մի քանի առումով։ Նախ, ինչպես հայտնի է, V դարի համար տարբերում են դասական կամ մեսրոպյան շրջանը (մինչև 460 թ.) հետագա շրջանից. բնականաբար ավելի վաղ շրջանի բառերն առանձնացնելիս առավելությունը տրվում է դասական շրջանի հեղինակներին, որոնց լեզուն մոտ է ժամանակի խոսակցական լեզվին, և որոնց գործածած բառերը գալիս են հիմնականում խոսակցական լեզվից։ Երկրորդ՝ էական նշանակություն ունի աղբյուրների՝ ինքնուրույն, թե թարգմանական լինելը. բնական է կարծել, որ հունարենից, ասորերենից կատարված թարգմանություններում (աստվածաշունչ, Ոսկեբերան, Եփրեմ և ուրիշներ), հանդիպող իրանական փոխառությունները պետք է եկած լինեն խոսակցական լեզվից, այսինքն՝ գործածական բառեր եղած լինեն։ Երրորդ՝ էական նշանակություն ունի հայ հեղինակի թեմատիկան. բնականաբար, իրանական կյանքի հետ կապված պատմական և կրոնական-դավանաբանական երկերում տեղ պետք է գտնեին իրանական կյանքի հետ կապված, միայն գրական բնույթ ունեցող կամ խոսակցական լեզվում հազվադեպ հանդիպող, պաշտոնական փաստաթղթերին հատուկ բառեր, որոնք չեն կարող շատ մեծ հնություն ունենալ։ Առանձնապես շատ են այս կարգի բառերը Բուզանդի, Եղնիկի, ավելի ուշ Եղիշեի և ուրիշների երկերում։ Չորրորդ՝ էական տվյալներ է տալիս բառի գործածականության սահմանը. մեկ-երկու անգամ հանդիպող բառերը անվերապահորեն հանել մենք առայժմ վաղաժամ համարեցինք՝ մինչև բանասիրական ավելի մանրակրկիտ քննություն կատարելը. հմմտ. արուեանակ, բանուկան, դեն, զարտակ, խար «անասնակեր» ճիրիկ «մի տեսակ ծաղիկ», ճանբակ, կոտակ, կողպետ, դամդայեալ, ճեմիշ, մեհրան, շաբստան տակառապետ, պատակ, պէշապիկ, սակստան անդերձապետ, սան, սատակ «պարզ», սմնակ, սոր, սպոյժ, վարզոհար, տապաստակ, փաղան և այլն։ Այս և ցուցակում տեղ գտած այլ բառերի զգալի մասը կապված է պարսկական կյանքի հետ և հայերենի համար բնորոշ չէ՝ կողպետ, շաբստան տակառապետ, սակստան անդերձապետ, փաղան, այլև հազարապետ, մազդեզն, մաշկապարճէն, fէշ և այլն։ Նման բառերը հիմնականում միջին պարսկերենից են՝ ի տարբերություն ավելի հին և տարածված բառերի, որոնք հիմնականում պարթևերենից և մեդերենից են։

Այս առումով հետաքրքրական է հայերենի իրանական փոխառությունների համեմատությունը վրացականների հետ, որոնց նշանակալից մասը զուգահեռներ ունի հայերենում և մասամբ էլ կատարված է հայերենի միջնորդությամբ։

Իրանական փոխառությունների բարբառային և ժամանակագրական շերտերը վրացերենի համար տարբերակելու փորձ է կատարել Մ. Անդրոնի-

կաշվիլին իր «Իրանի վրացական լեզվական փոխհարաբերությունների ակ-նարկներ» գրքում [Andronikašvili, 1966]։

Հին շրջանի համար Անդրոնիկաշվիլին առանձնացնում է մեդական, հին պարսկական, ավեստական, սկյութա-սարմատական և, սրանց հետ կապված, ալանա-օսական բառաշերտեր։

Մեդական համարված գրեթե բոլոր բառերը զուգահեռներ ունեն հայերե-նում։ Բացի Artavaz < իրան. Artavazdah (հայ. Արտաւազդ) և Parnavaz < իրան. Farnavazdah (հայ. Փառնաւազ) անձնանուններից, Անդրոնիկաշ-վիլին նշում է հետևյալ բառերը՝ 1) bagini < իրան. *bagaina (հայ. բա-գին), 2) mogvi < իրան. *maguš, ավ. moγu-, հ. պ. magu- (հայ. մոգ, -ու), 3) ganji < իրան. *ganza (հայ. գանձ), 4) (s)pilenji < իրան. *pirinj (հայ. պղինձ) և 5) maspinjeli, այլև Aspinja — տեղանուն < իրան. *aspinj (-j) (հայ. ասպնջական)։ Սրանցից միայն հայ. ասպնջական-ն է հնչյունա-պես այնքան տարբերվում վրաց. ձևից (վրաց. j = ձ-ի դիմաց հայ. ջ), որ մեդականի փոխարեն կարելի է ենթադրել այլ՝ պարթևական աղբյուր։

Հին պարսկական ծագում է վերագրվում, բացի parsi (հայ. պարսիկ) ժողովրդանունից, Artaban < հ. պ. Artabanu (հայ. Արտաւան), Vaštasab < հ. պ. Vištāspa (հայ. Վշտասպ) անձնանուններից և Armazi < հ. պ. A(h)ura-mazda դիցանունից (հայ. Արամազդ, ուշ՝ Որմիզդ), հետևյալ բառերին և ար-մատներին՝ 1) -art- (m-art-ali «արդար, ճիշտ») < հ. պ. arta-, 2) -arj- (m-arj-ve «ճարպիկ, աշխույժ») < հ. պ. arj- (հայ. ուշ՝ արժան), 3) vani < հ. պ. vahana- (հայ. վան, աւան)։ Սրանցից միայն van-ն ունի հայերենում ուղղակի զուգահեռ, և այն էլ ավելի հավանական է ենթադրել պարթևական աղբյուր, որտեղ առկա է ավելի մոտ ձև՝ բառամիջի h-ի անկումով՝ āvān՝ հ. պ. ā-vahanam-ի դիմաց[73]։

Ավեստայի լեզվի բառապաշարից նշվում են հետևյալները. 1) cminda «սուրբ» < ավ. spənta (համե. հայ. սպանդ-՝ սպանդարամետ բառում), 2) ešma, ešmaki «չար ոգի» < ավ. aēšma (չար ոգու անուն), 3) parto «լայն» < ավ. pərəθav- (pərəθu-), 4) droša < ավ. drafša (հայ. դրաւշ, դրաւշակ), 5) jojoxeti < ավ. daožahva- (հայ. դժոխ-ք)։ Ավեստերենի ուղղակի ազդեցու-թյունը վրացերենի և հայերենի վրա ընդհանրապես անհավանական է, և հայ. դրաւշ, դժոխ բառերի ու դրանց վրացական համարժեքների համար ավելի հավանական է ենթադրել միջին իրանական աղբյուր, մանավանդ որ երկրորդ բառում հայ. և վրաց. x-ն (խ) արտացոլում է xv-ն, մինչդեռ ավեստերեն բառաձևը ունի hv-ով ձև։ Վրաց. droša-ն ամենայն հավանակա-նությամբ փոխառված է հայերենի միջնորդությամբ՝ աւ < o հայկական հնչյունափոխությամբ։

Եթե մեդերենի և հին պարսկերենի՝ վրացերենի վրա գործած բառային ազդեցությունը գրեթե նույնությամբ կիսում է նաև հայերենը, որ ունի այդ լեզուներից անկախ սեփական, վրացերենի հետ չհամընկնող տարրեր ևս, ապա նույնը չի կարելի ասել սկյութերենի, ալաներենի և առավել ևս օսական ազդեցության մասին. աշխարհագրական դիրքերի և պատմական շփումների

---

[73] Ըստ որում. ebani «երկիր» բառը կարո՞ղ է փոխառություն լինել հին իրանական աղ-բյուրից։

ժամանակագրական սահմանների տարբերության հետևանքով այդ ազդեցությունը պետք է ուժեղ լիներ վրացերենի և թույլ՝ հայերենի վրա։ Նույն կերպ, Մ. Անդրոնիկաշվիլու և նրա նախորդ հետազոտողների, հատկապես Վ. Ի. Աբաևի և Գ. Ս. Ախվլեդիանու՝ վրացերենում առանձնացրած շերտը հայերեն այնպիսի զուգահեռներ չունի, որոնք վկայեն հիշյալ լեզուների՝ հայերենի վրա գործած ուղղակի կամ անուղղակի քիչ թե շատ ուժեղ ազդեցության մասին։ Ինքը Անդրոնիկաշվիլին առանձնացնում է վրացերենի՝ այդ լեզուներից փոխառած 108 հասարակ և կրկնակի թվով հատուկ անուններ, որոնց համար հայերեն ուղղակի զուգահեռներ չի նշում։ Անկախ Անդրոնիկաշվիլու ակնկալիքից՝ դժվար չէ նկատել վրացերեն բառերի մոտ մասի՝ հայերեն համապատասխան բառերի հետ ունեցած նմանությունը, բայց այդ նմանության բնույթը տարբեր է։ Մի շարք դեպքերում վրացերեն և հայերեն զուգահեռները իրանական ծագում ունեն, բայց գալիս են բարբառային տարբեր աղբյուրներից, ընդ որում վրացերեն բառերը միշտ չէ, որ ծագում են ալանականից և նրա հանորդներից (կան նույնիսկ դեպքեր, երբ վրացերեն բառերը կարող են փոխառված լինել իրանական աղբյուրից հայերենի միջնորդությամբ)՝ վրաց. bevri — հայ. բյուր, վրաց. rangi — հայ. երանգ, բրբռ. ռանգ, վրաց. ṭep — «տաքացնել» — հայ. տապ, վրաց. šavi — հայ. սև և այլն։ Մյուս դեպքերում Մ. Անդրոնիկաշվիլու առաջարկած ստուգաբանությունները կասկածելի են. այսպես, ակնհայտորեն հայերեն ծագում ունեն վրաց. arni «վայրի ոչխար» (հայ. առն), buci «գառ» (հայ. բուծ), verji «խոյ, արու ոչխար» (հայ. որձ «արու», յորձ «արու ոչխար»), pinti «զզվելի» (հայ. փնթի «կեղտոտ զզվելի») և այլն։ Հավանական է նաև ḳel- «կապել» արմատի հայկական ծագումը, թեև նրա համար որպես աղբյուր ենթադրվող կաղ բառի ծագումը և հարաբերությունը խեղ, շեղ, շիլ բառերի հետ լիովին պարզ չէ։ Անհավանական է նաև վրաց. aḳuta «խոհանոցային սալօջախ», amindi «եղանակ», mitell «մեծ, առատ» բառերի օսական ստուգաբանությունը՝ նրանց բխեցումը ag-wat «գավաթի կաթսայի տեղ» (ag «կաթսա» և wat «տեղ»), amond «երջանկություն, բախտ», myd «մեղր» բառերից, մանավանդ որ դրանց հայերեն զուգահեռները՝ ախուր, բրբռ. ամինդ, բրբռ. մթել (մթիլ) այդ աղբյուրներով չի կարելի բացատրել։ Վրաց. za-, zav- «ծնել» և zrax- «խոսք, խոսել» արմատները կարելի էր համեմատել հայ. զավակ և զր-ույց բառերի հետ, բայց Անդրոնիկաշվիլու ստուգաբանությունը բավարար հիմք չի տալիս դրա համար (օս. zajün «ծնել, ձու ածել», պրսկ. zāyad «ծնում է»՝ zādan-ից, օս. zərən/zord «խոսել»՝ ծագումն անհայտ, ըստ Անդրոնիկաշվիլու՝ գալիս է իրան. zūr- արմատից, որից հայ. զուր)։ Այսուհանդերձ միանգամայն հնարավոր է զավակ-ի և զր-ի իրանական ծագումը։

Մ. Անդրոնիկաշվիլին փորձում է տարբերել նաև վրացերենի միջին իրանական փոխառությունների բարբառային բուն աղբյուրները՝ պարթևերենը և միջին պարսկերենը, սակայն տարբերակումը ոչ բոլոր դեպքերում է հիմնավորված։ Պարթևական է համարվում 70, միջին պարսկական՝ 160 փոխառություն։ Վրացերենի՝ պարթևական ծագման բառերը, ինչպես նշում է Անդրոնիկաշվիլին, կարող են լինել անմիջական կամ հայերենով միջնորդված փոխառություններ և, բնականաբար, գրեթե ամբողջովին զուգահեռներ ունեն հայերենում, ընդ որում վերջիններս գերակշռող մեծամասնությամբ տեղ են գտել իրանական լեզուներից կատարված հայերեն փոխառությունների՝ վերևում

*բերված ցանկում։ Ստորև տրվում է պարթևական համարված հայերեն փոխառությունների ցանկը՝ Անդրոնիկաշվիլու համարակալումով, ընդ որում կասկածելի ստուգաբանությունները օժտված են հարցականով, իսկ հայերենում զուգահեռ չունեցող վրացերենի բառերի փոխարեն դրվում է գիծ՝ 1)* **աւճառ**, *2)* աւազակ (a-vaz-ak՝ vaz- *«դնալ, ճանապարհորդել»* ?), *3)* աւազան, *4)* ազն (ազնիվ), *5)* համբաւ (ham-bav- *«միավորում»* ?), *6)* համբոյր (ham-bōč-՝ bōč *«բույր»* ?), *7)* ամբոխ, *8)* ամբարտաւան, *9)* անազդակ, *10)* ատրուշան, *11)* բազին, *12)* բնակ, *13)* բանակ (bānak՝ bān *«տանիք»*, *պ.* bān *«տուն»* ?), *14)* —, *15)* գունդ, *16)* —, *17)* գուշակ, *18)* դեսպան, *19)* դանակ (*հմմտ. պ.* dāna ?), *20)* դահլիճ, *21)* դաշն, *22)* դմակ, *23* —, *24)* վան (*հմմտ. պ.* bān ?), *25)* վարդ, *26)* վարշամակ, *27)* *վաշկարան (= մշկարան, *վրաց.* vaškarani *«պարկ»*), *28)* վաշտ (*հմմտ. պ.* gašti *«պահակ»*, gardan *«գումարտակ»*), *29)* վիրազ, վայրագ (*հմմտ. հ. հնդկ.* vira, *լատ.* vir *«մարդ»* ?), վիշապ, *31)* վազր, *32)* սեպուհ, *33)* զոհ, *34)* , *35)* զուարակ, *36)* քաղ, *37)* —, *38)* համար, *39)* , *40)* մարգարէ, *41)* —, *42)* —, *43)* պա(ր)ն, *44)* մատակարար, *45)* մոյկ (մոյզ), *46)* —, *47)* , *48)* մուրհակ, *49)* ժամ, *50)* պարաւանդ, *51)* պատանիկ, *52)* պարհակ, *53)* պատնէշ, *54)* պատիւ, *56)* պատիժ, *57)* —, *58)* —, *59)* փոխ (*հմմտ. մ. պ.* puh, pīh *«ճարպ»* ?), *60)* պատշաճ, *61)* տապաստակ, *62)* տաղաւար, *63)* հրապարակ, *64)* վնաս, *65)* հարթ (*pr̥th- < *հ.-ե.* *pl̥th-, *վրաց.* parto ?), *66)* հասակ (*հմմտ. պ.* āsā *«նման»* ?)։

## բ) ԻՐԱՆԱԿԱՆ ՓՈԽԱՌՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀՆՉՅՈՒՆԱԿԱՆ ԱՌԱՆՁՆԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Հնագույն շրջանի իրանական փոխառությունների հիմնական շերտի մեջ իրանական բաղաձայնների և ձայնավորների՝ հայկականների հետ ունեցած փոխհարաբերությունը կարելի է արտահայտել հետևյալ աղյուսակով*[74].

| *Իրան.* | *հայ.* | *Օրինակներ* |
|---|---|---|
| b | *բ* | bāzūk > *բազուկ.* anbār (ambār) > *ամբար* |
| d | *դ* | dāt > *դատ.* gund > *գունդ* |
| g | *գ* | gēs > *գէս.* marg (marγ) > *մարգ* |
| p | *պ* | parīk > *պարիկ.* kapīk > *կապիկ* |
| | *փ* | pīl > *փիղ* |
| t | *տ* | tōž > *տոյժ.* spētak > *սպիտակ* |
| | *թ* | tōšak > *թոշակ.* naft > *նաւթ* |
| k | *կ* | kāpōt > *կապոյտ* |
| | *ք* | kand- > *քանդ.* paykār > *պայքար* |
| ǰ | *ջ* | ǰatagōš > *ջատագով.* tanǰ > *տանջ* |
| č | *ճ* | čār > *ճար.* vičar > *վճար* |
| | *չ* | čaman > *չաման* |
| j | *ձ* | ganj > *գանձ* |

[74] *Եթե իրան. տառանշանի մոտ գծիկ չկա, ապա նկատի են առնվում տարբեր դիրքերը. հաջորդող գծիկը (f-, r- և այլն) նշանակում է հնչյունի նախորդող (սկզբնային) դիրք, նախորդողը (-f, -r և այլն)՝ հաջորդող (ոչ սկզբնային) դիրք։*

| 1 | 2 | 3 |
|---|---|---|
| -β | ւ | dandan(a)βand դանդանաւանդ |
| -δ | յր | bōδ > բոյր |
| -γ | ղ | moγ (mog) > մող |
| f | փ | farr > փառ-ք |
| fr, hr | հր | framān, hramān > հրաման |
| -f | ւ | kafšik > կաւշիկ. naft > նաւթ. afrīn- > աւրհն- |
| | խ | hazarāft > հազարաւուխտ. zumur(r)uft > զմրուխտ |
| θ | թ | |
| x | խ | xrat > խրատ. baxt > բախտ |
| xš | շխ | vaxš > վաշխ |
| v | վ | vat > վատ |
| -v | վ, ւ, ու | avār > աւար. bavandak > բաւանդակ (բովանդակ). patvast > պատուաստ |
| z | զ | zēn > զէն. varāz > վարազ |
| ž | ժ | žam > ժամ. druž > դրուժ |
| s | ս | s(i)yāv > սեաւ. dastak > դաստակ |
| š | շ | šēn > շէն. nišān > նշան |
| y | յ | yašt > յաշտ |
| -y | յ | hramay - (framāy-) > հրամայ-(ել) |
| (i)ya | եա | (i)yāv > սեաւ |
| h | հ | shamār > համար. dēh > դեհ |
| -hr, | | |
| -hr, | րհ | parhak (pahrak) > պարհակ |
| | հ | pa(r)hak > պահակ |
| | ր | par(h)ak > պարեկ |
| r- | ե/ար | rasan > երասան. rag- > երագ, արագ |
| | ռ | rasan > առասան |
| -r | ր | aržan > արժան |
| | ռ | parāv > պառաւ |
| -rr | ռ | apurr > ապուռ |
| l | լ | laškar > լաշկար «զորք» |
| -l | լ | dōl > դոյլ |
| | ղ | dōl- > դուղել (դուլել) «խմել ջուր քաշել». |
| m | մ | marz > մարզ. gumār > գումար |
| n | ն | nēzak > նիզակ. handēs > հանդէս |
| a | ա | hazār > հազար |
| (ä ?) | ե | kart > կերտ. andarz'j- > անդարձ |
| ā | ա | xāvar > խաւար |
| va>ō | ո | xvastak > խոստակ. xvarāk ( xōrāk) > խորակ |
| av | ով | dsrav > զսրով |
| ē | է/ի | dēm > դէմ. dēmak > դիմակ |
| | ե | dēn > դեն |
| o | ո/յ/ու | kōr > կոյր. patmōčan > պատմուճան |
| | ո | kōlak > կոտակ |
| i | ի/(ը) | sīk > սիկ «ափիզմ». vinās վ(ը)նաս |
| ī | ի/(ը) | žīr > ժիր, ժրանայ |
| u | ու(ը) | uxt > ուխտ. bunak > բնակ. |
| ū | ու/(ը) | sūg > սուգ, սգալ |

Իրանական փոխառությունները բնութագրվում են հնչյունական մի շարք առանձնահատկություններով, որոնց հաշվառումը կարևոր է չվկայված աղբյուրներ ունեցող բառերի իրանական ծագումը պարզաբանելու համար։

1) Հ.-ե. *u̯-ով և *i̯-ով սկսվող բառերը հայերենում ներկայացված են գ և շ (այլև ձ?), իրանականում՝ v և y սկզբնահնչյուններով. նշանակում է՝ հ.-ե. u̯-ի դիմաց վ և y-ի դիմաց յ ունեցող հայերեն բառերի հիմնական աղբյուրը իրանական լեզուներն ու բարբառներն են. ընդհանրապես անկախ իրանական բառերի հնդեվրոպական աղբյուրների որոշումից՝ հայերենի վ-ով և յ-ով սկսվող (մանավանդ երբ յ-ն նախդրային ծագում չունի) բառերի մեջ

մեծ թիվ պետք է կազմեն իրանական ծագում ունեցողները։ Հավանական է, օրինակ, Հյուբշմանի բառերի իրանական ծագումը, (մանավանդ երբ կան նաև այլ բնորոշ առանձնահատկություններ)՝ **վախճան, վակաճակ** «հասուն», **վաճառ, վաղակաւոր, վայել, վայր, վաստակ, վատին** (**վատնեմ**), **վարագոյր, վարակ, վարապանակ** «երասանակ», **վարակ, վարար** (**վրիրակ**) «վավաշոտ» **վարդ, վարուժան, վարոակ, վէժ, վէճ, վէպ, վէս, վէտ, վէր, վթար, վիժակ** «ծածկոց, վարագույր», **վիհ, վհատ, վհուկ, վսեար** (**վսեմ**), **վսեմակ** «ան-ձիկ», **վտառ** «երամակ, խումբ», **վտարակ** «ներքնակ», **վտարան** «մեկ տարա-րեղ (տարածաչափ)», **վախտ, վրէժ** և **յախուռն** (**յախուր, յախուրն**), **յամ** «ուշ (իրան. yam- «պահել»?), **յարակ** «երկար ժամանակ» (եթե **յար** «միշտ» բառից չէ), **յաւակն** «անողություն» (**յաւակնիմ**), **յիմար, յոյզ** «վեզ», **յոպ-նակ** «տայլակ», **յստակ, յաւժար** և այլն։

2) Իրանական լեզուների և հայերենի փոխհարաբերության ընդհանուր քննությունից երևաց, որ հայերը շփվել են գերազանցապես հյուսիսարևմտյան բարբառների կրողների հետ։ Արևմտաիրանական բարբառներում ընդհանրապես բացակայում են սուլական կիսաշփականները. հայերենի իրանական փոխառություններում **ն**-ից հետո հանդիպող **ձ**-ն (**բրինձ, գանձ, բրինձ**)՝ **ջ**-ի դիմաց, և **r**-ից հետո հանդիպող **ձ**-ն (**դերձակ, հանդերձ** և այլն)՝ **զ**-ի դիմաց, պետք է բարբառային նոր սարածքներ ընդգրկած լինեն, եթե, իհարկե, **զ/ձ** հարաբերակցությունը հայկական երևույթ չէ. **մարգաց, արցակ** տիպի ձևերը դուտ հայկական փոփոխություններ են. ընդհանրապես բացակայում են **ծ** ունեցող իրանական փոխառություններ։ Այսպիսով, իրանական փոխառություններին բնորոշ են շչական **ջ, ճ, չ** (վերջինս համեմատաբար ուշ) և ոչ բնորոշ՝ սուլական **ձ, ծ, ց** կիսաշփականները։

3) Արևմտաիրանական լեզուների միջին գրքերի համար բնորոշ β, δ, γ շփականները, այլև տարբեր դիրքերում հանդիպող **f**-ն հայերենում չեն ունեցել համապատասխան հնչյուններ, ուստի և արտահայտվել են **ւ** (**վ**), **r, գ, փ** (**ւ, խ**) հնչյուններով։

4) Հյուսիսարևմտաիրանական hr- (<fr-) և hr>rh>h (<-ϑr-<հ.-ե. *-tr-) հնչյունակապակցությունները հայերենում համապատասխանաբար ներկայացված են **հr-** (**հրաման, հրեշտակ, հրովարտակ** և այլն), **rh** (**նա-հապարհ, նիրհ** և այլն), **հ** (**պահակ**՝ **պարհակ** ձևի կողքին), **r** (**պարեկ**) ձևերով, ընդ որում հաճախ նկատվում է **rh/h/r** հերթագայությունը [հմմտ. Bolognesi, 1951, 154]. կան դեպքեր, երբ հայերենի **rh**-ի կամ **հ**-ի դիմաց վրացերենն ունի **r**։ Քանի որ բնիկ հայերեն բառերի համար **հr, rh** զուգորդումները բնորոշ չեն, և բուն հայերեն բառերում **հ**-ն վերջնադիրքում չի հանդիպում, կարելի է ասել, որ **հr**-ով, **rh**-ով բառերը գրեթե անխտիր և վերջնադիրքային **հ** ունեցողները զգալի մասով (մանավանդ եթե **հ**-ն հերթագայվում է **r**-ի հետ կամ վրացերենում ունի **r**-ով զուգահեռ) իրանական ծագում ունեն, եթե նույնիսկ բուն աղբյուրները չեն վկայված[74]. այսպես, հավանական է հետևյալ բառերի իրանական ծագումը՝ **հրաժ-արիմ, հրաժեշտ, հրամէն** «երեկոյին մոտ ժամանակ», **հրապոյր, հրոս, հրուանդան, ապահ** (հմմտ. վրաց. angari), **բահ**[75] (հմմտ. վրաց. bari), **գարհայիմ** «մորմոքվել», **դիպահ**

---

[74] **-հ**-ով վերջացողների մի մասը թերևս արաբերենից է գալիս (հատկապես բայերի և բայահիմքային անականների դեպքում)՝ **հ/խ** հերթագայությամբ։

[75] Ըստ Հ. Աճառյանի [ՀԱԲ, I[2] 392—393] հ.-ե. ծագում ունի, որ ճիշտ չէ։

«անժամկա բանտ», նշան(ակ) «փառավորված. արժանի», պատան (պատանի), վի(r)ն (հմմտ. վիրապ) և այլն։

5) Բնիկ հայերեն ժ-ով բառերը խիստ սակավաթիվ են՝ լժ (*eghi-) բրբռ. լիժ (*ligh-) և այլն։ Պետք է կարծել, որ ժ ունեցող բառերի զգալի մասով, մանավանդ ժ-ով սկսվողները (հայերենը ժ-ով սկսվող բնիկ բառ չունի), իրանական ծագում ունեն՝ ժանի-ք, ժապավէն, ժառանգ, ժիր «հետաքրքրվող, լկտի, լիրբ», ժիտ(եմ), ժմեռ «լկտի», ժպիրհ (ըստ Հ. Աճառյանի duž-pitra- «վատահայր» իրան. նախաձևից), ապաժամ, նժոյգ, պժգալ «խորշել» և այլն։

6) Իրանական փոխառությունների համար բնորոշ են խտ (<-xt<*-kt-, այլև ft), շխ (<xš), շտ, զմ և այլ տիպի լծորդումները. մանավանդ շխ ունեցող բառերը գրեթե առանց բացառության իրանական ծագում պետք է ունենան (հմմտ. աշխարհ, աշխէտ, եռաշխ և այլն)՝ աշխար(հ)ատեղ «պանդոկ, գինետուն» (աշխար(հ)ատեղիկ «պանդոկապան»), աշխոյժ, եռաշխէպ «հարվածի տեղ. վիշտ» և այլն. -զմ ունեցող բառերից պատերազմ և ռազմ բառերի ծագումը հայտնի է. հնարավոր է նաև զոճազմ (մի թանկարժեք քար), խազմ բառերի իրանական ծագումը։

7) Իրանական փոխառությունների համար բնորոշ են՝ ա) գ/ջ/ժ, կ/ճ/շ հնչյունական հերթագայությունները՝ պայմանավորված հ.-ե. *gh, *g, *k բաղաձայնների երկրորդական քմայնացմամբ առաջին շարքի ձայնավորների մոտ. հմմտ. արգ/արժ, բազ/բաժ, տուգանք/տոյժ, -կար, կեռնել/ճար և այլն. կ/խ հերթագայությունը՝ պայմանավորված դիրքային փոփոխությամբ (*k-՝ ձայնավորից առաջ>իրան. k>հայ. կ և k-, բաղաձայնից առաջ>իրան. x>>հայ. խ) այլև հ.-ե. *k/kh տարբերակների առկայությամբ (*k>իրան. k>>հայ. կ և *kh>իրան. x>հայ. խ) և այլն։ Այս առումով դժվար չէ այս հերթագայությունները ունեցող հայերեն բառերի մեջ տեսնել իրանական ներգործում։

Իրանական փոխառությունների՝ վերևում կատարված ընդհանուր քննությունից հետո անցնենք նրանց պատմա-ժամանակագրական և տարածական-բարբառային քննությանը։

Իրանական փոխառությունները պատկանում են ժամանակագրական տարբեր շերտերի, և նրանց հնչյունական որոշ առանձնահատկություններ հնարավորություն են տալիս բացահայտելու պատմական հաջորդականության առանձին հարցեր։

1) Հին և միջին շրջանի իրանական լեզուների համար բնորոշ է խուլ պայթական և կիսաշփական բաղաձայնների ոչ շնչեղ արտասանությունը. այս առումով p, t, k, č բաղաձայնների դիմաց հայերենում պ, տ, կ, ճ պարզ խուլերի առկայությունը վկայում է նրանց ժամանակագրական ավելի վաղ շերտերի պատկանելու մասին՝ ի տարբերություն փ, թ, ք, չ արտացոլումների. վերջին դեպքում, իհարկե, պետք է բացառել իրանական բառերի՝ սեմական միջնորդությամբ փոխառվելու հնարավոր դեպքերը, ինչպես կարծում է Ա. Մեյեն, օրինակ, թագ բառի մասին։ Ընդհանուր առմամբ ակնհայտ է, որ V դ. վկայված իրանական հետևյալ փոխառությունները գալիս են համեմատաբար ոչ վաղ շերտերից՝ փադաճ (փադամ) «լաշակ», փաշտաման, փարգաստ «շլինի թե», փեթակ, փիղ, փուշտիպան «թիկնապան», փուշտիպանսալար «թիկնապահապետ», փուսիշն «դատաքննություն», թակոյկ, թիրախ, թմբուկ, թոշակ, քոսակ, քրպկար «բարի գործ», քեքամ շաման, շաշմակ «ապարապ-

նոց»։ Որոշ դեպքերում կան զուգահեռ ձևեր, որոնցից, օրինակ, փուշտիպան, չաշմակ ձևերը ավելի ուշ շրջանի են, քան համապատասխան պաշտօյան, նե-միշ «պատաքնոց» ձևերը։

Նաև ճիշտ են ստուգաբանված պարեզատ և պարտէզ բառերը, սակայն զը-րանց մեջ իրան. ձայնեղ d-ի փոխարեն առկա է տ, որ սովորական երևույթ է։

2) Իրանական որոշ փոխառությունների մեջ նկատվում են պատ-/պայ- և -կան/-եան զուգահեռ ձևերը, որոնցից առաջինները ավելի հին են. հմմտ. մի կողմից՝ պատգամ, պատկեր, պատսպարեմ և այլն, մյուս կողմից՝ պայա-զատ, պայման, պայքար. մի կողմից՝ ոստիկան (ōstīkān, պաղ. ōstīyān), մյուս կողմից՝ մատեան (mātyān <*mātīkān).

3) Իրանական r-ով սկսվող բառերը հայերենում ներկայացված են կամ ա, ե նախահավելվածով (ար-, եր-, առ-), կամ առանց նախահավելվածի (ռ-). մի կողմից՝ արագ (երագ), արոյր, երախ, երակ, երամ, երանգ, երաշխ, երաշտ, երասան, երիտասարդ, առասան, առատ, մյուս կողմից՝ ռազմ, ռահ «ճանապարհ», ռամ «գռեհիկ ժողովուրդ», ռոճիկ, ռոշնական «լուսավոր». Սը-րանցից հնագույնները առաջիններն են, որոնք զարգացման ուղով հարաբե-րակից են հ.-ե. *r-ով, *sr-ով, *pr-ով, *tr-ով սկսվող ձևերից ծագող ա կամ ե նախահավելվածով ձևերին՝ արեգ, երես, երեք, առու և այլն. ավելի նոր են ռ-ով սկսվողները. Իրանական որոշ այսպիսի բառեր փոխառվել են տարբեր ժամանակներում տարբեր ձևով, թերևս երբեմն էլ հայ ժողովրդի տարբեր հատվածների կողմից։ Այսպես rasan-ը փոխառվել է երասան, առասան և ռասան ձևերով. ram-ը՝ երամ և ռամ (ռամիկ) ձևերով. rang-ը՝ երանգ և բրբռ. ռանգ ձևերով։

4) Կան իրանական այնպիսի բառեր, որոնց մեջ եղած բաղաձայնական կապակցությունները ժամանակի ընթացքում պարզվել են, որոշ բաղաձայն-ներ էլ ընկել, ընդ որում առանձին դեպքերում դժվար է որոշել՝ այս կամ այն փոփոխությունը գալիս է իրանականի՞ց, թե՞ տեղի է ունեցել հայերենում։

Վերևում մենք խոսեցինք rh կապակցության՝ հայերենում րհ, հ և r ար-տացոլվելու մասին։ Ճիշտ է, իրանական բարբառագիտական աշխատություն-ներում նշվում է rh>h փոփոխությունը, բայց հնարավոր է մի շարք դեպ-քերում րհ>հ և hr>րհ անցում հենց հայերենում. բոլոր դեպքերում էլ ե-ղած տարբերակներից րհ-ով ձևերն ավելի հին են, քան հ-ով ձևերը. հմմտ. *բարհ (բրբռ. բհիր) և բահ, մարհ և մահ, պարհ և պահ, պարհակ և պահակ և այլն, այլև xvanahr>խոնարհ, šnohr>շնորհ:

Իրան. xš կապակցությունը համեմատաբար ուշ պարզվել է š-ի։ Հին շրջանի համար ավելի բնորոշ է առաջինը։ Այս առումով հայ. ապաշխարել, աշխատ, աշխար, աշխարաւանդ «թագի կապ», աշխարհ, աշխար(հ)աւանդ «պանդոկ», աշխէտ, աշխոյժ (?), ապաշխարել, բարաշխ «խիտ» բա-ռերը, Աշխէն անձնանունը պետք է ավելի հին փոխառություններ լինեն, քան շխ-ի պարզացմամբ ծագած շ-ով ձևերը՝ շահապ «իշխան», շահապատ «պա-հապան», շահաստան «մայրաքաղաք» (շահ- šah(r)- <xšahr-), շէն (šēn < xšaina-)։

Հայ. սահման բառը ավելի հին կերպարանք ունի՝ sāhmān, քան վերջինիս ավելի ուշ ավանդված մ. պ. sāmān ձևը, թեև այստեղ հնարավոր է նաև բար-բառային տարբերություն։

Ինչպես կտեսնենք հատուկ անունների քննության մեջ, հին կերպարանք

ունեն Արամազդ (Auramazdā) Վահագն անունները՝ ի տարբերություն ավելի ուշ շրջանի Որմիզդ, Վահրամ անունների։

5) Համեմատաբար ուշ երևույթ է իրան. կարճ a ձայնավորի քմայնացած ä արտասանությունը։ Սակայն թերևս միջին շրջանի որոշ տարածքներում այդ պրոցեսն սկսվել էր։ Եթե պատկեր, հանդերձ և մի շարք այլ բառերում իրան. a-ի ե արտացոլումը կարելի է բացատրել հայկական հողի վրա կատարված դիրքային հնչյունափոխությամբ, ապա հեշտ չէ նույն ձևով բացատրել հրաշ/հրէշ և, թերևս, հաշտ/հեշտ տարբերակների առկայությունը՝ առանց իրանական համապատասխան տարբերակներ ենթադրելու։

Հայերենի իրանական փոխառությունների մեջ արտացոլված են ոչ միայն ժամանակագրական, այլև բարբառային տարբերություններ։ Եթե մի կողմ թողնենք այն փաստը, որ տարբեր տարածքներում կարող էին պահպանվել ժամանակագրական տարբեր շերտերի պատկանող երևույթներ[76], և որ, հետևաբար, վերևում բերված փաստերը հաճախ նաև տարածական-բարբառային տարբերություններ են արտացոլում, ապա կարելի է խոսել հատկապես բարբառային տարբեր շերտերի արտացոլման մասին։ Ինչպես նշվել է արդեն, հայերենի իրանական փոխառությունների հիմնական մասը գալիս է հյուսիս-արևմտյան տարածքից և հատկապես պարթևերենից, բայց կան նաև հարավ-արևմտյան տարածքին հատուկ երևույթներ, որոնք գալիս են կամ անմիջաբար (պետական-պաշտոնական բնագավառ, գրական փոխառություններ), կամ միջնորդված կերպով՝ հյուսիս-արևմտյան բարբառային տարածքի միջնորդությամբ։ Այս հարցը հանգամանորեն քննվել է Ջ. Բոլոնիեզիի կողմից՝ նրա «Հայերենի իրանական փոխառությունների բարբառային աղբյուրները» գրքում **Bolognesi**, *1960]*։ Այլևայլ նյութեր կան նաև հայ-իրանական լեզվական հարաբերությունները շոշափող ուրիշ աշխատություններում։

Ստորև հնչյունական որոշ առանձնահատկությունների հիման վրա կփորձենք առանձնացնել այն բառաշերտը, որ պետք է լինի հարավ-արևմտյան հին և, հատկապես, միջին շրջանի ներդրում՝ ի տարբերություն հայերենի իրանական փոխառությունների հիմնական զանգվածն ընդգրկող հյուսիս-արևմտյան (մեդա-պարթևական) բառաշերտի։ Գերակշռող մեծամասնությամբ հարավային բառաշերտի բառերը ժամանակագրորեն ավելի վաղ են փոխառված.

1) դ < d < հ.-ե. *d(ḥ)u̯՝ հյուս. բարբառաշերտից եկող բ-ի դիմաց՝ դարապան «դռնապան» (հմմտ. բարապան), դարապետ «դռնապան» (հմմտ. բարապետ), դար(ա)պաս.

2) լ, ղ (< l < rd)՝ հյուսիսային բարբառաշերտերից եկող րդ-ի դիմաց երիտասարդ, նաւասարդ)՝ սալար (սաղար) «զորավար» (հմմտ. վաղ sardār).

3) հ (< մ. պ. h < հ. պ. θ < հ.-ե. *k̂(h))՝ հյուսիսային բարբառաշերտի ս-ի (< s) դիմաց՝ ահեան «տեղյակ», դահեկան — մի տեսակ դրամ (dah «տասը»).

4) հ, յ (< մ. պ. h, y < ð)՝ հյուսիսային բարբառաշերտից եկող զ-ի (z), այլև դ-ի (< ð) դիմաց՝ ուշ շրջանի բահուանդ «կանացի մի զարդ» (հմմտ. հյուս. բազուկ), զրահ (զրայ), սպահ (սպահակ), պայիկ (պայակ) «հետիոտն զինվոր», -վիրայ (ռահվիրայ, վարազվիրայ).

---

[76] Հմմտ. րթ/հլ (rθ/hl)՝ պարթև և պահլավ ձևերում։

5) նլ (< hl < rθ)՝ *հյուսիսային բարբառաշերտից եկող* րթ-*ի* (< rθ) *դիմաց*՝ դանլին.

6) պայ- (< pay- < pat-) *ածանց*՝ *հյուսիսային բարբառաշերտից եկող* պատ-*ի* (pat-) *դիմաց*՝ պայազատ, պայման, պայքար.

7) ջ (< J < y)՝ *հյուսիսային բարբառաշերտից եկող* յ-*ի* (յաշտ, յաւետ) *դիմաց*՝ ջատագով, ջատուկ։

8) ս (< s < *հ.-ե.* *k'u̯)՝ *հյուս. բարբառաշերտից եկող* սպ-*ի դիմաց*՝ սար-ք (*հմմտ.* ասպար), սանդարամետ (*հմմտ.* սպանդարամետ), սան *«պո-րադունդ»* (*հմմտ.* սպան).

9) -վ (< v < γᵛ, gᵛ)՝ *հյուսիսային բարբառաշերտից եկող* գ-*ի* (մոգ, մոգպետ) *դիմաց*՝ մովպետ (*սասանյան մ. պ.*)։

## ժ) ԻՐԱՆԱԿԱՆ ՓՈԽԱՌՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՁԵՎԱԲԱՆԱԿԱՆ ԱՌԱՆՁՆԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Իրանական փոխառությունների մեջ գերակշռում են անվանական հիմքերը, հատկապես գոյականները. Թվականներից հայտնի են* հազար *և* բիւր*։ Զգալի թիվ են կազմում բայերը։ Սակավադեպ են մակբայները՝* ակամայ, կամայ *և այլն։ Գրեթե չկան առանձին գործածությամբ հանդիպող սպասարկու բառեր, թեև բուն իսկ հայերենում նկատվում են լիիմաստ բառերի՝ սպասարկուների շարքն անցնելու դեպքեր. հմմտ.* կամ:

*Անվանական հիմքերի մեջ գերակշռում են* ի–ա *հոլովման պատկանողները, որ բացատրվում է, ինչպես նշել ենք, մասամբ իրանական* -a-*ով հիմքերի պահպանմամբ, մասամբ հայերենի հոլովման հիմքերի բաշխման ներքին օրինաչափություններով։ Հազվադեպ են* –ի-*ով,* ու-*ով, և* –ո-*ով հոլովումները, ընդ որում վերջին տիպի հիմքերի հոլովումը համաբանական է, իսկ առաջին երկուսինը՝ մասամբ իրանական համապատասխան հիմքերի ազդեցության արդյունք է, մասամբ բացատրվում է հայերենի հոլովման հիմքերի բաշխման ներքին օրինաչափություններով։ Իրանական* -i-*ով (ավ.* -ay/i-*) և* -u-*ով հիմքերի ազդեցությամբ պետք է բացատրել հետևյալ բառերի հայերեն հոլովումը. 1)* –ի-*ով*՝ ախտ (*հմմտ. ավ.* axti-*),* բաժ *«տուրք»* (*հմմտ. ավ.* baJi-?), ժանտ (*հմմտ. ավ.* gainti-*),* խան *«ախոռ»* (*հմմտ. ավ.* xvalni-*). 2) ու-ով*՝ բիւր (*հմմտ. սակ.* byurru ?), գահ (*հմմտ. ավ.* gatu-, *հ. պ.* gaθu-), խրատ (*հմմտ. մեդ* *xratu-, *ավ.* xratu-, *հ. պ.* xraθu-) մահ (*հմմտ. ավ.* mərəθyu-)։

*Մեծ թիվ չեն կազմում իրանական ծագման* –ն-*ով և մանավանդ* –ր-*ով հիմքերը*՝ բամբիշն, բարսմունք (*հգն.*), դահամն, մազդեզն, աւշինդր, *ընդ որում* ն-*ն չի ավանդված* դահամն-*ի և* ր-*ն*՝ աւշինդր-*ի իրան. սկզբնաձևերի մեջ. ընդհանուր առմամբ միայն* բարսմունք, –անց *ձևերի հոլովման պատկերը հին կերպարանք ունի և, թերևս, արտացոլում է հին իրան.* -an-*ով հիմքը։*

*Սակավաթիվ* –ի-*ով վերջացող բառերը համապատասխան հայերեն բառերի նման հոլովվում են* ո–ա *հոլովմամբ*՝ անարի, ապակի, թշնամի *և այլն։*

*Կան դեպքեր, երբ հայերենում առկա են իրան.* -ān *-ով հոգնակիի ձևերը. այսպես,* բանուկան *«պալատական տիկիններ» ձևը* bānūk *«տիկին»*

բառի հոգնակին է. հմմտ. նաև խուժան, պառական: Ընդհանրապես կարծիք կա, որ հայ. -ան, -եան հոգնակերտները գալիս են իրանական աղբյուրից և արտացոլում են -an, -īyān ձևերը։ Այս կարծիքը քիչ հավանական է, եթե նկատի առնենք, որ այդպիսի հոգնակի ունեցող բառերի, մանավանդ -եան-ով բառերի մեջ իրանական ծագում ունեցողները քիչ են և հայերենում միշտ չէ, որ ունեն որոշակի զուգահեռներ. այսպես, բանուկան-ը և պառական-ը չունեն եզակի ձևեր. ան-ով և -եան-ով ձևերի մեջ իրանական հիմք ունեն խուժան-ը[77] մոգեան-ը, նախարարեան-ը, ընդ որում չկան -եան-ը բացատրող -(i)yān-ով իրանական համապատասխանություններ։ Համեմատաբար շատ են իրանական ծագում ունեցողները -անի-ով հոգնակերտ ունեցողների մեջ, եթե ոչ գերակշռող՝ անդարձ-անի, զանգականի, հանդերձ-անի, հանդիս-անի, մատեն-անի, մեհեն-անի, նամակ-անի, նշան-անի, պատգամ-անի, սաղար-անի, վաճառ-անի, վնաս-անի, վտակ-անի:

Վատթար բառի մեջ -թար-ը ածականի բաղդատական աստիճանի մասնիկն է՝ -tar, բայց վատթար-ը փոխառվել է անկախ դրականի վատ ձևից։

Հետաքրքրական պատկեր են տալիս իրանական բայաձևերի հայերեն արտացոլումները։

Համեմատաբար սակավաթիվ են այն բայերը, որոնց հիմքային ձևերը հայերենում անկախ գործածություն չունեն (կարող են գործածվել միայն իբրև բաղադրությունների երկրորդ բաղադրիչներ, ինչպես նույն տիպի բուն հայերեն բայերը)՝ զարհուրեմ [զարհույր, հմմտ. ա(ր)հ], անդանեմ, ապ(ա)-պարեմ, ապարքանեմ, արհնեմ, բազմիմ, իշխեմ (? հմմտ. իշխան), խոստովանիմ (հմմտ. խոստ), կասեմ (-ում), հանգրինեմ (ուշ՝ նաև հանգրէն), հմայեմ, հրամայեմ, մարզեմ, մարձեմ, յազեմ, յիշեմ (հմմտ. ուշ), նազեմ (ուշ՝ նազ), պատսպարեմ, պարմայեմ, սովեմ, վիրամ (վիրայեմ), վկանդեմ, վտարեմ, տանջեմ (ուշ՝ տանջ):

Մի շարք դեպքերում հիմքերը կարող են գործածվել որոշ կարգի դարձվածային ձևերում, ինչպես փարշ-եմ՝ ի փարշ:

Զգալի թիվ են կազմում այն բայերը, որոնց իրանական համապատասխան հիմքերը կազմում են նաև հարադրական տիպի բարդություններ՝ ամբաստան լինիմ—ամբաստանեմ, խոստովան լինիմ—խոստովանիմ, ասպատակ առնեմ—ասպատակեմ, դրոշմ առնեմ—դրոշմեմ, պատասխանի տամ—պատասխանեմ և այլն։ Այսպիսի բայական ձևերը մեծ թիվ են կազմել նաև միջին իրանական լեզուներում, և հայերենի դասական շրջանում նրանց գործածության առատությունը թերևս իրանական ազդեցության արդյունք է։

Իրանական բայական հիմքերի անմիջական փոխառությունը կարելի է բացատրել իրանական բայերի ներկա ժամանակի հատկապես առաջին դեմքի՝ հայերենի հետ ունեցած նմանությամբ (-am, -em. հմմտ. հայ. հրամայեմ—մ. պ. framāyēm), որ հիմք է տվել ձևերի բաղարկության համար։ Հայերենում յուրահատուկ խումբ են կազմում -այ-ով (<իրան. -ay-) հիմք ունեցող բայաձևերը՝ հմայեմ, հրամայեմ, վիրայեմ (վիրամ-ի կողքին). հավանաբար իրանական ծագում ունի նաև խնայեմ բայը, որի բուն աղբյուրը հայտնի չէ։

[77] Ս. Բագրատունին [1852, 48] տալիս է նաև դատ-ի հգն. դատան ձևը, բայց աղբյուրը չի նշում։ ՆՀԲ-ում բերված ձևերը եզակի արժեք ունեն։

Համեմատաբար մեծ թիվ են կազմում այն բայերը, որոնց իրանական ծագում ունեցող հիմքերը գոյական և ածական անուններ են, և որոնք հայերենում գիտակցվել են որպես յուրատեսակ անվանածանց բայեր՝ -եմ, -իմ, -անամ ձևերով՝ ամբաստան, -եմ, (ն)ամբար, -եմ, ամբարտավան, -անամ, -իմ, ապական, -եմ, ապաշխար, -եմ, ապստամբ, -եմ, արշա, -եմ, բարգավաճ, -եմ, գումար, -եմ, դրուատ, -եմ, զգոյշ, -անամ, խրատ, -եմ, ճարակ, -եմ, ճիրճ, եմ, շամբուշ, -իմ, վրէպ, -իմ, տոյժ, -եմ և այլն։

Ինչպես հայտնի է, միջին իրանական շրջանում բայական հին բազմաձև հիմքերը վերածվում են երկուսի՝ ներկայի և անցյալի (դերբայականի)։ Անցյալի կամ դերբայական հիմքերի համար բնորոշ է -t տարրի առկայությունը, որ գալիս է հին -ta-ից (հ.-ե. *-to-) և բուն իմաստով համապատասխանում է հայերենի հին -եալ և արդի -ած դերբայական ածանցներին. -t-ին նախորդող տարրերը կամ նույնությամբ առկա են լինում ներկայի հիմքում, կամ հերթագայվում համապատասխան այլ տարրերի հետ. կան նաև տարարմատ հիմքեր։ Անցյալի հիմքը հանդես է գալիս նաև անորոշի մեջ՝ աճած հետադաս -an մասնիկով՝ -tan։

Հայերենում կարելի է արտացոլված գտնել որոշ բայերի միայն ներկայի, այլ բայերի՝ միայն անցյալի (դերբայական), մի շարք բայերի էլ՝ և՛ ներկայի, և՛ անցյալի հիմքերը, ընդ որում վերջիններս հանդես են գալիս որպես միանգամայն անկախ ձևեր, որոնց կապը գերակշռող մեծամասնությամբ չի գիտակցվում։

Հայերենի իրանական ծագում ունեցող բայական հիմքերը, որոնք գրեթե նույնությամբ հանդես են գալիս հայերենի ներկայի հիմքում և որոնք բերվեցին վերևում, իրանական ներկայի հիմքեր են՝ անդահեմ, աւրհնեմ, յագեմ և այլն։ Ընդամին նշվեց, որ մի շարք բայահիմքեր գործածվում են նաև որպես համապատասխան բայանուններ և բայածականներ. այդ բանը կամ իրանականից է գալիս, որտեղ առկա է գործառական համանունություն (հմմտ. gōβ գոյական և goβ-՝ ներկայի հիմք, հայ. գով և գով-եմ), կամ հանդես է եկել հայերենում՝ իրանական բայանունից համապատասխան բայ կազմելու միջոցով։

Ներկայի հիմքը հանդես է գալիս նաև -(ա)նդակ<-(a)ndak դերբայական ածանցով կազմված բառերի մեջ՝ բովանդակ (բաւանդակ<bavandak՝ bav-ից՝ ի տարբերություն անցյալի but- հիմքի), այլև թերևս աժանդակ, դժնդակ, սուրհանդակ և այլն։

Անցյալի դերբայական հիմքը հազվադեպ է հանդես գալիս հայերենի բայաձևերում՝ գիտեմ, անկախաբար՝ դէտ (հմմտ. dīt-an, ներկ. հիմք՝ vēn-), կերտեմ (հմմտ. kart-an, ներկ. հիմք՝ kar-), պատուաստեմ «կցել, միացնել», ուշ՝ «պատվաստել, պատրաստել», անկախաբար՝ պատուաստ (հմմտ. pat-vast-an, ներկ. հիմք patvand-), քանդեմ, վ-կանդեմ «նվաճել» (հմմտ. kand-an, ներկ. հիմք՝ kan-. վերջինիս համար հմմտ. ապա-կան և, թերևս, ն-կան — հացի մի տեսակ՝ «թաղված»)։

Մյուս դեպքերում անցյալի դերբայական հիմքը հանդիպում է ինքնին՝ անկախ գործածությամբ կամ զանազան բաղադրությունների մեջ, այդ թվում՝ անցյալ դերբայի արժեք ունեցող -ակ-ով (<-ak) ձևերում՝ ամբարտ-ակ (հմմտ. ամբարտ), ապուխտ (a-puxt «չեփած»), բախտ (հմմտ. բաշխ<baxš), բաստարան (bast-an, ներկ. հիմքը՝ band-, հմմտ. բանդ/բանտ), գումարտակ

(*հմմտ.* գումար), զառնա-ւուխտ (-vuft), խորտիկ (xvart-. *հմմտ.* խորակ), հրեշտակ, յաշտ *«զոհ»* (yašt-an. *հմմտ.* յազեմ *«զոհել»*), տաւք (taft-. *հմմտ.* tap- > տապ)։ *Այս նույն ձևով էլ թերևս* վաշտ*-ը իրոք ծագում է* vašt*-ից* (*«դարձնել, շրջել»*. *Ներկ. հիմք՝* vart- > վերտ), վճիտ*-ը՝* vičīt*-ից* (*«ընտիր»*). *Համապատասխան* t*-ով հիմքային ձևերից են գալիս նաև* պատրաստ, պէտ *ձևերը, որոնց բուն ալբյուրները, սակայն, չեն վկայված։*

## ժա) ԻՐԱՆԱԿԱՆ ՓՈԽԱՌՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱՌԱԿԱԶՄԱԿԱՆ ԱՌԱՆՁՆԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Ինչպես հայտնի է, հին և միջին իրանական լեզուները աչքի են ընկել նախածանցների և վերջածանցների հարուստ համակարգերով, որոնք իրենց արտահայտությունն են գտել հայերենի իրանական փոխառություններում։ Մեծ է նաև իրանական փոխառությունների մեջ բարդությունների քանակը։ Այս բոլորի հետևանքը եղել է այն, որ իրանական որոշ նախածանցներ ու վերջածանցներ, ինչպես նաև բարդությունների որոշ բաղադրիչներ հայերենում ինքնուրույն գործածություն են ստացել և բառեր կազմել հայկական բառարմատներից ու բառահիմքերից։*

*Հայերենում իբրև այդպիսիք գիտակցվող նախածանցավոր կազմություններից առաջին հերթին պետք է հիշատակել* ապ(ա)*-ով* (apā-, apē-, apī-) դժ*-ով* (duž-, duš-) (հ)ամ-/(հ)ան*-ով* ((h)am-, (h)an-), տար(ա)*-ով* (tar(a)-) *կազմված բառերը, մանավանդ երբ ածանցավոր ձևերի հետ միասին հայերենում առկա են նաև անածանց կամ այլ ածանցներով ձևեր՝* ապարասան—երասան (առասան), ապերախտ—երախտ, դժգոյն—գոյն (*հմմտ.* հան-գոյն), դժկամ—կամակ (կամ, կամակար), դժպարտ—պարտ (*հմմտ.* անպարտ), համգոյն—գոյն, հանճար—ճար, տարաժամ—ժամ, տարապարտ—պարտ *և այլն։*

*Սրանցից* ապ(ա)*-ն, թերևս հուն.* 'ἀπο*-ի հետ մտովին զուգորդվելով, հունաբան հեղինակների կողմից մասամբ հիմք է տվել հունաբան* ապա- *ածանցի առանձնացման համար, որով կազմվել են բազմաթիվ բառեր հունական* 'ἀπο*-ով կազմությունների դիմաց* (*հմմտ.* ապացոյց՝ *հուն.* 'ἀπόδειξις*-ի դիմաց*) *և հետագայում՝ անկախ դրանցից։* Ապ(ա)-ով *իրանական մի շարք կազմություններ, բնականաբար, իբրև այդպիսիք չեն գիտակցվել* (*հմմտ.* ապաշաւ *«զղջում»*)*։ Հավաստի իրանական ծագում ունեցող* ապ(ա)*-ով կազմությունները տեղ են գտել իրանական փոխառությունների՝ բերված ցանկում* (ապահարզան, ապաշաւ, ապաստան, ապարասան, ապենիազ, ապիրատ, ապուռ, ապստամբ *և այլն*)*. դրանց կողքին կան բառեր, որոնց իրանական աղբյուրները չեն հավաստված, բայց որոնց իրանական ծագումը լիովին հնարավոր է՝* ապաւեր *«ամայի»*, ապախտ *«անսուրբ, պիղծ»*, ապահով, ապարհայիկ (*պարսկական մի գնդի անուն*), ապարաւշ, ապաւառ *«քակար, կեղտ»*, ապաւարտակ *«արգանդ»*, ապիզակ *«մի վարդ» և այլն։*

Դժ*-ը (նաև* տժ*-՝ հայերենում* դ > տ *անցմամբ) մինչև այժմ էլ ոչ միայն գիտակցվում է որպես ժխտական նախածանց, այլև արվում իբրև այդպիսին հայերենի բերականություններում։ Իհարկե, այն հայերեն ինքնուրույն նա-*

խամամանիկ չէ և հանդիպում է միայն իրանական փոխառություններում, բայց վերջիններիս մեջ գիտակցվում է իբրև այդպիսին։ Այդ նույնը, սակայն, չի կարելի ասել թշ- տարբերակի մասին, որ հանդիպում է թշնամանք, թշնամի, թշուառ բառերում. իրանական d-ն սրանց մեջ խլացել է հայերենում շ-ի մոտ՝ ու ձայնավորի թուլացումից հետո։

(Հ)ամ-/(հ)ան- նախածանցով իրանական կազմությունների մեջ անկախորեն գիտակցվել է հատկապես առաջին տարբերակը՝ մասամբ բաղարկվելով բուն հայկական՝ հ.-ե. *sm̥-ից ծագող բաղադրիչով կազմությունների հետ, մասամբ հունաբան դպրոցի կողմից կապվելով հուն. ὁμο-ով կազմությունների օրինակով ձևավորված հոմ(ա)-ի հետ, ընդ որում հոմ(ա)-ն հունաբան հեղինակների մոտ գիտակցվել է որպես համ(ա)-ի տարբերակ (հմմտ. համանուն և հոմանուն)։ (Հ)ամ-/(հ)ան- ածանցով իրանական կազմություններ են համասպրամ, համաւրէն, համբարակ, համ(ա)հարզ, հանգամ-(անք), հանգոյն, (հ)անգրէն, հանդարտ, հանդերձ, հանդէս, հանճար և (հ)ամբար, ամբարտակ, ամբարտաւան, անգամ, անդան-(եմ), անդամ և այլն։

Անհավանական չէ ենթադրել, որ պար(ա)- ածանցի համար հիմք ծառայած հայ. պար բառը հունաբան հեղինակների կողմից կապված լինի իրան. ծագում ունեցող պարիսպ տիպի կազմությունների և հուն. περι- «շրջա-, պարա-» նախածանցի հետ։

Իրանական ծագում ունեցող բառերի մեջ հրա- և պատ-/պայ- նախածանցներով կազմությունների մասին մենք առիթ ունեցանք խոսելու իրանական փոխառությունների հնչյունական առանձնահատկությունների քննարկման կապակցությամբ։ Եվ սա պատահական չէ. այդ նախածանցները, չնայած նրանցով կազմված մեծաքանակ բառերի փոխառությանը, հայերենում ինքնուրույնաբար չեն գիտակցվել. թերևս աղոտ կապ զգացված լինի պատ-ով կազմությունների և հայ. պատ բառի միջև, բայց այդ առիթ չի տվել պատ-ի ինքնուրույնացման։ Նշենք որ Է. Բենվենիստը հայ. պատան-ը, որ պատ-եմ-ի հիմքից է, սխալմամբ դիտում է իբրև իրանական pa- նախածանցով կազմություն։

Կան դեպքեր, երբ իրանական նախածանցները ձևով մոտ լինելով կամ պարզապես համընկնելով հայերեն համապատասխան նախածանցների հետ, հիմք են տվել յուրատեսակ բաղարկությունների համար։

Իրանական աղբյուրներից փոխառված ապատ, արի «ոչ իրանցի», աւարտ բառերի առկայության պայմաններում անապատ, անարի, անաւարտ բառերի իրանական, թե հայկական կազմություններ լինելու հարցը դժվար է հավաստիորեն լուծել. իրան. ժխտական նախամասնիկը ձայնավորների մոտ ուներ an- ձևը, ինչպես հայերենում, իսկ բաղաձայնների մոտ հանդես էր գալիս հայերենից տարբեր ա- ձևով, ինչպես ակամայ (հմմտ. կամայ), ապուխտ (բառացի «անեփ») բառերում։

Վարտիք բառի իրանական ծագման պայմաններում պետք է ենթադրել, որ անդրավարտիք բառի հիմքում թերևս ընկած է իրանական կազմություն՝ մ. պ. andar- «միջա-, ներքնա-» նախածանցով՝ հայերենում ժողովրդական ստուգաբանությամբ փոխված անդր(ա)-ի։ Անհնար չէ, որ այդ նախածանցով կազմություն լինի նաև տարբեր ձևերով գրված անդր(ա)վար, անդրու(վ)ար, անդուար «կառաձի, կառք» բառը։

Իրանական hu- «լավ» նախածանցով կազմությունները հայերենում թերևս մասամբ գիտակցվել են հզար—զար տիպի զուգահեռ ձևերի դեպքում՝ բուն հայկական հ-լու, հ-մուտ տիպի (*su->*hu->h(ը)-) կազմությունների կողքին: Այդ նախածանցով են կազմված հմայք, հնար, հպատակ բառերը: Հնարավոր է նաև հնազանդ բառի իրանական ծագումը:

Հայերենում չեն գիտակցվել որպես բաղադրյալ բառեր իրանական հետևյալ նախածանցներով կազմությունները՝ ā- (ազատ, ախոռ, ախորժ, ակահ «տեղյակ», աւան, աւրհն-եմ), av(i)- [մ. իրան. av-, af-՝ ա(ւ)եառ, աւար, աւրէն), ni- (նզով, նկար, նկուն, նման, նշմար. Թեև համմտ. բուն հայերեն ն-ստիմ), pa- (պակաս, պահանգ, պահանջ, պանար «անասուն», պաստառ), vi- (վկայ, վկանդ-եմ «նվաճել», վճար, վճիռ, վնաս, վտանգ, վտար-եմ):

Ընդհանրապես պետք է նշել, որ իրանական հիշյալ նախածանցներից մի քանիսը հենց միջին իրանական շրջանում գործուն չեն եղել, այլ հանդիպել են միայն հնից եկող կազմություններում. բնականաբար, սրանք հայերենում էլ գիտակցվել են որպես անբաղադրիր արմատներ ու հիմքեր: Այդպիսիք են, օրինակ, իրանական ā- և avi- (մ. իրան. av-, af-) ածանցներով կազմությունները:

Միջին իրանական apar- «վրա» ածանցով կազմություն է ապ(ա)րդում (ձիու սարքի մաս), եթե ճիշտ է նրա apar-+dum «պոչ» մեկնությունը:

Հնից է գալիս տար(ա)- ածանցը, որ տար ձևով գործածվում է նաև որպես անկախ բառ՝ տար աշխարհ կապակցության մեջ. հավանաբար իրանական կազմություններ են տարաշխարհիկ, տարադեմ, տարադիմիկ, տարաժամ, տարակոյս, տարապարտ բառերը. տար(ա)-ն հետագայում ստանում է հայկական ածանցի արժեք և բազմաթիվ նոր բառեր է կազմում. համմտ. տարագիր, տարակարծ, այլև հունաբան տարբերել, տարաձայնութիւն և այլն:

Մեծ թիվ են կազմում իրանական փոխառությունների մեջ վերջածանցավոր կազմությունները. հայերենում ներկայացված են միջին իրանական գրեթե բոլոր վերջածանցները: Դրանց մի զգալի մասը դարձել է հայերենի սեփականությունը և բառեր է կազմում նաև ոչ իրանական արմատներից ու հիմքերից՝ -ական (-akan), -անակ (-ānak), -(ա)րան (-a-δān՝ -a-dān), -պան (-pān), -պետ (-pat, -pet), -ստան (stān) և այլն: Որոշ ածանցներ, բաղարկվելով հայերեն համապատասխան ածանցների հետ, փաստորեն կորցրել են իրենց իրանական բնույթը, և նրանցով կազմված բառերը գիտակցվում են որպես հայկական կազմություններ. այդպիսին է, օրինակ, մ. իրան. -vǎr-ը, որով կազմված բառերը հայերենում հաճախ փոխվել են -աւոր-ով կազմությունների՝ dātvǎr —հայ. դատաւոր, tāγ-var—թագաւոր և այլն: Կան դեպքեր, երբ հայերեն ածանցների իրանական ծագումը հնարավոր է, բայց ոչ լիովին ապացուցելի. այսպես, հին իրանական լեզուներում հայտնի -aina- ածանցը, որ ածականներ է կազմել համապատասխան գոյականներից (համմտ. ավ. srv-aina- «եղջերային», ayah-aina- «մետաղյա, երկաթյա» և այլն) [համմտ. Belardi, AION, 1961, 3, 7 և հջ.], կարող է լինել հայ. -ային ածանցով կազմված հին ածականների մի մասի աղբյուրը. սակայն սա չի կարելի պնդել, եթե նկատի առնենք, որ նախ՝ հայերեն ածականները հոլովվում են -ո-ով և ոչ -ի-ա-ով այսինքն՝ ունեն -ո-ով հիմք և երկրորդ՝ այդ ածանցը միջին իրանական շրջանում ստացել է -ēn- ձևը, որը հայերեն

*փոխառություններում ներկայացված է սակավադեպ՝* մաշկյապարնէն *«շահի վրան» (?),* նկարէն (*nikaren), Մաշկէն *«գարե հաց» (հմմտ.* կասկ *«կեղևահանված գարի»). կան նաև* –էն*-ով հատուկ անուններ* (Գուրգէն, Սուրէն *և այլն)։ Ավելորդ չենք համարում հիշեցնել ուրարտական աղբյուրներում վկայված տեղանունների մեջ* -aini*-ով կազմությունների առկայությունը, որոնք, թերևս, գոնե մասամբ իրանական ծագում կարող են ունենալ։ Կան նաև զգալի թվով իրանական ածանցավոր կազմություններ, որոնք հայերենում ներկայացված են հատուկենտ օրինակներով կամ չեն գիտակցվում որպես բաղադրություններ։ Անհնար չէ կարծել, որ հայերենի փոքրացուցիչ-փաղաքշական* –ակ*-ով,* –իկ*-ով ածանցների կազմավորման մեջ դեր խաղացած լինի իրանական տարրը. բուն հնդեվրոպական* *-k*-ով կազմությունները հայերենում պետք է ներկայացված լինեն ոչ թե* –կ*-ով, այլ* ֆ*-ով։*

*Ստորև բերենք հայերենում հանդես եկող իրանական փոխառությունների հիմնական ածանցավոր կազմությունները, որոնց վերջածանցները մասամբ իրանական համապատասխան վերջածանցներն են (1), մասամբ իրանական բարդությունների երկրորդ բաղադրիչներ՝ հայերենում ածանցական արժեք ստացած (2).*

*1)* –ակ (-ak—*գոյականակերտ ածանց՝ գոյականներից ու մասամբ բայահիմքերից ածանցող և* -āk—*ածականակերտ-դերբայակերտ և մասամբ գոյականակերտ-անձնանիշ ածանց՝ բայահիմքերից ածանցող)՝* անուշակ (*հմմտ.* անոյշ), աստառնակ (*հմմտ.* աստառն, Լրասան), արձակ, ավրակ (*հմմտ.* ավր), արինակ (*հմմտ.* արէն), բաժակ (*հմմտ.* բաժ), բնակ, գիսակ (*հմմտ.* գէս), գնդակ (*հմմտ.* գունդ), գունակ (*հմմտ.* գոյն), գրապանակ (*հմմտ.* գրապան), դայեակ, դաստակ, դերձակ, դիմակ, դիտակ, դժկամակ (*հմմտ.* կամ, կամակ), դիպակ, դիմակ, դրաւշակ (*հմմտ.* դրաւշ), զանակ (*հմմտ.* զան), զանգակ, թուշակ, խորտակ, կամակ (*հմմտ.* կամ), կապուտակ (*հմմտ.* կապոյտ), կոտակ, կրպակ, համբարակ [*հմմտ.* (հ)ամբար], հասարակ, հպատակ, հրապարակ, հրատարակ, հրովարտակ, նախարակ, նարակ, մատակ, մուրակ *«մուրացիկ»* (*հմմտ.* մուրանամ, մոյր–), մունակ, մուրհակ, յավանակ, նամակ, նիզակ, շամդիտակ *(մի ծաղիկ),* պայուսակ, պատմունակ, պատուիրակ (*հմմտ.* պատուէր), պա(ր)հակ [*հմմտ.* պա(ր)հ, պարհել], պարարակ (հմմտ. պարար), պիսակ (*հմմտ.* պէս), սկավառակ, սմբակ, սըմնակ *(մի ծաղիկ),* սպիտակ, ստամբակ (*հմմտ.* ապ-ստամբ), սրահակ (*հմմտ.* սրահ), սրուակ, վանդակ, վատախտարակ (*հմմտ.* վատ և ախտար-ֆ), վարշամակ, վինակ, տախտակ, տոհմակ *«ազնվական»,* ֆիսակ *և այլն.*

–(ա)կան, –(ե)կան, –եան (-(a)kān, -(i)kān, -yān — *հիմնականում ածականակերտ ածանց)՝* ահեկան *(ամսանուն),* ապանարականկան *(հայ. կազմությո՞ւն),* ապնջական, գրաւական *(?),* դահեկան, դեհկան, մատեան, մեհեան, մեհեկան, ոստիկան, վաճառական *(?,* տոհմական *«առատ բերք».*

–այ (-āy-<awya —*ածականակերտ ածանց)՝* ակամայ, կամայ.

–ան (-ān —*գոյականակերտ և ածականակերտ ածանց՝ գոյականներից և* -ān — *ածականակերտ-դերբայակերտ ածանց՝ բայահիմքերից ածանցող)՝* ապահարզան, արժան (*հմմտ.* արժ–), (յ)անդիման (*հմմտ.* դէմ), դրուժան (*հմմտ.* դրուժ–), երասան, ժաման (*հմմտ.* ժամ), նշան (*հմմտ.* նիշ), նուարտան *«ծածկոց»,* պատմուճան, պատուիրան (*հմմտ.* պատուէր), փահան, տուգան–ֆ (*հմմտ.* տոյժ, տուգան–եմ).

-անակ (-ānak — հիմնականում ածականակերտ ածանց՝ մ. պ. mart-ānak «առնական, արի»՝ mart «այր, տղամարդ» բառից)՝ գանձանակ (հմմտ. գանձ), դահանակ «մի թանկագին քար», ժամանակ (հմմտ. ժամ), նշանակ (հմմտ. նիշ), թերևս նաև աշտանակ, արգանակ, զարգմանակ (մի զարդ) խարդաւանակ (հմմտ. խարդաւան-եմ, խարդախ), հանգանակ, պատժանակ, «բաժակ», վականակ «հասուն». կան նաև հայ. հիմքերից կազմված բառեր՝ այսանակ, անցանակ, (յ)եղանակ, ըմպանակ, հեծանակ, յաղթանակ, ցուցանակ և այլն.

-(ա)նդակ (-(a)ndak՝ դերբայակերտ ածանց)՝ բովանդակ (բաւանդակ), թերևս նաև աւժանդակ, դժնդակ, սուրհանդակ. գիտակցվելով որպես ինքնուրույն ածանցական մասնիկ՝ կազմել է այլանդակ բառը. հայտնի չէ ապանդակ, կարկանդակ բառերի կազմությունը, թեև առաջինի իրանական ծագումը ակնհայտ է.

-գին (-gīn՝ ածականակերտ ածանց. հմմտ. մ. պ. hēšmgīn «ցասկոտ», šarmgīn «ամոթալի»)՝ ահագին, ուժ-գին.

-իկ և բաղարկությամբ -եակ (-īk — ածականակերտ ածանց)՝ անաշխարհիկ (անաշահիկ), բնիկ (?), գերդաստանիկ «ծառա, աղախին», դժնիկ (?), խորտիկ, կաւշիկ, ճարպիկ, մահիկ, մատենիկ «հեծյալ, հեծելակային» (հմմտ. համիմաստ մատեան), մարզիկ «զինվոր», մարծիկ «մարզիչ», մշտիկ «սրբիչ», մուրիկ «մուրացիկ» (հմմտ. մուրանող, մոյր-), շապիկ, ոստանիկ (հմմտ. ոստան), պայիկ «բերդապահ», պէշասպիկ «ձիավոր սուրհանդակ», ռամիկ (հմմտ. երամ և ուշ՝ ռամ), ռոճիկ, սարեակ, սպասիկ (սպասեակ. հմմտ. սպաս), տանիկ, տոհմիկ, քաշիկ «թոկ».

-իճ (-īč — գոյականակերտ ածանց)՝ դահլիճ, դարգիճ «պատգարակ», կապիճ (?).

-իշ(ն) (-išn, ուշ՝ -iš — գործողության անուն կազմող ածանց)՝ բաշխիշ (հմմտ. բաշխ-), փուրսիշն «հարցաքննություն».

-կար, -կեր (-kar — գործող անձի անուն և ածական կերտող ածանց՝ kar- «անել» հիմքից)՝ խոնակեր «խոհարար» (հմմտ. խոն «կերակուր»), կամակար, կաւշակակար (վերափիմաստավորված), պանակեր (հմմտ. պան-), վընասակար.

-ոյկ (-ōk — գոյականակերտ և ածականակերտ ածանց)՝ թակոյկ, մակոյկ, թերևս նաև խարոյկ (եթե խար-ը բնիկ հ.-ե. չէ), պարոյկ.

-ուար -ւառ, -ւար (>ւոր) (-vār — գոյականակերտ և ածականակերտ ածանց՝ «ունեցող» իմաստով)՝ գահաւոր (տիտղոս), բուրվառ, գահաւորակ (հմմտ. գահ), գանձաւոր (հմմտ. գանձ), դաստաւոր, զրահաւառ (զրահաւոր?).

-ուկ (ūk — ածականակերտ ածանց)՝ ճապուկ (հմմտ. ճեպ), ճարտուկ «բծավոր», չատուկ.

-պան, -պանակ (-pān — գոյականակերտ ածանց՝ «պահող» իմաստով)՝ բարապան, գրապան, դաստապան, զանգապան, կշտապանակ (մի զարդ. հմմտ. կուշտ «կող»), համբարակապան (հմմտ. համբարակ), պաշտպան (հմմտ. պաշտ-), պա(ր)հակապան [հմմտ. պա(ր)հակ), պահապան (հմմտ. պահ-), վարապան, փուշտիպան (հմմտ. պաշտպան).

-պետ (-pet, -pat — գոյականակերտ անձնանիշ ածանց)՝ ամբարապետ (հմմտ. ամբար), (հ)անդերձապետ (հմմտ. անդարձ), ասպահապետ (հմմտ. սպահ, սպայ, սպարապետ), դեհպետ, դենպետ, զինապետ, խոռապետ (շան-

խոստպետ), կարապետ, կռոգպետ «արհեստապետ», համբարակապետ (հմմտ. համբարակ), մոզպետ (մովպետ), նաւապետ, շահապետ, շպետ «հովիվ», սպարապետ, վանառապետ, վարդապետ, տակառապետ.

-ստան [-(i)stān — տեղանվանակերտ ածանց)՝ ասպաստան, դաստաստան, դարաստան, շահաստան, սակստան «շնանոց».

-տակ (-tak՝ դերբայակերտ ածանց)՝ ամբարտակ, հրեշտակ.

2) -արան (-a-δān՝ հ. իրան. dāna- «տեղ» բառից)՝ բաստարան «բանտ»։

-արար (a-δar՝ dar- «պահել» արմատից, բաղարկվել է հայ. արար-ի հետ՝ առնեմ-ից)՝ մատակարար, նախարար

-զան (zan- «տեսակ»)՝ հրաշազան, այլև հայ. հիմքից՝ աստուածազան, զարմանազան. կրկնությամբ՝ զանազան.

-ժէտ (-ժետ, ուշ՝ -ժոտ, -ժատ) (-žat «-հար, զարկված»՝ žatan, zatan «խփել, զարկել» բայի հիմքից)՝ ախտաժէտ (ժետ), դիւաժետ դիւաժատ), թերևս նաև ուշ հանդիպող նենգ(ա)ժէտ (-ժոտ). այն գիտակցվել է իբրև ինքնուրույն վերջածանց և կազմել լուսնաժետ, որկորաժետ, որովայնաժետ բառերը՝ հայկական հիմքերից։

-ճան (-čanah —«-մոլ, -սեր, ցանկացող»)՝ դաւաճան, խրախճան, նախաճան (?), տիրաճան:

Հայերենում վերջածանցական արժեք են ստացել նաև աւրէն (-աւրէն), պէս (-ա-պէս), զար (-ա-զար) բառերով կազմությունները, ընդ որում առաջին երկուսը շատ կենսունակ են։ Ընդհակառակն, դատախազ, մատակախազ բառերի երկրորդ բաղադրիչը որպես ինքնուրույն ածանց տարածվել է նորագույն շրջանում (պինեխազ, իգախազ):

Իրանական -aiča, -ēč, -īč և բաղադրված -(ī)čak փոքրացուցիչ-փաղաքշական վերջածանցները հանդիպում են համեմատաբար ուշ ավանդված բուէճ, բուիճակ, դարիճակ «կաղապար» (մ. իրան. darīčak «դռնակ, կաղապար») բառերում և Մանայճ, Մանէճ անձնանվան մեջ։ Արդյոք այդ ածա՞նցն է առկա հայկական հիմքերից կազմված աղուճակ «աղի փայլուն կտոր», թեճակ «թիակ» բառերում։

Հնարավոր է -ուհի վերջածանցի իրանական ծագումը, բայց մեկնության գոյություն ունեցող փորձերն առայժմ անհամոզիչ են։ Յ. Մարկվարտը (**Markwart,** C, 7, 1931, 128 ծան. 1) այն բխեցնում էր միջին իրան. puhr «որդի» ձևից. Է. Բենվենիստը [**Benveniste,** 1945, 46] թագուհի բառը բխեցնում է իրան. taga-bṛθryā «թագակրուհի» ձևից (>-wrhi>-urhi>-uhi)՝ կարծելով՝ որ այս բառից -ուհի-ն տարածվել է այլ բառերի վրա [հմմտ. նաև **Шанидзе,** 1968, 452—454]։

Իրանական ծագում ունեն նաև -թար-ը (վատթար), թերևս նաև -եշտ-ը՝ (հրաժեշտ, պարկեշտ) և -իշտ-ը՝ (երաժիշտ, նաժիշտ):

Զգալի թիվ են կազմում իրանական փոխառությունների մեջ բարդությունները, որոնց վրա հատկապես կանգ չենք առնի։ Նշենք միայն, որ դրանց երկրորդ բաղադրիչները մասամբ գիտակցվել են որպես ածանցներ և, ինչպես վերևում տեսանք, անցել ոչ իրանական հիմքերին։ Իրանական բարդությունները որպես այդպիսիներ գիտակցվել են հատկապես այն բառերում, որոնց բաղադրիչները փոխառվել են նաև առանձին։ Հատուկ խումբ են կազմում բայահիմքային երկրորդ բաղադրիչներ ունեցող բարդությունները, որոնց այդ բաղադրիչները ինքնուրույն գործածություն են ունեցել կամ հանդես եկել

իրեն բայահիմքեր։ Այսպես, դաստակերտ բառի կերտ-ը որպես բայահիմք գիտակցվել է, և համաբանորեն կազմվել է ձևակերտ գոյականը։ Այդ նույն ձևով -ւանդ(ակ)-ով կազմված բառերի օրինակով (-ւանդ<-βand<band- «կապել» արմատից) կազմվել է բարձրաւանդակ բառը. Հմմտ. գահաւանդ (ակ), դարաւանդ, սարաւանդ(ակ), որոնք թերևս իրանական կազմություններ են։

## ժբ) ԻՐԱՆԱԿԱՆ ՓՈԽԱՌՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԻՄԱՍՏԱՅԻՆ (ԹԵՄԱՏԻԿ) ԽՄԲԵՐԸ

*Իրանական փոխառությունները ըստ իմաստային (թեմատիկ) խմբերի բաշխվում են հետևյալ կերպ.*

1. **Ֆիզիկական աշխարհ.** *1.1 աշխարհ. 1.214 սիկ «ցեխ, տիղմ». 1.2141 փուտ (փտել). 1.216 բորակ. 1.23 դաշտ. մարգ «մարգագետին». 1.331 աւազան. 1.36 վտակ. 1.44 խազ «քար» (գայլախազ). խարակ «ապառաժ, կարծր քար» ժայռ (ժեռ, ժիռ), վէմ, 1.441* (հանքաքարեր, այդ թվում թանկագին). *դահանակ. զմրուխտ. կարկեհան. 1.531 մահիկ. 1.54 ախտար-ք «աստղ». 1.541 արուսեակ «լուսաստղ, վեներա». 1.751 սրսկ-ել, մշտիկ «սրսկիչ»։*

2. **Մարդկություն՝ սեռ, տարիք, ընտանեկան հարաբերություն.** *2.281 դայեակ. 2.43 ղաւակ. աւն «ցեղ, սերունդ», ճետ. 2.56 նահապետ. 2.811 հարազատ։*

3. **Կենդանիներ.** *3.13 մատակ «էգ կենդանի». 3.18 շպետ «հովիվ». աս-պաճարակական «հովվական». 3.19 ախոռ. ասպաստան. 3.20 պաճար «նախիր, խոշոր եղջյուրավոր անասուն». 3.201 գոմէշ. 3.32 վարազ. 3.37 նոխազ. 3.451 յաւանակ «ձագ, մատաղ կենդանի (հատկապես էշի, ձիու, եղնիկի)». 3.62 կուզ «կատու». 3.64. մարգ «թռչուն» (լորա-մարգ). 3.641 բազէ. սարեակ. սիրամարգ. 3.721 յոպող. վագր. 3.741 սամոյր. 3.751 խարբուզ «իշայծյամ». 3.76 կապիկ. 3.77 փիղ. 3.791 վարմ «որսացանց, թակարդ». 3.811 մարախ «մորեխ». 3.851 վիշապ։*

4. **Մարմնի մասեր, մարմնական գործառություններ և պայմաններ.** *4.111 անդամ. 4.131 ճարպ. 4.14 գէս, վարս. գիսաւոր. 4.141 վիրա-լ (վիրայ-ել) «սափրել». վարսավիրայ. 4.151 երակ. 4.162 կուշտ «կող» (և «փոր»), պառակ. 4.181 դմակ. 4.204 դէմ-ք. դիմակ. 4.205 ճակատ. 4.24 երախ «բերան, երախ». 4.31 բազուկ. 4.311 դաստակ. 4.351 երան(-ք). 4.371 սմբակ. 4.46 կանձակ «փոր, ընդերք», [կուշտ] «փոր». 4.61 նիրհ. 4.661 դաշտան. ճեմիշ «զուգարան,* ***արտաքնոց». 4.75 մահ. 4.751*** *անուշակ «անմահական». 4.81 հզաւր. ոյժ. 4.84 ախտ. ախտաժէտ. -ժետ (-ժէտ, -ժատ), -գար 4.841 բիժ. բոր. պիսակ. 4.86 բուժ-ել (բոյժ). 4.87 բժիշկ. 4.871 նշտիր «վիրաբուժական դանակ». 4.88 բոյժ «դեղ», դարման. 4.91 աշխատ-ել «հոգնել», պարտաս-իլ «հոգնել». 4.941 գոնջ* ***«հաշմանդամ». 4.97 կոյր։***

5. **Ուտելիք և ըմպելիք. կերակրի պատրաստում և ամանեղեն.** *5.111 (ըմ-)բոշխն-ել «վայելել». 5.121 նպար(ակ), պէհ «պարէն, ուտելիք». խար «անասնակեր». թոշակ «ճամփի պաշար. կերակուր», պաշար. պատրուճակ «ուտելի կենդանի». ռոճիկ «օրապահիկ, օրվա ուտելիք». պարար «գիրացում», պարարակ «գեր, պարարտ», պարարտ. 5.131 ուշարակ. 5.14 ռամ. 5.261 դոյլ. 5.32 խան «տախտ, սինի». սկավառակ «պնակ, (կերակր)աման». 5.34 կուժ. ապակի (ապիկի) «շիշ». թակոյկ «մեծ ջրաման». շիշ. սրուակ.*

5.35 բաժակ, նույն «գավաթ, բաժակ», տաշտ «բաժակ, թաս». 5.41 խոհ (խահ-, խախ) «կերակուր». խորտիկ «կերակուր, համադամ». 5.44 ճաշ. 5.511 նկան «մի տեսակ հաց», նկանակ. նշխար «հացի կտոր, կերակրի մնացորդ». 5.52 պախաճճամ «կարկանդակ». 5.521 խորակ «մի տեսակ խմորեղեն», կոտապ «մի տեսակ խմորեղեն». 5.611 ամիճ «մսեղեն կերակուր». ապուխտ. սալի «խաշած միս». 5.641 կասկ «կեղևահանված (և եփված) պարի, հարիսա». 5.651 վարունգ. 5.68 սոխ. 5.71 միրգ. 5.751 թութ. 5.751 արմավ. 5.88 պանիր. 5.921 անապակ «անջուր՝ անխառն (գինի)». մատուռակ։

6. **Հագուստ, անձնական զարդարանք և խնամք.** 6.12 հանդերձ, մենթան «հագուստ». 6.121 պատմուճան «հանդիսավոր զգեստ». 6.13 զերձակ 6.211 (գործվածքի տեսակներ). դիպակ. ցանկաւուխտ. կերպաս. սնդուս. տարաղ «արվեստավոր գործվածք». 6.34 ճախարակ. 6.381 նարաւտ «գույնզգույն թել». 6.411 պարեգաւտ «վերնազգեստ, կապա». 6.44 շապիկ, պարեհնակ «շապիկ». 6.451 գրապան «հագուստի վզամաս». 6.46 դրաւշակ «քղանցք». 6.48 վարտիք. 6.51 կաւշիկ, մոյկ, մուճակ. 6.551 թագ. աշխարաւանդ «թագի կապ». խոյր. պսակ. 6.57 կամար «գոտի». 6.591 վառ «թագավորական քող». փաղան (փա(ն)դամ) «լաչակ». 6.711 ղամղայեալ «զարդարված, պճնված». 6.721 պախճաւանդ «մի կամարաձև զարդ». 6.731 գո(ր)շապահանգ «ականջօղ». 6.74 ապարանջան. 6.75 մեհեւանդ «մանյակ». 6.81 վարշամակ «թաշկինակ». 6.941 մարձ-ել «շփել, օծել, (մարմինը) յուղով տրորել». սնգոյր «շպար, երեսի ներկ». 6.951 աւշնան «օճառախոտ»։

7. **Բնակարան, տուն, կահկարասի.** 7.11 բնակ-իլ. վան «բնակություն, բնակարան». ապատ «շեն, շեն, շեն տեղ, բնակելի տեղ». անապատ 7.121 ապարան. դաստակերտ «ագարակ, ունեցվածք, շինվածք». տաճար, «պալատ». 7.122 բնակ «բնիկ, հարազատ», բնիկ 7.13 վրան. տաղաւար «հյուղ, խրճիթ, վրան». 7.14 [տաղաւար]. ապաւանդակ «վրանի թոկ». մաշկապարճէն «թագավորական հարեմի վրան». 7.211 դահլիճ, դիւան «դահլիճ, ատյան. դպրոց», սրահ. պատշգամ 7. 221 բար- «դուռ» (բարաւր «դռան սեմ»). 7.221 բարապան «դռնապան», բարապետ, դարպասն, դարապետ. 7.25 պատուհան. 7.271 սպրխպ. պահանգ (պահանկ) «պատի մեջ ագուցված գերան՝ պատը պահելու համար». 7.281 գմբեթ. 7.41 կահ, սպաս. 7.411 դարան «պահարան». նուարսան «ծածկոց», պաստառ «ծածկոց». շատրուան «վարագույր», վարագոյր, վիժակ «վարագույր, ծածկոց». 7.421 բարձ. 7.43 գահ, տախտ «աթոռ, գահ. տապաստակ «բազմոց». 7.44 խուն- «սեղան» (խունաւագութիւն). 7.45 բազմակ «ճրագ», լամբար (լամպար, ղամբար), ճրագ. պատրոյգ (պատրոյգ). 7.451 նաւթ. 7.46 մոմ։

8. **Երկրագործություն, բուսականություն.** 8.11 մշակ. 8.12 [մշակ-ել]. 8.13 դարաստան «ծառաստան, պարտեզ», դրախտ «պարտեզ, ծառանոց», պարտէզ. 8.14 ամբար (համբար), համբարակ «շտեմարան, ամբար». 8.141 համբարակապետ, համբարապան. 8.21 վար (վարել). 8.211 մաճ. 8.23 բահ. 8.34 կաս-ել (-ուլ) «կալսել. մանրել». 8.411 առհմական «առատ բերք». 8.48 բրինձ. 8.51 ճարակ «անասնախոտ». 8.53 (զանազան բույսեր). աւշինդր. բաղուկ «ճակնդեղ». դժնիկ «մի տեսակ փուշ». կապար. կնճիթ «քունջութ». ճակնդեղ. ճանբակ «մի խնկաբեր բույս». մոլար. չաման «մի համեմիչ բույս». քրքում «շաֆրան». 8.541 բուն «ծառի բուն». 8.571 (զանազան ծաղիկներ). համասպրամ. հաւրուա. հիրիկ. մանուշակ. մաւրտա. յասմիկ, նարդէս (նար-

կէս ,նարկիս). շամպիտակ. սմնակ. 8.58 վարդ. 8.601 (զանազան ծառատե-սակներ). նոճ, սարոյ «նոճի». քնարուկ. 8.602 պտտուտատ։

9. Ֆիզիկական տարբեր գործողություններ, արվեստ և արհեստ, սրանց հետ կապված նյութեր. *9.12 երկ. 9.13 [աշխատ-ել]. 9.18 պարտանդ «կա-պանք, շղթա». 9.19 առասան «թել», երասան. 9.25 տապար «կացին». 9.261 խարտոկ-ել. 9.33 քարշ-ել. 9.34 վան-ել. 9.341 տապաստ «գետնատարած». 9.412 արուեստ. 9.42 կազմպետ «արհեստապետ», ճարտար. 9.44 կերտ-ել, շին-ել (շէն). 9.45 տաշ-ել 9.451 տախտակ. 9.641 ժանգ (ժանկ). 9.66 պղ-ինձ. 9.661 արոյր. 9.671 պողովատ. 9.74 [ապակի (ապիկի)]. 9.76 ղամ-բիւղ. սապատ «կողով». 9.761 վանդակ. 9.81 քանդ «փորագրութիւն, քան-դակ», քանդակ. 9.87 նկար, պատկեր. արուճանակ «նկարի ուրվագիծ». 9.88 ներկ (?). 9.943 արժան(ի) «պատշաճ», պատշաճ. 9.93 պէտ-ք. նիազ «կարիք ունեցող, կարօտ,պակաս». 9.95 կար-ել. տառակ «կարող, ձեռնհաս», բասակ «ձեռնահաս, կարող». 9.97 դժուար. 9.992 աւրինակ «օրինակ. եղանակ, կերպ». դաշնակ «եղանակ, կերպ». համգամ-անք, հնար, ճար. [տարազ] «միջոց, ձև, եղանակ». պաճար-ք «միջոց, հնարք»։*

10. Շարժում. տեղափոխություն, փոխադրում, նավագնացություն. *10.13 ճախր-ել. 10.25 արկ-անել. 10.32 վիժ-ել (վէժ-). 10.43 վազ-ել «ցատկել, վազել». 10.441 վարձակ «պարուհի». 10.45 ճեմ-իլ. 10.46 [վազ-ել]. 10.491 կարաւան. պայուսակ. 10.64 [վար-ել] «տանել, քշել». 10.661 գաւազան «ա-նասուն քշելու փայտ, գավազան». խարազան. ապրդում «ձիու թամբի փոկ». գանգանաւանդ «սանձ», վարաւանդ «ձիու սանձ». 10.71 ճանապարհ. 10.711 առհվիրայ «ուղեհարթար, ուղի բացող». 10.751 դահաւոր(ակ) «գեսպակ, պատգարակ», դարգիճ «պատգարակ», գեսպակ «պատգարակ», ժանուար «դահավորակ». 10.761 ճախարակ «անիվ». 10.82 նաւաղ «նավավար». 10.83 մակոյկ։*

11. Ունեցվածք, սեփականություն և առևտուր. *11.17 պա(ր)հ-ել. 11.211 ապ(ա)ստար-ել «հանձնել». բաշխիշ «նվեր, պարգև», դահամն «ընծա, նվեր», նուէր, շնորհ «պարգև. ձրի». 11.24 [պահ-ել]. պահակեր «պահապան, պա-հապան (այստեղից ուշ՝ պահպան-ել). ապաւիկ (ապաւեակ) «խնամակալ, պահպանող». 11.251 ապաստան. 11.27 ապական-ել «ջնջել, վերացնել, փչացնել». աւեր-ել, քանդ-ել. աւերակ. 11.28 վնաս. վնասակար. 10.31 խուզ-ել (խոյզ) «որոնել», զնն-ել (զնին) «քննել, որոնել». յուզ-ել (յոյզ) «փնտրել, տակնուվրա անել». 11.34 արձակ-ել. 11.41 վերդաստան «ծառաների և գե-րիների ամբողջություն. ունեցվածք, կալվածք». 11.43 դրամ. 11.431 (զա-նազան դրամներ). դահեկան. դանգ. [դրամ]. նաքարակիտ «մի մանրադր-ամ». ստատեր. 11.45 բաժ. 11.46 գանձ, գանձանակ «գանձարան». գանձա-ւոր «գանձապահ». համգանակ «հավաքած գումար». 11.48 պայազատ «ժա-ռանգորդ». 11.481 անդարձ «կտակ(ագիր)», կտակ. բաժ «բաժին. ժառան-գություն». 11.511 ապենիազ «անկարօտ». 11.52 [նիազ] «կարօտ». 11.53 մուրակ «մուրացկան», մուրիկ «մուրացկան». 11.531 բաշխ «աղքատություն, հարկ, տուրք», մոյր «մուրացկանություն, աղքատություն». 11.54 ագահ, զաւշ «անհագ, ագահ. ցանկասեր». 11.58 հէն «ավազակ». 11.64 պարտ-ք. 11.67 գրաւ, գրաւական, երաշխ-(իք), պարտաշխի «գրավ». 11.68 վաշխ «տոկոս». 11.69 բաժ «հարկ, տուրք», բաշխ «հարկ, տուրք», հարկ «տուրք», սակ «հարկ, տուրք». 11.72 աւգուտ, աւգտակար. 11.74 [վնաս]. 11.751 մուրհակ. 11.77*

վարձ-ել. 11.78 [թոշակ], մահակ «վարձ», վարձ, վճար. վարձկան. 11.82 վաճառ-ել. 11.84 վաճառական. վաճառորդ. 11.86 կրպակ. 11.871 արդ- «արժեք», արժ-. արժան «գին ունեցող»։

12. **Տարածական հարաբերություններ՝ տեղ, ձև, չափ.** 12.111 տարածել (-էս). հրապարակ. վաստան «մեկ ապարեղ, մեկ նետընկեց (տարածություն)». 12.131 բազմ-իլ. բազմական «սեղան նստածներ». 12.19 հանդարտ. 12.211 (հ)անգրին-ել (հանգրէճ) «հավաքել. վեր քշտել». 12.22 [պատուատ-ել] «կցել, հարմարեցնել». 12.232 բաժան-ել. բաշխ-ել. 12.32 խոնարհ «ցած. խոնարհ, համեստ». շեպ «զառիվայր». 12.34 տակ. 12.35 բաւ «ծայր, սահման, եզր, վերջ». 12.36 կոյս «կողմ». 12.42 ահեակ «ձախ». 12.44 տար «հեռու». 12.441 վտար-ել. 12.51 -ղան, ղան- «կերպ». աւրինակ. կաղապար. 12.541 (ղանազան չափեր). գրիւ «հացահատիկի մի չափ». կապիճ «հատիկեղենի մի չափ». հրասախ «փարսախ». ման «մի կշռաչափ». մար «մի չափ». 12.55 անարի «վիթխարի, անճոռնի». 12.561 կոտակ «կարճահասակ, փոքր». [խորտակ-ել] «կոտրատել, ջարդել». [կաս-ել. (-ուլ)] «մանրել». 12.61 [արձակ] «ընդարձակ». 12.65 բարակ. 12.74 նկուն «կորացած, նվաստ». 12.83 գունդ «գունդ, գնդաձև իր», գնդակ. 12.91 հաւասար. 12.92 գունակ «նման», հանգոյն «նման», նման, պէս. [աւրինակ]. 12.94 նիշ, նշան, նշանակ։

13. **Քանակ և թիվ.** 13.12 համար. համարակար «հաշվապահ, հաշվակալ». 13.13 բաւանդակ (բովանդակ). 13.14 համակ «բոլոր, ամբողջ», համաւրէն 13.15 բազում, շատ. 13.16 յաւէտ «ավելի շատ». 13.17 նուաղ, պակաս. 13.18 բաւական. 13.19 գումար. 13.192 ամբոխ. գումարտակ. գրոհ «ժողովուրդ, ամբոխ». երամ, երամակ, երամական «շքախումբ». խումբ. կոյտ. ջոկ. տակ «(մարգարտա)շարք. տրցակ». 13.21 առատ «առատ, լեցուն. առատաձեռն» 13.221 զոյգ. 13.23 [բազ] «բաժին», [բաժ], բաժին. 13.33 սատակ «պարզ». 13.34 նախ. նախակ «առաջնակարգ դիրք կամ պաշտոն». 13.531 հազար. բիւր։

14. **Ժամանակ.** 14.11 ժամ, ժամանակ. անգամ. 14.14 երիտասարդ. 14.151 պառաւ. 14.16 ուշ. 14.21 արագ (երագ). շտապ. ճեպ. ժիր. տաճիկ «արագավազ» 14.22 -սպոյժ (սպուժ-) «դանդաղում». 14.24 [սպուժ-ել] «դանդաղել, ուշանալ». 14.25 նախ. նաւակատիք «բացման հանդես. տարեդարձ». 14.251 հակիրճ. 14.26 բաւ «ավարտ», սպառ, սպուռ, վճար. 14.29 կազմ «պատրաստ», պատրաստ. ժաման «ժամանակին պատրաստ, փութկոտ». 14.31 հանապազ, միշտ. յավէժ, յաւէտ. 14.331 տակաւ «քիչ-քիչ, հետզհետե». 14.72 (հայկական տոմարի ամսանուններ). նաւասարդ. տրէ (տրեկան), մեհեկան, ահեկան, մարերի, մարգաց, հրո(ր)տ-ից. 14.51 ժամ։

15. **Զգայական ընկալումներ.** 15.22 բուր-ել (բոյր). 15.251 խունկ, կընդրուկ, ստաշխն. 15.261 փուտ. 15.35 անոյշ. 15.411 գոյշ (դգոյշ). 15.51 նըշմար-ել. 15.52 դիտ-ել (դէտ), [ղնն-ել (ղնին)]. 15.54 դիտակ «աչքին երևացող բան». կերպ. 15.551 հանդէս. 15.61 գոյն, երանգ. ճաճան(չ)աւուխտ «գույնզգույն». 15.611 դժգոյն. 15.62 արշա- «սպիտակ (?), լուսափայլ (?)» (արշալույս-ք). 15.63 խաւար. [պիսակ] «սև նշան». ճարտուկ «ճանճկեն, բծավոր, պիսակավոր». 15.64 ճերմակ, սպիտակ. [արշա-] «սպիտակ (?), լուսափայլ (?)». 1565 արջն «սև, մութ». սեաւ 15.66 կարմիր. աշխէտ «կարմիր, հրագույն», ատրագոյն «հրագույն». 15.67 կապոյտ. 15.69 զարտակ «դեղին». 15.47 սոթ (<*սաւթ) «պինդ». 15.84 աշտուճ (ատտուճ) «ցամաք

*(հացի մասին)», եփաշտ «չոր, ցամաք (հողի մասին)». 15.85 սալ, սալթ. 15.87 անապակ. [սաստ] «անարատ, պայծառ». պարզ. 15.871 պատատուկ «ջնջոց, սրբիչ». 15.881 ժահ «ապականություն»։*

*16.* **Զգացմունք, խառնվածքային, բարոյական և գեղագիտական ըմբռնումներ.** *16.12 [յոյզ]. 16.17 բախտ, վիճակ. [ախտաւոր-ք] «ատել. բախտ. սատեղահմա». 16.18 [բախտ]. 16.19 պատուհաս. թշուառ. 16.21 ախորժ, ախորժական. կամակ-ք «ախորժելի բան. համով ուտելիք», հաճ. [շնորհ] «հաճություն». 16.22 գրաւ-(անք) «զվարճություն». 16.23 ուրախ (խրախ < *հուրախ). 16.27 տարփ (արփի, ատփի). 16.29 համբույր. 16.31 [աշխատ] «չարչարանք», տանջ-. 16.32 վիշտ. 16.33 անդոհ «մտատանջություն». 16.34 ապաշաւ «զղջում. խնայելը, խղճալը». փաշտման «զղջում». ապաշխար-ել «զղջալ, մեղքը լալ». 16.37 աշխար(-ել) «լալ, ողբալ», գեր «լաց, ողբ», սուգ. 16.46 պատիւ. [արգ (յ-արգ), արժան]. վեհ 16.461 նշկահ-ել «արհամարհել». նկուն «արհամարհված, ընկճված», նուաստ. 16.47 փառ-ք. բարգաւաճ «պերճ, փառավոր, անվանի». 16.48 ամբարտաւան, վէս «հպարտ, գոռոզ». նախ-ել. 16.51 ապարթան-ել «հանդգնել, խրոխտալ». 16.511 վստահ. 16.53 ահ (արհ-), վախ, սարսափ». ահագին, արհական. արհաւիր. (զ)արհուր-. 15.511 [գոյշ (զգոյշ)] 16.54 վտանգ. 16.61 կամ-իլ. -խայլ, -ճան «-մոլ». կամայ. ակամայ. դժկամակ. 16.63 ապաէն. 16.64 երախտ. 16.68 դալ «նենգություն, թակարդ. խաբեական», մանկ «նենգություն, խաբեություն». դրուժ-(-դրուժ). դրուժան «խաբեբա». 16.72 վատ, վատթար, [գաւշ] «վատ. ցանկասեր». դաժան, դժխեմ, դժնդակ, դժնեայ. ժանտ. խուժ «վայրենի, բարբարոս», խուժան. վատգոհար «ստորացեղ, գռեհիկ». 16.74 վ վրիպական. 16.75 [վնաս] «մեղք». 16.76 [վնաս] «հանցանք». 16.77 վրէպ, վրիպակ. 26.78 դարուլ «նախատինք», թշնամ-(անք) անարգանք, նախատինք, հայհոյանք». 16.79 զով-, գրուատ. 16.81 [շնորհ] «վայելչություն, գեղ»։*

**Մտածողություն, միտք.** *17.11 [ուշ] «ուշք, միտք». 17.12 հանճար «խելք, միտք, իմաստություն». 17.13 անդաճ-ել (անդիճ-ել) «մտածել, խորհրդածել». 17.171 ակահ «տեղյակ». 17.22 ապուշ, պանդոյր «անմիտ, տխմար». 17.251 խրատ, հրահանգ. կիրթ. վարժ. մարզ-ել. 17.26 աշակերտ. 17.27 դաստիարակ. վարդապետ. 17.271 ախտարակ «ընախոս». 17.31 յ-իշ-ել. 17.37 հաւատ, վաւեր «ստույգ, հավատարիմ». 17.41 նպատակ. 17.43 փարգաստ «չլինի թե, քավ լիցի»։*

*18.* **Ձայնական արտահայտություն, խոսք. ընթերցանություն և գիր.** *18.111 թմբուկ. 18.12 նուագ. 18.121 տաւիղ «տասնաղյա քնար». վին «մի տեսակ քնար». 18.32 պատասխանի. 18.35 պահանջ. 18.36 խոստ- «խոստում, ուխտ», ուխտ. 18.37 մերժ-ել. 18.41 հրաւէր. 18.411 զանգակ. 18.43 ազդ, համբաւ, պատգամ. 18.431 հրեշտակ «սուրհանդակ, պատգամավոր». 18.51 դպիր. 18.54 նամակ 18.541 պատճէն. 18.61 մատեան։*

*19.* **Տարածքային, հասարակական և քաղաքական բաժանումներ. հասարակական հարաբերություններ.** *19.14 մարզ. նահանգ. 19.15 քաղաք. ոստանակ «գլխավոր քաղաք». 19.16 [շէն] «գյուղ» ավան. 19.16 [դաստակերտ] «ագարակ. ունեցվածք. շինվածք». 19.17 սահման. 19.21 ռամիկ «հասարակ ժողովուրդ». 19.23 [ազն] «ցեղ, սերունդ, ազգ. տեսակ». [ճետ] «ցեղ, սերունդ», տոհմ. 19.231 [նահապետ]. 19.31 իշխ-ել. 19.311 կարապետ «առաջնորդ, ուղեցույց». 19.32 թագաւոր. 19.321 [թագ]. [աշխա-*

բուանդ] «թաղի կալ». [խոյր] «գլխարկ, թագ». [պսակ] «պսակ, թագ». [վառ] «թագավորական քող». գահ, [գահաւոր(ակ)], տախտ «գահ, աթոռ». 19.33 բամբիշն «թագուհի». 19.35 իշխան. 19.35 գահնամակ «գահացուցակ». 19.352 (պաշտոններ, աստիճաններ, տիտղոսներ). անդերձապետ. ասպետ. բանուկան «պալատական տիկիններ». բդե(ա)շխ. գահաւոր. դեհկան. դեսպան. խոռապետ. հազարապետ. հազարաւուխտ. հանդերձապետ. մատակարար. մարզպան. նախարար. շահապ. շահապետ. շապըստան տակառապետ. ոստիկան, պատմուճակ, պարէտ. սակստան-անդերձապետ. սեպուհ. տակառապետ. տաճարապետ. 19.36 ազատ «ազնվական», տոհմակ «ազնվական», տոհմիկ. 19.38 հպատակ. 19.41 պետ. 19.42/43 գերդաստան «ծառաների և գերիների ամբողջություն». 19.43 [գերդաստան] «ծառա. աղախին», գերդաստանիկ, սպասաւոր. 19.431 [սպաս] «պաշտոն, ծառայություն». 19.44 [աղատ. արձակ]. 19.45 հրամայ-ել. հրաման. հրովարտակ. [պատգամ]. պատուէր, պատուիրան. 19.451 պատուիրակ. 19.461 ապ(ա)ստամբ. ապարասան «անհնազանդ, ըմբոստ», ստահակ «ըմբոստ», ստամբակ «ըմբոստ, անսաստ». [նշկահ-ել] «ապստամբել». 19.52 թշնամի. 19.55 անաշխարհիկ (անաշահիկ) «պանդուխտ, օտարական», աւտար, նժդեհ «պանդուխտ». 19.561 ապ(ա)նջական «հյուրընկալ». 19.58 նպաստ. 19.63 [դագ] «նենգություն, թակարդ». դաւ. 19.631 գուշակ «մատնիչ». դաւաճան. 19.64 հասարակ «ընդհանուր». 19.72 ստահակ «անառակ». 19.721 կապէնք «շնության վարձ»։

20. **Ռազմական գործ**. 20.12 ա(պ)շոպ «շփոթություն, խռովություն, կռիվ». գուպար «ըմբշամարտ. կռիվ». պայքար. վէգ «վեճ, կռիվ». վէճ. 20.13 պատերազմ, ռազմ. 20.132 թշնամի. [հէն] «թշնամի բանակ». 20.14 հաշտ. 20.141 դաշն. պայման. 20.15 [գրոհ] «բանակ». զաւր, ճամբար «բանակ. բանակատեղի». սահ «բանակ. գունդ, զորագունդ». 20.151 գունդ, սպահ «գունդ, զորաբանակ», սպայ «գունդ, զորաբանակ». վաշտ. մատենիկ «հեծյալ, հեծելակային». 20.152 դրաւշ, դրաւշակ. 20.17 զինուոր, մարզիկ «զինվոր», վաշտկան «զինվոր». պէշասպիկ «ձիավոր սուրհանդակ». 20.171 մարզել. 20.18 հրամ(ան)ատար. սաղար (սալար) «զորավար, զորապետ», սպայապետ, սպարապետ. 20.21 զէն-ք. [կազմ] «զինված». 20.222 [տապար]. 20.23 պարս «պարսատիկ», պարսատիկ (?). 20.25 պատկան «նետ». պատկանդարան «նետաման, կապարճ». 20.26 աշտեայ, նիզակ. տէգ «նիզակի ծայր». 20.271 [դաստակ] «սրի կոթ», դաստապան «սրի կոթ» 20.31 զրահ. վերտ «հյուսված զրահ. զրահավառ, զրահաւոր. 20.311 ա(ւ)ճառ «(ձիա)սարք, հանդերձանք», ասպաղէն «ձիասարք». զանգապան (զանկապան) «սրունապան». 20.32 վարապան «կրծքի զրահ». 20.33 սաղաւարտ. 20.34 ասպար «վահան», վահան 20.351 պատուար. [պարիսպ]. պարկէն «քաղաքի պարիսպների շուրջը փորված խրամ». 20.41 պարտ-ել «հաղթել». 20.411 վան-ել «նետել, ցրել, վանել, նվաճել». վկանդ-ել «նվաճել». 20.42 պարտ-իլ «հաղթվել». դժպարտ «հաղթված, պարտված». 20.421 նախճիր «կոտորած (որսի, պատերազմի ժամանակ)». 20.43 արշաւ-ել. 20.431 ասպատակ. 20.44 պաշտպան. պատսպար-ել պա(ր)հակ, պա(ր)հակապան, պարեկապան. փուշտիպան «թիկնապահ». 20.45 նահանջ. 20.48 ապուռ «ավար, կողոպուտ», աւար. 20.49 դարան «թաքստոց»։

21. **Օրենք**. 21.12 աւրէն(-ք). 20.13 դատ, դատաստան. 20.16 դատաւոր.

*21.21 ամբաստան, դատախազ «դատ պահանջող, ամբաստանող». 21.221 ջատագով «դատապաշտպան, բարեխոս». 21.23 վկայ. 21.24/25 խոստ-, ուխտ. 21.34 [վճար] «վճիռ», վճիռ. 21.35 ապիրատ «անիրավ, անարդար». 21.37 տույժ, տուգան-ք. 21.371 դահիճ. 21.39 բանտ, բաստարան «բանտ», զընդան «բանտ». բանտական. բանտապան, բանտապետ. 21.41 ահոկ «հանցանք, վնաս», [վնաս] «հանցանք». 21.431 ապահարզան. 21.47 [(ուխտա)դրուժ]։*

22. **Կրոն և նախապաշարմունք.** *22.11 դեն «կրոն, հավատ». 22.111 մազդեզն «զրադաշտական կրոն», քեշ (քեշտ) «զրադաշտական կրոն». 22.13 մեհեան, [տաճար]. 22.14 բագին «զոհասեղան». 22.141 ատրուշան. բարսմունք «տրցակ, որ կրակապաշտները բռնում են կրակի առջև». 22.15 զենի «զոհ», զոհ, յազ «զոհ, զոհաբերություն», յաշտ «զոհ». 22.16 պաշտ-ել. պարիշտ ((ամ-) բարիշտ «անբարեպաշտ, անաստված»). 22.171 [խոստ-, խոստովան-, ուխտ]. 22.18 մոգ. մոգպետ, մովպետ. 22 211 բուրվառ. 22.23 աւրհն-ել. 22.24 նզով-ել. 22.26 [պա(ր)հ-ք] «պաս պահելը». 22.311 [դրախտ]. 22.32 դժոխ, սանդարամետ. 22.33 [հրեշտակ]. 22.34 դեւ. 22.42 հմայ «կախարդանք». կախարդ, կախարդասար. ախտար «աստեղահմա». մարգարէ. գրապանակ «հմայակ». հրաշ. 22.43 ջատուկ. 22.45 համբարու «պարիկ», յուշկապարիկ (վշկապարիք), պարիկ. հրէշ։*

23. **Դերանուններ և մասնիկներ**[78]. *23.51 [դէմ]. 23.52 [հանդերձ]. 23.53 յանդիման. 23.54 վասն. 23.61 [կամ]։*

*Իրանական ծագման բառերի իմաստային (թեմատիկ) բաշխման հիման վրա կարելի է անել հետևյալ եզրակացությունները.*

*1) Իրանական փոխառությունները բոլոր կարգի փոխառությունների մեջ միակն են, որ բնիկ հնդեվրոպական բառերի նման ընդգրկում են իմաստային (թեմատիկ) բոլոր խմբերը։ Այսուհանդերձ տարբեր է իմաստային խմբերի մեջ բնիկ և իրանական ծագման բառերի բաշխումը։*

*2) Իրանական ծագման բառերը ակնհայտորեն զիջում են բնիկ հնդեվրոպական բառերին իրենց թվով, գործածությամբ և բառակազմական արժեքով հատկապես այն խմբերում, որոնք համեմատաբար կայուն են և կազմում են ամեն մի լեզվի անկապտելի սեփականությունը։ Մասնավորապես պետք է նշել իրանական փոխառությունների մեջ դերանունների և միավորներ ու տասնյակներ արտահայտող թվականների բացակայությունը, ֆիզիկական աշխարհին, մարդկային սեռերին և ընտանեկան հարաբերություններին, մարմնի մասերին ու մարմնական գործառություններին, շարժման և գործողության սովորական ձևերին, տարածական էական հարաբերություններին, ոչ գունային զգայական ընկալումներին, ձայնական արտահայտություններին ու խոսքին վերաբերող անվանումների համեմատական սակավաթվությունը։*

*3) Իրանական փոխառությունները մեծ քանակ են կազմում և առանձին դեպքերում բնիկ հնդեվրոպական բառերին թվով գերազանցում հետևյալ խմբերում ու ենթախմբերում՝ արևադարձային գոտու կենդանիների և*

---

[78] *Ինչպես հնդեվրոպական ծագման ձևույթների և բառերի քննության դեպքում, բուն իրանական ածանցները այստեղ չեն բերվում. Նրանց մասին տե՛ս իրանական փոխառությունների բառակազմական առանձնահատկություններին նվիրված հատվածում։ Չեն բերվում նաև իրանական բառերից հայերենում նախդիրներով ու հոլովական վերջավորություններով կազմված ապասարկու բառերը։*

կուլտուրական բույսերի, կենդանիների և ամանների, հագուստների և զարդարանքների անվանումներ, գունային նշանակումներ և ամսանուններ, առևտրական, պետական-քաղաքական, ռազմական և իրավական տերմիններ։ Մեծաթիվ են հայ հեթանոսական կրոնի հետ կապված բառերը, կան նաև քրիստոնեական կրոնի բնագավառը անցած իրանական անվանումներ՝ դրախտ, դժոխք, հրեշտակ և այլն։ Բարձր թվականներից հազար-ը և բյուր-ը իրանական ծագում ունեն։ Բնականաբար մեծ թիվ են կազմում իրանական այն փոխառությունները, որոնք կապված են իրանական կյանքի, կրոնի, պետական ու կրոնական հաստատությունների հետ՝ մասամբ անցած հայ իրականությունը պարսկական տիրապետության հետևանքով. հատկապես շատ են զանազան պաշտոնների, աստիճանների և տիտղոսների անվանումները։

4) Ինչպես մասամբ երևաց նախորդ կետում ասվածից, միևնույն խմբերի ու ենթախմբերի մեջ ընդգրկված բնիկ և իրանական ծագման բառերի միջև երբեմն առկա է սեռի և տեսակի, ընդհանուրի և առանձինի հարաբերություն։ Հաճախ են այն դեպքերը, երբ իրանական փոխառությունների մեջ չկան համապատասխան ընդհանուր անվանումներ, բայց շատ են տեսակայինները։ Այսպես, բացակայում է ամանի ընդհանուր անվանումը, բայց կան դոյլ, խան, սկաւառակ, կուժ, թակոյկ, շիշ, սրուակ, բաժակ, նուագ, տաշտ անվանումները. չկան հացի և թխվածքի իրանական ծագման ընդհանուր անվանումներ, բայց կան դրանց տեսակները նշանակող, երբեմն իրանականից հայերենին անցնելիս մասնակի իմաստ ստացած նկան, նկանակ, նշխար, պախաննամ, խորակ, կտապ անվանումները. չկա ծաղկի իրանական ծագում ունեցող ընդհանուր անվանում, բայց մեծ թիվ են կազմում ծաղիկների տարբեր տեսակների իրանական ծագման անվանումները, այդ թվում՝ մանուշակ, յասմիկ և այլն։ Բավական մեծաթիվ են միևնույն առարկան կամ նրան մերձավոր տեսակները նշանակող իրանական ծագման հոմանիշները, ընդ որում երբեմն համապատասխան բնիկ համարժեքների բացակայության պայմաններում. այսպես, վարագույրի համար կան շաւռուան, վարագոյր, վիժակ, պատգարակի ու նրա տեսակների համար՝ գահաւոր(ակ), դարգին, դեսպակ, ժանուար հոմանիշները. բանակի և զորքի համար առկա են գրոհ, զաւր-ք, ճամբար, սան հոմանիշները. հավանաբար իրանական ծագում ունի նաև բանակ բառը։ Կան դեպքեր էլ, երբ հայերենը այդ հոմանիշները վերցրել է իրանական տարբեր աղբյուրներից. հմմտ. սպայ-, սպար-, սան, որոնք ծագում են միևնույն արմատից։

5) Իրանական բառերի՝ հայերենին անցնելիս հաճախ տեղի է ունենում իմաստային որոշ տեղաշարժ, մասնավորապես իմաստի նեղացում և մասնակիացում։ Տարբեր բնագավառների վերաբերող փոխառությունների ստուգաբանական կապերի խզումը նրանց հաճախ հաղորդում է զուտ տերմինային արժեք՝ գործածություն միայն այս կամ այն նեղ բնագավառում։ Իրանական փոխառությունների բառակազմական առանձնահատկություններին նվիրված հատվածում խոսվեց իրանական ծագման որոշ բառերի՝ վերջածանցային արժեք ստանալու մասին՝ -ա-պէս, -աւրէն և այլն։ Ընդհանրապես բավականին հաճախակի են խոսքիմասային և իմաստային տարբեր կարգի փոխանցումներն ու տեղաշարժերը, որոնք հասցնում են իրանական բառերի՝ միայն հայերենին հատուկ իմաստների։

6) Իրանական փոխառությունների՝ վերևում բերված իմաստային խըմ-

րերն ընդգրկում են միայն իրանական ծագման բառերը և բառակազմական ձևերը։ Սակայն, ինչպես նշվել է, կան մեծ թվով հայերեն բառեր, որոնք կազմված են իրանական ծագման արմատներով և հայերեն ածանցներով, հայերեն արմատներով և իրանական ծագման ածանցներով, երբեմն էլ իրանական ծագման արմատներով ու ածանցներով. հնարավոր է, որ հիշյալ ցանկում բերված -ական, -աւոր, -պետ և այլ բաղադրիչներով բառերի մի մասը կազմված լինի հենց հայերենում՝ առկա նյութի բազայի վրա։ Իրանական մի շարք փոխառություններ լայն գործածություն են ձեռք բերել և հիմք տվել բազմաթիվ նորակազմությունների համար, մյուսները մնացել են որպես գործածության սահմանափակ ձևեր։ Նշենք, որ հատկապես առաջին տիպի բառերն են, որ հարատևել են մինչև մեր օրերը։ Վերևում ասվածների լույսի տակ հարկավոր է որոշ վերապահությամբ վերաբերվել իրանական փոխառությունների՝ բերված իմաստային բաշխմանը։ Այսպես, վերջին խմբում բերված կամ շաղկապի և դէմ, հանդերձ, յանդիման, վասն նախադրությունների հետ միասին առկա են բազմաթիվ այլ շաղկապներ և նախադրություններ, որոնք կազմվել են իրանական բառերի հոլովական և նախդրավոր ձևերով, իրանական և հայկական ծագման բաղադրիչների զուգակցմամբ. շաղկապներ՝ սակայն, կամ թէ, վասնզի, որպէս զի, թէպէտ, յորժամ և այլն. նախադրություններ՝ պատճառաւ, ընդդէմ, զաւրէն, որպէս և այլն։

### ժգ) ՓՈԽԱՌՅԱԼ ԴԻՑԱՆՈՒՆՆԵՐ ԵՎ ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐ

Հայկական հեթանոսական դիցարանում մեծ տեղ են գրավել իրանական ծագման աստվածությունները՝ սկսած գերագույն աստված Արամազդից և վերջացրած մանր աստվածություններով ու ոգիներով։ Սրանց անունները հին շրջանի փոխառություններ են։

1. Արամազդ, -այ — հ. իրան. A(h)ura-mazdā «տեր իմաստուն». սրա մ. իրան. Ormizd ձևից է տառադարձված Որմիզդ-ը, որ հանդիպում է Ագաթանգեղոսի մոտ. կան նաև սրանից կազմված Որմզդայ և Որմզդատ անձնանունները.

2. Անահիտ, -այ — հ. իրան. Anāhitā «անարատ, մաքուր». հնում որպես սովորական անձնանուն չի գործածվել.

3. Միհր — մ. իրան. Mihr (< Miθra-) «բարեկամություն, դաշինք», այլև, որպես արևի աստված, «արեգակ». VII դ. հանդիպում է գործածված որպես անձնանուն. այս հիմքից են ծագում Միհրան, Միհրբարզան, Միհրդատ, Միհրշապուհ հայկական անձնանունները։

4. Տիր, -ի (Տիւր) — *Tīr (հմմտ. ն. պրսկ. tīr «փայլածու մոլորակ. արեգակնային տոմարի 4-րդ ամիս. ամսվա 13-րդ օր»). իրան. *tīrē ձևից է փոխառյալ հայ. տրէ «հայկական տոմարի 4-րդ ամիս» բառը. այս հիմքից են ծագած Տիրան, Տիրիթ (?) անձնանունները։

5. Սպանդարամետ — Spandāramat «սրբամիտ, սրբանվեր» (*spantā «սուրբ» + *ar-matay- «բարեպաշտ միտք, նվիրվածություն»). սրա sp < s անցումը ներկայացնող (հարավ. բրբռ.) Sandāramat ձևից է ծագում սանդարամետ «ստորերկրյա աշխարհ, անդունդ, դժոխք» բառը։

6. Վահագն — Varhragn (< *vṛθra-gna- «հաղթական, հարձակումը խա-

փանող»). գործածված է նաև որպես հասարակ անուն։ Նույն ծագման են վերադրում Վահրամ և Վռամ անձնանուններին։

Իրանական ծագման անձնանունները պայմանականորեն կարելի է բաժանել երկու խմբի՝ 1) անձնանուններ, որոնց համապատասխան հասարակ անունները հայերենում չկան, և 2) անձնանուններ, որոնք հայերենում ունեն իրանական աղբյուրներից առնված բառային զուգահեռներ. վերջինների դեպքում հնարավոր է հարցի երկակի լուծում. կամ անձնանունը անկախաբար փոխ է առնվել (մանավանդ եթե իրանական աղբյուրներում կան համապատասխան անձնանուններ), կամ կազմվել է հայերենում՝ հասարակ անվան բազայի վրա։ Վերջին հարցը պահանջում է հատուկ ուսումնասիրություն, և մեր կողմից չի քննարկվի։

Համեմատաբար մեծ թիվ են կազմում իրանական ծագման արական անձնանունները. իգականները սակավաթիվ են։

Իրանական ծագման անձնանունները որոշ դեպքերում ներկայացված են բառակազմական միևնույն բաղադրիչներն ունեցող խմբերով, այլ դեպքերում կանգնած են առանձնակի։

Նշենք որոշակի վերջածանցներով բնութագրվող խմբերը։

Մեծ թիվ են կազմում հայերի մեջ գործածական իրանական վերջածանցավոր կազմություն ունեցող (սովորաբար փոքրացուցիչ-փաղաքշական) անձնանունները, որոնց անածանց ձևերը երբեմն առկա են հայերենում՝ որպես հասարակ կամ անկախ հատուկ անուններ։

Փաղաքշական ձևերը հաճախ կազմված են ոչ թե փակագծերում բերվող հիմքերից, այլ ավելի ընդարձակ անունների երկրորդ բաղադրիչների կրճատումից.

-ակ (-ak(a)-)՝ Ամբակ (Ամպակ) (*amba- = հ. հնդկ. ámbha- *«ուժ, զորություն»*) (?), Առնակ (arna- *«կատաղի»*. *հմմտ.* 'Ἀρνάκης) (?), Արշակ (arša(n)- *«այր, արամարդ, հերոս»*), Արտակ (Արտա-*ի համար հմմտ.* Արտավազդ, Արտաւան *և այլն*), Երազմակ (razm-, *որից հայ.* ռազմ (պատերազմ), Զանգակ (zang-, *այստեղից հայ.* զանգակ), Հմայեակ (hu-māy-, *որից հայ.* հմայ-ք), Կալպակ (kalp-?), Մամակ (mām- *«մայր»* ?), Մանակ (Mana-. *հմմտ.* Մանաճիհր, Մանաւազ *և այլն*), Շահակ (šāh- *«թագավոր»*. *հմմտ. հայ.* Շահ < Šāh), Վաղարշակ (*հմմտ.* Վաղարշ), Վասակ (vas- *«ցանկանալ»*, *որից հայ.* վասն. *կրճատված ավեստ.* vasō-xšaϑra- *տիպի մի ձևից*).

-են (-ēn < -aina)՝ Աշխեն (axšēn *«թուխ, մթագույն»* *կամ* xšēn *«տիրուհի»*), Արտաշեն (Artaš-՝ Artašaš-*ի կրճատված հիմքը*), Արտեն (Art-՝ Art-*ով սկսվող անունների կրճատված հիմքը*), Գուրգեն (Gurgēn. *հմմտ. հին* Վրկեն), Դատաբեն (Datab- «?»), Կարեն (Kār-. *հմմտ.* Կար), Շահեն (šahēn *«բազե»*), Սուրեն (sūra- *«ուժեղ, հզոր»*. *հմմտ.* Սուր), Վրեն (vīr- *«այր»*. *հմմտ.* Վր-իկ), Վրկեն (Vurkēn. *հմմտ.* Գուրգեն), Փառեն (*Farrēn՝ farr- > *հայ.* փառք. *հմմտ. նաև* Փառոխ),

-այն, -էն, -ին (-aič, -ēč- -īč)՝ Մանէն (Մանայն), Վահրին:

*Իրանական անձնանունների կրճատ ձևեր են կազմվել նաև* -ոյ-*ի* (-ōe, -ōy) *հավելմամբ*՝ Շերոյ (šēr- *«առյուծ»*), Սատոյ (sat- *«հարյուր»*՝ Satasp-*ից*)։

*Բավական հաճախադեպ է նաև* -ան (-ān) *ածանցը*՝ Միհրան (Mihr —

*դիցանուն, որից* Միհր), Վահան (vrha- *«վահան»*), Տիգրան (tigr- *«նետ. սուր»*, *որտեղից հուն.* τίγρις *«վագր». քիչ հավանական է* tigra-rāna- *«նետամարտ»*, *ինչպես ստուգաբանում է Աճառյանը*), Տիրան (Tir — *դիցանուն, որից հայ.* Տիր)։

*Հատուկ խումբ են կազմում* -անոյշ (anōš *«անմահ, օրհնված, երջանիկ, գեղեցիկ, քաղցր», որից հայ.* անոյշ), -դուխտ (duxt *«քույր»*) *և* -ուհի (< *ուրհի. *ըստ Բենվենիստի*՝ -urhi < -wrhi < -bṛ̥ʰryā, *որ քիչ հավանական է*) [Benveniste, 1945, 46. *հմմտ. նաև* Шанидзе, 1968, 452—454][79] *բաղադրիչներով իգական անձնանունները*՝ Արշանոյշ, Խոսրովանոյշ, Վարդանոյշ, Զարմանդուխտ, Զրուանդուխտ, Խոսրովիդուխտ, Սանդուխտ, Վարազդուխտ, Վարդանդուխտ։ *Սրանցից առաջինը կարող է հանդիպել նաև անկախաբար* (Անոյշ) *և որպես արական անունների առաջին բաղադրիչ* (Անուշաւան, Անուշվռամ)։ *Ընդհանրապես այս բաղադրիչները, մանավանդ առաջինը և երրորդը, հայերենում ձեռք են բերել ինքնուրույնություն և նոր անձնանուններ կազմել հայրանուններից*՝ Համազասպուհի (*Համազասպի դուստրը*), Վարդ(ան)ուհի (*Վարդանի՞ դուստրը*) *և այլն*։

*Իրանական հայտնի անձնանվանական բաղադրիչներով (մասամբ դիցանուններ) կազմություններից են հետևյալները.*

Ասպ-, ասպ (asp- *«ձի»*)՝ Ասպատ, Ասպուրակ(ես), Համազասպ, Շաւասպ, Վշնասպ (?).

Արգ-, Արջ- (arg-, arǰ- (arž-) *«արժեք», որոնցից* արգ—, (յարգ, զարգ, արժ)՝ Արգամ, Արգաւան, Արջեւան.

Արշ(ա)-, -արշ (arša(n)- *«այր, տղամարդ» կամ* arša- *«արջ»*)՝ Արշակ, Արշամ, Արշաւիր, Արշէն, Շաւարշ.

Արտա- (arta- *«օրենք, արդարություն»*)՝ Արտակ, Արտաւէս (< *հուն.* < *իրան.*), Արտաշահր, Արտաշամայ, Արտաշէն, Արտաշէս, Արտաշիր, Արտաւազդ, Արտաւան, Արտէն, *ինչպես նաև* Արդուարդ (rt > rd *սկյութական ձայնեղացմա՞մբ*).

Բագա- (baga- *«աստված»*)՝ Բագամ, Բագարատ (*հին* Բագադիա), Բակուր (*bag-pur ?).

Դատ, -դատ, -րատ (-dāt(a)-, -δāt(a)- 1. *«-տուր, տրված»* 2. *«-ստեղծ, ստեղծված»*)՝ Դատ, Բագարատ, Միհրդատ, Սպանդարատ, Տրդատ.

Միհր(-) (Մեհր-, Մեհ-, Մեր-) (Mihr — *դիցանուն*)՝ Միհր, Միհրան, Միհրբարզան, Միհրդատ, Միրշապուհ (Մերշապուհ) *և* Մեհենդակ, Մեհ(ր)եւան, Մեհրուժան (Մերուժան, Մեհուժան).

Ներսեհ(-), -ներսեհ (narisah- *«այրախոս»*)՝ Ներսեհ, Ատրներսեհ, Միհրներսեհ, Փառներսեհ.

Շահ- (šāh- *«թագավոր»*)՝ Շահ, Շահէ, Շահակ, Շահէն.

Շապուհ, -շապուհ (šāh-puhr- *«արքայորդի»*)՝ Շապուհ, Միհրշապուհ, Մերշապուհ, Ներշապուհ, Ստահրաշապուհ, Վարազշապուհ, Վռամշապուհ.

Շաւ (*šāv՝ syāv-*ի կողքին, որից հայ* սեաւ. *առաջինի համար հմմտ. սողդ.* š'w)՝ Շաւասպ, Շաւարշ.

-պետ, -պատ (pet-, pat-, *որտեղից հայ.* պետ)՝ Ասպետ (*հմմտ.* ասպետ), Կարապետ (*հմմտ.* կարապետ), Սապատ.

---

[79] *Միևնույն աղբյուրից է բխեցնում Ա. Շանիձեն նաև ասի-որդ բառի առաջին մասը*

Վարազ(-) (varaz-, *որից հայ.* վարազ)՝ Վարազ, Վարազկատ, Վարազդէն, Վարազդուխտ, Վարազներսեհ, Վարազշապուհ, Վարազվաղան.

Վարդ(-) (vard-, *որից հայ.* վարդ)՝ Վարդան, Վարդ(ան)ուհի *և* Նուարդ (?)

Տիր-, Տր- (Tīr — *գիտություն, որից հայ.* Տիր, Տիւր)՝ Տիրան, Տիրանամ(?), Տիրիթ, Տրդատ (Տրդատունի), Տրէ (*հմմտ.* արէ *ամսանունը*).

-ւազ (-wāza- *«-վար» և* -βazu- < -bāzu- < bazuk, *որից հայ.* բազուկ)՝ Մանաւազ, Փառնաւազ.

-ւան (-βān- *«լույս, փայլ»*)՝ Անուշաւան (*ըստ Յուստիի*՝ -աւան, *ըստ Աճառյանի*՝ -urvān, -arvān *«հոգի»* ?)՝ Արզաւան, Արջեւան, Արտաւան.

Փառ-, Փառն- (farr-, *որից հայ.* փառ-ք, farn-)՝ Փառանձեմ, Փառէն, Փառներսեհ, Փառոխ *և* Փառնակ, Փառնաւազ:

*Այլ կարգի իրանական անձնանուններից հայտնի են* Ապրսամ (apuršām *«բալասան»*), Արմոգ (arm- *«ձեռք»* ?), Բամբիշ(ն) (bānbišn *«թագուհի», որից հայ.* բամբիշն), Բատ (bāt *«հողմի ոգի»* ?), Գոտարզ (Gōtarz), Դրաստամատ (durust- *«ուղիղ» և* mat < *mṇti- *«միտք»*՝ *«ուղղամիտ»*), Երուանդ (arvand- *«արագաշարժ. քաջ». հմմտ. և* Հրանդ), Զարեհ (zareh- *«?»*), Խոսրով *և* Խոսրովիկ (xu-srav- *«բարեհամբավ»*), Հրահատ (f/hrahat *«հասկացող, խելոք», եթե* fraδāta- *«նախա-տուր» ձևից չէ*), Յազդ (yazd- *«աստված» բառով կազմված անուններն կրճատ ձև*), Պապ (pap-, *որից հայ.* պապ), Ռոստոմ (rōst-tahm *«հերկեղ-ուժ, գետ-ուժ» կամ «աճ-ուժ»*), Սանատրուկ (Sanā-Srūk՝ sana- *«ամուր»*), Վաղարշ (val- *«?»*), Վստամ (vis-tahm- *«մեծազոր»*), Տիգրան (tigr- *«նետ. սուր»*) *և այլն*:

## ժդ) ՓՈԽԱՌՅԱԼ ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐ

*Իրանական տարրի կշիռը պատմական Հայաստանի տեղանունների մեջ կարծես ավելի փոքր է, քան անձնանունների մեջ։ Այսպես, Հ. Հյուբշմանը իր «Հայերենի քերականության» մեջ տալիս է իրանական ծագման 121 անձնանուն և ընդամենը 37 տեղանուն։ Այդ ցանկը նույնությամբ կրկնում է Հ. Աճառյանը իր «Հայոց լեզվի պատմության» մեջ։ Այդ ցանկի քննությունը և մի շարք այլ փաստեր մեզ բերում են հետևյալ եզրակացություններին։*

*1) Հյուբշմանի ցանկում տեղ են գտել տեղանուններ, որոնց իրանական լինելը կարելի է ընդունել խիստ վերապահությամբ. ա)* Բագայառիճ (Բագառիճ), Բագճայր *և* Վարազաբլուր *տեղանունների միայն առաջին բաղադրիչներն են իրանական՝* Բագա- *(*baga- *«աստված». հանդիպում է նաև* Բագարան, Բագաւան *տեղանունների և* Բագարատ *անձնանվան մեջ, որոնք ամբողջապես իրանական կազմություններ են),* Բագին- *«մեհյան» (նախորդ իրանական բաղադրիչից ածանցված) և* Վարազ(ա)- *(*varaz(a)- > *հայ.* վարազ). առիճ-*ի ծագումը հայտնի չէ, այն հանդիպում է* -առիճ *կամ* -առինճ *ձևով նաև* Գուկառիճ, Լուսաթառիճ, Խոկառինճ, Կթառիճ, Ձիթառիճ, Մկնառինճ, Տիրառիճ *տեղանունների մեջ և առանձնակի գործածված՝* Առինջ, Հառիճ *ձևերով։* Բաջնայր-*ի* այր-*ը և* Վարազաբլուր-*ի* բլուր-*ը հայկական (հնդեվրոպական) ծագում ունեն (առաջինի համար հմմտ. թերևս հուն.* ἄντρον

«այր, քաջայր», երկրորդի համար՝ կիմր. bal «բարձունք, լեռնագագաթ», հ. իռլ. bali «գետեզրյա բարձրություն, բլուր»). բ) -ական (-akān), -ապատ (āpāt), -արան (-a-δān), -աւան (āvān), -կերտ (kart), -շէն (šēn) իրանական բաղադրիչներով կազմությունները, որոնք բերում են Հյուբշմանը և Աճառյանը (Վասպուրական, Ներսեհապատ, Պերոզապատ, Վաղարշապատ, Բագարան, Արշակաւան, Բագաւան, Բագուան, Երուանդաւան, Ջարեհաւան, Վաղարշաւան, Երուանդակերտ, Խոսրովակերտ, Մանազկերտ<Մանաւազկերտ, Վաղարշակերտ, Վասակակերտ, Վարազկերտ, Վարդանակերտ, Տիգրանակերտ Վարդաշէն, միայն մասամբ են բուն իրանական. այդ բաղադրիչները հայերենում անկախ գործածություն են ունեցել (մասամբ էլ ունեն մինչև այժմ), և այն դեպքերում, երբ առաջին բաղադրիչները իրանական աղբյուրներից փոխառված հայկական անձնանուններ են, հարցը կարող է լուծվել ամեն մի տեղանվան կոնկրետ քննությամբ. այսպես, օրինակ, Վաղարշապատ, Արշակավան, Երվանդաշատ, Երվանդակերտ, Տիգրանակերտ քաղաքները հիմնվել են իրանական անուններ կրող հայ թագավորների կողմից, և դրանց անունները չեն կարող բուն իրանական կազմություններ համարվել: Հիշյալ բաղադրիչներով կազմվել և կազմվում են հայկական տեղանուններ նաև ոչ իրանական բնույթի բաղադրիչներից. հմմտ. Ղազարապատ, Կորիւնապատ, Թոռնաւան, Ընջղակերտ, Կաւակերտ, Հայակերտ, Ձիւնակերտ, Ցոլակերտ, Արքունաշէն, Բարձրաշէն, Միջնաշէն և այլն. գ) դժվար է պնդել նաև այն տեղանունների անմիջական իրանական ծագման վրա, որոնց համապատասխան անունները հայերենում տարածված բառեր են. դրանց համար հնարավոր է իրանական հասարակ անուն→հայկական հասարակ անուն→հայկական տեղանուն անցումը հմմտ., օրինակ, Վարազ:

2) Ակնհայտ իրանական բնույթ ունեն -պերոժ (pērōž «-հաղթ») և -ւանդ բաղադրիչներով կազմությունները՝ Որմզդպերոժ, Հրաքոտպերոժ, Սպանդարանպերոժ, Բագրեւանդ. սրանց պետք է միացնել նաև ռոտ (rōt) «գետ») և քուստ (kust «կողմ» բաղադրիչներով կազմությունները՝ Աղուանդռոտ Բաղանռոտ (Ռոտ-ի-Բաղա), Ճուաշռոտ, Քուստ-ի-Փառնէս, Քուստակ, թեև, իհարկե, այս տեղանունների մյուս բաղադրիչները կարող են լինել ոչ իրանական (տեղական) բնույթի: Իրանական ծագում ունեն Ասպ-ով (asp- «ձի») բաղադրությունները՝ Ասպական, Ասպահեն գետանունները: Իրանական բնույթի են նաև, այսպես կոչված, իզաֆետային կառույցները՝ հատկացյալ-հատկացուցչի ի-ով միացումները՝ Ռոտ-ի-Բաղա, Քուստ-ի-Փառնէս: Որոշ տեղանունների իրանական ծագման ապացույց կարող են լինել իրանական այն բաղադրիչները և հնչյունական այն առանձնահատկությունները, որոնց քննության մասին խոսվել է իրանական ծագման հասարակ անունների քննության կապակցությամբ: Իրանական բնույթի են նաև, ինչպես նշվել է, -ունի ուրարտական վերջածանցով մի շարք տեղանունների հիմքեր՝ Ասպահունիք[80], Վարաժնունիք և այլն:

3) Բացի վերևում հիշված բաղադրիչներով կազմություններից Հյուբշմանի և Աճառյանի ցանկում հիշվում է նաև մի քանի այլ տեղանուն՝ Գանձակ քաղաքանունը, Հրազդան գետանունը, Տաւարշան դաշտանուն-գավառանունը: Սրանց կարելի է ավելացնել՝ ա) Ազատ (հայ. ազատ< āzāt ), Երասխ [ըստ

[80] Ս. Երեմյանը [1963, 36] Ասպահունիք-ը բխեցնում է aparh ցեղանունից: Սրա հետ կապ չունի պրթ. 'pḥwny (apaxunt) անունը:

Ռ. Շմիտի. ZDMG, 1967, 136]՝ a-raxša-ից «անլույս, մթին». ըստ Վ. Հինցի (Hinz, 1975, 34)՝ մեդ. raxš-ից «փայլուն». հմմտ. հ. պրսկ. raxθ-), Ռահ (հմմտ. ավ. Raṅhā) գետանունները, բ) Կոհեր (հմմտ. հ. պրսկ. kaufa-, ավ. kaofa, ն. պրսկ. kōh «լեռ»), Սեպուհ (հմմտ. սեպուհ < *visya-puθra- «իշխան») լեռնանունները, գ) բազմաթիվ քաղաքանուններ, գյուղանուններ և այլ տեղանուններ՝ Դուին (ըստ Խորենացու՝ պարսկերեն «բլուր». հմմտ. հ. իռլ. dūn «քաղաք» < *«բլուր», հ. անգլ. dūn «բարձունք, լեռ», որոնք ենթադրվում են կորած մի իրանական բառ), Նուարսակ և այլն։

4) Բուն իրանական ծագման տեղանունները հիմնականում տարածված են պատմական Հայաստանի հարավարևելյան ծայրագավառներում, հատկապես Պարսկահայքում, Փայտակարանում, Ուտիքում, այլև Արցախում, Վասպուրականում, այսինքն՝ այն մասերում, որտեղ հայերը սերտ շփման մեջ են եղել իրանական ժողովրդի տարբեր հատվածների հետ։

## 4. ՀԱՅԵՐԵՆԸ ԵՎ ԿՈՎԿԱՍՅԱՆ ԼԵԶՈՒՆԵՐԸ

### ա) ԿՈՎԿԱՍՅԱՆ ԼԵԶՈՒՆԵՐԸ ԵՎ ԲԱՐԲԱՌՆԵՐԸ

«Կովկասյան լեզուներ» անվանումը երկիմաստ է. նրա տակ նկատի են առնվում մի կողմից՝ Կովկասում գտնվող լեզուներն ընդհանրապես՝ անկախ նրանց ցեղական փոխհարաբերությունից, աշխարհագրական առումով, մյուս կողմից՝ միայն Կովկասի այն լեզուները, որոնք չեն պատկանում ոչ հնդեվրոպական (հայերեն, օսերեն, թաթերեն, թալիշերեն և այլն), ոչ թյուրքական (ադրբեջաներեն, կումիկերեն և այլն), ոչ էլ սեմական (ասորերեն) լեզվաընտանիքներին։ Երկրորդ մեկնաբանության դեպքում էլ այդ անվանումը հստակ լեզվաբանական բովանդակություն ձեռք չի բերում։ Բանն այն է, որ լիովին պարզ չէ այս սկզբունքով առանձնացված ցեղակցական խմբերի փոխհարաբերությունը։ Եթե մի շարք գիտնականներ դրանք դիտում են որպես լեզվական մեկ ընտանիքի մեջ մտնող խմբեր[1], ապա ուրիշները եղած փաստերը անբավարար են համարում այդ պնդելու համար։ Ճշմարտությունը հավանաբար այն է, որ մենք գործ ունենք լոկ հեռավոր ցեղակցության հետ։

Տարբերում են կովկասյան լեզուների երեք հիմնական խումբ կամ ընտանիք՝ հարավկովկասյան կամ քարթվելական (երբեմն կոչում են նաև իբերական), արևմտակովկասյան կամ աբխազ-ադըղեական և արևելակովկասյան կամ նախյան-դաղստանյան։ Որոշ հետազոտողներ նախյան լեզուներն առանձնացնում են որպես հատուկ լեզվաընտանիք, բայց դրանք ակնհայտորեն ավելի մոտ են դաղստանյան, քան մյուս լեզուներին։ Երեք լեզվաընտանիքների միջև եղած ընդհանրություններն այնքան շատ չեն, ինչպես սովորաբար ենթադրում են ոչ այնքան խիստ մեթոդներով առաջնորդվող հետազոտողները. Գ. Դեետերսը [Deeters, 1963] կովկասյան երեք լեզվաընտանիքների ընդհանուր բառային միավորների քանակը համարում է երկու տասնյա-

[1] Վերջ գիտնականները գործածում են նաև «իբերա-կովկասյան լեզվաընտանիք» անվանումը։

կից ու այնքան ավելի[2]։ Ահավասիկ ամենից ավելի հավանական համարվող «համակովկասյան» ընդհանրությունները՝ ռուսական տառադարձությամբ [հմմտ. **Климов**, *1965, 71*].

| Արևմտակովկասյան | Հարավկովկասյան | Արևելակովկասյան | Նշանակությունը |
|---|---|---|---|
| гвы | гули | да-кIв | սիրտ |
| псы | сули | са | հոգի |
| лы | легъви | дикъ | միս |
| ца | цали | цер | ատամ |
| дыгъв | дакъви | дакъ | արմունկ |
| пкъы | пха | пха (?) | հենք, կմախք |
| дыгъа | дгъэ | ба-ргъ | արև |
| мза | мзэ | мадз | լուսին |
| цв | ваци | оц | ցուլ |
| кхъва | гъори | кха | խոզ |
| (тI) къва | тIкъу-би | тIкъва | երկու |
| х | сами | лъаб | երեք |
| (т) хвы | ху-ти | хвы | հինգ |
| пха | пх- | пх | տաք |
| гIва | кIвам-ли | кIкIум/-р | ծուխ |
| за | дзэдзви | заз | փուշ |
| с- | с- | сс- | հյուսել |
| тэс- | тэс- | тас- | ցրել[3] |
| кIвыр- | гор- | гир- | գլորվել |
| з- | дз- | дз- | կթել |
| ма | ма | ма | նա, այն |
| ма | ма | ма | մի՛ |

*Այս ընդհանրությունները հավաստարժեք չեն. 1) երեք խմբերի համար վերականգնված ընդհանուր իմաստները որոշ դեպքերում պայմանական են և նշանակալից չափով շեղվում են առանձին խմբերում ու լեզուներում առկա իմաստներից. այսպես, քարթվելական* цали-*ն բուն նշանակում է «հատ»,* дгъэ-*ն՝ «օր»,* мзэ-*ն՝ «արև»,* ткъу-би-*ն՝ «երկվորյակ»,* ваци-*ն՝ «խոյ»,* тэс-*ը՝ «ցանել», աբխազ-ադրղեական* з-*ն՝ «քամել»,* (тI-)къва-*ն՝ «քսան», նախյան-դաղստանյան* дакъ-*ը՝ «կանգուն (չափ)»,* пха-*ն՝ «ջիղ»,* тIкъва-*ն՝ «քսան»* [**Климов**, *1965, 71—72*]. *2) որոշ վերականգնումներ պայմանական բնույթ են կրում կամ չեն հենվում այս կամ այն խմբի լեզուների մեծ մասի տվյալների վրա. պայմանական է 1-ին և 7-րդ օրինակներում* да- *և* ба- *դասանիշերի առանձնացումը նախյան-դաղստանյան լեզուներում. 1-ին, 10-րդ և 18-րդ օրինակները հենվում են միայն նախյան լեզուների վրա և այլն* [**Климов**, *1965, 71*]. *3) որոշ օրինակներ ակնհայտորեն բնաձայնական են և չեն կարող ցեղակցության վստահելի ապացույց ծառայել. հմմտ. խոզի անվանումը, որ դաղստանյան լեզուների մեծ մասում փոխարինված է ուրիշ անվանումով. 4) կովկասյան լեզուների առանձին խմբերի և նոստրատիկ ընդհանրության տարբեր ընտանիքների միջև կարելի է բերել ոչ պակաս թվով բառային զուգադիպումներ. այսպես, հենց բերված օրինակներից լուսնի անվանումները* (мза, мадз) *շատ նման են հնդեվրոպական* *me(n)s-*ին (հմմտ. հայ.* ամիս, *ռուս.* месяц*), գլորվելու գաղափարի նշանակումները* (кIвыр,

гро-, гир-)՝ հ.-ե. *ger-/gor-ին, мä «մի՛» մասնիկը՝ հ.-ե. *mē-ին (հմմտ. հայ. մի՛)։

Այս բոլոր փաստերը խոսում են այն մասին, որ կովկասյան երեք լեզվաընտանիքների միջև մերձավոր ցեղակցական կապեր չկան. կարելի է խոսել միայն հեռավոր ցեղակցության մասին՝ թերևս նոստրատիկ ընդհանրության ներսում։

Կան նաև բառային այնպիսի զուգադիպումներ, որոնք տարածքային կապեր և շփումներ (կոնտակտներ) են ենթադրում կովկասյան երեք լեզվաընտանիքների միջև՝ զույգ-զույգ համեմատությամբ։ Սակայն այս զուգադիպումների քանակն էլ այնքան մեծ չէ, որ իրավունք տա կովկասյան երեք լեզվախմբերը միավորելու մեկ ընդհանուր լեզվաընտանիքի մեջ. այդ զուգադիպումները ոչ մի կերպ չի կարելի համեմատել այնպիսի լեզվաընտանիքների մեջ միավորված լեզվախմբերի ընդհանրությունների հետ, ինչպիսիք են, օրինակ, հնդեվրոպական, սեմական կամ թյուրքական լեզուները։ Տիպաբանական առումով կովկասյան երեք լեզվաընտանիքները ի հայտ են բերում ինչպես ընդհանուր, այնպես էլ տարբերիչ գծեր։ Հնչյունական առումով ընդհանուր է, այսպես կոչված, ձայնածերպային (գլոտալ) կամ ընդհատական (աբռուպտիվ) ետնալեզվայինների և ետին կազմավորման բաղաձայնների որոշ տիպերի առկայությունը։ Քերականական կառուցվածքի համար ընդհանուր են կցականությունը, բայի ենթակա-խնդրային և դասային նախամասնիկավորումը, նախադասության, այսպես կոչված, էրգատիվ կառուցվածքը և, սրա հետ կապված, անցողական ու անանցողական բայերի կտրուկ հակադրությունը։ Տարբերությունները հանդես են գալիս հիմնականում բաղաձայնական և ձայնավորական համակարգերի հարստության և աղքատության, դասի քերականական կարգի դրսևորումների, հոլովների համակարգի հարստության և աղքատության մեջ և այլն։ Սրանց մասին խոսք կլինի կովկասյան առանձին ընտանիքների և հայերենի փոխհարաբերության քննության կապակցությամբ։

Վերևում ասածները պարզ են դարձնում, որ հայերենի և կովկասյան լեզուների փոխադրեցության հարցը նպատակահարմար է քննել ըստ վերջիններիս առանձին ընտանիքների։

## բ) ՀԱՅԵՐԵՆԸ ԵՎ ՀԱՐԱՎԿՈՎԿԱՍՅԱՆ (ՔԱՐԹՎԵԼԱԿԱՆ) ԼԵԶՈՒՆԵՐԸ

Հարավկովկասյան (քարթվելական) լեզվաընտանիքը ներկայացված է ընդամենը երեք լեզվով՝ վրացերեն, զաներեն և սվաներեն։ Առաջին երկուսը իրար ավելի մոտ են, քան սվաներենը։ Զաներենն ունի երկու հիմնական բարբառ՝ ճաներենը կամ լազերենը, որ հիմնականում տարածված է Թուրքական Լազիստանում (փոքր թվով՝ Վրացական ՍՍՀ-ում), և մեգրելերենը, որ գտնվում է Վրացական ՍՍՀ արևմտյան շրջանում։ Որոշ հետազոտողներ սրանք առանձին լեզուներ են համարում։ Սվաներենի չորս բարբառները տարածված են Վրացական ՍՍՀ հյուսիս-արևմտյան շրջանում։

Քարթվելական լեզուներից վրացերենը ունի V դարից սկսված գրական հարուստ ավանդույթ։ V—XI դդ. ընկած շրջանը համարվում է հին, հաջորդը՝

նոր վրացերենի շրջան։ Ունի շուրջ մեկուկես տասնյակ բարբառներ՝ քարթլյան, կախեթյան, փշավյան, խևսուրյան, թուշյան, իմերեթական, գուրիական և այլն։ Փոքրաթիվ խոսողներ ունեցող վրացական բարբառներ կան նաև Թուրքիայում (իմերխևյան), Իրանում (ֆերեյդանյան՝ Սպահանի նահանգում) և Ադրբեջանական ՍՍՀ-ում (ինգիլոյական)։

Քարթվելական լեզուներից վրացերենը և զաներենը բաղաձայնների և ձայնավորների հարաբերությամբ հայերենից քիչ են տարբերվում։ Նրանք ունեն հինգ ձայնավոր (a, e, i, o, u) և մոտ երեք տասնյակ բաղաձայն, որոնցից պայթականները տարբերվում են ըստ ձայնաճեղքայնության, ձայնեղության, արտաբերության տեղի։ Սվաներենի բարբառները ունեն ձայնավորների ավելի մեծ քանակ՝ 7—18։ Վրացերենին հատուկ է բաղաձայնների կուտակումը. իրար ետևից կարող են հանդիպել մի քանի (մինչև 3—4) բաղաձայն։ Զաներենն այս դեպքում վրացերենի բաղաձայնական խմբերի մեջ ներմուծում է ձայնավոր, այսինքն՝ բնորոշվում է լիաձայնությամբ։ Վրացերենի սուլական հնչյունների դիմաց զաներենում և սվաներենում հաճախ օրինաչափորեն առկա են շշականներ. հմմտ. վրաց. cxwari և մեգր. šxuri, ճան. (m)čxuri «ոչխար» (այստեղից հայ. ոչխար)։

Քարթվելական լեզուները ձևաբանական առումով կցական բնույթի են՝ թեքական գծերով։ Բացակայում են քերականական սեռը և դասը, թեև որոշ հետազոտողներ փորձում են գտնել վերջինիս հետքերը։ Հոլովների թիվը ըստ լեզուների 6—11 է, որոնց մեջ տեղ է գրավում էրգատիվը, որ, սակայն, չկա մեգրելական բարբառներում, իսկ վրացերենում և սվաներենում հանդիպում է միայն որոշ ժամանակների դեպքում։

Քարթվելական բայի մեջ տարբերվում են ոչ միայն ենթակայի, այլև խնդրի դեմքերը, առկա են ուղղվածության (վերսիայի) քերականական կարգը, հնարավորական եղանակը և պատճառական սեռը։ Զգալի է բայական նախածանցների դերը. հատկապես մեգրելական բարբառում կան ութսունից ավելի պարզ և բաղադրյալ նախածանցներ։

Հայ-քարթվելական զուգադրումները կարելի է բաժանել երկու խմբերի՝ բնիկ և ձեռքբերովի։ Առաջին խմբին պատկանում են նախ՝ հեռավոր ցեղակցության՝ նոստրատիկ ընդհանրության միավորները, երկրորդ՝ բնաձայնությունները, ձայնարկությունները և մանկական բառերը. պայմանականորեն այս խմբին կարող են հատկացվել նաև պատահական զուգադրումները։

Ընդհանուր նոստրատիկ բնույթի զուգադրումներից հիշատակենք հետևյալ օրինակները. հայ. դա, այդ, -դ (հ.-ե. *to-)—մեգր. te-/ti- «սա, այդ» (նոստր. ?). հայ. դնել – վրաց. d(w)-/dew- «դնել. պառկել», զան. d- «դնել. պառկել», սվան. d- «դնել. հագնել» (*d(w)-. նոստր. *dʌˤʌ «դնել»). հայ. եղն (հ.-ե. *el-en-) — վրաց. irem- «եղնիկ, եղջերու» (նոստր. *ʔili «եղնիկ, եղջերու»). իմ, ինձ (հ.-ե. *(e)me) — վրաց. me, մեգր. ma, ճան. ma(n), սվան. mi- «ես» (*m-, նոստր. mi «ես»). -լ (դերբայական ածանց՝ ածել, ածեալ) (հ.-ե. *-lo-) — վրաց. -(i)l- (դերբայական ածանց՝ çer-il- «գրված», dum-il- «լռություն, լռել»), զան. -ir- (*-il-. նոստր. *-lʌ- — ածականակերտ ածանց). հայ. լակել — վրաց. loḳ-, ճան. loḳ-, losḳ-, մեգր. loḳ- (*loḳ-. նոստր. *laḳʌ «լիզել»). հայ. լմել, լմլմել — վրաց. lam-/lm- (նոստր. *l'ama «տրորել, փափկացնել»). հայ. ծանեայ (ճանաչել), ծանօթ (հ.-ե. *g'en-) — վրաց. gen-/gn- «հասկանալ, իմանալ», ճան. gn-, մեգր. gen-/gn- «զգալ,

լսել, հասկանալ» (*gn-. նոստր. *KENʌ «իմանալ»). հայ. կեր, կուր, կո-կորդ (հ.-ե. *gᵘer-) — վրաց. qorq-, մեգր. qorqel- «կոկորդ» (*qorq-. նոստր. *gurʌ «կլանել»). հայ. ճոլ, ճոլովել (հ.-ե. *kᵘel-) — վրաց. ḳwer- «կլոր ըլլիթ. գլուխ շաքար, գլուխ պանիր», ճան., մեգր. ḳwar «կլոր ըլիթ, բաքոն», մեգր. ḳwarḳwalia- «կլոր» (*ḳwer-, *ḳwerḳwer-. նոստր. *kol′ʌ «կլոր»). հայ. մաքիլ (հ.-ե. *math-, թե՞ փոխառություն պահլավերենից) — վրաց. maṭl-, ճան., մեգր. munṭur-, սվան. məṭ- «որդ» (*maṭl-. նոստր. *mʌtʌ «որդ»). հայ. մի՛ (հ.-ե. mē) — ճան. mo(t), սվան. mād(e), mōd(e) «մի՛» (*mad. նոստր. *mä «մի՛»). հայ. մոր(ի), մորենի, մոշ(այ), բրբ. մոռ (հ.-ե. *moro-) — վրաց. marçqw-, սվան. bäsqi- bäsq- «մորի» (*marçqw-. նոստր. *marja «հատապտուղ»). հայ. նա, այն, -ն (հ.-ե. *n-) — հ. վրաց., ճան., մեգր. -n — եզակի 3-րդ դեմքի ենթակայի ցուցիչ (*-n. նոստր. *NA — ցուց. դերանուն). հայ. որովայն (հ.-ե. *krop-?) — ճան. korba, մեգր. kora «փոր, որովայն» (նոստր. *ḳarb(I) «փոր, փորոտիք»). հայ. սիրտ (հ.-ե. *k′erd-) — վրաց. mḳerd-, մեգր. ḳədər-, ḳldɪr-, սվան. mučod- «կուրծք» (*mḳerd-. նոստր. ḳErdʌ «կուրծք, սիրտ»). հայ. տալ «տեգերկին» (հ.-ե. *g′ьlou-) — վրաց. kal- «կին» (նոստր. *kälu «կին, խնամի»). հայ. տի- «մեծ» (տի-կին, տի-եզերք) (հ.-ե. *dei-?) — վրաց., ճան., մեգր. did- «մեծ» (*did-. նոստր. *didʌ «մեծ»). հայ. տուտն, տտուն (հ.-ե. *dud-?) — վրաց. dud- «կատար», մեգր. dud- «գլուխ», ճան. dud- «գլուխ, կատար, գագաթ», սվան. dudul- «ստինքի պտուկ» (*dud-. նոստր. *duλʌ «վերջավորություն»). հայ. ցելուլ (հ.-ե. *skel-) — վրաց. cel- «հնձել, գերանդի», մեգր. cal-, ճան. (n)cal- «հնձել», մեգր. cel- «գերանդի» (*cel-. նոստր. *calu «ճեղքել, կտրել»). հայ. փերթ (հ.-ե. *pherk-t-) — վրաց. p(x)reç-, p(x)riç, ճան. bruç-, մեգր. buriç- «պատռվել» (*priç-. նոստր. pär′(ä) «պատռել, ջարդել, ճեղքել»). հայ. -ք (ո-ք) (հ.-ե. *kᵘe) — վրաց. k(w)e.- մեգր., ճան. ko- — սաստկական-հաստատական մասնիկ (*kwe-. նոստր. *ḳ(o) — սաստկական և միացական մասնիկ). հայ. քերել, քերթել (հ.-ե. *(s)ker-) — վրաց. kerk- «կեղև», kercl- «թեփ, թեփուկ» (<իրա՞ն.) (նոստր. *kar′ä «կեղև»):

*Նշանակալից թիվ են կազմում հայ-քարթվելական բնաձայնական (բացահայտ կամ թաքնված), ձայնարկական և մանկական բնույթի ընդհանրությունները, ընդ որում սրանց հայկական ներկայացուցիչները երբեմն գալիս են հնդեվրոպական մակարդակից.* հայ. բզեզ, բզզալ — վրաց. bzu-, ճան. buz-al- «բզզալ» (*bzu-). հայ. բու (հ.-ե. *b(h)(e)u-) — վրաց. bu(w)-, մեգր. γu-, ճան. bγu-, (m)γu- (*b(γ)u-). հայ. բրբռ. ծիվ, ծվալ, ծվծվալ — ճան., մեգր. çw- «ասել» (նոստր. *çʌwʌ «ճչալ, ասել»?). հայ. կաքաւ (հ.-ե. *kakk-? — վրաց. ḳaḳab-, մեգր. ḳaḳobe «կաքավ» (*ḳaḳab-). հայ. կկու (հ.-ե. *kuku-) — վրաց., մեգր., ճան. gugul-, սվան. gägo-, gigu-, gego- «կկու» (*gugul-). հայ. կոկոն, կոնգոմ — վրաց. ḳuḳur-, ḳoḳor-, մեգր. ḳwi-ḳil-, ճան. ḳuḳul- «կոկոն» (*ḳuḳul-). հայ. կռիչ, կռինչ, բրբռ. կռկռալ, նաև կռունկ (հ.-ե. *ger-) — վրաց. mγer- «երգել», մեգր. γor-, γwar- «ճչալ» և այլն (*γar-/γr-), վրաց. γaγad- «ճչալ», մեգր. γarγal- «շաղակրատել» (*γar-γar-). հայ. հազ (հ.-ե. *kᵘas-, *-g′h-?) — վրաց. xwel- «հազ», մեգր., ճան. xwal- «հարբուխ», սվան. qweš-, qwäš- «հազ» (*kwe$z_1$-). հայ. յոպոպ (հ.-ե. *epop-, *opop- — վրաց., մեգր. opop-, ճան. opampe-, սվան. opopa-,

ороpä- «հոպոպ» (*opop-). հայ. բոբո, (մնկ.) փափա «տատլիք» (հ.-ե. *pa-p(p)a — վրաց., ճան. papa-, մեգր. papir- «(կաթնա)շիլա» (*papa-). հայ. փուք, փուչ, փչել (հ.-ե. *p(h)u-) — վրաց. *puw- «փքվել, բարձրանալ (խմորի մասին)», մեգր., ճան. pu-, սվան. pw- «եռալ» (*pu-) և այլն։

Հավանաբար բնաձայնական բնույթ ունի հայ. ծիծ, ծուծ (ծծել) և վրաց., մեգր. juju-, ճան. buj- «ծիծ, ստինք», վրաց. çow-, մեգր., ճան. ç(w)-, վրաց. çuç(w)n-, մեգր. çurçon-, ճան. çuçon-, çiçon-, սվան, çusd- «ծծել» բառերի նմանությունը, թեև, ինչպես կտեսնենք, Հ. Աճառյանը հայ. բառերը դնում է քարթվելական աղբյուրից փոխառյալների մեջ։

Մեծ թիվ են կազմում, այսպես կոչված, ձեռքբերովի ընդհանրությունները՝ իրարից (անմիջաբար կամ միջնորդաբար) և երկրորդ աղբյուրից կատարած փոխառությունները։ Հայերենի և քարթվելական (այլև ընդհանրապես կովկասյան) լեզուների ուրարտերենից կատարած փոխառությունների մասին մենք արդեն ունեցել խոսելու։ Շատ են նաև իրանական, սեմական, հունական, ավելի ուշ՝ թյուրքական աղբյուրներից կատարված ընդհանուր փոխառությունները, ընդ որում արևմտա-իրանական աղբյուրներից կատարված քարթվելական փոխառությունների մի մասը հայկական միջնորդությամբ է։

Հ. Աճառյանը իր «Հայոց լեզվի պատմության» մեջ հայերենի և կովկասյան լեզուների զուգադիպումների ընդհանուր քանակը համարում է շուրջ 900, որոնց մեծ մասը, բնականաբար, հայ-քարթվելականն է։ Երկար ժամանակ ապրելով կողք-կողքի, գտնվելով քաղաքական ու մշակութային սերտ կապերի մեջ, հայերը և վրացիները չէին կարող իրարից մեծ թվով փոխառություններ չկատարել։ Առանձնապես շատ են վրացերենի՝ հայերենից կատարած փոխառությունները, որոնց համգամանալից քննությունը ավելի շատ վրացերենի պատմության մասնագետների գործն է։ Այդ փոխառությունները մեզ հետաքրքրում են այն չափով, որ չափով հնարավորություն են տալիս խոսելու հայերենի մշակութային ազդեցության բնույթի մասին, վերականգնելու հայերեն բառերի որոշ հնագույն նախաձևերը, լուծելու հայերենի պատմական հնչյունաբանության մի շարք կարևոր հարցեր։

Քարթվելական լեզուների այս կամ այն բառի՝ հայերենից փոխառյալ լինելը ակնհայտ է, եթե բառը՝ 1) ունի հավաստի հնդեվրոպական ծագում և արտացոլում է հայերենին բնորոշ հնչյունական առանձնահատկությունները, մինչդեռ քարթվելական լեզուները կամ չունեն համապատասխան նոստրատիկ զուգահեռներ, կամ ունեն իրենց համար բնորոշ ու հայերեն բառից տարբերվող զուգահեռներ. 2) քարթվելական լեզուներում սահմանափակ տարածում ունի (հանդիպում է հատկապես հայերենին մերձավոր բարբառներում) և չի բացատրվում քարթվելական ընդհանուր արմատական ձևերով, երբեմըն էլ կովկասյան այլ զուգահեռներով. 3) հայերենում լայն տարածում ունի և կազմված է նրա համար բնորոշ կառուցվածքային կաղապարներով ու միջոցներով. 4) հայերենը փոխ է առել (երբեմն իրեն հատուկ փոփոխություններով) այնպիսի լեզուներից, որոնք անմիջական շփման մեջ են եղել հայերենի, բայց ոչ քարթվելական լեզուների հետ. 5) հանդիպում է հայերենից թարգմանված վրացերեն աշխատություններում. 6) վրացերենի բառարաններում և այլ աղբյուրներում հատուկ նշում ունի հայերենից փոխառյալ լինելու մասին։

Քարթվելական լեզուների, հատկապես վրացերենի՝ հայերենից կատարած փոխառությունները հաճախ հնարավորություն են տալիս վերականգնելու հայերենի բառի հին կերպարանքը և լուծելու բացարձակ ու հարաբերական ժամանակագրության մի շարք կարևոր հարցեր, մանավանդ որ այդ լեզուները, ունենալով հայերենին մոտ հնչույթային համակարգ, ի վիճակի են եղել արտացոլելու այնպիսի երևույթներ, որոնք չէին կարող նույն ճշգրտությամբ հանդես գալ հայերենի բառերի այլ վկայություններում։

Հայտնի է, որ հայերենի համար բնորոշ հնչյունական փոփոխություններ են *g' > ձ, *du̯ > երկ, *p > h (   ), *u̯ > (*gv > ) գ անցումները, բաղաձայնների տեղաշարժը և այլն։ Նշանակում է, վրաց. arçivi «արծիվ», γvino «գինի», մեգր. rikali «երկար» բառերի աղբյուրը հայերենն է. հմմտ. հայ. արծուի < հ.-ե. *ṛg'iptio-, հայ. գինի < (*gvinijo- < (*հ.-ե. u̯inijo-, հայ. երկար < հ.-ե. *duāro- և այլն։ Եթե նկատի առնենք, որ մ. թ. ա. VIII դ. ուրարտական արձանագրություններում հիշատակված U̯elikuni (U̯elikuḫi) երկրի անունը հայերենում արտացոլված է Գեղա(ր)քունի ձևով, իսկ միջին իրանական vat, vēšap ձևերը՝ վատ, վիշապ ձևերով, ապա հասկանալի կլինի, որ u̯ (v, w) > գ անցումը հայերենում տեղի է ունեցել վաղ հնագույն շրջանի վերջերին՝ մինչև մ. թ. ա. IV—III դարերը։ Այս ժամանակ էլ փոխ է առնվել վրաց. γwino «գինի» բառը, մինչդեռ venaxi «խաղողի այգի» բառը փոխ է առնված հավանաբար հ.-ե. մի այլ աղբյուրից։ Այս շրջանին էլ վերաբերում են քարթվելական, հատկապես վրացական այն փոխառությունները, որոնց մեջ պահպանվել են հայերենի ձայնավորահանգ, հատկապես -a-ով և -o-ով վերջացող հիմքային ձևերը. բուրդ, -ոյ (հ.-ե. *bhōrdho-, հին իմաստը՝ «կարված», հմմտ. բրդել) — վրաց. burdo «հարդ, կալի մնացորդ». հայ. դեղ, -ոյ (հ.-ե. *dhelo-, հին իմաստը՝ «բույս, խոտ») — վրաց. m-delo «հացաբույս. դեղ. կանաչ մարգագետին». հայ. երդ, -ոյ (հ.-ե. *edhro-?) — վրաց. erdo «հարթ տանիք». հայ. թեփ, -ոյ — վրաց. tebo «գլխի թեփ» հայ. թթու, -ոյ — վրաց. tutubo «չոր քացախ». հայ. ծաղիկ, -ագ, ծաղկոտի (հ.-ե. *g'ьl-?) — վրաց. çaliķa «վառվռուն (բույս)», çalķoti «բանջարանոց». հայ. կալ, -ոյ — վրաց, ķalo «կալ» (> բացբ. klaл). հայ. համ, -ոյ (հ.-ե. *sab-mo-) — վրաց. amo «հաճելի, համով» (թե՞ ուշ փոխառություն համով ձևից). սալ (հ.-ե. *k'əlā) — վրաց. sala «լափուկ, տափակ քար խաղի համար». հայ. սոր, -ոյ «անցք, խոռոչ, որջ» (հ.-ե. *k'ou̯oro- < *k'ou̯əro-) — վրաց. soro «անցք, խոռոչ, որջ». հայ. փոս, -ոյ — վրաց. poso «փոս». հայ. փոր, -ոյ «փոս, խոռոչ. որովայն» — վրաց. poro «փոս, խոռոչ» և այլն։

Կան հնդեվրոպական աղբյուրից եկող քարթվելական այլ բառեր էլ, որոնց հավանական աղբյուրը հայերենն է. հայ. աղանձ (հ.-ե. *i̯endh-?) — վրաց. alanjwa «վառել, խանձել». հայ. արծաթ (հ.-ե. *arg'əto-? — վրաց. wercxli, մեգր. warčxili «արծաթ» (հմմտ. նաև ավար. rIapaц, լակ. арцу, դարգ. арц, թաբ. арс, արչ. арси). հայ. որբ, -ոյ (հ.-ե. *orbho-) — վրաց. obol, մեգր. ombol- «որբ» (հմմտ. նաև աբխ. а-иба, կաբ. ибэ, չեչ. bo, ավար. гьоби). հայ. որձ (*org'h-. հմմտ. ամորձիք, յորձ «արու ոչխար») — վրաց. werji, մեգր. erji «արու ոչխար». հայ. ցախ (հ.-ե. *(s)k'ākh-) — մեգր. cxweķ, ճան. cxwiķ- «չոր ցախ», սվան. cxeķ- «անտառ» (?)։ Հ. Ֆոգտը վրաց. parto «լայն» և poni «անցահուն» բառերի աղբյուրը հակված է համարելու հայերենի հարթ և հուն բառերի հնագույն ձևերը, որոնց ժամանակ հ.-ե. p-ն

դեռ չէր փոխվել ճ-ի։ Հետևյալ բառերի դեպքում ենթադրելի է հնդեվրոպական այլ աղբյուր. հայ. լուծ (հ.-ե. *jugom) — վրաց. uγel-, մեգր. uγu, սվան. ūγwä- «լուծ» (հմմտ. չեչ., ինգ. дукъ, ավար. рукь, լակ. рукI, լեզգ. вик)։

Քարթվելական լեզուների՝ հայերենից կատարած փոխառությունների հիման վրա կարելի է կատարել նաև ժամանակագրական այլ եզրակացություններ[2]։ Ինչպես ցույց է տվել Հ. Հյուբշմանը, հայերենի նախաշեշտ վանկերում ի—(ը), ու>(ը), է>ի, ոյ>ու, եա>ե անցումները կատարվել են մինչև մ. թ. III դ. սկիզբը. այս դեպքում վրացական այն փոխառությունները, որոնց մեջ այդպիսի անցում է նկատվում, կատարվել են հենց այդ շրջանում[3]. հմմտ. հայ. թթու—վրաց. tutubo «չոր քացախ», հայ. ծնծղայ (<ասոր. ṣiṣṣəlā «ծնծղա»)—վրաց. çinçlli (-a) «ծնծղա» (անմիջական փոխառություն ասորերենի՞ց), հայ. հրեայ (<ասոր. īhūdājā )—վրաց. (h)uria «հրեայ» և այլն։

Ինչպես ցույց է տվել Հ. Աճառյանը, հայ. ղ-ն ստացել է ներկա հնչումը IX դարի մոտերքը։ Նշանակում է, հայերենից մինչ այդ կատարված փոխառությունները՝ 1) ղ-ի դիմաց ունեն l. հմմտ. վրաց. leli «ուղիղ»>հայ. ուղեղ (ուղիղ) և, ինչպես կտեսնենք, 2) քարթվելական γ-ն մինչ այդ կատարված հայկական փոխառություններում արտացոլվում է ոչ թե իբրև՝ ղ, այլ իբրև կ կամ խ. հմմտ. խոճ- և, թերևս կոճան «խոզ»<ղան. *γoǰ-' γeǰ- «խոզ» ձևի կողքին։

Վրացական հետևյալ բառերն ունեն ակնհայտ հայկական բառակազմական ձևեր, ընդ որում վրացերենում հայկական բուն բաղադրիչները հաճախ չեն արտացոլված՝ վրաց. artawari «ծանրության չափ»<հայ. արտավար, վրաց. maškatela «չղջիկ»<հայ. մաշկաթեւ և այլն [Աճառյան, ՀԼՊ, 1, 206—207]։

Հայերենի՝ քարթվելական լեզուներից կատարած հնագույն փոխառությունների թիվը իր «Հայոց լեզվի պատմության» 1-ին մասում Հ. Աճառյանը համարում է 47՝ 1) աղբ, 2) անթեղ, 3) բակ, 4) բոգ, 5) գաւառ, 6) գտակ, 7) գութայ, գութան, 8) զովող «ընկեր», 9) լակոտ, 10) խամուր, խամրիլ, 11) խծուծ (կանեփի), 12) խոխում «ձոր» (հմմտ. խմել), 13) խոճ(կոր), 14) խում, խմել, 15) խոփ, 16) խռովել, 17) ծանր, 18) ծիծ, 19) ծուծ, 20) ծիր «գիծ», 21) ծիւ «աթար», 22) ծմել «սպանախ», 23) ծուխ, 24) կոճան «խոզ», 25) ճոռի (ամսանուն), 26) ճանճ, 27) ծիպռ, 28) ճկոյթ, 29) ճղոպուր(տ), 30) մակ «վրա», 31) մշակ, 32) շլան «մոխիր», 33) շղու(աբարոյ), 34) շմորիլ նեխվել», 35) ոչխար, 36) չանչ, 37) պոլոճ, 38) ջախել, ջախջախել, 39) սաճմի (ամսանուն), 40) վաղ, 41) տաղախ «ցեխ», 42) ցմախ (բույս), 43)

---

[2] Հ. Ֆոգտը, նկատի ունենալով հայերեն փոխառությունների բացակայությունը համաքարթվելական և վրացա-զանյան նախավիճակներում, փորձում է հիմնավորել հայերի՝ այդ շրջանում Կովկասի սահմաններից դուրս գտնված լինելու դրույթը. նշենք, որ ըստ Գ. Ա. Կլիմովի լեզվաժամանակագրական հաշվումների՝ վրացա-զանյան ընդհանրության սահմանն ընկնում է մ. թ. ա. VII դ. կամ VIII դ., համաքարթվելականինը՝ մ. թ. ա. XIX դ. [Климов, 1961, 245. 1964, 35]։ Սակայն Ֆոգտի փաստարկները կարոտ են ստուգման. հմմտ. վերևում բերված փաստերը արծաթ, որձ բառերի՝ վրացերենում և մեգրելերենում փոխառված լինելու մասին։

[3] Եթե, իհարկե, որոշ դեպքերում մենք գործ չունենք երկրորդական լիաձայնության և ձայնավորների ներդաշնակության հետ՝ հենց քարթվելական լեզուներում։

փարախ, *44)* փշուր, փշրել, *45)* փոշի, *46)* փոշկ *«թրիք»*, *47)* փուխր, փխրել:

*Գ. Ղափանցյանը հայ-խաթական փոխհարաբերության հարցին անդրադարձել է հատուկ աշխատությամբ* [Капанцян, *1952]*, *որը վերամշակմամբ հետագայում մտել է նրա «Հայոց լեզվի պատմության» մեջ [1961, 69—101]. այստեղ նա, բացի բնաձայնություններից, թվարկում է (ելնելով հայերենի «ասիանական» ծագման և խաչավորվածության իր վարկածից) 25 «ընդհանուր» բառ, 14 հայկական փոխառություն խաթերենից և 12 խաթական փոխառություն հայերենից։ Իրականում, այսպես կոչված «ընդհանուր» բառերը նույնպիսի փոխառություններ են իրարից կամ երրորդ աղբյուրից, երբեմն էլ պատահական նմանություններ կամ բնաձայնական-նկարագրական կազմություններ են։*

*Հ. Աճառյանի ցուցակում տեղ գտած մի շարք բառերի համար կարելի է անել հետևյալ վերապահումները. 1)* աղբ *բառը ակնհայտ զուգահեռ ունի խեթ.* šalpa- (šalpi-*) «կղկղանք» բառի մեջ և գալիս է հնդեվրոպական աղբյուրից* [Ջահուկյան, *1979, 23—24]. Հ. Աճառյանի նշած քարթվելական զուգահեռները, որոնք պատկանում են երկու տարբեր արմատների (**lap-/lp- *«ցեխ, կավ» և* *lb- *«փափկացնել»), չեն բացատրում* ա- *նախաձայնը. 2)* անբեղ *բառի զուգահեռներ են տեսնում ոչ միայն վրաց.* anteba *«վառել, բորբոքել» բառի, այլև հունարեն* ἄνθραξ *«ածուխ» և, որոշ կասկածով, խեթ.* ant- *«տաք» (հմմտ. նաև* attala- *«ածուխ») բառերի մեջ, որոնց հարաբերությունը պարզ չէ. եթե հայերեն, հունարեն և խեթերեն բառերի կապը նախնական է, ապա հնարավոր է վրացերեն բառի փոխառյալ լինելը հ.-ե. աղբյուրից, մանավանդ որ վրաց. բառը չունի քարթվելական որոշակի զուգահեռներ. եթե հայ.* անբեղ *բառը հայկական կազմություն է՝* ան- *«վրա»+*բեղ *«դեղ, շեղջ, կույտ», ապա նմանությունը պատահական է. բոլոր դեպքերում էլ դժվար է խոսել հայերենի՝ վրացերենից փոխառյալ լինելու մասին. 3)* գաւառ *բառի նմանությանը վրաց.* gwari *«տեսակ. ցեղ. ընտանիք» բառի հետ ամենայն հավանականությամբ պատահական է, եթե նկատի առնենք իմաստային տարբերությունը (հմմտ. ցեղակից սվան.* gwäre- *«կաշի (եզի կամ կովի)». հայ. բառը ավելի նման է գերմ.* Gau *«գավառ» բառին, բայց այն ոմանք բխեցնում են հ.-ե.* *g'heu- *ձևից, որ չպիտի տար հայ.* գաւ-. *4)* գդակ *և վրաց. (մեգր., ճան.)* kuti *«գլխարկ» (ըստ Աճառյանի նաև* gadia?*) բառերի նմանությունը ամենայն հավանականությամբ պատահական է. վրաց. բառի աղբյուրը թերևս իրանական է (հմմտ. ավեստ.* xaōδa, *հ. պրսկ.* xauda- *և այլն, որոնց հետ նույնական* xōδ *մ. իրան. ձևից է հայ.* խոյր*-ը). հավանական է նաև հայ. բառի իրանական ծագումը (հմմտ.* -ակ*). 5)* զութան (զութայ) *բառը զուգահեռներ ունի կովկասյան նաև այլ լեզուներում, այդ թվում նաև իրանական բնույթի օսերենում (*guton, goton*), ընդ որում դրանք կովկասյան արմատներով չեն մեկնվում. պետք է ենթադրել հայերենի և այդ լեզուների համար մի ընդհանուր աղբյուր (ուրարտերե՞նը). 6)* խմել *«ծծել, իրեն քաշել. խմել» բայի* խում *արմատը (հմմտ.* գինեխում *«հարբած») իմաստով հեռու է Հ. Աճառյանի բերած վրաց.* xma *«վերցնել, վերցնել տանել»,* xmava *«գործածել» ձևերից. էլ ավելի հեռու են նրա կողմից այս արմատի հետ կապվող բբբռ.* խխմել *«շատ թրջել. կակղացնել. ուռցել. քամել»,* խխմիլ *«շատ թրջվել, կակղել, ջուր քաշելով խարխլվել (պատի մասին)» բայաձևերը և* խոխում *«ձոր» բառը. ավելի հավանական է ենթադրել հայ. բառերի համար տարբեր*

աղբյուրներ, խում-ի համար՝ թերևս իրանական աղբյուր (հմմտ. հ.-ե. *kʷem- «ծծել, կլանել»). հավանաբար պատահական է նաև հայերեն և արևելակովկասյան (ավար. xxy-й-зе, բոթլ. xxy-д-и, լեզգ. хъ-ун «խմել» և այլն) բառերի նմանությունը. վերջիններիս մեջ բացակայում է հայ. -մ-ի համապատասխանը. բուն խմելու համար քարթվելական լեզուներն ունեն *tr-, *sw- արմատները. հմմտ. նաև *xwlip- «ծծել, խմել, կուլ տալ». 7) հայ. խռով «խռովք, շփոթություն. կռիվ, պատերազմ. խռոված, շփոթված» արմատը իմաստով հեռու է վրաց. xro, xrowa, xrooba «խումբ, հոտ, երամ» բառերից, թեև Հ. Աճառյանը փորձում է իր վարկածը հիմնավորել՝ բերելով իմաստային համապատասխան անցման օրինակներ. իրականում վրացական բառերի իմաստը խիստ մասնագիտացված է. կարելի է ենթադրել ընդհանուր իրանական աղբյուր. 8) ծանր բառի անկանոն հոլովումը գերազանցապես հ.-ե. ծագում ունեցող բառերի տիպով (բարձր, մանր, փոքր և այլն) անբացատրելի է մնում նրան քարթվելական ծագում (վրաց. çona- «կշռել» և ճան. çin-) վերագրելու դեպքում, մանավանդ որ հայերենի r/n հերթագայությունը ցույց է տալիս հին հնդեվրոպական օրինաչափություն. թերևս ենթադրելի է քարթվ. ձևի փոխառություն և նրա բաղարկություն հ.-ե. *gʷer- «ծանր» արմատից ծագող *-u-r/n-ով հիմք ունեցող ձևի հետ. 9) ծիծ և ծուծ ձևերի համար Հ. Աճառյանի կողմից բերվող վրաց. juju «ծիծ, ստինքի պտուկ», jija «ստընտու» և çowa, çuçna «ծծել» ձևերը գալիս են տարբեր արմատներից. հայկական և քարթվելական ձևերի նմանությունը (հմմտ. նաև արևմտակովկասյան և արևելակովկասյան համանման ձևերը) ընդհանուր բնաձայնական հիմք ունի. եթե ծուծ արմատը, թերևս, հնարավոր է կապել քարթվելականի հետ, ապա ծիծ-ը հեռու է մնում, մանավանդ որ նա ունի նաև տիտ տարբերակը և կարող է բխեցվել հ.-ե. *g̑eid- «ծծել» ձևից. 10) ծիր «շրջագիծ» բառը վրաց. çer- «գրել» (մեգր. ճան. (n)čər-, սվան. (j)r- ) արմատից իմաստով բավականաչափ հեռու է, և թերևս ճիշտ է Հ. Աճառյանը, որ հայերենը և քարթվելական ձևերը փոխառյալ է համարում «կուլտուրական խալդիներից» (ուրարտացիներից). ուրարտերենի աղբյուրն էլ կարող էր լինել ակկադերենը. 11) ծմել (ծիմել, զիմել) «սպանախ» բառը հանդիպում է ուշ շրջանում (XII դ.), և այն չպետք է դրվեր հին շրջանի փոխառությունների թվում, ընդ որում Հ. Աճառյանի բերած վրաց. çamali «դեղ, թույն» զուգահեռը հայերեն բառից իմաստով բավականաչափ հեռու է (հին իմաստը՝ «խոտ». հմմտ. սվան. čēm- «չոր խոտ», այլև վրաց. ler-çami «եղեգ»՝ քարթվ. *$ç_1$em- «խոտ» արմատից). 12) ծուխ բառը իմաստով հեռու է Հ. Աճառյանի կողմից բերված զուգահեռներից (վրաց. çuxwa «ցավ, տրտմություն», çuxri «աղջամուղջ, երեկո» և այլն), և վերջիններս չեն կարող հայերենի անմիջական աղբյուրը համարվել. միաժամանակ պետք է նշել, որ «ծուխ» իմաստի համար կա քարթվելական *ḳwaml- (վրաց. ḳwaml-, սվան. ḳwam-, ḳwäm)- հիմքը. հայերենից իմաստով և ձևով հեռու է նաև *$ç_1$w- «այր(վ)ել, վառ(վ)ել» արմատը, որ ունի դաղստանյան զուգահեռներ (լակ. цӀун, դարգ. идзес, արչ. ацӀцӀа, թաբ. иццу «ցավել»). 13) ճողոպուրտ «ընկույզ» բառը հանդիպում է Երեմիայի բառարանում և բարբառներում, ուստի այն պետք է հանել հայերենի՝ քարթվելականից կատարած հին փոխառությունների թվից. 14) մակ «վրա» բառի ներմուծումը բուն քարթվելական փոխառությունների ցուցակի մեջ վրիպում է. mak-ը պատկանում է նախյան բացբիերեն լեզվին. 15) մշակ, մշակել բառերի աղբյուրը ոչ թե կովկասյան լեզուներն են, այլ

մի երրորդ աղբյուր, որի մեջ առկա է -ակ ածանցը և որն արտացոլված է վրացերենում -a -ով և -āķ-ով ձևերով (muša, mušaķi «աշխատավոր». ամենայն հավանականությամբ մենք գործ ունենք իրանական ընդհանուր աղբյուրի հետ՝ ընդորս -āk ածանցով և դրա ուշ -a արտացոլմամբ՝ k-ի անկումով (հմմտ. դաստակ և դաստա). 16) Հայ. շլամ «մոխիր» բառի բխեցումը šlami «տիղմ» բառից կասկածելի է, թեև Աճառյանը հնարավոր է համարում հայ. բառի իմաստի «տիղմ» մեկնաբանությունը. վրաց. բառն էլ չունի քարթվելական ուրույն զուգահեռներ. 17) պոլոճ «միջատ» բառի համար, որ ունի բարբառային բազմաթիվ տարբերակներ (պոլոճ, բողոճ, բոլոճ, պլոճ, բղոճ և այլն), որպես աղբյուր ենթադրել վրաց. boboli «մեծ որդ» և ճան. boboli «միջատ» բառերը հնչյունապես անհավանական է, մանավանդ որ հայերենն ունի ոչ կրկնավոր ձև՝ վրաց. և ճան. կրկնավոր ձևերի դիմաց. եթե այս բառերն իրոք կապ ունեն, ապա պետք է ենթադրել թերևս մի ընդհանուր աղբյուր (ուրարտերե՞նը). 18) ջախել, ջախջախել բառերի համար որպես զուգահեռ բերված վրաց. ǰaxeba «խփել», ǰaxaǰuxi «աղմուկ, շփոթ», čexa «կտրել, ջարդել», ճան. ǰax «մուրճով խփել» և այլ. цах-песун «ջախջախել», цlax-песун «ծեծել, փշրել, կոտրել» բառերի «հարաբերությունը ճշտված չէ», ինչպես նշում է Հ. Աճառյանը [ՀԱԲ, 4², 110]. գործ ունենք կամ բնաձայնական նմանության, կամ միևնույն աղբյուրից կատարված փոխառության հետ. հմմտ. նաև խեթ. zaḫ(ḫ)- «խփել», zaḫḫurāi- «ջարդել, փշրել». 19) Հայ. վաղ, վաղի «վաղը», վաղվաղել «շտապել» բառերի անմիջական աղբյուր չէր կարող ծառայել վրաց. xwal «վաղը» բառը, որովհետև ինչպես նշում է Հ. Աճառյանը [ՀԱԲ, 4, 297], հիմնական իմաստը («վաղ, շուտ, առաջ») գտնվում է հայերենի մեջ. ենթադրելի է մի երրորդ աղբյուրը (ուրարտերե՞նը). 20) Հայ. փշուր (փշրել), փոշի, փոշկ «թրիք», փուխր (փխրել) բառերի բխեցումը անմիջապես քարթվելական աղբյուրից (հմմտ. վրաց. pšeri «փոշի», pašari «փխրուն» pušwa «քանդել. խառնել» և այլն, pxura «ջնջել, լվել, քանդել», pxuna «փշրել, կոտրատել» և այլն) կասկածելի է. կան նաև արևմտակովկասյան (հմմտ. ադըղ. пшахъуэ «ավազ», օրտեղից. աբազ. пхъачаккхъуа «ավազ»), ուրարտական (īpḫu- «ջարդել») և մանավանդ, փշուր-ի դեպքում, խեթա-լուվական (խեթ. paršur- «բրդոշ», paršulli-, paršlul-, լուվ. paršul- «բեկոր, փշուր») զուգահեռներ և այլն. հմմտ. նաև հ.-ե. *bhes-, *ps-, որտեղից հուն. ψάω «տրորել», ψώχω «տրորելով մանրել» ψάμμος «ավազ» և այլն. պետք է ենթադրել, թերևս, հնագույն շփումներ. Վ. Պիզանին փոշի-ն բխեցնում է հ.-ե. *phorslịo- ձևից՝ համեմատելով խեթ. parš- «փշրել» բայահիմքի հետ։

Գ. Ղափանցյանի նշած՝ հայերենի զանական փոխառությունները կամ կան Հ. Աճառյանի ցուցակում (խամրել, ոչխար, ճաճճ/չ, լակոտ), կամ ուշ շրջանի գրական ու բարբառային փոխառություններ են (բոզի «արեգակ», լակալ «ընկույզ» և այլն)։ Ինչ վերաբերում է, այսպես կոչված, «ընդհանուր» բառերին, ապա, ուշ շրջանի փոխառությունները բացառելու դեպքում, դրանց մեջ կարելի է առանձնացնել մի քանի շերտ՝ հայերենից կատարված զանական փոխառություններ (բարդ—ճան. bardi «բարդ, դեզ», երկար—ճան. riķali «երկար, բարձր», ֆիթ—մեգր. ni-kiti «դունչ, մռութ, քիթ», փայլ. փաղփաղել—ճան. paluri «բոց» և այլն), հեռավոր ցեղակցության և հին շըփումների արդյունք հանդիսացող բառեր, բնաձայնություններ, պատահա-

*կան նմանություններ, մի երրորդ աղբյուրից կատարված փոխառություններ և այլն։ Կարելի է խոսել միայն հայ.* երազագ *«որսի ցանց»* (արազագ. *Համեմ. և* որոգայթ) *և* կինճ *բառերի փոխատու լինելու մասին, սակայն դրանցից առաջինը զուգահեռներ ունի նաև արևմտակովկասյան և, թերևս, արևելակովկասյան լեզուներում, իսկ երկրորդի* (ɣeǰi *«խոզ») հնարավոր աղբյուրը զուրկ է* Ն-*ից (հետագա հավելում հայերենո՞ւմ)։*

*Հայ-քարթվելական զանազան նմանություններ նշվել են նաև հայ, վրացի, ռուս և օտարազգի այլևայլ հեղինակների կողմից։ Սակայն դրանց մեջ շատ քիչ են այնպիսիները, որոնք կարելի է առանց վարանման համարել հայերենի քարթվելական փոխառություններ։ Դրանցից են, թերևս, հայ.* զգոնել *(Աբուլաձե) և* գր–ոյց *(Մուրվալյան)։ Ինչ վերաբերում է հայ.* կուռ, կռել *և վրաց.* ḳurlwi *«կուռ»,* ḳwerl *«կռան»,* ḳuer̈wa *(Մուրվալյան) զուգահեռներին, ապա դրանք հավանաբար գալիս են մի երրորդ աղբյուրից (ուրարտերենի՞ց)։ Բնաձայնական հիմք ունի կամ պատահական է մեգր.* pij- *«ծայր, շրթունք» և հայ.* պինչ *բառի նմանությունը, թեև հակում կա հայերեն բառը փոխատու համարելու (Կլիմով)։*

*Հաշվի առնելով արված դիտողությունները և ավելացնելով մի երկու հնարավոր փոխառություն ևս՝ կստանանք հայերենի՝ քարթվելական լեզուներից կատարված փոխառությունների 29 միավոր ընդգրկող ցանկ։ Սրանց հնագույն շերտը կազմում են ակնհայտորեն զանական աղբյուրներից առնըված հետևյալ 10 բառերը. 1) հայ.* լակոտ*—ճան.* laḳoṭi *«լակոտ»՝* laḳ- (laç̣-) *արմատից (հմմտ. նաև մեգր.* laḳw- *«շուն», վրաց.* leḳw- *«լակոտ»). 2) հայ.* խամուր (խամրիլ) *— մեգր.* xomula- *«չոր» (հմմտ. նաև* xumla-, xomila-, *ճան.* xom(b)u-la-, *վրաց.* xmel-՝ *վրաց.-զան.* *qmel- *նախաձևից, որ ածանցված է* *qam- *«չորանալ» արմատից).* 3) *հայ.* խծուծ *«կանեփի մնացորդ»* (խզուզ *«կալի մնացորդ»,* խծծել *«կտրտել պատառոտել»)* — *մեգր., ճան.* xoç- *«կեղևը հանել», վրաց.* xweç- *«տաշել» (վրաց. բառի իմաստը երկրորդական է)* (?) *4). հայ.* խոճ- *«խոզ»* (խոճ-կոր) (< *ɣoǰ-) — *մեգր., ճան.* ɣeǰ- *«խոզ» (հմմտ. վրաց.* ɣor-). *5) հայ.* խորամ *«պատի վրա բացվածք» — ճան.* ɣorma- *«բացվածք, ծակ», վրաց.* ɣrma- *«խոր» (վրաց.-զան.* *ɣr̥ma- *կամ* ɣarma-)[4] (?). *6)* կոճան *«խոզ»* (< *ɣoǰ) *— մեգր., ճան.* ɣeǰ- *«խոզ» (հմմտ. վրաց.* ɣor-). *տե՛ս* խոճ- *«խոզ»՝* խոճ-կոր *բառի մեջ*[5], *այլև, թերևս,* կինճ. *7) հայ.* ճանճ, ճանջ, -ի *— մեգր.* ç̣anǰi, ç̣andi *(հմմտ. ճան.* mç̣aǰi, *վրաց.* mç̣eri, *սվան.* mēri *«ճանճ»՝ քարթվ.* *mç̣er-. *հմմտ, նաև աբխ.* а-мц *«ճանճ»). 8) հայ.* ճիպռ *(ուշ՝* ճպուռ) *«աչքի կեղտ» (բրբռ.* ծպուր *«ոչխարի աղբ») — զան.* ç̣irp- *(հմմտ. վրաց.* ç̣irpli *«ճպուռ»). 9) հայ.* ճլոյթ *(և* ծկոյթ*) — ճան.* ç̣ulu ḳiṭi *«փոքր մատ». 10) հայ.* ոչխար *— ճան.* (m)čxu(r)- (mç̣xur-, mšḳur-) *«ոչխար» (հմմտ. վրաց.* cxwar- *«ոչխար»)։ Զանական աղբյուրներից առնված բառերին պետք է ավելացնել նաև հավանաբար վրացերենից կատարված հետևյալ 19 փոխառությունները.*

*11) հայ.* աբեթ *— վրաց.* abed- *(հմմտ. մեգր., ճան.* obed-, *սվան.* haböd-habed-, hobed-) *«աբեթ». ըստ Աճառյանի՝ քարթվելական բառերը փոխառություն են հայերենից. թերևս առկա է երրորդ աղբյուր (ուրարտերե՞նը). 12) հայ.* բակ *— վրաց.* baḳi *«ցանկապատ, փարախ» (ի՞նչ հարաբերության*

---

4 *Հայերենի՞ց է արդյոք վրաց.* xrami *«ձոր» բառը։*

5 *Պատահակա՞ն է արդյոք նմանությունը հ. մակեդ.* γόταν *«խոզ» բառին։*

մեջ է մի կողմից՝ ավար. бакī «տեղ», մյուս կողմից՝ վրաց. baga- «մսուր, ախոռ», մեգր. boga- «ախոռի հատակ», ճան. boga- «փարախ» բառերի հետ) (?). 13). հայ. բոզ, -ի, -աց — վրաց. bozi «բոզ, պոռնիկ» (հմմտ. ճան. bozo «աղջիկ»). 14) հայ. զզուել «արհամարհել, նախատել. զզվել» — վրաց. zezwa «զզվել» (XI դ.), zizγi «զզվանք» (ըստ Աբուլաձեի. Աճառյանը երկրորդը փոխառյալ է համարում հայերենից). 15) հայ. զովող (զուող) «ընկեր, գործակից» — վրաց. zawi «խաղաղություն, համաձայնություն» (?). 16) հայ. զր-ույց — վրաց. zrinwa «կավի աղմուկ», zriali «բազմաձայն աղմուկ», zraxwa «խոսք, զրույց» (ըստ Մուրվալյանի, եթե ճիշտ են սրանք համեմատված միմյանց արմատին). 17) հայ. խաղիղ, խաղել — վրաց. γiṭln- կամ ճան. xiṭin- (մեգր. xiçin-) «խաղել» (վրաց.-զան. *γiṭln-) (?). 18) հայ. խոփ, -ոյ — վրաց. xopi, xopi «թի» կամ մեգր. xopi, ճան. xope[6] (?). 19) հայ. ծանր (սեռ. ծանու, հգն. ծանունք) — վրաց., մեգր., ճան. çon- ճան. cin-, «կշռել» (վրաց.-զան. *con-) (?) 20) հայ. ծիւ «աթար» — վրաց. çiwa «աթար». 21) հայ. հոռի «հայկական տոմարի երկրորդ ամիս» — վրաց. ori, wori «երկու» (հմմտ. մեգր. žər-, žir-, ճան. žu(r)-, ǰu(r)-, սվան. yori-, yerbi-, քարթվ. *yor-) (?). 22) հայ. կրճ(ա)ել (հմմտ. հ.-ե. *gureug'h-. բաղարկությո՞ւն) — վրաց. γričin/γrčen- «կրճտել» (հմմտ. մեգր. γərçkin-/γirçkin-, ճան. γriçkin-, γriçkil-, սվան. γəlçkən- «ճռնչալ»՝ քարթվ. *γrčin-). 23) հայ. շղու(ա-բարոյ) «հիմար, անխելք» (ըստ այլ մեկնաբանության՝ «շողոմարար, քծնող») — վրաց. šlu «խենթ» (հնարավոր է հակառակ փոխառություն ենթադրել). 24) հայ. շմորիլ «նեխել» — վրաց. šmor- «թթվել, նեխել». (հնարավոր է հակառակ փոխառություն ենթադրել). 25) հայ. չանչ, -ոյ (աշ՝ չէչ) — վրաց. čenčo «կեղև, կճեպ», čeča «վուշը մաքրել» (?). 26) հայ. սամի «հայկական տոմարի երրորդ ամիս» — վրաց. sami «երեք» (հմմտ. մեգր., ճան. sum-, սվան. semi-՝ քարթվ. *sam-). 27) հայ. տաղախ «ցեխ, շաղախ» — վրաց. ṭalaxi «ցեխ»[7]. 28) հայ. ցմախ — «մի տեսակ լեղի բույս» — վրաց. çmaxi «թթու դրած բանջարեղեն» (երկուսն էլ սեմական աղբյուրի՞ց) (?). 29) հայ. փանդանել «ցրել, դես ու դեն քշել» — վրաց. panṭ- (հմմտ. սվան. panṭ-, pīnṭ- «ցրել»)։

*Հայերենի քարթվելական փոխառությունները ըստ իմաստային (թեմատիկ) խմբերի բաշխվում են հետևյալ կերպ.*

1. **Ֆիզիկական աշխարհ.** *1.214 տաղախ. 1.811 աբեթ. ծիւ.*

3. **Կենդանիներ.** *3.25 ոչխար. 3.31 խոճ-, կոճառ. 3.32 կինճ (?). 3.612 լակոտ. 3.83 ճանճ (ճանչ).*

4. **Մարմնի մասեր. մարմնական գործառություններ և պայմաններ.** *4.271 կրճտել. 4.341 ճկույթ. 4841 ճիպռ (ճպուռ).*

7. **Բնակարան, տուն, կահկարասի.** *7.15 բակ. 7.271.*

8. **Երկրագործություն, բուսականություն.** *8.211 խոփ. 8.34 խծուծ (խըզուղ). (?) 8.531 ցմախ (?). 8.671 չանչ.*

9 **Ֆիզիկական տարբեր գործողություններ.** *9.34 փանդանել.*

14. **Ժամանակ.** *14.72 հոռի. սահմի.*

15. **Զգայական ընկալումներ.** *15.261 շմորիլ. 15.81 ծանր. 15.84 խամուր.*

---

[6] Բուն խոփի համար կա վրաց. saxnisi բառը՝ xan-/xn- «վարել» արմատից։

[7] Եթե հայ. բառը կապ չունի տիղ, տիղմ բառերի հետ։

*16.* Զգացմունք. *16.411 պլուել. 16.62 խաիլ (?).*

*17.* Մտածողություն, միտք. *17.22 շղու(աբարոյ).*

*18.* Ձայնական արտահայտություն, խոսք. *18.21 ղրոյց.*

*19.* Հասարակական հարաբերություններ. *19.53 զովող (?). 19.72 բոզ։*

*Քարթվելական փոխառությունները գերազանցապես սովորական՝ առօրյա կյանքի հետ կապված բառեր են։ Զանական փոխառությունների մեջ գերակշռում են կենդանիների անունները* (լակոտ, խոճ *«խոզ»*, կոճաճ *«խոզ»*, կինճ, ճանճ/չ, ոչխար). *մյուս բառերն են* խամրիլ (խամուր), խծուծ (խզուզ) խրամ, ճիպռ (ճպուռ), ճկոյթ (ծկոյթ)։ *Վրացերենից կատարված փոխառությունների մեջ մեծ տեղ են գրավում սովորական գործողությունների հետ կապված բառերը՝* զգուել, խաղել (խաղիղ), կրճ(տ)ել, շմորիլ *«նեխել»*, փանդանել *«ցրել». մշակութային կյանքի նկատմամբ չեզոք է նաև* շղու(աբարոյ) *«խենթ» բառը։ Քիչ թե շատ մշակութային արժեք ունեն տնային և կառուցողական* (բակ, տաղախ *«ցեխ, շաղախ»), մարդու գոյապահպանմանը և տընտեսական-արտադրողական գործունեությանը վերաբերող* (աբեթ, խոփ, ծանր՝ *կշռելու գաղափարի հետ կապված,* ծիւ *«աթար»,* շանչ *և, ավելի ուշ,* չեչ, ցմախ *«մի տեսակ բույս»), հասարակական-ընտանեկան կյանքի հետ առնչվող* (բոզ, զովող (զուող) *«ընկեր, գործակից»,* զր–ոյց) *և տոմարական* (ճոռի *և* սաճմի՝ *ամսանուններ) բառերը։*

*Մենք կանգ չենք առնի ավելի ուշ շրջանում և բարբառների կողմից կատարված փոխառությունների վրա։ Նշենք միայն մի քանի բառ, որոնք ուշ են ավանդված, բայց կարող են լինել հայերենի զարգացման միջին շրջանից ավելի վաղ կատարված փոխառություններ՝ հայ.* բոզի *«արեգակ»—վրաց.* mze-, ***մեգր.*** bža, ***ճան.*** mžo(r)a-, mžu(r)a-, mǯo(r)a, ***սվան.*** məž-/muž- ***«արև». հայ. կ... (մ. հայ.) — վրաց.*** q̇le-, ***մեգր.*** 'ole-, ***ճան.*** q̇ole , ḳole- «penis», ***սվան.*** q̇law- ***«տղա»*** (?) (***հմմտ. հինալուղ.*** къилы «penis»]. ***հայ.*** մոծիր ((մոճիր, մճիր, մծիր) ***«մոխիր» — ճան.***mṭwer- ***«փոշի, մոխիր» (մեգր.*** ṭwer-, ***վրաց.*** mṭwer- ***«փոշի, փոշեհատիկ», սվան.*** ṭwi- ***«հող»՝ քարթվ.*** *mṭwel-)***։ Նշենք նաև համեմատաբար հին կերպարանք ունեցող բարբառային մի քանի փոխառություններ՝*** գշլել — ***վրաց.***gl-eǯ-, gl-iǯ- ***«պոկել, պատռել».*** ճխլել ***(այլև ուշ շրջ.*** ճխմել ***«ճխլել) — վրաց.*** č̣q̇let-/č̣q̇lit-, ***մեգր.*** č̣q̇ilat-/č̣q̇ilit-,č̣q̇irṭ-, ***սվան.*** č̣q̇ət-ən- (?) ***«ճխլել».*** քարդիկար ***«գարի և ցորեն (խառնված)» — վրաց.*** kari ***«գարի»*** + diḳa- ***«ցորեն» և այլն։***

*Կան դեպքեր, երբ հայկական և քարթվելական բառերի նմանության բընույթի ճշգրտումը կապված է որոշակի դժվարությունների հետ։ Այսպես, հայերեն հետևյալ բառերին վերագրվում է հնդեվրոպական ծագում, բայց հարցը չի կարելի լուծված համարել, և, հետևաբար, դժվար է ենթադրել քարթվելական բառերի՝ փոխառյալ լինելը. հնարավոր է պատահական զուգադիպություն. հայ.* լեսուլ*—վրաց.* les- *«սրել», մեգր.* las- *«տրորել. լվելուն խառնվարել»,* o-lasir-u *«սրել» (վրաց.-զան.* *les-). ***հայ.*** ծեծ, ծեծել — ***վրաց.*** cec- ***«մանրել», մեգր.*** čač- ***«կալսել, ծեծել» (վրաց.-զան.*** *$c_1ec_1$-). ***հայ.*** ծիլ (ծիւղ. ծիղ) — ***վրաց.*** c̣wel ***«խլուզ, ծանծ», մեգր., ճան.*** c̣u- ***«ծղոտ». հայ.*** ծիծաղ — ***վրաց.*** c- (sl-c-l) ***«ծիծաղ»), մեգր.*** ǯəc-, ǯic-, ***ճան.*** ǯic-, dic-, ***սվան.*** cw- ***«ծիծաղել». (քարթվ.*** *cc-), ***հայ.*** ցիր, ցրել — ***վրաց.*** cer-/cr-, ***մեգր.*** cir-, ***ճան.*** ncor/(n)cir- ***«մաղել» — (վրաց.-զան.*** *car-/cr- ***«ցրել, մաղել»)։***

Մի քանի դեպքում էլ հայերեն բառերի հնդեվրոպական բնույթն ակնհայտ է, բայց նրանց հարաբերությունը քարթվելական բառերի հետ լիովին պարզ չէ. հայ. ձող, ձեղուն (հ.-ե. g'hel-) — վրաց. jel-, մեգր. ja-, ճան. (n)ja-, mja- «չորսու. ծառ». հայ. ճճշել (հ.-ե. *gen- ?) — վրաց. çnex-/çnix- «ճզմել (խաղողը)» մեգր. çinax-, çax- «ճնշել», ճան. çinax- «ճնշել, ճզմել». հայ. ործ(կ)ալ (ուշ շրջանից ավանդված) (հ.-ե. *reug-) — վրաց. rçqw-/rçqaw- «փսխել. ոռոգել», մեգր. [*rčqw-], ճան. nčkw-al- սվան. |šqw-| «թքել» (քարթվ. *rçqw- «փսխել, հեղուկ թափել»). հայ. տիղ (հ.-ե. *dig'h-) — վրաց. tll-, մեգր. tl(j), ճան. mtl-, սվան. tlš- (քարթվ. *tiz-. հմմտ. tiz-wn- «քթթել») և այլն:

Հետևյալ բառերի դեպքում նմանությունը պետք է պատահական համարել, եթե չընդունենք բաղարկություն՝ առաջին դեպքում՝ մեգրելերենի, երկրորդ դեպքում՝ հայերենի համար. հայ. երթալ (հ.-ե. *er-th-) — մեգր. rt- «գնալ» (հմմտ. ճան. xt-, xt-, «գնալ», վրաց. xad- «հանել», xd- «հանել. տեղի ունենալ», սվան. qad-/qd-/qed-/qld- «հանել. գնալ. ատնել» (քարթվ. *qad-/qd-). հայ. խուարծի «ծիլ» (ուշ խուարծիլ «խաշնդեղ». հայ. խու-ից) — վրաց. γwarjll «մոլախոտ, չորություն», մեգր. γurjul- «ժանտախտ. դժբախտություն», ճան. γurjul- «թույն. դժբախտություն» վրաց.-զան. *γwarjl- „Lolium temulentum, որոմ“. հայ. խրտնուլ (հ.-ե. *(s)ker-ից, որևիցե նաև շրանուլ ?) վրաց. kut- «խրտնել, փախչել, ցնցվել», մեգր. kut- «փախչել, հեռալ», ճան. kut- «փախչել, խրտնել» (վրաց.-զան. *kʒt-):

Կան բավականաչափ մեծ թվով հայ-քարթվելական զուգադիպումներ, որոնց հնչյունական ձևերը և իմաստային առնչությունները խոսում են նրանց համար մի ընդհանուր երրորդ աղբյուրի առկայության մասին: Այդպիսի հավանական աղբյուր է ուրարտերենը, բայց կարող են լինել և այլ աղբյուրներ. հայ. գարի — վրաց. keri «գարի». հայ. երկաթ — վրաց., մեգր. (r)kl-na-, ճան. erkina- «երկաթ» (վրաց.-զան. *rkina-. հմմտ. նաև լեզգ. pakl, թաբ. pykl «երկաթ»). հայ. ծայր — վրաց. çwer- «ծայր. մորուք» (հմմտ. մեգր. cwanj-, cwand-, սվան. wёre-, wär(e)- «մորուք». ըստ Աճառյանի՝ վրացերենը փոխառված է հայերենից). հայ. ծեփ, -ոյ — վրաց. çebo- (հմմտ. մեգր., ճան. çabu- «խեժ, սոսինձ (բուսական)». հմմտ. նաև վրաց. çeb-, մեգր., ճան. çab- «սոսնձել»). հայ. ծիր «շրջագիծ» — վրաց. çer- (հմմտ. մեգր., ճան. (n)čar-, սվան. (j)r- «գրել». հմմտ. նաև ակկադ. șirū «եզր» և eșeru(m) «նկարել, գծագրել»). հայ. ծով — վրաց., մեգր. zγwa-, ճան. zγua-, zuγa-, սվան. zuγwa, juγwa-, jγwa «ծով» (քարթվ. *zγwa-. հմմտ. ուրարտ. șue «ծով»). հայ. ծոր, ծորել — վրաց. çur-, մեգր. çur-/çlr-, ճան. (n)çor-/(n)çir- «քամել», սվան. nçur-, nçər- «քամել, զտարկել» (քարթվ. *çur- «քամել»). հայ. կար, կարել — վրաց. kar-/kr-, մեգր. kər-, kir-, ճան. kor-, klr- «կապել». հայ. կորդ «խոպան» — վրաց. kordi «խոպան», ճան. kord- «գունդ, հողակույտ» (հմմտ. ուրարտ. quldi «խոպան, անմշակ» ?). հայ. կր(ի)այ (ըստ Աճառյանի՝ կուր «մակույկ, նավակ» բառից) — վրաց. (r)ku-, kuw-, մեգր. ku- «կրիա» (վրաց.-զան. *rku-) (?). հայ. կուռ. կռել — վրաց. kurlwl «սերտ, հոծ, կուռ», kweri «կռան», kuerwa «կռել» (ըստ Մուրվալյանի). հայ. կուրա, կրտել — վրաց. qwer, մեգր. ʼwar-, ճան. qwa(r)-, սվան. qor- «կրտել» (քարթվ. *qwer-). հայ. պո-լոնի «միջատ» (բրբռ. պոլոնի, պողոնի, բողոնի, բոլոնի, պլոնի, պղոնի, բղոնի, պլո,

բլո, բղո և այլն — վրաց. boboli «մեծ ուռ», ճան. boboli «միջատ». հայ. ջախել, ջախջախել — վրաց. ǰaxeba «բախել, խփել», ճան. ǰax «մուրճով խփել» (և ուդ. цахпесун «ջախջախել», цIахпесун «ծեծել, փշրել, կոտրել»). հայ. սենեակ «սենյակ. խուց. շտեմարան. գանձարան» (> վրաց. senaḳi «խուց») — վրաց. sxwen- «սրահ» մեգր. sxwen(d)-, cxwin(d)- «ախոռ» (վրաց.-զան. *sxwen «տարածք. ձեղնահարկ»). հայ. սունկն (սունգն, սունկ, սունգ, -ոյ) (հմմտ. հուն. σπόγγος «սպունգ», լատ. fungus «սունկ» (ինչ-որ ընդհանուր աղբյուրից) — վրաց. մեգր., ճան. soḳo- (> հայ. բրբռ. սոկոն), սվան. soḳ(w)- «սունկ» (հմմտ. բայլ. зокl, բեժ., ղունզ. зокlo, ցեզ. зикly). հայ. վաղ, վաղիւ «վաղը», վաղվաղել «շտապել» — վրաց. xwal «վաղը». հայ. փշուր, փոշի, փոշկ «մրիկ», փուխր — վրաց. pšari «փոշի», pašari «փխրուն», pušwa «քանդել, խորվել» և pxura «ջնջել. խլել. քանդել», pxuna «փշրել, կոտրատել» և այլն: Հավանաբար մի ընդհանուր աղբյուր ունեն նաև հայ. բրբռ. կոտ «փայտե աման, մի չափ. գանգ» և վրաց. ḳod- «սորուն նյութերի աման», մեգր. ḳod- «փայտե աման», ճան. kod- «սորուն նյութերի աման» բառերը (վրաց.-զան. *ḳod-. հմմտ. *kod- «կտրել, հատել»):

Այստեղ մենք կանգ չենք առնի հայերենի և քարթվելական լեզուների իրանական փոխառությունների վրա: Նշենք, որ մի շարք դեպքերում քարթվելական բառերը փոխառվել են հայերենի միջոցով: Այսպես, Բուդաղն վրաց. spilenǰi, մեգր. linji «պղինձ» բառերի աղբյուրը համարում է հայ. պղինձ-ը (հին ձևը *pilinj), որ փոխառված է համարվում մեդերենից (մարերենից): Կան դժվար բացատրելի դեպքեր. այսպես, իրանական աղբյուրից պետք է փոխառված լինի վրաց. parto «լայն» բառը (հմմտ. ավեստ. pərəθu- «լայն», <հ.-ե.*pḷt(h)- «լայն և հարթ»), բայց պարզ չէ հարթ բառի հարաբերությունը համապատասխան հ.-ե. արմատի և իրանական ձևերի հետ[8]. անմիջական հ.-ե. ծագում ունենալու դեպքում պետք է բացատրվեր *l>r փոփոխությունը (pḷth- >*հարթ. *plǝten- ձևից է ծագում հայ. լայն բառը), իսկ իրանական աղբյուրից ծագելու դեպքում չպետք է լիներ *p>h փոփոխությունը, եթե չենթադրենք արտակարգ հին փոխառություն:

## գ) ՀԱՅԵՐԵՆԸ ԵՎ ԱՐԵՎՄՏԱԿՈՎԿԱՍՅԱՆ (ԱԲԽԱԶ-ԱԴԸՂԵԱԿԱՆ) ԼԵԶՈՒՆԵՐԸ

Աբխազ-ադըղեական լեզուների քանակը մեծ չէ. այս ընտանիքի մեջ մտնում են աբխազերենը, աբազիներենը, ուբիխերենը, ադըղեերենը և կաբարդիներենը: Սրանցից առաջին երկուսն իրար հետ և վերջին երկուսն իրար հետ կազմում են մերձավոր խմբեր, որոնց նկատմամբ ուբիխերենը միջակա դիրք է գրավում:

Աբխազ-ադըղեական լեզուները տարածված են Սև ծովից հյուսիս-արևելք ընկած շրջանում՝ Աբխազական ու Կաբարդինա-բալկարական ինքնավար հանրապետություններում և Ադըղեական ու Կարաչայ-չերքեզական ինքնավար

---

[8] Ինչպես նշվեց այս հատվածի 2-րդ ծանոթության մեջ, Հ. Ֆոգտը վրաց. բառը փոխառություն է համարում հայերենից:

մարզերում։ Աբխազերենի վերջին մնացորդները (երկու տասնյակ խոսողներ) գտնվել են Թուրքիայում։

Աբխազ-ադըղեական լեզուները հնչյունական առումով աչքի են ընկնում բաղաձայնների հարստությամբ և ձայնավորների աղքատությամբ։ Ուբըխերենի բաղաձայնական կազմը ամենահարուստն է աշխարհում՝ 82. այս ընտանիքում բաղաձայնների ամենափոքր քանակն ունի կաբարդիներենը՝ 47։ Ձայնավորների քանակը, բացառությամբ կաբարդիներենի, 2—3 է. կաբարդիներենն ունի 7 ձայնավոր։ Տարբերվում են քմայնացած և չքմայնացած, շրթնայնացած և չշրթնայնացած, ձայնածերպային (գլոտալ) և ոչ ձայնածերպային բաղաձայններ։ Բացի սուլական ու շշական բաղաձայններից, կան նաև միջին տիպի՝ սուլա-շշական բաղաձայններ։

Բաղաձայնների առատության հետ կապված՝ աբխազ-ադըղեական լեզուները աչքի են ընկնում ձևույթների կարճությամբ (սովորաբար մեկ բաղաձայն՝ միացած հաջորդ ձայնավորի հետ). արմատները հիմնականում միավանկ են։ Զարգացած է նախամասնիկավորումը։ Հարուստ է բայական և աղքատ՝ անվանական թեքումը։ Աբխազական խումբը չունի հոլովում, ադըղեականն ունի 3—4 հոլով (այդ թվում՝ էրգատիվ)։ Բային հատուկ են բազմադիմությունը և ուղղվածության (վերսիայի) կարգը, հնարավորական եղանակն ու պատճառական սեռը, որոնք արտահայտվում են նախամասնիկներով. մնացած կարգերն արտահայտվում են վերջամասնիկներով։ Աբխազական խմբի բայն ունի նաև դասային տարբերակում, ինչպես արևելակովկասյան լեզուներում։

Աբխազ-ադըղեական լեզուները, հատկապես աբխազերենը, հայերենի հետ շփման մեջ են եղել հին ժամանակներից սկսած։ Եթե հայասերենը իրոք հայերենի բարբառներից մեկն է եղել, ապա նրա և արևմտակովկասյան լեզուների շփման մասին է խոսում Հայասայի Aripša քաղաքի անվան -pša -ն (եթե, իհարկե, այստեղ -ša -ն այլ դեպքերում հանդես եկող -ša ածանցը չէ), որ համահունչ է ադըղ., կաբ. псы «ջուր» բառին։ Հնարավոր է նաև Arḫita քաղաքանվան մեկնությունը աբխազ-աբազինական հիմքի վրա. համեմ. աբխ. арха, աբազ. рхъа «հարթություն» և տեղանունների -тIa «տեղ» բաղադրիչը [Джаукян, 1976, 266—267]։

Հայ-աբխազ-ադըղեական զուգադիպումների առաջին շերտը կազմում են այն բառերը և բաղադրիչները, որոնք արդյունք են հեռավոր ցեղակցության (եթե աբխազ-ադըղեական լեզուները պատկանել են նոստրատիկ ընդհանրությանը), հնդեվրոպա-աբխազ-ադըղեական հնագույն շփումների և «տարրական ցեղակցության» (մանկական բառեր, բնաձայնություններ, ձայնարկություններ)։

Նոստրատիկ բնույթի աբխազ-ադըղեական բառեր կան հենց համակովկասյան այն միավորների մեջ, որոնց քարթվելական զուգահեռների նոստրատիկական ծագումը կարելի է որոշակի համարել. 1) աբխ.-ադ. гвы «սիրտ» — քարթվ. gul- «սիրտ» (նոստր. *golHa «սիրտ»). 2) աբխ.-ադ. мза «լուսին» — քարթվ. $mz_1e$- «արև» (նոստր. *mʌ(z)ʌ «լուսավոր. արև». համեմ. հայ. ամիս). 3) աբխ.-ադ. ма «նա, այն» — քարթվ. ma «նա, այն» (նոստր. *mu «այն»). 4) աբխ.-ադ. ма «մի՛» — քարթվ. ma «մի՛» (նոստր. *mä «մի՛». համեմ. հայ. մի՛)։ Նոստրատիկ բնույթի են նաև աբխազ-ադըղեական լեզուների՝ քարթվելականների հետ ունեցած հետևյալ զուգադիպումները՝ 1) աբխ.-ադ. д- «մեծ, շատ» (աբխ. а-ду, աբազ. ду «մեծ»,

ուբխ. пэ-да, ադըղ. дэдэ, կաբ. дыд «շատ») — քարթվ. did- «մեծ» (նաար. *did «մեծ». հմմտ. հայ. առ- «մեծ» 'առ-եզերք, առ-կին). 2) աբխ.-աբ. м(а)тl «օձ» — քարթվ. matl- «որդ» (նաար. *mʌtʌ «որդ». հմմտ. հայ. մաթղ). 3) աբխ.-աբ. лакIв «լիզել» — lok- «լիզել» (նաար. *laka «լիզել». հմմտ. հայ. լակել)։

Բացի սրանցից, կարելի է նշել աբխազ-ադըղեական և հնդեվրոպական զգալի թվով զուգահեռներ՝ մասամբ ընդհանուր նոստրատիկ բնույթի, մասամբ հատկապես այդ լեզուների հատուկ։ Բերենք այս կարգի բառային այն զուգադիպումները, որոնք ներկայացված են նաև հայերենում. 1) հայ. ած-ել (հ.-ե. *ag'-) — աբխ. (а)гара, աբազ. (а)гара «տանել». 2) հայ. աւազ (հ.-ե. *(bh)səbh-' *bhes-ից) — աբխ., աբազ. саба, ադըղ сап, կաբ. сабэ «փոշի». 3) հայ. երկու (հ.-ե. *duōu) — աբխ. а-ɯу-ба, աբազ. гIу-ба, ուբխ. тIкъуа, ադըղ. тIуы, կաբ. тIуу «երկու». 4) հայ. ընդ «հետ, դիմաց» (հ.-ե. *anti) — ուբխ. анцуъ «առաջ». 5) հայ. թաց, թանալ (հ.-ե. tā-) — աբխ. а-тIıтIа, աբազ. тIатIа «մեղմ, թույլ», ուբխ. (а-)тIы «հեղուկ, հոսուն. նոսր», ադըղ., կաբ. тIатIа «փափուկ, թույլ». 6) հայ. բրբռ. լոք «մեծ քայլ» (հ.-ե. *lek-) — աբխ. а-щапIы, աբազ. щапIы, ուբխ. лъа, лъакъва, ադըղ. лъэ, лъакъо, կաբ. лъэ, лъакьуэ «ոտք» (նաար. *l(a)ka «ոտք»). 7) հայ. կով (հ.-ե. *gᵘou-) — կաբ. гуу «գուլ» և ուբխ. гума, ադըղ. чэмы, կաբ. жом «կով». 8) հայ. ձիւն (հ.-ե. *g'hei-) — աբխ. а-жын, աբազ. гъны, ադըղ. кIымф, կաբ. щIымахуэ «ձմեռ». 9) հայ. ձոր (հ.-ե. *g'heu-?) — աբազ. кIвары «ձոր». 10) մ. հայ. մանչ (հմմտ. մանուկ, մանր) (հ.-ե. *men-) — աբխ. а-мачI, ուբխ. мычIы, мэчI, ադըղ. мачIэ, կաբ. мащъэ «փոքր, աննշան». 11) հայ. նա, այն, ն, անդ (հ.-ե. *n-) — ուբխ. ана-н «այնտեղ». 12) հայ. նու «հարս» (հ.-ե. *snusós) — ադըղ., կաբ. нысэ «հարս» (հմմտ. նաև աբխեզակովկասյան և քարթվելական ձևերը). 13) հայ. սիսեռն (հ.-ե. *k'ık'er-, *k'eık'er-) — աբխ. а-кIыркъвыд, աբազ. кIыркIылаш, кIыркIырлаш (բրբռ.) «սիսեռ». 14) հայ. տալ (հ.-ե. *dō-) — աբխ. а-тара, աբազ. а-т-ра, ուբխ. тэ, ադըղ., կաբ. тын «տալ». 15) հայ. ցախ (հ.-ե. *(s)k'ăkhā) — աբխ. а-цIааџIла, աբազ. цIах, цIагIта «կեչի» (?)։ Այստեղ պետք է հատկապես նշել նաև կլասամանիկական կամ կլասքնաձայնական բնույթի այնպիսի զուգադիպումներ, ինչպիսիք են՝ 15). հայ. ճան «տատ» (հ.-ե. *(H)an-) — աբխ. ан, աբազ. аны, ուբխ. нэ, ադըղ. ны, կաբ. анэ «մայր». 16) հայ. կոկորդ (հ.-ե. *gᵘer-) — աբխ. а-кIыркIы, աբազ. къыркъы «կոկորդ»։ Հմմտ. կակազ բառը, որ թերևս ծագում է իրան. աղբյուրից, իր կրկնությամբ թաքնված բնաձայնությունն ունի և այս առումով նման է ադըղ. къыкъы, կաբ. къыкъ «կակազ» բառերին։

Զգալի թիվ են կազմում հայերենի և աբխազ-ադըղեական լեզուների բնաձայնական, մանկական և ձայնարկական տիպի բառերի զուգադիպումները, ընդ որում հայերենի այս կարգի մի շարք բառեր գալիս են հնդեվրոպական մակարդակից. հայ. բրբռ. դադր «հայրիկ», դադա, դադո, դադե «քույր» (հ.-ե. *dhē-dh(ē)-) — աբխ. ди(а) «մայրիկ», աբազ. дада, կաբ. дадэ «պապ». հայ. կկու (հ.-ե. *kuku-) — աբխ. а-куку, աբազ. кIвыкIва ադըղ. кукку, կաբ. кIыгуу-гу «կկու». հայ. կռունկ (հ.-ե. *ger-, նաար. *karʌ/kurʌ «կռունկ») — ադըղ. къэрэу, կաբ. кьру, ադրբ. աբազ. къырлю, кьру (փո-

խոստովանյո՞ւն). հայ. յոպոպ (հ.-ե. *epop-, *opop-) — աբխ. абжьоу-бжьыъкь, աբազ. уапIуап «հոպոպ». հայ. բրբռ. նան(-ա, -ե, -ի) «մայր» (հ.-ե. *nana, *nena և այլն) — աբխ. нан «մայրիկ», աբազ. нына, ադըղ. нэнэжъ «տատ», կաբ. нанэ «տատ. մայրիկ, պառավ կին». հայ. փուք, փուչ- (փչել) (հ.-ե. *phu-) — ադըղ., կաբ. епщэн «փչել» (пща «փչի՛ր») և այլն։ Հմմտ. նաև հայ. խռալ, խռխռալ և աբխ. ахырхырбжъ «խռխռոց». հայ. բզեզ, բզզալ և աբազ. быж «բզեզ» և այլն։

*Անցնելով երկուստեք կատարված փոխառությունների քննությանը, նշենք, որ դրանց թիվը մեծ չէ և զգալիորեն զիջում է հայ-քարթվելական և, ինչպես կտեսնենք, հայ-նախյան-դաղստանյան փոխադարձ փոխառությունների քանակին։*

*Հայերենից աբխազ-ադըղեական լեզուների կատարած փոխառությունների թվին են պատկանում թերևս հետևյալները.* հայ. արծաթ — աբխ. арадзны, аразны, աբազ. рызна «արծաթ» (ուբխ. дэсвэны, ադըղ. тыжьын, կաբ. дыжьын ձևերի կողքին)[9]. հայ. ափսէ (< հուն. ἀψίς) — ադըղ. апс «փայտե աման» [**Шагиров**, 1977, 62]. հայ. գերի — աբազ. гъар, կաբ. гъер «գերի», այլև աբխ. а-гъар «աղքատ», ուբխ. гъыр, ադըղ. гъер «բանտարկյալ» (հմմտ. նաև աբխ. (а)гъэры «ստրուկ, ճորտ»). հայ. գիշեր (հ.-ե. *u̯eikero-՝ *u̯ekero-ի կողքի՞ն) — ադըղ. чэщы, կաբ. жэщь «գիշեր» (համընկնում են ավելի հին джэщ, жэшырь ձևերը). հայ. կաչկաչ — աբխ. а-кIакIач «կոկոչ», աբազ. բրբռ. кIакIачI «ծաղիկ» (վրացերենի qaqačo-ի միջնորդությամբ). հայ. կիր (< սեմ). — աբխ. а-кIыр «կիր» (վրաց. ḳiri-ի միջնորդությամբ). հայ. որբ (հ.-ե. *orbho-) — աբխ. а-иба, աբազ. йыба, կաբ. ибэ «որբ»։ Հնարավոր է նաև, որ հայերենը լինի վրաց. gomi «գոմ», սվան. gwemi- «մսուր», կաբ. гуэн, ադըղ. куэны «մսուր, ամբար», օս. gon, gom «մսուր, ամբար» բառերի աղբյուրը, եթե, մանավանդ, հայ. բառը հ.-ե. ծագում ունի[10]։

*Իր «Հայերեն արմատական բառարանում» և «Հայոց լեզվի պատմության» մեջ Հ. Աճառյանը նշում է հայերեն միայն մեկ բառ, որի աղբյուրը կարող են լինել արևմտակովկասյան լեզուները՝ հունաբան հայերենում գործածված* եզ *«մեկ» (այստեղից* եզակի*). հմմտ. աբխ.* з-ны *«մի անգամ», ուբխ.* зэ, за, *ադըղ., կաբ.* зы *«մեկ» (հմմտ. նաև ադըղ.* е-жъ, *կաբ.* е-зых *«ինքը»)։ Սակայն այս բառն էլ Հ. Պեդերսենը փորձել է բխեցնել հ.-ե.* *sem-g'h- *ձևից, որ ընդունել է նաև Յ. Պոկոռնին։ Ըստ Հ. Աճառյանի՝ այն փոխ է առնվել հյուսիսային հայկական տարաեռ միջավայրում և օգտագործվել հունաբան հեղինակների կողմից։ Եթե այս ենթադրությունը ճիշտ է, ապա հնարավոր է նաև այլ բառերի արևմտակովկասյան ծագումը. հմմտ. հայ.* պիշ, պշնուլ *(բրբռ.* պլշել, պլզել *«ակնապիշ նայել»,* բլշանալ *«վառ տեսնել») և աբխ.* а-пшра, *աբազ.* (а)пшра, *ուբխ.* плъэ, *ադըղ., կաբ.* плъэн *«նայել». հայ.* շ/լշ-*ով ձևերը լավ են բացատրվում արևմտակովկասյան-*

---

*[9] Այս բառը տարածված է նաև մյուս կովկասյան լեզուներում, և հետազոտողները ենթադրում են հայկական աղբյուր. Հնարավոր է ենթադրել նաև իրանական աղբյուր՝ մանավանդ 3-ով ձևերի համար։*

*[10] Արմատը կա նաև կովկասյան այլ լեզուներում։ Վ. Ի. Աբաևը* [**Абаев**, ИЭСОЯ,1,524] *և Ա. Կ. Շագիրովը* [**Шагиров**, *1, 112*] *հիշատակում են այս բառերը՝ առանց նշելու հայերենը. Հ. Աճառյանը [ՀԱԲ, $I^2$, 575] վրացերեն բառը փոխառություն է համարում հայերենից։*

յան ձևերի սկզբնական ընտրությամբ։ Հնարավոր է նաև հայ. սեամ. (սեմ-, շեամ, շեմ) բառի աբխազա-ադըղեական ծագումը. Հմմտ. աբխ. а-щвхымс, швхъымса «շեմք», թեև նմանությունը կարո՞ղ է և պատահական լինել։

Մի շարք դեպքերում աբխազա-ադըղեական ձևերը զուգահեռներ ունեն կովկասյան նաև այլ լեզուներում, և միշտ չէ, որ հեշտ է որոշել հայերենի ու այդ լեզուների ընդհանուր փոխհարաբերությունը՝ հայ. արագագ (երագագ) «որ ապացանց, թակարդ» — աբխ. aparya «թակարդ, ծուղակ» (հմմտ. լեզգ. рикьар, թաբ. рукьар). հայ. բակ — ադըղ. бак (< կաբ.?), կաբ. бэкх «փարախ» (հմմտ. նաև վրաց. beḳi «փարախ, կենդանիների բակ», ճան. baḳi «մարդ», այլև դունգ. бакIи «փարախ», ավար. бокь, անդ. бекь «գոմ, փարախ»)[11]. հայ. զուքան, զուքայ — աբխ. акуатIана, ադըղ. кIватан (բառը կա նաև քարթվ. և դաղստանյան լեզուներում. Հնարավոր է փոխառություն մի երրորդ աղբյուրից). հայ. խոզ — աբխ. а-хъва, ադըղ. хъва, ուբիխ. хъва, ադըղ. къо, կաբ. кхъуэ «խոզ» (արմատը կա և աբխազակովկասյան և քարթվելական լեզուներում. Հմմտ. նաև սեմական լեզուները. ընդհանրությո՞ւն). հայ. մոծակ — աբխ. амаца, ադըղ. маца, ուբիխ. мацIэ, ադըղ. мацI, կաբ. мацIэ «մորեխ». բառը կա նաև հնդեվրոպական և դաղստանյան լեզուներում, ընդ որում Հ. Աճառյանը հայերենը բխեցնում է դաղստանյան աղբյուրից). հայ. փշուր (փշրել), փուխր (փխրել) — ադըղ. пшахъэ, կաբ. пшахъуэ «ավազ» (հմմտ. նաև վրաց. pxvieri «փխրուն» pxvna- «փշրել»)[12]. հայ. տափ, տափակ (< իրան.?) — կաբ. тафэ «տափաստան» (արմատը կա նաև քարթվելական և դաղստանյան լեզուներում. Աճառյանը քարթվելականի համար ենթադրում է փոխառություն հայերենից, կովկասյան մյուս ձևերը չի հիշատակում). հայ. խուզ (խզել), խոյզ (խուզել) — աբխ. a-хIызба, ադըղ. хIвсна «դանակ» (հմմտ. նաև ավար. хъвазе «հնձել», անդ. бихъузу, ցեզ. (б-)ехваза և այլն «կտրել»). հայ. զզուել — աբխ., ադըղ. заз, ուբիխ. зэзы, կաբ. зэз «մաղձ» (հմմտ. վրաց. zezwa «սիրտը խառնել», որտեղից, ըստ Աբուլաձեի, ծագում է հայերեն բառը). հայ. ցուլ (հ.-ե. ?) — աբխ. a-цв, ադըղ., ուբիխ. чвы, ադըղ. цвы, կաբ. вы «ցուլ» (արմատը կա նաև դաղստանյան լեզուներում) և այլն։

Մի շարք համընկումներ կամ պատահական են, կամ հնդեվրոպական լեզուներից աբխազակովկասյան լեզուների հնագույն փոխառությունների հետևանք. հայ. արգել (հ.-ե. *arek-) — աբխ. аркра, ադըղ. аркIра «փակել» հայ. ափն — աբխ. а-пхxьа «ափ». հայ. բզկտել (բրբռ. բզիկ) — ադըղ. бзыгъ, կաբ. бзыгъэ «կտոր». հայ. գետին (հ.-ե. *u̯edeno-. հմմտ. խեթ. utne) — աբխ. адгъыл «երկիր» (եթե կապ չունի քարթվ. *tiqa- «գետին. կավ» բառի հետ, որ հին փոխառություն է հ.-ե. աղբյուրից՝ *dheg'hom). հայ. կնճիռն — աբխ. акъIыра, ադըղ. айдьыра (բրբռ. кIачIчIа) «կնճիռ». հայ. մեծ (հ.-ե. *meg'-) — ադըղ. բրբռ. мачъы «մեծ» (մյուս բարբառի ду = աբխ. (а)ду ձևերի կողքին)։

---

[11] Հ. Աճառյանը հայերենը բխեցնում է հարավկովկասյան աղբյուրից, որ հավանական է։ Թերևս այստեղից են և մյուս լեզուների բառերը։

[12] Հ. Աճառյանը բխեցնում է քարթվելական աղբյուրից, սակայն հմմտ. նաև ուրարտ. ipḫu- «ջարդել, կործանել»։

## դ) ՀԱՅԵՐԵՆԸ ԵՎ ԱՐԵՎԵԼԱԿՈՎԿԱՍՅԱՆ (ՆԱԽՅԱՆ-ԴԱՂՍՏԱՆՅԱՆ) ԼԵԶՈՒՆԵՐԸ

*Արևելակովկասյան լեզուների մեջ տարբերում են, բացի նախյան խմբից, նաև դաղստանյան լեզուների 4 խումբ՝ 1) ավարա-անդի-ցեզյան, 2) լակյան, 3) դարգիական և 4) լեզգիական։ Այս լեզուները տարածված են Չեչեն-Ինգուշական ԱՍՍՀ-ում, Դաղստանի ԱՍՍՀ-ում և հարակից որոշ շրջաններում։*

*Հնչյունական առումով արևելակովկասյան լեզուները միատիպ չեն. եթե նախյան և ավարա-անդի-ցեզյան լեզուները ձայնավորներով հարուստ են և բաղաձայններով աղքատ, ապա լեզգիական խմբում գոյություն ունի հակառակ հարաբերությունը, այսինքն՝ տարբերությունը փոխվում է հյուսիս-արևմուտքից հարավ-արևելք։ Նույն ուղղությամբ փոխվում է թեքականության և կցականության հարաբերությունը՝ պակասում են թեքական տարրերը։ Արևելակովկասյան լեզուները հարուստ են հոլովներով. լակերենում սրանց թիվը հասնում է 40-ի, թաբասարաներենում՝ 48-ի։ Ուղղական կառույցի կողքին կան նաև էրգատիվ, տրական (զգացական բայերի հետ) և այլ կառույցներ։ Հաշվում են երկուսից մինչև ութ քերականական դաս. տարածված են հատկապես տղամարդկանց, կանանց, կենդանիների և իրերի դասերը։*

*Արևելակովկասյան լեզուները ըստ խմբերի դասավորվում են հետևյալ կերպ.*

*1) Նախյան խումբ՝ չեչեներեն, ինգուշերեն, բացբիերեն.*

*2) ավարա-անդի-ցեզյան՝ ա) ավարերեն, բ) անդիերեն, բոթլիխերեն, գոդոբերերեն, տինդերեն, կարատերեն, ախվախերեն, չամալերեն, բագուլալերեն, գ) ցեզերեն (դիդոերեն), խվարշերեն, բեժիտերեն, ղունզիբերեն, ղինուխերեն.*

*3) լակերեն.*

*4) դարգերեն.*

*5) լեզգիերեն, թաբասարաներեն, ագուլերեն, ռուտուլերեն, ցախուրերեն, բուդուխերեն, կրիզերեն, ուդիերեն, հինալուղերեն, արչիերեն։*

*Սրանց շփումը հայերենի հետ նույն ինտենսիվությունը չի ունեցել։ Ամենից ավելի տևական և ուժեղ պետք է լիներ հայերենի շփումը հավանաբար լեզգիական խմբին պատկանող աղվաներենի հետ, որի մնացորդը, թերևս, ուտիերենն է։ Ցավոք սրտի, աղվաներենի լեզվական մնացորդները սակավաթիվ են, աղվանական այբուբենով գրված փոքրաքանակ արձանագրությունները էլ դեռևս լիովին հավաստի ընթերցում չունեն։*

*Հետագա քննության մեջ մենք կանգ կառնենք՝ նախ՝ արևելակովկասյան-հայկական (այդ թվում՝ նախյան-հայկական), ապա, մասնավորապես, ուտիա-հայկական ընդհանրությունների վրա։*

*Արևելկովկասա-հայկական ընդհանրությունների առաջին շերտը կազմում են այն բառերը, որոնք չի կարելի անմիջական կամ միջնորդված փոխառության արդյունք համարել։ Դրանք պետք է բացատրել հնդեվրոպական և արևելակովկասյան լեզուների «տարրական» ցեղակցությամբ և, թերևս, հնագույն շփումներով։ Եթե արևելակովկասյան լեզուները ևս պատկանել են նոստրատիկ ընդհանրությանը, ապա հայերենի հնդեվրոպական ծագման և արևելակովկասյան լեզուների փոխառությամբ չբացատրվող բառային ընդհանրությունները պետք է լինեն հեռավոր ցեղակցության արդյունք։ Կարելի է նշել, մասնավորապես, արևելակովկասյան լեզուների բառապաշարի այնպիսի*

տարրեր, որոնք ունեն նոստրատիկ ընդհանրությանը պատկանող հնդեվրոպական և քարթվելական լեզուների հետ օրինաչափ համապատասխանություններ։ Այսպես, վերևում բերված համակովկասյան բառային ընդհանրությունների մեջ կան այնպիսիները, որոնք ակնհայտ նոստրատիկ զուգահեռներ ունեն՝ որոշ դեպքերում ներկայացված համապատասխան հայերեն բառերով և արմատներով. 1) արլ.-կովկ. да-кIв — հար.-կովկ. guli «սիրտ» (Նոստր. *golHa «սիրտ»). 2) արլ.-կովկ. мадз «լուսին» — հար.-կովկ. mze «արև» (Նոստր. *mʌ(z′)ʌ «լուսավոր. արև». Եթե Նոստր. ձևը ճիշտ է վերականգնված, և արլ.-կովկ. ձևը իրոք կապ ունի հար.-կովկ. ձևի հետ, ապա կարելի է նշել հ.-ե. *mē(n)s- «լուսին. ամիս» ձևի հետ ունեցած նմանությունը. այստեղից հայ. ամիս բառը). 3) արլ.-կովկ. ма «նա, այն» — հար.-կովկ. ма «նա, այն» (Նոստր. ma «այն». Համմտ. նաև ուրալյան. mani «նա»). 4) արլ.-կովկ. ma «մի՛» — հար.-կովկ. ma «մի՛» — հ.-ե. mē «մի՛» ( > հայ. մի՛) (Նոստր. *mä «մի՛»)։ Նոստրատիկ զուգահեռներ ունեն նաև արևելակովկասյան և հարավկովկասյան այնպիսի ընդհանուր ձևեր, ինչպիսիք են՝ արլ.-կովկ. гург «կլոր» — հար.-կովկ. grgв «կլոր» (Նոստր. *gUl′ʌ «կլոր. գունդ». կապակցով այստեղ է հարակցվում հ.-ե. *ghōl-ը, որտեղից հայ. գըլուխ). 2) արլ.-կովկ. чIам- — հար.-կով. ч|ам- «ամել» (Նոստր. *čʌʕmʌ «ամել»)։

Այժմ կանգ առնենք հայերենի և հատկապես արևելակովկասյան լեզուների այնպիսի ընդհանրությունների վրա, որոնք կարելի է հանգեցնել նոստրատիկ ձևերի։ Բացի վերևում բերվածներից (հայ. ամիս — արլ.-կովկ. мадз «լուսին», հայ. մի՛ — արլ.-կովկ. ма «մի՛», հայ. գլուխ — արլ.-կովկ гург «կլոր»), նշենք հետևյալ հնարավոր զուգադիպումները. 1) հայ. բարձր (հ.-ե. *bherg′h-) — նախ. бардз «բլուր, բարձունք» (փոխառությո՞ւն), չեչ., ինգ. берд «ափ, ձորափ», ավար. борхалъи «բարձունք» (Նոստր. *berg(i) «բարձր») (?). 2) հայ. եղն (հ.-ե. *el-en-) — ցեզ.՝ ցեզ. лъид, ղունզ. лад, բեժ. лед «եղնիկ, եղջերու» (Նոստր. *ʔili «եղնիկ, եղջերու»)․ 3) հայ. գրբռ. լոք «մեծ քայլ» (հ.-ե. *lek-) — լեզգ.՝ թաբ. лик, ագուլ. лек «ոտք» (Նոստր. *l(a)ḳa «ոտք»). 4) հայ. կեր, կուր, կոկորդ (հ.-ե. *gʷer(ə)-) — չեչ. къамкъарг, ինգ. къамарг, բացբ. къанкърат «կոկորդ», չեչ., ինգ. къурд «կում» և, թերևս, ավար. мукъулунъ, լակ. къакъари, դարգ. кьаьа, թաբ. кьаркьар, արչ. кьакьара «կոկորդ» (Նոստր. *gurʌ «կլանել»). 5) հայ. կին (հ.-ե. *gʷen-) — ցեզ.՝ խվար. гъине, ցեզ. гьанаби «կին». (Համմտ. նաև դարգ. хъунул, կրիզ. хыныб և այլն) (Նոստր. *küni «կին»). 6) հայ. կռունկ (հ.-ե. *ger-) — ավար., անդ. кьункьра, լակ. кьурукь, кьункь, «կռունկ» (Նոստր. *karʌ/kurʌ «կռունկ»). 7) հայ. մաղել, մղ-աղաց (հ.-ե. *mel-) — ցեզ.՝ ցեզ. мелъи, խվար. мелъа, գին. милъе և այլն «կամ». Համմտ. նաև հայ. մեղմ, մեղկ (նույն արմատից) — չեչ., ինգ. мела «տաք, թույլ» (Նոստր. *molʌ «մանրել, ջարդել»). 8) մառախուղ, մռայլ (հ.-ե. *mer-) — նախ.՝ չեչ. марха, ինգ. морх «ամպ» (Նոստր. *mArʌ «բիծ. կեղտոտ») (?). 9) հայ. մեղր (հ.-ե. *mel-՝ *medhu-ի կողքին) — նախ.՝ չեչ., ինգ. моз, բացբ. моцI «մեղր» (Նոստր. *maiλʌ «մեղր») (?). 10) հայ. մոր, մորենի (հ.-ե. *moro- «մոշ») — նախ.՝ չեչ. мер «մորի, մոշ». 11) հայ. մա(ր)շել (հ.-ե. *mer-, *mer-s-) — լակ. муърш бан «մանրել» (փոխառությո՞ւն), այլև նույն արմատից հայ. մորչ (մորճ, մորջ) «ճյուղ, բող-

րոջ» — չեչ. маргIал «ճիպոտ, բողբոջ» (Նոստր. *mur «ջարդել, մանրել») (?). 12) հայ. սար (հ.-ե. *k'er(ə)- «եղջյուր, գլուխ, բարձունք») նախ.՝ չեչ., ինգ., корта «գլուխ», չեչ. кур «եղջյուր» (Նոստր. *KErʌ «եղջյուր»). 13) հայ. տ- «ժխտական մասնիկ»՝ տ-գեղ (հ.-ե. *de-, *dē-, *dō) — ավար. до-б (-в, -л, -й), ցեզ. да, լակ. та, լեզգ. атIа, тIе «այն. նա» (Նոստր. *da). 14) հայ. տատն, տուտն «պոչ, վերջավորություն» (հ.-ե. *dud-?) — լեզգ. ттут «պոչ» (Նոստր. *duλʌ «վերջավորություն»). 15) հայ. քար (հ.-ե. *ker-?) — չեչ. кхēра, ինգ. кхера, кхер «քար» (համմ. և դարգ. къаркъ, լակ. чаур «քար» և այլն ?) (Նոստր. *karʌ «ժայռ, սեպաձև բարձունք»)։

Բացի վերևում բերվածներից, կարելի է նշել հայ-արևելակովկասյան մի շարք ընդհանրություններ, որոնք պետք է բացատրել հնդեվրոպա-արևելակովկասյան տարածքային կապերով (եթե արևելակովկասյան լեզուները պատկանել են նոստրատիկ ընդհանրությանը և գտնվել հնդեվրոպականների հետ հեռավոր ցեղակցական կապերի մեջ) և հնագույն լեզվական շփումներով։ Ստորև բերվող բառերի մեջ հնարավոր են նաև որոշ թվով պատահական զուգադիպումներ, եթե մանավանդ նկատի առնենք որոշ համեմատվող արմատական ձևերի միավանկությունը. 1) հայ. ակն (հ.-ե. *oku̯- «տեսնել. աչք») — դաղ.՝ ցեզ. иквада, լակ. ккаккам (ккавккун), լեզգ. аккун, թաբ. агуз, արչ. akkyc «տեսնել» և այլն և ուդին. гвакIкIа, չամ. гьачIа և այլն «աչք». 2) հայ. աղաւնի (հ.-ե. *al-, *alōu-, *albho- «սպիտակ») — ցեզ.՝ ցեզ. гIалукIа, խվար. алукIа և ցեզ. элбо, դին. олбо, դանդ., բեժ. илба «աղավնի» (փոխառություն հ.-ե. որևէ լեզվից). 3) հայ. անիծ (հ.-ե. *knid-s «անիծ, ոջիլ») — դաղ., ավար. нацIцI, անդ. ноцIцIи, ցեզ. ноци, լակ. нацI, դարգ. нер, թաբ. ницц, արչ. нацъ «ոջիլ» և լեզգ., ագուլ. нетI, թաբ. нитI, ուտ. натъI «անիծ» և այլն. համմ. նաև չեչ. меза «ոջիլ» (և неца «ցեց» ?). 4) հայ. արմ(ն), արմատ (հ.-ե. *er- «շարժվել, բարձրացնել», թե՞ *u̯(e)rād- «ճյուղ. արմատ») — նախ.՝ չեչ. орам «արմատ». 5) հայ. դու (հ.-ե. *tu- «դու») — ավար.-անդ.՝ ավար. ду-ца «դու» (էրգ. հ. мун-ի), անդ. ду- (2-րդ դեմքի անձն. դեր. թեք հոլովների հիմք). 6) հայ. երկան (հ.-ե. *gu̯er- «ծանր», *gu̯rāu- «ջրաղաց») — դաղ.՝ խվար.՝ гъемер «անիվ», դանդ. гъабур, լակ. гъара, դարգ. урхав, լեզգ. регъв, թաբ. раьгъин և այլն «ջրաղաց» (?). 7) հայ. էշ (հ.-ե. *ek'u̯o-, *eik'u̯o- «ձի») — դաղ.՝ լակ. кквацца, դարգ. газа (гадза, гвадза, кквацца), արչ. гвацци «զամբիկ» (?). 8) հայ. ընդ «դիմաց, փոխարեն. հետ» (հ.-ե. *ant- «առաջակողմ, ճակատ», anti «դիմաց»)՝ — դաղ.՝ ավար., արչ. нодо, լակ. нента, դարգ. антта (քյուր. анда). թաբ. унтI և այլն «ճակատ». 9) հայ. թակ (հ.-ե. *(s)teg- «ձող, փայտ, գերան») — ցեզ.՝ բեժ. тIо(ъ)а, тIогIа «մարճ» (?). 10) հայ. թանալ, թաց, այլև թրջել, թրմել, թրիք, թանաք (հ.-ե. *tā-, *tu- «հալչել, լուծվել») — նախ.՝ չեչ. туьна, ինգ. таьца «թաց, խոնավ» չեչ. тIуналла, ինգ. тIодал «թացություն, խոնավություն». 11) հայ. բրբռ. լեպռ, լապռ (հ.-ե. *leb-, *lab- «թույլ, կախվել») — ցեզ.՝ ցեզ. лIеб, խվար. лIиб, դին. лIебу, դանդ. лIибу, բեժ. лIибо «տերև» (?). 12) հայ. բրբռ. լիժ «ողորկ» (հ.-ե. *lei- «լորձնոտ, կպչուն. սայթաքել, սահել») — ցեզ.՝ դանդ. лъиша «կպչել». 13) հայ. լիկ, լին (հ.-ե. *lēg- «կաթել, ծորել, լուծվել, հալչել») — նախ.՝ չեչ., ինգ. лакъа «ծանծաղանալ,

ոսպոսկել», лёкъа «չորանալ (գետի մասին)» (?). 14) հայ. լուծ (հ.-ե. *i̯u-gom «լուծ») — նախ.-դաղ.՝ չեչ., ինգ. д-укъ, ավար. рукь, բեժ. йукьо, լակ. рукӀ, դարգ. дук, լեզգ. вик, թաբ. йурккагъ, արչ. ок և այլն «լուծ». 15) հայ. լքանել (հ.-ե. *leik- «լքել, թողնել») — ցեզ.՝ դին. лӀехва «մնալ». 16) հայ. խածանել (հ.-ե. *khād-) — լակ. къацучин, դարգ. къацӀикис «կծել». 17) հայ. ծունգ, ծունր (հ.-ե. *g'enu-/gonu- «ծունկ») — նախ.՝ չեչ. гола, ինգ. го, բացբ. гаур «ծունկ». Համմտ. նաև խվար., դին., ցեզ կьонту, լեզգ. кьуьнт և այլն «ծունկ» (?). 18) հայ. կարկուտ (հ.-ե. *grōd-) -- նախ.՝ չեչ. къора «կարկուտ». 19) հայ. կոյ, կու (հ.-ե. *gu̯ōu-, *gu̯ū- «աղբ, կղկղանք, գոմաղբ») — դաղ.՝ ավար. рак «աթար, գոմաղբ», ուտ. кыб, թաբ. кув, հին. кука և այլն «աթար». 20) հայ. կով (հ.-ե. *gu̯ou- «խոշոր եղջերավոր անասուն») ցեզ.՝ ցեզ. гъуро, խվար. гъвало, դին. гъверо և այլն «անասուն». 21) հայ. կոր, կամակոր (հ.-ե. *geu- «ծռել») — նախ.՝ չեչ. гома, ինգ. гоама, բացբ. гаму «ծուռ» (Համմտ. նաև անդ кӀору, կրիզ., լեզգ. кӀир, թաբ. цӀур «կեռիկ, ճարմանդ» ?). 22) հայ. կորի «առու» (հ.-ե. *geu- «ծռել, թեքել») — դաղ.՝ ղունզ. куро «առու» (կրիզ., բուդ. кур «գետ», ուտ. кур «ձոր» և այլն. 23) հայ. կորկ «կեղտ» (հ.-ե. *gu̯or-gu̯(or)o- «կեղտ») — դաղ.՝ լակ. кьаӀркьи, արչ. мукьур, լեզգ. кьар, кьур-уш և այլն «կեղտ». 24) հայ. կուռն «մեջք, կռնակ. թև. կողք» (հ.-ե. *geu-ro- *geu- «թեքել, ծռել» արմատից) — նախ.-դաղ.՝ չեչ. куьг, բացբ. ког, кокӀ, ավար. квер, բեժ., ղունզ. (բրբռ.) коро, լակ. ква, արչ. ուտ. кил «ձեռք». 25) հայ. ձիւն, ձմեռն (հ.-ե. *g'hei- «ձմեռ, ձյուն») — դաղ.՝ անդ. кьину, դարգ. гӀине և այլն «ձմեռ» (Համմտ. նաև բոտլ. цӀибару, ղոդ. цӀибуру, կուբաչ. цӀибера, տինդ. цӀибор «ձմեռ», ախվ. цӀиборо «ձմեռ, աշուն» ?). 26) ձող (հ.-ե. g'hel- «կտրել») — անդ.՝ անդ. жала, ռոթլ. жола «ճիպոտ, կող» (?). 27) հայ. մաւրուք (հ.-ե. *smek- «մորուք») — նախ.-դաղ.՝ չեչ. маж, ինգ. мадж, բացբ. мачӀ, ավար. мегеж, ագուլ. мигажу, ագուլ. му(д)жур, թաբ. мижжири, мужжири և այլն «մորուք». 28) հայ. *մոյզ > բրբռ. մուզ (հ.-ե. *smeugh- «ծխել, ծուխ», որ. տեղից ռուս. смуглый «թուխ». Համմտ. նաև մուրկ < smugro-) — նախ.՝ չեչ. mokxa «մուգ». 29) հայ. նու «հարս» (հ.-ե. *snusós «հարս») — նախ.-դաղ.՝ չեչ., ինգ., ավար., անդ. нус, լեզգ. свас, թաբ. швушв «հարս»). 30) հայ. տալ (հ.-ե. *dō- «տալ») — լեզգ.՝ թաբ. туэ, ուտ. та десун «տալ». 31) հայ. տարգալ «դդալ» (հ.-ե. *deru- «ծառ. փայտ») — դաղ.՝ լակ. ттар «սոճի», լեզգ. ттар «ծառ», ագուլ. дар «անտառ» և ուտ. дур, կրիզ. тыр, ագուլ. ттур, լեզգ. тӀур «դդալ» (?). 32). հայ. տիւ, տի «օր» (հ.-ե. *dei-, «շողալ» *di-u̯- «օր») — նախ.՝ չեչ., բացբ. де, ինգ ди «օր». 33) հայ. տիկ (*dig-՝ հ.-ե. *digh-ից «այծ») — ցեզ.՝ ղունզ. тӀига «այծ» (Համմտ. նաև ավար. дегӀен, այլև քարթվ. *dqa «այծ»). 34) հայ. ուտել (հ.-ե. *ed- «ուտել») — լեզգ. тӀуьн, ագուլ. утӀ-аьс «ուտել». 35) հայ. փայծաղն (հ.-ե. *(s)p(h)elg'(h)- «փայծաղ») -- արչ. паьрти «փայծաղ». 36) հայ. քացախ (հ.-ե. *ku̯āt-so- «խմորիչ» ?) — դաղ.՝ ավար., խվար., արչ. къанцӀа, ցեզ. къонцӀа, դարգ. къанц «քացախ». 37) հայ. քերել, քերթել քերծել (հ.-ե. *(s)ker- «կտրել») — նախ.՝ չեչ. хера, ինգ. хийра «ճեղք», չեչ., ինգ. херх «սղոց», չեչ. хир «հատված, փորակ» և դաղ.՝ լակ. харци, ավար. хъарси «քերծվածք», լակ. ххартӀ бан «քերել», ххартӀи «քերոց».(?)

38) հայ. քիմ-ք (հ.-ե. *kuem- «կլանել») (թե՞ ծամել < *g'ṃbh- ?) — նախ.՝ չեչ., ինգ. чам «ճաշակ». 39) հայ. քիւ «տանիքի եզր», ցիւ «տանիք, կտուր» (հ.-ե. *(s)keu- «ծածկել») — դաղ.՝ դրն., ցեզ., խվար. кыIу, բեժ. кьамо (кьавари «տանիքի ծածկ»), թաբ. (բուրշ.) къуй, լեզգ., ուտ. къав, չամ. акьва «տանիք» և այլն։

Զգալի թիվ են կազմում հայերենի և արևելակովկասյան լեզուների այն զուգադիպումները, որոնք բնաձայնություններ և մանկական բառեր են, ընդ որում հայերեն ձևերը հաճախ հանգում են հնդեվրոպական մակարդակի վերականգնումների.

Հայ. բրբռ. ապի, աֆի, աֆո, աֆու «հայր» — բեժ. або, ղունզ., դիդ., խվար. абу, ցեզ. абайу, լակ. бутта և այլն «հայր». Հայ. բու (հ.-ե. *b(h)eu- — բնաձայնություն) — չեչ. бухIа, գոդ. бухIу, խվար., ագուլ. бугьу, չամ. бухI «բու». Հայ. բրբռ. դադա «հայրի՛կ», այլև դադա, դադո «քույր» (հ.-ե. *dhē-dh(ē) — մանկական թոթովանքի բառ — չեչ. да, дада, ինգ. да, բացբ. дада «հայր», ավար., անդ. лада, արչ. дия, այլև թաբ. дада, լեզգ. диде, հին. даьдаь, թաբ. дадай և այլն «մայր». Հայ. բրբռ. դուդուն «լոր» — լեզգ. туртур «լոր». Հայ. թուք (հ.-ե. *t(h)ū- «թքել») ?) — չեչ. туй, ինգ. туг «թուք». Հայ. խախանք (հ.-ե. *kha kha — ծիծաղի ձայնարկություն) — լակ. хъаьхъав(у) «ծիծաղ», ցեզ. хъохъолIа «ծիծաղել». Հայ. խնչել «խորդալ», միջ. հայ. խնջել «քիթը մաքրել» — ավար. хончIер, ախվ. ххентIе և այլն «խլինք». Հայ. խուխ, խորխ — արչ. херх «թուք», ագուլ. хьирхь, լակ. хьурхь «լորձունք». Հայ. ծիծ տիտ — ավար. моцIцIо, ուտ. цIицIик (< հայ. ծիծի՞կ), չամ. чIчIечIе և ուտ. тIит «ծիծ, ծծի պտուկ». Հայ. ծիծառն (*g'oigāron' *gar-ից — բնաձ.) — անդ. гьицIирча, гьирцIцIча և այլն «ծիծեռնակ». Հայ. ծղրիդ — ցախ. цIирт «ծղրիդ» (համմտ. և չեչ. цIоз, դարգ. цIерцI, լեզգ. цицIер, այլև կար. мацIə). Հայ. ծուծ, ծծել — ավար. цIцIункIизе, անդ. цIцIунну, արչ. цIур бос, ուտ. ццум песун և այլն «ծծել». Հայ. կաքաւ (համմտ. հ.-ե. *kak(k)-, *ko ko և այլն — բնաձ.) — անդ. гьабгъа, խվար. къакъаба և այլն «կաքավ». Հայ. կկու (հ.-ե. *kuku — բնաձ.) — ավար. гагу, արչ. гикку, խվար. куку, լեզգ. ккукку, ккуккум «կկու». Հայ. բրբռ. կուքան «թըխսկան» — լեզգ. кьуьртIуь «թխսկան». Հայ. բրբռ. հա՛ «այո՛» — չեչ. хIаъ, ինգ. хIаа, բացբ. хIа «այո՛». Հայ. հան (հ.-ե. *(H)an- «նախնի» — մանկ. բառ) — թաբ. ана «մայր». Հայ. հայ — հին. чIаь «ագռավ», կրիզ. чIагь «ագռավ. եղջերուակ», թաբ. гIагь «եղջերուակ» և այլն. Հայ. ճիկ, ճիչ — չեչ. чIик «ճլոց, ծլոց». Հայ. բրբռ. (մանկ.) մամալ «ուտել» (հ.-ե. *mā, *mam(m)ā «մայր». համմտ. լատ. mamma «մայր. մոր կուրծք») — չեչ. мāи «մոր կուրծք» (մանկ.). Հայ. բրբռ. նան, նանի «մայր, մայրիկ» (հ.-ե. *nana, *nena «մայր, մայրիկ. տատ» — մանկական բառ) — չեչ., ինգ. нана, լակ. нину «մայր». Հայ. պագ, պագանեմ, բրբռ. պաչել — լեզգ. пIагь, пIах, հին. пIа «համբույր» (համմտ. նաև ավար. уба, անդ. оба, убачи, գոդ. обади, ղին. убай, դարգ. бай, լակ. ппай). Հայ. սարսուռ — դարգ. сереер бикIес «դողալ». Հայ. փուք, փուչ- (փչել) (հ.-ե. *p(h)u- «փչել») — ավար. пу «փչել», լակ. пурш, դարգ. пуш «փուքս» (համմտ. նաև բացբ. пхъатуй, «թոք») և այլն։

Արևելակովկասյան լեզուներից հայերենի կատարած փոխառությունների

հարցին հատուկ ուսումնասիրություն չի նվիրվել, թեև այն քննվել է այդ լեզուների բառապաշարին նվիրված աշխատություններում[13]։ Ամենից ավելի հանգամանորեն այդ հարցին անդրադարձել է Հ. Աճառյանը իր «Հայերեն արմատական բառարանում» և «Հայոց լեզվի պատմության» մեջ՝ ամփոփելով մինչև 1930-ական թվականները կատարված աշխատանքների արդյունքները։ Արևելակովկասյան լեզուներից Աճառյանը փոխառյալ է համարում 11 բառ՝ 1) արթուր «ոտք», 2) արջն «սև», 3) արջասպ, 4) աֆ «ոտք» (?), 5) խոտ, 6) նողատ, 7) նայղ «ցեխ», 8) մագիլ (?), 9) մոծակ, 10) ուղխ, 11) ֆած:

Ինչպես ցույց է տրված մեր կողմից [Ջահուկյան, 1981ա, 21—22], որանցից արջն-ը և արջ-ասպ-ի առաջին մասը Նախյան լեզուներում (չեչ., ինգ. Iаьржа, բացբ. Iаьрчlи «սև») չի կարելի բնիկ համարել. այն փոխ է առնված իրանական աղբյուրից՝ arǰ-/arž- < հ.-ե. *ergu̯-/orgu̯- (համեմ. հ. հնդկ. rájanī- «գիշեր»)։ Վերևում նշվել է արդեն, որ կասկածելի է նաև մոծակ բառի կովկասյան ծագումը։ Մնացածներին ավելացնելով մի քանի հավանական բառ ևս՝ կունենանք հին շրջանի սկզբին ավանդված փոխառությունների հետևյալ ցանկը[14]. 1) արթուր «ոտք» — ուտ. тур «ոտք» (անբացատրելի է մնում ա-ն՝ սկզբնական атур ?). 2) աք «ոտք» — հիր. ак, թաբ. акъ, агъ «ոտք». 3) գանգ (գանկ) — ավար. гвангвара «գանգ». 4) գիւղ — ծաբ. гъул, къул, ագուլ. гъул, хIур և այլն «գյուղ». 5) թուք — լեզգ., բուդուխ. тухул, ուտ. тихлих «թուք» (համեմ. ագուլ. гъудул, ռուտ. худул և այլն). 6) խոտ — արչ. гьоти «խոտ», լակ. хьхьути «մոլախոտ». 7) ծաւի «կապտաչյա» (*«երկնագույն») — լեզգ. ццав, հին. ц(ц)ва «երկինք». 8) կախ — դարգ. кахъес «կախել». 9) կակուղ — լակ. кIукIлусса «փափուկ» (ած.), кIукIлуну «փափուկ կերպով» (մկբ.) (համեմ. ցեզ. кокору «փափուկ»). 10) կից — տինդ. кицIв «հանգույց» (համեմ. բագ. гецIер, ավար. кIичI և այլն. համեմ. նաև հայ. կոճ-ակ — լակ., ռուտ. кIичI, ագուլ. кIуч և այլն «կոճակ» ?). 11) կտուց — դարգ. къудкъуди «կտուց» (?). 12) հարճ — անդ. хьорчIаьи «կին. էգ» (բոտլ. хьаркIаь-и, տինդ. хьакаьу-и), որտեղից նաև վրաց. xarča «հարճ» [համեմ. Гудава, 1954, 10]. 13) մագիլ — ավար. (հար. բրբռ.) малгъ, բագուլ. мигъе «մագիլ». 14) չղջիկ — ցախ. чилхий «չղջիկ». 15) ուղխ (ուխ) «հեղեղ» — ավար. их(х) «գարնան հեղեղ», դին. иху «գետ» և այլն. համեմ. նաև դարգ. урхъу «ծով», ագուլ. хIул «ծով. լիճ» և այլն. 16) քած — լակ. ка(н)цIа «շան ձագ, լակոտ», լեզգ. кицI «շուն»» և այլն (համեմ. նաև լակ. кк(в)аччи (բրբռ.) «շուն», հին. кач, լակ. куча «քած»)։

Հայերենի արևելակովկասյան փոխառությունները ըստ իմաստային խմբերի բաշխվում են հետևյալ կերպ.

1. Ֆիզիկական աշխարհ. 1.36 ու(ղ)խ.

2. Մարդկություն. սեռ, տարիք, ընտանեկան հարաբերություն. 2.321 հարճ։

---

[13] Ռ. Մ. Շահումյանի կողմից 1935 թ. բերվել են հայ-արևելակովկասյան, հատկապես հայ-լեզգիական մեկուկես տասնյակ զուգադիպումներ [Шаумян, 1935, 419—426], որոնք մեծ մասամբ պատահական բնույթ ունեն. նշելի են միայն հայ. գիւղ, խոտ, մոր (մոռ), նանի, ուտել բառերի լեզգիական զուգահեռները, որոնք, սակայն, տարբեր բնույթի են. դրանց մի մասի վերաբերյալ խոսվել է, մյուսները կքննվեն ստորև։

[14] Հայերենի տվյալները ճշտված են ըստ կովկասագիտական նորագույն գրականության

*3.* Ներդաշնակներ. *3.611 քած. 3.631 շղջիկ։*

*4.* Մարմնի մասեր. *4.202 գանգ. 4.231 կոուց (?). 4.341 մազիկ. 4.37 ամուր, ար. 4.401 թոք։*

*8.* Երկրագործություն, բուսականություն. *8.51 խոտ։*

*12.* Տարածական հարաբերություններ. տեղ, ձև, չափ. *12.321 կախ. 12.621 կից։*

*15.* Զգայական ընկալումներ. *15.67 ծախ. 15.75 կակուղ։*

*19.* Տարածքային, հասարակական և քաղաքական բաժանումներ. հասարակական հարաբերություններ. *19.16 գիւղ։*

*Սրանից սկսած է ավելացնել ավելի ուշ շրջանում ավանդված հետևյալ բառերը. 17)* աՐցան — *ավար.* гъец, *ունդ.* кицIу, *լակ.* къаьцIа, *ագուլ.* къаьц, кьец, *թմր.* кьанццар *«աքցան». 18)* լեղր *«չղջիկ» — ցեզ.* лалу-къи *«չղջիկ». 19)* խլեզ — *ցախ.* калез *«մողես». 20)* կարել, կարիլ — *ատ.* кат *«կամիլ» (համմտ. դարգ.* кIантI, *արչ.* кIент, *բեժ.* тIанк *և այլն «կամթիլ»). 21)* նայլ *«տիղմ» — ատ.* чIайл *«ցեխ, տիղմ» (համմտ. ճան.* çalimi *«ցեխ»)* (?)։

*Հնարավոր է հունարեն գլրոցի գործածած* մակ *«վրա» նախածանցի նախ-յան ծագումը (համմտ. բացը.* мак *«վրա»)։ Ավելի քիչ հավանական է* մազ *բառի նախյան ծագումը. եղած զուգահեռները ձևով բավականաչափ հեռու են՝ չեչ.* мас, *չեչ., ինգ.* мерз *«մազ», բացը.* мачI *«բեղեր»։*

*Հայերեն* բակ *և* խոփ *բառերի աղբյուրը Հ. Աճառյանը համարում է հա-րավկովկասյան (քարթվելական) լեզուները, բայց առկա են նաև արևելա-կովկասյան զուգահեռներ. համմտ. 1) ունդ.* бакIи *«փարախ» և ավար.* бокь, *անդ.* бекь *«գոմ, փարախ». 2) ավար.* кькьобо, *չամ.* кькьоб, *ցեզ.* хъаб, *դարգ.* гъаб *և այլն «խոփ»։*

*Մի շարք այլ դեպքերում դժվար է պարզել փոխառության բուն աղբյու-րը։ Այսպես, հայ.* խարտ *«խարտված»,* խարտել *բառերի աղբյուրը Աճառ-յանը համարում է սարքերենը (*xraṭ *«միջից կտրել, ձևել, քերել, փորել»՝ ա-րաբ.* xarṭ *«ճախարակով հղկել» ձևի կողքին), բայց կա լակ.* ххартIи *«քե-րոց» բառը (համմտ.* ххартIа тIун *«հնձել»,* ххартI бан *«քերել»), որի հա-րաբերությունը հայերենի հետ պարզ չէ։ Բեժիտերենն ունի* хой *«խոյ» ձևը, բայց այն դժվար է համարել հայերենի անմիջական աղբյուրը, եթե նկատի առնենք* й--*ի ծագումը* р-*ից (համմտ. ունդ.* хор*) և արմատի առկայությունը թյուրքական լեզուներում, ընդ որում հայ. բառի հնդեվրոպական ծագումը քիչ հնարավոր է։ Նույն ձևով հայ.* կէզ, կիզել *բայը զուգահեռ ունի հին.* кизи *«վառվի՛ր» բայի մեջ և թյուրքական լեզուներում։*

*Հայ.* կարաս *բառի համար Հ. Աճառյանը նշում է արևելակովկասյան զու-գահեռներ, բայց բոլորի աղբյուրը, ոչ առանց հիմքի, համարում է ուրարտե-րենը։*

***Թերևս պատահական է հետևյալ բառերի նմանությունը. 1)*** արման (*բրբռ.* արմա) *«խոշոր ալյուր* (?)*» — ատ.* арум *«ցորեն»,* арумун *«ցորե-նի, ցորենային». 2)* խուլ (*հ.-ե.* *khu-l-' *keu- *«ծածկել» արմատից) — կրիզ., բատ.* кIул *«տուն, սենյակ» (համմտ. թմր., ատ., ագուլ.* кал). *3)* խուրձն — *ցեզ.* хъицу *«դեզ»,* къгинорцIа *«բարդոց. խոտի դեզ». 4)* կծիկ — *ունդ.* котI, *լակ.* кIут, *թմր.* цIикв *«կծիկ». 5)* կոտրել — *ավար.* къо-тIизе *«կտրել»,* кьатIыын *«կոտրել, կտրատել». 6)* նալ *«մազ»* (նալ-ատ)

— լակ. чӀара, արչ. чӀари, լեզգ., թաբ. чӀар և այլն «մազ» (ըստ Աճառյանի, բայց Л-ով ձևեր չկան). 7) նկուղ — արչ. нокь «տուն». 8) ցարասի «հավամրգի, ցախի» — ցեզ. цар, ղունզ. царас «եղևնի». 9) ցից — բեժ. цицо «դիրան»:

Եթե հայ. ցեց բառը ծագում է սեմական աղբյուրից (հմմտ. ասուր. sāsu «ցեց»), և եթե բուդ. цэц «ցեց» բառի նմանությունը հայերեն բառի հետ պատահական չէ (հմմտ. ցախ. иц, լակ. пувца, այլև չեչ. неца), ապա բուդուխերեն բառի համար պետք է ենթադրել փոխառություն կամ հայերենից, կամ սեմական աղբյուրից:

Պարզ չէ հայ. ծիլ, ծիղ և ավար. цӀул «փայտ», անդ. цӀул «ճիպոտ, փայտ», հայ. ճիւղ (ճեղ, ճիղ) և ախվ. чӀули «ճիպոտ, փայտ», ցախ. чӀил «ձող», ինչպես նաև հայ. դեր (հ.-ե. *ghei- ? հմմտ. ռուս. жир) և լեզգ. гъери «ճարպ» (հմմտ. լակ. аьгъушву) բառերի հարաբերությունը: Եթե ծիլ, ծիղ բառ'րը հնդեվրոպական ծագում ունեն (*g'ē̆l-), ապա նրա համար բերված զուգահեռների հետ կապը պատահական է:

Հնարավոր է, որ բարբառային հետևյալ բառերի աղբյուրը լինեն արևելակովկասյան լեզուները. 1) գռեխ «թարախ» — ռուտ. гӀирхын, гӀирхыд, гӀирхыр «թարախ» (հմմտ. թաբ. бархун, հին. нархун). 2) դալա «վայրի կատու. կզաքիս» — լակ. тталак «կզաքիս». 3) լեկ «ոչխարի կաշի (մշակված)» — ցախ. лекӀва, կրիզ. легӀ «խոշոր եղջերավոր անասունի կաշի» (հմմտ. չեչ. нег). 4) խոխ «զանգ» — թաբ. хаха, хвахва «զանգ». 5) խոյան «նապաստակ» (Ն. Նախիջ. բրբռ.) — ցեզ. хъай, բեժ. хъийа, хъиялатӀа «նապաստակ» (հմմտ. նաև ղունզ., դին. хъи, խվար. хъе). 6) խուամ «ցորենի տեսակ», կռիկ «ցորենի տեսակ» — ախվ. кьиру, անդ. кьир. բոտլ., ղող., կարատ. кьеру, ռուտ. кьир «ցորեն». 7) կանտ (Վն. կանտ(ու)կլուզ «մանրմունր երեխաներ, ճիժ ու պիժ») — չեչ. кӀант «տղա, որդի, երեխա». 8) կեխ «էշի թամբ» — անդ. кьекьил «բարձր», կրիզ. кьикьер «թամբ» և այլն (?). 9) կուկուլ «խոտի դեզ, բարդոց» — ավար. гул, անդ. кол, լեզգ. ккуьл «խուրձ». 10) հարայ — լեզգ. гьарай «աղաղակ, ճիչ» (гьар-¨+ -ай ածանց). 11) մախոխ «ապուր. անհամ կերակուր» — ավար. махъухъ, пахъухъ, бахух «հալվա» (?). 12) պիծի, նաև պինի(կ), պունուր «փոքրիկ» — թաբ. бицӀи, ագուլ., ուտ. бицӀиф «երեխա» (հմմտ. անդ. мочӀ, չամ. мачӀ, տինդ. makӀa):

Հայերեն բարբառային բբուկ «կատար. փետուր» և ուտ., կրիզ., ցախ. бибик «կատար» բառերի նմանությունը բացատրվում է հավանաբար նրանց բնաձայնական-մանկական բնույթով:

Եթե ճիշտ է հայերեն հետևյալ բառերի հնդեվրոպական ծագումը, ապա նրանց նմանությունը համապատասխան արևելակովկասյան բառերի հետ պատահական պիտի համարել. հայ. ականջ-ք (հմմտ. ունկն <*us-on-ko-m) — անդ. гьанкӀа, гьантӀикӀа, բոտլ. гьангӀукӀа, կար. гвантикӀа և այլն «ականջ». հայ. գիշեր (հ.-ե. *u̯eikeros «երեկո») — ցեզ. неширу, ղունզ., բեժ. нише, արչ. иш, թաբ. йишв, ռուտ. выш, ագուլ. уьш և այլն «գիշեր». հայ. գորտ (հ.-ե. *u̯orb- «գորտ» ?) — լակ. оьрватӀи, բեժ. (բրբռ.) гӀотӀе և այլն «գորտ». հայ. երգեծ-, երգիծանել «պատռել» (հ.-ե. *u̯reid-, -g'-?) — անդ. ругъун «վերք». հայ. երկին (հ.-ե. ?) — տինդ. регьен «երկինք» (հմմտ. անդ. решо, բոթլ., անդ., ղող., կարատ. решин և այլն). հայ. բրբռ. թիր(ր)են «աթար, տարթ» (հմմտ. թրիք՝ հ.-ե. *ter-ից

«կեղտ») — ավար. тIинцIцIи, անդ. тIебтIел «աղբ, աղտոտ». Հմմտ. մուրն (հ.-ե. *meu-t- «խոնավ, կեղտ») դարգ. мучь «մուր» (հմմտ. արչ. мачI-акул). Հմմտ. շաղ-ել, շաղախ (հ.-ե. *k'ʷel- «աղտոտ») ավար. шалай «տիղմ». Հմմտ. ցաւ (հ.-ե. *ksā- «այրել») — լակ. цIуцIаву (цIун «ցամաքել» մասդարի -аву ածանց). ցխն (հ.-ե. *(s)k'leno ?) — ավար. цIцIун, խվար. це «արծիվ»:

*Պատահական պիտի համարել նաև հետևյալ զուգադիպումները.* Հմմտ. թեթեւ — ավար. тIутI «թեթև» (մկբ.), тIутIаб «թեթև» (ած.). Հմմտ. ճաճանչ — լակ. чанн, հին. ччаь և այլն «լույս». Հմմտ. ճառ-աճել — չեչ., ինգ., բացբ. ата «փշրել, մանրել». Հմմտ. տատասկ — ղունզ. тIытIу «մասրենի» և այլն:

*Հետևյալ դեպքերում հավանաբար գործ ունենք թափառիկ և ընդհանուր փոխառության բառերի հետ.* Հմմտ. արագագ, երագագ — լեզգ. ракьар «թակարդ», թաբ. рукьар (լակ. кь(в)атI «թակարդ») (հմմտ. նաև արխաշ. арагуа «թակարդ»). Հմմտ. երկաթ — լեզգ., ракь, ագուլ., թաբ. рукь, рукьу «երկաթ» (հմմտ. նաև վրաց. rkina). Հմմտ. ժայռ (< իրան. ?) — թաբ. жжаьр-гъаьл «ժայռ» (բրբռ.) (баьргъаьл, гъарз ձևերի կողքին). Հմմտ. խնձոր — դարգ. гIинц, բոտլ. ннчу անդ. инчи և այլն «խնձոր» (խուռ. hinizuri «խնձոր» կամ [illegible]). Հմմտ. կաղամախ(ի) — լեզգ. къавах «կաղամախի» և թաբ. къавахун гьар «բարդի». Հմմտ. կապար — ղունզ. кобо «կապար». Հմմտ. կատու — արչ. кату, դարգ. гата, ավար., ախվ. кету, դիդ., ցեզ. кIетIу, խվար. кIнтIу և այլն «կատու». Հմմտ. մոծակ — լակ. мичIак, ցախ. мичак «մոծակ»[15]. Հմմտ. շիճ(ուկ), բրբռ. շիճուկ — լակ. (բրբռ.) жит «շիճուկ». Հմմտ. սիսեռն (հ.-ե. զուգահեռներով *k'ik'er- *k'eik'er- «սիսեռ, ոսպ») — դարգ. хъара, լակ. хъоьру, ռուտ., թաբ. хара, ցախ. хара, լեզգ. харар, ագուլ. (բրբռ.) ххарар «սիսեռ» (հմմտ. նաև չեչ. хъош, վրաց. xan-durI). Հմմտ. ցանել, ցան-ք — չեչ. цана «խոտհարք, մարգագետին», լեզգ. цан «վար», цун (անդ. цан) «վարել, ցանել». Հմմտ. տուխ(ն) «մի տեսակ կորեկ» — ղունզ. тIуго, ցախ. дикI, ագուլ., թաբ. дукI «կորեկ» (արաբ. duxn «մի տեսակ կորեկ»՝ ըստ Աճառյանի, ՀԱԲ, 4², 425—426). Հմմտ. բրբռ. ջիգա «տեգ» — լեզգ. жида «տեգ, նիզակ». Հմմտ. խոր (խորխորատ, խորխորել «կողոպտել, գողանալ», խորխոլիմ «ճաքճքվել». Հմմտ. խարխարել — ուրարտ. ḫarḫar-š-u-) — թաբ. хъуьр, хъуьл «փոս, հոր», хъуьрхъуьл «խոր փոս», ղունզ. харам, լեզգ. кур, ռուտ. хьвар, լեզգ., թաբ. фур «փոս», այլև ցախ. кIоран և այլն «խոր» (հմմտ. նաև ակկադ. ḫurru «փոս»):

*Ուրարտերենի և արևելակովկասյան լեզուների շփումների մասին են խոսում այնպիսի բացահայտ զուգահեռներ (բացի հայերենի և խուռա-ուրարտական լեզուների փոխհարաբերության քննության կապակցությամբ նշված-*

---

[15] Ինչպես նշվել է, Հ. Աճառյանը [ՀԱԲ, 3², 341] հայերենը բխեցնում է կովկասյան աղբյուրից, բայց նկատի չի առնում նախ՝ հնդիրանական զուգահեռները (հ.-ե. *mak'-, mok'-?. Հմմտ. հ. հնդկ. maśákaḥ «մոծակ», makṣā «ճանճ», աֆղ. բրբռ. masai, m(y)asai և ավեստ. maxsī, սողդ. m'šk- (maxšika), քրդ. mēš), երկրորդ՝ ուտիերեն мочIак-ի հենց հայերենից փոխառյալ լինելու հնարավորությունը, երրորդ՝ աբխազ-ադըղեական զուգահեռները՝ աբխ. a-мцI «ճանճ», a-мцIa, ադըղ. мацI «մորեխ» և այլն: Հավանական է ենթադրել բնաձայնական նմանություն:

ների, այդ թվում՝ վերևում բերված «խնձոր» նշանակող բառերից), ինչպիսիք են ուրարտ. arše «երիտասարդ, պատանի»—լակ. арс, ավար. ваш, դարգ. урши և այլն «որդի, տղա». ուրարտ. mari «տղամարդ, ամուսին» (հմմտ. խուռ. mariannu «երիտասարդ մարտիկ, ազնվական»<հ. հնդկ. marya-)—չեչ. майр, ինգ., բացբ. мара «մարդ». ուրարտ. qarqarani «զրահ» —լեզգ. кьакъар «սրի պատյան». ուրարտ. uduli «խաղողի այգի»—ուտ. тIул «խաղող» (հմմտ. հայ. ուղի «խաղողի որթ») և այլն։ Դժվար է որոշել թաբ. алъава «ավելացնել» բայի բուն աղբյուրը՝ հայ. աւելի, յ-աւելու՞լ, թե՞ ուրարտ. abili-du- «ավելացնել»։

Հայերենի և արևելակովկասյան լեզուների փոխհարաբերության հարցի քննությունն ավարտենք՝ նշելով վերջիններիս մեջ պարզ թվով հայկական փոխառությունների առկայությունը, որոնք այդ լեզուներին անցել են անմիջաբար և միջնորդված կերպով՝ հատկապես վրացերենի միջնորդությամբ։ Բերենք արևելակովկասյան մի շարք բառեր, որոնց հնարավոր աղբյուրը կարող է լինել հայերենը. այստեղից առայժմ բացառենք հայերենից կատարված նեղ ուտիական փոխառությունները, որոնց մասին խոսք կլինի առանձին. հայ. ածուխ (<*աճձող, հմմտ. հ.-ե. *angolo-) — ագուլ. цIамхI «ածուխ». հայ. աճուկ (հ.-ե. *peg-. հմմտ. ռուս. пах «աճուկ») -- ագուլ. аьчI «աճուկ». հայ. ասր «բուրդ» (հ.-ե. *pok'u- «բուրդ») — լեզգ. сар, ավար. гьас և այլն «բուրդ». հայ. արծաթ (հ.-ե. *arg'- «փայլել») — ավար. гIарац, լակ. арцу, դարգ. арц և անդ. орси, թաբ. арс, արչ. арси և այլն «արծաթ». հայ. արծիւ (*r̥g'ipi̯o-) — բացբ. арцIив «արծիվ» (հմմտ. նաև չեչ. аьрзу, լակ. бардзу. տարբեր է ավար. цIцIун). հայ. արջառ (բրբ. աչառ) «խոշոր եղջերավոր անասուն. մոզի» — ավար. гIарIap, արչ. хьорчIи «հորթ». հայ. բարդի — ղունզ. барди «թուփ, թփուտ» (?). հայ. բուռ (հ.-ե. *bhau-t- ?) — բեժ. ботIо «բուռ». հայ. դալ (հ.-ե. *dhē(i)- «ծծել») — (> վրաց. da >) ցախ. да, ուտ. даь, ագուլ. ттаъъ «դալ» [հմմտ. Хайадков, 1973, 52]. հայ. դուստր (հ.-ե. *dhukter- «դուստր») -- արչ. дошдур «դուստր» (լակ. душ, թաբ. риш, լեզգ. руш ձևերի կողքին). հայ. եղան (հ.-ե. *kuel-?) -- ավար. лъен, անդ. лъану, ուտ. хьлан «եղան». հայ. երկան (հ.-ե. *gʷrānā) — լեզգ. регъв «ջրաղաց», թաբ. раьгъ, раьгъав, раьгъиш և այլն «ջրաղաց. ջրաղացաքար» (հմմտ. ավար. гьобо «ջրաղաց», բեժ. гьобой, гьобор «ջրաղաց. անիվ»). հայ. թուր (հ.-ե. *ter- «տրորել, տրորելով ծակել») — ցախ., լակ., չեչ. тур «թուր». հայ. լիզու (հ.-ե. *leig'h- «լիզել») — դարգ. лезми (мез, миз ձևերի կողքին). հայ. կաշի (<սեմ.) — ավար. гьоча, կարատ. хъоча, չամ. хоша, ցեզ. xIоши, դիդ. хвиши և այլն «կաշի». հայ. կով (> կու) (հ.-ե. *gʷōu- «կեղու») -- թաբ. кув., լեզգ., թաբ. купI, հին. кука և այլն «ամբար, տարթ». հայ. կոր և ծուռ -- անդ. кIору (հմմտ. կրիզ., լեզգ. кIир) և թաբ. цIур «կեռիկ. ճարմանդ». հայ. հալաւ (<սեմ.) — կրիզ. гьалов «հալավ» (վրաց. halavi «հարսնացուին տրվող նվեր փեսայի կողմից»). հայ. հաց (հ.-ե.?) — խվար. кьацIа, դարգ. кьицIа, լեզգ. къас, ցախ. кьацI «հացի կտոր», այլև խվար. хац «բլիթ», չամ. эцI «հաց». հայ. հուն (հ.-ե. *pont- «արահետ, ուղի») -- ցեզ., խվար., ղունզ. гьуни, դարգ. гьуни, хуни և այլն «ուղի, ճանապարհ». հայ. ձեղուն, ձող (հ.-ե. *g'hel-) — դարգ. зехин, дзихин, ագուլ. цIахун, цIагьун «գերան». հայ. մանր (հ.-ե. *men- «փոքր») -- անդ. мочIи, չամ.

мачI, *ախտ.* макIа «*երեխա, մանչ*». *հայ.* մորճ (մորչ, մորջ) «*ճիպոտ, ճյուղ*», մուրճ (*հ.-ե.* *mer- «*տրորել*») — *վարք.* мурч «*փայտ, ճիպոտ*» (*վրացերենի միջնորդությամբ*՝ morčl «*ճյուղ*»). *հայ.* շաղ (*հ.-ե.* *k'u̯el- ? «*ոլորմում*») — *վարք.* шах «*եղյամ, շաղ*». *հայ.* ոզնի (*բրբռ.* ոզնիկ, կոզնի, կուզնիկ *և այլն*) (*og'hinijo-' *հ.-ե.* *eg'hi- «*ոզնի*») — *անդ.* узрухки, *ցեզ.* гIузрукь, *ավար., խվար.* гIужрукь *և այլն* «*ոզնի*». *հայ.* տունկ—*ցախ.* тIунк «*կոճղ*». *հայ.* ցախ (*հ.-ե.* *k'hākh-, *sk'ākh- «*ճյուղ*») — *ցեզ.* цих, *դին.* чехъ «*անտառ*» *և այլն.* цIах-ан «*փայտ*». *հայ.* քոր (*հ.-ե.* *(s)ker- «*կտրել*») — *ուտ.* къаври *և այլն* «*քար*». *հայ.* տուն (*հ.-ե.* *dōm- «*տուն*») — *թաբ.* тIун, *լակ.* тIуну, *դարգ.* тIени «*ախոռ, մառք*»:

*Ամենայն հավանականությամբ հայ.* կիր (*<սեմ.*), մանգաղ (*<սեմ.*), յարդ, տափակ (*<իրան.?*) *բառերն են նախյան հետևյալ բառերի աղբյուրը՝ մասամբ* (կիր, մանգաղ *բառերի դեպքում*) *վրացական միջնորդությամբ. չեչ.* кир, *ինգ.* кIир «*կիր*». *չեչ., ինգ.* мангал «*գերանդի, մանգաղ*», *չեչ.* хьард «*հարդ*» (*հմմտ. հին հայ.* յ > *ժամ. հայ.* հ *անցումը*), *չեչ.* тIапа, тIапаниг «*տափակ*»:

*Պարզ չէ հայ.* խաթար *և չեչ.* хатар «*հանցանք*», *հայ.* խլին «*լուղ*» (խըլ-լինգլի) *և չեչ.,* хьēна, *ինգ.* хьаьна «*լուպալի*», *հայ.* խորշոմ *և չեչ.* харш «*կնճիռ, խորշոմ*», *հայ.* կիր, կրել (*<հ.-ե.* ?) *և չեչ., ինգ.* кира «*բեռ*» *բառերի փոխհարաբերության բնույթը*:

*Մեծ թիվ են կազմում ուտիերենի՝ հայերենից կատարած փոխառությունները: Դրանք մասամբ գալիս են հնից, մասամբ կատարված են ուշ շրջանում՝ գրական լեզվից և բարբառներից: Ուտիերենի բառապաշարի համեմատաբար քիչ ուսումնասիրված լինելու պայմաններում դժվար է հըստակորեն սահմանազատել հին փոխառությունները, մանավանդ որ գրաբարյան շրջանի բառերը հաճախ համընկնում են նոր գրական հայերենի համապատասխան բառերի հետ: Հին են, մասնավորապես, այն փոխառությունները, որոնց մեջ հայ.* ղ-*ի դիմաց առկա է ուտ.* л՝ *հայ.* աղէտ—*ուտ.* лет «*հաւաշանք*». *հայ.* կաղ—*ուտ.* kIала «*կաղ*». *հայ.* մանգաղ (*< ասոր.*) — *ուտ.* маьнкаьл «*մանգաղ*» *և այլն: Հավանաբար հին փոխառություններ են նաև հետևյալները՝ հայ.* զմրիլ (*հ.-ե.* ?) — *ուտ.* замару, замарой «*թմրում, ընդարմացում. ջղաձգություն*». *հայ.* ծոր, ծորել — *ուտ.* цIоро-десун «*թորել*». *հայ.* կտոր — *ուտ.* kIoтIop «*կտոր*». *հայ.* կոր — *ուտ.* kIopи «*կոր, ծուռ*». *հայ.* տապակ — *ուտ.* тIапIак «*տաշտ, տեփուր*» (*ինքնուրույն փոխառություն հայերենի համար հիմք ծառայած իրանական աղբյուրի՞ց*), *հայ.* տապան — *ուտ.* тIапIан «*տաշտ*». *հայ.* քամ (քամել) — *ուտ.* каьм «*կըղկըղանք. արտաթորանք*» *և այլն*:

*Մի շարք դեպքերում, ինչպես նշվեց, հայ. բառերը պատկանում են ինչպես հին, այնպես էլ նոր գրական լեզվին, և որոշել փոխառության մոտավոր ժամանակը հնարավոր չէ՝ հայ.* աւազակ (*<իրան.?*) — *ուտ.* абазакI, авазак «*ավազակ*». *հայ.* ապուշ (*<իրան.*) — *ուտ.* aпIуш «*թմրած, ապուշ*», *հայ.* կատար — *ուտ.* kIaтIap «*կնոջ գլխի զարդարանք. աքաղաղի կատար*». *հայ.* կոծիկ — *ուտ.* kIoцIиkI «*սողինձ*», *հայ.* կործ — *ուտ.* kIoцI «*թեք, ծռված*». *հայ.* մոզի (*հ.-ե.*) — *ուտ.* mozi «*հորթ, մոզի*». *հայ.* պատառ — *ուտ.* пIaтIap «*մի քիչ, մի կտոր*» *և այլն*:

Որոշ հետք են թողել արևելակովկասյան լեզուները հայկական տեղանուններում։ Մենք առիթ ենք ունեցել խոսելու **Նախճ–աւան** անվան առաջին մասի՝ նախչյան ժողովուրդների անվան հետ ունեցած կապի մասին. այժմ էլ չեչեններն իրենց կոչում են нохчо (բրբռ. нахчо), որ պահպանվել է «Աշխարհացոյց»-ի հիշատակած **Նախճամատեանք** (բռց. «Նախճալեզվյաններ») ժողովրդանվան մեջ։ Բնականաբար արևելակովկասյան ծագում ունի հին Հայաստանի **Ուտիք** նահանգի անունը, եթե մանավանդ ուտիները հին աղվանների մնացորդն են։ Արևելակովկասյան տարրերը զգալի տեղ պետք է գրաված լինեն ոչ միայն Ուտիքի, այլև թերևս Արցախի ու Գուգարքի տեղանունների մեջ։ Ցավոք սրտի, այս հարցը բոլորովին չի գրավել հետազոտողների ուշադրությունը։ Նշենք միայն, որ հնարավոր է Ուտիքի **Տռի**, **Աղուէ**, Արցախի **Հարճլանք**, **Մուխանք**, **Պիանք**, **Կողթ** գավառանունների արևելակովկասյան ծագումը։

Արևելակովկասյան ծագում ունի **Կուր** գետի անունը. կրիզերեն և բուդուխերեն լեզուներով кур նշանակում է «գետ», ուտիերեն՝ «ձոր», ղունզ. куро՝ «առու» և այլն։

## 5. ՀԱՅԵՐԵՆԸ ԵՎ ՀՈՒՆԱՐԵՆԸ

### ա) ՀԱՅԵՐԵՆԻ ՀՈՒՆԱԿԱՆ ՓՈԽԱՌՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Հայերենի՝ հունարենից կատարած փոխառությունների հարցը դեռևս XIX դարի վերջերից գրավել է մի շարք ականավոր հետազոտողների ուշադրությունը՝ Հ. Թումբ [**Thumb**, 1900], Կ. Բրոկելման [**Brockelmann**, 1894], Հ. Հյուբշման [**Hübschmann**, AG, 2, 1897]։ Իր «Հայոց լեզվի պատմության» 2-րդ մասում [1951, 5—53] Հ. Աճառյանը, ի մի բերելով այս հեղինակների և հատկապես իր «Հայերեն արմատական բառարանի» տվյալները, տալիս է 1066 փոխառության ցանկ, որից 151-ի դեպքում հունարենի աղբյուրը լատիներենն է։ Ցանկում շեղատառով առանձնացված են այն բառերը, որոնք այժմ էլ գործածության մեջ են։ Բացի սրանցից, առանձին գլխով տրվում են հայերենի եբրայական փոխառությունները (թվով 138)՝ կատարված հունական միջնորդությամբ։ Եթե նկատի առնենք, որ վերջիններս հայերենի մեջ են մտել մատենագրական ճանապարհով (բացի մի քանի կասկածելի դեպքերից)՝ հատկապես Աստվածաշնչի թարգմանության միջոցով, ապա պարզ կլինի, որ նրանց քննությունը դուրս է նախագրային շրջանի պատմությունից և վերաբերում է հայոց լեզվի գրային շրջանի պատմությանը։ Բուն հունարենից և հունական միջնորդությամբ լատիներենից կատարված հայկական փոխառությունների ժամանակային պատկանելության հարցն ավելի բարդ է։ Իրանական փոխառությունների համեմատությամբ հունական փոխառությունները գերազանցապես մատենագրական բնույթ են կրում, և, ինչպես կտեսնենք, փոքր մասով են միայն առնված մինչև V դարն ընկած շրջանում։ Հայերը հույների հետ այնպիսի տևական և անմիջական շփման մեջ չեն եղել, ինչպես իրանական ժողովուրդների հետ։ Այդ շփումը հիմնականում քաղաքական-մշակութային և կրոնական բնույթ է կրել։

Եթե բացառենք արդեն քննված հնագույն առնչությունները, ապա հայերենի նախագրային շրջանի համար կարելի է տարբերել հայ-հունական լեզվական առնչությունների 4 հիմնական փուլ.

1) Վաղ առնչությունների փուլ (VI դ.—IV դ.)։ Այս փուլում հայերի շփումը հույների հետ պատահական բնույթ է կրել՝ տեղի ունենալով մասամբ առևտրական ճանապարհով (մանավանդ Փոքր Ասիայի ծովափնյա հունական գաղութների հետ), մասամբ արևելքում, հատկապես Պարսկաստանում, ծառայության մեջ գտնվող հույն զինվորների միջոցով։ Զգալի դեր կարող է խաղացած լինել նաև ուրիշ (այդ թվում՝ իրանական, սեմական, փոքրասիական) ժողովուրդների միջնորդությունը։

2) Հունական քաղաքական և մշակութային վաղ ազդեցության փուլ (մ. թ. ա. III դ. 30-ական թթ.—մ. թ. I դարի 60-ական թթ.)։ Այս փուլն սկսվում է Ալեքսանդր Մակեդոնացու՝ դեպի արևելք կատարած արշավանքներով, պարսկական պետության անկմամբ, հունական մշակութային ազդեցության ուժեղացմամբ։ Հայաստանը, որ գտնվել է հելլենիզմի ազդեցության ոլորտում, պետք է ենթարկվեր հունական մշակութային և թերևս, սրա հետ կապված, լեզվական ազդեցության։

3) Հռոմի քաղաքական ազդեցության ուժեղացման և հունական մշակութային ազդեցության շարունակման փուլ։ Այս փուլն սկսվում է Հռոմի՝ Հայաստան կատարվող արշավանքներով, Տիգրան 2-րդի հետ հռոմայեցիների կնքած դաշնագրով. այս փուլում հունական շարունակվող ազդեցության հետ միասին զգալի դեր պիտի կատարեր լատիներենի անմիջական և միջնորդված (հունական միջնորդությամբ) ազդեցությունը։ Մ. թ. I—II դարերի հունական և լատինական արձանագրություններ են հայտնաբերված Գառնիում, Էջմիածնում, Արտաշատում, Տիգրանակերտում, Խարբերդում։

4) Բյուզանդական մշակութային և կրոնական ազդեցության փուլ (IV դ.)։ Այս փուլում Բյուզանդիայի առանձնացմամբ և հայերի ու հույների՝ պաշտոնապես քրիստոնեություն ընդունելով սրանց փոխհարաբերությունը նոր ուղղություն է ստանում։ Հատկապես ուժեղանում է կրոնական կապը, և կրոնական տերմինները լայնորեն մուտք են գործում հայերենի մեջ։

Ընդհանուր առմամբ կարելի է ասել, որ հելլենիզմի շրջանից սկսած հայերը դիմում էին հունարենին, դրամների վրա գրում հունարեն, թողնում հունարեն արձանագրություններ։ Տիգրանակերտում եղել է հունական թատրոն, Տիգրան 2-րդն իրեն շրջապատել է հույն գիտնականներով, Տիգրանի որդի Արտավազդը գրել է հունարեն ողբերգություններ։ Երկար ժամանակ հայերը պաշտոնական գրությունները գրում էին հունարենով։ Չնայած սրան, Հայաստանը մնում էր «ոչ հունական» (Մոմզենի արտահայտությամբ)՝ արևելյան երկիր։ Կա այն կարծիքը, որ մինչև քրիստոնեության մուտքն ընդհանրապես «հայերենը հունարենից ոչ մի ազդեցություն չի կրել» [Աճառյան, ՀԼՊ, 2, 7]. այս դեպքում խոսքն, իհարկե, վերաբերում է, այն էլ ոչ հավաստիորեն, հայերեն այն ստանդարտ լեզվին, որ V դ. է գրի առնվել և հայտնի է գրաբար անվամբ։ Հասկանալի է, որ առանձին հատվածներում, այդ թվում՝ հունական մշակույթին ծանոթ մարդկանց մեջ, չէին կարող չգործածվել հունարեն որոշ բառեր։ Հունարենի ազդեցությունն ուժեղանում է IV շրջանում, երբ Հայաստանում գործում էին հունարեն և ասորերեն դպրոցներ։

Այս պայմաններում հասկանալի է նաև, որ առայժմ խոսք չի կարող լինել հայերենի՝ հունարենից կատարած փոխառությունները ըստ նշված փուլերի բաշխելու մասին։ Կարելի է միայն ժամանակագրական քիչ թե շատ հստակ սահմաններով առանձնացնել կրոնական բնույթի բառերը, որոնք հիմ-

նականում պետք է հանդես եկած լինեն IV դարից սկսած, այլև այն բառերը, որոնց անշեշտ վանկերում տեղի է ունեցել ձայնավորների ու երկբարբառների թուլացում, և որոնք պետք է փոխառված լինեն մինչև III դ.։ Դեռ ավելին. ընդհանրապես հեշտ չէ նաև հունական փոխառությունների ընդհանուր ցանկից առանձնացնել այն բառերը, որոնք կարող են գալ նախագրային (նախամատենագրական) շրջանից։ Ստորև բերվող ցանկը կազմելիս մենք նախ հանել ենք միայն V դ. մատենագրության մեջ հանդիպող բառերը, ապա առանձնացրել դրանցից այն միավորները, որոնք կարող են գալ ավելի վաղ՝ նախագրային շրջանից։ Այս դեպքում մենք առաջնորդվել ենք որոշակի սկզբունքներով. Նկատի են առնվել փոխառությունների՝ 1) հաճախականությունը և տարածվածությունը, 2) իմաստային առանձնահատկությունները, 3) համանիշներ ունենալը, թե չունենալը և ունենալու դեպքում՝ համանիշների տարածվածությունը, 4) հայ հեղինակների մոտ, թե՞ միայն թարգմանություններում և դրանց մեկնություններում հանդիպելը, 5) ձևափոխված (այդ թվում՝ ժողովրդական ստուգաբանությամբ), թե՞ պարզ տառադարձություն լինելը, 6) բարբառներում հանդիպելը, 7) հոլովված հանդիպելը և ածանցումներ ու բարդություններ տալը, այսինքն՝ ձևաբանական-բառակազմական մերվածության աստիճանը, 8) հունարեն բառերի նաև այլ (այդ թվում՝ սեմական, իրանական լեզուներում) տարածված լինելը, այսինքն՝ մշակութային ընդհանուր արժեք ունենալը, 9) համեմատաբար միաձև (ստանդարտացված) գրությունը։ Մի շարք դեպքերում խնդիրը հեշտանում է նրանով, որ հայ հեղինակները նշում են բառի հունարեն լինելը, գնահատում են այն դեռևս որպես օտարազգի՝ հայերենի բառապաշարին չմերված, առանձին դեպքերում էլ մեկնում են՝ թարգմանում հայերեն։ Այս բոլորով հանդերձ չի կարելի վստահ լինել, որ առանձնացված բառացանկում տեղ չեն գտել V դարից ոչ վաղ կատարված մատենագրական փոխառություններ, և որ, ընդհակառակն, հանված բառերի մեջ չկան ավելի հնից եկող փոխառություններ (վերջինս ավելի քիչ հավանական է)։ Հ. Աճառյանի ցանկից մենք ընդհանրապես հանել ենք այն բառերը, 1) որոնք հունարենից հայերենին պիտի անցած լինեն իրանական, հատկապես պարթևական միջնորդությամբ (գաղափար—կաղապար, լամպար—լապտեր. հմմտ. հուն. δ > պրթ. δ > հայ. ր փոփոխությունը), 2) որոնք հատուկ անուններ են կամ հատուկ անունների արժեք են ունեցել (Սաթիդի, Արիէ՛, Բորբորիանոս, Դեմետեր, Կորես, Կոռնոս, Հերմէս, Ղևտիկոն, Պերիարմենիաս, Եկղեսիաստէս, Սիբիղղա, Փայիրոն), մանավանդ որ դրանք ակնհայտ մատենագրական փոխառություններ են, 3) որոնց՝ հունարենից փոխառյալ լինելը կասկած է հարուցում (հմմտ. կեմ «խոտե պարան», մորէ «մի տեսակ համեմունք»)։

Ընդհանուր առմամբ Հ. Աճառյանի տված 1066 բառից միայն մեկ երրորդից փոքր-ինչ ավելին է հանդիպում V դ. մատենագրության մեջ, ընդ որում լատինական ծագում ունեցող հունական բառերի դեպքում այդ թիվը հասնում է մոտ մեկ հինգերորդի։ Սրանցից էլ հանելով վերևում նշված պայմանները չբավարարող բառերը՝ կստանանք հունարենից հայերենի կատարած այն փոխառությունների ցանկը (թվով 107), որոնք կարող են V դարից վաղ լինել. որոնց մեջ լատինական ծագում ունեցող բառերի քանակը մեծ չէ (12)։

աբրա(յ), -ի, -յից «հայր, երկնավոր հայր՝ աստված. սրբահայր, վանահայր».
Հմմտ. հուն. ἀββᾶ(ς) (< արամ.).

*ադամանտ/դ* (*անդ-*). *հմմտ. հուն.* ἀδάμας,-αντος.

*ապարօղն, -ի, -աց «վերարկու, կրոնավորի կարճ փիլոն». հմմտ. հուն.* ἀναβολή.

*այեր, -ի «մթնոլորտ». հմմտ. հուն.* ἀήρ.

*անդրի, -ւոյ, -եաց (անդրիանդ, -ի, -աց) «արձան». հմմտ. հուն.* ἀνδριάς,-άντος.

*անթիհիւպատոս, -ի (անթիպատոս) «փոխհյուպատոս». հմմտ. հուն.* ἀνθύπατος.

*արգասիք. հմմտ. հուն.* ἐργασία ( > *պրթ.* > *հայ.* ?).

*արքեպիսկոպոս, -ի, -աց, -ունք. հմմտ. հուն.* ἀρχιεπίσκοπος.

*աւգոստոս «կայսր» (աւգոստա «կայսրուհի»). հմմտ. հուն.* αὔγουστος (*իգ.* αὐγοῦστα) ( < *լատ.* augustus).

*ափսէ (ափսեայ) «մետաղյա սկավառակ». հմմտ. հուն.* ἀψίς.

*բաթրոն, -ի, -աց «բազմոց». հմմտ. հուն.* βάθρον.

*բաղանիք, -եաց. հմմտ. հուն.* βαλανεῖον.

*բաղիստր (բալիստր) «նետաձիգ գործիք». հմմտ. հուն.* βαλίστρα.

*բաղսամո(վ)ն «բալասան». հմմտ. հուն.* βάλσαμον.

*բասիլիսկոս (բասիղիսկոս) «արքայիկ օձ». հմմտ. հուն.* βασιλίσκος.

*բարբարոս, -ի, -աց. հմմտ. հուն.* βάρβαρος.

*բեմ, -ի, -աց. հմմտ. հուն.* βῆμα.

*բիւրեղ (ուշ՝ բերիւղ). հմմտ. հուն.* βήρυλλος.

*գալեագրի (գալէ-, -գեղ, -գիւղ, -գրո), -ի, -աց, -իւք «գազանների արգելանոց. բանտ». հմմտ. հուն.* γαλεάγρα.

*գրամատիկոս (-մարտիկ, -մարտիկոս) «քերական». հմմտ. հուն.* γραμματικός.

*դափնի (դափնէ, դափ/քնիդ). հմմտ. հուն.* δάφνη *«դափնի»* (δαφνίς,-ίδος *«դափնեպտուղ»*).

*դ(ե)լփին, -ի, -աց. հմմտ. հուն.* δελφίς,-ῖνος.

*դենար (դինար), -ի, -աց «մի տեսակ դրամ». հմմտ. հուն.* δηνάριον < *լատ.* denarius.

*դստիկոն, -ի «տան հարկ». հմմտ. հուն.* δίστεγον.

*եթեր, -ի, -այ, -աց. հմմտ. հուն.* αἰθήρ,-έρος.

*եկեղեցի «ժողովուրդ, բազմություն. հավաքույթ. տաճար». հմմտ. հուն.* ἐκκλησία.

*եպիսկոպոս, -ի, -ից, -աց, -ունք. հմմտ. հուն.* ἐπίσκοπος.

*զմուռս, -ոյ, -ի, -աց (զմռս-, զմռ-, զմռն-). հմմտ. հուն.* σμύρρα, σμύρνα.

*թերիակե (թիրակէ, թիւրակէ) «դեղթափ, հակաթույն». հմմտ. հուն.* θηριακή ( > *սոր.* terjaqē *և այլն*).

*լուդիկ (լօդիկ) «վերարկու». հմմտ. հուն.* λωδίκιον (λώδιξ,-ικος) < *լատ.* lodix, -icis *«վերմակ»* ( < *կելտ.* ?)[1].

*լեգէո(վ)ն (լէ-, լի-, -եոն), -ի «հռոմեական զորաստորաբաժանում, բազմություն. հռոմեական զինվոր. չար դև». հմմտ. հուն.* λεγεών ( < *լատ.* legio, -onis).

*լիտր. հմմտ. հուն.* λίτρα.

*կաթողիկէ (-եայ), -ի, -ից «ընդհանրական (թուղթ, եկեղեցի)». հմմտ. հուն.* καθολική (*իգ. սեռի ձև*).

---

[1] *Հ. Աճառյանը [ՀԱԲ, 2², 308] հուն. բառը չիմանալով [մինչդեռ տե՛ս* **Chantraine,** DELG, *3, 654] և նկատի առնելով միայն լատինական և գերմանական զուգահեռները՝ գրում է. «Թե ի՛նչ ճամբով հյուսիսային բառը հասել է մեզ՝ հայտնի չէ»։*

կաթողիկոս, -ի, -աց, -ունք «հայրապետ. հայրապետ». հմմտ. հուն. καθολικός «ընդհանրական».
կամար, -ի, -աց «շենքի կամար». հմմտ. հուն. καμάρα.
կանթեղ, -ի, -աց. հմմտ. հուն. κανδήλα < լատ. candēla.
կանոն, -ի, -աց. հմմտ. հուն. κανών.
կար(ա)կին, -ի, -աց «կարկին». հմմտ. հուն. καρκίνος.
կեղթ (բրբռ. կաղաթ, կալաթ, կղաթ) «կողով. մի չափ» հմմտ. հուն. κάλαθος ( > ասոր. galəttā, վրաց. ḳalata).
կէտ, -ի, -աց (կետ, կետոս) «ծովային մի կենդանի՝ կետ». հմմտ. հուն. κῆτος.
կիտրոն. հմմտ. հուն. κίτρον < լատ. citrus, հյց. citrum.
կիւրակէ. հմմտ. հուն. κυριακή «տերունական (օր). կիրակի».
կղէսուր «լեռնանցք, կիրճ. բերդ». հմմտ. հուն. κλεισοῦρα < լատ. clausura.
կղերիկոս, -ի, -աց «կրոնավոր». հմմտ. հուն. κληρικός.
կոնք -ի, -աց. «խեցեմորթ. խեցի. մի հեղուկաչափ». հմմտ. հուն. κόγχη.
կղերք (կղեր-ական). հմմտ. հուն. κλῆρος «հոգևորականություն».
կրկէս. հմմտ. հուն. κιρκήσιον < լատ. circus.
հերետիկոս. հմմտ. հուն. αἱρετικός.
հիւղ(է) (հիղեայ, հիւղայ) «նյութ». հմմտ. հուն. ὕλη.
հիւպատ(ոս), -ի, -ից (հիպատ) «կուսակալ». հմմտ. հուն. ὕπατος.
հռետոր, -ի, -աց. հմմտ. հուն. ῥήτωρ.
մանդրագոր, -ի, -աց «թմրեցուցիչ մի բույս». հմմտ. հուն. μανδραγόρας.
մատուռն «վկայարան». հմմտ. հուն. μαρτύριον.
մարմար (V դ. միայն բաղադրություններում. ուշ՝ մարմարիոն). հմմտ. հուն. μάρμαρον.
մարտիրոս, -ից, -աց «նահատակ». հմմտ. հուն. μάρτυρος և μάρτυς,-υρος.
մեղրապոպ, -ի, -ից «շամամ». հմմտ. հուն. μηλοπέπων.
մետաքս, -ի, -ից. հմմտ. հուն. μέταξα (բյուզ. շրջանի բառ՝ IV դարից).
մեքենայ, -ի «գործիք. պատերազմական գործիք. խորամանկություն». հմմտ. հուն. μηχανή, հգն. -αι ( > ասոր. mexanē).
մորոս, -ի, -աց «հիմար». հմմտ. հուն. μωρός.
յակինթ «մի ակն. մի ծաղիկ». հմմտ. հուն. ὑάκινθος.
նարդոս, -ի, -ից (-էս, -ին, -ան, -եան) «մի տեսակ ծաղիկ». հմմտ. հուն. νάρδος.
նոտար (ուշ՝ նօտար) «գրագիր». հմմտ. հուն. νοτάριος < լատ. notarius.
ողոմպիադ (ոլոմ-, ողիմ-, ողոմ-, ողիւմ-, ոլիւմ և այլն) «օլիմպիադա. օլիմպիական մրցանակ. օլիմպիական տարեհաշիվ». հմմտ. հուն. Ὀλυμπιάς,-άδος.
ուղղափառ, -ի, -աց «ուղղափառ». հմմտ. հուն. ὀρθόδοξος.
որիզ «բրինձ». հմմտ. հուն. ὄρυζα ( < իրան.).
պալատն (պաղատն, ուշ՝ պալատ). հմմտ. հուն. παλάτιον, παλάτιν < լատ. palatium.
պաղատիտ, -ի, -աց «չոր թուզ». հմմտ. հուն. παλαθίς,-ίδος (παλάθη) «չոր մրգի (հատկապես թզի) բլիթ».
պանդուկի (ուշ՝ պանդոկ) «իջևան». հմմտ. հուն. πανδοκεῖον.
պատագրոս, -ի, -աց «ոտքերի հոդացավ ունեցող». հմմտ. հուն. ποδαγρός ( > ասոր. ptagrā podagrā).
պենտեկոստէ, -ի, -իր «հրեաների՝ Եգիպտոսից ելնելու հիսուներորդ օրը. հոգեգալուստ». հմմտ. հուն. πεντηκοστή.

պնակ, -ի, -աց «կերակրաման». Համմտ. հուն. πίναξ, -κος.

պնակիտ «գրատախտակիկ». Համմտ. հուն. πινακίς, -ίδος, πινακίδιον (> ասոր. penaqidtā).

պոռնիկ, -ի, -աց. Համմտ. հուն. πορνικός «պոռնկական» (πόρνος, իգ. πόρνη «պոռնիկ» գոյականից կազմված ածական)[2].

պրաս, -ի, -ից «սոխազգի մի բույս». Համմտ. հուն. πράσον.

պոէտէս (-տիկոս) «բանաստեղծ». Համմտ. հուն. ποιητής (-τικος).

ռետ(ի)ն, -ի, -ից. Համմտ. հուն. ῥητίνη.

սաղմոս, -ի, -ից, -աց. Համմտ. հուն. ψαλμός.

սատրապ, -ի, -աց. Համմտ. հուն. σατράπης (< իրան.).

սարդիոն «մի տեսակ թանկագին քար». Համմտ. հուն. σάρδιον.

սեբաստոս (իգ. սեբաստէ) «օգոստափառ». Համմտ. հուն. σεβαστός (իգ. -τή).

սիկղ, սեռ. սկեղ «մի կշռաչափ և դրամ». Համմտ. հուն. σίκλος.

սիղղոբայ, -ի, -ից «վանկ». Համմտ. հուն. συλλαβή.

սինկղիտոս, -ի, -աց (սունկղիտոս, սինկլիտոս) «ծերակույտ». Համմտ. հուն. σύγκλητος.

սոփեստէս (-ոս). Համմտ. հուն. σοφιστής.

սպունգ, -ոյ. Համմտ. հուն. σπόγγος.

ստադի(ո)ն «մարզադաշտ. 600 ոտնաչափ». Համմտ. հուն. στάδιον.

ստամոքս, -ի. Համմտ. հուն. στόμαχος.

ստոման, -ի, -աց «սափոր». Համմտ. հուն. στάμνος.

տաղանդ/ա, -այ, -ի, -ց «մի կշռաչափ և դրամ. ձիրք». Համմտ. հուն. τάλαντον.

տարտարոս «դժոխք, ստորերկրյա աշխարհ». Համմտ. հուն. τάρταρος.

տապալի (տապաղի, ուշ՝ տապեղ) «նարդի». Համմտ. հուն. τάβλα < լատ. tabula.

տիպ, -ոյ «դրոշմվածք, օրինակ. կերպարանք, ձև». Համմտ. հուն. τύπος.

տիտան, -ի, -աց «հսկա. տիտան». Համմտ. հուն. Τιτάν.

տոկոս, -ի, -ից (-իք) «ծնունդ, պարարք, տուգանք, տոկոս, շահ, վաշխ». Համմտ. հուն. τόκος.

տոմս «թուղթ, թերթ». Համմտ. հուն. τόμος (> ասոր. tūmsā. հայերենն այստեղի՞ց).

տոմար, -ի, -աց «հատոր, գրվածք, (ուշ) ժամանակագրություն». Համմտ. հուն. τομάριον.

տպազիոն «մի թանկագին քար». Համմտ. հուն. τοπάζιον.

փասեան «մի տեսակ թռչուն». Համմտ. հուն. φασιανός.

փիլիսոփոս. Համմտ. հուն. φιλόσοφος (> ասոր. pīlōsōfā > փիլիսոփայ).

փելոն «անթև վերարկու, կրկնոց». Համմտ. հուն. φελόνης (φαιλόνης).

փոս, -ոյ, -ի -ից. Համմտ. հուն. φόσσα < լատ. fossa(?).

քարադր «մի տեսակ թռչուն». Համմտ. հուն. χαράδριος.

քարտ (քարտէս, -էզ) «թուղթ, թերթ, գրականություն». Համմտ. հուն. χάρτης.

քղամիդ, -ի, -աց «պատմուճան». Համմտ. հուն. χλαμύς, -ύδος.

---

[2] Ըստ Հ. Հյուբշմանի [AG, 2, 373], ըստ Ա. Մեյեի [Meillet, 1920, 12]՝ հուն. գոյականը կարող է հայերենին անցած լինել պարթևական միջնորդությամբ և -ik վերջածանցի հավելմամբ։

քոռ «մի կշռաչափ». Համմտ. հուն. χόρ (χόρος) < եբր. kōr.
քսեստ «մի չափ (հեղուկների և սորուն նյութերի)». Համմտ. հուն. ξέστης.
քրիստոն-(եայ), -ի, -իվ. Համմտ. հուն. Χριστός, հյց. -όν «Քրիստոս».

## բ) ՓՈԽԱՌՅԱԼ ՀԱՏՈՒԿ ԱՆՈՒՆՆԵՐ

Հասարակ անունների հետ միասին հունարենից հայերենին են անցել զգալի թվով հատուկ անուններ։ Իր «Հայոց լեզվի պատմության» մեջ [2, 50—51], հենվելով «Հայոց անձնանունների բառարանի» տվյալների վրա, Հ. Աճառյանը բերում է հունական ծագում ունեցող 143 անձնանուն, որոնք պատկանում են ժամանակագրական տարբեր շերտերի։ Ի տարբերություն հասարակ անունների՝ այստեղ մենք կարող ենք հենվել ոչ միայն V դ. մատենագրական տվյալների վրա, այլև հայկական և օտար աղբյուրների հիման վրա որոշել տվյալ անձնանունները կրողների ապրած ժամանակը։ Հ. Աճառյանի ցանկից հանելով՝ 1) V դարից հետո ապրած կամ հիշատակված անձերի անունները, 2) այն անձնանունները, որոնք կրել են Հայաստանում ապրած, բայց ծագումով ոչ հայ անձեր (Գայիանէ, Զենոբ, Զենոն, Ողոմպիադա), 3) այս կամ այն պատճառով հատուկ համարված հասարակ անունները (հմմտ. Բիւզանդ, իմա՛ բիւզանդացի)՝ կարելի է որոշ պայմանականությամբ թողնել ստորև բերվող 52 անունները։ Դրանց մեջ չեն տրված եբրայական ծագում ունեցող՝ թվով մոտ հարյուր անձնանունները, որոնք անցել են հիմնականում աստվածաշնչից. բացառություն է արված երկու անվան համար՝ 1) Ղազար-(ոս), որ այդ ձևով աստվածաշնչում չի հանդիպում, այլ առնված է 'El<sup>c</sup>āzār (Եղիազար) անվան կրճատմամբ կազմված հուն. Λαζάρος անունից, և 2) Մատթէոս, որ առնված է Ματθαῖος ավետարանիչի անունից. սրա աղբյուրն է համարվում եբր. matittjahu «Յահվեի (=աստծու) նվեր»։ Հայերեն անվան կողքին փակագծերում տրվում է տվյալ անձնանունը կրող անձի ապրած դարը, այլև, անհրաժեշտ դեպքում, նշում է արվում տվյալ անձնանվան՝ V դ. հայ մատենագրության մեջ հիշատակված չլինելու մասին. երբ այդպիսի նշումներ չկան, ապա պետք է հասկանալ, որ՝ 1) տվյալ անձն ապրել է V դ., և 2) V դ. մատենագրության մեջ համապատասխան հիշատակություններ կան։ Ցուցակը չծանրաբեռնելու նպատակով հունական անձնանվան հասարակ ձևը չի բերվում, եթե համընկնում է հատուկի հետ։ Այսուհանդերձ պետք է նկատի առնել հետևյալը. 1) ոչ բոլոր երկերի՝ V դ. պատկանելու հարցն է որոշակիորեն լուծված. 2) կան անձնանուններ, որոնք V դ. չեն հիշատակված, բայց կարող են գործածության մեջ եղած լինել V դ. և ավելի վաղ. 3) հունական ծագման շատ անուններ կրել են այն անձերը, որոնք ապրել են Բյուզանդիայում կամ նրան մերձավոր վայրերում, Հայաստանի 387 թ. բաժանումից հետո՝ հատկապես նրա հունական մասում. 4) մի շարք հունական անունների հայկական տառադարձությունը պայմանական է՝ հիմնված լինելով օտար (հատկապես հունական) աղբյուրները հետազոտողների արված մեկնաբանության վրա։

1) **Ագաթանգեղոս** — 'Ἀγαθάγγελος «բարի հրեշտակ».
2) **Ագապես** (IV դ. — 'Ἀγάπιος (ἀγάπη «սեր» բառից. Համմտ. նաև ἀγάπησις «սեր»).

3) *Աթանագինէս* (IV դ.) — 'Αθηνογένης «*աթենածին, Աթենաս աստվածուհու ծնված*».
4) *Աթանաս* — 'Αθανάσιος «*անմահ*».
5) *Աթենոդորոս* (III դ.) (*հայ մատենագրության մեջ* V *դ. չի հիշված*) — 'Αθηνόδωρος «*Աթենատուր, Աթենաս աստվածուհու տրված*».
6) *Ակակ(իոս)*(II *և* III *դդ.*) (*հայ մատենագրության մեջ* V *դ. չի հիշված*) 'Ακάκιος «*անմեղ*».
7) *Ալբիանոս* (IV դ.) — 'Αλβιανός < *լատ.* Albianus «Albius-*ի ցեղից, Ալբիուսյան*»[3].
8) *Ալբիոս* (IV դ.) — ''Αλβιος < *լատ.* Albius (*հմմտ. Ալբիանոս*)[4].
9) *Անդրէաս* — 'Ανδρέας (ἀνδρεῖος «*առնական*»).
10) *Անիկտոս* (IV դ.) (*հայ մատենագրության մեջ* V *դ. չի հիշված*) — 'Ανίκητος «*անհաղթ*».
11) *Անտիոքոս* (IV դ.) — 'Αντίοχος «*կառապետիկ, թշնամու կառքի դեմ քշող*» *կամ* «*դիմակայող*».
12) *Անտիպատրոս* (*մ.թ.ա.* I *դ.՝ ըստ Մարաբանի*) — 'Αντίπατρος «*հորը փոխարինող*».
13) *Անտոն* (IV դ.) — 'Αντώνιος (''Αντων) < *լատ.* Antonius.
14) *Արիստակէս* (III — IV *դդ.*) — *'Αριστότοκος (ἀριστότοκος «*ազնվորդի*»)[5].
15) *Արքեղայոս* (IV *դ. և ավելի վա՞ղ*) — 'Αρχέλαος «*ժողովրդիշխան*».
16) *Բասիլ* (*ուշ՝ նաև Բասիլիոս*) — Βασίλειος «*թագավորական*». *հմմտ. Բարսեղ*.
17) *Բաս(ոս)* (IV *դ.*) — Βάσσος < *լատ.* Bassus «*հաստ, գեր*»[6].
18) *Բարսեղ* — Βασίλειος «*թագավորական*». *տե՛ս Բասիլ*.
19) *Գենարեթիոս* (IV *դ.*) — ? (γένος «*ծնունդ*» *կամ* γενναῖος «*ազատածին, ազնիվ, ազնվական*» *և* ἀρετή «*առաքինություն, քաջություն*» *բառերից*).
20) *Գէորգ* (IV *դ.*) — Γεώργιος (γεωργός «*երկրագործ*»).
21) *Գրիգոր* (II — III *դդ.*) — Γρηγόριος «*արթուն, զգաստ*».
22) *Դեմետր* (IV *դ.*)[7]. — Δημήτριος (Δημήτηρ-*ի՝ երկրագործության աստվածուհու անունից*).
23) *Դիոսկորոս* — Διόσκορος «*աստվածորդի, Զևսի որդի*».
24) *Եպիփան* (IV *դ.*) — 'Επιφανής «*հայտնի, երևելի, նշանավոր, փառավոր*».
25) *Էրատոյ* (*մ. թ. ա.* I *դ.՝ ըստ օտար աղբյուրների*) — 'Ερατώ (*սիրային բանաստեղծության և քնարերգության մուսան՝* ἐρατός «*սիրուն, սիրելի*» *բառից*).

---

[3] *Հ. Հյուբշմանը* [AG, 2, 334] *և, նրա հետևողությամբ, Հ. Աճառյանը,* [*ՀԱնԲ, 1, 103*] *դնում են հուն.* 'Αλβῖνος < *լատ.* Albinus, *բայց սրանք ձևով հեռու են։*

[4] *Հ. Աճառյանը «Հայոց լեզվի պատմության» մեջ* [*2, 50*] *չի հիշատակում, իսկ «Հայոց անձնանունների բառարանում»* [*1, 103*] *հղում է Ալբիանոսին, որ, սակայն, հայերենում առանձին անուն է։*

[5] *Ստուգաբանությունը մերն է. Հ. Աճառյանը* [*ՀԱնԲ, 1, 277*] *տալիս է հուն.* 'Αρίσταρχος *և պրթ.* ristāxēz «*հարություն մեռելոց*» *հնարավոր աղբյուրները։*

[6] *Հ. Աճառյանը* [*ՀԱնԲ, 1, 384*] *անվան մեկնությունը չի տալիս։*

[7] *Ըստ Հովհան Մամիկոնյանի հաղորդած ավանդության՝ անունը պիտի գոյություն ունեցած լինի մի քանի դար ավելի վաղ, ընդ որում պետք է նկատի առնել, որ Դեմետր իշխանի անունը կամ հունականացված է (եթե նա իրոք հնդիկ է եղել), կամ հունական է (եթե Դեմետրի հնդկական ծագման վերաբերյալ ավանդությունը անհավաստի է)։*

26) *Եւգենէոս* (IV *դ.*) (*հայ մատենագրության մեջ* V *դ. չի հիշված*) — Εὐγένιος (εὐγενής *«ազնիվ, ազնվացեղ»*).

27) *Եւթաղիոս* (IV *դ.*) — Εὐθάλιος *«բարեբողբոջ, բարեճյուղ»*.

28) *Եւթիոս* (IV *դ.*) (*հայ մատենագրության մեջ* V *դ. չի հիշված*) — Εὔθιας (εὐθύς *«ուղիղ, ուղղամիտ»*).

29) *Եւղալ* — Εὐλάλιος (εὔλαλος *«գեղեցկախոս»*).

30) *Եւսեբիոս* (IV *դ. ուշ՝ Սեբէոս*) — Εὐσέβιος (εὐσεβής *«բարեպաշտ»*).

31) *Եւստաթէոս* (I *դ.*) (*հայ մատենագրության մեջ* V *դ. չի հիշված*) — Εὐστάθιος (εὐσταθής *«բարեկառույց, կայուն»*).

32) *Եւստաքիոս* (*հայ մատենագրության մեջ* V *դ. չի հիշված*) — Εὐστάχιος (εὔσταχυς *«բարեհասկ»*).

33) *Զոթիկոս* (II *դ.*) (*հայ մատենագրության մեջ* V *դ. չի հիշված*) — Ζωτικός *«կենսատու»*.

34) *Թէոդորոս* (III *դ.*) (*հայ մատենագրության մեջ* V *դ. չի հիշված*) — Θεόδωρος *«աստվածատուր, աստվածանվեր»*.

35) *Կիրակոս* (IV *դ.*) — Κυριακός *«տերունի, տերունական»*.

36) *Կիւրեղ* (IV *դ.*) (*հայ մատենագրության մեջ* V *դ. չի հիշված*) — Κύριλλος (κύριος *«տեր» բառից*).

37) *Կոստանդին* (*հայ մատենագրության մեջ* V *դ. չի հիշված*) — Κωνσταντῖνος < *լատ.* Constantinus (constans, -tis *«կայուն»*).

38) *Հեղինէ* (I *դ.* ?) — Ἑλένη[8].

39) *Ղազար(ոս)* (IV *դ.*) — Λάζαρος < *եբր.* ʼEl$^{c}$āzār *«աստված օգնեց»*. *Հմմտ.* **Եղիազար**.

40) *Ղեւոնդ(իոս)* (II *դ.*) (*ուշ՝ նաև Լեւոն*). — Λέων, -τος, *«առյուծ»*, Λεόντιος.

41) *Ղուկիանոս* (*հայ մատենագրության մեջ* V *դ. չի հիշված*) — Λουκιανός (*լատ.* Lucianus *«լուսավոր»*).

42) *Մատթէոս* (IV *դ.*[9]. *հայ մատենագրության մեջ* V *դ. չի հիշված*) — Ματθαῖος (< *եբր.* mattitjāhū — *«Յահվեի (աստծու) նվեր»*.

43) *Մարկոս* (*հայ մատենագրության մեջ* V *դ. չի հիշված*) — Μάρκος < *լատ.* Marcus (*«մուրճ»* ?).

44) *Մարտիրոս* (*հայ մատենագրության մեջ* V *դ. չի հիշված*) — Μάρτυρος *«վկա, նահատակ»*.

45) *Մելիտոս* (*Մելիտէ, Մելետ, ուշ՝ Մելիտոն, Մեղիտոն*) (III *դ.*) — Μέλιτος *«մեղրային»*.

46) *Պետրոս* — Πέτρος *«քար, վեմ»*.

47) *Պողիկտոս* (III *դ.*) (*հայ մատենագրության մեջ* V *դ. չի հիշված*) — Πολύευκτος *«շատ ցանկալի»*.

48) *Պաւղոս* (*հայ մատենագրության մեջ* V *դ. չի հիշված*) — Παῦλος < *լատ.* Paulus *«փոքրիկ»*.

49) *Սոփիա* (III *դ.*) (*հայ մատենագրության մեջ* V *դ. չի հիշված*) — Σοφία *«իմաստություն»*.

---

[8] *Նշված ստուգաբանությունները անհավաստի են: Հ. Աճառյանը գրում է. «Ըստ իս նշանակում է «նվիրական կողով, որ գեղեցիկ ծաղիկներով զարդարելով նվիրում էին Արտեմիս աստվածուհուն» [ՀԱՆԲ, 3, 78]։*

[9] *Այս անունը կրել է Աղվանքի կաթողիկոսներից մեկը, որ նշանակում է, թե այն տարածված է եղել նաև Հայաստանում։*

50) *Ստեփաննոս* (III *դ.*) — Στέφανος *«պսակ»*.
51) *Փաւստոս* (IV *դ.*) — Φαῦστος < *լատ.* Faustus *«երջանիկ»*.
52) *Փիլիպպոս* (*Փիլիպպէ*) — Φίλιππος (*կոչ.* Φίλιππε) *«ձիասեր»*:

*Բացի հունական անուններ կիրելուց, հայերը հելլենիզմի շրջանում ենթարկվում են նաև հունական կրոնական ազդեցությանը։ Հայկական հեթանոսական դիցարանի աստվածությունները համադրվում և բնութագրվում են ըստ համապատասխան հունական աստվածությունների, ստանում նրանց համար բնորոշ գործառույթներ։ Հայերի գլխավոր աստվածը՝ Արամազդը համադրվում է Զևսի հետ* (Ζεύς, *սեռ.* Διός), *և պատահական չէ, որ Ագաթանգեղոսը նրանց անունները գործածում է որպես հավասարարժեք. «Եւ անդ կործանեցին զբագինն Զեւս դիցն Արամազդայ» (գլ. ճԹ.)։ Այս նույն ձևով էլ մյուս արական աստվածություններից Միհրը սովորաբար համադրվում է Հեփեստոսի* (Ἥφαιστος), *Վահագնը՝ Հերակլեսի* (Ἡρακλῆς *— Հերակղ) և, մասամբ, Ապոլլոնի* (Ἀπόλλων). *Տիրը՝ Ապոլլոնի, իգական աստվածություններից Անահիտը՝ Արտեմիսի* (Ἄρτεμις,-ιδος). *Աստղիկը՝ Աֆրոդիտեի* (Ἀφροδίτη), *Նանեն՝ Աթենասի* (Ἀθηνᾶ) *հետ. համապատասխան հունական արձանները դրվել են այդ աստվածություններին նվիրված հեթանոսական տաճարներում [ՀԺՊ, 1, 904—905]։ Իհարկե, գործառույթների և բնութագրերի բացարձակ համադրություն տեղի չի ունենում, և նոր անունների տակ էլ հայկական աստվածներն ու աստվածուհիները պահպանում են իրենց բնորոշ գծերը։*

## գ) ՀՈՒՆԱԿԱՆ ՓՈԽԱՌՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀՆՉՅՈՒՆԱԿԱՆ ԱՌԱՆՁՆԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Հնչյունական առումով հնագույն հունական փոխառությունները դրսևորում են մի շարք էական առանձնահատկություններ. 1) բացակայում են հունարենին ոչ հատուկ շչական հնչյունները՝* **ճ, ջ, չ, շ, ժ,** *այլև* **ծ, ձ, ց** *հպաշփականները. 2) հիմնականում պահպանվում են կրկնակ բաղաձայնները* (**աբբայ, սիղղոբայ**). *բայց հմմտ.* ἐκκλησία—**եկեղեցի**, *որտեղ կրկնակ* κκ-*ի վերածումը պարզ* **կ**-*ի գալիս է խոսակցական լեզվից. 3) հուն.* υ-*ն սովորաբար արտահայտվում է* **իւ**-*ով* (κυριακή—**կիւրակէ**), *երբեմն* **ի**-*ով* (τύπος — **տիպ**), *հազվադեպ՝* **ու**-*ով* (σμύρρα —**զմուռս**). *պետք է կարծել, որ վերջինս ավելի հատուկ է եղել խոսակցական լեզվում գործածական բառերին. 4) հանդես են գալիս բուն հայերեն բառերի համար ոչ բնորոշ (միայն ձայնավորների սղման հետևանքով առաջացող) հնչյունական կապակցություններ՝* **փս** (ψ), **քս** (ξ), **թր** (θρ), **րհ** (ῥ) *և այլն. միայն* **սաղմոս** *բառում ընկել է* ψ-*ի առաջին բաղադրիչը* (ψαλμός), *որ հավանաբար արդյունք է բառի նախնական բանավոր գործածության. 5) երկար ու կարճ ձայնավորների և երկբարբառների տառադարձությունը հետևողական բնույթ չունի. երկար* η-*ն և* ω-*ն կարող են արտահայտվել ինչպես* **ե**-*ով և* **ո**-*ով* βῆμα—**բեմ**, κανών—**կանոն** *և այլն), այնպես էլ* **է**-*ով և* **աւ**-*ով (ուշ* **օ**-*ով), առաջինը՝ մանավանդ բառավերջում* (κῆτος —**կէտ**, λωδίκιον—**լաւդիկ, լօդիկ**). *հուն.* η-*ի* **ի** *տառադարձությունը պետք է համարել համեմատաբար ավելի ուշ երևույթ՝ ըստ հունական ուշ արտասանության* (δηνάριον —**դենար** *և* **դինար**). *երկբարբառները համապատասխանաբար տառադարձված են և՛ երկբարբառներով, և՛ մենաբարբառ-*

*նկրով. 6) մի շարք դեպքերում նկատվում են հունարենի բառերի զգալի ձևափոխության կամ հնչյունների ու սովորական տառադարձության դեպքեր, որոնք հիմնականում արդյունք են այդ բառերի խոսակցական գործածության մեջ համապատասխան ժողովրդական ստուգաբանության և գրագրային ու դիրքային հնչյունափոխության՝* ἀδάμας, -ντος — ադամանդ/տ՝ ադամանդ/տ-*ի* ***կողքին***, ἀναβολή — աղարողոն, ἐργασία — արգասիք,[10] βήρυλλος — բիւրեղ, γαλεάγρα — գառագիղ, γραμματικός — գրամարտիկ(ոս)՝ գրամատիկոս-*ի* ***կողքին***, ἐκκλησία — եկեղեցի, κάλαθος — կեղք՝ *բրբռ.* կաղաթ, կալաթ ***ձևերի կողքին***, κανδήλα — կանթեղ, μαρτύριον — մատուռն, μηλοπέπων — մեղրապոպ, μηχανή — մեքենայ, Ὀλυμπιάς, -άδος — ողոմպիադ՝ ողիմպիադ-*ի* ***կողքին***, στόμαχος — ստամոքս, στάμνος — ստոման, τάβλα — տապալի, տապաղի. **7)** ***առանձին դեպքերում նկատվում են հուն.*** ι (i) ***ձայնավորի սղման դեպքեր, որ խոսում է այդ բառերի փոխառման ժամանակի՝ նախքան*** III ***դ. սկիզբը լինելու մասին*** [**Hübschmann, 1898**]՝ δίστεγον — դստիկոն, κιρκήσιον — կրկէս, πίναξ — պնակ, πινακίς,-ίδος — պնակիտ. *8)* ***կան դեպքեր, երբ հուն. ձայնեղները խլանում են*** (δίστεγον — դստիկոն, τάβλα (< *լատ.* tabula) < տապալի). ***սա պետք է հին բարբառային երևույթի արտացոլում համարել. հաճախակի է*** -ιδ- > -իտ ***փոխանցումը՝*** πινακίς,-ίδος — պնակիտ, παλαθίς,- ίδος — պաղատիտ. ποδαγρός-***ից եկող*** պատագրոս ***բառի դեպքում հնարավոր է սուր.*** ptagrā-***ի ազդեցությունը. ավելի սովորական է ձայնեղի դիրքային խլացումը կամ խուլերի ձայնեղացումը ռնգայինից հետո. 9) հին փոխառություններում*** α-***ին և*** ο-***ին այլ ձայնավոր հաջորդելու դեպքում հաճախ է գալիս*** յ ***ձայնակապը*** (ἀήρ — այեր), ***ավելի նորերում՝ ոչ.*** *11)* ***հուն.*** ο ***ձայնավորը սովորաբար արտահայտվում է*** ո-***ով, բայց մի դեպքում փոխվում է*** ու-***ի ռնգայինից առաջ, ինչպես բնիկ հայերեն բառերում՝*** σπόγγος, ***հայց.*** -ον — սպունգն, ***մի դեպքում էլ ընկնում է՝*** τοπάζιον — տպազիոն.

*Հայերենի հունական փոխառությունների հնչյունական համապատասխանությունները կարելի է արտահայտել հետևյալ աղյուսակով (վերևում հիշված անկանոն հնչյունափոխությունները չեն տրվում).*

| ***հուն.*** | ***հայ.*** | ***օրինակներ*** |
|---|---|---|
| β | ***բ*** | βαλανεῖον — ***բաղանիք*** |
| | | ἀναβολή — ***աղարողն*** |
| | | ἀββᾶ — ***աբբա(յ)*** |
| δ | ***դ*** | δίστεγον — ***դստիկոն*** |
| | | ἀνδρίας — ***անդրի*** |
| γ | ***գ*** | γαλεάγρα — ***գառագիղ*** |
| | | μανδραγόρας — ***մանրագոր*** |
| π | ***պ*** | πίναξ — ***պնակ*** |
| | | μελοπέπων — ***մեղրապոպ*** |
| τ | ***տ*** | τύπος — ***տիպ*** |
| | | μέταξα — ***մետաքս*** |
| κ | ***կ*** | καμάρα — ***կամար*** |
| | | σίκλος — ***սիկղ*** |
| φ | ***փ*** | φιλόσοφος — ***փիլիսոփոս*** |
| | | σοφιστής — ***սոփեստ*** |
| θ | ***թ*** | θηριακή — ***թերիակէ*** |
| | | αἰθήρ — ***եթեր*** |
| χ | ***ք*** | χαρτής — ***քարտ*** |
| | | ἀρχιεπίσκοπος — ***արքեպիսկոպոս*** |

[10] *Հնարավոր է փոխառություն պարթևական միջնորդությամբ.*

| 1 | 2 | 3 |
|---|---|---|
| ζ | զ | ὄρυζα — որիզ |
| ̔ | հ | ῥήτωρ — հռետոր |
| | | ῥητίνη — ռետին |
| σ | ս | σίκλης — սիկղ |
| | | πράσον — պրաս |
| ρ | ր | βάρβαρος — բարբարոս |
| | ռ | ῥητίνη — ռետին. |
| | | χόρ — քոռ |
| λ | լ | λίτρα — լիտր |
| | | παλάτιον — պալատն |
| | ղ | ὕλη — հիւղ(է) |
| | | σίκλα — սիկղ |
| μ | մ | μαρτύριον — մատուռն |
| | | στάμνος — ստոման |
| ν | ն | νάρδος — նարդոս |
| | | τάλαντον — տաղանտ/դ |
| α | ա | ἀνδρίας — անդրի |
| | | δάφνη — դափնի |
| ε | ե | ἐκκλησία — եկեղեցի |
| | | μέταξα — մետաքս |
| η | ե | ἀήρ — այեր |
| | | βῆμος — բեմ |
| | է | κῆτος — կէտ |
| | | πεντηκοστή — պենտեկոստէ |
| | ի | δάφνη — դափնի |
| ο | ո | Ὀλυμπιάς — ողիմպիադ |
| | | φόσσα — փոս |
| | ու | σπόγγος — սպունգն |
| ω | ո | κανών — կանոն |
| | աւ (օ) | λωδίκιον — լաւդիկ (լօդիկ) |
| ι | ի | λίτρα — լիտր |
| | — | πίναξ — պնակ |
| υ | ի | ὄρυζα — որիզ |
| | իւ | ὕλη — հիւղ(է) |
| | յ | ὑάκινθος — յակինթ |
| | ու | σμύρρα — զմուռս |
| αι | ե | αἰθήρ — եթեր |
| | | αἱρετικός — հերետիկոս |
| ει | ե | κλεισοῦρα — կղեսուր |
| | ի | πανδοχεῖον — պանդոկի |
| οι | ու | ποιητής — պուէտէս |
| αυ | աւ | αὔγουστος — աւգոստոս |
| ευ | եւ | Εὐσέβιος — Եւսեբիոս |
| ου | ու | κλεισοῦρα — կղեսուր |

## դ) ՀՈՒՆԱԿԱՆ ՓՈԽԱՌՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՁԵՎԱԲԱՆԱԿԱՆ ԵՎ ԲԱՌԱԿԱԶՄԱԿԱՆ ԱՌԱՆՁՆԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Ձևաբանական առումով կարելի է տարբերել հունարենում 1-ին և 2-րդ հոլովման պատկանող փոխառյալ բառերի երկու շերտ՝ 1) խոսակցական լեզվից եկող և մեծ մասամբ ժամանակագրորեն հին բառեր, որոնց մեջ հունական վերջավորությունները ընկնում են, և 2) ստանդարտ լեզվի ու կրթված խավի կողմից սովորաբար ավելի ուշ կատարված փոխառություններ, որոնց մեջ դրանք պահպանվում են։ Առաջին շերտի բառերը հարկ ենք համարում բերել ամբողջությամբ.* **արգասի-ք** (ἐργασία), **բաղանի-ք** (βαλανεῖον), **բաղիստր** (βαλίστρα), **բեմ** (βῆμα), **բիւրեղ** (βήρυλλος), **գառագիղ** (γαλεάγρα), **դենար** (δηνάριον), **եկեղեցի** (ἐκκλησία), **լաւդիկ** (λωδίκιον *կամ* λώδιξ,-ικος), **լիտր** (λί-

τρα), կամար (καμάρα), կանթեղ (κανδήλα), կար(ա)կին (καρκίνος), կեղր (κάλαθος), *կետ (κῆτος)*, կղեսուր (κλεισοῦρα), կղեր-ք (κλῆρος), կոնք (κόγχη), կըր-կես (κιρκήσιον), հիւղ (*և* հիւղէ (ὕλη), հի(ւ)պատ (*և* հիւպատոս) (ὕπατος), մանրագոր (μανδραγόρας), մարմար (μάρμαρον), մեղրապոպ (μηλαπέπων), մե-տաքս (μέταξα՝ IV *դ. ոչ վաղ հանդիպող բառ*), յակինթ (ὑάκινθος), նոտար (νοτάριος), որթոդոքս (ὀρθόδοξος), որիզ ((ὄρυζα), պանդոկի (πανδοκεῖον), պոռ-նիկ (πορνικός), պրաս (πράσον), ռետին (ῥητίνη), սատրապ (σατράπης), սիկղ (σίκλος), սպունգ (σπόγγος), ստոման (στάμνος), տաղանդ (*և* տաղանտ) (τάλαντον), տիպ (τύπος), տոմար (τομάριον), փասեան (φασιανός), փիլոն (φελόνης) փոս (φόσσα), քարադր (χαράδριος), քարտ (χάρτης), քսեստ (ξέστης)։ *Այս բա-ռերի թիվը կազմում է մեր կողմից առանձնացվածների կեսից մի փոքր պակաս՝ 46. այստեղ չի մտել* զմուռս *բառը* (σμύρρα), *որի* ս-*ն անբա-ցատրելի է։ Երկրորդ շերտի բառերից բերենք մի քանի օրինակ՝* արքեպիս-կոպոս (ἀρχιεπίσκοπος), բարբարոս (βάρβαρος), տոկոս (τόκος), պուետես (ποιητής), թերիակէ (θηριακή. *հմմտ. ասոր.* terjaqē < *հուն.*), կաթողիկէ (καθολική), կիտրոն (κίτρον < *լատ.* citrum), սարդիոն (σάρδιον) *և այլն։ Որոշ դեպքերում մենք գործ ունենք զգալիորեն ձևափոխված (վերջին ձայնավորի անկմամբ կամ փոփոխմամբ բնութագրվող) բառերի հետ, որոնք, ամենայն հավանականությամբ, նույնպես գալիս են խոսակցական լեզվից՝* մատուռն (μαρτύριον), պալատն (παλάτιον < *լատ.* palatium), ստամոքս (στόμαχος), տոմս (τόμος. *բայց հմմտ. ասոր.* tūmsā < *հուն.*)։ Մեքենայ և սիղղոբայ *բառերը հավանաբար գալիս են* μηχανή (*դոր.* μηχανά) *և* συλλαβή *բառերի հոգնակի* μηχαναί *և* συλλαβαί *ձևերից, իսկ* տապալի *բառը փոփոխված է ամ-բողջապես՝ հուն.* τάβλα-*ից* (< *լատ.* tabula)։

*Հունական 3-րդ հոլովման բառերի դեպքում տեղի է ունենում հետևյալը. 1) առանց հուն. -ς վերջավորության՝ ձայնորդահանգ բառերի դեպքում դր-անք սովորաբար առնվում են նույնությամբ՝* այեր (ἀήρ, -ερος), եթեր (αἰθήρ, -έρος), լեգէոն (λεγεών, -ῶνος < *լատ.* legeo, -onis), կանոն (κανών, -όνος), ռետոր (ῥήτωρ, -ορος), տիտան (Τιτάν, -ᾶνος). *2) այդպիսի վերջավո-րություն ունեցող բառերի դեպքում հնարավոր է երկու ելք. ա) ինչպես հունական 1-ին և 2-րդ հոլովման բառերի առաջին շերտում, տեղի է ունե-նում ուղղականի վերջավորության, ինչպես նաև սեռականում հանդես եկող հիմքակազմ տարրի անկում՝* անդրի (ἀνδρίας, -αντος, *բայց հմմտ. նաև* ան-դրիանդ/տ), ափսէ (ἀψίς, -ῖνος), *բ) պահպանվում է բուն հիմքը, որ հան-դես է գալիս թեք հոլովներում՝ վերջավորության անկմամբ՝* ադամանտ/դ (ἀδάμας, -αντος), դ(ե)լփին (δελφίς, -ῖνος), ողոմպիադ (Ὀλυμπιάς, -άδος), պաղատիտ (παλαθίς, -ίδος), պնակ (πίναξ, -ακος), պնակիտ (πινακίς, -ίδος, *եթե ոչ* πινακίδιος), քղամիդ (χλαμύς, -ύδος)։ *3-րդ հոլովման բառերի դեպ-քում ուղղականը վերջավորությամբ հանդերձ չի արտացոլվում։*

*Հունական ծագում ունեցող բառերը բաղադրության մեջ են մտնում կամ թեքվում սովորաբար հայերենի բառակազմական հիմքերին հատուկ եղանակ-ներով՝ որպես հայերենին մերված բառեր* (ադամանդ—ադամանդեայ, արգասի-ք—արգասաւոր, բարբարոս—բարբարոսական *և այլն), բայց կան դեպ-քեր, երբ ստացվում են հայերենի բուն ձևերի և բառակազմական հիմքերի տարբերություններ՝ 1) հունական վերջավորությունների անկումով՝* ագոս-տոս—ագոստական. *2) հունական հայցականի ձևով՝* Քրիստոս—Քրիստոնե-

այ. *3) հունարենի բառակազմական հիմքերին մոտ ձևերով՝* զմուռս—զմռնենի (Σμύρνα) —զմռնել (σμύρρα) *(բայց հմմտ. նաև* զմռսել):

*Հատկապես սովորական է հատուկ անունների* -աս, -էս, -ոս *վերջավո-րությունների անկումը և ձևափոխությամբ ա-ի ունեցող հոլովումը՝* Արիս-տակէս—Արիստակայ *և այլն։*

*Հունական ծագում ունեցող բառերը հոլովվում են այն ընդհանուր օրի-նաչափություններով, որոնք բացահայտված են մեր «Հին հայերենի հոլով-ման սիստեմը և նրա ծագումը» գրքում (Երևան, 1959, էջ 109—122). միայն թե նշենք, որ ոչ բոլոր բառերն են հանդիպում հոլովված ձևով ու, մանա-վանդ, լրիվ հարացույցով, և որ մի շարք դեպքերում առկա են հատկապես հունարենի բառերին բնորոշ գծեր. դրանցից էականը հատուկ անունների* -աս, -էս, -ոս *վերջավորությունների անկման երևույթն է (հմմտ.* Արիստա-կէս—Արիստակայ), *թեև շատ դեպքերում դրանք պահպանվում են. վերջին դեպքում բուն հոգնակերտ -ք-ի փոխարեն երբեմն հանդես է գալիս հավա-քականի* -ունք-*ը (հմմտ.* եպիսկոպոսունք):

## ե) ՀՈՒՆԱԿԱՆ ՓՈԽԱՌՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԻՄԱՍՏԱՅԻՆ ԽՄԲԵՐԸ

*Հունական փոխառությունների՝ հայերենի բառապաշարին մերվելու աս-տիճանն ավելի փոքր է, քան իրանական և սեմական փոխառություններինը։ Չնայած սրան՝ հունական հնագույն փոխառությունների մեջ զգալի թիվ են կազմում այն բառերը, որոնք դեռևս շարունակում են իրենց գործածությունը։*

*Հունական փոխառությունները ըստ կենսունակության բաժանվում են ե-րեք խմբի. 1) բառեր, որոնք մինչև այժմ էլ շարունակում են գործել ժամա-նակակից գրական լեզվում՝ երբեմն ոճական և գործառական որոշակի սահ-մանափակությամբ, երբեմն էլ հնչյունական մասնակի ձևափոխությամբ. սը-րանք կազմում են գերակշռող մեծամասնությունը՝* աբբա(յ), ադամանդ, ա-յեր *(հզվդ.),* անդրի, արգասիք, արքեպիսկոպոս, ափսէ, բաղանի-ք, բաղիս-տըր, բարբարոս, բեմ, բիւրեղ, դափնի, դելփին, դինար, դստիկոն, եթեր, եկեղեցի, եպիսկոպոս, զմուռս, լեգէոն, լիտր, կաթողիկէ, կաթողիկոս, կամար, կանթեղ, կանոն, կարկին, կէտ, կիտրոն, կիւրակէ, կղեր, կոնք, կրկէս, հե-րետիկոս, հիւլէ (հիւղէ), հիպատոս, հռետոր, մանրագոր, մատուռն, մար-մար, մարտիրոս, մեղրապոպ, մետաքս, մեքենայ, յակինթ, նարդոս, նոտար, պալատն, պանդոկի (*ուշ՝* պանդոկ), պնակ, պնակիտ, պոռնիկ, պրաս, ռե-տին, սաղմոս, սատրապ, սարդիոն, սիկղ, սոփեստէս (*ուշ՝* սոփեստ), սպունգ, ստամոքս, տաղանդ, տարտարոս, տիպ, տիտան, տոկոս, տոմար, տոմս, տպազիոն, փասեան, փիլոն, փոս, քարտ (քարտէզ՝ *իմաստային տարբերակ-մամբ),* քղամիդ, քրիստոն(եայ). օգոստոս *բառը «կայսր» իմաստով չի գոր-ծածվում բայց դեռևս հանդիպում է* օգոստափառ *բաղադրությունը. 2) բառեր, որոնք դուրս են եկել և ապա շրջակա լեզուների ազդեցությամբ վերակենդա-նացել՝* ողումպիադ (*այժմ՝* օլիմպիադա), որթոդոքս (*այժմ՝* օրթոդոքս), պոէ-տէս (*այժմ՝* պոետ). տպազիոն-*ի կողքին գործածվում է* տոպազ *նոր ձևը. 3) բառեր, որոնք դարձել են անգործածական՝* բաթրոն, գրամատիկոս, լօդիկ, կեղթ *և այլն. այս առումով բնորոշ է այն հանգամանքը, որ հունարենից*

առնված ձևերը երբեմն տեղը զիջել են իրենց այլալեզու կրկնակներին. այսպես, բաղսամո(վ)ն բառը իր տեղը զիջել է արաբերենից փոխառված բալասան-ին. թէատրոն ձևի փոխարեն որպես ավելի սովորական բառ գործածվել է ասորերենի միջնորդությամբ փոխառված թատր ձևը, որ դեռ շարունակում է գործածվել բաղադրություններում՝ թատերական, թատերախաղ և այլն. այժմյան թատրոն ձևը երկու ձևերի յուրատեսակ խառնուրդն է։

Հունարենից հայերենի փոխառած բառերը ըստ իմաստային խմբերի բաշխվում են հետևյալ կերպ.

1. Ֆիզիկական աշխարհ. 1.11 հիւղ(է). 1.221 կղեսուր. 1.331 փոս. 1.441 ադամանդ. բիւրեղ. մարմար. յակինթ. սարդիոն, տպազիոն. 1.71 այեր. եթեր.

3. Կենդանիներ. 3.671 փասեան. քարադր. 3.651 դ(ե)լփին. կէտ. կոնք «խեցեմորթ». սպունգ. 3.851 բասիլիսկոս.

4. Մարմնի մասեր, մարմնական գործառություններ և պայմաններ. 4.46 ստամոքս. 4.841 պատագրոս. 4.88 բաղսամո(վ)ն. թերիակէ.

5. Ուտելիք և ըմպելիք. կերակրի պատրաստում և ամանեղեն. 5.261 կոնք. 5.32 ափսէ. պնակ. 5.34 ստոման. 5.68 պրաս. 5.751 պաղատիտ.

6. Հագուստ, անձնական զարդարանք և խնամք. 6.25 մետաքս. 6.41 ագարողոն. լաւփիկ (լօփիկ). փիլոն. քղամիդ.

7. Բնակարան, տուն, կահկարասի. 7.121 բաղանիք. կրկէս. պալատն. պանդոկի. 7.271 կամար. 7.28 դստիկոն. 7.43 բաթրոն. բեմ. 7.45 կանթեղ.

8. Երկրագործություն, բուսականություն. 8.41 արգասիք. 8.48 որիզ. 8.51 դափնի. կմուռս. կիտրոն. մեղրապոպ. ուտին.

9. Ֆիզիկական տարբեր գործողություններ. արվեստ և արհեստ. 9.411 [տաղանդ]. 9.422 մեքենայ. 9.471 կար(ա)կին. 9.76 կեղթ. 9.83 անդրի.

11. Ունեցվածք, սեփականություն և առևտուր. 11.441 դենար. սիկղ. տաղանդ. 11.68 տոկոս. 11.831 լիտր. [կեղթ. սիկղ]. տաղանդ. քառ. քսեստ.

12. Տարածական հարաբերություններ՝ տեղ, ձև, չափ. 12.521 ստադիոն. [լիտր. կեղթ. սիկղ. տաղանդ. քառ. քսեստ]. 12.551 տիպան.

14. Ժամանակ. 14.62 կիւրակէ.

16. Զգացմունք. խառնվածքային, բարոյական և գեղագիտական ըմբռնումներ. 16.261 թէատրոն. կրկէս, ողոմպիադ. [ստադիոն]. տապալի.

17. Մտածողություն, միտք. 17.22 մորոս. 17.271 սոփեստէս. փիլիսոփոս.

18. Ձայնական արտահայտություն, խոսք. ընթերցանություն և գիր. 18.211 հռետոր. 18.531 սիղղոբայ. 18.55 պնակիտ. 18.56 տոմս. քարտ. 18.64 տիպ. 18.61 տոմար. 18.66 գրամա(ր)տիկ(ոս). նոտար. 16.67 պուէտէս.

19. Տարածքային, հասարակական և քաղաքական բաժանումներ. հասարակական հարաբերություններ. 19.311 սինկղիտոս. 19.32 ավգոստոս. սեբաստոս. 19.35 անթիհիւպատոս (անթիպատոս). հիւպատոս. սատրապ. 19.521 բարբարոս. 19.72 պոռնիկ.

20. Ռազմական գործ. 20.151 լեգէո(վ)ն. 20.211 բաղիստր. 20.35 [կղեսուր].

21. Օրենք. 21.12 կանոն. 21.39 գառագիղ.

22. Կրոն և նախապաշարմունք. 22.111 հերետիկոս. որթոդոքս. քրիստոնէ(այ). մարտիրոս. 22.13 մատուռն. 22.17 սաղմոս. 22.181 աբբա(յ). արքեպիսկոպոս. եպիսկոպոս. կաթողիկոս. 18.182 կղեր-ք. կղերիկոս. 22.21 եկեղեցի. կաթողիկէ. 22.211 պենտեկոստէ. 22.32 տարտարոս։

Ինչ եզրակացություններ կարելի է անել հնագույն հունական փոխառությունների գործառական և իմաստային բաշխման հիման վրա։

1) Ընդհանրապես բացակայում են բայերը, թվականները, դերանունները, սպասարկու բառերը. փոխառությունների գերակշռող մասը գոյական անուններ են, փոքր մասը՝ ածականներ։ Սրանց բառակազմական արժեքն էլ համեմատաբար մեծ չէ։ Նշանակում է՝ հունական փոխառությունները առնվել են հիմնականում որպես պատրաստի միավորներ. այս առումով բընորոշ են կղեր-ի և կղերիկոս բառերը (թեև հմմտ. նաև կղերական)։

2) Փոխառությունների մեջ գերակշռում են մշակութային, առևտրական, հասարակական-քաղաքական և կրոնական բառերը, մասնավորապես այնպիսիները, որոնք կապված են հունական քաղաքակրթության հետ։

3) Կենդանիների ու բույսերի անունները կամ հայերին անծանոթ ու քիչ ծանոթ (հատկապես ծովային կենդանիների) տեսակների անվանումներ են, կամ գալիս են դիցաբանությունից ու կրոնական գրքերից։

4) Համեմատաբար սակավաթիվ են ֆիզիկական աշխարհի, մարմնի մասերի և, փոքր-ինչ անսպասելի է, ժամանակի ու տոմարի, ռազմական գործի, օրենքի հետ կապված անվանումները. V դ. վկայված է շաբաթվա անուններից միայն կիւրակէ-ն. տոմար բառն իր այժմյան իմաստն ստացել է համեմատաբար ուշ։

## 6. ՀԱՅԵՐԵՆԸ ԵՎ ԼԱՏԻՆԵՐԵՆԸ

Հայ-հռոմեական հարաբերությունների պատմությունն ընդգրկում է շուրջ չորս դար՝ կրելով գերազանցապես քաղաքական բնույթ, որին, բնականաբար, ուղեկցում է մշակութային ազդեցությունը։ Հռոմեական նվաճումներն արևելքում սկզբնապես ոչ միայն չեն հասցնում Հայքի նկատմամբ քաղաքական գերիշխանության, այլև նույնիսկ նպաստում են Հայքի քաղաքական անկախությանը։ Սելևկյանների դեմ Մագնեսիայի նշանավոր ճակատամարտում հռոմայեցիների տարած հաղթանակից հետո Արտաշեսը և Զարեհը իրենց հռչակում են Հայաստանի առանձին մասերի թագավորներ և անցնում քաղաքական նվաճումների՝ ընդարձակելով իրենց սկզբնական տիրույթները։ Միայն մ. թ. ա. I դարում, Տիգրան 2-րդի ժամանակներում հայ-հռոմեական պատերազմների հետևանքով Հայաստանը դառնում է Հռոմի հովանավորությունը կրող պետություն՝ քաղաքական կախման տարբեր աստիճաններով։

Լատիներենի ազդեցությունը հայերենի վրա պետք է տեղի ունենար առաջին հերթին վարչական օղակներով և Հայաստանում գտնվող հռոմեական բանակի միջոցով։ Հռոմայեցիները Հայաստանում թողնում են նույնիսկ լատիներեն արձանագրություններ։ Հռոմեական ազդեցությունը ուժեղ պետք է լիներ հատկապես այն շրջանում, երբ Հայաստանը հայտարարվում է հռոմեական նահանգ (պրովինցիա), կամ էլ կառավարվում է Հռոմի դրածոների կողմից։ Մ. թ. IV դարում Արևելյան Հռոմեական կայսրության ձևավորմամբ հայերենի վրա լատիներենի ազդեցությունը փաստորեն դադարում է, այդ կայսրության պաշտոնական լեզուն հունարենն էր։

Հայերենի վրա լատիներենի ազդեցությունը տեղի է ունեցել երկու ձևով՝

անմիջաբար և միջնորդված։ Լատիներենից հունարենի միջոցով կատարված հայերեն փոխառությունների մասին մենք առիթ ունեցանք խոսելու հայերենի և հունարենի փոխհարաբերությանը նվիրված հատվածում։ Այնտեղ մատնանշվեցին մի շարք բառեր, որոնք լատիներենից հայերենին են անցել հունարենի միջոցով՝ ագուստոս, դենար, լադիկ, լեգէո(վ)ն, կանթեղ, կիտրոն, կղեսուր, կրկէս, նոտար, պալատն, տապալի, փոս:

Այստեղ կանգ առնենք անմիջական համարվող փոխառությունների վրա, թեև ոչ բոլոր դեպքերում կարելի է վստահ լինել, որ դրանք հունական միջնորդությամբ չեն կատարվել։ Հենվելով գերազանցապես Հ. Հյուբշմանի վրա՝ Հ. Աճառյանը [Աճառյան, ՀԼՊ, 1, 326—329] թվարկում է 10 բառ, որոնք բնականաբար պիտի առնված լինեն, որպես անմիջական փոխառություններ, նախագրային շրջանում [հմմտ. Meillet, 1913].

1) արկղ, -եղ. հմմտ. ժող. լատ. arcla (հուն. ἄρκα)՝ գրական arcula-ի դիմաց.

2) բաստեռն, -ան, -անց «գահավորակ». հմմտ. լատ. basterna. հուն. փոխառյալ βαστέρνιον ձևը գործածված է հայերենից ավելի ուշ՝ VI դ. (Հուստինիանոսի օրենսգրքում)։

3) լկտիք «գահավորակ». հմմտ. լատ. lectica (> հուն. λεκτίκιον > հայ. ղեկտիկ).

4) կայսր, -եր. հմմտ. լատ. caesar (> հուն. καῖσαρ > հայ. կեսար).

5) կառ-ք, -ի, -աց. հմմտ. լատ. carrus (< գալլ. carros. հմմտ. և հուն. κάρρον < լատ. carrum)[1].

6) դենջակ, -ի, -աց. «անձեռոց, սրբիչ». հմմտ. լատ. lentium (linteum) (> հուն. λέντιον > հայ. ղենտի).

7) մարգարիտ, -ի, -աց. հմմտ. լատ. margarita (> հուն. μαργαρίτης).

8) պան «կլոր հաց, բլիթ». հմմտ. լատ. panis «հաց» (< հուն. πᾶνις).

9) սիտղ «դույլ». հմմտ. լատ. situla (> հուն. σίτλα) (?).

10) սկուտղ, -եղ (ուշ՝ սկուտեղ). հմմտ. լատ. scutella (> հուն. σκουτέλα)։

Սրանցից սիտղ-ը գործածված է ուշ շրջանում, և, ինչպես նշում է նաև Հ. Աճառյանը, ավելի հավանական է նրա հունական ծագումը։ Մնացած ինը բառի՝ լատիներենից փոխառված լինելու ապացույցներն էլ համեմատաբար թույլ են. 1) չի կարող լուրջ ապացույց ծառայել բառերի շատ հին լինելու փաստարկը, եթե նկատի առնենք, որ հունական քաղաքական և մշակութային ազդեցությունն էլ հելլենիզմի շրջանում կարող էր այս կամ այն կերպ արտահայտված լինել բառային փոխառությունների ձևով. նկատի ունենալով բաստեռն, կառք, պան բառերի հունական զուգահեռ ձևերի համեմատաբար ուշ գործածված լինելը՝ նրանց համար խոսք կարելի է ենթադրել անմիջական լատինական աղբյուր. 2) արկղ, սկուտղ, դենջակ բառերի՝ անմիջաբար լատինական աղբյուրից ծագելը կասկածի տակ է դնում հենց ինքը՝ Աճառյանը՝ հարցը լուծելով հօգուտ լատիներենի՝ առանց համոզիչ հիմնավորման. 3) մարգարիտ բառի դեպքում հունարեն μαργαρίτης > լատ. margarita > հայ. մարգարիտ անցում ենթադրելը հիմնվում է հայ. բառի հնության վրա (հմմտ. վիպասանական հատվածում «Տեղայր մարգարիտ...»), բայց սա, ինչպես նշեցինք, թույլ ապացույց է. ավելի կարևոր է նշել մարգարիտ բառի ի–ա հո-

[1] Հ. Աճառյանը նշում է, որ այս բառը հունարենում չկա, բայց իրականում այն հանդիպում է [հմմտ. Chantraine, DELG, 2, 501]։

լսվումը, որի ա-ն կարող էր արտացոլել լատ. a-ով ձևը. Հնարավոր է մի այլ ենթադրություն ևս. հունարեն բառը համարվում է արևելյան ծագման, և որպես ապացույց բերվում է պահլավ. marvārīt (պրսկ. marvariδ) բառը, որի փոխառյալ լինելը նույնպես հնարավոր է [Frisk, GEW, 2, 174—175. Chantraine, DELG, 3, 666]։ Քանի որ v>g անցումը սովորական է հայերենի համար և տեղի է ունեցել նաև հայերենի ուրարտական փոխառությունների մեջ, թերևս հենց հայերենը պետք է համարել հունարենի աղբյուրը՝ ենթադրելով, որ նա իր հերթին բառը փոխ է առել իրանականից կամ դրա բուն աղբյուրից՝ բավական հնում։ Նշենք, որ կա նաև իրան. va>պրսկ. ga անցում, բայց սկզբնադիրքում։

Հայերենի լատինական փոխառությունների առանձնահատկությունների մասին հարկավոր է նշել հետևյալը. 1) այդ բառերում նկատվում է վերջավանկերի նույն կարգի թուլացում կամ անկում, ինչպես բնիկ հայերեն բառերում՝ կայսր (լատ. caesar>հուն. καῖσαρ), պան (լատ. panis), սկուտղ (լատ. scutella>հուն. σκουτέλλα) և այլն. 2) լկտիք բառում նկատվում է անկանոն հնչյունափոխություն՝ e-ի անկում (լատ. lectica>հուն. λεκτίκιον). 3) եթե սկզբնային լ-ն լկտիք բառում պահպանվում է, ապա ղենջակ բառում այն փոխվում է ղ-ի՝ առանց նախահար ձայնավորի, որ հատուկ է համեմատաբար ոչ այնքան հին բառերի. մյուս կողմից՝ արտասովոր է nti̯>նջ փոփոխությունը, որ շատ հին լինել չի կարող, ուստի պետք է բարբառային երևույթ համարել. 4) լատիներենից փոխառված բառերը զգալիորեն ավելացնում են -ր-ով և ղ-ով հիմքերով հոլովվող բառերի թիվը, որ ընդհանրապես մեծ չէ. 5) բառախմբային առումով լատինական ծագման բառերը զգալի գործածություն են ունեցել, հաճախ հանդիպում են բարբառներում և մեծ մասամբ հարատևել են մինչև մեր օրերը՝ հիմնականում պատկանելով մշակութային-քաղաքակրթական և պետական ոլորտներին՝ ըստ թեմատիկ խմբերի բաշխվելով հետևյալ կերպ.

1. Ֆիզիկական աշխարհ. 1.441 մարգարիտ.

5. Ուտելիք և ըմպելիք, կերակրի պատրաստում և ամանեղեն. 5.261 սիտղ 5.32 սկուտղ. 5.52 պան.

6. Հագուստ, անձնական զարդարանք և խնամք. 6.82 ղենջակ.

7. Բնակարան, տուն, կահկարասի. 7.411 արկղ.

10. Շարժում, տեղափոխություն, փոխադրում, նավագնացություն. 10.75 կառք. 10.751 բատեռն. լկտիք.

19. Տարածքային, հասարակական և քաղաքական բաժանումներ. հասարակական հարաբերություններ. 19.821 կայսր։

# ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Աբեղյան Մ. Հայոց հին գրականության պատմություն, 1, Երևան, 1944 (տե՛ս նաև Երկեր, 3, Երևան, 1968)։

Աբրահամյան Ա. Ա. Գրաբարի ձեռնարկ, Երևան, 1958ա. 1963[2]*։

Աբրահամյան Ա. Ա. Բառաքննական դիտողություններ, ՀԳԱՏ, 1958բ, 4։

Աբրահամյան Ա. Ա. Եզնիկ Կողբացու երկի տերմինաբանության մասին, ՊԲՀ, 1971, 3։

Աբրահամյան Ա. Գ. Հայ գրի և գրչության պատմություն, Երևան, 1959։

Աբրահամյան Ա. Գ. Ներկա թվականի սկզբնավորությունը ըստ հայ տոմարագետների հաշվումների, ՊԲՀ, 1970, 3։

Աբրահամյան Ռ. Պահլավերեն-պարսկերեն-հայերեն-ռուսերեն-անգլերեն բառարան, Երևան, 1965։

Աբուլաձե Ի. «Դղեակ» բառի ստուգաբանությունը, ՀԳԱՏ, 1944ա, 1—2։

Աբուլաձե Ի. Հին հայերենում գործածված մի նոր բառ, ՀԳԱՏ, 1944ա, 1—2։

Ագաթանգեղայ Պատմութիւն Հայոց, աշխատութեամբ Գ. Տէր-Մկրտչեանի և Ստ. Կանայեանցի, Տփղիս, 1909։

Ադոնց Ն. Հայաստանի պատմություն, Երևան, 1972։

Ալիշան Ղ. Հին հաւատք կամ հեթանոսական կրօնք հայոց, Վենետիկ, 1895։

Աղաբեկյան Մ. Ա. Տարածքային բառազուգաբանությունների համեմատման սկզբունքները, ԼՀԳ, 1971, 12։

Աղաբեկյան Մ. Ա. Ստուգաբանական դիտողություններ, ՊԲՀ, 1980, 3։

Աղաբեկյան Մ. Ա. Հնդեվրոպական *u̯ բաղաձայնը հայերենում, ՊԲՀ, 1981, 4։

Աղայան Է. Բ. Բարբառային հնագույն տարբերությունները հայերենում, ՀԳԱՏ, 1958ա, 5։

Աղայան Է. Բ. Նոր հայերենի բարբառների առաջացման հարցի մասին, ՊԲՀ, 1958բ, 2։

Աղայան Է. Բ. Հայ լեզվաբանության պատմություն, 1—2, Երևան, 1958—1962։

Աղայան Է. Բ. Հայերենի հնչույթային համակարգի պատմությունից, ՊԲՀ, 1961, 2։

Աղայան Է. Բ. Հայոց լեզվի պատմության հարցերը նորագույն ուսումնասիրություններում (գրախոս.), ՊԲՀ, 1962, 1։

Աղայան Է. Բ. Հայերենի հնչույթային համակարգի պատմությունից, ՊԲՀ, 1961, 2։

Աղայան Է. Բ. Գրաբարի քերականություն, 1ա, Հնչյունաբանություն, Երևան, 1964։

Աղայան Է. Բ. Հնդեվրոպական *ger- արմատը հայերենում, ԼՀԳ, 1967, 5։

Աղայան Է. Բ. Բառաքննական և ստուգաբանական հետազոտություններ, Երևան, 1974։

Աճառյան Հ. Ձայնաբանություն վրացերեն հայերենից փոխառյալ բառերի, «Արարատ», 1898, 7—8։

Աճառյան Հ. Հայերենի բնաձայն և կրկնավոր բառերը, ՀԱ, 1899, 7—8։

Աճառյան Հ. Քմքականներու կոկորդական մնալը, ՀԱ, 1905, 8—9։

Աճառյան Հ. Խ և Կ ձայներուն լծորդությունը, ՀԱ, 1909, 5։

Աճառյան Հ. Հայ բարբառագիտություն, Մոսկվա—Ն. Նախիջևան, 1911։

Աճառյան Հ. Թոխարերեն և հայերեն, ՀԱ, 1912, 1։

Աճառյան Հ. Հայերեն գավառական բառարան, Թիֆլիս, 1913։

Աճառյան Հ. Մեսրոպյան գրերու հնչումը կամ արժեքը, ՀԱ, 1922ա, 6—7։

Աճառյան Հ. Հայերեն տառադարձված բառերը օտար լեզուներու մեջ, ՀԱ, 1922բ, 8—9։

Աճառյան Հ. Հայերենի երկբարբառները, ՀԱ, 1922գ, 10—11։

Աճառյան Հ. Հայերենի երկբարբառները և բաղաձայնները, ՀԱ, 1922, 12։

Աճառյան Հ. Հեթիտ-հայ բառեր, «Նորք», 1925, 5—6։

---

*Այստեղ և այլուր տարեթվերի մոտ՝ վերևում դրված թվանշանները ցույց են տալիս հաջորդ այն հրատարակությունները, որոնք օգտագործված են այս աշխատության մեջ։

Աճառյան Հ. *Հայերեն արմատական բառարան*, I—7, Երևան, 1926—1935. 1971[2]—1979[2]։
Աճառյան Հ. *Հայոց գրերը*, Վիեննա, 1928 (և Երևան, 1968)։
Աճառյան Հ. *Հայոց լեզվի պատմություն*, 1—2, Երևան, 1940—1951։
Աճառյան Հ. *Հայոց անձնանունների բառարան*, 1—5, Երևան, 1942—1962։
Աճառյան Հ. *Լիակատար քերականություն հայոց լեզվի*, 1—6, Երևան, 1953—1971։
Այտընյան Ա.—Զալըխյան Վ. *Քննական քերականություն աշխարհաբար կամ արդի հայերեն լեզվի*, Վիեննա, 1866։
Առաքելյան Բ. Ն. *Հայկ-Օրիոն*, ՏՀՅ, 1941, 8։
Առաքելյան Բ. Ն. *Լատիներեն արձանագրություններ Արտաշատ մայրաքաղաքից*, ՊԲՀ, 1967, 4։
Առաքելյան Վ. Դ. *Բայանունը գրաբարի տարբեր խոնարհումների առնչությամբ*, ՊԲՀ, 1968, 1։
Առաքելյան Վ. Դ. *Դասական և հետդասական գրաբարը*, ՊԲՀ, 1976, 1։
Առաքելյան Վ. Դ. *Սեռի քերականական կարգը և բայածանցները գրաբարում*, ՊԲՀ, 1980, 2։
Առաքելյան Վ. Դ. *Բառաքննական դիտողություններ*, ՊԲՀ, 1979, 4։
Առաքելյան Վ. Դ. *Ակնարկներ հայոց գրական լեզվի պատմության*, Երևան, 1981։
Առաքելյան Վ. Դ. *Հինգերորդ դարի հայ թարգմանական գրականության լեզուն և ոճը*, Երևան, 1984։
Ասատրյան Գ. Ս. *Հայերենում իրանական մի քանի փոխառությունների հարցի շուրջ*, ՊԲՀ, 1982, 2։
Ասատրյան Մ. Ե. *Անգլական բառերը հայերենում*, ՊԲՀ, 1960, 3։
*Աստվածաշունչ մատեան հին և նոր կտակարանաց*, Կ. Պոլիս, 1895։
Ավդալբեգյան Թ. *Խորենացու «Պատմության» ժամանակաբանական սկզբնագիրը վերականգնելու նոր փորձ*, ՊԲՀ, 1964, 4։
Ավդալբեգյան Թ. *Միհրը հայոց մեջ*, «Հայագիտական հետազոտություններ», Երևան, 1969։
Ավետիսյան Տ. Մ. *Հայոց անվանման բանաձևերը*, ՊԲՀ, 1982, 1։
Արզումանյան Ն. Ս. *Հայկական սկզբնաղբյուրներում հիշատակվող «մատեան ցանդ» զորամասը*, ՊԲՀ, 1973, 2։
Ավգերեան Մ. *Առձեռն բառարան հայկազեան լեզուի*, Վենետիկ, 1865[2]։
Ավետիքեան Գ., Սիւրմելեան Խ., Ավգերեան Մ. *Նոր բառգիրք հայկազեան լեզուի*, Ա—Բ, Վենետիկ, 1836—1837։
Բագրատունի Ա. *Հայերէն քերականութիւն ի պէտս զարգացելոց*, Վենետիկ, 1852։
Բասմաջյան Կ. *Իսկական պատմություն հայոց*, Կ. Պոլիս, 1914։
Բատրուպանյան Դ. *Ազգային լեզվագիտություն*, «Բանասեր», 1902—1903։
Բատրուպանյան Դ. *Ստուգաբանական հետազոտությունք*, ՀԱ, 1903—1907։
Բատրուպանյան Դ. *Լեզվաբանական*, ՀԱ, 1908—1910։
Բարթիկյան Հ. Մ., Մելքոնյան Հ. Գ. *Ադիաբենի պետությունը և Հայաստանը (գրախոս.)*, ՊԲՀ, 1981, 2։
Բարխուդարյան Ս. Գ. *Վելիկուխի երկերը*, ՀԿՊՀԱ, 1, Երևան, 1935։
Բարսեղյան Լ. Ս. *Խայասա-Ազզի ու նրա մի քանի բնակավայրերի տեղադրման հարցի շուրջը*, ՊԲՀ, 1963, 3։
Բեդիրյան Պ. Ս. *Հայերենի մի քանի բառերի ստուգաբանության շուրջը*, ՀԳԱՏ, 1955, 9։
Բեդիրյան Պ. Ս. *Ստուգաբանական վերլուծություններ*, ՀԳԱՏ, 1956, 7։
Բեդիրյան Պ. Ս. *Մի քանի ստուգաբանություններ*, ՊԲՀ, 1962, 1։
Բեդիրյան Բ. *Նախագրային հայերենի ձայնդարձի համակարգը*, ԼՀԳ, 1966, 11։
Բեդիրյան Պ. Ս. *Ստուգաբանություններ*, ՊԲՀ, 1966, 2։
Բոնֆանտե Ջ. *Հայերենի դիրքը հնդեվրոպական լեզուների մեջ*, ՊԲՀ, 1981, 2։
Գավուքչյան Մ. *Արմեն և հայ անունների ծագումը և Ուրարտուն*, Բեյրութ, 1973։
Գարագաշյան Ա. Մ. *Քննական պատմություն հայոց*, 1—4, Թիֆլիս, 1895։
Գրեպին Ջ. *Խեթա-հայկական մի զուգահեռ*, ՊԲՀ, 1972, 3։
Գրեպին Ջ. *Դասական հայերենի դակերենից փոխառյալ տարրերի ուսումնասիրության փորձ*, ԼՀԳ, 1976, 4։
Գանիբեկյան Է. Լ. *Մարդերի ցեղը հին Հայաստանում (մ. թ. ա. V— մ. թ. I դդ.)*, ՊԲՀ, 1976, 1։
Դյակոնով Ի. Մ. *Խեթերը, փռյուգիացիները և հայերը*, ՀԳԱՏ, 1956, 11։
Եզնիկ Կողբացի, *Եղծ աղանդոց*, Թիֆլիս, 1912 (աշխարհաբար թարգմանությունը Ա. Ա. Աբրահամյանի, Երևան, 1970)։

Երեմյան Ս. Տ. Հայերի ցեղային միությունը Արմե-Շուպրիա երկրում, ՊԲՀ, 1958, 3։
Երեմյան Ս. Տ. Հայաստանն ըստ «Աշխարհացոյց»-ի, Երևան, 1963։
Երեմյան Ս. Տ. Նախշ-ի-Ռուստեմի «Քաաբա ի Զարդուշտ» հուշարձանի արձանագրության վկայությունները Հայաստանի մասին, ՊԲՀ, 1966, 2։
Երեմյան Ս. Տ. Կիմերական ու սկյութական ցեղերի արշավանքները և Ուրարտուի ու Ասորեստանի պայքարը քոչվորների դեմ, ՊԲՀ, 1968ա, 2։
Երեմյան Ս. Տ. Հայկական առաջին պետական կազմավորումները (7-րդ և 6-րդ դդ. մ. թ. ա.), ՊԲՀ, 1968բ, 3։
Երեմյան Ս. Տ. Հայ ժողովրդի կազմավորման ընթացքը, ՊԲՀ, 1970։
Եղիբեկյան Ժ. Ասորիքը հայկական տերության կազմում, ԼՀԳ, 1970, 6։
Էսապալեան Պ. Ճնճղուկ, կուղր և ջրշուն, ՀԱ, 56, 1942ա։
Էսապալեան Պ. Երկինք, ՀԱ, 56, 1942բ։
Թումանյան Բ. Ե. Օրվա սկիզբն ու մասերի բաժանումը հին և միջնադարյան Հայաստանում. ՊԲՀ, 1966, 3։
Ինճիճյան Ղ. Ստորագրութիւն հին Հայաստանեայց, Մեծ Հայք, Վենետիկ, 1832։
Ինճիճյան Ղ. Հնախօսութիւն հին Հայաստանի, 1—3, Վենետիկ, 1835։
Իշխանյան Ռ. Համեմատական լեզվաբանության նոր հայտնագործումները և հայերի ծագման ու հնագույն պատմության հարցերը, ԲԵՀ, 1979, 2։
Իսրայելյան Մ. Ա. Ուրարտագիտական դիտողություններ, ՊԲՀ, 1958, 2։
Իսրայելյան Մ. Ա. Ուրարտագիտական դիտողություններ, ԼԳՀ, 1970, 9։
Լեո, Հայոց պատմություն, Տփղիս, 1917 (տե՛ս նաև Երկերի ժողովածու, 1, Երևան, 1966)։
Խաչատրյան Ա. Հայաստանի սեպագիր շրջանի պատմություն, Երևան, 1933։
Խաչատրյան Մ. Մ. 7-րդ դարի «Աշխարհացույցի» մասին, ՊԲՀ, 1968, 4։
Խաչատրյան Մ. Մ. Հայկական լեռնաշխարհն ըստ Պտղոմեոսի քարտեզագրական տվյալների, ՊԲՀ, 1980, 2։
Խաչատրյան Վ. Ն. Խեթա-հայկական դիցաբանական ընդհանրություններ, ԼՀԳ, 1967, 8։
Խաչիկյան Լ. Ս. Նախամեսրոպյան գրի հարցը և հմայագրերը, ՊԲՀ, 1963, 4։
Խաչիկյան Լ. Ս. Օտարալեզու հայ գրականությունը չորրորդ դարում, ՊԲՀ, 1973, 3։
Կարագյոզյան Հ. Սեպագիր աղբյուրների Դայաենու երկիրը, ԼՀԳ, 1978, 6։
Կոստանյան Ս. Ս. «Նախարար» տերմինի մասին, ՊԲՀ, 1973, 3։
Կրկյաշարյան Ս. Մ. Հին Հայաստանի և Փոքր Ասիայի քաղաքների պատմության դրվագներ, Երևան, 1970։
Կորտլանդտ Ֆ. Պատմահամեմատական հնչյունաբանության հարցեր, «Հայոց լեզու և գրականություն», Երևան, 1983։
Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա, 1, Երևան, 1981։
Հայ ժողովրդի պատմություն, 1, Երևան, 1971։
Հայկական համաբարբառ, 1 և հջ., Երևան, 1972 և հջ.։
Հայոց լեզվի համեմատական քերականության հարցեր, Երևան, 1979։
Հայոց լեզվի պատմական քերականություն, Ա—Բ, Երևան, 1975—1982։
Հմայակյան Ս. Գ. Ուրարտական դիցարանի աստվածությունների մասին, ՊԲՀ, 1975, 1։
Հմայակյան Ս. Գ. Ուրարտական դիցարանի «սրբությունները», ՊԲՀ, 1981, 3։
Հմայակյան Ս. Գ. Ուրարտական Խալդե և Արուբանե աստվածությունների մասին, ՊԲՀ, 1982, 2։
Հյուբշման Հ. Հայկական հատուկ անվանք, ՀԱ, 1893։
Հյուբշման Հ. Սեմական փոխառյալ բառեր հայերենի մեջ, Վիեննա, 1894։
Հյուբշման Հ. Հին հայոց տեղվո անունները, Վիեննա, 1907։
Հովհաննիսյան Լ. Շ. Իրանական փոխառություններ համարվող մի քանի բառերի շուրջ, ՊԲՀ, 1981, 3։
Հովսեփյան Լ. Ս. Հայոց լեզվի պատմություն (նախագիծ), Երևան, 1977։
Հուշարձան, գրական ժողովածու, Վիեննա, 1907։
Ղազարյան Ս. Ղ. Հայոց լեզվի համառոտ պատմություն, Երևան, 1954։
Ղազարյան Ս. Ղ. Հայերենի բարբառների և նրանց ծագման հարցի շուրջը, ՊԲՀ, 1960, 3։
Ղարագյուլյան Թ. Հին հայերենի խոնարհման համակարգի ծագումը, Երևան, 1961։
Ղարիբյան Ա. Ս. Հայ բարբառների ծագման հարցի շուրջը, ՊԲՀ, 1958ա., 3։
Ղարիբյան Ա. Ս. Հայոց լեզվի պատմության ուսումնասիրության ներածություն, Երևան, 1937։
Ղարիբյան Ա. Ս. Հայ բարբառագիտություն, Երևան, 1953։

Ղարիբյան Ա. Ս. *Հայերենի անվանական հոլովման վերացման երկու ներքին օրենքները*, ՀՍՍՀԳԱՏ, 1955, 8։
Ղարիբյան Ա. Ս. *Հայ բարբառների ծագման հարցի շուրջը*, ՊԲՀ, 1958, 3։
Ղարիբյան Ա. Ս. *Հայոց լեզվի դերը և տեղը հնդեվրոպական լեզուների համակարգում*, ՀԳԱՏ, 1960, 7—8։
Ղափանցյան Գ. *Հնէաբանական մի քանի մնացորդներ հայերենում*, Երևան, 1927 [տե՛ս նաև ՏԳԱԻ, 2, էջ 77—113]։
Ղափանցյան Գ. *Ուրարտուի պատմություն*, Երևան, 1940։
Ղափանցյան Գ. *Հայերի և հայերենի գոյացման շուրջը*, ՍԳ, 1941, 1։
Ղափանցյան Գ. *Ասուրա-բաբելական բառերը հայերենում*, ՀԳԱՏ, 1945։
Ղափանցյան Գ. *Հայոց լեզվի պատմություն, հին շրջան*, Երևան, 1961։
Մալխասեանց Ս. *Հայերեն բացատրական բառարան*, 1—4, Երևան, 1944—1945։
Մանանդյան Հ. *Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության*, 1, Երևան, 1944։
Մարտիրոսյան Ն. *Հայերենի հարաբերությունը հեթիթերենի հետ*, ՀԱ, 1924։
Մարտիրոսյան Ն. *Դիտումներ փոքրասիական անունների մասին*, ՊԲՀ, 1961, 3—4։
Մարտիրոսյան Ն. *Նպաստ մը հեթ և հայ բառաքննության*, ՊԲՀ, 1972, 2։
Մեյե Ա. *Հայագիտական ուսումնասիրություններ*, Երևան, 1979։
*Միջազգային հայերենագիտական գիտաժողովի զեկուցումներ*, Երևան, 1985։
Մկրտչյան Կ. Հ. *«Դահանակ» տերմինի մասին*, ՊԲՀ 1977, 4։
Մկրտչյան Ն. Ա. *Խեթա-հայկական մի քանի բառային ընդհանրություններ*, ՊԲՀ, 1969, 1։
Մկրտչյան Ն. Ա. *Մի քանի հին սեմական բառեր հայերենում*, ՊԲՀ, 1970, 2։
Մկրտչյան Ն. Ա. *Խեթա-հայկական ընդհանրություններ*, ԼՀԳ, 1970, 7։
Մկրտչյան Ն. Ա. *Արաբական փոխառությունները հայերենում*, ԼՀԳ, 1980, 3. 1984, 2։
Մնացականյան Ա. Շ. *Դիցաբանական անուններ և բառեր* -ուր *և* -ուտ *վերջածանցներով*, ԼՀԳ, 1971, 11։
Մովսիսի Խորենացւոյ *Պատմութիւն հայոց, աշխատութեամբ Մ. Աբեղյանի և Ս. Հարութիւնյանի, Տփղիս, 1913 (աշխարհաբար թարգմանությունը Ստ. Մալխասյանցի, Երևան, 1968)*։
Մուշեղյան Խ. Ա. *Հին Հայաստանի դրամային շրջանառության պատմությունից (մ. թ. ա. V դարի վերջերից մինչև մ. թ. III դարի սկիզբը)*, ՊԲՀ, 1970, 3։
Մուրադյան Հ. Դ. *Երկբարբառներ էին, արդյոք,* ուա, ուէ, ուի... *կապակցությունները գրաբարում*, ՊԲՀ, 1971, 4։
Մուրվալյան Ա. *Հայոց լեզվի բառային կազմը*, Երևան, 1955։
Շարաբխանյան Պ. Ն. *Գրաբարի շաղկապները*, Երևան, 1960։
Շմիդտ Կ. Հ. *Հին հայերենի բայի հնդեվրոպական հիմքը*. ՊԲՀ, 1984, 1։
Չամչյան Մ. *Պատմութիւն հայոց*, 1, Վենետիկ, 1784։
Պալասանյան Ս. *Ընդհանուր տեսություն արևելահայոց նոր գրավոր լեզվի հայոց*, Թիֆլիս, 1870։
Պատկանով Ք. *Թե ի՛նչ տեղ է բռնում հայերեն լեզուն հնդեվրոպական լեզուների շրջանում*, «Փորձ», 1880, մարտ։
Պեդերսեն Հ. *Հին հայերեն լեզվի շեշտը*, ՀԱ, 1903։
Պեդերսեն Հ. *Նպաստ մը հայ լեզվի պատմության*, Վիեննա, 1904։
Պեդերսեն Հ. *Հայերեն և դրացի լեզուները*, Վիեննա, 1907։
Պեդերսեն Հ. *Հայերենի դիրքը*, ՀԱ, 1909։
Պեդերսեն Հ. *Հին հայերենի ցուցական դերանունները*, Վիեննա, 1907։
Պետրոսյան Ա. Գ. *Մերձսևծովյան ցեղերի միությունը հայկական լեռնաշխարհի հյուսիս-արևելքում (մ. թ. ա. 6—5-րդ դդ.)*, ՊԲՀ, 1976, 1։
Պետրոսյան Ա. Գ. *Թրակա-կիմերական ցեղերի միությունները հայկական լեռնաշխարհում (մ. թ. ա.* VI—V *դդ.)*, ՊԲՀ, 1977։
Պետրոսյան Ա. Գ. *Թրակա-կիմերական էթնիկական տարրը Արաքսի ստորին հոսանքի շրջանում*, ՊԲՀ, 1979ա, 1։
Պետրոսյան Ա. Գ. *Հին Մարաստանի տարածքի երրորդ էթնիկական տարրի մասին*, ՊԲՀ, 1979բ, 4։
Պիզանի Վ. *Հնդեվրոպական լեզուների ծագումը*, ՊԲՀ, 1979, 1։
Պիոտրովսկի Բ. Բ. *Հայ ժողովրդի ծագման հարցի շուրջը*, ՀԳԱՏ, 1945, 6։
Ջահուկյան Գ. Բ. *Հայոց լեզվի պատմա-համեմատական քերականության հիմունքները*, ՀԳԱՏ, 1955, 1։

**Ջահուկյան Գ. Բ.** *Հայոց լեզվի պատմության պերիոդիզացիայի հարցերը*, ԵՊՀԳԱ, 57, 1956։
**Ջահուկյան Գ. Բ.** *Հայ բարբառագիտությունը և հայերենի բարբառների ծագման հարցը*, ՊԲՀ, 1959, 2—3։
**Ջահուկյան Գ. Բ.** *Հայերենի և խեթա-լուվիական լեզուների բառային կազմի ծագումնային զուգադիպումները*, ՊԲՀ, 1967, 4։
**Ջահուկյան Գ. Բ.** *Հայերենը և փռյուգերենը*, ՊԲՀ, 1968, 3։
**Ջահուկյան Գ. Բ.** *Ստուգաբանություններ*, ՊԲՀ, 1963, 4. 1965, 1. ԼՀԳ, 1973, 6. 1976, 12. 1979, 3. ԲԵՀ, 1981, 1. 1983, 2։
**Ջահուկյան Գ. Բ.** *Հայոց լեզվի զարգացումը և կառուցվածքը*, Երևան, 1969։
**Ջահուկյան Գ. Բ.** *Հայերենը և հնդեվրոպական հին լեզուները*, Երևան, 1970։
**Ջահուկյան Գ. Բ.** *Հայ բարբառագիտության ներածություն*, Երևան, 1972։
**Ջահուկյան Գ. Բ.** *Ժամանակակից հայերենի տեսության հիմունքները*, Երևան, 1974։
**Ջահուկյան Գ. Բ.** *Հայասայի լեզվի հնդեվրոպական ծագման վարկածը*, ՊԲՀ, 1976, 1։
**Ջահուկյան Գ. Բ.** *Կիմերների և կիմերերենի պրոբլեմը արդի գիտության մեջ*, ՊԲՀ, 1977, 4։
**Ջահուկյան Գ. Բ.** *Հայ-իրանական զուգադիպումներ*, ԲԵՀ 1981ա, 3։
**Ջահուկյան Գ. Բ.** *Մովսես Խորենացու «Հայոց պատմության» առաջին գրքի անձնանունների լեզվական աղբյուրները*, ՊԲՀ, 1981բ, 3։
**Ջահուկյան Գ. Բ.** **Արվեստ** *և* **արհեստ** *բառերի մասին*, «Սովետական դպրոց», 1981գ, 39։
**Սամուելյան Խ.** *Հին հայաստանի կուլտուրան*, 1—3, Երևան, 1931—1941։
**Սարգսյան Ա. Ն.** *Գրաբարի տիպաբանական վերլուծության մի փորձ*, ԼՀԳ, 1967, 5։
**Սարգսյան Գ. Խ.** *Դաստակերտները և ագարակները 5-րդ դարի հայկական աղբյուրներում*, ՊԲՀ, 1962, 3։
**Սարգսյան Գ. Խ.** *Հելլենիստական դարաշրջանի Հայաստանը և Մովսես Խորենացին*, Երևան, 1966։
**Սարգսյան Գ. Խ.** *Խորենացու «Պատմության» ժամանակագրական համակարգի վերականգնման մասին*, ՊԲՀ, 1968, 1։
**Սարգսյան Գ. Խ.** *Նախամեսրոպյան շրջանի պատմագրությունը*, ՊԲՀ, 1969, 1։
**Սարգսյան Գ. Խ.** *Ֆեոդալական հասարակարգի հաստատումը Հայաստանում և հին հայկական պետության անկումը*, ՊԲՀ, 1972, 2։
**Սևակ Գ.** *Հայ բարբառների ծագման հարցի շուրջը*, ՊԲՀ, 1959, 1։
**Սիմոնյան Ս.** *Հայոց պատմություն*, Բեյրութ, 1939։
**Սվազյան Հ. Ս.** *Ճեները և «Ճենաց աշխարհը» ըստ հայկական աղբյուրների*, ՊԲՀ, 1976, 4։
**Ստրաբոն.** *Քաղեց և թարգմանեց Հ. Աճառյան*, Երևան, 1940։
**Սուքիասյան Ա.** *Հայոց լեզվի հոմանիշների բառարան*, Երևան, 1967։
**Վարդանյան Ռ. Հ.** *«Աշխարհացույցի» ընդարձակ և համառոտ խմբագրությունների չափագիտական աղյուսակների լուսաբանության նոր փորձ*, ՊԲՀ, 1970, 3։
**Վարդանյան Վ. Մ.** *Մարդերը Վասպուրականում*, ՊԲՀ, 1971, 3։
**Տակիտոս Կ.** *Քաղեց և լատիներենից թարգմանեց Պ. Սոտնիկյան*, Երևան, 1941։
**Տաշյան Հ.** *Ուսումն դասական հայերէն լեզուի*, Վիեննա, 1920։
**Տեր-Ղևոնդյան Ա. Ն.** *Դիտողություններ «ոստիկան» բառի մասին*, ՊԲՀ, 1962, 4։
**Տեր-Պողոսյան Պ.** *Ստուգաբանական դիտողություններ*, ՀԱ, 74, 1960։
**Տերվիշյան Ս.** *Հնդեվրոպական նախալեզու*, Կ. Պոլիս, 1887։
**Տիրացյան Գ. Ա.** *Արտաշես Ա-ի արամեատառ նորագյուտ արձանագրությունը*, ՀԳԱՏ, 1957, 10։
**Տիրացյան Գ. Ա.** *Ուրարտական քաղաքակրթությունը և Աքեմենյան Իրանը*, ՊԲՀ, 1964, 2։
**Տիրացյան Գ. Ա.** *Հին հայկական պետության առաջացումը*, ՊԲՀ, 1966, 4։
**Տոլբազյան Ե. Հ.** *Էջեր միջազգային հարաբերությունների հնագույն շրջանի պատմությունից*, ՊԲՀ, 1970, 1։
**Ուլուբաբյան Բ. Ա.** *«Ալբանիա», «աղվանք» և «Առան» տեղանունները*, ՊԲՀ, 1971, 3։
**Փավստոս Բուզանդ** *Պատմություն Հայոց*, Վենետիկ, 1832 (*աշխարհաբար թարգմանությունը Ստ. Մալխասյանցի*, Երևան, 1968)։
**Քոսյան Վ.** *Հնդեվրոպական արմատների դերը հայերենի բառային հիմնական ֆոնդում*, ՀԳԱՏ, 1956, 9։
**Ցուրկե Ժ.** *Հայկական տեղաշարժը*, ՊԲՀ, 1959, 2—3։

**Абаев В. И.** Осетинский язык и фольклор, М.—Л., 1949.

**Абаев В. И.** Историко-этимологический словарь осетинского языка, 1—3, М.—Л., 1958—1979.
**Абаев В. И.** Скифо-европейские изоглоссы, М., 1965.
**Абаев В. И.** Типология армянского и осетинского языка и кавказский субстрат, ‚Sprache und Gesellschaft", Jena, 1970.
**Абуладзе И. В.** Несколько общих слов в древнегрузинском и древнеармянском языках, ИФЖ, 1967, 2—3.
**Аветисян Г. М.** Государство Митанни, Ереван, 1984.
**Агабекян М. А.** Армяно-италийские лексические изоглоссы (автореферат диссертации), Ереван, 1974.
**Агаян Э. Б.** О генезисе армянского консонантизма, ВЯ, 1960, 4.
**Агаян Э. Б.** Об одном фонетическом законе древнеармянских диалектов, LP, 10, 1965.
**Адонц Н.** Армения в эпоху Юстиниана, СПб., 1908 (2-е изд. Ереван, 1971).
**Алексеев В. П.** Итоги изучения палеоантропологии Кавказа, ИФЖ, 1963, 2.
Античная балканистика, 1—5, М., 1972—1984.
**Андреев Н. Д.** Периодизация истории индоевропейского праязыка, ВЯ, 2, 1957.
**Анфимов Н. В.** Племена Прикубанья в сарматское время, СЯ, 18, 1952.
**Аристэ П.** Формирование прибалтийско-финских языков в древнейший период их развития, «Вопросы этнической истории эстонского народа», Таллин, 1956.
**Артамонов М. Н.** Вопрос о происхождении скифов, ВДИ, 1950.
**Артамонов М. Н.** Киммерийцы и скифы, Л., 1974.
**Арутюнян Н. В.** Новые урартские надписи из Кармир-блура, Ереван, 1966.
**Арутюнян Н. В.** Биайнили, Ереван, 1970.
**Арутюнян Н. В.** Новая урартская надпись из Сисиана, ДВ, 4, Ереван, 1983.
**Арциховский А. В.** Основы археологии, М., 1954.
**Асмангулян А. А.** К вопросу о методике этимологических исследований (автореферат диссертации), М., 1952.
**Асмангулян А. А.** Против гипотезы о «двуприродности» армянского языка, ВЯ, 1953, 6.
**Асмангулян А. А.** О типах этимологических связей между родственными языками, ДСИЯ, 10, 1956.
**Асмангулян А. А.** Этимологический состав терминов родства армянского языка, ТЕГПИРИЯ, 3, 1979.
**Ачарян Р. А.** Греческие заимствования в Армянском языке, ВВ, 2 (27),
**Ачарян Р. А.** Имперфект в древнеармянском и некоторых индоевропейских языках, ДСИЯ, 4, 1953.
**Ачарян Р. А.** Армяно-славянские изоглоссы, ВЯ, 1968, 5.
**Балашша Й.** Венгерский язык. М., 1951.
Балканская филология, Л., 1970.
Балканский лингвистический сборник, М., 1972.
Балканское языкознание, М., 1973.
**Балкаров Б. Х.** Адыгские элементы в осетинском языке, Нальчик, 1965.
**Баранов Х. К.** Арабско-русский словарь, М., 1957.
**Барроу Т.** Санскрит, М., 1976.
**Бенвенист Э.** Индоевропейское именное словообразование, М., 1955.
**Бенвенист Э.** Проблема армянского консонантизма, ВЯ, 1961, 3.
**Бенвенист Э.** Очерки по осетинскому языку, М., 1965.
**Бернштейн С. В.** Очерки сравнительной грамматики славянских языков, 1—2, М., 1971—1974.
**Блаватский В. Д.** Киммерийский вопрос и Пантикапей, «Вестник МГУ», 1948.
**Боголюбов М. Н.** Несколько кратких этимологий, сб. «Вопросы грамматики и истории восточных языков», М.—Л., 1957.
**Боголюбов М. Н.** Согдийские документы с горы Муг, М., 1960.
**Боголюбов М. Н.** Арамейская версия лидийско-арамейской билингвы, ВЯ, 1974, 6.
**Бокарев Е. А.** Введение в сравнительно-историческое изучение дагестанских языков, Махачкала, 1961.

**Бокарев Е. А.** Сравнительно-историческая фонетика восточнокавказских языков, М., 1981.
**Браун Н., Климов Г.** Об историческом взаимоотношении урартского и иберийско-кавказских языков (тезисы доклада), Тбилиси, 1954.
**Брюсов А.** Очерки по истории племен европейской части СССР в неолитическую эпоху, М., 1952.
**Брюсов А.** К вопросу об индоевропейской проблеме, СА, 3, 1958.
**Бэнэцьяну В.** Некоторые вопросы этногенеза армян, ИФЖ, 1961, 2.
**Вартанов Ю. П.** Происхождение семитских названий металлов, ДВ, 4, Ереван, 1983.
**Винников И. Н.** Словарь арамейских надписей, ПлС, 3 (66), 1958.
**Виноградов В. А.** О реконструкции праязыковых состояний, сб. «Система и уровни языка», М., 1969.
**Волкова Н. Г.** Этнонимы и племенные названия Северного Кавказа, М., 1973.
Вопросы методики сравнительно-исторического изучения индоевропейских языков, М., 1956.
Всемирная история, 1—2, М., 1955—1956.
**Гайдаров Р. И.** Лексика лезгинского языка, Махачкала, 1966.
**Гамкрелидзе** Т. В. Хеттский язык и ларингальная теория, ТИЯ ГССР (серия вост. яз.), 3, Тбилиси, 1960.
**Гамкрелидзе Т. В.** Передвижение согласных в хеттском (неситском) языке, ПС, М., 1961.
**Гамкрелидзе Т. В., Мачавариани Г. И.** Система сонантов и аблаут в картвельских языках, Тбилиси, 1965.
**Гамкрелидзе Т. В.** Современная диахроническая лингвистика и картвельские языки, ВЯ, 1971, 2.
**Гамкрелидзе Т. В., Иванов В. В.** Проблемы определения первоначальной территории обитания и путей миграции носителей диалектов общеиндоевропейского языка, КСИГИЯ, М., 1972а.
**Гамкрелидзе Т.В., Иванов В. В.** Лингвистическая типология и реконструкция системы и.-е. смычных, КСИГИЯ, М., 1972б.
**Гамкрелидзе Т. В., Иванов В. В.** Древняя Передняя Азия и индоевропейские миграции, НАА, 1980а, I.
**Гамкрелидзе Т. В., Иванов В. В.** Реконструкция системы смычных общеиндоевропейского языка. Глоттализованные смычные в индоевропейском, ВЯ, 1980б, 4.
**Гамкрелидзе Т. В., Иванов В. В.** Ряды «гуттуральных» в индоевропейском. Проблема языков centum и satəm, ВЯ, 1980 в, 5.
**Гамкрелидзе Т. В., Иванов В. В.** Миграции племен-носителей индоевропейских диалектов с первичной территории расселения на Ближнем Востеке в исторические места их обитания в Евразии, ВДИ, 1981а, 2.
**Гамкрелидзе Т. В., Иванов В. В.** Индоевропейский язык и индоевропейцы, 1—2, Тбилиси, 1981б.
**Гарибян А. С.** О системе армянского языка II в. до н. э., УЗ ЕТРПИ, 3, 1952.
**Гарибян А. С.** Индоевропейский консонантизм в отражении армянских диалектов, ИАН, 1956, 2.
**Гарибян А. С.** Об армянском консонантизме, ВЯ, 1959, 5.
**Гарибян А. С.** К вопросу о месте и значении армянского языка в системе индоевропейских языков, М, 1960.
**Гарибян А. С.** Еще раз об армянском консонантизме, ВЯ, 1962, 2.
**Георгиев В. И.** Вопросы родства средиземноморских языков, ВЯ, 1954, 4.
**Георгиев В. И.** Проблемы возникновения индоевропейских языков, ВЯ, 1956, I.
**Георгиев В. И.** Тракийският език, София, 1957.
**Георгиев В. И.** Исследования по сравнительно-историческому языкознанию, М., 1958а.
**Георгиев В. И.** Балто-славянский, германский и индо-иранский, СФ, 1958б. I.
**Георгиев В. И.** Передвижение смычных согласных в армянском языке и вопросы этногенеза армян, ВЯ, 1960, 5.

**Георгиев В., Гълбов И., Заимов И., Илчев С.** Български етимологичен речник, I София, 1971.
**Георгиев В. И.** Индоевропейское языкознание сегодня, ВЯ, 1975, 5.
**Герценберг Л. Г.** Хотано-сакский язык, М., 1965.
**Герценберг Л. Г.** Морфологическая структура слова в древних индоиранских языках, Л., 1972.
**Гигинейшвили Б. К.** Сравнительная фонетика дагестанских языков, Тбилиси, 1977.
**Гиндин Л. А.** Язык древнейшего населения юга Балканского полуострова, М., 1967.
**Глейе А.** О месте армянского языка среди арио-европейских языков, СМ, 31, 4, 1902.
**Головлева Л. М.** Царство Алзи во второй половине II тыс. до н. э., ДВ, 3, Ереван, 1978.
**Горнунг Б. В.** О так называемых «азианических» языках, ИАН АрмССР, 1954, 6.
**Горнунг Б. В.** К вопросу об образовании индоевропейской языковой общности, М., 1964.
Грамматический строй балканских языков, Л., 1976.
**Гранде Б. М.** Курс арабской грамматики в сравнительно-историческом освещении, М., 1963.
**Гранде Б. М.** Введение в сравнительное изучение семитских языков, М., 1972.
**Грантовский Э. А.** Ранняя история иранских племен Передней Азии, М., 1970.
**Греппин Д.** Современное состояние изучения армянских ларингалов, ИФЖ, 1975, I.
**Греппин Д.** Взаимоотношение балтийских и армянского языков, ИФЖ, 1976, 4.
**Греппин Д.** Лувийские элементы в армянском языке, ДВ, 3, 1978.
**Грюнберг А. Л.** О месте татского среди иранских языков, ВЯ, 1961, I.
**Гудава Т. Е.** О лексических встречах между грузинским и аварским языками, САНГ, 1954.
**Гухман М. М.** Готский язык, М., 1958.
**Дебец Г. Ф., Трофимова Т. А. и Чебоксаров Н. Н.** Проблемы заселения Европы, «Происхождение человека и древнее расселение человечества», М., 1951.
**Десницкая А. В.** Вопросы изучения древних языков Малой Азии и сравнительная грамматика индоевропейских языков, ВЯ, 1952, 4.
**Десницкая А. В.** Вопросы изучения родства индоевропейских языков, М.—Л., 1955.
**Десницкая А. В.** Албанский язык и его диалекты, Л., 1968 а.
**Десницкая А. В.** Реконструкция элементов древнеалбанского языка и общеалбанские языковые проблемы, „Actes du Premier congrès International des Etudes Balkanique et Sud-Est Européennes", Sofia, 1968 б.
**Десницкая А. В.** Албанский язык в истории сравнительного языкознания, «Балканская филология», Л., 1970.
**Десницкая А. В.** Сравнительное языкознание и история языков, Л., 1984.
**Дешериев Ю. С.** Сравнительно-историческая грамматика нахских языков, Грозный, 1963.
**Джаукян Г. Б.** К вопросу о происхождении консонантизма армянских диалектов, ВЯ, 1960, 6.
**Джаукян Г. Б.** Урартский и индоевропейские языки, Ереван, 1963.
**Джаукян Г. Б.** Хайасский язык и его отношение к индоевропейским языкам, Ереван, 1964.
**Джаукян Г. Б.** Очерки по истории дописьменного периода армянского языка, Ереван, 1967а.
**Джаукян Г. Б.** Взаимоотношения индоевропейских, хурритско-урартских и кавказских языков, Ереван, 1967б.
**Джаукян Г. Б.** О применении метода глоттохронологии к армянскому языку, ВАН АрмССР, 1969, 9.
**Джаукян Г. Б.** Принципы периодизации истории языка (на материале армянского языка), «Лингвогеография, диалектология и история языка», Кишинев, 1973.
**Джаукян Г. Б.** Опыт классификации лингвистических дисциплин, «Теория языка. Англистика. Кельтология», М., 1976а.
**Джаукян Г. Б.** К интерпретации этеокиприско-греческой билингвы, ИАН СССР, ОЛЯ, 1976б.

